## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԲԱԺԻՆ Բ

## ՏՈՀՄԱՏԻՐԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ ԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ։ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՈՒՄԸ

## ԲԱԺԻՆ Դ

### ՎԱՂ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ: ՈՒՐԱՐՏՈՒ (ՎԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ)



## ԲԱԺԻՆ Դ

### ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ԱՎԱՐՏԸ: ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՔԵՄԵՆՅԱՆՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԱԿ

## ԲԱԺԻՆ Ե

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ։ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

## ԲԱԺԻՆ Զ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

## ԲԱԺԻՆ Է

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ





АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# ИСТОРИЯ АРМЯНСКОГО НАРОДА



ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН · 1971

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
*Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Գալոյան Գ. Ա., Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Ծ., Հովհաննիսյան Ա. Գ., Ներսիսյան Մ. Գ.*




ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ · 1971

# ТОМ I

# АРМЕНИЯ В ЭПОХУ ПЕРВОБЫТНООБЩИННОГО И РАБОВЛАДЕЛЬЧЕСКОГО СТРОЯ

РЕДАКЦИЯ ТОМА

*Еремян С. Т.* (отв. редактор), *Мартиросян А. А.*,
*Саркисян Г. Х.* (зам. отв. редактора), *Тирацян Г. А.*

# ՀԱՏՈՐ I

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ-ՀԱՄԱՅՆԱԿԱՆ ԵՎ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

*Երեմյան Ս. Տ. (պատ. խմբագիր), Մարտիրոսյան Հ. Ա.,*
*Սարգսյան Գ. Խ. (պատ. խմբագրի տեղակալ), Տիրացյան Գ. Ա.*

## ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԿՈՂՄԻՑ

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի նախաձեռնությամբ իրականացվող հայ ժողովրդի պատմության ութհատորյակը լուսաբանում է հայ ժողովրդի ամբողջական պատմությունը նրա կազմավորման ժամանակաշրջանից մինչև կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի մեր օրերը: Թեպետև հայ պատմագրությունը շուրջ մեկ ու կես հազարամյակի անցյալ ունի, սակայն նման գիտական աշխատություն, որի նպատակն է ընդհանրացնելու հայ ժողովրդի բազմադարյան պատմության բնագավառում առ այսօր կատարված հայագիտական հետազոտությունների արդյունքները, առաջին անգամն է ստեղծվում:

Խուսափելով երևույթների սոսկ էմպիրիկ շարադրանքից, հեղինակային կոլեկտիվը ջանացել է հասու լինել հասարակական ֆորմացիաների զարգացման կոնկրետ ընթացքին, լուսաբանել տարբեր հասարակարգերի տիրապետության պայմաններում արտաքին և ներքին իշխողների դեմ հայ ժողովրդական զանգվածների մղած դասակարգային պայքարի ընթացքը, վեր հանել դրա առաջատար նշանակությունը հայ ժողովրդի պատմական անցյալի, ինչպես նաև նրա ընթացիկ կյանքի համար:

Հատուկ ուշադրության է արժանացել հայ ժողովրդի բազմադարյան պայքարը իր ազատության ու անկախության վրա բռնացող նվաճողների ու աշխարհակալությունների դեմ, որոնք սպառնում էին ոչ միայն Հայաստանի անկախությանը, այլև հաճախ հետամտում նրա ժողովրդի վայրագ հարստահարմանը, ֆիզիկական ոչնչացմանը կամ էթնիկական դիմահեղմանը:

Ներկայացնելով հայ ժողովրդի պատմական անցյալը, ութհատորյակը ծանրանում է այն երևույթների լուսաբանության վրա, որոնք առավել չափով ի հայտ են բերում ուրիշ ժողովուրդների պատմության հետ հայ ժողովրդի ունեցած սոցիալ-տնտեսական, քաղաքական կամ մշակութային ու գաղափարական ընդհանրություններն ու օրինաչափությունները:

Ելնելով այն իրողությունից, որ XVII—XVIII դարերում մեր ժողովրդի առաջավոր ներկայացուցիչները Ռուսաստանի մեջ նշմարեցին հայ ժողովրդի ֆիզիկական ինքնապահովության և նրա քաղաքական ու մշակութային զարգացման երաշխիքը, ներկա հրատարակության մեջ լուսաբանվել են հայ-ռուսական պատմական կապերը, հաշվի առնելով այն հանգամանքը, որ Հայաստանի արևելյան հատվածի Ռուսաստանին միացնելը դարձավ նրա ազգային համախմբման ու զարգացման գրավականը:

Բազմահատորյակի եզրափակիչ հատորները նվիրված են մեր ժողովրդի սովետական շրջանի պատմությանը: Նրանցում վեր են հանվել տնտեսության,

գիտության ու մշակույթի մարզերում սովետական ժողովրդի ձեռք բերած աննախընթաց նվաճումներն ու ակնառու հաղթանակները:

Հեղինակային կոլեկտիվը հատուկ ուշադրություն է դարձրել և հայ ժողովրդի պատմության համայնապատկերի մեջ ընդգրկել է ոչ միայն Հայկական լեռնաշխարհի ժողովուրդների, այլև պատմական տարաբախտ պայմանների բերումով գոյացած հայկական գաղթաշխարհի պատմությունը:

Հայ ժողովրդի պատմության գիտական-մարքսիստական պարբերացման սկզբունքներից ելնելով, ութհատորյակի յուրաքանչյուր հատոր նվիրվել է հասարակական-անտեսական զարգացումն ընդգրկող համապատասխան դարաշրջանի:

1-ին հատոր—Հայաստանը նախնադարյան-համայնական հասարակության և ստրկատիրական հասարակարգի ժամանակաշրջանում.

2-րդ հատոր—Հայաստանը վաղ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում (III—IX դդ.).

3-րդ հատոր—Հայաստանը զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում (IX—XIV դդ.).

4-րդ հատոր — Հայաստանը ֆեոդալական հասարակարգի վայրէջքի ժամանակաշրջանում (XIV—XVIII դդ.).

5-րդ հատոր — Հայաստանը ֆեոդալիզմից կապիտալիզմին անցնելու ժամանակաշրջանում (1800—1870 թթ.).

6-րդ հատոր — Հայաստանը կապիտալիզմի և իմպերիալիզմի ժամանակաշրջանում (1870—1917թթ.).

7-րդ հատոր — Հայաստանը սովետական իշխանության հաղթանակի և սոցիալիզմի կառուցման տարիներին (1917—1941թթ.).

8-րդ հատոր — Հայ ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան կոմունիստական շինարարության տարիներին (1941—1965 թթ.):

Ինստիտուտը բազմահատորյակը ստեղծելու նպատակով ջանացել է ապահովել հայ ժողովրդի պատմության ասպարեզում իրենց ուսումնասիրություններով ճանաչում գտած մի շարք պատմաբանների, հնագետների, գրականագետների ու մշակույթի տարբեր բնագավառներում աշխատող հեղինակների գործակցությունը:

Ինստիտուտը և հեղինակային կոլեկտիվը հեռու են այն մտքից, թե ութհատորյակում դրվել ու լուծվել են հայ ժողովրդի պատմության բոլոր պրոբլեմները: Նրանք, սակայն, հույսով են, որ ընթերցող հասարակայնության ուշադրությանը հանձնվող բազմահատորյակը կընդունվի որպես առաջընթաց մի կարևոր քայլ հայ ժողովրդի ամբողջական պատմության գիտական ուսումնասիրության գործում:

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Նորագույն գյուտերը, մանավանդ հնագիտության ասպարեզում, Հայաստանի պատմությունը հասցնում են մարդու և մարդկային հասարակության սաղմնավորման ժամանակաշրջանին՝ ստորին պալեոլիթին։ «Հայ ժողովրդի պատմության» սույն առաջին հատորում ցույց է տրված, որ Հայկական լեռնաշխարհում ապրող ցեղերը, ապա նրանցից առաջացած հայ ժողովուրդը, անցել են նախնադարյան-համայնական հասարակության զարգացման բոլոր փուլերը և ստրկատիրական հասարակարգը։ Հատորն ավարտվում է ստրկատիրական հասարակարգի անկման նախօրյակով։*

*Հայաստանը եղել է հնագույն քաղաքակրթությունների անմիջական հարևան և զարգացել նրանց շրջօղակում։ Ուստի հայ ժողովրդի պատմության առանձնահատկությունները բացահայտելու համար հարկավոր է ծանոթ լինել նաև այդ երկրների պատմական անցյալին, որոնց ոլորտում ապրել ու զարգացել է մեր երկիրն ու ժողովուրդը, անելով իր ներդրումը համաշխարհային պատմության ու մշակույթի մեջ։*

*Հնագույն հասարակությունները, որոնց հիմքը երկրագործությունն էր, ծնունդ են առել Նեղոսի, Տիգրիսի և Եփրատի, Ինդոսի ու Գանգեսի և մյուս գետերի արգավանդ հովիտներում։ Երկրագործությունը եղել է նստակյաց ապրելաձևի հիմքը։ Սրան զուգընթաց մարդը ծանոթանում է մետաղներին և արտադրության փայտե գործիքներից անցնում մետաղե գործիքներին։ Տոհմա-արենակցական հարաբերություններն աստիճանաբար իրենց տեղն էին զիջում տերիտորիալ համայնական հարաբերություններին։ Սկսվում է նախնադարյան-համայնական կարգերի քայքայման և ստրկատիրական հասարակարգի ձևավորման ժամանակաշրջանը։ Այդ ճանապարհով է ընթացել նաև Հայաստանի նախաբնիկների կյանքը։*

*Աշխատանքի առաջին բաժանումը՝ անասնապահության անջատումը երկրագործությունից, հնարավորություն ստեղծեց արտադրողական ուժերի նոր, աննախընթաց վերելքի համար։ Հովվական և երկրագործական ցեղերի միջև հաստատվում է անասնապահական և երկրագործական մթերքների կանոնավոր փոխանակություն։ Մանր նահապետական տոհմերն ու համայնքները միավորվելով ստեղծում են ցեղային միություններ, ուժեղանում է սոցիալական տրոհման պրոցեսը, առաջ է գալիս ռազմական վերնախավը։ Այս երևույթներն ավելի են խորանում աշխատանքի երկրորդ խոշոր բաժանումից հետո, երբ արհեստն անջատվում է որպես արտադրական գործունեության հատուկ ձև, որը*

*սպասարկում է և՛ անասնապահներին, և՛ երկրագործներին։ Արհեստներն առանձնապես նպաստեցին կանոնավոր փոխանակության կարգավորմանը. արհեստագործական արտադրանքը դառնում է ապրանք։*

*Արտադրական կյանքում տեղի ունեցող այս պրոցեսների արդյունքը եղավ տոհմական կապերի քայքայումը. տոհմը տրոհվում է մի շարք ընտանիքների։ Նոր պայմաններում արենակցական կապերը կորցնում են իրենց նշանակությունը և գնալով ավելի մեծ դեր են ստանում տնտեսական և տերիտորիալ կապերը։ Տոհմական համայնքը ետին գիծ է մղվում, և այնուհետև վճռական գործոն է դառնում տերիտորիալ-դրացիական համայնքը։ Ժամանակի ընթացքում գույքային և սոցիալական անհավասարությունը տոհմի ներսում հանգեցնում է այն բանին, որ համայնքի անդամների ընդհանուր մասսան կախման մեջ է ընկնում հարուստ և տոհմիկ վերնախավից։ Ավելի ու ավելի հաճախ հարուստները ստրկացնում են աղքատացած և իրենցից պարտային կախման մեջ ընկած տոհմակիցներին։ Ռազմագերիներին ևս, որպես կանոն, ստրկացնում են։ Ստեղծված պայմաններում առաջ է գալիս պետությունը, որպես տիրապետող դասակարգերի բռնության օրգան։ Անդասակարգ հասարակությանը փոխարինում է դասակարգային հասարակությունը։ Այսպես, ստրկատիրության հիմքի վրա, առաջ եկան Առաջավոր Ասիայի հնագույն պետությունները, որոնց թվում նաև Ուրարտուն, ապա Հայկական թագավորությունը։*

*Սույն հատորում ցույց է տրվում, թե ինչպես հայ ժողովրդի կազմավորման երկարատև պրոցեսի ընթացքում առաջատար դեր է կատարել տնտեսության, պետականության և մշակույթի զարգացման տեսակետից Հայկական լեռնաշխարհի մերթ այս, մերթ այն շրջանը։ Բացահայտվում են չորս այդպիսի կենտրոններ։*

*Խեթական պետականության ծաղկման ժամանակաշրջանում (մ. թ. ա. XV—XIII դարեր) կազմավորվող հայ ժողովրդի բնօրրանը, նրա տնտեսական, քաղաքական և մշակույթի կենտրոնն է եղել Փոքր Ասիայի և Հայկական լեռնաշխարհի սահմանագլխում՝ շրջանում գտնվող Հայասա-Ազզի երկիրը։*

*Երկրորդ կենտրոնն էր Արմե-Շուպրիան՝ Արևելյան Եփրատի—Արածանիի ներքին հոսանքում և Արևմտյան Տիգրիսի ակունքների շրջանում։ Սույն կենտրոնը առաջատար դեր էր խաղում Հայկական լեռնաշխարհում մ. թ. ա. XII—IX դարերում։ Այստեղ ձևավորվեցին հայկական պետականության սաղմերը ի դեմս Արմե-Շուպրիա կիսացեղային-կիսապետական միության։*

*Այս կենտրոնը, այնուհետև, իր տեղը զիջեց Վանա լճի ավազանի արևելյան մասում գտնվող Տուշպա-Վան քաղաքի երկրագործական-անասնապահական և մետաղագործական օազիսին։ Այստեղ առաջացել էր Հայկական լեռնաշխարհի հնագույն պետական կազմավորումը՝ Ուրարտուն։ Այս երրորդ կենտրոնը առաջատար էր Հայկական լեռնաշխարհում մ. թ. ա. IX—VII դարերում։ Ուրարտուն, իբրև պետություն, իրենից ներկայացնում էր հնազանդեցված ցեղերի և երկրների ռազմավարչական մի բռնի միություն։ Հավանորեն դրանով էլ պիտի բացատրել այն փաստը, որ Հայկական լեռնաշխարհում, իրենց երեքհարյուրամյա տիրապետության շրջանում, ուրարտացիներին այնպես էլ չհաջողվեց տարածել իրենց լեզուն նվաճված տերիտորիաներում և ստեղծել էթնիկական մի մեծ միավորում՝ ժողովուրդ։ Սակայն Ուրարտուի թագավորության*

գերիշխանության, և մանավանդ նրան անմիջականորեն հաջորդած ժամանակաշրջանը, նպաստավոր պայմաններ ստեղծեց հայկական ցեղերին լեռնաշխարհի արևմտյան երկրամասերից հետզհետե առաջ խաղալու դեպի արևելք՝ Ուրարտուի սիրտը՝ Տուշպա-Վան։ Այստեղ VI դարի սկզբներին առաջ եկավ հնագույն հայկական պետությունը՝ Երվանդունիների թագավորությունը։ Վերջինի ստեղծումը նշանավորեց հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի ավարտը։ Ի տարբերություն Ուրարտուի, Հայկական պետությունն առաջ եկավ ցեղային այնպիսի միությունների հիման վրա, որոնք իրենց լեզվով և տնտեսական ու քաղաքական զարգացման մակարդակով միասնություն էին կազմում։ Սրանով պիտի բացատրել այն փաստը, որ Հայկական պետությունը արագորեն տարածվում է Հայկական լեռնաշխարհի տերիտորիայի վրա՝ ստեղծելով մեկ միասնական հայկական վաղ-ստրկատիրական թագավորություն։

Վանա լճի ավազանից հայկական էթնիկական տարրերը թափանցում են դեպի հյուսիս՝ Արարատյան դաշտավայր, որը դառնում է արդեն կազմավորված հայ ժողովրդի տնտեսական, քաղաքական ու մշակութային չորրորդ և կարևորագույն կենտրոնը։ Այն դեպի իրեն է ձգում հայկական բոլոր երկրամասերը, միավորելով նրանց մեկ ընդհանուր պետական կազմակերպության՝ Մեծ Հայքի թագավորության մեջ, որը հելլենիստական ժամանակաշրջանում Հռոմեական կայսրության և Պարթևական թագավորության կողքին դարձավ «օյկումենեի» երրորդ մեծ պետությունը։

Հայաստանի տերիտորիայի աշխարհագրական դիրքը նրան դարձրել էր Արևելքի և Արևմուտքի միջև օրըստօրե զարգացող միջազգային առևտրական փոխանակության կապող օղակ։ Հայաստանը դառնում է այն կենտրոններից մեկը, որտեղ խաչաձևվում են արևմտյան և արևելյան տարրերը մշակույթի, գաղափարախոսության ու պաշտամունքի ասպարեզում։ Այս հանգամանքը իր զորեղ կնիքն է դրել հայ ժողովրդի հետագա զարգացման վրա։

Հայկական պետությունը շարունակում էր զարգանալ ստրկատիրական հասարակարգի ուղիներով։ Ստրկատիրական հասարակությունը տարբեր երկրներում հանգես է եկել բազմազան ձևափոխություններով։ Արևելքի ստրկատիրության ձևերի ուսումնասիրության գործում անգնահատելի ծառայություններ ունեն սովետական գիտնական Վ. Վ. Ստրուվեն և նրա հետևորդները։ Արդեն երեսուն տարուց ավելի է, ինչ սովետական գիտնականները զբաղվում են Հին Արևելքի ստրկատիրական հասարակարգի էության ու ձևերի հարցերի ուսումնասիրությամբ։ Ներկայումս սովետական պատմագրության մեջ տիրապետում է այն միասնական տեսակետը, որ Արևելքում, մասնավորապես Առաջավոր Ասիայի երկրներում, ֆեոդալիզմին նախորդել է ստրկատիրական հասարակարգը։

Սովետական արևելագետների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Հին Արևելքում գոյություն է ունեցել տնտեսության երկու սիստեմ՝ տիրող դասակարգի տնտեսություն և գյուղական համայնքի տնտեսություն, որոնք զարգացել են մշտական փոխազդեցության պայմաններում։ Առաջին կարգի տնտեսությունը ներկայացված էր արքաների, նրանց մերձավորների և բարձրաստիճան պաշտոնյաների, ինչպես նաև քրմերի և տիրող դասակարգի այլ ներկայացուցիչների կալվածքներով։ Այս տնտեսություններում նյութական

բարիքների հիմնական արտադրողները գերազանցապես ստրուկներն էին, որոնց կազմը լրացվում էր արտաքին (գերեվարություններ և այլն) և ներքին (ազատ համայնականների ստրկացում) աղբյուրներից։ Երկրորդ կարգի տնտեսություն էր գյուղական համայնքը։ Գյուղական համայնքներում միավորված նյութական բարիքների ազատ արտադրողները պարտավոր էին պետության համար զինվորական, շինարարական պարհակներ կատարել և պետական հարկեր մուծել։ Գյուղական համայնքը ոչ միայն տնտեսական կազմակերպություն էր, կապված հողի կոլեկտիվ տիրակալման և յուրացման, ինչպես նաև ջրօգտագործման հետ, այլ միաժամանակ նաև քաղաքացիական և քաղաքական կազմակերպություն, ազատ քաղաքացիների կոլեկտիվ։ Սակայն ստրկատիրությունը իր կնիքն էր դնում նաև համայնքի ներքին կյանքի վրա։ Այստեղ ևս, թեև ոչ մեծ չափով, կիրառվում էր ստրուկների աշխատանքը։

Ներկայումս գնալով ավելի է ամրապնդվում այն կարծիքը, որ Հին Արևելքում զգալի դեր է կատարել վարձու աշխատանքը և իր նշանակությամբ թերևս չի զիջել ստրուկի աշխատանքին։ Սովորաբար վարձկաններ էին դառնում համայնքի այն անդամները, որոնք ի վիճակի չէին լինում ետ գնել վաշխառուների մոտ գրավ դրված հողաբաժինները։

Այսպիսով, Հին Արևելքում գոյություն ունեին համայնքի ազատ անդամների շահագործման տարբեր ձևեր։ Համայնքի առանձնահատկություններից էր այն, որ նա սոցիալական շերտավորման անընդհատ պրոցես էր ապրում և իր ընդերքից ծնում շահագործողների ու շահագործվողների անտագոնիստական տարրեր։

Ստրկատիրությունը, որպես սոցիալական երևույթ, իր զարգացման գագաթնակետին հասավ հունա-հռոմեական հասարակության մեջ։ Ինչպես ներկայումս իրավացիորեն նշում են, դա պայմանավորված էր նրանով, որ ապրանքային տնտեսությունը այստեղ զարգացել էր մեծ չափերով։ Անտիկ ստրկատիրությունը, ի տարբերություն արևելյան ստրկատիրությունից, համարվում է ստրկատիրական հասարակարգի «դասական» ձև։ Անտիկ հասարակության ճոխ ծաղկումից հետո սկսում է ստրկատիրական հասարակարգի քայքայումն ու անկումը։

Ստրկատիրական հասարակարգի մի երրորդ ձևն էլ կարելի է համարել հելլենիստականը, որի համար բնորոշ էր հին արևելյան ստրկատիրության ձևերի միակցումը անտիկ ստրկատիրության հետ։ Հելլենիստական հասարակությունը Առաջավոր Ասիայի երկրների հին արևելյան տիպի ստրկատիրական հասարակարգի զարգացման վերջին փուլն էր։ Նրան հաջորդեց հասարակության ֆեոդալականացումը։

Հինգերորդ դարում և նրանից հետո Հայաստանում առաջ եկավ ստվար գրականություն, որտեղ Մեծ Հայքի թագավորությունը նկարագրված է իբրև զուտ ֆեոդալական երկիր։ Այս հանգամանքների ճնշման տակ է, որ հայագիտության ավագ ներկայացուցիչները, այնպիսի կարկառուն դեմքեր, ինչպիսիք են Ն. Ադոնցը և Հ. Մանանդյանը, իրենց աշխատություններում հին Հայաստանը ներկայացնում են իբրև ֆեոդալական հասարակարգի կլասիկ երկիր։ IV—V դարերի Հայաստանի համար բնորոշ սոցիալական երևույթները նրանք հետադարձ հայացքով տանում են դեպի հին Հայաստանի պետականության

հնագույն ժամանակաշրջանները։ Սովետական նոր հայագիտությունը հին Հայաստանի հասարակարգը բոլորովին նոր տեսանկյունով է դիտում, ներառելով այն հելլենիստական Արևելքի ստրկատիրական հասարակարգի համայնապատկերի մեջ։

Հին Հայաստանի հասարակարգի այսօրինակ որակավորման հիմքի վրա հատորում համապատասխան լուսաբանություն է ստանում երկրի քաղաքական զարգացման պատմությունը։ Հայկական լեռնաշխարհի և նրա մերձակայքի հնագույն պետական կազմավորումները առավել կամ պակաս չափով իրենց դրոշմն են թողել մ. թ. ա. առաջին հազարամյակի երկրորդ քառորդում նրանց ընդերքում սկզբնավորված հայ պետականության վրա։ Ուրարտուի անկումից հետո առաջացած վաղ հայկական պետությունը դժվարին պարագաներում է ծնունդ առել, առաջին իսկ քայլերից ստիպված լինելով անկախության անհավասար պայքար մղել Մեդական, ապա Աքեմենյան աշխարհակալության դեմ։ Նրա հետագա զարգացումը, որ տեղի է ունեցել վերջինի գերիշխանության ներքո, բայց ըստ երևույթին սեփական հինավուրց Երվանդունի դինաստիայի պահպանմամբ, ի վերջո հանգեցրել է անկախության, որը անմիջականորեն հաջորդեց Աքեմենյան տերության փլուզմանը Ալեքսանդր Մակեդոնացու հարվածների ներքո։

Վերածնված պետությունը «Մեծ Հայք» անվան տակ գոյատևում է շուրջ յոթ և կես հարյուրամյակ՝ մ. թ. ա. IV դարի վերջերից մինչև մ. թ. V դարի սկզբները։ Նրա կենսունակության գաղտնիքն այն էր, որ ի տարբերություն նրան շրջապատող մի շարք հելլենիստական պետությունների, Հայկական պետությունը խարսխված էր էթնիկական և մշակութային ամբողջություն կազմող հիմքի վրա, որը հայ ժողովրդին ուժ ու տոկունություն տվեց գոյատևելու նաև հետագայում։

Հայկական պետությունը հետզհետե ծավալվում ու տարածում է իր իշխանությունը Հայկական լեռնաշխարհի այն ծայրամասերի վրա, որոնք ժողովրդի կազմավորման ընթացքում արդեն հայացել էին, բայց անջատ պետություններ էին կազմում և կամ գտնվում էին հարևան պետությունների սահմաններում։ Արդեն Երվանդունիներին փոխարինած Արտաշեսյան դինաստիայի հիմնադիր Արտաշես Ա-ի օրոք (մ. թ. ա. 189—160 թթ.) Մեծ Հայքի թագավորությունը միջազգային քաղաքական ասպարեզ է դուրս գալիս և մրցում տակավին հզոր Սելևկյան պետության հետ։ Տիգրան Բ Մեծի ժամանակաշրջանում (մ. թ. ա. 95—55 թթ.) Հայկական պետությունը վերաճում է Առաջավոր Ասիայի աշխարհակալ տերության, ետին պլան մղելով նախորդ շրջանում մեծ հզորության ու ծավալման հասած Պարթևական պետությանը։ Այնուհետև Հայկական այդ տերությունը և նրա արևմտյան հարևան ու դաշնակից Պոնտոսը, որը ևս նույն տասնամյակներին մեծ հաջողությունների էր հասել, անխուսափելիորեն բախման մեջ են մտնում դեռևս հարյուրամյակ առաջ դեպի Արևելք ծավալվել սկսած գիշատիչ Հռոմի հետ և պարտվում են։ Ի տարբերություն Պոնտոսի, սակայն, որն ի վերջո վերածվում է սոսկ հռոմեական պրովինցիայի, Հայաստանը արտաքին նվաճումները կորցնելով հանդերձ, վերը նշված պատճառներով պահպանվում է որպես խոշոր և ազդեցիկ պետություն։

Սակայն Հայաստանի արտաքին ու ներքին դրությունն այդ ժամանակվանից էապես բարդանում է։ Սեղմված լինելով երկու վերոհիշյալ հզոր ռազմա-քաղաքական ուժերի՝ Հռոմի և պարթևների միջև և գրավելով կարևոր ստրատեգիական դիրք, Հայաստանը դառնում է հռոմեա-պարթևական մրցակցության՝ նրանց մղած պատերազմների և քաղաքական պայքարի ակամա մասնակից ու ստիպված լինում ըստ պարագաների ապավինել մերթ մեկ մերթ մյուս կողմի հովանավորությանը։ Եթե մ. թ. ա. I դարի կեսից մինչև մ. թ. I դարի կեսը հիմնականում գերակշռում է հռոմեական ազդեցությունը, ապա մ. թ. 63 թվականից սկսած, երբ հայկական գահը զբաղեցնում է պարթև Արշակունի հարստության ներկայացուցիչ Տրդատ Ա-ը, գերակշռությունն անցնում է պարթևներին։ Սակայն միևնույն ժամանակ Տրդատ Ա-ից փաստորեն սկիզբ է առնում Արշակունի դինաստիայի մի նոր ճյուղ, որը հայանում է և թագավորում Հայաստանում մինչև 428 թ.։

Հայ ժողովրդի կազմավորման և նրա պետականության զարգացման ու տնտեսական վերելքի հետ մեկտեղ ձևավորվում էր նրա մշակույթը իր հատկանշական գծերով։ Այն սկզբնավորվում է Հայկական լեռնաշխարհի հնագույն բնիկ ցեղերի ու ժողովուրդների, մասնավորապես խուրրի-ուրարտական տարրի, ինչպես և հնդեվրոպական եկվոր տարրի մշակույթների համաձուլման պարագաներում, և այնուհետև անցնում ներքին զարգացման ու հարստացման ուղի, նաև փոխհարաբերությունների ու փոխազդեցությունների մեջ մտնելով նախ իրանական և ապա հունական մշակույթների հետ։ Վերջինիս ներգործմամբ մ. թ. ա. III—I դարերում ողջ Առաջավոր Ասիայում ստեղծված ու ծաղկած այսպես կոչված հելլենիստական մշակույթը իր ոլորտի մեջ է առնում նաև Հայաստանը։ Տեղական բազմադարյան ու հարուստ և հունական առաջատար մշակութային ձևերի միաձուլումը հանգեցնում է այստեղ նոր մշակույթի առաջացման, որն իր արտահայտությունն է գտնում կյանքի բազմաթիվ՝ թե նյութական և թե հոգևոր բնագավառներում, բայց սպասարկում է հիմնականում իշխող դասակարգերին և քաղաքային բնակչությանը։ Թեև նրա ներթափանցումը բուն ժողովրդի ընդերքը համեմատաբար թույլ էր (ժողովուրդն ապրում էր պատմության ավելի խորը շերտերից եկող իր հնամենի սովորույթներով), այնուամենայնիվ, հելլենիստական մշակույթի դերը Հայաստանի հետագա պատմության մեջ խոշոր եղավ։ Նրա գոյությամբ էր նշանակալից չափով պայմանավորված հետագայում քրիստոնեության մուտքը և հաստատումը Հայաստանում, և նրա հիմքի վրա էր, որ գոյացավ ու իր ծաղկմանը հասավ հայկական միջնադարյան հոյակապ մշակույթը։

* * *

Հատորը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով. Առաքելյան Բ. Ն., Դյակոնով Ի. Մ., Երեմյան Ս. Տ., Խանզադյան Է. Վ., Հարությունյան Ն. Վ., Մարտիրոսյան Հ. Ա., Մուշեղյան Խ. Ա., Պիոտրովսկի Բ. Բ., Սահինյան Ա. Ա., Սարգսյան Գ. Խ., Սարդարյան Ս. Հ., Տիրացյան Գ. Ա.։ Մատենագրությունը և անվանացանկերը կազմել է Ս. Ս. Կոստանյանը։

Ս. ԵՐԵՄՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱՇԽԱՐՀԸ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԸ

*Աշխարհագրական միջավայրը հասարակության նյութական անհրաժեշտ պայմաններից մեկն է և որոշակի ազդեցություն է թողնում հասարակության զարգացման վրա։ Ուսումնասիրվող հասարակության տերիտորիայի բնական հարստությունները, կլիմայական և լեռնա-աշխարհագրական պայմանները, բուսական ու կենդանական աշխարհը, նյութական հուշարձանների հետ մեկտեղ պատմաբանի հետազոտության անքակտելի մասն են կազմում։*

*Հասարակության կյանքում աշխարհագրական միջավայրի որոշակի դերն ընդունելով հանդերձ պետք չէ գերագնահատել այն։ Եթե մարդկության կյանքի հնագույն ժամանակներում աշխարհագրական գործոնն ուներ բացառիկ կարևոր նշանակություն, ապա հետագայում գիտության և տեխնիկայի բուռն զարգացման պայմաններում այն հետզհետե նվազում է։*

*Մարքս-լենինյան պատմագիտությունը պատմության ողջ ընթացքը դիտում է որպես մի պրոցես, որի ընթացքում մարդն աստիճանաբար ազատագրվում է զարգացման նախնական փուլերում իր վրա բնական միջավայրի ունեցած ազդեցությունից։ Իր գործունեությամբ մարդը փոխում է բնական միջավայրը, և վերափոխելով այն, փոխվում է նաև ինքը։ Ուստի հասկանալի է, թե ինչ խոշոր նշանակություն ունի Հայկական լեռնաշխարհի բնա-պատմական պայմանների ուսումնասիրությունն այն տերիտորիայի, որտեղ կազմավորվել և իր պատմական կյանքն է կերտել հայ ժողովուրդը։*

*Հայ ժողովրդի պատմական կյանքը ընթացել է երեք հիմնական տերիտորիաների վրա՝ Մեծ Հայքում, Փոքր Հայքում և Կիլիկիայում։ Մեծ Հայքը կամ բուն Հայաստանը ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից իրենից ներկայացնում է մի առանձին ռեգիոն*[1]*, որի հետ և կապված է հիմնականում հայ ժողովրդի պատմական բախտը, ուստի մենք կանգ ենք առնում Հայկական լեռնաշխարհի և նրա շարունակությունը կազմող Փոքր Հայքի պատմա-աշխարհագրական բնութագրի վրա։ Հետագա հատորներում համապատասխան բաժնում կխոսվի նաև Կիլիկիայի բնապատմական պայմանների մասին։*

*Հին Հայաստանի քաղաքական սահմանները, սկսած մ. թ. ա. 5-րդ դարից, ենթարկվել են փոփոխությունների, սակայն հայ ժողովրդի հիմնական զանգ-*

---

1 *Տե՛ս* Физико-географический атлас мира, М., 1964, *էջ 116։*

*վածը հազարավոր տարիներով ապրել է Հայկական լեռնաշխարհում, որտեղ պատվել է նրա պատմության անիվը և կերտվել նրա դարավոր մշակույթը։*

*Հայաստանի տերիտորիան բավական առանձնացած, ընդարձակ լեռնային զանգված է, որն իրենից ներկայացնում է սառած լավայից կազմված մեծ ու փոքր սարահարթերի, լեռնային գոգահովիտների և կիրճերի մի ամբողջ սիստեմ, բաժանված ներքին լեռնաշղթաներով։ Բարձրաբերձ լեռնագագաթների կողքին այստեղ կարելի է տեսնել ցածրավայրեր, որոնք իջնում են մինչև 700 մետր*[2]*։ Գ. Աբիխի*[3] *կլասիկ աշխատությունների հրատարակումից ի վեր լեռնային այս զանգվածը կոչվում է Հայկական լեռնաշխարհ* (Армянское нагорье, Das armenische Hochland *կամ* Bergland, Plateau arménien, The Armenian highland)։

*Հայկական լեռնաշխարհը ալպիական-հիմալայան լեռնային կառուցվածքների սիստեմի օղակներից մեկն է։ Նա գտնվում է Իրանական և Փոքրասիական բարձրավանդակների միջև, գրավելով ավելի քան 300.000 քառ. կմ*[4]*։*

*Այս լեռնաշխարհը գտնվում է Առաջավոր Ասիայի հյուսիսային մասում և գրավում է հյուսիսային լայնության 37°-ից մինչև 41°30 և արևելյան երկայնության (Գրինվիչից) 38°-ից մինչև 47°30 ընկած տարածությունը։*

*Հայկական լեռնաշխարհի դիրքը, նրա լեռնագրական և մորֆոլոգիական ինքնատիպությունը ցույց է տալիս, որ այն յուրահատուկ ռեգիոն է Հարավ-արևմտյան Ասիայի բարձրավանդակների սիստեմում։ Ինչպես հարևան բարձրավանդակներում, այնպես և այստեղ, անջատվում են ներքին լայնարձակ սարահարթեր և գոգավորություններ ու նրանց եզրափակող բարձրադիր լեռնաշղթաներ։ Այնուհանդերձ Հայկական լեռնաշխարհը պահպանում է իր ինքնատիպությունը։ Հայկական լեռնաշխարհը ներկայացնում է ներքին հրաբխային սարահարթերի և նրանց հարող ծալքաբեկորավոր լեռնային կառուցվածքների մի բարդ սիստեմ, որն անհամեմատ ավելի բարձր է տեղադրված, քան նրա հարևան Իրանական և Փոքրասիական բարձրավանդակները*[5]*։*

*Եզրային լեռների հյուսիսային*[6] *և հարավային*[7] *աղեղները երեք տեղ հավաքվում են, կազմելով լեռնային հանգույցներ. Պամիրը, Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը Հայաստանում և Արևմտյան Փոքր Ասիան։ Այդ աղեղների հավաքման տեղերն էլ հենց միմյանցից բաժանում են հյուսիսային ու հարավային եզրային լեռների աղեղների միջև ընկած երեք մեծ լեռնաստանները՝ Իրանական, Հայկական և Փոքրասիական (կամ Անատոլիական) բարձրավանդակները։ «Պարսկաստանի, Հայաստանի և Փոքր Ասիայի սարահարթերը*

---

[2] *Տե՛ս А. Гукасов,* Основные черты строения Армянского нагорья, ЗКОИРГО, *հատ.* XXIII, *պրակ* 1, СПб, 1901.

[3] *Տե՛ս Г. Абих,* Геология Армянского нагорья, Западная часть, ЗКОИРГО, *հատ.* XXI, 1899. Восточная часть, ЗКОИРГО, *հատ.* XXIII, 1902, passim.

[4] *С. П. Бальян,* Структурная геоморфология Армянского нагорья и окаймляющих областей, Ереван, 1969, *էջ 13։*

[5] *Նույն տեղում։*

[6] *Հինդուքուշ—Խորասանի լեռներ—Էլբուրս—Ղարա-Դաղ—Փոքր Կովկաս—Պոնտոսի լեռնաշղթա—Բյութանիայի լեռներ։*

[7] *Հինդուքուշ—Աղային լեռնաշղթա—Հարավ-իրանական լեռներ—Զագրոս—Հայկական Տավրոս—Կիլիկյան Տավրոս—Լիկիական Տավրոս։*

չափավոր բարձրության տափակ բարձունքների մեկ ընդհատվող սիստեմի մասերն են, որոնք մեծ պատնեշի նման ձգվում են ողջ Ասիայի երկարությամբ, կապելով Արևելքը Արևմուտքի և Արևմուտքը՝ Արևելքի հետ»[8]։

Հյուսիսից և արևելքից Հայկական լեռնաշխարհը եզրագծվում է Պոնտոսի լեռնաշղթայով և մասամբ Փոքր Կովկասի ծալքավոր բնույթի լեռնային սիստեմներով, հարավից՝ Հայկական Տավրոսի բեկորային կառուցվածքի լեռներով։ Արևելքում Ղարա-Դաղ լեռնաշղթայի և Կապուտան (Ուրմիա) լճի գոգավորության վրայով Հայկական լեռնաշխարհն աննկատելիորեն ձուլվում է Իրանական բարձրավանդակի հետ։ Արևմուտքում Հայկական լեռնաշխարհը միանում է Անատոլիային կամ Փոքր Ասիային Անտիտավրոսի և Անտիպոնտոսի լեռներով, որոնք ձգվում են Կիլիկյան Տավրոսից դեպի հյուսիս-արևելք, ընդհուպ մինչև Պոնտական լեռնաշղթան, իր մեջ ընդգրկելով նաև Փոքր Հայքը։ Անտիտավրոսի և Անտիպոնտոսի միակցման շրջանը իրենց բարձրադիր Մնձուրի և Մերջանի լեռնազանգվածներով, ստացել է Երզնկայի լեռնային հանգույց անունը[9]։

Հայկական լեռնաշխարհն ընկած է Իրանական և Անատոլիական բարձրավանդակների միջև և տարբերվում է նրանցից իր բարձր դիրքով։ Անատոլիան կամ Փոքրասիական թերակղզին իր կենտրոնական մասում ունի ծովի մակերևույթից 700—1200 մետր միջին բարձրություն, իսկ Հայաստանին սահմանակից Իրանական Ադրբեջանը գտնվում է ծովի մակերևույթից 1400 մետրից ոչ ավելի բարձրության վրա[10]։ Ավելի ցածրադիր են հյուսիսից, արևելքից և հարավից եզերող Վրաստանը, Ադրբեջանը և Միջագետքը։

Հայկական լեռնաշխարհը մի բարձրադիր զանգված է Հյուսիսային Անդրկովկասի՝ Ռիոնի և Կուրի դաշտավայրերի և Հյուսիսային Միջագետքի (Հայկական Միջագետքի) հարթավայրերի միջև։ Հայկական լեռնաշխարհի բացարձակ բարձրությունը տատանվում է ծովի մակերևույթից 400-ից 5156 մ.[11]։ Շրջակա երկրներից նրա ավելի բարձր լինելը Կ. Ռիտտերին իրավունք հիմք է տվել Հայկական լեռնաշխարհն անվանել «լեռնային կղզի» (Berginsel)[12]։

Շրջակա երկրների նկատմամբ Հայկական լեռնաշխարհի բարձրությունը արդյունք է նրան շրջափակող հնագույն զանգվածների կառուցվածքների տեկտոնական իջեցումների և ընդհակառակը՝ բուն Հայկական լեռնաշխարհի բարձրացումների։ Այս երևույթների հետևանքով գոյացել են Կողքիսի (Ռիոնի դաշտավայրը) և Մերձկասպյան ցածրավայրերը հյուսիսում ու արևելքում և Միջագետքինը՝ հարավում։ Դա պետք է տեղի ունեցած լիներ երրորդական դարաշրջանում, կայնոզոյան էրայի սկզբում[13]։ Սալքագոյացման այս շրջանում էլ հենց Հայկական լեռնաշխարհը առանձնացել է հարևան երկրներից որպես յու-

---

[8] *Х. Ф. Б. Линч,* Армения. Путевые очерки и этюды, т. 1, Тифлис, 1910, էջ 542—543։

[9] Տե՛ս *С. П. Бальян,* Структурная геоморфология Армянского нагорья, էջ 119։

[10] Տե՛ս *С. Н. Матвеев,* Турция (Азиатская часть — Анатолия), физико-географическое описание, М.—Л., 1946, էջ 24—27։

[11] Տե՛ս նույն տեղում, էջ 27 և *Г. Абих,* Геология Армянского нагорья, Восточная часть, հատ. I։

[12] Տե՛ս *К. Риттер,* Землеведение Азии, СПб, 1856, т. I, էջ 83։

[13] Տե՛ս *С. П. Бальян,* Структурная геоморфология Армянского нагорья, էջ 80։

*բաՀատուկ ֆիզիկա-աշխարՀագրական երկրամաս, որն ավելի սարավանդա-բարձրավանդակային ընդգծված բնույթ է ստացել Հետագա Հրաբխային գործունեության շնորՀիվ*[14]։

*Հայկական լեռնաշխարՀը երրորդական շրջանի կեսերին տրոՀվել է ալպիական ծալքայնության երկու ճյուղերով և ներկայացնում է ավելի թույլ գոտիներով միմյանցից բաժանված շրջանների մի խումբ։ Հրաբխականությունը նշանակալից դեր է խաղացել Հայկական լեռնաշխարՀի ներկայիս ռելիեֆի ձևավորման գործում և ժայթքված ապարների շրջանը գրավում է նրա զգալի մասը։*

*Հայկական լեռնաշխարՀը ինտենսիվ Հրաբխային գործունեություն է ցուցաբերել երրորդական շրջանի վերջում և չորրորդական շրջանում։ Դրա Հետևանքով Հիմնական ծալքավոր զանգվածը թաղվել է լավայի Հեղեղի տակ, որը և իր կնիքն է դրել երկրի բնության վրա։ Ըստ որում աղետալի փոփոխությունների է ենթարկվել բուսական և կենդանական աշխարՀը։ Ոչնչացել է անտառների զգալի մասը։*

*Հրաբխային գործունեության Հետևանքով երկրի մակերեսը մեծ մասամբ ալիքավոր սարավանդների բնույթ է ստացել։ Այդ լեռնադաշտերը խախտվում են այստեղ-այնտեղ վեր խոյացող կամ պակաս նշանավոր գմբեթաձև գագաթներով, Հանգած Հրաբուխներով և նրանց միջից կղզիաձև մնացած Հնագույն կառուցվածքների լեռնազանգվածներով, որոնք պատկանում են Ներքին Տավրոսի լեռնաճյուղերին՝ Այծպտկունք (Փալանթոքյան), Հայկական պարի, Մեծրաց և այլ շղթաները։ Հայկական լեռնաշխարՀի լեռնադաշտերը գերազանցապես իջած զանգվածներ են, որոնք երրորդական շրջանի վերջում զբաղեցված են եղել լճերով, իսկ այժմ ծածկված են լավաների և լճա-գետային նստվածքների Հերթափոխումների Հզոր Հաստույթներով։*

*Ծալքավոր կառուցվածքը պաՀպանել են ոչ միայն Հայկական լեռնաշխարՀը եզերող լեռնաշղթաներից շատերը, այլև լեռնաշխարՀը մեջտեղից Հատող Այծպտկունք (Փալանթոքյան)—Հայկական պարը։ ԼեռնաշխարՀը Արևմտյան Տիգրիսի ցածրավայրից անջատող Հայկական Տավրոսը կազմված է Հնագույն բյուրեղային թերթաքարերից, կրաքարերից, դոլոմիտներից և պորփյուրից։ Իսկական ծալքավոր լեռնաշղթաներ են Զագրոսի լեռները՝ ավազաքարից, մանր կրաքարից, փայլարային և կավային թերթաքարերից։ Զագրոսից Հյուսիս նրա շարունակությունն է կազմում Վասպուրականի (կամ Կոտուրի) լեռնաշղթան, որը ձգվում է միջօրեականի ուղղությամբ։ Այս լեռները կազմված են Հնագույն կրաքարային երրորդական շրջանում առաջացած բարձրություններից, առանձին Հրաբուխների շղթանով։ ԱյնուՀետև Վասպուրականի լեռները ձուլվում են Հայկական պարին, որը լայնական ուղղություն ունի։ Դերսիմի շրջանում Հայկական պարի լեռները կազմված են Հնագույն թերթաքարերից, ուշկավճային և Հնագույն երրորդական կրաքարերից, որոնք ծածկված են լավայով։ Պոնտական լեռնաշղթան կազմված է մեզոզոյան Հոսքի նստվածքային և Հրաբխային գոյացումներից*[15]։

---

[14] *Տե՛ս նույն տեղում, տե՛ս նաև* „Физико-географический атлас мира", *էջ 116*։

[15] *Տե՛ս П. М. Жуковский*, Земледельческая Турция, М.—Л., 1933, *էջ 8—9*։

*Ծալքավոր-բեկորավոր լեռնաշղթաները բարձրավանդակի հնագույն մասերն են, ուր պահպանվել է նախկին բուսական ու կենդանական աշխարհը։ Խոր կիրճերը, զառիթափ լանջերը, մերկ ժայռերը և անտառածածկ զանգվածները ծալքավոր լեռների բնորոշ հատկանիշներն են։*

**Կենտրոնական հրաբխային բարձրավանդակ:** *Ներքին լեռնաշղթաների շրջանն իր ամբողջությամբ գոյացնում է Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը։ Սա հրաբխային կուտակումների մի շրջան է իր բնորոշ հատկանիշներով՝ բարձրադիր հրաբխային զանգվածներ, հրաբխային սարավանդներ, դեպրեսիաներ։ Ահա այս լեռնագրական և մորֆոլոգիական ինքնատիպությունն է, որ շատերին իրավունք է տալիս Հայկական լեռնաշխարհը բնորոշելու իբրև «բարձրավանդակ»։*

*Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը հյուսիսից եզերում է Արսիան—Թրիալեթի լեռնային սիստեմը, իսկ հարավից՝ Հայկական Տավրոսը։ Սրանց միջև ընկած հրաբխային բարձրավանդակի միջով անցնում են Փոքր Կովկասի զանգվածի լեռները և Այծպտկունք (Փալանթոքյան)—Հայկական պարի լեռնապարերը։ Այս չորս լեռնային սիստեմները բաժանում են կենտրոնական հրաբխային բարձրավանդակը երեք մասի՝ Հյուսիսային կամ Գուգարքի բարձրավանդակ (Արսիան—Թրիալեթի և Փոքր Կովկասի լեռների միջև), Կենտրոնական բարձրավանդակ (Փոքր Կովկասի և Այծպտկունք—Հայկական պարի միջև) և Հարավային բարձրավանդակ (Այծպտկունք—Հայկական պարի և Հայկական Տավրոսի միջև)*[16]։

*Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի մակերևույթի գերիշխող ձևը սարահարթն է. դրանք ընդարձակ, միապաղաղ մակերեսներ են, ծովի մակերևույթից 1500—1800 մետր միջին բարձրությամբ։ Նրանց վրա իշխում են հրաբխային լեռնապարերը՝ առանձին զանգվածներ 3000 և ավելի մետր բարձրություն ունեցող գագաթներով։*

*Եզրային սարահարթերը իջնում են դարավանդներով և ձուլվելով հարթավայրերին կազմում լայն գոգավորություններ, որոնց ամենախոր մասը հաճախ լցված է ջրով և կազմում է լիճ (հատկապես կարևոր է հիշել Վանա և Սևանա լճերի ավազանները)։ Հայաստանի ներքին հարթավայրերից մի քանիսը, ինչպես օրինակ, Սյունիքի սարահարթը, անհարթ մակերեսով ստորիճաններ են. դա բացատրվում է նորագույն փլվածքներով (օրինակ՝ Դաղ-փիլաքյանը և Սանդուխտլին)։*

*Այս Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը հյուսիս-արևմուտքից և հյուսիս-արևելքից շրջապատված է Պոնտոսի լեռնաշղթայի ծալքավոր լեռներով և Փոքր Կովկասի լեռներով։ Հարավում այն սեղմված է Հայկական Տավրոսի ծալքավոր աղեղով և արևելքում նրա շարունակությունը կազմող Զագրոս և Ղարա-դաղ լեռնաշղթայով։ Վերջինս արևելքից եզրափակում է Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը, հատվելով Դիզափայտ լեռնապարի (Ղարաբաղի լեռներ) հետ, որը Փոքր Կովկասի հարավ-արևելյան ծայրագույն բազուկն է։ Դիզափայտի և Սյունիքի լեռներից Ղարա-դաղը բաժանված է լոկ Արաքս*

16 *Տե՛ս С. П. Бальян,* Структурная геоморфология Армянского кагорья и окаймляющих областей, *էջ 17—19*։

*(Երասխ) գետի նեղ կիրճով, որը եզերում է հարավից Գողթան գավառը, ներկայիս Օրդուբադի—Մեղրիի միջև ընկած տարածությունը։*

*Հայկական լեռնաշխարհը համեմատաբար երիտասարդ գոյացում է։ Երկրի կեղևի շարժումները նրա սահմաններում դեռևս ավարտված չեն և շարունակվում են մինչև օրս։ Դրա վկաներն են հաճախակի և ուժեղ երկրաշարժերը*[17]։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՎԱՆԴԱԿԻ ԼԵՌՆԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Լեռնագրական տեսակետից Հայկական բարձրավանդակը բաժանվում է հետևյալ մասերի.*

*I.— Հյուսիսային և արևելյան եզրային լեռնաշղթաներ.*
*ա) Պոնտական սիստեմ (հյուսիս-արևմտյան).*
*բ) Արսիան-Թրիալեթի լեռներ (հյուսիսային լեռներ)։*
*II.— Հրաբխային սարահարթերի հյուսիսային գոտի։*
*III. Փոքր Կովկասի լեռնային զանգված։*
*IV.— Հրաբխային սարահարթերի կենտրոնական գոտի։*
*V.— Կենտրոնական լեռնաշղթաներ.*
*ա) Բարձր Հայքի լեռներ.*
*բ) Այծպտկունք—Հայկական պար.*
*գ) Վասպուրականի (Կոտորի)—Հայկական (Ղարա-դաղ) լեռներ։*
*VI.— Հրաբխային սարահարթերի հարավային գոտի.*
*VII.— Հարավային եզրային լեռնաշղթաներ.*
*ա) Հայկական Տավրոսի սիստեմը.*
*բ) Մասիուս—Տուր-Աբդին լեռներ (Հայոց Միջագետքում)։*

*Հայկական լեռնաշխարհի ներքին մասը, որը կազմում է ընդարձակ Կենտրոնական հրաբխային բարձրավանդակ, հնում հայտնի էր Միջնաշխարհ անունով։ Միջնաշխարհը կտրտված է լեռներով ու հովիտներով և եզերվում է՝ հյուսիս-արևմուտքից՝ Պոնտական լեռնաշղթայով, հյուսիս-արևելքից՝ Փոքր Կովկասի լեռնային սիստեմով, հարավից՝ Հայկական Տավրոսի՝ լեռնաշղթայով և հարավ-արևելքից՝ Տավրոսի շարունակությունը կազմող Հայկական լեռներով (այժմ Սիահկուհ կամ Ղարա-դաղ)։*

*Մեծ և Փոքր Մասիսների զանգվածից սկիզբ առնելով, ձգվում է Հայկական պար լեռնաշղթան, որը Միջնաշխարհը բաժանում է հյուսիսային և հարավային մասերի։ Միջնաշխարհը, ըստ հայ մատենագիրների, ընդգրկում էր Հին Հայաստանի հետևյալ ութ նահանգները՝ Բարձր Հայք, Ծոփաց աշխարհ, Տուրուբերան, Մոկք, Վասպուրական, Սյունիք, Տայք, Այրարատ։*

*Հայկական լեռնաշխարհի ամենաբարձր կետը Մեծ Մասիս լեռնագագաթն է (5156 մ), որը միաժամանակ Առաջավոր Ասիայի բարձրագույն գագաթներից մեկն է։ Սարդար-բուլաղի թամքոցով (2688 մ) այն անջատված է Փոքր Մասիսից (3914 մ)։*

*Մեծ և Փոքր Մասիսներն իրենցից ներկայացնում են ընդարձակ հրաբխային մի զանգված, որը գտնվում է Հայկական լեռնաշխարհի գրեթե կենտրո-*

---

17 *Տե՛ս* Վ. Ա. Ստեփանյան, *Երկրաշարժերը Հայկական լեռնաշխարհում և նրա մերձակայքում, Երևան, 1964։*

նում։ Մեծ Մասիսի կատարը, 4248 մ. բարձրությունից սկսած, ծածկված է հավերժական ձյունով։ Նրա ձյունածածկ լանջը հյուսիսային կողմում կտրըված է խոր ձորակով («վիհք Մասեաց»)։ Վերջին ժամանակներս երկրաշարժի հետևանքով (1840 թ.) Մեծ Մասիսի փլվածքները կործանել են Ակոռի գյուղն ու Սուրբ Հակոբի վանքը։ Վեհաշուք Արարատը Արարատյան դաշտի հարավային սահմանն է։ Իր վիթխարիությամբ ու հոյակապ գեղեցկությամբ Մեծ Մասիսը հայ ժողովրդի բազում ավանդությունների և առասպելների նյութ է դարձել։ Հին հայերը Մեծ Մասիսը անվանում էին Ազատ Մասիս[18]։



**Մասիս սարը**

*Բիբլիական ավանդությունների վաղ քրիստոնեական մեկնիչները (4—5-րդ դար) Ազատ Մասիսը համարում էին այն սարը, որի վրա, ըստ ավանդության կանգ է առել Նոյի տապանը, ուստի այդ սարը կոչվեց նաև Արարատ (որ Ուրարտու անվան հին եբրայական տառադարձությունն է), թեև իրենք՝ հայերը մինչև օրս էլ այն կոչում են Մասիս։ Արարատ անվան հետ նույնանում է «Այրարատ»-ը, որ Հայաստանի կենտրոնական նահանգի անունն էր, և առաջացել է ուրարտների կամ ալարոդների էթնիկական անունից[19]։*

*Միջնաշխարհի շուրջ գտնվում էին եզերական յոթ նահանգները՝ Աղձնիք, Կորճայք, Պարսկահայք, Արցախ, Փայտակարան, Ուտիք և Գուգարք։*

---

18 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, կա։*

19 *Մեզ հասել է Ասորեստանյան թագավոր Սարգոն Բ-ի (722—705) տարեգրությունը, որտեղ պատմվում է մ. թ. ա. 714 թ. ռազմական արշավանքի մասին դեպի Ուրարտուի թագավորության խորքերը։ Այս տարեգրության մեջ հիշատակվում է «Արարտու» գագաթը, որը նույնացվում է այժմյան Ջուդի-դաղ լեռան հետ Կորդվաց աշխարհում։ Հիրավի, մինչև այժմ էլ շրջակա ասորի, արար և քուրդ ազգաբնակչությունը Նոյան տապանի սարը համարում է այս գագաթը։*

Պոնտական լեռները հյուսիս-արևմուտքից Հայկական լեռնաշխարհը բաժանում են Սև ծովի ափերից։ Պոնտական լեռների հյուսիս-արևելյան մասը հին հայերը կոչում էին Խաղտյաց կամ Պարխար լեռներ։ Սրանք Պոնտական լեռների ամենաանմատչելի մասերն են, այստեղ են բարձրանում Կաճկաքար (այժմ՝ Կաչքար 3937 մ.) և Վերջնբակ (այժմ՝ Վերշեմբեկ 3701 մ.) գագաթները։

Հարավում Պոնտական լեռների նշանակալից բազուկներից էր Սկիռիեսի լեռնաշղթան, որը Պոնտական լեռները կապում է Անտիտավրոսի հետ։ Սկիռիեսի լեռներում է հայտնի լեռնանցքը, որը այժմ կոչվում է Եղիղեբելար կամ Զարգախլու։ Սրանով անցնում էր Փոքր Ասիայից Հայաստան և Իրան տանող հնագույն առևտրական ճանապարհը, որը համապատասխանում է ներկայիս Երզնկա—Սեբաստիա—Գայլ գետը տանող մայրուղուն։

Արևելքում Սկիռիեսի լեռների բնական շարունակությունն է կազմում այն լեռնաշղթան, որը ջրբաժանի դեր է կատարում Արևմտյան Եփրատ և Ճորոխ գետերի ավազանների միջև։ Սկիռիեսի լեռների հետ միանալու մասում այդ լեռնաշղթան նախաքրիստոնեական ժամանակաշրջանի հայերին հայտնի էր Անահտական անունով, Աթոռ Անահտա գլխավոր գագաթով (այժմ՝ Քեշիշ-դաղ, կամ Սիպկոր-դաղ, այսինքն՝ Սուրբ Գրիգոր լեռ)։

Արևելքում այդ լեռները կոչվում են Կապույտ (Capotes, այժմ՝ Կոպ-դաղ)։ Այս լեռներում է Բռնակապան հայտնի լեռնանցքը (այժմ՝ Փիռնեկապան), որի վրայով անցնում է Կարինից Տրապիզոն տանող ճանապարհը։

Կապույտ և Տայքի լեռների միացման տեղում, որը հայերի մոտ հայտնի էր Ծաղկավետ անունով (այժմ՝ Դումլու-դաղ), Ոսկեանց գագաթի հարավ-արևելյան լանջերին գտնվում են Եփրատ գետի (Արևմտյան Եփրատ, այժմ՝ Կարա-սու) ակունքները։ Այս մասերում արդեն սկսվում են Փոքր Կովկասի լեռնաշղթաների աղեղները, որոնք անցնելով Մեծրաց (Սողանլու-դաղ) և Կարմիր-Փորակ լեռները, այնուհետև ձգվում են Մեծ Կովկասին գրեթե զուգահեռ։

Փոքր Կովկասի լեռների հյուսիս-արևմտյան մասը կազմում է Մոսխական (Աճարա-Մեսխական, հին վրացական Ղադո լեռները) լեռնապարը, որը Լիխի (Սուրամի) լեռների հետ միասին ջրբաժան է Կուր և Ռիոն (հնում կոչվում էր Փասիս) գետերի ավազանների միջև և բաժանում է Արևելյան Վրաստանը Արևմտյանից։ Մոսխական լեռները Տաշիս-Կարից սկսած (Բորջոմի կիրճը) ճյուղավորվելով դեպի արևելք ձգվում է մինչև Թբիլիսի և կոչվում է Թրիալեթի լեռնաշղթա և նրա հարավային բազուկը կազմող Կեչուտի լեռները, որոնց անկյունում ընկած է Ջավախքի լեռնադաշտը[20]։

Փոքր Կովկասի լեռների հյուսիս-արևելյան մասը երկշար է։ Սրա արտաքին շարը կազմում է Վիրահայոց լեռնապարը (վրաց. მთანი სომხითისანი), որը ճեղքում է Ձորագետ[21] կամ Դեբեդ գետը։ Այդ գետից հյուսիս գտնվում է գեղեցկատեսիլ անտառածածկ Լալվար լեռը (Լեղվար՝ 2556 մ.)։ Վիրահայոց լեռների բնական շարունակությունն են կազմում Ձորագետ և Աղստև գետերի ջրբաժան Գուգարաց լեռները, որոնց լեռնաբազուկներն են Սևորդյաց և Կայան լեռները։ Սրանցից հարավ-արևելք ձգվում են Մրղուզի լեռները, Արեգունի

---

20 Տե՛ս «Советский Союз», Грузия, М., 1967. էջ 21, 31։

21 Այժմ Ձորագետ է կոչվում Տաշրաշուր վտակը։

*շղթային զուգահեռ, որի հետ հատվելով՝ կազմում են Սևանա լիճը հյուսիս-արևելքից եզերող Քաշաթաղ (այժմ՝ Սևանի) լեռնաշղթան։ Այնուհետև Փոքր Կովկասի ջրբաժան զանգվածը՝ Սոդքի և Սյունիքի լեռներ անունով ձգվում է մինչև Երասխ գետը։ Սյունիքի լեռնաշղթայի ամենաբարձր գագաթը Կապուտջուղն է (3917 մ)։*

*Փոքր Կովկասի ծալքավոր աղեղի հյուսիսային և արևելյան լեռնաճյուղերը կազմում են Կուր և Արաքս գետերի վտակների կիրճերն ու հովիտները։*

*Քաշաթաղ լեռներից դեպի հյուսիս-արևմուտք ձգվում է անտառոտ Մըրղուզ լեռնաշղթան համանուն գագաթով (2993 մ.)։*

*Քաշաթաղ և Սոդք լեռնաշղթաների միացման վայրում բարձրանում է Ումբասար գագաթը (3373 մ.), որից [illegible] հյուսիս է ձգվում Մռավի լեռնաշըղթան Մռավասար գագաթով (3343 մ.)։ Սրա ճյուղավորությունն է կազմում դեպի հյուսիս-արևելք ձգվող Եղնասար լեռնապարը։*



Սյունյաց լեռները Գորիսի արվարձաններում

*Մռավի լեռներին գրեթե զուգահեռ ձգվում են Արցախի լեռները (այժմ՝ Ղարաբաղի լեռնաշղթան), որոնք հարավ-արևելք թեքվելուց հետո կոչվում են Դիզափայտի լեռներ, Դիզափայտ կամ Շաղախ (այժմ՝ Ջիարաթ) գագաթով (2380 մ.)։ Այս լեռնաշղթան եզրային լեռների շարունակությունն է։ Սյունիքի և Դիզափայտ լեռնաշղթաների միջև բարձրանում է Սյունիքի սարահարթը։*

*Հարավակողմում Սյունիքի լեռնաշղթայից դեպի արևելք ճյուղավորվում են Կապանի կամ Բարկուշատի լեռները Արմազ գագաթով (3392 մ.) և Բաղաց կամ Արևիքի լեռները Խուստուփ գագաթով (3216 մ.)։*

*Քաշաթաղ շղթան հատվում է նրանցից դեպի արևելք ձգվող Մռավ լեռների հետ, որից դեպի հարավ-արևելք ձգվում են Փոքր Կովկասի արտաքին շարի վերջին շղթան կազմող Դիզափայտ (Ղարաբաղի) լեռները։*

*Փոքր Կովկասի ներքին շարը տարբեր անուններով կազմում է մի ընդհանուր շղթա, որը սկիզբ է առնում Վրաստանի Թրիալեթի լեռնապարից, ապա ձգվում է հարավային ուղղությամբ՝ գրեթե միջօրեական գծով՝ Կեչուտի (այժմ՝ Ջավախքի) լեռնաշղթան։ Վերջինիս հարավ-արևելյան բազուկը ձգվում է դեպի արևելք ու միանում Փոքր Կովկասի հյուսիս-արևելյան ծալքավոր աղեղին և Սպիտակ (Փամբակ) ու Արեգունի անուններով միանում է արտաքին շարի Քաշաթաղ լեռների հետ։*

*Փոքր Կովկասի ներքին շարը Փամբակ լեռնաշղթայի բարձրագույն Մեծ Մայմեխ (կամ Ջիթահանից սար 3109 մ.) և Փոքր Մայմեխ (3091 մ.) գագաթներից շարունակվում է դեպի հարավ-արևելք, կազմելով անտառապատ Ծաղկունյաց լեռները Թեղենիս գագաթով (2812 մ.)։ Նրանից հարավ Եղվարդի սարահարթում միայնակ վեր է խոյանում Արայի լեռ գագաթը (2614 մ.)։*

*Կեչուտ լեռների արևելյան բազուկը Բազումի լեռնաշղթան է Բազումթառ գագաթով (2799 մ.), որի մոտերքում է Պուշկինի լեռնանցքը։ Սրանից հարավ, զուգահեռ շարունակվում են Սպիտակի (Փամբակի) լեռները, որոնց շարունակությունն են կազմում Ծաղկունյաց լեռները և նրանցից դեպի հարավ ձգվող Գեղամա լեռների հրաբխային զանգվածը՝ Գեղմաղանը։ Այն կազմված է մի շարք հանգած հրաբուխներից, որոնցից առավել նշանավորներն են՝ Գեղմաղան (3609 մ.), Աժդահակ (3598 մ.), Գեղ (3570 մ.) և Կարմիր (3104 մ.) գագաթները։ Գեղամա լեռների հարավային անկյունը ձուլվում է Վարգենյաց լեռնաշղթայի հետ։ Վերջինս հատվում է Սյունյաց լեռների հետ։*

*Փոքր Կովկասի ներքին շարը դեպի արևմուտք արձակում է մի լեռնաբազուկ՝ Աշոցքի լեռները և նրա ճյուղերը կազմող Եղնախաղը, որը Ջարիշատի լեռների հետ միասին կազմում է Չըլդր լճի (հայերը կոչում էին «Ծովակ հիւսիսոյ») գոգահովիտը։ Հարավ-արևմուտքում Ջարիշատ լեռները միանում են Կարմիր-Փորակ լեռնաշղթային (այժմ՝ Ալլահ-Ակբար), համանուն Կարմիր-Փորակ գագաթով (այժմ՝ Կըզըլ-Գյադուկ՝ 3022 մ.)։ Սրա մոտ էր նույնանուն լեռնանցքը (այժմ՝ Կըզըլ-Գյադուկ), որը Վանանդից տանում էր Տայք (Ճորոխ գետի ավազանը)։*

*Կարմիր Փորակի ջրբաժան բարձունքները հարավ-արևմտյան ուղղությամբ շարունակվում են Մեծրաց լեռներ անունով (այժմ՝ Սողանլու-դաղ), որի արևելյան մասը հարուստ է անտառներով։ Մեծրաց (այժմ՝ Մեզրե՝ 2305 մ.) գագաթից հարավ ձգվում է անտառոտ մի լեռնաշղթա, որն ընդհատվում է Արաքս գետի մոտ Սուրբ խաչ սարով (2074 մ.)։ Այս լեռների արևմտյան և հյուսիս-արևմտյան շարունակությունն են կազմում Ոսկյանց և Ծիրանյաց լեռները համանուն գագաթներով։*

*Այս լեռներից հյուսիս-արևմուտք տարածվում են՝ Տայքի լեռները, որոնք Ճորոխ և Եփրատ գետերի ջրբաժանն են ու հայտնի են տարբեր անուններով ու, ոսկու հանքերով հարուստ Ջորմայրի սարերը (այժմ՝ Խորտիկ-դաղ լեռները համանուն Ջորմայրի գագաթով՝ 3183 մ.)։ Նրա հարավային լեռնաբազուկներն են*

Ծորոխ գետի ակունքները։ Այս լեռնագագաթից հյուսիս-արևելք ձգվում է Մեղրաբուն լեռնաշղթան։

Սյունյաց լեռները ընդհատվում են Արաքս գետով այժմյան Մեղրի—Ագարակի մոտ և այնուհետև շարունակվում են այս գետի աջ ափից հարավ-արևելյան և արևելյան ուղղությամբ և հայտնի են Սիահկուհ կամ Ղարա-դաղ անունով։ Ստրաբոնը և այլ հեղինակներ այս շղթան անվանում են Հայկական լեռներ ('Αρμενίων ὄρη).[22]

Այս լեռները գտնվելով Արաքս գետի և Կապուտան (այժմ՝ Ուրմիա) լճի ավազանի միջև, կազմում են ինքնամփոփ բարձրադիր Ղարադաղի շրջանը, որը հին հայկական Պարսպատունիք գավառն է։ Հայկական լեռների գագաթներից հայտնի է Հաշտասարը (2954 մ.)։ Էրատոսթենեսը (276—194 թթ. մ. թ. ա.) Հայկական այս լեռներում հիշատակում է Դրունք Հայոց ('Αρμενίων πυλῶν) լեռնանցքը, որը XIV դարի հեղինակ Համդալլահ Ղազվինին անվանում է «Արմինիյան անցք»[23]։ Այս լեռնանցքից ճանապարհը տանում էր դեպի այժմյան Խուդափերինի կամուրջը, որի հյուսիսային եզրին, Երասխի ձախ ափին, գտնվում էր Սյունիքի առևտրական կենտրոն Նակորզան քաղաքը։

Կապուտան (Ուրմիա) լճից հյուսիս-արևմուտք Ղարա-դաղից անջատվում է Թոշաթաղ[24] ջրբաժան լեռնաշղթան, որը արևելքում վերջանում է Սաբալան լեռան հրաբխային բարձրագագաթ զանգվածով (4311 մ.)։

Այս լեռնաշղթաները երեք կողմից փակում են Մուղանի դաշտում Արաքսի մեջ թափվող Կարա-սու գետի (հին՝ Գառնահ) հովիտը։ Թոշաթաղ լեռնաշղթան արևմուտքում հատվում է Ղարա-դաղի շարունակության հետ, որը ջրբաժան բարձունքների սիստեմ է և եզերելով հյուսիսային կողմից Կապուտան լիճը, կոչվում էր Նոր Շիրական լեռներ։

Ղարա-դաղ և Քոշաթաղ լեռնային սիստեմներին զուգահեռ, արևելքից արևմուտք ձգվում է էլբուրսի մյուս ճյուղը՝ Սահոնդը համանուն գագաթով (3710 մ.), որոնց միջև ընկած է Կապուտան (Ուրմիա) լճի փակ ավազանը։

Կենտրոնական հրաբխային բարձրավանդակը Հայկական պարով բաժանվում է երկու մասի՝ հրաբխային սարահարթերի հյուսիսային և հարավային գոտիների։

Թրիալեթի լեռնաշղթայից հարավ սկսվում են Հայկական լեռնաշխարհի համար բնորոշ հրաբխային սարահարթերը՝ Թռեղքը (Թրիալեթի կամ Ծալկայի շրջանը) և Ջավախքը (Ջավախեթի), որոնք միմյանցից բաժանված են Սամսար (3285 մ.) հրաբխային լեռնային զանգվածով։ Նրանից հարավ գտնվում է Աբուլի հրաբխային զանգվածը (3300 մ.)։

Սամսարից հարավ, միջօրեականի ուղղությամբ ձգվում են Կեչուտի (այժմ՝ Ջավախքի) լեռները, որոնք կազմում են Ջավախք և Տաշրատափ բարձրադիր սարահարթերի շարանը։

---

22 Տե՛ս ВДИ, 1947, № 4, էջ 226, ծան. 3։ Նաև՝ Strabo, XI, 2, 15, և XI, 14, 12։

23 Այժմ Ահար քաղաքից դեպի հյուսիս գտնվող լեռնանցքը Արմինան գյուղի մոտ։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, Երևան, 1963, էջ 50, 72, 80։

24 Այս Քոշաթաղը չպետք է շփոթել Քաշաթաղի հետ։







Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի հյուսիսում վեր է խոյանում Արագած վիթխարի զանգվածը, որը Սովետական Հայաստանի ամենաբարձր կետն է և հասնում է 4090 մետրի ծովի մակերևույթից։



Արագած

Արագածը վահանաձև ուռուցիկություն է, որը ունի մոտավորապես 180 կմ. շրջագիծ։ Միջին մասում բարձրանում են չորս ժայռոտ գագաթներ, որոնք կազմում են կրկեսի ձև ունեցող հրաբխային խառնարանը։ Հավերժական ձյան տարածությունը հասնում է 5,8 քառ. կմ.։ Միայն Գեղովիտ (Գյոզալդարա) գետի ակունքներում կա ոչ մեծ սառցադաշտ։ Արագածի լանջերին կան շատ վճիտ լճակներ և հոսում են բազմաթիվ ջրառատ առվակներ։

Արագածի լանջերը հարուստ են բուսականությամբ և հնագույն ժամանակներից սկսած երկրագործական մշակույթի կենտրոններից մեկն են եղել։

Արագածի զանգվածից արևմուտք ընկած է Կարսի սարահարթը, Արչո-Առիճ հրաբխային լեռան զանգվածով (3245 մ.)։ Ժայթքված ապարներն այստեղ լցրել են Ախուրյանի (Ներկ. Կարսա-չայը) և նրա շարունակության՝ Արևմտյան Արփաչայի (որը այժմ վերստին կոչվում է Ախուրյան գետ) ու Արաքս գետի միջև ընկած ողջ տարածությունը։

Կարսի սարահարթը սկսվում է Շիրակի դաշտից արևմուտք և համապատասխանում է պատմական Վանանդ գավառին, որը, ի տարբերություն վերև գտնվող հովտի, հնում կոչվում էր նաև Անփակյտ Բասեն։

Արարատ լեռից դեպի արևմուտք ձգվում է Հայկական պարը, որը հին հայերը կոչել են «Այրարատեան լերինք» (Թուրքերը կոչում են Աղրի-դաղ)։ Հայ-

կական պարը այսպես է կոչվել մինչև Գայլատու լիճը. այնուհետև կոչվել է Շատիկ (այժմ՝ Ջաթին-դաղ), իսկ արևելյան մասը՝ գլխավոր գագաթի (3424 մ.) անունով կոչվում էր Ջրաբաշխ կամ Սուկավետ (այժմ՝ Քյոսե-դաղ), երկրորդ հայտնի գագաթն է Քոշա-սարը։

Հայկական պարի սիստեմում Ջրաբաշխ լեռների արևմտյան շարունակությունն են կազմում Այծպտկունք լեռները համանուն գագաթով (այժմ՝ Փալանթոքյան-դաղ՝ 3124 մ.)։ Այս լեռները ձգվում են մինչև Դերջանի դաշտը, դեմ առնելով Արևմտյան Եփրատի գալարին։

Արևելքում Եղբարք ջրբաժան բարձունքի միջոցով Հայկական պարը միանում է Թոնդրակ գործող հրաբխի լեռնային հանգույցին։

Թոնդրակ լեռից դեպի արևմուտք և հարավ-արևմուտք ձգվում է Նպատի լեռնային սիստեմը։ Այս լեռները Նպատ (2332 մ.)[25], Ծաղկեո (3519 մ.) և Աղի (3445 մ.) գլխավոր գագաթների անուններով տարբեր ժամանակներում կոչվել են՝ Նպատ, Ծաղկանց կամ Աղի (որից ծագում է ներկայիս Ալա-դաղ անունը)։

Նպատ լեռների հյուսիսային լեռնաբազուկները կազմում են մի փակ հովիտ, Ծաղկոտն գավառը, ուր գտնվում են Արևելյան Եփրատի կամ Արածանիի (այժմ՝ Մուրադ-չայ) ակունքները։

Նպատ սարից հարավ ձգվող լեռնաբազուկների միջև ընկած են Ապահունիք, Աղիովիտ և Առբերանի-Գառնի[26] (կամ Քաջբերունիք) գավառները։

Նպատ լեռնային սիստեմի մի շարունակությունն են հանդիսանում Վասպուրականի կամ Կոտուրի լեռները, որոնք այժմ կազմում են Թուրքիայի և Իրանի սահմանը։ Սկսվելով Թոնդրակ լեռնագագաթից, գրեթե միջօրեականի ուղղությամբ այդ լեռները ձգվում են դեպի հարավ, արևելքից եզերելով Վանա լճի փակ ավազանը։ Ջրբաժան բարձունքներով Վասպուրականի լեռները միախառնվում են Հայկական Տավրոս, Զագրոս և Հայկական (Ղարա-դաղ) լեռներին։

Հայկական պար լեռնաշղթան ձգվում է դեպի արևմուտք և հարավ արևմուտք մինչև Այծպտկունք լեռը, որի հյուսիսային փեշերին է գտնվում Կարին քաղաքը։

Այծպտկունք լեռը դեպի բոլոր չորս կողմերը ձգվող լեռնաշղթաների մի հանգույց է։ Նրանից դեպի հյուսիս-արևելք ձգվում է Ծիրանյաց (այժմ՝ Քիրեչլու) ջրբաժան լեռնաշղթան, որը միանում է Պոնտոսի և Փոքր Կովկասի լեռնային սիստեմներին։ Այծպտկունքից հարավ-արևմուտք ձգվում է Մեղեդուղխ ջրբաժան լեռնաշղթան, որը Հայկական պարը և Բարձր Հայքի լեռները կապում է իրար, որպես մի միասնական լեռնաշղթա, զուգահեռականի ուղղությամբ ձգված մինչև Արևմտյան Եփրատի գալարը Ակն քաղաքի մոտերքում։

Անտիտավրոսի և Կիլիկյան Տավրոսի լեռները ձգվում են հյուսիս-արևելյան ուղղությամբ, գրեթե միմյանց զուգահեռ։ Մոտավորապես Ակնի լայնության վրա Եփրատը ճեղքում է այդ լեռնաշղթաները, որոնք այնուհետև փոխում են իրենց ուղղությունը արևմուտքից դեպի արևելք, ստանալով միջօրեականի

---

[25] Հիշատակվում է դեռևս Հովսեպոս Փլավիոսը՝ AJ, XVIII, 51։

[26] Գառնի գավառը համապատասխանում է այժմյան Աբաղայի դաշտին։

ուղղություն և այդ մասում արդեն նրանք հայտնի են Բարձր Հայքի լեռներ անունով։ Այս լեռների շարունակությունն է կազմում Հայկական պարը, որը ձգվում է մինչև Մեծ Մասիսը։



Նեխ-Մասիք (Սիփան) գագաթը Վանա լճի հարավ-արևելյան ափից (Արտամետից)

Բարձր Հայքի լեռները ձգվում են արևելքից արևմուտք, ըստ գլխավոր գագաթների տարբեր անուններ ընդունելով՝ Պախրա, Գայլախաղուտ (այժմ՝ Բաղըր-դաղ, Պախր գագաթով՝ 3282 մ) կամ Մնձուր համանուն գագաթով (3188 մ.)։

Այս լեռների հարավային բազուկները կազմում են դժվար մատչելի, անտառոտ կիրճեր Մզուր (ներկ. Դերսիմ) և Խորձյան (ներկ. Քըղի) գավառներում։

Բարձր Հայքի լեռները զուգահեռ են Հայկական Տավրոսին, այդ պատճառով էլ հնում հայտնի էին նաև Անտիտավրոս անունով այնպես, ինչպես Կիլիկյան Տավրոսի դիմաց ընկած լեռնաշղթան թե հնում, թե այժմ կոչվում է Անտիտավրոս։

Բարձր Հայքի լեռները տարբեր անուններով ձգվում են դեպի արևմուտք մինչև Եփրատի գալարը Ակն քաղաքի մոտ։ Այստեղից շարունակվում են ծալքավոր բնույթ ունեցող Անտիտավրոս լեռները, որոնք հարավ-արևմտյան ուղղություն ունեն և հասնում են հիմնական հանգուցակետը կազմող Արգեոս (ներկ. Էրջիաս-դաղ) գագաթը, որը իրենից ներկայացնում է տիպիկ հրաբխային զանգված։ Արգեոսից հարավ Անտիտավրոսյան աղեղը ձուլվում է Կիլիկյան Տավրոսի պատնեշի հետ, որը արևմուտքից արևելք ձգվում է մինչև Եփրատի գալարը (Ծովք լճից հարավ), որը բաժանում է նրանից Հայկական Տավրոսը։

*Հյուսիսում Անտիտավրոսյան լեռները դեպի արևելք են արձակում գլխավոր ճյուղավորությունը՝ Ջիգոն-Բասիլիկոն, ինչպես այն հայտնի է «Աշխարհացոյց»-ում։ Ջիգոն-Բասիլիկոն լեռների և Կիլիկյան Տավրոսի միջև գտնվում էր Փոքր Հայքի Հարավային նահանգը՝ «Երկրորդ Հայք» անունով, որը հետագայում կոչվեց «Երրորդ Հայք»։ Այս երկրամասը կազմում է Մելաս (այժմ՝ Թոխմա-սու) գետի հովիտը Մելիտինե (այժմ՝ Էսքի-Մալաթիա) կենտրոնով։ Ռոմանդոն լեռներումն են գտնվում Պյուռամոս (այժմ՝ Ջեյխան) և Փսարոս կամ Սարոս (այժմ՝ Սեյխան) գետերի ակունքները։ Վերջինիս վտակն է Ծամընդավ գետը (ներկ. Զամանթի-սու), որը ամբողջովին գտնվում է Փոքր Հայքում և հոսում է Անտիտավրոսի արևելյան փեշերով։*



**Նեմրութ լեռը իր խառնարանով Դատվանի լավային դաշտից**

*Անտիտավրոսից հյուսիս գտնվող Փոքր Հայքի մասը հյուսիսից եզերված է Պոնտական լեռներով և ընդգրկում է Լյուկոս կամ Գայլ-գետի (այժմ՝ Գելգիտ-չայ) ավազանը դրեթե ամբողջովին մինչև Նեոկեսարիա (այժմ Նիկսար քաղաքը)։ Փոքր Հայքումն է գտնվում նաև Իրիս գետի վերին հոսանքը։ Սակայն Փոքր Հայքի կենտրոնական մասն էր Հալիս գետի (ներկ. Կըզըլ-ըրմակ) վերին հոսանքի հովիտը, որտեղ գտնվում էր Սեբաստիա (այժմ՝ Սըվազ) քաղաքը։*

*Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի հարավային գոտում վեր է խոյանում հավերժական ձյունով ծածկված Նեխ-Մասիք կամ Ծիպան (այժմ՝ Սիփան, 4434 մ.) հանգած հրաբուխը։ Իր բարձրությամբ Նեխ-Մասիք լեռը զիջում է միայն Մեծ Մասիսին։ Փավստոս Բյուզանդը այն կոչում է «Մեծ լեառն Մասիք»[27]։*

*Նեխ-Մասիք զանգվածից հարավ-արևմուտք գտնվում է Նեմրութ կամ Նեբրովթ (3050 մ.) հանգած հրաբուխը Բզնունիք գավառում։ «Աշխարհացոյց»-ի վկայությունից երևում է, որ հին հայերը այդ լեռն անվանել են Սարակն։*

27 Փավստոս, Գ. ի։

*Նեմրութ հրաբուխն ունի ամենամեծ խառնարաններից մեկն աշխարհում։ Այս լեռան բազալտե խառնարանի շրջագծի երկարությունը 25 կմ. է, պատերի բարձրությունը 150—400 մ.։ Այդ պատերը ջարդվածքներ չունեն և կազմում են գրեթե ուղիղ շրջան 8 կմ. տրամագծով*[28]*։ Նեմրութի խառնարանն իր մեծությամբ զիջում է միայն Օրեգոն խառնարանային լճին՝ Հյուսիսային Ամերիկայի Կասկադյան լեռներում։*

*Նեմրութը գոյացել է չորրորդական շրջանում և մեկուսացրել Վանի գոգահովիտը Տարոնի (Մշո) դաշտից, դրանով իսկ ստեղծելով փակված ջրավազան։ Նեմրութի վերջին ժայթքումը տեղի է ունեցել 1441 թվականին։*

*Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի հարավային գոտու երրորդ հրաբխային զանգվածը Սերմանց կամ Բյուրակն (ներկ. Բինգյոլ՝ 3650 մ.) լեռան ընդարձակ զանգվածն է, որը Ստրաբոնն անվանում է Աբոս։*

*Հրաբխային ժայթքումները լցրել են գոգահովիտները, կազմելով Բյուրակնի լանջերի զառիվայր, թեթև ալիքավոր մակերեսը, լավայի շերտով ծածկված իր կլորավուն բլրակներով։*

*Հրաբխային լավայով ծածկված Բյուրակնը տարածվում է դեպի բոլոր կողմերը. այն խիստ փորփրված մի զանգված է։ Այդ զանգվածի հարավային ծայրամասերը հասնում են մինչև Արածանիի հովիտը, կազմելով հարավարևմուտքում Կոհեր*[29] *լեռները, իսկ հարավում լեռնային մի բարձունք Քարքե և Հավատամք գագաթներով։*

*Հյուսիսային կողմից Բյուրակն զանգվածը հասնում է մինչև Կարին (էրզրում) և Բասեն, Մեղեդուղխ ջրբաժան լեռների և Այծպտկունք լեռնագագաթի միջոցով։ Հյուսիս-արևելքում Բյուրակնը աննկատելիորեն միանում է լեռնային այն բարձունքներին, որոնք կազմում են Մարդաղի (Շուշար, Թեքման), Դասնավորք (Նախորդից արևելք), Տուարածատափ (Ղարայազ), Դալառ (էլմալիդերե) և Վարաժնունիք (Խնուս) գավառները։*

*Բյուրակն զանգվածը ժողովրդի մեջ հուշակված է որպես հազար ակնանի, անթիվ անհամար լճակների ու ջրափոսերի առկայության պատճառով. դրանք գոյանում են հաստ ձյունածածկոցի հալվելուց։ Բյուրակնի հյուսիսային լանջից, այդպիսի մի փոքրիկ լճակից է սկիզբ առնում Արաքս (Երասխ) գետը։*

*Հին հայերը Բյուրակն լեռը կոչում էին Սերմանց և համարում էին Հայաստանի ամենաբարձր կետը, որտեղից սկիզբ են առնում բոլոր գլխավոր գետերը։ «Աշխարհացույց»-ի հեղինակը Սերմանցը կոչում է «...կատար երկրի, յորմէ յոյժ բղխեն աղբիւրք»*[30]*։*

*Կիլիկյան Տավրոսը Եփրատի ձախ ափից փոխվում է Հայկական Տավրոսի, որը արևելքում ձուլվում է Զագրոսի ծալքավոր լեռնային սիստեմին։*

*Հնում այդ լեռնաշղթան կոչվել է պարզապես Տավրոս։ Նեղ իմաստով այդ անունը վերաբերում էր լեռնաշղթայի արևմտյան մասին, ուր գտնվում են Տիգրիս գետի ակունքները։ Արևելյան մասը, որն հարավից եզերում է Վանա լիճը,*

---

28 *Տե՛ս Х. Ф. Б. Линч,* Армения. Путевые очерки и этюды, т. II, Тифлис, 1910, *էջ 392։*

29 «Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան՝ *Պատմութիւն տիեզերական», Գ. իգ, ՍՊԲ, 1885, էջ 276։*

30 Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 107։*

հ*ամապատասխանում է Ռշտունյաց լեռներին, որոնք Փավստոս Բուզանդը անվանում է «Լեառն երկաթահատացն և կապարահատացն»[31]. գլխավոր գագաթը Ընձաքիարս էր կոչվում։*



Տիպիկ բարձրլեռնային սարահարթերի լանդշաֆտ Հայկական լեռնաշխարհում

*Հայկական Տավրոսի միջին մասը, որը հին հայերը կոչում էին «լեառն Տաւրոս որ է Սիմ»[32], ունի Սիմսար (2689 մ.), Անդոքասար (2830 մ.), Ծովասար, Մարութա-սար (Մարաթուք՝ 2150 մ.) գագաթները։ Սիմ լեռների հարավային լեռնաբազուկները Սանասուն (Սասնո) և Սալնա[33] լեռները կազմում էին Սանասուն կամ Սասուն և Սալնաձոր գավառները։ Այդ լեռնաշղթայի արևելյան մասը կոչվում է Խութ (Խոյթ)[34] և կազմում համանուն գավառը։*

*Խութի և Սասունի լեռնաբազուկները իջնում են դեպի հարավ, ձուլվելով Աղձնիքի հարթավայրի հետ։ Աղձնիքի նահանգը հարավից եզերում է Արևմտյան Տիգրիս գետը, որը Հայկական լեռնաշխարհը սահմանազատում էր Միջագետքից։*

*Սիմ լեռնաշղթայի արևմուտքում և արևելքում կային հայտնի լեռնանցքներ՝ Կղեսուրք[35], արևմուտքում՝ Օլոր[36] գյուղի մոտ, իսկ արևելքում՝ Բաղեշի մոտ* (ἡ κλεισοῦρα Βαλαλείσων)[37], *որ հայերն անվանում էին Ջորապահակ*

---

31 Փավստոս, Գ, *Ժ*։

32 Խորենացի, Բ, *Ը*։

33 Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 114*։

34 Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց, ՍՊԲ, 1887, էջ 118. «...յաւեր դարձուցեալ զԲնաշխարհն, բայց ի լեռնայնոցն՝ որ յամուրս իւրեանց մնային ի լերինն Խոյթ անուանեալ»*։

35 Խորենացի, *Բ, Ը*։

36 Ղ. Ինճիճեան, *Ստորագրութիւն հին Հայաստանեայց. Մեծ Հայք, Վենետիկ, 1822, էջ 44*։

37 *Georgius Cyprius*, Descriptio orbis Romani, Lipsiae, 1910, էջ *46—48*։

(այժմ՝ Ռահվա, Բաղեշի լեռնանցք)։ Այս երկու լեռնանցքներով էին հաղորդակցվում Հայաստանի ներքին շրջանները հարավի՝ Աղձնիքի և Հայոց Միջագետքի հետ։ Երրորդ Կղեսուրքը գտնվում է այնտեղ, ուր այժմ անցնում է Արղնի—Խարբերդ (Արղանա—Մադեն) երկաթգիծը։



Զորա պահակ (Բաղեշի լեռնանցքը)

Արևմտյան Տիգրիսի ակունքների շրջանում գտնվող լեռնանցքների այս սիստեմն ուներ մեծ ռազմա-ստրատեգիական նշանակություն։ Արտաշեսյանները և Արշակունիները, իսկ հետագայում Բյուզանդիան և Արաբական խալիֆայությունը, այս անցքերին հատուկ ուշադրություն էին դարձնում։ Այս լեռնանցքներում գոյություն ուներ ամրությունների մի ամբողջ սիստեմ, որոնք հսկում էին այստեղ մշտապես բնակություն հաստատած կայազորները։

Բաղեշի լեռնանցքներից արևելք, խիտ անտառներով ծածկված Ռշտունիքի լեռները հյուսիսից եզերում են Մոկք գավառը և ունեն Առնոս (3550 մ.) և Արտոս (3475 մ.) գագաթները։ Ջրբաժան Կանգուարի լեռնաշղթայով Հայկական Տավրոսը կապվում էր Կորդվաց լեռների հետ Աքաղայու կատար կամ Ականիք գագաթի (ներկ. Մերքեզ-դաղ՝ 3350 մ.) մոտ. Սրանից հարավ գտնվում են Արևելյան Տիգրիսի կամ Ջերմ գետի (այժմ՝ Բոհտան-սու) ակունքները, որոնք եզերող լեռները անտիկ հեղինակները անվանում են Niphates—Նպատ։ Սա հարավային Նպատն է։

Կորդվաց լեռները ձգվում են Տիգրիս գետի մոտից տարբեր անուններով՝ բուն Կորդվաց, Ագարակի, Աղբակի լեռներ և Մեծ Զար գետի ակունքների մոտ միանում Զագրոս լեռնաշղթային ու Նոր-Շիրականի լեռնային ջրբաժան բարձունքին, որը այդ մասում Կապուտան (Ուրմիա) լճի գոգավորությունը բաժանում է Արաքս գետի ավազանից։ Նոր-Շիրական լեռները արևելքում միանում են Հայկական (Ղարա-դաղ) լեռներին։

*Տիգրիսի վերին հոսանքի շրջանը, որը կազմում է Աղձնիք հայկական նահանգը, հարավից եզերվում է Մասիոս լեռնապարով (կոչվում է նաև Իզալա և Տուր-Աբդին)։ Այս լեռնապարի առավել հայտնի գագաթներն են՝ Աշիմունը (այժմ՝ Ղարաչա-դաղ՝ 1919 մ.) և Բեմադա կամ Իզալա (նախորդից հարավ ընկած անանուն լեռը՝ 1520 մ.)։ Մինչև մ. թ. 37 թվականը Մեծ Հայքի հարավային սահմանը Միջագետքում անցնում էր այս լեռներով, ուստի սրանից հյուսիս գտնվող երկրամասը կոչվում էր* Միջագետք Հայոց:

*Հայկական Տավրոսը Ղարա-դաղ լեռների հետ կապող օղակը Զագրոս ընդարձակ լեռնային սիստեմի հյուսիսային հատվածն է, որը Հայաստանի մասում անտիկ հեղինակներն անվանում էին նաև Նպատ։ «Աշխարհացոյց»-ում Զագրոսն անվանվում է Կոհ ի Նիհորական։ Այս մասում Զագրոսի լեռնաշղթան հանդիսանում է Կապուտան (Ուրմիա) լճի գոգահովտի արևմտյան սահմանը և ունի մի քանի լեռնային անցքեր, որոնք այդ լճի ավազանից տանում են դեպի Հայաստանի ներքին գավառները։ Դրանցից հատկապես հայտնի են Սուրբ Խաչ (այժմ՝ Խանասոր) և Զարասպ (այժմ՝ Կելիշին) լեռնանցքները։ Կելիշինի լեռնանցքով էր անցնում Միջագետքից դեպի Հայաստան և Մարաստան տանող ճանապարհը։ Այդ լեռնանցքը գտնվում է Զարասպ լեռան հարավային լեռնաբազուկներում, որտեղից սկիզբ է առնում Մեծ Հայքի պատմական տերիտորիայի սահմանը կազմող Արասխ (այժմ՝ Գետառ-սու) գետը, որը թափվում է Կապուտան լիճը։ Զարասպ լեռը պատմական Հայաստանի ամենահարավային կետն էր։*

*Զագրոս լեռնաշղթան Իրանը բաժանում է Միջագետքից և հյուսիսում, Կապուտան (Ուրմիա) լճի շրջանում, ձուլվում է Հայկական Տավրոսին, կազմելով մի աղեղ, որի մեջ պարփակված է Վանա լճի փակ ավազանը։*

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԵՏԵՐՆ ՈՒ ԼՃԵՐԸ

*Հայկական լեռնաշխարհի բարձրավանդակը հանդիսանում է Առաջավոր Ասիայի գլխավոր գետերի ջրբաժանը։ Գետերը սնող հիմնական աղբյուրներն են՝ բարձր լեռնագագաթների ձյունոտ լանջերն ու կիրճերը, որտեղ ձյունը կուտակված է մնում տարվա մեծ մասը (հին հայերը ձյան այս կուտակումները կոչում էին «քամ») և բարձր լեռնային շրջաններում տեղացող անձրևները և աղբյուրները՝ ստորգետնյա ջրերը։ Կան և սեզոնային գետեր, որոնք ծնվում են ձյունհալքից կամ լեռներում տեղացած հորդ անձրևներից գոյացած հեղեղներից՝ «սելավներից»։*

*Առաջավոր Ասիայի ամենամեծ գետն է Եփրատը (2700 կմ), որը Հայկական լեռնաշխարհի տերիտորիայով հոսում է 600 կմ.։ Եփրատը գոյանում է երկու գետերի միախառնումից՝ բուն Եփրատ կամ Արևմտյան Եփրատ (այժմ՝ Կարա-սու) և Արածանի կամ Արևելյան Եփրատ (այժմ՝ Մուրադ)։ Կապան-Մադեն քաղաքից հյուսիս այս երկուսը միանում և կազմում են Եփրատ գետը։*

*Արևելյան Եփրատը հին հայերը անվանում էին Արածանի կամ սոսկ Եփրատ։ Այս գետը ասուրա-բաբելական բնագրերում և անտիկ հեղինակների մոտ հայտնի էր* Arsania *անունով։*

*Արևմտյան Եփրատի ակունքները Ծաղկավետ կամ Կապույտ լեռնաշղթայի հարավային լեռնաբազուկներում են, ավելի ճիշտ՝ Ոսկեանց լեռան հարավ-արևմտյան լեռնաբազուկներում։ Այս գագաթից իջնող առվակները կազմում են ալպիական մի լճակ, անշարժ հայելանման մակերեսով։ Այստեղից բխում է մի գետակ, որի արծաթագույն ժապավենը գալարվում է կանաչ մարգագետինների միջով, բայց Կարինից հյուսիս գետի հոսանքը դանդաղում է և գոյանում Շամբ Կարնո ճահիճը[38], որտեղից արդեն Եփրատի ջուրը դառնում է պղտոր, այդ պատճառով էլ ներկայիս բնակիչներն այն կոչում են Կարա-սու (Սև ջուր)։ Այնուհետև գետը հոսում է արևմտյան ուղղությամբ։*

*Կարին գավառում Արևմտյան Եփրատը հանդարտորեն հոսում է դեպի արևմուտք, ապա աջից ընդունելով Սարշամա վտակը, մինչև Դերջանի դաշտը դուրս գալը հոսում Շողանի ձորի կիրճով։ Դերջանի դաշտից, պտույտներ անելով, հոսում է դեպի հարավ։ Այստեղ ձախից նրան է խառնվում Մանանաղի (այժմ՝ Թուզլու-չայ) վտակը և Եփրատը մտնում է մի նեղ կիրճ, որտեղից նորից թեքվում է արևմուտք և շուտով կրկին դուրս գալիս դաշտը՝ Երզնկայի դաշտը (Եկեղյաց կամ Անահտական գավառ)։ Դարանաղի գավառում Եփրատը կրկին հոսում է խոր կիրճով և Ակնից ցած թեքվում դեպի հարավ, միշտ հոսելով կիրճի միջով մինչև Արևելյան Եփրատին կամ Արածանիին միանալը։*

*Արևելյան Եփրատը կամ Արածանին սկիզբ է առնում Նպատ կամ Ծաղկանց լեռներում։ Այս գետի ակունքները գտնվում են Ոսկիք վայրում, ներկայիս Դիադինից հարավ-արևմուտք[39]։*

*Արածանիի առաջին մեծ վտակը Բագրևանդ[40] (այժմ՝ Շարիան) գետն է, որը հնում խառնել են Եփրատ-Արածանիի հետ։ Բագրևանդ գետը սկիզբ է առնում Ջրաբաշխ լեռնապարի մասը կազմող հրաբխային զանգվածից։*

*Սկզբում Եփրատ-Արածանին արևմտյան ուղղություն ունի, բայց արևմըտյան կողմից Բագրևանդ վտակն իր մեջ առնելուց հետո թեքվում է հարավ-արևմուտք ու մտնում կիրճի մեջ։ Մանազկերտի մոտ դուրս է գալիս արձակ տարածություն և հանդարտ հոսում Հարքի (Բուլանըխ) և Տարոնի (Մուշ) դաշտերով։ Ձախից նրա առավել նշանավոր վտակներն են Կորո ձորը (այժմ՝ Քոր-սու) և Մեղ կամ Մեղրագետը (այժմ՝ Կարա-սու)։ Այնուհետև Արածանին հյուսիսից շրջանցում է Հայկական Տավրոսի աղեղը, շառաչյունով հոսելով խոր կիրճի միջով մինչև Բալու քաղաքը։ Ապա գետը հոսում է Խարբերդի արգավանդ դաշտով։ Եփրատ-Արածանին կարևոր վտակներ ունի աջ կողմից. դրանք են՝ Բագրևանդ, Խնուս, Բյուրակն, Գինեկ և Գայլ (բաղկացած է երկու հիմնական վտակներից՝ Գայլ և Միւս Գայլ) գետերը։*

*Արևելյան Եփրատ-Արածանին միախառնվում է Արևմտյան Եփրատին Լուսաթառիճ (ներկ. Կապան-Մադեն) քաղաքի մոտ։ Դրանից հետո Եփրատը հոսում է դեպի հարավ նեղ կիրճի միջով։ Առաջացնելով անանցանելի սահանք-*

---

38 Խորենացի, Գ, ԺԲ։

39 Փավստոս Բ, ԺԴ։ *«Աշխարհացոյց»-ում կարդում ենք. «Եւ Արածանի զսկիզբն ունի ի Ծաղկոտնէ, ի տեղւոջէն, որ կոչի Ոսկիք, և գնալով ընդ հիւսիսի պատելով զնպատական լերամբն՝ առ Բագաւան գեղւոյն, խառնի ի Բագրեւան[դ] գետ»։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 110։*

40 *Տե՛ս նույն տեղում։*

ներ, նեղ ձորով ճեղքում է Տավրոսը, հետզհետե մտնելով Միջագետքի ցածրավայրը։ Այս մասում Եփրատի ամենանշանավոր վտակներն են՝ Կառամինոն (այժմ՝ Թուղլու-չայ) գետը, որը իջնում է Ջիգոն-Բասիլիկոն լեռներից, և Մելաս (այժմ՝ Թոխմա-սու), որը սկիզբ է առնում Անտիտավրոս լեռներում, կտրում է Փոքր Հայքը և աջ կողմից, Մելիտինե քաղաքից ոչ հեռու թափվում Եփրատի մեջ։

Եփրատի նման Տիգրիսը ևս գոյանում է երկու գետերի՝ Արևմտյան կամ բուն Տիգրիսի և Արևելյան Տիգրիսի կամ Ջերմի (այժմ՝ Բոհտան-սու) միախառնումից։

Տիգրիս կամ Դղկաթ (Դիջլե) գետը ունի 1950 կմ. երկարություն, որից 540-ը Հին Հայաստանի սահմաններում է։ Տիգրիսը սկիզբ է առնում Ծովք լեռնային լճից (ուրարտական «Ծուե», ասսուրական «Սուա», այժմ՝ Գյոլջուկ)։

Հնում Տիգրիսի ակունքն էր համարվում Ջեբենե-սու գետի վերին հոսանքը։ Թվարկելով Չորրորդ Հայք նահանգի գավառները, «Աշխարհացոյց»-ը հիշատակում է նաև Հաշտեանց գավառը «յորմէ բղխեն աղբիւրք Տիգրիս գետոյ»[41]։

Ջեբենե-սուի միանալուց հետո Արևմտյան Տիգրիսը դառնում է ջրառատ մի գետ և հոսում դեպի արևելք, ծառայելով որպես սահման Մեծ Հայքի և Միջագետքի միջև։ Այդ գետի ձախակողմյան վտակներից առավել նշանավորներն են՝ Քաղիրթը, որ կոչվում է նաև Շիթիթմա (այժմ՝ Բաթման-սու) և Խարզանը կամ Արզանը։

Արևելյան Տիգրիսը կամ Ջերմ գետը Քսենոփոնի մոտ հայտնի է Կենտրիտես անունով (Κεντρίτης)[42]։ Նա սկիզբ է առնում Կորդվաց լեռներից, Վասպուրական նահանգի Անձևացիք գավառից (այժմ՝ Նորդուզ, Ջուլամերկից հյուսիս)։

Կորդվաց լեռների հյուսիսային լանջերից սկիզբ առնելուց հետո Արևելյան Տիգրիսը կամ Ջերմը հոսում է դեպի արևմուտք։ Ջռել ամրոցի մոտի ձորից հետո Տիգրիս-Ջերմը մտնում է Մոկք նահանգը, գետի անունով Ջերմաձոր կոչվող հովիտը։ Իր մեջ ընդունելով Ոբբ (այժմ՝ Մոկ-սու), Կեցան և Բաղեշ (այժմ՝ Բիթլիս-սու) գետերը վերջինիս Տատիկ վտակով, Տիգրիս-Ջերմ գետը Սղերդ քաղաքից հարավ միանում է Արևմտյան Տիգրիսին, կազմելով Տիգրիս ջրառատ գետը։ Ձախից նրա մեջ են թափվում Արևելյան Խաբուրը, որը Հայաստանի սահմանն էր Ադիաբենեի կողմից և Մեծ Զաբը, որը վերին հոսանքում կոչվում էր Աղբակ[43], ապա Զաբ անվան տակ հոսում Կորճայք աշխարհի (ներկայիս Ջուլամերկի շրջանը) խոր անտառոտ ձորերով, որից հետո դուրս է գալիս Միջագետքի ցածրավայրը և խառնվում Տիգրիսին։

Արաքսը, որ 1072 կմ. երկարություն ունի, սկիզբ է առնում Բյուրակն կամ Սերմանց զանգվածի (այժմ՝ Բինգյոլ) հյուսիսային լանջերի աղբյուրներից։ Արաքս գետը ակունքներից սկսած մինչև նրա թափվելը Կասպից ծովը, հոսում

---

41 Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 107—108։

42 Հնարավոր է, որ Կենտրիտես կոչվեր Բոհտան-սու գետի ստորին հոսանքը Կեցան վտակի հետ միասին։

43 Աղբակ անունը գալիս է այդ գետի խուրրիական և ասսուրական Ալամուն-էլամունիա անվանումից։

էր պատմական Հայաստանի տերիտորիայով, ուստի ժողովուրդը մինչև այժմ կոչում է «Մայր Արաքս»։

Ներկայումս տարածված այս անունը ծագում է հունա-հռոմեական Ἀράξης, Araxes ձևից, որը հայկական Արասխ կամ Երասխ անվան տառադարձումն է (եղել է նաև Առաստ ձևը, սրանից է ավելի ուշ շրջանի Արազը)։ Առավել գործածական ձևը Երասխն է։

Սկիզբ առնելով Բյուրակնյան լեռնային զանգվածից, Արաքսը հոսում էր դեպի հյուսիս, որտեղ նրա մեջ էր խառնվում արևմուտքից հոսող Մուրց գետը, այնուհետև հոսելով Բասեն գավառով (Քսենոփոնի հիշատակած Փասիանների երկիրը) Արաքսն ստանում է Բասեան կամ Բասեն անունը (այժմ՝ Բասեն-սու)։ Քսենոփոնի «Անաբասիս»-ում այս գետը կոչվում է Փասիս[44], որ չպետք է շփոթել Կողքիսի Փասիսի (Ներկ. Ռիոն) հետ։



Երասխի (Արաքսի) ակունքը Սերմանց լեռներում: Հեռվում Սերմանց (Բյուրակն) գագաթը

Բասենից դուրս գալով, Արաքսը մտնում է խոր, նեղ կիրճի մեջ, որը կոչվում էր Երասխաձոր (Ներկայիս Կաղզվանի շրջանում), որից հետո գետը կոչվում էր Երասխ։ Արաքսը այնուհետև հոսում է այդ կիրճով մեծ աղմուկով և միմիայն ձախից Ախուրյան վտակն իր մեջ առնելուց հետո լայնորեն տարածվում է ընդարձակ Արարատյան դաշտով։

Արարատյան դաշտում Արաքսի մեջ են թափվում աջից՝ Վարդամարդ, ձախից՝ Ախուրյան (Ներկա Կարսաչայը և նրա շարունակությունը հանդիսացող Ախուրյանը), Քասաղ և Սևանա լճից սկիզբ առնող Հրազդան վտակները։ Այս երկուսը հնում թափվում էին Մեծամոր գետը (այժմ՝ Սև ջուր), որը խառնվում էր Արաքսին Արտաշատ քաղաքից հյուսիս։ Ջախակողմյան ավելի աննշան

[44] Չմմտ, Diod, XVI, 29.

*վտակներից են Ազատը (Գառնի) և Ուրծաձորը (Վեդի)։ Այնուհետև «Արաքսյան հովիտը» (Araxene) շարունակվում է մինչև Ջուղա, որտեղ լեռները սեղմվում են և Արաքսը հոսում է նեղ կիրճով։*

*Հիմնական գետանցը Արաքսի վրայով (ինչպես և այժմ) գտնվում էր Ջուղայի մոտ։*

*Միջին և ստորին հոսանքում ձախից Արաքսի մեջ թափվող առավել խոշոր վտակներն են՝ Արփա, Նախճավան, Ողջի, Որոտան, Աղվան կամ Հագարու և Գարգար գետերը։ Աջից առավել հայտնի վտակներն են. Մակու (այժմ՝ Զանգիմար-չայ)՝ Առոմ-գետ վտակով (այժմ՝ Բալըխ-չայ, բխում է Գայլատու լճից), Կարմիր գետ (այժմ՝ Կըզըլ-չայ), Ծուաշռոտ կամ Տղմուտ (այժմ՝ Ակ-չայ), Աղանգ-ռոտ և Մարանդ (այժմ՝ Զիլբիր-չայ)։ Կարմիր գետի վերին հոսանքը կոչվում էր Կոտորո գետ։ Արաքսի ամենաջրառատ վտակը՝ Գառահ գետը (Կարասու) հոսում է Արտավետ (այժմ՝ Արդարիլ) քաղաքի կողմից և Վարդանակերտից ոչ հեռու թափվում է Արաքսը։*

*Արաքսը, իհարկե, նավարկության համար պիտանի չէր, բայց նրանով մինչև Արտաշատ քաղաքն էր ուղարկվում Մեծրաց լեռների անտառներից հատվող սաճու փայտը։ Մովսես Խորենացին վկայում է, որ երբ Արտաշես Ա-ը կառուցում է Արտաշատ քաղաքը, ապա «ձեռնտու լինի նմա և Երասխ փայտիւք մայրեաց»*[45]*։*

*Արարատյան դաշտավայրով հոսող Արաքսը հաճախ փոփոխում էր իր հունը, այժմ էլ կարելի է տեսնել այդ հուներից մեկը, որը կոչվում է «Ղուրու-Արազ»։*

*Արարատյան դաշտում հաճախ էին լինում այնպիսի սառնամանիքներ, երբ Արաքսն էլ էր սառչում։ Խորենացու ասելով «և յերկարել ձմեռայնոյն, ի ղառնահոտ հնչմանէ հիւսիսոյ պաղացեալ ձուլեալ վտակն (Երասխայ)»*[46]*։*

*Հյուսիսում Հայաստանը եզերվում էր Կուր գետով, որը հունական և հռոմեական հեղինակները կոչում էին Կիրոս, Կիրն, Կիրուս* (Κῦρος, Κύρνος, Cyrus), *վրաց.* მტკუარი *«Մտկուարի»։ Հայերը կոչում էին Կուր։*

*Կուրի ակունքները գտնվում են Տայք նահանգի Կող (այժմ՝ Գյոլե) գավառում, Կարմիր փորակ (այժմ՝ Ալլահ-Ակբար) լեռնաշղթայի արևմտյան լանջերին։*

*Կուրի աջակողմյան վտակներն են Ալգետ, Ցուրտագետ*[47] *(այժմ՝ Խրամ, որի վերին հոսանքը վրացիներն անվանում էին Քցիխս Խրամի, Ստրաբոնի մոտ կոչվում է* Χάνης*)։*[48]

*Ցուրտագետ-Խրամի աջափնյա վտակներից է Գաշենագետը (այժմ՝ Մաշավերա), որոնց միախառնման տեղում գոյություն ուներ Ցուրտավ կամ Գաշենք քաղաքը։ Խրամի գետաբերանից ոչ հեռու Հունարակերտ ամրոցի մոտ Կուր գետն է թափվում Ձորագետը (այժմ՝ Դեբեդ և Փամբակ)։ Այնուհետև Կուրի աջափնյա վտակներն են՝ Աղստև (հավանաբար Ստրաբոնի* Σανδβάνης*), Հախում,*

---

45 Խորենացի, *Բ, խթ։*

46 Խորենացի, *Բ, լթ։*

47 *Այս անունը պահպանվել է թուրքական արտասանությամբ՝ Ջուրտակերտի Վախուշտու մոտ, իբրև Խրամ գետի վտակներից մեկը, որը բխում է Կեչուտի լեռներից։*

48 *Strabo, XI, 3, 2։*

Տավուշ, Ձակամ, Շամքոր, Ռոյտակ (Ροιτάκης), հետագայում կոչվել է Գանձակ (այժմ՝ Գյանջա-չայ), Կուրակ, Առան-ռոտ (այժմ՝ Գերան-չայ) և Տրտու կամ Տրտուական (այժմ՝ Թարթար) գետերը։

Ստրաբոնը հիացմունքով է նկարագրում Կուրի աջափնյա շրջանը՝ Շակաշենի և Գուգարքի ցածրավայրերը։ «Ամբողջ այս երկիրը,— գրում է նա,— առատ է պտուղներով, այգիներով և մշտադալար բույսերով և տալիս է նույնիսկ ձիթապտուղ»[49]։

II դարից մ. թ. ա. մինչև մ. թ. IV դարի վերջերը Մեծ Հայքի կազմի մեջ մտնող Կասպիականի ծովափնյա շրջանի տարածության մասին պատկերացում է տալիս Պտղոմեոսը[50]։

Սև ծովն են թափվում երեք բավական խոշոր գետեր, որոնց ակունքները գտնվում են Հայկական լեռնաշխարհում՝ Ճորոխը (երկարությունն է 368 կմ.), Գայլ-գետը և Հալիսը։ Ճորոխի վերին և միջին հոսանքները անցնում են պատմական Հայաստանի տերիտորիայով։

Ճորոխ գետի ակունքները գտնվում են Ջրմայրի (3185 մ.) լեռան արևմըտյան բազուկներում, որտեղից Ճորոխը հոսում է դեպի հարավ-արևմուտք Ջրմայրի անունով (այժմ՝ Ջերմելի-սու), այնուհետև կոչվում է Մաստարա (այժմ՝ Մասատ-դարա)։ Բաբերդ քաղաքի մոտ գետը թեքվում է դեպի հյուսիս և այդտեղից սկսած կոչվում է Ճորոխ կամ Ծորոխ։ Անտիկ շրջանում նա հայտնի էր Ակամսիս անունով, իսկ վաղ հայկական և բյուզանդական աղբյուրներում կոչվում է Վոհ կամ Boας։ «Աշխարհացոյց»-ում Ճորոխը կոչվում է «Ակամսիս որ է Վոհ»[51], իսկ մի այլ տեղ՝ «Յոհ»[52]։

Բաբերդ քաղաքից հյուսիս Ճորոխ գետը թեքվում է հյուսիս-արևելք և հոսում այդ ուղղությամբ մինչև Արգվին քաղաքը։ Այստեղից սկսած Ճորոխը գնում է հյուսիս-արևմտյան ուղղությամբ մինչև Սև ծովը թափվելը, Ներկայիս Բաթումից հարավ։ Ճորոխի ամենախոշոր վտակը Օլթի-չայ գետն է, որը հնում կոչվում էր Ուղթեաց գետ, իսկ վերին հոսանքում Բուխա կամ Բողխա։ Աջակողմյան վտակներից է Բանակ կամ Բանա գետը (այժմ՝ Փենեկ-չայ), որի մեջ է թափվում Պարտեզ գետակը (այժմ՝ Բարդուս-չայ)։ Ձախակողմյան վտակներից է Ազորդ գետը (այժմ՝ Թորթում)։

Ճորոխի գետաբերանը Պոնտական լեռների հյուսիս-արևելյան ծայրամասում է։ Այս լեռների արևմտյան ծայրին գտնվում է Իրիս գետը (այժմ՝ Եշիլ-Իրմակ), որի վտակն է Լյուկոս գետը, կամ ինչպես հայերն էին կոչում, Գայլ գետը (այժմ՝ Գելգիտ-չայ)։ Գայլ գետը սկիզբ է առնում Պոնտական լեռնաշղթան Սկիդիեսի և Անտիտավրոսի հետ միացնող շրբաժան լեռնաշղթայից։ Հավանաբար իրավացի էր Էրատոսթենեսը, երբ պնդում էր, որ Լյուկոսը կոչվել է նաև Թերմոդոն։

---

49 *Strabo*, XI, 14, 4։

50 Նրա ասելով արևելքից Մեծ Հայքի սահմանն է կազմում «Վրկանա ծովի մի մասը Կիրոս գետի գետաբերանից մինչև այն կետը, որը գտնվում է 79°45—43°20-ի տակ» (Ptol., V, 12,1)։

51 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 103։

52 Նույն տեղում, էջ 110։

Թերմոդոն-Լյուկոսը (Գայլ գետ) միանում է Իրիս գետին, որը Թեմիսկիրա հովտում թափվում է Սև ծովը։ Հավանաբար Թերմոդոն է կոչվել Իրիս գետի նաև այդ մասը (Թերմոդոնի միախառնման վայրից մինչև գետաբերանը)[53]։

Հայկական լեռնաշխարհի գետերի ակունքների շրջանները պաշտամունքի վայրեր էին. այդ մասին են վկայում սովորաբար այդ տեղերից հայտնաբերվող վիթխարի քարե վիշապները։ Հիշյալ վայրերը շարունակում էին պաշտամունքի առարկա մնալ նաև քրիստոնեության շրջանում։ Գետերի ակունքների մոտերքում հաճախ կարելի է հանդիպել քրիստոնեական տաճարների ավերակների։

Հայկական լեռնաշխարհին բնորոշ են միմյանց հետ հատվող բարձունքների շնորհիվ գոյացած գոգավորությունները։ Դրանց հատակը սովորաբար լցված է լինում ջրով։ Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի վրա փռված է շամբուտներ ու մորուտներ դառնալու հակում ունեցող այդպիսի ձորակների ու իջվածքների մի ամբողջ սիստեմ։ Անձրևների և հալչող ձյան ջուրը («քամը») լեռներից հոսելով հավաքվում է այդ գոգավորություններում, ձորակներում ու իջվածքներում։ Տիպիկ են այդ տեսակետից պատմությանը հայտնի Շամբ Կարնոյ և Շամբ Կոգովտի մորուտները։



Հայկական պարը ճարավից (Բագրեւանդի դաշտի կողմից)

Հսկայական գոգավորությունների կողքին հանդիպում են նաև փոքրերը, որոնք առաջինների մանրանկար կրկնությունն են։ Այսպես, օրինակ, Գայլատու լիճը (այժմ՝ Բալըխ-գյոլ), որ Սևանա լճի փոքրիկ կրկնությունն է։ Գայլատուն գտնվում է Հայկական պարի հարավային լանջերին մի փակ գոգահովտում։ Այս լճից բխում է Առուն գետը, որը Շամբ Կոգովտի միջով անցնելով թափվում է Արաքսի վտակ Մակու գետի մեջ։ Այդպիսին է նաև Ծովք լիճը (այժմ՝ Գյոլջուկ) Խարբերդից հարավ։ Նրանից սկիզբ է առնում Արևմտյան Տիգրիսը։ Այդ տեսակետից բնորոշ է Ջարիշատի լիճը կամ Պաղակացիսը (հնում կոչվում էր «Ծովակ հիւսիսոյ»), այժմ Չըլդըր (ծովի մակերևույթից 1959 մ. բարձր), որից դուրս է հոսում Ախուրյանի ձախակողմյան վտակ Մեծագետը։ Բոլոր այս նշված և նրանց նման մյուս լճերը հոսող են և ներկայացնում են բարձրադիր, անուշահամ ալպիական ջրամբարներ։ Կան նաև կանգնած լճեր, ինչպես օրինակ Արճիշակը (այժմ՝ Արճակ, 1870 մ. բարձրության վրա) Վանա լճից արևելք։

---

53 Հետագայում Թերմոդոն անունը տարածվել է Իրիս գետի գետաբերանից դեպի արևելք գտնվող գետի վրա, որ այժմ կոչվում է Թերմե-սու։

Առավել խոշոր ջրամբարներ են Կապուտան (Ուրմիա), Վան և Սևանա լճերի գոգավորությունները։

Հնում Սևանա լիճը կոչվում էր Գեղամա ծով, Գեղարքունյաց ծով (ավելի ճիշտ՝ Գեղաքունի լիճ, վրաց. Գելաքունի), Պտղոմեոսը հիշատակում է այն Լիխնիտիս (Λυχνῖτις) անվան տակ[54]։

Սևանա լիճը, որ Հին աշխարհի լեռնային լճերից ամենամեծը և մեծ լճերից ամենաբարձրն է, գտնվում է ծովի մակերևույթից 1916 մ. բարձրության վրա։ Նրա մակերեսը 1416 քառակուսի կիլոմետր է։ Նորատուսի և Ադա հրվանդաններով լիճը բաժանվում է երկու մասի, հյուսիս-արևմտյանը կոչվում է Փոքր Սևան, իսկ հարավ-արևելյանը՝ Մեծ Սևան։ Միջին խորությունը 45 մետր է, առավելագույնը՝ 99 մետր[55]։ Լիճը տեկտոնիկ ծագում ունի[56], նրա մեջ թափվող գետերից հիշատակության արժանի են Սոդք գետը, Իշխանագետը և Գավառագետը։ Լճից բխում է միայն մի գետ՝ Հրազդանը։ Լճի ջուրը անուշահամ է, ձկներն են՝ կարմրախայտ իշխանը, գեղարքունին, բաղղակը և կողակը։ Ունի միայն մի կղզի (այժմ թերակղզի) Սևան անունով։ Հնագույն ժամանակներից այստեղ զարգացած են եղել նավագնացությունն ու ձկնորսությունը։ Ներկայումս Սևանա լճի ջրերը առատ էլեկտրաէներգիա են տալիս և ոռոգում Արարատյան դաշտը։ Լճի ջրի իջեցումից հետո նրա հատակի բացված մասերում կատարված հնագիտական պեղումները ցույց են տալիս, որ հնագույն ժամանակներում լճի մակերեսը եղել է ավելի փոքր, քան իջեցումից առաջ էր։

Սևանա լճից ավելի մեծ է Վանա լիճը, որը Ստրաբոնը կոչում է Թո[ս]պիտիս կամ Արսե[սե]նե (Θω[σ]πῖτις,' Αρ[ση]σηνή)[57]։ Առաջինը համապատասխանում է հայերեն Տոսպին և ծագում է, անկասկած, ուրարտական պետության մայրաքաղաք Տուշպայի անունից (Վան)։ Երկրորդ անունը ծագում է Արճեշ քաղաքի անունից։ Միջին դարերում հայերն այս լիճը կոչում էին Բզնունյաց կամ Ռշտունյաց ծով։ Վանա լճի գոգավորությունն առաջացել է նեոհրաբխային ժայթքումների հետևանքով, որոնք փակել են գետերի հուները։ Այդ տեսակետից մեծ դեր է կատարել Սարակն-Նեմրութի բարձրացումը, որը Տարոնի դաշտը (Մշո դաշտ) բաժանել է Վանի գոգավորությունից և դրանով ստեղծել փակ ավազան։

Վանա լիճը 1720 մ. բարձր է ծովի մակերևույթից։ Լայնությունը 60 կմ. է, երկարությունը՝ 120 կմ., միջին խորությունն է 16 մ., առավելագույնը՝ 25 մ.։ Վանա լճի հայելին հավասար է 3733 քառակուսի կիլոմետրի։

Վանա լճի ջրերը եւք չունեն։ Նրա ջրերը պարունակում են մեծ քանակությամբ կալիումի և նատրիումի կարբոնատ, քլորիդներ և սուլֆատներ։ Բարձր աղիության պատճառով (19,1 տոկոս) լճում ապրում է միայն մի տեսակ ձուկ։ Այդ նույն պատճառով լճի ջուրը չի օգտագործվում ոչ ոռոգման և ոչ էլ խմելու

---

[54] Ptol., V, 12, 30։

[55] Այս տվյալները վերաբերվում են նախքան լիճը իջեցնելու ժամանակաշրջանին։

[56] Տե՛ս Ф. Ю. Левинсон-Лессинг, Предварительные соображения об использовании озера Гокча (Севан) для орошения бассейна озера Севан (Гокча). Научные результаты экспедиции, 1927, Л., 1929, էջ 430։

[57] Strabo, XI, 14, 8։



Սևանա լիճը և կղզին

համար[58]։ Ստրաբոնի ասելով Վանա լճում ապրում է ձկան միայն մի տեսակ[59]. նկատի ունի տառեխը։ Լճի շուրջը ուրարտական ժամանակներից սկսած, կային քաղաքային կենտրոններ, որոնցից կարևորագույնը Վանն էր՝ Ուրարտուի մայրաքաղաք Տուշպան, ապա Բերկրին, Արճեշը, Արծկեն, Խլաթը, Դատվանը։ Հնագույն ժամանակներից ի վեր գոյություն ուներ Վան—Դատվան ջրային հաղորդակցությունը, որը Վան քաղաքը կապում էր Հյուսիսային Միջագետքի քաղաքների հետ։ Վանա լճի մակերեսն անընդհատ բարձրանում է. «Աշխարհացույց»-ում նշված յոթ կղզիներից այժմ մնացել են միայն Աղթամարը, Արտերը և Լիմը[60]։

Պատմական Հայաստանի ամենամեծ լիճն է Կապուտանը, ներկայիս Ուրմիան (Ռեզայե)։ Վերջինս գտնվում է Հայկական լեռնաշխարհի և Իրանական սարահարթի միջև, հանդիսանալով պատմական Հայաստանի բնական սահմանը։

Ստրաբոնն այս լիճը հիշատակում է երկու անգամ, երկու տարբեր անուններով։ Առաջին անգամ հիշատակում է Ատրպատականը նկարագրելիս. «Այստեղ կա Սպավտա (Σπαῦτα պետք է հավանաբար ուղղել՝ *Καπαῦτα) լիճը»,— գրում է նա։ Նրա ասելով «ջրի մակերեսին աղը հավաքվում և բյուրեղանում է. այս աղը քոր և անհանգստություն է պատճառում մարմնին, բայց յուղը բուժում է այդ հիվանդությունը, իսկ անուշահամ ջուրը մաքրում է զգեստը, եթե որևէ մեկը սխալմամբ այն լիճն է մտցրել լվանալու համար»[61]։ Երկրորդ անգամ Ստրաբոնը հիշատակում է նույն լիճը Հայաստանի նկարագրության մեջ[62]։ «Հայաստանում,— գրում է Ստրաբոնը,— մեծ լճեր կան։ Մեկն է Մանտիանեն (Μαντιανή), հունարեն թարգմանությամբ Կիանե (Κυανη, որ նշանակում է «կապույտ», «բիլ» և թարգմանությունն է հայ-պարսկական Կապուտան անվան)։ Ասում են, որ Մեոտիդեից (Ազովի ծով) հետո ամենամեծն է՝ աղի ջրով, տարածվում է մինչև Ատրպատական և ունի աղագործանոցներ»։

«Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրությունում հիշատակվում է «զծովակն որ կոչի Կապուտան»[63]։ Կապուտանի բարբառային ձևը պետք է համարել Գաբիթեանը, այդպես է կոչվում լճի հյուսիս-արևելյան ափին գտնվող գավառը։ Այդ գավառում անտիկ հեղինակներին հայտնի էր Καπαῦτα վայրը[64]։ Գաբիթեան գավառը պետք է նույնացվի Սարգոն Բ-ի արձանագրության Սանգիբուտու երկրի հետ, որը տեղադրվում է Ուրմիա լճի հյուսիսային ափին[65]։

Կապուտան լիճը բռնում է Հայկական լեռնաշխարհի և Իրանական բարձրավանդակի միջև ընկած գոգահովտի զգալի մասը։ Այն գտնվում է 1275 մ. բարձրության վրա, հայելու մակերեսը մեծ տատանումներ ունի՝ 3900-ից մինչև

---

58 *С. Н. Матвеев,* Турция (Азиатская часть — Анатолия), физико-географическое описание, էջ 46։

59 *Strabo,* XI, 14, 8։

60 Վանա լճի առաջացման մասին տե՛ս *С. П. Бальян,* Структурная геоморфология Армянского нагорья, էջ 311—316։

61 *Strabo,* XI, 13, 2։

62 Նույն տեղում, XI, 14, 8։

63 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 114, ծան. 2։

64 Տե՛ս *Ptol.,* V, 12, 10։

65 Տե՛ս АВИИУ, 49, 18։

5900 քառակուսի կիլոմետր, առավելագույն խորությունը 16 մ. է։ Լճի առանձնահատկությունը նրա ջրի արտակարգ աղիությունն է[66]։

Հնուց ի վեր լճի վրա նավարկություն կար։ Կապուտան լիճն է թափվում 12 գետ, որոնցից առավել նշանավոր են Ատրպատականի գետերը՝ Վարարակ (Հաջի-չայ), Սագարտու (այժմ՝ Ջաղաթու կամ Ջեռինեբ), Թաթավա և Սոուջբուլաղ։



Սառցադաշտային մորենային արգելափակման լճակ Բյուրակնի գագաթում

Կապուտան լճի արևմտյան և հյուսիսային ափերը Հայաստանի կազմում էին, դա Նոր-Շիրական կամ Պարսկահայք նահանգն էր, անտիկ աղբյուրների Սիգրիանեն։ Արևմուտքում Կապուտան լիճն են թափվում Զագրոս լեռների արևելյան լանջերից սկիզբ առնող գետերը։ Դրանցից պետք է հիշատակել Զարեհավանը՝ Տարոնո-գետ[67] վտակով (այժմ՝ Դիլման-չայ), Էլոյ ձորը (այժմ՝ Նազլու-չայ), Բերդաձորը (Բերդեսոր), Բարանգուսը և Արասխը կամ Երասխը (այժմ՝ Գետառ-սու)։ Արասխ կամ Երասխ[68] գետը ևս հունական և հռոմեական հեղինակները տառադարձում են՝ 'Αράξης, Araxes ձևով։ Նա Հայաստանի սահմանն էր Կապուտան լճի և Զագրոս լեռնաշղթայի միջև ընկած շրջանում. սկիզբ էր առնում Զագրոս լեռների Զարասպ գագաթից (այժմ՝ Կելիշին)։ Նրա ակունքներից ոչ հեռու գտնվում է Զարասպի (Կելիշին) հայտնի լեռնանցքը, որով անցնում էր Միջագետքից Մարաստան և Հայաստան տանող մեծ ճանա-

66 «Հաշվումների համաձայն,— գրում է Լինչը,— Ուրմիա լճի ջուրը իր մեջ պարունակում է վեց անգամ ավելի աղ, քան օվկիանոսինը, բայց միայն երեք հինգերորդն այն քանակի, որ ունի իր մեջ Մեռյալ ծովի ջուրը։ Վերևից նայելիս նա վառ կապույտ գույն ունի, մի հատկություն, որ բնորոշ է բոլոր աղի լճերին։ Եթե այնտեղ լողանալուց հետո թողնում են, որ ջուրը չորանա մարմնի վրա, ապա մաշկը ծածկվում է սպիտակ աղային շերտով. ոչ ձկները, ոչ կակղամորթները չեն կարող այնտեղ ապրել։ Լճի ափերը,— Լինչի ասելով,— մեծ մասամբ ցածր են, աղով ներծծված և առափնյա շերտը, ուր կարելի է գտնել քարացած կորալների և խեցիների կտորներ, լճի կապտության մոտ շողում է որպես սպիտակ ժապավեն» (Տե՛ս Х. Ф. Линч, Армения, հ. II, էջ 55)։

67 Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, էջ 260։

68 Ս. Տ. Երեմյան. Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 108։

պարհը, ուստի և այդ գետը հնագույն ժամանակներից լավ հայտնի էր։ Զարասպի լեռնանցքը Ստրաբոնն անվանում է «Դրունք մարաց»։

Մեծ աշխարհագետի խոսքերով՝ «Մարաստանի ամենաերկար մասը անցնում է Սիգրիանեի միջով և տարածվում է Զագրոսի լեռնային բարձունքից, որը կոչվում է Մարական դռներ, մինչև Կասպիական դռները[69]. այն կազմում է 4100 ստադիոն»[70]։

Հայաստանի և Ատրպատականի միջև, Կապուտան (Ուրմիա) լճից հարավ, ընդհուպ մինչև Զագրոս լեռները, տարածվում էր Մատիենե լեռնային երկիրը (Μαντιανή, Ματιηνή, Ματιανης), որը պետք է որ համապատասխանի ուրարտական և ասուրական սեպագիր արձանագրությունների Մանա երկրին։

## 4. ԼԵՌՆԱՅԻՆ ՀԱՐԹԱՎԱՅՐԵՐՆ ՈՒ ՀՈՎԻՏՆԵՐԸ, ՆՐԱՆՑ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Հայկական լեռնաշխարհի տնտեսական կյանքում առաջնակարգ նշանակություն ունեին բարձրադիր հարթավայրերը, հովիտներն ու ցածրավայրերը, որոնք երկրագործական շրջաններ էին, մինչդեռ լեռնալանջերը ստիպում էին զբաղվել գերազանցապես անասնապահությամբ։

Հայկական լեռնաշխարհի առանձնահատկություններից մեկը լեռնային հարթավայրերի ու հովիտների աստիճանաձև դասավորությունն է. դրանք գոյանում են լեռնաշխարհի կենտրոնական հրաբխային զանգվածներից դեպի տարբեր կողմեր հոսող գետերի հուներից։

Ճորոխ գետի սիստեմում կա միայն մեկ բարձրադիր հարթավայր՝ Սպեր գավառը։ Այս գետի վերին հոսանքի շրջանը ծածկված է ալպիական բուսականությամբ և բարենպաստ պայմաններ ունի հացահատիկային բույսերի մշակության համար։ Այս սարահարթը հարմար լեռնանցքների շնորհիվ սերտ կապեր ունի Բարձր Հայքի շրջակա գավառների հետ։

Եփրատ գետի սիստեմում (Արևմտյան Եփրատ-Կարա-սու), ակունքներից սկսած մինչև դեպի հարավ թեքվելը (Ակն քաղաքի մոտ) հաջորդաբար դասավորված են աստիճանաբար ցածրացող հովիտներ ու հարթավայրեր, որոնք կազմում են Կարին (այժմ՝ Էրզրում), Դերջան, Եկեղյաց (այժմ՝ Երզնկա) գավառները։ Վերջինս իր հնագույն կենտրոններով հայ ժողովրդի կազմավորման օրրաններից ամենավաղն էր։

Արածանի (Արևելյան Եփրատ-Մուրադ) գետի սիստեմում, ակունքներից սկսած մինչև Ճապաղջուր ընկած են Բագրևանդ (այժմ՝ Ալաշկերտ), Հարք (այժմ՝ Բուլանըխ) և Տարոն (այժմ՝ Մուշ) գավառները կազմող դաշտերը։ Այնուհետև Արածանին հոսում է Հաշտեանք գավառի (այժմ՝ Ճապաղջուր) նեղ կիրճով։ Բալու քաղաքից սկսած Արածանին հոսում է «Հրաշալի հովիտ» (Καλὸν πεδίον) և Անթիաս (’Ανθίας) կամ «Ալելուա դաշտ» (այժմ՝ Խարբերդի դաշտ) կոչված հարթավայրերով։ Այնտեղ առաջ են եկել այնպիսի խոշոր

---

69 Տվյալ դեպքում նկատի ունի այն «Կասպիական դռները», որոնք գոյություն ունեին այժմյան Թեհրանի մոտ։

70 Strabo, XI, 13, 8։

*կենտրոններ, ինչպես Ծոփքի մայրաքաղաք Արշամաշատն ու միջնադարյան խոշոր կենտրոն Հոռբերդը կամ Խարբերդը։ Այս և հարևան դաշտերում էին խաչաձևվում Առաջավոր Ասիայի առևտրական և ստրատեգիական ճանապարհների հիմնական մայրուղիները։*

*Տիգրիսի ակունքների շրջանը կազմում էր Անգեղ տուն գավառը։ Այստեղ էր գտնվում Ծոփքի մայրաքաղաքներից մեկը՝ Անգղ կամ Արկաթիակերտ քաղաքը (այժմ՝ էգիլ)։ Ավելի արևելք տարածվող Տիգրիսի դաշտավայրը ծաղկման շրջան էր ապրում հատկապես հելլենիստական շրջանում, երբ այստեղ բարգավաճեց Տիգրանակերտ քաղաքը։*

Սիփանյաց լեռների սարաճարթը Բասենի դաշտից

*Արաքս գետի սիստեմում, նրա ակունքներից հյուսիս, տարածվում է Բասենի արգավանդ, բարձրադիր դաշտը։ Նրանից հյուսիս-արևելք Ախուրյան գետի ավազանում ընկած են մի քանի հրաբխային սարահարթեր՝ Վանանդ (Կարսի շրջանը), Շիրակ (Լենինականի շրջանը), Նիգ (Ապարանի շրջանը), Աշոցնեք կամ Երասխաձոր (Արաքսի ձախ ափը Կաղզվանից հյուսիս)։ Այս բոլոր հարթավայրերը բարձրադիր սարահարթեր են հացաբույսերի մշակության համար բարենպաստ պայմաններով։*

*Հայաստանի բնա-պատմական հիմնական շրջաններից կարևորագույնը Արարատյան դաշտն է Արաքս գետի միջին հոսանքում։ Նա լավ հայտնի է նաև հնագույն ժամանակներում. հայերն ու վրացիներն այն անվանում են պարզապես Դաշտ*[71]*, Արաքսի հովիտ՝ Արաքսենե* ('Αραξηνή)[72] *ասելով անտիկ*

---

[71] ქართლის ცხოვრება (*Քարթլիս ցխովրեբա*), ტექსტი დადგენილი ყველა ძირითადი ხელნაწერის მიხედვით ს. ყაუხჩიშვილის მიერ, ტომი 1, თბილისი, 1955, *էջ 46*։

[72] *Տե՛ս* Strabo, *XI, 14, 6 և 13*։

հեղինակները պատկերացնում էին Արարատյան ողջ դաշտը Ախուրյան գետից մինչև Գողթան գավառը (Օրդուբադ—Ջուղա շրջանը)։

Հայկական լեռնաշխարհում Արարատյան դաշտը առավել ցածրադիրն է։ Նրա կլիման հնարավորություն է տալիս մշակել չոր մերձարևադարձային շրջանների կուլտուրաներ։ Հայկական լեռնաշխարհի բոլոր ներքին հարթավայրերից միայն Արարատյանն է, որ ամառային արոտներից բացի ունի նաև ձմեռային արոտներ։ Արհեստական ոռոգման դեպքում Արարատյան դաշտը լեռնաշխարհի առավել արգավանդ մասն է և բոլոր դարաշրջաններում հայտնի է եղել իր բերրիությամբ. այնտեղ մշակվել են բազմապիսի գյուղատնտեսական կուլտուրաներ և առաջին հերթին՝ խաղող։ Արարատյան դաշտի բացառիկ բերրիության վրա ուշադրություն են դարձրել դեռևս հնագույն ժամանակներում։ «Բուն Հայաստանում,— Ստրաբոնի խոսքերով,— կան շատ լեռներ և սարահարթեր, որոնց վրա դժվարությամբ խաղող է աճում, բայց կան նաև շատ հովիտներ, որոնցից մի քանիսը չափավոր բերրի են, իսկ մյուսները՝ արտակարգ. այդպիսին է Արաքսենե հովիտը, որով Արաքս գետը հոսում է (արևելք) դեպի Աղվանից աշխարհի լեռները և այնուհետև թափվում Կասպից ծովը»[73]։

Հարավ-արևելքում Արարատյան դաշտավայրը անջատվում է ընդարձակ Իրանական բարձրավանդակից ջրբաժան մի լեռնապարով, որը Հայկական (այժմ՝ Ղարա-դաղ) լեռնաշղթայի շարունակությունն է և ձգվում է դեպի արևմուտք։ Նրա արևմտյան մասը՝ մինչև Զագրոս լեռնաշղթան և Կոտորի լեռնանցքից հարավ ու Կապուտան լճից հյուսիս, կոչվում է Նոր-Շիրական լեռներ։ Նշված ջրբաժան բարձունքը Իրանից Հայաստան տանող ամենամատչելի վայրն է։ Հենց այստեղից է, որ թշնամին ներխուժում էր երկրի սիրտը՝ Այրարատյան նահանգը։ Հնագույն ժամանակներից այստեղ գտնվող Մարանդից Սոփիան տանող լեռնանցքը (այժմ՝ Յամ՝ 1782 մ. ծովի մակերևույթից բարձր) հատուկ ուշադրության առարկա էր իբրև կարևոր ռազմա-ստրատեգիական կետ։

Հյուսիս-արևմուտքից Արարատյան դաշտը աստիճանաձև բարձրանալով վեր էածվում մի բարձրադիր սարահարթի՝ դա աստիճանաձև բարձունքներով շրջապատված Շիրակի դաշտն է։ Այստեղ էին գտնվում Հայաստանի մայրաքաղաքներից մեկը՝ Անին, Վանանդը (Կարս կենտրոնով), Արտահանը, Ջավախքը։ Վանանդի սարահարթով Արարատյան դաշտավայրը կապվում է Բասենի, Կարինի և մյուս լեռնային հովիտների ու դաշտերի հետ։ Բայց կապը վերջիններիս հետ իրականացվում էր Հայկական պարի լեռնանցքների միջոցով։

Այրարատ նահանգը, ավելի ճիշտ նրա հիմնական մասը՝ Արարատյան դաշտը, բացառիկ նշանակություն ուներ որպես բնական միջանցք։ Հենց այս միջանցքով է, որ բոլոր դարաշրջաններում (ընդհուպ մինչև Բարեհուսո հըրվանդանի հայտնագործումը) անցել է Չինաստանը և Հնդկաստանը Արևմուտքի ու Հյուսիսի հետ կապող հիմնական մայրուղիներից մեկը։ Ճանապարհը Իրանից, Արաքսի վրայով (Ջուղայի մոտ) անցնում էր գետի ձախ ափով Ջուղա և Նախճավան քաղաքներով և ուղղվում դեպի Հայաստանի տնտեսական ու մշակութային կենտրոնները Այրարատ նահանգում՝ Արտաշատ, Դվին, Երևան, Վաղարշապատ, Արմավիր, Երվանդաշատ քաղաքները։ Այնուհետև մայրուղին

[73] Strabo. XI, 14, 4։

*կտրում էր Արաքս գետը, անցնում աջ ափը, հասնելով Հայկական պարի պատնեշին։ Այս լեռներում կային մի քանի լեռնանցքներ, որոնցից առավել հայտնի են երեքը՝ Խաչ (այժմ՝ Խաչգյադուկ կամ Ջինգիլ), Առուճ կամ Զոր (այժմ՝ Կուչաղի կամ Քարվանսարա) և Աղտո ձոր։ Այս լեռնանցքներով Արարատյան դաշտը, Այրարատ նահանգը, կապվում էր Հարավային Հայաստանի լեռնային հովիտների ու դաշտավայրերի՝ Կոգովիտի, Ծաղկոտնի, Բագրևանդի հետ, որոնք հնում վարչական տեսակետից Այրարատ նահանգի բաղկացուցիչ մասերն էին կազմում։*

*Բագրևանդի դաշտից Կղեսուրք լեռնանցքով Արարատյան դաշտը կապվում էր բնական միջանցքի շարունակության՝ Բասենի, Կարինի (Էրզրում), Դերջանի բարձրադիր դաշտերի հետ, որոնք հետզհետե իջնելով վերջանում են Եկեղյաց դաշտավայրով։*

*Նույն Բագրևանդի, Ծաղկոտնի և Կոգովիտի միջոցով Այրարատ նահանգը կապվում էր Վանա լճի գոգահովտի, Հարքի, Տարոնի և Ծոփքի լեռնահովիտների և այնուհետև՝ Միջագետքի դաշտավայրի հետ։*



Վայոց ձորի լեռները

*Հյուսիսում Արարատյան դաշտը Բամբակաձոր և Տաշրատափ (Լոռու սարահարթ) գոգավորություններով կապվում է Կուր գետի հովտի հետ։ Արարատյան դաշտը համեմատաբար լայն մուտք ունի հյուսիս-արևելքում, որտեղ Հրազդան գետի ջրային զարկերակը կապում է այն Սևանի գոգավորության հետ։ Հայաստանի պատմական կյանքի բոլոր դարաշրջաններում Սևանա լճի ավազանը ամենասերտ կապերով կապված է եղել Այրարատ նահանգի հետ։ Սևանա լճի կողմից բնական պատնեշ էին հանդիսանում Արեգունի լեռները և Ջիթահանից սարի (Մեծ Մայմեխ) անտառոտ շղթան, որտեղ հիմնական անցքն էր Թեժառույք գյուղի (այժմ՝ Մեղրաձոր) մոտ գտնվող Փուսա լեռնանցքը։ Վեր-*

ջինս պաշտպանվում էր Կուր գետի դաշտավայրի կողմից Կայան բերդի օգնությամբ (ավերակները՝ Հախկլըու գյուղի մոտ), այժմյան Դիլիջանի (պատմական Հովք) շրջակայքում։ Արեգունի-Քաշաթաղ և Սոդքի լեռների վրայով Հայաստանի կենտրոնական գավառներից անցնում էին երկու հիմնական լեռնանցքներով, որոնք հայտնի էին Դուռն Փառիսոսի (այժմ՝ Սատանախաչ) և Սոդք-Բերդկունք անուններով։

Վերջապես Սյունիքի լեռնաշղթայի լեռնանցքներով Արարատյան դաշտը կապվում էր Սյունիքի սարահարթի և այնուհետև Արցախի լեռնաստանի ու Կուր—Արաքսյան ցածրավայրի հետ։

Արարատյան դաշտի այսպիսի դիրքը բարձրացնում էր Այրարատ նահանգի նշանակությունը։ Նահանգի կենտրոնական մասը (Այրարատը նեղ իմաստով) զբաղեցնում էր այդ դաշտի հիմնական շրջանը, Արագած և Գեղմաղան և Մեծ ու Փոքր Մասիսի լեռների միջև և տարածվում էր Արաքս գետի հովտում՝ Ախուրյան գետից մինչև Գայլեդրունք՝ Շարուրի դաշտում։ Այրարատը, Հայաստանի ամենագեղեցիկ և արգավանդ մասերից մեկը, բոլոր դարաշրջաններում ընդհուպ մինչև մեր օրերը, եղել է ողջ Հայաստանի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքի կենտրոնը։ Այստեղ են եղել Հայաստանի մայրաքաղաքներ՝ Արմավիրը, Երվանդաշատը, Արտաշատը, Վաղարշապատը, Դվինը և այժմ Երևանը։ Վերջապես Այրարատից (նեղ իմաստով) հեռու չէր նաև Շիրակը՝ Անի մայրաքաղաքով։

Այրարատը դադարեց Հյուսիսային Հայաստանը հարավայինի հետ կապող օղակի գեր խաղալ այն ժամանակաշրջանում, երբ Հայկական պարի լեռնանցքները կորցրեցին իրենց նշանակությունը որպես լեռնային ճանապարհներ և երբ Իրանից եկող մայրուղին, շրջանցելով Այրարատը, Հերի (Խոյի) ու Մակվի վրայով ուղղվեց դեպի Կոգովիտ, Ծաղկոտն ու Բագրևանդ։

Արարատյան դաշտի նման բնա-պատմական պայմաններ ուներ Կապուտան (Ուրմիա) լճի գոգահովիտը, որի արևմտյան մասը՝ Պարսկահայք նահանգի տերիտորիան, մտնում էր Հայաստանի կազմի մեջ։

Վանա լճի գոգահովիտը բարձրադիր սարահարթ է, որը նպաստավոր կլիմայական պայմաններ ունի բարձր զարգացած երկրագործության համար։ Երեք կողմից լեռներով շրջապատված առափնյա շրջանը Վան քաղաքի մոտ, թեև ծովի մակերևույթից զգալիորեն բարձր է (1720 մ.), բայց մեղմ կլիմա ունի, նման միջերկրածովյանին։ Խլաթի շրջանում մինչև օրս պահպանվել են ձիթենու պուրակները։ Այստեղ զարգացած է խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Վանա լճի շրջակայքի բարենպաստ բնա-պատմական պայմանների շնորհիվ այն դարձել է աշխարհի հնագույն քաղաքակրթություններից մեկի՝ ուրարտական պետության կենտրոնը և այստեղ առաջացավ հնագույն հայկական թագավորությունը մ. թ. ա. VI դարի սկզբներին։

Ոչ պակաս արգավանդ էր Կուր գետի աջափնյա շրջանը, որը հելլենիստական դարաշրջանում և զարգացած միջնադարի ժամանակաշրջանում մտնում էր Հայաստանի կազմի մեջ։ Ստրաբոնը հատկապես նշում է Շակաշենի (ներկ. Կիրովաբադի շրջանը) և Գուգարքի (այժմյան Ալգետ և Խրամ-Ցուրտագետ) գետերի ցածրավայր հովիտների բերրիությունը։ Նրա ասելով, Արաքսի հովտից այն կողմ գտնվում է «Շակաշեն (Սակասենե) շրջանը, որը նույնպես սահմա-

նակից է Աղվանքին և Կուր գետին, հետո Գուգարքը (Գոգարենե)։ Ամբողջ այս երկիրը (նկատի ունի Կուր գետի աջափնյա շրջանը. Ռեդ.) առատ է պտուղներով, այգիներով և մշտադալար բույսերով և տալիս է նույնիսկ ձիթապտուղ»[74]։

Մի այլ տեղ Ստրաբոնը, անդրադառնալով սակերի (շակերի) արշավանքների հարցին, գրում է, որ «Հայաստանում նրանք տիրացել են լավագույն հողերին, որոնց տվել են իրենց անունը՝ Շակաշեն»[75]։

## 5. ԿԼԻՄԱ

Հայկական լեռնաշխարհի կլիման պայմանավորված է նրա դիրքով և երկրի բարդ ռելիեֆով։

Մթնոլորտի շրջանառությունը Առաջավոր Ասիայում իր առանձնահատկությունները ունի և սեզոնային փոփոխություններ է կրում։ Ձմեռվա ընթացքում Առաջավոր Ասիայի վրա տարածվում է Կենտրոնական Ասիայի խորքերից եկած չոր, ցամաքային օդային զանգվածների լայն հոսանքը։ Այդ ձմեռային օդային հոսանքը, որպես կանոն, իշխում է նոյեմբերից մինչև մարտ, բայց առավել մեծ ուժի է հասնում հունվարին։ Սակայն հաճախ օդի ձմեռային հոսանքը խախտվում է դեպրեսիաներով (մթնոլորտային ճնշման իջեցման տարածությունը)։

Կարելի է նշել Առաջավոր Ասիայի կլիմայի վրա ազդող դեպրեսիաների հիմնական երկու ուղի։ Առաջին ուղին այն դեպրեսիաներն են, որոնք կուտակվում են Բալթիկ ծովի վրա, ցածր ճնշման ընդարձակ շրջանից և շարժվում են դեպի Սև ծով. այդ պատճառով էլ դրանք, որպես կանոն, ընդգրկում են Սև ծովի պոնտական ափը միայն։ Պոնտական լեռնաշղթան արգելակում է նրանց տարածումը Հայկական լեռնաշխարհի խորքերում։ Հայկական լեռնաշխարհի կլիմայի վրա անհամեմատ ավելի մեծ ազդեցություն են գործում այն դեպրեսիաները, որոնք կուտակվում են էգեյան ծովի վրա և տարածվում Փոքր Ասիայում ու Հայկական լեռնաշխարհում։

Դեպրեսիաների տարածումը և սառը օդի զանգվածների դրան հաջորդող ներխուժումը սովորաբար առաջ է բերում ձյան առատ տեղումներ, որոնք իշխում են Հայկական լեռնաշխարհում գրեթե ամենուր։ Եզրային լեռնաշղթաների բարձունքների վրա համատարած ձյունածածկոցը պահպանվում է տարվա ցուրտ ժամանակի ողջ ընթացքում։

Ձմռան ամիսների ընթացքում նույնիսկ գոգահովիտներում գոյանում է ձյան զգալի շերտ, որը հասնում է 1,5 մ. բարձրության և պահպանվում է մինչև ապրիլ ամիսը։ Հայկական լեռնաշխարհում ցրտի կենտրոններն են Կարսի և Կարինի (էրզրումի) սարահարթերը[76]։

Օդի շրջանառությունը վճռական փոփոխություններ է կրում մարտ, ապրիլ և մայիս ամիսներին, կապված օդի ամառային հոսանքների առաջացման հետ։

Անձրևները տեղում են գլխավորապես մայիս ամսին, կապված միջերկրածովյան մթնոլորտային ճնշման նվազագույնների՝ մինիմումների անցման հետ։

---

[74] Strabo, XI, 14, 4։

[75] Տե՛ս նույն տեղում, XI, 8, 4։

[76] Տե՛ս С. Н. Матвеев, Турция (Азиатская часть—Анатолия), физико-географическое описание, М.—Л., 1946, էջ 36—40։

Տարվա այս ժամանակամիջոցում թափանցող դեպրեսիաները վերընթաց շարժման ընթացքում ինտենսիվ ամպրոպային երևույթներ են առաջացնում։ Դրանց հաճախ գումարվում են տեղական (ջերմային) ամպրոպները լեռնապարերի մոտերքում։

Օդի շրջանառության, ջերմաստիճանի և տեղումների ռեժիմի այս առանձնահատկությունները պայմանավորված են Հայկական լեռնաշխարհի ռելիեֆով և կլիմայական բազմազան պայմաններ են ստեղծում երկրի տարբեր շրջաններում։

Հայկական լեռնաշխարհում ներկայացված են կլիմայի երեք հիմնական գոտի. ա) փոքրասիական տիպի չոր մերձարևադարձային (օրինակ, Վանա լճի ավազանը), բ) արալա-կասպիական տիպի չոր ցամաքային (Արարատյան դաշտը) և գ) փետրախոտային տափաստանների կլիմա (բարձրադիր հրաբխային սարահարթեր)։

Հայկական լեռնաշխարհի կլիմայական պայմանների վրա մեծ ազդեցություն է թողնում երկրի ռելիեֆը։ Հայաստանի լեռնապարերի զուգահեռականային ուղղությունը ազդում է ջերմաստիճանի իջեցման վրա երկրի հարավից դեպի հյուսիս անցնելիս։

Շրջակա երկրների համեմատությամբ Հայկական լեռնաշխարհի կլիման աչքի է ընկնում զգալի խստությամբ, հատկապես Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի տերիտորիայում։ Այստեղ կլիման խիստ ցամաքային է, մոտ տափաստանային կլիմային։ Կարինում (Էրզրումում) և Կարսում հինգ ամսվա ընթացքում, նոյեմբերից մինչև մարտ, ամսվա միջին ջերմաստիճանը զրոյից ցածր է։ Բացարձակ նվազագույնը Կարսում հասնում է —43°,5′։ Ընդհանուր առմամբ Կենտրոնական հրաբխային բարձրավանդակի համար բնորոշ է ցուրտ ձմեռը և զով ամառը։

Փակ գոգավորությունների համար բնորոշ է ուժեղ ջերմացումը ցերեկվա և շեշտակի սառեցումը՝ գիշերվա ընթացքում։

Լեռնաշխարհի եզրային լեռնաշղթաները, ներքին սարահարթերի համեմատությամբ, աչքի են ընկնում զգալիորեն ավելի մեծ խոնավությամբ, քանի որ եզրային բարձր լեռնապարերը արգելակում են մոտակա ծովերից եկող խոնավ օդի հոսանքների մուտքը։ Այդ պատճառով էլ լեռնաշխարհի ծայրամասային շրջաններում համեմատաբար առատ տեղումներ են լինում, մինչդեռ կենտրոնական սարահարթերում դրանք քիչ են։ Այսպես, օրինակ, Լոռիում և Սևանա լճի ավազանում տեղումների միջին քանակն է 500—600 մմ։ Խարբերդում՝ մոտ 600 մմ, Շիրակում՝ 400—500 մմ, Դիարբեքիրում՝ 408 մմ։ Լեռնաշխարհի ալպիական գոտում հարաբերական խոնավությունն, այնուամենայնիվ, ավելանում է, ամպամածությունը աճում է և ցանքերը ավելի ապահովված են խոնավությամբ։

Զգալիորեն քիչ է տեղումների քանակը լեռնաշխարհի ցածրադիր վայրերում։ Արարատյան դաշտում, օրինակ, տեղումները լինում են գերազանցապես գարնանը, 150—300 մմ։ Ամենաչոր վայրը Արալըխ գյուղն է (ծովի մակերևույթից 790 մետր բարձր) Արարատի ստորոտում։ Այստեղ տեղումների միջին քանակն է 160 մմ։ Երևանում (1000 մ ծովի մակերևույթից բարձր) տեղումների տարեկան քանակն է 318 մմ, ըստ որում ամենից շատ տեղումներ

*լինում են մայիսին, ամենից քիչ՝ օգոստոսին։ Ամառը Երևանում շոգ է (հուլիս-օգոստոսի միջին ջերմաստիճանն է 25), ձմեռը՝ ցուրտ (հունվարի միջինը՝ —6,4)։*

*Ամենաուժեղ տատանումները ձմռան ու ամռան միջև դիտվում են Արաքսի հովտում։ Ամռանն այստեղ նույնքան շոգ է, որքան արալա-կասպիական ցածրավայրում։ Մյուս կողմից ձմռանը, սառն օդի ելքի դժվարության հետևանքով, Արարատյան դաշտում է տեղավորվում անտիցիկլոնային շրջանը (Հայկական անտիցիկլոն)։ Շրջակա լեռներից Արաքսի հովիտն են ներխուժում սառը օդի հոսանքները, որոնք կանգնելով այնտեղ, ձմեռը դարձնում են բավականաչափ խստաշունչ։ Հունվարի միջին ջերմաստիճանն է —11,5-ից մինչև —8։*

*Ավելի տաք և մեղմ կլիմա ունի Տիգրիս գետի հովտում ընկած Աղձնիք նահանգը։ Այստեղ, Հայկական Տավրոսից հարավ, ձմռան միջին ջերմաստիճանն է 3—6։ Անձրևներ տեղում են նաև ձմռանը։*

## 6. ՀՈՂԱՅԻՆ ԾԱԾԿՈՒՅԹԸ

*Հայկական լեռնաշխարհի հողերի տեսակները պայմանավորված են երկրի զոնալությամբ և ենթարկվում են ուղղահայաց զոնալության օրինաչափությանը։ Դա արտահայտվում է նրանով, որ Հայաստանում առկա են հողերի բոլոր տեսակները՝ սկսած անապատային և կիսաանապատային հողերից մինչև անտառային ու լեռնային մարգագետինների հողերը*[77]*։*

*Լեռնաշղթաների կատարներին և բարձր լեռնագագաթների վրա կան իսկական ալպիական՝ սովորաբար շիկակարմիր և վարդագույն, քիչ մոխրակերպ տորֆային հողեր։*

*Մերձալպիական գոտում գերակշռում են հացահատիկային մարգագետինների սևահողային տիպի և բազմախոտ բույսերի շագանակագույն հողերը։*

*Բարձր լեռնային գոտում հյուսիսային և հարավային լանջերին հողերը շեշտակիորեն տարբերվում են միմյանցից։ Ալպիական գոտում հյուսիսային լանջերի հողերը, հարավայինների համեմատությամբ, ավելի մուգ, համարյա սև երանգների հասնող գույն ունեն։ Մերձալպիական գոտու հյուսիսային լանջերին գերակշռում են զարգացած, սևահողային տիպի հողերը, իսկ հարավային լանջերի հողերը խիստ խճոտ և քարքարոտ են։*

*Անտառային հողերը Հայկական լեռնաշխարհում քիչ են, բայց հնում նրանց գրաված տարածությունն ավելի մեծ է եղել։ Հայկական լեռնաշխարհի անտառային հողերին բնորոշ է մորֆոլոգիական թույլ արտահայտված մոխրակերպությունը։*

*Հայկական լեռնաշխարհում ամենից ավելի տարածված են տարբեր տեսակի տափաստանային հողերը, որոնք զբաղեցնում են հրաբխային սարահարթերի և հարթավայրերի տարածության մեծ մասը, ինչպես նաև լայն հովիտներն ու գոգավորությունները։ Տափաստաններին բնորոշ է իսկական (սևվագույն) սևահողը՝ կարբոնատների ցածր հորիզոնով։ Այդ շրջաններում տեղումներն ամենից ավելի առատ են՝ 500—550 մմ։*

---

[77] *Տե՛ս А. Л. Тахтаджян,* Ботанико-географический очерк Армении, Тбилиси—Ереван, 1941.

Սրանցից վեր, մերձալպիական գոտուն ավելի մոտ, տիպիկ սևահողերը փոխարինվում են հիմնազրկված սևահողերով։

Տափաստանային և անտառային հողերի միջանկյալ տեսակն են շագանակագույն և բաց շագանակագույն հողերը։ Այս գոտում տեղումների տարեկան քանակը 350—400 մմ է։

Ավելի ցած՝ փետրախոտային կիսաանապատների գոտում շագանակագույն հողերը փոխվում են կիսաանապատային գորշ հողերի։ Այս գոտում գերակշռում են լավային հեղեղներից գոյացած ալիքավոր դաշտավայրերը, որտեղ գերակշռող են անգեղիտա-բազալտները և հրաբխային տուֆերը։

Արարատյան դաշտում, փետրախոտային կիսաանապատային գորշ հողերից ցած, ընկած են աղուտաքույսային տափաստանի բաց-գորշավուն հողերը։ Սա արդեն ալյուվիալ նստվածքների և խիստ չորային կլիմայի շրջանն է։ Տեղումների տարեկան քանակն է 300 մմ։

Ցամաքային կլիմայի պայմաններում կենտրոնական հրաբխային սարահարթի հովիտներում ու դաշտավայրերում հողային ծածկույթը ձևավորվում է գերազանցապես ջերմային հողմահարման ակտիվության պայմաններում։ Անձրևաջրերը հեշտությամբ քայքայում են գիպսաբեր լճային և հրաբխային սերիաների փխրուն, երրորդային նստվածքները։ Նշված պրոցեսների գործունեության հետևանքով լեռներից շատերի լանջերը խիստ քայքայված են։ Նստվածքների քայքայման պատճառով մերկացած լանջերը հաճախ կարստային ռելիեֆ են ստանում[78]։ Բարձր լեռնային գոտիների մթնոլորտային տեղումների ջրերից գոյանում են ժամանակավոր լեռնային գետակներ՝ հեղեղներ, որոնք ցած, դեպի լեռնային զանգվածի ստորոտները, դաշտավայրերն ու գոգահովիտներն են քշում հողմահարումից լանջերի վրա կուտակված գոյացումները։ Այս ամենի հետևանքով այդ վայրերում ձևավորվում են բերովի հողատեսակների հովհարաձև նստվածքներ, որոնք աչքի են ընկնում բարձր բերրիությամբ[79]։ Այդ պատճառով էլ անհիշելի ժամանակներից ի վեր «հովիտ» (ուրարտերեն «խուբի») կոչվող այն ընդարձակ կիրճերից դուրս եկած նստվածքները, Հայկական լեռնաշխարհի երկրագործական կենտրոններն էին։ Հենց այդ հովիտներում էր կենտրոնացած երկրագործ ազգաբնակչության հիմնական մասը։

Այգեգործության և խաղողագործության զարգացմանը հատկապես նպաստում են արևահայաց լեռնալանջերի հողային նստվածքները։ Հայ հողագործը արևահայաց լանջերը յուրացնում էր դարավանդներ սարքելու միջոցով։ Նա ապահովում էր լեռնալանջի հողը հեղեղումներից և նախադրյալներ ստեղծում բերրի հողի կուտակման համար։ Դարավանդային հողագործությունը «նորք» կոչվող այս յուրացված հողերում, հայտնի էր դեռևս ուրարտական շրջանում, Վանա լճի առափնյա մասերում, և մինչև օրս էլ պահպանում է իր գոյությունը պատմական Հայաստանի ողջ տերիտորիայում։

Այս պատճառով էլ գյուղատնտեսական տեսակետից լեռնալանջերը երկու տեսակի էին՝ «արեգունի» և «ծմակ»։ Վերջիններս կարող էին պիտանի լինել միայն անասնապահության համար։

78 Տե՛ս С. Н. Матвеев, Турция (Азиатская часть—Анатолия), физико-географическое описание, էջ 47—48։

79 Տե՛ս С. Н. Матвеев, նույն տեղում, էջ 49։

## 7. ԲՈՒՍԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ

Հայկական լեռնաշխարհի բուսականության բազմազանությունը պայմանավորված է ռելիեֆի, հողի և կլիմայական պայմանների բազմազանությամբ[80]։

Հայկական լեռնաշխարհը գտնվում է երկու միմյանցից խիստ տարբեր բուսաբանական-աշխարհագրական երկրամասերի՝ խոնավ և անտառոտ Վրկանա-պոնտականի և չոր ու անտառազուրկ Իրանականի հանդիպման վայրում։ Վրկանա-պոնտական բուսաբանական-աշխարհագրական երկրամասը ձևավորվել է երրորդական շրջանի վերջում, երբ սառցադաշտային դարաշրջանի հաստատման և կլիմայի փոփոխության հետևանքով մեզոֆիլային արկտոերրորդային բուսականության տերևաթափ ծառերի ներկայացուցիչների՝ թխկու, հաճարի, կաղնու, տանձենու, խնձորենու, կեռասենու, սալորենու, լորենու, բեկտենու և այլ տեսակների հզոր ալիքը դուրս է մղում Հայկական լեռնաշխարհում գերիշխող երրորդային բուսականությունը։

Վրկանա-պոնտական բուսաբանական-աշխարհագրական երկրամասը իրենից ներկայացնում է մնացուկային և աղքատացած մեզոֆիլային միջին խոնավության պահանջող անտառների երկիր։ Երկրամասի սահմանները համընկնում են արևելյան հաճարենու, դափնակեռասենու և մյուս տեսակների արեալներին, որոնց մեջ են մտնում Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և արևմտյան մասերը։

Իրանական բուսաբանական երկրամասը, ընդհակառակը, աչքի է ընկնում խիստ չորակայուն անապատային, կիսաանապատային և լեռնային-չորակայուն բուսականությամբ։ Ծառատեսակներից այստեղ աճում են միայն գիհին, պիստակենին, նշենին, չորակայուն տանձենին և մի շարք թփուտներ։

Թփուտներից այստեղ հանդիպում են՝ մանրատերև նշենու հատուկ տեսակներ, նեղ տերևներով վայրի տանձենի, բալենի, բեկտենի և այլն։

Կմախքային լեռների գիպսաբեր կավա-խճային նախալեռներում (օրինակ՝ Ջուղա և Գողթան գավառը առհասարակ) աճում է «համադա»-ն անապատային տիպի բուսականությունը։

Լոռու (Տաշրատափ), Շիրակի, Կարսի, Սևանա լճի, Վանա լճի և այլ շրջանների հրաբխային սարահարթերի ընդարձակ տարածությունները բռնված են լեռնային տափաստաններով։ Այստեղ տարածված են առավել բնորոշ փետրախոտային տափաստանները։ Հանդիպում են խոտավետ տափաստանների նաև այլ տեսակներ՝ շյուղախոտային, իսկ ավելի չոր և քարոտ վայրերին հատուկ են տրագանտյան տափաստանները (օրինակ՝ Վայոց ձորում, Ուրծաձոր (Վեդի) և Ազատ գետերի հովիտներում)։ Մարդու կողմից որպես վարելահող յուրացվելուց հետո լեռնային տափաստանները վեր էին ածվում գարու, կորեկի և ցորենի արտերի։ Անհրաժեշտ է նշել, որ Հայկական լեռնաշխարհը հատկապես կուլտուրական ցորենի հնագույն հայրենիքն է եղել[81]։

---

80 Բուսական աշխարհի բաժինը գրելիս հիմք են ծառայել Ա. Լ. Թախթաջյանի աշխատությունը՝ Ботанико-географический очерк Армении, Тбилиси—Ереван, 1941.

81 Տե՛ս Н. И. Вавилов, Азия — источник видов, журнал «Наука и жизнь», 1968, № 1, էջ 98։

Հայկական լեռնաշխարհը, հատկապես Միջնաշխարհը, աղքատ է անտառներով։ Օրինակ, Արաքսի վերին հոսանքում գտնվող Բասեն գավառը բաղկացած է երկու մասից՝ անտառոտ և անտառազուրկ։ Այս վերջինս Վանանդ գավառն էր Ախուրյան գետի վերին հոսանքում, որը հին հայերն անվանում էին Անփայտ Բասեն։ Խիտ սաղարթավոր և մասամբ սոճու անտառներ պահպանվել են Փոքր Կովկասի և Հայկական Տավրոսի հյուսիս-արևելյան և հյուսիս արևմտյան լանջերին։ Հնում անտառները, հատկապես սոճու, շատ ավելի մեծ տարածություններ են գրավել, քան այժմ։ «Մայրի» բառը հայերենում նշանակում է սոճու մի տեսակ, «ազատ մայրի»[82], նշանակում է ազնվատեսակ մայրի։ Բացի այդ, մայրի նշանակում է առհասարակ անտառ։ Արդյոք սա ապացույց չէ՞ այն բանի, որ հնում Հայաստանի անտառներում գերակշռել է սոճին և նրա խոշոր տեսակները։ Վայրի հոնը, խնձորենին, տանձենին, սալորենին ամբողջ անտառներ են կազմել։ Լայնորեն տարածված են՝ Ընկուզուտ, Հունուտ, Խնձորուտ, Տանձուտ, Շլորուտ, Ձկռուտ և այլ նման կարգի տեղանուններ։

Ուշ երրորդական շրջանի անտառային զանգվածները Հայկական լեռնաշխարհի սահմաններում ամենից լավ պահպանվել են հյուսիս-արևմտյան եզրային լեռնաշղթաների վրա՝ Պոնտական և Աճարա-Մեսխական լեռների լանջերին։ Լեռնաշխարհի մյուս մասերում այս անտառները խիստ նոսրացված են, իսկ շատ վայրերում՝ իսպառ ոչնչացված են մարդու ձեռքով։ Կենտրոնական հրաբխային սարահարթում անտառային այս զանգվածները թաղված են լավայի շերտերի տակ։

Լեռնաշխարհի եզրային լեռնաշղթաների լանջերին, ծովի մակերևույթից 600 մ բարձրության վրա աճում է հաճարենու անտառը եղևնու և սաղարթավոր անտառների կղզյակներով։ Ճորոխի հովտում եղևնասաղարթավոր անտառների տեղամասերում աճում են արևելյան եղևնի՝ «ազատ մայրի», հաճարենի, թխկի, բոխի։ Տեղ-տեղ հանդիպում է եղևնին։ Ավելի վեր, արդեն մերձալպյան գոտում, տարածված են կեչուտները, լեռնային թխկու խառնուրդով։ Մեծ տարածություններ է բռնում կովկասյան մրտավարդը։

Հնագույն դարաշրջաններում կաղնու և հաճարենու անտառները գրավել են անհամեմատ ավելի մեծ տարածություններ, քան այժմ։ Ներկայումս այստեղ-այնտեղ պահպանվել են նրանց մնացորդները միայն. նման վիճակը հետևանք է մարդու անխնա վերաբերմունքի դեպի անտառները։ Կաղնու անտառների կղզյակներ են պահպանվել Միջնաշխարհի շատ մասերում՝ Արագածի լանջերին, Նիգ գավառում (Ապարան), Սևանա լճի Արեգունի կոչված ափին, Ազատ և Ուրծաձոր (Վեդի) գետերի ավազաններում, Վայոց ձորում, Արևմտյան Եփրատի ափին՝ Աշկալա գյուղի մոտ, Խնուս գետի ափին՝ Բյուրակն զանգվածի արևմտյան լեռնաբազուկներում, Քարքե լեռան հարավային լանջերին, Հայկական Տավրոսի լանջերին և այլն։

Փոքր Կովկասի լեռներում ամենից ավելի տարածված են հաճարենու անտառները, որոնք գրավում են առավել զառիկող, հյուսիսային լանջերը 1200—

82 Հակոբ Կարնեցի. Տեղեկագիր Վերին Հայոց, Վ. Ա. Հակոբյան, «Մանր ժամանակագրություններ 13—18-րդ դդ.», հատ. Բ, Երևան, 1959, գրքի մեջ, էջ 555։

1750 մ բարձրության վրա։ Հաճարենուն հաճախ խառնվում են բոխին, թխկին, թեղին, երբեմն կեչին և այլն։

Անտառի ամենավերին ծայրին տարածված են պուրակային անտառներ կեչու և լեռնային թխկու գերակշռությամբ։

Խառն անտառների կղզյակները լայնորեն տարածված են լեռների հյուսիսային լանջերի վերին շերտերում։ Երբեմն հանդիպում են նաև կեչու ու մեծ տնկարքներ։

Լեռների հարավային լանջերի վրա սովորաբար հանդիպում են կաղնու անտառների կղզյակներ։ Կաղնուն ուղեկցում են թխկիները, բոխին, լորին և այլն։

Հայկական լեռնաշխարհում տեղ-տեղ դեռևս պահպանվում են սոճու անտառների մնացորդներ։ Դրանք հանդիպում են Ճորոխ գետի հովտում, Արտահանում Գյոլաբերդում, Մեծրաց լեռների (այժմ՝ Սողանլու-դաղ) լանջերին, տեղ-տեղ Բասենում և Հայկական պարի հյուսիսային լանջերին, Լոռիում և Դիլիջանում։ Ավելի նպաստավոր հողային պայմաններում սոճին փոխարինվում է լայնատերև ծառատեսակներով, գլխավորապես՝ հաճարենիով։

Հայկական լեռնաշխարհում առավել չորադիմացկուն բույսը հանդիսանում է գիհին։ Այժմ գիհու խիտ տնկարքները Հայաստանում գրեթե բացակայում են։ Այդ տեսակետից բնորոշ պատկեր են ներկայացնում Սևանա լճի Արեգունյաց (Գյունեյի) ափերը։

Արեգունյաց անտառը մնացորդն է այն համատարած անտառային օղակի, որով շրջապատված էր Սևանա լճի առափնյա տարածությունը։

Այդ մասին են վկայում նաև հարևան շրջանները և ողջ պատմական Սյունիքը։ «Զանգեզուրի ներկայիս անտառները,— գրում է Թախթաջյանը,— պատմականորեն կապված են վրկանյան տիպի երրորդական անտառային բուսականության հետ։ Ղարաբաղի անտառների հետ միասին, նրանք ներկայացնում են հնագույն վրկանյան անտառների աճանցյալը՝ խիստ ձևափոխված չոր կլիմայի և մարդու ազդեցության տակ[83]։ Եվ հիմա Զանգեզուրում կան այնպիսի երրորդային տեսակներ, ինչպիսին է, օրինակ, շագանակենին (zelkova erenata)։

Հնուց ի վեր Հայաստանի բնակիչները, հողագործական մշակույթը զարգացնելիս, հատուկ ուշադրություն էին դարձնում ոռոգման վրա, որից կախված է երկրամասի տնտեսական բարեկեցությունը։ Իսկ արհեստական ոռոգման հետ սերտորեն կապված էր արհեստական անտառապատման հարցը, որը չորային կլիմայի պայմաններում պետք է նպաստեր խոնավության պահպանմանը շոգ ամառվա ընթացքում։

Արհեստական անտառատնկումների մասին եղած տեղեկությունները վերաբերում են գլխավորապես Արարատյան դաշտավայրին և ընդհանրապես Հին Հայաստանի կենտրոնական նահանգ Այրարատին։ Ուրարտական արձանագրությունները վկայում են ջրանցքների շինարարության և զանգվածային ծառատնկումների մասին։

---

83. Տե՛ս *А. Л. Тахтаджян*, Ботанико-географический очерк Армении, էջ 65։

Այրարատում տնկված արհեստական անտառների մասին պատմում են վաղ շրջանի հայկական աղբյուրները։ Երվանդունիների հարստության հայ թագավորների շինարարական գործունեության մասին խոսելիս Մովսես Խորենացին հաղորդում է, որ Երվանդը «Տնկում է նաև մի մեծ անտառ գետի հյուսիսային կողմում, պարիսպներով ամրացնում է և ներսում արգելափակում է արագավազ այծյամներ, եղնիկների և եղջերուների ցեղեր, ցիռեր, վարազներ, որոնք աճելով ու բազմանալով անտառը լցրին, և նրանցով թագավորն ուրախանում էր որսի օրերին։ Անտառը նա կոչում է Ծննդոց անտառ»[84]։ Այդ անտառն ընկած էր, հավանորեն, Արաքսի ձախ ափին, Արմավիր ու Երվանդաշատ քաղաքների միջև։

Սկզբնաղբյուրներից մեզ հասած վկայությունների հիման վրա կարելի է ենթադրել, որ հին Հայաստանում արհեստական անտառները տնկվում էին այսպես կոչված «արքունի երկրում», որը Այրարատ նահանգն էր, և խոշոր հեթանոսական մեհյաններին կից։ Այս վերջիններում գերակշռում էին սոսու պուրակները։

Ալպիական և մերձալպիական գոտում տարածվում են Հայաստանի հուշակավոր արոտավայրերը՝ ալպիական և մերձալպիական մարգագետինները։

Ալպիական մարգագետինները փռված են լեռնաշղթաների կատարներին և հրաբխային զանգվածների բարձր գագաթների լանջերին։ Այստեղ են գտնվում այսպես կոչված ալպիական գորգերը, բազմախոտ մարգագետինները խոշոր վառ գույնի ծաղիկներով, որոնք ծածկում են Արարատի, Նեխ Մասիքի, Արագածի, Բյուրակնի և մյուս լեռնագագաթների լանջերը։

Ալպիական մարգագետինների գոտուն հաջորդում են մերձալպիական մարգագետինները։ Անտառազուրկ վայրերում այդ մարգագետիններն աստիճանաբար փոխվում են լեռնային տափաստանների և մարգագետնային տափաստաններին։

Մերձալպիական մարգագետիններին բնորոշ է 60—70 սմ հասնող բարձր խոտը։ Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան շրջաններում, անտառային գոտուց վեր, հաճախ հանդիպում են մրտավարդերի շքեղ մացառուտներ։

Միջնաշխարհի զգալի մասը գրավում են այս արոտավայրերը, որոնք հնագույն ժամանակներից սկսած նպաստել են անասնապահության զարգացմանը։

## 8. ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ

Երկրի կլիմայի ու բուսականության զոնալությանը համապատասխան է ներկայացված նաև կենդանական աշխարհը, որն աչքի է ընկնում իր բազմազանությամբ[85]։

Անապատների և կիսաանապատների գոտու կենդանական աշխարհը խիստ բազմազան է։ Միջատներից հատկապես տարածված են զանազան մորեխազ-

---

84 Տե՛ս Մովսես Խորենացի, Պատմություն հայոց, թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, Բ, խա։

85 Կենդանական աշխարհը շարադրված է հիմնականում Ա. Լ. Թախթաջյանի Ботанико-географический очерк Армении աշխատության հիման վրա։

գիները, որոնց որոշ տեսակներն իսկական չարիք են հողագործի համար։ Այդ միջատների բազմությունները թռչում գալիս են Իրանից և խժռում ցանքերը։ Այդ պատճառով էլ հնում գոյություն ուներ հատուկ պարհակ, որը նեպակ էր կոչվում. հողագործը պարտավոր էր ոչնչացնել որոշակի քանակությամբ մորեխ[86]։ Aeleropus littoralis-ի արմատների վրա ապրում է արարատյան կամ հայկական որդանը (Margarode hameli), որը հին հայերն անվանում էին որդան կարմիր. նրանից էր ստացվում հին աշխարհում լայնորեն հռչակված «հայկական ներկը»[87]։

Պատմության մեջ հայտնի է «Գինոյ բլուրը» (այժմ՝ Ղրմզի-թափա, Кырмызи-тапа), որը գտնվում էր Արտաշատ մայրաքաղաքի արևմտյան մատույցներում, Արաքսի աջ ափին։ Այս սարի մոտով էր հոսում «Գինոյ» կամ «Գինեգույն» գետը (այժմ՝ Կարա-սու), որտեղ պիտի գտնվեր արաբական աղբյուրների Ալ-Քիրմիզ քաղաքը, որ Արտաշատի մնացորդն էր միջին դարերում։ Այս վայրը այն ժամանակ համարվում էր «որդան կարմիր» ներկի արտադրության ու ներկարարության կենտրոն։ «Քիրմիզ» թարգմանություն է հայերեն «գինեգույն» բառի[88]։

Կիսաանապատներում ապրում են կարիճների, մողեսների և օձերի որոշ տեսակներ։

Փետրախոտային տափաստաններում շատ տարածված է կովկասյան ագաման, հաճախ հանդիպում են նաև անշարժ կոպերով յուրօրինակ մողեսը։ Տարածված է թունավոր գյուրզան։

Աղուտային կիսաանապատներին շատ բնորոշ է կլորագլուխը։ Աղուտային կիսաանապատներում և ավազուտներում հանդիպում է կովկասյան մողեսիկը և նրան շատ մոտ փոքրասիական մողեսիկը։

Թռչուններից կիսաանապատներում ապրում են աքարները, փոքրիկ արտույտները, գեղեցկուհի արոսը, սպիտակաբեղ շիկահավը, ճահիճներում լինում են՝ փոքր սպիտակ ձկնկուլը, մոխրագույն ձկնկուլը, քաջահավը, սպիտակ արագիլը։ Աղուտային ճահճոտ վայրերին շատ բնորոշ է սրակտուցը։

Կաթնասուններից կիսաանապատներում մշտապես ապրում են նապաստակը, աղվեսը, ժանտաքիսը, ճագարամուկը, ավազամուկը։ Արաքսի ափերի մոտ ապրում է կուղբը։ Արաքսի ճահճոտված ափերին հատուկ եղեգնուտներում ապրում էին վարազներ։ Այստեղ հանդիպում են նաև եղեգնակատուն, իսկ ավելի հազվադեպ՝ բծավոր բորենին։ Հնում այս վայրերում լինում էին նաև ջեյրաններ։

Հայաստանի լեռնային տափաստանների գոտու կենդանական աշխարհը շատ հարուստ և բազմազան է։ Սողուններից կարելի է մատնանշել դաշտային իժը։

---

86 Տե՛ս Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, ՍՊԲ, 1887, էջ 27։

87 Гамель, Об араратской кошенили, Журнал министерства внутренних дел, XVII, I, 1835, июль, էջ 192—217; А. С. Аветян, К вопросу о кошенили в Армении, ИАФАН, 1940, № 5, էջ 231—237, Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայաստանի որդան ներկի արտադրության պատմությունից, Տեղ. ՀԳԱՀԳ, 1946, № 2—9, էջ 17—26։

88 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 47—48։ Նաև՝ ՆՀԲ, Ա., էջ 552։

Թռչուններից ամենից ավելի բնորոշ են դաշտային կաքավը, լորերը, աքարները և զանազան գիշատիչներ։ Շատ հարուստ է տափաստանային գոտու ջրաճահճային թռչնաշխարհը։ Լճերում ու ճահիճներում՝ շամբերում ու մորբերում մշտապես ապրում են՝ ջրագռավներ, բադեր, սև փարփարներ, սուզաբադեր և որորներ։ Ձմեռներն այստեղ են գալիս կարապներ, սուզահավեր և այլն։ Սևանում հանդիպում է նույնիսկ տուրպան բևեռային բադը, որը սառցադաշտային շրջանի մնացուկ է։

Կաթնասուններից հանդիպում են դաշտամկներ, քարաբնակ կզաքիսներ, աղվեսներ, գայլեր, փոքրասիական գետնասկյուռներ։ Գետերի և լճերի ափերին լինում են ջրային առնետներ և կուղբեր։

Հայաստանի անտառների կենդանական աշխարհը ներկայացված է բարեխառն գոտու երկրներին բնորոշ տեսակներով։ Անտառաբնակ թռչուններից կարելի է մատնանշել փայտփորը, աղավնին, ճայը, սև և երգեցիկ կեռնեխը, ամուրիկը, երաշտահավը, լորոս-ճուռակը և ցախաքլորաճուռակը։

Ենթալպիական գոտու վերին անտառաեզրերում հանդիպում է կովկասյան ցախաքլորը։ Նոսրացած տնկարքներին բնորոշ են շիկահավը, դեղնածաղիկը, ճանճորսակը։ Կաթնասուններից անտառներում ապրում են կովկասյան սկյուռը, քնամուկը, անդրկովկասյան լուսանը, վայրի կատուն, արջը, այծյամը և մարալը։ Այժմ համարյա անհետացել է ազնիվ եղջերուն։

Անտառների եզրերին և նոսրացած անտառներում հանդիպում են նապաստակներ, գորշուկներ, ոզնիներ, աղվեսներ և կովկասյան աքիսներ։

Հնում անտառային այս կենդանիների տեսակներն ավելի շատ են եղել, քան հիմա։ Բնության և մարդու կողմից անտառների ոչնչացմանը զուգահեռ անտառային կենդանիների որոշ տեսակներն անհետացել են։ Այսպես, օրինակ, պեղումների ժամանակ գտնվել են անտառային կզաքիսի և վայրի ցուլի (զուբր) գանգեր։

Խիստ բազմազանությամբ է աչքի ընկնում կմախքային լեռների կենդանական աշխարհը։ Այստեղ կան բազմապիսի մորեխազգիներ։ Սողուններից բնորոշ են մողեսն ու իժը։ Թռչուններից տարածված են՝ լեռնային աղավնիները, քարակաքավը, սոխակը, սպիտակավզիկը, շիկահավը և այլ թռչուններ։ Կաթնասուններից ամենատիպիկ կենդանիներն են քարայծը և Արաքսի միջին հոսանքի ավազանին հատուկ հայկական վայրի ոչխարը։ Երբեմն հանդիպում են հովազը, լուսանը և տափաստանային շեկ կատուն։ Հանդիպում են նաև գորշուկը, քարաբնակ կզաքիսը, նապաստակը և այլն։

Անհամեմատ ավելի աղքատ է ալպիական գոտու կենդանական աշխարհը։ Միջատներից տիպիկ են մորեխազգիների անթև տեսակները։ Թռչուններից ալպիական մարգագետիններում և ծաղկագորգերում պատահում է եղջերավոր ալպիական արտույտը։ Ալպիական գորգերի վերին սահմաններում, սառցադաշտերի մոտ հանդիպում են լեռնային հնդկահավը։ Ալպիական գոտու ժայռերում ապրում են ալպիական շիկահավերը, սերինոսները, ալպիական արջնագռավները։ Կաթնասուններից հանդիպում են գայլեր, արջեր, դաշտամկներ։ Ալպիական գոտուց շատ ավելի հարուստ ու բազմազան է մերձալպիական գոտու կենդանական աշխարհը։ Շատ են թռչունները՝ լորերը, դաշտային արտույտները, կանեփահավերը և այլն։ Կաթնասուններից կարելի է նշել տեղ-տեղ

հանդիպող լեռնագագաթների քարքարոտ ժայռերում (Արագած, Նեխ-Մասիք, Բյուրակն) քարայծը։

Հայաստանի գետերն ու լճերը հարուստ են լեռնային գետերին և անուշահամ բարձրադիր լճերին հատուկ ձկներով։ Հատկապես տիպիկ է կարմրախայտը, որը լինում է լեռնային բոլոր գետերում։

Ձկների տեսակների բազմազանությամբ աչքի է ընկնում Սևանա լիճը։ Այստեղ ապրում են սաղմոնազգիներից տեղական տեսակները՝ իշխանը, գեղարքունին և բաղդակը, կողակը, ինչպես նաև Սևանի բեղլուն և Սևանի խրամուլին։ Վանա լճում ապրում է միայն մի տեսակ ձուկ՝ տառեխը։ Մուրց գետում հանդիպող ձուկն է «մուրծա» կոչվածը։

## 9. ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հայաստանի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով, որը պայմաններ է ստեղծել հնագույն ժամանակներից մետաղագործությամբ զբաղվելու համար։ Փոքր Կովկասի լեռներում վաղուց հայտնի են պղնձի, երկաթի, կապարի, արծաթի և ոսկու բազմաթիվ «բովեր» (հանքերի մշակումներ)։ Հյուսիսային Հայաստանում հայտնի էր Պղնձահանքը (այժմ՝ Ախթալա) Գուգարքի Ձորափոր գավառում և Աճանանի հանքերը Սյունիքում։ Սյունիքի ընդերքը առանձնապես հարուստ են մոլիբդենի հանքերով։ Ճորոխի ակունքներում և հատկապես Տայքում հայտնի էին ոսկու հանքերը՝ Փառանգիոն և Բոլոն (Բողբերդ) վայրերում։ Վասպուրականում Ռշտունիքի լեռներն իրենց հանքային հարստությունների շնորհիվ կոչվում էին «կապարահատաց և երկաթահատաց լերինք»։ Երկաթի, պղնձի և արծաթի հանքերով հայտնի էր Անգեղ-տուն գավառը Աղձնիքում՝ այժմյան Արղանա-Մադեն վայրում։ Այստեղ են հնագետները գտնում երկաթի մշակման հնագույն հետքերը[89]։

Աղահանքերով հռչակված էին Կողբը, Կաղզվանը և Նախճավանը։ Հայկական լեռնաշխարհը հարուստ է բազմաթիվ հանքային ջրերով՝ «ջերմուկներով» ու «թթու աղբյուրներով», որոնք հայտնի էին և հնում, և այժմ իրենց բուժիչ հատկություններով։

Հնագույն ժամանակներից Հայկական լեռնաշխարհը եղել է մետաղի արդյունահանման խոշորագույն կենտրոն։ Ավելին՝ այժմ ապացուցվում է, որ Հայաստանը եղել է մետաղագործության սկզբնական օրրաններից մեկը։

Միայն Սովետական Հայաստանի տերիտորիայի վրա հայտնաբերված հանքավայրերի հին շահագործման և մետաղաձուլության 600-ից ավելի տեղավայրերից ստացված տվյալների համաձայն, Հայաստանում հնագույն ժամանակներից արդյունահանվել և վերամշակվել են հանքանյութերի բոլոր հիմնական խմբերը. պղնձի, կապարի-ցինկի, մկնդեղի, ծարիրի, մանգանի, ոսկու, արծաթի, սնդիկի։ Բացի նշված մետաղանյութերից, լայն կերպով արդյունահանվում էին նաև ոչ մետաղական հանածոները՝ ագատ, խալցեդոն, յաշմա, լազուրիտ, բյուրեղապակի, օնիքս, մարմար, հրակայուն ապարներ, աղ, նավթ, բնական ներկանյութեր և այլն։

---

89 Տե՛ս Е. Черных, Первый металл планеты, журнал «Наука и жизнь», 1968, № 7, էջ 33, 37։

Արդեն երրորդ հազարամյակում մ. թ. ա. Հայկական լեռնաշխարհում մշակվում և արտահանվում էին պղնձե իրերը, իսկ Վան և Կարին (Էրզրում) քաղաքների շրջակայքում այն ժամանակ արդեն հայտնի էին անագի հանքերը[90]։ Հանքերի այս բազմազանությունն ու հարստությունն էր, որ հնագույն ժամանակներից Ուրարտուին բերեց մետաղամշակման կենտրոնի համբավ։ Հնագույն ժամանակներից հայտնի է աղահանքերի մշակումը Նախճավանում, Կողբում, Կաղզվանում[91]։

## 10. ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

Հայկական լեռնաշխարհը գտնվելով Առաջավոր Ասիայի հյուսիս-արևմրտյան մասում՝ միշտ բնական կամուրջի դեր է խաղացել Արևելքի և Արևմուտքի միջև։ Այստեղով են անցել հին աշխարհի ռազմա-ստրատեգիական ու միջազգային քարավանային առևտրի ճանապարհները, որոնց իշխելու համար հարևան մեծ պետությունները հաճախակի արյունահեղ պատերազմներ են մղել, և այդ պատերազմների թատերաբեմը սովորաբար եղել է Հայաստանը, որի ռազմա-ստրատեգիական նշանակությունը խիստ մեծ էր։

Հայկական լեռնաշխարհը, շրջապատված լինելով բարձր լեռներով, դրսի աշխարհի հետ հաղորդակցություն էր պահպանում մի քանի լեռնանցքների միջոցով, որոնք հին հայերի մոտ բնորոշվում էին «դրունք» (դռներ), «կղեսուրք» (հուն. κλεισοῦραι), «կապան» և «պահակ», «ձեռնակ» բառերով։ Նվաճողներն երկիրը իրենց ենթարկելու համար, առաջին հերթին ուշադրություն էին դարձնում այդ լեռնային անցքերի վրա։ Այնտեղ կառուցում էին ամրություններ և հատուկ կայազորներ տեղավորում։ Բացի այդ ռազմա-ստրատեգիական նշանակությունից, լեռնային անցքերն ունեին և ֆիսկալ նշանակություն։ Այդ տեղով անցնող առևտրական քարավաններից ստացվող մաքսը և բաժը կազմում էր եկամուտների հսկայական աղբյուր։

Հայաստանի լեռնանցքների նշանակության վրա առաջին անգամ ուշադրություն են դարձրել ասորեստանյան թագավորները դեռևս մ. թ. ա. XIII դարից սկսած, կատարելով իրենց ներխուժումները Արածանիի հովիտը՝ Արևմտյան Տիգրիսի արևելյան ակունքների (Սուփնատ գետի, այժմ Զեբենե-սու կոչվող գետը) շրջանի վրայով, որտեղ գտնվում է լեռնանցքների մի ամբողջ սիստեմ, և որը հին հայերը կոչում էին «կղեսուրք»։ Այստեղ էր գտնվում Օլոր գյուղը, որը այսպես էր կոչվում ոլորապտույտ իջնող ճանապարհի համար։

Հայկական Տավրոսի բնական պատնեշը հարավից կտրում էին, բացի այս լեռնանցքներից, մի քանի այլ անցքեր, որոնցից անհրաժեշտ է հիշատակել Զորապահակը կամ «կղեսուրք Բաղ[աղ]եշոյ» (κλεισοῦραι Βαλαλεισῶν, այժմ՝ Բահվա—Բիթլիսի անցքը), Կրերեաց լեռնանցքը (ուրարտ. Կիրրուրի) Կորդվաց լեռներում և Զարասպ լեռնանցքը (այժմ՝ Կելիշին համանուն լեռան հյուսիսային փեշերին) Զագրոսի լեռներում։ Վասպուրականի լեռներում հայտնի էին Կոտորի և Սուրբ Խաչ անցքերը։ Հայկական լեռներում (այժմ՝ Ղարա-դաղ)

---

90 Տե՛ս Д. И. Гордеев, История геологических наук, ч. 1, М., 1967, էջ 102։

91 Նույն տեղում։

և Կասպից լեռներում հայտնի էին՝ Դրունք Հայոց և Դրունք Կասպից[92] լեռնանցքները։

Հայկական լեռնաշխարհի հյուսիսային պատնեշը հանդիսացող Փոքր Կովկասի հիմնական լեռնանցքներից անհրաժեշտ է հիշել Դուռն Փառիսոսի (այժմ՝ Սատանախաչ), Սողք-Բերդկունքի, Մայրադուրք կամ Այլախի (այժմ՝ Սիսիանի) և Շահապունիքի (Բոնակոթի) անցքերը։ Վարդենյաց լեռներում հայտնի է Սուլեմա լեռնանցքը։ Պոնտական և նրա շարունակությունը կազմող Կապույտ լեռներում հայտնի էին Բոնակապանը, Փոսադուռն (այժմ՝ Վավուկ), Վրաստանի Մեսխական լեռներում՝ Գոդերձական (այժմ՝ Գոդերձի) և Ռկինիսջվարի կամ Ջեկարի լեռնանցքը։

Հայկական լեռնաշխարհը երկու մասի բաժանող Բարձր Հայքի և Հայկական պար լեռների հույժ կարևոր անցքերից անհրաժեշտ է հիշատակել՝ Գայլախաղուտ, Աղտոձոր, Ջոր և հատկապես «Կղեսուրք» կոչվող միմյանց հաջորդող լեռնային անցքերի շարանը, որ մի ամբողջ սիստեմ էր կազմում, և որը Բագրևանդից տանում էր դեպի Բասենի դաշտը և այժմ հայտնի է Կարա-Դերբենդ անունով։ Կարա-Դերբենդ լեռնային անցքերի սիստեմը հայտնի էր, դեռևս ստրկատիրական ու ուրարտացիներին և հիմնական մուտքն էր, որը Բասենից տանում էր Բագրևանդով Արարատյան դաշտը։ Թշնամու ներխուժման դեպքում երկրում վճռական նշանակություն ուներ Կարա-Դերբենդի անցքի մատույցների պաշտպանությունը, որոնք գտնվում էին Բասենի Արջովիտ վայրում։ Հաճախ է թշնամական զորքը այստեղ պարտվել և վերադարձել ձեռնունայն։

Հայաստանի բոլոր այս տեղերում գոյություն ունեին ամրություններ և հատուկ պահականներ և իշխանատներ, որոնք այնքան անհրաժեշտ էին ձմռանը։ Նման լեռնանցքների մոտ միջին դարերում սովորաբար կառուցվում էին վանքեր, որոնք մեծ դեր էին կատարում մանավանդ ձմեռվա բքին, ունենալով միաժամանակ ահագին եկամուտներ մաքսատներից։

Հայկական լեռնաշխարհի համար ոչ պակաս նշանակություն ունեին գետանցները։ Հատկապես հիշատակության է արժանի Եփրատի գետանցը Մելիտինե (այժմ՝ Էսքի-Մալաթիա) քաղաքի մոտ, Թմնիսը (հույն-հռոմեական Տոմիսան և ուրարտական Տումեիշկի, այժմ՝ Իզոլու)։ Վերջինս ուներ ռազմաստրատեգիական և տնտեսական մեծ նշանակություն։ Մի այլ կարևոր գետանց գտնվում էր Ամիդ քաղաքի մոտ Արևմտյան Տիգրիսի վրա և նրանից ոչ հեռու Թուշխանի (այժմ՝ Կարխ) մոտ, որտեղից ասորեստանյան թագավորները իրենց բանակով անցնում էին գետը և ներխուժում հյուսիս։ Նման գետանցների մոտ սովորաբար աճում էին առևտրական խոշոր կենտրոններ, ինչպես Մելիտինեն, Ամիդը (այժմ՝ Դիարբեքիր), Արշամաշատը Արածանի գետի վրա, Արմավիրը, Երվանդաշատը, Արտաշատը, Նախճավանը, Ջուղան, Նակորզանը և Վարդանակերտը Երասխ (Արաքս) գետի վրա։

Հայկական լեռնաշխարհից դեպի Կասպից ծովի ափերն էր տանում Կուր գետի հիմնական գետանցը՝ Քանդակը (այժմ՝ Մինգեչաուրի մոտ գտնվող Քանդա գյուղը)։

---

92 Չպետք է շփոթել այժմյան Թեհրանի մոտ գտնվող «Կասպիական դռների» հետ։

*Հայկական լեռնաշխարհը կտրում էին հյուսիսից հարավ և արևմուտքից արևելք մի քանի հիմնական մայրուղիներ, որոնցից յուրաքանչյուրի նշանակությունը տարբեր ժամանակաշրջաններում փոփոխվում էր, նայած քաղաքական, ռազմական, տնտեսական և այլ հանգամանքներին։*

*Այդ մայրուղիներից հնագույնն է այն ճանապարհը, որը Փոքր Ասիայից գալով անցնում էր Եփրատը Մելիտինե քաղաքի մոտ և Ծովք լճի մոտով մտնում Արևմտյան Տիգրիսի հովիտը, իսկ այնտեղից ընթանում դեպի հարավ-արևելք՝ Իրանի խորքերը։ Այս այն մայրուղին էր, որը Աքեմենյանների տիրապետության ժամանակաշրջանում իրար էր միացնում նրանց մայրաքաղաքը Սուզան-Շոշը Լյուդիայի Սարդես քաղաքի հետ և հայտնի էր «արքայական ճանապարհ» անունով։ Այս մայրուղու շնորհիվ Արևմտյան Տիգրիսի և Արածանի գետի ներքին հոսանքում բնակվող հայկական ցեղերը բավական վաղ ժամանակաշրջաններում ներգրավվեցին միջազգային փոխանակության մեջ, որը և նպաստում էր ցեղերի փոխհարաբերությունների զարգացմանը և պայմանավորում վաղ-հայկական պետության առաջացումը։ Մյուս մայրուղին գալիս էր նույնպես Իրանի խորքերից, Ջուղայի գետանցով մտնում էր Երասխի հովիտը՝ անտիկ հեղինակների Արաքսեսին։ Այստեղ էր գտնվում Հայկական լեռնաշխարհով անցնող ճանապարհների հանգուցակետը՝ Արարատյան դաշտը։ Հիշյալ դաշտի հնագույն կենտրոններում՝ Էրեբունի-Երևանում, Արմավիրում, Արտաշատում և այլ քաղաքներում խաչաձևվում էին Սև ծովի նավահանգիստներից եկող ճանապարհները։ Ազովի ծովի և Ղրիմի ափերին գտնվող Բոսպորի թագավորության նավահանգիստների՝ Տանայիսի, Պանտիկապեոնի և այլ քաղաքների առևտրականները իրենց նավերով հասնում էին Դիոսկուրիա (այժմ Սուխումի) և Փասիս (այժմ՝ Փոթի), Տրապիզոն, Ամիսոս, Սինոպ, Ամաստրիս և այլ նավահանգիստները, որտեղից ցամաքով քարավանները հասնում էին մինչև Արարատյան դաշտը։ Ավելի հին էր Կողքիսից եկող ճանապարհը։ Այստեղ գըտնըվող Դիոսկուրիա և Փասիս նավահանգիստներից կարավանները Ջեկարի լեռնանցքով և Գոդերձական երկրով մտնում էին Կուր գետի հովիտը և Հայաստանի ներքին գավառները, որտեղ Ախուրյանի հովտում գոյություն ունեին մի շարք ավաններ և քաղաքներ՝ Երազգավորս-Շիրակավան, Երվանդավան-Շիրակաշատ, Կումայրի, Անի, Բագարան, Երվանդաշատ, Երվանդակերտ և Արմավիր։ Երբ Պոնտական թագավորությունը վերելք էր ապրում Միհրդատ Զ-ի ժամանակաշրջանում, բարձրանում է հարավ-սևծովյան քաղաքների, հատկապես Ամիսոսի և Սինոպի նշանակությունը և ընկնում է Դիոսկուրիայի ու Փասիսի դերը։ Սրա հետևանքն էր այն, որ Երվանդաշատը և Արմավիրը կորցրին իրենց վաղեմի նշանակությունը, և առաջնությունը անցավ Արտաշատին։ Այս բացատրվում է նրանով, որ Փոքր Ասիայից եկող մայրուղին Երիզայի և Կարինի վրայով անցնում է Բագրևանդ, Ծաղկոտն ու Կոգովիտ գավառները, որտեղից Հայկական պարի լեռնանցքներով ճանապարհը իջնում է Արարատյան դաշտը և Տափերական կամուրջով կապվում Արտաշատի հետ։ Արտաշատը Երևանի միջոցով՝ Հրազդան և Աղստև հովիտներով կապվում է Արմազի-Մցխեթայի՝ Վրաց աշխարհի նոր առաջ եկած թագավորության մայրաքաղաքի հետ[93]։*

93 Ս. Տ. Երեմյան, *Էրեբունի-Երևանը միջազգային կարավանային առևտրի մայրուղիների վրա, ԼՀԳ, 1969, № 12, էջ 16—24։*

Հնուց գոյություն ուներ այն ճանապարհը, որը բարեկարգեց Տիգրան Մեծը և որն այնուհետև կոչվեց «արքունի պողոտա»։ Այդ այն ճանապարհն էր, որը կապում էր Տիգրան Մեծի աշխարհակալության երեք մայրաքաղաքները՝ Անտիոքը, Տիգրանակերտը և Արտաշատը։ Այս ճանապարհի վրա բարձրացան Մծուրք, Մանավազակերտ, Զարիշատ և Զարեհավան քաղաքները։ Արտաշատից, իսկ հետագայում Դվինից, մի ճանապարհ Սևանա լճի ափերով տանում էր դեպի Սոդք—Բերդկունքի լեռնանցքը և այնտեղից Տրտուական (Թարթար) գետի հովիտը, որտեղ Կուր գետից ոչ հեռու բարձրացավ Պարտավ քաղաքը։ Մի ճանապարհ էլ Նախճավան քաղաքից գնում էր դեպի հարավ-արևմուտք, անցնելով Երասխ գետը Ջուղայի և Դարաշամբի մոտ, դեպի Մարական ավանը և Հեր քաղաքը։ Այստեղից ճանապարհը Կոտորաց գետի ակունքների շրջանում կտրում էր Վասպուրականի լեռնապարը և Նկան ու Սևան ամրոցների միջով հասնում էր մինչև Վան քաղաքը։ Վանից՝ լճի հարավային ափերով՝ Կավաշ (այժմ՝ Օստան-Գյավաշ) և Դատվանով այն հասնում էր Զորապահակը և Բաղաղեշ կամ Բաղեշ քաղաքը, իսկ այստեղից Արզան (Շուկառաբա) ու Քղիմար քաղաքների միջով կապվում Տիգրանակերտի հետ։

Հայկական լեռնաշխարհով անցնող ճանապարհներն ունեին մի շարք առավելություններ, որոնցից զուրկ էին Միջագետքով անցնող մայրուղիները։ Առաջին հերթին կլիմայական պայմաններն էին։ Հայաստանով առևտրական քարավանները գերադասում էին անցնել ամառվա ամիսներին, երբ բարձր լեռնային սարահարթերն ու հովիտներն ունեին մեղմ բարեխառն կլիմա, ինչից զուրկ էին այս ժամանակ Միջագետքի շոգ տափաստաններն ու անապատները։ Բացի այդ, Հայաստանը խիտ բնակեցված երկիր էր, որի երկրագործ ազգաբնակչությունը խաղաղ աշխատասեր ժողովուրդ էր և հազվագյուտ էր լինում անցնող քարավանների թալանը, որ շատ սովորական երևույթ էր Միջագետքում, որտեղ վրխտում էին բեդվինների հրոսակախմբերը։

Հայաստանի վրայով անցնող մայրուղիները նշված են մեզ հասած հունահռոմեական, հայկական և արաբական մղոնաչափքերում և նույնիսկ հնագույն քարտեզներում, ինչպիսին է Պևտինգերյան քարտեզը (Tabula Peutingeriana)[94]։

* * *

Այսպիսով, այն տերիտորիան, որտեղ ձևավորվել է հայ ժողովուրդը և նրա լեզուն ու մշակույթը, երկու հիմնական մասից է բաղկացած, որոնք հայտնի են «Մեծ Հայք» և «Փոքր Հայք» անուններով։

Մեծ Հայքը ընդգրկում էր Հայկական լեռնաշխարհի տերիտորիան ամբողջապես, իսկ Փոքր Հայքը տարածվում էր Փոքր Ասիայի արևելյան մասում։ Հայաստանի այս երկու հիմնական հատվածները միմյանցից բաժանվում էին Եփրատ գետով, որը այս մասում հոսում է հյուսիսից հարավ՝ սկսած այժմյան Ակնից մինչև Մալաթիայից հարավ-արևելք գտնվող Եփրատի գալարը[95]։

---

[94] *K. Miller*, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart, 1916.

[95] Հայաստանին են հարել պատմության տարբեր ժամանակաշրջաններում Կիլիկիան և նրա արևելյան մասը կազմող Կոմմագենեն։ Կիլիկիայի մասին կխոսվի «Հայ ժողովրդի պատմության» երրորդ հատորում։

*Եփրատից այս կողմ գտնվող հայկական թագավորությունը կոչվեց Մեծ Հայք ի տարբերություն Եփրատից այն կողմ գտնվող մյուս հայկական թագավորության, որը ավելի փոքր տարածություն էր ընդգրկում և կոչվեց Փոքր Հայք։ Հունական և հռոմեական աղբյուրներում Մեծ Հայքի թագավորությունը անվանվում է* Μεγάλη ’Αρμενία *և* Armenia Maior, *իսկ վաղ միջնադարի հայկական աղբյուրներում միշտ գործ է ածվում Մեծ Հայք անունը։ Սրանց հետ նույնանիշ է մ. թ. առաջին դարերի պարթևական արձանագրություններում պատահող* Vazurg Armenān *հորջորջումը։ 387թ. հետո, երբ Հայկական թագավորությունը բաժանվեց և Մեծ Հայքը դադարեց գոյություն ունենալ իբրև միաձույլ պետություն, այս անվան փոխարեն գործ էին ածվում Հայք,* Armenia *տերմինները, իսկ Եփրատից այն կողմ գտնվող հայկական երկիրը շարունակում էր կոչվել Փոքր Հայք* (’Αρμενία Μικρά. Armenia Minor)*։ Սակայն հետագայում ևս ավանդության ուժով երբեմն գործ էր ածվում նաև Մեծ Հայք տերմինը բուն Հայաստանի իմաստով։ Հայկական աղբյուրների այդ հորջորջումը պահպանել են միջնադարյան պատմաբանները, արաբերեն և պարսկերեն աղբյուրները՝* Buzurg Armenān *ձևով, վրացականները* დიდი სომხეთი *«Դիդի Սոմխեթի»*[96] *և նույնիսկ ռուսականները՝* Арменьа Великая *ձևով*[97]*։*

*Մեծ Հայքն ընդգրկել է շուրջ 320.000 կմ քառակուսի տարածություն։ Այդ սահմաններում Հայաստանը իրենից ներկայացնում էր քաղաքական, էթնիկական և տնտեսական մեկ ամբողջություն և դարերի ընթացքում ձևավորվեց այն ներքին վարչական բաժանումը, որը պայմանավորված էր առաջին հերթին երկրի ռելիեֆով։*

---

96 ქ. ც., I, էջ 387։

97 Повесть временных лет, под ред. Б. П. Адриановой-Перетц, М.—Л., 1950, էջ 9։

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՊԱԼԵՈԼԻԹԸ (ՀԻՆ ՔԱՐԻ ԴԱՐԸ) ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱՊԱՏՄԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀՆԱԳՈՒՅՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

Հայկական լեռնաշխարհի բնական պայմանների կազմավորումը — *Հայաստանի ժամանակակից ռելիեֆը, ինչպես նշվեց, ձևավորվել է գերազանցապես ուշ երրորդական-վաղ չորրորդական ժամանակաշրջանում՝ ստորին պալեոլիթյան մարդու նախասկզբնական պատմությանը զուգընթաց, երբ ալպյան լեռնագոյացման վիթխարի պրոցեսների և երկրի եռանդուն հրաբխային գործունեության հետևանքով ծովի հատակից վերջնականապես վեր բարձրացավ Հայկական բարձրավանդակը, առաջ եկան Ալպերը, Կովկասը, Կենտրոնական-ասիական լեռնաշխարհը՝ Պամիրն ու Տյանշանը։*

*Հայաստանի բնակլիմայական պայմանները՝ լեռներն ու դաշտերը, դարավանդները, հովիտները, գետերն ու լճերը անչափ խոշոր նշանակություն են ունեցել մարդկային նախնական հոտերի կյանքի ու գործունեության համար։*

*Մինդել-ռիսյան միջսառցային դարաշրջանից առաջ, Արարատյան, Բագրևանդի դաշտերի և Շիրակի սարահարթի տեղերում տեկտոնիկ պատճառներով և Արագածի լանջերի, Փոքր Մասիսի, Ծաղկանց լեռների երիտասարդ լավաների մասնակի արգելափակումների հետևանքով[1] առաջացել էին լճային հսկա ավազաններ։*

*Արարատյան լճի խորությունը հասնում էր մոտ 100 մետրի։ Լիճը լցվում էր վտակների և Արաքս գետի արտաբերվածքներով։ Այնուհետև, երբ ժամանակի ընթացքում բնական ամբարտակը քանդվեց[2], ջրերի հոսքի ազատված հարթության վրայով սկսեցին թափառել Արաքսն ու նրա վտակները, գոյացնելով ղանազան տեսակի նոր նստվածքներ։*

*Երկրաբանական այս բարդ ու հսկայածավալ երևույթները տեղի են ունենում հարյուր հազարավոր տարիների ընթացքում, տասնյակ հազարավոր քառակուսի կիլոմետրեր ծածկվում են չորրորդական ժամանակաշրջանի հրաբ-*

---

1 *Տե՛ս А. Т. Асланян,* К истории происхождения Араратской котловины, «Доклады АН Арм. ССР», XI, № 1, Ереван, 1949, *էջ 29—34։*

2 Տե՛ս Կ. Ն. Պաֆֆենհոլց, *Հայաստանի և Փոքր Կովկասի նրան կից մասերի գեոլոգիական ակնարկ. Երևան, 1946, էջ 315—316։*

*խային լավաներով, գետերը փորում են իրենց անդնդախոր ձորերը։ Չորրորդական շրջանի նստվածքների հզորությունը Կովկասում և Հայաստանում հասնում էր հարյուրավոր մետրերի[3], երկրի անընդհատ ձևավորվող ու բարձրացող ռելիեֆը առաջացնում էր բնակլիմայական պայմանների էական փոփոխություններ։*

*Չորրորդական ժամանակաշրջանի սկզբներից, մեր թվականությունից մոտավորապես մեկ միլիոն տարի առաջ, սկսվում է երկրի սառցակալման պրոցեսը, որի հետքերն այժմ էլ դիտվում են աննշան սառցադաշտերի ու ձյունե «բծերի» ձևով Մասիսի (Արարատի), Արագածի, Գեղամա, Կապուտջուղի և և այլ լեռների կատարներին[4]։*

*Վերջին երկու խոշոր սառցապատումները՝ ռիսյանը և վյուրմյանը, ընդգրկել են Հայաստանի հատկապես լեռնային զանգվածները և ամենամեծ տարածման հասել Արագած լեռան զանգվածի վրա։ Նրանց հետքերը մասնակիորեն քողարկված են ավելի նոր ժամանակի լավայի ծածկույթներով։ Ռիսյան սառցակալման ժամանակ Արագածը ծածկված է եղել համատարած սառույցով, որը հյուսիսային և հյուսիս-արևելյան լանջերով տեղ-տեղ իջել է մինչև ստորոտը։ Վյուրմի ժամանակ սառցադաշտը պատում է զանգվածի միայն գագաթային գոտին, որտեղից վեց գլխավոր կիրճերով ցած են իջել բավական խոշոր սառցադաշտեր, որոնցից մի քանիսը նույնիսկ հասել են լեռան ստորոտը (2000—2200 մետր)[5]։*

*Ռիսյան և վյուրմյան սառցային փուլերում Հայաստանը և հարևան երկրները գտնվում էին մասնակի սառցապատման մեջ։*

*Սառցակալման սահմանից դուրս, արտասառցային գոտում սկսվում է գետահովիտների առաջացումն ու ձևավորումը։ Տիգրիս, Եփրատ, Արածանի, Քուռ, Արաքս մեծ գետերի հուները սկսել են ձևավորվել չորրորդական ժամանակաշրջանում, ընդմին բացառիկ դեր են խաղացել սառցադաշտերը[6]։*

*Հայաստանի բարձրաբերձ գագաթների սառույցից ու ջրից հորդացած գետերը հովիտների եզրերին փորել են լայնատարած հոսանքի հուներ՝ բնորոշ ափային դարավանդներով, որոնցից ստորինը համապատասխանում է վյուրմյան, երկրորդը՝ ռիսյան և երրորդը՝ մինդելյան ժամանակներին։*

*Սառցակալման նշված դարաշրջանները Հայկական լեռնաշխարհում ուղեկցվել են, որպես կանոն, պլյուվիալ՝ տեղատարափ անձրևների երկարատև շրջաններով, որոնցից ավելի հորդառատ են դարձել արագահոս գետերը և լցվել մեծ ու փոքր ջրավազանները։*

**Հայաստանի չորրորդական ժամանակի կենդանական և բուսական աշխարհը** — *Տասնյակ հազարավոր քառակուսի կիլոմետրերի վրա սառույցի մեռյալ անապատը բոլորովին անկենդան էր. Նրանից դուրս՝ արտասառցա-*

---

3 *Տե՛ս Л. А. Варданян,* Постплиоценовая история Кавказско-Черноморско-Каспийской области, Ереван, 1948, *էջ 153—155։*

4 *Տե՛ս* Կ. Ն. Պաֆենհոլց, *Հայաստանի և Փոքր Կովկասի նրան կից մասերի գեոլոգիական ակնարկ, էջ 134—136։*

5 *Տե՛ս նույն տեղում, էջ 24։*

6 *Տե՛ս А. Л. Рейнгард,* Следы древних ледников на Алагёзе, «Природа», 1939, № 3. *էջ 65—67։*

յին գոտիներում, բուսական ու կենդանական աշխարհի կյանքը զգալի փոփոխություններով շարունակում էր իր առաջընթացը։ Ժամանակ առ ժամանակ, այսպես կոչված միջսառցային փուլերում, սառցադաշտերի հորձանքն ընդհատվում էր, նրանք հալվում, փոքրանում, նահանջում կամ նույնիսկ անհետանում էին։ Այնուամենայնիվ, բնա-կլիմայական պայմանների փոփոխություններին համապատասխան, դանդաղորեն, բայց վճռականապես փոխվում էր նաև Հայկական լեռնաշխարհի բուսական ու կենդանական աշխարհը։ Միջին և վերին պլիոցենի ջերմասեր մերձարևադարձային կամ մասամբ բարեխառն գոտու բուսական աշխարհը[7], սաղարթավոր և մշտադալար բույսերի զանազան տեսակները, Նռնունիս և Տաճարաբակ գյուղերի դիատոմիտներում ներկայացված պեղածո կենդանիները՝ հիպարիոնը (ձիու նախնին), էտրուսկական ռնգեղջյուրը, հնադույն փիղը[8], որոնք անկասկած մեղմ ու խոնավ կլիմայի վկաներն են, հետզհետե տեղի են տալիս, անհետանում։

Հայաստանի բուսական աշխարհը երկրի երկարատև պատմության ընթացքում փոփոխվել է մի քանի անգամ։ Մի անգամ չէ, որ նրա տերիտորիան ծովի տակ է անցել և ցամաքային բուսականությունը իսպառ անհետացել է։ Իսկ երբ ծովը նորից տեղի է տվել, ջրից ազատված տարածությունը ծածկվել է նոր, հնից տարբերվող բուսականությամբ[9]։ Ըստ երևույթին, կենդանական աշխարհի փոփոխությունները համեմատաբար դանդաղ են կատարվել։ Վաղ չորրորդական դարաշրջանի, մինչմինդելյան ժամանակաշրջանի նստվածքներում հայտնաբերված ֆլորան կարող էր գոյություն ունենալ միայն արևադարձային և մերձարևադարձային պայմաններում[10]։ Հայաստանն այդ ժամանակ ուներ բավականաչափ մեղմ կլիմա և ծածկված էր բարեխառն գոտու անտառներով, ուր վխտում էին բազմաթիվ ու բազմատեսակ կենդանիներ, ինչպիսիք են նախնական ձին, ռնգեղջյուրը, մերկամորթ փիղը, ինչպես նաև բարեխառն գոտուն հատուկ եզների, ցուլերի տարատեսակները, հսկա եղջերուն և այլն։

Հայկական լեռնաշխարհի կենդանական ու բուսական աշխարհների մեջ էական փոփոխություններ առաջացրին հետագա սառցային դարաշրջանները։ Ռիսյան սառցակալման ժամանակ վերականգնվում է ցուրտ և խոնավ կլիման, որի հետևանքով ջերմասեր և խոնավասեր մշտադալար ծառերն ու թփերը ոչընչանում են։ Դա, այսպես կոչված սառցադաշտային ժամանակաշրջանն էր, երբ երկրի կլիման խիստ ցամաքային էր դարձել և երբ իրար հաջորդող ցուրտ ու խոնավ և շոգ ու չոր կլիմաների առկայությամբ՝ խիստ փոփոխվում է երկրի բուսականությունը։ Մերձարևադարձային անտառները, որոնց մեջ գերակշռող են եղել հաճարին, կաղնին և այլ ցրտադիմացկուն տեսակները, տեղի են տալիս այժմյան տիպի բուսականությանը[11]։

---

7 *Տե՛ս А. Л. Тахтаджян* и *А. А. Габриелян,* Опыт стратиграфической корреляции вулканических долин и пресноводных отложений плиоцена Малого Кавказа, «Доклады АН Арм. ССР», VIII, № 5, 1948, *էջ 211—212։*

8 *Տե՛ս В. В. Богачев,* Палеонтологические заметки, Труды Азербайджанского филиала АН СССР, геологическая серия, № 9, 1938.

9 *Տե՛ս* **Ա. Լ. Թախթաջյան,** *Հայաստանի բուսական աշխարհը, Երևան, 1946, էջ 3։*

10 *Տե՛ս В. В. Богачев,* Предварительный отчет о геологическом исследовании оз. Гек-Гель, «Изв. Кавк. геогр. общ.», т. XXIII, № 2, *էջ 64։*

11 *Տե՛ս* **Ա. Լ. Թախթաջյան,** *Հայաստանի բուսական աշխարհը, էջ 3։*

*Այդ ժամանակ Հայաստանի այնպիսի լեռնային զանգվածների լանջերը, ինչպիսին է Արագածը, ծածկված են եղել անտառներով*[12]*, իսկ անտառային գոտիներում եղել են ավելի խիտ անտառներ։*

*Կլիմայի փոփոխության հետևանքով, իսկ հետագայում առավելապես մարդու գործունեության շնորհիվ, երկրի բուսական աշխարհն այնքան հիմնովին է փոխվել, որ նրա նախկին պատկերի վերականգնումը դառնում է շատ դժվարին ու բարդ գործ*[13]*։*

*Ինչ վերաբերում է կենդանական աշխարհին, ապա նոր պայմաններում ջերմասեր կենդանիների փոխարեն հետզհետե երևան են գալիս բարեխառն ու ցուրտ կլիմայի սովոր կենդանիներ։ Բնեռային տեսակները դեռևս լայն տարածում չէին ստացել։ Սառցային ժամանակի բնորոշ կենդանիներից է եղել հատկապես նախնական փիղը (մամոնտը), որը ցուրտ կլիմայական պայմաններին հարմարվել է իր խիտ, երկար մազերի շնորհիվ, ապա՝ բրդոտ ռնգեղջյուրը, քարայրի արջը, հսկա եղջերուն, վայրի ցուլը, հյուսիսային եղջերուն և այլն։*

*Ռիս-վյուրմյան միջսառցային ժամանակ կլիման դարձել է խոնավ, բարեխառն, և ըստ այնմ էլ փոխվել նաև բուսական աշխարհը։ Այդ ժամանակին է պատկանում Ենգիջա գյուղի մոտ հայտնաբերված հարուստ ֆաունան*[14]*։*

*Վերջին սառցակալման հետևանքով Հայաստանի կլիման ավելի ու ավելի է վատանում, վյուրմյան շրջանում ջերմաստիճանի իջեցումը զուգորդվում է օդի նշանակալից չորացման հետ։ Այդ շրջանի լճագետային նստվածքներում, Սպիտակի շրջանի Նալբանդ գյուղի մոտ հայտնաբերվել են նախնական փղի (մամոնտի), հին ձիու և այլ կենդանիների մնացորդներ*[15]*։ Արարատյան դաշտավայրի եզրերին աճել են սաղարթավոր անտառներ և քաղցրահամ ջրային բուսականություն*[16]*։*

*Վաղ չորրորդական ժամանակաշրջանի վերջում փիղն ու ռնգեղջյուրը վերջնականապես անհետանում են, հետսառցային ժամանակների բուսական ու կենդանական աշխարհն աստիճանաբար անցնում է մոտավորապես այն վիճակին, որ առկա է ներկայումս։ Վերին պլեյստոցենի և հոլոցենի սահմանագծում տեղի են ունենում տուֆային լավաների նոր հեղումներ, որոնցով հիմնականում ավարտվում է Հայաստանի ժամանակակից ռելիեֆի ձևավորումը։*

**Նախամարդու ծագման և գոյության խնդիրը չորրորդական դարաշրջանի սկզբում** — *Մոտավորապես մեկ միլիոն տարի ընդգրկող երկրակազմական և կլիմայական այս ուշ պրոցեսների ժամանակագրական շրջանակներում է*

---

12 *Տե՛ս* Ստ. Լիսիցյան, *ՀՍՍՀ ֆիզիկական աշխարհագրություն, Երևան, 1940, էջ 134։*

13 *Տե՛ս* Ա. Լ. Թախթաջյան, *Հայաստանի բուսական աշխարհը, էջ 36—37։*

14 *Տե՛ս* Կ. Ն. Պաֆենհոլց, *Հայաստանի և Փոքր Կովկասի, նրան կից մասերի գեոլոգիական ակնարկ, էջ 135։*

15 *Տե՛ս Н. И. Каракаш,* О новых находках остатков мамонта на Малом Кавказе. «Дневник X съезда естествоиспытателей и врачей», Киев, 1898, № 7.

16 *Տե՛ս А. Т. Асланян,* Стратиграфия вулканических пород приереванского района (Арм. ССР), «Доклады АН Арм. ССР», т. XI, № 5, Ереван, 1950, *էջ 149։*

տեղի ունեցել նախամարդու և մարդկային հասարակության նախասկզբնական պատմությունը։

Մեր նախնիների՝ մարդանման կապիկների և ձևավորվող առաջին մարդկանց պատմությունն սկսվել ու ընթացել է երրորդական ժամանակաշրջանի վերջում և չորրորդականի սկզբներին Միջերկրական ծովի հյուսիսում, Աֆրիկայի և Ասիայի արևադարձային և մերձարևադարձային գոտիներում, որոնց մեջ մտնում էին նաև Անդրկովկասն ու Հայկական լեռնաշխարհը։

Հարավային Եվրոպայի կենտրոնական մասերում, Աֆրիկայում, Ասիայում, Հիմալայների ստորոտներում, միջին երրորդական շրջանի նստվածքներում, XIX դարի վերջին և XX դարի սկզբներին, գիտնականները հայտնաբերել են բարձր զարգացած կապիկների (դրիոպիթեկների) մնացորդներ, որոնք համարվում են մարդու առավել հավանական նախորդները։

Մոտավորապես նույն շրջաններից են ծագում ուշ երրորդական դարաշրջանի մարդանման կապիկների (անթրոպոիդների) մնացորդները, որոնց խմբին են պատկանում նաև Արևելյան Վրաստանի Ուդաբնո վայրում հայտնաբերված ուդաբնոպիթեկ մարդակերպ կապիկը[17]։

Հայկական լեռնաշխարհում նախամարդու գոյության հնարավորությունը չորրորդականի սկզբներում հավաստվում է ոչ միայն ժամանակի բուսական ու կենդանական աշխարհի հարստությամբ, կլիմայական բարենպաստ պայմաններով, այլև ամենավաղ ժամանակների հարուստ ու բազմապիսի քարեդարյան հուշարձանների առատությամբ, որոնք, անկասկած, վերաբերում են պլիոցենի վերջին և վաղ չորրորդական դարաշրջանի սկզբին։

## 2. ՍՏՈՐԻՆ ՊԱԼԵՈԼԻԹԸ (ՎԱՂ ՀԻՆ ՔԱՐԻ ԴԱՐԸ)

**Աշխատանքի դերը կապկի մարդացման գործում**— Մարդկային գործունեության առաջին հետքերը Հայկական բարձրավանդակում վերաբերում են ստորին պալեոլիթի շելյան և աշելյան փուլերին՝ նախնադարյան համայնական հասարակության զարգացման ամենանախնական աստիճանին, որն ընդգրկում է հարյուր հազարավոր տարիներ և ժամանակագրական տեսակետից համապատասխանում է երկրի կազմավորման ուշ երրորդական և վաղ չորրորդական շրջանին։

Կենդանական աշխարհից հազիվ անջատված, իր էության բազմաթիվ գծերով կենդանիներից դեռևս չտարբերվող նախամարդը (պիթեկանթրոպ, սինանթրոպ), այնուամենայնիվ, կարողացավ դնել մարդկային հասարակության նյութական և հոգևոր մշակույթի հիմքերը։

«Նախնադարյան հոտի» և մայրական «տոհմական համայնքի», կազմավորման այդ շրջանը, որպես երկրի պատմության կարևորագույն և շրջադարձային երևույթ, լայն, բայց և բարդ ու ծանր ճանապարհ բացեց աշխատանքի և հասարակության վերընթաց զարգացման, բնության նկատմամբ մարդու անզորությունից դեպի նրա հարաճուն գերիշխանությունը անցնելու համար։ Լը-

[17] Տե՛ս М. Т. Левин, Г. Ф. Дебец, Я. Я. Рогинский, Происхождение человека и древнее расселение человечества, М., 1956.

բացնելով Դարվինի հանճարեղ դիտողությունները բարձրագույն պրիմատների զարգացման մասին, Ֆրիդրիխ Էնգելսը նշում է, որ «մարդու ծագումն ու կատարելագործումը հանդիսացել է ոչ միայն կենդանական աշխարհի զարգացման հետևանք, այլ ամենից առաջ, պատմության մեջ բնության մեծագույն վերափոխության արդյունք, երբ կենսաբանական որակը փոխվել է հասարակական որակի՝ մատերիայի շարժման բարձրագույն ձևի։ Այդ վերափոխության էությունն այն է, որ մարդու կենդանի նախնին (կապկամարդը) հասնելով կենսաբանական զարգացման բարձր աստիճանի, սկսել է պատրաստել աշխատանքի շատ պարզ գործիքներ։ Աշխատանքը, աշխատանքային պրոցեսը մարդուն առանձնացրել է կենդանական աշխարհից, նրա առջև լայն հնարավորություններ բացել ազդելու իր և իրեն շրջապատող բնության վրա։ Աշխատանքի գործիքների օգտագործման պրոցեսում ձևավորվում են մարդու ձեռքերը և ազատվելով ոտքի ֆունկցիայից, դառնում աշխատանքի կարևոր միջոց. ձեռքի հետ միասին զարգանում է նաև մարդանման էակի ամբողջ օրգանիզմը, վերջնականորեն հաստատվում մարդու ուղղահայաց դիրքը՝ քայլելու և աշխատելու ժամանակ, որին արդեն հասել էր պալեոանթրոպը և որը մեծ դեր խաղաց կապկից մարդուն անցնելու ճանապարհին։ Աշխատանքը մարդկային կյանքի առաջին հիմնական պայմանն է, և այն էլ այն աստիճանի, որ մենք որոշ իմաստով պիտի ասենք՝ աշխատանքն է հենց մարդուն ստեղծել»[18]։

Աշխատանքի և մարդու հասարակական գործունեության զարգացմանը զուգընթաց զարգանում էր նաև հոդաբաշխ հնչյունային լեզուն. «Հնչյունային լեզուն մարդկության պատմության մեջ հանդիսանում է այն ուժերից մեկը, որոնք օգնեցին մարդկանց բաժանվելու կենդանական աշխարհից, միավորվելու համայնքներում, զարգացնելով իրենց մտածողությունը, կազմակերպել հասարակական արտադրություն, հաջող պայքար մղել բնության ուժերի դեմ, և հասնել այն պրոգրեսին, որ մենք ունենք այժմ»[19]։ Հասկանալի է, որ հնագույն խոսքը եղել է շատ պարզունակ և սահմանափակ իր բառային կազմով, բայց այն անհրաժեշտ էր հասարակության հաղորդակցության համար։ Առանց բոլորի համար հասկանալի լեզվի, չէր կարող գոյություն ունենալ նույնիսկ ամենապարզ հասարակական բջիջը. աշխատանքը և «հոդաբաշխ խոսքը» որոշիչ ազդեցություն են թողել մարդու օրգանիզմի կատարելագործման, նրա գանգուղեղի զարգացման վրա։ Լեզվի զարգացումը խիստ կապված է մտածողության զարգացման հետ։ Լեզուն լինելով մարդկանց միջև հաղորդակցության միջոց, շարունակում է զարգանալ մարդկանց արտադրական գործունեության զարգացման հետ միասին։

**Մարդու կյանքը ստորին պալեոլիթի բնական պայմաններում** — Բաժանվելով կենդանական աշխարհից, հնագույն մարդկային հասարակությունը դեռևս շատ երկար ժամանակ ամբողջովին կախման մեջ է եղել իրեն շրջապատող բնությունից. սկզբում մարդիկ ծանոթ չէին կրակի գործածությանը։ Նրանք հագուստ չունեին և չէին կարողանում կառուցել թեկուզ ամենապարզ

---

[18] Ֆ. Էնգելս, Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում, Երևան, 1953, էջ 3։
[19] Նույն տեղում։

կացարանները, դրա համար էլ դուրս չէին գալիս արևադարձային և մերձարևադարձային գոտիներից, որոնց հատուկ էր մեղմ կլիմա և մշտադալար բուսականություն։ Ձափավոր կլիմա և համեմատաբար ցուրտ ձմեռ ունեցող երկրները այդ դարաշրջանում մարդու բնակության համար պիտանի չէին։ Չորրորդական շրջանի սկզբում, չնայած կլիման սկսում է ցրտանալ, մերձարևադարձային բուսականությունը տարածվում էր դեպի հյուսիս՝ նշանակալիորեն ավելի հեռու, քան այժմ։ Այսպես, Հայաստանում աճում էին լայնատերև և մշտադալար անտառներ՝ դափնի, սամշիտ, թզենի և այլ հարավային բույսեր. այդ անտառներում կային այնպիսի ջերմասեր կենդանիներ, ինչպես հնագույն գետաձին (հիպոպոտամը), հարավային (հին) փիղը, էտրուսկական ռնգեղջյուրը և այլն[20]։

Այսպիսի բնա-կլիմայական պայմաններում է ապրել մարդը ստորին պալեոլիթի փուլում, որն ընդգրկում է ժամանակի մի հսկայական հատված՝ մ. թ. ա. 800.000—100.000 թվականները և հնագիտական իր հազվագյուտ հուշարձաններով բնորոշում է մարդկային պատմության զարգացման ամենավաղ շրջանը, կամ, ինչպես ընդունված է ասել, մարդկության մանկության ժամանակաշրջանը[21]։

Վաղ չորրորդական շրջանի նստվածքներում հայտնաբերված քարե պարզ ու միօրինակ գործիքները, որոնք վերաբերում են ստորին պալեոլիթի մշակույթի զարգացման մինչշելյան, շելյան ու աշելյան շրջաններին, հնագույն մարդու՝ պիթեկանթրոպի (կապկամարդ) ու սինանթրոպի (չինական մարդ) գործունեության արգասիք են։ Ստորին պալեոլիթյան մշակույթի հուշարձանների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մարդն այն ժամանակ ապրել է խմբերով, թափառական կյանք վարել գետերի ու լճերի ափերին, արևադարձային անտառներում։ Նա իր ժամանակավոր կայաններն ընտրելիս նկատի է ունեցել նաև գետերի առկայությունը մերձավոր վայրերում։

Մարդուն ապաստան են ծառայել քարայրները, անձավները, անտառները և այլն։

Ստորին պալեոլիթի շելյան ժամանակի նստվածքներում գտնված խոշոր կենդանիների ոսկորները վկայում են, որ այդ ժամանակ մարդիկ երբեմն որսացել են հսկա կենդանիներ, սակայն միայն պարզ գործիքների առկայությամբ այդպիսի որսը սիստեմատիկ չէր կարող լինել։ Շելյան մարդկանց գոյության հիմնական աղբյուրը եղել է մանր կենդանիների որսը, ինչպես նաև միջատների ու սողունների, վայրի բույսերի ու պտուղների հավաքչությունը, որոնցով հարուստ էր Հայաստանի վաղ չորրորդական բուսական ու կենդանական աշխարհը։ Պատմական տեսակետից կարևորն այն է, որ շելյան մարդը արդեն հաստատուն կերպով կանգնում է կապկամարդու զարգացման, նրա մարդացման ճանապարհին, մարդկությունը սկսում է ընթանալ առաջադիմության ուղիով, որ պայմանավորված էր կոլեկտիվ աշխատանքային գործունեությամբ։

---

20 Տե՛ս *В. В. Богачев,* Урмийское и Ванское озеро, «Изв. Азерб. Гос. университета», Баку, 1927, № 6, *էջ 196*, 1929, № 7, *էջ 91*, № 8, *էջ 88*։

21 Տե՛ս *М. З. Паничкина.* Палеолит Армении, Л., 1950, *էջ 3*։

Քարի դարի հաջորդ, ավելի կայուն ու որոշակի փուլի՝ շելյան մշակույթի զարգացումն ընթացել է գյունց-մինդելյան և մինդելյան ժամանակներում։ Նոնունիս (Նուռնուս) գյուղի գյունցյան հասակի ֆլորան՝ ձիու նախահայր հիպարիոնը, էտրուսկական ռնգեղջյուրը, ինչպես նաև Սիսիանի Իշխանասարի վերին պլիոցենյան և ստորին չորրորդական նստվածքների հարուստ ֆլորան թույլ են տալիս պնդելու, որ նշված ժամանակներում Հայաստանը միանգամայն նպաստավոր բնակլիմայական պայմաններ է ունեցել մարդու գործունեության և զարգացման համար։

**Արտին լեռան պալեոլիթյան կայանները** — Աշխատանքի առաջին պրիմիտիվ գործիքները պատրաստելուց տասնյակ հազարամյակներ առաջ մարդն օգտագործել է փայտե մահակ և սուր եզրեր ունեցող անմշակ, կոպիտ քարե բեկորներ։ Ժամանակի ընթացքում հետզհետե մարդն սկսում է ջարդել ու բեկոտել քարերը՝ հարմարավետ օգտագործման համար։ Այդ եղանակով պատրաստված կոպիտ, նախնական քարե գործիքները նույնիսկ դժվար է տարբերել բնական կայծքարի ու վանակատի (հրաբխային ապակու) բեկորներից և կոշկոռներից, որոնք չափազանց հարմար էին գործիքներ պատրաստելու համար։

Հազարամյակների ընթացքում մարդը կուտակում է քարե գործիքներ պատրաստելու, մշակելու, օգտագործելու փորձ, հանդես են գալիս հարմար ձևավորում ունեցող առաջին գործիքները, որոնք, ըստ երևույթին, օգտագործելիս է եղել պիթեկանթրոպը։

Մարդու աշխատանքային առաջին գործիքները չափազանց պարզունակ, միատարր ու միօրինակ էին, դրանց զարգացումն ու տարբերակումն ընթանում էր վերին աստիճանի դանդաղ և, այնուամենայնիվ, ստորին պալեոլիթի երեք ժամանակագրական հատվածները (մինշշել, շել, աշել) բնորոշվում են վերոհիշյալ քարե գործիքների մշակման ձևերով ու տեխնիկայով, ինչպես և մարդուն շրջապատող արտաքին միջավայրում բնա-կլիմայական, բուսական և կենդանական աշխարհում կատարված փոփոխություններով։

Մարդկային մշակույթի զարգացման առաջին կայուն փուլը շելյանն է (Ֆրանսիայի Շել վայրի անունով)։ Հայաստանի տերիտորիայում ստորին պալեոլիթի շելյան փուլի քարե գործիքներ առաջին անգամ հայտնաբերվեցին 1943—1945 թվականներին Արտին լեռան կայաններում[22] Սատանի-դար, Աբեգունի, Հարավային բլուրների լանջերին։

Արտին լեռը գտնվում է Արագածի հարավ-արևմտյան լանջին, ծովի մակերևույթից բարձր է 2047 մետր և պատկանում է Հայկական լեռնաշխարհի այժմ արդեն հազվագյուտ այն վայրերի թվին, որոնք կազմավորվել են դեռևս երրորդական դարաշրջանում և հանգամանքների բերումով դուրս են մնացել չորրորդական հրաբուխների ազդեցությունից։ Լեռան լանջերը հետաքրքիր են

---

22 Տե՛ս С. Сардарян, Палеолит в Армении, Ереван; 1954, Նույնի Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Երևան, 1967, էջ 39։

ոչ միայն իրենց երրորդական նստվածքներով ու վանակատի առատ արտաշեղումներով, այլև շելյան չափազանց հարուստ արհեստանոց-կայաններով[23]։

Ռիս-վյուրմյան միջսառցային և վյուրմյան սառույցի նահանջի ժամանակներում Արտին լեռը ենթարկվել է ուժեղ շերտահեղումների։ Հեղեղները խիստ փոխել են լեռան ռելիեֆը, իսկ էրոզիվ պրոցեսները ավելի են մեկուսացրել Արտինը, վերափոխել շրջակայքի մակերեսը, նրան տալով խիստ կըտըրտված տեսք։ Դրանից էլ փոխվել են հին պալեոլիթյան կայանների շերտերը, խախտվել նախնական վիճակը։ Այս պրոցեսը առավել մեծ չափերով տեղի է ունեցել, երբ մարդը լքել է այդ վայրերը, մոտավորապես ժամանակակից էպոխայի (հոլոցենի) սկզբում։

Արտին լեռան հյուսիս-արևելյան լանջին գտնվող Սատանի-դար (Սատանի-կոնդ) կայանում հայտնաբերված են մեծ քանակությամբ մշակված գործիքներ, որոնք իրենց ձևերով ու պատրաստման տեխնիկայով բնորոշ են ինչպես մինչշելյան ու շելյան, այնպես էլ աշելյան ժամանակների համար։ Դրանք պատրաստված են վանակատից (օբսիդիանից) և դիաբազից։

Հայկական լեռնաշխարհը՝ Արագածի սիստեմը, Հրազդանի միջին հոսանքի կայանները և մյուս վայրերը՝ Սիսիանը, Ջրաբերը, Գեղամա լեռները (Աղմաղանը), Ազատ Մասիս (Արարատ) լեռը, Նեխ-Մասիքը (Սիփանը) և այլն, իրենց օբսիդիանի հանքերի հարստությամբ, որակով ու վայրի հարմարություններով պալեոլիթյան մարդու համար ամենալավ օջախներից են եղել ողջ չորրորդական ժամանակաշրջանում։

Մինչշելյան և շելյան գործիքներ — Շելյան ժամանակի ամենաբնորոշ և լավ ուսումնասիրված գործիքը այսպես կոչված ձեռքի հատիչն է։ Շելյան ձեռքի հատիչները տարբեր նպատակներով գործածության ունիվերսալ գործիքներ են եղել։ Ստորին պալեոլիթի գործիքների այս հնագույն տեսակները ներկայացնում են երկու կողմից մշակված նշաձև, ձվաձև, սրտաձև խոշոր ձեռքի հատիչներ, որոնք ունեն անավարտ տեսք, ուժեղ հողմնահարության հետքեր։ Հատիչի մի ծայրը սուր է, մյուսը՝ հաստ, բութ։ Վերին՝ անմշակ թողնված կրնկամասը, ծառայում է որպես բռնակ, որը գրավում է գործիքի ավելի քան երկու երրորդականը։

Շելյան գործիքներով նախամարդը մտել է նախնադարյան համայնական հասարակարգի զարգացման սկզբնական փուլը։ Այդ գործիքները ճշմարտացի վկաներն են՝ Հայաստանում երկրաբանական վաղ չորրորդական ժամանակում, մարդու բնակության[24]։

Թեև խոշոր գործիքները՝ շելյան ձեռքի հատիչները, միօրինակ պարզ ձևով են ներկայանում, բայց ունեցել են բազմակողմանի կիրառություն։ Դրանցով մարդը կարող էր կատարել շատ աշխատանքներ, որոնց համար անհրաժեշտ էր ամուր սուր ծայր, մասսիվ կտրող պրոֆիլային կող ու միևնույն ժամանակ պահանջում էր ուժգնորեն հարվածել, կոտրել, ջարդել, հող փորել, գետնից արմատներ հանել և այլն։ Պարզ է, որ ձեռքի հատիչը կարող էր նաև որպես պաշտ-

---

[23] Արտին լեռան կայանների մասին տե՛ս նաև *С. Н. Замятнин*, Находки нижнего палеолита в Армении, ИАНАОН, 1947, № 1, ինչպես նաև *М. З. Паничкина*, Палеолит Армении, Ленинград, 1950։

[24] Տե՛ս *С. А. Сардарян*, Палеолит в Армении, Ереван, 1954, էջ 52։

պանության միջոց ծառայել, ինչպես և օգտագործվել որսի ժամանակ։ Ուշագրավ է, որ ձեռքի հատիչը հարմար է բռնել աջ ձեռքով. ուրեմն շելյան ժամանակից արդեն մարդը աշխատել է աջ ձեռքով։

Սատանի-դար արհեստանոց կայանում շելյան ձեռքի հատիչների հետ միասին գտնվել են ամբողջական կոպիչից պատրաստված շատ կոպիտ, որոշակի կայուն ձև չունեցող գործիքներ, որոնց վրա, սակայն, պարզ նկատելի են նպատակային հարվածների և գործածության հետքեր. քարի մնացած մակերեսը բնական տեսքի է, ծածկված թանձր պատինայով։ Սրանք երկար ժամանակ նախորդել են շելյան ձեռքի հատիչներին և հնագիտության մեջ կոչվում են մինչմասսիվ ցլեպներ, սրածայր, կոպիտ քերիչներ, սկավառակաձև գործիքներ, որոնք, անկասկած, պատրաստված են մարդու ձեռքով և կարող են վերագրվել վաղշելյան շրջանին։

Հին «վարպետը» կոպիչը կամ ելունդը տաշելու ժամանակ ստանում էր սուր կողերով շատ ցլեպներ, որոնցից խոշորները օգտագործելի էին որպես հասարակ կտրող գործիքներ. դրանցով կարող էին որսի միսը բաժանել մասերի։ Հավանաբար, ավելի կարևոր է եղել դրանց դերը որպես գործիք պատրաստելու գործիքներ (փայտից զենքեր, սրածայր մահակներ և ձեռնափայտեր)։ Կասկածից վեր է, որ ամենապարզ ձևերով մշակված վանակատի (օբսիդիանի) ու կայծքարի գործածությունը սկսվել է ավելի վաղ, քան շելյան ձեռքի հատիչի հանդես գալը և մինչշելյան ժամանակը հանդիսացել է մշակութային մի որոշակի ժամանակաշրջան։ Մոտավորապես նույն ժամանակաշրջանին են պատկանում Արզնու պալեոլիթյան կայանի մոտ ընկած Նռնունիսի[25] դիատոմիտները՝ ուշ պլիոցենի և վաղ պլեյստոցենի կենդանական ու բուսական աշխարհի հարուստ մնացորդներով, որոնց մեջ գտնվել են նաև երկու կողմից մշակված հնագույն գործիքներ՝ հար և նման Սատանի-դարի նախնական հատիչներին։

Ձեռքի հատիչներին ուղեկցող՝ պատահական ցլեպներից ու բեկորներից պատրաստված մանր գործիքները դարեր շարունակ օգտագործվել են մարդու կողմից և հավասարապես հատկանշական են ինչպես մինշշելին, այնպես էլ շելին, որոնք մշակույթի նույն շրջանի երկու հաջորդական օղակներ են։ Ստորին պալեոլիթի վերջին ցլեպներից պատրաստված գործիքների նշանակությունն ավելի է աճում։ Միջին պալեոլիթում դրանք դառնում են գործիքների իշխող տիպերը, և վաղ շրջանների բնորոշ հատիչը հետզհետե դուրս է գալիս գործածությունից։ Այսպիսով, ստորին պալեոլիթի շելյան փուլը անխզելիորեն կապված է մինշշելյան փուլի հետ և պահպանում է նրա շատ ու շատ գծերը ինչպես գործիքների ձևի, այնպես էլ մարդու տնտեսական գործունեության տեսակետից։

Ըստ ձևի, քանակի ու մշակման տեխնիկայի, Արտին լեռան Սատանի-դարի հատիչները և ուղեկցող գործիքները պատկանում են Եվրոպայի ու Ասիայի ստորին պալեոլիթի մինշշելյան և շելյան գործիքների լավագույն նըմուշների շարքին։

---

25 Տե՛ս Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 46։



Վաղ շելյան ձեռքի հատիչ. Սատանի դար

Սատանի-դարի պալեոլիթյան կայանն իր գրաված դիրքով, գործիքների հարստությամբ, արխաիկ ու տիպական ձևերով կապող օղակ է հանդիսանում Առաջավոր Ասիայի նախնադարյան մշակույթի Միջերկրականի, Կովկասի ու Հարավ-ռուսական տափաստանների պալեոլիթյան մշակույթների միջև։ Հայաստանի ստորին պալեոլիթի գրեթե բոլոր նյութերը, անկասկած, հաստատում են Հայկական լեռնաշխարհի նման կարևոր դերը[26]։

**Աշելյան քարե գործիքներ** — Աշելյան մշակույթն իր անունն ստացել է Սենտ-Աշել քաղաքից, որտեղ առաջին անգամ քարե գործիքներ են գտնվել։ Հանդիսանալով ստորին պալեոլիթի շելյան փուլի անմիջական շարունակությունն ու զարգացումը, և ժամանակագրական տեսակետից համապատասխանելով մինդելյան սառցակալման ու մինդել-ռիսյան միջսառցային ժամանակաշրջանին, աշելյան մշակույթը մի նոր, ավելի բարձր աստիճան էր մեր նախնիների պատմության մեջ։ Սատանի-դարի, Արեգունի բլրի, Հարավային բլրի, Հրազդան գետի միջին հոսանքում[27], Արզնու դարավանդի՝ Ճատկերանի, Աշիբաբադի, Նռնունիսի (Նուռնուս), Լուսավանի, Ջրաբերի և այլ վայրերի ստորին պալեոլիթյան կայանները, որոնք արտակարգ հարուստ էին վանակատի արտադրություններով, տվել են համեմատաբար զարգացած ու բազմապիսի քարե գործիքների բնորոշ ժողովածուներ։ Վերոհիշյալ բոլոր կայաններում գործիքների շելյան տիպերին փոխարինելու են գալիս ավելի հմտորեն, խնամքով պատրաստված և զգալիորեն կատարելագործված գործիքներ։ Աշխատանքի հիմնական գործիքը մնում է ձեռքի հատիչը, որը, սակայն, փոքրանում է, ստանում բարակ (անհետացած) կրունկ, ճշգրիտ նշաձև, ձվածիր, սկավառակաձև կամ եռանկյունի ուրվագիծ, բեկոտման տեխնիկայով մշակված հարթ մակերես։ Նրա կտրող պրոֆիլային կողերն արդեն ոչ թե զիգզագաձև են, այլ ուղիղ և սուր։ Մանրակրկիտ ու նուրբ մշակման շնորհիվ աշելյան հատիչը ստանում է նաև կտրելու հատկություն։ Այս բոլոր հանգամանքները վկայում են գործիքներ պատրաստելու տեխնիկայի զգալի առաջընթացի, վանակատի, կայծքարի հատկություններին խորամուխ լինելու, վարպետի ձեռքի առավել հմտության մասին։ Ձեռքի հատիչը ստորին պալեոլիթի ամենաբնորոշ ու տիպական գործիքն է, որն առանձնապես լայն տարածում է ստանում աշելյան շրջանում։

Աշելյան հատիչներին զուգընթաց կատարելագործվում են նաև ցլեպներից ու մանր կտորներից պատրաստված, այսպես կոչված, կլեկտոնյան և լևալուայան տիպն ունեցող գործիքները. սրածայրը, քերիչը, քերթիչը, կտրող դանակը, գայլիկոնը, սկավառակաձև գործիքները, որոնք օգտագործվել են կենցաղում, փայտի ու մորթու մշակման համար։ Ձեռքի հատիչից սրանք տարբերվում են պարզ մշակությամբ։

Աշելյան գործիքները, բացի վանակատից, պատրաստված են նաև դիաբազից և դացիտից։ Դրանց վրա, հատկապես բանող եզրերում, կատարված է նաև հետագա լրացուցիչ մշակում (հարդարում)։ Ուշաշելյան շրջանում հանդիպում են շատ խնամքով մշակված գործիքներ, որոնք ունեն ուղիղ, ճշգրիտ ուրվագծեր։

---

26 *Տե՛ս М. З. Паничкина,* Палеолит Армении, էջ 7։

27 *Տե՛ս С. А. Сардарян,* Палеолит в Армении, էջ 72—100։

Վաղաշելյան գործիքներին հատուկ է մուգ, սև թավշյա, թանձր պատինան, իսկ ուշաշելյան գործիքների պատինան ավելի թույլ է, թեև ամբողջովին ծածկում է քարի բնական գույնը։

Արտին լեռան աշելյան գործիքների կոմպլեքսը պարունակում է մեծ քանակությամբ կատարյալ մշակված ձեռքի հատիչներ և ցլեպներից պատրաստված գործիքներ, որոնք պատկանում են աշելյան դարաշրջանի երկու՝ վաղ և ուշ կեսերին։ Հանդիպող բազմազան, բայց բնորոշ ձևերը՝ իրենց համապատասխան մշակմամբ, վկայում են գործիքների նոր մասնագիտացման և դրանց պատրաստման ավելի բարձր տեխնիկայի մասին՝ կապված Հայաստանի վաղագույն բնակիչների տնտեսական գործունեության բարդացման հետ։

Աշելյան դարաշրջանում կարևոր փոփոխություններ են կատարվում մարդկանց կյանքում։ Հանդես են գալիս որսորդական ժամանակավոր ճամբարներն ու երկարամյա բնակավայրերը։ Այդպիսի բնակավայրերի հիանալի օրինակ են վաղ և ուշ աշելյան ժամանակներին պատկանող Արտին լեռան և Հրազդանի միջին հոսանքի կայաններն ու քարայրները։

Արզնու աշելյան հին բնակավայրը գտնվում է Հրազդան գետի աջ ափին, վաղ չորրորդական 80 մետրանոց դարավանդի վրա։ Ջուր խմելու համար, անշուշտ, դեպի գետն էին գալիս փղերը, ռնգեղջյուրները, ձիերը և այլ կենդանիներ, որոնք դառնում էին որսի առարկա։

Արզնու կայանի հնագիտական կոմպլեքսները բաղկացած են աշելյան ձեռքի հատիչներից, կտորներից ու ցլեպներից պատրաստված ուղեկցող սրածայրերից, քերիչներից, շեղբերից և այլն, որոնք ունեն կայուն ուրվագծեր, կլեկտոնյան տեխնիկային բնորոշ արխաիկ տեսք։ Նշանակալից թվով հանդիպում են երկկողմանի մշակված սկավառակաձև գործիքներ։ Ըստ բնույթի և մշակման տեխնիկայի, Արզնու գործիքների վաղ կոմպլեքսը պետք է համարել Արտինյան կայանների աշելյան գործիքներին ժամանակակից[28]։

Աշելյան ժամանակի մարդը լայնորեն օգտագործում է պատրաստի կացարանները՝ քարայրները, ծածկերը և այլն[29]։

Ստորին պալեոլիթի աշելյան դարաշրջանի գործիքների ձևերի ու տիպերի բազմազանությունը բացատրվում է ժամանակաշրջանի անցողիկ բնույթով, երբ նախամարդը հավաքչական գործունեությունից անցավ որսորդության՝ որպես տնտեսական գործունեության մի նոր, որոշակի ձևի։

Որսորդության զարգացմանը զուգընթաց, աշելի վերջում խիստ սահմանափակվում է գործիքների երկկողմանի մշակությունը, որովհետև արտադրությունը պահանջում էր նոր տեսակի գործիքներ և դրանց մշակման նոր եղանակ։ Աշելյան հատիչին ուղեկցող կլեկտոնյան տիպի գործիքները նույնպես հետզհետե կատարելագործվում են՝ կապված խոշոր կենդանիների որսի հետ, թեև հավաքչական աշխատանքը դեռևս շարունակվում էր մնալ որպես գլխավոր «արտադրաձևը»։ Սակայն որսորդությունը մարդու կյանքի համար հսկա-

---

28 Տե՛ս *М. З. Паничкина,* Палеолит Армении, էջ 69—89։

29 Տե՛ս Հ. Ա. Մարտիրոսյան, *Հայաստանի նախնադարյան մշակույթի նոր հուշարձաններ,* ՊԲՀ, 1969, № 3, էջ 191—208։

յական նշանակություն ուներ, քանի որ դա մարդուն ապահովում էր մսեղենով, որը բարելավում է արյան քիմիական բաղադրությունը և նպաստում ուղեղի զարգացմանը։




Վաղ աշելյան ձեռքի հատիչ. Ջրաբեր

Գտնված աշելյան գործիքները՝ հարյուրավոր ձեռքի հատիչները, ցույց են տալիս, որ Հայաստանի պալեոլիթյան կայանները հազարամյակներ շարունակ եղել են նախամարդու բնակավայրեր։ Բնության դեմ պայքարելիս, գործիքների հետ միասին մարդու հենարանն էր դարձել կրակը։ Աշելյան ժամանակի մարդը կրակը օգտագործել է ոչ միայն որպես ջերմության աղբյուր, այլև նրանով պաշտպանվել է գիշատիչ գազաններից։ Պետք է ենթադրել, որ մարդիկ շատ վաղ են սովորել միսը, արմատիքը և պտուղները խորովել։ Դա ոչ միայն օգնեց լավացնելու սննդամթերքը, ընդլայնելու մթերքների պաշարը, այլև

խիստ սահման դրեց մարդու և մթերքը բնական վիճակում գործածող կենդանու միջև։

Աշելյան ժամանակին բնորոշ է ստորին չորրորդական մինդել-ռիսյան, մասամբ մինդելյան փուլի ջերմասեր ֆաունան, այսինքն՝ տրագոնթերյան փիղը, ռնգեղջյուրը, նախնական ձին, ուղտը, եղջերուն, ցուլը, որոնց մնացորդները հայտնաբերվել են Լենինականի մոտ և Երևանի շրջակա գյուղերում։

Հայկական լեռնաշխարհը նախնադարյան մարդու բնակեցման շրջան— Հայկական լեռնաշխարհի պալեոլիթյան կայանների թիվը չի սահմանափակվում Սովետական Հայաստանի լավ ուսումնասիրված հուշարձաններով։ Վերջին տարիների ընթացքում Արևմտյան Հայաստանի տարբեր մասերում ևս հայտնաբերվել են քարեդարյան մշակույթի զանազան փուլերին վերաբերող հնագիտական հարուստ նյութեր, որոնք անգնահատելի նշանակություն ունեն Հայաստանում մարդու վաղ բնակության և նախամարդու տարաբնակեցման կարևոր հարցերի լուծման համար։ Ցավոք, այդ նյութերի մի զգալի մասը ներկայացված է թուրքական հրատարակություններում, որոնք հաճախ ոչ թե գիտական նպատակներ են հետապնդում, այլ ջանում են ապացուցել, թե թուրքերը ինչ-որ մի «համամարդկային նախաակզբնական մշակույթ են ստեղծել»[30]։

Հայկական լեռնաշխարհի և նրա հարևան շրջանների պալեոլիթյան հուշարձանների անաչառ ուսումնասիրությունը հիմնովին հերքում է պան-թուրքիստական այս զառանցանքը, կարևոր դեր խաղում հնագույն մարդու բնակության, նրա տեղաշարժերի, ստորին պալեոլիթյան մշակույթի գլխավոր կենտրոնների ծագման ու զարգացման պրոբլեմը մեկնաբանելու գործում։

Ներկայումս հին քարի դարի հետաքրքրական բնակավայրեր են հայտնաբերված Կարսից հյուսիս, Սասունի լեռների ստորոտում, Արածանիի ավազանում, Խարբերդի դաշտում, Հարքի (Բուլանըխի) հովտում (Լիզ) և այլուր[31]։ Հարթավայրերի այս շղթան հաղորդակցության մեջ է եղել հյուսիսում՝ Արաքսի հովտի ու Արարատյան դաշտավայրի, հարավում՝ Տարոնի հովտի ու Խարբերդի դաշտի միջոցով Հայկական Տավրոսի լեռնանցքերի հետ։ Արածանիի վերին հովտից՝ Բագրևանդից (Ալաշկերտ) մի շարք հարմար ճանապարհներ են անցնում դեպի Արաքսի հովիտը և Արարատյան դաշտավայրը, դեպի Արարատ և Արագած լեռները։ Բնական այս միջանցքի նշանակությունը կարևոր է այն իմաստով, որ վաղ չորրորդական նախնադարյան մարդը բնակվել է այս վայրերում, գուցե նաև Արածանիի հովտում, որը միանգամայն նպաստավոր պայմաններ ուներ մարդկային կյանքի առաջադիմության համար՝ պլեյստոցենի սկզբում։

Այդ տեսակետից միանգամայն օրինաչափ է ստորին պալեոլիթյան կայանների հայտնաբերումը Հայկական լեռնաշխարհի նաև հարավային ծայրամասերում, որոնք անմիջապես հարում են Արևելյան Միջերկրականի, Առաջավոր ու Փոքր Ասիայի մշակութային կենտրոններին։

---

30 Սույն ենթագլուխը կազմված է В. П. Любин, „Палеолит Турции и проблема раннего расселения человечества" աշխատության հիման վրա (տե՛ս СА, XXVII, 1957, էջ 71—90)։

31 Տե՛ս Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 38, 56։

Շելյան, աշելյան, կլեկտոնյան և մուստյերյան հարուստ նյութեր են հայտնաբերվել Ասորիքի սահմանի մոտ, Վերին Եփրատի նստվածքներում (Բիրինջիկում՝ 1883 թվականին, Նիզեբ լեռից արևմուտք, կավճային նստվածքներում՝ 1907 թվականին), Հայկական Տավրոսի հարավային լանջերի երկարությամբ, Միջերկրական ծովից մինչև Դիարբեքիր ձգվող կավճային նըստվածքներում։ Հին քարի դարի ամենահատկանշական բնակավայրերը հայտնաբերվեցին այստեղ, Մալաթիայի վիլայեթի Ադիաման քաղաքի շրջակայքում՝ Պիրինի նախալեռնային գոտում, ծովի մակերևույթից 600—700 մ բարձրության վրա։ Պիրինի պարբերական հետազոտությունների ընթացքում (1932—1938, 1945) քարե կույտերի և Ջակալ գետի հունի մեջ հայտնաբերվել են վանակատից ու կայծքարից պատրաստված շելյան, աշելյան, կլեկտոնյան, մուստյերյան և նեոլիթյան գործիքների մեծաքանակ ու առաջնակարգ նմուշներ[32]։

Նկարագրված պալեոլիթյան հայտնաբերումները կատարվել են մի շրջանում, որն առանձնացվում է Հայկական Միջագետք անվամբ[33]։ Այս տեղանքի ընդհանուր տեսքը (լանդշաֆտը) աշխարհագրական տեսակետից մի ամբողջություն է կազմում հյուսիսային Ասորիքի հետ[34]։ Հայկական լեռնաշխարհի, ինչպես և Հյուսիսային Ասորիքի այդ շրջանի վաղ հին քարեդարյան հայտնաբերումները հատուկ են գլխավորապես նախալեռների գոտուն և Եփրատի ու նրա վտակների հովիտներին։

Վերջին տարիներին այս շրջանում շելյան և աշելյան տիպերի հետաքըրքըրական նյութեր են հայտնաբերվել Այնթաբ (Գազի-Անթեբ) քաղաքի Թլուկ և Մեթմենջե գյուղերում, ինչպես նաև Քեսուն, Խիզնիկ և Փալ գյուղերի սահմանագծում և Բոզովայում (Ուրֆա քաղաքի մոտ)[35]։

Փաստերն ապացուցում են, որ Հայկական լեռնաշխարհն իր բոլոր մասերով բնակեցված է եղել մարդկային պատմության ամենավաղ շրջաններից սկսած։

Հայաստանը, Առաջավոր Ասիան և քարեդարյան մարդկանց վաղ տարաբնակեցման խնդիրը — *Հայկական լեռնաշխարհի և Առաջավոր Ասիայի սահմաններում նախնադարյան մարդկանց լայն տարաբնակեցմանը մեծապես նըպաստել է պալեո-աշխարհագրական միջավայրի նշանակալից նմանությունը, որ հավանաբար, գալիս է ուշ պլիոցենի և վաղ պլեյստոցենի ժամանակաշըրջանից։ Այդ տեսակետից առանձնապես հատկանշական է այն փաստը, որ վաղ չորրորդական շրջանի մարդու բնակատեղիները, ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ նրան կից երկրներում ընկած են հաղորդակցության զարմանալի հարմար շրջաններում՝ հովիտներում և նրանց կից բարձր լեռնային սարահարթերում ու լեռնանցքներում*[36]։

Ասորիքի, Փոքր Ասիայի, Հայկական լեռնաշխարհի, Իրանի և Իրաքի միջև վաղ հին քարի դարի գործիքների մի շարք վայրեր են գտնվել Խաթայ վի-

32 Տե՛ս *В. П. Любин,* Палеолит Турции, էջ 73—77։
33 Ս. Տ. Երեմյան. *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի,* էջ 71։
34 *В. П. Любин,* նշվ. աշխ., էջ 72, 77։
35 Տե՛ս նույն տեղում, էջ 72—77։
36 Տե՛ս նույն տեղում, էջ 88։

*լայեթի հարավում, Ալեքսանդրետի սանջակից ոչ հեռու (Անտիոքի և Նուրեդ-դինի միջև), Ալթին-դերե գետի ավազանի շերտերում[37]։*

*Նույն ժամանակաշրջանի քարե գործիքների կուտակման խոշոր օջախներ են Փոքր Ասիայի կենտրոնական (Սակարա գետի վերին հոսանքը՝ Չիբուկ, Կարմիր, Օվա, Իլիջա-սու վտակների ավազանը և Էմիր, Մոգան ու մեծ լճերի շրջակայքը)[38], հյուսիսային լեռնային շրջանները (Սամսոն քաղաքի հարավ-արևելյան ծովային դարավանդը, Ջամ լեռան ստորոտը)[39] և Տավրոսի լեռները։ Տավրոսի լեռնաղեղումն է գտնվում «Դռունք Կիլիկիոյ» լեռնանցքը, որը մեծապես օգնել է մարդկային խմբերի տեղաշարժերին։*

*Այսպիսով, Փոքր Ասիայի տերիտորիայի վրա այժմ ուրվագծվում են հին քարի դարի հայտնագործությունների տարածման երկու հիմնական շրջան՝ Կենտրոնական Փոքր Ասիան և Հայաստանի՝ Ասորիք-Պաղեստինին հարող շրջանը, որն ըստ երևույթին, ստորին պալեոլիթի պաղեստինա-ասորական տեղային մարզի հյուսիսային ծայրամասն է[40]։*

*Ստորին պալեոլիթի որոշակի խոշոր կենտրոններ են ուրվագծված նաև Հայկական լեռնաշխարհից հարավ և հյուսիս՝ Իրաքում, Իրանում և Կովկասի մերձսևծովյան շրջաններում։*

*Հետաքրքիր է, որ Իրաքում պալեոլիթյան գործիքներ են հայտնաբերված Սուլեյմանիեի, Ռևանդուզի, Ամադիայի, Ագրայի, Ջալոյի լեռնանցքներում, այսինքն՝ Հայկական լեռնաշխարհին հարող շրջաններում։*

*Կովկասի ստորին պալեոլիթյան բնակատեղիները Աբխազիայի և Ղրիմի (Կիրիկ-Կոբա և այլն) մերձսևծովյան շրջաններում համապատասխանում են Սև ծովի 3—5 տերասներին։ Զափազանց հետաքրքիր կայաններ են հայտնաբերված Հարավային Օսեթիայում (Կուդարո, Լաշե-Բալթա և այլն), ինչպես նաև Քուռ գետի ձախակողմյան վտակների հովիտներում[41]։*

*Աշելյան գործիքների տարածումը ցույց է տալիս, որ միջին կամ ուշ աշելյան մարդը լայնորեն յուրացրել էր Հայաստանի և Կովկասի շրջանները։ Կովկասյան լեռնաշղթան այն բնական սահմանն էր, որին հասնում էին Հայկական լեռնաշխարհից, Առաջավոր ու Փոքր Ասիայից շարժվող մարդկանց հընագույն խմբերը։*

*Ասիայի, Աֆրիկայի և Եվրոպայի միջև գտնվող Փոքր Ասիայի թերակղզին և Հայկական բարձրավանդակն իրենց աշխարհագրական դիրքով, բարենպաստ բնա-կլիմայական պայմաններով ու չափազանց վաղ բնակեցմամբ բացառիկ դեր են խաղացել պալեոլիթյան մարդու տարաբնակեցման քարեդարյան մշակույթի ձևավորման ու տարածման գործում։ Հայկական լեռնաշխարհի ու Պարսից ծոցի միջև ընկած տերիտորիան ամենահարմարն էր մարդկային վաղ կոլեկտիվների տարածման համար, այդ պատճառով էլ որոշ գիտնականներ*

---

37 *Տե՛ս նույն տեղում։*

38 *Տե՛ս* Ս. Հ. Սարդարյան, *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 56—57։*

39 *Տե՛ս В. П. Любин, էջ 82—83։*

40 *Տե՛ս նույն տեղում։*

41 *Տե՛ս* «История СССР с древнейших времен до наших дней», т. I, М., 1966, *էջ 20—32։*

այն համարում են օյկումենեի կենտրոնական մաս[42], պալեոլիթյան մշակույթի կարևոր առաջապահ։

Եփրատի հովիտը, Համայի, Սամսոնի, Բիթլիսի, Տավրոսի լեռնային անցումները, Զագրոսի անցքերը, Վանի և Ուրմիայի ընդարձակ տեկտոնիկ իջվածքները, Արածանիի ամբողջ հովիտը, այն բնական անցուղին էին, որոնցով հին մարդը կարող էր արտագաղթել Փոքր Ասիայից, Միջերկրականի արևելյան ավազանից, Հայկական լեռնաշխարհից՝ Իրանի արևմտյան սահմանի ուղղությամբ, դեպի հարավ-արևմուտք՝ Խուզիստանի և Լուրիստանի լեռնային սարահարթերով մինչև Միջագետքի հովիտը, որն իր հարավային մասում, մինչև ժամանակակից Մոսուլի սահմանները, ծածկված էր Պարսից ծոցի ջրերով։

Հյուսիսային Փոքր Ասիայում հին մարդը կարող էր հաղթահարել Սամսոնի մոտի լեռնանցքը։ Ասորիքում ու Լիբանանում նախնադարյան մարդիկ ծովափից երկրի ներսը շարժվելիս օգտագործել են Խամիբեգարի հարավային լեռնանցքները (1800 մ)։ Կարելի է ենթադրել, որ մարդկության առանձին խմբերի բնակեցմանը և շարժմանը նպաստող պայմաններ գոյություն են ունեցել նախալեռներում, որոնք ձգվել են Զագրոսի լեռնային աղեղի բազմաթիվ հովիտներով, Հյուսիսային Միջագետքի մերձլեռնային շրջաններում։

Արևելյան Հայաստանի և Կովկասի սևծովյան ափի վաղ քարի դարի հուշարձանները, իրենց հերթին, թույլ են տալիս ավելի ամբողջական պատկերացնելու նախնադարյան մարդու բնակությունը մեր երկրի սահմաններում. բացի այդ, հնարավոր է, որ դրանք նշում են հնագույն մարդկաց տեղաշարժի և տարածման ճանապարհները հյուսիսային ուղղությամբ դեպի Կովկասյան լեռնաշղթան։

Հնագիտական և երկրաբանական տվյալները թույլ են տալիս եզրակացնելու, որ Հայկական Տավրոսից հյուսիս՝ Արածանի գետի հովտում և Կարսի մոտ, ինչպես նաև Զագրոսի լեռներում և Կապուտան (Ուրմիա) լճի մոտ վաղ հին քարեդարյան հայտնաբերումները առաջին կապող օղակն են մի կողմից Ասորիք-Պաղեստինի պալեոլիթյան շրջանի ու Հյուսիսային Միջագետքի և մյուս կողմից՝ Հայկական լեռնաշխարհի արևելյան մասի պալեոլիթյան շըրջանի միջև։

**Ստորին պալեոլիթի մարդը** — Չորրորդական ժամանակաշրջանի մարդն իր ֆիզիկական տիպով, իր ուղիղ քայլվածքով, ձեռքի զարգացած թաթով և գլխի սկավառակի նշանակալից ծավալով միջանկյալ դիրք էր գրավում անթրոպոիդների և ժամանակակից մարդու միջև։ Դա պիթեկանթրոպն էր (կապկամարդը), որն առաջին անգամ հայտնաբերվեց Յավա կղզում, իսկ այնուհետև նման կամ մոտ տիպեր հայտնաբերվեցին Աֆրիկայում, Ասիայում և Եվրոպայում[43]։ Առանձնապես արժեքավոր են Հյուսիսային Աֆրիկայում կատարված հայտնագործությունները, ուր հաճախ ստորին չորրորդական ժամանակի նստվածքներում խոշոր փղի, հիպոպոտամի, ռնգեղջյուրի, զեբրի, ընձուղտի, սուսերատամնավոր վագրի մնացորդների հետ միասին գտնվել են նաև

42 Տե՛ս Ф. Дебец, Г. А. Трофимов и Н. П. Чебоксаров. Проблемы заселения Европы, «Происхождение человека и древнее расселение человечества», 1951, էջ 415։

43 Տե՛ս П. П. Ефименко, Первобытное общество, Киев, 1953, էջ 90—96, 142—144։

շելյան գործիքների նման շինվածքներ։ Նույն պայմաններում և միևնույն շերտում հայտնաբերվել են նաև հին մարդկանց կայաններ։ Այսպիսով, առաջին անգամ հաստատվեց, որ այդ հնագույն մարդիկ իրենց զարգացման մակարդակով մոտ են պիթեկանթրոպին և դրա հետ միասին նմանության գծեր ունեն հետագա, ավելի զարգացած մարդաբանական տիպի, սինանթրոպի հետ։ Ինչպես և պետք էր սպասել, նրանք օգտագործելիս են եղել շելյան տիպի ձեռքի հատիչներ։

Պեկինի մոտ գտնվող Չժոու-Կոու-Դյան քարայրում սինանթրոպի (չինական մարդ) հայտնաբերումը առանձնապես նշանակալից է նրանով, որ մարդկային ոսկորների հետ միասին այստեղ գտնվել են վաղ չորրորդական ֆաունա, ածուխ և մոխրի կույտեր և որ կարևորն է, քարից պատրաստված գործիքներ։ Սինանթրոպին մոտ է Եվրոպայի հայդելբերգյան մարդը։

Կասկածից վեր է, որ վաղ չորրորդական դարաշրջանում կամ ստորին պալեոլիթյան մշակույթի ժամանակաշրջանում Հայկական լեռնաշխարհը բնակեցված է եղել նույնատիպ կամ նման նախնադարյան մարդկանցով։ Հազիվ դուրս գալով կենդանական վիճակից և թափառելով գետերի ու լճերի ափերին, Հայաստանի նախամարդը բուսական կեր է հավաքել ու պարզագույն գործիքների օգնությամբ վայրի կենդանիներ որսացել։ Հավանական է, որ այստեղ հին բնակիչները, սինանթրոպի նման, օգտագործած լինեն կայծակից ու հրաբխային լավաներից առաջացած կրակը։ Հնարավոր է նաև, որ մարդն այդ ժամանակ լրիվ չէր կտրել իր կապը ծառաբնակ կյանքից, որը նրա միակ հուսալի և ապահով ապաստանն էր հին չորրորդական ֆաունայի խոշոր ներկայացուցիչներից՝ փղից, ռնգեղջյուրից, սուսերատամնավոր վագրից և այլ կենդանիներից պաշտպանվելու համար։

**Նախնադարյան հոտ** — *Քարե գործիքների կուտակումները ստորին պալեոլիթյան կայաններում վկայում են հենց այն մասին, որ իր գոյությունը պահպանելու, վայրի կենդանիներից պաշտպանվելու, բնության ուժերի դեմ նպատակահարմար ձևով պայքարելու համար մարդիկ ստիպված էին միանալ մի քանի տասնյակներով։ Նախնադարյան այս խմբերը ներկայացնում էին մարդկային հասարակության ամենապարզ ձևը։ Հավաքչությունը, որսը, աշխատանքի պարզունակ գործիքների հանդես գալը բնորոշում են մարդկային հասարակության տնտեսական զարգացման առավել վաղ աստիճանը կամ նախնադարյան հոտի ժամանակաշրջանը, որ համապատասխանում է հնագիտական և մարդաբանական տվյալներով հաստատված շելյան և աշելյան փուլերին՝ պիթենկանթրոպի ու սինանթրոպի գործունեության ժամանակներին։*

Զարգացման ստորին պալեոլիթի աստիճանի վրա մարդկությունը մնացել է շատ երկար ժամանակ։ Կարելի է պատկերացնել, թե ինչքան դանդաղ է ընթացել կենդանուց մարդուն անցումը, ինչպիսի ծանրությամբ է ճնշել կենսաբանական ժառանգությունը մարդու վրա, ինչքան ժամանակ է պահանջվել աշխատանքի տարրական ունակություններ ձեռք բերելու և գործիքներ պատրաստելու համար։ Մարդկության այդպիսի վիճակի տևողությունը հասնում է հարյուր հազարամյակների[44]։

---

44 Տե՛ս նույն տեղում, էջ 7—14։

## 3. ՄԻՋԻՆ ՊԱԼԵՈԼԻԹԸ (ՀԻՆ ՔԱՐԻ ԴԱՐԻ ՄԻՋԻՆ ՇՐՋԱՆ)

**Բնական պայմանները** — Միջին պալեոլիթի մշակույթը վերաբերում է մեր թվականությունից առաջ մոտավորապես 100.000—40.000 թվականներն ընդգրկող ժամանակաշրջանին և համապատասխանում է երկրի պատմության չորրորդական դարաշրջանի կեսերին՝ մինդել-ռիսյան միջսառցային և ռիսյան առավելագույն սառցապատման շրջաններին[45]։ Ռիսյան մեծ սառցապատման փուլում Հայկական լեռնաշխարհի մի զգալի մասը ծածկվում է սառցե վիթխարի վահանով, որի հետքերն են մինչև այժմ էլ բևեռային շրջաններից հազարավոր կիլոմետրեր հարավ պահպանված մորենների հսկայական կուտակումները[46]։

Հայաստանի լանդշաֆտը, բնական պայմանները, կլիման, բուսական ու կենդանական աշխարհն այդ շրջանում զգալիորեն փոխվում են։

Ռիսյան շրջանի վերջում Հայաստանի սառցակալումը հասնում է առավելագույն չափերի։ Սառցային ծածկույթը, հետզհետե մեծանալով, տարածվում է մինչև Մասիսի (Արարատի), Արագածի, Նեխ-Մասիքի (Սիփանի) և այլ գագաթներն ու լեռնաշղթաների լանջերը։ Սառցադաշտերի հարաճուն շարժման և դրան ուղեկցող նոր սառցակալման հետևանքով վերանում են անտառները, փոխվում տափաստանները, բաց տարածությունները դառնում են լանդշաֆտի գերակշռող տիպ։

Փոխվում է և կենդանական աշխարհը, անհետանում են այնպիսի կենդանիներ, ինչպիսիք են հին (հարավային) փիղը, մերկա-ռնգեղջյուրը և մինչ այդ Հայաստանում գոյություն ունեցող հիպոպոտամը (գետաձի)։ Նախկին ջերմասեր կենդանիների փոխարեն Հայաստանի նախալեռներից հյուսիս հանդես են գալիս հյուսիսային ազնիվ ու հսկա եղջերուները, սառցային ժամանակի այլ կենդանիներ։ Այժմ Հայաստանի ֆաունայի բնորոշ ներկայացուցիչներ են դառնում մամոնտը (նախնական փիղ), բրդոտ ռնգեղջյուրը, վայրի ցուլը, գիշատիչների բազմաթիվ տեսակներ և այլն, որոնց մնացորդները հայտնաբերվել են Հայաստանի ռիսյան շրջանի նստվածքներում[47]։

Սակայն կյանքը շարունակում էր հարատևել սառցային հսկայածավալ մեռյալ անապատից դուրս, գետերի խիտ ցանցով կտրտված ցածրադիր հովիտներում ու դաշտերում։ Չնայած դաժան կլիմայական պայմաններին և երկարատև ձմռանը, գետերի առատորեն ոռոգվող հովիտները ամռանը հրաշալի արոտավայր են դառնում խոշոր և մանր եղջերավոր կենդանիների բազմաթիվ հոտերի համար։

Նախնադարյան մարդը կարողանում է հարմարվել ռիսյան սառցապատման դաժան պայմաններին, ապաստան գտնելով ժայռերի բնական խորշերում, անձավներում, քարայրներում, լեռների թեքություններում։ Այդ պատճառով մուստյերյան դարաշրջանի շատ բնակավայրեր կապված են քարայրների հետ, որտեղ պահպանված են մշակութային բազմաթիվ շերտեր։ Այրերին

---

45 Տե՛ս *А. В. Арциховский,* Основы археологии, М., 1954, էջ 32։
46 Տե՛ս Ս. Դ. Լիսիցյան, *ՀՍՍՀ ֆիզիկական աշխարհագրություն,* էջ 122—125։
47 Տե՛ս *С. А. Сардарян,* Палеолит в Армении, էջ 103—104։

տիրանալը եղել է նախնադարյան՝ նեանդերթալյան տիպի մարդու խոշոր նըվաճումներից մեկը, մանավանդ որ դրանք նախապես ծառայում էին որպես վայրի կենդանիների պատսպարաններ[48]։ Նրանց դուրս վանելու համար մարդը դիմում է զենքի և հատկապես կրակի օգնությանը։ Նեանդերթալցին չընաջնջվեց, չանհետացավ. ընդհակառակն, նա շարունակեց անընդհատ նորանոր վայրերում բնակվել։ Սառցային դարաշրջանի սկզբում Հայաստանի տերիտորիայի և հարևան երկրների հին բնակիչների մշակութային զարգացումը հասել էր այնպիսի աստիճանի, որ մարդկանց թույլ էր տալիս ավելի ակտիվորեն հարմարվել նոր, համեմատաբար դժվար պայմաններին։

Մուստյերյան դարաշրջանում զգալիորեն զարգանում է որսորդությունը, որը դառնում է սննդի հայթայթման հիմնական միջոցը. որսում են գերազանցապես խոշոր կենդանիներ՝ վայրի եզներ, ձիեր, ազնիվ եղջերուներ, քարայծեր և այլն։ Որսորդության արդյունքները զգալի չափով լրացվում են նաև հավաքչությամբ։

Շրջապատի դաժան պայմանները, կենաց ու մահու կռիվը վերափոխում են մարդուն, դարձնում ավելի ճկուն, հնարամիտ, դիտողական, դրականորեն ներգործում քարեդարյան մշակույթի զարգացման ընթացքի վրա[49]։

Մուստյերյան մարդու խոշորագույն հայտնագործությունը կրակ ստանալու եղանակների գյուտն էր, որին նա հասավ սերունդների փորձի միջոցով, կայծքարի հրահանների կամ փայտի շփման օգնությամբ։ Կրակի օգտագործումը դարձավ մարդու գոյության մշտական, անփոխարինելի պայմանը, իսկ օջախը՝ բնակավայրի անբաժան ուղեկիցը։ Կրակի կայաններում մշտապես վառվող օջախների մոտ են բերվում որսորդությամբ և հավաքչությամբ ձեռք բերված մթերքները, որոնք եփված վիճակում ավելի դյուրամարս էին և նըպաստում էին մարդկային օրգանիզմի զարգացմանը։ Կրակը նաև պաշտպանության լավագույն միջոց էր։ Կրակի շնորհիվ է նշանակալից չափով նախնադարյան կայանը գիշերելու վայրից կամ մարդկային խմբի ժամանակավոր կայանից վերածվում արդեն կազմակերպված ճամբարի. կրակ ստանալու եղանակների յուրացումը մուստյերյան ժամանակաշրջանի վերջում օգնեց նեանդերթալյան մարդու բնակությանը այնպիսի շրջաններում, որոնք անմատչելի էին նախորդ փուլերում։ Հաղթահարելով ցուրտը, մարդիկ թափանցում են Եվրոպայի ու Ասիայի բարեխառն լայնությունները։ Նրանք չեն նահանջում շարժվող սառույցների առջև, այլ գնում են ընդառաջ՝ ընդլայնելով նախնադարյան մարդու կողմից զբաղեցված տերիտորիայի սահմանները։

**Մուստյերյան քարե գործիքները**— Կյանքի պայմանների փոփոխությանը զուգընթաց փոխվում ու զարգանում են նաև նախամարդու աշխատանքային գործիքները՝ հետագա տարբերակման, մասնագիտացման և գլխավորապես որսորդության պահանջներին համարեցնելու ուղղությամբ։ Աշելյան ժամանակի բնորոշ երկկողմանի մշակումը տեղի է տալիս գործիքի միակողմանի մշակմանը, զգալի չափով զարգանում է բեկոտման տեխնիկան, փոքրանում են գործիքների չափերը, փոխվում է պատինայի թանձրությունը, ա-

---

48 Տե՛ս *А. В. Арциховский*, Основы археологии, էջ 31։

49 Նույն տեղում, էջ 31—34։

ուաջնակարգ նշանակություն են ստանում ցլեպներից ու շեղբերից պատրաստվող մանր գործիքները, որոնք այժմ ծառայում են գլխավորապես որսի մսամթերքը մշակելու գործին[50]։

Քարի մշակման տեխնիկայի կատարելագործումը, քարե գործիքների բազմազանությունն ու բարդացումը պայմանավորված էին նյութական արտադրության բարդացող կարիքներով և արտացոլում էին մարդու աշխատանքային փորձի և հմտությունների հետագա հարստացումը։

Հասկանալի է, որ նշված փոփոխությունները կատարվում էին հարյուրհազարավոր տարիների ընթացքում և որ միջին պալեոլիթի վաղ շրջանի գործիքների մեջ պահպանվում են աշելյան տեխնիկայի ավանդույթները՝ գործիքների պարզ, նախնական մշակումը, նրանց խոշոր չափերը, հատիչների և սկավառակաձև գործիքների երկկողմանի մշակումը, որոնք հիշեցնում են ուշ աշելի համանման ձևերը[51]։

Վաղ մուստյերյան հասակի գործիքների բնորոշ ժողովածուներ են հավաքված Արտին լեռան և Հրազդանի միջին հոսանքի պալեոլիթյան կայաններում՝ Սատանի-դարում, Արեգունի և Հարավային բլուրներում, Արզնիում, Նռնունիսում, Ջրաբերում, Լուսավանում, Ֆանտանում, Տաճարաբակում, Ճատկերանում, Արգելում, Պեմզաշենում, որոնք մեծ մասամբ հայտնի են որպես ստորին պալեոլիթի նշանավոր կայաններ[52]։

Միջին պալեոլիթի սկզբների նշանավոր բնակավայրերից մեկը գտնվում է Արզնի առողջարանի մոտ, Հրազդանի 80 մետրանոց դարավանդի վրա, մի փոսորակ տեղում։ Մարդիկ այստեղ ապրել են մինչև ոխսյան սառցակալման առավելագույն զարգացման շրջանը։

Արզնու միջին պալեոլիթյան գործիքների հավաքածուի բնորոշ տիպերի թվին են պատկանում մուստյերյան նշաձև հատիչների միջուկները, սրածայրերը, քերիչները, ցլեպները, շեղբերը և այլն։

Ձ ե ռ ք ի հ ա տ ի չ ն ե ր ը՝ նշաձև, ձվաձև և եռանկյունի, աշելյանից տարբերվում են իրենց փոքր չափերով և հարմարեցված են քերթելու ու ծակելու համար։

Ս ր ա ծ ա յ ր ե ր ը պատրաստված են եռանկյունաձև ցլեպներից, ունեն մանրակրկիտ, նուրբ հարդարում, աչքի են ընկնում բարեձևությամբ և հավասարապես սուր, բանող ծայրով։

Ք ե ր ի չ ն ե ր ը պատրաստված են լայն, հաճախ տձև ցլեպներից, ունեն պրիմիտիվ տեսք, բանող մասերը կրում են հարդարման կամ օգտագործման հետքեր։

Շ ե ղ բ ե ր ը երկարավուն չափեր ունեն և նուրբ ընդլայնական կտրվածք։

Մ ի ջ ո ւ կ ն ե ր ը, որոնք ստացվել են վանկատի զանգվածային կտորներից, ունեն խոշոր չափեր, կանոնավոր, լայն սկավառակաձև տեսք, երկկողմանի կամ միակողմանի մշակում, աշելյան սկավառակաձև գործիքներից

---

50 *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, Л., 1949, էջ 19։

51 Տե՛ս *А. В. Арциховский,* Основы археологии, էջ 32։

52 Հայաստանի մուստյերյան քարե շինվածքների մանրամասն նկարագրությունն ու բնորոշումը տե՛ս Մ. Զ. Պանիչկինայի և Ս. Հ. Սարդարյանի վերը նշված աշխատություններում։



Միջին հին քարի դարի գործիքներ. Սատանի դար

տարբերվում են փոքր չափերով, լավ պահպանվածությամբ և նուրբ ընդլայնական կտրվածքով։ Հայաստանի պալեոլիթյան կայաններին բնորոշ է միջուկների շատ մեծ թիվը, որը վկայում է միջին պալեոլիթի կայաններում գործիքների մշակման մեծ քանակության և տևականության մասին։

Մուստյերյան մշակույթի ավելի ուշ փուլին են պատկանում Հարավային և Արեգունի բլուրների կայանները։ Մարդկային հասարակության պատմության հնագույն ժամանակաշրջանի հետ համեմատած այս կայանների մարդիկ հասել են նշանակալից հաջողությունների։ Նրանց պատրաստած շեղբերն ու ցլեպները ավելի բարակ են և կանոնավոր։

Այս հուշարձաններում հայտնաբերված սրածայրերը ձեռք են բերում երկարավուն եռանկյունու կամ տերևի ձև, նրանց եզրերը մշակվում են մանր, նուրբ ռետուշով։ Երկարավուն քերիչներն ու քերթիչները մշակվում են ճնշելով եզրերից մանր մասնիկներ պոկելու եղանակով, ուստի բանող մասերն ունեն ատամնավոր հարդարում, իսկ մեջքերը հարթված են՝ ձեռքը հենելու համար։ Քարի մշակման այս նոր տեխնիկայի առաջացումն ու զարգացումը նախապատրաստում է անցումը դեպի վերին պալեոլիթի մշակույթը։ Արտին լեռան և Հրազդանի միջին հոսանքի մի շարք կայաններում հայտնաբերված վաղ մուստյերյան հասակի գործիքների հետ միասին գտնվել են նաև զգալի թվով բարակ ու լավ մշակված գործիքներ, մասնավորապես սրածայրեր և քերիչներ, որոնք բնորոշ են ուշ կամ զարգացած մուստյեին։

Հայաստանի չորրորդական շրջանի բնակավայրերի գլխավոր ու առանձնահատուկ գիծն այն է, որ նրանք, շատ քիչ բացառություններով, տալիս են քարեդարյան մշակույթի զարգացման հաջորդական բոլոր փուլերին վերաբերող աշխատանքի գործիքների հարուստ կոմպլեքսներ, որոնք Հայաստանում նախամարդու հարատև ու անընդմեջ բնակության անհերքելի և ուղղակի վկաներն են[53]։

Այդուհանդերձ մուստյերյան մշակույթը հայտնաբերվում է ոչ միայն նախորդ շրջանի՝ շելյան և աշելյան կայաններում, այլև տարածվում և ընդգրկում է համեմատաբար ավելի լայն շրջանակներ։

Ինչպես վերը նշվեց, հին քարի դարի մուստյերյան շրջանին վերաբերող ընդարձակ կայանների մնացորդներ հայտնաբերվել են նաև Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասերում։ Սրանցից առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում Խարբերդի (Էլազիկ), Լիզի (Հարք գավառում), Դիարբեքիրի և Արևմտյան Տիգրիսի վերին հոսանքներում նշված կայանները՝ լեվալուա-մուստյերյան տիպի գործիքների բնորոշ հավաքածուներով[54]։

Նշված կայանները կապող օղակներ են հանդիսացել Հայկական լեռնաշխարհի սահմանամերձ գոտիների, Արևելյան Հայաստանի և Կովկասի միջև, համեմատաբար մեծ հնարավորություններ ընձեռելով, որ մուստյերյան մարդը դուրս գար մի կողմից դեպի լեռնային դժվարամատչելի շրջանները, մյուս կողմից դեպի Փոքր Ասիայի ափերը ողողող ծովերը։

---

53 Տե՛ս *М. З. Паничкина*, Палеолит Армении, էջ 7, ինչպես նաև՝ *С. А. Сардарян*, Палеолит в Армении, էջ 170։

54 Տե՛ս *В. Б. Любин*, Палеолит Турции, էջ 76—90։

Հասկանալի է, որ Հայաստանի քննարկվող շրջանի նյութական մշակույթի հուշարձանները ավելի մերձավոր աղերսներ ունեին տերիտորիալ տեսակետից Հայկական բարձրավանդակին անմիջապես հարող մարզերի՝ Կենտրոնական Փոքր Ասիայի, Ասորիքի, Պաղեստինի և Կովկասի քարեդարյան կայանների հետ։

Միջին պալեոլիթի մարդը Շանիդարի քարայրում — 1957—1958 թվականներին Հայկական լեռնաշխարհի ծայրագույն հարավում, Հայկական Միջագետքի, Իրանի, Ասորիքի սահմանների միացման հանգուցակետում, Մեծ Զաբ գետի միջին հոսանքում, այժմյան Ռևանդուզից հյուսիս-արևմուտք՝ Շանիդար քարայրում, մուստյերյան գործիքների հետ միասին գտնվել են նեանդերթալյան մարդկանց մնացորդներ։

Շանիդարը հսկայական քարայր է։ Այստեղ մարդիկ բնակվել են հազարամյակներ շարունակ, որի հետևանքով քարայրի հատակին առաջացել է 13 մ հաստությամբ նստվածքների շերտ։ Ամերիկյան արշավախմբի պեղումների ժամանակ քարայրի ներկայիս մակերեսից 8 մ խորության վրա հայտնաբերվել է վյուրմյան վաղ սառցակալման շրջանի ստալագմիտային կեղև, որը գոյություն է ունեցել մոտավորապես 65000 տարի առաջ։ Ուշագրավ է, որ այդ շերտում բացվել է նեանդերթալյան երեխայի կմախք և քարե չորս ծայրապանակ, որոնք հիշեցնում են Քարմել լեռան քարայրի գործիքները։ Քարայրի տարբեր շերտերում (1—6) գտնվել է պեղածո մարդկանց 6 կմախք, որոնց գոյության հարատևությունը հասնում է 20.000 տարվա՝ 65—60.000-ից մինչև 40—35.000 թթ. մ. թ. ա.։ Դրանք եղել են հորդաներով ապրող նեանդերթալյան մարդիկ, որոնք լիովին տիրապետել են կրակին և զբաղվել որսորդությամբ։ Այդ մասին են վկայում քարայրում հայտնաբերված կենդանական ոսկորները և օջախների մնացորդները։

Առանձնապես հատկանշական է, որ 20.000 տարվա ընթացքում նկատելի փոփոխություններ չեն կատարվել ոչ քարե գործիքների ձևերի ու կազմի, ոչ էլ Շանիդարի նեանդերթալյան մարդու կառուցվածքի մեջ։ Շանիդարի մարդիկ ունեն բանական մարդու (homo sapiens) որոշ գծեր՝ ուղիղ ճակատ, լայն ու ցած ակնախոռոչներ և այլն։ Նրանք կարծես թե պատկանում են Առաջավոր Ասիայի բանական նեանդերթալցիների տիպին, որը և համարվում է ժամանակակից (կրոմանյոնյան) մարդու անմիջական նախորդը։

Միջերկրականի ափին, Կաֆզեխի քարայրի պեղումների ժամանակ ևս գտնվել են նեանդերթալցիների մնացորդներ, որոնք մի շարք գծերով նման են շանիդարցիներին։

Բացի Շանիդարից և Կաֆզեխից, Հայկական լեռնաշխարհի սահմաններում, պատմական Պարսկահայք նահանգում՝ Ուրմիա (Կապուտան) լճի ափին հայտնի է Տամտամ քարայրը (Ուրմիա քաղաքից 20 կմ հյուսիս) նեանդերթալյան մարդու մնացորդներով[55]։ Հայաստանի անմիջական հարևանությամբ՝ Միջերկրական ծովի արևելյան ափին (Քարմել, Ազլուն, Ռաս-էլ-քելբ, Ջաբրուտ) և Առաջավոր Ասիայում (Բիսութուն, Հազարմերդ, Տամտամ և Շանիդար) կան

---

55 Տե՛ս *И. К. Иванова*, Геологический возраст ископаемого человека, М., 1965, էջ 125։

*մի շարք հին քարայրային կայաններ, որոնք համանման գծերով կապվում են ոչ միայն իրար, այլև Հայկական լեռնաշխարհի հուշարձանների հետ։ Այս բոլորը հնարավորություն են տալիս ենթադրելու, որ զարգացած նեանդերթալցիների նշված տիպը լայնորեն տարածված էր նաև Հայկական լեռնաշխարհում։*

*Միջին պալեոլիթում ամենուրեք նկատվում են նստակեցության հետքեր։ Արագած լեռան սիստեմում և Հրազդան գետի միջին հոսանքում (գետի բազալտյա կիրճերում, նրա հնագույն դարավանդների վրա), պալեոլիթյան կայաններից ոչ հեռու կան մի շարք քարայրներ, որոնք պատկանում են մուստյերյան ժամանակին։ Բնությունը ևս միջին պալեոլիթի մարդուն ստիպում էր շարժվել միայն որոշակիորեն բարենպաստ բնակլիմայական պայմաններ ունեցող միջավայրի սահմաններում։ Հետաքրքիր է, որ վաղ մուստյերյան բնակչության կյանքի հետքերը մասամբ ժամանակակից են ռիսյան սառույցների առավելագույն զարգացման շրջանին։ Այդ պատճառով Արածանի գետի միջին հոսանքի հովտում, Հրազդանի հոսանքն ի վար, Նռնունիսի շրջակայքում՝ Ջրաբերում, Ֆանտանում և այլուր ռիսյան առավելագույն սառեցման մորեննների հաստության տակ թաղված շերտերում, պլեյստոցենյան ֆաունայի հարևանությամբ գտնված են մուստյերյան բազմաթիվ գործիքներ։*

*Այսպիսով, միջին պալեոլիթի մշակույթը Հայաստանում ներկայացված է, ավելի լայն կերպով՝ հուշարձանների ավելի մեծ թվով, քան ստորին պալեոլիթյան մշակույթը։ Հայկական լեռնաշխարհը և նրան սահմանակից մարզերը բնակեցված էին նեանդերթալյան մարդկանց բազմաթիվ խմբերով, որոնք միջանկյալ օղակներ էին հին մարդու՝ պիթեկանթրոպի և ժամանակակից մարդու միջև։*

**Նեանդերթալցիների նախնադարյան համայնքը** — *Մուստյերյան շրջանի բազմազան նյութերի ուսումնասիրությունը թույլ է տալիս ավելի հիմնավոր հետևություններ անել մուստյերյան մարդկանց հասարակական կյանքի հիմնական գծերի մասին։ Ուշ մուստյերյան տիպի գործիքները մատնացույց են անում ոչ միայն նեանդերթալյան մարդու աշխատանքի բարդացումը, այլև ակնբախ են դարձնում այն մերձավոր կապը և անմիջական հաջորդականությունը, որ գոյություն ունի միջին և վերին պալեոլիթի միջև։*

*Նյութական արտադրության նշանակալից աճը պետք է անդրադառնար նախնադարյան համայնքի բնույթի վրա։ Մեծ կենդանիներ որսալու անհրաժեշտությունն իր հերթին պահանջում էր նեանդերթալյան որսորդների կազմակերպվածություն, խմբովին հարձակվելու ավելի բարձր ունակություններ. Նստակեցությունը և օջախի մշտական կրակը նույնպես օգնեցին նախնադարյան համայնքի ներքին ամրացմանը։ Այդ բոլորից պետք է եզրակացնել, որ մարդկային համայնակեցության հասարակ ձևը ձեռք է բերում որոշ նոր գծեր, որոնք առաջին քայլն էին դեպի տոհմական կարգը։ Հասարակական նոր երևույթների առաջացմանը զուգակցում է կրոնական նախասկզբնական պատկերացումների ծագումը, որի մասին անժխտելիորեն վկայում են նեանդերթալցիների գիտակցված թաղումները մի շարք երկրների քարայրներում։ Բավականին դժվար է ասել, թե ինչպիսիք էին հին քարի դարում կրոնական պատկերացումները, սակայն անկասկած է, որ նեանդերթալցիների պատկերացմամբ մարդը շարունակում էր ապրել նաև մահվանից հետո։*

*Այսպիսով, նեանդերթալցիների նախնադարյան համայնքը բնորոշվում է կրակ ստանալու եղանակների հայտնագործությամբ ու կրակի լայն օգտագործմամբ, որսորդությամբ և աշխատանքի գործիքների կատարելագործմամբ ու բարդացմամբ։ Արտադրությունն ու սպառումը ունեն կոլեկտիվ բնույթ։ Զարգանում է աշխատանքի բնական բաժանումը։ Բուսական սնունդը, ավելի կատարելագործված գործիքների երևան գալով, լրացվում է մսեղեն սնունդով։ Կրակը, պարզագույն կացարանները, ինչպես նաև մորթուց պատրաստված հագուստը մարդուն հնարավորություն են տալիս բնակվելու երկրագնդի մեծ մասում։ Այդ ժամանակաշրջանը պատմական զարգացման տեսակետից կարելի է դիտել որպես նախնադարյան հոտի եզրափակիչ փուլ։ Բնական է, որ նախնադարյան համայնքի ընդերքում, նեանդերթալյան մարդու մուստյերյան մշակույթի փուլում, հարյուր հազարավոր տարիների ընթացքում պետք է ծնունդ առնեին ու ձևավորվեին տոհմական կազմակերպությանն անցնելու բոլոր անհրաժեշտ նախադրյալները, այդ թվում նաև կրոնա-պաշտամունքային երևույթները։*

## 4. ՎԵՐԻՆ ՊԱԼԵՈԼԻԹԸ (ՀԻՆ ՔԱՐԻ ԴԱՐԻ ՈՒՇ ՇՐՋԱՆ)

**Վերին պալեոլիթի կայանները** — *Վերին պալեոլիթի մշակույթն ընդգրկում է մոտավորապես մ. թ. ա. 40.000—12.000 թվականների միջև ընկած ժամանակաշրջանը, որ մասամբ համապատասխանում է սառցային երևույթների զարգացման վյուրմյան փուլին։*

*Պլեյստոցենի վյուրմյան փուլը, չնայած սառցային ծածկույթի փոքր չափերին, բնորոշվում է բացառիկ դաժան կլիմայով։ Ժամանակակից տունդրայի նման աղքատ բուսականության գոտին ընդգրկում է երկրի կենտրոնական գոտիները։ Հայաստանում վյուրմյան ժամանակին է պատկանում Սևանա լճի ավազանի ֆաունան՝ ցուլը, հյուսիսային եղջերուն և բևեռային ֆաունայի այլ ներկայացուցիչները։ Չորրորդական ժամանակի վերջին և ժամանակակից շրջանի (հոլոցենի) սկզբին են պատկանում Երևան քաղաքից 7 կմ հարավ գտնված ազնիվ եղջերուի, եղջերուի, էշի, ձիու ոսկորները, ինչպես նաև մարդու՝* homo sapiens fasilis-*ի գանգը*[56]*։*

*Վերին պալեոլիթի դարաշրջանում Հայկական լեռնաշխարհի նախաբնիկները հասնում են տնտեսական, մշակութային և հասարակական զարգացման մի աստիճանի, որը նախնադարյան հասարակության պատմության առավել կարևոր փուլերից մեկն է։ Ներկայումս Հայկական լեռնաշխարհում հայտնի են այդ ժամանակաշրջանի բազմաթիվ կայաններ Արտին լեռան ստորոտներում (Սատանի դար, Արեգունի և Հարավային բլուրներ), Հրազդանի միջին հոսանքում (Արզնի, Նոնունիս, Տաճարարակ, Ճաակերան), Հրազդանի շրջանի (Ջրաբեր, Ֆանտան, Լուսավան և այլն), ինչպես նաև Աշտ. ...*

56 *Ուշ հին քարի դարի ընդհանուր բնորոշումը տե՛ս* *П. П. Ефименко,* Первобытное общество, *էջ 268—368,* *А. В. Арциховский,* Основы археологии, *էջ 37,* *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, *էջ 20—21։*

ծիքները հայտնաբերվել են գետի ավելի ուշ դարավանդի վրա, աշելյան և մուստյերյան կայաններից առանձին։ Ակներև է, որ բնակատեղիի ընտրությունն այս շրջանում կապված է եղել այլ հանգամանքների հետ, քանի որ վյուրմյան դարավանդների տեսքը գնալով մոտենում էր այժմեականին։

Նշված կայանների սահմաններում հայտնաբերված են ուշ պալեոլիթյան շրջանի գործիքների բազմաթիվ բնորոշ կոմպլեքսներ, որոնք իրենց նախորդներից տարբերվում են ոչ միայն մշակման տեխնիկական կատարելությամբ, ձևերով ու չափերով, այլև գործիքների զգալի տարբերակմամբ։ Այժմ յուրաքանչյուր գործիք հարմարեցված է աշխատանքային հատուկ պրոցեսի՝ փայտի, ոսկրի, մորթու մշակմանը, որսի, ձկնորսության և այլ զբաղմունքների համար։

Վերին պալեոլիթի նոր տիպի գործիքները մեծ չեն, պատրաստված են պրիզմայաձև միջուկից անջատված բարակ շեղբերից, ունեն բազմազան ձևեր, շատ սուր բանող եզրեր, մակերեսի մանրակրկիտ երկակի հարդարում, ամրացված են փայտե կամ ոսկրե կոթերին ու բռնակներին։ Մուստյերյան շրջանի երկու հաստատուն գործիքի (սրածայր և քերիչ) փոխարեն այժմ մարդն իր տրամադրության տակ ունի օբսիդիանե և դացիտե մասնագիտացված և կատարելագործված գործիքների ամբողջ հավաքածու, որն օգտագործվում էր բարդացող տնտեսության զանազան ճյուղերում[57]։

**Աշխատանքային գործիքները** —Վերին պալեոլիթի մշակույթն իր հերթին ստորաբաժանվում է հաջորդական զարգացման երեք փուլերի։ Ժամանակագրական տեսակետից դրանցից առաջինը օրինյակյան փուլն է։ Օրինյակյան շրջանում հանդես են գալիս զուգահեռ սայրեր ունեցող, նեղ, երկարավուն շեղբեր, որոնցից պատրաստված ծայրային քերիչների բազմազանությունը վկայում է քարի մշակման տեխնիկայի զգալի առաջընթացի մասին։ Օրինյակյան շրջանի համար նշված հիմնական այդ գործիքների շեղբերի և քերիչների նախատիպերը հանդիպում են դեռևս մուստյերյան դարաշրջանում, սակայն, ի տարբերություն վերջինների, դրանք պատրաստվում են մասսիվ պրիզմայաձև միջուկներից, տեխնիկական նոր հնարներով։

Վաղ օրինյակի համար բնորոշ են այսպես կոչված շատելպերո տիպի շինվածքները՝ խոշոր շեղբերից պատրաստված գործիքները, որոնք հիշեցնում են ավստրալիացի տղամարդկանց դանակները, մանր դանակները, սրածայր ճյուղային քերիչները, որոնք նման են էսկիմոսների կանացի դանակներին, և երկարուկ շեղբերից պատրաստված կտրիչները, որոնք Հայաստանում աչքի են ընկնում զանգվածայնությամբ[58]։

Օրինյակի ավելի ուշ շրջանում հանդես են գալիս այսպես կոչված գրավետ տիպի՝ նեղ եզրերով բարակ սրածայրեր, մակույկաձև քերիչներ, խնամքով հարդարված նիզակի և տեգի ծայրեր, ինչպես նաև երկրաչափական ձևերի միկրոլիթյան գործիքներ (մանր դանակներ, ծակիչներ, սրածայրեր, գայլիկոններ և այլն), որոնք առանձնապես բնորոշ են օրինյակի ամենաուշ ժամանակաշրջանի համար և օգտագործվել են նուրբ աշխատանքներում՝ փորագրելու, քանդակելու, հագուստ պատրաստելու համար։

---

57 *Տե՛ս С. А. Сардарян,* Палеолит в Армении, *էջ 37։*

58 *Տե՛ս П. П. Ефименко,* Первобытное общество, *էջ 260—261, Հմմտ՝ С. А. Сардарян,* Палеолит в Армении, *էջ 132, 142։*

*Այսպիսով, վերին պալեոլիթի բանական մարդը, հասնելով զարգացման նշանակալից մակարդակի, պատրաստում է ոչ միայն փորագրող, քանդակող, ծակող նուրբ գործիքներ, այլև դանակներ, նիզակներ, տեգեր և այլն, որոնք հետզհետե դառնում են որսորդության անհրաժեշտ ու կայուն պարագաներ։*

*Օրինյակին անմիջապես հաջորդող սոլյուտրեյան դարաշրջանը քարե գործիքների մշակման տեխնիկայի էական կողմերով քիչ է տարբերվում օրինյակից[59]։ Սոլյուտրեի համար բնորոշ է օրինյակյան տեխնիկայի հետագա կատարելագործումն ու բարելավումը։ Մշակույթի զարգացման այս փուլում գեղեցիկ ձևավորման է ենթարկվում ոչ միայն գործիքի եզրը, այլև լայն մակերեսը։ Գործիքի մակերեսից ճնշել պոկելու եղանակով անջատում են շատ բարակ, մանր թեփուկներ, որոնց տեղում մնում են գործիքի ողջ մակերեսին տարածված ոչ խոր փոսիկներ։ Սոլյուտրեյան բնորոշ գործիքներն են սրածայրերը և եզրային հանվածքով տեգի ծայրերը, որոնց ամբողջ մակերեսը երկու կողմից մշակված է սոլյուտրեյան ռետուշով։ Տեգի, նիզակի ծայրերն ունեն դափնու ձև, ամրացվում են կոթին և կիրառվում որպես որսորդական զենք։ Երկու կողմից նուրբ ռետուշով մշակված մակերեսը, կոթառը, կողային հանվածքով ծայրերը շատ բնորոշ են սոլյուտրեի համար։ Բացի այդ ձևերից, կան նաև ուրիշ տեսակներ, որոնք պատկանում են կտրիչների, սրածայրերի, գայլիկոնների, քերիչների և փորագրիչների խմբին։ Սրանք նախորդ ժամանակի գործիքներից տարբերվում են իրենց ուղիղ գծագրությամբ և ավելի լավ ու կատարյալ մշակումով։*

*Մադլենյան դարաշրջանը նախորդ՝ սոլյուտրեյան դարաշրջանի հետագա զարգացումն է և նրա մշակույթը տարածված է ավելի լայն չափերով։ Մադլենում արդեն սոլյուտրեյան գործիքների որոշ ձևեր՝ դափնու տերևի նման տեգի ծայրերը և կողային հանվածքով տեգի ծայրերը, վերանում են։ Մեծ չափերի են հասնում ոսկրից ու եղջյուրից պատրաստվող գործիքները։ Հայաստանի վերին պալեոլիթյան կայաններում մադլենյան դարաշրջանի գործիքներից գտնված են շատ գեղեցիկ, նեղ դանակաձև շեղբեր, որոնք ունեն մակերեսի նուրբ մշակում, սուր կողեր, զուգահեռ զեհեր։ Մադլենյան ժամանակի գլխավոր գործիքներն են՝ քերթիչները, ծայրային քերիչները, շեղբային կտրիչները։ Հանդիպում են նաև խնամքով պատրաստված մասնագիտական մանր գործիքներ, որոնք օգտագործվել են փայտի, կաշվի, ոսկրի մշակման համար (ծակիչ, սրածայր դուր, գայլիկոն[60])։ Այս գործիքներին բնորոշ է բաց պատինայով փայլուն մակերեսը, իսկ միջուկները գերազանցապես պրիզմայաձև և կոնաձև են։*

*Հայաստանի վերին պալեոլիթյան կայանների վաղ մադլենյան իրերի այս հավաքածուին բնորոշ է կտրիչների քանակական գերակշռությունը, միջուկակերպ գործիքների և միկրոլիթյան ձևերի զարգացումը։*

*Այսպիսով, Հայաստանի վերին պալեոլիթյան կայանները տալիս են ժամանակագրական տեսակետից սերտորեն կապակցվող նյութեր, որոնք հաջոր-*

---

[59] *П. П. Ефименко*, Первобытное общество, *էջ 361—368։ Հմմտ.* Ս. Հ. Սարդարյան. *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 136։*

[60] *Տե՛ս* Ս. Հ. Սարդարյան, *նույն տեղում, էջ 153—168։*

դականորեն համապատասխանում են արևմտաեվրոպական մշակույթի օրինյակյան, սոլյուտրեյան ու մադլենյան փուլերին և հաստատում Հայկական լեռնաշխարհի անընդհատ բնակեցվածությունը ողջ վերին պալեոլիթի ընթացքում։ Արևմտյան Հայաստանի վերին պալեոլիթյան հուշարձանները դեռևս չեն ուսումնասիրված։ Սակայն գործիքների օրինյակյան հարուստ հավաքածու է հայտնաբերված Ադիամանի (Պիրին) մոտ՝ Մալաթիայից հարավ[61]։

**Զբաղմունք, տնտեսական կյանք, կենցաղ**— Վերին պալեոլիթի մշակույթին վերաբերող բոլոր շինվածքներն ու նորամուծությունները կարելի է բաժանել երկու հիմնական կատեգորիաների՝ որսորդական զենքերի ու կենցաղային գործիքների, որոնք գերազանցապես ծառայում էին սննդամթերքի վերամշակման ու հագուստ պատրաստելու համար։

Ուշ-պալեոլիթյան բնակչության գոյության հիմնական աղբյուրը մամոնտի, հյուսիսային եղջերուի, ցուլի, վայրի ձիու և այլ կենդանիների որսն էր. նրան գրավում էին նաև մուշտակավոր կենդանիները (բևեռային աղվեսը և այլն)։ Որսորդների տեգերով զինված խմբերը արգելափակոցներով (թակարդներ, փոս-ծուղակներ) ու նետվող զենքերով (ատամնավոր եռաժանիներ) շրջափակում էին կենդանիներին ու ոչնչացնում։ Այդ նույն նպատակով կենդանիներին քշում էին դեպի ճահիճները, անդնդախոր գետափերը, որտեղից կենդանիները գլորվում էին ցած ու ջարդվում։ Շրջափակելու ժամանակ հավանաբար լայնորեն օգտագործվել է կրակը։ Կենդանիների մնացորդների ուսումնասիրությունը բերել է այն եզրակացության, որ որսի առարկա են դարձել կենդանիների ամբողջ հոտեր։

Ուշ-պալեոլիթյան մարդուն, ըստ երևույթին, ծանոթ էր նաև ձկնորսությունը։ Ձկնորսության ժամանակ ցանցերից բացի օգտագործվել են նաև կեռիկներ՝ կարթի կոպիտ նախատիպը։

Մամոնտների ու հյուսիսային եղջերուների որսը, ձկնեղեն սնունդը և արդեն շփման միջոցով ստացվող կրակը մարդկանց հնարավորություն տվեցին բնակվելու լայն տարածությունների վրա, նրանց դարձնելով տեղից ու կլիմայից համեմատաբար անկախ[62]։ Այդ պատճառով էլ, եթե նախորդ դարաշրջանում նկատվում էին ժամանակավոր նստակեցության որոշակի, բայց ոչ համատարած հետքեր, ապա ուշ պալեոլիթի մարդիկ ապրում էին կիսանստակյաց պայմաններում, երբեմն դիմելով սեզոնային քոչվորության։ Այդ է ապացուցում բնակատեղիներում հայտնաբերվող կենդանական ոսկորների մեծ քանակությունը։ Բազմազան շինվածքները և դրանց պատրաստման հետքերը օբսիդիանի

61 *Տե՛ս* *В. П. Любин,* Палеолит Турции, *էջ 74—90։ Փոքր Ասիայի մի շարք վայրերում նույնպես (Զամ լեռների ստորոտում՝ Կարային քարայրում, Սամսոնի մոտ և այլուր) գտնվել են օրինյակ—մեզոլիթյան հասակի և ավելի ուշ շրջանի գործիքներ, որոնք որոշ թուրք հնագետների կարծիքով, խոսում են առանձնահատուկ «Թուրքական պալեոլիթի, մեզոլիթի, նեոլիթի, էնեոլիթի» մասին։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ Փոքր Ասիայի և Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասի հիշյալ շրջանների վերին պալեոլիթյան նյութերը ամենևին բացառիկ երևույթ չեն ու հար և նման են Ասորիքի, Լիբանանի, Պաղեստինի, Իրաքի, Հայկական լեռնաշխարհի և Կովկասի այլևայլ վայրերում հայտնաբերված վերին պալեոլիթյան նյութերին։*

62 *Տե՛ս* Ֆ. էնգելս, *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1948, էջ 31։*




Ուշ հին քարի դարի գործիքներ. Սատանի դար

շեղբերի ու կտրոնների ձևով, խոսում են մարդկանց մի տեղում երկար մնալու մասին։

Ուշ սառցային դարաշրջանի մարդիկ իրենց բնակավայրերի տեղն ընտրելիս առաջնորդվում էին գերազանցապես որսորդության հնարավորություններով, կայծքարի հումքի առկայությամբ, ինչպես նաև տեղանքի հարմարություններով՝ ցուրտ քամիներից ու բնության արհավիրքներից պաշտպանվելու համար։ Ամենից առաջ բնակավայրերը ստեղծվում էին հովիտների գետափնյա վայրերում՝ շրջապատված բարձր զառիթափ ձորերով։ Նման պայմաններում որոշ շրջաններում սկսվում է բնակչության խտացում, որի մասին են վկայում այդպիսի տեղերում բացված բնակավայրերի մնացորդների խմբերը։ Հայաստանում պալեոլիթյան բնակավայրերի այդպիսի խմբավորում հայտնի է լեռնային շրջաններում, գետերի սահանքների կիրճերում ու քարայրերում։ Նկատի ունենալով վյուրմյան սառցակալման հետագա սաստկացումը, կարելի է մտածել, որ Հայկական լեռնաշխարհում վերին պալեոլիթի ուշ շրջանի նախնադարյան համայնքը դառնում է նստակյաց՝ ձեռք բերելով հաստատուն, տևական բնակավայրեր քարայրերում ու անձավներում (ինչպիսիք հայտնի են Արտին լեռան ու Հրազդանի ձորի շրջակայքում), որոնցից յուրաքանչյուրը կարող էր պատսպարել մի քանի տասնյակ մարդկանցից բաղկացած խումբ, կամ տոհմական համայնք։

Չորրորդական ժամանակաշրջանում մշակույթի կարևոր տարրերից մեկը հագուստն էր, որը պատրաստվում էր տարբեր կենդանիների մորթիներից։ Նախօրոք մշակված մորթուց դանակների ու ոսկրե ասեղների օգնությամբ ոտնամաններ, գլխարկ ու հագուստ էին պատրաստում։

Վերին պալեոլիթի ժամանակաշրջանին բնորոշ են նաև արվեստի ստեղծագործությունները, որոնք կարևոր աղբյուրներ են նախնադարյան մտածելակերպը ուսումնասիրելու համար։ Հայաստանի սահմաններից դուրս, ուշ պալեոլիթյան բազմաթիվ կայաններում զարդերի հետ մեկտեղ հանդես են գալիս պաշտամունքային առարկաներ՝ իբրև հասարակական հարաբերություններում տեղ գտած որոշակի ըմբռնումների նյութական արտահայտություններ։

Վերին պալեոլիթի մարդը — Վերին պալեոլիթի սահմանում պալեոանթրոպի (նեանդերթալյան տիպի մարդու) զարգացման հետևանքով առաջ է գալիս նեոանթրոպը կամ պեղածո բանական մարդը։ Սա արդեն ժամանակակից մարդու նախատիպն է (կրոմանյոնյան, գրիմալդի), որի ոսկորները գտնվել են օրինյակյան շրջանի գործիքների հետ։ Վերին պալեոլիթում նեանդերթալյան մարդուն ամենուրեք փոխարինում է կրոմանյոնյան կամ պեղածո բանական մարդը։ Մարմնի կառուցվածքով և արտաքին տեսքով վերին պալեոլիթի մարդիկ մոտենում են ժամանակակից մարդուն։ Առանձնապես կարևոր է, որ նրանց ձեռքերը արդեն կարող էին կատարել բազմազան, այդ թվում՝ շատ բարդ աշխատանքային գործողություններ։ Վերին պալեոլիթի արտադրության գործիքների համեմատաբար նուրբ և զանազանակերպ տեսակների պատրաստումը պահանջում էր ճշտություն, ճկունություն և ձեռքի շարժումների բացառիկ շեշտակիություն, որին դեռևս լրիվ ընդունակ չէր նեանդերթալյան մարդու ձեռքը։ Աշխատանքը կատարելագործում է մարդու օրգանիզմը, իսկ կատարելագործված օրգանիզմը ձեռք է բերում ավելի բարդ աշխատանքի ունակություն։ Վերին

պալեոլիթի մարդու ուղեղը, դատելով գանգի կառուցվածքից, նույնպես չէր տարբերվում ժամանակակից մարդու ուղեղից և այս հիման վրա էլ այդ շրջանի մարդուն անվանում են «բանական մարդ» (homo sapiens)։

Նեանդերթալցու և վերին պալեոլիթի մարդու տարբերությունը դրսևորվում էր ոչ միայն արտաքին կառուցվածքով, այլև մարդու նյարդային գործունեության մեջ կատարված էական փոփոխություններով։ Վերին պալեոլիթի մարդիկ, անկասկած, անհամեմատ լավ էին մտածում, քան նեանդերթալցիները. բանական մարդու երևան գալով ոչ միայն սկսեց ավելի ու ավելի արագ զարգանալ մշակույթը, այլև անցյալում անհայտ ստեղծագործական աշխատանքի ասպարեզներ բացվեցին կյանքի բոլոր բնագավառներում։

Նեանդերթալցուց բանական մարդուն անցման պարզորոշ հատկանիշները ի հայտ են գալիս մուստյերյան ժամանակի մարդկային այն ոսկորների մեջ, որոնք հայտնաբերվել են Էս-Սխուլում, Քարմել լեռան վրա (Պաղեստին)։ Նրանցում որոշակիորեն միահյուսվում են ինչպես հին նեանդերթալցու, այնպես էլ ժամանակակից մարդու գծերը. կրոմանյոնյան մարդը արդեն անցել էր ուղիղ ու վարժ քայլվածքի։

Նեանդերթալցուց բանական մարդուն անցնելու պրոցեսը կատարվել է ընդարձակ տերիտորիաներում՝ Միջերկրականի շրջանում, Միջին Ասիայում և Առաջավոր Ասիայում, ինչպես և Կովկասում, Անդրկովկասում և Հայաստանում։

Բանական մարդու կազմավորման պատճառները պետք է փնտրել մուստյերյան ժամանակի կոլեկտիվ աշխատանքային գործունեության մեջ, որին մեծապես օժանդակում էր հոդաբաշխ լեզվի առկայությունը։ Homo sapiens-ի տիպը հիմնական գծերով մնում է անփոփոխ հոլոցենի սկզբից մինչև մեր օրերը։ Նոր մարդու ֆիզիկական տիպի փոփոխմանը զուգընթաց մեծ արագությամբ աճում են մարդկային կոլեկտիվների արտադրողական ուժերը, փոխվում արտադրական հարաբերությունները։ Homo sapiens-ի հետ մտնում ենք մարդկային պատմության այն փուլը, երբ մարդու առաջընթաց զարգացումը լիովին ազատվում է այն օրենքների մնացորդներից, որոնք իշխում են կենդանիների հոտում։ Այդ զարգացումն ամբողջապես սկսում է իրագործվել հասարակական օրինաչափություններով, որոնք անհայտ էին կենդանական աշխարհին։

Ժամանակակից մարդու առաջացմամբ սկսվում է նաև ժամանակակից մարդկային ռասաների ձևավորումը, որի համար հսկայական նշանակություն ունեցան նախնադարյան ժամանակի մարդկանց կյանքի պայմանները, ինչպես նաև այդ ժամանակի համար բնորոշ մարդկանց խմբերի մեկուսացվածությունը։ Մարդկանց կենսաբանական միասնությանը, իհարկե, ոչ մի չափով չի հակադրվում այն փաստը, որ արդեն մարդկության զարգացման վաղ աստիճանում ձևավորվել էին տեղական (լոկալ) խմբեր, որոնք միմյանցից տարբերվում էին մի շարք երկրորդական, ոչ էական նշաններով՝ քթի ցցվածքով, մաշկի, մազի գույնով, աչքերի ձևով և այլն։ Այդ տարբերություններն այժմ էլ ընկած են ժամանակակից երեք մեծ ռասաների՝ եվրոպեոիդների, նեգրոիդների և մոնղոլոիդների միջև։

**Մայրական տոհմային համայնքի ձևավորումը**— *Միջին և վերին պալեոլիթի սահմանագծում առաջ է գալիս մայրական տոհմական համայնքը, որը արտադրողական ուժերի և համայնական հարաբերությունների զարգացման անխուսափելի հետևանքն է և բնորոշվում է որպես էքզոգամ կայուն կազմակերպություն՝ հիմնված մայրական իրավունքի և տոտեմական գաղափարաբանության վրա։*

*Վերին պալեոլիթի ժամանակաշրջանում արտադրողական ուժերի աճման, որսորդության զարգացման հիման վրա աշխատանքի սեռա-տարիքային բաժանում կատարվեց տղամարդու և կնոջ միջև, որը տոհմական որսորդական համայնքում ստացավ իր հետագա զարգացումը։ Որսորդությունը դարձավ բացառապես տղամարդու գործը։ Նետող թեթև գործիքները ստեղծեցին որսորդության ավելի լայն հնարավորություններ։ Կանայք համեմատաբար զարգացող նստակեցության պայմաններում ավելի երկար էին մնում կացարաններում, վարելով խմբի բարդացող տնտեսությունը։ Որպես պարտականություն ամբողջապես նրանց վրա ընկավ հավաքչությունը և տնային տնտեսությունը։ Նրանք պատրաստում էին հագուստ, հոգում օջախների մասին, ուտելու և կենցաղային նշանակություն ունեցող բույսեր հավաքում, հյուսում էին խսիրներ, պատրաստում մթերքներ։ Այսպիսով, տղամարդկանց և կանանց աշխատանքը այժմ ավելի է սահմանազատվում, որ անդրադառնում է նաև արտադրության գործիքների տարբերակման վրա։ Տղամարդու որսորդական տիպի գործիքների կողքին (տեգեր, նիզակներ, եռաժանիներ, դանակներ և այլն), վերին պալեոլիթում զարգանում են կանանց արտադրության գործիքների մի շարք տեսակներ՝ կապված հավաքչության և, որ գլխավորն է, տնային տնտեսության հետ (փորիչներ, քերիչներ, սրածայրեր, դանակներ, հերուններ, ասեղներ և այլն)։*

*Բացառիկ կարևոր է այն, որ կանայք էին այստեղ ընդհանուր կացարանների տերը, քանի որ ամուսինները այլ տոհմերից էին։ Այդ փուլի համար բնորոշ խմբական ամուսնության տիրապետության ժամանակ երբեմն հայրը հայտնի չէր, երեխաները, բնականաբար, պատկանում էին կանանց և ազգակցությունը հաշվվում էր մոր գծով, որ ուժեղացնում, բարձրացնում էր մայր-կնոջ դերը հասարակական կյանքում։*

*Այս բոլորը հիմք դարձան նոր, նախնադարյան համայնական հարաբերությունների, մայրական տոհմական համայնքի ձևավորման համար։ Մայրական տոհմի ձևավորման ապացույցներն են մի կողմից համայնական ընդհանուր կացարանը, մյուս կողմից՝ հայտնաբերված կանացի բազմաթիվ արձանիկները։ Նրանք պատկերում էին մայր կնոջը՝ նախնադարյան համայնքի տնտեսուհի-կառավարչուհուն, որը շատ կարևոր դեր է կատարել տոհմի էքզոգամ (արտատոհմային ամուսնություն) կազմակերպության պայմաններում։*

*Էքզոգամ հարաբերությունների հաստատմամբ ամուսնական կապեր են սկսվում տարբեր տոհմերի միջև, մի երևույթ, որը հասցնում է մարդկանց ֆիզիկական տիպի առաջադիմական փոփոխությունների։*

*Հաշվի առնելով Մորգանի այն դիտողությունները, որ ոչ ազգակից համայնքների անդամների ամուսնությունը պիտի ծներ ավելի ուժեղ և առողջ*

զավակներ, Ֆրիդրիխ Էնգելսը էնդոգամիայից (ներտոհմային ամուսնությունից) դեպի էքսոգամիա կատարած անցումը կարևոր փուլ է համարում նախնադարյան մարդու ֆիզիկական տիպի զարգացման գործում[63]։

Այսպիսով, մարդու ֆիզիկական տիպի զարգացումը կատարվել է ոչ միայն կենսաբանական, այլև նյութական-հասարակական նախադրյալների շնորհիվ։

Վերին պալեոլիթի ժամանակին են վերաբերում արհեստական բնակարանների կառուցման առաջին փորձերը։ Արտադրողական ուժերի դեռևս ցածր մակարդակը պայմանավորում էր կոլեկտիվ արտադրություն, կոլեկտիվ կյանք։ Ընդհանուր աշխատանքը տանում էր դեպի արտադրության միջոցների, ինչպես և արտադրության արդյունքների ընդհանուր սեփականություն։ Բնության դեմ մղվող ծանր պայքարում հետզհետե բարելավվում են վերին պալեոլիթյան մարդու աշխատանքի գործիքները, բարձրանում է աշխատանքի օգտակար գործակիցը։ Որսորդությունը հասնում է բարձր զարգացման, որը արտահայտվում է որսորդական զենքերի ու գործիքների որակական փոփոխությամբ։

Այսպիսով, Հայաստանի հին քարեդարյան կայանների ուսումնասիրությունը թույլ է տալիս ուրվագծելու ոչ միայն պալեոլիթյան մշակույթի զարգացման հաջորդական խոշոր փուլերը (ստորին, միջին, վերին), այլև նրանց ներքին ստորաբաժանումները։

Հայաստանի պալեոլիթը Առաջավոր Ասիայի, Արևելյան Միջերկրական ու Հյուսիսային Աֆրիկայի մշակույթին մերձենում է մի շարք էական գծերով ու ընդհանրություններով, իսկ միջինեվրոպական պալեոլիթի հետ առնչվում է ժամանակագրական և ստադիալ առումներով։ Արտին լեռան և Հրազդան գետի միջին հոսանքի պալեոլիթյան կայաններում գտնված ստորին, միջին և ուշ պալեոլիթի գործիքները թե՛ իրենց առաջնակարգ ձևերով և թե՛ բազմազանությամբ ու քանակով աչքի են ընկնում ոչ միայն Հայկական լեռնաշխարհում, այլև ողջ Առաջավոր Ասիայում։

Նախնադարյան համայնական հասարակության մշակույթի հաջորդական անընդմեջ զարգացման փուլերի բացահայտումը, ինչպես նաև երկրաբանական, հնէաբանական և այլ տվյալների մանրակրկիտ ուսումնասիրությունը թույլ են տալիս եզրակացնելու, որ Հայաստանը մարդկային մշակույթի հնագույն օջախներից մեկն է, Առաջավոր Ասիայի, Միջերկրականի և Հյուսիսաֆրիկյան պալեոլիթյան մշակույթների կապող օղակը, նախամարդու և նրա մշակույթի բնօրրաններից մեկը։

---

63 Տե՛ս Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 51։

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՄԵԶՈԼԻԹԸ (ՄԻՋԻՆ ՔԱՐԻ ԴԱՐԸ) ԵՎ ՆԵՈԼԻԹԸ (ՆՈՐ ՔԱՐԻ ԴԱՐԸ) ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. ՄԵԶՈԼԻԹ

**Բնական պայմանները** — *Միջին քարի դարն ընդգրկում է մ. թ. ա. 12.000—8/7.000 թթ.։ Այդ շրջանի սկզբում, մ. թ. ա. 12.000 տարի առաջ ավարտվում է սառցածածկույթի հալքը, հետզհետե անհետանում են վյուրմյան սառցադաշտերը։ Հայաստանի բնական միջավայրը աստիճանաբար ստանում է իր այժմյան տեսքը։ Վյուրմյան ժամանակի դաժան կլիման փոխվում է, սկզբում դառնալով համեմատաբար տաք ու չոր, իսկ հետո՝ խոնավ, անտառային։ Նախկինում սառույցով պատված տերիտորիաները, որոնք առատ էին լճերով ու մորենային կուտակումներով, ծածկվեցին լայնատերև անտառներով, առաջ եկան խոտավետ տափաստաններ՝ շատ նման ժամանակակից տափաստաններին։ Անհետացան բևեռային կենդանիները՝ հյուսիսային եղջերուն և այլն։ Իրենց դարն ապրեցին վերջին մամոնտները, իսկ նրանց տեղը գրավեցին ժամանակակից ֆաունայի անտառաբնակ ներկայացուցիչները՝ ազնիվ եղջերուն, ցուլը, այծյամը, վարազը, գորշ արջը, կուղբը, վայրի էշը, ձին և այլ կենդանիներ։ Այս փոփոխված բարենպաստ բնական պայմաններում Հայաստանի հին բնակիչները հասան մշակույթի նկատելի զարգացման։*

*Սառցադաշտի վերացումով մարդկանց առջև բացվեցին չբնակեցված հսկայական տարածություններ, որոնք մասամբ, բնակեցվեցին, հավանաբար, ավելի ուշ, նեոլիթյան շրջանում։*

*Սառցադաշտերի հալքը անհամաչափ է կատարվել, այն տեղի է ունեցել երեք հաջորդական փուլերով, որոնց հետ համընկնում է երեք մշակութային փուլերի փոփոխությունը։ Հայաստանի՝ սառույցից աստիճանաբար ազատվող տարածություններում, բնականաբար, եղել են բազմաթիվ կենդանիներ, սկզբում՝ տափաստանային, հետագայում՝ անտառային բնակիչներ։ Այդ նոր վայրերը միաժամանակ յուրացրել են նաև մարդիկ. հին որսորդները այնտեղ շինել են իրենց ճամբարները ոչ մեծ ջրավազանների եզրերին, որոնք գոյացել էին հալված սառույցից։*

*Հայկական լեռնաշխարհի ցածրավայրերը ծածկված էին լճերով ու ճահիճներով, որոնց շուրջը տարածված էին եղեգնուտներ, իսկ ցամաքի մնա-*

*ցած ընդարձակ գոտին լեռներ էին ու տափաստաններ. սրանք ծածկված էին խիտ անտառներով, սկզբում կեչու, հետո՝ սոճու գերակշռությամբ։ Մեզոլիթյան ժամանակի սկզբում կլիման չորային էր, շատ լճեր վերածվում են տորֆային ճահիճների. հետո նորից կլիման խոնավանում է։ Հայաստանի հին բնակիչների տրամադրության տակ այդ ժամանակ եղած անտառներում աճում էին պտղատու ծառեր, զանազան մրգեր, ընկույզ, կաղին և պալեոլիթի մարդուն հայտնի այլ բույսեր[1]։*

*Հազարամյակների ընթացքում ստեղծված հին քարի դարի մշակույթը կյանքի նոր պայմաններին ու արտադրության նոր միջոցներին համապատասխան, անկասկած, մեզոլիթի դարաշրջանում պետք է փոխեր իր բնույթը։ Ուշ պալեոլիթի համեմատաբար միակերպ մշակույթը զարգանում է նոր ուղղություններով. սառցակալման շրջանից դուրս ընկած ավելի հարավային, գլխավորապես տափաստանային շրջանների ցեղերը ավելի մեծ չափով են ժառանգում ու շարունակում ուշ պալեոլիթի մշակութային ավանդույթները, քան այն տերիտորիաների բնակիչները, որոնք ընկած էին նախալեռնային գոտում։*

**Ազիլ-տարդենուազյան մշակույթ**— *Միջին քարի դարը բաժանվում է իրար հաջորդող ազիլյան ու տարդենուազյան ժամանակների։ Ազիլյան բնակիչները զբաղվում էին վայրի կենդանիների որսով։ Ազիլի (Ֆրանսիայի Ազիլ քարայրի անունից) բնորոշ առանձնահատկություններից է կակղամորթների օգտագործումը։ Որսորդության հետ միասին նշանակալից դեր է կատարել հավաքչությունը։ Մարդիկ հավաքել են նաև զանազան մրգեր, հատապտուղներ, ընկույզ, արմտիք և այլն[2]։*

*Մեզոլիթի ազիլյան փուլում, մադլենյանի համեմատությամբ, ոսկրե գործիքները՝ եռաժանիները, ավելի խնամքով են մշակվում։ Վերին պալեոլիթին հատուկ բազմազան ձևերի ու տիպերի, ինչպես նաև կոպիտ ու մեծ չափերի վանակատի գործիքների փոխարեն լայնորեն տարածվում են միակերպ մանր ձևերը, այդ թվում՝ սեգմենտները, սրածայրերը, մանր կլոր քերիչները, ինչպես նաև վանակատի միկրոլիթյան երկրաչափական ձևի գործիքները, որոնք ծառայել են որպես եռաժանիների և տեգերի սայրեր, զետեղվելով փայտի կամ ոսկրի հիմքի մեջ։ Բնորոշ են նաև խոշոր սեգմենտաձև կոպիտ գործիքները, մասսիվ լայն շեղբերից պատրաստված կտրիչները, սրածայրերը, քերիչներ-ջարդիչները և այլն[3]։*

*Ազիլյան մշակույթը հետագայում փոխարինվում է նոր, ավելի միակերպ՝ տարդենուազյան (Ֆրանսիայի Ֆերան-Տարդենուազ վայրի անունից) մշակույթով։ Տարդենուազյան հուշարձանների կապը ազիլյանի հետ այնքան պարզ ու անվիճելի է[4], որ այն անվանում են ազիլ-տարդենուազյան մշա-*

---

1 *Մեզոլիթյան մշակույթի բնորոշման վերաբերյալ տե՛ս* *П. П. Ефименко*, Первобытное общество, *էջ 629—633*, *А. В. Арциховский*, Основы археологии, *էջ 120*, **Ա. Լ. Թախտաջյան**, *Հայաստանի բուսական աշխարհը, էջ 3*, **Ս. Հ. Սարդարյան**, *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 37։*

2 *Տե՛ս П. П. Ефименко*, Первобытное общество, *էջ 634։*

3 *Տե՛ս նույն տեղում, էջ 638։*

4 *Տե՛ս նույն տեղում, էջ 632։*

կույթ։ Վանակատի շինվածքները այժմ ավելի են փոքրանում և ստանում առավել բնորոշ երկրաչափական միկրոլիթյան բնույթ։ Տարդենուազյան բնակավայրերի տարածման բնորոշ գիծն է նրանց կապը գետերի երկայնքով ձգվող տերիտորիաների հետ, որտեղ հայտնաբերվել են տարդենուազցիների տևական բնակեցման հետքեր՝ կակղամորթների մեծ թվով խեցիներ, կենդանիների ոսկորներ և քարե, ոսկրե շինվածքներ, ձկների ոսկորների հետ միասին[5]։ Հանդիպում ե նույ մեծ բնակավայր-կացարաններ (գետնափոր տներ), որտեղ կան ոչ խորը կլոր փոսեր՝ հատուկ օջախներով[6]։ Հարթավայրերում մըշտական բնակավայրերը տարդենուազյան ժամանակի մարդիկ օգտագործել են միայն ձմռանը, իսկ ամռանը տեղափոխվել են բարձրադիր վայրեր (լեռներ)։ Դրանով կարելի է բացատրել այն հետաքրքիր փաստը, որ տարդենուազյան բնակավայրերը գտնվում են բարձր տեղերում։ Մարդիկ բնակվել են գետերի ափերին, քարայրներում, անտառներում։

**Հայաստանի մեզոլիթյան բնակչությունը. ցեղերի և ցեղային լեզուների առաջացումը**— *Միզոլիթյան և հաջորդ նեոլիթյան ժամանակը բնորոշվում է արտադրողական ուժերի զարգացման ընդհանուր փոփոխությամբ. դա նետ ու աղեղի հայտնագործման ու տարածման ժամանակն էր[7]. «Աղեղը, լարը և նետը,— գրել է Էնգելսը,— արդեն մի շատ բարդ գործիք են կազմում, որի գյուտը ենթադրում է երկար կուտակված փորձ և սուր մտավոր կարողություններ, ուրեմն նաև միաժամանակ ծանոթություն բազմաթիվ այլ հայտնագործությունների հետ»[8]։ Առավել վաղ նետող հարմարանքները, որոնք ուժեղացրել են մարդկային ձեռքի գործունեությունը, եղել են նետող տախտակը, պարսատիկը։ Աղեղի հայտնագործումը կտրուկ շրջադարձ էր քարի դարի պարզ տեխնիկայում։ Մյուս բոլոր նետող գործիքների համեմատությամբ, աղեղը հեռու հարվածող հուժկու զենք էր։ Հին որսորդների աղեղը ոչ միայն ընդլայնեց զենքը նետելու գործողության շառավիղը, համեմատած նետող տախտակի հետ, այլև իր պալեոլիթյան նախորդին մեծապես գերազանցեց թեթևությամբ ու նպատակահարմարությամբ, դիպուկությամբ ու արագությամբ։ Աղեղը նշանակալիորեն բարելավեց որսորդ ցեղերի կյանքը և թեթևացրեց ամենօրյա ծանր աշխատանքը[9]։*

*Միաժամանակ ծագում են այլ, նույնպես մեծ նշանակություն ունեցող նոր գործիքներ. այդպիսին է, օրինակ, առաջին տաշուրագը և քարե կացինը. դրանց թվին են պատկանում նաև ներդիրավոր գործիքները, դանակները, տեգերի ծայրերը, որոնք ունեցել են փայտե կամ ոսկրե հիմք[10]։ Սրանք ծագել են մեզոլիթի ժամանակ և լայն տարածում ստացել նեոլիթի ավելի բարենպաստ պայմաններում։ Դրա հետևանքով էլ արմատական փոփոխություն է տեղի ունեցել տնտեսական կյանքում։*

---

5 *Տե՛ս նույն տեղում, էջ 629, 635։*

6 *Տե՛ս նույն տեղում, էջ 630—631։*

7 *Տե՛ս А. В. Арциховский,* Основы археологии, *էջ 42—43։*

8 **Ֆ. Էնգելս,** *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 32։*

9 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, *էջ 25—26։*

10 *Տե՛ս А. П. Ефименко,* Первобытное общество, *էջ 44։*

Արտադրության միջոցների այդ էական փոփոխությունը արտահայտվեց նրանով, որ աստիճանական անցում կատարվեց հավաքիչների և որսորդների նախնադարյան տնտեսությունից դեպի հողագործների ու անասնապահների տնտեսություն։ Փոփոխություններ առաջ եկան նաև տոհմական համայնքների մեջ։ Արդեն վերին պալեոլիթում առանձին տոհմական համայնքները ոչ թե բոլորովին մեկուսացած միավորներ էին, այլ էկզոգամ ամուսնությամբ միացած էին ուրիշ ազգակից համայնքների հետ։ Մեզոլիթի շրջանում նկատվում է անցում դեպի զույգային ընտանիք (զուգամուսնություն), որ բնորոշ է մայրական տոհմական կազմակերպության ծաղկման փուլին։

Այժմ, ինչպես բնորոշ է տոհմական կարգին, երկու կամ ավելի էկզոգամ տոհմերի փոխադարձ ու պարտադիր կապի պայմաններում ծագում է ցեղական բարդ կազմակերպություն՝ միմյանց ազգակից տոհմական համայնքների միագումարը։ Ցեղերը, իրենց հերթին, կազմում են ժամանակավոր, ոչ կայուն միություններ։ Ցեղերի միջև կապերը ոչ միայն օգնում են հայտնագործումների ու մշակութային նվաճումների տարածմանը, այլև մի շարք դեպքերում մեծ ցեղական ընդհանրությունների ծագմանը նշանակալից տերիտորիայի վրա։

Միաժամանակ տոհմական համայնքների միավորման հետևանքով ծագում ու զարգանում են տարբեր տոհմերի խոսվածքներից առաջացած ընդհանուր ցեղային լեզուները, որոնք հասկանալի էին հազարավոր մարդկանց։

Ցեղային լեզուների և արտադրական նորույթների տարածման համար մեծ նշանակություն է ունեցել տոհմական կարգերին հատուկ սեգմենտացիան (տոհմերի և ցեղերի բաժանում). կյանքի համար առավել բարենպաստ պայմաններում տոհմերի ու ցեղերի ներսում բնակչության թվի աճը հասցրել է տոհմական համայնքների բաժանման և տեղափոխման դեպի նոր, ավելի քիչ բնակեցված շրջաններ։ Այժմ առաջվանից ավելի խիստ է զգացվում առանձին շրջանների ու երկրների պատմական զարգացման տեմպերի տարբերությունը, երևան են գալիս տեղական մշակույթների շատ յուրահատկություններ։

Հետսառցային ժամանակի որսորդներն ու հավաքիչները ավելի շարժուն էին, քան նրանց նախորդները և, հավանաբար, կիսաթափառական կյանք էին վարում՝ մերթ բնակվում էին գետի կամ լճի ափին, մերթ քոչում անտառները, մերթ բարձրանում լեռները։ Իրենց բնակավայրերը նրանք պատրաստում էին (բացի քարայրներից) նաև բաց տարածություններում, սովորաբար, մարգագետինների վրայի դարավանդների, ավազաթմբերի կամ սարահարթերի վրա։ Այդ ժամանակի մշակութային մնացորդների սակավությունը վկայում է մի տեղում քիչ մնալու մասին։ Եղել են նաև երկար ժամանակի, հավանաբար, ձմեռային բնակավայրեր՝ քարայրներում[11]։

Հետսառցային ժամանակի բնակավայրերը վկայում են հասարակարգի ներսում կատարված փոփոխությունների մասին. դրանք իրենց չափերով զգալիորեն զիջում են ուշ սառցային դարաշրջանի բնակավայրերին և ավելի շատ են հանդիպում. դրանով կարելի է բացատրել համայնքի տրոհումը ավելի մանր խմբերի։ Նետ ու աղեղի երևան գալով երկրորդական նշանակություն ստացավ շրջափակելու միջոցով որս անելը։ Այժմ քիչ մարդիկ էին պետք։ Հավաքչության

---

[11] Տե՛ս П. П. Ефименко, Первобытное общество, էջ 629։

դիրի աճը կապված էր կնոջ աշխատանքի հետ և մեծ կոլեկտիվ չէր պահանջում, բայց չպետք է կարծել, թե կոլեկտիվների փոքրացումը խզում է ցեղական կապերը. այդ կապերը պահպանվել են և իրենց արտահայտությունն են գտել միասնական հարաբերություններում։ Նման փոքր կազմակերպություն մինչև վերջերս գոյություն ուներ որոշ ավստրալիական ցեղերի մեջ։

**Ժամանակակից մարդու առաջացումը**— *Մեզոլիթում է առաջանում ժամանակակից մարդը։ Մեզոլիթի մարդը տարբերվում է կրոմանյոնյանից (պեղածո բանական մարդուց)։ Մեզոլիթյան ցեղերի գոյության հիմնական աղբյուրը շարունակել է մնալ որսորդությունը, որը, սակայն, շատ կողմերով կատարելագործվել է՝ համեմատած պալեոլիթի դարաշրջանի որսորդության հետ։ Դա երեվում է թեկուզ այն բանից, որ ուշ սառցային ժամանակ որսորդական զենքերը նշանակալիորեն զարգանում են, հանդես է գալիս նետ ու աղեղը։ Այս ժամանակ մարդիկ որսում էին թռչուններ՝ սագ, աղավնի, նաև նապաստակ, վայրի ձի։ Սակայն գոյության գլխավոր աղբյուրը եղել է հյուսիսային եղջերուի, քարայծի, վայրի ոչխարի որսը[12]։ Հյուսիսային եղջերուն տվել է մարդուն բոլոր անհրաժեշտ մթերքները՝ սնունդ, հագուստ (մորթի), գործիքներ և զենքեր պատրաստելու համար ոսկոր և եղջյուր։*

*Կոպիտ քարե գործիքներից նետ ու աղեղին անցնելը պայմանավորեց որսորդության մեծ մթերատվությունը, որը հող պատրաստեց կյանքի որսորդական ձևերից անցնելու կենդանիների ընտելացմանը և նախնադարյան անասնապահությանը։ Այլ խոսքով՝ անցում կատարվեց դեպի նախնադարյան արտադրության նոր փուլը։*

*Կարևոր նշանակություն ուներ հին որսորդների կյանքում շան ընտելացումը. շունը առաջին ընտելացված կենդանին էր, նրա ոսկորները գտնվել են ուշ մեզոլիթյան քարայրներում։ Դատելով ոսկորներից, մեզոլիթյան շունը ավելի շատ հիշեցնում է գայլին. նա որսորդության ժամանակ օգնել է տիրոջը, իսկ սովի դեպքում կեր դարձել նրան։*

**Մեզոլիթյան քարե գործիքները Հայաստանում**— *Մեզոլիթի քարե և ոսկրե գործիքներն իրենց արմատներով հասնում են մինչև ուշ պալեոլիթ։ Մեզոլիթյան շինվածքների առավել վաղ ձևերը՝ սլաքները, քերիչները, սրածայրերը, գործ են ածել Ջաղայի (Թալինի շրջանում) և Արեգունի բլրի բնակիչները։ Սրանք գործիքները պատրաստել են վերին պալեոլիթյան նախատիպերի հիման վրա՝ գերազանցապես մանր շեղբերից։ Արտին լեռան Արեգունի բլրի վրա հայտնաբերվել են նաև ուշ մեզոլիթյան կայաններ՝ հազարավոր մշակված քարե գործիքներով, որոնք աչքի են ընկնում պատրաստման բարդ տեխնիկայով[13]։ Մեզոլիթի ժամանակի վարպետները տիրապետում էին օբսիդիանի բարակ մատիտաձև պրիզմայաձև միջուկներից երկար ու նեղ՝ ուղիղ եզրերով շեղբեր հանելու արվեստին, դրա համար էլ նրանց պատրաստած նետերի ծայրերը ավելի կատարյալ էին, խիստ համաչափ սուր ծայրերով՝ ուռենու տերևի նման։ Մեզոլիթի մշակույթի ամենալավ և բնորոշ հետքերը տվել են Արտին լեռան Արեգունի բլրի կայանը, զաղանները և ուշ մեզոլիթի տորֆային բնակավայրե-*

---

12 *Տե՛ս А. В. Арциховский,* Основы археологии, *էջ 47։*

13 *Տե՛ս* Ս. Հ. Սարդարյան, *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 166—167։*

*րը, որոնց մի մասն այժմ ճահճուտների տակ է անցել։ Մեզոլիթյան ուշ հուշարձաններին շատ բանով մոտ են Արտին լեռան հարավում գտնվող քարայրները։*

*Հայկական լեռնաշխարհի ուշմեզոլիթյան ցեղերը լայնորեն օգտագործել են նաև այլ յուրահատուկ հնարներ, որ կիրառվել են երկրաչափական ձևերի՝ մանր օբսիդիանե գործիքների (միկրոլիթների), եռաժանիների ներդիրների, նետերի, տեգերի ծայրերի պատրաստման համար։ Գործիքները հանդիպում են մեկուսացված կուտակումների ձևով, փոքրաթիվ կոմպլեքսներով։ Այս հանգամանքը խոսում է մեզոլիթյան մարդկանց թափառական կյանքի մասին։*



Միջին քարի դարի (մեզոլիթի) գործիքներ. Սատանի դար

*Մեզոլիթի վերջում լայն տարածում են գտնում նաև խոշոր քարե կացինների և ուրագների տիպի հատող գործիքները[14], որոնք առաջ բացակայում էին։ Այդպիսի գործիքները հաճախ ամրացվել են եղջյուրի կոթին։ Սրանք պատրաստ-*

---

14 *Տե՛ս А. В. Арциховский,* Основы археологии, *էջ 46—50։*

վում էին մինչև այդ չկիրառված տաշման, ռետուշի և գայլիկոնելու եղանակով։ Մեծ զարգացման էր հասել եղջյուրի մշակությունը։

Դատելով կայաններում հանդիպող մշակույթի մնացորդներից, դրանց բնակիչները եղել են ճարպիկ ու քաջ որսորդներ, որոնք բացի խոշոր կենդանիներից, ջրային թռչուններ (բադ, սագ և այլն) ու ձկներ են որսացել։

Ձկնորսությունը կարևոր տեղ է գրավել մեզոլիթի մարդու տնտեսության մեջ։ Հայաստանի գետերն ու լճերը հարուստ էին ձկներով։ Մեծ նշանակություն են ունեցել թակարդները, ցանցերը, քարե ծանրոցները, ուռենու ճյուղերից հյուսված կողովները[15]։

Մեզոլիթյան դարաշրջանի բնորոշ գծերից մեկն էլ փայտամշակությունն էր, որի զարգացումը կապված էր ջրային թռչուններ ու ձկներ որսալու անհրաժեշտության և, առաջին հերթին, լաստերի օգտագործման հետ։ Լաստերը պատրաստում էին ծառերի բնից։ Երևացին նաև առաջին փորված մակույկները։ Մակույկները հաճախ փորվում էին կրակով։ Հավանաբար կրակը լայնորեն կիրառվել է նաև թիեր պատրաստելու համար, տեգերի ծայրերը սրելու և ամրացնելու ժամանակ և այլն[16]։ Փայտի մշակումը զարգացել էր քարե գործիքների նոր տիպերի (փոքր կացինների, գրերի, փայտամշակման այլ գործիքների) երևան գալուն համընթաց։ Սկզբում այդ գործիքները կոպիտ էին ու անկատար։ Դրանք սովորաբար կոչվում են մակրոլիթներ (մեծ քարեր)։ Մակրոլիթների երևան գալը նախադրյալ էր հանդիսանում քարե գործիքների նոր ձևերի ու տեխնիկայի տարածման համար, որ բնորոշ է նոր քարի դարի՝ նեոլիթի ժամանակաշրջանին։

Ուշ մեզոլիթի մարդիկ, տնտեսության մեջ օգտագործելով ոսկորը և եղջյուրը, թողել են մեզ իրենց արվեստի օրինակները։ Վերին պալեոլիթի մարդկանց նման նրանք նախշել են իրերը, ոսկրե գործիքները, տեգերի կոթերը, սլաքները և այլն[17]։

Հետսառցային ժամանակն իր հետ բերեց շատ նորություններ՝ հին ցեղերի բնակեցում ֆիզիկա-աշխարհագրական տարբեր գոտիներում, քարի մշակման նոր եղանակներ, որսորդություն՝ նետի ու աղեղի օգնությամբ, կենդանիների ընտելացման առաջին նշաններ, իսկ հավաքչությունը նախադրյալներ է ստեղծում ապագա հողագործության առաջացման համար։ Հայաստանի տերիտորիայում բնակվող հին ցեղերը այս ամենով հասան նախնադարյան համայնական հասարակության զարգացման մյուս փուլին՝ նոր քարի դարին (նեոլիթին)։

## 2. ՆԵՈԼԻԹ

Նեոլիթը՝ նոր քարի դարը, ընդգրկում է մ. թ. ա. VII—VI հազարամյակները։ Դա անցման մի կարևոր փուլ է հավաքչությունից ու որսորդությունից դեպի վաղ երկրագործությունը, անասնապահությունն ու նստակեցությունը։

Մինչև այսօր էլ Հայաստանի նեոլիթյան մշակույթը տակավին քիչ է ուսումնասիրված։ Բավարար չափով պարզաբանված չեն Հայկական լեռնաշխար-

15 Տե՛ս *П. П. Ефименко,* Первобытное общество, էջ 634։

16 Տե՛ս *А. В. Арциховский*. Основы археологии, էջ 46, 53։

17 Տե՛ս *П. П. Ефименко,* Первобытное общество, էջ 382, 384, 528, 532։

*հի նստակյաց բնակավայրերի առաջացման ժամանակը, պատմական միջավայրն ու բնական այն հանգամանքները, որոնց մեջ պետք է զարգանային տնտեսության նոր, առաջավոր ձևերը, թեև կուտակվել է նեոլիթյան ժամանակաշրջանին վերաբերող որոշակի նյութ, որ հնարավորություն է ընձեռում նախնական ուսումնասիրության ենթարկելու նշված շրջանի հուշարձանները, նրանց տերիտորիալ և ժամանակագրական սահմանները և մի շարք այլ հարցեր։*

**Բնական պայմանները**— *Հայկական լեռնաշխարհում նեոլիթի ժամանակ կլիման ավելի խոնավ էր ու տաք, քան այժմ։ Հայաստանի ընդարձակ տարածություններում ջուրը շատ էր, լճերը՝ մեծ ու խոր։ Այնտեղ, ուր այժմ ամայի է, խոտավետ էր, ծածկված անտառներով ու թփուտներով[18]։ Կային եղջերուներ, վայրի ցուլեր, այծյամներ, քարայծեր, վայրի ոչխարներ և այլն։ Ներկայիս անջուր լեռներում, որոնք շրջապատում են դաշտավայրերը, նոր քարի դարում գետակներ էին հոսում, անտառներ ու բարձր ծառեր աճում։ Գետերը ավելի լայն էին ու ջրառատ. գետերի ափերին մարդիկ զբաղվում էին ձկնորսությամբ. ձուկը առատ էր։ Մացառուտներում, անտառներում ու թփուտներում բույն էին դնում թռչունները, կային բազմաթիվ կենդանիներ։ Զարմանալի չէ, որ որսորդների թափառական խմբերը ոչ միայն լեռներում քարայծերի ու եղջերուների որսով էին զբաղվում, այլև իջնում էին դեպի դաշտավայրերն ու գետափները թռչուններ ու վայրի խոզեր որսալու։ Ամռանը նրանք ետ էին դառնում լեռները, ուր կար հարուստ որս։ Արարատյան հովտում կլիման շատ խոնավ էր և նպաստավոր վաղ բնակության համար։ Մարդիկ Արարատյան և Հայաստանի այլ դաշտավայրերում սկսել են բնակվել միայն այն ժամանակ, երբ լիովին տիրապետել են նեոլիթյան տեխնիկային, անցել կենդանիների ընտելացմանը և կուլտուրական բույսերի մշակմանը։*

**Նոր քարի դարի մշակույթի ընդհանուր գծերը**— *Նեոլիթյան ժամանակաշրջանն ամենից առաջ բնորոշվում է քարե գործիքների պատրաստման տեխնիկայի բարելավմամբ[19]։ Պահպանելով ու կատարելագործելով քարի ու ոսկրի մշակման նախնական եղանակները, նեոլիթյան գործիքները դառնում են առավել կատարյալ, երևան են գալիս օբսիդիանե մեծ շեղբեր, հղկված քարե գործիքներ ու զենքեր։ Նախամարդու ձեռքին բացառիկ կարևոր գործիք է դառնում քարե կացինը, որի օգնությամբ վերամշակվում են ծառերը, կառուցվում փայտե ծածկով տներ, պատրաստվում լաստեր, մակույկներ, սայլակներ։ Օգտագործելով քարի մշակման նոր տեխնիկան, մարդը սկսում է օբսիդիանի հետ միասին լայնորեն օգտագործել նաև դժվարությամբ մշակվող, առանձնապես ամուր քարատեսակներ՝ մարմարը, բազալտը, նեֆրիտը. լայնորեն կիրառվում են քարի մշակման այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք են սղոցումը, գայլիկոնումը և տաշումը։ Օգտվելով այդ տեխնիկայից, նեոլիթյան մարդը հեշտությամբ կարողանում է քարին տալ ցանկացած ձև։ Դրա հետևանքով առաջանում են նոր, նախկինում անհայտ գործիքներ, սկզբում հավաքչության, իսկ հետո՝ հողա-*

---

18 *Տե՛ս* Ա. Լ. Թախթաջյան, *Հայաստանի բուսական աշխարհը, էջ 5—47։ Ինչպես նաև* *С. К. Даль,* Позвоночные животные прибрежной полосы оз. Севан и изменение их группировок в связи со спуском водоема. «Зоологический сборник» АН Арм. ССР, вып. VII, 1950, *էջ 5—51։*

19 *Տե՛ս А. В. Арциховский,* Основы археологии, *էջ 50—51, 54։*

գործության համար. քարե բրիչներ փայտի կոթով, աղորիքներ, սանդեր, վարսանդներ և այլն։ Ծաղկման է հասնում գործիքի մակերեսի երկկողմանի մշակման տեխնիկան։ Ամենուրեք տարածվում են նոր տիպի նետի բազմազան ծայրեր, որոնք մշակված են երկկողմանի ռետուշով։

Հսկայական նշանակություն ունեցավ կավե ամանների գյուտը, որը թույլ տվեց մարդուն բարելավել մթերքներ պատրաստելու եղանակները և ընդլայնել սննդի տեսակներն ու դրանց պահպանումը։ Կավե ամանների պատրաստումը նեոլիթի նույնպիսի բնորոշ առանձնահատկություններից է, ինչպիսին էր քարե գործիքների հղկումը։

Սակայն ամենաէականն ու կարևորը բուն տնտեսության մեջ կատարված փոփոխություններն էին։ Որսորդությունից, ձկնորսությունից և հավաքչությունից բույսերի մշակմանն ու կենդանիների ընտելացմանն անցնելը հիմք հանդիսացավ նախնական հողագործության և անասնապահության հետագա զարգացման համար։ Հին որսորդները նեոլիթի ժամանակ, իրենց նախնիների համեմատությամբ, խոշոր հաջողությունների հասան. մեծ չափով զարգացան նետն ու աղեղը՝ որսորդական գլխավոր զենքը։ Զարգացած նեոլիթում նետաձգության արվեստը (հեռաձգությունը) հասնում է աննախընթաց կատարելության։ Նեոլիթի մարդը ոչ միայն կատարելագործեց նետ ու աղեղը, սովորեց տարբեր միջոցներով, այդ թվում՝ թակարդներով կենդանիներ որսալը, այլև ստեղծեց միսը, կաշին, ոսկորը, եղջյուրը օգտագործելու շատ նոր եղանակներ։

Հին հավաքիչները հիանալի ուսումնասիրել էին իրենց շրջապատող բնական աշխարհը։ Նրանք շատ օգտակար դիտումներ ու հայտնագործություններ էին արել և կարող էին սննդամթերքի համար բազմաթիվ բույսեր օգտագործել։ Այդուհանդերձ, որսորդական այս ցեղերի կյանքը զգալի չափով կախված էր բնության քմահաճույքներից։ Մթերքների կարճատև առատությունից հետո ամիսներ շարունակ սով էր լինում և հաճախ որսորդ ու ձկնորսական ցեղերի գոյությունը վտանգի տակ էր դրվում։ Երկրագործության ու անասնապահության սկսվող նոր դարագլուխը ավելի ապահով դարձրեց մարդկային կոլեկտիվների կյանքը։

**Հողագործության և անասնապահության ծագումը**— Հայկական լեռնաշխարհի որոշ ցեղեր դեռ քարի դարում, օգտվելով բարենպաստ բնական պայմաններից, հավաքչությունից անցան հողագործության և որսորդությունից՝ կենդանիների ընտելացման։ Դա մի նոր կարևոր քայլ էր բնության դեմ պայքարելու անզորությունից անցնելու դեպի բնության ուժերին իշխելը, որն իր հետևից մի շարք առաջընթաց փոփոխություններ բերեց մարդու կյանքում, նրա աշխարհայացքում, հոգեբանության և հասարակական հարաբերությունների զարգացման մեջ[20]։ Առաջին հողագործների պայքարը բնության դեմ՝ կոպիտ ու պարզ գործիքներով դյուրին չէր, հսկայական ջանքեր էին պետք հողը բրիչով կամ փայտով փորելու, ցողունները կտրելու և աղորիքով տրորելու համար։ Բայց աշխատանքի արգասիքը՝ որպես հատուցում, որոշ չափով ապահովում էր մարդուն։ Առաջին հողագործները ընտելացրին կենդանիների հիմնական տեսակները, որոնց վայրի նախնիները կային Հայկական լեռնաշխար-

---

20 Տե՛ս նույն տեղում, էջ 49։

հում։ Ընտանի կենդանիների բուծման հետքերը դժվարությամբ են որոշվում։ Այդ հարցերի ուսումնասիրման գլխավոր աղբյուրը կենդանիների ոսկորների մնացորդներն են, սակայն մեծ ժամանակ էր հարկավոր, որպեսզի, վայրի կենդանիների համեմատությամբ, նկատելիորեն փոխվեր ընտանի կենդանիների ոսկրային կազմությունը։ Համենայն դեպս, շատ հավանական է, որ կովը, ոչխարը, այծը և խոզը նեոլիթյան Հայաստանում ընտելացվել են մ. թ. ա. VII—VI հազարամյակներում[21]։

Հայաստանի առաջին հողագործները սկզբում օգտագործում էին ընտանի կենդանիների միսը, կաշին, բուրդը և ապա նաև կաթը։ Հողագործությունն ու անասնապահությունը նպաստեցին բնակչության աճին։ Երկրագործության զարգացման համար առանձնապես նպաստավոր էին Հայկական լեռնաշխարհի հովիտները։ Դեռևս մեզոլիթի վերջում որոշ ցեղեր բնակություն են հաստատում Արարատյան դաշտավայրում, Արաքսի, Արածանիի և Հայաստանի մյուս մեծ ու փոքր գետերի բերրի հովիտներում։ Հենց այս հովիտներում, որոնք միմյանց մոտ էին, ինչպես մի շղթայի տարբեր օղակներ, ամենից վաղ, արդեն մ. թ. ա. VI—V հազարամյակում ծագեցին տնտեսության մշակութային նոր ձևերը։

Հիմքեր կան պնդելու, որ Հայաստանը կուլտուրական բույսերի և, առհասարակ, հողագործության ու անասնապահության նախահայրենիքներից մեկն է։ Այդ մասին են վկայում ոչ միայն հնագիտական պեղումներով հայտնաբերված հացահատիկի ու կենդանիների մնացորդները, այլև մինչև այսօր Հայաստանում պահպանվող կենդանիների՝ այծի, ոչխարի և հացաբույսերի՝ ցորենի ու գարու վայրի տեսակները։ Հավանական է, որ պրիմիտիվ հողագործությունը սկզբնապես ծայր է առել նախալեռնային գոտում, ուր անձրևների առատությունը լավ բերք էր ապահովում հատկապես անջրդի տարածություններում, ինչպես նաև գետաբերանի մոտի և գետախորշերի հողամասերում, որոնք առանձնապես բարեբեր էին դառնում գարնանը հորդացած գետերի ու գետակների բերած տիղմերի շնորհիվ։

Հայաստանի առաջին հողագործական, անասնապահական բնակատեղիները— Նեոլիթյան մշակույթի հուշարձաններ երևան են եկել ու մասամբ ուսումնասիրվել վերջին տարիներում, գերազանցապես Սովետական Հայաստանի տերիտորիայում[22]։ Այդ հուշարձանները որոշակիորեն կապվում են Կիլիկիայի, Վերին Միջագետքի, Ասորիքի, Պաղեստինի, Փյունիկիայի նեոլիթյան մշակույթի հայտնի հնավայրերի հետ։ Հիշյալ հուշարձանների ժամանակագրական և տերիտորիալ աղերսների հետ կապված բազմաթիվ հարցեր թույլ են լուսաբանված գերազանցապես այն պատճառով, որ Հայաստանի նեոլիթյան հուշարձանների բացարձակ թվագրման հարցը առայժմ լուծված չէ։ Նրանց բացարձակ թվագրման համար էական նշանակություն ունեն Առաջավոր Ասիայի նեոլիթյան մի շարք բնակավայրերի ժամանակագրական տվյալները, որոնք ստացված են ռադիո-ածխածնային մեթոդի օգնությամբ։

---

21 Տե՛ս Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 127։

22 Տե՛ս նույն տեղում, էջ 133—150։

Մաշտոցի բլրի և Կզլյակ բլրի նեոլիթյան տիպի նյութական մշակույթ է հայտնաբերված Մերսինի Յումուկ-Թեփե կոչվող բազմաշերտ հուշարձանում։ Այդտեղ շերտերի հաստությունը անցնում է 10 մետրից և նրանցից ամենաստորինը թվագրվում է. մ. թ. ա. 6600 թվականով[23]։

Տերտերի ձորի, Սև բլուր I-ի ուշ նեոլիթյան բնակատեղիները կապված են Հաջիլարի շերտերի հետ, որի տարիքը չի անցնում մ. թ. ա. 4976 թվականից[24]։ Այս հուշարձանների հետ ժամանակագրական աղերսներ ունեն Փոքր Ասիայի (Չաթալ-Հույուկ—6500, Կիզիլ-կայա) և Հյուսիսային Միջագետքի (Հասունա, Կալա-աթ-Ջարմո) բնակավայրերը։ Հասունայի բնակատեղին ռադիո-ածխածնային մեթոդով թվագրվում է մ. թ. ա. 5600±250, իսկ Կալա-աթ-Ջարմոյի բնակատեղին՝ մ. թ. ա. 5707±320, այսինքն՝ մ. թ. ա. մոտ 5400 թվականով[25]։

Այսպիսով, մ. թ. ա. VII—V հազարամյակներում Արագածի հարավ-արևմըտյան լանջերին և Արարատյան դաշտավայրում արդեն գոյություն ունեին նեոլիթյան բնիկների մշտական բնակավայրեր, որոնք գտնվում էին իրար մոտ՝ Արարատյան դաշտում ու նախալեռներում, և միմյանց հաջորդող մշակութային փուլերի առանձին օղակներ կազմում՝ սկսած վաղ նեոլիթից մինչև պղնձեքարեդարյան հուշարձանների շրջանը։

Սրանցից ամենահինը Ջաղաների մոտի բնակավայրն է (Թալինի շրջան), որի բնակիչները շարունակում էին զբաղվել հավաքչությամբ և պատկերացում չունեին կենդանիների ընտելացման, բուծման ու բույսերի մշակման մասին։ Սրանք գտնվում էին ուշ մեզոլիթից վաղ նեոլիթի անցման աստիճանի վրա։

Բառոժի բնակատեղիի (Թալինի շրջան) բնակիչների մշակութային կյանքում և տնտեսության մեջ կատարվել էին նշանակալից փոփոխություններ։ Հավանաբար մ. թ. ա. VI հազարամյակի վերջում նրանք այլևս իրենց նախորդների քարայրային կյանքով չէին ապրում։ Այս բնակատեղիում հայտնաբերվել են բնակարանների հետքեր, որոնց շրջակայքում ռետուշված մակերես ու սայրեր ունեցող նոր խոշոր գործիքների հետ միասին առաջին անգամ հանդիպում են աննախշ, հասարակ ավազի և դարմանի խառնուրդով պատրաստված խեցանոթների բեկորներ, ինչպես նաև ոսկրե ասեղներ ու հերուններ։

Կարևոր է նշել, որ Բառոժում, ինչպես նաև Ջաղայի մոտի բնակատեղիում, պարզորոշ ներկայացված է վաղ երկրագործությունը, որի համար դեռևս բնորոշ էին հացահատիկի վայրի տեսակները։ Պետք է ենթադրել, որ նշված ժամանակաշրջանում պրիմիտիվ երկրագործություն է առաջացել Հայաստանի նաև այլ վայրերում։

Բառոժի և Ջաղայի մոտի բնակավայրերի, ինչպես և Արտինի նեոլիթյան կայանի բնակիչների քարի մշակման տեխնիկայում պահպանվել էին հեռավոր անցյալի ավանդույթները։ Նրանք առաջվա նման մշակում էին օբսիդիանե մանր եռանկյունիներ, ծակիչներ, քերիչներ։ Վաղ նեոլիթի վերջում սկսում են լայնորեն օգտագործել քարե խոշոր շինվածքներ, որոնց պատրաստումը պա-

---

[23] Առաջավոր Ասիայի վերաբերյալ տեղեկությունները քաղված են П. П. Ефименко, Неолитический Мерсин, СА, 1959, № 1 հոդվածից, էջ 291—299։

[24] *J. Mellaart*, Excavations at Haçilar, AS X, 1960, էջ 33—75, տե՛ս նույն հեղինակի Early Cultures of the South Anatolian Plateau, AS XI, 1961, էջ 159—177։

[25] Տե՛ս *J. Mellaart*, Excavations at Çatal Hüyük, 1961, AS XII, 1962, էջ 41—111։

*հանչում էր նոր, նեոլիթյան եղանակներ։ Հղկել են կացինների, մուրճերի, քարե աղորիքների, սանդերի ու հավանգների մակերեսը, ռետուշել օբսիդիանե խոշոր շեղբերի և նետի սլաքների մակերեսն ու եզրերը։ Արտին լեռան նեոլիթյան կայանները պատկանում են ընդհանուր առմամբ նախակերամիկական շրջանին, որոնց բնակիչներին հայտնի չէր կավից ամաններ պատրաստելու արվեստը։ Հայաստանի վաղ նեոլիթի բնակատեղիների կավագործության մեջ ամենակարևորը յուրահատուկ տաշտերի կամ չաների պատրաստումն էր։ Սկզբում հողի մեջ փորում էին փոս, որը ծեփվում էր կավով։ Փոսի մեջ կրակ էին վառում և այդպիսով նրա պատերին տալիս էին ամրություն և անջրանցիկություն։ Քարե և ոսկրե գործիքների, ինչպես նաև տնտեսական գույքի բարդացումը կապված է Հայաստանի նեոլիթի բնակիչների կյանքի խոր փոփոխությունների, նոր բնորոշ տնտեսաձևերի՝ հողագործության և անասնապահության հետ։ Հայաստանի վաղ նեոլիթի բնակավայրերին բնորոշ են վայրի կենդանիների ոսկորները։*

**Զարգացած նեոլիթի ժամանակաշրջանը Հայաստանում —** *Մ. թ. ա. VI հազարամյակում և V հազարամյակի սկզբում Հայկական լեռնաշխարհի ցեղերի կյանքում էական փոփոխություններ են տեղի ունենում, սկսվում և ավարտվում է զարգացած նեոլիթի ժամանակաշրջանը։ Ավելի լայնորեն են օգտագործվում կոպիտ պատրաստված և վատ թրծված կավե ամանները։ Հա-*





Նոր քարի դար, բրգաձև միջուկ. Անի-Պեմզա

յաստանի նեոլիթյան բնակիչների հողագործական ծաղկուն մշակույթն իր ամբողջական տեսքով ներկայացված է Արարատյան դաշտի բնակավայրերով։ Նեոլիթյան հողագործները տեղավորվել են այս բերրի հարթավայրում, ինչպես նաև նախալեռներում։ Մի անգամ ընտրված այդ տեղերը որպես մշտական բնակավայրեր պահպանվել են հազարամյակներ շարունակ։

Կղզյակ-բլուր բնակավայրում հանդես են գալիս Արարատյան դաշտի առաջին հողագործները։ Կղզյակ բարձունքը մի բնակատեղի է, որի ներքին երկու շերտերը պատկանում են ուշ նեոլիթյան ժամանակաշրջանին, իսկ վերինը՝ էնեոլիթին։ Կղզյակի բնակիչները գետից ոչ հեռու ընկած այդ բարձունքը ընտրել էին գուցե այն նպատակով, որ ցածում դեռ շատ խոնավ էր և ուզում էին ցանքի համար օգտագործել գետի հեղեղումներից ազատված տերիտորիաները։ Կղզյակի նեոլիթյան շերտերում նկատվում է, որ երկրաչափական ձևերի վանակատե մանր գործիքները հետզհետե անհետանում են, երևան են գալիս տարբեր քարատեսակներից պատրաստված խոշոր շեղբերն ու առաջին հղկված կացինները։ Համեմատաբար մեծ թվով են ներկայացված կավե ամանների մնացորդները։ Որսորդությունը առաջվա նման կարևոր դեր էր կատարում տնտեսության մեջ։ Բնակավայրում գտնվել են ոչ միայն լավ պատրաստված օբսիդիանե ներդիրներ, նետի ծայրեր և մեծ չափի աղորիքներ ու սանդեր, այլև քարե ուրիշ գործիքներ, խոշոր շեղբեր, դանակներ, սրածայրեր և այլն։

Հին զբաղմունքները այլևս որոշիչ չէին Արարատյան հովտի նեոլիթյան բնակիչների կյանքում։ Նեոլիթի բնակավայրերի պեղումների ժամանակ կայծքարի և վանակատե սղոցների հետ՝ կուլտուրական բույսերից գտնվել են ցորենի հետքեր և գարու այրված հատիկներ[26]։ Ուրեմն Հայաստանի նեոլիթի բնակիչները ցանել են գարի ու ցորեն, որը հնձել են կայծքարի ներդիրներից կազմված մանգաղով։ Հողը մշակել են քարե բրիչով, թեև բացառված չէ, որ նրանք ցանեին առանց նախապես հողը մշակելու, հեղեղումից առաջացած գետատիղմի մեջ։ Պետք է ենթադրել, որ հացահատիկը ոչ միայն հնձել են, այլև ձեռքով փետել։ Գտնված նշանակալից թվով սղոցիկները եղել են մանգաղի ներդիրներ։ Հացահատիկը աղացել են աղորիքով, հաց թխել, կերակուր եփել։ Հողագործությունը լրացվում էր անասնապահությամբ։ Եղել են խոշոր եղջերավոր անասուններ, ինչպես նաև ոչխարի ու այծի հոտեր։

Հողագործական տնտեսությունը որոշեց բնակավայրերի նոր բնույթը։ Այժմ այն արդեն որսորդական ճամբար չէր և ոչ էլ սեզոնային կայան, այլ իսկական իմաստով բնակատեղի, որտեղ ապրում է տոհմական համայնքը։

Ուշ նեոլիթի վերջին և էնեոլիթի սկզբներին է պատկանում Տեղուտի ճոր բնակատեղին: Սրա բնակիչները կառուցում էին մի քանի սենյակներից բաղկացած ճիշտ ուղղանկյուն և կլոր կացարաններ, քարե կամ հում աղյուսե պատերով, կավե սվաղով, ցածր ու նեղ դռներով[27]։ Կացարանները ծածկում էին ծառի ճյուղերից ու եղեգնից հյուսված, ծեփված տանիքով։ Սենյակների մի մասը փոքր է՝ 3—4 քառ. մետր հրապարակով. հենց այստեղ են, հավանաբար, պատսպարվել մարդիկ։ Կացարանները կառուցված են որոշակի դասավորու-

---

26 Տե՛ս Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ 140։

27 Տե՛ս նույն տեղում, էջ 143։

քյամբ, միմյանցից որոշ հեռավորության վրա, կարծես կազմելով փողոցներ։ Սա արդեն յուրահատուկ բնակավայր է՝ նստակյաց հողագործներին հարմար։ Կացարաններին կից բացվել են մառաններ, ուր գտնվեցին պաշարի մնացորդներով և կենդանական ոսկորներով լի ամաններ։ Կացարանների ներսում՝ կենտրոնում, կան կավից կամ քարից պատրաստված ոչ մեծ օջախներ։ Հայաստանի բնակիչները համեմատաբար բարձր մակարդակի էին հասել նյութական արտադրության տարբեր ճյուղերում՝ քարի, փայտի, ոսկրի մշակման գործում։ Հյուսում էին խսիր, կողով, ձկնորսական ցանց և այլն։ Բուսական թելերից տարբեր տիպի կտավներ էին գործում։



Վաղ նոր քարի դարի գործիքներ. Արեգունի բլուր

Առանձնապես առատանում է կերամիկան։ Պատրաստում էին զանազան կավե ամաններ, որոնց մի մասը շատ կոպիտ էր, կավին խառնված էր դարման, մանրացված խեցի և ավազ։ Սրանց կողքին հանդիպում է նաև շատ բարակ պատերով, նուրբ ամանեղեն. լայն ցածր գավաթներ՝ կոր կամ հարթ հատակով, կիսագնդաձև ու կիսաձվաձև ամաններ, գլանաձև, վերին մասում նեղացող անոթներ, մեծ կճուճներ՝ կարասների ձևի, նեղ վզով, նախշուն գավաթներ, նեոլիթին բնորոշ գծային կամ կետային երկրաչափական, փորագրված նախշերով՝ եռանկյունիների զուգահեռ գծերով, ելուստային կանթերով և միջանցիկ անցքերով։

Վերը նկարագրված բնակավայրերին շատ նման են «Մաշտոցի բլուր», «Աղվեսի բներ» բնակատեղիները, որոնց նախնական նկարագիրը տրված է հնագիտական գրականության մեջ։

Նեոլիթի ժամանակ զարգացած տոհմա-ցեղային կարգը— Նեոլիթի արտադրողական ուժերի ընդհանուր վերելքը հանդիսացավ այն հիմքը, որի վրա բարձրացան Հայաստանի հին բնակչության հասարակական կառուցվածքի նոր գծերը։ Նոր փոփոխությունների էությունն այն էր, որ տոհմերը ավելի սերտորեն էին միավորվում և ամրապնդվում էին նրանց կապերը։ Այժմ վերջնականորեն ձևավորվում են ցեղային միավորումները, որոնք իրենցից ներկայացնում են հին տոհմական կազմակերպության զարգացած աստիճանը։ Ընդհանուր հնագիտության մեջ այդ մասին են վկայում կենցաղի ու մշակույթի այնպիսի գծեր, ինչպիսիք են՝ մեծ տները, բնակավայրերի բնորոշ ձևերը, մոր պաշտամունքի հետքերը, տոտեմները և այլն։ Միայն նյութական մշակույթի հուշարձանները չեն կարող լրիվ պատկերացում տալ այդքան հեռավոր ժամանակաշրջանի ցեղերի կացութաձևի մասին։ Այդ թերին մասամբ լրացնում են ազգագրական տվյալները այն ցեղերի մասին, որոնք քաղաքակիրթ ժամանակներում դեռ գտնվում էին նեոլիթի մակարդակի վրա։ Առանձնապես լավ է ուսումնասիրված հյուսիս-ամերիկյան հնդկացիների (իրոկեզների) ցեղային կառուցվածքը[28]։ Իրոկեզները ապրում էին մայրական տոհմերով։ Այսպիսի մի քանի տոհմեր միանալով կազմում էին խոշոր ցեղային խմբավորումներ։ Ցեղերի ներսում գոյություն ունեցող տոհմային միությունները կազմում էին ֆրատրիաներ (եղբայրություններ)։ Ֆրատրիաները կազմված էին երկու սկզբնական տոհմերից։ Էքզոգամ ամուսնության պայմաններում չէր կարելի ամուսնանալ ֆրատրիայի ներսում։ Տարբեր ֆրատրիաները կապված էին ամուսնական կապերով։ Հետագայում՝ կապված բնակչության անընդհատ աճի, ցեղերի սեգմենտացիայի (ցեղերի տրոհումը նոր տոհմերի) ու ցեղերի նորանոր վայրերում բնակեցման հետ, առանձին տոհմերի թիվն ավելանում էր, թեև նրանք զգալի չափով շարունակում էին պահպանել փոխադարձ կապը։ Այդ կապը արտահայտվում էր այսպես. յուրաքանչյուր ցեղ առաջվա նման բաժանվում էր երկու կեսի կամ երկու թևի, բայց յուրաքանչյուր կեսը բաղկացած էր արդեն մի քանի տոհմից, որոնք մտնում էին այս կամ այն ֆրատրիայի մեջ և արդեն կարող էին ամուսնանալ ֆրատրիայի ներսում, բայց ոչ նույն տոհմի սահմաններում։ Ամուսնական հարաբերություններում կորցնելով իր կարգավորող նշանակությունը, ֆրատրիան, սակայն, պահպանում էր կազմակերպողի իր կարևոր դերը տոհմական համայնքների ներքին և արտաքին կյանքում։ Երկու ֆրատրիաներ կազմակերպում էին ընդհանուր ցեղական տոներ։ Տոհմի անդամների մահվան ժամանակ մեռնողի ֆրատրիան մասնակցում էր թաղմանը։ Ցեղի մեջ ֆրատրիան միակ զինվորական կազմակերպությունն էր։ Ամեն մի տոհմ կռվում էր իր ֆրատրիայի կազմում։ Երկու ֆրատրիան կազմում էր մի ցեղ։ Յուրաքանչյուր ցեղ ուներ իր տերիտորիան, որը պարփակում էր ինչպես նրա բնակեցրած տարածությունը, այնպես էլ որսորդության ու ձկնորսության սահմանները։ Ցեղի մեջ մտնող տոհմերը խոսում էին մի ընդհանուր բար-

---

28 Տե՛ս Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 38։

բառով։ Ցեղը հաստատում և արձակում էր տոհմերի ընտրած ավագներին։ Տոհմական առաջնորդների համացեղային խորհուրդը կարգավորում էր հարաբերությունները նաև այլ ցեղերի հետ։ Ցեղի գլխին կանգնում էր գլխավոր առաջնորդը։ Այդ ցեղային միավորումներից բացի կային ավելի լայն, խոշոր միություններ, որոնք միավորում էին մի քանի ազգակից ցեղեր. սրանք իրար հետ կապված էին արյունակցական կապերով ու մի ընդհանուր լեզվով՝ տրոհված ազգակից բարբառների։ Այդ տոհմերն ու ցեղերը իրար մեջ կնքում էին դաշինք՝ ավագներից կազմված խորհրդի միջոցով։

Հայաստանի նորքարեդարյան կայանները տոհմական բնակատեղիներ էին։ Դատելով սրանց առատությունից, կարելի է պնդել, որ մեր երկրում ապրում էին բազմաթիվ տոհմեր, որոնց բնակավայրերից էլ կազմվում, ամբողջանում էին ցեղային լոկալ սահմանները։

Նեոլիթյան տոհմական բնակատեղիները աչքի են ընկնում տնտեսության միօրինակ բնույթով։ Սակայն երկրի դաշտավայրային մասերում տնտեսության նոր ձևերի ծագումը և զարգացումը ավելի ինտենսիվ էր ընթանում։

Նեոլիթի վերջում զարգանում և հարստանում է նյութական մշակույթը։ Առաջադիմում է փոխանակությունը, բարդանում հասարակական հարաբերությունները, անցում է տեղի ունենում մեկուսացված տոհմական համայնքներից դեպի առաջին տերիտորիալ ցեղային միավորումները։

Ինչպես ցույց են տալիս հնագիտական պեղումները, մ. թ. ա. VI—V հազարամյակները պետք է համարել Հայկական լեռնաշխարհի և Առաջավոր Ասիայի հետագա ժողովուրդների հիմքում ընկած էթնիկական խմբերի կազմավորման սկիզբը։

Մ. թ. ա. V հազարամյակի կեսերին Հայաստանում ավարտվում է հին որսորդների, հավաքիչների ու նախնական երկրագործների տիրապետության ժամանակաշրջանը։ Հայաստանի բնակչությունն անցնում է պատմամշակութային նոր ժամանակաշրջանի՝ վաղ մետաղի ժամանակին՝ պղնձեքարեդարյան մշակույթին (էնեոլիթին)։

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԷՆԵՈԼԻԹԻ (ՊՂՆՁԵՔԱՐԵԴԱՐՅԱՆ) ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԸ ՈՐՊԵՍ ԷՆԵՈԼԻԹՅԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՕՋԱԽՆԵՐԻՑ ՄԵԿԸ

**Էնեոլիթյան մշակույթի տարածման սահմանները**—*Հին Հայաստանի մշակույթի էնեոլիթյան փուլը տակավին անբավարար է ուսումնասիրված։ Մինչև վերջին տարիներս մեր գիտության մեջ այն նույնիսկ սահմանազատված չէր մ. թ. ա. III հազարամյակի վաղ բրոնզեդարյան մշակույթից, որը ևս անվանում էին էնեոլիթյան։*

*Այժմ ինչպես Հայկական լեռնաշխարհում, այնպես էլ Կովկասի տերիտորիայում հայտնաբերվել է մ. թ. ա. V—IV հազարամյակներին պատկանող հնագիտական հուշարձանների մի ստվար խումբ, որին հատուկ են էնեոլիթյան մշակույթի ամենաբնորոշ ու էական գծերը։*

*Այս հուշարձանները մեզ ներկայացնում են Հայաստանի և Առաջավոր Ասիայի մշակույթի զարգացման շրջադարձային փուլերից մեկը, երբ Հին Արևելքի առավել զարգացած ցեղերն ու ժողովուրդները անցան ընդարձակ տարածությունների վրա վաղ երկրագործական-անասնապահական արտադրող տնտեսություն վարելուն, ձեռնամուխ եղան մետաղե գործիքների և կավե ամանեղենի մասսայական արտադրությանը, առաջ մղեցին քարե գործիքների պատրաստման ձևերն ու եղանակները և այդ ամենով համակողմանի նախադրյալներ ստեղծեցին բրոնզեդարյան քաղաքակրթության զարգացման համար*[1]*։*

*Մ. թ. ա. VI—V հազարամյակներում տեղի ունեցող տնտեսական խաղաղ հեղաշրջման այդ դարակազմիկ պրոցեսն ընթանում էր Եփրատ—Տիգրիս—Արաքս—Կուր գետերի ավազանների և Աֆրասիայի լայնածավալ տարածությունների վրա, որոնք շրջափակում էին Հայկական լեռնաշխարհը և ներգրավում այն մշակութա-էթնիկական վերընթաց զարգացման պրոցեսների մեջ։*

*Հայաստանի հիշյալ շրջանի նյութական մշակույթի ուսումնասիրության տեսակետից առանձնապես կարևոր նշանակություն ունեն Փոքր Ասիայի հա-*

---

[1] *Տե՛ս Г. Чайлд,* Древнейший Восток в свете новых раскопок, М., 1956, *էջ 167 և հաջ.,* *В. М. Массон*, Средняя Азия и Древний Восток, М.—Л., 1964, *էջ 65—77։*

բավային շրջանների[2], Կիլիկիայի[3], Ասորիք-Պաղեստինի[4], Իրանի[5], Իրաքի[6] և Կովկասի (Դաղստանի)[7], ծայրամասային շրջանների նեոլիթյան և էնեոլիթյան բնակավայրերը, որոնք բազմակողմանիորեն կապվում են Հայկական լեռնաշխարհի՝ այժմ հայտնի հուշարձանների հետ։

Հայաստանի հուշարձաններն էլ, իրենց հերթին, գրավում են մի ընդարձակ տարածություն Եփրատի արևմտյան մարզերից մինչև Արաքսի ու Կուրի (նաև նրա վտակ Աղստևի) հովիտները և նրանց միջև ընկած Դաշտային Ղարաբաղը։ Արևմտյան Հայաստանի՝ Հեքիմհան, Հինձոր, Քյուլթեփե, Բալու և այլ վայրերում, Տարոնի և Կարնո դաշտերում, Վանի երկրագործական օազիսում, Հասսունա-Հալաֆյան տիպի (V—IV հազարամյակ) հուշարձանների հայտնաբերումը պարզորոշ ցույց է տալիս, որ այդ շրջանները մշակութային սերտ կապերի մեջ են եղել Հյուսիսային Ասորիքի և Միջագետքի հետ[8]։ Վերջին երկու տասնամյակում նույն կարգի հնագիտական հուշարձաններ հայտնի դարձան նաև Արարատյան դաշտավայրի III հազարամյակի բնակատեղիների ներքին հորիզոններում (Խաթունարխ, Մխլութափա, էջմիածնի Քյոլ-Թափա և այլն)[9] և կամ որպես առանձին բնակատեղիներ (Թեղուտ), որոնք ընդգրկում են V հազարամյակի վերջերից մինչև IV հազարամյակի երկրորդ կեսն ընկնող ժամանակաշրջանը։ Արարատյան դաշտի հարավ-արևելյան անկյունում ուսումնասիրվեց Նախիջևանի Քյոլ-Թափա բազմաշերտ նշանավոր բնակատեղին, իսկ Ղազախի սահմաններում՝ Աղստև գետի Բաբա-դերվիշի և Թոյրե-Թափայի հետաքրքրական հուշարձանները[10]։

Հայկական լեռնաշխարհի նշված հնավայրերից և ոչ մեկը լրիվին չեն համապատասխանում իրար. նրանց նյութական մշակույթի մեջ արտացոլվում են տեղական, ցեղային, ազգագրական և ժամանակագրական երանգներ, սակայն նրանք բոլորն էլ Հայկական լեռնաշխարհի էնեոլիթյան, վաղ երկրագործական մշակույթի տարրերն են։

---

[2] Տե՛ս J. Mellaart, Excavations at Çatal Hüyük, AS, XII, 1962, էջ 41—110, XIII, 1963, էջ 43—103, XIV 1964, էջ 39—120, K. Bittel, Prehistorische Forschungen in Kleinasien. Istanbul, 1936, էջ 10—12։

[3] Տե՛ս I. Garstang, Prehistoric Mersin. Oxford, 1953.

[4] Տե՛ս R. I. Braidwood and I. S. Braidwood, Excavations in the plain of Antioch, XXI, Chicago, 1960, ինչպես նաև՝ П. П. Ефименко, Неолитический Мерсин, էջ 291—299։

[5] Տե՛ս T. Burton—Brown, Excavations in Azerbaijan, London, 1948, ինչպես նաև՝ R. H. Dyson and T. C. Joung, The Solduz Valley, Iran, Pisdili Tepe „Antiquity", 1960, № 133, էջ 19—28։

[6] Տե՛ս A. Perkins, The comparative Archaeology of Early Mesopotamia. Chicago, 1960,

[7] Տե՛ս А. А. Иессен, Кавказ и Древний Восток в IV—III тысячелетиях до н. э., КСИА, 1963, вып. 93, էջ 3—14։ О. А. Абибуллаев, Раскопки холма Кюль-Тепе, МИА, 1959, № 67, էջ 431—452։

[8] Տե՛ս C. A. Burney, Eastern Anatolia in the Chalcolitic and Early Bronze Age, AS. VIII, 1958, էջ 157—161։

[9] Նկատի են առնված Ռ. Մ. Թորոսյանի դաշտային նոր հետազոտություններով հայտնաբերված նյութերը։

[10] Տե՛ս А. А. Иессен, Из исторического прошлого Мильско-Карабахской степи, МИА, 125, М.—Л., 1965, էջ 10—35; О. А. Абибуллаев, Некоторые итоги изучения холма Кюль-Тепе, СА, 1963, № 3, էջ 157—167; И. Г. Нариманов, Г. С. Исмаилов, Акстафачайское поселение близ города Казах, СА, № 4, 1962, էջ 148, 156։



էնեոլիթյան գործիքներ. Թեղուտ

**Հայաստանի էնեոլիթյան բնակավայրերը։** Մշակութային այս ծավալուն տարածքի մեջ մտնող ամենաերևելի հուշարձաններից մեկը Շամիրամ-Ալթի արհեստական բլուրն է, որը գտնվում է Վանա լճից մեկուկես կիլոմետր հեռավորության վրա, ուրարտական Մենուա թագավորի ջրանցքի ափին, ունի 6—7 մ բարձրություն և գագաթի մասում 70—80 քմ տարածություն։ Պետք է ենթադրել, որ սա բնակատեղիի միայն կենտրոնական մասն է, որ պահպանվել է ուրարտական ջրանցքաշինությունից հետո։ Շամիրամ-Ալթիի պեղումները տվեցին V—IV հազարամյակների նյութական մշակույթի գերազանց նմուշներ, մետաղե, ոսկրե ու քարե հարյուրավոր գործիքներ, անասնապահության, երկրագործության, արհեստների՝ առավելապես խեցեգործության բազմապիսի առարկաներ[11]։ Բնակատեղիի կրկնակի ուսումնասիրությամբ հաստատվեց, որ այն ունեցել է ժամանակագրական երեք շերտ, որոնցից ստորինը (III) պարունակում էր V հազարամյակին պատկանող հալաֆյան տիպի հիանալի գունազարդ խեցեղեն, միջինը՝ (II) փայլեցված, բայց անզարդ խեցեղեն և վերինը՝ (I) հարդախառն կոպիտ խեցեղեն՝ խամրած կարմիրով կատարված ուղղահայաց ալիքավոր գծերով[12], որը, անկասկած, հասնում է մինչև IV հազարամյակի կեսերը[13]։



0 4

Աղորիք. Թեղուտ

Խեցեղենի նման տիպերով հարուստ է և Թեղուտի բնակատեղին, որն ընկնում է Արարատյան դաշտի կենտրոնում, գետի չորացած հունի մոտ, էջմիածնից հարավ, Թեղուտ կոչվող հանդամասում։ Ի տարբերություն Շամիրամ-Ալթիի, Թեղուտի բնակատեղին միաշերտ է, հիմնված է գետալճային ավազախճի վրա, կառուցապատված հում աղյուսե կիսագետնափոր, փոքրիկ կլոր հյուղակներով ու կից հացահատիկի ամբարներով[14]։

Կացարաններն աղքատիկ ու անպաճույճ են, ունեն հարդախառն, հում աղյուսից շարված կավածեփ պատեր, երբեմն ներկված հատակ, տնտեսական ու

---

11 Տե՛ս A. Jenny, Schamiramalti, Prehistorische Zeitschrift, 1928, XIX, № 3/4, էջ 280—304։

12 Տե՛ս E. B. Reilly, Tilkitepedeki ilk kazilar, 1937 (First excavations at Tilkitepe, 1937), „Türk Tarih Arkeologya ve Etnografya dergisi", IV, 1940.

13 Տե՛ս А. А. Иессен, Кавказ и Древний Восток в IV—III тысячелетиях до н. э., էջ 4։

14 Տե՛ս Հ. Ա. Մարտիրոսյան, Ռ. Մ. Թորոսյան, Հայաստանի էնեոլիթյան մշակույթի հարցի շուրջը, ԼՀԳ, 1967, № 3, էջ 52—62, ինչպես նաև՝ Ռ. Մ. Թորոսյան, Թեղուտի բնակատեղիի պեղումները, ՊԲՀ, 1968, № 1, էջ 291—302։

*պաշտամունքային օջախներ։ Թեև Թեղուտի մշակութային շերտը պահպանվել է ոչ լրիվ, այստեղ հայտնաբերված իրերն ու առարկաները կարևոր սկզբնաղբյուրներ են ոչ միայն տնտեսության հիմնական ճյուղերը, այլև կենցաղային ու մշակութային աղերսների բազմաթիվ մանրամասներն ուսումնասիրելու համար։ Թեղուտի բնակատեղին աշխատանքային գործիքների, խեցեղենի և արտադրության այլ ճյուղերի նորահայտ նմուշներով կապող օղակ է Հայկական լեռնաշխարհի շրջանների և Կովկասի միջև։*

**Նախիջևանի Քյուլ-թափանի և էնեոլիթյան մշակույթի ժամանակագրության խնդիրը:** *Կովկասի և Առաջավոր Ասիայի հնագիտության համար առանձնահատուկ նշանակություն ունեցան այժմ Նախիջևանի Ինքնավար Հանրապետության սահմաններում գտնվող Քյուլ-Թափա (Արաքսի ափին) նշանավոր բնակատեղիի պեղումները։ Ի տարբերություն վերը նկարագրած հնավայրերի, այս բնակատեղին ունի մ. թ. ա. IV—III հազարամյակների հզոր նստվածքներ՝ իրենց բազմաթիվ շերտերով ու խավերով։ Մշակութային շերտերի ընդհանուր հաստությունն այստեղ հասնում է 21,1 մ, որից 8,3 մ պատկանում է ստորին (IV հազարամյակի) շերտին։ 12,4—12,8 մետրերի միջև գտնվում է մաքուր խավը, որն, ըստ էության, բաժանում է IV և III հազարամյակների նստվածքները։ Հնագիտական ստույգ զուգահեռները ցույց տվեցին, որ Քյուլ-Թափայի ստորին շերտը համապատասխանում է Կապուտան (Ուրմիա) լճի արևմտյան ափին գտնվող Գեոյ-Թափա բնակավայրի «M» շերտի ուշ-օբեյդյան ժամանակաշրջանի վերջին (մ. թ. ա. 3250—3150 թվականներ), ինչպես նաև Պիշիլի-Թափա բնակավայրի և Թեփե-Գավրայի 19—17-րդ շերտերում ի հայտ բերած նյութերին, որոնք հյուսիս-օբեյդյան հուշարձանների զուգահեռ նյութերի օգնությամբ թվագրվում են համապատասխանաբար մ. թ. ա. 3500±160 և 3446±325 թվականներով։ Ի նկատի ունենալով Քյուլ-Թափայի ստորին շերտի զգալի ստվարությունը, ուսումնասիրողները հիմնավորապես պնդում են, որ նրա ներքին խավերը պետք է թվագրել IV հազարամյակի առաջին կեսով։ Քյուլ-Թափայի ստորին շերտի ժամանակագրական տվյալներն այժմ հավաստվում են Թեղուտի նյութերով, որոնց մի զգալի մասը անմիջականորեն կապվում է ուշ-հալաֆյան և օբեյդյան հուշարձանների հետ (V հազարամյակի երկրորդ կես և IV հազարամյակի առաջին կես), միջանկյալ օղակ կազմելով Շամիրամ-Ալթիի և Քյուլ-Թափայի միջև։ Ավելի հին են Շամիրամ-Ալթիի երկու ստորին շերտերը (3—2-րդ), որոնք պարզապես վերաբերում են մ. թ. ա. V հազարամյակի հալաֆյան մշակույթին։ Արարատյան դաշտավայրի վերը նշված հուշարձանների հետ ժամանակագրական ավելի սերտ աղերսների մեջ է Շամիրամ-Ալթիի վերին (1-ին) շերտը։ Այսպիսով, նշված երեք հուշարձանները ընդգրկում են ժամանակագրական մի մեծ հատված, սկսած մ. թ. ա. V հազարամյակի սկզբից և վերջացրած IV հազարամյակով։ Ժամանակագրական այս սահմանների տարբեր հատվածների մեջ են ընդգրկվում Հայկական լեռնաշխարհի և սահմանակից վայրերի բազմաթիվ հուշարձաններ։ Չնայած ժամանակագրական ու շերտագրական տարբերություններին, նշված բոլոր հուշարձաններն աչքի են ընկնում Հայկական լեռնաշխարհին բնորոշ ինքնատիպ նյութական մշակույթի ընդհանրությամբ, որն ի հայտ է գալիս խեցեգործության ու մետաղամշակության, քարե և ոսկրե գործիքների պատրաստման, երկրագործության,*



Էնեոլիթյան ոսկրե գործիքներ. Թեղուտ

անասնապահության, բնակարանաշինության, նյութական և հոգևոր կյանքի բազմաթիվ ասպարեզներում։ Այդ բնակատեղիների ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում առանձնացնելու և ուրվագծելու բնիկ ցեղերի սոցիալ-տնտեսական զարգացման որոշակի փուլերից մեկը՝ էնեոլիթյան (պղնձաքարեդարյան) ժամանակաշրջանը, որի հիմնական էությունը տնտեսության արտադրող ճյուղերի բուռն զարգացումն է։

## 2. ԷՆԵՈԼԻԹՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ

**Բրիչային երկրագործություն:** *Պատահական չէ, որ Հայկական լեռնաշխարհի էնեոլիթյան շրջանի բնակատեղիները գտնվում են ալյուվիալ հարթավայրերում, գետերի ու գետակների հուների մոտ։ Հայաստանի հին երկրագործը լայնորեն յուրացրել էր ցանքատարածությունների համար պիտանի բազմաթիվ շրջաններ, նեոլիթյան ժամանակներից սկսած ծանոթ էր ոռոգման պարզունակ եղանակներին։ Նա ուներ հողամշակման, բերքահավաքի և երկրագործական մթերքները վերամշակելու աշխատանքային բազմաթիվ գործիքներ, որոնցով և բնորոշվում է ժամանակի երկրագործական տնտեսության բնույթն ու մակարդակը։ Բրիչային երկրագործությունը էնեոլիթյան բնիկ ցեղերի տնտեսության հիմնական ճյուղերից մեկն էր։ Շամիրամ-Ալթիի, Թեղուտի, Մխլու-Թափայի, Քյուլ-Թափայի, Աղստևի հովտի բնակավայրերում հայտնաբերվել են ոսկրե հիանալի սրածայրեր, խոշոր անասունների սնամեջ ոսկորներից և քարից պատրաստված բրիչներ, կտրող գործիքների վանկատե ու կայծքարե դանականման ներդրվող շեղբիկներ, ինչպես նաև բազալտե աղորիքների, սանդերի ու վարսանդների բազմաթիվ նմուշներ, որոնք բոլորն էլ օգտագործվել են հողի փխրեցման, բերքահավաքի և երկրագործական մթերքների վերամշակման աշխատանքներում։ Այս գործիքների մեջ եզակի տեղ են գրավում Թեղուտի սրածայր և մասսիվ բրիչները, վանկատի շեղբից ու եղան կողոսկրից պատրաստված պահանգավոր դանակը, ինչպես նաև մանգաղի ներդիրները, որոնց բանող սայրերը հատուկ մշակման ենթարկված չեն, բայց բանեցվելով խիստ մաշվել են։ Մխլու-Թափայի պահանգավոր դանակների ու մանգաղների ներդիրների մեջ հանդիպում են առաջին ատամնավոր կայծքարե շեղբերը, որոնք հետագա զարգացում են գտնում վաղ բրոնզեդարյան ժամանակաշրջանում*[15]*։*

*Էնեոլիթյան երկրագործության մեջ, հատկապես կալման ու փոխադրման աշխատանքների ժամանակ զգալի դեր էին կատարում բանող անասունները։ Ըստ երևույթին, էնեոլիթյան, ինչպես և վաղ բրոնզեդարյան երկրագործության համար բնորոշ էին հացաբույսերի խառը ցանքերը։ Ցորենն ու գարին բնիկների հիմնական սննդամթերքներն էին։ Թեղուտի կացարաններում հում աղյուսների հարդի խառնուրդի մեջ հայտնաբերվել են մեծ քանակությամբ ցորենի և գարու հատիկներ։*

---

15 *Օգտագործված են Թեղուտի և Մխլու-Թափայի բնակատեղիներում Ռ. Թորոսյանի հետախուզական պեղումներով հայտնաբերված նյութերը։*

Բացի հացաբույսերից, բնիկներն ունեցել են նաև երկրագործական բազմաթիվ այլ կուլտուրաներ, ինչպես այդ տեսնում ենք հարավ-արևմտյան Փոքր Ասիայի ուշ նեոլիթյան բնակավայրերում, որոնք բազմաթիվ ընդհանրություններ ունեն մեր հնավայրերի հետ։

Ինչպես ուշնեոլիթյան, այնպես էլ էնեոլիթյան տնտեսության մեջ երկրագործության հետ մեկտեղ շարունակում էր զգալի դեր կատարել նաև հավաքչությունը, որը նախնադարյան հասարակության նախաէնեոլիթյան տնտեսության հիմքն էր կազմում։



**Անասնապահություն**: Տեղաբնակ ցեղերի տնտեսության հիմնական ճյուղերից մեկն էր անասնապահությունը։ Վերը հիշատակված բնակավայրերի բոլոր շերտերում կացարանների մեջ ու նրանցից դուրս հանդիպում են ցուլերի կամ կովերի, այծերի, ոչխարների, խոզերի ոսկորների մնացորդներ։ Խոշոր ու մանր եղջերավոր անասուններն օգտագործվել են երկրագործության մեջ որպես քաշող ուժ և ապահովել միս, կաթնամթերքի, կաշեգործության, մանածագործության աճող պահանջները։ Հնավայրերի պեղումներով հայտնաբերված ոսկորները առայժմ լրիվ պատկերացում չեն տալիս գոյություն ունեցող կենդանիների բազմազան տեսակների, անասնապահության որոշակի մակարդակի ու տնտեսության մեջ նրա տեսակարար կշռի մասին։ Կասկածից դուրս է միայն, որ տնտեսության ոչ մի ճյուղ չէր կարող համեմատվել անասնապահության հետ։ Պատահական չէ, որ Հայաստանին սահմանակից Չաթալ-Հույուքի բնակատեղիի (մ. թ. ա. VII—V հազարամյակներ) որմնանկարներում ներկայացված են որսի տեսարաններ և արածող անասունների հոտեր, պատերի վերին մասերն էլ զարդարված են խոշոր ցուլերի գլուխներով[16]։ Հայաստանի լեռնե-





Էնեոլիթյան կուպեր, ճարդախառն խեցեղեն. Թեղուտ

[16] Տե՛ս J. Mellaart, Earliest Civilisations of the Near East, London, 1963, էջ 77—88, նաև նույնի՝ Excavations at Çatal—Hüyüc, AS, XIV, 1964, էջ 80—120։

*րում նման բովանդակությամբ ժայռաքանդակ պատկերների թիվը հազարների է հասնում։*

*Ամենուրեք անասնապահությանը ուղեկցում էր նաև որսորդությունը, որի մասին վկայում են նախ և առաջ կայծքարե, վանակատե ու ոսկրե նետածայրերի, ինչպես նաև վայրի կենդանիների՝ ցուլերի, ձիերի, վարազների, եղջերուների ոսկորների մնացորդները՝ Առաջավոր Ասիայի և Հայկական լեռնաշխարհի V և IV հազարամյակների մի շարք բնակատեղիներում։*

*Հայաստանի տարբեր շրջաններում, առանձնապես մեծ գետերի հովիտներում տնտեսության մեջ որոշ դեր էր կատարում նաև ձկնորսությունը։ Թեղուտի, Նախիջևանի, Քյուլ-Թափայի, Աղստևի հովտի բնակատեղիների պեղումների ժամանակ հայտնաբերվել են ձկան ոսկորներ։*

**Արհեստներ:** *Երկրագործության և անասնապահության զարգացմանն առընթեր առաջադիմում էին նաև նրանցով պայմանավորված ու անմիջապես նրանցից բխող արհեստները։ Անասունների ոսկորներից պատրաստում էին բրիչներ, սրածայրեր, քերիչներ, բազմաչյան պահանգներ, ասեղներ, հերուններ, զարդասեղներ, թիականման մանր գործիքներ և այլն։ Թեղուտի, Մխլութափայի, Նախիջևանի, Քյուլ-Թափայի այս տիպի գործիքներն ու զարդերն իրենց համապատասխան զուգահեռներն ունեն Հաջիլարի, Չաթալ-Հույուքի*[17], *Ջեյթունի*[18], *Պիզիլի-Թեփեի*[19] *հնավայրերում։*

*Բուրդն օգտագործում էին թաղիքի, մանվածքի ու գործվածքի համար, որոնց նրբին դրոշմները պահպանվել են կավե ամանների ներքին ու արտաքին մակերեսների վրա բուսական թելերից (եղինջից, կանեփից, վուշից) պատրաստված գործվածքների դրոշմների հետ միասին։ Դրոշմների բազմազանությունից երևում է, որ, օրինակ, Թեղուտի բնակավայրում բրդից ու բուսական թելից պատրաստում էին տարբեր տեսակի և որակի գործվածքներ։ Այս շրջանում մանածագործության գոյությունն անհերքելիորեն ապացուցվում է նաև իլիկների գլուխների առկայությամբ, որոնք պատրաստվում էին կավից, ոսկրից և խեցեղենի կլորացած բեկորներից։*

*Առանձնապես բարձր զարգացման էր հասել կողովագործությունը։ Տարբեր տիպի կողովների, զամբյուղների, խսիրների դրոշմները ևս պահպանվել են կավե ամանների պատերին։*

**Մետաղամշակություն:** *Արհեստների մեջ նորածինը, զարմանալին և մեծ ապագա խոստացողը մետաղամշակությունն էր, որը տակավին իր առաջին, բայց հաստատ քայլերն էր անում։ Մ. թ. ա. V—IV հազարամյակների պղնձե հերուններ, ասեղներ, շեղբեր, կարթեր, նետասլաքներ են հայտնաբերված Շամիրամ-Ալթիի*[20], *Թեղուտի*[21], *Նախիջևանի Քյուլ-Թափայի*[22], *Գեոյ-Թափա-*

---

17 *Տե՛ս նույն տեղում, տախտակ 42—43, նկ. 10, 6—7։*

18 *Տե՛ս В. М. Массон,* Средняя Азия и Древний Восток, *նկ. 5։*

19 *Տե՛ս R. N. Dyson and T. C. Joung*, The Solduz valley, Iran, Pisdeli Tepe, Antiquity, *1960, № 133, տախտակ* III։

20 *Տե՛ս* Ե. Սամուելյան, *Հին Հայաստանի կուլտուրան, հատ. 1, Երևան, 1931, նկ. 34—36։*

21 *Տե՛ս* Հ. Ա. Մարտիրոսյան, Ռ. Մ. Թորոսյան, *Հայաստանի էնեոլիթյան մշակույթի հարցի շուրջը, էջ 55։*

22 *Տե՛ս О. А. Абибуллаев,* Некоторые итоги изучения холма Кюль-Тепе, *էջ 157։*

յի[23] պեղումների ընթացքում։ Հայկական լեռնաշխարհի սահմաններից դուրս՝ Կիլիկյան (Մերսին, XXIV շերտը), փոքրասիական (Չաթալ-հույուք), Միջագետքյան և Հալաֆյան մշակույթների հուշարձաններում ևս հայտնի են բազմաթիվ պղնձե իրեր։ Նրանց մի զգալի մասը կոփածո է, պարունակում է բնական կամ խառնուրդային մկնդեղի համեմատաբար մեծ տոկոս։ Միջին և Նոր քարի դարի որոշ ապարների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեր հեռավոր նախնիները հնուց անտի ծանոթ էին մի քանի հանքաքարերի և չիմանալով նրանց նշանակությունը, օգտագործում էին այդպիսիներն իրենց տնտեսական կարիքների համար։ Հանքաքարը, սովորական քարի նման, օգտագործվում էր հաճախ կացարանների և օջախների պատերի մեջ իբրև շինանյութ։ Ի տարբերություն այլ հանքանյութերի, պղնձաքարն ավելի դյուրահալ է և հեշտությամբ է ենթարկվում սառը մշակման (կոփման)։ Այդ պատճառով էլ պղինձը դառնում է մարդկության ծանոթ առաջին մետաղը։ Հավանական է, որ կրակի օգնությամբ մետաղն ապարից զատելու շատ կարևոր գյուտը պատահականության և սուր դիտողականության արդյունք լինի։ Օջախի պատի մեջ դրված պղնձաքարը՝ բարձր ջերմաստիճանի պայմաններում, հեշտությամբ կարող էր հալվել։ Այդ դեպքում անջատված պղինձն իբրև ավելի ծանր նյութ, պետք է նստեր օջախի հատակին և աչք ծակեր «տարօրինակ» առաջացման երևույթով։ Պատահականորեն ստացված նոր նյութի՝ առաջին մետաղի հատկությունններին ծանոթանալուց հետո, դժվար չէր զանազանել թե՛ պղնձի հանքաքարը և թե՛ պղնձահանքի օքսիդացած ջղերը, որոնք հաճախ գտնըվում են երկրի մակերեսին և այդ պատճառով էլ անչափ շատ են օգտագործվել նախնադարյան պղնձագործների կողմից։








Հալաֆյան տիպի նրբախեցի անոթներ.
Թեղուտ

23 *T. Burton-Brown*, Excavations in Azerbaijan, էջ 175—180։

*Մետաղաձուլության ծագումն ու հաստատումը, տնտեսության ճյուղերի և հասարակական կառուցվածքի որոշակի առաջադիմական տեղաշարժերը, մյուս կողմից նյութական արտադրության մի քանի ճյուղերում ուշ նեոլիթյան ավանդույթների պահպանումը լիովին իրավունք են տալիս մ. թ. ա. V հազարամյակի վերջերի և IV հազարամյակի վաղերկրագործական մշակույթը անվանել էնեոլիթյան՝ պղնձե-քարեդարյան, մանավանդ, որ Առաջավոր Ասիայի մի շարք վայրերում մետաղի արտադրական օգտագործումը հայտնի էր տակավին մ. թ. ա. VI հազարամյակից սկսած։ Այդպիսի հուշարձանների թվին են պատկանում Չաթալ-Հույուքը, որի տասը շերտերը ռադիո-ածխածնային մեթոդի օգնությամբ թվագրվում են մ. թ. ա. 6500—5700 թվականներով[24], և Հաչիլարը, որը ժամանակագրական տեսակետից անմիջապես հաջորդում է Չաթալ-Հույուքին և իր ինը շերտերով վերագրվում մ. թ. ա. 5700—5000 թվականներին։ Հաչիլարի 6-րդ շերտից սկսած հանդիպում են պղնձաքարի հանույթի զգալի մնացորդներ[25]։ Այլևս չենք խոսում մ. թ. ա. V—IV հազարամյակներին վերաբերող Թեփե-Սիալկի[26], Թեփե-Հիսարի[27] և Հալաֆյան[28] հուշարձանների մասին, ուր հանդիպում են մետաղե գործիքների ու զենքերի համեմատաբար զարգացած տեսակներ։ Կարևոր է նշել նաև այն, որ մի խումբ հնագետների կարծիքով, Փոքր Ասիան և Հայկական բարձրավանդակը եղել են մետաղահանության ու մետաղամշակման ամենանախնական կենտրոնները, որտեղից մետաղարդյունաբերության արտադրանքը ներթափանցել է Ասորիք, Պաղեստին և Հյուսիսային Միջագետք[29]։ Անկասկած, վաղ երկրագործական տնտեսության շրջանակներում մետաղե գործիքների կիրառումը և նրա դերն ու տեսակարար կշիռը դեռևս սահմանափակ էին։*





**Հալաֆյան տիպի նրբախեցի անոթներ. Թեղուտ**

---

[24] *Տե՛ս J. Mellaart,* Excavations at Çatal-Hüyüc, AS, XIV 1964, *էջ 39—42։*

25 *Տե՛ս նույն տեղում։*

[26] *Տե՛ս R. Ghirshman,* Foullles de Sialk, Paris, 1939, *հատ. 1, տախ.* XXIII—XXXIV։

[27] *Տե՛ս E. Schmidt,* Excavations at Tepe-Hissar, Philadelphia, 1937, *էջ 205։*

[28] *Տե՛ս Oppenheim,* Der Tell-Halaf, Berlin, 1934, *նկ. 48։*

29 *Տե՛ս А. А. Иессен,* Кавказ и Древний Восток, *էջ 6 և ծանոթագրությունները։*

**Քարե գործիքներ:** *Էնեոլիթյան ժամանակաշրջանի գործիքների ու զենքերի գերակշռող մասը պատրաստվում էր քարի տարբեր տեսակներից (կայծքարից, վանակատից, դիորիտից, բազալտից և այլն)՝ նեոլիթյան արտադրական ավանդույթների հիման վրա։ Սակայն բուն նեոլիթյան գործիքների համեմատությամբ պղնձե-քարեդարյան ժամանակաշրջանի շինվածքները՝ պատրաստման տեխնիկայի ու ձևերի բազմազանության տեսակետից, բավականաչափ աղքատիկ էին։*

*Մ. թ. ա. V և IV հազարամյակների հնավայրերում հայտնաբերված մի քանի հարյուր քարե գործիքների մեծ մասը զանազան մեծության (2—20 սմ) կտրիչների, դանակների, մանգաղների, գայլիկոնների ներդիրներ են՝ պատրաստված երկարուկ քառանկյունաձև, մասամբ եռանկյունաձև շեղբերից, որոնց բանող եզրերը սուր, անմշակ են կամ ունեն միակողմանի ու երկկողմանի նուրբ հարդարում։ Համեմատաբար քիչ են նետերի կամ տեգերի եռակող ծայրերը։ Քարե այս գործիքները պատրաստվում էին ամենուրեք մեծ քանակությամբ, այդ պատճառով էլ բնակատեղիներում պատրաստի գործիքները ուղեկցվում են վանակատի ու կայծքարի պրիզմատիկ միջուկներով և արտադրական բազմահազար մնացորդներով։ Հայկական լեռնաշխարհի տարբեր ծայրամասերում՝ Շամիրամ-Ալթիում, Մխլու-Թափայի, Էջմիածնի, Քյուլ-Թափայի ստորին շերտերի և այլ հնավայրերի վերը նկարագրված գործիքները էնեոլիթյան միասնական մշակույթի արգասիքներ են։*

*Բնորոշ է, որ այս տիպի գործիքները հանդիպում են Չաթալ-Հույուքի[30] և Հաջիլարի[31] վերին և Հասունայի[32] ու Հալաֆի[33] ստորին (3—5-րդ) շերտերում, որոնք շերտագրական ու ժամանակագրական հստակ պատկեր են ներկայացնում։*

*Այսպիսի ընդհանրություններ նկատվում են նաև ոսկրե գործիքների, խեցեղենի ու նյութական կուլտուրայի այլ առարկաների համադրության ընթացքում։ Հղկված գործիքներն ու զենքերը համեմատաբար քիչ են։ Շամիրամ-Ալթիի, Թեղուտի, Քյուլ-Թափայի և այլ հուշարձանների պեղումներից հայտնի են փոքր չափի բազալտե աղորիքներ և տրորիչներ, մուրճեր, սեպաձև կացիններ կամ բրիչներ, մարմարանման ավազաքարից ու բազալտից պատրաստված տանձաձև, կլոր, կիսագնդաձև գուրզեր՝ կենտրոնական անցքով, ուղղանկյուն փոքրիկ տախտակներ, իլիկի կրկնակոնաձև կամ կլոր գլուխներ և այլն, և այլն։ Շամիրամ-Ալթիի պեղումների ընթացքում ձեռք են բերվել նաև հղկված կայծքարից պատրաստված եզակի փոքրիկ դանակներ և դիորիտի զանգվածից շինված մի փոքրիկ քարե կացին՝ եղջյուրե կոթի վրա ամրացված։ Գործիքների ու զենքերի այս տեսակները հայտնի են ողջ Արևելքում։ Դրանք առանձնապես զարգացել և լայնորեն տարածվել են Հայկական լեռնաշխարհի մ. թ. ա. III հազարամյակի բնակավայրերում։*

---

30 *Տե՛ս J. Mellaart*, Excavations at Çatal-Hüyüc, AS, XIV, 1964, *տախտակ 47—49։*

31 *Նույնի հաշվետվությունները Հաջիլարի մասին տե՛ս* Excavations at Haçilar, AS, VIII, 1958, *էջ 127—153,* IX, 1959, *էջ 51—95,* X, 1960, *էջ 67—104,* XI, 1961, *էջ 35—75։*

32 *Տե՛ս Safar*, Tell Hassuna, JNES 1945, IV, № 4, *նկ. 26։*

33 *Տե՛ս Oppenheim*, Der Tell-Halaf, *նկ. 48.*



**Խեցեգործություն։** Էնեոլիթյան Հայաստանի նյութական արտադրության բնագավառներից մեկն էլ խեցեգործությունն էր, որի բուռն զարգացումը պայմանավորված էր երկրագործության և անասնապահության ընդհանուր վերելքով։ Զունենալով հազարամյակների արտադրական փորձ ու ավանդույթներ, V—IV հազարամյակներում խեցեգործությունը Առաջավոր Ասիայում և Կովկասում արագորեն հասավ զարգացման համեմատաբար բարձր մակարդակի։ Գունազարդ ու հասարակ խեցեղենի տարբեր տեսակները հարյուրամյակների ընթացքում հաջորդաբար փոխարինում էին իրար՝ կապված արտադրության զարգացման, նյութական մշակույթի այս կամ այն օջախի բուռն առաջադիմության, մշակութային փոխառումների ու փոխազդեցությունների, ցեղային տեղաշարժերի, փոխանակության և այլ երևույթների հետ։




Օբեյդյան տիպի նրբախեցի անոթներ. Թեղուտ

Տավրոսն ու Ռշտունյաց լեռները, Եփրատը, Տիգրիսն ու Կովկասյան լեռնաշղթան, երբեք անանցանելի արգելքներ չեն եղել մշակութային տեղաշարժերի ու փոխազդեցությունների ճանապարհին։ Խարբերդ—Մալաթիայի շրջանները Հյուսիսային Միջագետքի, Ամուկի (Անտիոքի) հովտի և Կիլիկիայի հետ կապվում են Եփրատ գետով, որը հասսունյան և հալաֆյան արտադրանքի ներթափանցման գլխավոր ուղին էր։ Հեքիմհանի մոտ՝ Մալաթիայի ու Սեբաստիայի ճանապարհին, Արգուվանում, Հինձորում (Խարբերդից 11 կմ արևմուտք) հանդիպում են հասսունյան, հալաֆյան և մերսինյան տիպերի գունազարդ խեցիների բնորոշ օրինակներ, որոնք աներկբայորեն ցույց են տալիս, որ Խարբերդի դաշտավայրը, Մալաթիայի, Արգուվանի, Հեքիմհանի միջև ընկած տարածությունները Հյուսիսային Ասորիքի և Միջագետքի հետ պատմական շփման մեջ են եղել մ. թ. ա. V հազարամյակի ընթացքում։

*Արարատյան դաշտավայրի ծայր հարավ-արևելյան հուշարձանները որոշակի զուգահեռներ ունեն ինչպես միջագետքյան, այնպես էլ Պարսկահայքի մերձուրմյան շրջանների հետ (Գեոյ-Թափա, Պիշիլի-Թափա), իսկ Մուղան—Ղարաբաղի ծայրամասային մարզը կապվում է, ըստ երևույթին, մի կողմից Արարատյան, մյուս կողմից՝ Հյուսիսային Կովկասի դաղստանյան շրջանների հետ։ Թեղուտի երկրագործական բնակավայրում բնորոշ տեղական կերամիկայի հետ երբեմն հանդիպում են ինչպես հալաֆյան, այնպես էլ օբեյդյան (IV հազարամյակի) մշակույթներին բնորոշ խեցեղենի տեսակներ։ Խեցեղենի վերը թվարկված տիպերը վերաբերում են մ. թ. ա. V հազարամյակի վերջին և IV հազարամյակին։*



Հարդախառն «տեքստիլային» տիպի գունազարդ խեցեղեն. Թեղուտ

*Սակայն կավե ամանների արտադրության մեջ գլխավորը տեղական կերամիկան էր, որը տարբեր ժամանակներում և տարբեր վայրերում առանձնահատուկ երանգներ ու յուրահատկություններ է ունեցել։ Այսպես, Հայկական լեռնաշխարհի արևմտյան շրջաններում (Խարբերդ, Մալաթիա, Բալու, Հինձոր, Հեքիմհան) գերակշռում է բաց մակերեսով և կարմիր նախշազարդով կոպիտ ու ոչ լրիվ թրծված խեցեղենը, ինչպես և հասարակ, ոչ գունազարդ կերամիկան։ Ալբիստանում՝ Եփրատից արևմուտք, Մալաթիայից հյուսիս, գերակշռում է ավելի գորշ փայլեցված խեցեղենը. կան նաև եղջերվենագույն արտադրանքի նմուշներ, որոնք համադրվում են Մարաշի հարթավայրի կերամիկայի հետ և տարածվում Արևելքում՝ մինչև Արծն—Կարնո շրջանը[34]։*

*Արևելյան Հայաստանի՝ մ. թ. ա. IV հազարամյակին պատկանող խեցեղենի արտադրության մեջ նկատվում են տեխնիկական առաջընթացի շատ գծեր, թեև արտաքնապես այն քիչ է փոխվում։ Արարատյան դաշտավայրի ու ներկայիս Ադրբեջանի արևմտյան շրջանների հուշարձաններում բաց մակերեսով կերամիկայի հետ մեծ մասամբ հանդիպում է կարմիր կամ վարդագույն մակերեսով, սև, շագանակագույն, կարմիր նախշերով զարդարված խեցեղեն։*

---

[34] *Արևմտահայաստանյան. վաղ խեցեղենի դասակարգումը տե՛ս* C. A. *Burney*, Eastern Anatolia in the Chalcolitic and Early Bronze Age, *էջ 137—161։*

Վանի երկրագործական օաղիսի խեցեգործների արտադրանքը, որ ծագում է Շամիրամ-Ալթիի եռաշերտ բնակավայրերից, և համապատասխանորեն ընդգրկում է նյութական մշակույթի զարգացման հաջորդական երեք փուլերը, մի տեսակ կապող օղակ է հանդիսանում մի կողմից Միջագետքի, Արևմտյան ու Արևելյան Հայաստանի և մյուս կողմից Իրանական սարահարթի ժամանակագրորեն տարբեր հուշարձանների միջև[35]։ Ինչպես վերը նշվեց, Շամիրամ-Ալթիի ստորին շերտի համար բնորոշ է փայլեցված գունազարդ կերամիկան, որն իր գերազանց որակով չի տարբերվում միջագետքյան նմուշներից և ստույգ զուգահեռներ ունի Արարատյան դաշտի Թեղուտի և Նախիջևանի Քյուլ-Թափայի բնակավայրերի կավե գունազարդ ամանեղենի հետ։ Խոսքը գնդաձև, փոքր կամ միջին ծավալի երկարավիզ, նրբախեցի սափորների մասին է, որոնց արտաքին, երբեմն էլ ներքին մակերեսները զարդարված են կարմրափայլ եռանկյունի շեվրոններով ու շեղանկյուններով, ուղղաձիգ գծերով ու պուտերով, այսպես կոչված «քայլող» դրվագանախշերով։ Շամիրամ-Ալթիի երկրորդ շերտն իր փայլեցված, չգունազարդված խեցեղենով զուգահեռներ է գտնում Թեղուտի և Նախիջևանի Քյուլ-Թափայի բնակատեղիներում։ Նրա վերջին էնեոլիթյան հորիզոնը բնորոշվում է հարդախառն կերամիկայով, որը զարդարված է անփայլ կարմիր ներկի ալիքավոր գծերով։ Նույն տիպի խեցեղենի գունազարդ ու աննախշ տեսակներ հանդիպում են ամբողջ Հայկական լեռնաշխարհում՝ Տարոնից մինչև Արարատյան դաշտ ու Մուղան-Ղարաբաղի տափաստանը։ Անդրկովկասի սահմաններից դուրս էլ այն տարածվում է Դաղստանի և Պարսկահայքի մերձուրմյան շրջաններում (Գեոյ-Թափա)։

Ուսումնասիրողների մի զգալի մասը, հենվելով խեցեղենի զարդանախշերի նմանության վրա, պնդում է, թե ալիքավոր գրվագանախշով հարդախառն խեցեղենը ծագում է Իրանի Սիալկ—3, կամ Թեփե-Հիսար—1 մշակույթներից։ Սակայն միանգամայն հնարավոր է, որ Հայկական լեռնաշխարհի և Արևմտաիրանական սարահարթի խեցեղենի արտադրությունը ունեցած լինի միասնական, ավելի նախնական մի ակունք, որից սնված լինեն ժամանակագրորեն համընկնող կամ նախորդող ու հաջորդող մշակույթի օջախները, մանավանդ, որ իրանական կավանոթներն իրենց ձևերով ու զարդանախշերի մոտիվների զգալի մասով չեն զուգադիպում Հայկական լեռնաշխարհի կամ Լեվանտական աշխարհի խեցեղենին։ Այս կապակցությամբ ճշգրտման կամ վերանայման կարիք ունի գիտական շրջաններում լայնորեն տարածված այն թեզը, ըստ որի Շամիրամ-Ալթիի 3-րդ շերտում շոշափելի ձևով արտահայտված միջագետքյան մշակութային աղերսները հետագայում փոխարինվում են իրանական ազդեցություններով, և հյուսիս-իրանական մշակութային գոտին մ. թ. ա. IV հազարամյակի վերջում տարածվում է Հայկական լեռնաշխարհի գրեթե ողջ տերիտորիայի վրա։

Առանձնապես կարևոր է այն հանգամանքը, որ Թեղուտի բնակավայրում ալիքավոր զարդանախշերով կերամիկան ուղեկցվում է խեցեղենի հալաֆյան և

---

35 Շամիրամ-Ալթիի խեցեղենը տե՛ս Խ. Սամուելյան, Հին Հայաստանի կուլտուրան, հատ. 1, էջ 134—136, նկար 41—45։

դերազանցապես օբսիդյան տիպերով, որոնք, անկասկած, վերաբերում են ավելի վաղ ժամանակների, քան Թեփե-Սիալկի 3-րդ շերտը[36]։

Կավանոթների ձևերի մեջ գերակշռում են տարբեր մեծության ու խորության կիսագնդաձև կամ բաց քթեղանները, տակառաձև անոթները, երկարավիզ սափորները, ծակոտկեն կողերով կրակարաններն ու սաչերը, բաց դեղնավուն կարասները և վաղ բրոնզեդարյան սև խեցեղենի մի քանի նախատիպեր, որոնք իրանական հարդախառն խեցեղենի հետ կապվում են միայն պատրաստման տեխնիկայով. իսկ այս կարող էր շատ ընդհանուր լինել ողջ Արևելքի համար, որտեղ բրուտի դուրգերին ու վառարաններին զուգընթաց լայնորեն կիրառվում էին նախնադարյան արհեստների պարզունակ ավանդույթներն ու հնարքները։

Առաջավոր Ասիայի և Հայաստանի նյութական արտադրության մեջ դիտվող սերտ կապերն ու համագործակցությունը պարարտ հող էին ստեղծում այս շրջաններում մշակութային և տնտեսական զարգացման այնպիսի մակարդակի համար, որի նմանը չէր դիտվում հին քաղաքակրթության և ոչ մի օջախում։ Հյուսիս Միջագետքյան և Հայաստանյան հզոր օջախներին են պատկանում մետաղաձուլության, խեցեգործության, անիվի, բրուտագործական դուրգի, կուլտուրական հացարույսերի մշակման և մի ամբողջ շարք այլ կարևոր հայտնագործությունների պատիվը, հայտնագործություններ, որոնք մուծվեցին համամարդկային մշակույթի գանձարանը։ Այս տարածությունների վրա բնակվող ցեղերի ստեղծած մշակույթը, ինչպես Գորդոն Չայլդն է գտնում, իր պատկառելի հնությամբ և արժանիքներով կարող է մրցել հարավային Միջագետքի ու Նեղոսի հովտի հնագույն մշակույթների հետ։

Երկրագործության, անասնապահության, արհեստների զարգացումը հրամայական տեղաշարժեր պիտի առաջացնեին նաև հասարակական կյանքում։ Կասկած չկա, որ այս պայմաններում մայրիշխանական տոհմական համայնքը իր տեղը զիջում է հայրիշխանական հասարակական կազմավորումներին, տեղի է ունենում տոհմերի ու ցեղերի հետագա կոնսոլիդացում, ցեղային ժամանակավոր հզոր միությունների կազմավորում։ Հայկական լեռնաշխարհում սկըսվում է որոշակի ցեղերի ու ցեղախմբերի էթնիկական բյուրեղացման բացառիկ կարևոր պրոցեսը։

---

[36] Առաջավոր Ասիայի վաղ խեցեգործության պատմա-համեմատական ուսումնասիրությունը տե՛ս A. Perkins, The comparative archaeology of Early Mesopotamia գրքում։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՎԱՂ ԲՐՈՆԶԻ ԴԱՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. ՎԱՂ ԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՕՋԱԽՆԵՐԸ

Վաղ բրոնզեդարյան բնակատեղիները: *Մ. թ. ա. III հազարամյակի հնագիտական հուշարձանները ուրվագծում են Հայկական լեռնաշխարհի տոհմացեղային հասարակության ծաղկման ժամանակաշրջանը։ Երկրի արտադրողական ուժերի, տնտեսության հիմնական ճյուղերի՝ երկրագործության, անասնապահության և արհեստների զարգացման շնորհիվ տեղարնակ համայնքների հասարակական կյանքը թևակոխում է հայրիշխանական-նահապետական հարաբերությունների զարգացման ոլորտը։*

*Հայաստանի մշակույթի զարգացման այս նոր փուլի ուսումնասիրությունը առանձնահատուկ նշանակություն ունի Առաջավոր Ասիայի և Կովկասի երկրագործական ցեղերի ու ժողովուրդների պատմության համար։ Հանդիսանալով համամարդկային մշակույթի հնագույն բնօրրաններից և վաղերկրագործական տնտեսության զարգացման առաջավորասիական հիմնական օջախներից մեկը, Հայկական լեռնաշխարհը մ. թ. ա. III հազարամյակում աչքի էր ընկնում իր մշակույթի յուրահատկությամբ և կուռ միասնությամբ։ Այս մշակույթի ազդեցության ոլորտների մեջ են ընկնում այժմ ոչ միայն Հյուսիսային Կովկասի համեմատաբար հետամնաց շրջանները, այլև Ասորիք—Պաղեստին—Կիլիկիայի և Պարսկահայքի երբեմնի առաջատար ծայրագավառները, որոնք հնում երկրագործական մշակույթի աչքի ընկնող կենտրոններ էին, սակայն մ. թ. ա. III հազարամյակում որոշ չափով հետադիմում են։*

*Մ. թ. ա. III հազարամյակի տարբեր փուլերում առաջացած վաղբրոնզեդարյան բնակատեղիները, դամբարանադաշտերն ու ամրոցները ծածկում են Հայկական լեռնաշխարհի ամբողջ տերիտորիան՝ Եփրատի վերին հոսանքներից, Պոնտոսի, Անտիտավրոսի, Հայկական Տավրոսի ստորոտներից մինչև Փոքր Կովկասի գագաթները, Քուռ և Արաքս գետերի հոսանքները։ Մշակութային նույնօրինակ, բայց տեղային օջախներ են ստեղծվում Արևելյան Վրաստանի, Հարավային Օսեթիայի, Արևմտյան Ադրբեջանի սահմաններում։ Կովկասյան լեռնաշղթայից այն կողմ՝ հարավի ազդեցության տակ, առաջանում են վաղ երկրագործական մշակույթի օջախներ։*

*Ելնելով Հայկական լեռնաշխարհում հայտնաբերված վաղբրոնզեդարյան հարյուրավոր հնագիտական հուշարձանների տեղագրությունից, այժմ կարելի*

*է հաստատել, որ Արարատյան դաշտավայրը, Կոտայքի շրջանը, պատմական Մաղաղ գավառը (Հրազդանի շրջան), Սևանի ավազանը, Տաշիր-Ձորագետ-Շիրակի[1], Վանանդի, Բագրևանդի (Ալաշկերտի), Ձալդրանի հովիտները, Կարնո, Վանի, Խարբերդի, Մալաթիայի շրջանները, ինչպես նաև Բարբերդի, Մանազկերտի, Հարքի (Բուլանըխի), Տարոնի դաշտավայրերը և մի քանի կից (դեռևս քիչ ուսումնասիրված) շրջաններ մ. թ. ա. III հազարամյակում ունեցել են համեմատաբար խիտ բնակչություն և եղել են երկրագործական-անասնապահական բարձր զարգացած մշակույթի օջախներ[2]։*

**Արարատյան դաշտավայրը՝ վաղբրոնզեդարյան մշակույթի հիմնական օջախը Հայաստանում**— *Մ. թ. ա. III հազարամյակի երկրագործական մշակույթի կարևորագույն օջախը Արարատյան դաշտավայրն էր, Հայկական լեռնաշխարհի ամենաընդարձակ ու ցածրադիր հովիտը, որը աչքի էր ընկնում արտակարգ բերրիությամբ ու հարստությամբ։ Այստեղ, Արաքսի ափերին են գտնվում մ. թ. ա. V—IV հազարամյակների վաղ երկրագործական բնակավայրերն ու վաղբրոնզեդարյան ժամանակաշրջանի տասնյակ բնակատեղիներ, Արաքսի աջ ափին՝ Սուրմարիի ու Յոլակերտի (Իգդիրի) հովիտներում (Մալաքլու, Գեկչելի, Յայջի), ձախ ափին՝ Էջմիածնի (Քյուլ-Թափա, Շրեշ-բլուր, Արագած և այլն), Հոկտեմբերյանի (Արմավիր, Արևիկ, Ղարա-Թափա և այլն), Արտաշատի (Դվին), Աշտարակի (Աղթամիր, Ֆրանկանոց) և այլ շրջաններում։ Նշված բնակատեղիների մի զգալի մասը ծագել է դեռևս IV հազարամյակի վերջերին, որպես էնեոլիթյան շրջանի արգասիք և հարատևել ողջ III հազարամյակի ընթացքում։ Այդ է պատճառը, որ Արարատյան դաշտավայրը ներկայանում է որպես վաղբրոնզեդարյան մշակույթի այն հիմնական օջախը, որտեղ ծայր առավ և ապա ամբողջ լեռնաշխարհով մեկ տարածվեց III հազարամյակի յուրօրինակ մշակույթը։*

**Շենգավիթի բնակատեղին:** *Արարատյան դաշտավայրի և ընդհանրապես Հայաստանի ցածրադիր հովիտների վաղբրոնզեդարյան բնակատեղիները արհեստական բլուրներ են՝ բաղկացած կավակերտ հյուղակների աղյուսաշար որմերի մնացորդներից և մոխրի թանձր շերտերից։ Դրանք , որպես կանոն, զետեղված են համեմատաբար բարձրադիր վայրերում, գետերի, գետակների, առվակների ափերին կամ նրանցից ոչ հեռու, տափարակ ու բարեբեր դաշտերի մեջ, գրավում են մի քանի հեկտար տարածություն և երբեմն ամրացվում աղյուսաշար կամ քարե հզոր պարսպապատերով (Շենգավիթ, Շրեշ-բլուր)։ Արարատյան դաշտավայրի ամենաերկարակյաց հուշարձաններից մեկը Շենգավիթ կոչվող բնակատեղին է, Երևանի հարավ-արևմտյան մասում, Հրազդանի ձախ ափին[3]։ Այն զբաղեցնում է 6 հեկտար տարածությամբ անկա-*

---

1 *Տե՛ս Б. А. Куфтин,* Урартский колумбарий у подошвы Арарата и куро-аракссний энеолит, ВМГ, т. XIII,— В, Тбилиси, 1943; *А. А. Мартиросян,* Армения в эпоху бронзы и раннего железа, Ереван, 1964.

2 *Տե՛ս* Է. Վ. Խանզադյան, *Հայկական լեռնաշխարհի մշակույթը մ. թ. ա. III հազարամյակում, Երևան, 1967։*

3 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Поселения медного века в Армении, СА, XI, 1949, *էջ 172, նաև՝* Ս. Բայբուրդյան, *Շենգավիթի կուլտուրան (ձեռագիր), ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի արխիվ։*



Վաղբրոնզեդարյան երկրագործական գործիքներ. Շենգավիթ, Գառնի

*նոն ձվաձև մի հարթակ, գետի մակերևույթից մոտ 12 մ բարձրության վրա։ Բնակատեղին շրջափակված է անմշակ քարերից կառուցված հզոր պարսպով, որն ունի աշտարակներ, որմնահեց ելուստներ և դեպի ջուրը տանող ստորերկրյա սալածածկ գետնուղի։ Պարսպից դուրս տարածվում է Շենգավիթի դամբարանադաշտը[4]։ Պարսպապատի մեջ առնված բնակատեղին կառուցապատված է առանց որոշակի հատակագծի՝ կացարանների ու տնտեսական կառույցների խառնիխուռն դասավորությամբ, անկանոն և ծուռումուռ նրբանցքներով։ Բնակատեղին ունի այսպիսի կառույցների միմյանց հաջորդող 4 շերտ, որոնք իրարից անջատվում են 20—25 սմ հաստություն ունեցող խավերով։ Ժամանակագրական տարբեր շերտերի առկայությունը վկայում է, որ Շենգավիթի բնակավայրում կյանքը հարատևել է դարեր շարունակ։ Բոլոր շերտերում հայտնաբերված կառույցները բաղկացած են գավիթներից, կլոր կացարաններից ու հարակից քառանկյունի տնտեսական շինություններից, որոնց հարդախառն աղյուսե պատերը հենվում են քարե հիմնապատերի վրա։*

*Շենգավիթի կառույցները վկայում են ինչպես շինարարական դարավոր ավանդույթների հարատևման, այնպես էլ շինարարության ու պրիմիտիվ ճարտարապետության որոշակի առաջընթացի մասին։ Ի տարբերություն V—IV հազարամյակների կառույցների, Շենգավիթի կացարանները բավական ընդարձակ են ու բարեկարգ։ Շինարարական աղյուսը ստանում է ավելի հաստատուն ձև և ստանդարտ չափեր, քարե շեմեր և ատիճաններ ունեցող մուտքերը զետեղվում են գերազանցապես արևելյան կողմում, հատակները պատրաստվում են մանր կոպիճի համակենտրոն շարվածքով, ապա ծեփվում կամ աղյուսապատվում են, պատերը դրսից ու ներսից հարդարվում են նուրբ կավե շփոթով, կացարանի շրջագծով մեկ պատրաստվում են աղյուսե նստարաններ ու մահիճներ, կացարանի կենտրոնում, որպես կանոն, զետեղվում է բարձրարվեստ պաշտամունքային օջախը, այդ մասերում շինվում են քարե օջախներ և այլն, և այլն։*



**Մանագործական գործիքներ, կոկիչ և ներուններ. Գառնի**

*Կլոր կացարաններն ունեին կոնաձև, իսկ նրանց կից կառույցները՝ տափակ տանիքներ։ Բնակարանային նման կոմպլեքսների հայտնաբերումը Գառ-*

[4] *Տե՛ս* Ս. Հ. Սարդարյան, *Նախնադարյան հասարակությունը Հայաստանում*, էջ 171—182։

*նիում, էլարում, Քաղսիում, Արմավիրի Մոխրաբլրում և այլուր գալիս է հաստատելու, որ Շենգավթի կառուցողական արվեստը համատարած երևույթ էր ժամանակակից ողջ Հայաստանի համար, որի հիմքում ընկած էին Հայկական լեռնաշխարհի[5] և Առաջավոր Ասիայի[6] VI—IV հազարամյակների կառուցողական արվեստի սկզբունքներն ու տեխնիկական հմտությունը։*

*Այդուհանդերձ, Հայաստանի, Վրաստանի, Առաջավոր Ասիայի տարբեր մարզերի միաժամանակյա կառույցներն ի հայտ են բերում մի շարք յուրահատուկ գծեր, որոնք, ըստ երևույթին, էթնիկական աշխարհագրական կամ բնակլիմայական տարբեր պայմանների ցուցանիշներ են։ Հատկանշական է, օրինակ, որ Վրաստանում հայտնաբերված նույն դարաշրջանին և նույն մշակույթին պատկանող կացարանները գերազանցապես քառակուսի են, ունեն տափակ ծածկ, հում աղյուսից կամ հյուսածո հիմնակմախքից պատրաստված պատեր (Քվացխելեբի, Գուդաբերտղա-Ցիխիս-գորա, Ամիրանիս-գորա և այլն)[7]։*

**Նախիջևանի Քյուլ-թափան:** *Նույնպիսի հարուստ հնագիտական նյութ են ընձեռում Հայաստանի և Անդրկովկասի բազմաթիվ այլ բնակատեղիներ, որոնց մեջ, ինչպես վերը տեսանք, առանձնահատուկ տեղ է գրավում Արարատյան դաշտի հարավ-արևելյան անկյունում՝ Նախիջևան գետի ձախ ափին գտնվող Քյուլ-Թափա (բազմաշերտ) բնակատեղին[8], որը սովետական հնագետներին հնարավորություն ընձեռեց ընդհուպ մոտենալու Կովկասի IV—III հազարամյակների հնագիտական հուշարձանների դասակարգման և թվագրման հարցերին։ Քյուլ-Թափայի երկրորդ վաղբրոնզեդարյան շերտը համադրվեց Պարսկահայքում՝ Կապուտան լճի արևմտյան ափին գտնվող Գեոյ-Թափա բնակավայրի վերին հորիզոնների հետ (մ. թ. ա. 3200—2800 թվականներ), այնուհետև ռադիոածխածնային մեթոդով թվագրվեցին Քյուլ-Թափայի նույն շերտի (2920±90) և Քվացխելեբիի ստորին շերտի (2800±90) նյութերը[9]։ Անդրկովկասի և Արևմտյան Հայաստանի մի խումբ այլ հուշարձաններ պատմա-համեմատական տիպաբանական մեթոդի օգնությամբ դասվեցին III հազարամյակի երկրորդ կեսի բնակավայրերի շարքը[10], իսկ Հայկական լեռնաշխարհի ծայր արևմտյան բնակավայրերի հնագիտական կոմպլեքսները համապատասխան զուգահեռների միջոցով կապվեցին Ասորիք—Պաղեստինի Կիրբետ-Կերակյան, Միջագետքի վաղդինաստիական հորիզոնների և եգիպտական 3—4-րդ դինաստիաների հետ, որոնք ընդգրկում են մոտ մեկ հազարամյա*

---

5 *Տե՛ս* Ռ. Մ. Թորոսյան, *Թեղուտի բնակատեղիի պեղումները, ՊԲՀ, 1968, № 1, էջ 291—302։*

6 *Տե՛ս E. A. Speiser*, Excavations at Tepe-Gavra, Philadelphia. 1935, *աղ.* VIII. *M. Mallowan*, Tell Arpachia „Iraq", II, 1935, *էջ 29—30։ I. Garstang*, L'art néolitique a Iericho, „Syria", 1935, v. XVI, *էջ 353—357։*

7 *Տե՛ս О. М. Джапаридзе,* К истории грузинских племен на ранней стадии медно-бронзовой культуры, Тбилиси, 1961 (на груз. яз.), *էջ 256։ А. И. Джавахишвили, Л. И. Глонти,* Урбниси, I, Тбилиси, 1962, *էջ 61։ Т. А. Чубинишвили,* Амиранис-гора, Тбилиси, 1963 (на груз. яз.), *էջ 94։ С. И. Надимашвили,* Раскопки городища Гудабертка—Цихисгора в 1956 г., Тбилиси, 1957.

8 *Տե՛ս О. А. Абибуллаев,* Некоторые итоги изучения холма Кюль-Тепе, *էջ 157—167։*

9 *Տե՛ս А. И. Джавахишвили, Л. И. Глонти*, Урбниси, *էջ 97։*

10 *Տե՛ս W. Lamb*, The Culture of North-East Anatolia, AS, IV, 1954, *էջ 30, L. A. Kosay, K. Turfan*, Erzerum karaz Raporu, TTKB, XXIII, 1959, 91, *էջ 349։*

հատված՝ մ. թ. ա. 3200 թվականներից մինչև մ. թ. ա. 2200—2100 թվականները[11]։





Գավաթ. Շրեշ-բլուր

**Հայկական լեռնաշխարհի ծայրամասային վայրերի բնակատեղիները:** *Հայկական լեռնաշխարհի նախալեռնային կամ լեռնային բնակատեղիներից շատերը վերաբերում են վաղբրոնզեդարյան մշակույթի ուշ շրջանին[12]։ Այսպիսի բնակավայրերով հարուստ է Տաշիր-Ձորագետի շրջանը և հատկապես Կիրովական քաղաքը (Դիմացի թաղ) իր շրջակայքի մեծ ու փոքր հնագիտական հուշարձաններով («Թագավորանիստ», «Մաշտոցի բլուր», «Քոսի ճոթեր» և այլն)։ Սրանք տեղավորված են իրար մոտ, շրջակայքի նկատմամբ գերիշխող բարձունքների վրա և իրենցից ներկայացնում են գետերով ու գետակներով*

---

[11] *Տե՛ս J. Mellaart*, Anatolian chronology in Early and middle bronze age, AS, VII, 1957, էջ 73։

[12] *Տե՛ս А. А. Мартиросян*, Армения в эпоху бронзы и раннего железа, էջ 24—47։

*շրջափակված զառիթափ հրվանդաններ։ Կարելի է ենթադրել, որ այս բոլոր բնակատեղիները պատկանելիս են եղել ցեղակից տոհմերի, որոնց ցեղային ուրույն հատկանիշներով օժտված լոկալ մշակույթը տարածման բավական լայն շառավիղներ է ունեցել։ Այս մշակույթը տարածվել է գերազանցապես գետահովիտներով՝ մի կողմից Ազատի հովտով դեպի Ղազախ (Բաբա-Դերվիշ) և մյուս կողմից՝ Դեբեդի հովտով (Ալավերդի, Շամլուղ, Արդվի, Ոռնակ) դեպի Խրամ գետի (Թրիալեթի-Բեշտաշեն, Ոզնի) և Կուրի հովիտները (Թբիլիսի-Սաբուրթալո)*[13]*։*

*Վերջին տարիներս վաղբրոնզեդարյան բնակավայրերի մի հարուստ խումբ է նշմարվում Վանի շրջակայքում, որն, ըստ երևույթին, բացահայտում է Հայոց ձորի երկրագործական օազիսի բարձր զարգացած մշակույթը։ Ցավոք, այդ հուշարձանները դեռևս ծրագրված ուսումնասիրության առարկա չեն դարձել և հրապարակված նյութերը առայժմ գոհացուցիչ համարվել չեն կարող*[14]*։*

*Վաղբրոնզեդարյան հուշարձանների մեծ թվով և միօրինակությամբ առանձնապես աչքի է ընկնում Արևմտյան Հայաստանի Խարբերդ—Մալաթիայի շրջանը*[15]*։*

*Հայկական լեռնաշխարհի տարբեր վայրերում ուսումնասիրված են նաև մի քանի այլ ուշագրավ բնակատեղիներ (Ջրահովիտ, Գառնի, Էլար, Մալաքլու, Արևիկ, Կառնուտ, Լենինական և այլն), որոնց մասին կխոսվի ստորև։*

*Այսպիսով, Հայկական լեռնաշխարհի հուշարձանների ուսումնասիրության միջոցով ուրվագծվում է իր բազմազանության մեջ միասնական ու ինքնատիպ մի մշակույթ։*

## 2. ՎԱՂԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՁԵՎԵՐԸ

**Երկրագործություն:** *Հնագիտական պեղումներով հայտնաբերված նյութերը պարզորոշ վկայում են, որ Հայկական լեռնաշխարհի տեղաբնակ ցեղերի հիմնական զբաղմունքը վաղբրոնզեդարյան ժամանակաշրջանում շարունակում էր մնալ երկրագործությունն ու անասնապահությունը։ Առաջավոր Ասիայի տերիտորիայում ուշ նեոլիթի և էնեոլիթի ժամանակաշրջանում ձևավորվող վաղերկրագործական օջախներից մեկը՝ Հայկական լեռնաշխարհը, մ. թ. ա. III հազարամյակում դառնում է երկրագործության բավականաչափ զարգացած շրջան Հին Արևելքի հյուսիսային ծայրամասում։*

*Հայաստանի վաղբրոնզեդարյան բնակավայրերը տեղադրված են գերազանցապես բարեբեր հովիտներում, դաշտավայրային և նախալեռնային շրջաններում։ Բնակատեղիների ու նրանց կից ցանքատարածությունների այսպիսի տեղադրությունը լայն հնարավորություններ էր ստեղծում մշակելի հողատարածությունների ոռոգման համար։ Արաքս, Եփրատ, Տիգրիս և այլ գետերն ու նրանց բազմաթիվ վտակները պրիմիտիվ ոռոգման անսպառ աղբյուր-*

13 Տե՛ս Է. Վ. Խանզադյան, *Հայկական լեռնաշխարհի մշակույթը մ. թ. ա. III հազարամյակում, էջ 127։*

14 Տե՛ս *Ch. Burney*, Eastern Anatolia in the Chalcolitic and Early Bronze Age, *էջ 178—187։*

15 *Տե՛ս նույն տեղում, էջ 193—203։*

ներ էին։ Նախալեռնային և լեռնային շրջաններում օգտագործվում էին հեղեղատների, լեռնային գետակների ձնհալքի ջրերը։ Արարատյան դաշտավայրի, Արագածի, Գեղմաղանի (Արմաղանի) շրջաններում պահպանվել են ոռոգման հնագույն առուների հետքեր։

Երկրի բարենպաստ բնակլիմայական պայմանների և պրիմիտիվ ոռոգման շնորհիվ վաղ բրոնզի դարում Հայաստանի երկրագործությունը թևակոխում է զարգացման մի փուլ, որին բնորոշ է տարատեսակ հացաբույսերի ցանքը և բերքի այնպիսի առատությունը, որը կարող էր ապահովել ոչ միայն տեղական համայնքների հիմնական սննդամթերքի պահանջը, այլև աճող անասնապահության կարիքները։

Շենգավիթի 1936 թվականի պեղումների ժամանակ № 2 կլոր կացարանի տարբեր հորիզոնների վրա միախառնված վիճակում հայտնաբերվել են ցորենի, գարու և վայրի մոլախոտերի խանձված հատիկներ[16]։ Ըստ պրոֆ. Մ. Գ. Թումանյանի, դրանք կլորահատիկ ցորենի, վեցշարք կլորահատիկ գարու և մոլախոտերի ութ տարատեսակի սերմեր են[17]։ Այս հացաբույսերը Շենգավիթում հայտնաբերվել են զգալի քանակությամբ՝ օջախների մոտ, մեծ կավամաններում և հացահատիկի հորերում[18]։ Բազմաթիվ հորեր՝ կիսով չափ լցված փտած հացահատիկով, բացվել են Էլարի հին բնակատեղիում[19]։ Ցորենի և գարու այրված հատիկներ հայտնի են նաև Նախիջևանի Քյուլ-Թափայից[20], Աղստև գետի հովտի Բաբա-Դերվիշ բնակատեղիներից[21] և այլ հնավայրերից։

Վաղբրոնզեդարյան հնավայրերում հայտնաբերվել են բազմաթիվ գործիքներ, որոնք ծառայել են հողի մշակմանը, բերքահավաքին, երկրագործական մթերքների վերամշակմանը և այլն։ Քոսի ճոթերից, Կողբից, Գառնիից հայտնի են մի քանի եղջյուրե բրիչներ, իսկ այլ հնավայրերում հանդիպում են երբեմն սեպաձև քարեր (Շրեշ-բլուր, Նախիջևանի Քյուլ-Թափա և այլն)[22], որոնք կարող էին օգտագործվել որպես խոփի ծայրապանակներ։ Քարե խոփերի առկայությունը և բրիչների սակավությունը հաստատում են, որ վաղբրոնզեդարյան Հայաստանում մ. թ. ա. III հազարամյակի սկզբներից, երկրագործության զարգացման նախնական էտապներին բնորոշ բրիչային հողամշակությունը մղվում է երկրորդ պլան, հանդես է գալիս պրիմիտիվ արորը, որի օգտագործումը, խոշոր եղջերավոր անասունների օգնությամբ, հասցնում է արտադրողականության բարձրացման նոր մակարդակի։ Լծկան անասունը լայնորեն օգտագործվում էր նաև բեռներ տեղափոխելու համար։ Այդ մասին են վկայում

---

16 Տե՛ս Ե. Բայբուրդյան, Շենգավիթի կուլտուրան (ձեռագիր), էջ 35։

17 Տե՛ս *М. Г. Туманян,* Культурные растения урартского периода в Арм. ССР. ИАНАОН, 1944, № 1—2, էջ 75—76, 79։

18 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, Л., 1949, էջ 32։

19 Տե՛ս *Е. Байбуртян,* Псевдо-неолитические поселения в Армении, СИИМК, Л., 1933, вып. 1—2, էջ 39, По поводу древней керамики из Шреш-блура, СА, III, 1937, էջ 209։

20 Տե՛ս *О. А. Абибуллаев,* Первые итоги раскопок Кюль-Тепе, Труды Музея истории Азербайджана, т. II, Баку, 1957, էջ 86—87։

21 Տե՛ս *Р. С. Исмайлов,* Из истории культуры западного Азербайджана, автореферат, Баку, 1967.

22 Տե՛ս Հայկական ՍՍՀ պետական պատմական թանգարանի ֆոնդ, ինվ. № 607, 1442/6, 121/10—15։





Սև փայլեցված թաս՝ արտաքին մակերեսին նուրբ գծային փորագրությամբ արված նախշերով, ներսից՝ բաց-դեղնավուն հիմնագույնի վրա կարմրագույն արագիլների ու օձերի նկարներ. Շենգավիթ

հնավայրերում հայտնաբերված եզան արձանիկները՝ վզի վրա լուծն ամրացնելու անցքով և սայլերի կավե մոդելներն ու անիվները, որոնք հանդիպում են ամբողջ Կովկասում և Առաջավոր Ասիայում։ Երկրագործության նոր մակարդակին համապատասխան փոխվում և զարգանում են նաև հնձի գործիքների տիպերն ու ձևերը։ V—IV հազարամյակների մանգաղների դանականման ներդիրները փոխարինվում են սայրերը մշակած, ատամնավոր ուժեղ ներդիրներով[23]։ Վերջապես հանդես են գալիս նաև առաջին մետաղե մանգաղները[24]։

Մ. թ. ա. III հազարամյակի բազմաթիվ բնակատեղիներում նկատելի է երկրագործական մթերքները վերամշակող գործիքների՝ սանդերի, սանդկոթերի, տարբեր տիպի տրորիչների և աղորիքների քանակական ու որակական խիստ աճը։







Կավե օջախ, պատվանդաններ. Շենգավիթ

Պրիմիտիվ ոռոգման կիրառումը, անասնապահության զարգացումը, երկրագործության մեջ խոշոր եղջերավոր անասունների օգտագործումը և գյուղատնտեսական գործիքների կատարելագործումը հանգեցնում են արտադրողական ուժերի և հասարակական արտադրության զգալի վերելքի, նախնադարյան համայնքի բարգավաճման ու նրա մշակույթի ծաղկման։ Հայաստանի նախնադարյան երկրագործությունը իր զարգացման տեմպով անցնում է Կովկասյան և առաջավորասիական նույն կացութաձևով ապրող շատ ու շատ շրջաններից, սակայն հասկանալի պատճառներով ետ է մնում Հարավային Միջագետքի և Եգիպտոսի պետական զարգացման շրջանը թևակոխած երկրների համեմատությամբ…

23 Տե՛ս Է. Վ. Խանզադյան, *Հետախուզական պեղումներ Կիրովականի մերձակայքում*, Տեղ. ՀԳԱՀԳ, 1962, № 5, էջ 81—82, նկ. 3, Խ. Սամուելյան, *Հին Հայաստանի կուլտուրան*, հատ. 1, աղ. 18, նկ. 33։

24 Տե՛ս *Б. Н. Аракелян,* Гарни, I, Ереван, 1951, էջ 25, նկ. 12։

թյամբ։ Երկրագործության զարգացման այդ նույն օրինաչափությունը դիտվում է նաև Հարավային ու Արևելյան Միջին Ասիայում, Իրանի հյուսիս-արևմտյան մասերում, Առաջավոր Ասիայի մի շարք այլ շրջաններում և նույնիսկ Հյուսիսային Միջագետքում։ Երկրագործության զարգացման համեմատաբար դանդաղ տեմպերը պետականություն չունեցող երկրներում բխում էր կանոնավոր ոռոգման սիստեմի բացակայությունից և համապատասխանորեն անդրադառնում էր նաև երկրի հասարակական զարգացման վրա։

Տափաստանային գոտու պայմաններում, առանձնապես աֆրիկա-ասիական մեծ գետերի հովիտներում, երկրագործության զարգացումն ընթանալով կանոնավոր ոռոգման և ագրոտեխնիկայի համեմատաբար բարձր մակարդակով, վաղդասակարգային հասարակության ու պետականության ծագման հիմք դարձավ Հին Արևելքի առավել զարգացած երկրներում[25]։ Այդ է պատճառը, որ Հայկական լեռնաշխարհում, Կովկասում, Հյուսիսային Միջագետքում, Միջերկրական ծովի Արևելյան ափերին, Իրանում, նույնիսկ հեռավոր Հնդկաստանում և էգեյան աշխարհում զգացվում էր շումերական մշակույթի ուժեղ ազդեցությունը՝ անմիջական փոխառումների, մշակութային ու տնտեսական կապերի ձևով։

**Անասնապահություն, որսորդություն, ձկնորսություն** — Վաղբրոնզեդարյան տնտեսության մեջ, երկրագործության հետ մեկտեղ, կարևոր դեր էր կատարում նաև անասնապահությունը։ Երկրագործության համեմատաբար բարձր զարգացումը մշտական ու հուսալի կերի բազա էր ստեղծում խոշոր ու մանր եղջերավոր անասունների համար, իսկ երկրագործության մեջ սրանց օգտագործումը նպաստում էր աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Բացի դրանից, անասունների առկայությունը բնակչությանն ապահովում էր մսով ու կաթնամթերքով։

Բազմաթիվ հնավայրերի պեղումներով հայտնաբերված մեծաքանակ նյութերի մեջ հանդիպում են խոշոր ու մանր եղջերավոր կենդանիների, ինչպես նաև ձիու, խոզի և շան ոսկորներ։ Հայտնաբերված եզան, կովի, գոմեշի ոսկորները պատկանում են գերազանցապես ցածրահասակ կենդանիների, որոնք առայժմ կրում են իրենց վայրի նախորդներից ժառանգած շատ գծեր[26]։ Պետք է ենթադրել, որ անասնապահության զարգացման նման մակարդակը լավագույն դեպքում կարող էր ապահովել սոսկ տվյալ համայնքի պահանջները. անասնապահական մթերքների առատության և հավելյալ արտադրանքի կուտակման հնարավորությունները բացակայում էին վաղբրոնզեդարյան մշակույթի զարգացման գրեթե ողջ ընթացքում։ Այդ շրջանի վերջում միայն նկատելիորեն աճում են մանր եղջերավոր անասունների հոտերը, որոնք կազմված էին գերազանցապես ոչխարներից և այծերից։ Մանր եղջերավոր անասունների գլխաքանակի մեծ աճը միջին բրոնզեդարի սկզբում հանգեցնում է քոչվորական անաս-

---

[25] *Տե՛ս В. М. Массон,* Земледелие первобытного и раннеклассового общества (Тезисы доклада на бакинской сессии археологов), 1965.

[26] Ոսկրաբանական նյութի ուսումնասիրությունը կատարվել է Ս. Դալի և Ս. Մեժլումյանի կողմից *տե՛ս С. К. Межлумян,* Крупный рогатый скот из энеолнтического поселения Шенгавнт, Изв. АН Арм. ССР, т. 3, 1954, № 6.

նապահության՝ հասարակական արտադրության նոր, ավելի առաջավոր ձևի զարգացման[27]։

*Որսորդության զգալի տեսակարար կշռի մասին են վկայում ազնիվ եղջերուի, վայրի այծի, կխտարի, նապաստակի, լեռնային կաքավի և այլ կենդանիների ու թռչունների ոսկորները։ Պեղումների ժամանակ հայտնաբերվել են ոսկրե, քարե և մետաղի մի շարք զենքեր՝ վանակատե, կայծքարե և ոսկրե նետասլաքներ, տեգի բրոնզե ծայր, քարե գուրզ և այլն, որոնք օգտագործվել են որսորդության մեջ։ Որսը մարդուն տալիս էր միս, մորթի, մուշտակ, կաշի և այլն։*

*Հայտնաբերվել են նաև ձկների ոսկորներ և ձկնորսական գործիքներ՝ սուզանիկներ-ծանրոցաքարեր և այլն։*

## 3. ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՂԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Խեցեգործություն:** *Տնտեսական հիմնական ճյուղերին առընթեր զարգանում է արհեստագործությունը և առաջին հերթին՝ խեցեգործությունը, որն անմիջականորեն կապված էր երկրագործության ու անասնապահության մթերքների պահպանման, վերամշակման, տնային տնտեսության այլևայլ կարիքների հետ։ Հայաստանի մ. թ. ա. III հազարամյակի մշակույթի ամենաբնորոշ տարրը խեցեղենն է՝ իր ինքնատիպ ձևերով ու հարուստ զարդանախշերով։ Բրուտները կավից պատրաստում էին տնտեսական ու պաշտամունքային իրեր՝ հսկա կաթսաներ, բազմազան ամանեղեն, կափարիչներ, պատվանդաններ, օջախներ ու նրանց տարատեսակ հենակներ, պղնձե իրեր ձուլելու կաղապարներ, մարդու և կենդանիների արձանիկներ։*

*Ամանեղենի գերակշռող մեծամասնությունն ունի սև փայլեցված մակերես և գունավոր, սովորաբար կարմրավուն աստառ. երբեմն հանդիպում են գորշ, վարդագույն և մոխրագույն մակերես ունեցող ամաններ։ Սրանք բոլորն էլ պատրաստված են ձեռքով և լավ թրծված են հատուկ հնոցներում։ Ապշեցուցիչ տպավորություն են թողնում լայնակոս, ռելիեֆ, ռելիեֆ-ներճկված, ներճկված ու գծային բարդ ու հարուստ զարդանախշերի հորինվածքները, որոնք կատարվել են դեռևս չթրծված, թաց կավի վրա՝ սեղմելու, գծելու և փորելու եղանակով։ Զարդարված է կավամանի միայն մեկ երեսը։ Գծային զարդանախշերը իրենց բնույթով երկրաչափական են (եռանկյունիներ, ոլորանախշեր, գծածածկ և կետածածկ զիգզագ ժապավեններ և շեղանկյուններ)։ Խոր լայնակոս զարդանախշերի մոտիվներն են պարույրները, նրանցով և համակենտրոն շրջաններով կազմված հորինվածքները, ինչպես նաև բուսական զարդանախշերը։ Ներճկված զարդերը հիմնականում արտահայտվում են շրջանաձև կամ ձվաձև փոսիկներով։ Զարդանախշերում գերիշխողը գալարանախշն է, որը հանդես է գալիս ինչպես մեկուսի, այնպես էլ տարբեր համադրություններով։ Բնորոշ են նաև թռչնաձև զարդանախշերը[28]։*

---

27 *Անասնապահության զարգացման կիսաքոչվորական ձևի զարգացման մասին տե՛ս* *Б. Б. Пиотровский,* Развитие скотоводства в древнейшем Закавказье, СА, XXIII, 1955, *էջ 6։*

28 *Հայաստանի վաղբրոնզեդարյան խեցեղենի ուսումնասիրումը տե՛ս* **Է. Վ. Խանզադյան,** *Հայկական լեռնաշխարհի մշակույթը մ. թ. ա. III հազարամյակում, էջ 61—81։*

*Ելնելով ձևերի զարգացման յուրահատկություններից, զարդամոտիվների բնույթից և նրանց կատարման եղանակներից, խեցեղենը կարելի է պայմանականորեն բաժանել զարգացման հետևյալ խմբերի.*



**Փոքր կճուճներ. Արագած**

*Առաջին խմբի խեցեղենին բնորոշ են անոթի եռամաս կառուցվածքը, շեշտված անցումները, ցածրադիր ձևերը, լայնակոս և խոր փորագրված զարդանախշերը։ Սիրված մոտիվներ են բազմագալար պարույրները, համակենտրոն շրջագծերը, հատիկաձև ակոսները, բուսական մոտիվները, որոնք մեծ մասամբ հանդես են գալիս համադրություններով։ Այս խմբի խեցեղենը ըստ տեղային յուրահատկությունների կարելի է կոպիտ կերպով բաժանել երկու մասի՝ մեկը պայմանականորեն անվանելով շրեշ-բլուրյան (Շրեշ-բլուր, Քյուլթափա, Շենգավիթի մի մասը, Յայշին), մյուսը՝ կառնուտ-կիրովականյան։*

*Այս խմբի տարբերակն է կազմում Կարնո դաշտում գտնվող Արծնի (Կարազի) ստորին շերտի խեցեղենը։ Խեցեղենի զարգացման առաջին փուլում ակիզբ են առնում նաև ուղղագիծ երկրաչափական զարդանախշերը, սակայն նրանք սակավ են և կատարված են լայնակոս տեխնիկայով (Կառնուտ, Էջմիա-*

ծնի Քյուլ-Թափա)։ Հազվադեպ օգտագործվում են նաև ներճկված փոսիկները, որոնք առանձին հանդես չեն գալիս։

Երկրորդ խմբի խեցեղենին դարձյալ բնորոշ է եռամասնությունը։ Ձնաված պահպանվում են նախորդ փուլի զարդանախշման հատկանիշները, սակայն երևան են գալիս նոր յուրահատկություններ։ Կավամանների վիզը զարդարվում է նրբագիծ երկրաչափական մոտիվներով, իսկ ուռուցիկ փորը՝ ռելիեֆ-ներճըկված ակոսային զարդանախշերով։ Այս խմբի խեցեղենը բաժանվում է երկու տեղային մասերի՝ կիրովականյան և շենգավթյան։

Երրորդ խմբին յուրահատուկ է կավամանների ձևերի ու զարդանախշերի պարզեցումը։ Բնորոշ են դառնում սահուն անցումներով և ձգված իրանով կավամանները։ Աստիճանաբար վերանում են կանթերը։ Մյուս կողմից երևան են գալիս նոր ձևերի, նոր որակով ու տեխնիկայով կատարված կավամաններ, որոնք իրենց հետագա զարգացումն են ստանում միջին բրոնզի դարաշրջանում։ Լայնակոս և ռելիեֆ-վերճկված զարդանախշերը հիմնականում անհետանում են։ Հուշարձանների մի մեծ խմբի խեցեղենը զարդանախշվում է միայն ներճկված մանր փոսիկներով, որոնք աստիճանաբար նույնպես անհետանում են։ Երրորդ խմբի խեցեղենը կարելի է բաժանել երեք տեղային մասերի՝ էլարյան, շենգավթյան և արագածյան։ Երրորդ խմբի խեցեղենն իր բոլոր տեղային տարբերակներով վերաբերում է վաղբրոնզեդարյան մշակույթի զարգացման վերջին շրջանին, որը մի կողմից կրում է վաղբրոնզեդարի մշակույթի բնորոշ գծերը, իսկ մյուս կողմից ձեռք է բերում նոր հատկանիշներ, որոնք իրենց զարգացումն են ապրում միջին բրոնզեդարի ժամանակաշրջանում։

Ելնելով խեցեղենի զարգացման առանձնահատկություններից, որոշ տիպաբանական համեմատություններից, ինչպես նաև շերտագրական բնույթի դիտողություններից, Հայկական լեռնաշխարհի վաղբրոնզեդարյան խեցեղենի առաջին և երկրորդ խմբերը պայմանականորեն կարելի է վերագրել մ. թ. ա. III հազարամյակի առաջին կեսին, իսկ երրորդ խումբը՝ նույն հազարամյակի երկրորդ կեսին։

Աշխարհագրական ընդարձակ միջավայրում, բացի Հայկական լեռնաշխարհի և Վրաստանին կից շրջանների վաղբրոնզեդարյան մշակույթի ծագման ու զարգացման բուն շրջանակներից, ուրվագծվում են մի քանի ծայրամասային շրջաններ Փոքր Ասիայի (Մալաթիայից արևմուտք), Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի (Հարավային Օսեթիա, Մինգեչաուր, Մուղան, Լեռնային Ղարաբաղ)[29] սահմաններում, ինչպես նաև այդ մշակույթների տարածման ընդարձակ ոլորտներ Կիլիկիայի (Մերսին), Ասորիքի (Ամուկ, Զ-րդ և 1-ին շերտերը), Պաղեստինի (Կիրբետ-Կերակ, Բեթ-Շան, Թաբարա-էլ Ակրադ)[30], Հյուսիսարևմտյան Իրանի (Գեոյ-Թափա, Յանըղ-Թեփե)[31], Կուբանի (Մայկոպ, Նովոսվոբոդնոյե), Չեչենա-Ինգուշեթիայի սահմաններում (Լուգովոյե, Սերժեն-Յուրտ

29 Տե՛ս А. А. Иессен, Азерб. арх. экспед. МИА, 125, М.—Л., 1965, էջ 16—18; К. Х. Кушнарева, Памятники медного века в Нагорном Карабахе, СА, XXVII, 1957.

30 Տե՛ս A. Jirku, Einige Kleinfunde aus Palästina und Syrien, „Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft“ №7 XIII, էջ 165—172։

31 Տե՛ս T. Burton-Brown, Excavations in Azerbaijan, էջ 264—265։

*և այլն)*[32], *որտեղ տեղական մշակույթների բնորոշ շերտերի մեջ նկատվում են Հայկական լեռնաշխարհի III հազարամյակի մշակույթի ամբողջական հորիզոններ կամ նրա հատկանշական տարրեր։ Մշակութային ներթափանցման այս հետաքրքրագույն երևույթի բուն էությունը դեռևս պարզ չէ և վեճի առարկա է գիտության մեջ*[33]*։ Առայժմ կարելի է արձանագրել միայն, որ մ. թ. ա. V—IV հազարամյակներում առաջավորասիական ակունքներից սնվող Հայաստանի վաղ երկրագործական մշակույթը մ. թ. ա. III հազարամյակում ներթափանցում է արդեն Հին Արևելքի նշանավոր մշակութային օջախները, որոնք նեոլիթի և էնեոլիթի դարաշրջանում աչքի էին ընկնում որպես երկրագործության զարգացման ամենավաղ ու ամենախոշոր կենտրոններ։*



Ձուլման կավե կաղապար. Գառնի

**Մետաղամշակություն:** *Արտադրողական ուժերի զարգացումը նյութական արտադրության համեմատաբար բարձր մակարդակը, երկրի բնական հարստությունները հիմք դարձան Հայաստանի տեղաբնակների և շրջակա երկրների միջև մշակութային ու տնտեսական հարաբերությունների ընդլայնման համար։ Զունենալով պղնձի հանքավայրեր, հին շումերներն օգտվում էին Ամանի, Փոքր Ասիայի, Հայկական լեռնաշխարհի պղնձից*[34]*։ Տավրոսի, Ռշտունյաց, Տայոց, Սասնո, Կորճայքի (Ջուլամերկի) սարերն ու Հայկական Միջագետքը (Արղա-*

---

32 *Տե՛ս Р. М. Мунчаев,* Древнейшая культура северо-восточного Кавказа, МИА, 100, 1961; *Е. И. Крупнов,* Древнейшая культура Кавказа и кавказская этническая общность, СА, 1964, № 1.

33 *Իրենց տեսակետներով հանդես են եկել Ս. Հուդը, Լ. Վուլլին, Վ. Լամբը և ուրիշները։ Ռ. և Լ. Բրեյդվուդները և Ա. Ա. Իեսսենը, ցուցաբերելով զգուշավոր մոտեցում, այնուամենայնիվ գտնում են, որ տեղի է ունեցել կարճատև և արագ ներթափանցում Արևմտյան Հայաստանից դեպի Սիրիա—Պաղեստին։*

34 *Տե՛ս B. Landsberger*, Assyrische Handelskolonien in Kleinasien aus dem dritten Jahrtausend, Leipzig, 1925, էջ 21—25։

նա) պղնձի, կապարի, արծաթի անսպառ շտեմարաններ էին[35]։ Ակնհայտ է, որ Հայաստանի նշված շրջանների բնակչությունը հնուց ի վեր պետք է մասնագիտանար մետաղահանության ու մետաղաձուլության մեջ։ Եփրատի հովիտն ու Հայկական Միջագետքը կապող օղակներ էին Հայաստանի և հարևան երկրների միջև։

Մ. թ. ա. III հազարամյակի հնավայրերում հայտնաբերված մետաղաձուլական բազմաթիվ իրերի ուսումնասիրությունը մի կողմից ցույց է տալիս տեղական մետաղամշակության զարգացման բավական հասուն մակարդակ, երբ արդեն հսկայական տեխնիկական թռիչք էր կատարվել դեպի իսկական մետաղամշակությունը և մկնդեղով բրոնզի ստացումը, և, մյուս կողմից, այն աղերսները, որոնցով կապված էին Հայկական լեռնաշխարհն ու Միջագետքի երկրները, մասնավորապես Շումերն ու Աքքադը։

Մետաղահանության հնագույն օբյեկտներն ու պղնձաձուլական վառարաններն առայժմ խոր ուսումնասիրության չեն ենթարկված։ Սակայն Շենգավթի, Գառնիի, Նախիջևանի Քյուլ-թափայի բրոնզաձուլական կաղապարների հայտնագործությունը ինքնըստինքյան վկայում է մետաղամշակության խոշոր առաջընթացի մասին։ Այս կաղապարների մի մասը, մասնավորապես Շենգավթինն ու Գառնիինը, ծառայում էին կոթառավոր սեպաձև կացիններ ձուլելու համար, որոնց քարե նախատիպերը հայտնի են Շենգավթի, Քեթիի, Մարմաշենի Լնեոլիթյան հնավայրերից, իսկ մկնդեղ-բրոնզից պատրաստած օրինակները՝ Լենինականի, Բրդաձորի բնակատեղիների պեղումներից[36]։

Նման կացինների կավե հնագույն մոդելների (IV հազարամյակի երկրորդ կես—III հազարամյակի առաջին կես) առկայությունը— Շումերում՝ մի կողմից, և բրոնզից պատրաստված հետագույն օրինակների (III հազարամյակի վերջ) գոյությունը Կուբանի մարզում՝ մյուս կողմից, որոշակիորեն մատնացույց է անում Հայկական լեռնաշխարհի դերն ու նշանակությունը հինարևելյան մշակույթի զարգացման ու տարածման ուղիներում։

Պատմա-հնագիտական նույն կապակցությունների մեջ են ներկայանում սեպաձև կացիններին ուղեկցող զենքերը՝ լայնաշեղբ դաշույններն ու փետրաձև նիզակների գեղարդները (Լենինական, Կամո, Կիրովական)։ Կամոյի նիզակի գեղարդը իր զուգահեռներն ունի Միջագետքի, Արևելյան Փոքր Ասիայի, Վրաստանի, Կուբանի դամբարանային հուշարձաններում, իսկ Կիրովականի գեղարդը՝ գերազանցապես Հարավային Միջագետքի քաղաքներում, Իրանի և Վրաստանի հնավայրերում հայտնաբերված նյութերի մեջ[37]։

Հետաքրքիր է, որ նիզակների վերը ներկայացված տիպերը Սալխերեում հանդիպում են սվինաձև նիզակների ուղեկցությամբ, որոնց նմանները լայն տարածում էին գտել Միջագետքում (Ուր, Աշշուր, Թեփե-Գավրա, Կարքեմիշ)։ Մ. թ. ա. III հազարամյակի երկրորդ կեսին Աշուրից ծագող նման նիզակներից մեկը կրում էր Սարգոն Աքքադացու որդի Մանիշտուսուի անունը (մ. թ. ա.

35 Տե՛ս *Н. Б. Янковская*, Некоторые вопросы экономики ассирийской державы, ВДИ, 1956, № 1, էջ 28—40։

36 Տե՛ս *А. А. Мартиросян*, Армения в эпоху бронзы и раннего железа, էջ 25—32։

37 Տե՛ս նույն տեղում, էջ 29—32։

XXII դար), մյուսը՝ Էլամի կառավարիչ Պուզուր-Շուշինակի անունը (մ. թ. ա. XXII դար)[38]։

Այսպիսով, Հայաստանի մետաղամշակության արտադրանքը ուսումնասիրելիս և թվագրելիս անհրաժեշտ է առաջին հերթին ի նկատի ունենալ Հյուսիսային Միջագետքը, որի անտառային գոտում երկար դարերի ընթացքում շարունակում էին օգտագործել վաղ շումերական տիպի գործիքները, զենքերն ու զարդերը։

Հետաքրքիր է, օրինակ, որ Առաջավոր Ասիայի, Հայաստանի, Կովկասի և Եվրոպայի տերիտորիաներում III հազարամյակի տարբեր ժամանակաշրջաններում լայն տարածում գտած կոցավոր կացինների բնորոշ խմբերից մեկը հայտնի է Հայաստանի և Կենտրոնական Անդրկովկասի հնավայրերից (Լենինական, Երևան, Ալավերդի, Փխեզաուրի, Թիանեթի), Միջագետքի նշանավոր կենտրոններ Աշշուրից, Թեփե-Գավրայից, ինչպես նաև Սարգոն Աքքադացու որդի Նարամսինի կոթողի պատկերաքանդակներից, որն, ի դեպ, հայտնաբերվել է Հայկական Միջագետքի տերիտորիայում՝ Ամիդի (Դիարբեքիրի) մոտ։ Ի տարբերություն Եվրոպայում հայտնաբերվածների, որոնք միայն մասամբ են համընկնում վաղմիջագետքյան տիպերին, Հայաստանի և Վրաստանի օրինակները ոչնչով չեն տարբերվում հարավի իրերից։ Ուստի Հյուսիսային Միջագետքն ու Հայաստանը կարելի է դիտել որպես նման զենքերի պատրաստման հիմնական կենտրոններ, որոնց մետաղագործական արտադրանքը կարող էր Արևելյան Եվրոպա թափանցել միայն Կովկասի վրայով[39]։

Միաժամանակ կոցավոր կացինների և ուղեկցող այլ գործիքների վերջերս Երևանում հայտնաբերված նշանավոր գանձը՝ իրերի մեծ քանակով, տարբերակներով, բազմազան չափերով, ձևաբանական ու որակական հատկանիշներով ոչ միայն գերազանցում է հին աշխարհի հնագիտական հուշարձաններից հայտնի համանման նմուշներին և հավաստում նրանց տեղական արտադրության ակնհայտ փաստը, այլև համոզում է, որ Հայկական լեռնաշխարհն իսկապես նման զենքերի արտադրության առաջավորասիական խոշոր կենտրոններից մեկն էր[40]։

Հայաստանի և Վրաստանի մի շարք այլ հնավայրերում հայտնաբերված մետաղե առարկաների համեմատական ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս ուրվագծելու տեղական մետաղամշակության զարգացման հաջորդական փուլերը։ Մետաղե զենքերի և գործիքների զգալի կատարելագործում է նկատվում Արծնի (Կարազ՝ Էրզրումի մոտ), Էլարի, Էջմիածնի հավաքածուներում և Վրաստանի տերիտորիայում հայտնաբերված մի քանի հետաքրքրական կոմպլեքսներում։ Հին Արևելքում և Հայաստանում լայնորեն տարածված պարուրաձև ապարանջանների ու ականջօղերի հետսագույն տիպերի հետ միասին Էլարի դամբարանադաշտում հայտնաբերվեցին զգալիորեն կատարելագործված նեղաշեղբ դաշույններ, որոնց նմանները նախկինում պատահակա-

[38] Տե՛ս Б. А. Куфтин, Археологическая маршрутная экспедиция.., Тбилиси, 1949, էջ 71—75։

[39] Տե՛ս А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы и раннего железа, էջ 31—33։

[40] Երևանյան նորահայտ գանձը պահվում է Հայաստանի պետական պատմական թանգարանի ֆոնդերում։

*նորեն գտնվել են Էլարում։ Արծն-Կարազի վաղբրոնզեդարյան միջին շրջանի բնակատեղիում այս տիպի դաշույններին ուղեկցում էր խիստ կատարելագործված նեղաշեղբ կախակոթառ կացինը, որ իր ուղղակի զուգահեռներն ունի Էջմիածնի թանգարանում, Իմերեթում, աբխազական դոլմեններում և Հյուսիսային Օսեթիայում։*

*Հայկական լեռնաշխարհի և Կովկասի սահմաններից դուրս այս կացինների նմանը չկա, և դրանք պետք է համարել տեղական մետաղամշակության յուրահատուկ արտադրանքի քիչ հայտնի նմուշներ։*

*Հայաստանի վաղբրոնզեդարյան մշակույթի վերջին փուլում, մ. թ. ա. III հազարամյակի վերջերին, հանդես են գալիս այսպես կոչված խողովակակոթառ մարտական կացինները (Սուրմարի, Լենինական, Սևան), որոնց նախատիպերը հանդիպում են Շումերի հին քաղաքներում (Քիշ, Ուր, Լագաշ) և ապա տարածվում Իրանական սարահարթում, Կովկասում, Կենտրոնական Ռուսաստանում և մերձդանուբյան շրջաններում*[41]*։ Փոքր Ասիայում և Բալկաններում այս տիպի զենքերի բացակայությունը մատնանշում է նրանց տարածման ներթափանցման հայաստանյան ուղիները, որոնք Կովկասն ու Արևելյան Եվրոպան կապում էին Առաջավոր Ասիայի քաղաքակրթության հետ։*



Դաշույններ. Էլար

*Ժամանակի մշակութային ու տնտեսական փոխհարաբերությունների մեջ որոշակի նշանակություն ուներ Տիգրիսից Ինդոս, Օքսոսից ու Եփրատից Նեղոս տարածվող հինարևելյան առևտրական լայն ցանցը*[42]*, որի մեջ լիովին ընդգրկված էր Հայաստանը՝ Եփրատ—Տիգրիսյան և Արարատյան նշանավոր իր ճանապարհներով և, որ գլխավորն է, իր նյութական արտադրության բավականաչափ բարձր մակարդակով։*

*Հնագիտական նյութերի ուսումնասիրությունն ակնհայտորեն ցույց է տալիս, որ Առաջավոր Ասիայի հյուսիսային ծայրամասում ընկնող Հայկական լեռնաշխարհը, մ. թ. ա. III հազարամյակում իրենից ներկայացնում էր հինարևելյան մշակույթի մի տեղական օջախ՝ տնտեսության հիմնական ճյուղերի*

---

41 *Տե՛ս Б. А. Куфтин,* Материалы к археологии Колхиды, Тбилиси, 1956, *էջ 295—296.*

42 *Տե՛ս Г. Чайлд,* Древнейший Восток..., *էջ 258—260։*

զարգացման համեմատաբար բարձր մակարդակով։ Նրա տեղական մշակույթի խոր արմատները գնում են դեպի Միջագետք։ Հայաստանը կրում է Միջագետքի ազդեցությունը, սակայն ինքն էլ որոշակի առաջադիմական դեր է կատարում նույնիսկ Առաջավոր Ասիայի մշակութային զարգացման մեջ։

Վաղբրոնզեդարյան տնտեսության հիմնական ճյուղերի զարգացումն առաջ է բերում մի շարք այլ արհեստների զգալի վերելք։ Քարագործությունը, փայտագործությունը, ոսկրագործությունը, մանածագործությունն ու կաշեգործությունը անմիջականորեն պայմանավորված էին երկրագործության և անասնապահության զարգացմամբ։ Մ. թ. ա. III հազարամյակում տնտեսության ու կենցաղի մեջ որոշիչ նշանակություն ունեին քարե գործիքները, քանի որ մետաղե գործիքներն այնքան էլ լայն կիրառում չունեին երկրագործ-անասնապահ բնիկների կյանքում։ Բազմաթիվ ու բազմատեսակ սանդերը, սանդի կոթերը, տրորիչները, հղկիչները, աղորիքները, գուրզերը, ձուլման կաղապարները, հալոցները, կացինները, դրերը, պահանգավոր մանգաղների ներդիրները և շատ այլ գործիքներ մեծ կատարելագործությամբ պատրաստվում էին քարեգործ վարպետների կողմից և հաջողությամբ օգտագործվում երկրագործական ու կենցաղային աշխատանքների մեջ։

Անասնապահության ու կաշեգործության մեջ լայնորեն օգտագործվում էին օբսիդաքարից ու կայծքարից պատրաստված պահանգավոր դանակներ, քերիչների շեղբեր՝ մորթին ու կաշին մշակելու, նրանցից փոկեր, տիկեր, ոտնաման ու հագուստ պատրաստելու համար։ Կաշեգործության մեջ շատ կարևոր դեր էին կատարում կենդանիների ոսկորներից պատրաստված կոկիչները[43], ծակիչները, հերուններն ու մախաթները, որոնց բազմազանությունը վկայում է նրանց կատարած ամենատարբեր ֆունկցիաների մասին։

Ստույգ տվյալներ չկան մանածագործական արտադրանքի վերաբերյալ, սակայն մի շարք աշխատանքային գործիքների առկայությունը վկայում է այդ արհեստի բարձր զարգացման մասին։ Վաղբրոնզեդարյան գրեթե բոլոր բնակատեղիներում չափազանց հաճախ են հանդիպում ոսկորից, երբեմն նաև կավից ու քարից շինված իլիկի գլուխներ և խոշոր կենդանիների կողոսկրերից պատրաստված գործիքներ, որոնք կարող էին հիմնազլանի դեր կատարել՝ թելից գործվածք ստանալու համար։ Ինչպես նախորդ գլխում ցույց տրվեց, մ. թ. ա. V—IV հազարամյակի նյութական արտադրության մեջ հայտնի էին արդեն կանեփե ու վուշե գործվածքները, որպիսիք լայնորեն օգտագործվում էին Առաջավոր Ասիայի, Եգիպտոսի, Միջերկրածովյան տարբեր մարզերում[44]։ Հավանական է, որ III հազարամյակի վերջին փուլում մանր եղջերավոր անասունների մեծ աճի կապակցությամբ, մանածագործության մեջ զգալիորեն ընդլայնվում է ոչխարի ու այծի բրդի օգտագործումը։ Գառնիի, Էլարի և այլ բնակավայրերում հայտնաբերվել են բավականաչափ նուրբ ասեղներ, որոնք կարող էին կիրառվել գործվածքներից հագուստ պատրաստելու համար։

Վաղբրոնզեդարյան Հայաստանի համար խիստ բնորոշ է երկրի բնակչության զգալի աճը, նահապետական հայրիշխանական գերդաստանի կազմավո-

---

43 Տե՛ս Б. Л. Богаевский, История техники, т. I, М.—Л., 1936, էջ 284։

44 Տե՛ս նույն տեղում, էջ 283։

րումը։ Զարգացած բնակարանաշինությունը այս պայմաններում դառնում է առաջավոր արհեստներից մեկը։ Որպես շինանյութ օգտագործում էին քարը, փայտը, եղեգնը, կավը, հարդը։ Այսպիսով, երկրագործության ու անասնապահության ընդհանուր զարգացմանը զուգընթաց բազմաթիվ արհեստներն իրենց հերթին խթանում էին տնտեսության հիմնական ճյուղերի առաջընթացը և պայմանավորում երկրի արտադրողական ուժերի զարգացման նոր, ավելի բարձր մակարդակը։

## 4. ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Վաղ բրոնզի դարի եզրափակիչ փուլում միայն, մ. թ. ա. III հազարամյակի վերջերին սկսում են նկատվել սոցիալ-տնտեսական տարբերակման, ունեցվածքային անհավասարության երևույթներ և տոհմացեղային կազմակերպության ընդհանուր ֆոնի վրա գծագրվում է իր հասարակական դիրքով ու հարստությամբ բնակչության հիմնական զանգվածներից. անջատվող տոհմացեղային ավագանին։ Դրա ցուցանիշն է մ. թ. ա. III հազարամյակի վերջին դարերով թվագրվող մեծ դամբանաթմբերի առաջացումը Լեռնային Ղարաբաղում (Խաչենագետ, Ստեփանակերտ) ու Մուղանի դաշտում (Ուչ-Թափա), Թռեղքի նշանավոր դամբարանադաշտում և Հյուսիսային Կովկասում (Մայկոպ, Նովոսվոբոդնայա և այլն)։ Մայկոպի նշանավոր դամբարանում կուտակված արժեքները, արվեստի, զենքի, զարդարանքի նմուշները, թաղման ձևն ու ճոխությունը ցույց են տալիս, որ վաղ բրոնզի դարաշրջանում առանձին ցեղերի առաջնորդներ հասնում են հասարակական աննախադեպ բարձր դիրքի։ Սոցիալական այս նոր երևույթների հիմքում ընկած էին նյութական արտադրության և առաջին հերթին անասնապահության մեջ տեղի ունեցող արմատական տեղաշարժերը, հավելյալ արտադրանքի կուտակման ու փոխանակման հնարավորությունը։ Մ. թ. ա. III հազարամյակի վերջում դիտվում է նախնադարյան տոհմացեղային կազմակերպության աստիճանական անկման պրոցես, որը դառնում է միջին և ուշ բրոնզի ժամանակաշրջանի պատմական զարգացման ամենաբնորոշ գիծը։



Պղնձե կոցավոր կացին. Ալավերդի

Հայաստանի վաղբրոնզեդարյան տնտեսության ու նյութական արտադրության մեջ առաջացած արմատական տեղաշարժերն իրենց նկատելի հետքերն են թողնում տեղաբնակների հասարակական կյանքում։ Արորային երկրագործության առաջացումը, անասնապահության ու որսորդության վերելքը, մետաղահանության, մետաղամշակության, արհեստների ու փոխանակային հարաբերությունների զարգացումը ի վերջո հանգեցնում են տղամարդու բացարձակ գերիշխանության տնտեսական և հասարակական ոլորտներում։ Կնոջ հասարակական դերը հետզհետե սահմանափակվում է ընտանիքի ու տնային տնտեսության շրջանակներով։ Կազմավորվող հայրիշխանական ընտանեկան մեծ համայնքը դառնում է հասարակության բաղկացուցիչ բջիջը և հիմնական տնտեսական միավորը, որի էական հատկանիշը նյութական բարիքների արտադրության ու սպառման կոլեկտիվ սկզբունքն է։ Այդ պատճառով էլ հասարակության ունեցվածքային խոր տարբերակում չի նկատվում ոչ բնակատեղիների, ոչ էլ դամբարանային պեղածո նյութերի ուսումնասիրության ժամանակ։

Դամբարանների ու կացարանների ձևերն ու հատակագծերը երկար ժամանակ մնում են անփոփոխ, չտարբերակված, ընտանեկան մեծ համայնքը արտադրության, բաշխման ու յուրացման միասնական մի բջիջ է՝ առանց ներքին խոր տնտեսական տրոհման։ Սակայն ազգակցության և որոշ իմաստով նաև ժառանգականության առումներով այժմ մեծապես զարգանում է պատրիլոկալ ուղղությունը, որը ավելի ուշ շրջանում հանգեցնում է համայնքի տրոհման։

## 5. ՎԱՂ ԵՎ ՄԻՋԻՆ ԲՐՈՆԶԻ ԴԱՐԻ ՑԵՂԵՐՆ ՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ ԵՎ ՀԱՐԵՎԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

**Խուրրիներ և ուրարտացիներ** — Հայկական լեռնաշխարհի բնակչության էթնիկական կազմը վաղ և միջին բրոնզի դարից առաջ ընկած ժամանակների առումով ուսումնասիրողները ստիպված են բավարարվել սոսկ մարդաբանական ու հնագիտական նյութով, որ հնարավորություն չի տալիս հանգելու քիչ թե շատ որոշակի եզրակացությունների։ Մարդաբանական բնորոշ տիպերի հետազոտությունը կարող է պարզել միայն ժողովրդի կազմավորման պրոցեսի որոշ, կենսաբանական-ֆիզիկական կողմերը, բայց այն ոչինչ չի տալիս հասարակական-պատմական առումով, քանի որ մարդաբանական տիպի տարածման սահմանները երբեք չեն համընկնում ժողովուրդների և լեզուների տարածման սահմանների հետ։ Մշակութային հաջորդականության ուսումնասիրությունը ևս այս առումով մեծ ծառայություն չի մատուցում, որովհետև մշակույթի տարածման շրջաններն էլ անմիջականորեն չէ, որ կապվում են էթնիկական խմբավորումների գրաված տարածությունների հետ։

Վիճակը փոխվում է վաղ և միջին բրոնզի դարից սկսած, որի ուսումնասիրման համար հնարավոր է դառնում ներգրավել նաև այն գրավոր աղբյուրները, որոնք հասել են մեզ Հայկական լեռնաշխարհը շրջապատող ժողովուրդներից։ Ահա այդ աղբյուրների տվյալների համադրումը հնագիտության նյութի տվյալների հետ հնարավորություն է տալիս արդեն հաստատապես պնդել, որ խնդրո առարկա տերիտորիայի մեջ հետաքրքրող ժամանակի մշա-

կույթը հիմնականում ստեղծվել է ցեղերի մի խմբի կողմից, որոնք խոսում էին սերտ ազգակցության մեջ գտնվող լեզուներով— խուրրիական կամ ավելի կոնկրետ՝ խուրրի-ուրարտական ցեղերի կողմից։ Սրանք էլ դարձել են կարևորագույն բաղադրիչ մասերից մեկը այն ենթաշերտի, որի հիմքի վրա հետագայում կազմավորվել է հայ ժողովուրդը[45]։ Վաղբրոնզեդարյան ժամանակաշրջանում՝ մ. թ. ա. III հազարամյակում և երկրորդի սկզբներին, խուրրիական ցեղերն արդեն գերիշխող տարր էին Հայկական լեռնաշխարհի միջին մասում, նրան կից Հյուսիսային Միջագետքում և Փոքր Ասիայի արևելյան շրջաններում։



Խողովակակոթառ կացիններ. Ջոջ կոյան, Լենինական

Խուրրիների բնակեցրած տերիտորիան շումերերեն կոչվում էր Սու-բիր, իսկ աքքադերեն՝ Սուբարտու կամ Շուբարտու։ Մ. թ. ա. II հազարամյակի և I հազարամյակի սկզբների գրավոր աղբյուրներում Հյուսիսային Միջագետքի բնիկները կոչվում են շուբարեցիներ։ Այս անունը պահպանվել է և հին հայկական պատմական Աղձնիք գավառի Շուպրիա (կամ թերևս ավելի ճիշտ՝ Շուբ-

45 Մարդաբանական հետազոտությունները ցույց են տալիս, որ խուրրի-ուրարտական այս ցեղերի ֆիզիկական տիպը շարունակում է ապրել Հայկական լեռնաշխարհի և Առաջավոր Ասիայի ժամանակակից որոշ ժողովուրդների և մասնավորապես հայերի մեջ։ Սրանց մեջ գերակշռում է կարճագլխությամբ և արծվաքիթ դեմքով բնորոշվող մարդաբանական այն տիպը, որը Լուշանը, Բունակը և այլ մասնագետներ անվանել են արմենոյիդ (armenoid)։ Եվրոպեոյիդ մեծ ռասայի մասը կազմող բալկանա-կովկասյան փոքր ռասային պատկանող մարդաբանական այս տիպը ներկայացված է Հյուսիսային Միջագետքի, Ասորեստանի, խեթերի երկրի բարձրաքանդակներում և այն եգիպտական դամբարանային որմնանկարներում, որոնցում պատկերված են հիշյալ երկրների բնակիչները։ Չնայած այս բոլոր հանգամանքներին, մ. թ. ա. V—IV հազարամյակների նյութական մշակույթի էթնիկական պատկանելության հարցը հնարավոր չէ լուծված համարել։

*րիա) անվան մեջ[46]։ Շուպրիայից դեպի հյուսիս-արևմուտք խուրրիները, համենայն դեպս մ. թ. ա. I հազարամյակում, բնակեցնում էին նաև վերին Եփրատի ձախափնյա տարածությունները և, հնարավոր է, Ճորոխի հովիտը։ Շուպրիայից արևելք, որպես խուրրինների բնակության հնարավոր վայրեր, հարկ է նշել Խուբուշկիան (Արևելյան Տիգրիսի հովիտը) և Ուրմիա լճից դեպի արևմուտք և հարավ-արևմուտք ընկած լեռնային երկիրը։*

*Խուրրիները մ. թ. ա. III—II հազարամյակների եզրին տարածված էին Միջերկրական ծովի արևելյան ափին գտնվող Ուգարիտից սկսած դեպի արևելք՝ մինչև Առապխա (այժմ՝ Քերքուքը՝ Քուրդիստանում) և Նուզի քաղաքները։ Հարավում նրանց զանգվածային բնակության տերիտորիան հասնում էր մինչև այն գիծը, որ սկսվում է արևմուտքում Օրոնտես գետի ափին գտնվող Համա քաղաքից և ձգվում մինչև այժմյան Խանեկինը՝ Իրաքի և Իրանի սահմանագլխին։*

*Ավելի դժվար է որոշել խուրրինների բնակեցման հյուսիսային և հյուսիս-արևելյան սահմանները, որոնք անցնում են Հայկական լեռնաշխարհով։ Հայկական Տավրոսից հյուսիս, մ. թ. ա. հավանաբար արդեն II հազարամյակում ընկած էր ուրարտացիների էթնիկական տերիտորիան, ժողովուրդ, որ խոսում էր խուրրիերենին մոտ լեզվով և ուներ խուրրիականին շատ բանով նման մշակույթ։ Ուստի կարելի է եզրակացնել, որ սկզբնապես խուրրիներն ու ուրարտացիները մի էթնոս են կազմել։ Լեզվական տվյալները, որոնք կարելի է ստանալ Թիշարի Թագավորի արձանագրությունից, մղում են ենթադրելու, որ մ. թ. ա. II հազարամյակի սկզբին խուրրինների և ուրարտացիների նախնիները խոսել են միմյանց այնքան մոտ բարբառներով, որ այդ շրջանում նրանց կարելի էր համարել էթնիկապես միատարր զանգվածի առանձին ցեղեր կամ ցեղախմբեր։ Հայկական Տավրոսի լեռներից հարավ և Վերին Եփրատի հովտում էթնիկական այս զանգվածի ցեղերը մտան խուրրինների կազմի մեջ, իսկ դեպի հյուսիս-արևելք, այսինքն Մեծ Զաբ գետի վերին հոսանքի շրջանում, Վանա լճի մոտ և ավելի հյուսիս, Արաքսի հովտի կողմերում ապրող ցեղերը՝ ուրարտացիների կազմի մեջ։ Մ. թ. ա. I հազարամյակում ուրարտացիների բնակման շրջանը մնում էր նույնը, իսկ խուրրիներինը էապես փոխվել էր և ամբողջական զանգված չէր կազմում։*

**էթիունեն:** *Ավելի հյուսիս՝ Արարատյան դաշտում, կարելի է ենթադրել երրորդ ցեղախմբի գոյությունը, որին, երկրի կրած էթիունի անվան հիման վրա, պայմանականորեն կարելի է կոչել էթիունների խումբ և որը ազգակից կարող է լինել ինչպես խուրրիներին, այնպես էլ ուրարտացիներին։ Հավանաբար հենց այս խմբին պատկանող ցեղերն են թողել Թռեղքի, Կիրովականի և Լճաշենի մ. թ. ա. II հազարամյակի թաղումների սքանչելի հուշարձանները, որոնք վկայում են խուրրիական աշխարհի հետ նրանց ունեցած մշակութային կապերի մասին[47]։*

---

46 *Ավելի ուշ շրջանում՝ մ. թ. ա. VII—VI դարերում «Սուբարտու» էր կոչվում Հյուսիսային Միջագետքի այն մասը (Արևմտյան Խաբուր գետի վերին հոսանքի շրջանը), որտեղ նախապես գտնվում էր Խուրրի-Միտաննի պետության Վաշշուգանե մայրաքաղաքը։*

47 *Տե՛ս Б. А. Куфтин,* Археологические раскопки в Триалети, I. Тбилиси, 1941, *էջ 78 և հաջ.*, *А. О. Мнацаканян,* Раскопки курганов на побережье оз. Севан в 1956 г., СА, 1957,

**Կուտիներ և այլք:** *Հայկական լեռնաշխարհից դեպի արևելք, Կապուտան (Ուրմիա) լճից հարավ ընկած շրջանից մինչև Մեծ Կովկաս բնակվող ժողովուրդների ու ցեղերի լեզուներից մեզ հայտնի են լոկ մ. թ. ա. III—II հազարամյակներին վերաբերող առանձին հատուկ անուններ և տեղանուններ։ Սա լեզվական մի շրջան էր, որ հիմնականում տարբերվում էր խուռրի-ուրարտականից, թեև այստեղ կարող էին լինել խուռրիների առանձին խմբեր։ Այստեղ բնակվող մյուս ցեղերից ամենահարավայինները բաբելացիներին ու ասորեստանցիներին հայտնի էին կուտիներ անվամբ*[48]*։*

**Նախախեթեր:** *Կենտրոնական Անատոլիան (Կապադովկիան), Հալիս գետի (այժմ՝ Կըզըլ-Իրմակ) աղեղի շրջանում, մ. թ. ա. III հազարամյակում բնակեցրել էին այսպես կոչված նախախեթերը կամ խաթերը (չշփոթել խեթերի հետ, որոնք խոսել են միանգամայն այլ լեզվով)*[49]*։ Նրանց լեզուն մեզ հայտնի է դարձել խեթական թագավորության արխիվներում (գտնված Բողազքյոյ քաղաքատեղիում) գրի առնված կրոնական ծիսական հատվածներից։ Մինչև այժմ չի հաջողվել վերականգնել նախախեթերի հնչունաբանությունը, ուստի անհնար է դառնում հավաստիորեն լուծել, թե այդ լեզուն որ լեզվաընտանիքին է պատկանում, քանի որ հնարավոր չէ օրինաչափ հնչունական զուգադրումներ սահմանել նախախեթերի և որևէ այլ լեզվի միջև։ Մ. թ. ա. II հազարամյակի սկզբներին նախախեթերը արդեն հիմնականում ձուլվել էին խեթերին։*

**Կասկեր (աբեշլացիներ):** *Կասկերի (կամ կաշկա) ցեղախումբը մ. թ. ա. II հազարամյակում բնակեցնում էր Հյուսիս-արևելյան Փոքր Ասիան և հարավային Սևծովյան մարզը (Պոնտոս)՝ սկսած Հալիս գետից (Կըզըլ-Իրմակ), կամ ավելի արևմուտքից, մինչև Վերին Եփրատ, ներկայիս Երզնկայից արևմուտք, ներառյալ Իրիս (Իշիլ-Իրմակ) և Լիկոս (Գայլ-գետ, Գելգիտ) գետերի հովիտները։ Կասկերի լեզվի մասին կարող ենք դատողություններ անել միայն մի քանի տեղանունների և անձնանունների հիման վրա։*

*Մ. թ. ա. II հազարամյակի վերջի ասուրական աղբյուրները կասկերի կապակցությամբ հիշատակում են նաև աբեշլացիների և ուրումեացիների ցեղերը։ Ուրումեացիների մասին կխոսվի ստորև, իսկ ինչ վերաբերում է աբեշլացիներին, ապա սրանց ցեղանունը, ինչպես և կասկերի անունը, փորձել են մեկնաբանել որպես աբխազա-ադըղական խմբի լեզուներից մեկին պատկանող անուն*[50]*։*

**Նախաճարթվելական ցեղերը:** *Նախախեթական և աբխազա-ադըղական ցեղերից հյուսիս-արևելք և Հայկական լեռնաշխարհից դեպի հյուսիս, մոտա-*

---

№ 2, էջ 146 և հաջ., Բ. Բ. Պիոտրովսկու առաջաբանը И. М. Дьяконов, Урартские письма и документы, М.—Л., 1963 գրքում, էջ 11։

48 Կուտիներից հարավ բնակվող լուլուբեյները, կասսիտները և էլամցիները, ըստ երևույթին, պատկանում էին այլ լեզվաընտանիքի։

49 Տե՛ս ստորև, էջ 152, ծան. 54։

50 Հին հայ. Գաշքը, հին վրաց. Քաշագք, բյուզ., հուն. Կասախսան, արաբ. Կաշակը, հին ռուս. Կասոգը ադըղ-չերքեզների անվանումն է։ Հուն. Ἀπσίλαι, լատ. Absilae, հին հայ. Ափշեղ, վրաց. Ափշիլի ձևերը ներկայիս Աբխազիայի տերիտորիայում Կոդոր գետի շրջանում բնակված հնագույն ցեղերի և նրա տարածման վայրի անվանումներն են։ Համա., աբխազներ, ապ-սուա, ա-ափ՚-շ-ուա ինքնանվան հետ։ Տե՛ս А. Г. Меликишвили, Наири-Урарту. Тбилиси, 1954, էջ 76, Ս. Տ. Երեմյան. Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 42, 101, 129,




Կավից և քարից արձանիկներ. Շենգավիթ և Քյուլթափա

վորապես ներկայիս Վրաստանի (Կուր գետի վերին հոսանքի շրջանը) տերիտորիայում հավանաբար բնակվում էին նախաքարթվելական լեզուներով խոսող ցեղեր։ Չնայած, որ այս լեզվախմբի վերաբերյալ մ. թ. ա. III—II հազարամյակներում գրավոր վկայություններ ամենևին չկան, լեզվաբանական նորագույն տվյալների համաձայն, քարթվելական հիմք-լեզվի գոյությունը կարելի է հասցնել մինչև մ. թ. ա. III հազարամյակը, ըստ որում նույն տվյալները հուշում են, որ նա գրավում էր կոմպակտ, ըստ երևույթին, լեռնոտ, մի տերիտորիա[51]։

**Աքքադցիներ և արևմտյան սեմիտներ:** *Այսպես կոչված «Արգավանդ կիսալուսնի»՝ Փյունիկյան ծովեզրերքի (այժմ՝ Լիբանանը) երկրագործական տերիտորիաներում, Ասորիքի հովիտներում, Հյուսիսային Միջագետքի հարթավայրերում և մեծ գետերի՝ Եփրատի ու Տիգրիսի երկայնքով, ինչպես նաև այս շրջանների միջև ընկած տափաստաններում մ. թ. ա. III—II հազարամյակում ապրում էին սեմական ժողովուրդներ։ Փյունիկիայում, Ասորիքում, մասամբ Հյուսիսային Միջագետքում և ամենուր տափաստանային շրջաններում ապրում էին արևմտյան սեմիտները (քանանացիներ և ամորեացիներ), Եփրատի ու Տիգրիսի երկայնքով՝ արևելյան սեմիտները կամ աքքադցիները, որոնք հայտնի են ասորեստանցիներ և բաբելացիներ անուններով*[52]*։ Խուրրիների տարածման շրջանի հարավային մասը և սեմիտների տարածման շրջանի հյուսիսային մասը խառնվում էին իրար, և հողագործական շրջաններում ու քաղաքներում խուրրիներն ու սեմիտներն ապրում էին կողք-կողքի։*

**Հնդեվրոպացիներ:** *Վերը հիշված էթնիկական զանգվածները կամ տեղական էին, կամ էլ ուսումնասիրվող տերիտորիայի վրա հաստատվել էին ոչ ուշ, քան մ. թ. ա. III հազարամյակում։ Սրանց կողքին հին Առաջավոր Ասիայում ապրում էին նաև այլ լեզվաընտանիքի ներկայացուցիչներ, որոնք այստեղ հայտնվել էին ավելի ուշ, բայց համենայն դեպս, բավական հին ժամանակներում։ Խոսքը վերաբերում է լեզուների հնդեվրոպական ընտանիքին, որ Առաջավոր Ասիայում ներկայացված էր հետևյալ լեզվաճյուղերով՝ անատոլիական, հնդիրանական, ինչպես և փռյուգական ու հայկական։*

**Խեթեր և լուվիացիներ:** *Ամենից վաղ Մերձավոր Արևելքում հայտնվել են անատոլիական ճյուղի լեզուների կրողները*[53]*։*

*Հնդեվրոպական լեզվաընտանիքի լեզուների պատմության մասին ընդհանուր պատկերացումներից հետևում է, որ դժվար թե դրանք այստեղ հայտնված լինեն մ. թ. ա. III հազարամյակի կեսերից առաջ։ Հնդեվրոպական անատոլիական լեզուները ներթափանցել են Փոքր Ասիա հավանաբար Բալկանյան թերակղզուց։*

---

51 *Քարթվելական լեզուների ծագման մասին տե՛ս* *Г. А. Меликишвили*, К истории древней Грузии, Тбилиси, 1959, էջ 13, *Г. А. Климов*, Этимологический словарь картвельских языков, М. 1962, էջ 37։

52 *«Ասորեստանցիներ»—աշշուրայու, կոչվում էին միայն պապգա Ասորեստանի հիմնական կորիզը հանդիսացող Աշշուր քաղաքի բնակիչները, իսկ «բաբելացիներ»՝ Բաբելոն քաղաքի բնակիչները, որը մ. թ. ա. XVII դարում միայն դարձավ Հարավային Միջագետքի մայրաքաղաքը։*

53 *Անատոլիական լեզուների մասին տե՛ս* *В. В. Иванов*, Хеттский язык, М., 1963, էջ 8 և հետ.։

Փոքրասիական հնագիտական մշակույթի մեջ մ. թ. ա. III հազարամյակի վերջին քառորդում իրոք ի հայտ են եկել էական փոփոխություններ։ Այդ փոփոխությունները վկայում են, որ այստեղ երևան են եկել էթնիկական նոր տարրեր, որոնք կարող են նույնացվել հին անատոլիացիների հետ, բայց նրանք եկել են ավելի շուտ արևմուտքից և ոչ թե արևելքից։ Բոլոր դեպքերում մ. թ. ա. II հազարամյակում հին անատոլիացիները բնակեցնում էին Փոքր Ասիա թերակղզու մեծ մասը, լեզվական տեսակետից բաժանվելով երկու ենթախմբի՝ հյուսիս-արևմտյան և հարավ-արևելյան։

Թերակղզու հարավային մասը և Տավրոսի լեռները զբաղեցնում էին լուվիական ցեղերը, որոնց բարբառները պատկանում են անատոլիական լեզուների հարավ-արևելյան ենթախմբին։ Նույն ենթախմբին է պատկանել նաև պալայացիների լեզուն, որոնք ենթադրաբար բնակվելիս են եղել Հալիս (Կըզըլ-Իրմակ) գետի վերին հոսանքի շրջանում։

Հյուսիս-արևմտյան ենթախմբին են պատկանում նախ և առաջ բուն խեթերը[54]։ Ֆիզիկական և մշակութային տեսակետներից խեթերին չի կարելի համարել պարզապես եկվոր-հնդեվրոպացիներ։ Ժողովրդի հիմնական մասը, անկասկած, կազմում էին նախախեթերը, որոնք կորցրել էին իրենց նախկին լեզուն և անցել հնդեվրոպական «խեթերենին» (նեսիերեն)։ Թեև խեթերենի հիմնական բառապաշարն ու քերականությունը, անկասկած, հնդեվրոպական են, բայց և այնպես նախախեթերենը մեծ ազդեցություն է ունեցել այդ լեզվի վրա, հատկապես հնչյունաբանության և բառապաշարի ասպարեզում։

Խեթերի բնակության վայրը պետք է համարել Հալիս գետի ոլորանի ներսում և Հալիսից անմիջապես դեպի հարավ ընկած տերիտորիան՝ Փոքր Ասիայի կենտրոնական մասում, մինչև ներկայիս Կեսարիան։

Մ. թ. ա. II հազարամյակում խեթերից ու լուվիացիներից դեպի արևմուտք ապրող անատոլիական ցեղերի լեզուները մեզ հայտնի չեն։ Բայց ավելի ուշ, սկսած մ. թ. ա. XII դարից, երբ անատոլիական լեզուները Կենտրոնական Փոքր Ասիայից դուրս են մղվում եկվորների հաջորդ՝ փռյուգիական ալիքի կողմից, թերակղզու արևմուտքում, հարավ-արևմուտքում և հարավում անատոլիական լեզուները պահպանվում են։ Դրանք էին. լյուդիացիների լեզուն՝ արևմտյան ծովեզերքի կենտրոնում (հյուսիս-արևմտյան ենթախումբ), լիկիացիների լեզուն՝ հարավ-արևմուտքում (մոտիկ է լուվիերենին), «հիերոգլիֆային խեթերենը» (լուվիերենի բարբառ)՝ թերակղզու հարավ-արևելյան մասում ու

---

54 Այս տերմինը գիտության մեջ ծագել է այն ժամանակ, երբ Փոքր Ասիայում, մ. թ. ա. II հազարամյակում տիրած էթնիկական իրադրությունը դեռևս բավականաչափ պարզ չէր։ Ներկայումս պարզված է, որ այն թագավորությունը, ուր իշխում էին խեթերը, իր մայրաքաղաքի՝ Խաթթիի (այլ կերպ՝ Խաթթուս կամ խեթերեն՝ Խաթթուսաս) անունով նույնպես կոչվել է Խաթթի։ Բայց ժողովրդի լեզուն այդպես չի կոչվել (հավանաբար այն կոչվել է նեսիերեն), իսկ խեթերեն կամ խաթերեն է կոչվել Խաթթի քաղաքի բնիկ ազգաբնակչության ոչհնդեվրոպական լեզուն։ Սակայն խեթեր և խեթերեն տերմինները, նեսիներ և նեսիերեն իմաստով արդեն այնքան հաստատ են մտել գիտական շրջանառության մեջ, որ դժվար է դրանցից հրաժարվել։ Այդ պատճառով էլ Խաթթիի բնիկներին (իրենց ոչ հնդեվրոպական լեզվով) խեթական թագավորությունում գերիշխող և նեսիերեն խոսող ժողովրդից տարբերելու համար կոչում ենք նախախեթեր, իսկ նեսիերեն խոսողներին՝ խեթեր։

Հյուսիսային Ասորիքում և այլն։ Խեթերից արևելք բնակվում էին հայասական ցեղերը։

Կարևոր է ընդգծել, որ մ. թ. ա. I հազարամյակում շրջակա ժողովուրդները խաթի, խաթե անունով կոչում էին ոչ թե որոշակի ժողովրդի, այլ առհասարակ նախկին խեթական տերության և դեռ ավելին՝ Եփրատի և Միջերկրական ծովի միջև ընկած բոլոր շրջանների ողջ բնակչությանը։

**Հնդիրանական ճյուղի լեզուների կրողները:** Հնդեվրոպական լեզուների միանգամայն այլ, անատոլիականից բավական հեռու և նրա հետ անմիջական առնչություն չունեցող ճյուղի է պատկանում ևս մեկ լեզու, որը վկայված է Առաջավոր Ասիայում մ. թ. ա. II հազարամյակի երկրորդ և երրորդ քառորդում[55] մարդկանց և աստվածների համեմատաբար փոքրաթիվ հատուկ անուններով (ի միջի այլոց, նաև խուրրիական Միտաննի պետության թագավորների անուններով)։ Այդօրինակ անունների տարածման սահմանը համընկնում է Միտաննի պետության ազդեցության տարածման սահմանի հետ (Իրանի նախալեռներից մինչև Պաղեստին)։ Այս լեզվից որոշ բառեր են պահպանվել նաև խուրրիական ծագում ունեցող ձիաբուծական մի տրակտատում, որ վերաբերում է XIV դարի վերջերին։ Այդ լեզվի անվանումն անհայտ է։ Լեզուն պատկանել է հնդեվրոպական ընտանիքի արիական (հնդիրանական) ճյուղին։ Ենթադրում են, որ այս «արևմտահնդիրանական» լեզվով խոսողները կատարելագործել են Առաջավոր Ասիայում արդեն նախապես, մ. թ. ա. III հազարամյակի վերջերից, գոյություն ունեցող ձիաբուծությունը և ձիերով մարտակառքերի կիրառումը, հանգամանք, որ իր ազդեցությունն է գործել հին-արևելյան տեխնիկայի զարգացման, ինչպես և քաղաքական իրադարձությունների ընթացքի վրա։ Առաջավոր Ասիայի մշակութային ու էթնիկական համապատկերում նրանք այլ հետք չեն թողել[56]։

Սրանք էին ահա էթնիկական գործող միավորները պատմական այն իրադարձությունների, որոնք Հայկական լեռնաշխարհում և նրան սահմանակից երկրներում նախորդեցին հայ ժողովրդի կազմավորմանը։

---

55 Այս տարրի շփումը խուրրիների հետ տեղի է ունեցել Իրանական բարձրավանդակի հյուսիս-արևմտյան մասում, մ. թ. ա. XVII դարից առաջ։ Սակայն Միտաննի պետության կազմավորման պահին (մ. թ. ա. XVI դար), հնդիրանական այդ տարրը արդեն մահանում էր, թեև խուրրիական ավազանու շրջանում դեռևս հանդիպում էին հնդիրանական հատուկ անուններ։

56 Տե՛ս *A. Kammenhuber*, Die Arier im Vorigen Orient, Heidelberg, 1968.

## ԲԱԺԻՆ Բ

# ՏՈՀՄԱՏԻՐԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՔԱՅՔԱՅՈՒՄԸ ԵՎ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԾԱԳՈՒՄԸ

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԻՋԻՆ ԲՐՈՆԶԻ ԴԱՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**(Մ. թ. ա. II հազարամյակի առաջին կես)**

## I. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻՋԻՆԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*Խեթական և խուրրիական ցեղերի համախմբման, նրանց մեջ դասակարգային հարաբերությունների ձևավորման և պետությունների ստեղծման ժամանակաշրջանը համընկնում է Հայաստանի մշակույթի միջինբրոնզեդարյան ժամանակաշրջանի հետ։ Բրոնզեդարյան մշակույթի զարգացման այս փուլը ընդգրկում է Հայաստանի տոհմացեղային հասարակության վայրէջքի ժամանակաշրջանը։*

*Երկրի տնտեսության հիմնական ճյուղերի, մասնավորապես անասնապահության, երկրագործության ու մետաղամշակության առաջընթացը, ինչպես նաև արտադրողական ուժերի, փոխանակության, առևտրի և մշակութային տնտեսական ներքին ու արտաքին փոխհարաբերությունների զգալի աշխուժացումը խորացնում են անցյալ հազարամյակի վերջերից նշմարվող սոցիալ-տնտեսական անհավասարության պրոցեսը տարբեր ցեղերի ու ցեղային միավորումների միջև, ինչպես նաև միևնույն տոհմի կամ ցեղի բուն ընդերքում։ Սոցիալ-տնտեսական զարգացման բարձր մակարդակի են հասնում առանձնապես Հայկական լեռնաշխարհի արևմտյան և հարավ-արևմտյան շրջանների ցեղերն ու ցեղախմբերը, որոնք ժամանակավորապես մտնում են խեթական պետության, Հայասա-Ազզիի ցեղային միավորման կամ Միտաննիի վաղստրկատիրական պետության կազմի մեջ։*

*Հայկական լեռնաշխարհի բնիկները, պահպանելով իրենց ավանդական մշակութային հարաբերությունները Միջագետքի ու արևմտա-իրանական քաղաքակիրթ շրջանների հետ, ստեղծված նոր իրադրության պայմաններում մշակութային-տնտեսական ինտենսիվ հարաբերությունների մեջ են մտնում նաև Կենտրոնական Անատոլիայի, Ասորիքի, նրանից դեպի արևմուտք ընկնող շրջանների հետ։ Առաջավորասիական մշակութային տնտեսական միջավայրը, մանավանդ խուրրիների՝ հարավում և խեթերի՝ Հայկական լեռնաշխարհի հարավային ու արևմտյան եզրերն ընդգրկող պետությունների իրենց որոշակի դրոշմն են դնում միջինբրոնզեդարյան ժամանակաշրջանում ձևավորվող մշա-*

*կույթի վրա։ Այսուհանդերձ, վերջինիս զարգացումը շարունակում է ընթանալ հիմնականում ինքնատիպ՝ ներքին օրինաչափություններով, որոնցով և պայմանավորվում են լեռնաշխարհի միջինբրոնզեդարյան մշակույթի բնույթն ու զարգացման ուղիները։*

**Միջինբրոնզեդարյան մշակույթի հիմնական օջախները:** *Այժմ Հայկական լեռնաշխարհի ու նրան հարող անդրկովկասյան շրջանների քարտեզի վրա որոշակիորեն ուրվագծվում են մի քանի մշակութային տնտեսական տեղային օջախներ, որոնք հետզհետե ձևավորվելով, որոշակի տեղ են գրավում Առաջավոր Ասիայի նյութական արտադրության ասպարեզում։*



Կավանոթներ Թազաքենդի դամբարաններից

*Զարգանալով տեղական հումքի բազաներին առընթեր, նյութական մշակույթի այս օջախները ընդգրկում են զգալի տարածություն՝ Կովկասյան լեռների փեշերից, Կուրի ու Ռիոնի ավազանից մինչև Մուղան ու Ղարաբաղ, Արաքսի միջին հոսանքից մինչև Եփրատի արևմտյան ափը։*

*Հնագիտորեն տակավին չուսումնասիրված է մնում հայ ժողովրդի ծագման հետ կապված կարևորագույն օջախներից մեկը՝ Հայասա-Ազզի երկիրը՝ Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասում, որի միջինբրոնզեդարյան հուշարձանները հավանաբար անմիջականորեն կապվելու են մի կողմից Կարսի, Տաշիր-Ձորագետի ու Թռեղքի, մյուս կողմից՝ Կենտրոնական Անատոլիայի բուն խեթական հուշարձանների հետ։*

Նմանօրինակ մի այլ օջախ վերջերս նշմարվում է Հայաստանի հարավարևմտյան շրջաններում, պատմական Թոգարմա (Թորգոմա) երկրում, Եփրատից արևմուտք ընկած Կիզվատնայում (անտիկ Կատաոնիայում) խուրրիական ցեղերի հնագույն օրրաններից մեկում, որտեղ պարզորոշ դիտվում է մշակույթի հաջորդական փուլերի զարգացումը՝ էնեոլիթյան և վաղբրոնզեդարյան ժամանակներից սկսած։ Արսլան-Թեփեի, Արգուվանի, Խանքենդի (Եփրատից արևելք) բնորոշ բնակատեղիները տվել են միագույն և բազմագույն զարդանախշված խեցեղենի հիանալի կոմպլեքսներ, որոնք իրենց ձևերով, նախշման տեխնիկայով, գույների համադրությամբ համոզիչ զուգահեռներ ունեն մի կողմից Կիլիկյան Տավրոսի և Ալալախի միջին բրոնզեդարյան շերտերում[1], մյուս կողմից՝ Արևելյան Հայաստանի հնագիտական նյութերում։

Սակավ են հնագիտական տվյալները նաև հին մետաղահանության ու մետաղամշակության այնպիսի կենտրոնների վերաբերյալ, ինչպիսիք են Ռշտունյաց, Սասնո, Կորճայք-Ջուլամերկի (պատմական Մուսասիր), Անգեղտան (Արզանա) գավառները։ Սակայն այս տերիտորիաների մասին մեզ հնագույն գրավոր տեղեկություններ են հասել։ Մ. թ. ա. II հազարամյակի ասուրական սեպագիր արձանագրություններից գիտենք, որ Հայկական Տավրոսի հարավային փեշերին Սասունը առաջին տեղն է գրավում հին աշխարհում կապարի, ըստ երևույթին նաև անագի, պաշարների տեսակետից, Մուսասիրը ամենահարուստ էր պղնձի պաշարներով ու հանույթով[2], Ռշտունյաց լեռներն էլ կապարի, պղնձի, երկաթի հանքերով։ Հայ հին պատմագրության մեջ այս լեռները կոչվում են «կապարահատաց և երկաթահատաց լերինք»[3] այնպես, ինչպես Կիլիկյան Տավրոսի սարերը ասուրական արձանագրություններում կոչվում են «արծաթյա»։

Արևելյան Հայաստանի միջինբրոնզեդարյան մշակույթի կենտրոնները, որոնք, ի տարբերություն Արևմտյան Հայաստանի, սիստեմատիկ ուսումնասիրության առարկա են դարձել, հնարավորություն են ընձեռում բնութագրելու Հայաստանի միջինբրոնզեդարյան մշակույթի զարգացման աստիճանական փուլերը՝ մ. թ. ա. II հազարամյակի սկզբներից մինչև 1500-ական թվականները։ Այդպիսի երեք օջախներ նշմարվում են Արարատյան դաշտավայրի, Տաշիր—Ձորագետ—Թռեղքի և Սևան—Ղարաբաղ—Մուղանի սահմաններում։

**Բնակատեղիներ, ամրոցներ և դամբարանադաշտեր**: Միջին բրոնզի դարի ժամանակաշրջանի մշակույթն ընդհանրապես հարուստ է մեգալիթյան աչքի ընկնող հուշարձաններով։ Անասունների և արոտավայրերի համար մղվող միջցեղային անընդմեջ պայքարը հասցրել էր թշնամական հարաբերությունների և հանապազօրյա զինական բախումների։ Այդ պայմաններում Հայաստանի տեղաբնակ ցեղերի շատ ու շատ բնակավայրեր վերածվում են անառիկ ամրոցների, էնեոլիթի և վաղ բրոնզի դարաշրջանից պահպանված հին ամրոցները ընդլայնվում են, վերակառուցվում։ Արևելյան Հայաստանի տերիտորիայում այդ-

---

[1] Տե՛ս C. A. Burney, Eastern Anatolia in the Chalcolitic and early bronze Age, AS, VIII, 1958, Ancara, էջ 205—208, էջ 264—273։

[2] Տե՛ս Н. Б. Янковская, Некоторые вопросы экономики Ассирийской державы, ВДИ, 1956, էջ 28—40։

[3] Փավստոս, Գ, ժ։

պիսի ամրոցների թվին են պատկանում Շիրակի բարձրադիր Հոռոմ ամրոցը՝ Ոսկեվազի անդնդախոր ձորի շուրթին կանգնեցված հզոր ամրոցը, Հրազդանի ձորի եզրին, Քանաքեռի դիմաց բարձրացող Թազաքենդի բերդը և այլն, որոնք ամրացված են կանոնավոր, շատ լայն ու բարձր պարիսպներով, անկյունային աշտարակներով ու որմնահեցերով, ունեն ճարտարապետական հասուն ձևեր ու մանրամասեր։



Բազմագույն զարդարուն կավանոթներ. Նոր-Բայազետ

Երկրի լեռնային շրջանների համար բնորոշ են ամրոց-բնակատեղիները։ Դրանցից մեկը Երիվարաց դաշտի (Ղոշունդաշի) բնակավայրն է Սիսիանի արևելյան մասում, մի բարձրադիր հարթակի վրա։ Նրա ապառաժ ժայռաբեկորներից կազմված կրկնակի պարիսպները, համայնական, իրար կից տների քարակերտ պատերի հետքերը, ներմիջանցքներն ու փողոցները, բնակատեղին շրջապատող տարբեր տիպի կրոմլեխները, դամբանաթմբերը, մենհիրները, սալածածկ, հսկա «քարարկղային» դամբարանները անջնջելի տպավորություն են թողնում։ Բնակավայրի ամբողջ տարածությունը ծածկված է կարմրափայլ գունազարդ խեցեղենի բեկորներով, որոնք մարդու երկարամյա կենսական գործունեության համեստ վկաներն են։

Ինչպես լեռնային, այնպես էլ դաշտավայրային բնակատեղիները գրեթե չեն ուսումնասիրված։ Բացառություններ են կազմում Մուխաննաթ-Թափայի բնակատեղին Արարատյան դաշտավայրում և Ուզերլիկ-Թափան Դաշտային Ղարաբաղում։ Նշված բնակատեղիների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տնտեսության, բնակարանաշինության, արտադրական ու ընտանեկան կենցաղում Հայաստանի միջինբրոնզեդարյան բնակիչը շարունակում էր ապրել մ. թ. ա. III հազարամյակի մշակութային ավանդույթներով։

Համեմատաբար լավ է պահպանվել Ուզերլիկի բնակատեղին՝ Աղդամ քաղաքի մոտ գտնվող 3—3,5 մ բարձրությամբ բլրի վրա։ Բնակատեղին ունի երեք շերտ, մոտավորապես 3 մ միջին հզորությամբ, կավակերտ, հավանաբար, կլոր կացարաններ, հացահատիկի և այլ մթերքների բազմաթիվ հորեր, անասունների գետնափոր գոմեր և հում աղյուսից կառուցված շրջանաձև պարիսպ՝ որմ-

նասյուններով ու մի քանի մուրճով[4]։ Այստեղ էլ, Մուխաննաթ-Թափայի նման, սև հասարակ ու փայլեցված կավանոթները նախորդում են կարմրափայլ գունազարդ խեցեղենին և բոլորը միասին համապատասխանում Լճաշենի XVII—XV դդ. հարուստ դամբանաբլուրների նյութերին։ Մուխաննաթ-Թափայի և Ուզերլիկի մշակութային շերտերում հայտնաբերված բազմաթիվ այլ իրեր՝ ոսկորե հերուններն ու թեշիկների գլուխները, սանդերը, սանդակոթերն ու աղորիքները, մանգաղի օբսիդիանե ներդիրները, բոլորն էլ բնորոշ են դաշտավայրերի երկրագործական մշակույթի համար և գրեթե ոչնչով չեն տարբերվում մ. թ. ա. III հազարամյակի հնագիտական կոմպլեքսներից։

Ժամանակի նյութական արտադրության, տեխնիկայի, հասարակական կյանքի վերաբերյալ տեղեկությունները զգալի չափով լրացվում են Կիրովականից դեպի Դմանիս ու Թռեղք տարածվող դամբանաթմբերի պեղումներով, որոնք մ. թ. ա. II հազարամյակի առաջին կեսի յուրովի գեղեցիկ «բարբարոսական» մշակույթի ընդհանուր կերպարը ներկայացնում են արհեստագործության և արվեստի տարբեր ճյուղերի արտադրանքի առաջնակարգ նմուշներով։

Կիրովականում ցեղապետներից մեկի համեմատաբար համեստ դամբարանը փորված էր հողի մեջ և գրավում էր 30 քմ տարածություն։ Դամբարանի կենտրոնում փայտե դիամահճի վրա գտնվեցին հանգուցյալի ոսկուց և սարդիոնից պատրաստված գեղեցիկ մանյակն ու անձնական այլ իրեր, որոնք շրջապատում էին աճյունասափորը։ Դամբարանի պատերին զուգահեռ շարված էին շքեղ, կարմրափայլ գունազարդ, սև փայլաներկով փորագիր նախշերով ու սպիտակ զանգվածով ծածկված մեծ ու փոքր անոթներ, գավաթներ, քրեղաններ, սափորների տասնյակ տարատեսակներ, որոնք իրենց կատարման տեխնիկայով, ձևերով ու զարդամոտիվներով միանգամայն նման էին Դմանիսի ու Թռեղքի դամբանաբլուրներում հայտնաբերածներին։ Զգալի քանակությամբ էին ներկայացված արծաթե, ոսկե, բրոնզե ամանեղենը, աշխատանքի գործիքներն ու զենքերը։ Հանգուցյալի աճյունասափորը գերեզման էին իջեցնում դիակառքով, որին լծում էին ուժեղ և գեղեցիկ եզներ։

Առավել շքեղ պատկեր էին ներկայացնում ցեղապետների թաղումները Ծալկայի սարահարթում (պատմ. Թռեղք գավառում)։ Թաղումները այստեղ կատարվել են 200—300 տարի ընդգրկող ժամանակահատվածում, որ պարզ երևում է ինչպես դամբարանային նյութերի, այնպես էլ դամբարանների կառուցվածքային առանձնահատկությունների համեմատական ուսումնասիրությունից։ Ավելի հին շրջանի դամբարանները գետնափոր էին, նոր շրջանինը՝ վերերկրյա-պատաշար, նրանք բոլորն էլ ընդարձակ սրահներ էին՝ 140—170 քմ ընդհանուր տարածությամբ, 6—9 մ խորությամբ կամ պատերի բարձրությամբ, պատերի աստիճանաձև շարվածքով, հզոր գերանե ծածկերով, լայն դրոմոսներով և այլն։

Կարելի է երևակայել, թե որքան մարդկային ուժ է գործադրվել այս տիպի դամբարաններ կառուցելու համար։ Նրանց որոշ մասը պարզապես հիշեցնում

---

4 Տե՛ս *К. Х. Кушнарева,* Новые данные о поселении Узерлик-Тепе, около Агдама, «МИА СССР», 125, М.—Л., 1965, էջ 74—77։

*է եգիպտական հին թագավորության շրջանի փարավոնների հսկա բուրգերը։ Հանգուցյալին նախապես դիակիզում էին և աճյունասափորը դիակառքով տեղավորում թաղման ընդարձակ սրահի կենտրոնում, որի շուրջը սփռում էին մորթված անասունների մարմիններ, ուտելիքով լի տասնյակ ամաններ, հանգուցյալի սպառազինություն, արդուզարդի, կենցաղի թանկարժեք առարկաներ և այլն։ Սակայն, հայտնի են միջինբրոնզեդարյան ժամանակաշրջանի մեկ-երկու տասնյակ գերեզմաններ, որոնք ժամանակի նյութական արտադրության միջին մակարդակի անաչառ վկաները հանդիսանալուց բացի, մատնանշում են, որ մ. թ. ա. II հազարամյակի կեսերին Արարատյան դաշտավայրում, Շիրակում և այլուր նույնպես տարածվում էր տեղաբնակ ցեղերի այն մշակույթը, որին ծանոթացանք վերը բերված Գուգարք—Թռեղքի հոյակապ հուշարձանների միջոցով։*



Սպիտակ ագուցվածքով խեցանոթների նմուշներ. Կիրովական

*Տոհմացեղային հասարակության միջին խավերին պատկանող դամբարաններ են ուսումնասիրվել Էջմիածին քաղաքից հարավ՝ Խաթունարխի ճանապարհի աջ եզրին[5]։ Սրանք կավահողի ամուր շերտերի մեջ փորված քառանկյունի կամ քառակուսի ոչ խոր (1 մ) փոսեր էին, առավելը 4—5 քմ տարածությամբ, առանց փայտե կամ քարե ծածկույթի, որոնց ամբողջ հատակը զբաղեցված էր հարուստ կուրգանների խեցեղենի տիպերը կրկնող կարմրափայլ սև դրվագանախշերով կամ պարզապես գորշ ու հասարակ «խոհանոցային» ամաններով։*

---

5 *Տե՛ս А. А. Мартиросян,* Армения в эпоху бронзы и раннего железа, Ереван, 1964, *էջ 67—70։*

ի տարբերություն հարուստ դամբարանների, այս գերեզմանափոսերի կենտրոնական մասում ամենուրեք հանդիպում են կողքի վրա պառկեցրած մարդկային կմախքների մնացորդներ՝ զարդարանքի առարկաներով, սակավաթիվ փոքրիկ բրոնզե դաշույններով՝ կաշեպատ փայտե պատյանների մնացորդներով։ Հաճախ դաշույնների հետ միասին հանդիպում են վանակատե կամ կայծքարե հիանալի մշակված, թափանցիկ նետասլաքներ, որոնց փայտե կոթերն ու աղեղները, դժբախտաբար, չեն պահպանվել։ Այս դամբարանների ուսումնասիրությունն ակնհայտորեն ցույց է տալիս, որ տեղի տոհմական բնակչության հսկայական մեծամասնությունը չէր հետևում վերնախավի «խեթականացած» ծեսերին և արարողություններին, պահպանում էր հին բրոնզի դարից եկող թաղման ձևերն ու սովորույթները։

## 2. ՄԻՋԻՆ ԲՐՈՆԶԻ ԴԱՐԻ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Միջինբրոնզեդարյան Հայաստանի համար բնորոշ է երկրագործության դանդաղ աճը։ Այդ մասին են վկայում, նախ և առաջ, հնավայրերում հայտնաբերված երկրագործական իրերի՝ վանակատե դանակների, մանգաղի ներդիրների, սանդերի, աղորիքների, տրորիչների և այլ գործիքների ձևերը, որոնք, սկսած III հազարամյակից, երկար դարերի ընթացքում գրեթե ոչ մի փոփոխության չեն ենթարկվում։ Չեն երևում նաև բրոնզից պատրաստված նոր գործիքներ։ Երկրագործությունը, անկասկած, մնում է արորային, ոռոգման մեծ աշխատանքներ չեն կատարվում և մշակելի հողատարածությունները առաջվա նման դարձյալ հեռու չեն գետերին ու գետաբերաններին հարող բարեբեր ու հեշտ ոռոգելի վայրերից։ Այնուամենայնիվ, բնակչության աճը, բնակավայրերի ընդլայնումը, խոշոր եղջերավոր անասունների աշխատանքի ավելի լայն կիրառումը երկրագործության մեջ՝ հասցնում են հացահատիկային տնտեսության, բանջարա-բոստանային ու այգեգործական կուլտուրաների մշակության համեմատաբար բարձր մակարդակի։

Հատկանշական է, որ Ուզերլիկ-Թեփե բնակավայրի ստորին շերտի մի փոքրիկ հատվածում բացվել է 70 հոր, որոնցից շատերը լցված են եղել ցորենի, գարու այրված հատիկներով և կորեկի ալյուրով։

Ավելի ցայտուն ու որոշակի են անասնապահության զարգացումն ուրվագծող նյութերը։ Միջինբրոնզեդարյան բնակավայրերում ու դամբարաններում հանդիպում են մանր ու խոշոր ընտանի կենդանիների կմախքներ կամ առանձին մասեր։ Սրանց հետ միասին հաճախ հանդես են գալիս նաև ձիերի ու շների ոսկորներ, որոնց օգտագործումը տնտեսության մեջ կապված էր կիսաքոչվորական անասնապահության վերելքի հետ։ Մանր և խոշոր եղջերավոր անասունների զգալի քանակական աճը հավելյալ արտադրանքի կուտակման, փոխանակության ու առևտրի հուսալի բազա է դառնում։ Անասնապահության ու երկրագործության ընդհանուր վերելքին աղնթեր, Սևանի ավազանում, Հյուսիսային Հայաստանի շատ վայրերում նկատվում է տոհմային անասնապահության ու ձիաբուծության զարգացում։ Լճաշենի դամբարաններում հայտնաբերված ցուլերը, կովերը, ձիերը, աչքի են ընկնում հսկայական չափերով ու տեսակային գերազանց հատկանիշներով։

Անասունների նշված տեսակները Տաշիր—Ձորագետի և Տաշրատափի սարահարթով տարածվում են Թռեղքում՝ Ծալկայի սարահարթում[6]։ Լճաշենի պեղումներով հայտնաբերված նյութերը առաջին անգամ հստակորեն բնորոշում են նաև խոզաբուծության զարգացումը։ Հետաքրքիր է, որ Սևանի շրջակայքում հայտնաբերված ուշբրոնզեդարյան գոտիների վրա, ի թիվս այլ կենդանիների, պատկերված են նաև խոզեր։

Մանր եղջերավոր անասուններից Լճաշենի հնավայրերի համար բնորոշ են ոչխարը, այծը և խոզը։ Վայրի կենդանիներից ամենից ավելի հաճախ պատահող մնացորդները պատկանում են եղջերուին, կխտարին, կզաքիսին, ընձառյուծին, վայրի այծին, աղվեսին։ Հասկանալի է, որ խաշնարածության հետ միասին շարունակում էր զարգանալ նաև որսորդությունը, որը սննդամթերքի լրացուցիչ աղբյուր էր։ Սևանի ավազանի, Տաշիր—Ձորագետի անտառները լիքն էին եղնիկներով, մարալներով, արջերով, վայրի ճագարներով, զանազան տեսակի մանր գիշատիչներով։

**Խեցեգործություն:** *Տնտեսության հիմնական ճյուղերի զարգացումը, ընտանեկան կենցաղի ու պաշտամունքի կարիքները առաջ էին մղում խեցեգործական արհեստը։* Միջինբրոնզեդարյան խեցեգործության վաղ կոմպլեքսներ են հանդիպում մ. թ. ա. II հազարամյակի առաջին քառորդին պատկանող Թազաքենդի, Էլարի, Մեծամորի դամբարանադաշտերում, Մուխաննաթ-թափա, Աղթամիր, Ցրանգանոց բնակատեղիներում[7]։ Նշված հուշարձանների համար միանգամայն բնորոշ է միատիպ գունազարդ խեցեղենը, որի պատճառով էլ միջինբրոնզեդարյան զարգացման ամբողջ փուլը հնագետները հաճախ անվանում են «գունազարդ խեցեղենի դարաշրջան»։

Միջինբրոնզեդարյան վաղ շրջանի հուշարձաններից ամենաբնորոշը Թազաքենդի դամբարանադաշտն է, որի խեցեղենը աչքի է ընկնում թասերի, քրեղանների, կճուճների, սափորների կարմրափայլ մակերեսով և սև փայլաներկով կատարված երկրաչափական զարդամոտիվներով։ Վերջինները բաղկացած են ուղիղ և ալիքավոր գծերի, եռանկյունիների, ցանցավոր, ռոմբաձև քառանկյունի պատկերների հորիզոնական ժապավեններից և մարդկային ու օձակերպ նկարների կոմպոզիցիաներից։

Գունազարդ կերամիկայի վաղ շրջանի նշված կավանոթներն իրենց ձևերով ու զարդամոտիվներով ծագում են վաղբրոնզեդարյան ժամանակաշրջանի վերջին փուլի սև փայլեցրած խեցեղենից և կապվում են այդ նույն հատկանիշներով Խարբերդ—Մալաթիայի ու Կենտրոնական Անատոլիայի մի շարք բնակավայրերի (Բողազքյոյի, Ալիշարի, Քյուլ-Թեփեի, Կանեշի, Դեղիկի) կերամիկայի հետ։

Հայաստանի խեցեղենի փոքրասիական նշված զուգահեռներից առանձնապես կարևոր նշանակություն ունի Ալիշար բլրի 3-րդ շերտում հայտնաբերված կերամիկան, որը սեպագիր կապադովկյան աղյուսակների օգնությամբ

---

6 Անասնապահության մասին բոլոր տվյալներն ու եզրակացությունները պատկանում են կենդանաբան Ս. Կ. Մեժլումյանին (տե՛ս *С. К. Межлумян,* Крупный рогатый скот из погребений эпохи бронзы. Изв. АН Арм. ССР, 1963, № 3, *նույնի,* Млекопитающие эпохи бронзы на территории Армении (автореферат канд. диссертации), Ереван, 1963).

7 Տե՛ս *А. А. Мартиросян,* Армения в эпоху бронзы..., էջ 47—56։

*թվագրվում է մ. թ. ա. III հազարամյակի վերջով և իր բազմագույն զարդամոտիվներով բավականաչափ մոտենում Հայաստանի նյութերին։ Հին Հայաստանի մշակույթի հետ բրոնզեդարյան Ալիշարի ընդհանրություններն ու աղերսները լոկ խեցեղենի նմանություններով չի սահմանափակվում։ Ալիշարն ուսումնասիրող բոլոր հնագետները (Օստեն, Շմիդտ, Բիտտել և ուրիշներ) պընդում են, որ նրա առաջին և երկրորդ շրջաններում ներկայացված է Արևմտյան Հայաստանի հետ սերտորեն կապված կապադովկիական բնիկ ցեղերի մշակույթը*[8]*։*

*Կապադովկիական բնիկ ցեղերի մշակույթի արևելյան աղերսները և Հայաստանի երկրորդ հազարամյակի խեցեղենի բնորոշ ձևաբանական ու տեխնիկական հատկանիշները վերջնականապես ցույց են տալիս, որ նրա արտադրության ակունքներն ու բուն կենտրոնը պետք է տեսնել Հայկական լեռնաշխարհի վաղբրոնզեդարյան մշակույթի վերջին փուլի նյութական արտադրության մեջ*[9]*։*

*Գունազարդ խեցեղենի արտադրության չափազանց ինքնատիպ ու նոր մակարդակ է ցուցաբերում Սևանի ավազանի և Մուղան—Ղարաբաղի հուշարձանների խումբը, որն ընդգրկում է Լճաշենի տասնյակ նորահայտ դամբարաններ։ Լճաշենի նշված խմբի խեցեղենի համար բնորոշն այն է, որ սակավ հանդիպող Թազաքենդյան վաղ տիպի կավանոթների ձևերն ու զարդանախշերը այլասերվում են, անհետանում և տեղի տալիս ռոմբաձև միագույն զարդարված կարմրափայլ ու սև փայլուն մակերես ունեցող խեցեղենին, որի մոնումենտալ փորագիր զարդերը կազմված են կիսագալար պարույրների, կիսաշրջանների, եռանկյունի և ալիքավոր զուգահեռ զարդանկարների գեղեցիկ համադրումներից։ Այս մոտիվների բոլոր տարրերն էլ փոխառված են Թազաքենդյան զարդանախշերից, սակայն ամբողջությամբ վերցված, դրանք արդեն նման չեն ոչ Հայաստանի միջինբրոնզեդարյան փուլի, ոչ էլ Փոքր Ասիայի խեցեղենին։ Խեցեղենի արտադրության պատմության մեջ սա մի ուրույն ու ինքնատիպ փուլ է՝ բնորոշ միայն Հայկական լեռնաշխարհի համար*[10]*։*

*Միջինբրոնզեդարյան խեցեղենի արտադրության վերջին փուլը ներկայացված է Թռեղք—Կիրովական խմբի հուշարձաններով, որոնք մասնագետների կարծիքով, վերաբերում են մ. թ. ա. XVI—XV դարերին։ Այս շրջանի անոթների, գավաթների, քրեղանների տասնյակ ու հարյուրավոր տարատեսակները իրենց կարմրափայլ մակերեսով, սև փայլաներկի հարուստ զարդանախշերով և սև փայլեցված կերամիկայի փորագիր սպիտակ օրնամենտներով բնորոշ են գունազարդ խեցեղենի արտադրության ծաղկման ժամանակաշրջանին, երբ խեցեգործ վարպետն աշխատում է կարկինի, քանոնի, սրածայրի ու այլ գործիքների օգնությամբ, երբ նախադրյալներ են ստեղծվում ուշբրոնզեդարյան խեցեգործությանն անցնելու համար*[11]*։*

---

8 *Տե՛ս E. Shmidt*, Alishar, Chicago, 1931, *էջ 101—102։*

9 *Տե՛ս А. А. Мартиросян*, Армения в эпоху бронзы..., *էջ 54։*

10 *Լճաշենի նշված խմբի նյութերն առայժմ հրատարակված չեն, բացի մի դամբարանից (տե՛ս Է. Խանզադյան, Լճաշենի № 6 կուրգանը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1960, № 2, էջ 65 և հաջ.)։*

11 *Հայաստանի և Վրաստանի գունազարդ խեցեղենի մասին տե՛ս Б. А. Куфтин*, Археологические раскопки в Триалети, I, Тбилиси, 1941, *էջ 86—87։*

Այսպիսով, մ. թ. ա. II հազարամյակի առաջին կեսում նշմարվում է գունազարդ խեցեղենի արտադրության առնվազն երեք փուլ, որոնց հաջորդում է վայրէջքի, անկման, գունազարդ խեցեղենի անհետացման մի երկար շրջան։



Գունազարդ անոթ. Սևան

Սակայն Հայաստանի որոշ շրջաններում, գերազանցապես Արարատյան դաշտավայրի արևելյան ծայրամասում և մասամբ Վանի շրջանում ուշբրոնզեդարյան նյութական արտադրության նոր ծագող ու զարգացող նմուշների հետ առընթեր գունազարդ կերամիկայի արտադրությունը շարունակում է հարատևել մ. թ. ա. XIV—VIII դարերի ընթացքում։ Այդ մասին են վկայում Ի. Ի. Մեշչա-

Նինուլի[12] և Ա. Ա. Միլլերի[13] կատարած պեղումները Արաքսի ափին՝ Կարմիր վանքում և ամերիկյան արշավախմբի հետախուզական պեղումները Վան-Տոսպում[14]։

Այսպիսով, Հայաստանի որոշ շրջաններում գունազարդ կերամիկայի արտադրությունը շարունակվում է ամբողջ II հազարամյակի ընթացքում։ Այդ նույն երևույթը նկատվում է նաև Փոքր Ասիայում, խեթական թագավորության սահմանների մեջ։

Հայկական բարձրավանդակի մնացած մասերում, գրեթե ամենուրեք, սկսած մ. թ. ա. XIV դարից զգալի բեկում է նկատվում նյութական արտադրության առաջատար ճյուղերում, սկսվում է անցման մի ժամանակաշրջան, որի իրեղեն հուշարձանների կոմպլեքսներն ունեն երկակի բնույթ։ Նրանց մեջ միջինբրոնզեդարյան ավանդույթները պահպանող առարկաները մեծ քանակությամբ հանդես են գալիս ուշ բրոնզի դարին հատուկ իրերի ու առարկաների և մասնավորապես հիանալի սև փայլեցված կավանոթների հետ, որոնց զարդանախշերը ավելի պարզ ու հստակ են՝ կատարված միանգամայն նոր տեխնիկայով, նրբահյուս գծիկներով, գծազարդ, սանրանախշ ու փորագիր օրնամենտներով։

**Մետաղամշակություն:** Մ. թ. ա. II հազարամյակի առաջին կեսին շրջադարձային փոփոխություններ են կատարվում ոչ միայն խեցեգործության, այլև արհեստագործության ամենաբազմազան բնագավառներում, որոնցից ամենագլխավորը մետաղամշակությունն էր։ Հայաստանում և նրա սահմանակից շրջաններում՝ Ասորիք—Պաղեստինում, էգեյան և միքենյան մշակույթների տարածման շրջաններում վաղբրոնզեդարյան մետաղագործությանը բնորոշ զենքերի ու գործիքների փոխարեն երևան են գալիս զենքերի ու գործիքների կատարելագործված տիպեր և առանձնապես՝ բնորոշ խողովակակոթառ նիզակներ, որոնք չնչին փոփոխություններով պահպանվեցին մինչև բրոնզեդարի վերջը և վաղ երկաթի ժամանակաշրջանը։

Հատկանշական է, որ Հայաստանի հնագույն խողովակակոթառ նիզակը ծագում է Լճաշենի գունազարդ խեցեղենի ամենանշանավոր դամբանաթմբից (№ 40)։ Այն ուղղակի զուգահեռներ ունի միջին ուգարիթյան առաջին հորիզոնի նյութերում, որոնք թվագրվում են մ. թ. ա. 2100—1900 թվականներով[16]։ Միջին ուգարիթյան շերտն իր երեք հորիզոններով (2100—1900, 1900—1750, 1750—1699 թվականներ) համապատասխանում է Հայաստանի միջինբրոնզեդարյան հուշարձանների ժամանակագրությանը և թվագրվում շերտագրականստույգ դիտողություններով, ինչպես նաև Եգիպտոսի Սեսոստրիս I փարավոնի (մ. թ.

---

12 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, Л., 1949, էջ 46։ *И. И. Мещанинов,* Краткие сведения о работах археологической экспедиции в Нагорном Карабахе и Нахичеванском крае, «Сообщения ГАИМК», I, 1926.

13 *Տե՛ս А. А. Миллер,* Археологические исследования в Нахичеванской республике, «Сообщ. ГАИМК», I, 1926.

14 *Տե՛ս H. H. Osten,* Die urartäische Töpferei aus Van, „Orientalia" 1952; XXI, 3, էջ 307—338, 1953, XXII, 4, էջ 329—354։

15 *Տե՛ս Հ. Հ. Մնացականյան,* Լճաշենի մշակույթի զարգացման հիմնական էտապները, ՊԲՀ, 1965, № 2, էջ 101։

ա. 1970—1936) անունը կրող իրերով, որոնք հանդիպում են Բեյթ-Միրսինում, Մեգիդդոյում, Գազայում[16]։



Միջինբրոնզեդարյան շրջանի կացիններ

Լճաշենի խողովակակոթառ նիզակի փոքր-ինչ կատարելագործված տեսակներ են հայտնաբերվել Կարմիր-վանք հնավայրում։ Ձևաբանական տեսակետից նրանք համապատասխանում են Թռեղքի Թոփ-քար[17] դամբանաթմբի և Ջաֆեր-Պապուրի զենքերին և թվագրվում են մ. թ. ա. XVII—XVI դարերով։ Նիզակի կարճասայր գեղարդների հետ միասին այս հնավայրում հանդիպում են նույն շրջանի ասսուրական զենքեր հիշեցնող կոթառավոր դաշույնաշեղբեր[18], որոնք պատրաստված են արդեն բարձրորակ բրոնզից։

Նիզակներից ու դաշույններից բացի, մետաղաձուլական արհեստանոցներում պատրաստվում են մարտական սակրերի բազմաթիվ տարատեսակներ։ Նոր տիպի այդ զենքերի թվին են պատկանում Մուրղուզ լեռան լանջին՝ Շամշադինի շրջանի Նավուր գյուղում գտնված անհամաչափ ձևի (ասիմետրիկ) բրոնզյա սակրերը, որոնք հար և նման են Թբիլիսիի սահմանագծում հայտնաբերված նախշազարդ կացնին և իրենց ընդհանուր կերպարով համընկնում են փոքր-ինչ ուշ շրջանի՝ Կիրովականի հարուստ դամբարանի անհամաչափ ձևի սակրին։ Սրանցով սկսվում է Հայկական լեռնաշխարհի և ողջ Անդրկովկասի համար այնքան բնորոշ համաչափ (սիմետրիկ) սակրերի զարգացումը։

Հետաքրքիր է, որ Հայաստանի համար բնորոշ այդ սակրերը տիպաբանական ընդհանուր աղերսներ ունեն Անատոլիայի Քյուլ-Թափայի XIX—XVIII դա-

16 Տե՛ս նույն տեղում, նկ. 11։

17 Տե՛ս *А. А. Мартиросян,* Армения в эпоху бронзы..., էջ 49—52։

18 Տե՛ս *А. А. Мартиросян,* К предыстории древнейших этапов культуры Армении, ИФЖ, 1960, № 1.

րերին վերաբերող զենքերի նմուշների հետ։ Ճիշտ նույն ձևով մարտական կախակոթառ կացինների որոշ տեսակներ կապվում են կասսիտյան և հյուսիսմիջագետքյան սպառազինության առարկաների հետ։ Այսպիսիները հավանաբար արտադրվել են տեղում, սակայն պատկանել են հին արևելյան տիպին։ Թեփե-Գավրայի մարտական կացնի[19] կրկնօրինակը գտնում ենք Լենինականի բրոնզե իրերի հետաքրքիր հավաքածուի մեջ[20]։ Լենինականի մարտական կախակոթառ սակրը բավականաչափ մոտ զուգահեռներ ունի նաև պարսկական Թալիշի տիպերի մեջ, որոնք Շեֆֆերի կարծիքով վերաբերում են մ. թ. ա. XVI—XV դարերին[21] և հանդիպում են կոթառավոր նիզակասայրերի ու ձեռքի տափակ հատիչների՝ Հայաստանի համար շատ բնորոշ տիպերի հետ։

Հայաստանի նմուշների և հին-արևելյան մշակույթի իրեղեն հուշարձաններին այսօրինակ նմանությունը կասկած չի թողնում պատմական նշված ցեղախմբերի տնտեսական սերտ համագործակցության ու աղերսների մասին։

Միջինբրոնզեդարյան նյութական մշակույթի, մասնավորապես մետաղագործության զարգացման փառավոր պատկեր են ուրվագծում մ. թ. ա. XVI—XV դարերի հուշարձանները։ Թռեղքի և Կիրովականի ցեղապետների հսկա կուրգաններում հանդիպում են բազմազան մետաղներից պատրաստված մեծ քանակությամբ զենքեր ու գործիքներ, անհամաչափ ձևի սակրեր, դաշույններ, նիզակներ, սուսերներ, գուրզեր, ձեռքի հատիչներ, դրեր, խողովակակոթառ կեռ գործիքներ, կաթսաներ և այլն, որոնց լոկ առանձին նմուշները կարելի է ներմուծված համարել։ Այդպիսին է, օրինակ, Կիրովականի դամբարանի նրբագեղ նիզակի գեղարդը՝ ուղղաձիգ ակոսավոր կոթառով, որի նմանները կան նաև Թռեղքի 15-րդ կուրգանի և վաճառաշահ Ուգարիթ քաղաքի 1600—1450 թվականների նյութերի մեջ։ Անդրկովկասյան և ուգարիթյան հիշատակված նիզակասայրերի նմանությունն այնքան մեծ է, որ մասնագետները կասկած չունեն նրանց ընդհանուր ծագման, ինչպես և թվագրման վերաբերյալ։ Ներմուծված իրերի թվին են պատկանում, անկասկած, նաև խաչաձև կտրվածք ունեցող բրոնզե սուսերները, որոնք հայտնաբերվել են Ղաչաղանի, Ջորագյուղի և Սամթավրոյի (Վրաստան) դամբարաններում և որոնց արտադրությունը չափազանց ընդլայնվել է մ. թ. ա. XVII—XVI դարերի ընթացքում՝ Կրետե-միքենյան մշակույթի արտադրական կենտրոններում[22]։ Այս տիպի իրերը, միքենյան խեցեղենի և այլ առարկաների հետ միասին, արտահանվել են Տրոյա, Պաղեստին, Ասորիք և Եգիպտոս։ Ահա այս վայրերից էլ նրանք մուտք են գործել Հայաստան, ըստ երևույթին, մ. թ. ա. XVI—XV դարերի ընթացքում։ Հայաստանում հինարևելյան տիպի մի շարք առարկաների հայտնաբերումները ցույց են տալիս, որ կրետե-միքենյան արտադրակենտրոնների, ինչպես և հյուսիսմիջագետքյան իրերը, իրոք, մեր երկիր են թափանցում վերը նշված Միջերկրականի արևելյան ափերից կամ հարավից, գերազանցապես Եփրատի հովտով։

---

[19] Տե՛ս *E. A. Speiser*, Excavations at Tepe-Gawra, I, Philadelphia, 1935, աղ. VIII, XLVIII, XLIX, XXXV, էջ 49—56։

[20] Տե՛ս Լենինականի գավառագիտական թանգարանի բրոնզե իրերի հավաքածուն։

[21] Տե՛ս *Cl. F. A. Schaeffer*, Stratigraphie comparée de l'Asie Occidentale, Oxford, 1948, էջ 222—226.

[22] Տե՛ս *Дж. Пендлбери*, Археология Крита, М., 1950, էջ 184—196։

*Սրանց թվին է պատկանում Իջևանի շրջանում հայտնաբերված նրբագեղ սակ-րը, որի նախատիպերը հայտնի էին դեռևս հին Շումերում (Ուր), իսկ ժամա-նակագրորեն ավելի մոտ կանգնած տիպերը ծագում են Եգիպտոսից, Ասորի-քից ու Պաղեստինից, ինչպես նաև Լուրիստանից ու Էլամից*[23]։

*Միջինբրոնզեդարյան հնավայրերում հայտնաբերված բոլոր մնացած գոր-ծիքներն ու զենքերը վերը նշված չնչին բացառություններով, նույնպես տիպա-կան են Հայկական լեռնաշխարհի բրոնզեդարյան մշակույթին։*

*Այդ շրջանի մետաղամշակության բնորոշ և կարևոր առանձնահատկու-թյունն այն է, որ գրեթե վերջնականապես ձևավորվում են տեղական արտա-դրության գործիքներն ու զենքերը, որոնք կատարելագործված ձևով հանդես են գալիս ուշբրոնզեդարյան կոմպլեքսներում, որպես Հայկական լեռնաշխարհի մետաղամշակության միանգամայն ինքնատիպ արգասիքներ։*

*Սպառազինության առարկաների և աշխատանքի գործիքների կատարելա-գործումն ընթանում է մետաղամշակության տեխնիկայի զարգացման հիման վրա. բարձր կատարելության են հասնում քարե ու կավե զանազան կաղապար-ները, որոնցով կարելի էր ստանալ գեղարվեստորեն ձևավորված զենքեր ու գործիքներ։ Բարձր կատարելության հասցվեցին նաև դասական բրոնզի ստացման եղանակները։*



Տափակ կացին և դաշ. կիսավական

*Չնայած մետաղամշակության բար-ձըր զարգացմանը, միջին բրոնզի դա-րի վաղ շրջանի հնագիտական կոմպ-լեքսներում հանդիպում են մ. թ. ա. III հազարամյակի վաղբրոնզեդարյան մշակույթից եկող վերապրուկային ի-րեր ու առարկաներ (տանձաձև գուր-զեր, կիսալուսնաձևավոր պղնձե ական-ջօղեր, քառակող հերուններ, գնդասեղ-ներ և այլն), որոնք վկայում են մե-տաղագործության հին ավանդույթնե-րի և նոր նորմերի համատեղ գոյու-թյունը մ. թ. ա. II հազարամյակի սկզբներին։ Միջինբրոնզեդարյան մշ-շակույթի զարգացման հաջորդ փուլե-րում այդ երևույթը չի նկատվում։*

**Արծաթագործություն և ոսկերչու-թյուն**: *Մետաղամշակության կարևոր և ինքնուրույն ճյուղերից մեկը ոսկերչու-թյունն էր, որը մ. թ. ա. II հազարամ-յակի առաջին կեսին հասավ բարձր մակարդակի։ Ոսկուց ու արծաթից պատ-րաստում էին գավաթներ, սափորներ, դույլիկներ, պերճանքի բազմաթիվ առար-կաներ և նույնիսկ զենքերի առանձին նմուշներ։ Նյութական մշակույթի այս*

23 *Տե՛ս* А. А. *Мартиросян,* Армения в эпоху бронзы..., *էջ 71—72։*

բարձրարվեստ իրերը նախշազարդվում էին դրոշմելու և դրվագելու եղանակով, պատվում հատիկավոր և ֆիլիգրան զարդանախշերով։ Ոսկերչության նման մակարդակն ինքնըստինքյան ենթադրում է տեղական արվեստի նախընթաց բարձր զարգացում, որն զգալի չափով պայմանավորված էր ժամանակակից արևելյան արվեստի համընդհանուր առաջադիմությամբ։

Կիրովականի հարուստ դամբարանում[24] արծաթե անզարդ գավաթների հետ միասին հայտնաբերվել է մի գեղեցիկ ու ծանր ոսկե գավաթ՝ զարդարված նուրբ երկրաչափական օրնամենտի գոտիով և երեք զույգ առյուծների ռելիեֆ քանդակներով։ Օձունի և Թռեղքի Թափ-քարի (№ 2) դամբարաններում գտնվել են հատիկավոր և ֆիլիգրան զարդանախշերով պատված ոսկե իրեր, որոնց զուգահեռները հանդիպում են միջին միքենյան ժամանակաշրջանին պատկանող (1700 թվական ըստ Զայլդի) Մինոսի պալատում և բուն միքենյան հուշարձաններում[25]։

Կիրովականի անզարդ արծաթե անոթներն աչքի են ընկնում գեղեցիկ ձևերով։ Նրանցից մեկը հարթ պատերով միականթ դույլիկ է, մյուսը՝ բարձրավիզ գավաթ, երրորդը՝ կոնաձև, ցածր ոտքի վրա ամրացված կիսագնդաձև գավաթ և վերջինը՝ ակոսավոր կիսաշրջան զարդեր ունեցող փոքրիկ կիսաբոլորակ անոթ։

Սակայն լինելով Թռեղքի ոսկեղենի պարզունակ կրկնությունները, Կիրովականի հիշատակված անոթները, այնուամենայնիվ, աղքատիկ գաղափար են տալիս միջին բրոնզի դարի ոսկերչության զարգացման մասին։ Որպեսզի պարզ գաղափար կազմենք արհեստագործության այդ կարևոր ճյուղերի մասին, պետք է անդրադառնանք նաև Թռեղքի ցեղապետների դամբարանների պեղումներին, որոնք կատարվեցին Ծալկայի շրջանում (Վրաստան) 1936—1940 թվականներին։ Նրանց մեջ ներկայացված ոսկե և արծաթե իրերից հիշատակության արժանի են թանկագին քարերով ագուցված բարձրարվեստ ոսկե գավաթը՝ ֆիլիգրան ու հատիկավոր զարդանախշերով, նրբաճաշակ արծաթե դաշույնը, արծաթե ոսկեգլխիկ քորոցները, ոսկյա նախշազարդ, սկավառակաձև զարդերը և, վերջապես, ոսկեզօծ արծաթե դույլիկը, որի արտաքին ողջ մակերեսը պատված է որսի տեսարան պատկերող դրոշմակերտ հորինվածքով[26]։ Այս դույլիկը իր մանրամասներով չափազանց մոտ է հանրահայտ արծաթե գավաթին, որի վրա պատկերված են պաշտամունքային գավաթներ բռնած մարդակերպ էակների ծիսական երթը և ոճավորված արու և էգ եղնիկների շարքը։ Այդ էակները մարդու մարմին և կենդանու գլուխ ու պոչ ունեն։ Նրանք գնում են դեպի մի այլ այդպիսի կերպար, որը, սակայն, տեղավորված է գահի վրա՝ կենաց ծառի դիմաց, զոհասեղանների և զոհաբերության կենդանիների մոտ։ Ուսումնասիրողները վաղուց արդեն նշել են, որ ոճավորված պաշտամունքային այս տեսարանը Ցաղիլի-Կայայի և Կարքեմիշի խեթական ռելիեֆների պատկերներին չափազանց նման է թե՛ կոմպոզիցիոն տեսակետից և թե՛ առանձին կերպարների

---

24 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археология З· кавказья, էջ 46—47։

25 Տե՛ս *Б. А. Куфтин,* Археологические раскопки 1947 г. в Цалкинском районе, Тбилиси, 1948, էջ 15 և հաջ.։

26 Նույն տեղում։

մեկնաբանությամբ, հագուստի, ոտնամանների ու այլ մանրամասների վերարտադրությամբ։

Հիշատակված դամբարաններում հայտնաբերված ոսկե և արծաթե իրերը ցույց են տալիս նախ և առաջ տեղական մշակույթի շատ բարձր մակարդակը և ապա նրա բազմակողմանի կապերը Հին Արևելքի երկրների, առանձնապես խեթական թագավորության հետ, որոնք ակնհայտորեն դրսևորվում են ինչպես կիրառական արվեստի արժեքների, այնպես էլ թաղման ծեսերի ու սովորությունների ուսումնասիրության ընթացքում։

## 3. ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։ ՌԱԶՄԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱ

Երկրի տնտեսական վերելքը, անասնապահության ու երկրագործության, մետաղահանության ու մետաղամշակության և սրանց հետ կապված բազմաթիվ այլ արհեստների զարգացումը զգալի տեղաշարժեր են առաջացնում տեղաբնակ ցեղերի սոցիալական կյանքում։

Հարուստ արոտավայրերն ու ոռոգման ջուրը, բերրի, ոռոգելի ցանքատարածությունները բաժին են ընկնում անասնապահ ուժեղ ցեղերին, որոնք ցեղային միավորումների գլուխ կանգնելով, որոշակի բարձր դիրքի են հասնում, կրկնապատկում ու բազմապատկում են իրենց հարստությունը, զարկ տալիս միջցեղային փոխանակությանն ու ամրապնդում կապերը Հին Արևելքի երկրների հետ։ Ցեղային միություններում առանձնահատուկ դիրք ունեին, ըստ երևույթին, Հայասա-Ազզիի, Իշուվայի և Ալշեի (Խարբերդ—Մալաթիայի), Գուգարք—Թռեղքի, Սևանի ավազանի, Դաշտային Ղարաբաղի, Հայկական Միջագետքի ցեղերը։ Այս շրջանները միաժամանակ աչքի էին ընկնում որպես մետաղագործության խոշոր կենտրոններ։

Սոցիալական ներհակությունները առանձնապես խորանում են հինարևելյան ստրկատիրական երկրների հետ սերտորեն կապված ցեղերի ու ցեղախմբերի մեջ, երկրի հյուսիս-արևմտյան և հարավային շրջաններում։ Հայասա-Ազզի երկրում փաստորեն սկսվում է վաղ դինաստիական իշխանության ժամանակաշրջան, երբ ցեղապետները դեռևս «պանկու»-ի (համայնական ժողով, աշխարհաժողով) գոյության պայմաններում, զգալի արտոնություններ ու իրավունքներ են ստանում։ Շրջակա ցեղերի ու ժողովուրդների դեմ մղվող պատերազմները ստրկության աղբյուրներ են դառնում, երևան է գալիս տնային ստրկության ինստիտուտը։ Տոհմա-ցեղային կազմակերպության ընդերքում ամրապնդվում է հայրիշխանական ընտանեկան համայնքը, տղամարդը լայն իրավունքներ է ստանում ոչ միայն կնոջ, այլև յուրայինների նկատմամբ։ Ըստ երևույթին, սկսում է ուժեղ չափով գործել տնտեսական ժառանգության իրավունքը։

Հայաստանի արևելյան շրջանների ու Անդրկովկասին կից վայրերի ցեղերն ու ցեղախմբերը փոքր-ինչ ետ են մնում հասարակական կյանքի բնագավառում, սակայն ընթանում են զարգացման նույն ուղիներով։

Տոհմացեղային ավագանին այստեղ առանձնանում, անջատվում է համայնքների անդամների ընդհանուր զանգվածից, տնտեսական ու հասարա-

կական բարձր դիրքի հասնում՝ իր ձեռքում կենտրոնացնելով անասունների մեծաքանակ հոտեր, լավորակ վարելահողեր, ոսկու, արծաթի, մետաղե իրերի մեծ քանակություն։ Տաշիր-Ձորագետի և Թռեղքի ցեղապետները իրենց կենցաղով, հագուստով, արդուզարդով, նույնիսկ թաղման արարողություններով ու հսկա դամբարաններով ձգտում են նմանվել խեթական թագավորներին։



Պղնձե կաթսա. Կիրովական

Համայնքի ընդերքում և տարբեր ցեղերի միջև գույքային ու սոցիալական անհավասարությունը հայրիշխանական ժառանգական իրավունքի կազմավորումը, մասնավոր սեփականության առաջացումը քայքայում են նախնադարյան արտադրահարաբերությունները, Հայաստանի տոհմացեղային անդասակարգ հասարակությունը բռնում է վայրէջքի ուղին։

Սակայն շերտավորվող նախնադարյան հասարակության հիմնական խավը ապրում էր երկրագործանասնապահների պարզունակ նահապետական կենցաղով, որը քիչ էր տարբերվում վաղբրոնզեդարյան բնիկների ապրելակերպից։ Հասարակության այս խավերին պատկանող կացարաններում ու դամբարաններում գույքային և սոցիալական անհավասարության խոր հետքեր չենք նկատում։ Նրանց թաղումներն աղքատիկ են, առանց մետաղե զենքերի, արդուզարդի թանկարժեք առարկաների, հյուղակները կավածեփ են, անպաճույճ։ Անասնապահության մթերքներից, մետաղահանության ու արհեստագործական արտադրանքի հավելումների միջցեղային փոխանակությունից ու առևտրից բնակչության հիմնական զանգվածին փոքր բաժին էր ընկնում։

Այսպիսով, Հայկական լեռնաշխարհի միջինբրոնզեդարյան մշակույթի շուրջ հինգ հարյուր տարի հարատևող առաջընթացը համակողմանի նախադրյալներ է ստեղծում տեղական համայնքների մշակութային, տնտեսական և հասարակական զարգացման ավելի բարձր մակարդակի համար։

Պարզորոշ երևում են նախնադարյան տոհմացեղային կարգերի անկման բոլոր նշանները, որոնք արտահայտվում են դասային ներհակությունների, նահապետական հայրիշխանական մեծ համայնքի, ժառանգական իրավունքի, մասնավոր սեփականության և տնային ստրկության առաջացման մեջ։

Նյութական արտադրության ոլորտներում անցումային բնույթի խոր տեղաշարժեր են նկատվում մ. թ. ա. XIV դարում։ Այդ շրջանի մետաղյա իրերի ու խեցեղենի բազմաթիվ հնագիտական կոմպլեքսները երկակի բնույթ ունեն։ Նրանց մեջ միջինբրոնզեդարյան մշակույթին բնորոշ իրերն ու առարկաները զուգակցվում են արտադրության նոր տիպի արդյունքների հետ, որոնք օժտված են արդեն ուշբրոնզեդարյան տիպերի գծերով ու առանձնահատկություններով։ Գործածությունից հանվում են արհեստագործական արտադրանքի օտա-

բամուտ շատ տիպեր, զինագործության ու աշխատանքի գործիքների արտադրության մեջ բացարձակ գերակշռություն են ստանում տեղական ծագման առարկաները՝ դաշույնները, նիզակասայրերը, թեթև կացինները, ապարանջանները, քորոցները և այլն, որոնք ընդգրկում են տարածման շատ լայն շրջաններ և կատարելագործվելով ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակաշրջանում, ընկնում են կազմավորվող հայ ժողովրդի նյութական արտադրության հիմքում։



Արծաթյա և ոսկյա անոթներ. Կիրովական

Մ. թ. ա. XIV դարի վերջերին Հայկական լեռնաշխարհի նախնադարյան համայնքները թևակոխում են իրենց զարգացման վերջին փուլը՝ ուշ բրոնզի և վաղ երկաթի դարի ժամանակաշրջանը։

ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՀՆԱԳՈՒՅՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՀԱՐԱՎԱՅԻՆ ԵՎ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՄԱՏՈՒՅՑՆԵՐՈՒՄ

## 1. ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ՓՈՔՐ ԱՍԻԱՅՈՒՄ: ԽԵԹԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Փոքր Ասիայում, Ասորիքում և Միջագետքում խեթերի և խուրրիների հասարակարգի մասին եղած տվյալները շատ կարևոր նշանակություն ունեն նաև Հայկական լեռնաշխարհի պատմության համար, քանի որ վերջինիս մասին մ. թ. ա. II հազարամյակին վերաբերող առկա տեղեկությունները խիստ աղքատիկ են։ Այս տվյալները կարևոր են թեկուզ հենց նրանով, որ հիշյալ ժամանակաշրջանում Հայկական լեռնաշխարհը զգալի չափով բնակեցնում էին նույն խուրրիները, իսկ հյուսիս-արևմտյան և հարավ-արևմտյան նրա ծայրամասերը անմիջականորեն մտնում էին խեթական (պատմական Հայաստանի Բարձր Հայքը և ամբողջ Փոքր Հայքը) և Միտանական (Ծոփքը և Աղձնիքը, թերևս նաև Վասպուրականը) թագավորությունների կազմի մեջ, պատմականորեն բախտակից էին նրանց, և էթնիկական այդ ենթաշերտի վրա էլ սկսվեց հայ ժողովրդի կազմավորումը։ Ճիշտ է, հասարակության զարգացումն այս թագավորություններում ավելի բարձր մակարդակի էր հասել, քան լեռնաշխարհի ներքին շրջաններում և Անդրկովկասում, բայց այն, ինչը մ. թ. ա. II հազարամյակում խեթական և խուրրիական հասարակության մեջ պահպանվել էր սոսկ որպես վերապրուկ, լեռնաշխարհի ներսում դեռ լիովին ուժի մեջ էր։ Իսկ այն երևույթները, որոնք բնորոշում էին խեթերի ու խուրրիների դասակարգային հարաբերությունները, ցույց են տալիս, թե ինչ ուղղությամբ պետք է զարգանար Հայկական լեռնաշխարհի հասարակությունը հետագայում, քանի որ այստեղ ևս անցումը դասակարգերի և պետության դարաշրջանին տեղի էր ունենում արտադրողական ուժերի և բնական միջավայրի միանգամայն համանման պայմաններում։

Մետաղամշակության վաղ ծաղկումը Փոքր Ասիայում նպաստեց, որ այստեղի ցեղերը բավական վաղ ներգրավվեն Առաջավոր Ասիայի քաղաքակիրթ կենտրոնների հետ կատարվող ինտենսիվ փոխանակության ոլորտի մեջ։

Փոքր Ասիայի կյանքում փոխանակության կարևորության մասին է վկայում այն փաստը, որ մ. թ. ա. շուրջ 2000 թվականին այստեղ արդեն երևան է

*գալիս առևտրական գաղութների մի ցանց, որտեղ գլխավոր դերը խաղում էին ասորեստանցիները (կամ, ավելի ճիշտ, աշշուրցիները՝ Աշշուր քաղաքի քաղաքացիները), թեև այդ գաղութների գործունեությանը ակտիվորեն մասնակցում էին նաև տեղական բնակչության առավել ունևոր ներկայացուցիչները։*

*Ինչպես ցույց են տալիս առևտրական այդ գաղութների դիվանների տվյալները, մ. թ. ա. XX դարում ասորեստանյան գաղթականների գործունեության բոլոր շրջաններում արդեն ստեղծվել էին վաղ-դասակարգային քաղաք-պետություններ, որոնցում իշխում էին արքայիկ-առաջնորդը (կառավարիչ) և թագուհի-քրմուհին (կառավարչուհին)՝ ավագների խորհրդի հետ միասին։ Գաղութների գոյության ժամանակաշրջանի վերջում (մ. թ. ա. XIX դարի առաջին կես) Փոքր Ասիայի բնակչության մեջ ուժեղանում է գույքային և դասակարգային արագ շերտավորումը, զարգանում է ստրկությունը, սկսվում է հարևան քաղաք-պետությունների նվաճումը առավել հզոր արքայիկների կողմից, որ ի վերջո հանգեցնում է Հին խեթական թագավորության ստեղծման և ասորեստանցիների առևտրական գործունեության զարգացման։*

**Խեթական թագավորության առաջացումը:** *Կենտրոնական Փոքր Ասիայում մ. թ. ա. XIX դարի կեսերին գերիշխող է դառնում Կուսսար քաղաք-պետության կառավարիչ Անիտտասը, որը խեթական պետության իրական հիմնադիրն է։ Սակայն խեթերը իրենց թագավորական տան և խեթական պետության հզորության հիմնադիր համարում էին Լաբառնասին (կամ Տաբառնաս, որն իշխել է, հավանաբար, մ. թ. ա. XVII դարում[1]։ Խեթական հաջորդ թագավորները ջանում էին նվաճել Հյուսիսային Ասորիքը, իսկ Լաբառնասի թոռը՝ Մուրսիլիս I-ը նույնիսկ ավերիչ արշավանք է կատարում դեպի Բաբելոն (մ. թ. ա. շուրջ 1595 թվական)։ Ծոպարձի ճանապարհին նա ընդհարվում է այդ ժամանակներում որպես պետություն ձևավորվող Միտաննիի հետ։ Սակայն Մուրսիլիս I-ի սպանությունից հետո խեթական թագավորությունը քայքայվում է։ Միաժամանակ տեղի է ունենում կասկերի արշավանքը. դեռևս մ. թ. ա. 1550 թվականին նրանք խեթական թագավորությունը ընդմիշտ կտրում են Սև ծովից։ Տելեպինուս թագավորի օրոք (շուրջ 1525 թվական մ. թ. ա.) սահմանվում է գահաժառանգման կայուն կարգ՝ (հորից՝ որդուն) և կանոնավորվում են հարաբերությունները թագավորական իշխանության և ռազմիկների ժողովի միջև, որն արտահայտում էր ավագանու շահերը[2]։*

**Խեթական հասարակությունը:** *Խեթական թագավորության բնակչության հիմնական զբաղմունքը, ինչպես Հայկական լեռնաշխարհում, երկրագործությունն էր և հատկապես անասնապահությունը։ Խեթական թագավորության մեջ բավական բարձր մակարդակի էին հասել արհեստները, մասնավորապես մետաղամշակումը։ Տնտեսության չափազանց կարևոր լրացումն էր պատերազմը,*

---

[1] *Այս անունը հետագայում դառնում է հասարակ անուն, որով կոչում էին խեթական թագավորներին (ինչպես գերմ.* Kaiser, *ռուս.* царь, *լատին.* caesar՝ *Հուլիոս Կեսարի անունից, կամ լեհական* krol, *ռուս.* король *կայսր Կարլոս Մեծի անվան լատինական ձևից)։*

[2] *Խեթական պետության զարգացման վաղ փուլերի մասին տեղեկություններ են պահպանվել Անիտտաս թագավորի արձանագրության և Տելեպինուսի հրովարտակի մեջ։ Տե՛ս* «Хрестоматия по истории Древнего Востока» под ред. *В. В. Струве и Д. Г. Редера*, М., 1963, *էջ 304—309։*



Խեթական աստվածներ Յազըլը-քայայի ժայռաքանդակից

որը խեթական հասարակությանն ապահովում էր աշխատող ձեռքերով և նյութական բարիքներով։ Թե՛ թագավորը և թե՛ զինվորները ավար էին վերցնում, իսկ թագավորը, դրանից բացի, նաև տուրք էր հավաքում, որը մասամբ մուծվում էր պետական գանձարան, մասամբ էլ բաժանվում թագավորի ազգականների և բարձրաստիճան պաշտոնյաների միջև[3]։

Ռազմական արշավանքներից խեթական զորքը բազմաթիվ ռազմագերիներ էր բերում։ Սակայն բոլորը չէ, որ ստրկացվում էին։ Խեթական աղբյուրները հաճախ հիշատակում են նվաճված երկրների գերեվարված բնակչությանը և այն հանգամանքը, որ նրա մի մասն էր միայն ստրկացվում, իսկ մյուս մասը բնակեցվում էր խեթերի երկրում սոսկ որպես արքայի հպատակներ, որոնք կարող էին նույնիսկ ներգրավվել զորքի մեջ։

Ինչպես այդ ընդունված է Արևելքում, թագավորի և արքայական տնտեսության ծառայողները կոչվում էին «թագավորական ստրուկներ», բայց այդ մի շարք դեպքերում սոսկ ձևական հորջորջում էր։ Այդ «թագավորական ստրուկները» պարտավոր էին ծառայել թագավորին՝ յուրաքանչյուրը իր մասնագիտության բնագավառում։ Ծառայության դիմաց նրանցից խոշորները՝ աստիճանավորներ, քրմեր, զորավարներ և այլք, ստանում էին պետական հողերից մեծ-մեծ հողակտորներ՝ ստրուկների հետ մեկտեղ, իսկ որոշ դեպքերում՝ ամբողջ շրջանների բնակչությունից տուրք ու պարհակ ստանալու իրավունք։ Պակաս կարևոր ծառայողները՝ արհեստավորները և այլք, ստանում էին ավելի փոքր հողակտորներ, սակայն նորից՝ ստրուկների հետ մեկտեղ։

«Թագավորական ստրուկների» թվում կային և այնպիսիները, որոնք իսկապես ստրկական վիճակում էին գտնվում։ Նրանք, ընտանիքներով հանդերձ, ապրում էին պետական հողերի վրա և եթե այդ հողը արքան նվիրաբերում էր մի մեծատոհմիկի, ապա նրանք էլ կարող էին դառնալ վերջինիս ստրուկները, մնալով, միևնույն ժամանակ, ամրացված տվյալ հողակտորին։ Նույնիսկ ամենացածր կարգի ստրուկները կարող էին որոշ դեպքերում կնության վերցնել ազատ կանանց, ըստ որում կինն այս դեպքում սոսկ ժամանակավոր ստրկացման էր ենթարկում, իսկ նրա զավակները, համենայն դեպս՝ դրանց մի մասը, ազատ էին մնում։

Հատուկ խումբ էին կազմում խիպպարes կոչված ստրուկները, որոնք իրենց ծագմամբ, ըստ երևույթին, ռազմագերիներ էին։ Նրանք ապրում էին արհեստականորեն ստեղծված համայնքներում, համապարտ խիստ երաշխավորության պայմաններում և զուրկ էին որևէ քաղաքացիական իրավունքից։

Նմանօրինակ ստրկական կամ կիսաստրկական վիճակում էր գտնվում նաև թագավորական տնտեսությունների, ինչպես և թագավորի բարեկամների, տաճարների ու բարձրապաշտոն անձանց տնտեսությունների աշխատավորների անձնակազմը։ Այն պետության սեփականությունն էր և զբաղվում էր անաս-

---

3 Խեթական հասարակության բնութագրման համար առանձնապես կարևոր նշանակություն ունեն խեթական օրենքները (Законы Вавилонии, Ассирии и Хеттского царства. Перевод и комментарий под редакцией И. М. Дьяконова, ВДИ, 1952, №4)։ Խեթական հասարակության ընդհանուր բնութագիրը տե՛ս *A. Goetze*, Kleinasien, 2. Ausg., München, 1957, և *В. В. Струве*, Очерки социально-экономической истории Древнего Востока, М.—Л., 1934, էջ 45—65; *Э. А. Менабде*, Хеттское общество, Тбилиси, 1965.

նապահությամբ, որոշ արհեստներով և այլն։ Սրանց կողքին կային և մասնավոր ստրուկներ, որոնք իրենց տերերի սեփականությունն էին։ Սրանք գերազանցապես օգտագործվում էին տնային տնտեսության մեջ։

Խեթական թագավորության բնակչության հիմնական մասը, անկասկած, կազմում էին ազատ համայնականները՝ երկրագործներն ու անասնապահները։ Նրանք կատարում էին աշխատանքային պարհակներ և տուրք էին վճարում թագավորին կամ տեղական այն արքայիկին և այն բարձր պաշտոնյային, որին թագավորը զիջել էր այդ տուրքը։ Ազատ երկրագործներն ապրում էին ընտանեկան համայնքով. հողի սեփականությունը ընդհանուր էր։ Որոշ տվյալներ կան վաշխառության և պարտային ստրկության գոյության մասին։

Տերիտորիալ համայնքը (գյուղ կամ «քաղաք») ուներ իր ինքնավարությունը և առանձին դեպքերում համապարտ երաշխավորություն էր կրում։

Պարհակներից ազատված էին այն մեծատոհմիկները, որոնք թագավորից որպես պարգև հող էին ստացել (ստրուկներով կամ տեղական բնակչությունից տուրքը գանձելու իրավունքով), որոշ քուրմեր և ռազմիկների ու արհեստավորների առանձին խմբեր։ Հատկապես ուշագրավ է, որ աշխատանքային պարհակներից ազատ էին Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասերում ապրող Մանդա, Սալա և Խեմմուվա ցեղերի ռազմիկները։ Մանդա էին կոչվում հյուսիսային ինչ-որ ցեղեր, որոնց հարավային շրջանների բնակիչները բարբարոսներ էին համարում[4]։ Գուցե խոսքը վերաբերում է այն սահմանապահ ցեղերին, որոնք պաշտպանում էին խեթական թագավորության սահմանները Հայկական լեռնաշխարհի և Անդրկովկասի կողմից տեղի ունեցող ներխուժումներից։

Արտոնյալ ավագանուց հավաքագրվում էին բարձրաստիճան պաշտոնյաներն ու վարչական կազմը, ինչպես և մարտակառք վարողները, որոնք կազմում էին զորքի գլխավոր հարվածող ուժը։ Բարձրագույն պաշտոնյաներն ու զորահրամանատարները իրավունք էին ստանում կառավարել ամբողջ շրջաններ և հավաքել դրանցից գանձվող տուրքը։ Խեթական հասարակության ամենավերին խավը թագավորական տոհմի անդամներն էին։

**Խեթական պետությունը:** Խեթական պետությունը անկայուն կառուցվածք ուներ։ Անմիջականորեն թագավորին, իսկ Նոր խեթական թագավորության մեջ նաև տարբեր կարգի փոխարքաներին ենթակա քաղաքներից ու շրջաններից բացի գոյություն ունեին մանր, կիսաանկախ թագավորություններ (երբեմն՝ հատկապես ստեղծված խեթական արքայորդիների համար, երբեմն՝ խեթերի կողմից նվաճված), ինչպես նաև շրջաններ, որ հանձնված էին բարձրաստիճան պաշտոնյաների կառավարմանը։ Խեթական պետության և այս կիսանկախ շրջանների կառավարիչների հարաբերությունները սահմանված էին գրավոր պայմանագրով և խեթական թագավորին տրվող երդումով։ Սրբազան տաճա-

---

4 Հետագայում այդ նույն տերմինով (ումման-մանդա) ասսուրական և բաբելական տեքստերում տարբեր ժամանակներում հիշատակվել են կիմերները, սկյութները և մարերը։ Ինչպես ենթադրում է է. Ֆորրերը, հավանական է, որ խեթական ժամանակաշրջանում այդ անունով կոչվելիս են եղել վերը արդեն հիշատակված հնդիրանական ծիարույծ ցեղերը։ Գր. Ղափանցյանը Մանդա և Սալա ցեղանունները գտնում է հայ նախարարական տոհմանունների մեջ։

*րային քաղաքները և նրանց հողերը ինքնավարություն ունեին և լիովին ազատ էին համապետական տուրքերից ու պարհակներից։*

*Պետության գլուխ էին կանգնած թագավորը, որ կոչվում էր խաստուս կամ տապառնաս (լապառնաս), և թագուհին՝ տավանաննաս։ Թագավորը գլխավորում էր ռազմական ուժերը և ամեն ամառ ռազմական արշավանքներ կատարում, հետևում աստվածների պաշտամունքի և ծեսերի կատարմանը, մոգականորեն մարմնավորում երկրի պտղաբերությունն ու բարեկեցությունը, ղեկավարում ողջ պետական վարչական ապարատը, վարում դատը կարևորագույն գործերում, հատկապես երբ մահապատիժ էր սպառնում։ Թագուհի՝ տավանաննաս, համարվում էր թագավորի մայրը, իսկ նրա մահից հետո՝ թագաժառանգի մայրը։ Տավանաննասի պաշտոնը համարվում էր ոչ պակաս կարևոր, քան թագավորինը։ Թագուհին գլխավոր քրմուհին էր՝ պաշտամունքային և քաղաքական լայն իրավունքներով ու պարտականություններով, նա ուներ նաև ինքնուրույն եկամուտներ՝ անկախ թագավորի եկամուտներից։*

*Թագավորը սկզբում ընտրվում էր մի որոշակի ցեղից կամ ցեղերից։ Ընտրությունը կատարում էր համաժողովրդական ժողովը (պանկուս)։ Սակայն Հին խեթական թագավորության մեջ պանկուսը փաստորեն կազմված էր լինում ոչ թե զենք կրելու ընդունակ բոլոր անձանցից, այլ միայն թագավորի ազգականներից ու մերձավորներից և նրա անձնական զորախմբի անդամներից։ Մ. թ. ա. XVI դարում միայն Տելեպինուսի ռեֆորմով սահմանվեց գահաժառանգման կարգը՝ հորից որդուն, ըստ որում պանկուսն արդեն լոկ թագավորին հաստատելու իրավունք ուներ, ավագների խորհրդի (նակկես) հետ միասին։ Սակայն թե՛ թագավորը, և թե՛ տավանաննասը որոշ դեպքերում ենթակա էին պանկուսի դատին և կարող էին գահընկեց արվել (օրինակ, արքայատոհմիկի ինքնակամ մահապատժի համար)։ Նոր խեթական թագավորության մեջ պանկուսը պահպանել էր միայն որոշ կրոնական ֆունկցիաներ[5], և թագավորի իշխանությունը դարձել էր բռնակալական։ Թագավորն սկսում է շքեղ տիտղոսներ կրել և իրեն «ես» կոչելու փոխարեն կոչել «իմ արևը»։*

**Խեթական կրոնը և գիրը:** *Խեթական պետության կյանքում հսկայական դեր էր խաղում կրոնը։ Գլխավոր աստվածությունն էր Տարխունտասը (խուրրիները նրան կոչում էին Թեշուբ կամ, ավելի ճիշտ՝ Թեշշոբ)։ Թագավորի հատուկ հովանավորն էր համարվում արևի աստվածուհին, որին երկրպագում էին Արիննա քաղաքում։ Բացի այդ, պաշտվում էին նախախեթական, բուն խեթական, լուվիական, խուրրիական և շումերա-աքքադական ծագում ունեցող բազմաթիվ աստվածություններ։*

*Գիրը քաջ հայտնի էր խեթերին։ Աքքադական սեպագրի ասուրական տարբերակը Փոքր Ասիա էին բերել աշշուրցի առևտրականները։ Սակայն հետագայում, Հին խեթական թագավորության ստեղծումից հետո, խեթերը յուրացնում են աքքադական սեպագրի մի այլ տարբերակ, որը գործածական էր Հյուսիսային Ասորիքում և օգտագործվում էր նաև խուրրիների կողմից։ Այս տարբերակը շատ ավելի մոտ է բաբելական սեպագրին։ Սեպագրի նոր տեսակը խե-*

---

5 *Պանկուսի մասին տե՛ս* *В. В. Иванов*, Происхождение и история хеттского термина panku—«собрание», ВДИ, 1957, № 3, *էջ 19—36*, 1958, № 1, *էջ 3—15*։

թական թագավորության մեջ օգտագործվում էր աքքադերեն և խեթերեն գրելու համար, բայց քանի որ կրոնական արարողությունը կատարվում էր տարբեր լեզուներով, ապա կրոնական տեքստերում հանդիպում են այնպիսի հատվածներ, որ գրված են նույն գրով, բայց՝ նախախեթերեն, խուրրիերեն, լուվիերեն, պալայերեն լեզուներով։ Սեպագրերից բացի խեթական թագավորությունում կիրառվում էր նաև տեղական հիերոգլիֆային գիրը։

## 2. ՄԻՏԱՆՆԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԻՋԱԳԵՏՔՈՒՄ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀՈՒՄ

**Միտաննի պետության կազմավորումը:** *Խեթական թագավորության հզորության ժամանակավոր թուլացման շրջանում Առաջավոր Ասիայում սկսում է գլխավոր դեր խաղալ Միտաննի խուրրիական թագավորությունը (այլ անվանումներն են՝ Մաիտանի, Խանիգալբատ, Խալիգալբադ)։ Այս պետության մասին ավելի քիչ բան գիտենք, քան խեթական թագավորության մասին։*

*Մ. թ. ա. XIX—XVIII դարերում Միջագետքի և Ասորիքի հյուսիսում ամենահզոր պետությունն է դառնում Աշշուրը, Տիգրիս գետի վրա. իշխանությունն իր ձեռքն է վերցնում Շամշի-Ադադ Ա-ը՝ թագավոր տիտղոսով և ժամանակավորապես իր գերիշխանությանը ենթարկում արևմուտքում՝ Եփրատի և արևելքում՝ Զագրոսի միջև ընկած ողջ տերիտորիան։ Սակայն նրա մահվանից շատ չանցած նախ Եփրատի միջին հոսանքի շրջանը, այնուհետև ինքը Աշշուրը կամ նրա հարևան քաղաքները (օրինակ Նինվեն) հարկադրված են լինում ենթարկվելու Բաբելոնի Համմուրաբի թագավորին։ Համմուրաբիի դինաստիայի իշխանությունը ևս այս շրջաններում անկայուն եղավ։ Մ. թ. ա. XVIII դարի կեսերից այստեղ գերիշխող են արդեն դառնում կասսիտական ցեղերը, իսկ XVII դարից՝ խուրրիները։*

*Մի շարք մանր քաղաք-պետությունների նվաճման և միավորման հետևանքով մ. թ. ա. XVI դարում Արևմտյան Խաբուր գետի վերին հոսանքի շրջանում, Հյուսիսային Միջագետքում ստեղծվեց Միտաննի թագավորությունը Վաշշուգանե մայրաքաղաքով։ Թեև նրա թագավորները, հավանաբար, հնդիրանական[6] անուններ էլ էին կրում[7], բայց կենցաղում օգտագործում էին խուրրիերենը, իսկ պաշտոնական շրջաններում՝ նաև աքքադերենը և սեպագրի աքքադական սիստեմը։ Հավանաբար «Խուրրի» և «Միտաննի» տերմինները խեթերն օգտագործել են որպես նույնանիշներ[8]։*

*Միտաննին էլ ավելի հեղհեղուկ պետական կառուցվածք ուներ, քան խեթական թագավորությունը. նրա կազմի մեջ մտել էին շատ կիսանկախ շըր-*

---

[6] *Մ. թ. ա. II հազարամյակի սկզբներին դեպի Իրանի և Հյուսիսային Հնդկաստանի տերիտորիան արիական ցեղերի տեղաշարժման կապակցությամբ Իրանի հյուսիս-արևմտյան շըրջաններից մեկում այդ ցեղերը կոնտակտի մեջ են մտել խուրրիների հետ։*

[7] *Կամ զույգ և երկուական անուն՝ մեկը հնդիրանական, մյուսը խուրրիական։ Տե՛ս* *H. G. Güterbok*, The Deeds of Suppiluliumas as told by His Son, Mursilis II, Journal of Cuneiform Studies, X 4, 1956, *էջ 120—121*

[8] *Գիտության մեջ դեռևս վեճ է գնում՝ արդյոք այդ անունները մի պետություն են նշանակում, թե երկու տարբեր։ Ներկայումս առաջին լուծումն ավելի համոզիչ է թվում։*

ջաններ և մանր թագավորություններ, որոնք պարտավոր էին տուրք վճարել և ռազմիկներ տրամադրել միտաննական թագավորներին։ Նրա ազդեցությունը տարածվել է՝ արևելքում ներկայիս Քերքուքից (Հնագույն Առապխա) մինչև Օրոնտես գետի հովիտը Ասորիքում, Միջերկրականի ծովեզերքը (Ուգարիթ) և Կիլիկյան Տավրոսի լեռները, ուր գտնվում էր Կիզզվատնա թագավորությունը։

Կասկածից վեր է, որ Միտաննիի եթե ոչ անմիջական իշխանությունը, ապա գոնե ազդեցությունը տարածվել է նաև մի զգալի տերիտորիայի վրա՝ Եփրատի հովտով դեպի վեր (Տիգրիսի ակունքներից հյուսիս), առնվազն մինչև Արածանիի նրա մեջ թափվելը։ Դժվար է ասել, թե մինչև ուր էր տարածվում Միտաննիի ազդեցությունը և իշխանությունը Հայկական լեռնաշխարհի արևելյան շրջաններում։ Միանգամայն հավանական է, որ Միտաննիի ազդեցությունը տարածվել է Հայկական Տավրոսից հարավ ընկած շրջանների վրա, ներառյալ Բոհտան և Մեծ Զաբ գետերի հովիտները։ Ուշագրավ է եգիպտական աղբյուրների այն վկայությունը, թե մարտակառքերի համար շինանյութը Եգիպտոս էր բերվում Նախարինա երկրից (եգիպտացիները այդպես էին կոչում Միտաննին)[9], ըստ որում հիշատակվում են այնպիսի ծառատեսակներ, որոնք աճում են Տրապիզոնից ոչ հարավ, կամ Արարատի ստորոտներին։

Միտաննիի հզորության հիմնադիրներ կարող են համարվել Պարատտառնա (մ. թ. ա. XVI դար) և Սաուսսադատտար (մ. թ. ա. XV դարի առաջին կես) թագավորները[10]։ Ժամանակի միջազգային հարաբերություններում Եգիպտոսի, Բաբելոնի, խեթական պետության թագավորների շարքում Միտաննիի թագավորը ևս կոչվում էր մեծ թագավոր։

**Խուռիական հասարակությունը: Մեծ ընտանեկան համայնքը:** Սովետական գիտության մեջ ցույց է տրված, որ սոցիալական պատկերի այն հիմնական գծերը, որոնք վերականգնվում են խուռրիական կենտրոն Առապխայից ծագող նյութի հիման վրա, մ. թ. ա. II հազարամյակում բնորոշ են եղել ողջ Առաջավոր Ասիայի համար՝ բացառյալ Բաբելոնը և Եգիպտոսը[11]։ Հետևաբար այդ պատկերը հատուկ նշանակություն է ստանում Առաջավոր Ասիայի հյուսիսային շրջանների, այն է՝ Հայկական լեռնաշխարհի (իր խուռրի-ուրարտական բնակչությամբ) սոցիալական հարաբերությունների վերականգնման տեսակետից։

Դաշտավայրերում ապրող խուռրիները հիմնականում երկրագործներ էին, բայց ունեին նաև զարգացած արհեստագործություն։ Երկրագործ բնակչությունն ապրում էր մեծ ընտանեկան համայնքներով, որոնք խուռրիերեն կոչվում էին դիմտու՝ «աշտարակ» և իսկապես բնակվում էին յուրաքանչյուրը մի ամրոց-աշտարակի մեջ։ Դրանցից յուրաքանչյուրն ուներ իր ամբողջական հողամասը, որը կոչվում էր տիրույթ (էվրու) և գտնվում էր նահապետի (էվրի) տնօրինության տակ։ Մի ժամանակ ամբողջ հողամասը, հավանաբար, մշակվել

[9] Տե՛ս *Г. А. Меликишвили,* К истории древней Грузии, Тбилиси, 1959, էջ 165։

[10] *И. М. Дьяконов,* Арийцы на Древнем Востоке: конец мифа, ВДИ, 1970, № 4. էջ 48։

[11] Տե՛ս *Н. Б. Янковская,* Хурритская Аррапха, ВДИ, 1957, № 1, նույնի Юридические документы из Аррапхи в собраниях СССР, «Переднеазиатский сборник», М., 1960, նույնի՝ Землевладение большесемейных домовых общин в клинописных источниках, ВДИ, 1959, № 1, նույնի՝ Общинное самоуправление в Угарите, ВДИ, 1962, № 3.

է համատեղ, բայց մեզ հասած աղբյուրների համաձայն այն արդեն առանձին հողաբաժիններով բաշխվում էր մեծ ընտանեկան համայնքի չափահաս անդամների միջև։ Չնայած դրան, այդպիսի համայնքի բոլոր անդամները պարտավոր էին փոխադարձ օգնություն ցույց տալ և միասին էին կատարում համայնական պարհակները, որոնք հետագայում դառնում են պետական։ Աճելով մեծ ընտանիքը տրոհվում էր, սակայն արտադրողական ուժերի վիճակը չէր նպաստում անհատ ընտանիքի պահպանմանը՝ որպես ինքնուրույն տնտեսական միավորի։ Զրկված լինելով այն հնարավորություններից, որ մեծ ընտանեկան համայնքում ընձեռում էր փոխադարձ օգնությունը, նրանք կամ կործանվում էին, կամ որդեգրվում ուրիշ համայնքների կողմից և կամ արագ մեծանալով, կազմում էին նոր մեծատոհմ համայնքներ։ Առավել խոշոր մեծատոհմ համայնքի տրոհման ճանապարհով առաջացած համայնքները շարունակում էին կապված մնալ միմյանց, մասնավորապես ընդհանուր պաշտամունքով։

**Տերիտորիալ համայնքը:** Ազգակցական կապերից զատ, գոյություն ունեին նաև դրացիական կապեր։ Այսպես, մի քանի համեմատաբար թույլ համայնքներ կարող էին հավատարմության երդում տալ հարևան ուժեղ համայնքի էվրիին և կապվել նրա հետ նահապետական կապերով, թեև ազգակցություն նրանց միջև չկար։ Մի քանի ազգակից կամ ոչ ազգակից ընտանեկան համայնքներ միասին կազմում էին մի որոշ կազմակերպչական միասնություն՝ գյուղ, որը հանդիսանում էր դրացիական, կամ դրացիական-տոհմային համայնք։

Գյուղերը համախմբվում էին մեկ կամ մի քանի կենտրոնների՝ ամրացված բնակավայրերի շուրջը, որոնք պայմանականորեն կոչում ենք «քաղաք». այնտեղ էր գտնվում տաճարը, առաջնորդի կամ կառավարչի, ինչպես նաև համայնքների միության կամ «քաղաք-պետության» պաշտոնական անձանց բնակարանը։ Այստեղ էր հավաքվում ավագների խորհուրդը և, հավանաբար, համայնքի ժողովը[12]։ Այդ «քաղաքը» ենթարկվում էր թագավորին, որն իշխում էր շրջանի («երկրի») կենտրոնում՝ Առապխայում։

Այսպիսին է խուրրիական հասարակության ելակետային պատկերը առնըվազն ծայրամասերում։ Համանման վիճակում պետք է լիներ նաև Հայկական լեռնաշխարհի հասարակությունը, այն տարբերությամբ միայն, որ այստեղ պետական իշխանությունը դեռ չէր ձևավորվել (գոյություն ունեին միայն ցեղային միություններ)։

Բայց այն ժամանակաշրջանում, որից մեզ վավերագրեր են հասել խուրրիական հասարակության վիճակի մասին, դրությունն արդեն ավելի բարդ էր, ծագել էին մի շարք նոր երևույթներ։

**Ընտանեկան մեծ համայնքի քայքայումը:** Երկրագործության ինտենսիվացումը և անցումը մասնագիտացված տիպի տնտեսություններին (դաշտավարություն, խաղողագործություն, արոտավայրային անասնապահություն և այլն), մի կողմից զգալիորեն բարձրացնում էր տնտեսության եկամտաբերությունը, մյուս կողմից՝ ներքին փոխանակության պահանջ առաջ բերում։ Բոլոր

---

12 Ժողովրդական ժողովներ, այնուամենայնիվ, կային գոնե ստորին համայնքներում, տե՛ս Н. Б. Янковская, Общинное самоуправление в Угарите, ВДИ, 1963, № 3, էջ 54—55։

դեպքերում դա ուժեղացնում էր գույքային շերտավորումը առանձին ընտանեկան համայնքների միջև և նույնիսկ համայնքների ներսում, քանի որ մասնագիտացված տնտեսությունները վարում էին անհատ ընտանեկան բջիջները։ Առանձին տնտեսությունների միակողմանի զարգացումը հնարավորություն էր ստեղծում վարկավորման համար. առավել հաջողակ անձինք և համայնքի ավագանու ներկայացուցիչները սկսում են վարկ տրամադրել թույլ ընտանիքներին։ Նաև անհրաժեշտ է հաշվի առնել, որ այն ժամանակվա պայմաններում ամեն մի տնտեսություն մեծապես կախված էր եղանակի և պատերազմների հետ կապված պատահականություններից։ Որքան թույլ էր տնտեսությունը, այնքան անկայուն էր նրա բարեկեցությունը և այնքան հեշտությամբ կարող էր կախման մեջ ընկնել հարուստից։

Ապրանքա-փոխանակային հարաբերությունների թույլ զարգացման պայմաններում պարտք վերցնելը խիստ ծանր էր. տարեկան 30 տոկոսի հավելումը ամենևին բարձր տոկոս չէր համարվում։ Փոխառության դիմաց պարտատերը երաշխիք էր պահանջում։ Սկզբում առավել աղքատ ընտանիքները գրավ էին դնում իրենց իսկ անդամներին, հանձնելով նրանց պարտատիրոջ տնտեսությանը որպես աշխատող ձեռքեր, կամ իրենք էին կախման մեջ ընկնում և հաճախ այդպես էլ մնում էին, որովհետև չէին կարողանում պարտքը ժամանակին մարել։ Այդպիսի կախյալը համարվում էր ստրուկ, սակայն նման ստրուկը երբեմն շարունակում էր հողաբաժին ունենալ իր ընտանեկան համայնքում և այդ համայնքը նրան տալիս էր քաղաքացիական որոշ իրավունքներ պահպանելու հնարավորություն և ապագայում ազատվելու հույս։ Ճիշտ է, դատարանը բոլոր վեճերը լուծում էր հօգուտ պարտատիրոջ, բայց էվրին էլ, իր հերթին ձգտում էր ազատել իր համայնքի անդամին, որովհետև սնանկացած ընտանիքի գլխավորի կորստյան դեպքում հենց էվրին էր պատասխանատվություն կրում նրա պարտքերի համար։ Նրա կողմից փրկագնված համայնականը դառնում էր իրեն՝ էվրիի պարտապանը։





Խուռիական գլանաձև կնիքների դրոշմներ

Քանի որ շարժական գույքը ոչ թե ընտանեկան համայնքի, այլ անձնական սեփականություն էր, հարստությունն աստիճանաբար սկսում է կուտակվել առանձին անձանց ձեռքում, որոնց ազգականներն սկսում են նրանցից կախման մեջ ընկնել, և փոխադարձ օգնության պարտավորությունն այդպիսի դեպքերում վեր էր ածվում հարուստների կողմից աղքատներին շահագործելու իրավունքի։ Սակայն հարուստ համայնական պարտատերերը դրանով չէին բավարարվում։ Նրանք սկսում են ընդարձակել նաև իրենց հողային տիրույթները։

*Հողը պարբերաբար վերաբաժանվում էր*[13] *և սկզբունքորեն օտարման ենթակա չէր։ Առապխայում այս օրենքը շրջանցվում էր վաճառող համայնքի կողմից գնորդին «որդեգրելու» կամ «եղբայր ընդունելու» ճանապարհով։ Նման գործարքը, որի ժամանակ «որդեգրյալը» ոչ մի պարտավորություն չէր վերցնում իր վրա համայնքի նկատմամբ, հնարավորություն էր տալիս, սակայն, նրան օգտվելու որդեգրող համայնքի անդամների օժանդակությունից, այսինքն, փաստորեն, շահագործելու նրանց։ Ըստ որում նման «որդեգրյալը» հաճախ ստանում էր հողը գրեթե ձրի, քանի որ վաճառողները նրա պարտապաններն էին. նա բավարարվում էր սոսկ ստացած հողի դիմաց «նվիրելով» իրենց պարտքերը։ Նույն անձը կարող էր բազմիցս «որդեգրվել» տարբեր համայնքների կողմից։ Այսպես, օրինակ, Նուզիում ոմն Թեխիբ-Թիլլա (ամրոցի պետ, խորհրդի անդամ և վաշխառու) «որդեգրվել» է համարյա 150 անգամ։*

*Մոտավորապես նույն դրությունն էր նաև Աշշուրում, Ալալախում, հավանաբար և Խեթական թագավորությունում, այն տարբերությամբ միայն, որ Աշշուրում, օրինակ, հողի գնումը ոչնչով չէր քողարկվում*[14]*։*

*Աշխատանքային և զինվորական պարհակները շարունակում էին ծանրանալ շարքային համայնականների ուսերին։ Թեև հարուստը ձևականորեն շարունակում էր մնալ համայնքի անդամ, դրանից բխող բոլոր պարտավորություններով, սակայն պետք է ենթադրել, որ նա դրանք երբեք չէր կատարում, օգտվելով ընտանեկան համայնքում տիրող փոխօգնությունից, կամ էլ իր ստրուկներին աշխատանքի ուղարկելով։ Իսկ եթե նա հող էր ձեռք բերում, ապա հողի հետ կապված պարհակներն իր վրա չէր վերցնում, դրանք, ըստ պայմանագրի, շարունակում էին վաճառողի պարտականությունը մնալ։ Այսպիսով. սաղմնավորվում էր հասարակության բաժանումը հարկատու և ոչ հարկատու դասերի։*

*Որոշ շրջաններում (Աշշուր, Խեթական թագավորություն) զինվորական պարհակն ու արքունական մի շարք ծառայություններ կապված էին հատուկ հողաբաժինների հետ, որոնք ընտանեկան համայնքի ֆոնդից առանձնացվում էին հատկապես այդ նպատակի համար։*

*Համայնական պարհակներն ու իրավունքները կապված էին հողի հետ։ Բայց միանգամայն հասկանալի է, որ նկարագրված պայմաններում համայնքի անդամներից շատերը վճռում էին զոհաբերել քաղաքացիական իրավունքները՝ պարտավորություններից ազատվելու համար։ Հենց այս ժամանակ էլ առաջանում են իրենց համայնքները լքած ընչազուրկ մարդկանց խմբեր, որոնք թափառում են երկրից երկիր, երբեմն ավազակությամբ զբաղվելով, երբեմն էլ վարձվելով որպես զինվոր կամ մշակ։ Աղքատներից շատերը փախչում էին*

---

13 *Ըստ երևույթին գոյություն է ունեցել վերաբաժանման երկու ձև. ա) ընտանեկան համայնքի ներսում, որ կատարվել է, իրեն, ամեն տարի և բ) հողի հիմնական վերաբաժանում տերիտորիալ համայնքի ներսում, որ տեղի էր ունենում երկարատև ընդմիջումներով։*

14 *Այստեղ ավազանին հասցրել էր մեծ հարստություն կուտակել դեռևս առևտրական գաղութների գործունեության ժամանակաշրջանում, իսկ փոխանակության քայքայիչ ազդեցությունը, հավանաբար, ավելի ուժեղ էր զգացվում, քան մյուս հարևան կենտրոններում։*

լեռները, մասնավորապես՝ Հայկական լեռնաշխարհը, Հայասա երկիրը և կից շրջանները, դեռևս ազատ ցեղի մեջ ազատվելով շահագործումից[15]։

**Ստրկություն:** *Խուրրիական հարուստների նոր կազմավորվող խոշոր անհատական տնտեսություններում շատ սուր էր դրված աշխատող ձեռքերի հարցը։ Համայնականների փոխադարձ օգնությունը և պարտային ստրկությունը մասամբ միայն կարող էին լուծել այդ հարցը։ Ըստ որում հայրենակից պարտային ստրուկների շահագործումը կապված էր իրենց՝ ստրուկների, ազատագրվելու ձգտման հետ, նրանց ազգականների՝ ստրկացած ազգակիցներին փրկագնելու ջանքերի հետ, դատավարությունների հետ և այլն։ Շատ ավելի բարձր էին գնահատվում օտարածին ստրուկները, մասնավորապես լեռնցիները (լուլլու), որոնք ստրկության մեջ ընկնելով, բոլորովին անպաշտպան էին դառնում[16]։ Այդ պատճառով էլ մ. թ. ա. II հազարամյակի կեսից սկսած խեթական և ասսուրական աղբյուրներում վկայություններ կան այնպիսի արշավանքների մասին, որոնք ձեռնարկվում էին հատկապես գերեվարման նպատակով[17]։ Սակայն եթե զորքը շատ մեծ քանակությամբ գերիներ էր բերում, ապա միշտ չէ, որ հնարավոր էր լինում նրանց նպատակահարմար կերպով օգտագործել արտադրության մեջ։ Բացի այդ, գերիների մեծ խումբը վտանգ էր ներկայացնում տերերի համար։ Այդ պատճառով էլ խեթերը դեռևս XIV դարում գերիների մի մասին կոտորում էին[18], իսկ ասորեստանցիները XIII դարում շատերին կուրացնում էին և ապա օգտագործում, հավանաբար, լոկ ամենապարզ աշխատանքներում։*

**Պալատական և տաճարային տնտեսություն:** *Համայնական տնտեսության մեջ գերիշխող, վերը նկարագրված պայմաններից բացի պետք է հիշատակել նաև այլ՝ պալատական և տաճարային տնտեսությունների գոյությունը խուրրիական հասարակությունում։ Ոչ մեկը և ոչ էլ մյուսը չունեին այն նշանակությունը, որ ձեռք էին բերել Բաբելոնի և Եգիպտոսի դասական «գահտային» քաղաքակրթություններում, սակայն, անկասկած, կարևոր տարր էին երկրի տնտեսությունում։ Պալատական տնտեսությունում աշխատում էին տարբեր կարգի կախյալ և ոչ լիիրավ աշխատողներ, որոնց վիճակի մասին դժվար է որևէ որոշակի բան ասել։*

*Միտաննական թագավորին շրջապատում էր տոհմիկ ավագանին։ Ճիշտ չէ, սակայն սրանց թվին վերագրել հանրահայտ* **մարիաննա**–*կառավարներին, որոնց որոշ արևմտյան գիտնականներ համարում էին հնդիրանցիներ։ Հնդիրանցիների տարրը II հազարամյակի կեսերին արդեն լրիվ կլանված էր խուր-*

---

[15] *Սա միանգամայն հավանական է խուրրիների և հատապատապես հայտնի՝ խեթերի նկատմամբ։*

[16] *Տե՛ս Н. Б. Янковская,* Юридические документы из Аррапхи в собраниях СССР, «Переднеазиатский сборник», 1960, *էջ 454—455։*

[17] *Խեթերի մոտ առաջին անգամ Սուպպիլուլիումաս Ա-ի մ. թ. ա. XIV դարի տարեգրություններում, իսկ ասորեստանցիների մոտ 14.400 հոգու գերեվարության մասին առաջին հիշատակությունը Սալմանասար Ա-ի (մ. թ. ա. XIII դար) տարեգրություններում (տե՛ս* *E. Ebeling, B. Meissner, E. A. F. Weidner,* Die Inschriften der altassyrischen Könige, I, Leipzig, 1926, *էջ 118)։*

[18] *Տե՛ս Э. А. Менабде,* О рабстве в Хеттском государстве, «Переднеазиатский сборник», М., 1961, *էջ 14։*

րիների կողմից։ Մարիաննա-կառավարները սովորական «արքայական մարդիկ» էին[19]։

**Խուրրիների պետական կառուցվածքը։** *Ինչպես խեթական թագավորության մեջ, այստեղ ևս առանձին խոշոր շրջանները կառավարվում էին արքայազունների կողմից և Միտաննի թագավորությանը ենթարկվում էին (առավել կամ պակաս ձևականորեն) մի շարք ինքնավար թագավորություններ։ Այսպես, օրինակ, Աշշուրում, որը լիովին պահպանել էր իր ներքին կառուցվածքը և կառավարվում էր ավագների խորհրդի և կառավարչի կողմից[20], կար նաև միտաննական «դեսպան» (սուկալլու), որը մասնակցում էր քաղաքի կառավարմանը։ Միտաննիում (և առհասարակ խուրրիական հասարակություններում) տեղական կառավարիչները, իսկ որտեղ դրանք չկային՝ ավագների խորհուրդը, հավանաբար, բավական անկախ էին։*

*Զինվորական պարհակի և զինվորական ուժերի կազմակերպումը խուրրիական հասարակության մեջ, ամենայն հավանականությամբ, նման էր այն ձևին, որ տեսանք խեթական թագավորության մեջ։ Ռազմիկներ էին տրամադրում և նրանց մասամբ հանդերձավորում համայնքները, բայց զորատեսի և արշավանքների ժամանակ նրանց պահում էր արքունիքը։ Նա էլ նետեր և այլ հանդերձանք էր մատակարարում շարքային ռազմիկներին[21]։ Սակայն պետական և ռազմական կազմակերպությունը Միտաննիում, հավանաբար, պակաս արդյունավետ էր, քան խեթականը, քանի որ խեթերի դեմ մղված պայքարում միտանցիները արագ պարտություն կրեցին։*

**Կրոնը, գրականությունը և գիրը։** *Դաշտավայրային խուրրիների հոգևոր մշակույթի մասին մենք գիտենք գերազանցապես խեթական թագավորական դիվանի խուրրիերեն կամ խուրրիերենից թարգմանված տեքստերից[22]։ Կրոնի դերն այստեղ նույնքան կարևոր էր, որքան և հին արևելյան մյուս հասարակություններում։ Կրոնի մեջ, ինչպես և գաղափարախոսության մյուս ասպարեզներում, արտահայտվում էր Բաբելոնի ուժեղ ազդեցությունը։ Ամենից ավելի կարևոր աստվածություններն էին ամպրոպի աստված Թեշուբը (Թեշշոբ), որի պաշտամունքի կենտրոնն էր Կումմանի (Կոմանա) քաղաքը Կիլիկյան Տավրոսի լեռներում և, հավանորեն, նույնանուն քաղաքը (Կումաննի, Կումենի, Կումմե) Մեծ Զաբ գետի վերին հոսանքի շրջանում[23]։ Մյուս կարևոր աստվածությունն էր Թեշուբի կինը՝ Խեբատ աստվածուհին, ապա պտղաբերության, պատերազմի,*

---

[19] *Տե՛ս A. Kammenhuber*, Die Arier im Vorderen Orient. Heidelberg, 1968.

[20] *Տե՛ս И. М. Дьяконов,* Развитие земельных отношений в Ассирии, Л., 1949, *էջ 18 և հաջ. հմմտ., էջ 40։*

[21] *Տե՛ս Н. Б. Янковская,* Землевладение большесемейных домовых общин в клинописных источниках, ВДИ, 1959, № 1, *էջ 42—43։*

[22] *Դրանք առասպելներ և հեքիաթներ են, որոնցից միայն հատվածներ են պահպանվել։ Տե՛ս H. G. Güterbock*, Kumarbi. Mythen vom churritischen Kronos, Zürich—New York, 1946, *J. Friedrich,* Churritische Märchen und Sagen in hethitischer Sprache, ZA, XLIX, 1950, *էջ 213—355, նույնի՝* Der churritische Mythus von Schlangendämon Hedammu in hethitischer Sprache, AO, XVII *էջ 230—254։ H.G. Güterbock,* The Song of Ullikummi, New-Haven; 1952 *և ուրիշներ։*

[23] *Տե՛ս Г. А. Меликишвили,* Наири—Урарту, Тбилиси, 1954, *էջ 165—168։*

և մարմնական սիրո աստվածուհի Շաուշկան (նրան նվիրված էին շվայտ ծեսեր, որ ուղեկցվում էին սրբազան պոռնկությամբ), արևի աստված Շիմիգեն և բազմաթիվ տեղական աստվածներ։ Խուրրիական աստվածների շարքում պաշտվում էին նաև բաբելական և հնդիրանական աստվածներ։ Խուրրիական հասարակության ուշագրավ կողմերից մեկն է հատուկ քրմուհիների առկայությունը յուրաքանչյուր բնակավայրում (տերիտորիալ համայնքի)։ Այդ քրմուհիները պատկանում էին ավագանուն և, ըստ երևույթին, ունեին ոչ միայն ծիսական, այլև որոշ վարչական ֆունկցիաներ[24]։

Գրի հետ (ակկադական սեպագրեր) խուրրիները ծանոթ էին դեռևս մ. թ. ա. III հազարամյակում, որի մասին վկայում է Ուրկեշի թագավոր Թիշարիի արձանագրությունը։ Մ. թ. ա. II հազարամյակում նրանք կիրառում էին ակկադական սեպագրի հյուսիս-սիրիական—հյուսիս-միջագետյան տարբերակը, ըստ որում, խուրրիական տերիտորիայի տարբեր մասերում տարածվում էին ուղղագրական տարբեր սիստեմներ[25]։ Խուրրիական գրականությունը, որ գտնվում էր բաբելականի ազդեցության տակ (հայտնի են, օրինակ, հատվածներ Գիլգամեշի մասին բաբելական էպոսի խուրրիական տարբերակից)[26], հավանաբար բավական ծավալուն է եղել, բայց մեզ հասել են նրա չնչին մնացորդները միայն։ Ամենևին չեն պահպանվել միտաննական թագավորների տարեգրությունները ու պատմական այլ տեքստեր, որոնք ամենայն հավանականությամբ պետք է որ գոյություն ունեցած լինեն։

Խուրրիների մի մասը ապրում էր Միջագետքում և նրան անմիջականորեն հարող շրջաններում (ինչպիսիք էին Առապխան և Ալալախը), ուր բնակչությունը նստակյաց երկրագործական մշակույթի մեծ ավանդույթներ ուներ և որտեղ դասակարգային հասարակության տարրերը վաղուց էին սկսել ձևավորվել։ Ըվահա, այն ժամանակաշրջանում, որն արդեն լուսաբանվում է վավերագրերով, այս վայրերում ապրող խուրրիները բոլորովին կորցրել էին իրենց սկզբնական ցեղային կառուցվածքը։ Աղբյուրները ցույց են տալիս միայն ընտանեկան համայնքներ, ազգակից ընտանեկան համայնքների խմբեր, ինչպես նաև տերիտորիալ կազմավորումներ՝ գյուղ և քաղաք։ Բայց լեռներում, ըստ երևույթին, բարձրագույն կազմակերպությունը դեռևս ցեղն էր։ Այսուհանդերձ, վերը շարադրված պատմական իրավիճակը բավական ճշմարիտ պատկերացում է տալիս, թե որ ուղղությամբ պետք է զարգանար հասարակությունը պակաս զարգացած շրջաններում՝ Վերին Եփրատի հովտի Հայասա երկրում, Վանա լճի ավազանում և առհասարակ Հայկական լեռնաշխարհում։ Դասակարգային հասարակությունը ծնվում էր երկունքով, և լեռնաշխարհի բնակչությունը դեռ նոր պետք է այդ փորձությունը կրեր։

---

24 Այդպիսին է, օրինակ, Ամմինասը՝ Նուզիում (արքայազն Շիլվա-Թեշուբի դիվանում) պահպանված նամակի հասցեատերը։

25 Տե՛ս *E. A. Speiser*, Introduction to Hurrian, New-Haven, 1941, էջ 11 և հաջ.։

26 Մատենագրությունը տե՛ս *И. М. Дьяконов,* Эпос о Гильгамеше գրքում (թարգմանություն Ի. Մ. Դյակոնովի), М—Л, 1961, էջ 208—209։ Նույն տեղում, էջ 117, այդ էպոսի պատմության մեջ խուրրիական հատվածի ունեցած դերի մասին։

## ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍԱ-ԱԶԶԻ ՑԵՂԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

### 1. ՀԱՅԱՍԱ-ԱԶԶԻԻ ՏԵՂՈՐՈՇՈՒՄԸ, ԷԹՆԻԿԱԿԱՆ ԿԱԶՄԸ ԵՎ ԼԵԶՈՒՆ

Նախորդ գլուխներում ներկայացված նյութերով ուրվագծվում են Հայկական լեռնաշխարհի և նրան հարող շրջանների սոցիալ-տնտեսական, մշակութային, հասարակական և էթնիկական զարգացման այն պրոցեսները, որոնք նախադրյալներ ստեղծեցին ցեղերի և նրանց միությունների համախմբման, հայ ժողովրդի ու նրա լեզվի ձևավորման համար։

Սակայն, հայ ժողովրդի ու նրա լեզվի ձևավորման խնդիրը սերտ կերպով կապված է նաև էթնիկական և ընդհանրապես պատմական զարգացման այն երևույթների հետ, որ տեղի են ունենում սկսած մ. թ. ա. IV հազարամյակից Բալկանյան թերակղզու և Հնդկաստանի միջև ընկած լայնածավալ երկրներում։ Այս տերիտորիաները այն պատմական միջավայրն են, որտեղ հետզհետե հաստատվում են հնդեվրոպական լեզուներով խոսող ցեղերը։ Սրանց նախնական բնակության տերիտորիան ընդգրկում էր Սև ծովից դեպի հյուսիս և հյուսիս-արևմուտք գտնվող ցածրավայրերը։ Այս տեղերից մ. թ. ա. IV հազարամյակում խեթերի հնդեվրոպական նախնիները շարժվել են դեպի Փոքր Ասիա, ապա «նախահունական» թրակա-պելասգյան ցեղերը՝ Բալկանյան թերակղզու հարավը, Կրետե և Կիպրոս կղզիները։ Նույն հարավ-ռուսական տափաստաններից շարժվում են դեպի հարավ-արևելք հնդիրանական ցեղերը։ Այնուհետև, տեղի է ունեցել թրակա-փռյուգական լեզուներով խոսող ցեղերի ներթափանցումը դեպի Փոքր Ասիա և Հայկական լեռնաշխարհ։ Բոլոր այս տեղերում հնդեվրոպական լեզուներով խոսող ցեղերը սերտ հարաբերությունների մեջ են մտնում տեղաբնակ ցեղերի հետ, ընդ որում հնդիրանական ցեղերը ստեղծում են փոխազդեցությունների ուրույն աշխարհ, իսկ նրանցից արևմուտք գտնվող Հայկական լեռնաշխարհում, Փոքր Ասիայում և Էգեյան աշխարհում տեղի էին ունենում հնդեվրոպական մի քանի ցեղակից լեզվաընտանիքների փոխազդեցությունները։ Այդ փոխազդեցությունների արևմտյան ծայրամասում էր գտնվում Բալկանյան թերակղզու հարավային մասը և Կրետե կղզին, որտեղ գերիշխող էին «նախահունական», թրակա-պելասգյան ցեղերը, որոնց հիմքի վրա էլ ձևավորվեց հելլենական աշխարհը, իսկ արևելյան ծայրամասումն էր Հայկական լեռնաշխարհի խուռրի-ուրարտական էթնիկական կազմավորումների միջավայրը, որը մտավ երկարատև փոխազդեցությունների ոլորտը խեթա-լուվիական և թրակա-փռյուգական հնդեվրոպական ցեղերի հետ։

*խուրրի-ուրարտական և հնդեվրոպական ցեղերի բազմաթիվ և բազմաձև փոխազդեցությունների կոնկրետ դրսևորումն եղավ հայկական էթնոսի առաջացումը։ Հայկական լեռնաշխարհի խայտաբղետ ցեղային կազմավորումներին պիտի փոխարիներ հայ ժողովուրդը, իբրև մեկ միասնական ժողովուրդ, իր միասնական լեզվով, տերիտորիայով և պետությամբ։ Իրավամբ կարելի է ասել, որ հայ ժողովուրդը Հայկական լեռնաշխարհի առաջին իրական ու կայուն ժողովուրդն էր։ Լեզվական, հնագիտական, մշակութային, ազգագրական և առհասարակ պատմական աղբյուրների բազմակողմանի պրպտումները բերում են այն աներկբա եզրակացության, որ հայ ժողովուրդը սկսել է կազմավորվել Հայկական լեռնաշխարհում դեռևս այն ժամանակաշրջանից, երբ այդ տերիտորիայի վրա և նույնիսկ նրա շուրջը գոյություն չունեին հնդեվրոպական լեզուներով խոսող ցեղեր և ժողովուրդներ։ Հայ ժողովուրդը իր ֆիզիկական կերպարանքով պատկանում էր արմենոիդ մարդաբանական տիպին, որին պատկանում էին Հայկական լեռնաշխարհի ամբողջ տերիտորիայով տարածված տեղաբնակ խուրրի-ուրարտական ցեղերը։ Նույնը պետք է ասել հայերի մշակութային ավանդույթների մասին։ Սակայն, լեզվի խնդրում մեծ ներդրում են արել եկվոր հնդեվրոպական տարրերը։ Սրանց ցեղային լեզուներն են, որ Հայկական լեռնաշխարհում սկիզբ են դրել հայոց լեզվի ձևավորմանը։ Հին և Նոր հայերենի ու նրա բարբառների ուսումնասիրությունը վերջնականորեն ցույց է տվել, որ հայոց լեզվի կորիզը պատկանում է հնդեվրոպական լեզվաընտանիքին։ Բայց այն ժողովրդի լեզու է դարձել միայն տեղաբնակ խուրրի-ուրարտացիների և այլ ցեղերի լեզուներից մեծապես ազդվելով ու նրանց բառամթերքի հաշվին խիստ հարստանալով միայն։*

*Էթնա-լեզվական վերոհիշյալ փոխազդեցությունների ամենահին և հիմնական օղակներից մեկն է Հայասա-Ազզի (կամ Խայասա-Ազզի) ցեղային միությունը, որը մ. թ. ա. II հազարամյակի կեսերից սկսած զգալի դեր է կատարում Հայկական լեռնաշխարհի քաղաքական և էթնիկական պատմության բնագավառում։*

**Հայասա-Ազիի տեղորոշումը:** *Ներկայումս գերիշխող է այն տեսակետը, ըստ որի հայ ժողովրդի ձևավորման համար որպես հիմք ծառայած հնագույն էթնիկական խումբը եղել է ցեղերի քաղաքական այն միավորումը, որը հայտնի է խեթական արձանագրություններից Հայասա-Ազզի անունով։ Է. Ֆոռերի*[1] *և Գ. Ղափանցյանի*[2] *ուսումնասիրություններից հետո համարվում է, որ այդ երկիրն է տվել հայ ժողովրդին նրա* ḫay ‖ hay *ինքնանվանումը։ Պ. Կրեչմերը առաջինը լեզվաբանորեն հիմնավորեց այն դրույթը, որ* Ḫayasa *անունը բաղկացած է* Ḫaya *կամ* Ḫayo *հիմքից և* sa *վերջավորությունից, որը տարածված վերջածանց է Փոքր-Ասիայի տեղանուններում*[3] *և կապվում է խե-*

---

[1] *Տե՛ս E. Forrer,* Hajasa-Azzi, „Caucasica", 1931, № 9.

[2] *Տե՛ս Гр. Капанцян,* Хайаса—колыбель армян. Этногенез армян и их начальная история, Ереван, 1947.

[3] *Տե՛ս P. Kretschmer,* Der nationale Name der Armenier Haikh, „Anzeiger der Akad. der Wiss. in Wien, phil.-hist. Klasse", 1932, №1—7, *հայերեն ամփոփումը տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1937, № 7—8, էջ 429—432։*

թա-լուվիական լեզվաշխարհի հետ[4]։ Պ. Կրեչմերի այս եզրակացությունը զարգացվեց և խորացվեց Ն. Ադոնցի, Գ. Ղափանցյանի և այլ հայագետների ուսումնասիրություններում[5]։ Սույն նույնացումը հանդիպել է նաև առարկություններ, որոնք, սակայն, հիմնավոր չեն թվում[6]։ Մեզ հետաքրքրող երկիրը խեթական արձանագրություններում անվանվում է կամ «Հայասա (կամ Խայասա) քաղաքի երկիր» կամ «Ազզի քաղաքի երկիր». այստեղից կարելի է եզրակացնել, որ երկիրը կոչվել է իր քաղաքային կենտրոնների անունով։ Թիլ-Հայասա (կամ Թիլ-Խայասա) քաղաքը տեղադրվում է հավանաբար հին հայկական Թիլ ավանի տեղում։ Նախաքրիստոնեական դարաշրջանում այստեղ գտնվում էր Նանե դիցուհու տաճարը[7]։ Այս տեղորոշումը ցույց է տալիս, որ Հայասա երկրի կորիզը և նրա սկզբնական տերիտորիան եղել է հին հայկական Եկեղյաց գավառը՝ անտիկ դարաշրջանի Ակիլիսենեն և համապատասխանում է Երզնկայի դաշտին։ Թիլ ավանը տեղադրվում է այդ դաշտի կենտրոն Երիզա կամ Արիզա[8] քաղաքից ոչ հեռու, որի տեղում, հավանորեն, գտնվելիս է եղել Հայասա կամ Խայասա երկրի մյուս կենտրոնը՝ Ազզի քաղաքը։ Նախաքրիստոնեական դարաշրջանում այստեղ էր գտնվում Անահիտ դիցուհու պաշտամունքի վայրը։

Հ. Մանանդյանի այն կարծիքը, թե Հայասա երկիրը տեղորոշվում է Վանա լճից հյուսիս և արևմուտք ընկած շրջաններում, կարոտ է մնում հիմնավորման[9]։ Անհավանական է թվում գիտության մեջ տարածում գտած նաև այն կարծիքը, թե Հայասա-Ազզի երկիրը գտնվել է Սև ծովի մերձպոնտոսյան ափերին, ներկայիս Տրապիզոնից հարավ-արևելք[10]։

Տարբեր տեսակետների առաջացման հիմնական պատճառներից մեկն է հայասական Առիպսա քաղաքի տեղորոշման հարցը, որը ըստ Մուրսիլիս Բ-ի (մ. թ. ա. 1345 թվական) տարեգրության, «գտնվում էր ծովի մեջ»։

Խեթական աղբյուրի այս վկայությանը տարբեր մեկնություններ են տրըվել. ոմանք գտնում են, որ խոսքը Տրապիզոնի և Կերասունտի շրջակայքի սևծովյան եզերքի մասին է[11], մյուսները Առիպսան փնտրում էին Վանա լճի[12] ա-

---

[4] Լուվիական -sa վերջավորության մասնակցությունը այլևայլ տեղանունների ձևավորման մեջ պարզորոշ ի հայտ է գալիս խեթա-լուվիական լեզուներով խոսող էթնիկական միջավայրում։ Դրանցից առանձնապես հետաքրքրական են արևմտյան Փոքր Ասիայի՝ Լյուդիայի, Կարիայի, Տրովադայի և հարևան երկրների տեղանունների օրինակները (Harpasa, Mylasa, Hydyssa, Bargaza, Tarlu(s)sa (Տրոյա), Wilu(s)sa(s) (Իլիոն), Karkis(s)as, Tattassa(s), Hala(s)sa) և այլն։ Տե՛ս A. Toynbee and E. D. Meyers, Historical Atlas London—New York—Toronto, 1959, էջ 106—107։

[5] Տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, Paris, 1946, էջ 27—41, նաև՝ С. Т. Еремян, К вопросу об этногенезе армян, ВИ, 1951, № 1, էջ 101 108։

6 Տե՛ս И. М. Дьяконов, Предыстория армянского народа, Ереван, 1968, էջ 81—84։

7 Տե՛ս Г. Капанцян, Хайаса—колыбель армян, էջ 25, 26։

8 Այս քաղաքը ուշ շրջանում կոչվել է Երզնկա, այժմ Երզինկան, Երզինջան։

9 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, Երևան, 1944, էջ 31—34։

10 Հայասա-Ազզին Սև ծովի մերձպոնտոսյան ափին են տեղադրել Դելապորտը, Կոռնելիուսը, Գարստանգը և ուրիշներ, վերջերս՝ Ի. Մ. Դյակոնովը։

11 Տե՛ս И. М. Дьяконов, Предыстория армянского народа, էջ 81—84։

12 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 32,

փին, կամ Վերին Եփրատի ակունքների մոտ, Կարին-Էրզրումից ոչ հեռու գտնվող ամրության վայրում[13], կամ վերջապես Ծովք (Գելչուկ) լճի, որից սկիզբ է առնում Արևմտյան Տիգրիսը, ափին[14]։ Սակայն այս հարցով զբաղվող գիտնականները հաշվի չէին առնում Հայասա-Ազզիի մյուս այն քաղաքների մասին եղած տեղեկությունները, որոնց տեղորոշումը ի վերջո բերում է մեզ նույն Վերին Եփրատի հովիտը։ Այս հանգամանքը հաշվի առնելով, Ն. Ադոնցը հանգել է այն ճիշտ եզրակացության, որ Առիպսա քաղաքը պետք է տեղադրել ներկայիս Դենիզլի գյուղի տեղում, Դիվրիգի (միջնադարյան Տիւրիկ, Տյուրիկ) քաղաքից ոչ հեռու, Գյոլ-դաղ լեռան ստորոտում[15]։ Դենիզլի գյուղը, որի անունը թուրքերեն նշանակում է «ծովագյուղ», գտնվում է ճահճոտ վայրում, որտեղ նախկինում պետք է որ լիճ եղած լինի. այդ մասին է վկայում նաև Գյոլ-դաղ լեռան անունը, որ թուրքերեն նշանակում է «լճի լեռ»։

Հայասա-Ազզի ցեղային միության մյուս բնակավայրերը ևս տեղորոշվում են Փոքր Հայքի և երբեմն նրա մասը կազմող Բարձր Հայքի տերիտորիայում։ Առիպսայից ոչ հեռու գտնվում էին Դուկկամա կամ Դուկկարամա (այժմ՝ Դոգան գյուղը, անտիկ Դագոնան) և Ջիմառիա (այժմ՝ Ջիմառա) քաղաքները։ Այս բնակավայրերից բացի, խեթական աղբյուրները Հայասա երկրում հիշատակում են Ուրա «քաղաքը»՝ «Հայասա երկրի գլխավոր ամրոցը»[16]։ Թիլ-Հայասա և Ազզի քաղաքներից հետո երկրի խոշոր կենտրոններից էին Կումմախա կամ Կամմուխա (այժմ՝ Կեմախ)[17] և Ինգալավա-Թարխիգամա (Թորգոմա, հետագայում Թորդան) քաղաքները։ Այս ժամանակաշրջանում պետք է գոյություն ունեցած լինի և հին հայկական Դարանաղի գավառի Անի ամրոց-քաղաքը Եփրատի ափին Anniaca անվան տակ[18], որը գուցե կապ ունի Հայասական Աննիաս թագավորի անվան հետ։ Երզնկայի դաշտի խոշոր կենտրոններից էր Բիթառիգա քաղաքը (այժմ՝ Բթառիճ, Ալթին-Թեփեի ավերակներից ոչ հեռու), որ այլ կերպ կոչվել է Պաթթեյարիկա։ Այս անունը երբեմն վերագրվում էր ողջ Հայասա-Ազզի երկրին։ Հայասայի քաղաքների թվին էր պատկանում նաև Առնիա քաղաքը, որը տեղադրվում էր անտիկ Առանեի (այժմ՝ Ալաչա-խան) տեղում։

Այսպիսով, սկզբնաղբյուրներից մեզ հայտնի տվյալների համադրումը ցույց է տալիս, որ միանգամայն ճիշտ է Հայասա-Ազզի թագավորության տերիտորիայի տեղորոշումը խեթական արձանագրությունների «Բարձր երկրից» (կամ «Վերին աշխարհից»), հյուսիս-արևմուտք, հին հայկական Բարձր Հայք նահանգի[19] սահմաններում, արևմուտքում՝ բուն Փոքր Հայքի տերիտորիայի

---

13 Տե՛ս *Г. Капанцян*, Хайаса — колыбель армян.

14 Տե՛ս Լ. Բարսեղյան, Հայասա-Ազզիի ու նրա մի քանի բնակավայրերի տեղադրման հարցի շուրջը, ՊԲՀ, 1963, № 3, էջ 310—311։

15 Տե՛ս *N. Adontz*, Histoire d'Arménie, էջ 39—40։

16 Պետք է ճիշտ լինի Գ. Ղափանցյանի տեղադրումը Երզնկայի դաշտում՝ Ալթին Թեփեի ավերակների վայրում, ավելի ուշ շրջանի Ջիմին-Ծումինա կենտրոնից 4 կմ հարավ։

17 Տե՛ս *E. Forrer*, Hajasa—Azzi, էջ 1—2։ *Г. Капанцян*, Хайаса—колыбель армян. էջ 18—19։

18 Մի ուրիշ Anniaca քաղաք էլ գոյություն է ունեցել Թերմոդոն-Գայլ գետի (այժմ՝ Գել-գիտ չայ) ափին, անտիկ Կողոնիայի տեղում (այժմ՝ Կոյուլ-հիսար)։

19 Կարելի է ենթադրել, որ «Բարձր Հայք» անունը առաջացել է խեթական «Բարձր երկիր»-«Վերին աշխարհ» անվան նմանությամբ։

ընդգրկմամբ։ Այդ ընդարձակ ցեղային միության կենտրոնական շրջանները գտնվում էին անտիկ աղբյուրների Ակիլիսեննեում, որն ընդգրկում էր հին հայկական Եկեղյաց, Դարանաղի-Աղիվն և Մազուր գավառները։ Խեթերի և հայասացիների միջև ընդհարումները տեղի էին ունենում գերազանցապես Փոքր Հայքի հողերի հյուսիսում և հյուսիս-արևմուտքում ընկած տերիտորիաներում, Հալիս և Գայլ-գետ (Լիկոս) գետերի ակունքների շրջանում։ Զգալիորեն ավելի ուշ, երբ Հայասա-Ազզին կազմող «երկրների» միությունը արդեն գոյություն չուներ, Հերոդոտը (մ. թ. ա. շուրջ 490—424 թթ.), ապա Դիոդոր Սիկիլիացին (մ. թ. ա. շուրջ 90—21 թթ.) վկայում են մեկը՝ Արմենական լեռան(’Αρμένιον ὄρος). որտեղից բխում է Հալիս գետը, մյուսը՝ խոյերի ցեղի գոյության մասին հետագայում Տայք անունով հայտնի նահանգի տերիտորիայում։ Այս խոյ ցեղանվան հիմքում թերևս նշմարվում է նույն «Հայասա» անունը՝ առանց լուվյա-խեթական «սա» վերջավորության։

Բուն Հայասա-Ազզին (Եկեղյաց-Ակիլիսենեն) հյուսիսում սահմանակից էր Բալա (Պալա, Գայլ-գետի վերին հոսանքի շրջանը) և Դումաննա (անտիկ Դոմանայի, այժմ՝ Թումնա գյուղի շրջանը, Բաբերդից արևմուտք, Ճորոխ գետի հովտում) ցեղերի երկրներին։

Հայասա-Ազզի տերմինը Վերին Եփրատի հովտի հնագույն անվանումն է, որ հայտնի է մեզ սկզբնաղբյուրներից։ Այս ցեղային միության քայքայումից և խեթական պետության անկումից (մ. թ. ա. շուրջ 1200—1190 թվականներ) հետո Հայասա-Ազզին այլևս չի հիշատակվում։ Ամենայն հավանականությամբ Երզնկայի դաշտի կենտրոններ Թիլ-Հայասա և Ազզի քաղաքներն ավերվել էին և նրանց փոխարեն առաջացել էին այլ կենտրոններ, որոնց անունով էլ պետք է որ կոչվեր երկիրը։ Այդպիսի կենտրոններից մեկն էր լինելու վերը հիշատակված Բիթարիգա (այժմ Բթառիճ) քաղաքը (կոչվել է նաև Պաթթեյարիկա)։ Հետագայում Հայասա-Ազզի երկրների համադաշնակցության մեջ առաջատար դեր է կատարում հին հայկական Դարանաղի գավառի տերիտորիան, որը խեթական աղբյուրներում կոչվում է Կումմախա կամ Կամուխա (այժմ՝ Կեմախ գյուղը) իր գլխավոր կենտրոնի անունով։ Ավելի ուշ ուրարտացիների առաջխաղացման ժամանակաշրջանում (մ. թ. ա. VIII դար) կենտրոնը Թարխիգամա (հետագայում՝ Թորդան գյուղ) քաղաքն էր, այդ պատճառով ամբողջ գավառը ևս կոչվում էր Թարխիգամա, բայց այդ այն ժամանակ էր, երբ հայկական ցեղերի կենտրոնը տեղափոխվել էր հարավ՝ Խարբերդի դաշտը։

Հավանական է, որ վրացական աղբյուրների միջոցով մեզ հասած «Անձիան»-ը կամ «Անձիա»-ն[20] ունեցել է նաև «Ազնիի»-ան զուգահեռ ձևը, որի հետ համընկնում է Ազնցիք անվանումը։ Այս անվանումների հետ պետք է որ կապ ունենա մինչև օրս հայ ժողովրդական էպոսում պահպանված «Ազնանց տուն» առասպելական երկրի անվանումը. այդ անունով է, որ Բարձր Հայքի և Ներկա-

---

20 XI—XII դարերի վրացական աղբյուրներում հիշատակվում են իրար կողքի Անձորեթի կամ Անձիանձորա, Եկլեցի և Դաստերի «քաղաքները», որոնցից առաջինում նշվում է՝ «Մեծ վարդապետ Գրիգորի գերեզմանը» և նկատի ունի Թորդան գյուղը, երկրորդը՝ Եկեղեաց գավառն է, իսկ, Դաստերին, հայտնի Դաստեյրա ամրոցն է (Դաստարակ, այժմ՝ Դոստալի գյուղ Ջիմառայի մոտ)։ Ինչպես տեսնում ենք, «Անձիանձորա»-ն համապատասխանում է Թորդան-Թարխիգամա վայրին և խեթական աղբյուրների «Ազզի» երկրին։

յիս Դերսիմ ու Սասունի մեգալիթյան հուշարձանները ժողովուրդը կոչում է «Ազնարերդ»[21]։

Այս բոլոր անվանումները հավանաբար, հանդիսանում են Ազզի երկրի անվան ուշ ժամանակի ձևերը[22]։

Հայասա երկրի էթնիկական կազմի և լեզվի խնդիրը: Մեզ հասած տվյալները Հայասա երկրի էթնիկական կազմի և լեզվի մասին այնքան կցկտուր են, որ առայժմ դժվար է որոշակի կարծիք կազմել այդ մասին։ Գերիշխող կարծիքն այն է, որ Հայասա-Ազզի երկրի բնակիչները պատկանում էին խուրրիական ցեղերին[23]։ Սակայն բացահայտվում են այնպիսի փաստեր, որոնք կարող են մեկնաբանվել հօգուտ հայասացիների լեզվի հնդեվրոպական ծագման[24]։ Իր ժամանակին իբրև վարկած հայտնված այս տեսակետը հետագայում զարգացվեց Գ. Ջահուկյանի կողմից։ Հայասայի լեզվից մեզ հասած սակավաթիվ տվյալների (հայասական անձնանունների ու տեղանունների) վերլուծությունը բերեց նրան այն եզրակացության, որ հայասական լեզուն պատկանում է հնդեվրոպական հին անատոլիական լեզուների խեթական-նեսիական (ավելի ճիշտ՝ խեթա-լուվիական) խմբին, կամ որ այն թերևս ինքնուրույն հին անատոլիական լեզու է։ Այս տվյալների լույսի տակ փորձ է արվում պարզելու հայասական բաղադրատարրի բնույթը հայոց լեզվի մեջ[25]։ Նա նույնիսկ ենթադրում է «հայասա-խեթալուվիական բառբառների մնացորդների» առկայությունը ուրարտերենում և հայերենում[26]։

Այնուհանդերձ անհրաժեշտ է նշել, որ եթե Ḫayasa անունը հիմք է դարձել հայ ժողովրդի ինքնանվան և նրա կողմից զբաղեցրած երկրի անվան, ապա այդ նույնը չի կարելի ասել հայասերեն լեզվի մասին։ Այդ լեզուն կարող է դիտվել թերևս որպես ձևավորվող հայերեն լեզվի հնագույն շերտերից մեկը, բայց ոչ նրա հիմքը, որովհետև, ինչպես կտեսնենք առաջիկայում, հայոց լեզվի հիմքը դարձավ մ. թ. ա. XII դարից Հայկական լեռնաշխարհ թափանցած թրակափռյուգական լեզվախմբին պատկանող արիմ-արմենների լեզուն[27]։

---

21 Այս տեսակետից պատահական չէ, որ Հայասայի երկրորդ անվանումը կապվում է հայերեն «ազն» (սեռ. հոլ., ազին, ժողովուրդ, ցեղ, սերունդ, տոհմ, ազգակցություն) բառի հետ։ Գրաբարում սովորաբար օգտագործվում է հոգնակի «ազինք» ձևով։ Այս բառարմատից է ծագում ազնիվ՝ «տոհմիկ» «ազնվատոհմ» բառը։ Տե՛ս Г. Б. Джаукян Хайасский язык и его отношение к индоевропейским языкам, Ереван, 1964, էջ 78։

22 Ըստ Լ. Բարսեղյանի (Խայասա-Ազզիի ու նրա մի քանի բնակավայրերի տեղադրման հարցի շուրջը, էջ 310), մեզ հասել են ուշ շրջանի հիշողություններ Ազզի երկրի մասին XVII դարի հայտնի հեղինակ Հակոբ Կարնեցու մոտ հիշատակվող «Ղուռուշան գաւառ... որ ի գրոց Ազնցիք ասենս հատվածում, Վ. Ա. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, XIII—XVIII դդ., հատ. Բ, Երևան, 1956, էջ 552։

23 Տե՛ս Г. Капанцян, Хайаса — колыбель армян, passim: В. Бэнэцяну, Некоторые вопросы этногенеза армян, ՊԲՀ, 1961, № 2, էջ 105—106։

24 Տե՛ս С. Т. Еремян, К вопросу об этногенезе армян, էջ 101։

25 Տե՛ս Г. Б. Джаукян, Хайасский язык и его отношение к индоевропейским языкам, էջ 78։

26 Տե՛ս նույն տեղում, էջ 43։

27 Այս կապակցությամբ արժե անդրադառնալ նաև թրակա-պելասգյան նախահունական լեզվին և նրա հնարավոր առնչությանը հայոց լեզվին։ Թրակա-պելասգյան (նախահունական) լեզուների և հայերենի համեմատական ուսումնասիրությունը բուլղարական գիտնական Վլադիմիր

## 2. ՌԱԶՄԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Մ. թ. ա. XV դարում ավարտվում է խեթական թագավորության թուլացման ժամանակաշրջանը և նա վերստին համախմբվում է Փոքր Ասիայի կենտրոնական ողջ տերիտորիայում։ Այս ժամանակից սկսած գրավոր տվյալներ են պահպանվել Հայկական լեռնաշխարհի այն մի քանի շրջանների վերաբերյալ, որոնք, հարևելով մեծ տերությունների, ներգրավվում էին պատմական իրադարձությունների մեջ։

Խեթական պետությանը հարող այդ շրջաններն էին. Հայասա, Պախխուվա, Զուխմա (Սուխմու), Ալշե (Ալզի), Իսուվա (Իշուա), Թեգարամա. Մալդիա (Մելիդու, Մալաթիա), Կումմախա (Կումմուխ), Տումաննա, Պալա և այլն։

Alzi-Alše շրջանը նույնական է ասսուրական Enzitu-Anzitu-ին, և հին հայկական Անձիտին (Anzitenae) հարևան գավառների ընդգրկմամբ։ Ավելի ուշ այս անունը Alzini ձևով տարածվում է ասսուրական սեպագրերում հիշատակվող Շուպրիա երկրի ողջ տերիտորիայի վրա և համապատասխանում է հին հայկական Աղձնիք նահանգին։ Վերջինից դեպի արևելք, Արևելյան Տիգրիսի ակունքների շրջանում գտնվում էր հին հայկական Անձևացիք գավառը, որի անունը ծագում է նույն Alzi-Anzi-Anzawa-ից։ Հետաքրքրական է, որ միջին դարերում այդ գավառը կոչվում էր նաև Աղզի։

Իսուվա երկիրը համապատասխանում է Արածանիի ձախ ափին գտնվող հին հայկական Ծոփք Շահունյաց (այժմ Դերսիմ) գավառին։

Փոքր Ասիայի արևելյան մասի քաղաք-պետությունները, որ հիմնվել էին Միջագետքից (Աշշուր) Փոքր Ասիա (Կանեշ) տանող ճանապարհի վրա, առնչվում են Հայասա-Ազզի ցեղային միությանը և Կիզզվատնա երկրի գլխավորած խմբավորման հետ միասին մտան խեթական տերության կազմի մեջ։ Նրանց մեջ առաջինը Թեգարամա քաղաք-պետությունն էր։ Խեթական արձանագրությունների Թեգարամա քաղաքը, որ համապատասխանում է ասսուրա-բաբելական աղբյուրների Թիլ-Գարիմմուին (անտիկ աղբյուրների Gaurenae, այժմ՝ Գյուրյուն), այդ պետության մայրաքաղաքն էր։ Թեգարամա երկիրը նույնացվում է բիբլիական Թոգարմայի հետ («Աստվածաշնչի» հայերեն թարգմանության մեջ՝ «Տուն Թորգոմայ»), որը հիշատակվում է մ. թ. ա. 593 թվականի տակ[28]։ Հայ պատմական ավանդության մեջ «Թորգոմայ տունը» համարվում

---

Գեորգևին բերում է այն եզրակացության, որ «Նախահունարենը (պելազգերենը) ալբաներենի և հայերենի միջև գրավում է միջանկյալ դիրք թե՛ աշխարհագրական տեսակետից և թե՛ հնչյունական զարգացման առանձնահատկություններով»։ Այս ուղղությամբ կատարված նախնական ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հայասական լեզվի ուսումնասիրման ժամանակ, բացի խեթա-լուվիական լեզուներից, պետք է հաշվի առնել նաև թրակա-պելազգյան լեզուներով խոսող ցեղերը, որոնք Կիլիկիայի կողմից թափանցում էին Կիզզվատնայի (անտիկ Կատաոնիան) վրայով Հայասա-Ազզի ցեղային միության տերիտորիան և որոշ փոխազդեցության մեջ մտնում այնտեղ բնակվող ցեղերի հետ։ Թրակա-պելազգյան լեզուներով խոսող ցեղերի ազդեցությունը նշմարվում է Հայկական լեռնաշխարհի տեղաբնիկների լեզվի, պաշտամունքի և տեղանունների ու ցեղանունների մեջ։ Հատկապես նշելի է Ἀχαιοί ‖ Ḫayasa անունների նմանությունը։ (Տե՛ս В. И. Георгиев, Исследования по сравнительно-историческому языкознанию, М., 1958, էջ 92)։

28 Տե՛ս «Ծննդոց գիրք», Ժ 4, Եզեկիել, ԼԸ 6։

է Հայաստանի հոմանիշը, իսկ հայերը անվանվում են «Թորգոմեան», «Թորգոմածին»։ Արևելքում Թեգարաման իր մեջ էր առնում Պախուվա երկիրը (այժմ՝ Արաբկիր քաղաքի շրջանը) և հավանաբար Թեբուրցիա կամ Թեբուրզիա (ըստ խեթական և ասսուրական աղբյուրների) երկիրը։ Այն տեղորոշվում է Եփրատի աջ ափին, այժմ Ցաղչի-չայ կոչվող վտակի հովտում։ Պախուվայի և Թեբուրզիայի միջոցով Թեգարաման Եփրատով սահմանակից էր Իշուվային, որը գտնվում էր հետագա Ծոփքի տերիտորիայում։ Իշուվայի և Միտաննիի վրա արշավելիս խեթերը անցնում էին Թեգարամայի և Մելիդուի վրայով, որ Եփրատի գլխավոր գետանցն էր։ Հաճախ նույն Թեգարամայի վրայով խեթերը ներխուժում էին Հայասա-Ազզի երկրների համադաշնակցության թիկունքը։

Կանեշ—Աշշուր առևտրական մայրուղու վրա գտնվող մյուս քաղաք-պետությունը Մելիդուն էր կամ Մալզիան։ Նրա մայրաքաղաքը՝ Մալդիան (Մելիդ, Մելիտեա, անտիկ Melitenae, այժմ Էսկի-Մալաթիա), գտնվում էր Եփրատի գլխավոր գետանցի Ուրշա կամ Ուրուսա (Պևտինգերյան քարտեզի ad Aras, այժմ՝ Փորուտ գյուղից ոչ հեռու) քաղաքի մոտ։ Եփրատի դիմացի ափին գտնվում էր գետանցի մյուս ծայրը՝ Տումեիշկի քաղաքը, որը հետագայում հայտնի էր ուրարտական աղբյուրներից (այժմ՝ Իզոլու գյուղը, անտիկ դարաշրջանի Տոմիսան)։

Երրորդ քաղաք-պետությունը՝ Կումմուխը (անտիկ դարաշրջանի Commagenae) առաջացավ Մալդիայից հարավ, Եփրատի աջ ափին։ Նրա մայրաքաղաքը՝ Կումմախան (անտիկ դարաշրջանի Սամոսատը, այժմ՝ Սումեյսատ) գտնվում է Եփրատի այն գետանցի մոտ, որի նշանակությունը հետագայում շատ մեծացավ։

Բոլոր այս երկրները գտնվում էին «ռազմական դեմոկրատիայի» փուլում։ Այսպես, թվարկված երկրներում խեթերը բանակցություններ էին վարում ոչ թե թագավորների, այլ անմիջականորեն ցեղապետների կամ որոշ դեպքերում՝ համացեղական ժողովների հետ։ Այս երկրների առաջնորդները առաջին անգամ «թագավորներ» են անվանված ասսուրական տարեգրություններում՝ մ. թ. ա. XIII դարի վերջում։

Հայասա-Ազզին ևս, անշուշտ, պետք է դիտել որպես ցեղային միություն, թեև խեթական աղբյուրները նրա կառավարչին կոչում են «թագավոր»։ Համենայն դեպս, խեթական թագավորի հետ կնքված պայմանագրերում Հայասայի «թագավորի» հետ միասին հանդես է գալիս նաև նրա ժողովուրդը, ամենայն հավանականությամբ՝ ժողովրդական հավաքը կամ ցեղային (միջցեղային) ռազմական ավագանու ժողովը։

Այսուհանդերձ, չպետք է թերագնահատել Հայկական լեռնաշխարհի և Անդրկովկասի հասարակության կատարած առաջընթացը դեպի դասակարգային քաղաքակրթության ատիճանը։ Միանգամայն վաղաժամ կլիներ պնդել, թե XIV—XII դարերում Հայկական լեռնաշխարհի տերիտորիայի ոչ մի շրջան չէր թևակոխում դասակարգային քաղաքակրթության փուլը[29]։

---

29 *Տե՛ս И. М. Дьяконов,* Предыстория армянского народа, *էջ 100—101։*

## 3. ՀԱՅԱՍԱ-ԱԶԶԻ ՑԵՂԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԽԵԹԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Խեթերի պատերազմները Հայասայի դեմ մ. թ. ա. II հազարամյակի կեսերին[30]։ *Խեթական թագավոր Խաթթուսիլիս Գ-ի (շուրջ 1275—1250 թվականները մ. թ. ա.) այսպես կոչված «Ինքնակենսագրության» մեջ[31] հաղորդվում է, որ մեր տոմարով մ. թ. ա. XVI—XV դարերին համընկնող ժամանակաշրջանում, խեթերին հարևան ցեղերն ու թագավորները, խեթական պետության թուլացումից օգտվելով, մխրճվեցին նրա տերիտորիայի խորքերը։ Հատկապես հեռու, դեպի հարավ են թափանցել կասկերը, մեծ հաջողություններ են ունեցել նաև նրանցից արևելք ընկած ցեղերը։ Այսպես, Ազզիի մարդիկ ներխուժում են Վերին (կամ Բարձր) երկիրը (Հալիս գետի վերին հոսանքի շրջանը) և «սահման են դարձնում» Սամուխա լեռը, իսկ Իսուվայի մարդիկ, անցնելով Եփրատի աջ ափը, գրավում են Թեգարաման։*

*Մ. թ. ա. XIV դարի վերաբերյալ պատմական իրադարձությունների մասին համեմատաբար մանրամասն տվյալներ կան, թեև Թութխալիաս Գ-ի (շուրջ 1400—1380 թվականները մ. թ. ա.) և նրա որդու՝ Սուպպիլուլիումաս Ա-ի (շուրջ 1380—1340 թվականներ մ. թ. ա.) արշավանքների տարեգրությունը, որ կազմվել է վերջինիս որդու՝ Մուրսիլիս Բ-ի (շուրջ 1340—1320 թվականները մ. թ. ա.) հրամանով, մեզ հասել է վթարված վիճակում[32]։ Դեռևս Թութխալիաս Գ-ին հաջողվել է կարճ ժամանակով հնազանդեցնել Հայասան, իսկ Սամուխան ոչ միայն նվաճել, այլև հենակետ դարձնել դեպի հյուսիս ձեռնարկվող հետագա արշավանքների համար։ Սակայն շուտով Սուպպիլուլիումասը, դեռևս թագաժառանգ եղած ժամանակ,ստիպված է լինում պատժիչ արշավանք ձեռնարկել հայասացիների դեմ։ Բայց ճանապարհին նա հանդիպում է կասկերի տասներկու ցեղերի միացյալ աշխարհազորին և երկարատև պատերազմի բռնվում նրանց հետ։ Կասկերին ետ մղելուց հետո միայն Թութխալիաս Գ-ը նորից շարժվում է Հայասայի դեմ և ընդհարվում նրա թագավոր Կարաննիսի կամ Լաննիսի (անունը պարզ չի ընթերցվում) հետ։ Ճակատամարտը տեղի է ունեցել «Կումմախից ցած»։ Սակայն Թութխալիաս Գ-ը, ինչպես երևում է, վճռական հաղթանակի չի հասնում, և խեթերը ստիպված են լինում հետագայում բազմաթիվ նոր արշավանքներ կազմակերպել։*

*Սուպպիլուլիումաս Ա-ի գահակալության շրջանի կարևորագույն իրադարձությունը Միտաննիի դեմ մղված պատերազմն է։ Ըստ երևույթին այդ պատերազմին նախապատրաստվելու շրջանում է տեղի ունեցել խեթերի հաջորդ ընդ-*

---

30 *Սույն հատվածի հեղինակ Ի. Մ. Դյակոնովի տեսակետը Հայասայի տեղադրման և կատարած դերի մասին մանրամասն տե՛ս նրա* «Предыстория армянского народа», Ереван, 1968 *գրքում։*

31 *Տե՛ս A Goetze,* Die Annalen des Muršiliš, „Mitteilungen der Vorderasiatisch—Aegyptischen Gesellschaft", 38, Leipzig, *1933, էջ 87 և հաջ.։*

32 *Տե՛ս H. G. Güterbock,* The Deeds of Suppiluliumas Told by His Son, Mursilis II, „Journal of Cuneiform Studies." X, 2—4.

հարումը Հայասայի հետ, որից հետո պայմանագիր է կնքվել Սուպպիլուլիումասի և Հայասայի թագավոր Հուկաննասի միջև[33]։

Այդ պայմանագրի համաձայն, Հայասայի թագավորը հավատարմության երդում է տալիս խեթական թագավորին և պարտավորվում ռազմական օգնություն տրամադրել նրան և պահել իրեն հայտնի դարձած խեթական պետական գաղտնիքները (խոսքը, թերևս, Միտաննիի դեմ նախապատրաստվող արշավանքի մասին է) և, բացի այդ, ինչպես ներկայումս, այնպես էլ ապագայում հանձնել խեթական թագավորությունից Հայասա փախած անձանց։ Խեթական թագավորը Հուկաննասին կնության է տալիս իր քրոջը և այդ առիթով դրվում են մի շարք ուշագրավ պայմաններ.

«Իմ այն քույրը, որին ես, արևս, տվել եմ քեզ կնության, ունի շատ քույրեր, որոնք նրա հետ նույն տոհմից (՞), նույն սերնդից են, իսկ այժմ նրանք նաև քոնն են, որովհետև դու ստացել ես նրանց քրոջը։ Բայց Խաթթի երկրում կա մի կարևոր օրենք՝ «եղբայրը իրավունք չունի մերձենալու իր քրոջը, դա մեղք է։ Իսկ նա, ով այդպես վարվի՝ կմեռնի»։ Իսկ ձեր երկիրը բարբարոսական է և ձեզ մոտ սովորություն է, որ եղբայրը մերձենա իր քրոջը և իր զարմուհուն։ Բայց Խաթթուսասում դա արգելված է... Եվ խուսափիր պալատական կանանցից... Երբ գալիս է պալատական կինը, հապճեպորեն փախիր և ազատիր նրա ճանապարհը»։ Այնուհետև, պատմվում է ոմն Մարիասի մասին, որը մահապատժի էր ենթարկվել, որովհետև խեթական թագավորը նրան տեսել էր պալատական կնոջը նայելիս։ «Եվ երբ դու վերադառնաս Հայասա, ապա հետագայում դու չպետք է մերձենաս քո եղբոր կանանց, քո քույրերին՝ Խաթթուսասում դա արգելված է։ Եվ երբ դու գաս պալատ (խեթական թագավորի—հեղ.), ապա նման բանը արգելված է։ Եվ այլևս կին չվերցնես Ազզի երկրից, իսկ նրան ( . . . . . . . ), ում դու տիրում ես, նրան օրենքով պետք է համարես քո երկրորդական կինը, նրան գլխավոր կինդ չդարձնես։ Եվ ետ վերցրու քո դստերը Մարիասից և տուր նրան եղբորը»։

Այստեղ հիշատակվող Մարիասն, իհարկե, նա չէ[34], որը մահապատժի ենթարկվեց հարեմային տիկնոջ հետ զրուցելու համար. ըստ երևույթին դա Հուկաննասի կառավարչակիցն է, քանի որ այնուհետև ասվում է. «Եթե դուք, հայասացիներդ, գալիք օրերում բարեկամաբար պաշտպանեք ինձ (խեթական թագավորին—հեղ.), ապա ես բարյացակամորեն կպաշտպանեմ ձեզ՝ հայասացիներիդ, և Մարիասին և Հայասայի մյուս խնամիներին (մարդկանց) և բարյացակամորեն կպաշտպանեմ ես Հայասա երկիրը»։ Իսկ շարունակության մեջ ասվում է, որ այս պայմանագիրը, երկիրն ավերելու սպառնալիքի տակ, պարտադիր է «հայասացիների և Մարիասի համար»։

Քանի որ Մարիասը դիտվում էր որպես «Հայասայի խնամիներին» գլխավորողը, ապա կարելի է ենթադրել, որ նա Ազզիի առաջնորդն էր, և Ազզին կապված էր Հայասայի հետ փոխադարձ ամուսնություններով։ Ըստ որում, ոչ միայն Հայասան կին էր վերցնում Ազզիից, և Ազզին՝ Հայասայից, այլև նրանց մոտ տիրում էր այն սովորույթը, որ ամուսինը իրավունք էր ստանում քենինե-

[33] Տե՛ս J. Friedrich, Staatsverträge des Hatti-Reiches, 2. Teil, „Mitteilungen der Vorderasiatisch—Aegyptischen Gesellschaft", 34,1 Leipzig, 1930, էջ 103 և հաջ.։

[34] Բայց, հավանորեն, նրա ազգականն է։

րի և իր տոհմի հետ ամուսնական կապերով կապված տոհմի նույն սերնդի մյուս կանանց նկատմամբ։ Խեթական թագավորը հակառակվում է այս սովորույթին, նա չի ցանկանում, որ իր քրոջը Հայասայի թագավորին կնության տալու փաստը վերջինիս իրավունք տար խեթական թագավորական ընտանիքի և հարեմի մյուս կանանց նկատմամբ։ Խեթական արքայադուստրը պետք է դառնար առաջին կինը, այսինքն՝ Հայասայի թագուհին։

Հատկանշական է, որ պայմանագրի տեքստում Սուպպիլուլիումասը դիմում է ոչ միայն Խուկաննասին՝ Հայասայի թագավորին, այլև «Հայասայի մարդկանց», որ ամենայն հավանականությամբ միջցեղային ժողովն էր կամ ավագների խորհուրդը։

Նույն պայմանագրի տեքստից պարզվում է, որ հայասացիները երկրագործական ցեղ էին, քանի որ նրանց կողմից պայմանները խախտվելու դեպքում խեթական թագավորն սպառնում է ոչնչացնել ի թիվս այլոց «ձեր տները, ձեր դաշտերը (ձեր բնակավայրերը), ձեր խաղողի այգիները, ձեր մարգագետինները, ձեր եղջերավոր անասունները, ձեր ոչխարները...»։ Մի այլ տեքստից երևում է, որ Ալշիի զինվորները հետագայում ծառայել են խեթական բանակում որպես մարտակառք վարողներ, հետևաբար նրանց ծանոթ են եղել նաև ձին և մարտակառքը։

**Միտաննիի անկումը և Ասորեստանի հզորացումը:** *Խեթերի գլխավոր թշնամին, սակայն, մնում է Միտաննին։ Սուպպիլուլիումասը պատերազմ է սկսում Միտաննիի դեմ։ Հարձակումը տեղի է ունենում հյուսիսից, Վերին Եփրատի հովտով, ըստ երևույթին Թեգարամայի վրայով։*

Իրադարձությունները սկսվում են խեթերի և Իսուվայի ընդհարումից, իսկ առիթ է ծառայում այն հանգամանքը, որ Իսուվա են փախչում բոլոր կերպով խեթական տերիտորիայում բնակեցված մարդիկ։ Նրանց հետապնդելով, այստեղ է ներխուժում խեթական զորքը, և փախստականները խույս տալով, գնում են Հայասա։ Տիրանալով Իսուվային Սուպպիլուլիումասը Եփրատով շարժվում է ցած, հարձակվելով Միտաննիի գլխավոր կենտրոնների՝ Կարքեմիշի և Վաշշուգանեի վրա։ Բացի այդ, խեթերը ռազմական դաշինքի մեջ են մտնում Ալշիի կառավարչի հետ և հնարավորություն ստանում ավելի ազատ գործելու։ Մասնավորապես, գրավվում է Կուտմար[35] ամրոցը, որ իսուվական կամ միտանական էր, և հանձնվում Ալշիին[36]։ Խեթերի առաջ բացվում է միտանական հարթավայրերի ճանապարհը։

Պատերազմը Միտաննիի դեմ երկարատև եղավ և հանգեցրեց այդ թագավորության լիակատար ջախջախման, դարձնելով նրան խեթերի վասալը։ Խեթերի կողմից Կարքեմիշը գրավվելու հետևանքով շրջապատման մեջ է ընկնում նաև Կիզվատնան, որը շուտով վեր է ածվում խեթական թագավորության ինքնավար մարզի։

Միտաննիի ջախջախումը Աշշուրի կառավարիչ Աշշուրուբալլիտ Ա-ին հնարավորություն է տալիս ընդարձակելու իր տիրույթները։ Խեթական տեքստերից

---

35 Ըստ է. Ֆորրերի՝ ներկայիս Կումմարը՝ Բալուից 18 կմ հեռու (նույնական չէ ասսուրական Կուլիմերիին, որը գտնվում է Շուպրիայում)։

36 Տե՛ս *E. F. Weidner*, Politische Dokumente aus Kleinasien, 1, „Boghazköi—Studien", VIII, Leipzig, 1923, № 1, համա. № 4։

*մեկը հաղորդում է, որ «Միտաննին այլևս գոյություն չունի, Աշշուրի և Ալշեի (Ալզի) մարդիկ բաժան-բաժան արեցին նրան»[37]։ Ըստ երևույթին, Ալզիին բաժին են ընկնում Վերին Եփրատի հովտի ստորին մասի և Հայկական Տավրոսի նախալեռների՝ Տիգրիսի ձախ ափին ընկած շրջանները, իսկ Ասորեստանին՝ Հյուսիսային Միջագետքի արևելյան մասը և Վերին Տիգրիսի աջափնյա մասը։ Միտաննիից մնաց փոքրիկ միջուկը միայն։ Հետագայում Ասորեստանի թագավոր Ադադներարի Ա-ը (շուրջ 1310—1280 թվականները մ. թ. ա.) ոչ միայն ամրապնդում է իր դիրքերը Վերին Տիգրիսի հովտում (Կադմուխի կամ Կուդմուխի երկիրը) և տիրանում Տայդա և Իռիդա[38] ամրոցներին՝ նրա վերին հոսանքի շրջանի հյուսիսում ու հարավում, այլև որոշ ժամանակով գրավում է Վաշշուգանեն և ելք ստանում դեպի Եփրատը՝ Կարքեմիշի մոտ։ Այսպիսով, Ասորեստանը դառնում է մեծ տերություն, որը շրջակա ցեղերի համար ավելի մեծ վտանգ էր ներկայացնում, քան նախկինում՝ Միտաննին։*

**Մուրսիլիս Բ-ի պատերազմը Հայասայի դեմ:** *Միտաննիի ջախջախումը մեծ հաղթանակ էր խեթերի համար և նրանց հնարավորություն էր տալիս նվաճել Ասորիքն ու մրցակցել Եգիպտոսի հետ, բայց Սուպպիլուլիումասի և հիմնական խեթական ռազմական ուժերի երկարատև բացակայության հետևանքով անջատվում են խեթական պետության ծայրագավառները Փոքր Ասիայում։ Այսպես, կասկերը վերսկսում են իրենց հարձակումները խեթական տերիտորիայի վրա, և խեթերը հարկադրված են լինում շատ տարիներ վատնել նրանց ասպատակությունների հետևանքները վերացնելու համար։*

*Երբ Մուրսիլիս Բ-ը զբաղված էր կասկերի երկրի առաջնորդ Տիպիայի դեմ պայքարելով, Ազզիի առաջնորդ Աննիասը (Մարիասի որդին) հարձակվում է խեթական Տանկուվա շրջանի վրա և այնտեղից գերիներ ու անասուններ տանում Հայասա[39], Աննիասը մերժում է դրանք վերադարձնելու Մուրսիլիսի պահանջը, որի հետևանքով խեթերը պատերազմ են սկսում և պաշարում ազզիական Ուրա անառիկ ամրոցը։ Հիմնական պատերազմական գործողությունները ծավալվում են հաջորդ տարիներին։ Խեթական զորքերը ղեկավարում է թագավորի եղբայրը, քանի որ ինքը Մուրսիլիսը զբաղված էր մյուս սահմանների վրա մղվող պատերազմով։ Հայասացիները սկզբում խոստանում են հանձնել գերիներին, բայց խոստումը չեն կատարում, պատճառաբանելով, թե խեթերն էլ չեն վերադարձրել հայասացի գերիներին։ Պատերազմական գործողությունները ձգձգվում են և հայասացիները գրավում են խեթական Իստիտինա ամրոցն ու պաշարում Կաննուվարան։ Խեթերն օգնություն են ուղարկում 10.000 հետևազոր և 700 մարտակառք, բայց նրանց հիմնական ուժերը կաշկանդված էին Եփրատի ափին, Կարքեմիշի մոտ, որին սպառնում էր Ասորեստանի թագավորը։ Պատերազմի հայասական ռազմաբեմում խեթերն ստիպված են լինում նահանջել դեպի Թեգարամա, և նրանց պետությունից անջատվում են վերին Հալիսի հովտում գտնվող մի շարք շրջաններ։*

*Պատերազմի չորրորդ տարում միայն (իր գահակալության տասներորդ տարում) Մուրսիլիս Բ-ը անձամբ է դուրս գալիս ընդդեմ Ազզիի։ Հայասացի-*

37 *Նույն տեղում։*

38 *Տե՛ս* „Reallexicon der Assyriologie", I, ed. *E. Ebeling* und B. *Meissner*, Berlin, 1928, *էջ 261 և հաջ.։*

39 *Տե՛ս A. Goetze*, Die Annalen des Muršiliš, *էջ 95—97։*

ները փակվում են լեռնային ամրոցներում, մտադրություն ունենալով գիշերները հարձակվել անցնող խեթական զորքի վրա։ Սակայն Մուրսիլիսը, լեռնային ամրոցների մեծ մասը թիկունքում թողնելով, դուրս է գալիս Առիպսայի մոտ և գրավում այն, իսկ այնուհետև անմիջապես շարժվում է դեպի Դուկկամա, որը գտնվում էր, հավանաբար, Ազզիում։ Դուկկամայի բնակիչները հանձնվում են հաղթողի ողորմածությանը, և Մուրսիլիսը 3000 ազզիացի վերցնում է իր բանակը որպես հետևազորայիններ և կառավարներ։ Բանակցությունները վարվում են ոչ թե Ազզիի «թագավորի», այլ ավագների խորհրդի հետ։ Երկիրը մտցվում է խեթական պետության կազմի մեջ։ Հետագա բանակցությունները վարում են ոմն Մուտտիսի՝ Խալիմանա ամրոցի կառավարչի հետ, որի միջոցով Մուրսիլիս Բ-ը կարողանում է հաջողացնել 1000 խեթ գերիների վերադարձը[40]։

Սակայն խեթերը չեն կարողանում հնազանդության մեջ պահել Ազզին ու Հայասան[41], Շատ անկայուն էր նրանց ազդեցությունը նաև Իսուվայում և մերձեփրատյան մյուս երկրներում։

Մեզ հասած նամակից դատելով[42], Ալզին շարունակում է հարձակումը Միտաննիի վրա, դաշնակցած խեթերի հետ, և Ալզիի թագավորը որոշ ժամանակով նույնիսկ գրավում է Միտաննիի գահը։

Մի շարք վավերագրերից երևում է, որ մ. թ. ա. XIV—XIII դարերի սահմանագլխում Հայկական լեռնաշխարհի երկրները դաշինքի մեջ էին խեթական թագավորության հետ, բայց նրա կազմի մեջ չէին մտնում։

**Խեթերը և Վերին Եփրատի ճովտի երկրները մ. թ. ա. XIII դարի վերջին:** Ինչպես երևում է, մ. թ. ա. XIII դարի կեսերին խեթերը Հայկական լեռնաշխարհի վրա չէին արշավում։ Հավանաբար Ասորեստանի կողմից սպառնացող վտանգի ուժեղացումը[43] հարկադրում է վերինեփրատյան հովտի ցեղերին խեթական թագավորության հետ դաշնակցային հարաբերություններ պահպանել։

Պահպանվել է խեթական թագավորության պայմանագիրը Պախխուվայի, Իսուվայի և այդ շրջանի մյուս երկրների հետ[44]։ Այդ պայմանագիրը կնքող խեթական թագավորի անունը վավերագրում չի պահպանվել, բայց, հավանաբար, խեթական պետության վերջին թագավորներից մեկն է, գուցե Առնուվանտասը (շուրջ 1220—1190 թվականները մ. թ. ա.)։ Այս պայմանագիրը մի կարևոր աղբյուր է, որը հնարավորություն է տալիս պատկերացում կազմելու Հայկական լեռնաշխարհի հետ խեթերի ունեցած հարաբերությունների մասին՝ խեթական թագավորության անկման նախօրյակին։

Ազզի—Հայասա միությունը, ըստ երևույթին, տրոհվել էր, քանի որ

---

40 Հավանաբար այս ժամանակներին է վերաբերում խեթերի և հայասացիների պայմանագրի BO 3281 հատվածը։

41 Պահպանվել է խեթական մի կառավարչին ուղղված հրահանգի տեքստը, որ վերաբերում է, հավանաբար, մ. թ. ա. XIII դարի վերջին։ Այդ հրահանգում Հայասան, Կասկերի երկրի և Լուկկայի (Լիկիա, հարավ-արևմտյան Փոքր Ասիայում) հետ միասին հիշվում է օտար, թշնամական երկրների շարքում։

42 Տե՛ս Keilschrifttexte aus Boghazköi, I, № 20.

43 Տե՛ս *И. М. Дьяконов,* Предыстория армянского народа, էջ 97 և հաջ.։

44 Տե՛ս Keilschrifturkunden aus Boghazköi, XXIII, № 72, *O. R. Gurney.* Mita of Paḫḫuwa, „Annals of Archaeology and Anthropology, University of Liverpool", XXVIII, 1948.

տեքստում նրա մասին հիշատակություն չկա, իսկ Դուկկամա, Կումմախա և Պաթթիյարիկկա «քաղաքներն» ու շրջանները, որոնք նախկինում ենթարկվում էին հայասացիներին, այժմ գործում են ինքնուրույնաբար։ Պախխուվա և Իսուվա երկրները խեթական թագավորության հետ կապված են վասալական-դաշնակցային կապերով և պարտավոր են խեթերի պահանջով զորամասեր տրամադրել նրանց։

Սակայն, երբ խեթական թագավորը արշավանք է կատարում Կումմախայի դեմ, Պախխուվայի թագավորը՝ Միտասը, որն ամուսնացած էր խեթերի հակառակորդի դստեր հետ, ոչ միայն չի կատարում իր պարտավորությունները, այլև թաքցնում է խեթերից թշնամի փախստականներին և մարդիկ ու անասուններ հափշտակում խեթերի դաշնակից Իսուվայի տերիտորիայից։ Միտասի հետ գործում էր ևս մեկ առաջնորդ՝ ոմն Կալիմունաս։ Սակայն խեթերի հաջողությունները «Պախխուվայի մարդկանց» (ժողովրդական ժողով) ստիպում են հաշտություն կնքել։ Խեթերի թագավորը Պախխուվայի մարդկանց պարտավորեցնում է իրեն հանձնել Միտասին ու Կալիմունասին՝ նրանց բոլոր ազգականների հետ և ողջ ունեցվածքով, ինչպես նաև վերադարձնել փախստականներին և հատուցել Իսուվայի կորուստները։ Պախխուվայի մարդկանց կողմից այս պայմանագիրը չկատարելու դեպքում խեթական թագավորը նրանց հարևաններին հրամայում է այդ ամենը նրանց անել տալ ուժի միջոցով։ Խեթերից կախում ունեցող հարևանների թվում հիշվում են Արիխպիցցին, Պաթթեյարիկայի (կամ Իսմերիկկայի՝ տեքստում անունը վնասված է) կառավարիչը և Տուկկամայի կառավարիչ Ախսախասը։ Միաժամանակ, այդ նույն պայմանագրի համաձայն, խեթական թագավորության հպատակության տակ են անցնում Պախխուվան, Իսուվան, Ցուփման, Մալդիան, (Պաթթեյա)րիկկան կամ (Իսմե)րիկկան ու ևս մի երկիր, հավանաբար՝ Խուրրի, այսինքն՝ կամ Միտաննիի հյուսիսային մնացորդը, կամ Ալզին։ Այս բոլոր երկրների համբրաշխ կերպով խեթերին հպատակվելը բացատրվում է, հավանաբար, Ասորեստանի կողմից սպառնացող վտանգով։

Այսպիսով, մ. թ. ա. XIII դարի վերջերին Հայկական լեռնաշխարհի արևմտյան շրջաններում կային բազմաթիվ ցեղեր ու ցեղային միություններ, որոնք գտնվում էին նախնադարյան համայնական կարգերի վերջին՝ ռազմական դեմոկրատիայի փուլում։ Որոշ վայրերում արդեն սկսել էին ձևավորվել դասակարգային հասարակությունը և պետական կազմավորումները որպես քաղաք-պետություններ (Տիգրիսի և Եփրատի վերին հոսանքի որոշ քաղաք-պետություններ) կամ որպես ոչ մեծ թագավորություններ (Ալզի)։ Ամենայն հավանականությամբ գոյություն ունեին նահապետական մեծ ընտանեկան համայնքներ և նրանց միավորումներ, ինչպես ավելի հարավային խուրրիական շրջաններում. պահպանվում էին նաև նախնադարյան հասարակության արխայիկ սովորույթների մնացուկներ (օրինակ, «թագուհիների» դերը, իսկ հայասացիների մոտ՝ ամուսնու իրավունքը քենիների նկատմամբ)։ Ստրկությունն արդեն հայտնի էր, բայց թույլ էր զարգացած։ Միտաննիի ավանդույթները պահպանած շրջանները արդեն ծանոթ էին սեպագրին, որի հետևանքով խեթախուրրիական դիվանային և տարեգրային ավանդները կարողացան հետագայում ընկալվել Ուրարտու պետության մեջ։

ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ԿԱՄ ՈՒՇ ԲՐՈՆԶԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Հայկական լեռնաշխարհի նախնադարյան մշակույթի վերջին՝ ամենահեռաքրքրական փուլը, սկսվում է մ. թ. ա. XIV դարի վերջերից և հարատևում մինչև I հազարամյակի սկիզբը։ Շուրջ երեք դար ընդգրկող այդ ժամանակաշրջանը հագեցած է նախնադարյան տոհմացեղային հասարակության վերջնական փլուզումն հատկանշող սոցիալ-տնտեսական ու քաղաքական բնույթի արմատական այնպիսի տեղաշարժերով, որոնք պետք է հանգեցնեին նախնադարյան կարգերի վերացմանն ու պետական միավորումների ստեղծմանը։*

*Հայաստանի հարավային և հարավ-արևմտյան մասերում նախադինաստիական զարգացման են հասնում ուրարտական հզոր ցեղերը, Հայասա երկիրը մոտենում է, ինչպես ասվեց վերը, պարզունակ պետական կարգի ստեղծմանը. Հայկական լեռնաշխարհում նշմարվում է պրոտոհայկական առաջին իշխանությունների առաջացումը։ Հայաստանը թևակոխում է «ռազմական դեմոկրատիայի» վերջին փուլը։*

*Տեղարնակ էթնիկական միավորումների սոցիալ-տնտեսական զարգացման ոլորտներում կատարվող խոր ու էական փոփոխությունները առանձնապես լավ են ուրվագծվում նյութական մշակույթի հուշարձանների համեմատական ուսումնասիրության ֆոնի վրա։ Երկրագործության ու անասնապահության, արհեստների ու արվեստի, նյութական բարիքների արտադրության այլևայլ ճյուղերի, միջցեղային փոխանակության ու առևտրի զարգացման միջոցով վերջնականապես ձևավորվում է Հայաստանի բրոնզեդարյան ինքնատիպ մշակույթը, որն ընդհանուր էր Հայկական լեռնաշխարհի և ամբողջ Անդրկովկասի համար։*

*Այն ավելի է ընդլայնում իր համագործակցությունը մի կողմից Առաջավոր և Փոքր Ասիայի երկրների հետ, որոնք որոշակի դրոշմ էին դնում բրոնզեդարյան Հայաստանի ձևավորվող մշակույթի վրա, մյուս կողմից, Հյուսիսային Կովկասի, ժամանակակից Օսեթիայի, Չեչենո-Ինգուշեթիայի, Դաղստանի, ինչպես նաև Կուբանի ու Թերեքի հովիտներում բնակվող ցեղախմբերի հետ։ Սա-*

կայն երկրի արտադրողական ուժերի զարգացման մեջ վճռական դեր էին խաղում նրա տնտեսության հիմնական ճյուղերի ներքին դարավոր վերելքն ու բնական բազմատիպ հարստությունների օգտագործումը։

**Մետաղահանություն և մետաղամշակություն:** *Ինչպես նշվեց նախորդ գլուխներում, Հայկական լեռնաշխարհի հիմնական հարստություններից մեկը մետաղն էր։*

*Մ. թ. ա. II հազարամյակում ձևավորված մետաղագործական օջախները՝ Ջուլամերկի, Սասնո, Տայոց շրջաններում, Ուշտունյաց լեռներում, Հայկական Միջագետքում, ինչպես նաև Գուգարքի, Գեղարքունյաց ու Սյունյաց մարզերում, դառնում են մետաղահանության, մետաղամշակության ու փոխանակության նշանակալից կենտրոններ։*

*Մետաղամշակության այդ կենտրոններում բարձրորակ բրոնզից պատրաստում էին ամենատարբեր տիպի առարկաներ։ Այս արհեստների մեջ Հայաստանի բնակիչները մասնագիտանում էին ամբողջ ընտանիքներով ու տոհմերով։ Նրանք գիտեին պղնձի ձուլման և այլ մետաղների խառնուրդներից բարձրորակ բրոնզ ստանալու տարբեր եղանակներ։ Ձևավորում էին բրոնզե իրերն այնպիսի վարպետությամբ, ինչպես կավագործն էր պատրաստում խեցին։ Նրանք արտադրում էին փորագիր զարդերով, մետաղներով ու հազվագյուտ փայտերով ագուցված գեղեցիկ զենքեր, բարդ ու բազմամաս կաղապարների մեջ ձուլում էին ռեալիստորեն վերարտադրված մարդու ու կենդանու արձանիկներ ու նույնիսկ արձանների ամբողջ խմբեր։*

*Ուշ բրոնզի ժամանակաշրջանում մետաղագործությունն այնքան առաջադիմեց, որ մետաղաձուլական փոքրիկ արհեստանոցներ հանդես եկան նույնիսկ դաշտավայրային շրջաններում, որոնք մետաղը կամ մետաղաքարը ստանում էին փոխանակության միջոցով՝ երկրագործական մթերքների դիմաց։*

*Այսպիսի մի արհեստանոցի մնացորդներ են հայտնաբերվել Կարմիր-բլուրի նախաուրարտական բնակավայրի խորը հորիզոններում, մոխրի թանձր շերտերի մեջ[1]։ Այս տիպի արհեստանոցները բավարարում էին, իհարկե, առանձին բնակավայրերի սահմանափակ պահանջները՝ բերովի մետաղի կամ հնացած մետաղյա իրերը վերաձուլելու ու վերամշակելու միջոցով։*

*Բրոնզե իրերի մեծաքանակ արտադրությունը մնում էր, այնուամենայնիվ, հանքաքարի պաշարներով ու անտառանյութով հարուստ լեռնային շրջանների արտոնությունը։ Հայկական բարձրավանդակի ինքնամփոփ բարձրադիր մարզերում, մանավանդ Մոկսում ու Սասունում մինչև XX դարի սկզբները տնայնագործ մետաղահատները հանքաքարը հալում էին գետնի մեջ փորված պրիմիտիվ հնոցներում, որոնք գրեթե չէին տարբերվում երկրի հյուսիսային շրջանների պղնձի ու երկաթի հանքավայրերի մոտ երկրաբանների կողմից հայտնաբերված նախնադարյան հնոցներից։*

*Հայաստանը դարձավ Առաջավոր Ասիայի մետաղագործության խոշոր կենտրոններից մեկը։*

---

1 *Տե՛ս А. А. Мартиросян,* Новые данные по истории города Тейшебаини, *ՊԲՀ*, 1963, *3, էջ 226 և հաջ.։*











Մետաղաձուլական գործիքներ, ուշ բրոնզի դար. կարմիր-բլուր, Արթիկ

**Զինագործություն և աշխատանքի գործիքների արտադրություն:** Ուշբրոնզեդարյան մետաղագործության ճյուղերից առանձնապես բարձր զարգացման հասավ զինագործությունը։ Դամբարանային պեղումների միջոցով հայտնաբերված զենքերի բարձր որակը, բազմազանությունն ու տարատեսակությունը, գեղարվեստական արժանիքներն ու նուրբ զարգանախշերը վկայում են նախնադարյան վարպետների հմտության ու բարձր ճաշակի մասին։ Զինագործ վարպետները տասնամյակներ անընդհատ բարելավում ու զարգացնում էին զենքի տեղական ու ներմուծված տիպերի արտադրությունը։ Լայնալիճ աղեղն ու նետը, բազմապիսի կոթառավոր նիզակները, մարտական տարբեր տիպի սակրերը, ծանր թրերը, դաշույնների տասնյակ տարբերակները, դանակներն ու գուրզերը, լանջապանակները, զրահները, վահանները, երբեմն նույնիսկ թիթեղյա սաղավարտները մեծ մասամբ տեղական արտադրության արգասիքներ էին, պատրաստված տեղական ձևերով, կամ ներմուծված լավագույն ձևերի ազդեցության տակ։ Նրանք վաճառահանվում էին երկրի ներսում ու նրա սահմաններից դուրս։ Հայաստանում հայտնի բոլոր սպառազինության առարկաներն իրենց ուղղակի զուգահեռներն են գտնում կովկասյան ու հին արևելյան զենքերի ժողովածուների մեջ։

Ընդհանուր արևելյան տիպերի պատկանող զենքերի ուսումնասիրությունը լայն հնարավորություններ է ընձեռում տեղական նյութի թվագրման համար։ Այսպես, Հայաստանի բրոնզեդարյան դաշույնների որոշ տարբերակներ կապվում են Ասորիքի, Հյուսիսային Միջագետքի, Լենքորանի, Արևմտյան Իրանի (Լուրիստան) XIII—X դարերի նյութերի հետ, Արթիկի փոքրիկ զարդարուն սակրը[2] համընկնում է Ասորիքի այն նյութերին, որոնք թվագրվում են եգիպտական Ռամսես Գ փարավոնի (1204—1173 թթ.)[3] թագավորության շրջանի մակագրություններով, Լճաշենի[4] ու Կարմիր բլուրի ելուստազարդ կոթառներով[5] սակրերը նմաններն ունեն ասորա-պաղեստինյան XIV դարի զենքերի մեջ և համընկնում են Թեշուբ աստծու նշանավոր փոքրասիական ռելիեֆի վրա պատկերված սակրին (XIV—XIII դարեր)[6]։ Լճաշենի դաշույնների ու դանակների մեծ մասը, ինչպես նաև բրոնզե մեծ եռաժանիներն ու բազմաթիվ այլ իրեր անմիջականորեն կապվում են վաճառաշահ Ուգարիթ քաղաքի մետաղյա այն իրերի հետ, որոնք իրենց վրա կրում են եգիպտական Մերնեպտահ փարավոնի անունը (XIII դար)[7], կամ խեթական Ասորիքի Թել-Ահմար քաղաքի ռելիեֆների հետ, որոնք թվագրվում են ասսուրական թագավոր Սալմանասար Ա-ի տիրակալության տարիներով (1280—1261)։

Սպառազինության արևելյան տիպի առարկաներով առանձնապես հարուստ էին հասարակության արտոնյալ խավերի ներկայացուցիչներին պատկանող

---

2 Տե՛ս Т. С. Хачатрян, Материальная культура Артика, Ереван. 1963, էջ 57, աղ. 3, նկ. 3։

3 Տե՛ս H. Bonnet, Die Waffen der Völker des Alten Orients, Leipzig 1926, էջ 34։

4 Հ. Հ. Մնացականյան, Լճաշենի մշակույթի զարգացման հիմնական էտապները, աղ. 3, նկ. 3։

5 Տե՛ս А. А. Мартиросян, Город Тейшебаини, Ереван, 1961, նկ. 25, էջ 55։

6 Տե՛ս L. Delaporte, Les Hittites, Paris, 1936, էջ 248, նկ. 111։

7 Տե՛ս Fr. Thureau-Dangin, Tell Ahmar, „Syria", 10, 1929, էջ 138։

դամբարանները։ Լճաշենի ցեղային առաջնորդների դամբարաններում և Կիրովականի հարուստ դամբարաններից մեկում հնագետները հայտնաբերել են լայնաշեղբ դաշույններ՝ բրոնզյա գեղեցիկ պատյաններով[8], որոնք իրենց ծակոտկեն հարուստ երկրաչափական ու կենդանական զարդանախշերով հիշեցնում են Հարավային Միջագետքի նշանավոր Ուր քաղաքի պեղումներում հայտնաբերված ոսկյա պատյանի մշակված ձևերն ու նրբին զարդարանքը[9]։

Ուշ բրոնզի դարի մետաղագործ վարպետները աշխատանքի գործիքներ, իրեր էին արտադրում արհեստների ու տնտեսության ամենատարբեր ճյուղերի և կենցաղային, կրոնա-պաշտամունքային կարիքների համար։ Արթիկ-տուֆի ինքնատիպ դամբարաններից մեկում հնագետները հայտնաբերել են ատաղձագործի բրոնզյա գործիքներ՝ սղոց, կացին, տարբեր տրամաչափի ու լայնության դրեր[10], որոնց օգնությամբ փայտագործ վարպետները պատրաստում էին դանակների, դաշույնների ու այլ իրերի բռնակներ, ամանեղեն, ձիու թամբի առարկաներ, տնային կահկարասի, կամարածածկ սայլեր ու սայլակներ, մարտակառքեր, պատգարակներ և այլն։

**Ոսկերչություն:** Մետաղագործության զարգացած ճյուղերից մեկն էլ ոսկերչությունն էր։ Լճաշենի և Տոլորսի հարուստ ննջեցյալները պճնված էին ոսկյա խոշոր պես-պես (գլանաձև, գնդաձև, թեփուկավոր, սկավառակաձև) ուլունքներով, նշաձև քարերով ագուցված հատիկավոր նախշ ունեցող կոճակներով, սկավառակատիպ տափակ զարդերով, թանկարժեք կամ կիսաթանկարժեք քարերից պատրաստված մանյակներով և այլն։ Ինչպես նյութական արտադրության այլ ճյուղերում, այնպես էլ ոսկերչության մեջ մեծ դեր էին կատարում հինարևելյան ավանդույթները։ Վերը հիշատակված մանյակների մի զգալի մասը հանդիպում է դեռևս հին Շումերի վաղ դինաստիական ժամանակաշրջանում և տարածվում մինչև Մոխենջոդարոյի հովիտը[11]։ Առանձնապես լայն տարածում են գտնում ոլորագալար զարդերը պղնձի ու վաղ բրոնզի ժամանակաշրջանի Կրետե-Միքենյան և Տրոյական հուշարձաններում։ Հնագետները արդարացիորեն նշում են, որ Տրոյայի գանձերի ոսկյա զարդերը մատնանշում են ոչ միայն այդ քաղաքի հարստությունն ու լայն առևտրական կապերը, այլ նաև զարդերի մի զգալի մասի ուրույն արևելյան գծերը, որոնք կարելի է դիտել որպես Շումերի ոսկերչական արտադրանք[12]։ Զարմանալի չէ, որ ոսկերչության այդ երկու խոշոր կենտրոնների միջև ընկած Հայաստանն ուներ զարգացած ոսկերչություն, որը ոչ միայն պահպանում, այլև զարգացնում էր հին ավանդույթները, ստեղծում Հայաստանի համար նոր տիպի զարդեր, որոնք հանդիպում են շատ հաճախ Կենտրոնական և Հյուսիսային Միջագետքի XIV—XIII դարերի վաղ ասորեստանյան հնավայրերում և, մանավանդ, նշանավոր Մարի քաղաքի հարուստ դամբարաններում[13]։

---

8 *Տե՛ս А. О. Мнацаканян,* Раскопки курганов на побережье оз. Севан в 1956, СА, I, 1957.

9 *Տե՛ս Н. Д. Флиттнер,* Культура и искусство Двуречья, Л.—М., 1958, էջ 49։

10 *Տե՛ս Т. С. Хачатрян,* Материальная культура Артика, աղ. 3, նկ. 1, 5, 6—10։

11 *Տե՛ս Г. Чайлд,* Древнейший Восток в свете новых раскопок, М., 1956, էջ 245.

12 *Տե՛ս Г. Чайлд,* У истоков европейской цивилизации, М., 1952, էջ 76—78։

13 *Տե՛ս A. Parrot,* Mari, Paris, 1945, նկ. 39։



Պատյանավոր դաշույններ և բրոնզե պատյաններ. Սևանի ավազան

**Երկաթագործություն:** *Ուշ բրոնզի դարում մետաղագործությունն ամբողջությամբ վերելք է ապրում, մետաղյա իրերը լայնորեն օգտագործվում են հասարակության բոլոր խավերի կողմից, նրանք հանդիպում են հնավայրերում ամենուրեք. բրոնզի գինը զգալի չափով իջնում է։ Սակայն այս շրջանի մետաղագործության ամենաէական հասույթը երկաթի նախասկզբնական օգտագործումն էր, որի յուրացման պրոցեսը ընթանում էր Հայաստանում, Առաջավոր ու Փոքր Ասիայում՝ երկաթի արտադրական օգտագործմանն առընթեր։ Երկաթը հանդես եկավ Հայաստանում, ինչպես և ընդհանրապես Արևելքում, որպես թանկարժեք մետաղ զարդարանքի, մանր առարկաների, ինչպես նաև հասարակության մեջ բարձր դիրք ունեցող անձանց զենքերի ձևով, ուշբրոնզեդարյան մշակույթի երկրորդ փուլում, XII դարի վերջերին և XI դարում, ճիշտ այն ժամանակ, երբ այդպիսիները տարածվեցին Իրանում և Միջագետքում կամ էգեյան աշխարհի տարբեր կենտրոններում[14]։ Առայժմ դանդաղորեն ներդրվող երկաթի արտադրությունը դալիս էր փոխարինելու բրոնզագործությանը, զինելու նախնադարյան մարդուն բնության դեմ պայքարելու նոր ու հզոր զենքերով, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը արհեստների ու երկրագործության մեջ, արագացնելու տոհմա-ցեղային կարգերի վերջնական վլուզումը Հայաստանում։*



Բրոնզե սակրեր. Ախթալա

*Մ. թ. ա. II հազարամյակի վերջին քառորդում բարձր զարգացման հասան քարագործությունը, ոսկրագործությունը, կաշեգործությունը, կոշկակարությու-*

[14] *Տե՛ս S. Przeworski,* Die Metallindustrie Anatoliens in der Zeit von 1500—700, Leiden, 1939, *էջ 193 և հաջ.։*

նը, մանածագործությունն ու այլ արհեստներ։ Հայաստանի տարբեր վայրերում հայտնաբերված կոշկաձև կավե ամանների քանակն ու բազմատեսակությունը վկայում են տարբեր տիպի ճտկավոր կոշիկների լայն օգտագործումը Հայաստանում[15], իսկ Արթիկ-տուֆի դամբարաններից մեկում պահպանված գեղեցիկ բանվածքներով ու բրոնզյա փոքրիկ զարդերով գործվածքի մնացորդը[16] ցույց է տալիս, թե ինչպիսի գեղեցիկ հագուստներ կարող էին ունենալ բրոնզե դարի մարդիկ։

**Խեցեգործություն:** Խեցեգործության արտադրանքը անհամեմատ ավելի լայն ու բազմակողմանի էր, քան մետաղագործությանը։ Մետաղե իրերի տասնյակ կամ հարյուրավոր տիպերի դիմաց խեցեգործության մեջ մենք ունենք կավե առարկաների հազարավոր տեսակներ ու նմուշներ, որոնք հնարավորություն են տալիս ավելի ևս ճշգրտելու ուշ բրոնզի դարաշրջանի զարգացման ժամանակագրական փուլերը։ Տասնամյակների ու հարյուրամյակների ընթացքում հաջորդաբար հանդես են գալիս նրբախեցի ամանեղենի շատ տեսակներ՝ փորագիր երկրաչափական զարդամոտիվների միագույն, երկգույն կամ եռագույն ագուցվածքով, վերադիր կենդանակերպ զարդերով, նուրբ փայլեցված երկրաչափական նկարների գոտիներով, ներճկուն և ռելիեֆ մակերեսներով, փորագիր պարզեցված զարդանախշերով։

Առանձնապես մեծ հետաքրքրություն են ներկայացնում սև փայլեցրած պաշտամունքային ամանները՝ իրենց վերադիր ու փորագիր պատկերներով կամ նախնադարյան նկարիչների ու փորագրիչների կողմից ստեղծված ամբողջական կոմպոզիցիաներով։ Հայաստանի սլետական թանգարանում այժմ հիանալի սերիաներով ներկայացված են երկրաչափական հարուստ մոտիվներով նախշված երկբուրգ մեծ սափորների բազմապիսի տեսակներ, ցուլերի ռելիեֆ գլխիկներով կամ կենդանիների ամբողջական պատկերներով զարդարված ցածրավիզ ամաններ, ամաններ, որոնք զարդարված են վագրերի ու օձերի վերադիր ռելիեֆ քանդակներով, զոհաբերվող կենդանիներին ներկայացնող քանդակային տեսարաններով։ Եղնիկների, քարայծերի ու այլ կենդանիների մի ուրիշ խումբ ներկայացված է գծավոր փորագիր զարդերով։ Այս տիպի ամանեղենի վրա երբեմն պատկերվում են նույնիսկ որսի ամբողջական տեսարաններ, մարտակառքերի ու մարդակերպ էակների մասնակցությամբ։ Կավե ամանների այս խումբը մոտենում է Շամքորի շրջանի սև փայլեցրած խեցեղենին, որի վրա գծային տեխնիկայով պատկերված են որսորդական հմայության ամբողջ տեսարաններ։ Այդ տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում որսորդական ինքնատիպ հորինվածքների հարթաքանդակ պատկերներով զարդարված Դվինի խոր շերտերի հսկա կարասները։

Վերջին տարիներին Զանգեզուրի և Սևանի շրջաններում հայտնաբերվեցին ռեալիստորեն մշակված կոշկաձև անոթների ուշագրավ նմուշներ[17], որոնք ներկայացնում են ցածրակրունկ, փափուկ ճտկավոր կոշիկների տարբեր ձևերն ու մանրամասները։ Հայաստանի անոթների այս խումբը առանձնահատուկ տեղ է

---

15 Տե՛ս *А. А. Мартиросян*, Армения в эпоху бронзы..., աղ. XV, նկ. 1—3։
16 Տե՛ս *Т. С. Хачатрян*, Материальная культура Артика, նկ. 19—20։
17 Տե՛ս *А. А. Мартиросян*, Армения в эпоху бронзы..., աղ. XV, նկ. 1—3։

գրավում Կովկասում լայնորեն տարածված նույնատիպ խեցեղենի մեջ՝ որոշ ընդհանրություններ դրսևորելով միայն Մինգեչաուր—Նախիջևանյան խմբի[18] և Հյուսիսային Իրանի[19] մ. թ. ա. XI—X դարերի նմուշների հետ։

Ի տարբերություն արհեստների այլ ճյուղերի, բրոնզեդարյան Հայաստանի խեցեգործությունը համեմատաբար քիչ ընդհանրություններ ունի Հին Արևելքի և Կովկասի նույնատիպ արտադրանքի հետ և լավագույն ձևով է դրսևորում տեղական արհեստի զարգացման առանձնահատկությունները։



Ձեռքի տափակ կացիններ, տարբեր հնավայրերից

**Խեցեգործական տեխնոլոգիա:** *II հազարամյակի վերջերին առանձնապես բարձր զարգացման հասավ խեցեգործության տեխնոլոգիան։ Օգտագործվում էին կավերի ամենատարբեր տեսակներն ու նրանց մշակման, փայլեցման, զարդանախշման, թրծման, ձևավորման բազմաթիվ եղանակներ։*

*Վաղուց արդեն հանդես էին եկել բրուտագործական դուրգն ու ամանեղենը թրծելու բավականաչափ մեծ ու բարդ վառարանները, որոնք հայտնի էին դեռևս III—II հազարամյակներում Հարավային Միջագետքի Ուրուկ, Նիպպուր և այլ քաղաքներում[20]։ Ավելի ուշ շրջանի, սակայն էապես չտարբերվող, վա-*

---

18 *Տե՛ս Г. И. Ионе,* Сосуды-сапожки Мингечаура, Материальная культура Азербайджана, № 3, Баку, 1955, *էջ 39, նկ. 59, աղ. I—IV։*

19 *Տե՛ս L. Vanden Berghe,* Archeologie de l'Iran Ancien, Leyden, 1959, *նկ. 146, էջ 116։*

20 *Տե՛ս В. Ф. Гайдукевич,* Керамическая обжигательная печь Мунчак-Тепе, КСИИМК, XXVIII, *էջ 72—82։*

ռարանների տասնյակ տեսակներ են հայտնաբերվել ժամանակակից Մինգեչաուրի հին բնակավայրի ու կարասային թաղումների շրջանում[21]։ Դրանք հում աղյուսից պատրաստած քառանկյունի կամ կլոր երկհարկանի կառույցներ էին այրման ու թրծման առանձին հարկաբաժիններով, օդի և ջերմության փոխաբերման համապատասխան բարդ հարմարանքներով, կամարակապ ծածկով, կավածեփ պատերով։ Այդպիսի հնոցների այրման խցերում ստացվում էր մոտավորապես 1200—1300° ջերմություն, որը թրծման բաժանմունքում հասնում էր մոտավորապես 1000 աստիճանի։ Բարձր ջերմաստիճան ապահովելու համար օգտագործվում էր տեղական անտառանյութը։

Խեցեգործական արտադրանքի տիպերի բազմազանությունը, որոշակի տիպերն ու ստանդարտը, ավարտված լակոնիկ, միօրինակ ձևերը ցույց են տալիս, որ նա խորապես մասնագիտացված էր ու կենտրոնացված առանձին արհեստավորական գերդաստաններում։

**Կիսաքոչվորական անասնապահություն:** II հազարամյակի երկրորդ կեսին վերջնականապես ձևավորվեց նաև կիսաքոչվորական անասնապահությունը Հայկական բարձրավանդակում և ողջ Անդրկովկասում։ Բնակավայրերին կից արոտները այլևս չէին կարող բավարարել աճող անասնապահության պահանջները, իսկ լեռնային արոտավայրերի խելամիտ օգտագործումը անսահմանափակ հնարավորություններ էր ընձեռում նրա նշանակալից վերելքի, անասունների գլխաքանակի ավելացման համար[22]։ Երկրի բարձրադիր շրջաններում, ալպյան մարգագետիններին կից, ստեղծվում էր ջրանցքների ու ջրավազանների մի ամբողջ սիստեմ, որոնց հետքերն այժմ էլ նկատելի են Արագածի ու Գեղամա լեռների լանջերին։

Քոչվոր անասնապահների հիմնական հարստությունը մանր եղջերավոր անասունն էր, որի քանակական զգալի գերակշռությունը խոշորի նկատմամբ որոշակիորեն երևում է բնակավայրերի ու դամբարանադաշտերի ուսումնասիրությունից։ Առանձնապես մեծ էր մանր եղջերավոր անասունների քանակը երկրի նախալեռնային և լեռնային շրջաններում, որոնց բնակչությունը զբաղվում էր գերազանցապես անասնապահությամբ։ Այս շրջանների դամբարանադաշտերում հայտնաբերված են մեծ քանակությամբ տնային անասունների ոսկորներ՝ ամանների մեջ որպես կերակրի մնացորդներ կամ էլ դամբարաններում կենդանիների ամբողջական կմախքների ձևով[23]։ Հատկանշական է, որ նախնադարյան քոչվորների դամբարանաքարերը հաճախ զարդարում էին ընտանի կենդանիների առանձին կամ խմբային ռելիեֆ պատկերներով, այծերը խորհրդանշող ոլորապտույտ նախշազարդերով, երբեմն գիշատիչ կենդանիների պատկերներով, որոնք բոլորն էլ շատ նման են նույն ժամանակի բրոնզյա գծազարդ գոտիների կենդանիներին։ Այդպիսի բարելիեֆ զարդերով առանձնապես հարուստ են Աշտարակի շրջանի Շամիրամ գյուղի հոյակապ կրոմլեխներն ու մենհիրները։

---

21 Տե՛ս *Г. И. Ионе,* О гончарных обжигательных печах из Мингечаура, МИА, т. II, Баку, 1950, էջ 31 և հետ.։

22 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, էջ 75։

23 Տե՛ս նույն տեղում, էջ 73։

Հայաստանի դաշտային շրջաններում նույնպես զարգանում էր անասնապահությունը, սակայն այստեղ առաջատար նշանակություն էին ստանում խոշոր եղջերավոր անասունները, որոնք լայնորեն օգտագործվում էին երկրագործության մեջ որպես քաշող ուժ։



Կարմիր բլուրի դամբարանների բրոնզե իրերը

Կարմիր-բլուրի նախաուրարտական բնակավայրում հայտնաբերված տնային կենդանիների ոսկրային մնացորդները ցույց են տալիս, որ տափաստանային բնակատեղիներում խոշոր եղջերավոր անասունների թիվը մոտավորապես չորս անգամ ավելի էր մանր եղջերավոր անասունների համեմատությամբ։ Այս բնակավայրերի պեղումների ժամանակ գտնվել են ժամանակակից ընտանի կենդանիների՝ կովերի, եզների, ոչխարների, այծերի, խոզերի, էշերի, ձիերի ու շների կմախքների մնացորդներ[24]։

Ձին ու շունը նույնքան կարևոր էին անասնապահության զարգացման համար, որքան եզը՝ երկրագործության համար։ Շունը պահպանում էր համայ-

---

24 Կարմիր բլուրի նախաուրարտական, ինչպես և ուրարտական ժամանակաշրջանի կենդանիների մնացորդներն ուսումնասիրել է հնէակենդանաբան Ս. Կ. Մեժլումյանը։

*նական հոտերը գիշատիչներից, ձին՝ կիսաքոչվորական անասնապահության պայմաններում ոչ միայն կապի հուսալի միջոց էր մշտական բնակատեղիների ու յայլաների միջև, այլև քաշող ուժ*[25]*։ Հայկական բարձրավանդակի որոշ շըրջաններում՝ Գեղարքունիքում, Արցախում և այլուր, հնում զբաղվում էին ցեղային ձիաբուծությամբ։ Այդ տեսակետից առանձնապես աչքի էր ընկնում մերձուրմյան Սուքի երկիրը, որտեղից ասորեստանցիները ձիերի մեծ երամակներ էին տանում։ Տնտեսության մեջ ձիերի նշանակությունն այնքան մեծ էր, որ Լճաշենի, Խոջալիի և Առաջաձորի, Դիլիջանի, Կիրովականի և այլ շրջանների դամբարաններում մարդկային թաղումների հետ միասին գտնվում են ձիերի ամբողջական կմախքներ, իսկ նրանց գլուխներն ու ձիասարքերի առարկաները հանդիպում են գրեթե ամենուրեք՝ ուշբրոնզեդարյան բոլոր դամբարաններում։ Նրանց գծապատկերներն ամենուրեք հանդիպում են բրոնզե գոտիների վրա։*

*Այսպիսով, անասունների բազմաքանակ հոտերը նախնադարյան համայնքների գլխավոր հարստություններից մեկն էին, կուտակման ու փոխանակության առատ աղբյուր։*

**Որսորդություն:** *Անասնապահության հետ մեկտեղ նոր վերելք է ապրում նաև որսորդությունը՝ քոչվոր անասնապահների սննդի աղբյուրներից մեկը։ Դամբարանային նյութերի մեջ հաճախ են հանդիպում եղնիկների ու եղջերուների, վարազների, քարայծերի ու զանազան թռչունների ոսկորներ։ Անդրկովկասի և Հյուսիսային Կովկասի պղնձե լայն գոտիների վրա բրոնզեդարյան նկարիչները պատկերել են որսի հմայական տեսարաններ (Քալաքենդ, Նոյեմբերյան, Թռեղք, Տլի և այլն), որոնց մեջ կենդանիների ու որսորդների հետ միասին պատկերված են նաև որսորդական շներ։ Նախնադարյան որսորդները օգտագործում էին գերազանցապես նետն ու աղեղը։ Նրանք ներկայացված են գոտիների վրա Հայկ նահապետի զենքն հիշեցնող «լայնալիճ» աղեղներով և մետաղասլաք նետերով լի կապարճներով։*

*Սևանի, Սպիտակի, Շամքորի, Գանձակի և Հայկական լեռնաշխարհի այլ շրջանների այժմյան լերկ ու բուսականությունից զուրկ սարալանջերը ուշ բրոնզի դարաշրջանում դեռևս ծածկված էին հաստաբուն ծառերի խիտ անտառներով, որոնք, սակայն, ուժգնորեն ոչնչացվում էին ինչպես զարգացող անասնապահության, մետաղագործության, խեցեգործության, փայտամշակության ու շինարարության հետևանքով, այնպես էլ երկրագործական ցանքատարածությունների ընդլայնման հաշվին*[26]*։*

**Երկրագործություն:** *Համեմատաբար բարձր զարգացման հասած երկրագործությունը կազմում էր նախնադարյան համայնական տնտեսության հիմքը։ Մ. թ. ա. II հազարամյակի վերջին դարերի բնակավայրերում և, հատկապես՝ Կարմիր-բլուրի նախաուրարտական շերտերի բնակարանների մեջ հնագետները բացել են կարասներ, հացահատիկի բազմաթիվ մեծ հորեր, որոնց եզրերին կամ հատակին պահպանվել են գարու և կորեկի տեղական տեսակների ածխացած մնացորդներ*[27]*։ Ուշբրոնզեդարյան բնակավայրերում այլ հա-*

---

[25] *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, *էջ 77։*

[26] *Տե՛ս նույն տեղում, էջ 72—74։*

[27] *Տե՛ս А. А. Мартиросян,* Город Тейшебаини, *էջ 69, նույնի,* Армения в эпоху бронзы..., *էջ 182։*

ցաբույսերի մնացորդներ առայժմ չեն հայտնաբերված, սակայն այդպիսիների առատությունը նախորդ դարաշրջանների հնավայրերում և փոքր-ինչ ավելի ուշ շրջանի ուրարտական մեծ քաղաքների շտեմարաններում, որտեղ կուտակվում էին տեղական համայնքներից ստացվող երկրագործական մթերքները, կասկած չեն թողնում, որ հացահատիկների մշակումը բարձր մակարդակի էր հասել մ. թ. ա. II հազարամյակի վերջին և I հազարամյակի սկզբներին։ Հայկական բարձրավանդակի այլ բնակատեղիներում հավաքված են մի շարք վայրի բույսերի մնացորդներ, որոնք մատնանշում են, որ զարգացած երկրագործությանն ու այգեգործությանն առընթեր իր գոյությունը շարունակում էր նաև հավաքչական տնտեսությունը[28]։



Խեցանոթներ. Զանգեզուր

Երկրագործության բարձր զարգացման մասին են խոսում ոչ միայն կավե ամանեղենի վրա պահպանված բուսական հարուստ զարդապատկերներն ու պտղաբերության՝ կանացի կուռքերը, որ հանդիպում են ամենուրեք բրոնզեդարյան բնակավայրերում, այլև զանազան նյութերից բաղկացած գործիքների

28 Տե՛ս Б. Б. Пиотровский, Археология Закавказья, էջ 71։

քանակն ու բազմազանությունը, որոնք ծառայում էին վարի ու ցանքսի, բերքահավաքի ու գյուղատնտեսական մթերքների վերամշակման համար։ Առանձնապես մեծ թվով են ներկայացված կիկլոպյան բերդերի ապառաժ քարերի մեջ կողք-կողքի փորված սանդերը, տաշտակներն ու հսկա հնձանները, բազալտ քարերից պատրաստված սանդերն ու սանդակոթերը, մակույկաձև ու քառանկյունի աղորիքներն ու փայտե, ոսկրե կամ կավե հիմքի վրա ագուցված վանակատից պատրաստված մանգաղների ներդիրները, որոնք հնագույն ժամանակներից լայնորեն տարածված էին Անդրկովկասում, Միջագետքում, Եգիպտոսում[29]։

Վերջին ժամանակներս թե՛ Հայաստանում, թե՛ Անդրկովկասում հայտնաբերվել են մեծ քանակությամբ բրոնզյա կեռ մանգաղներ։ Նրանց զարգացման ձևերն ու տարատեսակները ցույց են տալիս, որ II հազարամյակի վերջում Հայաստանում երկրագործական տեխնիկան անշեղորեն զարգանում էր։ Բախտավոր պատահությամբ Անդրկովկասի տարբեր շրջաններում պահպանվել են փայտից ու վանակատից պատրաստված կամերի մնացորդներ, որոնք ոչնչով չեն տարբերվում այսօրվա կամերից[30]։ Այս գործիքներին զուգահեռ Հայաստանի մի շարք շրջաններում հնուց պահպանվել և օգտագործվում են քարե կալսիչները։

Այսպիսով, ուշբրոնզեդարյան Հայաստանն ուներ գյուղատնտեսական գործիքների բոլոր այն տեսակները, որոնք հետագա հազարամյակների ընթացքում շարունակել են օգտագործվել հայ շինականի կողմից։

Երկրագործությունը զարգանում էր գերազանցապես մեծ ու փոքր գետերի, արհեստական ջրանցքների ու առուների ջրերով ոռոգվող հարթակներում ու բարեբեր հովիտներում, որոնց ընդերքն առանց այն էլ հարուստ էր հրաբխային լավաներով և լճային նստվածքներով։

Այդուհանդերձ, ուշ բրոնզի դարաշրջանում էլ Հայաստանում չստեղծվեց մշտական ոռոգման հաստատուն և բարդ սիստեմ։ Այդ պատճառով էլ երկրագործությունն այստեղ ետ էր մնում Միջագետքի առաջավոր շրջանների համեմատությամբ։

**Փոխադրամիջոցներ:** Երկրագործության ու անասնապահության հետ միաժամանակ զարգանում էին և փոխադրամիջոցները, որոնց լավագույն նմուշները առատորեն պահպանվել են Լճաշենի հարուստ դամբարանաթմբերում։ Դրանք բազմաքանակ ու բազմապիսի սայլեր են, բայց կան կամարակապ ծածկով, երկանիվ ու քառանիվ, ճանապարհորդական կամ մարտական արագընթաց կառքեր, մանկական սայլակներ, մարտակառքերի մետաղե բնօրինակներ և այլն, որոնց նախատիպերը հանդես էին եկել դեռևս հին արևելյան քաղաքակրթության այգաբացին[31]։ Նրանք ներկայացված են արևելյան արվեստի հուշարձանների մեջ՝ բնօրինակներով, փորագրություններով, պատ-

29 Նման ներդիրների լայն տարածումը Արևելքում հիմք է ծառայել Մորգանի այն սխալ ենթադրության, թե մետաղե մանգաղները բնորոշ էին միայն Եվրոպայի շրջանների համար և Ասիայում այդպես էլ չտարածվեցին (տե՛ս J. de Morgan, La prehistoire orientale, III, Paris, 1927, էջ 77—78)։

30 Տե՛ս А. А. Мартиросян, Раскопки в Головино, Ереван, 1954, էջ 94—95։

31 Տե՛ս Г. Чайлд, Древнейший Восток в свете новых раскопок, М., 1956, էջ 230։

կներով[32], ինչպես նաև դամբարանային նյութերով։ Եվ զարմանալի չէ, որ Լճաշենի սայլերն իրենց զուգահեռներն ունեն Ստորին Միջագետքի՝ Քիշի[33] և Ուրի[34] վաղ դինաստիական 3-րդ շրջանի, Աքքադի թագավորության ժամանակաշրջանի, Թեփե-Գավրայի[35], ինչպես նաև Շուրուպպակ քաղաքի պեղումներով հայտնաբերված նյութերի մեջ, որտեղ հանդես է գալիս կամարածածկ հնագույն սայլը (IV հազարամյակ)՝ հար և նման Լճաշենի տիպերին[36]։

Լճաշենի սայլերն ու կառքերը պատկանում էին ցեղային ավագանու ներկայացուցիչներին. գուցե պատրաստված են հուղարկավորության հատուկ նպատակների համար։ Նրանք ունեն բարդ ու նուրբ փորագրություններ, հարյուրավոր մասեր՝ պատրաստված տարբեր տեսակի ու որակի փայտերից՝ թեղուց, կաղնուց և նույնիսկ թանկարժեք կարմիր փայտից, որը գանվում էր երևի Գեղարքունյաց անտառներում։ Տնտեսության մեջ լայնորեն օգտագործվող տարբեր տիպերի սայլերը չէին կարող այդքան շքեղ լինել, սակայն սկզբունքորեն դրանցից չէին տարբերվում։ Հին բնակավայրերում հաճախակի հանդիպող սայլերի ու սայլակների, կամ նրանց անիվների կավե բնօրինակները ցույց են տալիս, որ ուշ բրոնզի դարում փոխադրության տարբեր միջոցները տոհմացեղային ավագանու մենաշնորհը չէին։ Սրա ներկայացուցիչների դամբարանների մեջ պարզապես զետեղվում էին մեկ կամ մի քանի սայլեր, քաշող անասունների հետ միասին, իսկ ընչազուրկներին հուղարկավորելիս բավարարվում էին գերեզմաններում ձիու սանձեր կամ սայլերի առանձին մասեր դնելով, որոնք ժամանակի հասկացություններով փոխարինում էին ամբողջին։

**Փոխանակություն և առևտրական ճանապարհներ:** Աշխատանքի բաժանումը Հայկական լեռնաշխարհում երկրագործական, անասնապահական ու մետաղագործական շրջանների, հնուց ի վեր զարկ էր տալիս միջցեղային փոխանակությանը, առանց որի հասարակության զարգացումը անհնար կլիներ։ Արտադրողական ուժերի վերելքն ուշ բրոնզի դարաշրջանում, նյութական արտադրության տարբեր ճյուղերի խոր մասնագիտացումը, երկրագործական, անասնապահական, արհեստագործական արտադրանքի պաշարների կուտակումը և մետաղահանքերի հարստությունը լայն թափ հաղորդեցին միջցեղային փոխանակությանն ու առևտրին, որոնց մեծապես նպաստում էր նաև Հայաստանի աշխարհագրական հարմար դիրքը և նրան արևմուտքից ու հարավից եզերող երկրների մշակութային-տնտեսական բարձր մակարդակը։

Գտնվելով Արևմուտքի և Արևելքի միջև, Հայկական բարձրավանդակը կապում էր Արևմուտքի համեմատաբար ցածր զարգացած շրջանները հին արևելյան քաղաքակրթության կենտրոնների հետ։ Չնայած երկրի ռելիեֆի կտրտվածությանն ու լեռնային պատնեշների առկայությանը, Հայաստանի միջով էին անցնում Հին աշխարհի կարևոր տարանցիկ ուղիները, որոնք հանգուցվում էին

---

32 Տե՛ս նույն տեղում։

33 Տե՛ս *L. Watelin*, Excavations at Kish, 1924, էջ 29—30։

34 Տե՛ս *L. Wolley*, Ur Excavations, London, 1935, II, նկ 64, էջ 109։

35 Տե՛ս *E. Speiser*, Excavations at Tepe Gawra, I, աղ. XXXV.

36 Տե՛ս *Н. Д. Флиттнер*, Искусство Двуречья, էջ 43։

Արարատյան հովտում։ Հայաստանը մի կամուրջ էր Հին Արևելքի, Հյուսիսային Կովկասի և Հարավ-ռուսաստանյան տափաստանների միջև։

Չպետք է մոռանալ, որ Հայկական լեռնաշխարհի հարավային շրջանները II հազարամյակում մտնում էին Արևելքի ամենահզոր պետություններից մեկի՝ Միտաննիի կազմի մեջ, և մասնակից էին դարձել Առաջավոր Ասիայի տնտեսական և առևտրական կյանքին։ Մ. թ. ա. XIII դարից հետո էլ Միտաննիի առանձին քաղաքներ դեռևս պահպանում էին առևտրի միջնորդի իրենց դերը։ Սրանք կապում էին Հայաստանը փյունիկյան առևտրի խոշոր կենտրոններ Տյուրոսի, Բիբլոսի, Սիդոնի, Մեգիդդոյի, Ասկալոնի և առանձնապես Ուգարիթի հետ, որը միջնորդ օղակ էր Եգիպտոսի ու Բաբելոնի, Փոքր Ասիայի և էգեյան աշխարհի միջև։ Փյունիկիայից հարավ փղշտացիները XII դարում հիմնել էին Գազա հզոր քաղաքը, Բաբելոնի առանձին քաղաքներում XIV դարում հանդես էին եկել խոշոր առևտրա-վաշխառուական տներ, Եփրատի միջին հոսանքում ծաղկում էր խոշոր առևտրական կենտրոններից մեկը՝ Մարի քաղաքը,՝ իսկ Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասը հարում էր խեթական թագավորությանը, որի քաղաքները XII դարից հետո էլ շարունակում էին իրենց գոյությունը Փոքր Ասիայի հարավ-արևելյան և Ասորիքի հյուսիսային շրջաններում։

Ուստի չի կարելի պատահական համարել նույնատիպ մետաղե իրերի՝ զենքերի, ոսկյա զարդերի, ձիասարքերի ու շատ ուրիշ առարկաների հայտնագործությունները վերը հիշատակված առևտրական կենտրոններում և Հայկական բարձրավանդակի կենտրոնական ու հյուսիս-արևելյան շրջաններում, կամ սպառազինության միատիպ առարկաների գյուտերը Հայաստանում, պարսկական Թալիշում և Արևմտյան Իրանում (Լուրիստան)։ Այդ իրերի որոշակի մասը Հայաստան է ներմուծվել, անկասկած, միջցեղային փոխանակության միջոցով, սակայն մի զգալի մասն էլ, ինչպես վերը նշվեց, արտադրվում էր տեղում՝ արևելյան նախատիպերի հիման վրա։

Հայկական բարձրավանդակի բնիկները նույնքան սերտորեն կապված էին Կովկասի ու հարավ-ռուսաստանյան մարզերի հետ։ Հետաքրքրական է, օրինակ, Մերձսևանյան տիպի դաշույնի[37] գյուտը Հյուսիսային Օսեթիայի Կումբուլտայի դամբարանադաշտում[38], անդրկովկասյան բրոնզե գոտիների և այլ իրերի հայտնագործությունը[39] նույն Օսեթիայում, կամ նույնիսկ Դնեպրի միջին հոսանքի շրջաններում[40]։ Միտաննիական մի կնիք գտնվել է Օսեթիայում, իսկ առաջին հազարամյակի սկզբներին Նավկրատիսում արտադրվող եգիպտական սկարաբեոիդները հասնում են Արարատյան դաշտավայր, այնտեղից Վրաստան և Հյուսիսային Կովկասի լեռնանցքներով Չեգեմ և Բաքսան գետերի հովիտները[41], ընդ որում այդ տիպի գյուտերի տեղորոշումն այնքան անվիճելի է, որ կարելի է քարտեզի վրա գծել նրանց ներթափանցման ուղիները։

Առանձնապես ուշագրավ է, որ բրոնզեդարյան և ուրարտական ժամանակաշրջանի բազմաթիվ իրեր, նույն թվում Կարնո և Արարատյան դաշտերում

---

37 Տե՛ս *П. С. Уварова*, Могильники Северного Кавказа, МАК, VIII, աղ. XVI։

38 Տե՛ս *В. В. Струве*, История древнего Востока, М., 1941, էջ 261։

39 Տե՛ս *П. С. Уварова*, Могильники Северного Кавказа, աղ. XXV, նկ. 49, էջ 51։

40 Տե՛ս նույն տեղում։

41 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Археология Закавказья, էջ 64։

*հանդիպող ուրարտական ու անդրկովկասյան տիպի գոտիներ, հայտնաբերվում են Հյուսիսային Օսեթիայի Տլի գյուղում, որը տեղավորված է անմիջապես Կազբեկի լանջերին։ Բերված օրինակները ակնհայտորեն ցույց են տալիս միջցեղային փոխանակության տարածումը տասնյակ, հարյուրավոր ու հազարավոր կիլոմետրերի վրա։ Կոլխիդայից՝ ժամանակակից Բղիբյան Աբխազիայի շրջաններից, Հայաստան էին հասնում տեղական արտադրության մարտական կացիններ, որոնք Կուրի հովտով պատմական Սամցխե (Ախալցխա) և Ջավախքով (Ախալքալաք), Շիրակի (Լենինական) դաշտով անցնում էին Վանանդ (Մերս գյուղը Կարսի մոտ), Ճորոխի հովիտը և հասնում Տրապիզոնից արևմուտք ընկած Օրդու քաղաքի սահմանները՝ Պոնտական ծովափը։ Սրանք հասնում էին նաև Արարատյան դաշտավայր (Փարաքար գյուղ) և այստեղից Կապուտան լճի ափերը։ Նշված բոլոր վայրերը կապված են բնական տրանզիտային ուղիների հետ, որոնք Շիրակի դաշտը կապում էին Կուրի, Վանանդի, Ճորոխի, Արաքսի հովիտների հետ։ Այսպիսով, միջցեղային փոխանակության ու առևտրի մեջ, որն ընդգրկում էր հյուսիս-արևելյան Աֆրիկայի, Առաջավոր ու Փոքր Ասիայի, Կովկասի և հարավ-ռուսաստանյան շրջանների ընդարձակ տարածությունները, Հայկական լեռնաշխարհը աչքի ընկնող դեր էր խաղում։*

*Պետք է նկատի ունենալ, սակայն, որ օտար երկրներից մեզ հասած իրերն ու առարկաները միջցեղային աշխույժ փոխանակության պատահական ու չնչին վկաներ են միայն։ Փոխանակության մեջ հատկապես մեծ էր անասունների, անասնապահական մթերքների և բրոնզի, երկաթի, արծաթի ու ոսկու տեսակարար կշիռը։*

*Առևտրի զարգացման շնորհիվ ուշբրոնզեդարյան Հայաստան էին ներմուծվել, հավանաբար, Արևելքի ընդհանուր չափն ու կշիռը՝ տաղանտը, մինան, սիկլը։ Հետաքրքրական է, որ Վանի ժողովրդական դպրոցի միջնադարյան ծաղկողները XIV դարի ձեռագիր մատյաններում թողել են մանրանկարներ, ուր պատկերված են դրամական համարժեքների նախնական ձևերը՝ ձույլ ոսկու ու արծաթի մեծ կտորներ և մետաղե օղակների շարաններ։ Պետք է ենթադրել, որ այս նկարներում պահպանվել են նախաուրարտական և ուրարտական ավանդույթները, քանի որ միջնադարում գաղափար անգամ չունեին դրամական նման համարժեքների գոյության մասին։*

## 2. ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿՅԱՆՔ: ԱՆՑՈՒՄ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ

**Տնային ստրկություն:** *Երկրագործության, անասնապահության արտադրանքի աճը, հարստությունների կուտակումն առանձին անձանց, ընտանիքների ու տոհմերի ձեռքում, ապրանքափոխանակության զարգացումը, հրամայողաբար պահանջում էին աշխատող լրացուցիչ ձեռքեր[42]։ Միջցեղային երկարամյա կռիվները աշխատող ուժի մշտական աղբյուրներ էին։ Ստրկացված «օտարածին» ռազմագերիները սկսում էին օգտագործվել տնտեսական տար-*

---

[42] *Տե՛ս* Ֆ. Էնգելս, *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1948, էջ 210—213։*

բեր աշխատանքներում, սրանց «ընդոծին» սերունդները շարունակում էին ստրուկ մնալ։ Ստրուկներ էին ձեռք բերվում, ըստ երևույթին, նաև ոսկու և արծաթի միջոցով («արծաթագին»)՝ մեծ մասամբ Միջերկրականի ափերին տիրող փյունիկյան ստրկավաճառներից, որոնք փոխանակում էին իրենց ապրանքը «մարդկային հոգիների» հետ։ Ինչպես ցույց են տալիս դամբարանային պեղումները, «օտարածին» ստրուկները իրենց մարդաբանական կերպարով տարբերվում էին տեղական բնակչությունից[43]։

Կամոյի շրջանի Ներքին Ադիաման գյուղի «իշխանական» հարուստ դամբարանում սայլի ու եզների հետ միասին թաղված էին սայլապանն ու «ուղեկցող» ստրուկների մի մեծ խումբ։ Այդպիսի օրինակների տասնապատկվող ու հարյուրապատկվող թիվը ցույց է տալիս, որ ուշբրոնզեդարյան Հայաստանում ձևավորվել էր տնային ստրկությունը, որպես առանձին տնտեսական ինստիտուտ։

**Տոհմ, ցեղ և ցեղային միություններ:** Այսուհանդերձ, II հազարամյակի վերջերի Հայաստանը ստրկատիրական երկիր չէր, այնտեղ դեռևս հարատևում էր տոհմացեղային նախնադարյան կարգերի գոյությունը։ Հայկական լեռնաշխարհով մեկ սփռված ընդարձակ բնակավայրերը, հսկա կիկլոպյան կառույցներն ու նրանց կից դամբարանադաշտերը, երբեմնի գոյություն ունեցող տոհմացեղային հասարակության կյանքի լավագույն վկաներն են։ Չէ որ տոհմական յուրաքանչյուր համայնքի համար պարտադիր էր ոչ միայն լեզվի, տնտեսության ու կրոնա-գաղափարական պատկերացումների միասնությունը, այլև ընդհանուր բնակատեղին, դամբարանադաշտը, թաղման ծեսն ու արարողությունները։ Իսկ ավելի խոշոր հասարակական միավորումները՝ ցեղերը, կազմավորվում էին արդեն էթնիկական, լեզվական, տնտեսական, տերիտորիալ ու գաղափարական ընդհանրության հողի վրա։ Հայկական լեռնաշխարհի ամբողջ տերիտորիան բաժանված էր նման տասնյակ և հարյուրավոր ցեղերի-«երկրների» միջև, դրանց սահմաններն ու համայնատիրական իրավունքները որոշվում էին հաճախ սովորութական օրենքների, երբեմն էլ զենքի ու բռնի ուժի հիման վրա։ Ցեղային սահմանների մեջ ընկնող արոտավայրերն ու վարելահողերը, գետերն ու լճերը, այգիները, անտառներն ու հանքային հարստությունները կազմում էին նրանց հանրային սեփականությունը։

Յուրաքանչյուր ցեղ զբաղեցնում էր աշխարհագրական մի ամփոփ շրջան։ Մերձսևանյան վելիքուխցիների ցեղը, օրինակ, գրավում էր Գավառագետի հովիտը, որը մեկուսացված էր հարևան շրջաններից Գեղամա լեռների պարփակ փեշերով, ուներ 22 կիկլոպյան ամրոց՝ իրենց ընդարձակ տոհմական բնակատեղիներով ու դամբարանադաշտերով[44]։ Մ. թ. ա. VIII դարի վերջի ուրարտական արձանագրություններից մեկը հաղորդում է, որ Ռուսա Ա թագավորը մեկ արշավանքով հպատակեցրեց ու արտաքսեց «Վելիքուխի երկրի», թագավորին[45], զավթեց և ենթարկեց լճի շուրջը տեղադրված 23 երկիր իրենց թագավոր-

43 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археологическое изучение Древнего Закавказья, ВДИ, 1947, № 3, էջ 187։

44 Տե՛ս Ս. Գ. Բարխուդարյան, Վելիքուխի երկիրը, «Հայաստանի կուլտուրայի պատմության ինստիտուտի աշխատություններ», հատ. 1, Երևան, 1935, էջ 153—204։

45 Տե՛ս УКН, 265։



Մածկած սայլ. Լճաշեն

ներով[46]։ Հասկանալի է, որ վերոհիշյալ «թագավորները» պարզապես ցեղային առաջնորդներ էին, նրանց «երկրները»՝ ցեղային տերիտորիաներ, իսկ «քաղաքները»՝ տոհմական համայնքների մեծ կամ փոքր բնակատեղիներ։

Սևանի արևմտյան ափը՝ հյուսիսից հարավ, Գավառագետի հովտի նման հինգ մեկուսացված շրջան ունի, նրանցից յուրաքանչյուրն ուրարտական արձանագրությունների մեջ «երկիր» է կոչված։ Այդ հինգ երկրներում բնակվում էին հինգ ցեղեր իրենց բազմաթիվ բնակատեղիներով։ Նրանցից մեկը զբաղեցնում էր լճի հյուսիս-արևելյան անկյունը՝ Իշտիկունի կենտրոնով[47], որտեղ գտնվել է Հայաստանի լավագույն ամրոցներից մեկը իր ընդարձակ բնակատեղիով, ցեղային առաջնորդների ու նրանց յուրայինների զարմանալի հարուստ դամբարաններով։ Մերձսևանյան մի այլ ցեղի առաջնորդներից մեկի դամբարանը հայտնաբերվել էր մեր դարի սկզբին՝ լճի հարավային անկյունում՝ Ներքին Ադիաման գյուղի սահմաններում։ Ուրարտական արձանագրությունների տվյալները և հնագիտական հուշարձանների տեղաբաշխումը ցույց են տալիս, որ բրոնզեդարյան ցեղերի տեղագրությունը համապատասխանում էր Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերի՝ գավառների բնական սահմաններին։

Տևական կամ ժամանակավոր դաշինքի մեջ մտնող այս ցեղերը, արտաքին թշնամուց պաշտպանվելու համար հաճախ էին կազմում ցեղային միություններ։ Հայկական բարձրավանդակի տարբեր շրջաններում՝ Ջավախքում ու Թռեղքում, Սևանի ափերին (Ուդուրի-Էթիունի), Արարատյան դաշտում (Ազա), Տայքում (Դիաուխի), Վանա լճի շրջանում (Ուրուատրի, Նաիրի), ուրարտական պետության ստեղծմանը նախորդող ժամանակաշրջանում (XIII—X դարեր մ. թ. ա.) կային այսպիսի ցեղային բազմաթիվ միություններ, որոնցից շատերը ռազմական մեծ ուժ էին ներկայացնում նույնիսկ Արևելքի հզոր պետությունների նկատմամբ։ Հատկանշական է, որ XIII դարի ասորական Սալմանասար Ա թագավորի դեմ դուրս եկավ Վերին Զաբի շրջանում բնակվող ուրարտական ութ ցեղերից կազմված բանակը, իսկ նրա որդուն՝ Թուկուլթի-Նինուրթա Ա-ին համառորեն դիմադրում էին Նաիրյան դաշնադիր ցեղերի 23 առաջնորդներ[48]։

**Տոհմա-ցեղային ավագանի:** *Զինական հաճախակի բախումները և երկրի քաղաքական անհանգիստ վիճակը բարձրացնում էր տոհմա-ցեղային ավագանու դերն ու հեղինակությունը, դարձնում նրա իշխանությունն ավելի հաստատուն ու տևական։ Ցեղային առաջնորդների տրամադրության տակ կային կայուն մարտական ջոկատներ՝ մարտակառքերի, նիզակակիր, նետակիր, հեծյալ ու հետիոտն ռազմիկների, ինչպես նաև վահանակիր ծանր հետևակի խմբերով։ Հայկական լեռնաշխարհի դամբարանադաշտերում հաճախ են հանդիպում «զորականների» դամբարաններ (Լենինական, Դիլիջան, Գոլովինո, Առաջաձոր, Խոջալի և այլն), որոնք լի են սպառազինության առարկաներով և հնարավորություն են տալիս վերականգնելու բրոնզեդարյան ծանր հետևակազոր ռազմիկների արտաքին տեսքը։ Այսպիսի ռազմիկներից ոմանք «ուղեկցում» էին իրենց զինվորական առաջնորդներին անդրշիրիմյան աշխարհում։ Ղարաբաղի ցեղա-*

46 *Տե՛ս* УКН, *266*։
47 *Տե՛ս* УКН, *134*։
48 *Տե՛ս Б. Б. Пиотровский*, Ванское царство, М., 1959, *էջ 43—44*։

պետներից մեկի դամբարանում բացի ցեղապետի պճնազարդ աճյունից, հայտնաբերվել են սաղավարտակիր երեք մարտիկների կմախքներ[49]։

Լոռի բերդում հայտնաբերված բրոնզե գոտին լրիվ պատկերացում է տալիս բրոնզեդարյան ջոկատների կազմի, զինավառության ու մարտական կարգի վերաբերյալ[50]։ Նրա վրա սխեմատիկ գծանկարներով ցուցադրված է վահանակիր ռազմիկների կարգը, նիզակակիր հեծյալներ և մարտակառքեր՝ զորահրամանատարի առաջնորդությամբ, որի կերպարը ներկայացված է առաջին պլանի վրա, եռակի մասշտաբով, եգիպտական ու ասսուրական թագավորների քանդակների նման։ Զինված ջոկատները ամրապնդում էին ցեղային ավագանու դիրքերը հասարակության մեջ, որով փաստորեն ներկայանում էր պարզունակ պետական իշխանության սաղմը, դեռևս սոցիալական խոր անկում ապրող տոհմացեղային կարգերի ընդերքում։

Պատերազմական գնրեվարությունն ու ավարառությունը եկամուտներ էին բերում առաջին հերթին ցեղային ավագանուն։ Տասնամյակների, հարյուրամյակների ընթացքում նրանց ձեռքում էին կուտակվում անասունների հոտեր, ոսկու, արծաթի ու այլ թանկարժեք իրերի պաշարներ, որոնք ժառանգաբար անցնում էին սերունդներին և հիմք դնում մասնավոր սեփականությանը։

Գույքային և սոցիալական շերտավորումը հասարակության մեջ գնալով խորանում է։ Տոհմա-ցեղային ավագանու ներկայացուցիչներն այժմ սահմանազատվում էին ցեղակիցներից. բնակություն հաստատում կիկլոպյան ամրոցներում, որոնք ի տարբերություն հնում՝ ամբողջ բնակավայրի պարսպապատման համար կառուցած բերդերի, այժմ իրենց մեկուսացված հզոր միջնաբերդում պատսպարում են միայն ավագանու ներկայացուցիչներին[51]։

Տոհմա-ցեղային ավագանու ներկայացուցիչների դամբարաններն արդեն խստորեն տարբերվում էին նրանց շարքային ցեղակիցների աղքատիկ թաղումներից ոչ միայն իրենց հարստությամբ, այլև արտաքին ձևերով ու կառուցվածքային առանձնահատկություններով։

Ցափազանց հետաքրքրական են այդ տեսակետից Լճաշենի դամբարանադաշտի հարավային մասում գտնվող դամբարանաբլուրները, որոնք մեզ են հասցնում տեխնիկական նորույթներով և իսկական արվեստի հուշարձաններով լի հոյակապ հին մշակույթի ընդհանուր կերպարը։

Այս դամբարանաբլուրների տրամագիծը հասնում է 18—20 մ, թաղման սրահները, որ երկարուկ քառանկյուն միջանցքների տպավորություն են թողնում, ունեն 5—8 մ երկարություն, 2,5—3,5 մ լայնություն, կառուցված են 3,5 տոննանոց ժայռաբեկորներից, ունեն կրկնակի գերանածածկ տանիք և հսկայական սալքարերից կառուցված կեղծ կամարակապ ծածկեր։ Նրանց մի պատը շարվում էր հուղարկավորությունից հետո, երբ առաջնորդների աճյունները դամբարան էին իջեցնում ցեղական եզներով լծված շքեղ դիակառքերով, որոնց վրա և շուրջը տեղավորում էին ննջեցյալի արդ ու զարդը, հանդերձանքը, սպառազինությունը, ձիասարքը, առաջնության խորհրդանշանները։ Գերեզմա-

---

49 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, էջ 87—88։

50 Տե՛ս *А. А. Мартиросян,* Армения в эпоху бронзы..., էջ 160, նկ. 65։

51 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, էջ 57։



Երկանիվ սայլ. Լճաշեն

*նախուցը պաստառապատում էին բեհեզյա գործվածքներով, ննջեցյալին ծածկում էին ոսկեզարդ սավանով, դամբարանի հատակի վրա շաղ տալիս «խընկարկման» պաշտամունքային կրակարանների մոխիրը, ննջեցյալների հագուստը ներկում էին կարմիր օխրայով։ Երբեմն գերեզման էին իջեցնում նաև սպանված յուրայինների ու ստրուկների դիակները։ Այս ամենը շատ նման է Հայոց Արտաշես թագավորի[52] և սկյութական առաջնորդների թաղման ծեսերին ու սովորույթներին[53]։*

*Հնագիտական նյութերը ցույց են տալիս, որ տոհմացեղային ավագանին առանձնացել էր որպես հասարակական իշխող խավ, ստեղծել էր տնտեսական ու քաղաքական արտոնյալ վիճակ։ Ավագանու խավին էին պատկանում ոչ միայն ռազմական ավագանու ներկայացուցիչները, այլև քոչվոր անասնապահների ու արհեստավորների նահապետական այն ընտանիքները, որոնք բարձր եկամուտներ էին ստանում մասնագիտացված արհեստագործության մթերքների փոխանակման ու առևտրի միջոցով։ Հասարակության այս խավերը վաղուց արդեն հակադրվել էին իրենց տոհմացեղային համայնքների բազմահազար շարքային անդամներին, որոնց նյութական կյանքի մակարդակը հազիվ թե նախանձելի լիներ։*

*Հատկանշական է, որ Ակների (Ռոնակ) դամբարանադաշտում պեղված 40 դամբարանից միայն երկուսն էին աչքի ընկնում իրենց մետաղե իրերի բազմազանությամբ ու հարստությամբ։ Մնացած 38-ը պարունակում էին միայն հասարակ կավե ամաններ։ Նույն երևույթը դիտվում է Արթիկի դամբարանադաշտում, որտեղ հարյուրավոր դամբարանների մեջ կարելի է գտնել մեկ-երկու տասնյակ համեմատաբար հարուստ դամբարաններ։*

**Տոհմական բնակատեղի և ընտանեկան համայնք:** *Անշուշտ, հասարակ ու անպաճույճ էին նաև Հայաստանի լեռներում ու հովիտներում կիկլոպյան ամրոցների շրջակայքում սփռված տոհմական բնակատեղիները։ Նրանք բաղկացած էին ընտանեկան համայնքներին պատկանող իրար կից շինությունների առանձին «միակտուր» թաղերից, որոնք հազիվ էին իրարից բաժանվում ծուռ ու մուռ, նեղ փողոցներով։ Բնակավայրի յուրաքանչյուր թաղ աճում ու ընդլայնվում էր յուրովի, իր ներքին օրենքներին համապատասխան, նահապետական ընտանեկան համայնքի տրոհմանը զուգահեռ։ Այդ համայնքների տնտեսական ու կենցաղային պահանջներով էին պայմանավորված գոյություն ունեցող «տնաշինարարական» հաստատուն ու որոշակի կանոնները, որոնք ակնհայտորեն հանդես են գալիս, օրինակ, Կարմիր-բլուրի նախաուրարտական շինությունների կոմպլեքսներում և իրենց ճարտարապետական ձևերով հիշեցնում են Արարատյան դաշտավայրի հնագույն բնակատեղիները, հատկապես Շենգավթի վաղ բրոնզեդարյան բնակատեղին (III հազարամյակ մ. թ. ա.), ինչպես և Հին Արևելքի երկրագործական ցեղերի կացարանները[54] Հարավային և Հյուսիսային Միջագետքի (Թեփե-Գավրա, Թել-Արփաչիյա) մ. թ. ա. IV—III հազարամյակների բնակատեղիներում։*

---

52 **Խորենացի**, *Բ. կ։*

53 *Herod., IV, 71։*

54 *Տե՛ս А. А. Мартиросян,* Город Тейшебаини, *նկ. 8—10. էջ 28—31, Նույնի՝* Армения в эпоху бронзы..., *էջ 160—190։*

Ինչպես Արևելքի երկրագործական մարզերում, այնպես էլ Հայաստանի լեռնադաշտերում յուրաքանչյուր «համայնական տուն» բաղկացած էր կլոր ու քառանկյունի շինությունների միաարից մեկուսացված խմբերից։ Կլոր կացարանների շուրջը համախմբված քառանկյունի շինությունները, իրենց մեծ ու փոքր հորերով, ջտեմարաններով կամ պարզապես հարթ հատակներով հացահատիկի պահեստներ էին ու գոմեր՝ ընտանի կենդանիների համար։ Իրենց միատիպ ներքին կառուցվածքով առանձին հետաքրքրություն են ներկայացնում կլոր կացարանները։ Այստեղ որոշակի դասավորությամբ հանդես են գալիս կավակերտ երկարուկ նստարանները կամ մահիճները, հատակի մեջ թաղված կարասներն ու պատի որևէ անկյունում պատրաստված օջախը՝ մոխրի ու ածխացած ամանների մնացորդներով։ Օջախների մոտ հաճախ գտնվում են սանդեր, ծեծիչներ, աղորիքներ։ Կացարանների կենտրոնական մասում փորված է հացահատիկի հորը, որի եզրին կանգնած է պտղաբերության մարդակերպ կանացի քարե կուռքը։

Շինությունների մեկուսացված փոքրիկ այս խմբերը պատկանելիս են եղել փոքր ընտանիքներին, որոնք շարունակաբար տրոհվում էին ընտանեկան մեծ համայնքից, բայց մնում նրա կազմի մեջ որպես բաղկացուցիչ մաս՝ արտադրական ընդհանուր եկամտի մասնավոր յուրացման և առանձին բնակեցման պայմանով։ Նահապետական ընտանեկան մեծ համայնքը շարունակում էր կատարել տոհմա-ցեղային կարգի հասարակական ու տնտեսական հիմնական բջջի դերը։ Նրա ձեռքումն էր գտնվում լծկան ու կթու անասունը, մասնագիտացված արհեստն ու փոխանակության իրավունքը, նրա ժամանակավոր օգտագործմանն էին հանձնվում վարելահողի համապատասխան բաժինները՝ առանց օտարացման իրավունքի։ Նրանցից էին կազմվում տոհմա-ցեղային աշխարհազորի ջոկատները և այլն։ Կրկին դիմելով Խորենացուն, տեղեկանում ենք, որ հայերի առասպելական նախնին՝ Հայկը, ընդհարվելով բռնակալ Բելի հետ «...չվեց, գնաց Արարատի երկիրը... իր որդիներով, դուստրերով, որդիների որդիներով, զորավոր մարդկանցով՝ թվով մոտ երեք հարյուր հոգի և ուրիշ ընդոծիններով, նրան հարած եկվորներով և բոլոր տուն ու տեղով»[55]։ Խորենացու այս տեղեկությունները ներկայացնում են նահապետական ընտանեկան մեծ համայնքի պատկերը։ Մ. թ. ա. XII—XI և VIII դարի ասորական սեպագիր արձանագրությունները հաստատում են, որ Ասորեստանի թագավորները հպատակ երկրներում գերեվարում էին ամբողջ ընտանիքներ՝ տղամարդկանցով, կանանցով, երեխաներով ու արենակից հարազատներով։ Հյուսիսային Միջագետքում, Վանա[56] և Կապուտան[57] լճերի շրջակայքում բնակվող խուռրիուրարտական ցեղային առաջնորդների և «թագավորական տների» (ընտանիքների) անդամների թիվը հասնում էր 120—260-ի։ Հասկանալի է, որ աղբյուրները ներկայացնում են մեզ նահապետական ընտանեկան մեծ համայնքի քանակական կազմը, որի մեջ մտնում էին մեկ հորից սերող մերձավոր բարեկամ-

---

55 Խորենացի, Ա, ժ, ժա։
56 Տե՛ս АВИИУ, № 46։
57 Տե՛ս նույն տեղում, № 49։

ների երեք-չորս սերունդ՝ իրենց կանանցով, երեխաներով, երբեմն նույնիսկ օտարամուտ մարդկանցով։ Այս թիվը չի կարելի շփոթել թագավորական տան՝ այսինքն արքունիքի անձնակազմի հետ, որն առաջացել էր սոցիալական այլ հիմքի վրա, կազմված էր արենակցական կապ չունեցող, հասարակական սանդուխքի տարբեր աստիճանների վրա կանգնած հազարավոր մարդկանցից, որոնցով համալրված էին, ասենք, ուրարտական թագավորի արքունի գունդը, դիվանատունը, կանանոցը, տնտեսական կարգի հաստատությունները և այլն։

Ի մի բերելով բոլոր տեղեկություններն ու դիտողությունները ուշ բրոնզի ժամանակաշրջանի տոհմա-ցեղային կազմակերպության սոցիալ-տնտեսական առաջընթացի մասին, կարող ենք արձանագրել հետևյալը։

Ուշ բրոնզի ժամանակաշրջանի Հայաստանում անասնապահության ու երկրագործության զարգացման, արհեստագործության հետագա մասնագիտացման հողի վրա, տեղի էր ունեցել արդեն աշխատանքի երկրորդ խոշոր բաժանումը երկրագործ, անասնապահ ու մետաղագործ ցեղերի միջև, ընդլայնվել ու աշխուժացել էր փոխանակությունն ու առևտուրը երկրի ներսում ու նրա սահմաններից դուրս։ Այս հիմքերի վրա բարձր աստիճանի էր հասել գույքային ու սոցիալական անհավասարությունը, որը ցեղերի ներսում և նրանց միջև ստեղծել էր սոցիալ-տնտեսական խոր ներհակություններ. ընչազուրկ երկրագործ ու անասնապահ համայնքների ընդհանուր ֆոնի վրա գծագրվել էին ընտանեկան առանձին հարուստ համայնքներ, որոնց հսկայական կարողությունը՝ անասունների հոտերը, ստրուկները, ոսկին ու արծաթը, ժամանակավոր օգտագործման իրավունքով մշակվող եկամտաբեր հողամասերը, ժառանգական իրավունքի գործունեության պայմաններում դառնում էին մասնավոր սեփականության ինստիտուտի ամուր հիմք։ Տոհմա-ցեղային ավագանին ավելի ու ավելի ամրապնդելով իր ժառանգական իրավունքն ու տնտեսական հզորությունը, բացեիբաց ձգտում էր նմանվել Արևելքի արքաներին ու արքայիկներին։ Հաճախակի զինված բախումները երկրի քաղաքական բարդ իրադրության մեջ բարձրացրել էին տոհմա-ցեղային ավագանու քաղաքական հեղինակությունը, ցեղապետերի կայուն ու մշտական զինված ջոկատները հետզհետե դառնում էին քաղաքական իշխանության օրգաններ։ Պատերազմն ու առևտուրը դարձել էին ստրկության մշտական աղբյուրներ, կազմավորվել էր տնային ստրկության ինստիտուտը։

Արտաքին հարձակումներին դիմագրավելու նպատակով կամ տնտեսական համատեղ գործունեության կարիքներից ելնելով, կազմավորվել էին ցեղային հզոր միավորումներ երկրի կենտրոնական, արևմտյան, հյուսիսային ու հարավային մարզերում։ Դրանք ժամանակավոր կամ տևական քաղաքական կազմակերպություններ էին, որոնց զարգացումն ընթանում էր պետական իշխանության ձևավորման ուղիով ։ Այդպիսի հզոր կազմակերպություններից էին նաիրյան ցեղային միավորումները, որոնք զգալի ուժ էին ներկայացնում խեթերի ու խուրրիների պետությունների փլուզման, «ծովի ժողովուրդների» ներխուժման և Ասորեստանի ռազմա-քաղաքական պատմության ելևէջների խառը իրավիճակում։

Նախնադարյան համայնական հարաբերություններն ու տոհմացեղային կարգը Հայկական լեռնաշխարհում կանգնած էր քայքայման եզրին, ստեղծ-



Կարմիր բլուրի նախաուրարտական կացարաններ: Վերակազմություն

վել էին դասակարգային հասարակության սաղմերն ու տարրերը, հասարակությունը հասել էր պետական իշխանության ձևավորման անհրաժեշտությանը։ Կազմավորվել էր հասարակական մի կարգ, որը, ըստ մարքսիզմի կլասիկների բնորոշման, կոչվում է «ռազմական դեմոկրատիա»։

ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԵՐԻ ՑԵՂԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԵ-ՇՈՒՊՐԻԱ ԵՐԿՐՈՒՄ

## 1. ԹՐԱԿԱ-ՓՌՅՈՒԳԱԿԱՆ ՑԵՂԵՐԻ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ ՓՈՔՐ ԱՍԻԱՅՈՒՄ

**Թրակա-փռյուգական ցեղերի առաջին ալիքը:** *Մ. թ. ա. II հազարամյակի երկրորդ կեսում մեծ թափ է ստանում ցեղերի տեղաշարժը էգեյան աշխարհից և Բալկաններից դեպի Փոքր Ասիա, Լևանտի ծովեզերք և նույնիսկ Նեղոսի դելտա՝ Եգիպտոս։ Եգիպտական աղբյուրներում բոլոր այս հարձակվող ցեղերը կոչվում են «ծովի ժողովուրդներ»։*

*«Ծովի ժողովուրդների» թվում հանդես են գալիս նաև բազմաթիվ թրակա-փռյուգական ցեղեր, որոնք Փոքր Ասիա էին թափանցում Բալկանյան թերակղզու հյուսիսային մասերից՝ մերձդանուբյան շրջաններից ու թերևս մասամբ՝ Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի կողմերից։*

*Թրակա-փռյուգական ցեղերի այս տեղաշարժը կատարվել է մի շարք ալիքներով, որոնք ժամանակագրական տեսակետից կարելի է բաժանել երկու խմբի՝ նախքան Տրոյական պատերազմը (մ. թ. ա. XIII դարի վերջ) և դրանից հետո։*

*Փոքր Ասիա տեղափոխված թրակա-փռյուգական ցեղերի մեջ առաջիններից էին արիմները* (ἄριμοι), *նախահայերենի կրողները, որոնք աղբյուրների կցկտուր տեղեկությունների համաձայն, տեղավորվել են Փոքր Ասիայի կենտրոնական և հարավ-արևմտյան մասերի մի շարք վայրերում։*

*Ըստ Իլիականի նրանք ապրելիս են եղել Արգեյոս լեռան և Մաժաք (Կեսարիա) քաղաքի շրջակայքում[1]։ Հայերի նախնիներին այս տերիտորիայում հիշում է նաև հայ ազգային ավանդությունը։*

*Լեզվական և պատմական գրականության փաստերը ես ցույց են տալիս, որ հայերի հնդեվրոպական նախնիների մի ճյուղը երկարատև շփման մեջ է եղել փոքրասիական և էգեյան ցեղերի ու ժողովուրդների և հատկապես տրոյացիների հետ[2]։*

---

1 *Տե՛ս «Իլիական», II, 783։*

2 *Հերոդոտի ռուսերեն թարգմանության ծանոթագրություններում Ֆ. Գ. Միշչենկոն փռյուգացիների առիթով գրում է. «Փոքրասիական թերակղզում փռյուգացիների բնակավայրերի խոր հնությունը, ինչպես նաև նրանց ազգակցությունը մի կողմից արմենների և մյուս կողմից՝ հելլենների հետ, ամեն կասկածից վեր է. այս ժողովուրդների միջև եղած միջանկյալ օղակները պետք*

*Թրակական ծովեզերքից Փոքր Ասիա տեղափոխվելիս փռյուգական ցեղերը նախ և առաջ պետք է ընդհարվեին այն ժամանակ դեռ հզոր Տրոյական տերության հետ, որ Միքենեի և խեթական թագավորության մրցակիցն էր։ Մ. թ. ա. II հազարամյակի կեսերին այդ ցեղերը Մարմարա ծովի փոքրասիական ափը տեղափոխվելով, հայտնվում են Տրոյական պետության սահմաններում, և նոր տեղում նախահայերենը սերտ շփման մեջ է մտնում տրոյա-էտրուսկյան[3], ապա նաև խեթա-լուվիական լեզուների հետ։*



«Ծովի ժողովուրդների» զաղթը. XIII դարի եգիպտական բարձրաքանդակից

**Տրոյայի և խեթական պետության կործանումը:** *Փռյուգական ցեղերի մի այլ ալիք Պրոպոնտիսի (Մարմարա ծովի) թրակական ափից ասիական ափ է անցել այսպես կոչված դորիական գաղթի ժամանակաշրջանում, այսինքն մոտավորապես XII դարի սկզբին։ Ստրաբոնը հաղորդում է, որ լիկիացիներից, կիլիկեցիներից և այլ ցեղերից ավելի ուշ Տրոադայում հայտնվում են փռյուգացիները, թրակացիները և տրերները[4]։*

*Տրոյան, ըստ հունական պատմական ավանդության, եղել է Միքենեի գլխավոր մրցակիցը Փոքր Ասիայում։ Նա հսկում էր մուտքը դեպի Հելլեսպոնտոսի նեղուցն ու Սև ծովը և առևտրական կապեր էր պահպանում ողջ Արևելյան միջերկրածովյան ավազանի երկրների հետ և, հատկապես, աքայան (միքենյան) Հունաստանի հետ։ Տրոյան պետք է մշակութային և քաղաքական կապեր ունեցած լինի նաև խեթական թագավորության հետ։ Այդ հզոր պետությունը չդիմացավ թրակա-փռյուգական ցեղերի ճնշմանը։ Հնագիտորեն հաստատված է, որ Տրոյա VIIա-ն կործանվել է հրդեհից. դա համապատասխանում է*

---

*է համարել* միսիացիներին, մեոններին, միգդոններին, դոլիոններին, տրոյացիներին» *(տե՛ս Геродот,* История в девяти книгах, перевод с греческого Ф. Г. Мищенко, т. II, М., 1888, *էջ 607)։*

3 *Վ. Ի. Գեորգիևի պրպտումները բերում են այն եզրակացության, որ «էտրուսկական հնչյունական կառուցվածքը շատ նման է հայերենի կառուցվածքին», իսկ «էտրուսկերեն որոշ բառեր իրենց ճշգրիտ համապատասխանությունն ունեն հայոց լեզվում»։ Նույն հեղինակը ենթադրում է, որ «հայերի նախնիները բնակվել են տրոյացիների մոտերքը ինչ-որ տեղ»։ Հունական պատմական ավանդությունը հաստատում է Վ. Ի. Գեորգիևի այս եզրակացությունը (տե՛ս В. И. Георгиев,* Исследования по сравнительно-историческому языкознанию, М., 1958, *էջ 194)։*

4 *Տե՛ս* Strabo, *XIII, 1, 8։*

Հոմերոսյան էպոսի տվյալներին, ըստ որոնց միքենյան հույները գրավում են Տրոյա-Իլիոնը և հրկիզում։ Տրոյա VIIա-ի ավերակների վրա ստեղծվում է Տրոյա VII բ բնակավայրը՝ միանգամայն այլ բնակչությամբ։ Հատկապես անհրաժեշտ է նշել, որ այստեղ երևան է գալիս կենտրոնական-եվրոպական և մերձդանուբյան ծագում ունեցող այսպես կոչված «ելունդային խեցեղենը» (Buckelkeramik)[5]։ Ըստ երևույթին Տրոյայի կործանումից հետո Տրոադայի տերիտորիայում հաստատվել են փռյուգացիները և այնուհետև անտիկ դարաշրջանում այդ երկրամասը կոչվում է Հելլեսպոնտական կամ Փոքր Փռյուգիա։

Ենթադրվում է, որ խեթական թագավորությունը ևս կործանվել է փռյուգացիների հարվածներից, որոնք գրավեցին նրա ողջ տերիտորիան։ Այն տրոհվեց մանր պետական կազմավորումների։ Պետք է հաշվի առնել, որ խեթական թագավորությունը հարկադրված էր պայքարել նաև արևելքում՝ Պոնտոսի և Անտիտավրոսի անտառապատ ձորերում բնակվող նախախեթական ցեղերի դեմ։ Այսպես, խեթական Թութխալիյաս Դ թագավորի (շուրջ 1250—1220 թվականներ) տարեգրություններում կարդում ենք, որ Ասսուվայի դեմ նրա ձեռնարկած արշավանքի ժամանակ արևելքից կրկին սկսել են հարձակումներ գործել կասկերը։ Այդ ժամանակ է (XII դարի սկզբին), որ քայքայվում է Հայասա-Ազզի ցեղային միությունը, ապա ընկնում է նաև խեթական պետությունը։ Փռյուգական ցեղերը հաստատվել էին Սանգարիա գետի հովտում և այնտեղից շարժվում էին դեպի Հալիս գետի հովիտն ու Անտիտավրոսի շրջանը։ Հալիս գետի հովտում փռյուգական այս ցեղերը պիտի հանդիպեին իրենցից առաջ այդտեղ հաստատված իրենց ցեղակից արիմներին (արմեններին), որոնց հետ միասին, ինչպես նաև տեղաբնակ նախախեթական այլ ցեղերի հետ անցան Եփրատը և ներխուժեցին (մ. թ. ա. 1170-ական թվականներ) Ասորեստանի տիրապետության տակ գտնվող Շուպրիա երկիրը՝ Արևմտյան Տիգրիսի հովտում։

Ասորեստանի սահմանները ներխուժող այդ ցեղերը ասուրա-բաբելական արձանագրություններում կոչվում են mušku, muškaya և, ըստ երևույթին, իրավացի են այն ուսումնասիրողները, որոնց կարծիքով մուշկերը միսիացիներն են (μύσιοι), որոնց անունով էլ Տրոյա քաղաք-պետության երկրամասը կոչվեց Միսիա (Μυσία)։ Թրակա-փռյուգական ցեղերից արիմ-արմեններից հետո, հավանաբար միսիացիներն էին, որ գաղթեցին Փոքր Ասիայի կենտրոնական շրջանները, և նրանց անունով էլ ասորեստանցիները և Առաջավոր Ասիայի մյուս ժողովուրդները թրակա-փռյուգական լեզվաճյուղի բոլոր հնդեվրոպական ցեղերին անվանում էին մուշկեր[6]։

Թրակա-փռյուգական ցեղերի անցած ողջ ճանապարհն ուղենշված է փռյուգական տիպի դամբարանաբլուրներով։ Դրանց յուրօրինակ նյութական մշակույթը նույնական է Տրոյայի, Աքսիոս գետի հարթավայրի կամ Սալոնիկի հարթավայրի մշակույթի հետ[7]։ Այստեղից այդ դամբարանաբլուրները ձգվում են դեպի փոքրասիական ծովեզերք՝ Տրոադա և շարունակվում, ինչպես ցույց

[5] Տե՛ս *И. М. Дьяконов,* Предыстория армянского народа, էջ 117։

[6] Տե՛ս *Ի. Մ. Դյակոնով, Խեթերը, փռյուգացիները և հայերը,* Տեղ. ՀԳԱՀԳ, Երևան, 1956, № 11, էջ 71։ Ս. Տ. Երեմյան, *Հայ ժողովրդի կազմավորման ընթացքը,* ՊԲՀ, 1970, № 2, էջ 38։

[7] Տե՛ս *D. Fimmen,* Die kretisch-mykenische Kultur, Leipzig, 1929, էջ 103։

է տվել Ն. Ադոնցը[8], Մալաթիա—Խարբերդ—Դիարբեքիր—Սասուն գծով, Աքսիոս գետի հարթավայրից մինչ Բոզ-հույուկ. այդ դամբարանաբլուրների համար բնորոշ է մասնավորապես δέπας ἀμφικύπελλον և Schnabelkanne տեսակների խեցեղենը։ Այս երկուսն էլ հատուկ են Տրոյայի խեցեղենին[9]։



Եգիպտացիների և «ծովի ժողովուրդների» միջև ծովային ճակատամարտ։
Եգիպտական բարձրաքանդակ Ռամզես 3-րդի դամբարանից

**«Պոտին Արմենիան»՝ նախնական Հայաստանը:** *Հոմերյան էպոսի ստեղծման շրջանում (մ. թ. ա. X—XI դդ.) նախահայկական ցեղերից մեկը, արմենների ցեղը[10], հայտնի էր հույներին մի շարք վայրերում՝ Աքսիոս գետի հովտում, Միսիայում՝ միսիացիների և փռյուգացիների կողքին՝ Կատակեկավմեն շրջանում, Հիդա գետի հովտում, Եփեսոս քաղաքի շրջակայքում[11], Կիլիկիայում՝ Կալիկադնոս գետի հովտում, ուր գտնվում են «Արիմների լեռները», Օրոնտեսի գետաբերանի մոտ՝ Անտիոքի շրջանում և, վերջապես, Կապադովկիայի Արգեոս լեռան շրջակայքում, որտեղ տեղադրվում է հայ ազգային ավանդության «Պոտին Արմենիան»—«Առաջին Հայքը»։ Բոլոր այդ վայրերի հետ է կապվում նաև հրաշունչ լեռան և Տյուփոն հրեշի առասպելը։ Այս առասպելը, որ գոյություն ուներ և՛ Միսիայի ու Լյուդիայի սահմանի մոտ, և՛ Կիլի-*

---

8 *Տե՛ս N. Adontz*, Histoire d'Arménie, *էջ 332*։

9 *Տե՛ս В. Бенецяну,* Некоторые вопрсcы этногенеза армян, *էջ 103*։

10 *Հելլենիստական դարաշրջանում* ἄριμοι *էթնիկական անունը վաղուց արդեն փոխարինվել էր ավելի զարգացած* ἀρμένιοι *անունով, այդ պատճառով էլ գրականության մեջ հանդիպող* ἄριμοι*-ն սովորաբար նույնացնում էին* ἀραμαῖοι*-ի հետ, որը նշանակում էր «արամեացիներ»։ Առաջին այդպիսի սխալը կատարել է Ստրաբոնը։ Նա արիմներին (XII, 3, 28) մատնացույց է անում ծովեզրյա Կիլիկիայում՝ Կալիկադնոս գետի մոտ, Ասորիքում՝ Օրոնտեսի գետաբերանի մոտ և Միսիայում (XIII, 4, 6), բայց սխալմամբ նրանց նույնացնում է արամեացիների հետ (XVI, 4, 27), ըստ երևույթին, այդ անվանումների նմանությունից ելնելով։ Սակայն աղբյուրներից հայտնի է, որ առաջին անգամ արամեացիները հիշատակվում են Հյուսիսային Միջագետքում, մոտավորապես 1130 թվականին, «ախլամու» անվան տակ, մինչդեռ հոմերյան արիմները հիշատակվում են Տրոյական պատերազմի ժամանակներում, որ ընկնում է մ. թ. ա. XIII դարի վերջը (В. Бенецяну,* Некоторые вопросы этногенеза армян, *էջ 117)*։

11 *Ըստ Հեսիքիոսի, Եփեսոսը հնում կոչվել է* Ἀρμένη։

կիայում, և՛ Օրոնտեսի գետաբերանի շրջանում, և՛ Արգեոս լեռան շրջակայքում կապվում է, ուրեմն, արիմների ցեղերի հետ։

Հրաշունչ լեռան (որի տակ, ըստ առասպելի, թաղվել է հրեշ Տյուփոնի դիակը՝ Զևսից պարտվելուց հետո) տեղորոշումը Արգեոս լեռան շրջանում գերմանացի գիտնական Մարկվարտին թույլ է տվել ենթադրելու, որ ի դեմս ἄριμοι ցեղի, հնագույն հիշատակություն ունենք արմենների մասին։ Ի հաստատումն իր ենթադրության, նա վկայակոչում է այն փաստը, որ հայկական առասպելներում պահպանվել է Զևսի և Տյուփոնի առասպելի տարբերակը. դա արմենների ցեղապետ Արամի և Պայապիս Քաղեայի կռվի մասին զրույցն է, որ մեջ է բերում Մովսես Խորենացին[12]։ Պատահական չէ, որ հայկական առասպելի համաձայն Արամի և Պայապիս Քաղեայի կռիվը տեղի է ունեցել հենց այդ նույն վայրում՝ Մաժակ-Կեսարիայի շրջանում, հրաշունչ Արգեոս լեռան ստորոտում։

Զևսին փոխարինող Արամը, ըստ Մակվարտի, անձնավորում է արիմներին՝ հայերի նախնիներին[13]։ Հ. Մանանդյանը ևս նկատում է, որ Խորենացուց քաղված այս հատվածում «կարող են, իրապես… պահպանված լինել հայ ժողովրդի աղոտ հիշողությունները իր ամենահին անցյալի մասին»[14]։

Մովսես Խորենացու շարադրանքի համաձայն, Արամը թշնամու փախուստից հետո այդ վայրի («ի տեղի մի, որ այժմ ասի Կեսարիա»), կառավարիչ է նշանակում իր ազգականներից մեկին, Մշակ անունով[15]։ Այդ Մշակ անվան մեջ էլ պահպանվել է փռյուգ-միսիացիների՝ մուշկ էթնոնիմը՝ հին հայկական ձևով։ Այս տերիտորիան համապատասխանում է անտիկ ժամանակաշրջանի Կապադովկիայի վարչական միավորներից մեկին՝ Կիլիկիա ստրատեգիային իր Մաժակ մայրաքաղաքով։ Կարևոր է նշել, որ հայերի ծագման մասին հին պատմական զրույցները, որ հավաքել է Մովսես Խորենացին V դարում, այս երկրամասը կոչում են «Պռոտին Արմենիան» (πρώτην 'Αρμενίαν)[16]։ Թեև Խորենացին ստուգաբանում է այն իբրև «Առաջին Հայք», սակայն իրականում այս անունը ոչ մի առնչություն չունի մ. թ. IV դարից հայտնի «Առաջին Հայք» (Armenia Prima) հռոմեական պրովինցիայի հետ, չնայած որ հարևան էր նրան, այլ նշանակում է «նախնական Հայաստան»։ Խորենացու սխալը կրկնել է և VII դարի մեր «Աշխարհացոյց»-ի հեղինակը։

Խոսելով առասպելական Արամի այդ երկրում կատարած սխրագործությունների մասին, Մովսես Խորենացին եզրափակում է. «Այս պատճառով հույները մինչև այսօր այդ երկրամասը կոչում են Պռոտին Արմենիան, որ թարգմանվում է Առաջին Հայք։ Իսկ այն դաստակերտը, որ Արամի կուսակալ Մշակը շինեց իր անունով և փոքր պարիսպներով պատեց, այդ երկրի հին մարդիկ կոչում էին Մաժակ, կարծես չկարողանալով ճիշտ արտասանել. հետո նա ուրիշ-

12 Խորենացի, Ա, ժզ։

13 Տե՛ս J. *Markwart*, Die Entstehung und Wiederherrstellung der armenischen Nation, Berlin, 1919, էջ 67։ Նույնի՝ Le berçeau des arméniens „Revue des études arméniennes", 1928, VIII, Fasc. 2, էջ 221—223։

14 Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության*, հատ. Ա. էջ 23։

15 Տե՛ս Խորենացի, Ա, ժզ։ Հին ձևը երևի Մուշակ. հմմտ. հիերոգլ.-խեթ. Musaka։

16 Հայցական հոլովով. ուղղականով՝ πρώτη 'Αρμενία։

ներից ավելի ընդարձակ շինելով կոչեց Կեսարիա»[17]։ Այնուհետև պատմիչը գրում է. «Սա այսպես հզոր և անվանի եղավ. ուստի սրա անունով են մինչև այսօր մեր շրջակա ազգերը մեր երկիրը անվանում, ինչպես հույները Արմեն, իսկ պարսիկներն ու ասորիները՝ Արմենիկ»։

Մովսես Խորենացու մոտ պահպանված վկայությունները ցույց են տալիս, որ նրա ժամանակ (մ. թ. V դար) ժողովուրդը հիշողություններ էր պահպանել Փոքր Ասիայում հայերի սկզբնական հայրենիքի մասին, և նրան հայտնի էին այնպիսի ավանդություններ, ըստ որոնց հայերի նախահայրը ոչ թե Հայկն էր, այլ Արամը, որի անունով էլ հարևան ժողովուրդները հայերին կոչում էին արմեններ։

Վերջերս ուշադրություն է դարձվել նաև այն փաստի վրա, որ հիերոգլիֆիկ խեթերեն արձանագրությունների տարածման շրջանը «բավական ճըշգրիտ համընկնում է Փոքր Հայքի սահմանների հետ, միայն հարավում և հարավ-արևմուտքում անցնելով փռյուգական Տիանիտիսի, Կիլիկիայի և Ասորիքի տերիտորիան»[18]։ Այդ արձանագրությունները պատկանում են մ. թ. ա. I հազարամյակի սկզբին՝ մինչև VIII դարի վերջը, կամ նույնիսկ VII դարի սկիզբը։

Այս տերիտորիայում հայալեզու բնակչությունը հաստատվել էր նրանց մասին անտիկ հեղինակների տված առաջին տեղեկություններից (մ. թ. ա. VI դար) շատ ավելի վաղ։ «Սեփական գրավոր և գրական ավանդույթ չունենալով, նրանք օգտվում էին այն բնակչության լեզվով և գրով, որը նրանք գտել էին այստեղ դեռ XII դարում մ. թ. ա., այն է՝ «հիերոգլիֆիկ խեթերի»։ Սրանով էլ հենց պետք է բացատրել «հիերոգլիֆիկ խեթերեն» արձանագրությունների տարածման տերիտորիայի մոտավոր համընկնումը հայերի տարածման ենթադրական հնագույն տերիտորիայի հետ։ Սրանով է բացատրվում նաև զգալի խեթական լեզվական շերտի առկայությունը հայերենում[19]։ Այս դրույթի հիման վրա Ի. Մ. Դյակոնովը հանգում է այն եզրակացության, որ «առաջին հազարամյակի սկզբի հայերը հանդիսանում էին տեղական խեթական (գերազանցապես «հիերոգլիֆիկ խեթական») բնակչության և թրակա-փռյուգական «մուշկերի» (բառիս այն առումով, որը հատուկ էր II հազարամյակին մ. թ. ա.) ցեղերի խառնուրդ»[20]։

Անդրադառնանք նաև հնդեվրոպական այն ցեղերին, որոնք տարբեր ժամանակներում գաղթել են Փոքր Ասիա և բնակություն հաստատել հայկական ցեղերի բնակեցրած տերիտորիայում։ Հին հունական հեղինակների մոտ պահպանված այդ ցեղանունների, տեղանունների և անձնանունների կցկտուր տըվյալները ինչ-որ չափով լրացնում են մեր ունեցած տեղեկությունները հայ ժողովրդի ծագման մասին։

**Ալիզոններ և օդոմանտներ:** Ալիզոնների թրակական ցեղերը նախահայերի և խալյուբների հարևաններն են եղել Փոքր Հայքում։

Ալիզոնների գաղթը հավանաբար տեղի է ունեցել արիմներից հետո, բայց

---

17 **Խորենացի**, Ա, ժդ։

18 Ի. Մ. Դյակոնով, Խեթերը, փռյուգացիները և հայերը, էջ 73։

19 Նույն տեղում, էջ 75։

20 Նույն տեղում, էջ 70։

քանի որ Հոմերոսի «Իլիականում» նրանք հիշատակվում են որպես տրոյացիների դաշնակիցներ[21], ապա կարող ենք Փոքր Ասիայում նրանց երևան գալու ժամանակը ևս համարել մ. թ. ա. II հազարամյակի երկրորդ կեսը։ Ըստ երեվույթին, Փոքր Ասիա գաղթել և ալիզոնների մի մասը միայն, իսկ նրանց հիմնական զանգվածը դեռևս Հերոդոտի օրոք, շարունակել է ապրել իր վաղեմի տերիտորիայում։ Ալիզոններն ապրում էին ներկայիս Ուկրաինայի տափաստաններում, միլետյան Օլբիա գաղութից հյուսիս, հելլենա-սկյութներից այն կողմ, Բորիսթեն (Դնեպրը), Թիրաս (Դնեստր) և Հիպանիս (Բուգ) գետերի միջև։



Հին փռյուգական գեղարվեստական անոթ. Ալիշար

Դեռևս նախահոմերյան շրջանում ալիզոնները շարժվում են դեպի հարավ և մուտք գործում Փոքր Ասիա՝ Բյութանիայի տերիտորիան և նրանից արևելք։ Ավելի ուշ նրանց մնացորդները հանդիպում են Մակեդոնիայում (Պալլենան Քաղկիդիկեում), Փոքր Փռյուգիայում (Տրոյական պետության նախկին տերիտորիան), Կիզիկ քաղաքի մոտերքում և այլուր[22]։ Բայց գաղթածների հիմնական մասը ապրում էր խալյուբների և նախահայերի կողքին՝ Պոնտական և Հայկական լեռներում, Հալիս գետի ակունքների շրջանում, որն այդպես է կոչվում իրենց անունով։ Սրանք բոլորը ժամանակի ընթացքում ձուլվում են հայերի մեջ։

Հայկական տեղանունների տվյալներից ելնելով, հավանական է Odomantes թրակական ցեղի գոյությունը Հայաստանում։ Ծոփքի մոտ Odomantis անունն է կրել մի ամբողջ շրջան[23]։ Օդոմանտները, ըստ Հերոդոտի, ապրում էին Մակեդոնիայում, պեոնների կողքին[24], Օրբելոս լեռան ստորոտի մոտ, Ստրիմոնի գետաբերանի շրջանում։ Օդոմանտների մյուս մասն ապրում էր Փոքր Ասիայում, Սինոպի մոտ։

Հայաստանում օդոմանտների բնակության վայրի տեղորոշման համար ուղեցույց կարող են լինել նաև Փոքր Հայքի երկու գավառի անունները՝ Օրբիսենե և Օրբալիսենե, որ հիշատակում է Պտղոմեոսը։ Այս շրջանները տեղագրվում են, ամենայն հավանականությամբ, Դիվրիգ և Արաբկիր բնակավայրերի միջև[25]։

---

21 Տե՛ս «Իլիական», II, 857։ Ս. Տ. Երեմյան, Հայ ժողովրդի կազմավորման ընթացքը, էջ 42։
22 Տե՛ս Strabo, XII, 3, 20։
23 Տե՛ս նույն տեղում, XI, 14, 5։
24 Տե՛ս Herod., V, 16, VII, 112։
25 Տե՛ս Ptol., V, 6, 18։

Կարելի է մատնանշել նաև մի շարք նման աշխարհագրական անուններ Փոքր Ասիայում և Հայաստանում (օրինակ Caballa Լյուդիայում, Կիլիկիայում և Հայաստանում, Harpasos գետ Կարիայում ու Հայաստանում և այլն)։ Համենայն դեպս տեղանունների և անձնանունների այս զուգորդությունները վկայում են, որ հայերի հնդեվրոպական նախնիները իրոք շարժվել են արևմուտքից արևելք, Փոքր Ասիայի հարավ-արևմտյան կողմից սկսած[26]։

Հայկական լեռնաշխարհում ալիզոնները, օդոմանտները և մյուս ցեղերը ժամանակի ընթացքում ձուլվել են հայերին։

## 2. ՀԱՅԵՐԻ ՑԵՂԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԵ-ՇՈՒՊՐԻԱ ԵՐԿՐՈՒՄ

**Թրակա-փռյուգական ցեղերը Արմե-Շուպրիա երկրում:** *Խեթական թագավորության կործանումից հետո (մ. թ. ա. 1200—1118 թվականներ) թրակա-փռյուգական ցեղերը, որոնց թվում ասուրա-բաբելական աղբյուրները հիշատակում են փռյուգացի-միսիացիներին՝ մուշկեր անվան տակ, և արիմ-ուրումեացիներին, շարժվում են արևելք, դեպի Եփրատ և այնտեղից էլ՝ Հայկական լեռնաշխարհ։ Այս շարժման մեջ ներգրավված էին նաև նախախեթական աբխազա-ադըղեական ցեղերը, որոնք թափանցելով Հայասա-Ազիի ցեղերի միությունը, անցնում են այդ երկիրը, մասամբ տեղահանում են բնիկներին ու սրանց հետ միանում մուշկերին և ուրումեացիներին։ Մ. թ. ա. XII դարի ասուրական արձանագրությունները մեծ տագնապով են խոսում մուշկերի ներխուժման մասին՝ Ասորեստանյան տերության հյուսիս-արևմտյան շրջանները (մ. թ. ա. 1170—1165 թվականներ)։ Սրանք հենց այն մուշկերն էին, որոնք ներխուժեցին Հայկական լեռնաշխարհի և Հյուսիսային Միջագետքի սահմանները, դարձան նստակյաց հողագործներ և Ասորեստանի հարկատուներ։ Այստեղ ստեղծված թագավորությունը, որի կենտրոնը Խարբերդի դաշտում էր, ասորեստանցիները կոչում են «մուշկերի թագավորություն»[27]։*

*Հայկական լեռնաշխարհի սահմաններ ներխուժած այդ ցեղերը զբաղեցրել էին Խարբերդի դաշտում և Արևմտյան Տիգրիսի ակունքների շրջանում (Հին հայկական Անգեղ-տուն գավառը) գտնվող Ալզիի և Պուրուլումզիի շրջանները։ Մուշկերն այստեղ ուրումեացիների և կասկեացի-աբեշլայցիների հետ միասին կազմում են ցեղային միություն, որը գլխավորում էին հինգ առաջնորդ «թագավորներ»։ Իշուվա և Ալզի-Պուրուլումզիի շրջաններում ստեղծված ցեղային այս միությունը՝ «մուշկերի թագավորությունը», բավական հզոր միավորում էր և Ասորեստանի դեմ կարողանում էր հանել 20.000 զորք[28]։ Ասորեստանյան նվաճողների դեմ ընդհանուր պայքարում մուշկերի թագավորության հետ միավորվել էին նաև Արևմտյան Տիգրիսի ավազանի տեղական խուրրիական Շուպրիա, Կադմուխի, Բաբխի, Խաբխի, և այլ երկրներ։*

---

[26] *Տե՛ս N. Adontz* Histoire d' Arménie, *էջ 320—327։*

[27] *Մուշկերի այս թագավորությունը չպետք է շփոթել մ. թ. ա. VIII դարի հայտնի մուշկերի թագավորության հետ, որը փռյուգական պետություն էր (Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայերի ցեղային միությունը Արմե-Շուպրիա երկրում, ՊԲՀ, 1958, № 3, էջ 59—72)։*

[28] *Մուշկերի թագավորության կենտրոնը՝ Մուշկու երկիրը, որը հետագայում ուրարտացիների մոտ կոչվելու է Մուշանի, հայերը հավանորեն անվանում էին Մուշար (այժմ՝ Մուշար-դաղ լեռների շրջանը). Նա անհեր համանուն* Μάζαρα *(Ptol., V, 12, 8) կենտրոնը։*

Այսպիսով, Ասորեստանյան պետության «բարբարոսական ծայրամասում» կազմավորվում է մի բավական ուժեղ ցեղային միություն, որի հետ ասորեստանյան նվաճողները պետք է լուրջ հաշվի նստեին։ Նրանք հաճախակի արշավանքներ են ձեռնարկում՝ հնազանդեցնելու ըմբոստ լեռնցիներին։

Երբ մ. թ. ա. IX դարից սկսած Ուրարտուն ընդարձակվելով հասավ նաև Շուպրիա երկրին, ապա այդ երկիրն արդեն այնքան էր յուրացվել նոր ցեղերի՝ ուրումեացիների կողմից, որ Շուպրիայի փոխարեն ուրարտական արձանագրություններում օգտագործվում են Ուրմեուխի-Ուրմեունի կամ Արմե անունները։ Մարկվարտն[29] իրավացիորեն նկատել է, որ հենց այստեղ, Arme էթնոնիմից, խուրրի-ուրարտական -ini վերջավորության հավելումով, որը մեդական լեզվի ազդեցությամբ դարձել էր -ina, ձևավորվել է Armina անունը, որից և ծագում է հայերի՝ հին պարսկական արձանագրություններում և հին հունական գրականության մեջ ընդունված համապատասխան անունը։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ տեղական խուրրիական բնակչությունը արմենները ձուլել էին իրենց և ժամանակի ընթացքում տարածվել նրանց բնակեցրած ողջ տերիտորիայում, արևելյան կողմից ընդգրկելով Մշո դաշտը, որտեղով անցնում էր ուրարտական բնակչություն զբաղեցրած տերիտորիայի սահմանը։

Արմե-Շուպրիա ցեղային միության սոցիալական բնութագիրը: *Ցեղային միությունը, որն սկզբում կոչվում էր Մուշկերի թագավորություն, իսկ հետագայում՝ Արմե կամ Շուպրիա, կայուն միություն դուրս եկավ, մի հանգամանք, որ պայմանավորված էր Ասորեստանի և Ուրարտուի ագրեսիայի դեմ պայքարի անհրաժեշտությամբ։ Անդրադառնալով իրոկեզների ամերիկյան ցեղին, որը նոր տերիտորիա էր գրավել և գտնվում էր համանման պայմաններում, Ֆ. Էնգելսը գրում է. «Քանի որ այդ մարզը նրանք նոր էին նվաճել, ուստի այդ ցեղերի՝ ըստ սովորության միմյանց հետ միացած լինելը նրանց կողմից դուրս քշված ցեղերի հանդեպ՝ միանգամայն բնական էր»։ Այդ ցեղային դաշնակցությունը «իր ձեռք բերած ուժի գիտակցության վրա հենված, անմիջապես հարձակողական բնույթ ստացավ և... իրեն շրջապատող ահագին երկրամասեր նվաճեց, ըստ որում բնակիչներին մասամբ դուրս մղեց իրենց բնակավայրերից, մասամբ իրեն հարկատու դարձրեց»[30]։ Ինչպես տեսնում ենք, Ֆ. Էնգելսը խոսում է Արմե-Շուպրիա ցեղային միության կազմավորման պայմաններին համանման մի դեպքի մասին։*

*Սակայն Արմե-Շուպրիա ցեղային միությունը կազմած ցեղերը մ. թ. ա. XII—XI դարերում իրենց զարգացման մակարդակով իրոկեզներից բարձր էին կանգնած։ Իրոկեզների միությունը արյունակից ցեղերի միություն էր և ուներ ընդհանուր լեզու[31], իսկ Արմե-Շուպրիա միության մեջ մտնում էին ծագումով տարասեռ ցեղեր։ Դրանք էին մուշկերը, որոնց անվան տակ այդ շրջանում հասկացվում էին փռյուգական ցեղերը (միսիացիներն ու մյուսները) և ուրիշ ազգակից ու դաշնակից էթնիկական կազմավորումներ, ինչպիսիք էին ասորեստանյան այլ արձանագրություններում հիշատակվող ուրումեացիները, այսինքն*

---

[29] *Տե՛ս J. Markwart*. Die Entstehung..., *էջ 67*։

[30] Ֆ. Էնգելս, *Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 124*։

[31] *Տե՛ս նույն տեղում*։

հայերի հնդեվրոպական նախնիները՝ արիմները, ինչպես նաև կասկեցիները կամ աբեշլայցիները, որոնք պատկանում էին նախախեթական աբխազա-չերքեզական ցեղերին։ Հիշատակված մուշկերը, ուրումեցիներն ու կասկեցիները հանդիպեցին զանազան խուրրիական ցեղերի, որոնք կամ նրանց դաշնակիցները դարձան ընդդեմ ընդհանուր թշնամու՝ Ասորեստանի, կամ էլ ենթարկվեցին, դառնալով նրանց հարկատուները։ Ա յ ս պ ի ս ո վ, «Մուշկերի թագավորությունը» կամ Արմե-Շուպրիա ցեղային միությունը ոչ թե արյունակից, այլ ծագումով և լեզվով տարբեր ցեղերի միություն էր. դա տերիտորիալ միություն էր։

Պատմական զուգահեռները ցույց են տալիս, որ տերիտորիալ տեսակետից մոտ, բայց ծագումով և լեզվով տարբեր ցեղերի միության պայմաններում տարալեզվության նման արգելքը վերացնելու համար միության մեջ մտած ցեղերից մեկի լեզուն վերածվում է միջցեղային լեզվի[32]։ Մուշկերի ցեղային միության՝ «Մուշկերի թագավորության», մեջ միջցեղային հաղորդակցման այսպիսի միջոց է դառնում արիմներ-ուրումեցիների լեզուն, այսինքն ապագա հայերենը։ Այդ երևում է թեկուզ հետևյալ փաստից։ Վերոհիշյալ ցեղերի նվաճած տերիտորիան վաղուց ի վեր ասորեստանցիներին հայտնի էր Շուպրիա կամ Շուբրիա անունով, բայց այնուհետև, ասորեստանցիներն սկսում են այն կոչել նաև Ուրումու։ Հետագայում, մ. թ. ա. VIII դարից սկսած, երբ այդ տերիտորիան նվաճվում է և մտցվում Ուրարտու պետության կազմի մեջ, ուրարտական արձանագրություններում այն սկսում է կոչվել Արմե, Ուրմե, կամ Ուրմեինիուխի||Ուրմեինիունի։ Այս փաստը, ըստ երևույթին, վկայում է, որ հիշատակված ցեղերի մեջ, վերջին հաշվով, գերիշխող դիրք էին գրավել արիմները կամ ուրումեցիները, որոնց անունով էլ ուրարտացիները, մասամբ նաև ասորեստանցիները, սկսում են կոչել Շուպ-



Կիբելա դիցուհին, փռյուգական բարձրաքանդակից

32 Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, էջ 124։

*րիան։ Այստեղ մուշկերը ձուլվում են իրենց ազգակից արիմներին[33]։ Մուշկերը ևս, ուրեմն, հիմնականում հայերի հնդեվրոպական նախնիներն էին։ Այս տեսանկյունով պատմականորեն հիմնավորվում է այն կարծիքը, թե հայերի «սոմեխի» վրացական անվան հիմքում ընկած է «մեսխ»‖«մեխ» էթնիկական տերմինը, որը ասսուրական «մուշկի» և հայկական «մշակ» անվանման քարթվելականացված ձևն է։ Այն իր հաստատումն է գտնում նաև բանասիրական առումով[34]։*

*Այսպիսով, արմենների լեզուն ժամանակի ընթացքում դառնում է ցեղային միության միակ լեզուն։ Մյուս, գերազանցապես խուրրիական, ցեղերի լեզուները աստիճանաբար վեր են ածվում հայոց լեզվի տերիտորիալ բարբառների, և հայոց լեզուն, ավելի ու ավելի հարստանալով, տարածվում է Հայկական լեռնաշխարհի ներքին շրջաններում ապրող ցեղերի մեջ։ Ուրարտական պետության գոյացումից հետո այդ պրոցեսին մեծապես նպաստեց նվաճված երկրների բնակչության մասսայական վերաբնակեցումը պետության կենտրոնական շրջաններում, որ լայնորեն կիրառվում էր ուրարտացիների կողմից։*

**Թիգլաթպալասար Ա-ի արշավանքները դեպի Արմե-Շուպրիա ցեղային միությունը:** *Նորաստեղծ ցեղային միությունը, սակայն, երկար ժամանակ չունեցավ ներքին հանգիստ զարգացման և արտաքին անխափան ընդլայնման համար։ Նրա գոյությունը և հզորացումը մեծ անհանգստություն էր պատճառում ժամանակի հզորագույն տերությանը՝ Ասորեստանին։ Եվ ահա, մ. թ. ա. 1115 թվականին Ասորեստանում գահ բարձրացած Թիգլաթպալասար Ա-ը պատերազմներ է սկսում ընդդեմ Շուպրիայի, որը պոտենցիալ վտանգ էր ներկայացնում Ասորեստանի «բարբարոսական ծայրամասից» ոչ հեռու գտնվող կենսական կենտրոնների համար։ Իր տարեգրություններում Թիգլաթպալասար Ա-ը հայտնում է, որ իր գահակալումից կես դար առաջ, այսինքն մ. թ. ա. մոտավորապես 1170—1165 թվականներին մուշկերը գրավել էին Ալզի և Պուրուլումզի երկրները։ Հենց Թիգլաթպալասար Ա-ի գահակալության տարին մուշկերը, որոնց տակ, ինչպես տեսանք, պետք է հասկանանք, բուն մուշկերի հետ մեկտեղ նաև արիմ-արմենների և մի քանի այլ ցեղեր, վերսկսում են իրենց հարձակումները դեպի հարավ. 20.000 զորքով և 5 ցեղապետների գլխավորությամբ նրանք մտնում են Տիգրիսի աջ ափին գտնվող ասորեստանյան Կադմուխի երկի-*

33 *Մինչդեռ Հալիսի հովտում, որտեղ ապրում էր մուշկերի հիմնական մասը, նրանք պահպանել էին գերիշխող դիրքը. նրանց զբաղեցրած տերիտորիան՝ Փռյուգական թագավորությունը, ուրարտացիներն ու ասորեստանցիներն անվանում էին Մուշկու կամ Մուշկինի։*

34 *Առաջին անգամ այս կարծիքն առաջ քաշեց և հիմնավորեց Ն. Յա. Մառը։ Տե՛ս* (*Н. Я. Марр*, История термина „абхаз". Сборник статей Н. Я. Марра „О языке и истории абхазцов". М.—Л., 1938, *էջ 51։ Գ. Խալաթյանցի այն պնդումը* (*տե՛ս Г. Халатьянц՝* О некоторых географических названиях древней Армении в связи с данными Ванских надписей, „Древности Восточные. Труды Восточной комиссии Имп. Арх. Общ-ва", т. II, вып. II, *էջ 196*), *թե* someḫ-i *տերմինը ծագում է* Zuḫma (*նեսիտ-խեթերեն*), Suḫma *կամ* Suḫmu (*աքքադերեն*) *երկրի անունից, որը պաշտպանեցին Բ. Բ. Պիոտրովսկին և Գ. Ա. Մելիքիշվիլին, սակայն փաստերով չի հաստատվում։ Ասսուրական արձանագրությունների Սուխմե երկիրը տեղորոշվում է Արածանիի հովտում, Բալու քաղաքի շրջանում, որտեղ գտնվում էր Ասորեստանյան տերության սահմանները ներխուժած մուշկերի, այսինքն՝ հայկական ցեղերի թագավորությունը։*

րը, որից հարավ ընկած էին Ասորեստանի հիմնական կենտրոնները։ Նրանց դեմ դուրս եկած Թիգլաթպալասար Ա-ը Կադմուխում հաղթանակ է տանում և վերցնում 6000 գերի[35]։ Բայց Կադմուխի Ասորեստանին հպատակեցված բնակչությունը միանում է մուշկերի զորքին և հրաժարվում հարկ տալուց. Նրանց օգնության են գալիս նաև «քաբխի» լեռնցիները, այսինքն՝ լեռնաբնակ խուրրիները։



Ռազմիկները մարտակառքի վրա, բարձրաքանդակ Մալաթիայից

Նամե գետի (Տիգրիսի վտակներից մեկը) մոտ տեղի ունեցած ճակատամարտում Թիգլաթպալասար Ա-ն ջախջախում է հակառակորդի միացյալ ուժերը։ Գերիների թվում էր լեռնականների «թագավորներից» մեկը՝ Կիլի-Թեշուբը (Կալի-Թեշուբի որդին)։ Դրանից հետո Թիգլաթպալասար Ա-ը պաշարում է խուրրիական Ուրախինաշ ամրոցը Տիգրիսի վերին հոսանքի շրջանում (Urabi—Ուռեկ, Արածանիի հյուսիսային ափին) և նրա թագավորը՝ Խաթուխիի որդի Շադի-Թեշուբը, գերի է հանձնվում[36]։ Հաջորդ 1114 թվականին (մ. թ. ա.) Թիգլաթպալասար Ա-ը թափանցում է ավելի հեռավոր «շուբարիների (այսինքն՝ խուրրիների) երկիրը»՝ Ալզի և Պուրուլումզի, որոնք նույնպես հրաժարվել էին Ասորեստանին հարկ վճարել։ Այս արշավանքի ժամանակ խեթերի երկրի ան-

35 Տե՛ս АВИИУ, № 10, 1, 62.

36 «Խաթուխի» խուրրիերեն նշանակում է «խեթ». АВИИУ, 12, ծան. 17։

հնազանդ մարդկանց, որոնք իրենց ուժով գրավել են Շուբարտուի բնակավայրերը, այսինքն՝ կասկեր-աբեշլայցիների և ուրումեացիների 4000-անոց մի զորաջոկատ ծառայության է անցնում ասորեստանցիների մոտ։ Թիգլաթպալասար Ա-ի ուշ շրջանի արձանագրության համաձայն, ինքը վերաբնակեցնում է սրանց, իսկ թե ո՞ւր, հայտնի չէ։ Վերադարձին Ասորեստանի թագավորը նորից ավերում է Կադմուխի երկիրը։

Թիգլաթպալասար Ա-ի 1113 թվականի (մ. թ. ա.) ձեռնարկած արշավանքներից մեկը եղել է դեպի Եփրատի (Արածանիի և Եփրատի) հովտի երկրները Իշուվան (Իսուվա) և Դարիան[37]։ Այդ նույն ժամանակ արշավանք է ձեռնարկվում դեպի հարևան Ուրուատրի երկրները, որոնց այդ ժամանակ գլխավորում էր Սուգի երկիրը (այժմ՝ Ջոխ)։

Այսպիսով, Թիգլաթպալասար Ա-ը ոչ միայն ետ է մղում Արևմտյան Տիգրիսի հովտում հաստատված մուշկերի ու ազգակից ցեղերի գրոհները, այլև իր գահակալության առաջին երեք տարում կարողանում է իր իշխանությանը ենթարկել նրանց։ Կես դար առաջ Ասորեստանի տերության սահմանները ներխուժած մուշկերի, ուրումեացիների և կասկեացի-աբեշլայցիների ցեղերը մ. թ. ա. 1113 թվականին նվաճվում են և ժամանակավորապես դառնում Ասորեստանի հարկատուները։

**Հայ ժողովրդի ծագման փռյուգական վերսիան:** Կազմավորվող հայոց լեզվի նկարագրով էլ պայմանավորված է հունական պատմագրության մեջ առաջացած՝ հայ ժողովրդի ծագման փռյուգական վերսիան, որը կապված է հայ ժողովրդի հնդեվրոպական բաղադրիչի՝ արիմ-արմենների հետ։

Հայերենը դեռևս մ. թ. ա. VI—V դարերում այնքան մոտ էր փռյուգերենին, որ այդ բանը նկատում էին նաև կողմնակի դիտողները։ Ահա այս միջավայրում է առաջ գալիս հայերի ծագման փռյուգական վերսիան, ըստ որի փռյուգացիները եղել են հայերի ազգակիցները[38]։ Այդ վերսիան իր ժամանակ արտահայտել է Հերոդոտը, որը վկայում է, թե «Արմենները զինված էին փռյուգացիների նման և փռյուգական արտագաղթողներ էին (ἄποικοι)։ Սրանց երկուսի առաջնորդն էր Արտոքմեսը, որն ամուսնացած էր Դարեհի դստեր հետ»[39]։ Նման տեղեկություն է պահպանվել նաև Եվդոքսոս Կնիդացին (IV դար, մ. թ. ա.). «Իսկ արմենները ծագումով Փռյուգիայից են և նրանց լեզվում շատ բան փռյուգերենից է»[40]։ Հայերենի և փռյուգերենի հարազատության մասին է խոսում նաև Դիոնիսիոս Հալիկարնասացին (մ. թ. ա. I դար)։

Հայերի ծագման փռյուգական վերսիան, բացի լեզուների նմանությունից, հավանաբար ունեցել է նաև հետևյալ պատմական մեկնակետը։

Փռյուգացիների կենտրոն Գորդիոն քաղաքը գտնվում էր Սանգարիա գետի ափին, ներկայիս Անկարայից արևմուտք, որտեղ, ինչպես տեսանք, ապրում էին նաև հայերի հնդեվրոպական նախնիները։ Սրան կից Արգեոս լեռան շրջակայքը, որը հավանաբար, հայերի հնդեվրոպական նախնիների՝ արմենների

---

37 АВИИУ, № 10, III, 98, հավանաբար նույնն է, ինչ Դիրրիան, ուրարտ. Դիրյու-Դիրգու, Իշուվայից արևմուտք, համապատասխանում է հին հայկական Դե[ր]գիք-Դեգիք գավառին։

38 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 13։

39 Herod., VII, 73։

40 Տե՛ս ВДИ, 1947, № 3, էջ 274։

բնակավայրն էր, միաժամանակ բնակավայրն էր փռյուգացիների, որոնց ճընշման տակ էլ արմենները շարժվել են դեպի Հալիս գետի վերին հոսանքի շրջանը և դարձել կասկեացիների կամ աբեշլայցիների և հայասցիների հարևանները։

Եթե հայ էթնոսի սկզբնական կորիզը ապրելիս է եղել այն վայրերում, ուր հաստատվել էին փռյուգացիները, որոնք դուրս են մղում նրանց դեպի արևելք՝ Անտիտավրոսի լեռները, ապա սա կարող է հիմք ծառայած լինել Հերոդոտի այն պնդմանը, թե հայերը «փռյուգական արտադաղթողներ (ἄποικοι) են»[41]։

Սակայն դա դեռ չի նշանակում, թե հայերը փռյուգացիների ճյուղավորումն են։ Թեև հայերենն ու փռյուգերենն պատկանում են միևնույն թրակական կամ թրակա-փռյուգական ենթաճյուղին, դրանք ինքնուրույն լեզուներ են։ Թրակական հիմք լեզվից անջատվելուց հետո հայերենն ու փռյուգերենը զարգացման ինքնուրույն և տարբեր ուղիներ են թևակոխում։

**Ստրաբոնի տեղեկությունները արմենների ծագման մասին:** Հունական պատմական ավանդությունը մեզ հասցրել է հայերի ծագման նաև մի երկրորդ վերսիա, որ պահպանվել է վերոհիշյալ հեղինակներից ավելի ուշ ապրած Ստրաբոնի մոտ, սակայն իր էությամբ ավելի հին է, քան փռյուգական վերսիան։ Դա կարելի է կոչել «Թեսսալական վերսիա»։

Թեսսալական վերսիայի հեղինակներն են Թեսսալիայի Փարսալա և Լարիսա քաղաքներից դուրս եկած Ալեքսանդր Մակեդոնացու (336—323) զորահրամանատարներ Կիրսիլոս Փարսալացին և Մեդիոս Լարիսացին։ Այս հեղինակների գրվածքը մեզ է հասել Ստրաբոնի միջոցով (մ. թ. ա. 63—մ. թ. 21 թվականներ) և նրանք մեզ հայտնի են միայն Ստրաբոնի հիշատակություններից։ Ն. Ադոնցի կարծիքով Անտիգոնոսը (384—301) իշխանության գլուխ անցնելուց հետո հայոց թագավոր Արոանդեսի օժանդակությունն ապահովելու նպատակով նրա մոտ է ուղարկում երկու զորահրամանատարների՝ Կիրսիլոս Փարսալացուն և Մեդիոս Լարիսացուն, որոնք ժամանակին մասնակցել էին Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքներին[42]։

Կիրսիլոսն ու Մեդիոսը, անտարակույս, ձեռքի տակ ունեցել են Թեսսալիայում արմենների լինելու մասին պատմական մի ավանդություն, որը մեզ չի հասել։ Հայաստանում (հավանորեն Փոքր Հայքի թագավորությունում) լինելով, նրանք ուշադրություն են դարձրել Հայաստանի և իրենց հայրենի Թեսալիայի որոշ տեղանունների համահնչյունության վրա։ Նրանք ընդհանուր գծեր են գտել նաև հագուստի մեջ և այլն։ Արմենիայի էպոնիմ Արմենին Կիրսիլոսն ու Մեդիոսը կապում են արգոնավորդների առասպելի հետ և նրան վերագրում թեսալական ծագում[43]։ «Պատմում են,— կարդում ենք Ստրաբոնի մոտ,— որ Յասոնը, թեսալացի Արմենի հետ դեպի կոլխերի երկիրը նավելիս հասնում է, մինչև Կասպից ծովը... իսկ Արմենը,— ասում են, ծագում էր Արմենիոնից (սկզբնապես Օրմենիոն Թեսսալիայում), որ մեկն է Բիբեյդյան լճի մոտ՝ Փե-

---

41 *Herod.*, VII, 73։

42 *Տե՛ս N. Adontz*, Histoire d' Arménie, էջ 329։

43 Այս հիմնավորվում էր նաև նրանով, որ Իոլկոս նավահանգիստը, որտեղից սկսեցին իրենց ճանապարհորդությունն արգոնավորդները, գտնվում էր Թեսալիայում։



Խեթական հիերոգլիֆային գրության նմուշ

րնի և Լարիսայի միջև ընկած քաղաքներից. Նրա ուղեկիցներն էրբ բնակեցրել են Ակիլիսենեն և Սիսպիրիտիսը մինչև Կալաքեն և Ադիաբենե։ Արմենից էլ, ասում են, մնացել է Արմենիա անունը»[44]։ Այդ նույն հարցի մասին, մի այլ տեղ, Ստրաբոնը խոսում է հետևյալ կոնտեքստում. «Ալեքսանդրի արշավանքներին մասնակցած Կիրսիլոս Փարսալացու և Մեդիոս Լարիսացու ասելով, երկիրը կոչվել է Արմենիա Արմենի անունով։ Արմենի ուղեկիցներից ոմանք գրավեցին Ակիլիսենեն, որը մինչ այդ գտնվում էր սոփենների (ծոփացիների) իշխանության տակ, իսկ մյուսները բնակություն հաստատեցին Սիսպիրիտիսում մինչև Կալաքեն և Ադիաբեն, Արմենիայի սահմաններից դուրս»[45]։

Ն. Ադոնցը, Հ. Մանանդյանը, Գ. Ղափանցյանը ուշադրություն են դարձրել այս վերջին վկայության վրա, որը ճիշտ է արտացոլում պատմական իրականությունը[46]։ Ակիլիսենեն (Երզնկայի դաշտը)՝ հյուսիս-արևմուտքում և Սի(ս)պիրիտիսը (Շուպրիտիսը), Կալաքենն ու Ադիաբենը հարավ-արևելքում այն շրջօղակն էր, որի սահմաններում ուրարտական պետության կազմավորումից դեռ շատ առաջ տեղի էր ունենում արմենական ցեղերի տեղաշարժը Փոքր Ասիայից դեպի Հայկական լեռնաշխարհը։

Ինչպես տեսանք, հայերի ծագման Ստրաբոնի ընդունած վարկածում ևս Ակիլիսենեն (այսինքն՝ Հայասայի կենտրոնական մասը) հանդես է գալիս որպես հայերի նախնիների բնակության սկզբնական վայր։

Հայերի թեսսալական ծագման վերսիան արտացոլվել է նաև հայ հին գրականության մեջ։ «Աշխարհացույց»-ում Մակեդոնիայի նկարագրությանը նվիրված հատվածում մի վկայություն է պահպանվել այդ մասին։ Մակեդոնիայի երկրամասերը թվելիս հայ աշխարհագիրը հիշատակում է՝ «...զՄեծն Թեսաղիա, յորմէ Հայք»[47]։ Այս տեղեկությունը հեղինակը պիտի վերցրած լինի անտիկ շրջանի նույն գրականությունից, թերևս նույն Ստրաբոնից։

---

44 Strabo, XI, 4, 8։

45 Նույն տեղում, XI, 14, 12։

46 Տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 23, Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 25—26։

47 «Աշխարհացոյց» Մովսիսի Խորենացւոյ», Վենետիկ, 1881, էջ 17։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՍՐՈՐԴ

# ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ, ԿՐՈՆԸ ԵՎ ԱՐՎԵՍՏԸ ՆԱԽՆԱԴԱՐՑԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. ԿՐՈՆԱԿԱՆ ՀԱՎԱՏԱԼԻՔՆԵՐԻ ԵՎ ԱՐՎԵՍՏԻ ԾԱԳՈՒՄԸ

Նախնադարյան նյութական արտադրության, սոցիալ-տնտեսական ու պատմական հարաբերությունների առաջադիմությանն աընթեր ծագում, զարգանում ու կատարելություն է հասնում նաև տեղաբնակ ցեղերի հոգևոր կյանքը՝ գաղափարաբանությունը, կրոնն ու արվեստը՝ նախադասակարգային մշակույթի կարևորագույն այն բաղադրիչները, որոնց հիման վրա մ. թ. ա. I հազարամյակում, փոխադարձ կապի ու առընչության մեջ ձևավորվեցին նախ ուրարտական և ապա վաղ հայկական մշակույթի բարդ ու գեղեցիկ կառույցները։

Հին քարեդարյան մշակույթի նախասկզբնական զարգացման հարյուրհազարամյակների ընթացքում կենդանական աշխարհից հազիվ հեռացած մարդը չուներ հավատալիք, պաշտամունք, կրոն ու արվեստ։ Սրանց սաղմերը ձևավորվեցին միայն հին քարի դարի մուստյերյան փուլի վերջում, մեզանից մոտավորապես 50—35 հազար տարի առաջ, մայրական տոհմական համայնքի գոյության պայմաններում։

Մայրական համայնքի արյունակցական զորեղ կապերը, համատեղ բնակությունն ու միասնական կենսագործունեությունը, կին-մոր շաղկապող դերը և շատ այլ հանգամանքներ ծնում են տոհմի ընդհանուր ծագման ու միասնության գաղափարը, որը դառնում է նախնադարի գերիշխող ու ղեկավարող սկզբունքներից մեկը։ Մարդու առաջացման, կյանքի, մահվան, տոհմի ծագման ու ձևավորման իրական պատճառների ու հանգամանքների բարդությունը. հեռավոր նախնիների անհայտությունը, սերունդների հարատևումը և շատ այլ հանգամանքներ առաջ են բերում այն պարզունակ գաղափարը, թե տոհմը գոյություն է ունեցել ի սկզբանե անտի և սերել է իրենից առաջ գոյություն ունեցող որևէ կենդանուց։ Նախամարդու հասկացողությամբ կենդանին այնքան էլ չէր տարբերվում իրենից և այժմ էլ հետամնաց որսորդների շատ ցեղեր տոտեմ կենդանիներին «եղբայրներ ու քույրեր» են անվանում, «հյուրասիրում» են նրանց, ջանում են «սիրաշահել» ու քավել մեղքերը նրանց նկատմամբ։ Ահա այս ճանապարհով, սակավ առ սակավ, ձևավորվում է **տոտեմիզմը**՝ կրոնական մտածողության ամենավաղ ձևերից մեկը, որը կոչված էր այնքան մեծ դեր խաղալու նախնադարի հոգևոր կյանքում։ Տոտեմիզմի համաձայն յուրաքան-

չյուր տոհմ սերում է որոշակի տոտեմ-կենդանուց, բույսից կամ առարկայից։ Տոտեմ կենդանիները սրբացվում, պաշտվում էին, իսկ տոհմական համայնքները կոչվում էին պաշտվող կենդանու անունով։ Հայոց ազգագրության ու բանահյուսության մեջ տոտեմիզմի շատ վերապրուկներ են պահպանվել։ Նույնիսկ XX դարի սկզբներին Վանի, Մշո, Սղերդի և այլ վանքերում պահվում էին արու և էգ գոմեշներ, ցուլեր, կովեր, որոնք պաշտվում էին ամբողջ ժողովրդի կողմից[1]։ Բաղդատելով այս տվյալները անձնանունների ու տեղանունների հետ. Խ. Սամվելյանը գալիս է այն եզրակացության, որ նախնադարյան Հայաստանում, բացի կովի, ցուլի, գոմեշի տոհմերից, կարող էին գոյություն ունենալ նաև թռչունների ու միջատների անունների հետ կապված տոհմեր։

Մուստյերյան տոհմական համայնքի ձևավորման ընթացքում հետզհետե ձևավորվեց մեռյալների ու նախնիների պաշտամունքը: Պատահական չէ, որ այդ ժամանակաշրջանին են վերաբերում առաջին դամբարանային հուշարձանները։ Միջին Ասիայի Թեշիկ-Թաշ այրում հայտնաբերված երեխայի մի դերեզմանում աճյունը զետեղված էր այծի եղջյուրներից կազմված շրջանակի մեջ՝ արևելք-արևմուտք կողմնորոշմամբ, որ ենթադրել է տալիս մեռյալների ոգիների կապը արևի և լուսատուների հետ[2]։

Ավելի ուշ՝ ազիլյան շրջանում, նախնիների պաշտամունքը լիովին ձևավորվեց և ստացավ մոտավորապես այն բնույթը, որն այժմ դիտվում է հետամնաց ցեղերի ազգաբանության մեջ[3]։ Այս պաշտամունքի էությունն այն է, որ ազիլյան մարդիկ սրբազան քարայրներում պահում-պահպանում էին իրենց նախնիների ոգիները խորհրդանշող աստղային կամ մարդկային պատկերներով նախշազարդված կլոր գետաքարեր և նրանց հրաշագործ ունակություններ էին վերագրում։ Հայաստանում Ազիլյան շրջանի հոգևոր մշակույթի նման հուշարձաններ առայժմ հայտնի չեն, սակայն ազգագրության և բանահյուսության մեջ պահպանված նյութերը ցույց են տալիս, որ ձևով ու բովանդակությամբ նույնատիպ, գուցե և նույնքան հին պատկերացումներ գոյություն են ունեցել նաև մեզ մոտ։ Ինչպես ստորև կտեսնենք, մեր հեռավոր նախնիները ոգու (հոգու) առկայությամբ ու բացակայությամբ (հեռացմամբ) էին բացատրում կյանքը, մահը, հանդերձյալ աշխարհի գոյությունը[4]։

Տարերքի խոլ ուժերի դեմ անօգնական, տագնապող ու սարսափահար մարդը, կյանքի խրթին երևույթներն ու անհասկանալի իրավիճակները բացահայտելու համար ամբողջ կենդանի բնությունը լցրեց սփական երևակայությամբ ստեղծված գերբնական ոգիներով։ Առաջ եկավ ոգեպաշտությունը (անիմիզմը՝ լատիներեն անիմուս—ոգի բառից), նախնադարյան կրոնի ամենավաղ ու էական ձևերից մեկը։

Հեռավոր անցյալում կրոնական մտածողության երկու այլ ձևեր էլ կային, որոնցից մեկը կոչվում է բնապաշտություն, մյուսը՝ կախարդանք կամ հմայություն: Բնության նկատմամբ սնոտի վախն ու սարսափը ստիպում էր նախա-

---

1 Տե՛ս Խ. Սամուելյան, Հին Հայաստանի կուլտուրան, հատ. Ա, Երևան, 1931, էջ 169—176.

2 Տե՛ս А. П. Окладников, Утро искусства, Л., 1967, էջ 26։

3 Տե՛ս J. Maringer, The Gods of prehistoric man, London. 1960. էջ 127—131։

4 Տե՛ս M. Abeghian, Der armenische Volksglaube, Leipzig, 1899, էջ 25։

մարդուն դիմելու նրա «ողորմածությանը», երկրպագելու արևին, հողին, ջրին, զոհեր մատուցանելու նրանց։ Այդ նույն ակունքներից էր ծնվում հմայությունը, որով իբր հնարավոր էր ազդել կենդանի բնության վրա։ Նախնադարյան մարդիկ հավատում էին, որ վիրավոր գազանի պատկերումը օգնում է որսի հաջողությանը։ Կենդանուն կանխապես կախարդելու համար՝ լերկ ժայռերի մակերեսներին ու քարայրներում, նրանք նկարում, փորագրում, քանդակում էին հետապնդվող, նետահարվող գազանների, այս պատկերների մոտ ծիսական պարեր ու հմայություններ էին կատարում։ Ինչպես ստորև կտեսնենք, նախնադարյան Հայաստանը շատ հարուստ էր արվեստի նշված տիպի հուշարձաններով։

Կրոնական մտածողության այս ձևերի հետ անքակտելիորեն կապված էր նաև նախնադարյան արվեստի զարգացումը։ Սակայն ի տարբերություն կրոնի, արվեստի ծագումը կախված էր նախնադարի աշխատանքային պրոցեսներից. մարդու ֆիզիկական ու մտավոր ունակությունների, դիտողականության, երևակայության, ճանաչողականության, մայր բնությունից գաղտնիքներ կորզելու հնարավորություններից։ Նախնադարում արվեստի համընդհանուր «ուսումնարանը» նախ և առաջ մայր բնությունն էր՝ իր առատ բուսականությամբ ու կենդանական աշխարհով, սպիտակաթույր սառցասարերով, երկնի աստղային բույլերով, երփներանգ ջրերով և այլն։ Մարդու «ուսուցիչը» այստեղ աշխատանքային պարզունակ պրոցեսն էր, իր միալար կրկնվող ռիթմիկ շարժումներով, հանապազօրյա փորձի կուտակմամբ։

Ահա այս երկու նախապայմաններն էին, որ աննահանջ հետևողականությամբ օժտում էին նախամարդուն գեղեցկի ու ձևի, չափի ու համաչափության, գույնի ու երանգի զգացմամբ։

Հին քարի դարի միջին շրջանում նախնադարյան որսորդները խորապես գիտեին արդեն ոչ միայն տարբեր քարատեսակների ֆիզիկական հատկությունները, այլև ծավալային չափումները։ Քարի անմշակ բեկորներից նրանք կարող էին ստանալ բազմապիսի ծավալի գործիքներ ու զենքեր՝ ինչպես մեր ժամանակներում միևնույն ժայռաբեկորից տարբեր քանդակներ պատրաստող արձանագործը[5]։

Քարի մշակման վարպետության հետ միասին, մուստյերյան ժամանակներում հանդես եկան դեղարվեստական գործունեության նաև այլ տեխնիկական նախադրյալներ, մշակվեցին ձևի, ռիթմի, սիմետրիայի հասկացություններ, որոնք բոլոր արվեստների տարրական, բայց կարևոր բաղադրիչներն են։ Մերձերևանյան աշել-մուստյերյան ժամանակների քարայրներում հայտնաբերվել են նրբին գործիքների ու զենքերի հիասքանչ նմուշներ, ինչպես նաև մշակված ոսկրե առարկաների բեկորներ, որոնք զարմացնում են պատրաստման գեղեցիկ արվեստով։ Այս քարայրներում հայտնաբերված գործիքների մի քանի տիպերը կարող էին ծառայել նախնադարյան փորագրիչներին եղջյուրը, ոսկորը, փայտը մշակելու և փորագրելու համար։

Հին քարի դարի վերջերին, մշակույթի օրինյակ-մադլենյան փուլերում, մեզանից մոտավորապես 35—15 հազար տարի առաջ, Արևմտյան Եվրոպայում և այլուր նախնադարյան արվեստը ծաղկում ապրեց։ Այն իր զարգացման բարձ-

---

[5] Տե՛ս *А. П. Окладников*, Утро искусства, էջ 31։







էնեոլիթյան ժայռանկարներ Գեղամա լեռներից

*րակետին հասավ մադլենյան փուլում (մ. թ. ա. 15—10 հազար տարի առաջ), երբ գեղարվեստական տեխնիկան երևաց իր բոլոր տեսակներով՝ կլոր ու հարթ քանդակներով, գեղանկարով, գծանկարով, բազմագույն որմնանկարով, որոնք բոլորն էլ բարձրացված էին գեղագիտական հավասարապես փայլուն մակարդակի*[6]։

*Նկատի առնելով Հայաստանի քարեդարյան այրերի առանձնահատկությունները, դժվար է հուսալ, որ նրանցում կգտնվեն գունազարդ գեղանկարի ուշագրավ նմուշներ։ Սակայն Հրազդանի կիրճի վերը նշված քարայրների պեղումները կարող են ընձեռել ոսկորի և քարի վրա կատարված գծանկարներ, կավե ու ոսկրե արձանիկներ։*

*Առանց հին քարեդարյան արվեստի որոշակի մակարդակի առկայության դժվար է պատկերացնել Հայաստանում ուշ նեոլիթյան և հետագա ժամանակների արվեստի բուռն առաջընթացը։*

## 2. ՆԵՈԼԻԹ-ԷՆԵՈԼԻԹՅԱՆ ԱՐՎԵՍՏԸ ԵՎ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ

**Ժայռապատկերներ:** *Ինչպես տեսանք նախորդ գլուխներում, միջին քարի դարից հետո նախնադարյան հասարակությունը բնության պատրաստի մթերքների յուրացումից անցնում է աշխատանքի ավելի բարդ ձևերի ու թևակոխում արտադրող տնտեսության ոլորտները, սկսում է սակավ առ սակավ վերափոխել բնությունը իր նպատակների համար, ավելի բարդ հարաբերությունների մեջ է մտնում շրջապատող կյանքի տարբեր երևույթների հետ*[7]։ *Այս հանգամանքը մեծ փոփոխություններ է առաջացնում նաև արվեստի մեջ։ Հին քարեդարյան ժամանակների անմիջական պայծառ ընկալումները հետզհետե տեղի են տալիս, սակայն նոր դարաշրջանի մարդը սովորում է ավելի խորը՝ բազմազանության ու փոխադարձ կապերի մեջ ընկալել իրականությունը։ Այս շրջանի արվեստի համար բնորոշ է դառնում զանազան առարկաների նախշազարդումը, պատկերների պայմանականացումը, ոճավորումը, պատմողական բարդությունը, որը հանգեցնում է ամբողջ գործողություններ և երևույթներ ձևավորելու անհրաժեշտությանը*[8]։

*Ուշ նեոլիթ-էնեոլիթյան փուլերի հայաստանյան խեցեղենի վրա, մ. թ. ա. VI—IV հազարամյակներում, երևում է ոչ միայն կտավից, հյուսվածքից, խսիրից կավի վրա արտատպված նախշը, այլև բազմագույն սիմետրիկ զարդանախշը։ Հորիզոնական ու ուղղահայաց ուղիղ և ալիքավոր գծերի, կետերի, շեղանկյունիների և երկրաչափական այլ պատկերների միջոցով խորհրդանշում էին բնության տարբեր երևույթներն ու ժամանակի կրոնական պատկերացումները։ Նախշազարդ խեցեղենի հետ միասին հանդես են գալիս նոր տիպի կանացի և կենդանական պայմանական արձանիկներ՝ կավից ու քարից։*

*Կենդանական պատկերների հետ մեկտեղ նշանակալից դեր են կատարում մարդկային կերպավորումները որսի և զինական ընդհարումների տեսա-*

---

[6] *Տե՛ս Graziosi*, Die Kunst der Altsteinzeit, Stuttgart, 1956, *էջ 21—22։ А. П. Окладников*, Утро искусства, *էջ 30, 50—51։*

[7] *Տե՛ս* «Всеобщая история искусства», т. I, М., 1956, *էջ 28։*

[8] *Տե՛ս նույն տեղում, էջ 31—32։*

րաններում։ Մարդկանց, մարդկային խմբերի գործունեությունն այժմ դառնում է արվեստի կենտրոնական թեման։ Այս նոր խնդիրները առաջ են բերում գեղարվեստական լուծման նոր ձևեր՝ առանձին կերպարների (պատկերների) սյուժետային ներդաշնակություն, զարգացած կոմպոզիցիա, տարածությունն արտահայտելու պարզունակ փորձեր[9]։

Հայկական լեռնաշխարհը շատ հարուստ է նշված տիպի հուշարձաններով։ Դրանք բազմազան, բազմաբովանդակ և միանգամայն ինքնատիպ ժայռապատկերների կուտակումներ են, որ տարածված են Արագածի փեշերից մինչև Հայկական Տավրոսի լանջերը, մինչև Ասորիք-Պաղեստինի և Իրաքի սահմանները։ Ժայռապատկերների առանձնապես մեծ խմբեր կան Արագածի փեշերին, ինչպես նաև Սևանա լճի ավազանը եզերող Գեղամա, Վարդենիսի, Վայոց ձորի և Սյունյաց լեռնագագաթների մոտ[10]։ Սրանց մեջ աչքի են ընկնում Գեղամա լեռների պատկերախմբերը, որոնք տեղադրված են բնական գոգավորությունների քարակառկառների վրա և հանդիսանում են նախնադարյան որսորդ-անասնապահների նվիրական սրբատեղիներ, հին արվեստի և պաշտամունքի «տաճարներ»։

**Որսորդական տեսարանների արվեստը, որսորդական հավատալիքները:** Պատկերների մեջ աչքի են զարնում նախ և առաջ կենդանիների ամենատարբեր տեսակների մեծ քանակն ու բազմազանությունը։ Դրանք են զուբրը, վայրի ցուլը (կամ կովը), կովկասյան ազնիվ եղջերուն, հսկա եղջերուն, իշայծյամը, կխտարն ու ջեյրանը, ձին (շատ ուշ), վայրի էշը, առյուծը, գեղարդը, վարազը, լուսանը, ընձառյուծը, մի շարք մանր կենդանիներ, շների տարատեսակները, սողունների զանազան տիպերը, բադը, սագը, արագիլը, կարապը, կաքավը և այլն։ Այս կենդանիների մի մասը այժմ իսպառ անհետացել է Հայաստանից և նրանց պեղածո մնացորդները հանդիպում են տասնյակ հազարամյակներ առաջ նրանց աղետային անկման հետևանքով գոյացած կենդանական գերեզմանոցներում[11]։

---

9 Տե՛ս նույն տեղում, էջ 32։

10 Թվարկված հուշարձանները մասամբ հրատարակված են Լ. Ա. Բարսեղյանի («Նոր նյութեր Հայաստանի հնագույն արվեստից», ՊԲՀ, 1965, № 3, էջ 147—160), Գ. Կարախանյանի, Պ. Սաֆյանի («Սյունիքի ժայռապատկերները», «Սովետական արվեստ», № 1, Երևան, 1967, էջ 31—38 և «Հայաստանի հնագույն պատմության նորահայտ հուշարձաններ» ՊԲՀ, 1969, № 1, էջ 275—283) և Հ. Մարտիրոսյանի («Ժայռապատկերների դասակարգման մի քանի տվյալներ»), ԼՀԳ, 1970, № 9, էջ 54—70 և «Հայաստանի նախնադարյան մշակույթի նոր հուշարձաններ». ՊԲՀ, 1969, № 3, էջ 191—208) կողմից։ Գեղամա լեռների ժայռապատկերների առաջին խումբը հայտնաբերել է երկրաբան Ա. Պ. Դեմյոխինը, Պայտասար (Նալ-Թափա) գագաթի ստորոտին։ 1964—65 թվականներին այդ պատկերները պատճենահանվել են ճարտարապետ Ս. Բ. Պետրոսյանի կողմից, Ս. Հ. Սարդարյանի հանձնարարությամբ, և հրատարակվել վերջինիս գրքում («Նախնադարյան հասարակությունը Հայաստանում», Երևան, 1967, էջ 113—122)։ Այնուհետև ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի հանձնարարությամբ Ս. Բ. Պետրոսյանը հայտնաբերել է ժայռապատկերների տասնյակ նոր կուտակումներ, որոնք տեղում հանգամանորեն ուսումնասիրվել և 30 նոր խմբերով համալրվել կոմպլեքսային արշավախմբի կողմից։

11 Զորրորդական ֆաունային վերաբերող տվյալները մեզ սիրահոժար հաղորդեց հնէակենդանաբան Ս. Կ. Մեժլումյանը։ Տե՛ս նաև նույն հեղինակի «О распространении зубра в бассейне оз. Севан», «Ученые записки Ереванского Госуниверситета», 1968, № 2.





Այծերի ճոտ և կռվող այծեր Գեղամա լեռների ժայռապատկերներից։ Վաղ և միջին բրոնզի ժամանակաշրջան

Հիշյալ կենդանիների մի զգալի մասը ներկայացված է որսորդական տեսարանների մեջ, որպիսիները շատ բնորոշ են նաև Եվրոպայի, Ասիայի ու Աֆրիկայի նեոլիթ-բրոնզեդարյան նույնատիպ հուշարձանների համար։ Որսորդների պատկերներն այստեղ ներկայացված են ինչպես մերկանդամ, շարժուն ու բնորոշ ձևերով, այնպես էլ զգեստավորված, տարբեր տիպի գլխանոցներով, հազվադեպ՝ նույնիսկ բարձրաքիթ կոշիկներով, կենդանակերպ ու թռչնակերպ դիմակներով։ Նրանք զինված են փոքր, մեծ կամ ձևավոր (հազվադեպ) աղեղներով, մահակներով, նիզակներով, փոկերով։ Որոշ պատկերներում ցանցեր ու փոսավոր պարզունակ թակարդներ են արված։ Առանձնապես մեծ թիվ են կազմում զուբրերին, վայրի ցուլերին, եղջերուներին կամ նրանց փոքրիկ հոտերին հետապնդող միայնակ, կամ զույգ որսորդների ու շների նկարները։ Հաճախ միայնակ որսորդը վայրի ցուլի կամ կենդանիների մեծ հոտերի դեմ հանդես է գալիս միայն պարանով, կամ նետ ու աղեղով զինված։ Սակայն հանդիպում են նաև շքեղ ու դինամիկ մեծ կոմպոզիցիաներ՝ տասնյակ կենդանիներով, որսորդների ու շների բազմությամբ՝ կենդանիների հնարամիտ շրջափակման ու որսորդական կանխամտածված գործողությունների հաջորդաբար կապակցված տեսարանների մեջ, ուր ներկայացված են խուճապահար, գլխապատառ փախչող, վախից քարացած, վիրավոր ու սպանված, կամ ընդհակառակը, կատաղի, հարձակման պատրաստ կենդանիներ։

Նման պատկերներում շատ հաճախ բոլոր կենդանի արարածները ներկայացված են տպավորիչ դինամիկայի, շտապ գործողության բնորոշ շարժումների մեջ, գեղագիտական հաճույք պատճառելով դիտողին։ Որսորդի կողմից հետապնդվող եղջերուների՝ փարթամ ու շքեղ պոզերի տակ շարժվող հոտերը հաճախ թավ անտառի տպավորություն են թողնում, իսկ ճյուղատարած ընդհանրապատկերի մեջ հազիվ են նշմարվում որսորդն ու շունը։

Բոլոր այս պատկերներն այնքան տիպական, բնորոշ ու կոնկրետ են որսորդ-անասնապահական կենցաղի համար, որ կարող էին ռեալ իրողություններ վերարտադրող «կտավներ» թվալ։ Սակայն նրանցում ամենուրեք հանդիպող արևի, լուսնի, երկնային այլ մարմինների երկրաչափական սիմվոլներն ու նշանագրերը, մարդակերպ աստվածների, ֆանտաստիկ կենդանիների, տղամարդկանց ու կանանց պատկերները վերջնականապես բացահայտում են որսորդական տեսարանների անիրական, կրոնական ու հմայական բնույթը։ Սրանց գլխավոր էությունն այն է, որ նմանողության հմայանքի միջոցով նախնադարյան որսորդը ձգտում է հասնել իրականին, օգնության է կանչում հեռավոր ու մոտավոր նախնիներին, որոնք ապրում էին երկնակամարում, հիշվում առասպելների մեջ իբրև քաջ որսկաններ ու հմուտ անասնապահներ։ Օգնության էին կանչվում նաև հովանավորող ոգիներն ու աստվածները՝ բնության զորավոր ուժերը։ Այդ պատկերացումների հետ են կապված որսորդական արարողություններն ու ծիսական պարերը, որոնք մեծ քանակությամբ և բացառիկ ուժով են ներկայացված Գեղամա ժայռապատկերներում և իրենց որոշակի զուգահեռներն ունեն Ասիայի, Աֆրիկայի ժայռագրերում, նախնադարի կյանքով ապրող այժմյան որսորդական ցեղերի ազգագրության մեջ։ Լանների ժամանակակից ցեղերը որսորդական գաղտնի ծեսերի, արարողությունների ու զոհաբերությունների համար այսօր էլ շարունակում են նման պատկերներ փո-

*բագրել որսի գնալուց առաջ։ Նրանք նվերներ ու զոհեր են մատուցում նույնիսկ «նախապատմական» ժայռապատկերներին ու իրենց զենքերի վրա փորագրում այն կենդանիների պատկերները, որոնց ուզում են սպանել*[12]*։*



Գեղամա լեռների ժայռապատկերներ, վաղ և միջին բրոնզի ժամանակաշրջան

*Հայաստանի բարձրադիր շրջաններում ամենուրեք հանդիպող նման տեսարաններն իրենց կրոնա-պաշտամունքային հմայական բնույթով ընդգծում են որսորդության զգալի դերը նախնադարյան տնտեսության զարգացման երկար ու ձիգ հազարամյակների ընթացքում։ Պատահական չէ, որ Գեղամա լեռներում պատկերված վայրի կենդանիների՝ եղջերուի, կխտարի, զուբրի, ընձառյուծի, այծի, աղվեսի, կաքավի, բադի, սագի, կարապի պեղածո ոսկրային մնացորդները հանդիպում են Արարատյան դաշտի մ. թ. ա. V—I հազարամյակների բնակատեղիների պեղումների ժամանակ*[13]*։*

*Որսորդական տեսարանների ամենաբնորոշ ու առանձնահատուկ կողմն այն է, որ նախնադարյան որսորդը հաճախ ձգտում է չսպանել կենդանուն, առանձնացնել, խնայել ձագուկներին, նրանց որսալ մահակի օգնությամբ, պարանով, անզեն ձեռքով, թակարդով և այլն։ Նման պատկերների մեջ դրսևորվում է մարդու վտանգավոր ու դժվարին պայքարը կենդանիների ընտելացման, բուծման, անասնապահություն ստեղծելու դարավոր ուղիներում, երբ նախնադարյան որսորդ-անասնապահը դիմում է ոչ միայն իր հմտությանը, գիտելիքներին, հնարամտությանը և պարզունակ տեխնիկային, այլև նախնիներին, ոգիներին, աստվածներին, կախարդանքի միջոցներին և այլն։ Գեղամա ժայռապատկերների մի զգալի խումբ պատկերում է փոկակապի վրա պահվող, առջևի ու ետևի ոտքերը իրար կապած կենդանիների կամ նրանց հոտերն առաջնորդող կապկպած ներինների, անասուններին հսկող մեծահասակ տղամարդկանց, մանչուկների ու պահապան շների կամ կենդանիներին՝ փոկերի օգնությամբ, մռութից, մորուքից, պոչից, պոզից քարշ տվող մարդկանց։*

Պտղաբերության պաշտամունք: *Կրոնա-պաշտամունքային, հմայական բնույթի նույնօրինակ մի քանի կոմպոզիցիաներում պատկերված են նաև հզոր երկնային ցուլեր՝ բերանից ժայթքող ջրի շիթերով։ Նման ցլագլուխ հարթա-*

---

12 *Տե՛ս J. Maringer*, The Gods of prehistoric man, *էջ 137—138։*

13 *Տե՛ս С. К. Межлумян*, Млекопитающие эпохи бронзы на территории Армении *(թեկնածուական դիսերտացիայի ավտոռեֆերատ)*, Ереван, *1963։*

քանդակներ կան նշանավոր վիշապ քարարձանների վրա, որոնք կարող են մեկնաբանվել իբրև տարերքի ու պտղաբերության գաղափարը մարմնավորող հուշարձաններ։



Ուշ բրոնզի ժամանակաշրջանի ժայռապատկերներ Գեղամա լեռներից

*Պտղաբերության գաղափարն ու պաշտամունքը ուղղակիորեն արտահայտող շատ պատկերներ էլ կան, որոնց մեջ ներկայացված են ձագերին սնող մայր կենդանիներ, ծնողներից ու ձագերից կազմված խմբեր, անասունների արգասավորման ու բեղմնավորման հմայական գործողություններ՝ տղամարդկանց ու կանանց, արևային, կայծակնային աստվածությունների, աստղանշանների, պատկերագրերի միջավայրում։*

*Այսպիսով, վերը հիշատակված ժայռապատկերները, որոնց կրոնա-պաշտամունքային բնույթը անուրանալի է, նոր լույս են սփռում Հայկական լեռնաշխարհի նեոլիթ-էնեոլիթյան ժամանակաշրջանի տեղաբնակների արվեստի ու մշակույթի մինչև օրս անհայտ կողմերի վրա։*

**Տիեզերական պատկերացումներ**[14]։ *Տնտեսական ամենագործնական կարիքներից ելնելով, նախնադարյան հովիվն ու երկրագործը դառնում էին աստղային երկնքի, գետերի մակընթացության ու տեղատվության, կլիմայական փոփոխությունների առաջին դիտողներն ու պարզունակ «ուսումնասիրողները», որոնք այդ երևույթները մեկնում էին յուրովի՝ պայծառ երևակայության*

---

14 *Տիեզերական պատկերացումների և այլ հատվածների շարադրանքի համար օգտագործված է Հ. Ռ. Իսրայելյանի աշխատությունը՝ «Ուշ բրոնզի դարի պաշտամունքն ու կրոնը Հայաստանում» (ձեռագիր)։*

թևով, գեղեցիկ լեգենդների ու առասպելների մեջ։ Այդ պատճառով էլ նրանց կողմից ստեղծված ժայռապատկերներից շատերը ուղղակիորեն կապված են աստղային երկնքի, արևի, լուսնի և լուսատուների, տարերքի այլ աստվածների ու նախնիների պաշտամունքից բխող առասպելների և լեգենդների հետ, որոնց մի զգալի մասը հասել է հայ ժողովրդական բանահյուսության ներկա փուլին։ Գեղամա նախնադարյան սրբատեղիներում շատ են հանդիպում երկրաչափական ձևի փորագրություններ, որոնք պատկերում են արևը, լուսինը, կայծակը, աստղերը, ինչպես նաև աստղային համակարգերի գաղափարը կրող նմանօրինակ նշանների ամբողջական կոմպլեքսներ։

Արևը պատկերող նշանները հաճախ ճառագայթավոր անիվի ձև ունեն։ Արև-անիվի նկարագիրն էլ հեշտությամբ կապվում է սայլի, կառքի, մարտակառքի ու քաշող անասունների պատկերացման հետ։ Այդ պատճառով էլ հնարավոր է, որ Գեղամա ժայռագրերում և այլուր հանդիպող զանազանակերպ սայլերի պատկերները կապված լինեն արևի պաշտամունքի հետ, քանի որ նրանց քաշող ցուլերն ու շրջապատի այլ կենդանիներն էլ ոչ այլ ինչ են, եթե ոչ երկնային լուսատուների խորհրդանիշներ։

Գեղամա ժայռապատկերներում երկնակամարի ու լուսատուների պաշտամունքը հաճախ կապվում է նաև թռչունների հետ։ Աստղային համակարգ ներկայացնող ժայռապատկերներից մեկի կենտրոնում արևը պատկերված է ճաճանչանիվի ձևով, վրան մի խոշոր թռչուն, կտուցը դեպի «հրավառ» գունդը։

Պատկերների մի այլ խումբ արտահայտում է ամպրոպ-կայծակի կամ տարերքի երևույթը։ Դրանք առանձին կանգած այծեր են, իրանի վրա, եղջյուրների միջև կամ գլխավերևում փորագրված խաչերով, ճանկախաչերով և որ գլխավորն է՝ շուրջանակի դասավորված գնդիկներով կամ երկարուկ ճառագայթներով, որոնք մեջքից արձակվող սլեծերի (կայծերի) տպավորություն են թողնում։ «Պեծավոր» այծերի այս պատկերները կարծես դիտմամբ արված են հայ ժողովրդական «ինքը էծ, մեջքը պեծ» հանելուկը պատկերազարդելու համար։ Հանելուկը կայծակի երևույթի լակոնիկ մեկնաբանումն է[15]։

Մեր նախնիները կենդանիների կերպարներով պատկերում էին ոչ միայն արևը, լուսինն ու կայծակը, այլև ողջ աստղազարդ երկինքը կամ տիեզերքը։

Գեղամա բազմաթիվ պատկերախմբեր ունեն իրենց աստեղային զուգորդները, որոնք հավաստում են միակերպ կամ զանազանակերպ կենդանիների լուսատու լինելու հանգամանքը։ Այդպես էին պատկերում երկնակամարը նաև հին հայերը։ «Ճերմակ քոլոզով քուրդը,— ասում է հանելուկը,— մի սուրու (հոտ) ոչխար կուշտը, զոր-գիշեր աշխրքին կաշե»[16]։ Այստեղ ոչխարները պատկերվում են իբրև լուսատուներ, իսկ քուրդը (հովիվը)՝ իբրև լուսին։

Ինչպես վերը բերված հանելուկի մեջ, այնպես էլ նախնադարյան ժայռապատկերներում կենդանիների հոտերի հետ միասին հանդես են գալիս մարդակերպ, խոշոր ընդգծված պատկերներ, լայն տարածած թևերով մատների ճառագայթավոր բացվածքով, երբեմն ամբողջությամբ ճառագայթ-կայծակների հրացոլքի մեջ վերցված, որ մատնում են նրանց արևի, լուսնի կամ կայ-

---

15 Տե՛ս Ս. Հարությունյան, Հայ ժողովրդական հանելուկներ, Երևան, 1965, էջ 20։
16 Նույն տեղում, էջ 10։

*ծակի աստվածներ լինելու հանգամանքը։ Երկնային նշված աստվածությունները ժայռապատկերներում հաճախ հանդես են գալիս միասին, ինչպես հայկական հանելուկների մեջ արևն ու լուսինը պատկերացվում են իբրև «քիր ու ախպեր» օրապտույտ հերթափոխության մեջ։ Աստվածային այս կերպարներից շատերը ներկայացված են շեշտված առնանդամներով, նույնիսկ երկիրը բեղմնավորելու հմայական գործողության մեջ։ Մի շարք այլ դեպքերում արևի, լուսնի, կայծակի մարդակերպ աստվածությունները հանդես են գալիս իբրև կենդանիներին հովանավորող, երկրագործությունը արգասավորող ուժեր, որոնց զուգանմանները եվրոպական ժայռապատկերներում պատկերվում են մանգաղը ձեռքին։ Կրոնա-պաշտամունքային առումով խորապես իմաստավորված այս պատկերների նշանակությունն այնքան մեծ էր, որ նրանք հարատևում են մինչև ուշ բրոնզի դարի և վաղ երկաթի ժամանակաշրջանի արվեստը և զարդարում Դվինի մ. թ. ա.* IX—VIII *դարերի սրբազան խեցեղենի պատերը, այնուհետև տարածվում ուրարտական գլիպտիկայի և անտիկ շրջանի արվեստի մեջ։*

**Երևակայական էակներ և նախնիների պաշտամունք:** *Հայաստանի ժայռապատկերներում մեծ թվով են ներկայացված տիեզերական պատկերացումների հետ կապված գերբնական երկգլխանի օձեր, հիդրաներ, վիշապներ, վիշապաքաղեր և այլ երևակայական արարածներ, որոնք հանդես են գալիս նաև առասպելների, հանելուկների, հեքիաթների մեջ որպես վիշապներ, «իմաստուն օձեր», վիշապասպան հերոսներ ու աստվածներ։ Շատ ժայռապատկերներ իրենց զուգահեռներն են գտնում կոբանյան կացինների, ինչպես և Ամիրանի քաջագործությունները պատկերող դրվագների, Արտավազդի ու Վահագնի առասպելների մեջ։ Վարդենիսի հսկայածավալ ժայռապատկերներից մեկն, օրինակ, նվիրված է արևի և ամպրոպամարտիկ աստվածների պայքարին։ Այստեղ ներկայացված երկրաչափական պատկերների երեք խմբերը կազմված են մեծ ու գեղեցիկ արևային նշաններից, խաչերից, կիսալուսիններն ու աստղերը ներկայացնող բազմաթիվ կիսագնդաձև փոսիկներից։ Սրանցից ցած տեղադրված է մի սքանչելի կոմպոզիցիա, որը կարծես երկրաչափական սիմվոլների առասպելական բացահայտումը լինի։ Այստեղ հանդես է գալիս արևի աստվածը՝ անիվի, ձիու և կիսալուսնի հետ։ Նրա դիմաց կանգնած են կայծակի աստվածությունները՝ հսկայամարմին օձ-կայծակների խառնիխուռն պատկերներով, որոնք այլաբանորեն ներկայացնում են աստվածների պայքարը։ «Վարդենիսյան աստվածների» որոշ ատրիբուտներն ու ֆունկցիաները պահպանվել են հայկական Վահագն ու Միհր աստվածների, Սասնա հերոսների կերպարների մեջ, որոնցից ոմանք ահեղաձայն կայծակ-որոտի հատկանիշներ ունեն (Սանասար, Բաղդասար), շատերը՝ արևի ու ծովի հետ առնչվող ջրածին-հրեղեն ձի ու թուր կեծակի, ոմանք վիշապասպան են (Վահագն), ոմանք պատկերվում են օձագալար կայծակները բռնած և ճառագայթավոր գլխանոցով (Միհր)։*

*Սրանցից շատերը արև-կայծակի աստվածներ են, կիսաաստվածային ու կիսամարդկային կերպարներ, միևնույն ժամանակ կազմավորվող հայ ժողովրդի մեջ մտած առանձին ցեղերի և տոհմերի «լուսատու» նախնիներ, ինչպես հետագա ժամանակների առասպելական Հայկ նահապետն էր ներկայաց-*

վում իբրև նախնի, իբրև քաջ որսկան, «քաջագանգուր խայտակն և հաստաբազուկ»[17], կենդանիների միջավայրում, որսորդական տեսարանի մեջ և իբրև պայծառ ու գեղեցիկ աստղ՝ իր համաստեղությամբ[18]։

Պալեոլիթից եկող, որսորդական հարուստ ավանդույթներ ունեցող Հայաստանյան ցեղերը պետք է որ լեգենդներ ու հիշողություններ պահպանեին իրենց նախնի որսորդների քաջագործությունների ու արարքների մասին, որոնք հեռանալով իրենց յուրահատուկ աշխարհը, դառնում էին կենդանի սերունդներին հովանավորող, օգնող հզոր, ազդեցիկ ոգիներ[19] և միանգամայն հնարավոր է, որ Գեղամա լեռների և այլ վայրերի ժայռանկարների մարդակերպ պատկերներից շատերը ներկայացնում են սրբացված, աստվածացված նախնիներին՝ աստղային նշանների ուղեկցությամբ, քանի որ աշխարհի շատ ժողովուրդների և մանավանդ տեղաբնակ հայերի պատկերացմամբ նախնիների ուրույն աշխարհը երկինքն էր, ուր նրանք համաստեղություններ էին դառնում և իրենց աստղային գոյության միջոցով հրաշագործ ազդեցություն ունենում ապրող ցեղերի ու նրա յուրաքանչյուր անդամի ճակատագրի վրա[20]։

Գեղամա ժայռապատկերներից մեկը բաղկացած է երկու այծանկարից և կանացի սխեմատիկ երկու ֆիգուրներից, որոնք բավականաչափ մոտիկ նմանություն ունեն Առաջավոր Ասիայի[21], արևելյան Միջերկրականի ու էգեյան[22] աշխարհի, Կրետեի, Կիկլադների, Կնոսոսի, Իրանական սարահարթի, Միջագետքի[23], Եգիպտոսի[24], Հայաստանի[25] և Անդրկովկասի բրոնզեդարյան[26] կանացի կուռքերի հետ։ Սեմանտիկ նշանակությամբ բոլորովին համազոր մի պատկեր էլ կա Արագածի լանջերին[27], որը նույնպես կազմված է այծանկարներից ու մարդկային պայմանական չորս պատկերներից, որոնք, սակայն, ի տարբերություն նախորդների, իրենց վրա կրում են կանացի պտղաբերման օրգանների նշաններ, ինչպես Չաթալ-Հույուքի նեոլիթյան որմնանկարների կանացի կուռքերը[28] և ավելի ուշ շրջանի համանման պաշտամունքային առարկաներից շատ-շատերը։

Վերջապես, Վարդենիսի չափազանց հետաքրքիր ժայռապատկերներից մեկը պարունակում է նույն կարգի մի սյուժե, որն իրենից ներկայացնում է խա-

---

17 Տե՛ս Խորենացի, Ա, ժ։ Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Գ. Երևան, 1968, էջ 79։

18 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Հայկ-Օրիոն, «Տեղեկագիր», ՍՍՀՄ ԳԱ հայկական ֆիլիալ, Երևան, 1941, № 8, էջ 29—36։

19 Տե՛ս J. Maringer, The Gods of prehistoric man, էջ 129։

20 Տե՛ս նույն տեղում։

21 Տե՛ս J. Garstang, Prehistoric Mersin, Oxford, 1953, նկ. 45—46։

22 Տե՛ս Г. Чайлд, У истоков европейской цивилизации, էջ 42, նկ. 8։

23 Տե՛ս M. E. Mallowan, Early Mesopotamia and Iran, London, 1965, էջ 125, նկ. 123, 137ա, 139—140։

24 Տե՛ս Г. Чайлд, Древнейший Восток, նկ. 36։

25 Տե՛ս А. А. Мартиросян, Идолы из раскопок Кармир-блура, ИФЖ, 1958, № 2, էջ 118։

26 Տե՛ս А. М. Джавахишвили, Л. И. Глонти, Урбниси, I, Тбилиси, 1962, նկ. 280—282։

27 Տե՛ս Լ. Ա. Բարսեղյան, Նոր նյութեր Հայաստանի հնագույն արվեստի, նկ. 12։

28 Տե՛ս J. Mellaart, Earliest Civilisations of the Near East, London, 1963, նկ. 83։




Ուշբրոնզեդարյան բրոնզե գոտիներ. 1—Լճաշենից, 2—Սանահնից, 3—Հաղպատից

շանձև միջուկով արևի մեծ սկավառակ՝ վրան կանգնած չորս թևատարած մարդկային ֆիգուրներով, աջից գծագրված կանացի պայմանական զույգ պատկերով և երկու նշանագրերով։



Բրոնզե գոտու բեկոր։ Լեռնային Ղարաբաղից

Արևելքի վաղ մշակույթներին հատուկ «արևաբնակ» մարդկանց ու կանանց զույգ կուռքերի[29] մոտիվը առանձնապես սերտ առնչություններ ունի մի կողմից շատ երկրների նախնադարյան ժայռապատկերների և մյուս կողմից՝ դամբարանային ծիսական նյութերի հետ։

«Արևաբնակ» մարդկանց կամ ոգիների բազմաթիվ ֆիգուրներ կան նաև Եվրոպայի բրոնզեդարյան ժայռագրերում[30] և առանձնապես պատմական Հայաստանի Շակաշեն գավառի (այժմ Կիրովաբադի դաշտավայր) ուշբրոնզեդարյան դամբարանային դրվագազարդ խեցեղենի վրա։ Հայաստանի նախնադարյան մի շարք դամբարանների կենդանապատկերները, երկնային սիմվոլները, մարդկային բազկատարած ֆիգուրները (Նախիջևան, Շամիրամ և այլն) կամ գերեզմաններում տեղադրվող փոքրիկ կանացի կուռքերը անառարկելիորեն վկայում են, որ մեռյալների ու նախնիների պաշտամունքը սերտորեն կապված է երկնային պատկերացումների հետ, երկինքն ու անդրշիրիմը ընկալվում էին մեկ ամբողջության մեջ, իբրև տիեզերքի երկու հավասար տարրեր։ Այդ

---

29 Տե՛ս E. Herzfeld, Die vorgeschichtlichen Töpfereien von Samarra, „Die Ausgrabungen von Samarra", V, „Forschungen zur islamischen Kunst", II, Berlin, 1930, էջ 11—12, նկ. 12։

30 Տե՛ս F. Gudnitz, Bronzealderens Monumentalkunst. Kobenhawn, 1962, նկ. 18։

առումով չափազանց մեծ հետաքրքրություն են ներկայացնում հայ ժողովրդական հավատալիքներն ու պաշտամունքները, որոնք վերաբերում են մեռյալներին ու նախնիներին, հոգու և մարմնի փոխհարաբերությանը։ Մանուկ Աբեղյանի ուսումնասիրության համաձայն, հայերի մեջ մարդկային հոգիները նույնանում են համաստեղություններին, մտածվում աստղերի հետ կապակցված։ Աստղերի հետ է կապվում ոչ միայն հոգին, այլև մարմինը, մարմնական զորությունը, «երբ մի հերոս նեղության մեջ է,— գրում է Աբեղյանը,— նրա աստղը խավարում է, երբ նա կռվում է մեկի հետ, ապա նրա աստղն էլ երկնքում է կռվում հակառակորդի աստղի հետ (հմմտ. «Սասնա ծռեր»)»[31]։ Հայերի մեջ պաշտվող նախնիներն ու իրենց աստղերը մտածվում են իբրև օգնական, պահապան ոգիներ, իբրև սրբություններ, այդ պատճառով էլ նրանցով երդվում են, ինչպես հոր գերեզմանով («էն մեծ ու պստիկ աստղերը վկա», «էն հորս գերեզմանը վկա»), օգնության աղերսով դիմում են աստղերին («Ձեր պետ աստղունք օգնական պահապան կայնեք... մեզ ազատեք ըմեն փորձանաց. չար մարդուց, չար սհաթից»)[32]։

Նախնադարյան ժայռապատկերների կոմպոզիցիաների մեկնաբանման առումով չափազանց հետաքրքիր են նաև նույն Աբեղյանի կողմից դիտված հայկական այն ըմբռնումները, թե անբիծները տեղավորված են երկնքում աստղերի վրա, որ հոգին լույս է կամ փայլ, թե ապրող կենդանի մարդու մեջ հոգին ունի լուսապայծառ գնդի ձև, թե նախնիների հոգիները ներկայանում են մարդկային, սեփական ուրվականի ձևով և այլն։ Ժամանակակից հետամնաց ցեղերի մեջ նման հասկացություններն ի հայտ են գալիս ավելի անխառն ու չընդմիջարկված ձևով, սակայն էապես չեն տարբերվում վերը բերվածներից։ Սրանց համոզմամբ, նախնիները համաստեղություններ են դարձել, ապրում են աստղերի ու արևի վրա և իրենց աստղային գոյության միջոցով մասնակցում, աջակցում են ցեղերի ու նրանց առանձին անդամների կենսագործունեությանը, հրաշագործ ազդեցություն ունենում[33]։

Վերը բերված Գեղամա սարերի, Վարդենիսի, Արագածի նյութերը, հայ բանահյուսության և ընդհանուր ազգագրության տվյալները, կարծես, հաստատում են այն իրողությունը, որ նախնադարյան սրբավայրերի աչքի ընկնող տեղերում փորագրված մարդկային ֆիգուրների ու աստղազարդ երկնակամարի պատկերներն արվում են նախնիների ու մեռյալների ոգիներին երկրպագելու համար։ Այս երևույթը դիտվում է աշխարհի տարբեր մասերում հայտնաբերված ժայռապատկերների մեջ և համընդհանուր է նախնադարյան հավատալիքների ու կրոնի համար։

**Ժայռագրեր:** Հայաստանի ժայռապատկերների մասին խոսելիս չի կարելի մոռանալ կարևորագույն մի հանգամանք, որ բազմիցս նշվեց վերևում։ Այդ բազմազան նշանագիր-գաղափարագրերի առկայությունն է ժայռապատկերների տարբեր խմբերում։

---

[31] *M. Abeghian*, Der armenische Volksglaube, էջ 25։

[32] Նույն տեղում, տե՛ս նաև Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Ա, Երևան, 1944, էջ 31—32։

[33] *J. Maringer*, The Gods of prehistoric man, էջ 127—131։

Այս նշանագրերը լայն տարածում ունեն Հայաստանի, Վրաստանի նախնադարյան հուշարձանների մեջ՝ ժայռաբեկորների[34], խեցեղեն ամանների[35], Դմանիսի դամբարանային հսկա սրահների պատերի[36] և բազմազան այլ իրերի ու առարկաների վրա։ Այսպիսիները տարածված են նաև Ասիայի ու Եվրոպայի բազմաթիվ հին ժայռանկարներում և ժամանակակից ավստրալիական արվեստի հուշարձաններում։ Սրանց լայն օգտագործումը ժայռապատկերներում, դամբարանների պատերին և պաշտամունքային խեցեղենի վրա ենթադրել է տալիս պիկտոգրաֆիկ գրության գոյությունը նախնադարյան Հայաստանում (երևի մ. թ. ա. V—IV հազարամյակներից սկսած), որը կարող էր ծառայել կրոնա-հմայական նպատակների և հիմք դառնալ, այսպես կոչված, մեհենական գրերի համար։

**Ժայռապատկերների թվագրման հարցը:** Գեղամա ժայռապատկերների հսկայական քանակությունը, նրանց կրկնակի, եռակի տեղադրումը իրար վրա, ոճական ու տեխնիկական առանձնահատկությունները ցույց են տալիս, որ դրանք ունեն ժամանակագրական շատ լայն ընդգրկում և սկսվելով նեոլիթյան և վաղ էնեոլիթյան ժամանակներից, հարատևել են մինչև երկաթի դարը։

Գեղամա լեռների ժայռապատկերների ամենավաղ խումբը թվագրվում է նեոլիթյան քարե գործիքներով, որոնք հայտնաբերվել են տեղում 1969 թվականին։

Զորրորդական ֆաունայի ներկայացուցիչների, նրանց ժամանակակից ընտելացված տեսակների՝ ժայռապատկերներում ներկայացված խառը կազմը, շների բազմաքանակությունն ու բազմատեսակությունը ևս հաստատում են ժայռապատկերների նեոլիթ-էնեոլիթյան թվագրումը (մ. թ. ա. VI—IV հազարամյակներ)։

Մոտավորապես այս նույն ժամանակաշրջանին են վերաբերում Գեղամա որսապատկերների վաղ խմբի առաջավորասիական, միջինասիական ու կովկասյան զուգահեռները։ Դրանցից առանձնապես լավ են թվագրվում Չաթալ-հույուք (Իկոնիայի դաշտ) բնակավայրի III, IVբ, VIIա և VIII շերտերում բացված մ. թ. ա. VI հազարամյակի սրբատեղիները, որոնք իրենց մի խումբ որմնանկարներով հար և նման են Գեղամա սարերի ժայռապատկերներին[37], ժամանակակից Թուրքիայի հարավ-արևելյան շրջաններում[38], Հայկական[39] և

---

34 Տե՛ս Ս. Բարխուդարյան, Խորհրդային Հայաստանի հնագիտական հուշարձանները, Երևան, 1935, էջ 43—44։

35 Տե՛ս Т. Н. Чубинишвили, Древнейшая культура в двуречье Куры и Аракса, Тбилиси, 1965, աղ. VIII, X, XVIII (վրացերեն)։

36 Տե՛ս О. М. Джапаридзе, Археологические раскопки в Триалети в 1959—1963 гг. СА, 1964, № 12, էջ 119։

37 Տե՛ս J. Mellaart, Earliest Civilisations of the Near East, էջ 83—103, ինչպես նաև В. М. Массон, Неолит южной Турции, „Археология старого и нового света", М., 1966, էջ 161—171։

38 Տե՛ս TTKB, 1957, XXI, 84: W. Freh, Felszeichnungen in Südostanatolien, էջ 621—623։

39 Տե՛ս H. Bossert, Altsyrien, Tübingen, 1951, նկ. 686։

*Հյուսիսային Միջագետքում*[40] *(Ադիաման, Դեմիր-կապե), պատմական Ասորիք-Պաղեստինի արևելա-միջերկրածովյան սահմաններում և ծովեզրյա Անատոլիայում*[41] *կան նեոլիթ-բրոնզեդարյան շատ ժայռապատկերներ, որոնք ադրբեջանական Քոբուստանի ու միջին ասիական պատկերների հետ միասին կազմում են մեր հուշարձանների ժամանակագրական և տիպաբանական ամենամոտավոր զուգահեռները։*

*Մ. թ. ա. III հազարամյակի Հայկական լեռնաշխարհում և նրանից դուրս տարածված սև փայլեցված շքեղ խեցեղենի պաշտամունքային դրվագազարդ մոտիվների և Գեղամա լեռների ժայռապատկերների համադրությունը հնարավորություն է տալիս նրանց մի զգալի խումբ հաստատորեն վերագրելու վաղբրոնզեդարյան ժամանակաշրջանին, երբ անասնապահությունը Հայաստանում հասել էր զարգացման բարձր մակարդակի։ Թե՛ խեցեղենի և թե՛ ժայռագիր պատկերներում հավասարապես հանդես են գալիս բացարձակորեն նույնական խորհրդանշաններ, նշանագրեր, երկրաչափական ձևեր, որոնք կարծես համընդհանուր բնույթ են ստանում այդ շրջանի ողջ նախնադարի համար։*

*Գեղամա լեռների ժայռապատկերների որոշ մասն էլ, առանձնապես ջրային թռչունների պատկերներից մի քանիսը և բերանից ցայտող ջրի շիթերով ներկայացված ժայռագիր ցուլերը, կարող են վերագրվել մ. թ. ա. II հազարամյակին՝ այդ շրջանի գունազարդ խեցեղենի և վիշապ-քարարձանների հետ ունեցած իրենց աղերսներով։*

*Վերը բերված բոլոր նյութերը հիմք են տալիս եզրակացնելու, որ Գեղամա վաղ շրջանի ժայռապատկերների վաղ խումբը կարող է թվագրվել մ. թ. ա. VI—III հազարամյակներով՝ մ. թ. ա. III հազարամյակի բրոնզեդարյան պատկերների բացարձակ գերակշռության պայմանով։*

*Նեոլիթ-էնեոլիթյան ընթացաշրջանում մեկընդմիշտ ծայր առած անասնապահական-երկրագործական մշակույթը վերելքի ուղիով էր ընթանում Հայաստանյան ողջ բրոնզի դարի ընթացքում, Գեղամա և այլ ալպյան արոտավայրերը շարունակում էին կատարել իրենց տնտեսական ֆունկցիան և մեր նախնիները չէին հեռանում իրենց բարձրադիր սրբավայրերից։ Այդ պատճառով էլ ծիսա-պաշտամունքային ժայռապատկերների թիվը գնալով ավելանում էր միջին, ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակներում։*

**Մ. թ. ա. III—II հազարամյակների արվեստի ու պաշտամունքի այլ հուշարձաններ:** *Նույն պաշտամունքային կարիքներին էին ծառայում մ. թ. ա. III հազարամյակի կիրառական արվեստի բազմաթիվ այլ հուշարձաններ։ Հետաքրքիր է, օրինակ, որ պտղաբերման պաշտամունքին նվիրված արարողությունները ու ծեսերը չէին սահմանափակվում անասնապահների լեռնային սրբատեղիներով և շարունակվում էին ձմռան ու գարնանամուտի ծանր ամիսներին նաև բնակավայրերում գտնվող սրբատեղի-դահլիճներում կամ սովորական կացարանների սրբազան անկյուններում, ուր գտնում ենք պտղաբերության կենդանական ու կանացի բազում արձանիկներ։ Արձանիկներ պատ-*

---

40 *Տե՛ս նույն տեղում, նկ. 687—698, էջ 44 և հաջ.։*

41 *Տե՛ս J. Mellaart,* Earliest Civilisations of the Near East, *նկ. 47։*

բաստելու սովորությունը շարունակվում էր նաև ուշ բրոնզի, վաղ երկաթի դարերում և անտիկ շրջանում։ Քրիստոնյա հայ գյուղացիներն էլ նոր տարվա օրերին ընտանի կենդանիներ հիշեցնող բլիթներ թխելով և կենդանիներին տալով. հավատում էին տնտեսական ընդհանուր բարօրության հնարավորությանը[42]։

Վաղ բրոնզի դարի կիրառական արվեստի մի խումբ այլ հուշարձաններ, շարունակելով ժայռապատկերների ավանդույթը, որոշակիորեն կապվում են տիեզերական պատկերացումների հետ։ Սրանց մեջ մեծ թիվ են կազմում սայլերի ու սայլակների մոդելները, որոնց լծված եզների կամ ցուլերի ճակատներին աստղանշաններ կան[43]։ Ինչպես ստորև կտեսնենք, մարդակերպ արևային աստվածությունների ու մարտակառքերի կամ սայլերի պատկերները սովորական երևույթներ էին նաև ուշբրոնզեդարյան[44] և ուրարտական արվեստի ու պաշտամունքի առարկաների համար։ Ուրարտական կնքադրոշմներից մեկի վրա պատկերված է մի հրաշալի սայլ, վերևում շողացող պայծառ արևով, որին հետևում են բազկատարած քուրմը (կամ ինքը՝ Արևի աստվածը) և արևին նվիրված ֆանտաստիկ, թևավոր անգղայծը՝ կրծքին դաջած արևի նշանով[45]։ Մի այլ կնքադրոշմի վրա սայլի փոխարեն ներկայացված է նավակ, նորից մարդակերպ, կենդանական ու աստղային ֆիգուրների միջավայրում[46]։ Հայկական ժողովրդական մտածողության մեջ նույնպես արևն ու լուսինը մշտապես հանդես են գալիս միասին՝ կառքով կամ նավակով։ Արև-լուսին գաղափարը տալու համար հայկական հանելուկն ասում է. «Մի ծով կա, էրեսին քիր ու ախպեր ման են գալի գյամով»։ Այստեղ «քիրն ու ախպերը» մեկնաբանվում են իբրև արևի ու լուսնի աստվածություններ, գյամին՝ իբրև նավակ, իսկ ծովը՝ ծիրանի երկնակամար[47]։

Մեր հեռավոր նախնիների տիեզերական պատկերացումների հետ սերտորեն կապված են նաև վաղ բրոնզի դարի բնակատեղիներում ու դամբարանադաշտերում հայտնաբերված հարյուրավոր անոթներն՝ իրենց բուսական, երկրաչափական, կենդանական զարդանախշերի բարդ ու գեղեցիկ կոմպոզիցիաներով։ Այսպես, Շրեշ-բլուրի, Էջմիածնի, Քյուլ-Թափայի և Շենգավիթի գավաթների վրա[48] հանդես են գալիս ծաղիկների ու տերևների հասկերի ոճավորված ու համաչափ կոմպոզիցիաներ, որոնք համադրված են երկնակամարը, արևը, լեռները. մայր հողը խորհրդանշող զարդանախշերով։

Բացի բուսական ու տիեզերական մոտիվներից, ուսումնասիրվող ժամանակաշրջանի կիրառական արվեստի սիրված տարրեր են նաև երկրաչափական զարդերը՝ բազմատեսակ պարույրները,· ոլորանախշերը, եռանկյունիները,

---

42 Տե՛ս Ա. Ա. Օդաբաշյան, *Քրիստոնեական ամանորի հետ կապված որոշ ծիսական վերապրուկներ*, Տեղ. ՀԳԱՀԳ, Երևան, 1965, № 3, էջ 91—97։

43 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Археология Закавказья, էջ 35։

44 Տե՛ս Հ. Ռ. Իսրայելյան, *Արևի պաշտամունքի հետքերը բրոնզեդարյան Հայաստանում*, ԼՀԳ, Երևան, 1967, № 4, էջ 79—80։

45 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, История и культура Урарту, Ереван, 1944, նկ. 90։

46 Տե՛ս նույն տեղում, նկ. 92։

47 Տե՛ս Ս. Հարությունյան, *Հայ ժողովրդական հանելուկներ*, էջ 7։

48 Տե՛ս Է. Վ. Խանզադյան, *Շրեշ-բլուրի և և Քյուլ-Թափայի խեցեղենն ու նրա արվեստը*, ՊԲՀ, 1964, № 3, էջ 221—225, աղ. 1, նկ. 1—5։



Խմբային բրոնզե քանդակ Լճաշենից։ Մ. թ. ա. 14—13-րդ դդ.

շեղանկյունիները, համակենտրոն շրջանագծերը և այլն, որոնց կրոնա-պաշտամունքային իմաստը առայժմ շատ դժվար է բացահայտել։

Թռչունների պատկերները մեծ մասամբ ոճավորված են։ Նրանք արագիլատիպ են, երկարոտն, ունեն եռանկյունաձև իրան և երկար կտուց։ Մի քանի այլ ամանների վրա ռեալիստորեն պատկերված են ձի[49] և այլ չորքոտանիներ։ Հավանական է, որ արվեստագործ բրուտները ամանեղենի վրա պատկերված թռչունների ու կենդանիների մեջ տեսել են իրենց տոհմերը խորհրդանշող տոտեմներին[50]։

Վաղբրոնզեդարյան արվեստի լավագույն նմուշների շարքը կարելի է դասել նաև կավե օջախներն ու նրանց տարատեսակ հենակները, որոնք մեծ մասամբ նախնիների պաշտամունքին նվիրված յուրահատուկ զոհասեղաններ էին՝ կողեզրին ծեփած մարդակերպ արձանիկներով։

Մ. թ. ա. III հազարամյակի հոգևոր մշակույթի համար առանձնակի նշանակություն ունեին նաև կանացի արձանիկները, որոնք խորհրդանշում էին կյանքի հարատևման, պտղաբերության, արգասավորման մայր աստվածության գաղափարը։

Հայկական լեռնաշխարհի որոշ բնակատեղիներից հայտնի են նաև տղամարդու արձանիկներ, որոնք բացի երկրագործական պաշտամունքի առարկաներ լինելուց, հավաստում են հայրիշխանական նահապետական հարաբերությունների հաղթանակը տեղաբնակների սոցիալական կյանքում։

Այսպիսով, Հայկական լեռնաշխարհի հնագույն երկրագործների գաղափարաբանական պատկերացումների հիմքում ընկած էր բնության ուժերի, կենդանիների ու մայրաստվածության պաշտամունքը, որի ընդհանուր էությունը կյանքի ու սերունդների հարատևման, պտղաբերության ու բարօրության գաղափարն էր։

Արվեստի ու պաշտամունքի ուշագրավ հուշարձաններով հարուստ է նաև մ. թ. ա. II հազարամյակի միջինբրոնզեդարյան մշակույթը։ Զարգացման նախորդ փուլից ժառանգած կրոնա-պաշտամունքային զարդանախշն այս շրջանում հասնում է բարձր վարպետության առանձնապես գունազարդ խեցեղենի և սպասքի թանկարժեք առարկաների վրա։ Ինչպես վերը տեսանք, Թռեղքի, Տաշիր-Ձորագետի, Արարատյան դաշտի և այլ շրջանների գունազարդ անոթները, ոսկե ու արծաթե իրերը զարդարվում էին ոչ միայն երկրաչափական մոտիվներով, այլև բազմականաչափ բարդ կոմպոզիցիաներով, որոնք կազմվում էին աստվածների, մարդկանց բազմազան կենդանիների, թռչունների սողունների պատկերների կոսմիկական ու երկրաչափական նշանների զուգակցության միջոցով։ Նման կոմպոզիցիաներում առանձնապես զգացվում է խեթական արվեստի ազդեցությունը։ Իրենց մեծ քանակով աչքի են ընկնում որոշակի ձևի ու չափի կարմրափայլ անոթները, որոնց վերին մասում՝ ալիքավոր գծերի, սկավառակների, թռչունների, եռանկյունիների միջոցով պատկերվում են երկրային ծովը, երկինքն ու երկիրը՝ տիեզերքի երեք գլխավոր տարրերը։

---

49 Տե՛ս Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, էջ. 74։

50 Տե՛ս В. И. Равдоникас, История первобытного общества, т. I, Л., 1939, էջ 220—221։

Նախնադարի հոգևոր մշակույթի ավանդույթների պահպանման ու զարգացման տեսակետից չափազանց ուշագրավ են Սևանի ավազանում[51], Գառնիում, Նախիջևանի Քյուլ-Թափա II-ում[52] հայտնաբերված մի քանի գոմաղարդ ամաններ, որոնց հարուստ կենդանապատկերները զուգակցված են երկնային նշանների հետ և կրկնելով ժայռապատկերների մոտիվներն ու ձևերը, կապվում են երկնակամարի ու լուսատուների պաշտամունքի հետ։

## 3. ՈՒՇԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՀԱՎԱՏԱԼԻՔՆ ՈՒ ԱՐՎԵՍՏԸ

Արևի և մյուս աստվածների պաշտամունքը: Նախնադարյան տիեզերական պատկերացումները, պաշտամունքն ու հավատալիքն ընդհանրապես զարգացման բարձրակետին են հասնում ուշ բրոնզի և վաղ երկաթի դարում։ Կիրառական արվեստի մեջ համապատասխանաբար փոխվում, զարգանում են կրոնապաշտամունքային իրերն ու առարկաները։ Հոգևոր կյանքում և արվեստում սինթեզվում, բյուրեղանում են բրոնզի դարի ընդերքում առաջացող ուրարտական և հայկական մշակույթի էական տարրերն ու առանձնահատկությունները։ Կիրառական արվեստի հուշարձաններում, մանավանդ բրոնզե գոտիների գծապատկեր սյուժեներում տիեզերքը՝ երկիրը, երկինքն ու ջուրը, թեև դարձյալ պատկերվում են երևակայական կենդանիների, թռչունների ու լուսատուների միջոցով[53], սակայն նրանք այժմ ներկայացվում են երկնային երեք հորիզոնների ձևով։ Երկիրը, ծովն ու երկրային օվկիանոսը դիտվում են իբրև միևնույն երևույթի տարբեր դրսևորումներ։ Մեր բրոնզեդարյան նախնիները համոզված էին, որ ծովի անդնդախոր հատակին, ձկների ու ջրային այլ էակների հետ միասին, ծնվում, ապրում, զորեղանում էին առասպելական դյուցազուններ, հավերժահարս դիցուհիներ, երկրային կենդանիներից չտարբերվող ցուլեր, գոմեշներ, իմաստուն ձիեր, որոնցից ջատերը օգնում էին մարդկանց՝ կյանքի ու բնության արհավիրքները հաղթահարելու, անելանելի վիճակներից դուրս պրծնելու համար։ Մեր ժողովրդի հիասքանչ հեքիաթների, առասպելների, «Սասնա ծռեր» հերոսավեպի մեջ միաձուլվել են նախահայերի ու հին հայերի տիեզերական ու բնապաշտական պատկերացումները։ Հ. Ա. Օրբելու խոսքերով ասած՝ «էպոսի առաջին ճյուղի հերոսը՝ Սանասարը... մարմնավորում է տիեզերական էակի մի շարք գծեր, էակ, որ մարդկային արտաքին ունի, բայց իր մեջ բնության ուժեր է բովանդակում, կապված է բնության կենարար ու բարերար տարերքի՝ ջրի հետ։ Ջրից ծնված այս հսկան ջրից է ստանում իր ամենակործան սուրը... իր հասակը, անսահման ուժն ու զորությունը։ Ջրից է ստանում իր հրաշալի Քուռկիկ Ջալալին, որն իր հերոսներին իջեցնում է կենարար ծովի անդունդը (երբ նրանք հյուծվում են) բարձրացնում է դեպի արևի զորավոր գունդը, իր հսկայակերպ տիրոջ հետ միասին ոչնչացնում է

---

51 Ա. Ա. Քալանթարյան, Ժ. Դ. Խաչատրյան, Հնագիտական հազվագյուտ հայտնագործություն Սևանի ավազանից, ԼՀԳ, 1969, № 4, էջ 75—77։

52 Նկատի են առնված է. Խանզադյանի և Քյուլ-Թափա II-ի առայժմ չհրատարակված նյութերը։

53 Տե՛ս Б. Б. Пиотровский, Археология Закавказья, էջ 93—94։



Եղջերուի բրոնզե արձանիկ Տոլորսից: Ուշ բրոնզե դար

*թշնամիներին՝ (բոցեղեն շնչով, ամրակուռ սմբակներով) և նրա հետ միասին հնազանդ ու հավատարիմ, ներփակվում է ժայռերի մեջ՝ ավարտելով վաղնջական տիեզերական պտույտը՝ ծովից երկիր ու երկինք»*[54]։

*Թեև տիեզերքի հիմնական տարրերը՝ երկիրը, երկինքը, ջուրը, արևն ու լուսատուները մտածվում ու պատկերացվում էին միասնության մեջ, սակայն ուշ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանում վերջնականապես ձևավորվել էին սրանց առանձին տարրերի պաշտամունքները։ Ինչպես հնում, այնպես էլ այժմ ամենագլխավորը արևի պաշտամունքն էր։ Հնագիտական նյութերում առատորեն են ներկայացված արևը պատկերող բրոնզե բազմապիսի սկավառակներ կամ թռչնակերպ կախիկներ։ Մ. թ. ա. II հազարամյակի վերջերին և առաջինի սկզբներին պատկանող հիասքանչ բրոնզե գոտիների վրա արևը պատկերվում է անիվի, սայլի, մարտակառքի ձևով։ Սրանց վրա կամ կողքին գծանկարվում են արևի ու ամպրոպ-կայծակի սպառազեն մարդակերպ աստվածություններ*[55]։

*Հին արևելյան կրոնա-պաշտամունքային գրավոր աղբյուրների և հայկական բանահյուսության համաձայն արև-աստվածն իր երկնային օրապտույտը կատարում էր ոչ միայն մարտակառքով, սայլով, մակույկով, այլև հրեղեն ձիերի կամ երկնային ցուլերի օգնությամբ։ Հայաստանի բրոնզե գոտիների և կիրառական արվեստի այլ հուշարձանների վրա արևը պատկերվում էր զանազան կենդանիների ու թռչունների՝ առյուծի, ցուլի, ձիու, արագիլի, սարյակի միջոցով։ Ուսումնասիրողները ենթադրում են, որ եթե ձին ու ցուլը արևի մշտական ուղեկիցներն էին, ապա թռչուններն ավելի բնորոշ էին գարնանային արևին, իսկ առյուծները՝ ամառայինի։ Հետաքրքիր է, որ տիեզերական ուժերը մարմնավորող Սասնա դյուցազունների կերպարները ևս կապված են կենդանիների ու թռչունների անվան հետ։ Արևի Միհր աստծո կրկնակ Մհեր դյուցազնը էպոսում կոչվում է առյուծաձև Մհեր, նրա մշտական ուղեկիցն է ագռավը։ Սասնա բոլոր հերոսները հանդես են գալիս հրեղեն ձիով։*

*Արևի հետ սերտ կապ ուներ նաև լուսատուների պաշտամունքը։ Կիրառական արվեստի հուշարձանների վրա արևի աստղաձև նշանի շուրջը պատկերվում են լուսատուներ կամ որևէ համաստեղություն խորհրդանշող համապատկերներ՝ փոքրիկ աստղիկների ձևով (Կիրովականի գոտի)։ Բրոնզե գոտիներից մի քանիսի վրա երկնային լուսատուները ներկայացվում են թռչունների, վայրի այծերի, ոչխարների և այլ կենդանիների գծանկարներով։ Սրանց պոչերը երբեմն զարդարված են խաչաձև, աստղաձև, ծաղկաձև նշաններով, որոնք մատնանշում են այդ կենդանիների երկնային էակներ լինելու հանգամանքը։ Ուշբրոնզեդարյան կիրառական արվեստի այս նմուշները ուղղակիորեն կապվում են հայ ժողովրդական այն հանելուկների հետ, որոնց մեջ աստղազարդ երկինքը պատկերվում է ծաղկազարդ պոչեր ունեցող կենդանիների, ոչխարների հոտի, հավերի ու ճտերի այլաբանական պատկերներով։*

*Բրոնզեդարյան հոգևոր մշակույթի ավանդույթները պահպանվում և հետագա զարգացումն են ապրում Հայաստանում Վանի թագավորության շրջանում։*

---

54 *«Սասունցի Դավիթ», Երևան, 1961, էջ VII—IX, XXXVI։*

55 *Տե՛ս А. Р. Исраелян,* Культ и верования в Армении в эпоху поздней бронзы, автореферат канд. диссертации, Ереван, 1968.

*Ուրարտական պանթեոնի մեջ ևս արևի, ամպրոպ-կայծակի, լուսատուների պաշտամունքը հսկայական դեր է խաղում։ Հետաքրքիր է ուրարտական կնիքներից մեկի վրա պատկերված ճառագայթավոր վերջավորություններ ունեցող արևի կամ ամպրոպ-կայծակի մարդակերպ աստվածության ֆալլիկ կերպարը, կենաց ծառի ու ճառագայթաձև երկնային պեգասի հետ միասին, որը տվյալ դեպքում հանդես է գալիս ոչ թե անասնապահական, այլ երկրագործական պտղաբերության իր ֆունկցիայով[56]։ Ուրարտական մի այլ կնիքի զույգ երեսներին ներկայացված են մի կողմից՝ ցուլի վրա կանգնած «ճառագայթավոր» թևերը վեր պարզած ամպրոպ-կայծակի աստվածը, մյուս կողմից՝ արևի «ճառագայթաձև» աստծո ծնկաչոք մարդակերպ ֆիգուրը՝ ասորեստանյան արևաստծո թևավոր սկավառակի տակ[57]։ Կնիքի վրա եղած այս երկրորդ պատկերը ցույց է տալիս, որ ուրարտական կրոնի մեջ էլ տարբերքի աստվածությունները ոչ միայն մտածվում ու պատկերվում էին փոխադարձ կապի մեջ (ինչպես ժայռապատկերներում), այլև բուն ուրարտական կամ ասորեստանյան հավելումներով հանդերձ, կրում են ավանդական ժայռապատկերային ձևեր։ Տարբերությունն այն է, որ բրոնզեդարյան ժամանակների ամպրոպ-կայծակի «հետիոտն» աստվածն այստեղ բարձրանալով ցուլի վրա՝ ընդունում է տարբերքի Թեշուբ աստծո խուրրիական անունը, իսկ նույնքան հին արևի տեղական աստվածը՝ Շիվինի անունը։ Ուրարտական կնիքների վրա փորագրված պատկերների ներքին սեմանտիկ առնչությունները ժայռապատկերների հետ բացահայտվում են նաև այլ համադրությունների մեջ, կնիքների վրա պատկերված վիշապ-օձերի, եղջերուների, այծերի, դիմակակիր աղեղնավորների գծային պատկերներով և ուղեկցող աստղային պատկերագիր և գաղափարագիր նշաններով[58]։*

*Գեղամա լեռների ժայռապատկերների զուգահեռները ուշբրոնզեդարյան և ուրարտական արվեստի ու պաշտամունքի հուշարձաններում ակնհայտորեն մատնանշում են հազարամյա ավանդույթների հիման վրա առաջադիմած երկրագործ-անասնապահական գաղափարաբանության միասնական բնույթը՝ սոցիալ-տնտեսական, քաղաքական ու էթնիկական փոփոխությունների ֆոնի վրա։*

**Ջրի պաշտամունք և վիշապներ:** *Կիրառական արվեստի հուշարձանների վրա հանդիպող ջրային թռչունների, օձերի, ձկների պատկերները, ալիքավոր գծերը մարմնավորում են ջրի պաշտամունքը, որը նույնքան կարևոր տեղ է գրավում նախնագարի հոգևոր կյանքում, որքան արևինը։ Ջուրն էլ արևի նման պատկերացվում էր տիեզերական եռամիասնության մեջ՝ իրական ու երկնային ծովի, աղբյուրների, գետերի ակունքների ձևով։ Այդ պատճառով էլ ջրի պաշտամունքի հետ կապված էակները շատ հաճախ հանդես են գալիս մերթ օձի և այծի (վիշապաքաղ), մերթ օձի և թռչունի (թռչող վիշապ), մերթ վիշապաձկների կերպարներով, որոնց վրա պատկերված են ցուլերի գլուխներ, թռչուն-*

56 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Кармир-блур, III, Ереван, 1955, *էջ. 42—43։*

57 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Кармир-блур, I, Ереван, 1948, *էջ. 76։*

58 *Տե՛ս նույն տեղում, էջ. 50—77 և այլն։*



Փորագիր զարդերով խեցանոթներ Դիլիջանից և Արթիկից: Ուշ բրոնզի ժամանակաշրջան

ներ և օձեր[59]։ Հետաքրքիր է, որ վիշապ բառը Եզնիկ Կողբացու միջնորդությամբ մեզ հասած ժողովրդական հավատալիքներում մեկնաբանվում է իբրև բազմակերպար էակ (օձ, գրաստ, ցուլ, կով, ուղտ և այլն) և կապվում ամպրոպ-կայծակի, օդերևույթի հետ[60]։ Հին խեթական աստվածներից նախահայկական վիշապին մոտ էր Դատան, որը պատկերվում էր իբրև ձուկ, ցուլ և պատանի։ Նրա ձկնակերպ արձանը դրված էր Խարշալաշի քաղաքի աղբյուրի ակունքի մոտ[61]։ Հայաստանում էլ վիշապ ձկների հսկա քարակոթողները տեղադրված են ջրանցքների ու ջրավազանների մոտ։ Նրանք, մեր նախնիների համոզմամբ, պահում, պահպանում էին սրբազան ջուրը։ Հետագայում այդ էակները ժողովրդական մտածողության մեջ դարձան չար վիշապներ, որոնք փակում էին աղբյուրների ակունքները, զոհեր պահանջում և այլն։ Այդ է պատճառը, որ ուշ շրջանի հայ ազգագրության մեջ ջրի պաշտամունքը հանդես է գալիս չար վիշապների հետ կապված կամ էլ լոկ իբրև տարերքի պաշտամունք, տարերք, որը հրաշագործ ուժ և ունակություններ ունի։ Գանձակի շրջանում մինչև վերջերս էլ հավատում էին, որ անմատչելի վայրերում կան անմահության բերող աղբյուրներ, որոնց վրա հսկում են վիշապներն ու յոթ գլխանի դևերը։ Բուլանըխում պատմում էին, որ մատակը մտավ Վանա ծովը և հրեղեն գոմեշից հղիացած ձագ ունեցավ[62]. նույնը պատմում էին Սևանա լճի ափերին Նորատուսի գյուղացիները։ Վասպուրականի սրբազան աղբյուրներից մեկը բխեցրել էր Քուռկիկ Ջալալին՝ սմբակի հարվածով[63] և այլն։ Նախնիների խոր համոզմամբ լեռնային աղբյուրների ու գետերի ջրերը ամոքում էին մարդկանց տխրությունը, վիշտը, հոգեկան ու ներքին հիվանդությունները, անասունների տարափոխիկ հիվանդությունները։ Հմայական գործողություններով, ջրի օգնությամբ, մարդիկ ձգտում էին պայքարել երաշտի, մորեխի և այլ վնասատուների դեմ, ամուլ կանայք ձգտում էին երեխա ունենալ, նորահարսերը ցորենի հատիկներ էին գցում աղբյուրների մեջ և այլն։ Այս ամենը անքակտելի կապի մեջ էր օրգանական աշխարհի վերածնման ու զարթոնքի գաղափարի հետ։ Այդ պատճառով էլ շատ աղբյուրներ ու գետեր, նույն թվում Արաքսը, Եփրատն ու Տիգրիսը, սրբազան էին համարվում։ Տիգրիսի ակունքը մինչև վերջերս էլ պաշտվում էր Շատախի հայ, ասորի ու քուրդ բնակիչների կողմից, Եփրատն անցնող մարդը նվիրական էր համարվում, աղջիկ երեխաների անունները հաճախ Արաքս ու Եփրատ էին դնում։

**Ոռոգական հավատալիքներ:** Ինչպես վերը տեսանք, Հայկական բարձրավանդակի հարուստ կենդանական աշխարհը, ի սկզբանե անտի զարգացող

---

59 Տե՛ս *А. Р. Исраелян*, Культ и верования в Армении в эпоху поздней бронзы, էջ 15—19։ Վիշապների մասին տե՛ս *Н. Я. Марр, Я. И. Смирнов*, Вишапы, „Труды ГАИМК" Л., 1931; Մ. Աբեղյան. *Վիշապներ կոչվող քարակոթողները*, Երևան, 1941.

60 Տե՛ս Եզնկայ վարդապետի Կողբացւոյ, Եղծ աղանդոց, Տփխիս, 1914, էջ 72—73, Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հատ. 1, Երևան, 1944, էջ 35։

61 Տե՛ս Վ. Ն. Խաչատրյան, *Խեթա-հայկական դիցաբանական ընդհանրություններ*, ԼՀԳ. 1967, № 8, էջ 79։

62 Տե՛ս «Ազգագրական հանդես», 1900, Բուլանըխ, էջ 41։

63 «Ազգագրական հանդես», 1916, Վասպուրական, էջ 195—210։ (Վերը բերված նյութերը սիրահոժար տրամադրեց մեզ ազգագրագետ Ա. Ա. Օդաբաշյանը)։

խաշնարածությունն ու որսորդությունը, տոտեմական և որսորդական հավատալիքների ու պաշտամունքի հորդառատ աղբյուրներ էին։ Հայ ժողովրդական հեքիաթները, առասպելները, հանելուկները, էպոսը լի են որսորդ նախնիների, դյուցազունների, աստվածների կերպարներով, որոնք մարտնչում էին վիշապ օձերի, դևերի, կատաղի ցուլերի, «ասլան ղափլաններին» դեմ։ Սասնա դյուցազուններն էլ մանուկ Դավթի նման, երբեմն հանդես են գալիս իբրև խաշնարած-որսորդներ[64]։ Հայ ժողովրդական մտածողության մեջ պահպանված այս պատկերացումները անկասկած գալիս են ուշ բրոնզի դարի երբեմնի շքեղ հավատալիքներից, պաշտամունքից, հարուստ ծիսական արարողություններից։



Մարտակառքի բրոնզե մոդել. Լճաշեն

Այդ մասին են վկայում ուշբրոնզեդարյան գոտիների գծազարդ պատկերները և վերադիր ֆիգուրներով ձևավորված խեցեղենի որսորդական սյուժեները։ Ախթալայի բրոնզե գոտու վրա պատկերված են զգեստավորված որսորդներ՝ լայնալիճ աղեղով և թռչնագլուխ գիմակներով։ Սևանի շրջանի նույնատիպ գոտիներից մեկի վրա զինված որսորդները հանդես են գալիս քառաթև

64 Տե՛ս «Սասունցի Դավիթ», էջ 159—169։

*աստղի, առասպելական ձիերի ու թռչունի հետ միասին*[65]։ *Դվինի նախահայկական շերտում հայտնաբերված պաշտամունքային երևելի կարասներից մեկի վրա պատկերված են լեռներ ու աստղազարդ երկինք, արևի սիմվոլներ, որսի պես-պես կենդանիներ, նետ ու աղեղով զինված հեծյալ որսորդներ և վերջապես անտառի ոգու կամ որսի աստվածության կերպար*[66]։

*Հայկական լեռնաշխարհի ու Կովկասի շատ ուրիշ գոտիների վրա էլ (Նոյեմբերյան, Շամքոր, Թռեղք, Տլի) ներկայացված են դիմակավորված ու զգեստավորված կիսամարդակերպ սպառազեն որսորդների կերպարներ, որոնք, հաճախ շների օգնությամբ, հետապնդում են եղջերուների, վագրերի ու այլ կենդանիների ամբողջ խմբեր։ Սրանք բոլորն էլ կրոնական հմայական նշանակություն ունեցող սյուժեներ են, որոնց մեջ կարծես ավելի շեշտված են անտառների ու որսի աստվածությունները։ Այդ մասին են վկայում ոչ միայն որսի տեսարանների տարբեր մասերում և նույնիսկ գազանների պատկերների վրա հանդիպող երկնային խորհրդանիշները (կրկնակի և վազող պարույրները, թևավոր ու կլոր աստղերն ու աստղիկները, կենդանիների գլուխները և այլն), այլև ազգագրական հարուստ տվյալները։*

*Այս նյութերը պատմում են մթին անտառների խորքերում ապրող որսի ու գազանների աստվածների մասին, որոնց կամքին ենթարկվում էր ողջ բուսական ու կենդանական աշխարհը, որոնց կամքով էին տրվում որսորդներին վայրի գազաններն ու թռչունները*[67]։

**Երկրագործական «Մայր աստվածության» պաշտամունք**: *Պաշտամունքային բացառիկ նշանակություն ունեցող հուշարձանների թվին են պատկանում բրոնզեդարյան տներում՝ հացահատիկների հորերի մոտ հայտնաբերվող բազմապիսի մարդակերպ քարակոփ կուռքերը, որոնք պայմանականորեն ներկայացնում են Առաջավոր ու Փոքր Ասիայում, Էգեյան ողջ աշխարհում լայնորեն տարածված մայրաստվածության գաղափարը խորհրդանշող կնոջ կերպարը։ Այդ անպաճույճ կուռքերը մարմնավորում էին տեղաբնակ երկրագործների ու անասնապահների ընդհանրացված պատկերացումները բուսական ու կենդանական աշխարհի, մարդկային սերնդի վերարտադրության, նորոգման ու ծաղկման՝ լայն առումով պտղաբերության գաղափարը*[68]։ *Բնորոշ է, որ նրանք իրենց ձևաբանական, ընդհանուր տիպաբանական հատկանիշներով կապվում են Էգեյան աշխարհում հայտնաբերված տասնյակ և հարյուրավոր կանացի արձանիկների հետ, իսկ իրենց վրա պարզած թևերի բուսական խոր զարդանախշերով հիշեցնում են Արևելքի ու Արևմուտքի պտղաբերության, մեռնող ու հարություն առնող աստվածների կերպարները։ Վերոհիշյալ բոլոր ար-*

---

65 *Տե՛ս* Հ. Մնացականյան, *Արևապաշտության հետքերը Հայաստանում, Աշխատություններ Հայաստանի պետական պատմական թանգարանի, Ա հատոր, Երևան, 1948։*

66 *Դվինի արշավախմբի 1960—1962 թվականների պեղումների արդյունքներից։ Նյութերը ցուցադրված են Հայաստանի պետական պատմական թանգարանում և մասամբ հրատարակված* Կ. Գ. Ղաֆադարյանի *«Դվին քաղաքի հիմնադրման ժամանակի և միջնաբերդի հեթանոսական մեհյանի մասին» հոդվածում, ՊԲՀ, 1968, № 2, էկ. 6։*

67 *Ուշբրոնզեդարյան պաշտամունքի և արվեստի մասին տե՛ս Б. Б. Пиотровский,* Археология Закавказья, *էջ 87—97 և А. Р. Исраелян,* Культ и верования в Армении в эпоху поздней бронзы, *էջ 69—90։*

68 *Տե՛ս А. А. Мартиросян,* Город Тейшебаини.

ծանիկներն ու Հայաստանի ուշբրոնզեդարյան կանացի կուռքերը արտահայտում են «մայր-երկիր-ծառ-կին» նախասկզբնական համամարդկային սինկրետիկ գաղափարը, որն առանձնապես հստակ է դրսևորվում արևելյան կրոնի ու արվեստի մեջ։

Այստեղ պտղաբերության աստվածությունները պատկերվում էին հաճախ կամ ծառից դուրս եկող կանացի իրանի ձևով, կամ կնոջ կերպարանքով, որի ուսերին դալար ճյուղեր կան։

Հեթանոսական Հայաստանի Անահիտ աստվածուհին, որի պաշտամունքն այս երևույթի բնական շարունակությունն էր, տիպիկ արևելյան այսպիսի մի աստվածություն էր։ Ժամանակակիցները նրան «ոսկեմայր», «ոսկեհատ» ու «ոսկեծին» էին հորջորջում։ Նրան զոհաբերում էին առաջին բերքի ցորենի ու գարու հասկերը, արձանը պատում ծառերի դալար շիվերով ու պսակներով, մեհյանները կառուցում կուսական անտառների մեջ ու նրանց նվիրաբերում սրբազան ցուլերի անձեռնմխելի հոտեր։ Պտղաբերության մայր-աստվածության պաշտամունքը համընդհանուր երևույթ էր, որ սկիզբ էր առել քարեդարյան ժամանակաշրջանում և անընդհատ զարգանալով ու կերպարանափոխվելով հասնում է մինչև քրիստոնեություն, իսկ ժողովրդական արարողությունների, հանդեսների ու ծեսերի մեջ պահպանում է իր առանձին հետաքրքիր հատկանիշները մինչև մեր օրերը։

**Անդրշիրիմյան կյանք:** Գրավոր աղբյուրների բացակայության պատճառով բրոնզեդարյան Հայաստանի հոգևոր կյանքի շատ երևույթներ մնում են մութ ու անբացատրելի։ Խոսքը վերաբերում է մասնավորապես թաղման բազմապիսի սովորույթներին ու ծիսակատարություններին, դամբարանների և հուղարկավորության տարբեր ձևերին, որոնց մասին, այնուամենայնիվ, կարելի է որոշ պատկերացում ստանալ հնագիտական պեղումների արդյունքներից։ Առայժմ կարելի է միայն նշել, որ Հայաստանի տարբեր շրջաններում, տոհմական ու ցեղային տարբեր արեալների մեջ հանդիպում են դամբարանների բազմապիսի ձևեր (հիմնահողային, քարարկղային մենհիր-կրոմլեխների, դոլմենների, մեծ դամբարանաթմբերի) և թաղման զանազան եղանակներ (մեկուսի, զույգ, ընտանեկան կամ խմբային, պառկեցրած, նստեցրած, դիակիզված և այլն), որոնք բխում էին նախնադարյան հասարակության տոհմա-ցեղային կառուցվածքի առանձնահատկություններից, սոցիալական-տնտեսական տարբերություններից և իհարկե, ազգագրական ու պաշտամունքային պատկերացումների զանազան երանգներից։

Բոլոր դեպքերում բրոնզեդարյան մեր նախնիները հավատում էին անդրշիրիմյան կյանքի գոյությանը և այդ պատճառով էլ տների նմանվող դամբարանների մեջ ցեղակցի աճյունի հետ միասին տեղավորում էին կերակուր ու տնային սպասքի առարկաներ, զենքեր և աշխատանքի գործիքներ, զարդեր, սպանված անասունների ամբողջական մարմիններ կամ որոշակի մասեր, որոնք պիտի շարունակեին ծառայել տիրոջը հանդերձյալ կյանքում։ Այդ երևույթը դիտվում է բոլոր հին ժողովուրդների մոտ՝ Ասիայում, Աֆրիկայում և Եվրոպայում։

Աշխատանքի խոր մասնագիտացումը և սոցիալական տրոհումը ուշ բրոնզի ժամանակաշրջանում իր արտացոլումն էր գտնում նույնիսկ անդրշիրիմյան

*պաշտամունքի ու ծիսակատարությունների մեջ։ Դամբարանային իրերի կոմպլեքսները խստիվ սահմանափակված, տարբերոշված ու «մասնագիտացված» էին։ Նրանց կազմը տարբեր էր ոչ միայն կանանց ու տղամարդկանց, այլև զանազան զբաղմունքի մարդկանց պատկանող դամբարաններում։ Քուրմի հետ դամբարան էին իջեցնում պաշտամունքի առարկաներ, ցեղապետի հետ՝ զենքեր, արդ ու զարդ, մարտակառք, ստրուկներ և այլն, զորականի հետ, բացի ընդհանուր պարագաներից, պարտադիր կարգով դնում էին զենքեր, երկրագործի հետ՝ մանգաղներ ու այլ գործիքներ, հյուսնի հետ՝ կացիններ, դուրեր, բրոնզագործի հետ՝ ձուլման կաղապարներ և այլն։ Այս սովորույթը երկար ժամանակ պահպանվում էր Լոռվա, Նոր Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի և այլ շրջանների գյուղացիների մոտ։*

*Դամբարանային իրերը, սակայն, խստիվ սահմանազատված էին նաև պաշտամունքային նշանակության առումով։ Հետաքրքիր է, որ հների համոզմամբ դամբարաններում հանդիպող կոշկաձև խեցանոթները «արագացնում էին» ննջեցյալի անցումը դեպի անդրշիրիմյան աշխարհ։ Ամենուրեք հայտնաբերվող ձիասարքերն ու զարդերը փոխարինում էին իրական ձիուն։ Հեքիաթների ավանդական հերոսները ձիասանձը թափահարելով ծովի հատակից դուրս էին կանչում խմաստուն ձիերին, որոնք կարող էին թռցնել մարդկանց ծովերի ու օվկիանոսների վրայով, ի վիճակի էին իրագործել նրանց ամենաանհրաժեշտ ... կայելի երազները։*

*Հայոց հինավուրց հեքիաթներից կարելի է բերել բազմաթիվ օրինակներ հանդերձյալ կյանքի, մեռելների հարության, կենդանի մարդկանց մեռելների հետ թաղելու, մեռյալների քաղաքների ու երկրների, նույնիսկ անդրշիրիմյան սիրային ռոմանտիկայի մասին[69], որոնց արմատները նախնադարյան հնություն ունեն։*

*Այս բոլորի հետ միասին Հայաստանում դեռևս հարատևում էին ոգեպաշտական ու տոտեմական գաղափարաբանությունն ու հավատալիքները։ Դամբարաններում հաճախակի հանդիպող թռչնային ու կենդանական (առյուծ, ցուլ, բադ և այլն) արձանները զանազան ցեղերի ու տոհմերի տոհմանիշներ կարող էին լինել։*

*Ուշբրոնզեդարյան կրոնական հավատալիքների և արվեստի մանրազնին ուսումնասիրությունը բերում է այն համոզման, որ մ. թ. ա. II—I հազարամյակների սահմանագլխին նախնադարյան կրոնական պատկերացումների մեջ տեղի էին ունեցել որակական, սկզբունքային փոփոխություններ, որոնք հող էին նախապատրաստում վաղ պետականության շրջանի հեթանոսական կրոնի և արվեստի համար։ Այդ է պատճառը, որ բրոնզեդարյան արվեստի հոգևոր հուշարձանները հնարավոր է մեկնաբանել ժամանակակից հայ ազգագրության և բանահյուսության նյութերով։ Եթե հայ հոգևոր մշակույթի ակունքները կարելի է փնտրել բրոնզեդարյան ավանդական մշակույթի խորքերում, ապա հայկական առասպելաբանության, բանահյուսության և ազգագրության մեջ է մեր հեռավոր նախնիների գաղափարաբանության և կրոնական պատկերացումների մեկնաբանման բանալին։*

---

69 *Տե՛ս «Հայ ժողովրդական հեքիաթներ» (Ա. Մ. Նազինյանի խմբագրությամբ) հատ. 3, Երևան, 1962, էջ 332—334։*

## ԲԱԺԻՆ Գ

# ՎԱՂ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՈՒՐԱՐՏՈՒ /ՎԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ/

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՈՒՐԱՐՏՈՒ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

## 1. ՑԵՂԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԴԵՊԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ

**Ուռուատրի–Նաիրի ցեղային միավորումները:** *Ներկայումս հայտնի գրավոր աղբյուրներն ու հնագիտական տվյալները դեռևս անբավարար են արտացոլում Ուրարտական պետության կազմավորման պրոցեսն ու նրա պատմության նախնական շրջանը։*

*Այս պրոցեսի հիմքում ընկած էր իրար ազգակից խուռի-ուրարտական ցեղերի համախմբումը, ցեղեր, որոնք բնակվում էին Հայկական լեռնաշխարհի տերիտորիայում, մասնավորապես Վանա լճի շրջանում, որտեղ առավել նպաստավոր պայմաններ կային անասնապահության և երկրագործության համատեղ զարգացման համար։*

*Մ. թ. ա. XIII դարի ասսուրական գրավոր աղբյուրները առաջին որոշակի տեղեկություններն են տալիս Հայկական լեռնաշխարհի երկրների մասին։ Այդ տեղեկությունները գալիս են ասորեստանյան արքաների դեպի հյուսիս կատարած արշավանքների նկարագրություններից։ Ինչպես հայտնի է, Ասորեստանի թագավոր Սալմանասար Ա-ի (1266—1243 թթ.) արձանագրության մեջ առաջին անգամ հիշատակվում է Ուրուատրի տերմինը, այն երկրների միության անունը, որոնց դեմ ասսուրական թագավորը արշավանք էր կազմակերպել իր գահակալության առաջին տարիներին*[1]*։ Արձանագրությունը պատմում է Ուրուատրի ընդհանուր անվան տակ միավորված ութ երկրների հպատակեցման մասին. դրանք գտնվում էին Վանա լճից հարավ-արևելք ընկած լեռնոտ վայրում, հավանաբար, Մեծ Զաբ գետի վերին հոսանքում։ Սալմանասար Ա-ի արձանագրության մեջ ասված է. «...ըմբոստացան իմ դեմ ուրուատրեցիները... Ես բարձրացա դեպի նրանց հզոր լեռնաշղթաները (՞), Խիմմե, Ուատկուն, Բարգուն (կամ Մաշգուն), Սալուա, Խալիլա, Լուխա, Նիլիպախրի և Զինգուն ութ երկրներին և նրանց աշխարհազորին ես հաղթեցի, նրանց 51 բնակավայր ես ավերեցի, հրկիզեցի, հափշտակեցի նրանց գերիներին և ունեցվածքը... Լեռների ծանր տուրքը ես հավիտյանս գրեցի նրանց վրա։ Արինինա քաղաքը..., որը սկզբում ըմբոստացավ... այդ քաղաքը... ես հաղթեցի, ավերեցի... Այն ժամա-*

---

[1] *Տե՛ս* АВИИУ, 2.

նակները ես Մուծրու երկիրը խոնարհեցրի իմ տիրակալ Աշշուրի ոտքերի տակ»[2]։

Իր հետագա արշավանքներից մեկը Սալմանասար Ա-ը ուղղում է դեպի Հայկական լեռնաշխարհի արևմտյան շրջանները՝ «Ուրուատրու (երկրի) սահմանից մինչև Կադմուխի»։

Իր նախորդի՝ Ադադներարի Ա-ի նման, Սալմանասար Ա-ը արշավանք է ձեռնարկում նաև Միտաննիի դեմ և հասնում է մինչև Կարքեմիշ։ Ըստ երևույթին, հենց ասորեստանյան վտանգն է, որ խեթական թագավոր Խատտուսիլիս Գ-ին (1275—1250) ստիպում է հաշտությամբ վերջացնել Ասորիքին ու Պաղեստինին տիրելու համար Եգիպտոսի դեմ մղվող գրեթե հարյուրամյա պատերազմները։ Ընդ որում, Պաղեստինն անցնում է Եգիպտոսի փարավոն Ռամսես Բ-ին, իսկ Ասորիքի մեծ մասը՝ Խատտուսիլիս Գ-ին[3]։

---

2 Ժամանակին Ն. Ադոնցը տվել է Սալմանասար Ա-ի արձանագրության մեջ հիշատակված երկրների մեծ մասի ճիշտ տեղորոշումը (տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, Paris, 1946, էջ 63 և հաջ.)։ Խիմմեն տեղորոշվում է հին Հայկական Այտրուանք գավառի (այժմ՝ Տիարի) տերիտորիայում։ Այտրուանք անվան մեջ պահպանվել է Ուրուատրի անվանումը, որը Ստրաբոնը (XVI, 1, 25) հոմարեն իմաստավորմամբ, հաղորդում է ἐρετριεῖς ձևով, և պատահական չէ, որ Խիմմեն տեղադրված է Մեծ Զաբի միջին հոսանքի շրջանում, Կումմե||Կումմանիից ոչ հեռու։ Հնարավոր է, որ «Խիմմե»-ն «Կումմե»-ի տարընթերցումը լինի, որը ուկումանացիների շրջանն էր, համանուն կենտրոնում գտնվող սրբավայրով։ Շարադրվածից երևում է, որ Խիմմե-Կումմեն Ուրուատրի միության կենտրոնական շրջանն էր, որի շուրջը խմբավորված էին մնացած ութ ցեղերը։

Խիմմե-Կումմեի շրջանի հին հայկական Այտրուանք-Էրետրեյա (Ստրաբոնի հաղորդմամբ) անվանումը, որ համապատասխանում է Ուրուատրի տերմինին, ցույց է տալիս, որ նախապես այդպես է կոչվել հիշյալ ցեղային միության կենտրոնական մասը միայն, «Ուկումանացիների երկիրը»՝ Կումենու կենտրոնով։ Ավելի ճիշտ կլինի ասել, որ Մեծ Զաբի հովտի ցեղերի ողջ համադաշնակցությունը ասորեստանցիները իրենց սահմանակից շրջանի անունով կոչում էին Ուրուատրի։ Խիմմե-Կումմե շրջանը Ասորեստանին անմիջականորեն սահմանակից էր Տաս լեռնաշղթայով (հին հայկական Դասն)։ Ուատկուն շրջանը ենթադրաբար տեղորոշվում է Շեմդինան-սու գետի ձորում։ Երրորդ շրջանը՝ Բարգունը (տարընթերցումն է՝ Մաշգուն) տեղորոշվում է Արևելյան Խաբուր գետի հովտում։ Չորրորդ՝ Սալուայի շրջանը պետք է համապատասխանի Պլինիոսի հիշատակած silices ցեղի բնակավայրին, ներկայիս Ռևանդուզից հյուսիս, հին հայկական Մահկերտուն կամ Մարձին գավառի տերիտորիայում։ Խալիլայի շրջանը դժվարությամբ է տեղորոշվում, իսկ վեցերորդը՝ Լուխին, տեղադրվում է Արևելյան Խաբուր գետի վերին հոսանքի շրջանում, ուր գտնվում է ասսուրական աղբյուրներում հիշատակվող էլուխատ Eluḫat (տարընթերցումն է էլուկաշ, հին հայկական Ալկի ամրոցի տեղում, այժմ՝ Էլք) ամրոցը։ Նիլիպախրիի շրջանը ենթադրաբար տեղադրվում է Բարազգիր գետի ձորում, իսկ վերջին՝ Զինգունի շրջանը դժվար է տեղորոշել։ Հիշատակված շրջաններից հյուսիս, ներկայիս Ջուլամերկի և Մեծ Զաբ գետի վերին հոսանքի շրջանում, գտնվում էր Մուծրու երկիրը։ Մուծրու անվան մեջ պետք է նշմարել հետագայում լավ հայտնի Մուսասիր անվան հնագույն ձևը։ Սալմանասար Ա-ի օրոք Մուծրուն այն ամենահյուսիսային երկիրն էր, որին հասել էին ասորեստանցիները Մեծ Զաբի հովտում։ Այդ արշավանքի երթուղու ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Սալմանասար Ա-ը իր զորքերով ներթափանցել է միայն Մեծ Զաբ գետի ձորը և Ասորեստանին էր ենթարկել այդ գետի աջակողմյան և ձախակողմյան վտակների ձորերում գտնվող շրջանները՝ Արևելյան Խաբուրի հովտի ընդգրկմամբ։ Ահա այն տերիտորիան, որն ընդգրկում էր Ուրուատրու երկրների համադաշնակցությունը։ Այսպիսով, պարզ է դառնում, որ այդ միության շրջաններից երկուսի՝ Խալիլայի և Զինգունի տեղորոշումը Տիգրիսի ոլորանի շրջանում, ուր գտնվում էր Կադմուխի երկիրը, սխալ է (ծանոթ. պատ. խմբ.)։

3 Տե՛ս И. М. Дьяконов, Предыстория армянского народа, Ереван, 1968, էջ 98։



«Բալավաթյան դարպասի» բարձրաքանդակներից: Սալմանասարը դուրս է գալիս ճամբարից

Պետք է նկատի ունենալ, որ ասսուրական արձանագրություններում հիշատակվում են Ուրուատրիի ցեղային միության այն վայրերը միայն, որտեղ ասորեստանցիները ընդհարումներ են ունենում, և մեզ համար անհայտ է մնում, թե մինչև ուր էր հասնում նրա զբաղեցրած տարածությունը[4]։ Սակայն պարզ է, որ Ասորեստանը անմիջականորեն սահմանակից էր Ուրուատրի ցեղային միությանը։ Այս ցեղերի մեջ առանձնապես աչքի էին ընկնում ուկումանեցիները՝ իրենց Կումմե կենտրոնով (ուրարտ. Կումենու), որտեղ գտնվում էր Թեշուբ-Թեյշեբա աստծո տաճարը։ Ուկումանեցիները, հավանաբար, ուրարտալեզու էին։ Նրանց երկրից հյուսիս գտնվում էր Մուծրու երկիրը (Մուսասիրի նախորդը)՝ Արիննա քաղաքում գտնվող իր սրբավայրով, որն այն ժամանակ հավանաբար արդեն Խալդի աստծո պաշտամունքի կենտրոնն էր։ Մուծրու երկիրը, Արիննա քաղաքով, գտնվում էր Մեծ Զաբ գետի վերին հոսանքի շրջանում։ Ասորեստանցիները լավատեղյակ չէին Ուրուատրիից հյուսիս ընկած մարզերին և դրանք կոչում էին ընդհանուր բնույթի տերմիններով՝ Բաբխի (ուրարտ. «Բաբանախի», որ նշանակում է «լեռնային») կամ Խաբխի (Հայկական Տավրոսի լեռնային շրջանները)։

Քաշիարի (Մասիուս-Տուր-Աբդին) լեռների կիրճերը բնակեցնում էին «շուբարեցիներ» ընդհանուր անունը կրող բազմաթիվ ցեղեր։

Հասկանալի է, որ ասորեստանցիների արշավանքները, ստրուկներ և անասուններ ձեռք բերելու համար ձեռնարկվող ասպատակություններից բացի, նպատակ ունեին ապահովել իրենց պետության հյուսիսային սահմանների անվտանգությունը, որովհետև հյուսիսային սահմանի երկայնքով ապրող լեռնցիները հաճախ ներխուժում էին Ասորեստանի սահմանները՝ ստրկության տարված իրենց ազգակիցներին ազատելու և ավար ու անասուններ հափշտակելու նպատակով։ Սալմանասար Ա-ի որդու՝ Թուկուլթի-Նինուրտա Ա (1243—1221) թագավորի տեքստերում հանդիպում է արդեն Հայկական լեռնաշխարհի մի այլ ցեղային միության հավաքական անունը՝ «Նաիրի երկիրը», որը երկար ժամանակ, գրեթե մի ամբողջ դար, փոխարինեց Ուրուատրի երկրի անվանը։

Աշուր քաղաքում, Թուկուլթի-Նինուրտայի պալատում և տաճարում հայտնաբերված արձանագրություններում պատմվում է Ասորեստանի դեմ դուրս եկած Նաիրիի 43 ցեղապետների («թագավորների») մասին, որոնց երկրները մանրամասնորեն նշված չեն։ Ուշագրավ է, որ արձանագրություններից մեկը այդ ցեղապետների թվում հիշատակում է ոչ միայն «թագավորների», այլև «թագուհիների» (հմմտ. խեթերի թագուհի տավանաննասի և Առասխայի համայնական «թագուհիների» դերի հետ)։ Ասորեստանի թագավորներին հաջողվում է մի քանի ցեղապետի գերի վերցնել և ստիպել, որ տուրք վճարեն։ Այստեղ առաջին անգամ հանդես է գալիս Նաիրի տերմինը՝ որպես Հայկական լեռնաշխարհի ընդհանուր անվանումը ասսուրական տեքստերում, իսկ ասսուրական

---

[4] Ուրուատրի երկրի տերիտորիայի մասին տե՛ս նաև Я. А. Манандян, О некоторых спорных проблемах истории и географии древней Армении, Ереван, 1956. էջ 6։ Г. А. Меликишвили, Наири-Урарту, Тбилиси, 1954, էջ 150—151։

[5] Տե՛ս АВИИУ, 7.

թագավորի տիտղոսաշարը հարստանում է ևս մեկով՝ «Նաիրիի բոլոր երկրների արքա»[6]։

Թուկուլթի-Նինուրտա Ա-ը մեծ արշավանք է ձեռնարկում նաև «շուբարեցիների (այսինքն՝ խուրրիների) երկրի» քաքմի-լեռնցիների դեմ։ Իր արձանագրության մեջ նա հաղորդում է, որ անցել է հետևյալ երկրները. Կադմուխի, Պուշշի, Մումմի, Ալզի, (Ա)մադանի, Նիխանի, Ալայա, Տեպիզմի (կամ Տեբուրզի) և Պուրուլումզի[7]։

Հնարավոր է, որ հետագայում ևս Թուկուլթի-Նինուրտան արշավանքներ է ձեռնարկել դեպի լեռները։

Դեպի հյուսիս՝ Նաիրիի երկրները, Տիգրիսի ակունքներից սկսած մինչև Ճորոխ գետի ավազանում գտնվող Դայաենի երկիրը ասորեստանցիների կատարած արշավանքի մանրամասն նկարագրությունը պահպանվել է Թիգլաթպալասար Ա-ի (մ. թ. ա. 1115—1077) տարեգրության մեջ[8]։ Արշավանքն ուղղված էր ոչ թե դեպի Վանա լճից հարավ-արևելք ընկած շրջանները, ինչպես Սալմանասար Ա-ի ժամանակ, այլ դեպի Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասը, հարավից հյուսիս, ըստ որում ասորեստանցիները խորացան հակառակորդի երկրի մեջ ավելի քան 500 կմ։

Ասորեստանի թագավորի նպատակը սոսկ ավերումն ու կողոպուտը չէր։ Գերի թագավորների նկատմամբ ցույց տված բարյացակամ վերաբերմունքով նա ջանում էր հաստատուն դարձնել իր իշխանությունը Նաիրի երկրում։ Ուշադրության արժանի է նաև այն հանգամանքը, որ նկարագրված արշավանքում չի հիշատակվում Վանա լճի (որն անվանում էր «Նաիրիի ծով») շրջանը. հավանական է, որ ասորեստանցիները գիտակցորեն չէին ներխուժում հզոր ցեղային միության կենտրոնական մասը, ուր կարող էին հանդիպել առավել ուժեղ դիմադրության։

Հաջորդ XI—X դարերում ասորեստանյան թագավորները հիմնականում զբաղված էին Միջագետք թափանցած արամեացիների դեմ մղված պայքարով, և նրանց ասպատակությունները դեպի հյուսիս, ու դրա հետ միասին՝ համապատասխան երկրների հիշատակությունը՝ խիստ հազվադեպ է դառնում։

---

6 Նույն տեղում, 3։

7 Կադմուխին համապատասխանում է անտիկ աղբյուրների Zabdicenae, հայ Ծաւդեք, ասոր. Beth-Zabde, այժմ՝ Միդիադի շրջանը։ Ալզին տեղորոշվում է հին հայկական Անձիտ գավառում, ներկայիս Խարբերդի շրջանում։ (Ա)մադանին Ամեդու-Ամիդա քաղաք-պետության տերիտորիան է (այժմ՝ Դիարբեքիր)։ Նիխանին կոչվում է նաև Նիրիբու, Նիրբու, տեղորոշվում է Արևմտյան Տիգրիսի արևելյան ակունքների շրջանում։ Ալայան ենթադրաբար տեղադրվում է նույն շրջանում, Տեպիմզին (կարդացվում է նաև Տեբուրզի)՝ ըստ երևույթին միջնադարյան Դադիմայի շրջանում (այժմ՝ Դադեմ գյուղը)։ Պուրուլումզին համապատասխանում է հին հայկական Անգեղ-տուն գավառին։ Այս երկրների տեղորոշումը ցույց է տալիս, որ ասորեստանյան զորքերի երթուղին ձգվում էր հարավ-արևելքից հյուսիս-արևմուտք՝ Արևմտյան Տիգրիսի աջ ափի երկայնքով, ընդհուպ մինչև նրա արևմտյան և արևելյան ակունքները, ուստի և իրենց տեղադրությամբ կասկածելի Պուշշի և Մումմի երկրները կարելի է տեղորոշել Արևմտյան Տիգրիսի հարավային ափին, Դիարբեքիրի և Հասանքեյֆի միջև մի ինչ-որ տեղ։ Ալզի երկրում կային լեռնանցքներ, որոնք տանում էին դեպի Հայկական լեռնաշխարհի ներքին շրջանները, և Ասորեստանի թագավորի այս արշավանքը պետք է որ նաև հետախուզական բնույթ ունենար (ծանոթ. պատ. խմբ.)։

8 Տե՛ս АВИИУ, 10.

Մ. թ. ա. XI դարի ասուրական արձանագրություններում վերստին հանդիպում է Ուրուատրի ցեղային միության հիշատակությունը։ Սակայն Ադադներարի Բ-ի (մ. թ. ա. 911—890) ժամանակներից սկսվում է և Աշուրնասիրապալ Բ-ի (մ. թ. ա. 883—859) ժամանակներից սովորական է դառնում արդեն **Ուրարտու** տերմինի հիշատակությունը, հաճախ Նաիրիի հետ միասին, առանց այդ երկու տերմինների որոշակի սահմանազատման։

Մ. թ. ա. IX դարի կեսերը Առաջավոր Ասիայի պատմության մեջ նշանավորվում են իր սասանված ռազմական հզորությունը վերականգնած Ասորեստանի թալանչիական պատերազմների սաստկացումով։ Նվաճված երկրներում Ասորեստանի տիրապետությունը ամրապնդվում էր հրով ու սրով, անհնազանդ թշնամիների հետ հաշվեհարդար էր տեսնվում բացառիկ դաժանությամբ։ Բայց դրան զուգընթաց աճում էր այն երկրների դիմադրությունը, որոնց դեմ հանդես էին գալիս ասորեստանյան զորքերը։ Մանր ցեղերը միավորվում են խոշոր պետությունների մեջ և այդ հիմքի վրա ծնունդ են առնում Հին Արևելքի նոր պետություններ, որոնցից կարևորագույնը Ուրարտուն էր։

**Ուրարտական պետության առաջացումը:** Թե երբ է ծագել այդ պետությունը, ստույգ ասել դժվար է։ Հավանաբար, այն արդեն Աշշուրնասիրապալի (883—859) օրոք հիշատակվում է որպես թագավորություն, որը, թերևս, արդեն փորձեր էր անում ակտիվ ռազմական քաղաքականություն վարել Ասորեստանի նկատմամբ[9]։ Իսկ թե պետություն էր արդյոք Ադադներարի Բ-ի արձանագրության մեջ հիշատակված Ուրարտուն, թե միայն ցեղային միություն, առայժմ դժվար է ասել։ Հավանաբար, Ուրարտու պետության կազմավորումը տեղի է ունեցել 870—860-ական թթ.[10]։

Համենայն դեպս, Ասորեստանի Սալմանասար Գ (859—824) թագավորն իր գահակալության առաջին իսկ տարուց ստիպված էր պատերազմել այդ նոր թշնամու դեմ։ Ուրարտուի դեմ Սալմանասար Գ-ի ձեռնարկած արշավանքները լավ լուսաբանված են ոչ միայն տարեգրություններում, որոնք մանրամասն նկարագրում են ասսուրական զորքերի երթուղիները և հաղթանակները, այլև այդ արշավանքների առանձին դրվագների պատկերներում, որոնք պահպանվել են Նինվեից հարավ-արևելք, հնագույն Իմգուր-Էնլիլ քաղաքի ավերակներից գտնված այսպես կոչված «Բալավաթյան դարպասի» բրոնզե պաստառների վրա[11]։

Ասսուրական արվեստի աչքի ընկնող հուշարձաններից հանդիսացող այդ բրոնզե պաստառներից մեկի վրա ներկայացված են Սալմանասար Գ-ի գահակալության առաջին տարում ձեռնարկված արշավանքի դրվագները. այդ արշավանքը նրա տարեգրության մեջ նկարագրված է շատ համառոտ. «Սուգունիային, ուրարտացի Արամուի բերդին, ես մոտեցա, քաղաքը պաշարեցի, գրավեցի, նրանց զինվորներից շատերին սպանեցի, ավար տարա, նրանց քաղաքի դիմաց գլուխներից կույտեր սարքեցի, նրա շրջանի 14 բնակավայրեր ես հրկի-

---

9 Տե՛ս *N. Adontz*, Histoire d'Arménie, էջ 72։

10 Տե՛ս *И. М. Дьяконов*, Предыстория армянского народа, էջ 140։

11 *A. Billerbeck* und *F. Delitzsch*, Die Palasttore Salmanassars II von Balawat, „Beiträge zur Assyriologie", VI, 1908, 1.

զեցի։ Սուգունիայից ես հեռացա, իջա դեպի Նաիրիի ծովը, իմ զենքը ծովում լվացի, իմ աստվածներին զոհեր մատուցեցի»[12]։

Դարպասի պաստառի բարձրաքանդակի վրա պատկերված են տարբեր ժամանակներում և տարբեր վայրերում տեղի ունեցած, բայց միմյանց հետ կապված իրադարձություններ։ Պատկերները տեղավորված են երկու շարքով, ըստ որում գործողությունները պատկերված են հաջորդական զարգացումով՝ սկսած ստորին ձախ անկյունից, ուր պատկերված է ասորեստանցիների ռազմական ճամբարը։ Ճամբարից դուրս է ելնում զորքը՝ հեծելազորն ու հետևակը, որն ուղղվում է դեպի տարեգրության մեջ հիշատակված ուրարտական Սուգունիա ամրոցը։ Պատկերված է և Սուգունիայի գրավումը. սարի վրա կանգնած այրվող ամրոցը գրոհվում է երկու կողմից, պատերին հենած սանդուղքների օգնությամբ։ Ամրոցում երևում են պաշտպանները՝ ուրարտական նիզակավորներն ու աղեղնավորները։ Այս ամենի վերևում կա բացատրական մակագրություն. «Ես նվաճեցի ուրարտացի Արամուի Սուգունիա ամրոցը»[13]։

Ամրոցի գրավման տեսարանից աջ պատկերված է ուրարտացի գերիների մի խումբ։ Պաստառի վերին մասում ցույց է տրված ասորեստանյան զորքի անցումը դեպի Վանա լիճը՝ երեք լեռնանցքներով։ Վերին ձախ անկյունում պատկերված է Սալմանասար Գ-ի կողմից զոհեր մատուցելու տեսարանը Վանա լճի ափին, ուր կանգնեցված է Ասորեստանի թագավորի պատկերը կրող կոթող։ Զոհաբերությունը կատարում է ինքը՝ Սալմանասար Գ-ը, նրա կողքին երկու քուրմեր կան, ետևում երաժիշտներն են և զոհաբերվելիք անասունները։ Վերևում մակագրություն է. «Նաիրի երկրի ծովի մոտ ես արձան (իմ պատկերը) կանգնեցրի, իմ աստվածներին ես զոհեր մատուցեցի»[14]։

Մյուս բրոնզե պաստառների վրա ներկայացված են դրվագներ Սալմանասար Գ-ի հաջորդ արշավանքներից, մասնավորապես՝ ուրարտացի Արամուի Արզաշկու «արքունական» քաղաքի գրավումը, որ տեղի ունեցավ Սալմանասար Գ-ի գահակալության երրորդ տարում ձեռնարկված արշավանքի ժամանակ։ Այս արշավանքը շատ հեռավոր երթուղի ուներ, որ նման էր այն երթուղուն, որով շարժվել էր Թիգլաթպալասար Ա-ը։ Ասորեստանցիները Արզաշկուին մոտեցան Դայաենի երկրից։ Տարեգրությունները Ասորեստանի թագավորի անունից պատմում են.

«Ուրարտացի Արամուն վախեցավ իմ հզոր զենքի դաժանությունից և ուժեղ ճակատամարտից, լքեց իր քաղաքը (պատկերի վրա իսկապես ցույց է տրված այրվող ամրոցը առանց պաշտպանների)։ Նա բարձրացավ Ադդուրու լեռները. Նրա ետևից բարձրացա և ես, լեռներում ես ուժեղ ճակատամարտ տվեցի, 3400 ռազմիկների ես իմ զենքով կործանեցի, ինչպես Ադադը, հեղեղ տեղացի նրանց գլխին, լեռը կարմիր բրդի նման ներկեցի արյունով, գրավեցի նրա ճամբարը, նրա մարտակառքերը, հեծյալները, նիզակները, ջորիները, ունեցվածքը և հարուստ ավար բերեցի ես լեռներից։ Արամուն փրկելով իր կյանքը, փախավ

---

12 АВИИУ, 27 (I, 23).

13 АВИИУ, 29.

14 Նույն տեղում։



«Բալավուրյան դարպասի» բարձրաքանդակից: Ուրարտական Արզաշկու ամրոցի գրավումը

անմատչելի լեռան վրա. իմ հզոր ուժով, ինչպես վայրի ցուլ, ճզմեցի ես նրա երկիրը. բնակավայրերը ավերակների վերածեցի և հրկիզեցի»[15]։

Այնուհետև նկարագրվում է վերելքը դեպի Էրիտիա լեռը, ուր կանգնեցվում է Ասորեստանի թագավորի հսկայական պատկերը, արշավանքը դեպի Արամալի (իմա՝ Արմարիլի) երկիրը և այնտեղից դեպի Վանա լիճը, որի ջրերի մեջ լվանում են զենքերը, իսկ ափին՝ զոհեր մատուցում և կանգնեցնում թագավորի մի երկրորդ կոթող։

Բալավաթյան դռների բարձրաքանդակների վրա պատկերված է այրվող Արզաշկու քաղաքը՝ երկու շարք պարիսպներով, իսկ ամրոցի կողքին՝ ասորեստանցիների մարտը ուրարտացիների հետ, որոնք նահանջում են լեռները։ Հավանական է, որ երրորդ տարվա այդ նույն արշավանքին է վերաբերում նաև դարպասի պաստառներից մեկ ուրիշը, որի վերին մասում կա հակիրճ մակագրություն. «Ուրարտուի պարտությունը»[16]։ Այստեղ դարձյալ պատկերված է ճակատամարտը ուրարտացիների դեմ և մի մեծ այրվող ամրոց, որի մոտ ասորեստանցիները, վայրն ամայացնելով, կտրտում են ծառերը. հեռվում երևում են ոչ մեծ մի այլ ամրոց, ցցերի վրա բարձրացված թշնամիները և գլուխների մի կույտ՝ պարսպի մոտ։ Ամրոցից, մարդկանցով լցված քառանիվ սայլով, մեծ կարասի մեջ լցրած դուրս են բերում ավարը։ Այդ կարասները, որոնցից շատ է հանդիպում ուրարտական ամրոցների պեղումների ժամանակ, գլխավորապես գինի պահելու համար էին, բայց պաշարման դեպքում դրանց մեջ էին լցնում թանկարժեք իրերն ու կենսամթերքները[17]։

Դատելով ըստ Սալմանասար Գ-ի տարեգրությունների, Ուրարտական պետությունն արդեն բավական ընդարձակ տարածություն էր գրավում։ Ասորեստանի թագավորը ուրարտացիների դեմ մարտեր էր մղում և ավերում Արամուի ամրոցները Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում[18]։ Ասորեստանի թագավորի գահակալության առաջին և երրորդ տարիների արշավանքները մանրամասն են նկարագրված, բայց հետագա տարիների, մասնավորապես, տասնհինգերորդ տարվա իրադարձություններն արդեն նկարագրված են համառոտ։ Զուսպ արտահայտություններով հիշատակվում է ասորեստանցիների դժվար անցումը լեռների վրայով, բայց դեպի Ուրարտուի կենտրոնը, Վանա լճի շրջանը արշավելու մասին խոսք չկա։ Սա ցույց է տալիս Ուրարտուի հզորության աճը. հավանաբար, Սալմանասար Գ-ը լավ էր տեսնում հյուսիսից սպառնացող վտանգը, բայց այն կանխելու համար արդեն բավարար ուժ չուներ։

Սալմանասար Գ-ի գահակալության քսանյոթերորդ տարում (833) ասորեստանցիները կրկին ստիպված էին իրենց զորքերն ուղարկել Ուրարտու։ Բայց ծերացած արքան արդեն չի կարողանում անձամբ ղեկավարել արշավանքը և «Ուրարտուի կողմը» ուղարկված զորքի գլուխ է կանգնեցնում իր զորահրամանատարներից Դայան-Աշշուրին։ Ասորեստանցիների դեմ է ելնում Սեդուրին,

---

15 АВИИУ, 27 (II, 45).

16 Տե՛ս АВИИУ, 29.

17 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Кармир-блур, II, Ереван, 1952, էջ 54։

18 Արամու ուրարտացու Սուգունիա և Արզաշկու բերդաքաղաքների տեղադրման մասին եղած կարծիքների վերաբերյալ տե՛ս *Б. Б. Пиотровский,* Ванское царство (Урарту), М., 1959, էջ 55—56։

«Ուրարտուի կառավարիչը»[19]։ Այսպիսով, Ուրարտուի կառավարիչ Արամուի անվան վերջին հիշատակումից տասներկու տարի անց, մ. թ. ա. 833 թ., տարեգրության մեջ հանդիպում է նոր փահակալի անուն՝ Սեդուրի (Սարդուրի՝ 845—825), մի անուն, որն արդեն կայուն տեղ է գրավում ուրարտական հետագա թագավորների դինաստիայում։

Մեզ հասած հնագույն ուրարտական հուշարձանները գտնվել են Վանի շրջակայքից և վերաբերում են մ. թ. ա. IX դարի երրորդ քառորդին։

Վանա ժայռի արևմտյան ստորոտի, Ուրարտուի մայրաքաղաք Տուշպայի միջնաբերդի մոտ պահպանվել է 0,75 մ լայնությամբ և մինչև 6 մ երկարությամբ հսկայական քարերից շարված կիկլոպյան պարիսպ։ Պարսպի քարերի վրա հայտնաբերվեցին Սարդուրի Ա թագավորի[20] երեք արձանագրություն՝ միևնույն բովանդակությամբ, ասուրերեն լեզվով։ Այնտեղ գրված է. «Սարդուրիի, Լուտիպրիի որդու, արձանագրությունը, մեծ թագավորի, հզոր թագավորի, տիեզերքի թագավորի, որին հավասարը չկա, զարմանալի հովվի, մարտից երկյուղ չունեցողի, թագավորի, որ ծնկի է բերել անհնազանդներին։ Սարդուրին (եմ), Լուտիպրիի որդին, արքաների արքան, որը բոլոր թագավորներից հարկ ընդունեց։ Սարդուրին, Լուտիպրիի որդին, ասում է. այս քարերը Ալնիունու քաղաքից ես բերեցի (և) այս պարիսպը կառուցեցի»[21]։

## 2. ՈՒՐԱՐՏՈՒԻ ՎԵՐԵԼՔԻ ՍԿԻԶԲԸ

**Սարդուրի I**: Սարդուրի Ա-ի քաղաքական և ռազմական գործունեության մասին մեզ հասած տեղեկությունները դժբախտաբար աննշան են։ Նրա արձանագրությունների մեջ[22] առանձնապես հետաքրքիր է արքայական տիտղոսաշարը, որն անշուշտ վկայում է այն մասին, որ Սարդուրին արդեն գերիշխում է նախկինում ինքնուրույն բազմաթիվ ցեղապետների, «թագավորների» և կառավարիչների վրա։

Ուրարտուի հզորացման փաստը Սարդուրի Ա-ի օրոք իր որոշակի արտացոլումն է գտել նաև ասորեստանյան թագավոր Սալմանասար Գ-ի տարեգրություններում և այլ արձանագրություններում, ըստ որոնց ասուրական զորքին սոսկ մի անգամ է հաջողվում, այն էլ սկզբնական շրջանում, ներթափանցել Ուրարտուի արևմտյան երկրամասերը։ Սա արդեն նման չէ այն սրընթաց և հաղթական արշավանքներին, որոնք ձեռնարկվում էին նույն թագավորի կողմից Սարդուրի Ա-ի նախորդի՝ Արամուի դեմ։

---

19 Տե՛ս АВИИУ, 28 (141).

20 Արդյո՞ք արձանագրության մեջ հիշատակված Լուտիպրիի որդի Սարդուրին Արամուի հաջորդն էր, թե այլ դինաստիայից էր։ Այդ հարցը լուծելու համար առայժմ տվյալներ չկան։ Բայց հարկ է նշել, որ Արամուի և Սարդուրիի անունների հիշատակությունների միջև ընկած տասներկուամյա ժամանակամիջոցում միանգամայն հնարավոր էր ևս մեկ կառավարչի գոյությունը։ Համե. Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 201։ Ն. Ադոնցի կարծիքով, Արամուն և Լուտիպրին թերևս միևնույն անձնավորությունն են. տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 191—192։

21 УКН, 1—3.

22 Տե՛ս նույն տեղում։

Դայան-Աշշուրի 833 թվականի արշավանքի ծայրագույն կետը Արածանիի ստորին հոսանքի շրջանն է, ուր նա հասնում է Բիտ-Զամանի երկրի (այժմ՝ Դիարբեքիրի շրջան) վրայով և անմիջապես դիմադրության հանդիպում Սարդուրի Ա-ի կողմից։ «Սեդուրի ուրարտացին,— ասված է տարեգրության մեջ,— լսելով այդ արշավանքի մասին, հույսը դնում է իր բազմաքանակ զորքի վրա և դուրս գալիս դեմ հանդիման, որպեսզի ճակատամարտ տա»։

Ճիշտ է, Սալմանասար Գ-ը հիշատակում է, որ ինքը ընդհարվում է Սարդուրի Ա-ի հետ և նրան պարտության մատնում՝ «նրա զինվորների դիակներով լցնելով ընդարձակ տափաստանը»[23], սակայն այս խոսքերից, որոնք չափազանց չոր ու ժլատ են (համեմատած այլ հաղթանակների փառաբանումների հետ), ինչպես նաև այն փաստից, որ այստեղ այլևս ոչինչ չի ասվում ուրարտական այլ տերիտորիաների նվաճման, ավարառության և այլնի մասին, երևում է, որ Սալմանասարի այս արշավանքը էական հաջողությունների չի հանգել։ Պատահական չէ նաև, որ արձանագրության մեջ շեշտված է ուրարտական զորքերի բազմաքանակությունը և Սարդուրիի անսասան կամքը՝ ճակատամարտը ընդունելու։

Հետագայում Ասորեստանը երեք տարի շարունակ զենք չի բարձրացնում Ուրարտուի վրա, իսկ այնուհետև, 830 թվականին, բավարարվում է Վանա լճից դեպի հարավ ընկած Խուբուշկիայի[24] ապստամբությամբ, ուր նրա թագավոր Դատանայից հարկ է ստանում[25]։ Հատկանշական է, որ Դայան-Աշշուրը չի համարձակվում այլևս ներխուժել Ուրարտուի տերիտորիայի խորքերը և շարժվում է դեպի հարավ-արևելք՝ Ուրմիա լճից հարավ ընկած երկրները (Մանա, Պարսուա)։ Հավանական է, որ Սալմանասար Գ-ի զորահրամանատարը Խուբուշկիայում դիմադրության է հանդիպել ուրարտական զորքերի կողմից և այդ պատճառով էլ փաստորեն ստիպված է եղել նահանջելու։ Համենայն դեպս Սալմանասար Գ-ը հաջորդ տարում (829) դարձյալ Խուբուշկիա է ուղարկում Դայան-Աշշուրին։ Այս անգամ ևս, ինչպես և նախորդ տարում, ասորեստանյան զորքը չի խորանում Ուրարտուի տերիտորիան, այլ շարժվում է դեպի հարավ՝ Մուսասիր, իսկ այնուհետև ընթանում դեպի հյուսիս-արևելք՝ Ուրմիա լճի արևմտյան ափերը (Գիլզան)։

Այսպիսով, Սարդուրի Ա-ի տիրապետության ժամանակաշրջանում արդեն սկսվում է Ուրարտուի վերելքը, որն արտահայտվում է ամենից առաջ նրա ռազմական հզորության աճման մեջ։ Ասորեստանը այլևս այն աստիճանի սարսափելի հակառակորդ չէր Ուրարտուի համար, ինչպես առաջ։

Առաջավոր Ասիայում իր առաջնությունն ապահովելու համար Ասորեստանի մղած շուրջ հարյուրամյա պատերազմները, բնականաբար, իրենց բացասական կնիքն էին դրել երկրի տնտեսական վիճակի վրա։ Դրան պետք է ավելացնել Սալմանասար Գ-ի թագավորության վերջին տարիներին պետության ներսում ծագած երկպառակությունը՝ Սալմանասարի որդիներից մեկի՝ 827 թվա-

[23] АВИИУ, 28 (141).
[24] Արևելյան Տիգրիսի (Ջերմ) հովիտը։
[25] Տե՛ս АВИИУ, 28 (159).

*կանին հոր դեմ բարձրացրած ապստամբությունը, որն ընդգրկեց թագավորության նշանակալից մասը*[26]։

*Է՛լ ավելի սակավ են տեղեկությունները Սարդուրի Ա-ի ներքին գործունեության մասին։ Հայտնի է, որ նա զգալի ծավալի շինարարական աշխատանքներ է ձեռնարկել Տուշպայում (հայկական Տոսպ, հետագայում՝ Վան)։ Այդ քաղաքի միջնաբերդի մոտ հսկայական քարերով կառուցված պարսպի վրա փորագրված արձանագրությունները, ինչպես նշվեց, հաղորդում են. «Այս քարերը Ալնիունու քաղաքից ես բերեցի (և) այս պարիսպը կառուցեցի»*[27]։ *Հետաքրքիր է, որ այդ պարսպի քարերը իսկապես միանգամայն տարբերվում են Վանի ու նրա շրջանի մյուս կառույցների քարերից։ Շինանյութի բերովի լինելը, գուցե և հեռավոր վայրերից*[28]*, անկասկած է, թեև Վանի շրջակայքում, ինչպես հայտնի է, քարը անպակաս է։ Այդ հանգամանքը վկայում է ոչ միայն այն առանձնահատուկ ուշադրության մասին, որը նվիրել է շինարարությանը Սարդուրի Ա-ը, այլև նրա ժամանակվա ուրարտական պետության նշանակալից նյութական հնարավորությունների մասին։*

*Այսպիսով, Սարդուրի Ա-ի ժամանակ սկզբնավորվել է շինարարական այն գործունեությունը, որը մեծ թափ ստացավ ու հսկայական ծավալի հասավ ուրարտական հաջորդ թագավորների օրոք։ Սարդուրի Ա-ի շինարարական գործունեությունը շարունակում է նրա որդի Իշպուինի թագավորը։*

**Իշպուինիի գործունեությունը:** *Իշպուինիի թագավորությունը տևել է շուրջ մեկ և կես տասնամյակ (825—810)։*

*Իշպուինիի մեզ հասած արձանագրությունները, որոնք գրված են արդեն ուրարտերեն լեզվով, թվով սահմանափակ են*[29] *և բացառապես շինարարական բնույթ ունեն։ Նրա շինարարական գործունեությունը ծավալվել է մի կողմից Ուրարտուի մայրաքաղաք Տուշպայում ու նրա շրջակայքում, մյուս կողմից՝ Արածանիի վերին հոսանքում։*

*Իշպուինին գերազանցապես զբաղվել է երկրի պաշտպանունակության ամրապնդմամբ՝ կառուցելով մի շարք ամրոցներ։*

*Ասորեստանի Սալմանասար Գ թագավորի մահվանից հետո, նրա որդին՝ Իշպուինիի ժամանակակից Շամշի-Ադադ Ե-ը (823—810) զգալի ջանքերի գնով կարողանում է վերջ տալ թագավորական իշխանության դեմ ձեռնարկված, տարիներ շարունակվող, ընդվզումներին և կրկին միավորել Ասորեստանը։ Որոշ նախադրյալներ են ստեղծվում փոքրիշատե վերականգնելու պետության տնտեսական և ռազմական խարխլված հիմքերը։ Սակայն Շամշի-Ադադը ի վիճակի չէր Ասորեստանին լիովին վերադարձնելու նրա երբեմնի հզորությունը։ Այսպես, ի տարբերություն իր նախորդների, Շամշի-Ադադը փաստորեն հրաժար-*

---

26 *Տե՛ս В. В. Струве,* История древнего Востока, М., 1941, *էջ 305—306։*

27 УКН, 1—3.

28 *Ալնիունու քաղաքի տեղը առայժմ պարզված չէ։ Լեման-Հաուպտը և Վ. Բելքը կարծում են, որ Սարդուրիի կառուցած պարսպի քարերը պետք է բերված լինեին հեռավոր վայրից՝ Վանա լճի վրայով Մանազկերտի շրջանից (տե՛ս C. F. Lehmann-Haupt,* Armenien einst und jetzt, Berlin und Leipzig, 1926, II, 2, *էջ 19—20)։*

29 *Տե՛ս* УКН, *4—18։*

վում է անդրեփրատյան երկրներում, հատկապես Ասորիքում, Ասորեստանի ունեցած գերիշխանությունից[30]։

Ուրարտուն, ընդհակառակը, շարունակում էր վերելք ապրել և տարեցտարի ավելի ու ավելի լուրջ ախոյան էր դառնում Ասորեստանի համար։ Նրանց ռազմական ընդհարումներն այլևս չական օգուտ չեն տալիս Ասորեստանին։ Շամշի-Ադադ Ե-ին մեկ անգամ է հաջողվում ներխուժել Ուրարտուին սահմանամերձ Խուբուշկիա երկիրը և նվաճել Ուրմիա լճից հարավ ընկած Շուրդիրա քաղաքը[31]։ Եթե այս վերջինը իսկապես Ուրարտուին էր պատկանում, ինչպես կարելի է եզրակացնել ասսուրական արձանագրություններից[32], ապա Ուրարտուն խիստ ընդարձակած պիտի լիներ իր սահմանները հարավ-արևելյան ուղղությամբ։ Այստեղ հիշատակված է Ուշպինայի (այսինքն՝ Իշպուինիի) 11 «քաղաքների» ու նրանց շուրջը ընկած բնակավայրերի գրավումը և Նաիրի երկրի թագավորներից որպես հարկ լծկան ձիերի ստանալը։

**Իշպուինիի և Մենուայի համատեղ գահակալությունը:** Ուրարտուի պատմության մեջ առանձնակի աշխուժություն է նկատվում հատկապես այն ժամանակվանից, երբ երկրի ղեկավարման գործին մասնակից է դառնում Իշպուինիի որդին՝ Մենուան։ Պահպանվել են ոչ մեծաթիվ, սակայն զգալի արժեք ներկայացնող արձանագրություններ՝ Իշպուինիի և Մենուայի համատեղ թագավորության վերաբերյալ[33]։

Իշպուինիի և Մենուայի համատեղ արձանագրություններում, մասնավորապես նշանավոր Քելիշինի երկլեզվյան ասուրա-ուրարտական արձանագրության մեջ[34] առաջին անգամ հանդիպում է Ուրարտու պետության ինքնանվանումը։ Այստեղ, ասսուրական տեքստում հանդես եկող «թագավոր Նաիրի երկրի» արտահայտության դիմաց, ուրարտական տեքստում կարդում ենք՝ «թագավոր Բիաինիլի երկրի»։ Այս անվանումը այսուհետև բազմիցս կրկնվում է ուրարտական բոլոր թագավորների արձանագրությունների մեջ որպես պետության անուն։ «Բիաինիլի» անունը հետագա սերունդներին հաղորդվել է «Վան» ձևով և Ուրարտուն հաճախ անվանում ենք Վանի թագավորություն[35]։

Իշպուինիի և Մենուայի օրոք Ուրարտուի սահմանները ընդլայնվում են ոչ միայն հարավ-արևելյան, այլև հյուսիսային ուղղությամբ։ Հարավ-արևելքում, օրինակ, նրանց տեսնում ենք նախ Արդինի-Մուսասիրում՝ Մեծ Զաբի վերին հոսանքի շրջանում, ուր երկրի նվաճումից հետո կառուցվում են պաշտամունքային շինություններ և զոհեր մատուցվում ուրարտական աստվածներին։ Այնուհետև, նրանք հասնում են Մեիշտա քաղաքը (Ուրմիա լճից հարավ, աս-

30 Տե՛ս *В. В. Струве*, История древнего Востока, էջ 36; *И. М. Дьяконов*, Развитие земельных отношений в Ассирии, Л., 1949, էջ 84։

31 Տե՛ս АВИИУ, 73.

32 Տե՛ս նույն տեղում, 34։

33 Տե՛ս УКН, 19—27.

34 Տե՛ս նույն տեղում, 19։

35 Սույն հրատարակության մեջ, սակայն, պահպանված է երկրի՝ գիտության մեջ ավանդաբար արմատացած «Ուրարտու» անվանումը, որը կիրառել են ինչպես ասորեստանցիները, այնպես էլ ուրարտական արքաներից Ռուսա Ա-ը, իր ասուրերեն արձանագրության մեջ (տե՛ս УКН, 264, ստ., 27)։

*բեստանյան Մես(ս)ի)*[35ա] *և ապա՝ մինչև Դիալայի (Տիգրիսի վտակի) ակունքները, ուր նվաճում են Բարշուա (Պարսուա) երկիրը և մեծահարուստ ավարով վերադառնում Ուրարտու։ Սրանով Ուրարտուն մարտահրավեր է նետում Ասորեստանին՝ ընդհուպ մոտենալով նրա արևելյան սահմաններին։*

*Հյուսիսային ուղղությամբ ձեռնարկված արշավանքների ընթացքում ուրարտացիները հասնում են մինչև Արաքս գետի վերին հոսանքը (Ուիտերուխի) և պատմական Կղարջք (Կատարզա)։ Հյուսիսում ընկած Էթիունի հզոր ցեղային միության օգնությունն անգամ ի վիճակի չի լինում կասեցնելու ուրարտական զորքերի հաղթարշավը հիշյալ երկրների վրայով։ Այդ հաղթանակների արդյունքներն այնքան էական էին ուրարտական պետության համար, որ Իշպուինին և Մենուան անհրաժեշտ են գտնում դրանք հավերժացնելու բազմաթիվ արձանագրություններով, որոնցից պահպանվել են չորսը*[36]*։*

*Այսպիսով, Իշպուինիի և Մենուայի թագավորության օրոք Ուրարտուն զգալի թվով տերիտորիաներ էր ընդգրկել իր սահմանների մեջ։ Այդ մասին տեղեկանում ենք ոչ միայն ռազմական արձանագրություններից, որոնց մեջ հիշատակվում են նվաճված երկրները, ոչ միայն այդ երկրներում կանգնեցված կոթողներից, այլև Ուրարտուի պաշտոնական պանթեոնը ներկայացնող հետագայում «Մհերի դուռ» անվանված հայտնի արձանագրությունից, որի մեջ թվարկված են ուրարտացիների կողմից պաշտվող և պետության մեջ մտնող մյուս երկրների, ցեղերի ու քաղաքների աստվածները*[37]*։*

## 3. ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ԵՎ ՓՈՔՐ ԱՍԻԱՅԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒ ՑԵՂԵՐԸ ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՆԱԽՕՐԵԻՆ

**Ցեղային կազմավորումներ Հայկական լեռնաշխարհում:** *Մ. թ. ա. X—IX դարերի ընթացքում աստիճանաբար ստեղծվում է քաղաքական այն իրադրությունը, որի հետ ստիպված եղան գործ ունենալ հետագա դարերի մեծ նվաճողները՝ ասորեստանցիներն ու ուրարտացիները։ Ըստ երևույթին, այդ դարերում Փոքր Ասիան աստիճանաբար ուշքի էր գալիս այն ցնցումներից, որոնք կապված էին խեթական թագավորության անկման հետ, իսկ Հայկական լեռնաշխարհում, արտաքին ներխուժումներից զերծ գրեթե երկուհարյուրամյա զարգացումը հնարավորություն ստեղծեց դասակարգային հասարակության ձևավորման և պետական կազմավորումների առաջացման համար։*

*Եփրատի վերին հոսանքի շրջանից հյուսիս (Ճորոխի հովտում) մ. թ. ա. XII դարից մինչև VII դարը վկայված է Դայաենի (ուրարտ. Դիաուխի, հայկ. Տայք) երկիրը, որն իր կազմի մեջ էր առնում մի շարք առանձին ցեղերի տերիտորիաներ։ Այստեղի բնակչությունը թերևս խուրրիական էր։ Թիգլաթպալասար Ա-ի տարեգրությունների համաձայն, մ. թ. ա. XII դարում արդեն Դայաենիի թագավոր Սենին առաջատար տեղ էր գրավում լեռնաշխարհի իշխողների շարքում։ Մ. թ. ա. VIII դարի մոտերքը Դայաենին լեռնաշխարհի ամենահա-*

---

35ա *Տե՛ս Н. В. Арутюнян*, Биайнили (Урарту), Ереван, *1970, էջ 143—144։*
36 *Տե՛ս* УКН, 20—23.
37 *Տե՛ս* УКН, 27.

բուստ թագավորություններից մեկն էր։ Վերին Եփրատի հովտով ու Բոնակապան լեռնանցքով (որը տանում է դեպի Ճորոխի հովիտը ներկայիս Բաբերդի շրջանում ու Գայլ-գետի (Լիկոս) հովիտը) անցնում էր Միջագետքից և Միջերկրականի ծովեզերքից Հայկական լեռնաշխարհի վրայով դեպի մերձսևծովյան մարզը տանող հիմնական առևտրական ճանապարհը[38]։ Այս ճանապարհն առանձնահատուկ նշանակություն է ստանում, հավանաբար, մ. թ. ա. VIII դարից սկսած, Պոնտոսի ծովեզերքում հունական գաղութների՝ Սինոպի և Տրապիզոնի ասպարեզ գալու հետևանքով, որոնք արծաթ և երկաթ էին արտահանում[39]։ Ուշագրավ է, որ ուրարտական աղբյուրները միայն այս ճանապարհի վրա ընկած երկրներից (Կումմուխ, Մելիտեա, Դիաուխի) ստացված տուրքի մեջ են ոսկի հիշատակում[40]։

Դայաենիից արևմուտք գտնվում էր այստեղ հաստատված կասկերի բավականին հզոր միությունը (Կասկու)։

Դայաենիից հյուսիս-արևելք, ուր դեռևս Թիգլաթպալասար Ա-ն էր նշում «Նաիրիի 60 թագավորների» դաշնակցության գոյությունը, մ. թ. ա. VIII դարում, գուցե և ավելի վաղ, գոյություն է ունեցել Կուլխա «թագավորությունը» (ավելի ճիշտ՝ Կոլխա, հունական Կողքիսը)։ Երբ ուրարտացիները տապալում են Դայաենի «թագավորությունը», Ճորոխ գետի ստորին հոսանքի շրջանը, ըստ երևույթին, բաժին է ընկնում Կողքիսին (Կուլխային)։

Վերին Եփրատի հովտում մասամբ պահպանվել էին նախկին երկրները, մասամբ էլ ստեղծվել նորերը։ Արածանիի ստորին հոսանքի հովտում հիշատակվում է Ալզի «թագավորությունը»։ Ալզին բավական մեծ երկիր էր, և գրավում էր ոչ միայն բուն Ալզիի տերիտորիան, այլև Իսուվայի նախկին տերիտորիան (ասսուրական աղբյուրները երկիրն անվանում են «Իշուա», հավանորեն որպես Ալզիի հոմանիշ), երբեմն հավանաբար նաև հարավկողմյան կից մարզերը՝ Էնզիտը (Անզիտենե, միջնադարյան Անձիտ), Տիգրիսի ակունքների շրջանը (միջնադարյան Անգեղտունը)։ Սեպագիր աղբյուրները հիշատակում են նաև Սուխմու (Ծուխմա, միջնադարյան Բալահովիտը) և Ծուփա (Ծոփք) երկրները։ Հիշատակվում են նաև մի քանի ավելի մանր երկրներ Վերին Եփրատի հովտի հարավային մասում (Դիրյու, Մալլաու, Նիրբու, Նիրդուն և այլն)։

Տիգրիսի վերին հոսանքի շրջանում գտնվում էր Ամեդու արամեական «թագավորությունը» (Ամիդա, այժմ՝ Դիարբեքիր)՝ Զամանի դինաստիայով («տուն»)։ Սասունի լեռներում ընկած էր Շուպրիա (կամ Շուբրիա) «թագավորությունը»։ Նրա կողքին՝ Սասնա լեռների հյուսիսային լանջերին, դեպի Մշո կողմը, ասսուրական և ուրարտական աղբյուրները հիշատակում են Ուրումու կամ Ուրմե երկիրը։ Այս երկիրը նույնական է Արմեի հետ, որը հիշատակում են ուրարտական աղբյուրները հենց այս նույն վայրում։

Ուրմեն և Շուպրիան հավանորեն միասնական թագավորություն են կազմել, որը և դարձել է հայկական առաջին պետական կազմավորումներից մեկը։

---

38 Տե՛ս *М. И. Максимова*, Античные города юго-восточного Причерноморья, М.—Л., 1956, էջ 13—15, 77։

39 Տե՛ս նույն տեղում, էջ 36, 43, 69, 76, 143—144։

40 УКН, տե՛ս գաղափարագրերի բառարանը՝ GUŠKIN բառի տակ։

*Այս շրջանից դեպի արևելք, նախկին Ուրուատրիի, Խաբխիի, կումանեցիների տեղում IX—VIII դարերի ընթացքում ձևավորվում են նոր կազմավորումներ։ Կենտրիտես-Բոհտան գետի հովտում, երբեմն տարածվելով դեպի արևելք, ընդհուպ մինչև Ուրմիա լճի ջրաբաժանը, փռված էր Խուբուշկիա «թագավորությունը», կամ ինչպես պաշտոնական կոչվել է՝ «Նաիրի թագավորությունը»*[41]*։*

*Մեծ Զաբի հովտում, մ. թ. ա. VIII դարի մոտերքը արդեն գոյություն ուներ Մուսասիր (Մուծածիր, ուրարտ. Արդինի) թագավորությունը։ Այս հովտում կային հարուստ տաճարներ, Կումենուում (Կումմե) գտնվում էր Թեյշեբա աստծո տաճարը, իսկ Արդինիում՝ Խալդի աստծունը։ Հետագայում Խալդիի տաճարում էին թագադրվում ուրարտական թագավորները և այնտեղ էին պահվում ուրարտական գանձերը, թեև ձևականորեն Մուսասիրը Ուրարտուի կազմի մեջ չէր մտնում*[42]*։ Խուբուշկիան և Մուսասիրը շրջապատող լեռներում բնակվում էին խուրրի-ուրարտական ավազակային ցեղեր՝ ուկկիացիներ և այլք*[43]*։*

*Ուրարտուում իշխող դինաստիան, դատելով մուսասիրյան Խալդիի աստծու պաշտամունքի հետ նրա ունեցած կապից, պետք է որ մուսասիրյան-կումանական ծագում ունենար*[44]*։*

*Ուրմիա լճից հարավ ընկած հարթավայրում գտնվող Մանա թագավորությունը (ասորեստանցիների մոտ՝ մանաեցիների երկիրը) կազմավորվել է մ. թ. ա. IX դարի վերջին, «Ներքին Զամուա» երկրի լուլուբեական տերիտորիայի վրա, բազմաթիվ մանր երկրների միաձուլման հետևանքով*[45]*։*

*Ունենալով արխաիկ հասարակական-պետական կարգ (հեղհեղուկ պետական կառուցվածքը, ծերակույտի մասնակցությունը կառավարման գործին)*[46]*, Մանան, այնուամենայնիվ, դառնում է քաղաքական մեծ ուժ, հաջողությամբ մրցակցում Ուրարտուի ու Ասորեստանի հետ և նվաճվում Մեդիայի կողմից մ. թ. ա. VII դարի վերջին—VI դարի սկզբին միայն, այս երկու տերությունների հետ գրեթե միաժամանակ։*

*Ուրարտու թագավորության կազմավորման կենտրոնից դեպի հյուսիս, ուրարտական արձանագրությունները հիշատակում են բազմաթիվ երկրներ ու ցեղեր՝ էթիունցիներին, էրիկուացիներին, աբիլիանցիներին, էրիախցիներին և այլոց, որոնք ստեղծել էին ընդարձակ, բայց անկայուն ցեղային միություն։*

---

41 *Բաղեշի լեռնանցքից հարավ գտնվում էր Գիլզանու երկիրը, որը հետագայում, հավանաբար, միաձուլվել է Խուբուշկիային։ Ավելի ուշ Գիլզանում Խուբուշկիայի հետ միասին մտել է Ուրարտու թագավորության կազմի մեջ (ծան. պատ. խմբ.)։*

42 *«Լուվրի աղյուսակ», տողեր 330—331։*

43 *Նրանք հաճախ են հիշատակվում ասորեստանյան թագավորական դիվանի նամակներում (տե՛ս, օրինակ,* АВИИУ, *50 (2, 3, 4, 10, 14, 25, 26 և այլն)։*

44 *Տե՛ս Г. А. Меликишвили,* Наири-Урарту, *էջ 368։ Այստեղից էլ Մուսասիրին հարևան Ասորեստանի զգալի ազդեցությունը ուրարտական գրի, մասնավորապես ուղղագրության վրա։*

45 *Տե՛ս И. М. Дьяконов,* История Мидии, М.—Л., 1956, *էջ 157, 162—173։*

46 *Տե՛ս Г. А. Меликишвили,* Наири-Урарту, *էջ 298—303։ И. М. Дьяконов,* История Мидии, *էջ 173—175, 205 և հաջ.։*

Սրանք զբաղեցնում էին ներկայիս Հայկական ՍՍՀ տերիտորիան և կից շրջանները Արաքսի հովտում։ Սրանցից հարավ և հյուսիս բնակվում էին Վիտերու, Լուշա, Կատարզա, Իյա (Իգանի), Զաբախա, Խուշա և այլն ցեղերը (Արաքս և Կուր գետերի վերին հոսանքների շրջանում և Չըլդըր լճի մոտ)։

Թվարկված երկրների էթնիկական պատկանելության մասին կարելի է ասել, որ դրանց մի մասը, թերևս, խուրրիական էր (Դայաենի, մասամբ՝ Շուպրիա, գուցե նաև Գիլզանու և Խուբուշկիա, ավելի քիչ հավանական՝ Մանա), մյուս մասը՝ ուրարտական (Ուրարտու, Մուսասիր)։ Վերին Եփրատի և ստորին Արածանիի հովտի բնակչությունը հավանաբար խառնված էր նոր հնդեվրոպական եկվորների՝ մուշկերի և ուրումեացիների հետ։ Այստեղ ստեղծվում էր ապագա հայ ժողովրդի կորիզը։

**Հայկական լեռնաշխարհի հասարակությունը մ. թ. ա. I հազարամյակի սկզբին:** Լեռնաշխարհի մ. թ. ա. I հազարամյակի հասարակության մասին քիչ բան գիտենք, բայց հավանական է, որ Ուրարտուի[47] և Մանայի[48] սոցիալական կարգը (որի մասին մի քանի տեղեկություններ են հասել մ. թ. ա. VIII—VII դարերից) բնութագրող որոշ ընդհանուր գծեր բնորոշ են եղել Հայկական լեռնաշխարհի մյուս քաղաքական կազմավորումներին ևս։ Դրանցից է, օրինակ, ազատ համայնականների առաջատար դերը, որոնք ապրում էին տոհմային համայնքով (սրանց բնակավայրերը կենտրոնացված էին պարսպապատ, ինքնավար ամրոց-բնակավայրերի կամ «քաղաքների» շուրջը)։

Մանայում հատկապես հստակորեն էր երևում, որ գերիշխանությունը պատկանում է տոհմացեղային օլիգարխիային։ Այստեղ, ինչպես և Դայաենիում, դեռևս զգալի չափով պահպանվել էր հասարակության ցեղային բաժանումը։ Թագավորի կողքին Մանայում գոյություն ուներ ավագների խորհուրդ, որ բաղկացած էր թագավորի ազգականներից, խորհրդատուներից, փոխարքաներից, հավանաբար նաև առանձին բնակավայրերի ավագներից և ցեղային առաջնորդներից։ Պետք է ենթադրել, որ լեռնաշխարհի մյուս երկրներում ևս, նախաուրարտական շրջանում, գոյություն են ունեցել ավագների այդպիսի խորհուրդներ։ Ստրկատիրությունը համեմատաբար թույլ էր զարգացած։

**Փոքր Ասիայի պետական կազմավորումները:** Խեթական թագավորության եկվոր ցեղերի կողմից ջախջախվելուց ավելի քան երեք դար հետո այստեղ ստեղծվել էր փռյուգական պետությունը։ Ասորեստանցիներն ու ուրարտացիները այդ թագավորությունը կոչում էին Մուշկու կամ Մուշկի։ Այդ արևմտյան Մուշկու երկիրը պետք է տարբերել արևելյան Մուշկուից, որը համընկնում է Ալզիի հետ և գտնվում էր Արածանու և Եփրատի միավորման վայրում։ Արևմըտյան Մուշկուի մայրաքաղաքն էր Գորդիոնը՝ Սանգարիա գետի վրա։ Ըստ ավանդության, քաղաքն այդպես էր անվանվել Փռյուգական տերության հիմնադիր, նրա առաջին թագավոր Գորդիոսի անունով։ Ավանդություններն ու

47 Տե՛ս *И. М. Дьяконов,* Некоторые данные о социальном устройстве Урарту. «Проблемы соц.-эк. истории древнего мира, Сб. памяти акад. А. И. Тюменева», М., 1963, էջ 55—65; *Г. А. Меликишвили,* Наири-Урарту, էջ 322—356։

48 *Г. А. Меликишвили,* նույն տեղում։ Նույնի՝ Некоторые вопросы истории Маннейского царства, ВДИ, 1949, № 1, էջ 57 և հետ.։ *И. М. Дьяконов,* История Мидии, էջ 173—175։



Սարդուրի Ա թագավորի ասուրերեն արձանագրությունը

պատմական աղբյուրները պահպանել են փռյուգական տերության թագավորներից միայն երկուսի՝ Գորդիոսի և Միդասի[49] (ասսուր. Միտա) անունները. ենթադրվում է, որ եղել են այդ անունները հաջորդաբար կրող մի քանի փռյուգական թագավորներ։

Մ. թ. ա. VIII դարի երկրորդ կեսին Փռյուգիան հասավ իր հզորության գագաթնակետին։ Նրա տիրույթները հարավ-արևելքում հասնում էին մինչև Կիլիկյան Տավրոս լեռնաշղթան, ըստ որում Միդասը փորձեր էր անում մտնել նաև Կիլիկիա։ VIII—VII դարերում փռյուգական արձանագրություններ հանդիպում են ոչ միայն Սանգարիա գետի հովտում, այլև Հալիսի ոլորանում ու նրանից հարավ։ Արևմուտքում Փռյուգիան հավանորեն իր ազդեցությանն էր ենթարկել Լյուդիային և հարաբերություններ ուներ մայրցամաքային Հունաստանի քաղաք-պետությունների հետ, թեև հունական դասական մշակույթի ազդեցությունը Փռյուգիայի վրա շոշափելի է դառնում Փռյուգական տերության անկումից հետո միայն։

Գորդիոնի պեղումներով հայտնաբերված հնագիտական հարուստ նյութերը բացահայտեցին Փռյուգիայի սերտ կապերը Ուրարտուի հետ։ Դրա ապացույցներից մեկն է ժայռերի մեջ ծիսական փորվածքներ՝ «աստծո դռներ», սարքելու սովորությունը, որը հատուկ էր երկու պետություններին էլ. դրանց առջև կրոնական արարողություն էր կատարվում։ Գլխավոր պաշտամունքը Փռյուգիայում մայր-աստվածուհի Կիբելեի (որ Կուբաբա անունով հայտնի էր դեռևս խեթա-խուռրիական մշակույթին) և նրա տարփածու Ատտիսի (բուսականության մեռնող և հարություն առնող աստվածը) պաշտամունքն էր։

Երկրպագում էին նաև Ման կամ Մեն լուսնի աստծուն (որի պաշտամունքը գուցե լուսնի աստված Արմասի հին փոքրասիական պաշտամունքի շարունակությունն էր), Սաբաձիոս աստծուն և այլն։ Թեև հունական արևմուտքի հետ Փռյուգական տերությունը, ինչպես երևում է, առանձնապես սերտ կապեր չուներ, սակայն մ. թ. ա. VIII դարում Փռյուգիայում գործածվում էր հունական ծագում ունեցող հնչյունական գիրը, համանման Լյուդիայի, Կարիայի, Լիկիայի այբուբենին, որ Փռյուգիա էր բերվել, հավանաբար, Կիլիկիայից։

Փռյուգիայից հարավ-արևելք, խեթական արձանագրություններում հիշատակվող Կիզզուվատնայի տեղում կային մի քանի փոքր թագավորություններ լուվիական («հիերոգլիֆ խեթական») դինաստիաներով։ Կարևորագույններից մեկն էր Տաբալը (Սեյխուն և Ենիչե-Իրմակ գետերի հովիտների վերին շրջանում), ուր մ. թ. ա. VIII դարում իշխում էր Բարվատասի (ասսուր. Բուրուտաշ) դինաստիան, որին ենթակա էին բազմաթիվ մանր «արքայիկներ»։

Թաբալից հարավ-արևելք գտնվում էր Կամմանու (Կոմանա) թագավորությունը, որի մայրաքաղաքն էր Մելիտեան կամ Մելիդը (Միլիդիա, խեթ. Մալդիա, այժմ՝ Մալաթիա)։ Այս թագավորության տիրույթները հասնում էին մինչև Եփրատ, իսկ ժամանակ առ ժամանակ անցնում նրանից այն կողմ՝ հասնելով գուցե և մինչև Տիգրիսի ակունքները։ Մ. թ. ա. VIII դարում Կարքեմիշն անգամ

49 Տե՛ս Herod., I, 14, 35, 45, VIII, 138։

Մելիդի թագավորին ընդունում էր որպես «մեծ»[50]։ Պաշտոնապես այդ թագավորությունը, ինչպես երևում է, կոչվում էր «խեթերի մեծ երկիր», հետևաբար հավակնություն ուներ խեթական թագավորության ավանդների շարունակողը լինելու։

Մալաթիայից հարավ գտնվում էր Կումմուխ (Կոմմագենե) թագավորությունը, իսկ Տաբալի և Մելիդ-Կամմանուի միջև (Ջեյխան գետի հովտում)՝ Գուրգում թագավորությունը՝ Մարկասու (այժմ՝ Մարաշ) մայրաքաղաքով։ Սեյխուն և Ջեյխան գետերի ստորին հոսանքի և Ալեքսանդրետի ծոցի մոտի արգավանդ ցածրավայրը զբաղեցնում էին դանունացիները[51] և Կուե կամ Կաուե (ի դեպ, հնարավոր է, որ այս երկուսը նույն թագավորության տարբեր անվանումները լինեն), իսկ նրանցից արևմուտք՝ Կիլիկիա (Խիլակկու) թագավորությունները։ Սրանք բոլորը նույնպես ունեին լուվիական դինաստիաներ[52]։ Լուվիական դինաստիաներ գոյություն ունեին նաև Հյուսիսային Ասորիքի մի քանի պետություններում (Կարքեմիշը, որը նույնպես պաշտոնապես կոչվում էր «Խաթթի թագավորություն», Սամալը և Յաուդին, Ունկու կամ Խաթթինա թագավորությունը՝ Օրոնտես գետի ստորին հոսանքում)․ այստեղի մյուս դինաստիաները արամեական էին (Արպադ թագավորությունը Ագուսու դինաստիայով, Խաթարիկա թագավորությունը)[53]։

Մ. թ. ա. IX դարի մոտերքը ձևավորվում է պետությունների «Հյուսիս-ասորիքյան միությունը», որի մեջ մտնում էին Կամմանու-Մելիդ, Կումմուխ, Գուրգում, Կարքեմիշ, Արպադ և Խաթթինա թագավորությունները։ Այս միության մեջ, տարբեր ժամանակներում, գերիշխող են եղել Մելիդը, Կարքեմիշը կամ Արպադը։ Սրա մրցակիցն էր «Հարավ-ասորիքյան միությունը»՝ Դամասկոսի կամ Խամատի գլխավորությամբ[54]։

Թվարկված բոլոր պետություններում, ընդհուպ մինչև Օրոնտեսի վերին հոսանքում գտնվող Խամատում, պաշտոնական արձանագրությունների համար օգտագործվում էին «խեթական հիերոգլիֆները» և լուվիերեն լեզուն, բայց որոշ երկրներում՝ նաև փյունիկերենը (դանունացիների շրջան), կամ արամեերենը (Սամալ, Արպադ և այլն) և հին սեմական հնչյունական գիրը։ Գրեթե բոլոր այս մանր պետություններն իրենց համարում էին խեթական թագավորության հաջորդները։ Մ. թ. ա. IX—VII դարերի ասորեստանցիների և ուրարտացիների համար «Խաթթին» (ասուրերեն) և «Խաթեն» (ուրարտերեն)՝ Եփրատից արևմուտք ընկած բոլոր շրջանների և դրանց բնակչության անվանումներն են՝ անկախ էթնիկական պատկանելությունից։ Հաճախ ասորեստանցիները «խե-

---

50 Այդպես է Կարքեմիշի թագավոր Արարասի արձանագրության մեջ։

51 Տե՛ս *И. Н. Винников*, Новые финикийские надписи из Киликии, ВДИ, 1950, № 3. էջ 86—87։ Նույնի, Вновь найденные финикийские надписи, ЭВ, 1951, էջ 121—133։

52 Դա երևում է անուններից, որոնց մեծ մասը ստուգաբանվում է լուվիերենով։

53 Տե՛ս *B. Landsberger*, Sam'al, Ankara, 1948, էջ 19—38։ *С. М. Бациева*, Борьба между Ассирией и Урарту за Сирию, ВДИ, 1953, № 2, էջ 17 և հաջ.։

54 Տե՛ս *С. М. Бациева*, նույն տեղում։

թերթ էին կոչում ոչ միայն փոքրասիացիներին, այլև Սիրիայի, Փյունիկիայի և Պաղեստինի բնակիչներին։

Այս բոլոր փոքր պետությունները, Փռյուգիայի նման, կապված էին Ուրարտուի հետ կուլտուր-տնտեսական ու քաղաքական կապերի հազար ու մի թելերով և հաճախ ընկնում էին նրա քաղաքական ու տնտեսական գերիշխանության տակ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՈՒՐԱՐՏՈՒՆ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅԻ ՀԶՈՐԱԳՈՒՅՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ

**Ուրարտուի սահմանների ընդլայնումը Մենուա թագավորի օրոք:** Ուրարտուն հսկայական առաջընթաց է ապրում ռազմա-քաղաքական և տնտեսական տեսակետներից հատկապես IX դարի վերջերից սկսած, Մենուայի (մ. թ. ա. 810—786) թագավորության ժամանակաշրջանում։ Մենուան զբաղվել է շինարարությամբ և՛ կենտրոնական, և՛ ծայրամասային մարզերում։ Վանա լճի շրջակայքում նա կառուցում է բազմաթիվ ամրոցներ, որոնց մասին պատմում են Գյուղակում, Գործոտում, Անձավում, Կողբանցում, Նոր-գյուղում, Շուշանցում և Վարագա վանքում հայտնաբերված արձանագրությունները[1]։

Այնուհետև, Մենուան իր ուշադրությունը սևեռում է հյուսիս-արևմտյան մարզերի վրա, ուր քաղաք-ամրոցներ է հիմնադրում նախ Արածանիի վերին հոսանքում (Մանազկերտ, Բագնոց)[2], և ապա Կարինի (Էրզրումի) դաշտում ու Արաքսի վերին հոսանքում (Բասեն, Դելիբաբա)[3]։

Ամրոցների կառուցումը Ուրարտուի համար հնարավորություն է ստեղծում ոչ միայն ամուր հաստատվելու նվաճված երկրներում և ապահովելու սեփական անվտանգությունը, այլև ռազմական արշավանքներ ձեռնարկելու և նորանոր երկրներ ներգրավելու իր կազմի մեջ։

Դժբախտաբար հնարավոր չէ պարզել Մենուայի քաղաքական ու ռազմական գործունեության ժամանակագրական կարգը, որովհետև մեզ չի հասել նրա տարեգրության ամբողջական տեքստը։ Հայտնի են տարեգրության միայն առանձին հատվածներ[4]։ Սակայն նկատի ունենալով Ուրարտուի ռազմական արշավանքների ուղղությունները և հակառակորդ երկրների տնտեսական ու ռազմական մակարդակը, կարելի է հանգել հետևյալ եզրակացությունների։

Ուրարտուի հյուսիսային հարևանները՝ Էրիկուախին, Էթիունին (Դիաուխին բացառյալ) իրենց զարգացմամբ ընդհանուր առմամբ ավելի թույլ էին, քան արևմտյան ու հարավ-արևմտյան (Խաթե, Իշուա կամ Իծուա, Ալզի, Մելիտեա և այլն) և հարավ-արևելյան (Մանա) դրացիները։ Իսկ հարավում և հարավ-արևելքում Ուրարտուն վերջին հաշվով գործ ուներ Առաջավոր Ասիայի ա-

---

1 Տե՛ս УКН, 66, 67, 71, 73, 77, 78, 91։

2 Տե՛ս УКН, 72 և Послесловие, 1։

3 Տե՛ս նույն տեղում, 68, 69, 70։

4 Տե՛ս УКН, 28։

*ռավել հզոր տերության՝ Ասորեստանի հետ։ Ուստի Մենուայի թագավորության սկզբնական շրջանում ռազմական արշավանքները, բնականաբար, պետք է ուղղված լինեին դեպի հյուսիս՝ ավելի նվազ զարգացած ցեղերի ու ցեղային միությունների դեմ, որոնց հասարակական կառուցվածքում այդ ժամանակ նոր էին միայն առաջանում դասակարգային շերտավորման սաղմերը։*

*Հյուսիսում Մենուան մի կողմից հասնում է Կարսի շրջանը և Ճորոխի ավազանը, իսկ մյուս կողմից՝ մինչև Արարատի հյուսիսային փեշերը՝ Արաքսի աջ ափը, որտեղ նվաճում է Էրիկուախի երկիրը՝ Լուխիունի «արքունի» քաղաքով[5]։ Էրիկուախիի նկատմամբ տարած հաղթանակը ամրապնդելու և Ուրարտուի նվաճողական արշավանքները հետագայում դեպի Արաքսի ձախափնյա հատվածը տեղափոխելու նպատակով, ուրարտացիները այդ երկրում՝ Արաքսի աջ ափին կառուցում են Մենուախինիլի հայտնի քաղաք-ամրոցը[6] (հետագա Ցոլակերտը՝ այժմյան Դաշբուրուն գյուղի տեղում)։ Հյուսիսում Ուրարտուի հաջորդ զոհն է դառնում Էթիունի ցեղային մեծ միությունը, որի տերիտորիան ձգվում էր Սարիղամիշից մինչև Սևանա լճի հյուսիս-արևմտյան ափերը[7]։*

*Ուրարտուն ավելի ուժեղ հակառակորդի հետ է գործ ունենում հյուսիս-արևմուտքում՝ Կարնո (Էրզրումի) շրջանից մինչև Ճորոխի ավազանը ձգված տերիտորիայում։ Այստեղ նա իր ուժերը չափում է Դիաուխի[8] (հայկական Տայք) հզոր ցեղային միության հետ և հաղթանակ տանում։ Դիաուխիի թագավոր Ուտուպուրշին անձնատուր է լինում և ծնկի գալիս Մենուայի առջև։ Վերջինս նրան ներումն է շնորհում՝ հարկ վճարելու պայմանով, և ստանում մեծ քանակությամբ ոսկի, արծաթ և այլ արժեքներ[9]։*

*Դիաուխի, Էթիունի, Էրիկուախի և այլ երկրների դեմ տարած հաղթանակը ամրապնդում է Ուրարտուի դիրքերը հյուսիսում և ապահովում նրա թիկունքը։ Մենուան արդեն բավականաչափ հնարավորություններ է ձեռք բերում իր սահմանները ընդլայնելու նաև այլ ուղղություններով։ Արևմուտքում ու հարավ-արևմուտքում նա նվաճում է Ծուփանի (Ծոփք), Մելիտեա (Մալաթիա), Ուրմե (կամ Արմե), Ալզի (Աղձնիք), Խաթե, Ուլիբա և այլ երկրներ[10]։*

*Թված երկրներում, ինչպես մանրամասն ասվել է վերը, արդեն մ. թ. ա. XII դարից ի վեր ընթանում էր հայ ժողովրդի կազմավորման պրոցեսը[11], որը անցած հարյուրամյակների ընթացքում պետք է շատ առաջադիմած լիներ։ Մենուայի օրոք սկսվում են Ուրարտուի առաջին բախումները այս երկրների, մասնավորապես նրանցից Ուրմե կամ Արմե-Շուպրիա երկրի՝ Հայասայից հետո հնագույն հայկական պետական կազմավորման հետ։*

---

5 *Տե՛ս նույն տեղում, 30—34։*

6 *Տե՛ս նույն տեղում, 70։*

7 *Տե՛ս Г. А. Капанцян,* Историко-лингвистическое значение топонимики древней Армении, Ереван, 1940, *էջ 9 և հաջ.; Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 70; Г. А. Меликишвили,* Наири-Урарту, *էջ 56; Н. В. Арутюнян,* Заглавные декларации урартских надписей и их значение при изучении вопросов топонимики, ИԿАНАОН, 1954, № 8, *էջ 86—97։*

8 *Տե՛ս Г. А. Меликишвили,* Диаухи, ВДИ, 1950, № 4, *էջ 26—42։*

9 *Տե՛ս* УКН, *36, 37։*

10 *Տե՛ս նույն տեղում, 28, 39, 40, 41։*

11 Ս. Տ. Երեմյան, *Հայերի ցեղային միությունը Արմե-Շուպրիա երկրում, ՊԲՀ, 1953, № 3։*




Տուշպա (Վան)։ Դեպի ամրոցը տանող ժայռափոր աստիճաններ

Հյուսիսային և արևմտյան մի շարք երկրների նվաճումը այն աստիճանի է բարձրացնում Ուրարտուի հզորությունը, որ նա արդեն իրեն նախապատրաստված է համարում կովի բռնվելու է՛լ ավելի ուժեղ հարևանների հետ հաբավում և հարավ-արևելքում։ Այստեղ պատերազմի թատերաբեմ է դառնում Մանա երկիրը, որի տերիտորիան ընկած էր Ուրմիա լճից դեպի հարավ և արևելք։ Ելնելով Մանայի դեմ, Ուրարտուն, վերջին հաշվով, մարտահրավեր էր անում Ասորեստանին, որը նույնպես իր նկրտումներն ուներ Մանայի նկատմամբ։ Հայտնի է, որ Մենուայի տիրապետության սկզբնական շրջանում, երբ նա զբաղված էր հյուսիսային ու արևմտյան երկրների նվաճմամբ, Ասորեստանն արդեն արշավանքներ էր ձեռնարկել Մանայի դեմ (807—806)[12]։

Ստեղծվում է վերին աստիճանի լարված իրադրություն, երբ մի կողմից ուրարտական թագավոր Մենուան է կրկնում ռազմական արշավները Մանայի դեմ[13], մյուս կողմից՝ նրա ժամանակակից ասորեստանյան թագավոր Ադադներարի Գ-ը (810—782)[14]։ Ըստ երևույթին, պատերազմական գործողությունները փոփոխակի հաջողություններ են բերում մերթ Ուրարտուին, մերթ Ասորեստանին։

Փոքր-ինչ ավելի ուշ, որոշ ընդհատումներով (մ. թ. ա. 801 և 791) Ասորեստանը ռազմական արշավանք է ձեռնարկում Խուբուշկիայի դեմ[15]։ Սակայն Ուրարտուն ժամանակավորապես չեզոքացնում է Ասորեստանին, որը այլևս փորձեր չի անում իր հյուսիսային հարևանի բուն երկրի վրա հարձակվելու Ընդհակառակը, դեպի հարավ-արևելք ձեռնարկած արշավանքներից մեկի ժամանակ ինքը Մենուան է հասնում մինչև Ասորեստանի սահմանները[16]։

Այսպիսով, Մենուայի ռազմական նվաճումների շնորհիվ Ուրարտուն տարեցտարի ավելի ու ավելի էր ամրապնդում իր դիրքերը Առաջավոր Ասիայում։ Նրա թագավորության վերջին շրջանում Ուրարտուն շատ անախորժություններ է պատճառում Ասորեստանին։ Աստիճանաբար հավասարակշռվում են Ուրարտուի և Ասորեստանի ուժերը։ Ուրարտուն նախապատրաստվում է ապագա է՛լ ավելի ահեղ մարտերի, որոնք արդեն բաժին են ընկնում Մենուայի հաջորդին՝ Արգիշտի Ա-ին։

**Ուրարտուն հզորության գագաթնակետին: Արգիշտի Ա:** Արգիշտի Ա-ի (786—764) այսպես կոչված «Խորխորյան տարեգրությունը»[17] հնարավորություն է ընձեռում ժամանակագրական կարգով պատկերացնելու Ուրարտուի քաղաքական ու ռազմական պատմության համարյա մեկ և կես տասնամյակի իրադարձությունները։

Իր թագավորության սկզբնական տարիներին Արգիշտի Ա-ը զգալի ջանքեր է գործադրել ամրապնդելու իր հոր՝ Մենուայի հյուսիսային արշավանքների

---

12 Տե՛ս АВИИУ, 39։

13 Տե՛ս УКН, 28, 29։

14 Տե՛ս АВИИУ, 35։ Այստեղ Մանան հիշատակվում է Մուննու ձևով։

15 Տե՛ս E. Forrer, PAR, էջ 40, 48։ АВИИУ, 39։

16 Տե՛ս CTCh, 19, վերին կողմ, տող 13, УКН, նույն կողմը և տողը։

17 Տե՛ս Н. В. Арутюнян, Хорхорская летопись Аргишти I, ЭВ VII, 1953. УКН, տեքստ 127։

արդյունքները հյուսիսի անդրարաքսյան երկրներում, որոնք իրենց ռազմա-ստրատեգիական նշանակության հետ մեկտեղ սկսում են ավելի ու ավելի մեծ դեր խաղալ ուրարտական պետության տնտեսական կյանքում։ Այս նպատակով Արգիշտին նորից արշավանքներ է ձեռնարկում դեպի հյուսիս, այդ թվում նաև Մենուայի նախկինում ապստամբած երկրները։

785—784 թվականներին ուրարտական բանակը այստեղ հասնում է մինչև Դիաուխի (Տայք), Տարիունի (Դարույնք՝ Բասենում), Զաբախա (Ջավախք), Իգա կամ Իյա (Չըլդըր լճի հարավում) և էթիունյան ցեղային միության լայնատարած տերիտորիան (Սարիղամիշից մինչև Սևանա լիճը)։ Այնուհետև Արգիշտին նվաճում է[81] Էրիախի երկիրը (Շիրակ), իսկ Արաքսի վերին հոսանքում՝ Աբիլիանին (Աբեղյանք), Աբունին (Հավնունիք), Ուիտերուխին, Իրկուան կամ Էրիկուան (Մասյացոտն) և այլն[19]։

782 թվականի արշավանքները հյուսիսում նոր հաջողություններ են բերում Ուրարտուին։ Արգիշտին այս անգամ ոչ միայն անցնում է Արաքսը, այլև կտրելով Արարատյան դաշտը և արշավելով դեպի հյուսիս, գրավում է Ուլուանի[20] և Կիեխունի[21] երկրները, հասնում մինչև Սևանա լճի հյուսիս-արևմտյան ափերը՝ Իշտիկունի և Լիկիու։ Այսպիսով, Արգիշտի Ա-ին հաջողվում է տիրել Արարատյան արգավանդ դաշտավայրին և դեպի Սևանա լիճը ձգվող բարձրադիր արոտավայրերին։

Արարատյան դաշտավայրում վերջնականապես հաստատվելու և Ուրարտուի տիրապետությունը Սևանի ավազանում ու ընդհանրապես հյուսիսում հետագայում ևս ապահովելու նպատակով այժմյան Երևանի հարավ-արևելյան ծայրամասում, մ. թ. ա. 782 թվականին, Արգիշտի Ա-ը կառուցում է Էրեբունի ռազմա-ստրատեգիական քաղաք-ամրոցը (որի անունից էլ սերում է ժամանակակից Երևանի անունը)[22]։ Էրեբունիում կենտրոնացվում են մեծաքանակ զորքեր, կազմված ոչ միայն ուրարտացիներից, այլև Խաթե և Ծուփանի երկրներից վերաբնակեցված 6600 ռազմագերիներից[23]։

Գառնիի 1963 թվականի պեղումների ժամանակ հայտնաբերված վիշապակոթողի վրա փորագրված սեպագիր արձանագրության համաձայն, Արգիշտի Ա-ը եղել է նաև այդ վայրերում, որոնք, ըստ երևույթին, կրել են Գիառնիանի

---

18 Տե՛ս ԽՏ, I, 5—12, 17—37։

19 Վերոհիշյալ երկրների տեղադրման մասին տե՛ս Г. А. Капанцян, Историко-лингвистическое значение топонимики древней Армении. Ереван, 1940; Г. А. Меликишвили, Наири-Урарту; Н. В. Арутюнян, Заметки по урартской эпиграфике, ИАНАОН, 1957, № 12, էջ 65—74 և այլ աշխատություններ։

20 Տե՛ս УКН, 131։

21 Նույն տեղում, 134։

22 Տե՛ս Մ. Իսրայելյան, Արին-բերդի SUSI տաճարը և նրա արձանագրությունները, Տեղ. ՀԳԱՀԳ, 1957, № 9, էջ 100։ И. М. Дьяконов—Г. А. Меликишвили, Древневосточные материалы по истории народов Закавказья (рецензия), ВДИ, 1956 № 2, էջ 62։ Ն. Վ. Հարությունյան, Երևանի հիմնադրման ժամանակի հարցի շուրջը, ՊԲՀ, 1959, № 2—3, էջ 79—96։

23 Տե՛ս И. М. Дьяконов, К вопросу о судьбе пленных в Ассирии и Урарту, ВДИ, 1952, № 1, էջ 95; Г. А. Меликишвили, К вопросу о царских хозяйствах и рабах-пленниках в Урарту, ВДИ, 1953, № 1, էջ 27։

անունը[24]: Մ. թ. ա. 782 թվականին Արգիշտի Ա-ը արշավանքներ է ձեռնարկում նաև դեպի հյուսիս-արևմուտք[25]։

Ուրարտուի ռազմական գործողությունների մյուս կարևորագույն բնագավառը հարավային և արևմտյան երկրներն էին, ուր նրա շահերը անմիջապես բախվում էին Ասորեստանի հետ։

Մ. թ. ա. 783 թվականին հարավ-արևմուտքում Արգիշտին հաղթանակ է տանում Նիրիբա (Քաշիարի, այժմ՝ Տուր-Աբդին լեռներում) և Խաթե (Հյուսիսային Ասորիքում), իսկ արևմուտքում՝ Մելիտեա (Մալաթիա), Կամանա (ասուր. Կամմանու) և այլ երկրների նկատմամբ[26]։ Ուրարտուի հաղթանակը, վերջին հաշվով, նշանակում էր Ասորեստանի ստրատեգիական դիրքերի զիջում հիշյալ տերիտորիաներում։ Հյուսիս-Ասորիքյան միությունը, որ համախմբվել էր Արպադի շուրջը և հայացքը հառել Ասորեստանին, այժմ հակվում է դեպի Ուրարտուն։ Դրա հետևանքով Ասորեստանը կտրվում է ոչ միայն Ասորիքից, այլև Փոքր Ասիայի երկաթի ու այլ մետաղների հանքավայրերից[27]։

Արգիշտի Ա-ի թագավորության վեցերորդ տարվանից սկսած (մ. թ. ա. 781) Ուրարտուի ռազմա-քաղաքական պատմության մեջ արմատական բեկում է նկատվում։ Ուրարտական պետությունը արդեն բավականաչափ ամրապնդվել էր հյուսիսում, արևմուտքում և հարավ-արևմուտքում տարած հաղթանակների շնորհիվ։ Այժմ նա իրեն նախապատրաստված էր զգում ուժերը չափելու իր գլխավոր ախոյանի՝ Ասորեստանի հետ։ Մ. թ. ա. 781 թվականից սկսվում է Ուրարտուի և Ասորեստանի հուժկու և անընդմեջ ռազմական բախումների փուլը, որը հարատևում է տարիներ։

Հիշյալ VI տարում Արգիշտի Ա-ը ասորեստանյան զորքին ընկճում է Խուբուշկիայում (Արևելյան Տիգրիսի հովտում), իսկ այնուհետև ուրարտական զորքը սրընթաց արշավում է դեպի հարավ-արևելք՝ Մանայի հարևան Արսի(տա) երկիրը, Ուրմիա լճից շատ ավելի հարավ ընկած մի շարք այլ տերիտորիաներ՝ հասնելով մինչև Բաբիլու (Դիալայի միջին հոսանքը)[28]։ Այս արշավանքի ճանապարհին հպատակեցվում են Բուշտու, Բարուատա, Բարշուա երկրները[29], որոնք այդ ժամանակ, հավանաբար, գտնվում էին Ասորեստանի ազդեցության տակ։

---

24 Տե՛ս *Н. В. Арутюнян,* Земледелие и скотоводство Урарту, Ереван, 1964, էջ 51, ծանոթ. 146 և էջ 216. Նույնի՝ Чтение и интерпретация урартской надписи из Гарни, ИФЖ, 1966, № 2, էջ 293—297. *Б. Н. Аракелян,* Находка урартской надписи в Гарни, ИФЖ, 1966, № 2, էջ 290—293։

25 Տե՛ս ԽՏ, II, 23—45։ Արգիշտի Ա-ի հինգերորդ տարվա ձեռնարկումների մասին, բացի Խորխորյան տարեգրության հիմնական տեքստից, տե՛ս նրա կրկնագրի (դուբլիկատի) հատվածներից մեկը (УКН, 128А2, տող 1—30) և Արին-բերդի արձանագրությունները (УКН, 138, Послесловие, 11; ВДИ, 1970, №3, էջ 108)։

26 Տե՛ս ԽՏ, II, 5—18։

27 Տե՛ս *С. М. Бациева,* Борьба между Ассирией и Урарту за Сирию, էջ 17—36։ «Всемирная история», 1, М., 1956, էջ 538։

28 Ի. Մ. Դյակոնովի կարծիքով, ըստ երևույթին, նույնական է ասորեստանյան աղբյուրների Նամրիի հետ—АВИИУ, 28, ծանոթ. 20. 38, ծանոթ. 6 և այլն։

29 Տե՛ս ԽՏ, II, 51—III, 13։



Վանի ժայռը ուրարտական ամրոցի պարսպապատով

Պայքարը շարունակվում է նաև հաջորդ տարում (մ. թ. ա. 780)։ Խորխորյան տարեգրության VII տարվա իրադարձությունների մեջ հիշատակվում է ուրարտացիների հաղթանակը ասորեստանյան զորքի նկատմամբ, որը կրկին փորձել էր մխրճվել Վանի թագավորության հարավային սահմանները (Խուբուշկիա)։ Արգիշտիին հաջողվում է դարձյալ հալածել ասորեստանյան զորքերին, որոնք ստիպված նահանջում են հարավ-արևելյան ուղղությամբ։ Ուրարտական զորքը հետապնդում է նրանց գրեթե նախորդ տարվա ճանապարհներով[30]։ Սակայն այս անգամ, նախորդ տարվա համեմատությամբ, Ուրարտուն ավելի նվազ հաջողություն է ունենում։ Արգիշտի Ա-ը Ուրմիա լճից հարավ ընկած տերիտորիաներում ակներևաբար հանդիպում է ասորեստանյան զորքերի դիմադրությանը և չի կարողանում հասնել նախկինում ապստամբած հարավային վայրերը։ Այնուամենայնիվ, Սալմանասար Գ-ի զորահրամանատար Շամշիիլուն նույն 780 թվականին ահ ու դողով խոստովանում էր, թե «Արգիշտի ուրարտացու անունը սարսափելի է որպես ծանր հողմ, նրա ուժերը մեծաքանակ են...»[31]։

Արգիշտիի թագավորության VIII տարվա (779) երկրորդ արշավանքը ձեռնարկվում է դեպի Ուրմիա լճից հարավ ընկած Մանա և Բուշտու երկրները, որտեղից ուրարտական զորքը վերադառնում է հարուստ ռազմական ավարով[32]։

Խորխորյան տարեգրության IX—X տարիների (մ. թ. ա. 778—777) արշավանքները նորից ուղղված են Ուրմիա լճից հարավ ընկած՝ Ասորեստանին ենթակա երկրները։ Այդ արշավանքների ժամանակ Ուրարտուին հաջողվում է արդեն ոչ միայն հպատակեցնել Մանա, Բուշտու, Իրկիունի, Աշկայա, Ուգիշտի երկրները, այլև հասնել Ասորեստանի սահմաններին[33]։ Չնայած բոլոր դեպքերում Արգիշտի Ա-ը պատմում է միայն իր հաղթանակների մասին, սակայն դեպի այդ երկրները ձեռնարկված տարիներ շարունակ կրկնվող ապստամբությունների փաստը վկայում է, որ Ուրարտուին միշտ չէ, որ հաջողվել է հաղթել այդ պատերազմներում։ Այդ հանգամանքը հասկանալի կդառնա, եթե մտաբերենք, որ մերձուրմյան շրջանում Ուրարտուն գործ ուներ ոչ միայն Մանայի ու այլ երկրների, այլև, վերջին հաշվով, հենց Ասորեստանի հետ։

Այսպիսով, չնայած Խորխորյան տարեգրությունը հիշատակում է Ասորեստանի հետ Ուրարտուի ունեցած միայն երեք տարիների ռազմական բախումների մասին (մ. թ. ա. 781, 780, 778), անկասկած է, որ այդ բախումները շատ ավելի երկարատև են եղել։ Այնպիսի կարևոր աղբյուրների համաձայն, ինչպիսիք են ասորեստանյան էպոնիմների ցուցակները, Ասորեստանը Ուրարտուի դեմ ռազմական արշավանքներ է ձեռնարկել 781—778, 776 և 774 թվականներին[34], այսինքն՝ չորս տարի անընդմեջ, և, այնուհետև, երկու տարի՝ ընդհատումներով։ Հետևաբար Ուրմիա լճից դեպի հարավ ընկած մի շարք երկրների՝ հատկապես Մանայի, Բուշտուի, Բարուատայի, Բարշուայի և Բաբիլուի հետ ու-

---

30 Տե՛ս УКН, 127, III, 20—40։

31 АВИИУ, 38։

32 Տե՛ս ԽՏ, III, 60—71, IV, 1—13։

33 ԽՏ, VI, 14—36, 42—59։ Տե՛ս նաև Խորխորյան տարեգրության այդ մասի կրկնագիրը. УКН, 128, B2, տող 1—11, 23—34։

34 Տե՛ս RLA, II, էջ 430։



«Մեծ քարայրը» Վանի ժայռի հարավ-արևելյան մասում

նեցած ընդհարումները ևս (որոնց մասին հաղորդում է Խորխորյան տարեգրությունը) հիմնականում պետք է դասել Ուրարտուի և Ասորեստանի միջև տեղի ունեցած ռազմական բախումների շարքը։

Այս անընդմեջ ռազմական բախումները հարավ-արևելքում, բնականաբար, պետք է որոշ չափով թուլացնեին Ուրարտուի դիրքերը հյուսիսում, քանի որ այդտեղ գտնվող երկրները տարեց-տարի տնտեսական ու ռազմական վերելք էին ապրում և համախմբվում ցեղային միությունների մեջ՝ իրենց անկախությունը ապահովելու համար։ Եվ պատահական չէ, որ իր թագավորության VIII տարում (մ. թ. ա. 779) Արգիշտիին նորից տեսնում ենք հյուսիսում Իյա (Իգա) երկրում (Չըլդըր լճի հարավային մասում), թեև այն Ուրարտուի կողմից նվաճվել էր Արգիշտի Ա-ի տիրապետության դեռևս II տարում (մ. թ. ա. 785)։ Ուրարտական թագավորը առանց մեծ ջանքերի հնազանդեցնում է երկիրը, ավերելով նրա ամրոցները և հրկիզելով քաղաքները[35]։

Այնուհետև, Արգիշտիի թագավորության XI տարում (մ. թ. ա. 776), Ազա երկրում տեղի է ունենում Արգիշտիխինիլի վարչա-տնտեսական կենտրոնի հիմնադրումը[36], իսկ XIII տարում (մ. թ. ա. 774)՝ Էթիունի հզոր ցեղային միության լայնատարած տերիտորիայի, ինչպես նաև Էրիախիի, Կատարզայի և Ուիտերուխիի վերանվաճումը[37]։

Արգիշտիխինիլին Արարատյան դաշտավայրում Արգիշտի Ա-ի հիմնադրած կարևոր կենտրոններից էր։ Ի տարբերություն Էրեբունիի, Արգիշտիխինիլին[38], ըստ երևույթին, ունեցել է ոչ այնքան ռազմա-ստրատեգիական, որքան վարչա-տնտեսական բնույթ։

Խորխորյան տարեգրության XIV տարվա (մ. թ. ա. 773) իրադարձությունների նկարագրության մեջ այլևս ոչ մի խոսք չկա ոչ Ասորեստանի, ոչ էլ մերձուրմյան երկրների մասին։ Տվյալ տարում Արգիշտի Ա-ի ձեռնարկած երկու արշավանքներն ուղղված են մի կողմից դեպի հյուսիս՝ Տարիունի (Դարույնք՝ Բասենում), մյուս կողմից՝ դեպի արևմուտք՝ Ուրմե[39]։

Ինչպես տեսնում ենք, Արգիշտին ևս, Մենուայի հետքերով, արշավում է Ուրմե (Արմե-Շուպրիա) երկիրը, շարունակելով մաքառումը հետզհետե է՛լ ավելի հզորացող և Ուրարտուի համար վտանգավոր դարձող այս երկրի դեմ, որի շուրջը անընդմեջ շարունակվում էր հայ ժողովրդի կազմավորման պրոցեսը։ Արգիշտին հայտնում է իր հաղթանակի մասին, բայց փաստերը ցույց են տալիս, որ ինչպես նախկինում ասորեստանցիները չկարողացան, այնպես էլ այժմ ուրարտացիները ի վիճակի չէին վերջնականապես նվաճել այդ ազատասեր երկիրը։ Արգիշտի Ա-ի հաջորդը՝ Սարդուրի Բ-ը, նորից պիտի արշավեր Արմե-Շուպրիա[40]։

---

35 Տե՛ս УКН, 127, III, 48—49։

36 Տե՛ս ԽՏ, IV, 67—68, V, 1—4։ Տե՛ս նաև Խորխորյան տարեգրության այդ հատվածի կրկնագիրը—УКН, 128, B 2, տող 37—42։ Արգիշտիխինիլին (Արմավիրը) գտնվում է Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, Արաքսի ձախ ափին։

37 Տե՛ս ԽՏ, V, 33—63։

38 Տե՛ս *А. А. Мартиросян*, Раскопки Аргиштихинили, СА, 1967, № 4, էջ 220—236. *Н. В. Арутюнян*, Новая урартская надпись из Давти-блура, ВДИ, 1966, № 3, էջ 91—105.

39 Տե՛ս ԽՏ, V, 70—81, VI, 1—7։

40 Տե՛ս ստորև, էջ 312։

Այնուհետև, Արգիշտի Ա-ը թագավորում է ևս 8—9 տարի (մինչև մ. թ. ա. 764 թ.), սակայն Խորխորյան տարեգրության շարունակությունը չի հասել մեզ, ուստի առայժմ անհայտ են մնում նրա տիրապետության վերջին տարիների իրադարձությունները։ Շատ հավանական է, որ մ. թ. ա. 773—764 թվականներին Ուրարտուն դարձյալ վճռական հաջողություններ է ունեցել հարավում։

Այդպիսի եզրակացության է հանգեցնում Ասորեստանի արտաքին քաղաքական ակտիվության նկատելի անկումը։ Ասորեստանի հայացքն այժմ այս կամ այն չափով հառած էր կամ դեպի Ասորիք (Խաթարիկա, Դամասկոս), կամ դեպի արևելք (Մեդիա), կամ էլ դեպի հարավ (Իթուա), ուր նա ջանում էր մի կերպ պահպանել իր դիրքերը։ Ոչ միայն Ուրարտուի, այլև Միջագետքի, մերձուրմյան շրջանի և Փոքր Ասիայի երկրների մասին ասսուրական աղբյուրները բացարձակապես ոչինչ չեն պատմում՝ սկսած մ. թ. ա. VIII դարի 70-ական թվականների վերջերից մինչև 50-ական թվականների սկզբները։ Ասորեստանը ուժասպառ էր եղել ներքին ու արտաքին հակասություններից[41]։ Արգիշտի Ա-ի թագավորության վերջին շրջանում Ասորեստանը իր դիրքերը Առաջավոր Ասիայում հիմնովին զիջում է Ուրարտուին և ավելի ու ավելի ներփակվում իր նախնական, համեմատաբար սահմանափակ, տերիտորիայում։

Ուրարտուի այդ ժամանակվա հզորության ցուցանիշներից մեկն էլ այն էր, որ եթե սկզբնական շրջանում, որպես կանոն, նա ի վիճակի էր իր արշավանքները կազմակերպելու տարին միայն մեկ ուղղությամբ, ապա հետագայում հնարավոր է դառնում նույն տարվա ընթացքում արշավանքներ կատարել մի քանի ուղղություններով։ Այդ տեսակետից հարուստ են Արգիշտի Ա-ի թագավորության XI—XIII տարիները, երբ տարբեր, հաճախ հակադիր ուղղություններով ձեռնարկվող արշավանքները դառնում են սովորական երևույթ։ Այդ փաստը գնահատելիս պետք է հաշվի առնել ոչ միայն Ուրարտուի աննախընթաց ռազմական հզորության հանգամանքը, այլև նրան սահմանամերձ երբեմնի ոչ այնքան ուժեղ երկրների տարեցտարի աճող կարողությունը և անհնազանդությունը։

Այսպիսով, Արգիշտի Ա-ի թագավորության օրոք Ուրարտուն հասել էր իր հզորության գագաթնակետին։ Նրա պետության սահմանները տարածվում էին Ճարավից մինչև Ասորեստան, հարավ-արևելքից՝ մինչև Դիալայի միջին հոսանքը, արևելքից՝ մինչև Ուրմիա լճի հյուսիսային և արևելյան ափերը, արևմուտքից և հարավ-արևմուտքից՝ Եփրատի վերին ու միջին հոսանքները (ընդհուպ մինչև Հյուսիսային Ասորիք), իսկ հյուսիսից՝ մինչև Ճորոխի ավազանը, Չըլդըր լճից դեպի հյուսիս ընկած շրջանները և Սևանա լճի հյուսիսարևմտյան ափերը։

**Ուրարտուն Սարդուրի Բ-ի օրոք:** Ուրարտուի ռազմա-քաղաքական պատմության մի այլ զգալի հատվածի համար էլ չափազանց արժեքավոր աղբյուր է ծառայում Սարդուրի Բ-ի (մ. թ. ա. 764—735) տարեգրությունը։ Ճիշտ է, այն թերի է, այսուհանդերձ, պատկերում է Սարդուրի Բ-ի թագավորության շուրջ 12 տարիների պատմական իրադարձությունները։ Առայժմ անհայտ է

---

41 Տե՛ս «Всемирная история», I, էջ 541։

մնում նրա իշխանության սկզբնական (763—754) և վերջին (738—735) տարիների պատմությունը։

Տարեգրության առկա հատվածների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Ուրարտուն Առաջավոր Ասիայում իր առաջնությունը շարունակում է պահպանել նաև Սարդուրի Բ-ի թագավորության ժամանակաշրջանում, համենայն դեպս մինչև մ. թ. ա. VII դարի 40-ական թվականների վերջերը։

Սարդուրի Բ-ը ստանձնում է արքայական գահը, ըստ երևույթին, Ուրարտուի ներսում առկա բարդ իրադրության պայմաններում։ Տարեգրության հենց առաջին տարվա (մ. թ. ա. 764) գրանցումը ահազանգում է մի շարք մարզերի կառավարիչների ընդհանուր ուժերով Ուրարտուի կենտրոնական իշխանության դեմ բարձրացված խռովության մասին։ Սարդուրի Բ-ը, սակայն, ամենայն դաժանությամբ ճնշում է այդ ընդվզումները և մեծ քանակությամբ հարստություն բռնագրավում կամ հարկեր կորզում խռովարարներից[42]։

Ներքին պառակտումների հետևանքով որոշ երկրների, հավանաբար, հաջողվել էր թոթափել Վանի թագավորության լուծը։ Այս է պատճառը, որ Եփրատի վերին հոսանքի աջափնյա հատվածում գտնվող Մելիտեան (Մալաթիան) և մի շարք այլ երկրներ, որոնք Ուրարտուի տիրապետությանն էին ենթարկվել դեռևս Արգիշտի Ա-ի օրոք (մ. թ. ա. 783), այժմ կրկին դառնում են Սարդուրի Բ-ի արշավանքի ասպարեզ։ Սարդուրի Բ-ը հիմնովին ավերում է Մելիտեան և մեծ քանակությամբ ավար տանում, այդ թվում ոսկի, արծաթ, անասունների հոտեր, գահի վրա թողնելով, սակայն, Շախուի դինաստիային պատկանող Խիլարուադային՝ հետագայում սիստեմատիկաբար հարկ վճարելու պայմանով[43]։

Նմանօրինակ արշավանքներ է ձեռնարկում Սարդուրի Բ-ը նաև դեպի Հյուսիսային Միջագետքի հարավային շրջանները, որտեղ ձեռք է բերում հարուստ ռազմական ավար։

Ուրարտուի հաջողությունները Միջագետքում, անկասկած, պայմանավորված էին ոչ միայն նրա ռազմական հզորության աճով, այլև Ասորեստանի թուլությամբ։ Մ. թ. ա. 762—759 թվականներին Ասորեստանում ու նրան ենթակա մի շարք մարզերում ու քաղաքներում բռնկվել էին ապստամբություններ, որոնց մասին վկայում են ասորեստանյան փոխարքա-էպոնիմների ցուցակները[45]։ Այդ պատճառով Ասորեստանը ամենևին հնարավորություն չուներ կանխելու ուրարտական զորքերի առաջընթացը դեպի հարավ, և Սարդուրի Բ-ը աստիճանաբար ավելի ու ավելի էր մոտենում նրա բուն սահմաններին։

---

42 Այդ իրադարձությունների մասին տե՛ս M. Tseretheli, Die neuen chaldischen Inschriften König Sardurs von Urarṭu, Heidelberg, 1928, էջ 24—25, սյունակ G, տող 1—13։ Հիշատակված տեքստի մեկնաբանության վերաբերյալ տե՛ս Н. В. Арутюнян, Земледелие и скотоводство Урарту, էջ 62 և 159, ծանոթ. 120։

43 Տե՛ս Սարդուրյան տարեգրություն, УКН, 156BI, տող 2—31 և Իզօղլուի արձանագրություն, УКН 158, տող 1—31։

44 Տե՛ս УКН, 156 C, 1—30։ Տեքստը ունի զգալի չափով տուժած մասեր, ուստի այս արշավանքին վերաբերող շատ հարցեր դեռևս պարզ չեն։ Տե՛ս Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 248։

45 Տե՛ս RLA, II, էջ 430։

VIII դարի 50-ական թվականների ընթացքում Ուրարտուի առաջխաղացումը դեպի հարավ շարունակվել է։ Սարդուրի Բ-ը այդ տարիներին նվաճել է Արմե երկիրը։ 753 կամ 752 թվականին նա վճռական հաղթանակ է տարել Ասորեստանի թագավոր Աշշուրնիրարի Ձ-ի (753—746) նկատմամբ[46]։

Սարդուրին նշում է հատկապես, որ նվաճելով Արմե (Ուրմե-Շուպրիա) երկիրը, նա ընկճել է նրա «թագավորական քաղաքը» (այսինքն՝ մայրաքաղաքը) Նեխերիանին (հետազոտողները նույնացնում են այն հայկական Նփըրկերտի հետ)։ «Թագավորական» քաղաքի գոյությունը ցույց է տալիս, որ երկրի թագավորը մնում էր իր տեղում և ուրարտական արշավանքները չէին վերածել Արմե երկիրը երկրորդական, աննշան մարզի[47]։

Մի քանի տարի անց Սարդուրին կրկին ստիպված է լինում արշավել այս անհնազանդ երկիրը և, իր պատմելով, այնտեղ 11 բերդ է գրավում, երկրից բազմաթիվ գերիներ ու անասունների հոտեր քշում Բիայնիլի[48]։

Սարդուրի Բ-ը շուտով (մ. թ. ա. 751 կամ 750) ռազմական արշավանք է ձեռնարկում հարավ-արևելյան ուղղությամբ՝ Ուրմիա լճի հարավային ափերից մինչև Դիալայի միջին հոսանքը, որի ընթացքում նրան հաջողվում է վերանվաճել Մանա, Բարուատա և Բաբիլու երկրները[49]։ Թուլացած Ասորեստանը ի վիճակի չէր օգնության ձեռք պարզել իր անմիջական հարևաններին։

Դժվար է գերագնահատել Սարդուրի Բ-ի մ. թ. ա. 751 կամ 750 թվականներին ձեռնարկած նվաճումների նշանակությունը Ուրարտուի ռազմական քաղաքականության համար, եթե նկատի ունենանք, որ այդ սոսկ երկրորդ դեպքն էր (Արգիշտի Ա-ի վեցերորդ տարվա արշավանքներից հետո), երբ Ուրարտուն նվաճում էր այդպիսի հեռավոր տերիտորիաներ։ Հետագայում ոչ ինքը՝ Սարդուրի Բ-ը, և ոչ էլ, առավել ևս, նրա հաջորդները, այլևս փորձ չեն անում զբաղվելու Բաբիլուի և Բարուատայի նվաճման խնդրով, քանի որ նրանց թիկունքում նորից վերելք է ապրում ահեղ Ասորեստանը։

Նույն տարվա ընթացքում Սարդուրի Բ-ը զգալի հաջողություններ է ունենում նաև հյուսիսում, ուր նա վերջնականապես հպատակեցնում է էթիունի ցեղային միությունը և ներխուժում Լիկիու երկիրը[50]։ Սրանով նա ավարտում է նախորդ տարին դեպի Սևանա լճի հարավային ափերը ձեռնարկված արշավանքով սկսած գործը։ Այդ արշավանքի ժամանակ ուրարտական զորքը հաղթականորեն անցել էր Սևանա լճի ողջ արևմտյան ափի երկայնքով, նվաճել Ուելիքուխի երկիրը և, այնուհետև, լճի հարավ-արևմտյան ափին հաղթանակ տարել Տուլի-

---

46 Տե՛ս УКН, 156DI, տող 1—18, DII, տող 21—29։

47 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* О происхождении армянского народа, Ереван, 1946.

48 Տե՛ս УКН, 155A, 22—25.

49 Տե՛ս УКН, 155A, տող 1—12։ Բարուատան, Համանարար, համապատասխանում է ասորեստանյան աղբյուրների Բարրու, Բիտ-Բարրուային, իսկ Բաբիլան՝ Նամրուին, որն այդ ժամանակ բնակչությամբ և մշակույթով մեծապես ենթարկվել էր Բաբելոնի ազդեցությանը։ Տե՛ս АВИИУ, 28, ծանոթ. 20։

50 Այդ մասին տե՛ս *Н. В. Арутюнян,* Некоторые вопросы топонимики Урарту, ИФЖ, 1965, № 1, էջ 187—192։



Էրեբունիի միջնաբերդը: Աերոլուսանկար

խու, իսկ հարավային ափին՝ Արկուկինի երկրի նկատմամբ՝ հասնելով մինչև Ուլտեխինի[51]։

Կարևոր է նշել, որ եթե Արգիշտի Ա-ի արշավանքների երթուղին դեպի Սևանի ավազանը ընթանում է հարավից՝ Արարատյան դաշտավայրից, Էրեբունի—Սևան ուղղությամբ՝ Ուլուանի և Կիեխունի երկրների միջով, ապա Սարդուրի Բ-ը մուտք է գործում Սևանա լճի հյուսիս-արևմտյան ափերը արևմուտքից՝ Էթիունի երկրից։ Այսպիսով, անդրարաքսյան հարուստ երկրագործական ու անասնապահական շրջանները Սարդուրի Բ-ի թագավորության օրոք արդեն երկու կողմերից առնվել էին ամուր աքցանի մեջ, որի շնորհիվ երկար ժամանակ (մինչև Ռուսա Ա-ի թագավորությունը ներառյալ) պահպանվում է Ուրարտուի տիրապետությունը այդ խիստ արգավանդ տերիտորիաներում։

Հետագայում, մ. թ. ա. 750—748 թվականներին[52], Սարդուրի Բ-ը որոշ քայլեր է ձեռնարկում իր պետության սահմանները ընդլայնելու հյուսիսում և ծայրագույն հյուսիս-արևմուտքում։ Հյուսիսում, Արաքսի վերին հոսանքում, նա նվաճում է Աբիլիանին (Աբեղյանք), իսկ հյուսիս-արևմուտքում՝ Կուլխան (Կողքիսը կամ Կոլխիդան) և Խուշանին։ Եթե Խուշանի և Աբիլիանի երկրներում դեռևս մ. թ. ա. 785—784 թվականներին եղել է Արգիշտի Ա-ը[53], ապա Կուլխայում, որի սահմանները հարում էին Սև ծովի հարավ-արևելյան ափերին, Ուրարտուի ամբողջ պատմության ընթացքում միայն Սարդուրի Բ-ին է հաջողվել երկու անգամ լինել։

Այնուհետև Սարդուրի Բ-ը արշավանք է ձեռնարկում դեպի Էրիախի երկիրը (հայկական Շիրակ), նվաճում նրա հարուստ շտեմարանները և անասունների հսկայական հոտեր քշում դեպի Բիայնիլի-Ուրարտու[54]։ Վերադարձին նա հաշվեհարդար է տեսնում դեռևս նախորդ տարում նվաճված Աբիլիանիի թագավոր Մուրինիի հետ[55], որը, ըստ երևույթին, փորձել էր չենթարկվելու Ուրարտուի կենտրոնական իշխանությանը։ Աբիլիանիի քաղաքները հրկիզվում են, երկիրը՝ ավերվում։ Ուրարտական թագավորը ներողամտություն է ցուցաբերում նրա թագավոր Մուրինիի նկատմամբ՝ առաջիկայում անտրտունջ ենթարկվելու և հարկ վճարելու պայմանով։ Նմանօրինակ դեպք, ակներևաբար, տեղի է ունեցել նաև Էթիունիի կապակցությամբ, որի լայնատարած տերիտորիան Սարդուրի Բ-ը «նվաճեց» հաջորդ տարում[56], այն դեպքում, երբ այդ ցեղային միությունը ենթարկվել էր ուրարտական տիրապետությանը դեռևս երկու-երեք տարի առաջ։

Հյուսիսային երկրների նկատմամբ տարած բազմաթիվ հաղթանակները տարեցտարի ամրապնդում են Ուրարտուի ռազմական հզորությունը։ Նա հուժկու ռազմական արշավանք է ձեռնարկում դեպի հեռու արևելք՝ Իրանական Ադրբեջանի Արասբարան կամ Կարայա-դաղ մարզում տեղադրվող Պուլուադի

[51] Տե՛ս УКН, 160—161.

[52] Սարդուրյան տարեգրության իրադարձությունների ժամանակագրական կարգի մասին տե՛ս Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 223—230։

[53] Տե՛ս УКН, 127, I, 8, 17—18, ինչպես նաև խորխորյան տարեգրության այդ հատվածի կրկնագիրը (УКН, 128, BI, 2)։

[54] Տե՛ս УКН, 155 C, 25—34։

[55] Տե՛ս նույն տեղում, 155 C, 34—39։

[56] Տե՛ս նույն տեղում, 155 C, 49—52։

երկիրը[57]։ Ուրարտական զորքը դիմադրության է հանդիպում այս երկրում, սակայն Սարդուրի Բ-ին հաջողվում է ճնշել այն և հաղթանակի հասնել։ Ուրարտական թագավորը ավերում է երկիրը, հրկիզում քաղաքները և վերցնում բազում ռազմագերիներ։ Պուլուադին կցվում է Ուրարտուի սահմաններին, տեղում կառուցվում են պաշտպանական բնույթի ամրոցներ և կանգնեցվում սեպագիր կոթող՝ ի նշան այդ կարևոր հաղթանակի[58]։ Սակայն, չնայած ձեռնարկած միջոցառումներին, Ուրարտուի տիրապետությունը այդ երկրում երկար չի տևում։ Այն շարունակվում է, հավանաբար, միայն 2—3 տարի։

**Ասորեստանի պայքարը Ուրարտուի դեմ:** Պուլուադիի նվաճումը Ուրարտուի՝ որպես Առաջավոր Ասիայի հզորագույն երկրի, կարապի երգը հանդիսացավ։ Երկար տեղատվությունից հետո կրկին ոտքի էր կանգնում Ասորեստանը, այս անգամ արդեն օժտված անհամեմատ ավելի մեծ հզորությամբ, քան երբևիցե դրանից առաջ։

Ասորեստանի աննախընթաց վերելքը հայտանշվեց նոր իշխողի՝ Թիգլաթպալասար Գ-ի ռեֆորմներով, որոնց էությունն էր իշխանության խիստ կենտրոնացումը, զորքի ուժեղացումը։ Նախկին խոշոր մարզերի և նրանց գլուխ կանգնած ու մշտապես կենտրոնախույս ձգտումներ ցուցաբերող փոխարքաների փոխարեն այժմ կազմակերպվում են ավելի մանր տերիտորիալ միավորումներ՝ մարզային կառավարիչների գլխավորությամբ։ Զորքի կազմակերպման հիմքում, նախկինում ընկած ռազմական բնակատեղիների, սեփական սպառազինությամբ հավաքագրված զորակոչիկների, երբեմն էլ ընդհանուր աշխարհազորի փոխարեն, այժմ բանակի գլխավոր ուժն է դառնում կենտրոնական իշխանության կողմից մատակարարվող մշտական զորքը՝ «արքայական գունդը»[59]։

– Թիգլաթպալասար Գ-ը ձգտում էր Ասորեստանին վերադարձնելու նրա երբեմնի առաջնությունը Առաջավոր Ասիայում։ Սակայն Վանի թագավորությունն էլ ամենևին մտադիր չէր նրան առանց պայքարի զիջելու առաջնությունը։ Ահա թե ինչու, ստեղծելով արևմուտքում ուժեղ կոալիցիա, որի մեջ ընդգրկվեցին Բիթ-Ագուսիի[60] Մատիել, Մելիդի՝ Սուլումալ, Գուրգումի՝ Թարխուլարա և Կումմուխի՝ Կուշտաշպի[61] թագավորները, Սարդուրի Բ-ը միացյալ ուժերով հարձակման անցավ Ասորեստանի դեմ։ Ճակատամարտում, որ տեղի ունեցավ մ. թ. ա. 743 թվականին Արպադում (Հյուսիսային Ասորիք), Ուրարտուի և նրա դաշ-

---

57 Տե՛ս «Հայկական ՍՍՀ ատլաս», Երևան—Մոսկվա, 1961, Ուրարտուի քարտեզը, էջ 102 (քարտեզի հեղինակ Ս. Տ. Երեմյան)։

58 Տե՛ս УКН, 155 E, տող 1—18։ Սարդուրի Բ-ի Պուլուադիում թողած արձանագրությունը հայտնաբերվել է շուրջ մեկ ու կես տասնամյակ առաջ։ Տե՛ս M. J. Mashkur, Urartu inscription in Iranian Azerbaijan, Tehran, 1955: Արձանագրության ընթերցումը տվել է Գ. Ա. Մելիքիշվիլին (ВДИ, 1960, № 3, էջ 3—11, УКН, էջ 453—454, № 13)։

59 Տե՛ս И. М. Дьяконов, Развитие земельных отношений в Ассирии, էջ 89—90։

60 Թագավորություն Հյուսիսային Ասորիքում՝ Արպադ (այժմ՝ Թել-Էրֆադ) կենտրոնական քաղաքով։

61 Ասորեստանյան Կումմուխը համապատասխանում է ուրարտական Կումախային և անտիկ աղբյուրների Կոմմագենեին։ Կումմուխի թագավոր Կուշտաշպին հիշատակվում է նաև Սարդուրյան տարեգրության մեջ «Կուշտաշպիլի» ձևով (տե՛ս սյունակ E, տող 41)։



Արգիշտի Ա-ի արձանագրությունը կրող սաղավարտի մանրամասներից. Կարմիր-բլուր

նակիցների զորքերը ծանր պարտություն կրեցին[62]։ Անհամար կորուստներ տալով, իր կյանքը փրկելու համար, ուրարտական թագավորը ստիպված էր փախուստի դիմելու։ Թիգլաթպալասարը հետապնդում է նրան մինչև «Եփրատի վրա ձգված կամուրջը՝ Ուրարտուի սահմանը»։ Այնուհետև, Թիգլաթպալասարի տարեգրությունը նկարագրում է Ուրարտուի մի շարք բնակատեղիների նվաճումը Հայկական Տավրոսում[63]։ Այլ արձանագրությունների համաձայն, Թիգլաթպալասարի՝ Կումմուխում (Կիշտան և Խալպու քաղաքներում)[64] ձեռք բերած հաղթանակից հետո, Սարդուրի Բ-ը պատսպարվում է պաշարված Տուշպայում, իսկ Թիգլաթպալասարը չի կարողանում այն նվաճել։

«Ես կողպեցի նրան (Սարդուրի Բ-ին— ծնթ.) Տուրուշպայում[65], նրա քաղաքում,— գրում է Թիգլաթպալասար Գ-ը,— մեծ կոտորած արեցի նրա դարպասների առջև։ Իմ արքայական պատկերաքանդակը Տուրուշպա քաղաքի դիմաց ես կանգնեցրի»։

Ասորեստանյան զորքը, այնուհետև, անկաշկանդ, 60 բերու, այսինքն՝ ավելի քան 400 կմ սրընթաց արշավում է Ուրարտուի տերիտորիայով։ Այդ արշավանքի հետևանքով Վանա լճից հարավ-արևմուտք և հարավ ընկած մի շարք երկրներ (Ուլլուբա, Խաբխի, Էնզի) նվաճվում են ու կցվում Ասորեստանին[66]։

Ծակատագրական այդ պարտությունից հետո Ուրարտուն այլևս չի կարողանում պահպանել իր աշխարհակալական հավակնությունները։ Այնուհետև, սոսկ մի անգամ, Սարդուրի Բ-ին տեսնում ենք հարավ-արևելքում՝ մերձուրմյան Մանա երկրում[67]։ Մնացած բոլոր հայտնի դեպքերում նա հրաժարվում է Ասորեստանի և նրան ենթակա կամ ազդեցության ոլորտում ընդգրկված երկրների նկատմամբ տերիտորիալ ակնկալություններից և գերադասում է իր տիրապետությունը ամրապնդել հյուսիսային երկրներում։ Այժմ (մ. թ. ա. VIII դարի 40-ական թվականների վերջերին) Սարդուրի Բ-ը երևում է մերթ Արաքսի վերին հոսանքում (Աբիլիանի, Աբունի, Ուիտերուխի), մերթ Չըլդըր լճի հարավային ափերին (Իգա), մերթ էլ՝ Սարիղամիշից մինչև Սևանա լճի հարավային ափերը հասնող լայնատարած տերիտորիաներում (Էթիունի, Ուդուրի-Էթիունի)[68]։

Այնուհետև, շուրջ 4—5 տարի, Ուրարտուի քաղաքական պատմության մասին համարյա ոչինչ հայտնի չէ։ Ասորեստանյան էպոնիմների ցուցակներից իրազեկ ենք միայն, որ մ. թ. ա. 735 թվականին, այսինքն՝ Սարդուրի Բ-ի

---

[62] Տե՛ս ասորեստանյան փոխարքա-էպոնիմների ցուցակները (A Ungnad, RLA, II, էջ 430) և Թիգլաթպալասար Գ-ի տարեգրության 59—82 տողերը, P. Rost, Die Keilschrifttexte Tiglat-Pilesers III, Leipzig, 1893.

[63] Տե՛ս АВИИУ, 41 (59, 67, 83, 176)։

[64] Կիշտանը, ըստ Երևույթին, համապատասխանում է այժմյան Կյուշտեմին, Այնթաբից 35 կմ դեպի հյուսիս-արևելք, իսկ Խալպուն՝ Խալֆատիին, Եփրատի արևմտյան ափին, Բիրեջիկից 26 կմ հյուսիս-արևմուտք (Տե՛ս E. Forrer, PAR, էջ 79)։

[65] Տուշպա անվան ասուրական ձևը։

[66] Տե՛ս АВИИУ, 42, 43, 44, 45։

[67] Տե՛ս «Սարդուրյան տարեգրություն», սյունակ B, տող 12—26։

[68] Տե՛ս «Սարդուրյան տարեգրություն», սյունակ B, տող 26—35, D, տող 1—30, 45—53, F, տող 1—28, ինչպես նաև УКН, 159, 160, 165 և այլն։

տիրապետության մայրամուտին, Ասորեստանը ռազմական արշավանք է ձեռնարկել Ուրարտուի դեմ, բայց թե ինչ արդյունքներ է ունեցել այդ ընդհարումը, դարձյալ անհայտ է մնում։

Այսպիսով, հանրագումարի բերելով վերը շարադրված նյութը, կարելի է հանգել այն եզրակացության, որ Սարդուրի Բ-ի օրոք Ուրարտուի ազդեցության սահմանները ժամանակ առ ժամանակ հասել են մինչև Ասորեստան, Հյուսիսային Ասորիք, Դիալայի վերին ու միջին հոսանքները, Եփրատի աջափնյա տերիտորիաները, Սև ծովի հարավ-արևելյան, Չըլդըր լճի հարավային, Սևանա լճի արևմտյան ու հարավային ափերը և Իրանական Ադրբեջանի հյուսիսային լեռնային շրջանները։ Ուրարտուի առաջնությունը Առաջավոր Ասիայում շարունակվել է պահպանվել Սարդուրի Բ-ի թագավորության մի զգալի հատվածում, որը հարատևում է ավելի քան երկու տասնամյակ (մ. թ. ա. 764—743)։ Մ. թ. ա. 743 և 735 թվականներին Թիգլաթպալասար Գ-ի կողմից կրած պարտությունից հետո միայն Ուրարտուի դիրքերը նկատելիորեն խարխլվում են արևմուտքում ու հարավում, բայց դեռևս լրիվ պահպանվում են հյուսիսում։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

## ՈՒՐԱՐՏՈՒՆ Մ. Թ. Ա. VIII ԴԱՐԻ ՎԵՐՋԻՆ ԵՎ VII ԴԱՐՈՒՄ

**Ուրարտուն Ռուսա Ա-ի օրոք:** *Մ. թ. ա. 743 թվականին Արպադում (Հյուսիսային Ասորիք), Քիշտանում ու Խալպուում (Կումմուխ երկրում) Սարդուրի Բ-ի կրած ճակատագրական պարտությունից և Թիգլաթպալասար Գ-ի կողմից Տուշպայի պաշարումից հետո Ուրարտուն, ինչպես ասվեց, իր առաջնությունը զիջում է Ասորեստանին։ Դրությունը ըստ երևույթին, է՛լ ավելի է վատթարանում Սարդուրի Բ-ի թագավորության մայրամուտին (մ. թ. ա. 735) Ասորեստանի կրկին ձեռնարկած ռազմական արշավանքից հետո։ Ահա այդպիսի աննպաստ պայմաններում էլ Ուրարտուի արքայական գահն է բարձրանում Սարդուրիի որդի Ռուսա Ա-ը (մ. թ. ա. 735—713)։*

*Իր թագավորության սկզբնական շրջանում Ռուսա Ա-ը, ըստ երևույթին, գերազանցապես զբաղվել է երկրի ներքին գործերի կարգավորումով։ Թագավորական իշխանությունը ուժեղացնելու նպատակով, հավանական է, որ Թիգլաթպալասար Գ-ի օրինակով նա մանրատում է փոխարքայությունները, և, այդպիսով, սահմանափակում նրանց իրավունքները։ Ուրարտուի մայրաքաղաքի տեղափոխումը Տուշպայից (Վանից)՝ Ռուսախինիլի (Թոփրախ-կալե—Ագռավաքար) տեղի է ունեցել հենց Ռուսա Ա-ի օրոք։ Բացառված չէ, որ դրա պատճառը Թիգլաթպալասարի կողմից Տուշպային պատճառված զգալի ավերածություններն էին[1]։*

*Արտաքին քաղաքականության բնագավառում Ռուսա Ա-ը ջանում էր բարդ քաղաքական իրադրության պայմաններում պահպանել Ուրարտուի հավասարակշռությունը։ Մ. թ. ա. VIII դարի 30-ական թվականների երկրորդ կեսին և 20-ական թվականների սկզբներին, երբ Ասորեստանում դեռևս շարունակում էր թագավորել Թիգլաթպալասար Գ-ը, Ռուսա Ա-ին, ըստ երևույթին, այլ բան չէր մնում անելու, քան խելամտորեն գնահատել ստեղծված վիճակը և առժամանակ ձեռնպահ մնալ Ասորեստանի արմատական շահերը շոշափելուց հարավում և այլուր։*

*Մյուս կողմից, Ուրարտուին այդ ժամանակ ոչինչ չէր խոչընդոտում նվաճողական գործողություններ ձեռնարկելու հյուսիսում, ուր նա գործ ուներ ան-*

---

[1] *Տե՛ս* Б. Б. *Пиотровский*, Ванское царство, *էջ 88—92։ Ռուսախինիլի—Թոփրախ-կալեն ընկած է Տուշպա-Վանի հյուսիս-արևելյան ծայրամասում, որը ժողովուրդը անվանում է «Ակռափուքար» այսինքն՝ «Ագռավաքար»։*

համեմատ թույլ հակառակորդների հետ։ Այստեղ, Սևանա լճի ավազանում, Ռուսա Ա-ը ջանում է ոչ միայն ամրապնդել Ուրարտուի նախկին դիրքերը, այլև նոր երկրներ նվաճել։ Նա կրկին հնազանդեցնում է լճի արևմտյան և հարավային ափերին ընկած երկրները, որոնք Ուրարտուի տիրապետությանն էին ենթարկվել դեռևս Սարդուրի Բ-ի թագավորության օրոք, և, այնուհետև, հպատակեցնում «լճից այն կողմ», այսինքն՝ նրա արևելյան ափերի երկարությամբ ձգված բարձրադիր լեռներում ընկած 19 այլ երկրներ[2]։

Հարավում ունեցած անհաջողություններին զուգընթաց, բնականաբար, Ռուսա Ա-ի ուշադրությունը տարեցտարի ավելի ու ավելի է գամվում Սևանի ավազանի հարուստ անասնապահական տերիտորիաներին։ Հարավում կրած կորուստների դիմաց նա աշխատում էր ինչ-որ չափով փոխհատուցում գտնել հյուսիսում։ Ծովինարի արձանագրության տվյալներից երևում է, որ ուրարտական թագավորը սիստեմատիկաբար լինում էր Սևանի ավազանի նվաճված երկրներում ոչ միայն հարկահանության, այլև պաշտպանական ամրոցներ կառուցելու նպատակով։ Ռուսա Ա-ի հիմնադրած ամրոցների մնացորդներ հայտնաբերվել են Սևանա լճի արևմտյան ափերի մոտակայքում՝ այժմյան Կամո քաղաքի վրա գերիշխող ժայռի վրա («Խալդի աստծու քաղաք») և հարավային ափին՝ Վաձեվան (Ալիչալու) և Ծովինար գյուղերի միջև («Թեյշեբա աստծու քաղաք»)[3]։ Ուրարտուն հիմնավորապես էր հաստատվում այս հեռավոր լեռնային շրջաններում։

Երկրի ներքին դրության կարգավորումը և հյուսիսում ձեռնարկված նվաճումները նկատելիորեն ամրապնդում են Ուրարտուի ռազմական հզորությունը, և նրա քաղաքականությունը Ասորեստանի նկատմամբ նորից ակտիվանում է։ Ռուսա Ա-ին այժմ առանձնապես հետաքրքրում էր հարավ-արևելյան ռազմաստրատեգիական և պաշտամունքային կենտրոն Արդինի-Մուսասիրը։ Ռուսայի քաղաքականության որոշակի աշխուժացմանը օգնում էր Ասորեստանում ստեղծված նոր իրավիճակը։

Մ. թ. ա. 727 թվականին Ասորեստանում գահ է բարձրանում Սալմանասար Ե-ը (Թիգլաթպալասարի հաջորդը), որն առաջին հերթին զբաղվում է երկրի ներքին գործերով, ինչպես նաև Բաբելոնի պրոբլեմով։ Երկրի ներսում, օրինակ, Սալմանասար Ե-ը փորձում է իր հիմնական հենարանը դարձնել բանակը՝ ի հեճուկս մեծատոհմիկ ազնվականության ու քրմության։ Վերացնելով Աշուրի տաճարների արտոնությունները, նա շարունակում է այդ գիծը նաև Բաբելոնիայի սրբազան քաղաքներում՝ Նիպպուրում, Սիպպարում և Բաբելոնում։

Սալմանասար Ե-ի այսպիսի քաղաքականությունը մեծ դժգոհություն է առաջացնում ոչ միայն Ասորեստանում, այլև Բաբելոնում, որի պահպանած ինքնուրույնության նշույլներին նա վերջ էր տվել։ Այդ դժգոհությունը, ի վերջո, հանգեցնում է դավադրության, որի հասունացմանը նպաստում էր մ. թ. ա. 725 թվականին Սալմանասարի սկսած ծանր պատերազմը Իսրայելի դեմ։ Չնայած հենց նույն տարում տարած հաղթանակին, ասորեստանյան զորքը պաշա-

---

2 Տե՛ս Ռուսա Ա-ի Նոր Բայազետի (Կամո) և Ծովինարի արձանագրությունները (УКН, 265, 266)։

3 Տե՛ս Б. Б. Пиотровский. Ванское царство, էջ 32։

բելով անմատչելի լեռնային ամրոց Սամարիան՝ Իսրայելի մայրաքաղաքը, չկարողացավ գրավել այն։ Պաշարումը տևեց շուրջ երեք տարի, որի ընթացքում ասորեստանյան բանակը հսկայական զոհեր տվեց։ Այդպիսի լարված պայմաններում Ասորեստանում ապստամբություն է ծագում և Սալմանասար Ե-ի դեմ կազմակերպված դավադրությունը մ. թ. ա. 722 թվականին վերջանում է թագավորի սպանությամբ[4] և Սարգոն Բ-ի գահակալությամբ։

Ըստ երևույթին, Ասորեստանի համար ստեղծված այդ ծանր ժամանակներին է վերաբերում Ռուսա Ա-ի քաղաքականության աշխուժացումը և ռազմական որոշ հաջողությունները հարավում։ Այդ մասին է պատմում Թոփուզավայի ասուրա-ուրարտական երկլեզվյան արձանագրությունը։ Այդ աղբյուրի համաձայն, Ռուսա Ա-ը դեռևս շարունակում է պահպանել իր դիրքերը անառիկ լեռներում ընկած և անմատչելի անտառներով ծածկված, ստրատեգիական խոշոր նշանակություն ունեցող Արդինի-Մուսասիրում։ Այստեղ ուրարտական թագավորը նախ ծավալում է պաշտամունքային բնույթի զանազան կառույցների շինարարություն, այնուհետև իր բանակը համալրելով Մուսասիրի թագավոր Ուրզանայի տրամադրած օժանդակ զորքերով ու մարտակառքերով, շարժվում է դեպի «Ասորեստանի լեռները», ուր մեծ կորուստներ է պատճառում թշնամուն։ Իր այդ հաղթանակի պատվին Ռուսան Մուսասիրում զոհեր է մատուցում և տոնախմբություն կազմակերպում տեղի բնակիչների համար[5]։

Սակայն վիճակը փոխվում է, երբ Ասորեստանում դահ է բարձրանում Սարգոն Բ-ը (722—705)։ Երկրի ներսում նա վերականգնում է ազնվականության ու տաճարների արտոնությունները, բանակում սահմանափակում ընչազուրկների թիվը և դրա փոխարեն ընդգրկում նվաճված երկրների զորքերից. պահում է նաև վարձկան զորք։ Այս բոլորը ապահովում է Սարգոնի առաջիկա հաջողությունները ներքին և արտաքին քաղաքականության մեջ։ Գահ բարձրանալուց մի քանի տարի անց, Սարգոն Բ-ը նվաճում է Սամարիան՝ Իսրայելի մայրաքաղաքը, մի բան, որ չհաջողվեց Սալմանասար Ե-ին և փաստորեն պատճառ դարձավ նրա ողբերգական վախճանի։ Այնուհետև, ասորեստանյան թագավորը նվաճում է Պաղեստինի ծովափնյա քաղաքները[6]։

**Սարգոնի ուրարտական արշավանքի նախապատրաստումը:** Նախքան իր գլխավոր թշնամու՝ Ուրարտուի դեմ վճռական հարձակման անցնելը, Սարգոնը զգալի ժամանակ է հատկացնում Ուրարտուի ներքին վիճակի ուսումնասիրմանը։ Այդ նպատակով նա սիստեմատիկաբար հետախույզներ է ուղարկում Ուրարտուի տերիտորիան։ Սարգոնի գաղտնի միջամտությամբ Վանի թագավորության կենտրոնական իշխանության դեմ ոտքի են կանգնում բազմաթիվ դժգոհ տարրեր, այդ թվում մարզերի կառավարիչներ, բարձրաստիճան զինվորական պաշտոնյաներ և այլն։

Ահա թե ինչ է հայտնում Սարգոնին Ուրարտուի ներքին վիճակի մասին նրա գործունյա հետախույզ Աշշուրրիսուան.

---

[4] Տե՛ս *В. В. Струве*, История древнего Востока, էջ 327—328։

[5] Տե՛ս *M. Tserethell*, Études ourartéennes III. La stèle de Sidikan-Topzaoua. RA, XLIV, 1950, № 4; XLV, 1951, № 1, 4. УКН 264.

[6] Տե՛ս *В. В. Струве*, История древнего Востока, էջ 328—329։

*«Ուրարտուի հինգ մարզային կառավարիչներ մուտք են գործել Ուեսի[7]... այժմ նրանք ոտքի են հանել տեղական ուժերը։ Նրանց զորքը կլինի ուժեղ (?)։ Թագավորը դուրս է եկել Տուրուշպա քաղաքից և գնացել Կանիուն։*

*Այն մասին, որ գրել էր թագավորը, իմ տերը՝ «Առաքիր հետախույզներ»— ես ուղարկեցի նրանց երկու խմբով։ Ոմանք ներկայացել են և պատմել այս լուրերը, իսկ մյուսները առայժմ չեն երևացել»[8]։*

*Մի այլ նամակում գրված է. «Մաննայեցիները ուրարտական թագավորի բնակատեղիներում, ծովափնյա մարզում, ապստամբել են, զայրացել են և բարձրացել սարերը։ Աբալուկունուն (այլ դեպքում՝ Աբլիուկնու)՝ Մուսասիրի մարզային կառավարիչը և Տուննաունը՝ Կար-Սիպարի մարզային կառավարիչը՝ պահակային ծառայության համար ուղևորվել են Մաննա երկրի սահմանները։ Ուրարտական թագավորը Տուրուշպայում է, զոհեր է մատուցում, բոլոր մարզերի կառավարիչները նրա մոտ են»[9]։*

*Սարգոնի ժամանակվա հետախուզական նամակները վկայում են Վանի թագավորության և կիմմերների միջև տեղի ունեցած առաջին ռազմական ընդհարումների մասին. «Ուրարտական թագավորը հենց որ գնաց Գամիր երկրի դեմ, նրա զորքը ամբողջությամբ ջախջախվեց։ Նա, ինքը, և նրա մարզերի կառավարիչները իրենց զորքով պահ են մտել... երկու մարզերի կառավարիչներ սպանված են.. ես գրել եմ ամրոցների կայազորներին, որոնք սահմանի վրա են, լուրեր հաղորդել ուրարտական թագավորի մասին։ Հենց որ նա գնաց Գամիր երկիրը, նրա զորքը ամբողջովին ջախջախվեց։ Նրա երեք մեծատոհմիկներ, իրենց զորքերի հետ միասին, ջախջախվել են։ Նա, ինքը, փախել է և մտել իր երկիրը...»։ Այնուհետև. «Կիմմերացին այս, դուրս եկավ Մաննա երկրից և Ուրարտու մուտք գործեց... Ուեսիի մարզի կառավարչի սուրհանդակը ներկայացավ Ուրզանային..., ասելով հետևյալը՝ «Զորքերը... թող գան». պուլիացիների և սուրիացիների առթիվ ամբողջ Ուրարտու երկիրը սարսափում է»[10]։*

*Հետախույզների հաղորդումներից երևում է, որ առայժմ Ուրարտուին ենթակա են ոչ միայն Վանա լճից հարավ ընկած Խուբուշկիան, այլև է՛լ ավելի հարավ-արևելքի Արդինի-Մուսասիրը։ Նույնիսկ կիմմերներից կրած ծանր պարտությունից անմիջապես հետո, նրանց կառավարիչները (ինչպես նաև Մուսասիրի կառավարչի եղբայրն ու որդին) գնում են ողջունելու ուրարտական թագավորին[11]։*

*Սակայն Ուրարտուի անհաջողություններին զուգընթաց, նրանից ստիճանաբար երես է դարձնում և դեպի Ասորեստան հակվում ռազմա-ստրատեգիական խոշոր նշանակություն ունեցող Արդինի-Մուսասիրը։ Այդ պարզորոշ երև-*

---

*7 Մարզ՝ համանուն կենտրոնական կարևոր ամրոց-քաղաքով, Վանա լճից դեպի հարավ։ Այլ աղբյուրներում հիշատակվում է «Ուայաիս» ձևով։*

8 АВИИУ, *50 (4)։*

9 *Նույն տեղում, 50 (12)։*

10 АВИИУ, *50 (10, 8). տե՛ս նաև 50 (11)։*

11 *Տե՛ս նույն տեղում, 50 (10)։*

վում է նրա արքա Ուրզանայի՝ Սարգոն Բ-ին հասցեագրած նամակներից։ Նրանցից մեկն ակնարկում է առայժմ Մուսասիրի չեզոքության մասին։

«... Այն մասին, որ դու գրել ես ինձ՝ «Առանց Ասորեստանյան թագավորի թույլտվության ոչ ոք թող ծիսակատարություն չանցկացնի»։ Երբ եկել է այստեղ Ասորեստանի թագավորը, մի՞թե ես նրան խանգարել եմ։ Ինչ արել եմ ես անցյալում, նույնը արել եմ հիմա, և դրա համար հաշվետու չեմ»[12]։

Ուրզանայի հաջորդ նամակը, սակայն, վկայում է արդեն նրա լիովին կախյալ վիճակի մասին Սարգոնից[13]։

Ռուսան, սակայն, ձեռքերը ծալած չի նստում։ Եթե նրան ոչ բոլոր դեպքերում է հաջողվում հնազանդության մեջ պահել ծայրամասային, առանձնապես հարավում ընկած մարզերը, ապա կենտրոնական մարզերում ծագած ապստամբությունները նա շուտով ճնշում է և կարգ ու կանոն հաստատում երկրում։ Այդ մասին հետաքրքիր տվյալներ կան Աշշուրրիսուայի հետախուզական նամակներում։

«...Լուր ուրարտական թագավորի մասին. ինչ որ ես գրել էի նախկինում՝ այդ այդպես է։ Նրանց մոտ եղել է մեծ կոտորած։ Այժմ նրա երկիրը հանդարտվել է։ Նրա մեծատոհմիկներից յուրաքանչյուրը գնացել է իր երկիրը։ Կակկադանուն, նրա տուրտանը (զորավարը—հեղ.) ձերբակալված է։ Ինքը՝ ուրարտական թագավորը գտնվում է Ուազաուն մարզում...»[14]։

«...Նարագեի՝ գնդապետի վերաբերյալ, որի մասին ես գրել եմ թագավորին, իմ տիրոջը՝ «Քսան հրամանատարներ նրա հետ միասին, որոնք խոսել են թագավորի դեմ, ձերբակալված են»։ Այժմ ուրարտական թագավորը մտել է Տուրուշպա և հրամայել նրանց խեղդամահ անել։ Մնացած մարդիկ, որոնք հանդես են եկել նրանց հետ, հրամանատարների հետ միասին, ավագների հետ միասին սպանված են։ Ուրծինեն՝ երկրորդ տուրտանը, Աբլիուկնուի եղբայրը. ձերբակալված է Տուրուշպայում...»[15]։

Բերված փաստերը վկայում են, որ Ռուսա Ա-ը հսկայական ջանքեր է գործադրել Վանի թագավորությունը ոչ միայն արտաքին ու ներքին վտանգներից զերծ պահելու, այլև նախկինում կորսված մարզերը վերադարձնելու, իսկ որոշ դեպքերում էլ նոր տերիտորիաներ նվաճելու համար։ Ըստ երևույթին, այդ փաստերն է նկատի ունեցել Ռուսան, երբ Մուսասիրում կանգնեցված իր բրոնզաձույլ արձանի վրա՝ կառավարի և երկու ձիերի հետ միասին, մակագրել է տվել հետևյալ խոսքերը՝ «Իմ երկու լծկան ձիերով և մեկ կառավարով իմ ձեռքը տիրապետեց Ուրարտուի թագավորական իշխանությանը»[16]։

Հետագա տարիներին Սարգոն Բ-ը կոնկրետ քայլեր է ձեռնարկում Ուրարտուի ներքին գործերին ակտիվ միջամտելու ուղղությամբ։ Ռուսան իր հերթին զգալով մոտալուտ վտանգը, տենդագին կերպով դաշնակիցներ է որոնում։ Մ. թ. ա. 719 թվականին, օրինակ, Ռուսային տեսնում ենք ռազմական դաշին-

---

12 Նույն տեղում, 50 (2)։

13 Տե՛ս RCAE, I, 768։

14 АВИИУ, 50 (10)։

15 Նույն տեղում, 50 (13)։

16 Այդ հարցերի մանրամասն հետազոտությունը տե՛ս *Б. Б. Пиотровский*, Ванское царство, էջ 87—101։ *Н. В. Арутюнян*, Биайнили (Урарту), Ереван, 1970, էջ 279—311։

*քի մեջ Սուկկու, Բալա և Աբիտիկնա[17] քաղաքների հետ, որոնց բնակիչներից Սարգոն Բ-ը դաժան վրեժ է լուծում՝ վերաբնակեցնելով նրանց «Արևմտյան երկիր Խաթթիում»[18]։*

*Ռուսան, մյուս կողմից, մտահոգված էր իր տիրապետությունը ապահովելու մերձուրմյան շրջանում։ Այստեղ, Ուրմիա լճից արևելք ընկած Զիկերտուն ինքն է աշխատում բարի-դրացիական հարաբերություններ հաստատել Ուրարտուի հետ։ Իսկ ինչ վերաբերում է լճափնյա և նրանից արևելք ու հարավ ընկած Մանային, ապա Ռուսան շարունակում է ռազմական ակտիվ գործողությունները՝ այդ երկիրը իր տիրապետությանը ենթարկելու համար։ Այդ մասին հաղորդում է Աշշուրրիսուայի մ. թ. ա. 719 թվականով (?) թվագրվող նամակներից մեկը.*

*«...Ուրարտական թագավորը այն բանից, ինչ բերել էին նրան զիկերտցիները, ոչինչ չվերցրեց. նրանք դատարկ վերադարձան։ Իր զորքերի հետ նա գնաց Ուայսի քաղաքը և մտավ այնտեղ։ Նրա զորքը Ուայսիում է, իսկ նա՝ ինքը, վերցրեց իր հետ միայն օժանդակ (?) զորքեր... գնաց Մաննա երկիրը... Նրա ելքը Ուայսի քաղաքից... ես չեմ տեսել. դիմացում եղած ճանապարհները... նրանք բարեկարգում են, կամուրջները վերանորոգում...»[19]։*

*Հետագայում, մ. թ. ա. 716 թվականին, Ռուսան Սարգոնի և նրա դրածո Մանայի թագավոր Աղայի դեմ է հրահրում վերջինիս ենթակա որոշ երկրների կառավարիչների՝ Ուիշդիշի արքա Բագդատտիին և Զիկերտուի արքա Միտատտիին[20]։ Ռուսայի ակտիվ աջակցությամբ վերջիններիս հաջողվում է հաղթանակ տանել Մանայի զեմ՝ Ուաուշ լեռան վրա, որտեղ և սպանվում է Աղան։ Սակայն Սարգոնը վրա է հասնում և պարտության մատնում նրանց՝ Ուիշդիշի Բագդատտի արքային դաժան մահապատժի ենթարկելով՝ քերթելով նրա մաշկը։*

*Ռուսան այս անգամ գաղտնի կապերի մեջ է մտնում Մանայի նոր թագավորի՝ Ուլլուսունուի հետ (նրան Սարգոնն էր կարգել թագավոր՝ Աղայի մահից հետո), որի միջոցով Ասորեստանի դեմ հրահրում է Կարալլուի և Ալլաբրիայի[21] թագավորներին։ Սարգոնը հաղթանակ է տանում ինչպես այդ երկրների, այնպես էլ Մանայի նկատմամբ։ Մարտերի ընթացքում նա հրկիզում է Մանայի արքայանիստ քաղաք Իզիրտուն։ Ուլլուսունուն ստիպված անձնատուր է լինում և ներումն հայցում, որին և արժանանում է Սարգոնի կողմից[22]։*

---

17 *Այդ քաղաքների տեղադրումը պարզված չէ։ Գուցե նրանք ընկած են եղել Արածանիի ստորին հոսանքում (համմտ. հայկ. Բալու, Բալահովիտ)։*

18 *Ասորեստանյան աղբյուրների այդ ժամանակվա «Խաթթի երկրի» տակ սովորաբար պետք է հասկանալ Ասորիքը, Փյունիկիան և Պաղեստինը, ինչպես նաև Փոքր Ասիան։ «Խաթթի երկիրը», նեղ իմաստով, Կարքեմիշի թագավորությունն է։ Տե՛ս* АВИИУ, *46 (32) և ծանոթ. 7։*

19 АВИИУ, *50 (14)։*

20 *Ուիշդիշը (ուրարտ. Ուգիշտի) տեղադրվում է Ուրմիա լճի արևելյան ափին, իսկ Զիկերտուն՝ նրանից արևելք։*

21 *Այդ երկրները տեղադրվում են Մանայից դեպի հարավ, Փոքր Զաբի (Տիգրիսի վտակի) ակունքներից ոչ հեռու։*

22 *Տե՛ս H. Winckler*, Die Keilschrifttexte Sargons II, Leipzig, 1889, *էջ 10—15, տող 52—63։* АВИИУ, 46 (52).

Գաղտնի կապերի մեջ մտնելով Մանայի երկրամասերից մեկի կառավարչի՝ Դայուկկուի[23], հետ, Ռուսան մ. թ. ա. 715 թվականին կարողանում է գրավել Մանայի 22 ամրոցներ, սակայն Սարգոնը դրանք վերանվաճում է և ընդգրկում Ասորեստանի սահմանների մեջ։ Միաժամանակ ուրարտական թագավորից, որպես հարկ, թե ռազմատուգանք, նա ստանում է խոշոր ու մանր եղջերավոր անասուններ։

Այսպիսով, Ռուսան տարիներ շարունակ անհանգստություն է պատճառում Ասորեստանին՝ ժամանակ առ ժամանակ իր ազդեցության ոլորտի մեջ ներգրավելով նրան ենթակա երկրներ ու մարզեր։ Եվ, ահա, Սարգոնը պատրաստվում է ջախջախիչ հարված հասցնելու Ռուսային և իր թագավորության ութերորդ տարում, այսինքն՝ մ. թ. ա. 714 թվականին, ավերիչ արշավանք է ձեռնարկում Ուրարտուի դեմ։

**Սարգոն Բ-ի արշավանքը դեպի Ուրարտու մ. թ. ա. 714 թվականին:** Այս արշավանքի արդյունքները համառոտակի ամփոփված են Սարգոնի տարեգրության մեջ, իսկ մանրամասն և պատկերավոր նկարագիրը տրված է այսպես կոչված «Լուվրի աղյուսակում»[24]։

Ահա աղյուսակի բովանդակությունը։

Սարգոն Բ-ի արշավանքը սկիզբ է առնում ասորեստանյան թագավորների նստավայրերից մեկից՝ Կալխուից (այժմ՝ Նիմրուդ)[25] և ընթանում նախապես դեպի արևելք։ Զորքերն անցնում են Տիգրիսի երկու վտակները՝ Վերին ու Ստորին Զաբը, և ապա մտնում Զամուա (Լուլումե) երկրի բարձրանիստ Կուլլարի[26] լեռնանցքները։ Այնուհետև զորատես կազմակերպելով Սումբու մարզում[27], անհեյլի դժվարություններ հաղթահարելով, Սարգոնը անցնում է Նիկկիպպա և Ուպա բարձրանիստ լեռները, նրանց միջև հոսող Բույա գետը, ինչպես նաև յոթ այլ լեռներ և, վերջապես, հասնում Մանայի հարավային ծայրամասում ընկած Սուրիկաշ մարզը, որը սահմանակից էր Կարալլուին և Ալլաբրիային։

Լսելով Սարգոնի զորքերի առաջխաղացման մասին և հաշվի առնելով, որ նա բազմիցս օժանդակել է իրեն, Մանայի Ուլլուսունու թագավորը, փոխարքաների ու այլ պետական պաշտոնյաների, ինչպես նաև արքայական տան անդամների հետ միասին, դուրս է գալիս իր արքայանիստ քաղաք Իզիրտուից և ընդառաջ գնում Ասորեստանի թագավորին՝ ընդհուպ մինչև սահմանային ամրոց Սինիխինի։ Այստեղ Ուլլուսունուն համբուրում է Սարգոնի ոտքերը և նրան, որպես հարկ, մատուցում լծկան ձիեր՝ համապատասխան հանդերձանքով, և խոշոր ու մանր եղջերավոր անասուններ։

Ապահովված համարելով իր զորքերի առաջընթացը դեպի հյուսիս՝ Մանայի տերիտորիայում, Սարգոնը առայժմ անհրաժեշտ չի համարում ներխու-

23 Հետազոտողները կարծում են, որ այն, ըստ երևույթին, նույնական է Հերոդոտի մոտ հիշատակվող Դեյովկեսի հետ։ Տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 304։

24 Տե՛ս Fr. Thureau-Dangin, Une relation de la huitième campagne de Sargon, Paris, 1912: Այդ արձանագրությունը պահպանվում է Փարիզում, Լուվրի թանգարանում, ուստի հայտնի է «Լուվրի աղյուսակ» անունով։

25 Տիգրիսի ձախ ափին, նրա և Մեծ Զաբի խառնարանից ոչ հեռու։

26 Այժմ Կոլլարա-դաղ (տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 100, 366)։

27 Սումբուն կամ Սունբուն տեղադրվում է Փոքր Զաբի վրա, ուր այդ գետը մուտք է գործում Զագրոսի լեռնանցքը (տե՛ս նույն տեղում, էջ 89)։

ժելու այդ երկիրը և զբաղվում է հարավային որոշ երկրների հպատակեցման և նրանցից հարկեր կորզելու խնդրով։ Նա մեկնում է Ալլաբրիա և հարկ վերցնում՝ ձիեր, խոշոր ու մանր եղջերավոր անասուններ, ապա իջնում դեպի հարավ-արևելք՝ Պարսուաշ։ Նամրուի[28], Սանգիբուտուի[29], Բիտ-Աբդադանիի և Մեդիայի բնակատեղիների պետերը շտապում են դեպի Պարսուաշ և Սարգոնին մատուցում իրենց երկրներին պարտադրված հարկերը՝ մրցարշավի ձիեր, ջորիներ, երկսապատ ուղտեր, ինչպես նաև խոշոր ու մանր եղջերավոր անասուններ։

Պարսուաշից Սարգոնը արշավում է դեպի հյուսիս՝ Մանայի Միսսի մարզը, որտեղ, իր Սիրդիակկա ամրոցում, ասորեստանյան թագավորին պատրաստակամորեն սպասում էր Մանայի Ուլլուսունու արքան։ Սարգոնի զորքի պարենավորման համար Ուլլուսունուն բացում է «ալյուրի և գինու պահեստները»։ Ի պատասխան Ուլլուսունուի և նրա մեծատոհմիկ ազնվականների խնդրանքին, Սարգոնը խոստանում է տապալել Ուրարտուն և վերականգնել Մանայի նախկին սահմանները։ Ասորեստանյան զորքը լինում է նաև Պանզիշ ամրոցում, որը հիմնադրված էր ընդդեմ Զիկերտուի և Անդիայի, ապա ներխուժում Զիկերտու երկիրը։

Զգիմանալով Սարգոնի հզոր բանակի սրընթաց արշավին, Զիկերտուի թագավոր Մետատտին, Ռուսայի դաշնակիցը, սարսափից լքում է արքայանիստ Պարդա քաղաքն ու բարձրանում լեռները՝ տանելով իր հետ երկրի բնակիչներին։ Այնուամենայնիվ, նրան հաջողվում է օժանդակ զորք ուղարկել իր դաշնակցին՝ ուրարտական թագավորին։ Սարգոնը նվաճում, ավերում ու հրկիզում է Զիկերտուի 97 բնակատեղիներ։

Ուղևորվելով Զիկերտուից, Սարգոնը հասնում է Մանայի Ուիշդիշ մարզը. որն այդ ժամանակ գտնվում էր Ուրարտուի իրավասության ներքո։ Այդ պահին Ռուսան գտնվում էր Ուաուշ անառիկ լեռան վրա, որտեղ նա իր զորքը պատրաստում էր ճակատամարտին[30]։ Սարգոնը հենց Ուաուշ լեռան վրա, կատաղի ճակատամարտում, ջախջախիչ պարտություն է մատնում ուրարտական զորքին։ Ռուսայի արքայական տան 260 անդամներ, ինչպես նաև մարզերի կառավարիչներ, հեծյալներ գերի են ընկնում։ Ուրարտական թագավորը հուսահատ լքում է իր զորքն ու մարտակառքը և «մատակ ձիով» փախուստի դիմում։ Այնուհետև, Սարգոնը պարտության է մատնում նաև Զիկերտուի թագավոր Մետատտիին և հպատակեցնում Ուրմիա լճից արևելք ընկած Անդիա երկիրը։ Ավելի քան 40 կմ (6 «բերու»[31]) տարածության վրա նա հետապնդում է Ռուսայի զորքին՝ գրավելով Ուիշդիշի ողջ տերիտորիան[32]։

---

28 Տեղադրվում է Դիալայի (Տիգրիսի վտակի) միջին հոսանքում և համապատասխանում, ըստ երևույթին, ուրարտական աղբյուրների Բաբիլուին։ Տե՛ս АВИИУ, 49, ծանոթ. 14։

29 Այս Սանգիբուտուն միանգամայն տարբեր է Ուրմիա լճի հյուսիսում տեղադրվող նույնանուն մարզից։

30 «Լուվրի աղյուսակը» հաղորդում է, որ Ռուսայի այդ մտադրության մասին Սարգոնին իրազեկ է դարձրել իր սուրհանդակը։ Ի դեպ այդ սուրհանդակի նամակը պահպանվել է (տե՛ս RCAE, № 515, АВИИУ, 50 (17)։

31 «Բերու»-ն համապատասխանում է 7—8 կմ:

32 Ի դեպ Սարգոնը այստեղ շտապում է հաղորդելու թե Ռուսան այդ ժամանակ ։ իբր լքել էր Ուրարտուի մայրաքաղաք Տուրուշպան (Տուշպան) և, փախուստի դիմելով, հասել իր լեռների

Շարունակելով իր երթը դեպի հյուսիս՝ Ուրմիա լճի արևելյան ափով, Սարգոնը նվաճում է Սուբի մարզի Ուշկայա մեծ ամրոցը, որը նա համարում է Ուրարտուի սահմանների սկիզբը։ Այնուհետև, Սարգոնը նկարագրում է Սուբի մարզում իր կատարած թալանը և ավերածությունները հետևյալ խոսքերով. «Բերքը նրանց և հարդը նրանց ես հրկիզեցի, առատ շտեմարանները ես բացեցի և անչափ գարիով կերակրեցի իմ զորքը։ Նրա մարգագետիններում, որպես մորեխների երամ, ես արձակեցի իմ բանակի անասուններին. նրանք պոկոտեցին խոտը՝ նրա ապավինությունը, և ամայացրին արտերը»։

Շարունակելով առաջխաղացումը դեպի հյուսիս, Սարգոնը այնուհետև հասնում է Սանգիբուտուի Բարի մարզը[33], որի բնակիչները մոտալուտ վտանգից սարսափահար փախուստի են դիմում։ Ասորեստանի թագավորը ավերում է այդ մարզի Տարուի ու Տարմակիսա ուժեղ ամրոցները՝ շրջակա 39 բնակավայրերի հետ միասին, կողոպտում նրանց հարուստ շտեմարանները։

Ասորեստանյան բանակի առաջխաղացումը հետագայում ընթանում է Ուրմիա լճի հյուսիսային ափի երկայնքով, ուր նա ներխուժում է Սանգիբուտու մարզը։ Լսելով Ռուսայի պարտության մասին, Ուլխու քաղաքի և Սարդուրիխուրդա ամրոցի բնակիչները լքում են իրենց բնակավայրերը և փախուստի դիմում։ Սարգոնը հիմնովին ավերում է Ուլխուն, Ուրարտուի խոշորագույն տնտեսական կենտրոններից մեկը, շարքից հանում նրա հոյակապ ոռոգիչ ջրանցքը, ոտնատակ անում բերքառատ պտղատու և խաղողի այգիները, մարգագետինները։ Ավերվում է նաև Սարդուրիխուրդա մեծ ամրոցը։ Ասորեստանյան զորքը կողոպտում է ցորենի ու գարու հսկայական պաշարները և տանում իր հետ։

Սանգիբուտուից Սարգոնի զորքը արշավում է Արմարիլի (Վանա լճից արևելք) և ուղղություն վերցնում դեպի Վանա լճի հարավային ափերը[34]։ Արմարիլիում ասորեստանյան բանակը, ի թիվս մի շարք այլ բնակավայրերի, ավերում է «Արբուն՝ Ուրսայի (Ռուսայի) տոհմի բնակատեղին, Ռիյարը՝ Սարդուրիի

---

կատարները։ Սակայն փաստերը ցույց են տալիս, որ այդ հաղորդումը իրականությանը չի համապատասխանում և ասորեստանյան թագավորի պարծենկոտության արդյունք է։ Պետք է նախ նկատի ունենալ, որ այդ հաղորդումը Սարգոնն անում է այն պահին, երբ նրա զորքը գտնվում էր դեռևս Ուրմիա լճի արևելյան ափին (Ուիշդիշ մարզում), այսինքն՝ Տուշպայից հրսկայական հեռավորության վրա։ Այնուհետև, ելնելով հենց այս արշավանքի մասին Սարգոնի տված նկարագրից, պարզ ու հստակ երևում է, որ Տուշպան (Վանը) ընդհանրապես չի նվաճվել, ուստի ոչ մի ստիպողական պատճառ չի եղել, որպեսզի Ռուսան նախապես լքեր իր մայրաքաղաքը։

33 Ուրմիա լճի հյուսիս-արևելյան ափին։

34 Սանգիբուտուից սկսած, Սարգոնի զորքերի առաջխաղացման երթուղին ենթակա է վիճաբանության։ «Լուվրի աղյուսակի» հրատարակիչ Թյուրո-Դանժենը հակված է այն տանելու Վանա լճի հյուսիսային և արևմտյան ափերով, իսկ Լեման-Հաուպտը՝ Ուրմիա լճի հյուսիսից անմիջապես դեպի Վանա լճի հարավային ափերը (տե՛ս C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, էջ 317—323)։ Նկատի ունենալով, որ Սարգոնի մոտ ոչ մի հիշատակություն չկա Վանա լճի հյուսիսում տեղադրվող Զիուկունի և Արտարապշա երկրների, Կուրիա(կա) լեռան, Արգիշտիխինիլի քաղաքի և Կալիալա գետի մասին, ուստի ավելի հավանական է թվում Լեման-Հաուպտի առաջադրած երթուղին, որը, ի դեպ, ընդունում են նաև Գ. Ա. Մելիքիշվիլին և Ի. Մ. Դյակոնովը։ Նշենք, որ այստեղ հիշատակված Արգիշտիխինիլին ոչ մի կապ չունի Արաքսի ձախ ափին գտնվող Արգիշտիխինիլի-Արմավիրի հետ։ Այդ մասին տե՛ս նաև՝ *Н. В. Арутюнян,* Биайнили (Урарту), էջ 304—305, ծանոթ. 529։

բնակատեղին, և նրանց շրջակա յոթ բնակատեղիներ, ուր բնակեցված էին նրա եղբայրները, նրա թագավորության սերմը»։

Վանա լճի հարավում՝ Այադուում, Սարգոնը նույնքան մեծ չարիքներ է գործում։ Այստեղ ավերվում են քաղաքները, նրանց շրջակա բնակատեղիները, կտրատվում մրգատու այգիները և հրկիզվում խաղողի վազերը։ Սարգոնի զորքը, ինչպես միշտ, իր ետևից թողնում է հրի ու սրի մատնված երկիր։

Վանա լճից հարավ-արևմուտք Սարգոնը հաշվեհարդար է տեսնում ուրարտական Ուայաիս մարզի հետ։ Այստեղ նա նվաճում և ավերում է Ուայաիս մեծ ամրոցը՝ Ռուսայի «ամրոցների մեջ հզորագույնը, կառուցվածքով գեղեցիկը», ուր կուտակված էր մեծ զորք և տեղավորված Ուրարտուի հետախույզների բազան։ Ապա Սարգոնը հասնում է Խուբուշկիա (Արևելյան Տիգրիսի հովտում), որի թագավորը առանց որևէ դիմադրության ստրկորեն ընդունում է Սարգոնին, համբուրում նրա ոտքերը և հարկ վճարում, դրանով իսկ իր երկիրը փրկելով ավերումից։

Սարգոնը նույնն էր սպասում նաև Մուսասիրի արքա Ուրզանայից։ Սակայն վերջինս ո՛չ դիմավորեց և ո՛չ էլ հոժարակամ հարկ ուղարկեց նրան։ Խիստ զայրանալով, Սարգոնը իր զորքից ընտրում է թվով հազար քաջարի հեծյալներ, նետաձիգներ, պարսատիկավորներ, նիզակավորներ և արշավում դեպի Մուսասիր։ Հաղթահարելով ծայր աստիճան լեռնոտ, դժվարին ճանապարհը, Սարգոնը իր զինվորների հետ միասին հայտնվում է Մուսասիրի առջև և գրավում քաղաքը։ Նա Ասորեստան է գերեվարում Ուրզանայի կնոջը, ուստրերին ու դուստրերին, արքայական տան մյուս անդամներին, ինչպես նաև 6110 մարդ[35]։ Բռնագրավվում են մեծ քանակությամբ անասուններ, կողոպտվում Խալդիի հարստագույն տաճարի ողջ ունեցվածքը, այդ թվում ոսկի, արծաթ, արճիճ, թանկարժեք քարեր և այլն։ Կողոպտված իրերի մեջ հատուկ հետաքրքրություն են ներկայացնում Իշպուենիի (Իշպուինիի)որդի Սարդուրիի[36] և Արգիշտի Ա-ի հսկա բրոնզե արձանները, ինչպես նաև Ռուսա Ա-ի բրոնզե ձուլածո արձանը՝ իր կառավարի և երկու ձիերի հետ։

«... Մուսասիրի մարզի մարդկանց ես դասեցի Ասորեստանի մարդկանց շարքը,— ասում է Սարգոնը,— նրանց վրա, ինչպես ասորեստանցիների վրա, ռազմական և շինարարական պարհակ դրի։ Լսելով (այդ), Ուրսան խոնարհվեց գետնին, պատառոտեց իր զգեստները... պոկեց գլխակապը, արձակեց մազերը. զույգ ձեռքերը սեղմեց կրծքին, թավալվեց փորի վրա. Նրա սիրտը կանգ առավ, փայծաղը այրվում էր, շրթունքներից ժայթքում էին դառնագին աղաղակներ...»։

Սարգոնի մ. թ. ա. 714 թվականի արշավանքը իսկապես ծայր աստիճանի ծանր կացության մեջ դրեց Ուրարտուին ոչ միայն քաղաքական, այլև տնտեսական ասպարեզում։ Դա ոչ միայն Ռուսայի թագավորության մայրամուտն

---

35 Այս արշավանքին վերաբերող Սարգոն Բ-ի մի այլ արձանագրության մեջ Մուսասիրում գերված մարդկանց թիվը համարվում է 2170. АВИИУ, 54 (72)։

36 Թերևս պետք է լինի հակառակը՝ «Իշպուինի, Սարդուրիի որդի», քանի որ Իշպուինին իսկապես եղել է Սարդուրի Ա-ի որդին, եթե միայն խոսքը չի վերաբերում Իշպուինիի չթագավորած որդուն, որը, սակայն, այլ աղբյուրներում չի հիշատակվում։

էր, այլև Ուրարտուի վայրէջքի սկիզբը։ Սարգոնի այդ ավերիչ արշավանքից հետո Ռուսա Ա-ը հազիվ մեկ տարի է մնում ուրարտական գահի վրա[37]։

**Ուրարտուի քաղաքական վիճակի ժամանակավոր կայունացումը:** Արգիշտի Բ-ը (մ. թ. ա. 713—685) գահակալում է քաղաքական բավականաչափ բարդ իրադրության պայմաններում։ Մ. թ. ա. 714 թվականին Ասորեստանի ձեռնարկած ջախջախիչ արշավանքից հետո, Արգիշտի Բ-ը ստիպված էր ուղիներ որոնել՝ որևէ կերպ ապահովելու Ուրարտուի անվտանգությունը և անկախությունը։

Մյուս կողմից, Ասորեստանը ևս վերջնականապես ապահովված չէր համարում իր դիրքերը Ուրարտուի սահմանամերձ գոտում, ուստի շարունակում էր որոշ նախազգուշական քայլեր ձեռնարկել այնտեղից սպասվող հնարավոր վտանգը կանխելու համար։

Այսպես, Արգիշտի Բ-ի թագավորության հենց երկրորդ տարում (մ. թ. ա. 712) Սարգոն Բ-ին տեսնում ենք Ուրարտուի արևմտյան հարևանների՝ Մելիդի և Կամմանուի դեմ համառ մարտեր մղելիս։ Այս մարտերում նա հաղթանակ է տանում և Կամմանուի հինգ քաղաքներ վերածում հսկիչ ամրոցների՝ ընդդեմ Ուրարտուի[38]։ Այնուհետև, ըստ երևույթին, մ. թ. ա. 708 թ. է վերաբերում Ասորեստանի պայքարը մերձեփրատյան Կումմուխ երկրի դեմ, որի թագավոր Մուտալլուն, ինչպես բողոքում է Սարգոնը, դավաճանաբար հրաժարվել էր վճարելու Ասորեստանին հասանելիք հարկը՝ ապավինելով ուրարտական թագավոր Արգիշտի Բ-ի աջակցությանը[39]։

Ասորեստանի և Ուրարտուի փոխհարաբերություններում լարվածություն է նկատվում նաև մ. թ. ա. 703 թվականին։ Ճիշտ է, ռազմական գործողություններից երկու կողմն էլ աշխատում են ձեռնապահ մնալ, սակայն երկուստեք ակտիվ հետախուզություն են կազմակերպում։ Այդ մասին վկայում է Ամեդուի (այժմ Դիարբեքիր) կառավարիչ Ուպախիր-բելի նամակը՝ հասցեագրված Սարգոնին։ Նամակից երևում է, որ ասորեստանյան զորքերը պատրաստ են վարելու ռազմական գործողություններ և հարձակում գործելու Տուշպայի ուղղությամբ։ Երբեմն փոխադարձ նետաձգություններ են տեղի ունենում ասորեստանյան և ուրարտական հետախույզների միջև, որոնց ժամանակ երկուստեք լինում են մարդկային զոհեր։

Այնուհետև, զգացվում է, որ Արգիշտին արձակել է ինչ-որ հրաման (ըստ երևույթին, ռազմական հարձակման մասին), որը, սակայն, հետո չեղյալ է հայտարարել։ Ինչ վերաբերում է ասորեստանյան թագավորին, ապա հետա-

---

37 Սարգոնի տարեգրության VIII տարվա տվյալները և մի քանի այլ արձանագրություններ հայտնում են, թե մ. թ. ա. 714 թվականի պարտությունից անմիջապես հետո Ռուսա Ա-ը իրը ինքնասպանություն է գործում (տե՛ս АВИИУ, 46 (129). 52. 53. 54 (72), այնինչ ասորեստանյան նույն թագավորի տարեգրության IX տարվա (մ. թ. ա. 713) իրադարձությունների մեջ Ռուսան դեռևս հիշատակվում է։

38 Տե՛ս АВИИУ, 46 (178)։

39 Տե՛ս ARAB, II, 64։ И. М. Дьяконов, АВИИУ, 54 (112)։ Հմմտ. ասորեստանյան փոխարքա-էպոնիմների ցուցակի մ. թ. ա. 708 թվականի տակ բերված տվյալները, ըստ որոնց «Կումուխան նվաճվել է. նշանակվել է մարզի կառավարիչ»։

խուզական բնույթի այս փաստաթղթից ակնառու երևում է, որ նա ծրագրել է ուրարտացիներին հպատակեցնել մինչև բերքահավաքի սկսվելը[40]։

Նույն Ուպախիր-բելի մ. թ. ա. 705 թվականին Սարգոնին գրած մի այլ նամակից երևում է, որ ասորեստանյան հետախուզությունը իր ազդեցության ոլորտի մեջ է առել ուրարտական մարզերի կառավարիչներից մեկին, որից և սիստեմատիկաբար լրտեսական բնույթի տվյալներ է ստանում ուրարտական զորքերի տեղաբաշխման, Արգիշտի Բ-ի ռազմական ծրագրերի և այլ հարցերի վերաբերյալ։ Ի դեպ, ասորեստանյան հետախուզությունը պարզել էր, որ ուրարտական բանակի որոշ ստորաբաժանումներ պահակային ծառայություն են վարում Խարդայում[41]։ Նամակում, միաժամանակ, Սարգոնին տեղեկացվում է ուրարտական լրտեսող կառավարչի դժգոհությունը այն մասին, թե ինչու Ուրարտուն խաղաղություն է պահպանում, իսկ Ասորեստանը բռնագրավում է նրա ամրոցները[42]։

Սակայն, մյուս կողմից, ասորեստանյան հետախույզների նամակներից երևում է, որ Արգիշտի Բ-ը, ճիշտ գնահատելով ստեղծված իրադրությունը, ձգտում է հնարավորին չափ բարի-դրացիական հարաբերություններ հաստատել Ասորեստանի հետ։ Այդ մասին է վկայում, օրինակ, Տուշխանի (այժմ Կարխ) կառավարիչ Շա-Աշշուր-դուբբուի[43] մ. թ. ա. 707 թվականի նամակը Սարգոնին, որից իմանում ենք, որ Ուրարտուի և Ասորեստանի միջև պայմանավորվածություն է եղել սահմանամերձ գոտում անտառահատում կազմակերպելու մասին[44]։ Մի այլ նամակ ևս վկայում է Արգիշտի Բ-ի խաղաղասիրական հակումների մասին, որոնց առթիվ նա նույնիսկ երդում է տալիս[45]։

Արգիշտի Բ-ի մեզ հասած սեփական արձանագրությունների թիվը խիստ սահմանափակ է իրենց բովանդակությամբ նրանք չեն հակասում ասորեստանյան աղբյուրների տվյալներին։

Ինչպես հայտնի է, ասորեստանյան թագավոր Սինախերիբը (մ. թ. ա. 705—680) պատերազմներ էր մղում Բաբելոնի (մ. թ. ա. 702, 689), Հուդայական պետության (մ. թ. ա. 701), Էլամի, արամեացիների, ծայրամասային մանր արքայությունների և Մարաստանի (մ. թ. ա. 691) դեմ[46]։ Դրանք, ըստ երևույթին, նկատելի չափով թուլացրել էին Ասորեստանի դիրքերը հյուսիսում։ Այդ մասին վկայում է Սինախերիբի արշավանքը Նիբուր (այժմ՝ Ջուդի-դաղ) լեռան վրա գտնվող մի շարք բնակատեղիների դեմ[47], որոնք մոտ էին Ասորեստանի հյուսիսային սահմաններին։

---

40 Տե՛ս RCAE, I, № 424։

41 Ն. Ադոնցի կարծիքով Խարդան նույնական է հայկական Խարբերդի հետ (տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 120 և ծանոթ. 1)։

42 Տե՛ս RCAE, I, 548. АВИИУ, 50 (35)։

43 Տե՛ս PAR, էջ 86, 88։

44 Տե՛ս RCAE, I, 705. АВИИУ, 50 (33)։

45 Տե՛ս RCAE, II, 1298. АВИИУ, 50 (41 к)։

46 В. В. Струве, История древнего Востока, էջ 330—331։ «Всемирная история», էջ 550—551։

47 Տե՛ս Սինախերիբի տարեգրության 5-րդ տարվա տվյալները (մ. թ. ա. 701). G. Smith, History of Sennacherib, London, 1878, էջ 79—84 (III, 66—82, IV, 1—20)։

Շատ հնարավոր է, որ հենց այդ ժամանակներին վերաբերվի Արգիշտի Բ-ի հեռավոր արշավանքը դեպի արևելք, որի ընթացքում նա հաղթությամբ հասել է ընդհուպ մինչև Կասպից ծովի արևմտյան ափերին հարող շրջանները[48]։ Ճիշտ է, այդ արշավանքը անմիջապես ուղղված չէր Ասորեստանի դեմ, սակայն դրա համար անհրաժեշտ էր թերևս որոշ չափով վերացնել Սարգոն Բ-ի մ. թ. ա. 714 թվականին Ուրարտուի դեմ ձեռնարկած արշավանքի հետևանքները։ Ինչպես վերը տեսանք, այն ժամանակ, ի թիվս այլոց, նվաճվել էին նաև Արմարիլին և Սանգիբուտուն, այսինքն՝ հենց այն նահանգները, որոնք ընկած էին Կասպից ծովը տանող ճանապարհին։

Նվաճողական այդ ձեռնարկումները միանգամայն ուրույն տեղ են գրավում Ուրարտուի անկման շրջանի ռազմա-քաղաքական պատմության մեջ, եթե հաշվի առնենք, որ Վանի թագավորության նույնիսկ ծաղկման դարաշրջանում, որքան հայտնի է, ուրարտական թագավորներին երբեք չի հաջողվել մուտք գործել այդ հեռավոր արևելյան տերիտորիաները։

Արգիշտի Բ-ի արևելքում ձեռք բերած զգալի հաջողությունները կասկած չեն թողնում, որ Ուրարտուն այդ ժամանակ պետք է կոնկրետ քայլեր ձեռնարկած լինի նաև իր դիրքերը արևմուտքում, Եփրատի աջ ափին, վերականգնելու ուղղությամբ։ Եվ եթե հայտնի Թիլ-Գարիմմուն[49] մ. թ. ա. 695 թվականի նախօրեին փորձեր է անում թոթափելու ասորեստանյան լուծը[50], ապա այդ կարելի է բացատրել հենց Բիայնիլի-Ուրարտուի ակտիվ աջակցությամբ։

Ինչպես հայտնի է, Արգիշտի Բ-ը պետության հյուսիս-արևմտյան մասում, Երզնկայից արևելք, կառուցում է մի խոշոր ամրոց, որի մնացորդները ուսումնասիրման առարկա դարձան վերջերս։ Ինչ վերաբերում է Արգիշտի Բ-ի շինարարական այլ աշխատանքներին, ապա դրանք տեղի են ունենում կենտրոնական Ուրարտուում՝ Վանա լճի հյուսիսային ափին (Արճեշի շրջանում)։ Այստեղ Արգիշտի Բ-ը անցկացնում է ոռոգիչ ջրանցքներ, ստեղծում ցանքադաշտեր, տնկում պտղատու և խաղողի այգիներ[51]։

Այսպիսով, Արգիշտի Բ-ի երկարատև թագավորությունը զգալի աշխուժություն է հաղորդում Վանի թագավորության արտաքին և ներքին քաղաքականությանը։ Ուրարտուն աստիճանաբար ուշքի է գալիս Սարգոն Բ-ից ստացած ծանր հարվածներից։

**Ռուսա Բ-ի ռազմական, շինարարական և դիվանագիտական գործունեությունը:** Արգիշտի Բ-ի որդի Ռուսա Բ-ը Ուրարտուի վերջին շրջանի պատմության առավել աչքի ընկնող դեմքն էր։ Ռուսա Բ-ի օրոք (մ. թ. ա. 685—645) զգալի աշխուժություն է նկատվում Վանի թագավորության թե՛ արտաքին քաղաքականության բնագավառում և թե՛ երկրի ներքին կյանքում։ Արևմուտքում

---

[48] Տե՛ս W. C. Benedict, Two urartian inscriptions from Azerbaijan, JCS, XIX, № 2, 1965, էջ 35—40։

[49] Խեթական աղբյուրների Թեգարաման, Պտղոմեոսի Գավրաենան, այժմյան Գյուրունը (PAR, էջ 75), հին հայկական տուն Թորգոմայ։

[50] Տե՛ս АВИИУ, 59 (V, 1), 61։

[51] Տե՛ս УКН, 275, 276։ M. Tsereteli, L'inscription de la stèle de Hagi, RA, 1958, LII, № 1, էջ 29—35, № 2, էջ 63—73։

նա նվաճում է Տայլանի երկիրը[52]։ Շարունակելով առաջընթացը Արածանիի հարավային ափերի երկայնքով, Ռուսան գրավում է Մուշկի(նի) երկիրը[53]։

Այնուհետև, նա անցնում է Եփրատը և իր տիրապետությունը հաստատում Խաթե ու Խալիտու[54] երկրներում։ Եփրատի ավազանում Ռուսան իր տիրապետությանն է ենթարկում նաև Լուբարախի երկիրը[55]։ Այս նվաճումները ցույց են տալիս, որ Ասորեստանի հզորացումը խոչընդոտելով Ուրարտուի ձգտումը դեպի հարավ և հարավ-արևմուտք, ի վիճակի չի եղել կասեցնելու վերջինիս առաջխաղացումը դեպի արևմուտք՝ փոքր-ասիական հողերը, որոնց նկատմամբ նույնքան ակնկալություններ ուներ ասորեստանյան թագավոր Ասարխադդոնը[56]։

Վանա լճի հյուսիս-արևմտյան ափին՝ Զիուկունի երկրում, Ռուսա Բ-ը կառուցում է Խալդի աստծո անունը կրող քաղաք, հյուսիս-արևելքում՝ ծավալում նշանակալից շինարարական գործունեություն, իսկ Մակուի շրջանում՝ հիմնում «Ռուսայի փոքր քաղաքը» և տաճար[57]։ Արարատյան դաշտավայրում ուրարտական թագավորի շինարարական ձեռնարկումները է՛լ ավելի մեծ մասշտաբներ են ընդունում։ Այստեղ՝ Ազա երկրում, նա հիմնադրում է վարչա-տնտեսական ու ռազմական նոր կենտրոն՝ Թեյշեբաինին (Կարմիր բլուր), որով նկատելիորեն երկրորդական պլանի վրա են մղվում նախկին կենտրոնները՝ Էրեբունին և Արգիշտիխինիլին։

Ազա երկիրը, ըստ երևույթին, Ռուսա Բ-ի թագավորության համար հանդիսացել է միակ հուսալի հենակետը հյուսիսում։ Այդ արգավանդ տերիտորիայի դերը է՛լ ավելի է բարձրանում Ուրարտուի համար, եթե նկատի ունենանք, որ Ռուսա Բ-ի օրոք արդեն զգալիորեն փոքրացել էր պետության տերիտորիան։ Ազա երկիրը ուներ նաև կարևոր ռազմա-ստրատեգիական նշանակություն. այն ապահովում էր Ուրարտուի թիկունքը հյուսիսից։ Ահա թե ինչու Ռուսա Բ-ը զգալի ջանք էր գործադրում այդ երկիրը իր տիրապետության ոլորտում ամուր պահելու համար։ Եվ այդ ջանքերն իզուր չեն անցնում։ Արարատյան դաշտավայրը անընդմեջ մնում է Ուրարտուի կազմում ընդհուպ մինչև նրա կործանումը։

Ռուսայի որոշակի հաջողությունները հյուսիսում որոշ առումով պայմանավորված էին Ուրարտուի հարավային հարևանի՝ Ասորեստանի հետ նրա հաստատած փոխհարաբերություններով։ Ռուսան բարի-դրացիական կապերի

---

53 Տե՛ս P. Hulin, New urartian inscriptions from Adilcevaz, AS, IX, 1959, էջ 194—195 (արձանագրություն № 2, տող 8)։

53 Այս Մուշկինիի տակ, հավանաբար, պետք է հասկանալ մուշկերի ոչ թե հիմնական տերիտորիան (Փռյուգիան), այլ նրանց այն հատվածը, որը մ. թ. ա. դեռևս XII դարի առաջին կեսին 20 հազար մարդկանցով և 5 թագավորներով տեղաշարժ էր կատարել դեպի հարավ-արևելք և Տիգրիսի ակունքներից մի փոքր ավելի հարավ նվաճել Ալզի (հայկ. Աղձնիք) և Պուրուլումզի երկրները։ Բնակություն հաստատելով այստեղ, հետագայում նրանք իրենց են ենթարկում նաև ավելի հարավ ընկած Կատմուխի (վաղ հայկական աղբյուրներում՝ «տուն Կադմեայ») երկիրը (տե՛ս АВИИУ, 10, I, 62)։

54 Խալիտուի տեղադրումը դեռևս պարզված չէ։ Խաթե երկրի տեղադրման մասին տե՛ս վերևում, էջ 324, ծանոթ, 18։

55 Տե՛ս УКН, 279։

56 Տե՛ս ARAB, II, 516, 517։

57 Տե՛ս УКН, 280, 285։

մեջ է մտել Ասարխադդոնի (մ. թ. ա. 680—669) հետ։ Դրանք արտահայտվում էին ոչ միայն երկուստեք պահպանվող չեզոքությամբ, այլև հարկ եղած դեպքում նույնիսկ փոխադարձ աջակցությամբ։ Այսպես, մ. թ. ա. 673 թվականին Շուպրիային հաղթելուց հետո, Ասարխադդոնը բարեխղճորեն որոնում, հայտնաբերում և վերադարձնում է Ռուսային Շուպրիայում ապաստանած ուրարտացի փախստականներին՝ մեծ մասամբ ստրուկներին։ Այդ տեղեկությունը հաղորդող արձանագրությունից երևում է, որ Շուպրիայի թագավոր Կալի-Թեշուբը բազմիցս կտրուկ կերպով մերժել և արհամարհել էր ուրարտական փախստականներին վերադարձնելու առթիվ Ռուսայի պահանջները[58]։

Այս տեղեկությունների մեջ, որոնք ավելի մանրամասն քննարկված են հաջորդ գլուխներից մեկում[59], Արմե-Շուպրիան հանդես է գալիս որպես համեմատաբար ազատ երկիր՝ սոցիալ-տնտեսական կեղեքման առումով, համենայն դեպս շատ ավելի ազատ, քան Ասորեստանը և Ուրարտուն (որոնք, ինչպես տեսնում ենք, մոռանում են իրենց թշնամությունը՝ Շուպրիայի դեմ դաշնակցելու համար)։ Ուստի այն դեպի իրեն էր քաշում երկու պետությունների գրժգոհ տարրերին։ Հետաքրքրական է նշել, որ նույն դերը խեթական պետության նկատմամբ խաղում էր իր ժամանակ նախահայկական ցեղերի մի այլ բնօրրան՝ Հայասա երկիրը։

Ասորեստանի և Ուրարտուի հարաբերությունները, այսպիսով, որոշ չափով շտկվում են։

Դրությունը, գուցե, մասամբ փոխվում է Ասարխադդոնի հաջորդի՝ Աշուրբանապալի թագավորության շրջանում (մ. թ. ա. 668—633), որի արձանագրություններից մեկում ակնարկված է, թե ի թիվս այլ ժողովուրդների, ուրարտացիները, Ումմանմանդայի[60] հետ դաշնակցած, դավեր են նյութում Ասորեստանի դեմ[61]։ Այս հանգամանքը, սակայն, էական հետևանքներ չի ունեցել։ Ընդհակառակը, Ուրարտուի դաշնակիցների՝ կիմմերների պարտությունից հետո, մ. թ. ա. 655 թվականին Ռուսան բարեկամական այցով դեսպաններ է ուղարկում Ասորեստան։ Աշշուրբանապալը նրանց սիրալիր ընդունում է և, որպես օրինակ, ի ցույց դնում Էլամի դեսպաններին, որոնք, ի տարբերություն Ուրարտուի պատվիրակների, եկել էին հանդուգն նամակով[62]։

Ռուսայի թագավորության վերջին տասնամյակի վերաբերյալ առայժմ ոչինչ հայտնի չէ։ Սակայն պետք է ենթադրել, որ այդ ժամանակամիջոցում Ուրարտուն շարունակել է ավելի ու ավելի մղվել երկրորդական պետության դիրքերը։

**Ուրարտուն վերջին թագավորների օրոք և նրա կործանումը:** *Ուրարտուի թագավորության եզրափակիչ շրջանի մասին հասել են սոսկ աղքատիկ, կցկը-*

---

58 Տե՛ս АВИИУ, 67 (л)։

59 Տե՛ս ստորև, գլուխ XVII։

60 «Ումմանմանդա»-յի տակ, հավանաբար, պետք է հասկանալ կիմմերներին (տե՛ս АВИИУ, 77, ծանոթ. 9. 78, ծանոթ. 4 և այլն)։

61 Այդ իրադարձությունները, ըստ երևույթին, տեղի են ունեցել մ. թ. ա. 659—655 թվականների միջև ընկած ժամանակամիջոցում (տե՛ս АВИИУ, 77 և ծանոթ. 9)։

62 Տե՛ս АВИИУ, 76 (1, 2)։ Ուրարտական դեսպանների այցը համընկել էր Էլամի դեմ Ասորեստանի ձեռնարկած ռազմական արշավանքի բարեհաջող ավարտին (տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 286)։

տուր տեղեկություններ։ Շուրջ կես դար տևող ժամանակամիջոցում (մ. թ. ա. 645—590) ուրարտական գահի վրա երևում են Սարդուրի Գ, Սարդուրի Դ (?), Էրիմենա (?), Ռուսա Գ և Ռուսա Դ թագավորները։ Էրիմենայի թագավորելու հարցը, կարծես թե, արդեն հաստատվում է նորագույն տվյալներով[63]։

Սարդուրի Գ-ի՝ Կարմիր բլուրից հայտնաբերված երկու սեպագիր աղյուսակներ[64] վկայում են ուրարտական տիրապետության առկայությունը Արարատյան դաշտավայրում նաև այդ թագավորի օրոք։

Ինչ վերաբերում է Ուրարտուի և նրա գլխավոր ախոյանի՝ Ասորեստանի փոխհարաբերություններին, ապա Աշուրբանապալի արձանագրությունները վկայում են, որ Սարդուրի [illegible]-ը շարունակել է իր նախորդի՝ Ռուսա Բ-ի կողմից դեռևս Ասարխադդոնի հետ հաստատած բարի-դրացիական հարաբերությունները։ Արձանագրություններից մեկի համաձայն, Աշուրբանապալը Սարդուրի Գ-ի պալատին և երկրին խաղաղություն է բարեմաղթում և գոհունակություն արտահայտում այն առթիվ, որ ուրարտական գահը բարձրանալու ժամանակվանից ի վեր Սարդուրին որոնում է բարերարի՝ ի դեմս ասորեստանյան թագավորի[65]։ Մի այլ դեպքում Աշուրբանապալը հավաստում է, որ եթե Ուրարտուի նախորդ թագավորները իր նախորդներին սովորաբար անվանել են «եղբայր», ապա Սարդուրի Բ-ը Աշուրբանապալին, ինչպես որդին հորը, մշտապես անվանում է «տեր» և «հարգալից ու հնազանդորեն մատուցում իր ծանր ընծաները»[66]։

Ինչ վերաբերում է Սարդուրի Գ-ին, ապա նա հայտնի է Կարմիր-բլուրից հայտնաբերված բրոնզե վահանի և կավե աղյուսակի գլանաձև կնիքի պատճենի սեպագիր տեքստերից[67]։

Վանի թագավորության անկմանը զգալի չափով նպաստում էր նաև Առաջավոր Ասիայում հանդես եկած նոր ախոյանների՝ սկյութների ու մեդացիների օրեցօր աճող հզորությունը։

Այս արտաքին վտանգներից բացի, Ուրարտուի համար սպառնալիք էին ներկայացնում, և թերևս է՛լ ավելի կործանարար էին քան սրանք, ներքին կենտրոնախույս ուժերը։ Ուրարտուի կազմից կամ ազդեցության ոլորտից աստիճանաբար դուրս էին մնում բազմաթիվ, առանձնապես ծայրամասային, երկրներ ու ցեղեր։ Հայտնի է, օրինակ, որ փոքրիշատե հեռավոր տերիտորիաներից Ուրարտուի կազմում՝ ընդհուպ մինչև նրա կործանումը, մնում է Արարատյան դաշտում ընկած Ազա երկիրը՝ Թեյշեբաինի վարչա-տնտեսական կենտրոնով։ Մյուս երկրները՝ Արմե-Շուպրիայի շուրջը խմբավորված հայկական ցեղերը, ընդհակառակը, եռանդուն կերպով ծավալվում էին Ուրարտուի տերիտորիայով մեկ, ու հանդիսացան այդ, արդեն հասարակության զարգացման առումով ոչ պիտանի ու վնասակար դարձած, պետության անկման կարևորագույն գործոն։

---

63 Ի. Մ. Դյակոնովը Էրիմենային է վերագրում Կարմիր բլուրում 1957 թվականին հայտնաբերված աղյուսակներից մեկը։ (Տե՛ս УПД, էջ 33—34 (№ 3)։

64 Տե՛ս *Н. В. Арутюнян*, Новая клинописная таблетка из раскопок Кармир-блура, „Festschrift Johannes Friedrich", Heidelberg, 1959, էջ 35—51, УПД, № 1—2.

65 Տե՛ս RCAE, II, 1242. АВИИУ, 79։

66 RCAE, II, 1243. АВИИУ, 72 (X, 40—50)։

67 Տե՛ս УКН, էջ 458 (№ 69). УПД, № 5։

Վանի թագավորությունը տարեցտարի ավելի ու ավելի էր գամվում իր սկզբնական, սահմանափակ տերիտորիային՝ Վանա լճի մերձափնյա շրջաններին։

Ուրարտուի վերջին երկու թագավորները՝ Ռուսա Գ-ը և Ռուսա Դ-ը հազիվ-հազ կարողանում են պահպանել երերացող պետությունը։ Ռուսա Գ-ը հայտնի է սոսկ մի քանի արձանագրություններով, որոնցից երկուսը պատմում են Արգիշտիխինիլիում և Էրեբունիում կառուցված հացահատիկի պահեստների մասին, իսկ մյուսները վերաբերում են Թոփրախ-կալեում հայտնաբերված բրոնզե վահանների նվիրաբերությանը Խալդի աստծուն[68]։

Ինչ վերաբերում է Ռուսա Դ-ին, ապա նա հայտնի դարձավ միայն վերջին տարիներս՝ երկու համառոտ սեպագիր տեքստերից։ Դրանք գլանաձև կնիքների դրոշմներ են, մեկը կավե ալյուսակի, մյուսը՝ կավե բուլլայի (հացահատիկի պահեստի դուռը կնքելու համար) վրա։ Այս Ռուսան, ամենայն հավանականությամբ, եղել է Ռուսա Դ-ի որդին և հանդիսացել Ուրարտուի անկախության վերջին մնացուկների վերացման ժամանակի կենդանի վկան[69]։

Ուրարտուի վերջին երկու տասնամյակների պատմության ուսումնասիրության համար առանձնահատուկ տեղ են գրավում «Բաբելոնյան ժամանակագրության» այն տվյալները, որոնք հաղորդում են Նաբոպալասարի թագավորության 17-րդ տարում (մ. թ. ա. 609) Ուրարտուի դեմ ձեռնարկված մեդական (մարական) արշավանքի մասին[70]։ Հենց այդ ժամանակվանից, ըստ երևույթին, Ուրարտուն պետք է ընկած լինի Մեդիայի ազդեցության ոլորտի մեջ։ Իսկ մ. թ. ա. 605 թվականին, երբ Ասորեստանը բաժանվում էր Մեդիայի և Բաբելոնի միջև, Ուրարտուն պետք է արդեն գտնված լիներ Մեդիայի տիրապետության տակ[71]։ «Աստվածաշնչում» ևս, Մանայի և սկյութների (Աշգուզ) հետ միասին, Ուրարտուն հիշատակվում է որպես Մեդիայի ենթարկյալ, երբ վերջինս պատերազմում է Բաբելոնի դեմ[72]։

Ինչ վերաբերում է Թեյշեբաինիում և ուրարտական այլ քաղաք-ամրոցներում հայտնաբերված սկյութական նետասլաքներին, ապա Ի. Մ. Դյակոնովը հակված է այդ փաստը բացատրելու մեդական բանակում սկյութների առկայությամբ։ Միաժամանակ նա գտնում է, որ սկյութացիները և մեդացիները իրենց մշակույթով բավական մոտ են եղել միմյանց[73]։

Առանձնակի կարևորություն է ներկայացնում նաև ուրարտական պետության վերջնական կործանման ժամանակի հարցը։ Հերոդոտի տվյալների համաձայն, մ. թ. ա. 585 թվականին Մեդիայի և Լյուդիայի սահմանը Փոքր Ասիայում անցնում էր Հալիս գետով։ Ուրեմն այդ ժամանակ Ուրարտուն արդեն պետք է եղած լիներ Մեդիայի կազմում։ Ինքնին հասկանալի է, որ Մեդիան հազիվ

---

68 Տե՛ս УКН, 288—290, 292—294 և այլն։

69 Ռուսա Դ-ի մասին մանրամասն տե՛ս Н. В. Арутюнян, К интерпретации надписи на глиняной булле Кармир блура, ИФЖ, 1960, № 1, էջ 223—229։

70 Ուրարտուի վերջին տարիների պատմության հանգամանալից ուսումնասիրությունը տե՛ս И. М. Дьяконов, Последние годы Урартского государства по ассиро-вавилонским источникам, ВДИ, 1951, № 2։

71 Տե՛ս նույն տեղում, էջ 31—33։

72 Տե՛ս նույն տեղում, էջ 33—34։

73 Տե՛ս նույն տեղում, էջ 38—39։

թե Փոքր Ասիայում պատերազմ սկսեր Լիդիայի դեմ, թույլ տալով, որ նրա թիկունքում գոյատևեր անկախ ուրարտական պետությունը։ Այսպիսով, Ուրարտուի անկախության վերջին մնացուկների վերացումը, բնականաբար, պետք է վերագրել Մեդիայի և Լիդիայի միջև մղված պատերազմի ոչ թե ավարտին (մ. թ. ա. 585), այլ սկզբին (մ. թ. ա. շուրջ 590)[74]։

Ուրարտական պետության կործանումը մ. թ. ա. VI դարի սկզբներին հանգեցրեց նույն տերիտորիայի վրա հայկական պետության ստեղծման։

74 Տե՛ս նույն տեղում, էջ 32—33։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ՈՒՐԱՐՏՈՒԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՐԳԸ, ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ԵՎ ՔԱՂԱՔՆԵՐԸ

## 1. ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՐԳԸ

Վանի թագավորությունը հին-արևելյան ստրկատիրական աշխարհի հյուսիսային եզերքին տեղավորված և Առաջավոր Ասիայի կենտրոնական շրջանների նկատմամբ համեմատաբար երիտասարդ պետական կազմավորում էր։ Դասակարգայնացման պրոցեսները այստեղ, հետևաբար, ավելի ուշ էին սկըսվել, սակայն հասարակության զարգացումը ընթանում էր նույն ուղիներով, ինչ որ ավելի զարգացած շրջանների՝ Միտաննիի, Խեթական աշխարհի, Ասորեստանի զարգացումը, այն է՝ արևելյան տիպի ստրկատիրության ուղիներով։

Պետք է հաշվի առնել, որ Հայկական լեռնաշխարհի Վանի թագավորության կազմի մեջ մտած տարբեր մասերը գտնվում էին սոցիալ-տնտեսական զարգացման տարբեր մակարդակի վրա։ Մ. թ. ա. I հազարամյակի սկզբներին այստեղ առաջատար դեր էին խաղում ամենից ավելի զարգացած՝ Վանա լճի ավազանում և Ուրմիա լճից դեպի արևմուտք ընկած երկրները, որոնք հասել էին պետականության ստեղծման փուլին։ Այս երկրները ռազմական նվաճումների միջոցով հետզհետե տարածեցին իրենց իշխանությունը Հայկական լեռնաշխարհի գրեթե բոլոր մասերի վրա և պահպանեցին այն մոտավորապես երեք հարյուրամյակ։ Այդ ժամանակի ընթացքում պետության մեջ ընդգրկված ցեղերը ապրեցին, իհարկե, սոցիալ-տնտեսական որոշակի զարգացում, տարբեր երկրամասերում տարբեր չափի, սակայն լրիվ համահարթում տեղի չունեցավ և ուրարտական տիրապետության վերջում էլ լեռնաշխարհի մի մասը շարունակում էր գտնվել դասակարգային հասարակության դեռևս սկզբնավորման փուլում։

Իր գոյության ընթացքում պետությունը ամբողջ երկրով մեկ ստեղծել էր տեղական բնակչության և ստրուկների շահագործման բավականին բարդ ու ճյուղավորված սիստեմ, որի կիրառման կարևոր ասպարեզներն էին ինչպես տեղական համայնքները և արքունական (պետական), տաճարային և այլ տընտեսությունները, այնպես էլ ռազմական ու տնտեսական կառույցների՝ ամրոցների, ջրանցքների, պահեստների շինարարությունը։

**Արքունական տնտեսություններ:** Արքունական (պետական) տնտեսությունները հիմնվել են, ըստ երևույթին, առավել բերրի ու ոռոգման համար անհրաժեշտ ջրային պաշարներով ապահովված վայրերում։ Այդ տնտեսություններում զբաղվել են հացահատիկային ու բանջարաբոստանային կուլ-

տուրաններով, այգեգործությամբ ու խաղողագործությամբ, վերամշակել երկրագործական ու այգեգործական-խաղողագործական մթերքները։ Լայնորեն տարածված է եղել նաև անասնապահությունը։

Թագավորը սեփականատեր էր զգալի թվով բնակատեղիների ու հսկայական կալվածքների[1]։ Նրա անունով կոչվում էին ոչ միայն վարչա-տնտեսական կենտրոնները, այլև արքունական տնտեսությունները, հովիտները, խաղողի այգիները։ Այսպես, Մենուայի անունով հայտնի են Մենուախինիլի վարչա-տնտեսական կենտրոնը Արաքսի աջ ափին (Արարատյան դաշտավայրում) և Մենուայի հովիտը՝ Արածանիի վերին հոսանքում (Մանազկերտի մոտակայքում), Արգիշտիի անունով՝ Արգիշտիխինիլի երկու կենտրոնները Արաքսի ձախ ափին (Հին և Նոր Արմավիրների տեղում) և Արճեշի շրջանում, Արգիշտիունա ամրոցը՝ Այադու մարզում (Վանա լճից հարավ), Սարդուրի Բ-ի անունով՝ Սարդուրիխուրդա ամրոցը Սանգիբուտու մարզում (Ուրմիա լճից դեպի հյուսիս) և Սարդուրիի խաղողի այգին Արճեշի շրջանում, Ռուսա Ա-ի անունով՝ Ուրարտուի Ռուսախինիլի մայրաքաղաքը (Թոփրախ-կալե) և Ռուսա Բ- ի անունով՝ Ռուսայի (կամ Կուարլինի) հովիտը Հրազդանի աջափնյա մասում (Կարմիր բլուրի և էջմիածնի միջև ընկած տարածությունը) և այլն։



Արին-բերդ։ Հատակագիծ

Բացի այդ, սեփականատեր էին նաև թագավորի ընտանիքի անդամները, եղբայրները՝ իրենց ընտանիքներով և այլն, մի խոսքով, արձանագրությունների լեզվով արտահայտած՝ «արքայական տոհմի սերմը», որի թիվը հասնում էր հարյուրների։ Ռուսա Ա-ի «տոհմի սերմը», օրինակ, ըստ Սարգոն Բ-ի հաղորդման («Լուվրի աղյուսակ»), կազմում էր 260 մարդ[2]։ Արքայական տոհմը ուներ իր առանձին բնակատեղիները[3]։ Այդպիսիներից էին Ռուսա Ա-ի տոհմի բնակատեղին՝ Արբուն և Սարդուրի Բ-ի տոհմինը՝ Ռիյարը, ինչպես նաև նրանց շրջակա Ռուսայի եղբայրներին պատկանող յոթ այլ բնակատեղիները[4]։ Հայտնի է նաև «Շամիրամի ջրանցքին» հարող վայրերից մեկում գցված խաղողի այգին, որը Մենուան նվիրում է իր դստերը՝ Թարիրիային, և նրա անունով կոչում «Թարիրիախինիլի»[5]։

---

1 *Г. А. Меликишвили*, Наири-Урарту, էջ 342 և հաջ.։

2 Տե՛ս АВИИУ, 49 (125)։

3 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Ванское царство, էջ 86։

4 Տե՛ս АВИИУ, 49 (269)։

5 Տե՛ս УКН, 111։

**Տաճարային տնտեսությունները:** Ուրարտուի էկոնոմիկայում կարևոր դեր է պատկանել նաև տաճարային տնտեսություններին։ Գրավոր աղբյուրներից հայտնի է, որ ուրարտական պանթեոնի յուրաքանչյուր աստված ունեցել է իր սրբատեղիները, տաճարները։ Տաճարներն Ուրարտուում ունեցել են ինչպես երկրագործական, այնպես էլ անասնապահական զարգացած տնտեսություններ[6]։ Օրինակ, Մուսասիրի տաճարը ունեցել է խաղողի և պտղատու լայնատարած այգիներ։ Այդպիսի տվյալներ տաճարների այգեգործության մասին պարունակում է նաև Մհերի դռան հայտնի պաշտամունքային արձանագրությունը։

Ինչ վերաբերում է անասնապահությանը, ապա տաճարներին սիստեմատիկաբար մատուցվող խոշոր և մանր եղջերավոր անասունների նվիրատվությունները անհրաժեշտ նախապայման են եղել, որպեսզի այստեղ ևս ստեղծվեին զարգացած անասնապահական տնտեսություններ։ Մհերի դռան արձանագրության[7] համաձայն, օրինակ, Իշպուինի և Մենուա թագավորները պարտավորվում են ամենամյա զոհաբերություններ անել տաճարներին՝ 6 կով, 6 այծ, 37 եզ, 305 ոչխար։ Իսկ Կելիշինի երկլեզվյան արձանագրության համաձայն[8], նույն թագավորները միայն մի այցելության առթիվ Մուսասիրի տաճարին նվիրաբերում են 22 հազար 712 գլուխ խոշոր և մանր եղջերավոր անասուններ։ Հասկանալի է, որ տասնյակ հազարավոր անասունները հազիվ թե նախատեսված լինեին միայն պաշտամունքային զոհաբերության համար։ Ըստ երևույթին դրանք հանձնվել են Մուսասիրի տաճարի տնտեսությանը, որը, այսպիսով, պետք է ունեցած լինի անասունների հսկայական հոտեր։ Տաճարները, մանավանդ Մուսասիրի տաճարը, ըստ երևույթին, զբաղվել են նաև առևտրով, որը հանդիսացել է նրանց եկամտի աղբյուրներից մեկը[9]։

**Մասնավոր տնտեսությունները:** Ուրարտուում, ակներևաբար, գոյություն են ունեցել նաև ազնվական դասի մասնավոր տնտեսություններ, ինչպես արքայական տոհմի ներկայացուցիչների (մեծատոհմիկներ, ավագներ, խորհրդականներ), այնպես էլ զինվորների ու ծառայողների (փոխարքաներ կամ մարզերի կառավարիչներ, զորահրամանատարներ և այլն)։ Ըստ երևույթին, այդպիսի տնտեսությունների մասին է ակնարկում ուրարտական արձանագրություններից մեկը[10], ըստ որի թագավորը (անունը տուժած է) «...բաց թողեց նետը այստեղից՝ Գիլուրանիի անտառի առջևից, մինչև Իշպիլինիի, Բատուի որդու, այգին, 950 կանգուն (տարածությամբ)»[11]։

Հավանաբար, մասնավոր տնտեսություններ են ունեցել նաև ուրարտական բանակի բազմաթիվ բարձրաստիճան պաշտոնյաներ, եթե չասենք զինվորական դասը ընդհանրապես։ Բոլորովին էլ պատահական չէ, որ պատերազմների ընթացքում ձեռք բերված ռազմագերիների որոշ մասը, ինչպես հայտնի է, թագավորի համաձայնությամբ, բաժին է հասել զինվորներին։ Բացի դրանից,

---

6 Տե՛ս Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 353 և հաջ.։

7 Տե՛ս УКН, 27։

8 Տե՛ս նույն տեղում, 19։

9 Տե՛ս Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 354—355։

10 Տե՛ս УКН, 277։

11 Տե՛ս Г. А. Меликишвили, Некоторые вопросы социально-экономической истории Наири-Урарту, ВДИ, 1951, № 4, էջ 34—36։



Էրեբունի ամրոցի մուտքը՝ Արգիշտի Ա-ի սեպագիր արձանագրությամբ

*ռազմագերիներ են վերցրել նաև հենց իրենք՝ զինվորները, երբ թագավորը լքել է նվաճված երկիրը։ Պետական բարձրաստիճան ծառայողները, անկասկած, հնարավորություններ ունեցած կլինեն ստրուկներ ձեռք բերել նաև առևտրի միջոցով։ Հիշյալ մասնավոր տնտեսությունները ևս պետք է հիմնված լինեն ռազմագերիների կամ ստրուկների շահագործման վրա։*

**Ստրկական ուժի աղբյուրները:** *Ստրուկներ ձեռք բերելու հիմնական աղբյուրը Ուրարտուում հանդիսացել են անընդհատ վարվող պատերազմները։ Ուրարտական թագավորների տարեգրությունները սիստեմատիկաբար հիշատակում են նվաճողական արշավանքների ժամանակ տարբեր երկրներից Վանի թագավորություն քշված ռազմագերիների մասին, որոնց թիվը երբեմն հասնում է մի քանի տասնյակ հազարի։*

*Խորխորյան տարեգրության պահպանված հատվածների համաձայն, Արգիշտի Ա-ի կողմից Ուրարտու քշված ռազմագերիների ընդհանուր քանակը կազմել է ավելի քան 320 հազար մարդ, իսկ Սարդուրյան տարեգրության դարձյալ ոչ լրիվ տվյալներով՝ մոտ 200 հազար մարդ։ Տարեգրությունները միաժամանակ հիշատակում են, որ ռազմագերիների մի մասը սպանվել է, իսկ մյուս մասը՝ կենդանի տարվել Ուրարտու։ Ոչնչացվել է, սակայն, ըստ երևույթին, գերիների միայն աննշան, անաշխատունակ մասը։*

*Բացի այս ռազմական գերեվարություններից, որոշ սեպագիր տեքստեր հավաստում են, որ երբեմն վերաբնակեցվել է ամբողջական բնակատեղիների կամ շրջանների բնակչությունը։ Այսպես, օրինակ, Խորխորյան տարեգրության հատվածներից մեկի համաձայն, Արգիշտի Ա-ը Ուրմիա լճից դեպի հարավ ձեռնարկած արշավանքներից մեկի ժամանակ վերաբնակեցրել է 60 բնակատեղիների բնակչությունը*[12]*։ Մասսայական վերաբնակեցման դառն ճակատագրին է մատնել հետագայում Սարդուրի Բ-ը հեռու հյուսիսում ընկած Խուշանի երկրի բնակչությանը*[13]*։ Մասսայական վերաբնակեցումը եղել է նաև ամրոցների ու բնակատեղիների հիմնադրման անբաժան ուղեկիցը*[14]*։ Այսպես, հայտնի է, որ Արգիշտի Ա թագավորը մ. թ. ա. 782 թվականին 6.600 ռազմագերի կամ զինվոր է վերաբնակեցրել նորակառույց Էրեբունիում, որ ձեռք էր բերել նախորդ տարվա արշավանքի ժամանակ Խաթե (Խեթերի) և Ծուփանի (Ծոփք) երկրներում*[15]*։*

*Այսպիսով, նվաճված երկրներից մասնակիորեն կամ մասսայաբար վերաբնակեցված ռազմագերիները մեծ հնարավորություններ էին ընձեռում Վանի թագավորության տնտեսության զարգացմանը։ Ռազմագերիների մի մասը, հավանաբար, վերածվում էին ստրուկների և օգտագործվում պետական (արքայական), տաճարային, ինչպես նաև ռազմական ու վարչական վերնախավին պատկանող տնտեսություններում, իսկ մյուս մասը բնակեցվում համեմատաբար ամայի շրջաններում և ընդգրկվում գյուղական համայնքների մեջ։*

---

12 *Տե՛ս* УКН, *127, III, 35։*

13 *Տե՛ս նույն տեղում, 155* C, *3—5։*

14 *Տե՛ս M. Tseretheli,* L'inscription de la stèle de Hagi, *էջ 32,* УКН, 281։ *Արձանագրությունների հիշյալ հատվածների մեկնաբանության վերաբերյալ տե՛ս* УПД, *էջ 53։*

15 *Տե՛ս* УКН, *127, II, տող, 33—37=128* A2, *տող 15—22։*

*Կասկածից վեր է, որ պետական խոշոր նշանակություն ունեցող և աշխատատար այնպիսի ձեռնարկումներ, ինչպիսիք են քաղաք-ամրոցների, տաճարների, արհեստական լճերի ու ոռոգիչ ջրանցքների կառուցումը, հնարավոր չէր ի կատար ածել առանց ստրուկների աշխատանքի։ Եթե նկատի ունենանք, որ ոչ միայն Վանի թագավորության հիմնական տերիտորիան, այլև հետագայում նրա նվաճած բազմաթիվ ծայրամասային երկրներ համատարած ծածկվում են պաշտպանական ու պաշտամունքային բնույթի բազմաթիվ շինություններով, երկրի բերրիությունը ապահովող արհեստական լճերով ու ջրանցքներով և այլն, ապա հասկանալի կդառնա բազմաթիվ ռազմագերիների անսպառ պահանջը, որոնց ուրարտական թագավորները սիստեմատիկաբար վերաբնակեցնում էին նվաճված երկրներից։*

*Առայժմ անհայտ է մնում ստրուկների շահագործման բնույթը Ուրարտուի արքայական, տաճարային, ինչպես նաև վերնախավին պատկանող բազմաթիվ մասնավոր տնտեսություններում, սակայն կասկած չի հարուցում այն հանգամանքը, որ այդ շահագործումը Ուրարտուում, ինչպես և Ասորեստանում, հասել է մեծ չափերի։ Դրանով էլ հենց պետք է բացատրել ուրարտացի և ասորեստանցի փախստականների առկայությունը մ. թ. ա. VII դարում՝ լեռնային Արմե-Շուպրիա երկրում (Սասուն)*[16]*, որտեղ ավելի մեղմ պայմաններ կային։ Շատ հավանական է, որ Ուրարտուում պետական իշխանությունից դժգոհների հոծ մասսաները, Ասորեստանի նման, երբեք չեն սահմանափակվել ստրուկներով։ Դրանց թվում պետք է եղած լինեն նաև ազատ համայնականների զանգվածներ, քանի որ վերջիններս ևս կրել են շահագործման դաժան լուծը*[17]*։*

*Թե որքան սպառնալի մասշտաբներ է ընդունել մ. թ. ա. VII դարում Ասորեստանի և Ուրարտուի շահագործվող տարրերի փախուստը, կարելի է դատել այն փաստից, որ ասորեստանյան թագավոր Ասարխադդոնը (680—669) ստիպված է լինում մ. թ. ա. 673 թվականին հատուկ ռազմական արշավանք ձեռնարկելու դեպի Շուպրիա՝ այդ փախստականներին իրենց նախկին տերերին վերադարձնելու նպատակով*[18]*։*

Համայնքները: *Ուրարտուի էկոնոմիկայում կարևորագույն տեղ են գրավել ազատ համայնականները։ Արքունական (պետական) և տաճարային տնտեսությունների հետ միասին, նրանք հանդիսացել են Ուրարտուի տնտեսության կարևոր օղակը։*

*Համայնական հողերի չափերի ու քանակի, նրանց մշակման եղանակների, ազատ համայնականների ու նրանց շահագործման աստիճանի վերաբերյալ, դժբախտաբար, էական ոչինչ հայտնի չէ։ Ենթադրվում է, որ այն, ընդհանուր առմամբ, շատ նմանություններ պետք է ունեցած լինի հարևան Ասորեստանի գյուղական համայնքի հետ*[19]*։ Պետության ստեղծած ոռոգման ցանցից*

---

16 *Տե՛ս Г. А. Меликишвили,* Некоторые вопросы социально-экономический истории Наири-Урарту. ВДИ, *1951, № 4, էջ 31—32։*

17 *Տե՛ս* RCAE, *I, № 252։*

18 *Տե՛ս* АВИИУ, 67. *Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 85—86։*

19 *Տե՛ս И. М. Дьяконов,* К вопросу о судьбе пленных в Ассирии и Урарту ВДИ, *1951, № 2, էջ 92։ Ասորեստանի սոցիալ-տնտեսական հարցերի հանգամանալի ուսումնասիրությունը տե՛ս И. М. Дьяконов,* Развитие земельных отношений в Ассирии, Л., 1949.

օգտվել են ոչ միայն արքունական ու տաճարային տնտեսությունները, այլև համայնքները։ Վերջիններս, ակներևաբար, մասնակցել են այդ ցանցի ստեղծմանը՝ իբրև պետական պարտույթ։

Շատ հավանական է, որ ուրարտական պետությունը ոչ միայն բռնագանձում էր պարենհարկի ձևով համայնքների եկամտի զգալի մասը, այլև տեր ու տնօրինություն էր անում նրանց վրա՝ սահմանափակելով կամ ընդլայնելով այս կամ այն տնտեսության հողատարածությունները[20]։

Դատելով Էրեբունիի, Թեյշեբաինիի և Արգիշտիխինիլիի տնտեսության մասշտաբներից, այստեղ, հավանաբար, գոյություն են ունեցել բավականաչափ խոշոր համայնքներ։ Դա իհարկե, չի բացառում նրանց սահմաններից դուրս գտնված համայնքներից ևս պարենհարկի ձևով ստացված եկամուտները։

Թեյշեբաինիի տարատեսակ էթնիկ կազմը, ինչպես նաև նրանում առկա ուրարտական բնակչության զանազան խավերը վկայում են այդ քաղաքի սոցիալական բարդ կառուցվածքի մասին։ Քաղաքային թաղամասերի պեղված խոշոր շենքերը, անկասկած, պատկանել են բնակչության այն խավերի ներկայացուցիչներին, որոնք կոչված են եղել ի կատար ածելու ուրարտական իշխանությունը նվաճված տեղական համայնքների վրա[21]։

Որոշ տվյալներից կարելի է եզրակացնել նաև, որ ուրարտական քաղաքներում գոյություն է ունեցել քաղաքային համայնք, օժտված որոշակի ինքնուրույնությամբ՝ ներքաղաքային խնդիրների լուծման ասպարեզում և որոշ իրավունքներով[22]։

## 2. ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՅՎԱԾՔԸ

**Կենտրոնական և տեղական իշխանությունը։** Ուրարտական պետության գլուխ կանգնած է եղել թագավորը, որի իշխանությունը, հին-արևելյան մյուս ստրկատիրական պետությունների նման, ժառանգական էր և անսահմանափակ։

Արքունիքի մասին դատելու համար առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում Թոփրախ-կալեի պեղումներից հայտնի մի սեպագիր աղյուսակ, որը պարունակում է Ռուսախինիլի մայրաքաղաքի պալատական անձնակազմի ցուցակը։ Այն բաղկացած է եղել 5.507 մարդուց, որոնց թվում 1.113 անվանի անձեր (պալատականներ), 3784 ներքինիներ (դրանց թվում, ըստ երևույթին, նաև գրասենյակի պաշտոնյաներ), պալատի 162 ծառայողներ (դրանց թվում ևս 108 ներքինիներ, 10 գինեգործներ և այլն), ինչպես նաև ավելի քան 400 զանազան այլ անձեր, ըստ երևույթին, զինվորներ, աշխարհազորականներ, արհեստավորներ (ջուլհակներ, քարգործ վարպետներ) և սպասարկու անձնակազմ (ջորեպաններ և այլն)[23]։

20 Տե՛ս *Н. В. Арутюнян*, Новая клинописная таблетка из раскопок Кармир-блура, էջ 35—51։

21 Տե՛ս *А. А. Мартиросян*, Город Тейшебаини, Ереван, 1961, էջ 131—155։

22 Տե՛ս УПД, էջ 27։

23 Տե՛ս УПД, էջ 25—26, 39. *Н. В. Арутюнян*, Новая клинописная таблетка из раскопок Кармир-блура, էջ 38, 47։



Մենուայի որդի Արգիշտի Ա թագավորի արձանագրությունը Էրեբունիի հիմնադրման մասին

Ներքինիների զգալի թիվը Ռուսախինիլիի պալատական անձնակազմում առանձին զարմանք չի կարող հարուցել, եթե նկատի ունենանք հին-արևելյան արքունիքները։ Այդպիսին է եղել վիճակը Աքեմենյանների պարսկական արքունիքում, Ասորեստանում և այլն։ Արձանագրությունների համաձայն, ասորեստանյան թագավորները մարզերի փոխարքաների պաշտոններն անգամ շատ հաճախ վստահել են ներքինիներին[24]։

Կարևոր տեղ են գրավել պետության վարչական կազմում թագավորի որդիները, եղբայրները, մյուս ազգականները՝ «արքայական տոհմի սերմը», ինչպես ասված է Սարգոն Բ-ի 8-րդ արշավանքի նկարագրության մեջ («Լուվրի աղյուսակ»)։

Երկրի կառավարման գործում մեծ դեր էին խաղում նաև թագավորներին մշտապես շրջապատող «խորհրդականները», որոնք թագավորության առավել աչքի ընկնող տոհմերի ներկայացուցիչներն էին։ Վարչական ապարատի մասն էին դառնում, փաստորեն, նաև նվաճված երկրների «թագավորները»։

Ուրարտական պետության կարևորագույն պաշտոնյաներն են եղել, թերևս, փոխարքաները («մարզերի կառավարիչները»)։ Կառավարման վայրերում նրանք վարել են տվյալ մարզի տնտեսությունը, ղեկավարել հարկերի գանձման գործը, ինչպես նաև հավաքված նատուրալ մթերքների վերամշակման և Ուրարտուի կենտրոնը տեղափոխելու գործը։ Փոխարքաները հավանաբար եղել են խոշոր սեփականատերեր։ Պատերազմների ժամանակ նրանք հանդես են եկել որպես զինվորական հրամանատարներ։ Այսուհանդերձ, թագավորները հաճախակի և բազմաթիվ խոշոր ու մանր հարցերում միջամտել են տեղական իշխանությունների գործունեությանը։

Տեղական վարչական անձնակազմում եղել է նաև մի այլ առաջնակարգ պաշտոնյա, որը կոչվել է «կնիք ունեցող անձ»։ Բարձրաստիճան այս պաշտոնյան Թեյշեբաինիից հայտնաբերված նամակներում հիշատակվում է հաճախակի[25], ըստ որում թագավորի գրավոր հրամաններն ի կատար ածող հասցեատիրոջ դերում։ Հավանական է, որ նա եղել է Թեյշեբաինիի տնտեսական անձնակազմի պետը[26]։

Թեյշեբաինիի սեպագիր աղյուսակներում հիշատակվում են նաև մի շարք այլ պետական պաշտոնյաներ՝ «հաշվի մարդիկ», «դրամների մարդիկ», «ցանքի մարդիկ», ինչպես նաև հացթուխ (խոհարար) և ավագ հովիվ[27]։

Այդ պաշտոնյաներից Ռուսախինիլիի պալատական անձակազմում հանդիպում ենք միայն «հաշվի մարդուն» (որի ձեռքի տակ աշխատում են 119 անձինք), սակայն հենց այդ հանգամանքը ցույց է տալիս, որ այստեղ ևս պետք է գոյություն ունենային, ըստ որում ավելի լայն մասշտաբներով, Թեյշեբաինիի կապակցությամբ հիշատակված պաշտոնները։

Պետության եկամտի գլխավոր աղբյուր Ուրարտուում եղել են ոչ միայն արքայական տնտեսությունները, այլև սիստեմատիկ հարկահանությունը հպա-

24 Տե՛ս УПД, էջ 27։
25 Տե՛ս УПД, № 2, 4, 6։
26 Տե՛ս նույն տեղում, էջ 26։
27 Տե՛ս նույն տեղում, № 2, 5, 7։



Էրեբունիի միջնաբերդը։ Պերիստիլ բակի վերակազմությունը

տակեցված երկրներից ու մարզերից։ Ուրարտացիների՝ միևնույն երկրների դեմ ձեռնարկած արշավանքների հաճախակի կրկնման պատճառը պետք է որոնել գլխավորապես պարտադրվող հարկերը բռնագանձելու մեջ։ Պատահական չէ, որ ուրարտական թագավորները ձեռնպահ են մնում արշավանքների ժամանակ դաժան հաշվեհարդար տեսնելուց այն ցեղապետների նկատմամբ, որոնք խոստանում են հետագայում հոժարակամ վճարելու սահմանված հարկը։ Այսպիսով, ուրարտացիների հաճախակի ձեռնարկած արշավանքների նպատակը եղել է նաև երկրի ժամանակ առ ժամանակ խախտված տնտեսության կարգավորումը՝ թալանի կամ հարկահանության միջոցով։

Զորքը։ Ուրարտուի՝ հին-արևելյան տիպի ստրկատիրական պետության համար երկրի ներքին և արտաքին քաղաքականությունը ապահովելու առավել կարևոր միջոցը բռնի ուժի գործադրումն էր։ Իսկ դա հնարավոր էր միայն ուժեղ բանակ ունենալու դեպքում։ Բանակը կոչված էր մի կողմից ճնշելու երկրի ներսում թագավորական իշխանության դեմ ծագած ներքին ընդվզումները, մյուս կողմից՝ ռազմական արշավանքների միջոցով, ընդլայնելու Վանի թագավորության սահմանները և հարուստ ռազմական ավար առնելու։ Զորքն էր, որ ապահովում էր նվաճված երկրներին պարտադրած հարկերի ու տուրքերի գանձումը։

Ուրարտական բանակի կորիզը հանդիսացել է այսպես կոչված «արքայական գունդը»[28]։ Ուրարտուի տիրապետության տակ գտնվող երկրների զորքերը պատերազմների ընթացքում նույնպես ի սպաս են դրվել Վանի թագավորության ռազմական քաղաքականությանը։ Բանակը, ըստ երևույթին, համալրվել է նաև նվաճողական արշավանքների ընթացքում ձեռք բերված բազմահազար ռազմագերի զինվորների հաշվին[29]։

Ուրարտական զորքի քանակի մասին որոշ տվյալներ են պարունակում Իշպուինիի և Մենուայի համատեղ թագավորության շրջանի մի քանի արձանագրություններ։ Նրանցից երկուսը հաղորդում են, որ Արաքսի վերին հոսանքում և ավելի հյուսիս ընկած Ուիտերուխի, Լուշա և Կատարզա երկրների դեմ մղված մարտերում ուրարտական բանակում կային 15 հազար հետևակայիններ, մի քանի հազար[30] 460 հեծյալներ, 66 մարտակառք[31]։ Մի այլ դեպքում, երբ Իշպուինին և Մենուան մարտեր են մղում Եփրատի վերին հոսանքում՝ Մելիտեա (Մալաթիա) երկրին տիրապետելու համար, ուրարտական զորքը բաղկացած էր 9 հազար 174 հեծյալներից, 2 հազար 704 հետևակայիններից և 106 մարտակառքից։ Այստեղ (մ. թ. ա. 764 թվականի տակ) հիշատակվում է, նաև, որ ռազմական ընդհարումների ընթացքում ուրարտական զորքը գրավում է 50 մարտակառք[32]։

---

28 Տե՛ս АВИИУ, 49, 167, 188։

29 Տե՛ս И. М. Дьяконов, К вопросу о судьбе пленных в Ассирии и Урарту, էջ 99։

30 Պահպանվել է միայն «հազար» թվանշանը, իսկ նրանից առաջ եղած հազարավորների քանակը տրված է ամբողջովին։

31 Տե՛ս УКН, 21, 22։

32 Տե՛ս УКН, էջ 299 և 307։



Էրեբունիի «սուսի» տաճարի մուտքը՝ սեպագիր արձա

Սարգոն Բ-ի ժամանակվա ասորեստանյան արքայական արխիվի հետախուզական նամակներից մեկում հիշատակվում է, որ ուրարտական մարզային կառավարիչ Սեթինուի զորքում կար երեք հազար հետևակային[33]։

Հասկանալի է, որ այս կամ այն արշավանքի ժամանակ մարտական գործողությունների է դուրս բերվել զորքի մի մասը միայն։ Հիմնական մասը, բնականաբար, զբաղվել է թագավորության լայնատարած սահմանների, արքունիքի, բազմաթիվ ամրոցների պաշտպանությամբ։ Ուստի բերված փաստերի հիման վրա հնարավոր չէ կոնկրետ եզրակացությունների հանգել ուրարտական զորքերի քանակի մասին։ Կասկածից վեր է, սակայն, որ Վանի թագավորության հետագա աչքի ընկնող հաջողությունները, նրա սահմանների զգալի ընդլայնումը ամենից առաջ պետք է բացատրել ուրարտական բանակի հզորության աճով։ Սարդուրյան տարեգրության դժվարըմբռնելի հատվածներից մեկում հիշատակված է հետևակայինների ու հեծյալների ընդհանուր թիվը, որը անցնում է 350 հազարից[34]։ Հավանական է, որ սա կարող է լինել միայն զենք վերցնելու ընդունակ մարդկանց և ոչ գործող զինվորների թիվ։

Որոշ տեղեկություններ են պահպանվել նաև ուրարտական զորքերի տարատեսակների մասին։ Վերևում արդեն բերված մի քանի փաստերից երևում է, որ դեռևս Իշպուինիի և Մենուայի համատեղ թագավորության օրոք ուրարտական բանակի հիմնական ստորաբաժանումները եղել են հետևակը, հեծելազորը և մարտակառքերը[35]։

Ուրարտական իշխողները առանձին նշանակություն են տվել հեծելազորին։ Հայտնի է, որ Ռուսա Ա-ի «արքայական գնդի» համար մարտական ձիեր են աճեցվել ու վարժեցվել Ուրմիա լճի արևելյան ափին ընկած Սուբի մարզում, որ Անիաշտանիա մարզը համարվել է Ռուսա Ա-ի «ձիերի երամակների տունը»[36]։ «Արքայական գնդի» պետքերն են հոգացել նաև Բարի մարզի (դարձյալ Ուրմիայի հյուսիս-արևելյան ափին) ձիանոցները[37]։ Ռազմական արշավանքներից բերված հարուստ ավարի մեջ սովորաբար եղել են հսկայական քանակությամբ ձիեր, որոնց մի մասը ևս կարող էր տրամադրվել բանակին։

Պետք է ենթադրել, սակայն, որ ուրարտական զորքի հիմնական մասը, այնուամենայնիվ, հանդիսացել է հետևակը, որը բաղկացած է եղել պարսավորներից, նիզակավորներից, աղեղնավորներից և այլն[38]։ Պաշտպանական միջոցներն են եղել բրոնզե և երկաթե զրահները, վահանները և սաղավարտները, որոնց բազմաթիվ օրինակները հայտնաբերվել են ուրարտական ամրոցների, հատկապես Կարմիր բլուրի պեղումների ժամանակ[39]։ Բրոնզե սաղավարտների, կապարճների և գոտիների վրա եղած բարձրարվեստ պատկերների շնորհիվ մենք հստակ պատկերացում ունենք ուրարտական մարտակառքերի և հեծելազորի արտաքին տեսքի մասին։

---

33 Տե՛ս АВИИУ, 50 (3)։

34 Տե՛ս УКН, 155 G։

35 Տե՛ս նույն տեղում, 21, 22։

36 Տե՛ս АВИИУ, 49 (167)։

37 Տե՛ս նույն տեղում, 49 (188)։

38 Տե՛ս АВИИУ, 49 (280, 309), 67 (к)։

39 Տե՛ս Բ. Բ. Պիոտրովսկու՝ Կարմիր բլուրի պեղումների մասին հրատարակած գիտական հաշվետվությունները։

*Ուրարտական բանակի կազմում եղել են նաև որոշ օժանդակ զորքերի՝ սակրավորների և հետախույզների ստորաբաժանումներ*[40]*։*

*Բանակի հրամանատարական կազմի մասին հայտնի է, որ Ուրարտուում (ինչպես և Ասորեստանում) եղել է զորքերի գերագույն հրամանատար («թուրթան»). գոյություն է ունեցել նաև երկրորդ «թուրթան»։ Հայտնի է ուրարտական թուրթաններից մեկի անունը (Կակկադանու) և մի «երկրորդ թուրթանի» անունը (Ուրծինե)*[41]*։ Նույն աղբյուրներում հիշատակվում են նաև «զնդապետ», «հիսնապետ», «սակրավորների հրամանատարներ և պետեր»*[42]*։ Ուրարտական արձանագրություններում ևս հանդիպում են զինվորական պաշտոններ արտահայտող որոշ բառեր, որոնց իմաստները, սակայն, առայժմ դժվար է բացահայտել։*

*Այսպիսով, ինչպես և մնացյալ հին արևելյան պետությունները, Ուրարտուն ունեցել է զարգացած վարչական և ռազմական ապարատ։*

## 3. ՔԱՂԱՔՆԵՐԸ

**Ուրարտական քաղաքների բնույթը:** *Երկրագործության, անասնապահության, արհեստների ու առևտրի աննախընթաց զարգացման, երկրի սահմանների ընդլայնման, ավարառության, ռազմատուգանքների, ստրկական էժան աշխատանքի կիրառման շնորհիվ, պետական կենտրոնացված իշխանության հզորացման պայմաններում սկսվեց ուրարտական թագավորների քաղաքաշինական բուռն գործունեությունը։ Մ. թ. ա. IX դարի վերջին և VIII դարի առաջին քառորդում մեկը մյուսի ետևից հանդես եկան ուրարտական նորանոր քաղաքներ։ Այս շրջանից սկսած ուրարտական սեպագիր արձանագրությունները բազմաթիվ տեղեկություններ են հաղորդում հարյուրավոր բնակավայրերի կառուցման մասին, որոնք բոլորն էլ քաղաքներ են անվանվում։ Սակայն հնագիտական աշխատանքներից պարզվել է, որ քաղաք կոչվածներից շատերը պարզապես ռազմական նպատակներով կառուցված բերդ-շեներ էին և իսկական իմաստով քաղաքներ չդարձան։ Սրանց թիվն իրոք հարյուրների էր հասնում, սփռված լինելով Ուրարտուի ամբողջ տարածությունով մեկ՝ Մալաթիայից մինչև Թավրիզ։ Բավական է նշել, որ միայն Վանա լճի շրջակայքում և Մշո դաշտում 50—60 այդպիսի «քաղաքներ» կային։ Մյուս կողմից, Հին Արևելքի այդ հզոր, աշխարհակալ պետությունը չէր կարող գոյություն ունենալ առանց խոշոր քաղաքների՝ երկրի վարչատնտեսական և ռազմական իսկական կենտրոնների։*

**Ուրարտական մայրաքաղաք Տուշպան:** *Ուրարտական շինարարական արձանագրությունների մի զգալի մասը կապված է Մենուա թագավորի անվան հետ, որի օրոք պետության մայրաքաղաք Տուշպան (հայկական աղբյուրների Վան-Տոսպ) դառնում է մեծ ու բարեկարգ քաղաք և ջրանցքով խմելու ջուր է ստանում Մժնկերտի ժայռից։ Վանա լճի հարավ-արևելյան ափին գտնվող այս քաղաքի կառուցման մասին Մովսես Խորենացու մոտ պահպանվել է մի ավան-*

40 *Տե՛ս* АВИИУ, *50 (13, 38)։*

41 *Տե՛ս նույն տեղում, 50 (4, 9, 10, 13)։*

42 *Տե՛ս նույն տեղում, 50, (3, 32, 38)։*

դազրույց՝ կապված Ասորեստանի Շամիրամ թագուհու և Արա Գեղեցիկի հետ։ Ահա Խորենացու մոտ պահպանված այդ ավանդությունը.

«...(Շամիրամը) Շատ տեղեր անցնելով հասնում է աղի ծովակի եզերքը արևելյան կողմից. տեսնում է ծովի ափին մի երկայնաձև բլուր, որ երկայնությամբ ձգվում էր դեպի արևմուտք՝ հյուսիսային կողմում մի փոքր թեքությամբ, իսկ հարավային կողմից ուղղահայաց դեպի երկինք բարձրացած մի կանգուն ու անթեք քարաժայռ կար։ Սրանից դեպի հարավ հեռուն տարածվում էր մի դաշտանման երկայնաձև հովիտ, որ լեռան արևելյան կողմից իջնում էր ծովի ափը՝ ընդարձակ և գեղեցիկ ձորի ձևով. Նրա միջով հոսում էին լեռներից իջնող, ձորերից ու հովիտներից քամվող քաղցրահամ ջրեր, որոնք լեռների ստորոտների մոտ միավորվելով ծավալվում, գեղեցիկ-գետեր էին կազմում։ Հովտաձև ձորակի մեջ ոչ սակավ շեներ կային՝ ջրերի աջ ու ձախ կողմերում զետեղված։ Այս հաճելի բլուրից դեպի արևելք կար մի փոքրագույն լեռ։

Այս տեղի վրա աչք դնելով, այրասիրտ և վավաշոտ Շամիրամը հրամայում է անմիջապես Ասորեստանից և իր իշխանության մյուս տեղերից փափագած տեղը բերել չորս բյուր և երկու հազար սևագործ բանվորներ, վեց հազար իր ընտիր փայտագործ, քարագործ, պղնձագործ և երկաթագործ արհեստավորներից, որոնք ըստ ամենայնի կատարյալ լինեն իրենց գործի մեջ, և գործը հրամանի համապատասխան կատարվում է. անմիջապես բերվեցին բազմաթիվ սևագործ բանվորներ և բազմարվեստ հմուտ վարպետներ։ Եվ հրամայում է՝ նախ գետի ամբարտակը շինել ապառաժ խոշոր քարերով, կրի և ավազի շաղախով, շատ լայն և բարձր, որ մինչև այժմ, ինչպես ասում են, հաստատ մնում է։ Գետի այս ամբարտակի ճեղքվածքներում այդտեղի մարդիկ, ինչպես լսում եմ, փախչում ամրանում են ապստամբությունների և գաղթականությունների ժամանակ, որպես թե ամրանալիս լինեին ապառաժ լեռների գագաթներին։ Եվ եթե մեկը կամենա փորձել՝ չի կարողանա ամբարտակի շինվածքից պոկել թեկուզ պարսատիկի մի փոքր քար, որչափ էլ աշխատի։ Եվ երբ մարդ նայի քարերի շուրջն եղած կրի ծեփին, նրան այնպես է թվում, թե ճարպ է ածած այնտեղ։ Այսպես երկար ասպարեզներով ամբարտակն անցկացնելով՝ հասնում է քաղաքի համար որոշված տեղը։

Այստեղ հրամայում է բազմությունը շատ խմբերի բաժանել և ամեն մի խմբի վրա ղեկավար նշանակել վարպետներից ընտիրներին, և այսպես խիստ լարված աշխատանքի մեջ պահելով՝ քիչ տարիներից հետո գլուխ է բերում հրաշալի շինվածքը, ամուր պարիսպներով ու պղնձակերտ դռներով։ Քաղաքի մեջ շինում է նաև բազմաթիվ ընտիր ապաստարաններ, կրկնահարկ և եռահարկ, զարդարված տեսակ-տեսակ գույնզգույն քարերով, և ամեն մեկում պատուհաններ ըստ հարմարությունների։ Քաղաքը մասերի է բաժանում գեղեցկագույն և ընդարձակ փողոցներով։ Շինում է նաև չքնաղ և զարմանալու արժանի բաղնիքներ՝ համապատասխան քաղաքի դիրքին ու պիտույքներին։ Գետի մի մասը քաղաքի մեջ բաշխելով՝ անց է կացնում ամեն տեսակ պիտույքների և բուրաստանների ու ծաղկանոցների ոռոգման համար. իսկ մյուս մասը (անց է կացնում) ծովակի աջ և ձախ ափերով՝ քաղաքի և բոլոր շրջակայքի ոռոգման համար։ Քաղաքի ամբողջ արևելյան, հյուսիսային և հարավային կողմերը զարդարում է դաստակերտներով, վարսագեղ սաղարթախիտ ծառերով... տըն-

*կում է բազմաթիվ առատաբեր ու գինեբեր այգիներ։ Պարսպված քաղաքն ամեն կերպ հոյակապ ու հռչակավոր է դարձնում և մեջը բնակեցնում է մարդկանց անթիվ բազմություն։ Իսկ քաղաքի (վերի) ծայրը և այնտեղի հրաշալի շինվածքները մարդկանց շատերին անհասկանալի են մնում և պատմելու հնարավորություն չկա։ Այդտեղ գագաթի շուրջը պարիսպ քաշելով, ներսը շինում է դժվար մտնելու և դժվար դուրս գալու ինչ-որ ծածուկ և ահռելի արքայանիստ շինվածքներ։ Դրանց շինության որպիսությունը մենք ոչ ոքից ճշտությամբ չենք լսել, ուստի հարմար չենք դատում մեր պատմության մեջ հյուսել։ Այսքանը կասենք, թե ինչպես լսել ենք, սրանք բոլոր թագավորական գործերի մեջ առաջին և վեհագույն են համարվում։ Իսկ քարաժայռի դեպի արեգակ դարձած կողմը, որտեղ այժմ և ոչ մի գիծ կարող է մարդ գծել երկաթով, այսպիսի կարծր քարի մեջ զանազան սենյակներ, ննջարաններ, գանձարաններ և երկար վիհեր՝ հայտնի չէ ինչ բանի համար, հրաշակերտեց։ Իսկ քարաժայռի ամբողջ երեսը հարթելով, ինչպես գրչով հարթում են մեղրամոմը, վրան շատ գրեր գրել տվեց, որոնց տեսքը միայն բոլորին զարմացնում է։ Եվ ոչ միայն այստեղ, այլև Հայոց աշխարհում շատ տեղերում արձաններ կանգնեցրեց և նույն գրերով իր մասին ինչ-որ հիշատակ հրամայեց գրել...»[43]։*

*«Հայոց պատմություն» գրքում Մովսես Խորենացու մեջբերած ավանդությունը ճշգրիտ տեղեկություններ է պարունակում Վանի ժայռի մասին, իսկ հնագույն քաղաքի վերաբերյալ նրա պատմածի վավերականությունը հաստատվում է հնագիտական նյութերով։ Բայց ավանդությունն անարդարացի է գտնվել Մենուա թագավորի նկատմամբ, որի օրոք ուրարտական պետությունը իր ծաղկմանն էր հասել և հաջողությամբ պայքարում էր Ասորեստանի դեմ։ Մենուայի կենդանության օրոք ասորեստանցիները չեն կարողանում նրան հաղթել, բայց սերնդեսերունդ հաղորդվող ավանդազրույցներում ուրարտական շատ շինություններ, ինչպես օրինակ Տուշպա քաղաքը, ջրանցքը և ամրոցները վերագրվել են Ասորեստանի Շամիրամ (Շամմուրամաթ) թագուհուն։*

*Միայն Խորենացին չէ, որ հիացմունքով է խոսում ուրարտական քաղաքի մասին։ Գովեստով ու նույն մանրամասներով է պատմում ուրարտական Ուլխու քաղաքի մասին նաև ուրարտացիների ոխերիմ թշնամի՝ Ասորեստանի թագավոր Սարգոն Բ-ը, որ մ. թ. ա. 714 թվականին հրով ու սրով անցավ Ուրարտուով։*

*Ուրարտական քաղաքների մեծ մասը կառուցվել է այնպես, ինչպես նկարագրված է Խորենացու մոտ. շինարարության ժամանակ պետությունը աշխատեցնում էր մեծ թվով ստրուկների ու արհեստավորների, հիմնականում ռազմագերիների, թեև շինարարական որոշ պարհակներ էին դրված նաև իրենց՝ ուրարտացիների վրա։*

*Ուրարտացիների շինարարական գործունեության այդ բոլոր բնորոշ կողմերը տեսնում ենք նաև Արարատյան դաշտավայրում և Սևանի ավազանում, որտեղ քաղաքների շինարարությունն սկսվեց մ. թ. ա. VIII դարի սկզբներին, այդ շրջանները ուրարտացիների կողմից նվաճվելուց անմիջապես հետո։*

**Էրեբունի-Երևան քաղաքը:** *Արարատյան դաշտավայրի կամ ուրարտական «Ազա երկիր» փոխարքայության առաջին խոշոր ռազմա-ստրատեգիական ու*

---

43 Խորենացի, *Ա, ժզ*։

քաղաքական կենտրոնը դարձավ ներկայիս Երևանի հարավ-արևելյան մասում հիմնադրված մեծ քաղաքը՝ Արին-բերդ բլրի կատարին վեր խոյացող հսկայական ամրոցով։ 1952 թվականի պեղումների ժամանակ, Արին-բերդի փլատակների վերին շերտում հայտնաբերվեց 13 տողանոց սեպագիր արձանագրություն, որը փորագրված էր սրբատաշ բազալտի վրա՝ Արգիշտի Ա թագավորի անունից։ Այդ կարևոր վավերագիրը հավաստում էր, որ Արին-բերդ բլրի վրա ու նրա շրջակայքում Մենուայի որդի Արգիշտի թագավորը, Խալդի աստծո զորությամբ, Էրեբունի անունով հոյակապ քաղաք-ամրոց կառուցեց, ի հզորություն Բիայնիլի երկրի և ի սարսափ թշնամու երկրների... Քաղաքանվան ընթերցումը վերջնականապես ճշտվեց 1952—1953 թվականներին, երբ Կարմիր բլուրի պեղումներով հայտնաբերված բրոնզե դեկորատիվ վահանների նվիրատվական արձանագրություններից հայտնի դարձավ Էրեբունի ընթերցումը (նախապես ընթերցում էին Իրպունի, Իրբունի, Էրբունի)։

Բարեբախտաբար այս քաղաքի անունը և նրա հիմնադրման հետ կապված որոշ մանրամասներ պահպանվել էին Արգիշտի Ա թագավորի նշանավոր Խորխորյան տարեգրության այն հատվածում, որտեղ հիշատակվում են արևելյան այդ հզոր տիրակալի թագավորության հինգերորդ տարվա իրադարձությունները։ Արդ, եթե Արգիշտի Ա-ի գահակալության առաջին տարին մ. թ. ա. 786 թվականն էր, իսկ Էրեբունին կառուցվել էր այդ պահից չորս տարի անց, ապա Էրեբունի-Երևանի հիմնադրման տարեթիվը պետք է համարել մ. թ. ա. 782 թվականը[44]։

Նման խոշոր ձեռնարկության համար ավելի հարմար ժամանակ չկար, քան մ. թ. ա. 782—781 թվականը, որովհետև հաջորդ մի քանի տարիներին Արգիշտին արյունահեղ կռիվներ էր մղում Ասորեստանի դեմ, իսկ նախորդ տարիներին զբաղված էր արևմտյան և հարավ-արևմտյան արշավանքներով, որոնք տևեցին մինչև մ. թ. ա. 782 թվականը։ Ահա այս արշավանքների ժամանակ է, որ Արգիշտին գրավում է Խաթեն (խեթերի երկիր) և Ծուփանին (պատմական Ծոփք) ու այնտեղից գերված 6600 ռազմագերիների այժմյան Երևանի շրջանը տեղափոխելով, հիմնադրում է Էրեբունի քաղաքը։ Շատ հնարավոր է, որ Խաթե և Ծուփանի երկրներից գերեվարված զինվորները պատկանելիս լինեին նախահայկական ցեղերին և ժամանակի սովորության համաձայն, գերեվարվեին ամբողջ ընտանիքներով՝ կանանց, ծերերի, երեխաների հետ միասին. Այդ դեպքում անհրաժեշտ կլիներ գոնե կրկնապատկել կամ եռապատկել տարեգրության մեջ հիշատակվող գաղթականների թիվը և ենթադրել, որ ուրարտական ժամանակաշրջանի Արարատյան դաշտի բնակչության հայացումն սկսվել էր Էրեբունիի հիմնադրմամբ, որ այստեղի բնակչությունը միատարր ու միալեզու չէր ի սկզբանե։ Էրեբունիի հիմնական բնակչության մեջ մտնում էին թե՛ ուրարտական կայազորի ջոկատները և թե՛ Ազա երկրի տեղաբնիկ խավերը[45]։ Այսպիսով, նորաստեղծ Էրեբունի քաղաքի բնակչության թիվը կարող էր հասնել մի քանի հազարի։

Որ Արգիշտին և նրան հաջորդող ուրարտական թագավորները իրոք մեծ նշանակություն էին տալիս Էրեբունի քաղաքին, երևում է բուն միջնաբերդում

44 Տե՛ս Г. А. Меликишвили, Наири-Урарту, էջ 285։

45 Տե՛ս Նույն տեղում։

թողած 23 սեպագիր արձանագրություններից, որոնք մեզ պատմում են Էրեբունիի հրաշալի շինությունների մասին։

Այս բոլոր փաստերը գալիս են հավաստելու, որ Արգիշտի Ա-ի և նրա հետնորդների (Սարդուրի Բ, Ռուսա Գ) օրոք Էրեբունի-Երևանը Ուրարտուի առավել հզոր ռազմա-ստրատեգիական կենտրոններից մեկն էր իր բնակելի թաղամասերով ու դամբարանադաշտով, միջնաբերդի հոյակապ շինվածքներով և նրանց պերիստիլ բակով, բնակելի կացարաններով, արքայանիստ ու տոնական դահլիճներով, «սուսի»-տաճարով, խալդի աստծո և այլ տաճարային կոմպլեքսներով, տնտեսական ու պահեստային ընդարձակ կառույցներով։ Միջնաբերդի եռապարիսպ ամրությունները, հենապատերը, հզոր աշտարակներն ու վեհաշուք կենտրոնական մուտքը հիշեցնում են Տուշպա-Տոսպ-Վան մայրաքաղաքի անառիկ բերդը, որ այնպիսի մեծ սիրով ու ներշնչանքով նկարագրել է հանճարեղ քերթողահայր Խորենացին[46]։

Մ. թ. ա. VII դարում ուրարտական Ռուսա Բ թագավորը կառուցում է Թեյշեբաինին և Էրեբունիից այնտեղ տեղափոխում արվեստի ու արհեստագործության շատ երևելի իրեր ու առարկաներ՝ նոր ամրոցն ու տաճարային շինությունները կահավորելու, զարդարելու համար։ Հնարավոր է, որ Ռուսայի այս ձեռնարկումների կապակցությամբ Էրեբունին կորցրած լիներ իր վաղեմի առաջնակարգ նշանակությունը, սակայն պակաս հավանական չէր լինի ենթադրել, որ Էրեբունիի կողքին վեր խոյացող այդ նոր կոմպլեքսը հենց նրա հավելումը լիներ։ Իբրև կրոնական, սրբազան քաղաքամաս, այն կրում էր ուրարտական գերագույն աստվածներից մեկի անունը, ընդգրկում էր տաճարային երկու կոմպլեքս և ուներ նրանց ենթակա քաղաքային կառույցներ ու տնտեսություններ։

Ինչպես ստորև կտեսնենք, հիմնադրվելով մ. թ. ա. 782 թվականին, Էրեբունին հարատևեց և՛ աքեմենյան գերիշխանության ժամանակաշրջանում, և՛ նրանից հետո, դառնալով ժամանակակից Երևանի նախնին։

Թեյշեբաինի քաղաքը համեմատաբար լավ է ուսումնասիրված։ Այն կառուցել է Արգիշտիի որդի Ռուսա թագավորը մ. թ. ա. VII դարում։ Քաղաքը տարածվում էր Կարմիր բլուրի վրա բազմած հզոր միջնաբերդից դեպի արևմուտք և հարավ։ Նա ուներ ճիշտ հատակագծված փողոցներ, որոնք համապատասխանում էին թաղամասերին ու պարունակում բնակելի շենքերի զանազանատիպ կոմպլեքսներ։

Այս ամենը ցույց է տալիս, որ քաղաքը կառուցվել է ըստ նախօրոք մտածված հատակագծի և բնակեցվել է կառուցապատվելուց հետո միայն։ Նրա կենտրոնական մասում բնակիչներն իրենք տներ չէին շինում, այլ բնակվում էին պետության կողմից կառուցվածների մեջ[47]։ Քաղաքի բնակելի տները տարբեր տեսակի էին՝ բնակչության տարբեր խավերին համապատասխան[48]։ Բաց

46 Էրեբունիի պեղումների մասին տե՛ս *И. М. Лосева,* Раскопки урартской крепости города Ирпуни..., СА, № 3, 1955, էջ *144—150*։ *Б. Б. Пиотровский, К. Л. Оганесян,* Раскопки урартских крепостей Эребунн и Тейшебаини. Доклад на XXV Международном конгрессе востоковедов, М., 1960. *К. Л. Оганесян,* Арин-берд, I, Архитектура Эребуни, Ереван, 1961.

47 Տե՛ս. *Б. Б. Пиотровский,* Кармир-блур, I, Ереван, 1950.

48 Տե՛ս *А. А. Мартиросян,* Город Тейшебаини, էջ *131, 155*։

գավիթով, անհատական տնտեսական հարմարություններից զուրկ երկսենյականոց տներով թաղամասերի կողքին կային ավելի խոշոր տներ՝ մառաններով։ Թեյշեբաինի քաղաքում պեղվել է երկու հազար քառակուսի մետր մակերեսով, երկարավուն ճակատի կողմից չորս առանձին մուտք ունեցող մի մեծ շենք։[49] Շենքն ուներ հատակագծով միմյանց կատարելապես համընկնող 11 սենյականոց 4 բնակարան։ Պահպանվել են այդ շինության պատերի հիմքերը միայն, ուստի անհնար է պարզել, թե նա միհարկանի է եղել, թե երկհարկանի (որ միանգամայն հնարավոր է)։ Համենայն դեպս շենքի ճակատը իր առանձին մուտքերով խիստ նման է Վանում գտնված բրոնզե եզրազարդի վրա պատկերված առանձին մուտքեր ունեցող նռահարկ շինությանը (մասերը պահպանվում են Բրիտանական և Բեռլինի թանգարաններում)։

**Արգիշտիխինիլի քաղաքը։** Քաղաքային շինությունների քանակությամբ, բազմազանությամբ ու ճարտարապետական բարեմասնություններով, թաղամասերի ու հրապարակների ընդարձակ տարածություններով, երկար և ուղղաձիգ փողոցներով առանձնապես աչքի էր ընկնում Արգիշտիխինիլի քաղաքը։ Այն հիմնադրվել էր մ. թ. ա. 776 թվականին ուրարտական Արգիշտի Ա թագավորի կողմից և այնուհետև շուրջ 200 տարի կառուցապատվել-ընդարձակվել ու բարեկարգվել նրա հաջորդների եռանդուն շինարարական գործունեության շնորհիվ։ Արգիշտիխինիլին Վանի թագավորության ոչ միայն ամենախոշոր քաղաքներից էր, այլև նշանակալից տնտեսական, մշակութային և կրոնական կենտրոն։ Նրա կառուցապատված մասը միայն զբաղեցնում էր յոթ-ութ հարյուր հեկտար տարածություն՝ ընկղմված այգիների, բանջարանոցների ու ցանքսերի կանաչ օազիսի մեջ։ Տնտեսությունների այս հզոր շղթան, արհեստանոցներն ու բնակելի թաղամասերը տեղադրված էին մեծ ու փոքր ջրանցքների, առուների կենսաբեր երակների վրա, որոնք կյանք էին ներարկում նաև քաղաքի շրջակայքում ծվարած «արբանյակ» բնակավայրերին, գրեթե ողջ Արարատյան դաշտին, կամ որ միևնույնն է, ուրարտական արձանագրությունների «Ազա(նի) երկրին»։ Ջրաբաշխական այս սիստեմի մասին հաղորդող արձանագրություններում և այլ սեպագիր կոթողներում տեղեկություններ կան քաղաքի թագավորական ու տաճարային այգիների, ցանքատարածությունների ու տնտեսությունների մասին։ Մասնատիրական տնտեսությունների առկայությունը հաստատվում է հնագիտական պեղումների հարուստ նյութերով։

Արգիշտիխինիլին իր հատակագծային կառուցվածքով բավականաչափ նման էր Ասորեստանի և Բաբելոնի նշանավոր քաղաքներին։ Այստեղ զարգացած երկրագործության և անասնապահության կողքին ծաղկում էին բազմաթիվ արհեստներ։ Արգիշտիխինիլիում կան բրոնզագործի ու դարբնի, քարագործի, դեղագործի և հյուսնի մենատներ։ Առանձնապես բարձր կատարելության էր հասել Արգիշտիխինիլիի խեցեգործությունը, որի հասարակ ու շքեղ արտադրանքը զարդարում էր բարձրաստիճան պաշտոնյաների ու քրմերի բարձրապարիսպ ապարանքը, շարքային ռազմիկի կամ երկրագործի տնակը, տարածվում քաղաքի սահմաններից շատ ու շատ հեռու։ Առանձնապես լայն տարածում էին գտնում Արգիշտիխինիլիի գեղարվեստական արհեստագործու-

49 Տե՛ս А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы и раннего железа, Ереван, 1964, էջ 232—269 և նկ. 98։



Արգիշտիխինիլի։ Բնակելի առանձնատների ավերակներ

թյան արտադրանքները՝ բրոնզաթիթեղը, դրոշմազարդ գոտիները, բարձրաքանդակ վահանները, սաղավարտներն ու մետաղյա արձանիկները։ Բնակելի տների պեղումներով հայտնաբերված նուրբ ու կոպիտ գործվածքները, փոկերն ու պարանները, կաշվե իրերի մնացորդները վկայում են մանածագործության, ջուլհակության, կաշեգործության և այլ արհեստների զարգացումը։

Իրենց տեսակարար կշռով քաղաքում մեծ տեղ էին գրավում, հավանաբար, նաև շինարար վարպետներն ու բանվորները։ Քաղաքային բնակչության փոքրաթիվ, բայց կարևոր խավ էին կազմում բարձրաստիճան պետական պաշտոնյաներն ու զինվորականները՝ իրենց համհարզ ջոկատներով, քրմերն ու տաճարային այլ սպասավորները։ Սրանց բնակության վայրերը ըստ երևույթին, կից են եղել ուրարտական ամրապարիսպ բերդերին։ Արգիշտիխինիլին իր արևելյան և արևմտյան ծայրակետերում ուներ երկու հսկայական ամրոց՝ Արգիշտի Ա, Սարդուրի Բ և Ռուսա Գ թագավորների բազմաթիվ սեպագիր արձանագրություններով։ Հիշատակված արձանագրությունների և հնագիտական պեղումների տվյալների համաձայն, այդ երկու ամրոցներում կային գինու մառաններ, հացահատիկի պահեստներ, արհեստանոցներ, թագավորական ապարանքներ և մոտավորապես մեկ տասնյակի հասնող տաճարային շինություններ։ Սրանք բոլորը գտնվում էին եռապարիսպ ամրությունների շրջանակի մեջ, որոնց թեք պանդուսները, լավ պաշտպանված շքամուտքերը, քառանկյունի աշտարակների ու հենապատերի հզոր ծավալները հարազատորեն պատկերված են ասորեստանյան բարձրաքանդակների վրա։ Քաղաքի ընդհանուր հատակագծային հորինվածքը նույնպես հիշեցնում է Հարավային Միջագետքի Ուր և Լագաշ քաղաքների կառուցվածքը։

Արգիշտիխինիլիի պեղումներով հիմնովին հերքվում է գիտության մեջ ուրարտական քաղաքների մասին տարածված այն թյուր կարծիքը, թե իբրև նրանք ավելի շուտ միջնաբերդ ունեցող ոչ մեծ բնակավայրեր էին, քան խոշոր քաղաքային կենտրոններ՝ տնտեսության, կուլտուրայի ու քաղաքային կյանքի համապատասխան մակարդակով[50]։

Արևմտյան Հայաստանի (այժմ Թուրքիա) տերիտորիայում էլ պեղվում կամ հետազոտվում են մի քանի ուրարտական բերդ-շեներ և քաղաքներ (Ալթըն-Թեփե, Բագնոց, Կայալը-Դերե և այլն), որոնք հիմնականում նման են Սովետական Հայաստանի լավ ուսումնասիրված հնագիտական հուշարձաններին։

Վերը հիշատակված բնակավայրերի մեծ մասը մեդա-սկյութական արշավանքների ժամանակ, ուրարտական պետության անկման հետևանքով կործանվեց մ. թ. ա. VI դարի սկզբներին։ Արգիշտիխինիլին ու Թեյշեբաինին հրկիզվեցին, Էրեբունին կողոպտվեց, Տուշպան ու Ալթըն-Թեփեն ավերվեցին, մյուսները լքվեցին։ Սակայն շուտով Էրեբունիի միջնաբերդը և Արգիշտիխինիլիի արևելյան ամրոցը վերականգնվեցին, վերակազմվեցին իբրև նոր կենտրոններ. Թեյշեբաինիի, Տուշպա-Տոսպի և այլ քաղաքների շրջակայքում նորից առկայծեց կյանքի կրակը։

---

50 Արգիշտիխինիլի քաղաքի մասին տե՛ս А. А. Мартиросян, Раскопки Аргиштихинили, էջ 220—236։ К. К. Кафадарян, Новые данные по архитектуре Урарту, СА, 1967, № 4, էջ 237—247։ Н. В. Арутюнян, Новая урартская надпись из Давти-блура, ВДИ, 1966, № 3, էջ 91—105։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

## 1. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

**Արհեստական ոռոգում:** *Ուրարտուի գրավված տերիտորիայում երկրագործության ինտենսիվ զարգացումն անհնարին էր առանց արհեստական ոռոգման, որովհետև մթնոլորտային տեղումները չափազանց սակավաթիվ են եղել։ Հետևաբար, ջրային ռեսուրսները ունեցել են առաջնակարգ նշանակություն հինարևելյան այգ պետության երկրագործության, այգեգործության-խաղողագործության և տնտեսության այլ ճյուղերի զարգացման համար։*

*Ուրարտական թագավորներից, որքան հայտնի է, առաջինը Մենուան էր, որն իր շինարարական գործունեության մեջ որոշակի տեղ հատկացրեց ոռոգման լայն ցանցի ստեղծմանը՝ պետության կենտրոնական նահանգներում։ Ուրարտացիների ջանքերով ստեղծված ոռոգման ցանցում առանձնահատուկ տեղ է գրավել Մենուայի կողմից կառուցված վիթխարի ջրանցքը, որը խմելու և ոռոգելու ջուր է մատակարարել Ուրարտուի մայրաքաղաք Տուշպա-Վանին։*

*Այս ջրանցքը կառուցված պետք է լինի մ. թ. ա. IX դարի վերջերին՝ Մենուայի թագավորության սկզբնական շրջանում։*

*Մենուայի ջրանցքին ջուր են տվել Վերին Մժնկերտ գյուղի մոտերքի ժայռից բխող բազմաթիվ աղբյուրները։ Նրա ակունքներից հինգ կիլոմետր հյուսիս հոսում է Հայոց ձոր կամ Խոշաբ գետը, որին միախառնվում էին Մժնկերտի ջրերը, նախքան ջրանցքի կառուցումը։*

*Ջրանցքի ակունքների և Տուշպա-Վանի միջև ընկած տարածությունը ուղիղ գծով կազմում է 70 կմ, սակայն ջրանցքի հունը ընթանում է ոլորաններով և նրա ընդհանուր երկարությունը հասնում է մոտ 80 կիլոմետրի։*

*Տուշպայի ջրանցքը հազարամյակների ընթացքում ժամանակ առ ժամանակ վերանորոգվել է և ոչ միայն մինչև օրս պահպանել իր գոյությունը, այլև, Վանից բացի, իր ճանապարհին շարունակում է ապահովել թվով 25 գյուղերի ցանքադաշտերի, պտղատու և խաղողի այգիների ոռոգումը հինավուրց Հայոց ձոր գավառում։*

*Ջրանցքի ակունքներից ոչ հեռու կա մի լճակ, որի հատակից ևս դուրս են ժայթքում բազմաթիվ աղբյուրներ։ Ջրանցքի ակունքներից հոսող ջրերը նախապես թափվում են այս ջրավազանը և այնուհետև շարունակում իրենց ուղղությունը մինչև Վերին Մժնկերտ, որի մոտ ջրանցքը չափազանց հորդառատ է և այժմ սպասարկում է թվով 40 ջրաղացներ։*

Մենուայի ջրանցքը, այնուհետև, Խառնուրդ գյուղով ձգվում է մինչև Խոշաբ գետը և, անցնելով գերանակապ ջրատար կամուրջի վրայով, ուղղությունը փոխում է դեպի Վան[1]։ Ներքին Մժնկերտ գյուղի մոտ հանդիպում է ջրանցքի կառուցումն ավետող առաջին սեպագիր արձանագրությունը.

«Խալդի աստծու զորությամբ, Մենուան, Իշպուինիի որդին, այս ջրանցքը անցկացրեց։ «Մենուայի ջրանցք» է (նրա) անունը։ Խալդի աստծու մեծությամբ Մենուան արքա (է) հզոր, արքա մեծ, արքա Բիայնիլի երկրի, տերը Տուշպա քաղաքի»։ Հետևում է, այսպես կոչված, անեծքի բանաձևը՝ արձանագրությունը ոչնչացողների կամ եղծողների նկատմամբ[2]։ Պատահական չէ, որ Մենուայի ջրանցքի կառուցմանը վերաբերող թվով 14 արձանագրություններ[3], ինչպես ասվեց, տեղադրված են սկսած ներքին Մժնկերտից։ Այդ փաստը բացատրվում է նրանով, որ ջրանցքի շինարարությունն այստեղից սկսած զգալիորեն դժվարացել է։ Ծանր է եղել մանավանդ Արտամետ գյուղից սկսվող տեղամասը, ուր ջրանցքը անընդհատ անցնում է ձորերով ու բարձունքներով։

Ճանապարհորդներին հիացմունք է պատճառել Մենուայի ջրանցքի արտակարգ զուլալ ջուրը և նրա զարմանալի արագ ընթացքը, որն առանձնապես աչքի է զարնում ջրանցքի ակունքների մոտ գտնվող լճակից մինչև Խոշաբ գետի գերանակապ կամուրջը։

Իր վիթխարիությամբ և ջրառատությամբ Մենուայի ջրանցքը յուրահատուկ տեղ է գրավում ոչ միայն Ուրարտուի, այլև Հին Արևելքի ոռոգման սիստեմում։ Մովսես Խորենացին այն պարզապես «գետ» է անվանում[4], ճիշտ այնպես, ինչպես Ուրմիա լճից հյուսիս անցկացված Ուլխուի ուրարտական ջրանցքը ասորեստանյան թագավոր Սարգոն Բ-ը ուղղակի համեմատում է Եփրատի հետ։

Պետության մայրաքաղաքի մյուս հատվածը՝ Ռուսախինիլին, ոռոգման տեսակետից ավելի ուշ է արժանացել ուրարտացիների ուշադրությանը։ Այդ բացատրվում է արքաների նստավայրի տեղափոխությամբ Տուշպայից (Վան) Ռուսախինիլի (Թոփրախ-կալե)։

Ռուսախինիլիի ջրանցքի մասին պատմում է Ռուսա Ա-ի (մ. թ. ա. VIII դար) Քեշիշ-գյոլի («Քահանայի լիճ») մոտ թողած արձանագրությունը[5], որի համաձայն ուրարտական այդ թագավորը Վանից դեպի արևելք, Տոնի գյուղի մոտակայքում, հիմնել է արհեստական լիճ՝ «Ռուսայի ծով» անվամբ։ Լճի ջրերից օգտվելու նպատակով նրանից անցկացվել է ջրանցք, որը ջուր է մատակարարել Ռուսախինիլիին։ Արձանագրությունը հիշատակում է նաև «ամայի հողերի» մասին, որոնք ջրանցքի կառուցումից հետո ընդգրկվել են նորաստեղծ ոռոգման ցանցում։

---

1 Տե՛ս W. Belck und C. F. Lehmann, Ueber die neue armenische Keilinschriften, ZE, XXIV, II Heft, Berlin 1892, էջ 137 և հաջ.։ Lehmann-Haupt, Armenien..., II, 1, էջ 95—109։ Ս. Տեր-Ավետիսյան, Ուրարտական թագավոր Մենուաս Ա-ի կառուցած Շամիրամի ջրանցքը, «Տեղեկագիր ՍՍՀՄ ԳԱ հայկական ֆիլիալի», 1941, № 3—4։

2 Տե՛ս УКН, 45։

3 Տե՛ս նույն տեղում, 43, 56։

4 Տե՛ս Խորենացի, Ա, ժզ։

5 Տե՛ս УКН, 268։

Ռուսախինիլիի ջրանցքը, որի ընդհանուր երկարությունը կազմում է շուրջ 25 կմ, հնարավորություն է ընձեռել այստեղ հիմնելու ցանքադաշտեր, խաղողի այգիներ և արհեստական անտառներ, որոնք գտնվել են Տուշպա—Ռուսախինիլիի ճանապարհին։

Ռուսայի հիշյալ արձանագրության տվյալները հիմնովին հաստատվում են արհեստական լճի շրջակայքում հայտնաբերված նյութական մշակույթի մնացորդներով։ Դեռևս XIX դարի վերջին Վ. Բելքը այստեղ դիտել է ոռոգման սիստեմի հետքեր, որոնք լճից տանում են դեպի Կոխբանց, Աղգա և Շուշանց գյուղերն ու նրանց դաշտերը։

Քեշիշ-գյոլի շրջանում Ռուսա Ա-ի կառուցած վիթխարի ջրավազանը մինչև օրս շարունակում է իր գոյությունը։ Արհեստական այդ լճի արևմտյան մասից հոսող ջրերը ճանապարհին իրենց մեջ են առնում բնական պաշարներ և այժմ էլ շարունակում են ոռոգել Թոփրախ-կալեի շրջակայքում ընկած ցանքատարածությունները։

Բելքի և Լեման-Հաուպտի հետազոտությունները միաժամանակ պարզել են, որ Ռուսախինիլիի ջրանցքի որոշ հատվածներ ընթացել են ստորերկրյա խողովակներով[6], որոնց գոյության փաստը հաստատվում է Ռուսա թագավորի կառուցած Ուլխուի ջրանցքի մասին եղած գրավոր տվյալներով։

Ռուսա Ա-ի ստեղծած ոռոգման ցանցի հաջորդ տեղամասը ընկած է եղել Ուրմիա լճից հյուսիս գտնվող Սանգիբուտու նահանգի Ուլխու քաղաքի շրջանում։ Այդ մասին հետաքրքիր տվյալներ է պարունակում Ռուսա Ա-ի ժամանակակից ասորեստանյան թագավոր Սարգոն Բ-ի հայտնի վավերագիրը՝ «Լուվրի աղյուսակը»։

Ուլխուի բնակիչները,— ասված է այնտեղ,— ինչպես ձկներն են ցամաքում տոչորվում, ոչ խմում էին, ոչ էլ հագենում։ Ռուսայի կամքով այստեղ ջրանցք է կառուցվում, որի ջրերը հոսում են Եփրատի նման։ Ջրանցքի ընդհանուր հունից ճյուղավորված անթիվ առուները առատ ջուր են մատակարարում նորամշակ արտերին։ Ուլխուի հողերը, որոնք հնուց ի վեր անջրդի էին, ոռոգվում են, նրանց վրա անձրևի նման թափվում են պտուղներն ու խաղողը։ Այստեղ աճեցին սոսիներ և վեր խոյացան այլ ծառեր, որոնք ստվեր էին ձգում չորսդին և զարդարում Ուլխուի պալատը։ Երբեմնի անմշակ հողերը 300 «իմեր» բերք պարգևեցին և տեղի բնակիչները դրա պատվին ձոնեցին ուրախ «ալալու»-ներ՝ բերքահավաքի երգեր։ Ուլխուի ամայի հողերը Ռուսան վերածեց մարգագետինների, որոնք փարթամորեն կանաչում էին տարեմուտին. խոտը և արոտավայրը չէին վերանում ոչ ամռանը, ոչ էլ ձմռանը։ Անասունների համար նրանք դարձան հիանալի արոտատեղիներ։ Իր սրտի ցանկությամբ ուրարտական արքան ջրանցքի ափին կառուցեց պալատ, որին շրջապատող նոճիները անուշ բույր էին տարածում։

Ջրանցքի ստորերկրյա խողովակները ասորեստանցիները «ցույց են տալիս արևին», այսինքն՝ քարուքանդ են անում, իսկ քաղաքի հաստաբուն ծառե-

---

6 Տե՛ս *К. Ф. Леман-Хаупт*, Вступительная лекция по истории и культуре халдов, «Труды Тбилисского гос. университета», VI, 1938, էջ 255—256։

*ըը՝ Ռուսայի պալատի զարդարանքը, կտրտում են, փայտակույտերի վերածում և կրակի ճարակ դարձնում[7]։*

*«Լուվրի աղյուսակը» չի ակնարկում, թե ջրային ինչ պաշարներից է սնվել Ուլխուի ջրանցքը։ Սակայն կարելի է ենթադրել, որ այդպիսի աղբյուր ջրանցքի համար կարող էր ծառայել Արաքսի վտակներից մեկը՝ Կարմիր (Կոտոր) գետը։*

*Վանա լճի հարավային ափին մեծ աշխատանքներ է կատարել Մենուան։ Աղթամարի արձանագրության համաձայն, ջրանցքը այստեղ ինչ-որ գետից հասցվել է մինչև Երինու երկիրը և Մենուախինիլի քաղաքը, որի հետևանքով Ուիշի քաղաքը և ամբողջ Աիդու (Այդու) նահանգը ընդգրկվել են նորաստեղծ ոռոգման ցանցի մեջ։*

*Վանա լճի հյուսիսային ափերը շատ ավելի բարենպաստ աշխարհագրական ու կլիմայական պայմաններ են ունեցել բնակչության երկրագործական և այգեգործական զբաղմունքի համար։ Այդ պատճառով էլ ուրարտական թագավորները մեծ ուշադրություն են դարձրել այս տերիտորիաների ոռոգմանը։ Այդ մասին են պատմում Բերկրիում և Արճեշի շրջանում հայտնաբերված արձանագրությունները[9]։*

*Բերկրիի ջրանցքը, ըստ երևույթին, սնվել է Վանա լիճը թափվող Բենդիմահի գետից, իսկ Արճեշի շրջանում անցկացված ջրանցքներին իբրև աղբյուր ծառայել է Կալիալա գետը և նրա հիմքի վրա Արգիշտի Բ-ի կողմից կառուցված արհեստական լիճը։ Արձանագրությունները հիշատակում են, որ մինչև արհեստական լճի և ջրանցքների կառուցումը այստեղ հողը եղել է ամայի, սակայն հետագայում ստեղծվել են ցանքադաշտեր, պտղատու և խաղողի այգիներ[10]։*

*Արածանիի ավազանը հնուց ի վեր աչքի է ընկել իր բերրի հողերով և հարուստ ջրային պաշարներով։ Խորխորյան տարեգրության և Արծվաբերդի արձանագրության[11] վկայությամբ, ոռոգման հիմնական աղբյուրը այստեղ եղել է Դաինալա (Արածանի) գետը, որի աջ և ձախ ափերից էլ անցկացվել են ջրանցքները՝ Տուարածիի (Տուարածատափ) և Ալիայի (Աղիովիտ) ոռոգման կարիքները բավարարելու համար։ Այնուհետև, մի ամբողջ շարք արձանագրություններ լույս են սփռում ուրարտացիների կողմից կազմակերպված համատարած ջրանցքաշինության վրա՝ Մանազկերտի շրջանում։ Այստեղ առանձնապես աչքի է ընկել Մենիզաինի, Ուկուանի, Զուգուխե, Իրնունի և Աբասինի բնակավայրերին պատկանող հողատարածությունների ջրային ցանցը։*

*Արարատյան բերրի դաշտավայրում ոռոգման աշխատանքներ են ձեռնարկվել հատկապես Արգիշտիխինիլի և Թեյշեբաինի վարչա-տնտեսական կենտրոններին հարող տերիտորիաներում։*

*Արգիշտի Ա-ի արձանագրությունները պատմում են Արաքսի ձախ ափին՝ Արգիշտիխինիլիի շրջակայքում ծավալված ջրանցքաշինության մասին[12]։ Այդպիսի ջրանցքների թիվը այստեղ հասել է հինգի, որոնք բոլորն էլ սնվել են*

---

7 *Տե՛ս* АВИИУ, *49 (199)։*

8 *Տե՛ս* УКН, *62։*

9 *Տե՛ս նույն տեղում, 57, 275, 276։*

10 *Տե՛ս Н. В. Арутюнян,* Земледелие и скотоводство Урарту, *էջ 31—36։*

11 *Տե՛ս* УКН, *58, 127։*

12 *Տե՛ս նույն տեղում, 127, 136, 137։*

Արաքսի ջրից։ Դրանց գոյությունը հաստատվում է նաև պահպանված նյութական մշակույթի մնացորդներով։ Ուրարտական մայր առուն այստեղ սկիզբ է առել Արաքսի ձախ ափին ընկած Կարակալայի ավերակների մոտերքից և, այնուհետև, ճյուղավորվել Արարատյան դաշտավայրում կամ ուրարտական Ազա երկրում։

*Արարատյան դաշտում աչքի է ընկնում նաև Ռուսա Բ-ի կառուցած Ումեշինի ջրանցքը*[13], որը սկիզբ է առնում Իլդարունիա (այժմ՝ Հրազդան) գետի՝ Կարմիր բլուրին հանդիպակաց ափից, կտրում ժայռափոր թունելը և այնուհետև ընթանում Երևան—Էջմիածին խճուղուն զուգընթաց[14]։

**Երկրագործություն:** *Հայկական լեռնաշխարհի չորային կլիմայական պայմաններում ոռոգումը միակ հնարավոր նախապայմանն էր երկրագործության զարգացման համար։ Ուստի պատահական չէ, որ Ուրարտական ժամանակաշրջանում երկրագործական զարգացած տերիտորիաներ են դառնում հենց այն շրջանները, որոնք ընդգրկված էին ստեղծված ոռոգման ցանցի մեջ։*

*Երկրագործության ինտենսիվ զարգացման շրջաններից մեկը Վանա լճի շրջակայքն էր, առանձնապես նրա արևելյան ափի, Տուշպա-Ռուսախինիլի քաղաքի և Մենուայի ու Ռուսայի ջրանցքներին հարող տարածությունները։ Լճի հարավային ափին աչքի էր ընկնում Աիդու մարզը, իսկ հյուսիսում՝ Բերկրիի և Արճեշի շրջաններում անցկացված ջրանցքների ավազանները։ Այստեղ ընդարձակ տարածությունների վրա հիմնվում են ցանքադաշտեր։*

*Հացահատիկի պաշարները կուտակվում են շտեմարաններում, որոնց տարողությունները չափվում են մի քանի հազար* կապի-*ներով (հայկ. կապի՞ճ)։ Այդպիսի շտեմարաններ կառուցվում են Վանում, Աստվածաշենում և այլուր։ Թոփրախ-կալեի (Ռուսախինիլի) պեղումների ժամանակ հայտնաբերվել են հողամշակման և բերքահավաքի գործիքներ (երկաթե խոփեր, եռաժանիներ, մանգաղներ), հացահատիկ և այլ մթերքներ պահելու կավե ամաններ*[14]։

*Ուրարտական ժամանակաշրջանում երկրագործությունը վերելք է ապրում նաև Ուրմիա լճի հյուսիսային ափերի մոտակայքում՝ Սանգիբուտու նահանգի Ուլխուի ջրանցքին հարող տերիտորիաներում։ Այստեղ առկա որոշ ցանքադաշտերից («Լուվրի աղյուսակի» տվյալների համաձայն) Ռուսա Ա-ը հավաքում էր հացահատիկի առատ բերք։ Սանգիբուտու նահանգը ընդհանրապես իր 21 քաղաքներով և նրանց շրջակա 146 բնակատեղիներով աչքի էր ընկնում ցորենի և գարու անթիվ շտեմարանների արտակարգ առատ պաշարներով։*

*Երկրագործությամբ էին զբաղվում նաև Ուրմիա լճից հյուսիս-արևմուտք ընկած Արմարիլի (Վասպուրական) նահանգում, որը նույնպես հայտնի էր հացահատիկի իր հարուստ շտեմարաններով։ Արմարիլիից ետ չէին մնում Ուրմիայի արևելյան ափերին գտնվող Սուրի և Ուիշդիշ, հարավում՝ Մեսսի զարգացած երկրագործական մարզերը։*

*Երկրագործական մյուս կենտրոնները ընկած էին Տիգրիսի և նրա վտակների ջրավազաններում։ Այստեղ առանձնապես հայտնի էին Նիրբուն, Խաբխին, Բիտ-Զամանին, Շուպրիան և Ուայաիսը։*

---

13 *Տե՛ս նույն տեղում, 281։*

14 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 135։*

Երկրագործական մի ուրույն մարզ էր Արածանիի ավազանը, առանձնապես Մանազկերտը և նրան հարող շրջանները, որոնք ոռոգվում էին արհեստական ջրանցքներով։ Հացահատիկի առատ պաշարները այստեղ ևս կուտակվում էին կառուցված շտեմարաններում։ Սեպագիր աղբյուրներից[15] հայտնի են Բաղնոցում և նրա շրջակայքում շինված թվով երեք վիթխարի շտեմարանները, որոնց ընդհանուր տարողությունը կազմում է ավելի քան 67 հազար «կապի»։ Իրենց չափերով սրանք յուրահատուկ տեղ են գրավում Վանի թագավորության հացահատիկի շտեմարանների մեջ։ Արածանիի հովտի բնակչության երկրագործական զբաղմունքի մասին հետագայում հիշատակում է նաև Քսենոփոնը[16]։

Կարսի մարզում հացահատիկի իր հարուստ շտեմարաններով աչքի էր ընկնում Աշտուխինին[17], իսկ նրանից արևելք, պատմական Շիրակում՝ Էրիախին[18]։ Վերջինիս հացահատիկի առատ պաշարների մասին հետագայում հիացմունքով է խոսել պատմահայր Խորենացին. «Դու, ասում են, Շարայի որկորն ունես, բայց մենք Շիրակի ամբարները չունենք»[19]։ Երկրագործության զարգացումը Շիրակում հավաստվում է նաև ուրարտական դարաշրջանին վերաբերող հողամշակման և բերքահավաքի գործիքներով[20]։

Ուրարտուի երկրագործական ամենախոշոր օջախներից մեկը Ազա երկիրն էր՝ Արարատյան դաշտավայրը։ Հայտնի են նրա ցանքադաշտերը[21], Արգիշտիխինիլիի և Թեյշեբաինիի հացահատիկի շտեմարանները, Էրեբունիի վեց պահեստները՝ 56338 «կապի» հացահատիկի տարողությամբ[21ա]։ Հատկանշական է, որ Վանի թագավորության կենտրոնական մասից հայտնի հինգ շտեմարաններ ունեցել են 93.765 «կապի» տարողություն։

Թեյշեբաինիի պեղումներով ի հայտ բերված հարուստ հնագիտական նյութերը հնարավորություն են ընձեռում ամբողջական պատկերացում կազմելու ոչ միայն Արարատյան դաշտավայրի, այլև ընդհանրապես Ուրարտական պետության երկրագործության հետ կապված բազմաթիվ հարցերի մասին։

Պեղածո նյութերի մեջ մեծ տեղ են գրավում ցորենի, գարու, կորեկի և քունջութի մնացորդները։ Հատկանշական է, որ Թեյշեբաինիի հացահատիկի շտեմարանների ընդհանուր տարողությունը, Բ. Բ. Պիոտրովսկու հաշվումներով, կազմել է շուրջ 750 տոննա[22]։

Մ. Գ. Թումանյանը պարզել է, որ այն ժամանակ Արարատյան դաշտավայրում մշակվել են մերկահատիկ ցորենի մի քանի տեսակներ, որոնց հիմնական մասը կազմել է, այսպես կոչված, փափուկ (կակուղ) ցորենը։ Նյու-

---

15 Տե՛ս K. Balkan, Ein urartäischer Tempel auf Anzavurtepe bei Patnos und hier entdeckte Inschriften, „Anatolia", 5(1960), էջ 124, ինչպես նաև УКН 162։

16 Տե՛ս Xen., Anab., IV, 7—8։

17 Տե՛ս УКН, 130։

18 Տե՛ս նույն տեղում, 155 C, 26—31։

19 Խորենացի, Ա, ժը։

20 Տե՛ս А. А. Мартиросян, О древнем поселении около Ленинакана, ИАНАОН, 1952, № 10, էջ 87։

21 Տե՛ս УКН, 142. Н. В. Арутюнян, Новая урартская надпись из Давти-блура, ВДИ, 1966, № 3, էջ 103։

21ա Տե՛ս Н. В. Арутюнян, К. Л. Оганесян, Новые урартские надписи из Эребуни, ВДИ, 1970, № 3, էջ 107—112։

22 Տե՛ս Б. Б. Пиотровский, Искусство Урарту, Л., 1962, էջ 40—41։



Գինու մառան։ Թեյշեբաինիի միջնաբերդ

թերի մեջ ի հայտ է բերվել նաև հնագույն ծագում ունեցող հազվագյուտ հանդիպող կլորահատիկ ցորենի տեսակը[23]։

Ուրարտական գարիները բազմաշարք են և իրենց հիմնական մասով մերկահատիկ։ Դրանց կողքին հանդիպում են նաև բազմաշարք գարիների թաղանթավոր ենթատեսակներ։ Մերկահատիկ գարիները, Մ. Գ. Թումանյանի կարծիքով, աննշան չափով են տարբերվել ցորեններից, սակայն նրանցից շատ ավելի խոշոր են եղել և խոնավ կլիմայական պայմաններում հարուստ բերք են տվել։ Ուստի միանգամայն հավանական է, որ նրանք հիմնականում մշակված լինեն լեռնային շրջաններում[24]։

Քունջութը Ուրարտուում օգտագործել են ձեթ պատրաստելու համար։ Պեղումների ընթացքում հայտնաբերվել են այդպիսի արհեստանոցներ՝ համապատասխան սարքավորումներով։ Վերամշակումից հետո մնացած քուսպը, հավանաբար, օգտագործվել են իբրև անասնակեր և վառելանյութ։ Իսկ կորեկը և գարին Ուրարտուում ծառայել են ոչ միայն որպես սննդանյութ, այլև խմիչքներ պատրաստելու հումք։

Կարմիր բլուրի պեղումների ժամանակ հայտնաբերվել են նաև երկրագործական գործիքներ՝ երկաթե բահեր, մանգաղներ, եռաժանիներ, բրիչներ, ուրագներ և այլն։ Մթերքների վերամշակման գործիքներից ամենուրեք հայտնի են սանդերը, հավանգները, երկանքները[25]։

Այգեգործություն և խաղողագործություն: *Ուրարտուում այգեգործության և խաղողագործության գոյությունը հավաստվում է ինչպես գրավոր աղբյուրներով, այնպես էլ հնագիտական նյութերով։ Երկրագործական այդ ճյուղերի զարգացումը նույնպես պայմանավորված էր արհեստական ոռոգման հնարավորությամբ, այդ պատճառով էլ Ուրարտուի այգեգործության և խաղողագործության օջախները կենտրոնացված էին արհեստական լճերին ու ջրանցքներին հարող շրջաններում։*

Երկրագործության այս ճյուղերն առանձնապես լավ են զարգացել Ուրարտուի մայրաքաղաք Տուշպա-Ռուսախինիլիի շրջակայքում։ Այդ գործում հսկայական դեր են խաղացել Մենուայի և Ռուսա Ա-ի ջրանցքները։ Պատահական չէ, որ «Մհերի դուռն», «Քեշիշ-գյոլի» և Սզգայի արձանագրությունները պատմում են Վանից արևելք ընկնող պտղատու և խաղողի այգիների, գինու մառանների մասին[26], իսկ Կատեպանց գյուղում տեղադրված արձանագրությունը Մենուայի ջրանցքի մոտ եղած «Թարիրիախինիլի» կոչված խաղողի այգու մասին[27]։

Թոփրախ-կալեից, Հայկաբերդից և Շուշանցից ծագող հնագիտական նյութերը ևս հավաստում են այստեղ առկա խաղողագործության և գինեգործության բարձր մակարդակը։ Հայտնաբերվել են գինու վիթխարի կարասների բազմա-

---

23 Տե՛ս *М. Г. Туманян,* Культурные растения урартского периода в Арм. ССР. ИАНАОН, 1944, № 1—2, էջ 73—76, նույնի՝ Избранные труды, Ереван, 1957, էջ 164։

24 Տե՛ս *М. Г. Туманян,* Основные этапы эволюции ячменей в Армении ИАНАБСН, հատ. I, 1948, № 1, էջ 73—74։

25 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Ванское царство, էջ 133—142։

26 Տե՛ս УКН, 268, 311։

27 Տե՛ս նույն տեղում, 111։

թիվ բեկորներ, որոնց վրա սեպագրով ու հիերոգլիֆներով արտահայտված են նրանց տարողության չափերը։ Մենուայի ջրանցքի հիման վրա Տուշպա-Վանում տնկված պտղատու և խաղողի այգիների մասին հետագայում պատմում է նաև Խորենացին. «Քաղաքի բոլոր՝ արևելյան, հյուսիսային և հարավային կողմերը զարդարում է (իբրև թե Շամիրամը—հեղ.) դաստակերտներով, վարսագեղ սաղարթախիտ ծառերով, զանազանակերպ պտուղներով և տերևներով, և այնտեղ տնկում է բազմաթիվ առատաբեր և գինեբեր այգիներ»[28]։

Այգեգործությամբ և խաղողագործությամբ էին զբաղվում նաև Վանա լճի հարավային ափերին հարող որոշ տերիտորիաներում՝ Այյադու և Ուայախս մարզերում։

Սեպագիր աղբյուրների տվյալների համաձայն, այգեգործությամբ և խաղողագործությամբ աչքի են ընկել նաև Վանա լճի հյուսիս-արևելյան ու հյուսիսային ափերին և Արածանիի վերին հոսանքներում ընկած մի քանի շրջաններ։ Այդ մասին պատմում են Գյուզակում, Արճեշի մոտակայքում և այլուր հայտնաբերված արձանագրությունները[29]։ Բացի այդ, հայտնի է Մանազկերտից դեպի հյուսիս՝ Բոստան-կայայում կառուցված գինու վիթխարի մառանը (շուրջ 220 հազար լիտր տարողությամբ), որն իր չափերով զիջում է միայն Կարմիր-բլուրի մառաններին[30]։ Այգեգործությունը և խաղողագործությունը Արածանիի վերին հոսանքներում շարունակել է մնալ տեղի բնակչության սիրված զբաղմունքը նաև անտիկ և վաղ հայկական ժամանակաշրջանում, որի մասին հիշատակում են Քսենոփոնը, Մովսես Խորենացին և Փավստոս Բուզանդը[31]։

Ուրմիա լճի հյուսիսային ափերին հարող շրջաններում այս տեսակետից առավել աչքի է ընկել Սանգիբուտու նահանգը՝ Ուլխու քաղաքով։ Ուրարտական արքա Ռուսա Ա-ի ջրանցքին հարող հսկայական տարածության վրա փարթամորեն աճել են պտղատու և խաղողի այգիներ։ Խաղողի առատ բերքը հնարավորություն է ընձեռել Սանգիբուտուում ամենուրեք զբաղվելու նաև գինեգործությամբ։ Ասորեստանյան թագավոր Սարգոն Բ-ի պատկերավոր արտահայտությամբ՝ «պտուղները և խաղողը թափվում էին հորդառատ անձրևի նման», իսկ «բուրումնավետ գինին հոսում էր հանց գետի ջուր»[32]։

Այգեգործությունը եղել է նաև Ուրմիա լճից հյուսիս-արևմուտք ընկած Արմարիլի (Վասպուրական) նահանգի բնակիչների զբաղմունքի առարկան[33]։ Լճի արևմտյան ափերին խաղողագործությունը և գինեգործությունը զգալի տեղ են գրավել Գիլզանի տնտեսության մեջ[34], և հարավային ու արևելյան ափերին հարող Մանայի թագավորությունում։

Հարավում ընկած խաղողագործական-գինեգործական շրջանները կենտրոնացված էին վերին Տիգրիսի ու նրա վտակների ջրավազաններում։ Այստեղ,

---

28 Տե՛ս Խորենացի, Ա, ժզ։

29 Տե՛ս УКН, 65, 167, 275, 276։

30 Տե՛ս նույն տեղում, 79։

31 Տե՛ս Н. В. Арутюнян, Земледелие и скотоводство Урарту, էջ 110 և ծանոթ. 37—39

32 «Լուվրի աղյուսակ», տող 205, АВИИУ, 49 (213)։

33 Տե՛ս «Լուվրի աղյուսակ», տողեր 270—276։

34 Տե՛ս АВИИУ, 23 (II, 80), 27 (I, 27, II, 60)։

Մեծ Զաբի վերին ու միջին հոսանքներում, առանձնապես աչքի էին ընկնում Կիրրուրի նահանգը, Մուսասիրի շրջանը և Ուլմանիա բնակատեղին[35]։ Հատկանշական է, որ Մուսասիրում փարթամորեն աճող «բազմատեսակ բաղձալի պտղատու ծառերը և խաղողի վազերը», Սարգոն Բ-ի պատկերավոր արտահայտությամբ, նման էին եղեգնի, որ այնքան առատորեն այն ժամանակ աճում էր Եփրատի և Տիգրիսի ստորին հոսանքներում[36]։

Տիգրիսի ավազանի այգեգործական և խաղողագործական մյուս շրջաններն ընկած էին Կաշիարի (Տուր-Աբդին) լեռների շրջակայքում և հյուսիսից ու հյուսիս-արևմուտքից նրանց հարող տերիտորիաներում։ Այստեղ առանձնապես աչքի էին ընկնում Նիրբուն, Կիբակուն, Շուրան (Սուրան), Նիրդունը. Կատմուխին (Կուտմուխին), Բիտ-Զամանին և այլն[37]։ Եթե այս բոլորին ավելացնենք Շուպրիան, Խուբուշկիան և Խաբխին, ապա հնարավորին չափ ամբողջական կդառնա մեր պատկերացումը Ուրմիա լճի և վերին Տիգրիսի ու նրա վտակների ջրավազաններում հնագույն ժամանակներում գոյություն ունեցած այգեգործական ու խաղողագործական-գինեգործական կենտրոնների մասին։

Արարատյան դաշտավայրի այգեգործական ու խաղողագործական կենտրոնները գտնվում էին Արգիշտիխինիլիի և Թեյշեբաինիի շրջակայքում՝ Արաքսից և Հրազդանից անցկացված մի շարք ջրանցքներին հարող տերիտորիաներում։ Այստեղ ամենուրեք տնկվում են պտղատու և խաղողի այգիներ, որոնցից ստացվում է առատ բերք՝ երկրի տնտեսական կարիքները բավարարելու համար[38]։ Այդ փաստերը լիովին հաստատվում են նաև անտիկ (Ստրաբոն) և վաղ հայկական (Ղ. Փարպեցի, Մ. Խորենացի) աղբյուրներով։

Իլդարունիա (Հրազդան) գետից անցկացված ջրանցքի շրջանում առանձնապես աչքի էին ընկնում Կուարլինի հովտի նորատունկ պտղատու և խաղողի այգիները[39]։

Գրավոր աղբյուրների մատուցած տվյալների վրա զգալի չափով լույս են սփռում Էրեբունիի, Արգիշտիխինիլիի և Թեյշեբաինիի հնագիտական պեղումները։ Էրեբունիում[40] և Արգիշտիխինիլիում [41] բացվել են գինու վիթխարի մառաններ՝ խոշոր կարասներով, որոնց վրա առկա են նրանց տարողության չափերը։ Շատ ավելի հարուստ նյութեր են մատուցում Թեյշեբաինիի պեղումները, որոնք լիովին ներկայացնում են ոչ միայն Արարատյան դաշտավայրի, այլև ընդհանրապես Բիայնիլի-Ուրարտուի այգեգործության, խաղողագործության և գինեգործության համայնապատկերը։ Հատկանշական է, որ Թեյշեբաինիում պեղածո թվով ութ գինու մառանների ընդհանուր տարողությունը հասնում է

35 Տե՛ս АВИИУ, 23 (I, 54), 27 (I, 14)։

36 Տե՛ս նույն տեղում, 49 (309)։

37 Տե՛ս նույն տեղում, 23, 26։

38 Տե՛ս УКН, 136, 137. *Н. В. Арутюнян,* Новая урартская надпись из Давти-блура, էջ 103։

39 Տե՛ս УКН, 281։

40 Տե՛ս *К. Л. Оганесян,* Арин-берд, I, էջ 39, 43, նույնի՝ Раскопки урартского города Эребуни, СА, 1960, № 3, էջ 291, 294։ *А. А. Демская,* Кладовые Эребуни, «Сообщения Гос. музея изобразительных искусств им. А. С. Пушкина», М., 1968, էջ 176—182։

41 Տե՛ս *А. А. Мартиросян,* Раскопки Аргиштихинили, էջ 288։

ավելի քան 400 հազար լիտրի։ Այդ տեսակետից Ուրարտուի մեզ հայտնի գինեգործական կենտրոնների մեջ Թեյշեբաինին առայժմ գրավում է միանգամայն յուրահատուկ տեղ։

Թեյշեբաինիի պեղումները հնարավորություն են ընձեռում պատկերացում կազմելու նաև Ուրարտուում աճեցված խաղողի տեսակների և նրա մշակման եղանակների մասին։ Պեղածո մնացորդներում առանձնապես աչքի են ընկնում Ոսկեհատ (Խարջի), Մսխալի (Արարատ), Հաչաբաշ և սև խաղողի մի քանի տեսակներ։ Իսկ այգեգործությունը հավաստվում է պեղումներով հայտնաբերված սալորի, մանրահատիկ բալի, նռան, դեղձի, ընկույզի, խնձորի մնացորդներով։

Պեղումները հավաստում են, որ Արարատյան դաշտավայրի Ազա երկրում, ինչպես նաև Ուրարտուում ընդհանրապես, բնակչությունը զբաղվել է նաև բանջարա-բոստանային կուլտուրաների մշակությամբ։ Դրանց մեջ յուրահատուկ տեղ են գրավել ձմերուկը, սիսեռը և ոսպը։

Փաստերը վկայում են, որ Արարատյան դաշտավայրի այգեգործական և խաղողագործական կենտրոնները լիովին համապատասխանում են երկրագործական այդ ճյուղերով զարգացած ժամանակակից տերիտորիաներին[42]։

**Անասնապահություն:** Երկրագործության հետ միասին անասնապահությունը եղել է ուրարտացիների հիմնական տնտեսական զբաղմունքը։ Այդ մասին անհրաժեշտ տվյալներ են պարունակում ուրարտական և ասորեստանյան սեպագիր արձանագրությունները, ինչպես նաև Թեյշեբաինիի, Էրեբունիի և Արգիշտիխինիլիի հնագիտական նյութերը։ Ուրարտուի աշխարհագրական ու բնական պայմանների բազմազանությունը հնարավորություն էր ընձեռում միևնույն նահանգներում ու գավառներում զբաղվելու և՛ երկրագործությամբ, և՛ անասնապահությամբ։ Այդ պատճառով էլ մի ամբողջ շարք երկրագործական մարզերի տնտեսության մեջ իր տեղն է ունեցել նաև անասնապահությունը։

Վանա լճից արևելք անասնապահությունը զգալի զարգացման է հասել Արմարիլի և Սանգիբուտու նահանգներում։ Այստեղ առանձնապես աչքի է ընկել Ջըմզըմ-դաղի շրջանում առկա տաճարային տնտեսությունը, որի նվիրատվությունների շնորհիվ ստացած ամենամյա եկամուտը կազմել է 97 ցուլ, 305 ոչխար, 6 կով և 6 այծ։

«Լուվրի աղյուսակի» համաձայն, Սարգոնը խարույկների վրա այրել է Արմարիլիի «հարդը՝ անասունների կյանքը», իսկ Սալմանասար Գ-ի մի արձանագրության տվյալներով, ասորեստանցիները այդ նահանգից իբրև հարկ ստացել են խոշոր ու մանր եղջերավոր անասունների ամբողջ հոտեր և ձիերի երամակներ։

Իր հարուստ արոտավայրերով՝ Ուրմիա լճից հյուսիս մեծ համբավ է վայելել Սանգիբուտուն, որի «խոտր և արոտատեղին դադար չէին առնում ո՛չ ամռանը, ո՛չ էլ ձմռանը»։ Այստեղ ամենուրեք արածում էին անասունների հոտերը, ձիերի երամակները և ուղտերը։ «Ուլխու քաղաքի արոտատեղին» Սարգոնը

---

42 Ուրարտուի այգեգործության և խաղողագործության մասին տե՛ս Б. Б. Пиотровский, Ванское царство, էջ 142—147։ Նույնի, Кармир-блур, I, II, III. *Н. В. Арутюнян,* Земледелие и скотоводство Урарту, էջ 117—133։ Տե՛ս և Զ. Մ. Ղասաբյան, Թեյշեբայինիի (Կարմիր-բլուրի) երկրագործական մթերքների վերամշակման հարցի շուրջը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1959, № 9։

համարել է Ռուսայի «ձիերի հույսը»[43], իսկ Բարի գավառը (Ուրմիա լճի հյուսիս-արևելյան ափին)՝ «անասունների ապավենը»։

Սանգիբուտուից դեպի արևելք, Իրանական Ադրբեջանի հյուսիսային լեռնային շրջաններում ընկած էր Պուլուադի անասնապահական երկիրը, որի տերիտորիայից միայն մի արշավանքի ժամանակ ուրարտացիների քշած ձիերի քանակը հաշվվում է հազարներով, իսկ խոշոր ու մանր եղջերավոր անասուններինը՝ տասնյակ հազարներով։

Զարգացած անասնապահական և ձիաբուծական կենտրոն էր Գիլզանը[44]։

Ուրարտուի հարավ-արևելյան կողմերում անասնապահության զարգացման բարձր մակարդակով առանձնապես աչքի է ընկել Մանայի հայտնի թագավորությունը, որի խոշոր ու մանր եղջերավոր անասունների և ձիերի քանակը արձանագրություններում հաճախ հանդես է գալիս «անթիվ» կամ «անհամար»ածականներով։

Ձիաբուծությունն առանձնապես լավ է զարգանում Մանայի թագավորության՝ Ուրմիա լճի արևելյան ափերին ընկած որոշ շրջաններում։ Սրանց մեջ աչքի էին ընկնում Սուբին և Անիաշտանիան։ Ահա թե ինչ է գրում Սարգոն Բ-ը Սուբիի մասին.

«Այդ գավառում ապրող մարդիկ ամբողջ Ուրարտուում նմանը չունեն հեծելազորի համար ձիեր վարժեցնելու մեջ։ Նրա (Ռուսա Ա-ի—հեղ.) լայնատարած երկրում ծնված փոքրիկ քուռակները, որոնք աճեցվում են արքայական գնդի համար և ամեն տարի վերցվում իբրև հարկ, ուղարկվում են Սուբի գավառը, որը Ուրարտուի մարդիկ Մանայի երկիր են անվանում։ Քանի դեռ նրանց կազմվածքը չի ստուգվել, նրանց չեն հեծնում։ Մինչև չեն վարժեցնում ելքերին, պտույտներին և դարձերին, այն ամենին, ինչ անհրաժեշտ է մարտի համար, նրանք վազվզում են առանց թամքի»[45]։ Ինչ վերաբերում է Անիաշտանիա ամրոցին, ապա այն համարվում է Ռուսայի ձիերի երամակների տունը»։

Մեծ Զաբի միջին և վերին հոսանքներում անասնապահությունը լայն տարածում է գտել Կիրրուրիում, Ուլմանիայում և հատկապես Արդինի-Մուսասիրում։ Վերջինիս անասունների խոշոր հոտերի մասին պատկերացում կազմելու համար շատ կարևոր է այն փաստը, որ մ. թ. ա. 714 թվականի արշավանքի ժամանակ Սարգոն Բ-ը Մուսասիրից քշել է 100 հազար 225 գլուխ ոչխար, 920 խոշոր եղջերավոր անասուն, 692 ջորի և ավանակ։ Այս հայտնի պաշտամունքային կենտրոնի անասնապահության զարգացումը պայմանավորված էր ոչ միայն նրա սեփական հնարավորություններով, այլև ուրարտական թագավորների կողմից Խալդի աստծու տաճարին անասունների սիստեմատիկ նվիրատվություններով, որոնց թիվը հասնում է տասնյակ հազարների։

Վանա լճից հարավ, Բոխտանի հովտում, անասունների առատությամբ աչքի է ընկել Խուբուշկիան, որի խոշոր ու մանր եղջերավոր անասունների, ձիերի ու ջորիների քանակը, ասորեստանյան գրավոր աղբյուրների համա-

---

43 Տե՛ս АВИИУ, 49 (199, 213)։

44 Նույն տեղում, 22, 27 (I, 27, II, 60), 28 (174)։

45 Նույն տեղում, 49 (167)։

ձայն, «անթիվ ու անհամար էր»[46]։ Անասնապահությամբ զբաղվել են նաև Խուբուշկիայի հարավային հարևանի՝ Խաբխիի բնակիչները, որոնց տնտեսական զբաղմունքում յուրահատուկ տեղ է գրավում լծկան ձիերի բուծումը[47]։

Հարավում ընկած մյուս անասնապահական կենտրոններից հայտնի են Կումանի գավառը (Արևելյան Խաբուրի հովտում), Նիբուր (այժմ Ջուդի դաղ) և Կաշիարի (այժմ Տուր-Աբդին) լեռներում ու նրանց հարակից տերիտորիաներում ընկած մի շարք նահանգներ ու բնակատեղիներ[48]։

Կաշիարիից դեպի հյուսիս անասնապահությունը զգալի տեղ է գրավել Տիգրիսի ու Եփրատի ջրավազաններում ընկած մի շարք երկրների ու մարզերի տնտեսության մեջ։ Այստեղ առանձնապես աչքի են ընկել Նիրդունը, Կատմուխին կամ Կուտմուխին, Բիտ-Զամանին, Ալշեն (Ալզին) և Կումուխը, որոնք Հին Արևելքում հայտնի էին ձիերի ու ջորիների բազմաթիվ երամակներով, խոշոր ու մանր եղջերավոր անասունների չափազանց հարուստ հոտերով[49]։

Վանա լճից հարավ-արևմուտք անասնապահությունը զգալի մակարդակի է հասել Շուպրիա-Ուրմեում՝ Սասունի լեռներում, իսկ Արևմուտքում՝ Եփրատին աջափնյա որոշ տերիտորիաներում (Մելիտեա-Մալաթիա, Կամանու, Տաբալ)։ Պատահական չէ, որ ասորեստանյան թագավոր Ասարխադդոնը իր արձանագրություններից մեկում հատուկ տեղ է հատկացնում Շուպրիայի խոշոր ու մանր եղջերավոր անասունների հոտերի, ինչպես նաև նրանց խնամքը տանող հովիվների հիշատակությանը[50]։ Իսկ Ուրմե երկրից ուրարտացիների կողմից միայն մի անգամ քշված անասունների քանակը հասնում է ավելի քան տասը հազարի[51]։ Ինչ վերաբերում է անդրեփրատյան Մելիտեա, Տաբալ և մի շարք այլ նահանգներին, ապա նրանց անասնապահության մակարդակը հավաստվում է ուրարտական և ասորեստանյան բազմաթիվ գրավոր աղբյուրներով։ Տաբալը առանձնապես եղել է Առաջավոր Ասիայի առավել զարգացած ձիաբուծական կենտրոններից մեկը[52]։

Իբրև անասնապահության մեկ այլ կենտրոն զատվում, առանձնանում է Արածանիի վերին հոսանքում ընկած «Տուարածիի հովիտ» շրջանը[53]։ Հենց ինքը՝ այդ երկրի անունը ևս (հայկ. Տուարածատափ), ակներևաբար, լույս է սփռում նրա բնակիչների անասնապահական զբաղմունքի վրա։ Արածանիի վերին հոսանքներում անասնապահության բարձր զարգացումը հաստատվում է նաև անտիկ աղբյուրների տվյալներով[54]։ Հյուսիսում և հյուսիս-արևմուտքում ընկած մյուս անասնապահական կենտրոններն այն ժամանակ եղել են Ուրարտուի կենտրոնից բավականաչափ հեռու։ Դրանցից են Դիաուխին (հայկ. աղ-

---

46 Տե՛ս АВИИУ, 27 (II, 63) և այլուր։
47 Տե՛ս նույն տեղում, 11, 12, 21, 26։
48 Տե՛ս նույն տեղում, 20, 23, 26։ УКН, 127, II, 22։
49 Տե՛ս նույն տեղում, 23, 26։
50 Տե՛ս АВИИУ, 67։
51 Տե՛ս УКН, 155 A, 22—25։
52 Տե՛ս ԽՏ, II, 5—22, УКН, 158։ АВИИУ, 44, 54, 72։
53 Տե՛ս ԽՏ, V, 11—30։
54 Տե՛ս Xen., Anab., IV, IV, 7—9։

բյուրների Տայք), Զաբախան (հայկ. աղբյուրների Ջավախք), Տարիունին (հայկ. աղբյուրների Դարույնք) և Կուլխան (հունական աղբյուրների Կողքիս)։

Ասորեստանյան թագավոր Թիգլաթպալասար Ա-ի վկայությամբ, Դիաուխի-Դայաենին դեռևս մ. թ. ա. XII—XI դարերի սահմանագլխին հայտնի էր իր ձիերի ու ջորիների մեծ երամակներով, արոտավայրերի անթիվ ու անհամար անասուններով[55], Իսկ ուրարտական որոշ աղբյուրների համաձայն, այդ երկիրը սիստեմատիկաբար ձիեր է տրամադրել Վանի թագավորության հեծելազորին[56]։ Հատկանշական է, որ ուրարտացիների մի արշավանքի ժամանակ Դիաուխիից քշված անասունների քանակը արտահայտվում էր հսկայական թվերով՝ 4.426 ձի, 10.478 գլուխ խոշոր և 73.770 գլուխ մանր եղջերավոր անասուն։

Դեռ ավելին, պարտության դառնությունները կրելուց հետո, Դիաուխի արքան ստիպված է լինում Արգիշտի Ա-ին լրացուցիչ «նվիրել» ևս 300 գլուխ խոշոր և 10.000 գլուխ մանր եղջերավոր անասուն։ Բացի դրանից հյուսիսային այդ նահանգը պարտավորվում է հետագայում ամեն տարի ուրարտացիներին իբրև տուրք վճարել հարյուրավոր ձիեր, ցուլեր, կովեր, ոչխարներ[57]։ Այդ նահանգի անասնապահության հարաճուն զարգացումը լիովին հաստատվում է նաև հետագա շրջանի անտիկ աղբյուրներով[58]։

Ծայրագույն հյուսիս-արևմուտքում, Սև ծովին հարավ-արևելքից հարող շրջաններում, անասնապահությունը ինտենսիվ զարգացում է ապրել Կուլխա նահանգում։ Չնայած այս նահանգը խոշոր ու մանր եղջերավոր անասունների և ձիերի քանակով զիջել է վերը հիշատակված Դիաուխիին, այնուամենայնիվ, նրա անասունների գլխաքանակը ևս հասել է հազարների և տասնյակ հազարների[59]։ Հետևաբար, Կուլխան ևս կարելի է դասել Ուրարտուի անասնապահական առավել զարգացած կենտրոնների շարքը։

Հյուսիսային և հյուսիս-արևելյան այլ նահանգների անասնապահության մասին հասել են ոչ միայն գրավոր, այլև հնագիտական տվյալներ։ Ուրարտական գրավոր աղբյուրները վկայում են, որ Վանա լճից դեպի հյուսիս ընկած երկրներից անասնապահությամբ զբաղվել են Աբիլիանին (հայկ. աղբյուրների Աբեղեանք), Էթիունին, Ուդուրի-Էթիունին, Աբունին (հայկ. աղբյուրների Հավնունիք), Էրիախին (հայկ. Շիրակ), Ուիտերուխին, Իգանի-Իյանին և այլ նահանգներ։

Աբիլիանիի, Էթիունիի և մի քանի հարևան այլ երկրների տնտեսության մեջ հսկայական քանակ են կազմել մանր եղջերավոր անասունները, որոշ չափով նաև ձիերը, եթե նկատի ունենանք, որ միայն մեկ արշավանքի ժամանակ Արգիշտի Ա-ը այդ երկրներից ու մարզերից իբրև ավար քշել է 126 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն և 1280 ձի[60]։ Հյուսիսում աչքի է ընկել նաև Իգանին[61]։ Այդ տեսակետից նա զգալի չափով գերազանցել է նույնիսկ մերձուրմ-

---

55 Տե՛ս АВИИУ, 10 (IV, 43)։

56 Տե՛ս УКН, 36։

57 Տե՛ս նույն տեղում, 128, B 1, տողեր 1—16, 21—25։

57 Տե՛ս Xen., Anab., IV (V, 35, 26, 34, VII, 14)։

59 Տե՛ս УКН, 155 C, 1—16, D, 8—40։

60 Տե՛ս ԽՏ, I, 17—II, 2։

61 Իյանիի տարընթերցումը։

յան շրջանի հարուստ անասնապահական շրջաններին։ Ուրարտական ժամանակներում անասնապահական և ձիաբուծական խոշոր կենտրոն էր Սևանի ավազանը՝ տարբեր կողմերից հարող բարձրադիր լեռնային հովիտներով։ Բավական է նշել, որ այդ տերիտորիաներից (ինչպես նաև Արաքսի վերին հոսանքում ընկած որոշ շրջաններից) ուրարտական թագավոր Սարդուրի Բ-ը սոսկ մի արշավանքի ժամանակ քշել է 214 հազար գլուխ մանր, 40 հազար 353 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, ինչպես նաև 3.500 ձի[62]։ Հատկանշական է, որ Ուդուրի-էթիունիի (Սևանի ավազան) և էրիախիի (հայկ. աղբյուրների Շիրակ) անասնապահությունը, հավաստվում է ոչ միայն բազմաթիվ գրավոր աղբյուրներով, այլև հնագիտական նյութերով (ձիու բրոնզե սանձեր, խնոցիներ)։ Նույնը կարելի է ասել էթիունի ցեղային միության անասնաբուծության և անասնապահության մասին, եթե նկատի ունենանք սեպագիր աղբյուրների տեղեկությունները և խոշոր եղջերավոր անասունների կմախքների ուսումնասիրության տվյալները։

Ուրարտուի անասնապահության մասին առանձնապես հարուստ նյութ են մատակարարում էրեբունիի և Թեյշեբաինիի պեղումները։ էրեբունիում հայտնաբերվել են ոչխարների, այծերի, խոշոր եղջերավոր անասունների, սմբակավորների, խոզերի և այլ ընտանի կենդանիների, ինչպես նաև վայրի այծի ու նապաստակի ոսկորների մնացորդներ։ Վերջիններս վկայում են, որ ուրարտացիները այստեղ զբաղվում էին որսորդությամբ, որի մի շարք տեսարաններ հիանալի պահպանվել են էրեբունիի ստորոտում եղած Նոր-Արեշի դամբարանադաշտում հայտնաբերված բրոնզե գոտիների և միջնաբերդի որմնանկարներում[63]։

Շատ ավելի հարուստ են Ուրարտուի անասնապահությանը վերաբերող Թեյշեբաինիի հնագիտական նյութերը։ Այստեղ, միջնաբերդի պեղումներով, հայտնաբերվել են խոշոր ու մանր եղջերավոր անասունների, ձիերի, ավանակների և ընտանի այլ կենդանիների կմախքներ, ոսկորների ու գանգերի մնացորդներ, ձիու սարքեր և այլն։ Հնագիտական նյութերի մեջ առանձնապես առատ են խոշոր եղջերավոր անասունների ոսկրային մնացորդները։ Ինչ վերաբերում է մանր եղջերավոր անասնապահությանը, ապա այն անցյալում, ինչպես և այժմ, չնչին տեղ է գրավել Արարատյան դաշտավայրի բնիկների տընտեսության մեջ։ Այդ հաստատվում է նաև Թեյշեբաինիի քաղաքային մասի նախաուրարտական շերտերի պեղումների արդյունքներով։

Ինչպես տեսնում ենք, Ուրարտուի անասնապահության մեջ հիմնական տեղը բռնում էին խոշոր ու մանր եղջերավոր անասունները։ Ըստ այդմ մանր եղջերավոր անասունների գլխաքանակը մի քանի անգամ գերազանցել է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակին։

Թե որքան մեծ տեղ է գրավել անասնապահությունը Ուրարտուում և հարևան երկրներում, կարելի է պատկերացում կազմել թերևս այն փաստից, որ

---

62 Տե՛ս УКН, 155F, 6—81։

63 Տե՛ս Հ. Մարտիրոսյան, Հ. Մնացականյան, Նոր-Արեշի ուրարտական կոլումբարին, Տեղ. ՀԳԱՀԳ, 1958, № 10, էջ 69—84։ К. Л. Оганесян, Арин-берд, I, նկ. 33, 36, 38 և այլն։

ուրարտական թագավորները, ոչ լրիվ տվյալներով, նվաճված երկրներից քշել են ավելի քան 326 հազար խոշոր եղջերավոր և մեկ միլոն 134 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն։

Խոշոր ու մանր եղջերավոր անասուններից հետո, տնտեսության մեջ կարևոր տեղ է գրավել ձիաբուծությունը։ Ձիերը օգտագործվում էին ոչ միայն տնտեսության մեջ, այլև ռազմական գործում։ Գրավոր աղբյուրները հավաստում են, որ ձիաբուծությունը եղել է Ուրարտուի և նրան առ ժամանակ ենթակա մի ամբողջ շարք նահանգների բնակիչների սիրված զբաղմունքը։ Այսպես, հարավում և հարավ-արևելքում ձիաբուծությամբ առանձնապես աչքի են ընկել Խուբուշկիան, Խաբխին, Կիրրուրին, Գիլզանը, Մանան, Սուբին, Բարին, արևմուտքում և հարավ-արևմուտքում՝ Շուպրիան, Մելիտեան, Բիտ-Զամանին, Նիրբուն, Նիրդունը, արևելքում՝ Սանգիբուտուն, Պուլուադին, հյուսիսում՝ Արիլիանին, Իգանին (Իյանի), Էրիախին, Էթիունին, Ուդուրի-Էթիունին։

Վերոհիշյալ առանձին խումբ երկրներից ուրարտացիների քշած ձիերի քանակը մեզ հայտնի բոլոր նվաճումների ընթացքում հասնում է մոտավորապես 34 հազարի։

Ուրարտուի և նրան ենթակա երկրների անասնապահության մեջ առանձին տեղ են ունեցել նաև ջորիները և ավանակները։ Ջորիները հիշվում են Սարդուրյան տարեգրության և Կարմիր բլուրում հայտնաբերված մի սեպագիր աղյուսակի մեջ։ Իսկ ավանակների մասին որոշ պատկերացում են տալիս Կարմիր-բլուրի հնագիտական նյութերը։ Ընտանի կենդանիների այդ տեսակների մասին համեմատաբար հարուստ տվյալներ են պահպանում ասորեստանյան սեպագիր աղբյուրները, ըստ որոնց ջորիներով և ավանակներով հայտնի էին Հայկական լեռնաշխարհի արևելքում և հարավ-արևելքում՝ Սանգիբուտուն, Մուսասիրը, Ուլմանիան, Կիրրուրին, Մանան, հարավում և արևմուտքում՝ Խուբուշկիան, Նիրբուն, Նիխրդունը, Բիտ-Զամանին, Շուպրիան, Մելիտեան, Դիաուխին։

Ուրարտուի և նրան ենթակա երկրների անասնապահության մեջ որոշ տեղ են գրավել նաև ուղտերը։ Ընտանի կենդանիների այդ տեսակը տարածում է գտել արևելքի և հարավ-արևելքի սահմանափակ թվով մարզերում՝ Ուրմիա լճի մերձափնյա երկրներում (Սանգիբուտու, Գիլզան, Մանա, Աշկայա-Խուբի, Ուգիշտի), Իրանական Ադրբեջանի որոշ տերիտորիաներում (Պուլուադի) և այլն։ Ի դեպ, սահմանափակ է եղել նաև հիշյալ մարզերի ուղտերի գլխաքանակը։ Այդ երևում է ռազմական արշավանքների ընթացքում ուրարտացիների բռնագրաված ուղտերի թվից, որի առավելագույնը չի հասնում նույնիսկ երկու հարյուրակի։ Եվ այդ այն դեպքում, երբ հիշյալ թվերը սովորաբար վերաբերում են ոչ առանձին աշխարհագրական միավորների, այլ մի շարք երկրների համատեղ։ Թե որքան սահմանափակ է եղել Ուրարտուի և նրա հարևան երկրների ուղտերի գլխաքանակը, կարելի է պատկերացում կազմել թերևս այն փաստից, որ ուրարտական թագավորների կողմից նվաճված կամ սանձահարված մարզերից քշված ուղտերի մեզ հայտնի քանակը կազմում է մեկուկես հազարից քիչ ավելի։ Ուրարտական նվաճողները, ակներևաբար, առանձնահատուկ նշանակություն են տվել ուղտերին, եթե նկատի ունենանք, որ թշնամի երկրներից



Բրոնզե սաղավարտներ Արգիշտի Ա և Սարդուրի Բ թագավորների արձանագրություններով և ռելյեֆ պատկերներով. Կարմիր-բլուր

*րշված անասունների հիշատակության մեջ նրանք սովորաբար գրավում են երկրորդ տեղը՝ ձիերից հետո*[64]*։*

*Ի մի բերելով օգտագործված նյութերը, կարելի է արձանագրել, որ ոռոգվող երկրագործությունն ու բարձր զարգացած անասնապահությունը Ուրարտուի տնտեսության հիմնական ճյուղերն էին։ Նրանց ընդհանուր մակարդակով էր պայմանավորված ոչ միայն արհեստների առաջընթացը, փոխանակությունն ու առևտուրը, այլև հասարակ ժողովրդի ու պետության բարօրությունը։*

## 2. ԱՐՀԵՍՏՆԵՐ

**Մետաղագործություն:** *Վանի թագավորության ընդարձակ տերիտորիայում հողագործությանն ու անասնապահությանը զուգընթաց բարձր զարգացման հասան նաև արհեստները։ Բրոնզի բավականին հզոր մետաղագործության առկայության պայմաններում, Ուրարտուում ավելի վաղ, քան այլ երկրներում երևան եկավ ու լայն կիրառություն գտավ երկաթը*[65]*։ Տեխնիկայի պատմությանը նվիրված աշխատություններում իշխում է այն տեսակետը, թե երկաթի մշակումը սկսվել է II հազարամյակի կեսերին՝ Ուրարտուի հյուսիսային սահմանների մոտ գտնվող խալիբների երկրում և այնտեղից աստիճանաբար տարածվել ամբողջ հին աշխարհով մեկ*[66]*։ Պնդում են, որ ուրարտական մշակույթի առանձնահատկությունը մետաղագործության բարձր զարգացումն է և նրա մոտիկությունը խեթերի ու խուրրիների ավանդույթներին։ Նրանց կարծիքով, ուրարտական մետաղյա իրերը արտահանվել են հյուսիսային Կովկաս (Մայկոպ, Կելերմես), Սիրիա և Միջագետք (Կարքեմիշ, Ասորեստան), ինչպես նաև Մարաստան, Իրան և Առաջավոր Ասիայի արևմտյան մարզերը, ընդհուպ մինչև էգեյան ծով*[67]*։*

*Եվ իրոք, Թոփրախ-կալեի, Կարմիր-բլուրի, Արգիշտիխինիլիի, Ալթըն-թեփեի, Կայալը-դերեի պեղումների ժամանակ ավելի շատ մետաղե գործիքներ ու զենքեր են հայտնաբերվել, քան Առաջավոր Ասիայի այլ պեղավայրերից։ Դրանցից առանձնապես բնորոշ են երկաթե խոփերը, բրիչի ծայրերը, մանգաղները, եղանները, կացիններն ու մուրճերը, կեռիկները, փակերի ծխնիները, նիզակի ծայրերը, դանակները ու բազմազան այլ մանր իրեր։ Կարմիր-բլուրում մեծ քանակությամբ երկաթե իրերի հետ գտնվել են նաև հազարավոր բրոնզե առարկաներ։*

*Ուրարտական մետաղագործությունն ապահովված էր տեղական հումքով։ Հատկապես երկաթի շատ հանքավայրեր կային Ուրարտուի կենտրոնական մասում։ Երկաթով հարուստ էին Մուշի, Բիթլիսի, Վանի շրջանները, ինչպես նաև Ուրմիա լճից արևմուտք ընկած լեռները*[68]*։*

---

64 *Ուրարտուի անասնապահության մասին մանրամասն տե՛ս Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 147—160։ Н. В. Арутюнян,* Земледелие и скотоводство Урарту, *էջ 139—195։*

65 *Տե՛ս Б. А. Тураев,* История Древнего Востока, II, СПб., 1914, *էջ 53։*

66 *Տե՛ս M. France Lanord,* Evolution de la technique du fer en Europe occidentale de la préhistoire au Haut Moyen Age, Nancy, 1956, *էջ 27—43։*

67 *Տե՛ս F. Schachermeyer,* Tuschpa. „Reallexikon der Vorgeschichte", XII, Berlin, 1929.

68 *Տե՛ս Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 163—164։*

Պղնձի մշակումը հայտնի էր Խնուսի շրջանում, Տիգրիսի ակունքների մոտ, Երզնկայից հարավ ընկած լեռներում, ինչպես նաև Ուրմիա լճից արևմուտք, Մուսասիրում, նշանավոր Քելիշին կոթողի մոտակայքում։ Այսպես, Մուսասիրի տաճարում ու պալատում պահվում էին մեծ քանակությամբ բրոնզե առարկաներ (մոտ 114 տոննա ընդհանուր քաշով), այն դեպքում, երբ երկաթե առարկաները համեմատաբար քիչ էին։

Ասորեստանյան տարեգրություններում հաղորդվում է, որ արշավանքների ժամանակ հափշտակվել է ոսկի հետևյալ քանակությամբ. Տյուրոսում՝ 4,5 տոննա, Մուսասիրում՝ մոտ 2 տոննա, Հուդայում՝ 900 կգ, Դամասկոսում՝ 600 կգ, Խաթթիում՝ 345 կգ, Տաբալում՝ 300 կգ։ Բացի այդ, Մուսասիրից տարվել է մոտ 10 տոննա արծաթ, Հուդայից՝ 24, Դամասկոսից՝ 69, Խաթթիից՝ 63 տոննայից ավելի և Տաբալից՝ 30 տոննա։ Ասորեստանյան տարեգրությունները տեղեկություններ են պարունակում նաև պղնձի, կապարի և անագի հափշտակման մասին։ Պղնձի հսկայական քանակություն (900 տոննա) է գրավվել Դամասկոսում։ Կապարով (հավանաբար նաև անագով) հատկապես հարուստ էր Շուպրիան (ներկայիս Սասունի լեռների շրջանը)։

Հարկ է նշել, սակայն, որ առանձին պետությունների ու երկրների միջև եղած մշտական կապերի պայմաններում մետաղագործությունը Հին Արևելքում կարող էր զարգանալ նաև անկախ հանքավայրերի անմիջական առկայությունից։ Արդեն III հազարամյակի վերջին, ինչպես ցույց են տալիս ասորեստանյան գաղութների արխիվները, Առաջավոր Ասիայում զարգացած առևտուր կար, որում փողի դերը կատարում էին մետաղները (հիմնականում արծաթը, ավելի հազվադեպ՝ կապարը, անագը և պղինձը)[69]։ Փոխանակությունից բացի, կար նաև մետաղ ձեռք բերելու մի այլ եղանակ՝ հափշտակումը պատերազմների ժամանակ, որը խիստ բնորոշ էր Հին Արևելքի ստրկատիրական պետություններին[70]։

Տարեգրությունները ամենից քիչ տեղեկություն տալիս են երկաթի մասին, սակայն դրա պաշարներով առաջին տեղում Դամասկոսն է (150 տոննա), որը Հին Արևելքի մետաղագործության խոշորագույն կենտրոններից մեկն էր։ Գրավոր աղբյուրները վկայում են, որ ասորեստանցիները Առաջավոր Ասիայի երկրներից ստանում էին գլխավորապես ձույլ ոսկի, արծաթ, պղինձ, կապար (անագ) և երկաթ։

Բրոնզաձուլություն: *Մեզ հասած ուրարտական բրոնզե իրերը շատ բազմազան են։ Հատկապես հարուստ են ներկայացված ուրարտական սպառազինության առարկաները։*

Այդ մասին առանձնապես արժեքավոր տեղեկություններ է պարունակում «Լուվրի աղյուսակը»՝ Սարգոնի 714 թվականի արշավանքի նկարագրությունը, որ պատմում է Մուսասիրի գրավման մասին։ Այստեղ Խալդի աստծու տաճարում ասորեստանցիները հափշտակում են բազմաթիվ բրոնզե իրեր. 25122

---

69 Տե՛ս *B. Landsberger*, Assyrische Handelskolonien in Kleinasien..., Leipzig, 1925, էջ 20—25։

70 Տե՛ս *Н. Б. Янковская*, Некоторые вопросы экономики Ассирийской державы. ВДИ, 1956, № 1, էջ 28—46։

«ծանր ու թեթև» վահան, 1514 «ծանր ու թեթև» նիզակ, 30412 (?) «ծանր ու թեթև» սուր, 607 «ծանր ու թեթև» անոթ և, բացի այդ, բրոնզե աղեղներ (կապարճներ) ու հեծելադրոշներ[71]։

Ուրարտացիների IX դարի սպառազինությունը լավ հայտնի է Սալմանասար Գ-ի Բալավաթյան դարպասի բարձրաքանդակներից։ Ուրարտական ռազմիկները հագած են կարճ հագուստ՝ լայն գոտիով, զինված են կարճ նիզակով ու աղեղով, նիզակավորները ձեռքերին ունեն ոչ մեծ կլոր վահաններ։ Ռազմիկները կրում են փետուրներով զարդարված սաղավարտներ, որոնք, ինչպես և ամբողջ սպառազինությունը, հիշեցնում են խեթական նմուշները։

VIII դարում ուրարտական սպառազինության ձևը մոտենում է ասորեստանյանին։ Հենց այդպիսին են Թեյշեբաինի քաղաքի միջնաբերդի պեղումներից հայտնաբերված ուրարտական սպառազինության բազմաթիվ իրերը, որոնց վրա հաճախ լինում են ուրարտական թագավորների սեպագիր արձանագրություններ։ Գտնված բրոնզե սաղավարտների ձևը համընկնում է Թեբեում հայտնաբերված ասորեստանյան սաղավարտի ձևին[72]։

Կարմիր-բլուրում գտնվել է դեկորատիվ նշանակություն ունեցող տասնչորս խոշոր բրոնզե վահան՝ VIII դարի ուրարտական թագավորների (գերազանցապես Արգիշտի Ա-ի) սեպագիր ձոնական արձանագրություններով։ Վահաններն ունեցել են ուռուցիկ միջնամաս և լայն, տափակ եզրեր։

Կարմիր-բլուրում հայտնաբերված Արգիշտի Ա և Սարդուրի Բ թագավորների ձոնական արձանագրություններ ունեցող սաղավարտներից ու կապարճներից շատերը ուրարտական արվեստի նշանավոր հուշարձաններ են։

Ուրարտական բրոնզագործության բարձրարվեստ իրերը աչքի են ընկնում ոչ միայն իրենց գեղեցկությամբ ու որակով, այլև պատրաստման տեխնիկայով։ Յուրաքանչյուր առարկային հատուկ են այնպիսի գծեր, որոնք նրան տարբերում են համանման, առաջին հայացքից նույնատիպ, առարկայից։ Պարզ է դառնում, որ դրանք բրոնզից ձուլված են մոմե մոդելների միջոցով։

Ձուլման այս թանկարժեք եղանակով, որը հնարավորություն էր տալիս մի մոդելից ստանալ միայն մեկ մետաղյա արձանիկ, ձեռք էր բերվում առարկայի խիստ նուրբ մշակում, մի բան, որ անհնար էր իրականացնել դրվագման կամ հատիչի միջոցով։ Այս ձևով ձուլված ուրարտական արձանիկները չունեն կարերի տեղեր, որոնք առաջանում են փեղկվող կաղապարի մեջ ձուլելիս և աչքի են ընկնում այն նրբությամբ, որը հնարավոր է միայն պլաստիկ զանգվածներից քանդակելու դեպքում։

Ձուլելուց հետո առարկաները երբեմն զարդարվում էին լրացուցիչ դրվագներով, որն իր նշանակությունն ուներ նաև դրանք ոսկե թիթեղով պատելիս։ Ոսկեպատման եղանակը շատ պարզ էր. առարկաները պրկում էին ոսկե բարակ թերթիկով, որի ծայրերը ամրացվում էին հատուկ ակոսիկներում։ Իր առաձգականության շնորհիվ, ոսկին կրկնում էր բրոնզե հիմքի քանդակազարդի բոլոր մանրամասնությունները։

---

[71] *Տե՛ս Fr. Thureau-Dangin*, Une relation de la huitième campagne de Sargon, տողեր 392—394։

[72] *Տե՛ս W. M. Flinders Petrie*, Six temples at Thebes. London, 1897, տախտ. XXI.

Ուրարտական մետաղյա առարկաների մեջ հատուկ խումբ են կազմում կաթսաների բրոնզե բռնակները, որոնք մարդկային, մեծ մասամբ՝ կանացի իրանով թռչուններ են[73]։ Դրանց առանձին մասերը և մանավանդ թևերի միջև տեղավորված սկավառակը ցույց են տալիս, թե հնարավոր է, որ դրանք արևի աստվածության պատկերներ լինեն։

Բրոնզե խոշոր անոթների գոյությունը վկայված է Սարգոնի 714 թվականի արշավանքի նկարագրության մեջ և այլ հուշարձաններում։ Մուսասիրի տաճարից գրավված ավարի թվարկման մեջ, օրինակ, հիշատակվում է «մի մեծ բրոնզե անոթ 80 չափ ջրի տարողությամբ, բրոնզե կափարիչով, որը Ուրարտուի թագավորները խալդիի առջև զոհաբերություն կատարելիս լցնում էին հեղման գինով»։ Սարգոնի պալատի բարձրաքանդակի վրա, Մուսասիրի տաճարի գրավման տեսարանում, տաճարի առջև պատկերված են եռոտանու վրա կանգնած երկու խոշոր կաթսաներ։ Հարուստ են ներկայացված և բրոնզե ձիասարքերը, որոնք բաղկացած են ճակատի թիթեղիկից, այտի վահանակից, լկամից ու զանգակներից։ Ձիասարքի առարկաներից մի քանիսն ունեն ուրարտական թագավորների անուններով սեպագիր մակագրություններ[74]։

Ուրարտուի ժամանակներից մեզ հասել են նաև մեծ քանակությամբ բրոնզե պարզ իրեր՝ ապարանջաններ, ճարմանդներ, դաշույններ, աղեղի ծայրեր և այլն, որոնք ձուլվել են երկփեղկ կաղապարներում։

Կաղապարներում ձուլելուց բացի, բրոնզե առարկաների մի մասը պատրաստվել են կամ միայն դարբնելու, կամ կռած թերթերը միմյանց գամելու եղանակով։ Հայտնի են բրոնզե թերթավոր գոտիները՝ նախշերով ու պատկերներով զարդարված, որոնք կատարված են դրոշմման ու հետագա փորագրման եղանակով։

Կարմիր-բլուրում գտնվել են անոթներ ու թասեր, որոնք ամբողջությամբ կռած են պղնձե թերթից կամ սեղմված են հատուկ դազգահի վրա։

Թոփրախ-կալեում գտնված մետաղե իրերից հարկ է հիշատակել ներքևի մասում գդալաձև զարդերով (ելուստներով) բրոնզե թասը, որը մտնում է հին-արևելյան ու անտիկ մետաղե անոթների այն խմբի մեջ, որոնք հայտնի են փիալա անունով։ Կարմիր-բլուրում հայտնաբերվել են ամենաբազմազան ձևերի մի քանի փիալաներ։

Բրոնզե ամբողջական թերթից կոփված անոթներից բացի, կան նաև մի քանի մասերից՝ ինչպես կռածո, այնպես էլ ձուլածո, իրար գամված անոթներ[75]։

**Ոսկերչություն**: Մեզ հայտնի ուրարտական ոսկե իրերը քանակով շատ քիչ են։ Թոփրախ-կալեի պեղումների ժամանակ գտնվել է միայն մի մեդալյոն, որն

---

73 Մորուսավոր ֆիգուրներից մեկը ծագում է Օլիմպիայից (տե՛ս A. Furtwängler, Die Bronzen und die übrigen kleineren Funde von Olympia. „Olympia", IV, Berlin, 1890, № 783), իսկ Ֆլորենցիայի թանգարանում պահվում է մի կաթսա, գտնված Վետուլոնիայում, որի վրայի զարդարանքների մեջ կան երկու մորուքավոր ֆիգուրներ։ Նույնանման ֆիգուրներ կային նաև Գորդիոնում գտնված բրոնզե կաթսայի վրա։ Հնարավոր է, որ բռնակները պատկերում են ոչ թե կանանց, այլ տղամարդու իրան։

74 Տե՛ս Б. Б. Пиотровский, Кармир-блур, III, Ереван, 1955, էջ 44—46։

75 Տե՛ս Б. Б. Пиотровский, История и культура Урарту, Ереван, 1944, էջ 55։

իրենից ներկայացնում է մեկ միլիմետր հաստությամբ և 6,5 սմ տրամագծով թերթավոր ոսկու սկավառակ։

Մեդալյոնի վրայի պատկերները կատարված են մետաղապլաստիկ եղանակով. դրանք սեղմվել են հակառակ կողմից, որից հետո արտաքինից լրացուցիչ մշակման են ենթարկվել կտրիչով։ Մեդալյոնի վրա պատկերված է գահին նստած կին՝ ձախ ձեռքին մի ճյուղ և նրա առաջ կանգնած է երկրորդ կինը՝ նույնանման հագուստներով։



Կարաս մարտակառքի փորագրությամբ. Արգիշտիխինիլի

Ոսկե մեդալյոնի վրա պատկերված կանացի նստած կերպարանքը անվերապահորեն նման է Հայաստանի պատմական թանգարանում պահվող բրոնզե արձանին. այստեղ ևս կինը, հավանաբար աստվածուհի, նստած է ճիշտ նույնպիսի հագուստով և նույն դիրքով։

Առանձին ոսկե առարկաներ հայտնաբերվել են նաև Կարմիր-բլուրի պեղումներից։ Դրանց մեջ առանձնանում են մահիկաձև, ճկած աղեղնակով ականջօղերը, որոնք զարդարված են հատիկախաղով կամ թե հիմքին զոդված բարակ ոլորված մետաղալարով։ Այդ ականջօղերը հարում են Միջերկրածովյան շրջանում և Փոքր Ասիայում գտնված այն առարկաների տիպին, որոնք վերաբերում են VIII—VI դարերին։

Կարմիր-բլուրի միջնաբերդի կենտրոնական մասի գինու մառանի կարասներից մեկի հատակին գտնվեցին թերթավոր ոսկու բեկորներ՝ առյուծի ֆիգուրի բոլորապատման մասերը։ Պահպանվել է բաց երախով գլխի բոլորապատվածքը՝ մածուկով դրվագված աչքով և ճակատի խորագիր ուլունքով։ Գտնվել են նաև բաշի թիթեղաթերթիկի բեկորներ։

Սրահներից մեկում զոհված մարդկանց ոսկորների մեջ հայտնաբերվել է ծայրերին առյուծի գլուխներով զարդարված ոսկե ապարանջան, իսկ № 36 պահեստարանում՝ ձույլ ոսկու սկավառականման մի հատված՝ 14,85 գ քաշով։ Միջնաբերդի հյուսիս-արևմտյան մասի շինություններում գտնվել են արծաթե բաշի մի բեկոր՝ ոսկե թերթիկով պատած, պառկած առյուծի ֆիգուրով գնդասեղ և ամուր հյուսված ոսկե նրբագույն լարից պատրաստված երկկոնաձև մանր ուլունք։

«Լուվրի աղյուսակը» վկայում է Մուսասիրում՝ Ուրզանա թագավորի պալատում եղած ոսկու մեծ քանակության մասին։ Այնտեղ եղել են ոսկե դաշույններ, 6 սուր և հովհար, ինչպես նաև «փղոսկրից, սև ու հաճարի փայտից պատրաստված գավազաններ՝ ոսկե ու արծաթե վերնամասերով» և այդ նույն նյութերից պատրաստված անոթներ՝ զարդարված ոսկով ու արծաթով։

Մուսասիրի տաճարում ոսկե իրերն է՛լ ավելի շատ էին։ Տաճարի պատերը զարդարած ոսկե վահաններից բացի, այնտեղ եղել են մեծ քանակությամբ այլ առարկաներ։ «Ոսկե մեծ սուր, ծանր սուր, նրա ձեռքի սուրը՝ 26 մինա ոսկե քաշով (այսինքն՝ մոտ 13 կգ)... մարդկային ձեռքի ձևի ոսկե փական, նրա սողնակը, որի վրա հանգչում էր թևավոր վիշապը, մի ոսկե ցցիկ, որը փակում էր փականը» և, բացի այդ, «վայրի ցուլի երկու ոսկեպատ եղջյուր... սև ու հաճարի փայտից բազկաթոռներ՝ պատած ոսկով ու արծաթով»։ Առարկաների այս թվարկումից երևում է, որ ուրարտական ոսկե իրերի մեջ պատահում են և՛ կռածո և՛ ձուլածո առարկաներ[76]։

Ուրարտացիները տեխնիկական մեծ հմտության էին հասել նաև արծաթից առարկաներ պատրաստելու գործում։

Մուսասիրի տաճարում պահվում էին մեծ քանակությամբ արծաթե առարկաներ, ընդ որում դրանցից ոչ բոլորն էին տեղական արտադրություն։ Սարգոնի տեքստում հատուկ նշվում է. «արծաթե ծանր ու թեթև 393 թաս՝ պատրաստված Աշուր, Ուրարտու և Խաբխի երկրներում», իսկ Ուրզանայի պալատում՝ «արծաթե խնկամաններ ու թասեր՝ Տաբալ երկրից»։

Բացի այդ, տեքստում հիշատակվում են. «96 արծաթե նիզակ, ոսկով դըրվագված ու պատված արծաթե հեծելադրոշներ,... 67 արծաթե կոնք, ... 33 ռազմակառք, արծաթե աղեղներ՝ արծաթե կապարճներում, արծաթե կեռ թրեր, արծաթե գավազան, արծաթե վահաններ»։ Պալատում կար «Ռուսայի արծաթե անոթը՝ կափարիչով, 34 արծաթե թաս, արծաթապատ 54 անոթ, արծաթե մահիկներ ու մատանիներ»։

Թեյշեբաինիի միջնաբերդի հյուսիս-արևմտյան պահեստարաններում հայտնաբերվել է արծաթե մի խոշոր սկավառականման առարկա, որը, հավանաբար, վահանի միջնամասի զարդ է կամ անոթի կափարիչ։ Առարկայի մակերեսը զարդարված է զոդած ոսկե չորս թիթեղներով, որոնք համակենտրոն գոտիներ են կազմում և պատած են կոկոնների շղթայի ձև ունեցող ուրարտական

---

76 Վանի բուն թագավորության տերիտորիայում ոսկին հայտնի է Սղերդ լեռան շրջանում, Վանա լճից հարավ։ Սակայն, անկասկած, ուրարտական առարկաների մեծ մասը պատրաստվում էր այն մետաղից, որն ստացվում էր հարևան երկրներում գրավված իրերի վերահալման միջոցով։

բնորոշ զարդանկարներով։ Կենտրոնում տեղադրված է ոսկե հոծ վերնամասը, որ նռան ձև ունի։ Առարկայի վրա պահպանվել են Մենուայի որդի Արգիշտիի անունով սեպագիր արձանագրության մնացորդները։

Բացի այդ, Կարմիր-բլուրում գտնվել են արծաթե ստվորներ, կահույքի, ձիասարքի զարդեր, ապարանջաններ, մատանիներ, մանր կախազարդեր։

Թոփրախ-կալեում գտնվել է կրակից խիստ տուժած արծաթե գլանաձև մի աման, որ երկու ծայրերից ոսկե մեխերով գամած կափարիչներ ուներ։ Կափարիչի հակառակ կողմում ամրացված էր ոսկու և արծաթի խառնուրդից պատրաստված մահիկաձև մի կրծքազարդ (պեկտորալ)։ Առարկայի վերականգնումից հետո պարզվեց, որ նրա վրա պատկերված է գահին նստած աստվածուհին և զոհաբերության համար այծը նրան մոտեցնող մի կին։

**Մետաղի փոխանակությունն ու առևտուրը, մետաղի պաշարների զավթումը:** Բերված նյութերը ցույց են տալիս Վանի թագավորությունում արտադրըված մետաղյա առարկաների բացառիկ բազմազանությունն ու հարստությունը։

Քաղաքական անկայուն միավորումների, լայն փոխանակության ու մըշտական պատերազմների իրադրության մեջ մետաղյա իրերը Առաջավոր Ասիայի մի շրջանից տարածվում էին հսկայական տերիտորիայի վրա։ Փոխանակության ծանրության չափի հիմնական միավորը՝ մինան (ուրարտական մանան) ամբողջ Առաջավոր Ասիայի համար ընդհանուր էր, սակայն, չնայած զարգացած առևտրին, նրա քաշային արտահայտությունները տարբեր էին լինում և հաճախ առանձին երկրների կառավարիչներ աշխատում էին միասնական դարձնել դրանք։ Ասորեստանյան մինան հավասար էր 505 գրամի (խորանարդ կանգունի 1/240 մասի ջրի քաշը)։ Ուրարտական մինան պայմանականորեն կարելի է հաշվել այդ նույն քաշով։

Ուրարտական թագավորների տարեգրությունները երբեմն հաղորդում են մետաղի մեծ քանակության (մետաղյա իրերի) մասին, որ ստացվում են տուրքի ձևով։

Այսպես, Արգիշտի Ա-ի տարեգրության մեջ կարդում ենք այն մասին, որ Դիաուխի երկրի թագավորը հանձնել է 41 մինա մաքուր ոսկի, 37 մինա արծաթ և ավելի քան 10 հազար մինա պղինձ (կամ բրոնզ)։ Կումմախա երկրի թագավորը Սարդուրի Բ-ին է ուղարկել 40 մինա մաքուր ոսկի և 800 մինա արծաթ։

Վերը տեսանք, որ Սարգոնի տեքստում հիշատակվում էին Մուսասիրի տաճարում եղած Ասորեստանի, Ուրարտուի և Խաբխիի մետաղյա իրերը։ Ասվում էր նաև, որ ասորեստանցիները վերստին գրավեցին այն թանկարժեք իրերը, որոնք թշնամիները վերցրել էին «քաղաքում, պալատում և տաճարում, Աշուրի ու Մարդուկի կառույցներում»։

Բացի այդ, Առաջավոր Ասիայում մետաղյա իրերը փոխանակության հիմնական առարկա էին հանդիսանում, որոշ չափով լինելով նաև ընդհանուր համարժեք (օրինակ, որոշակի քաշի ապարանջանները)։ Այսպես. մասնավորապես Եզեկիելի մարգարեության մեջ (մ. թ. ա. VI դարի սկիզբ) Տյուրոսի մասին ասվում է. «Յավանը, Տուբալն ու Մեշեխը առևտուր էին անում քեզ հետ։ Մարդկային հոգիներով ու բրոնզե իրերով նրանք փոխանակում էին ք.. ապրանքները»։

**Քարի մշակումը**: *Ուրարտական արհեստագործության մեջ բացառիկ մակարդակի էր հասել քարգործությունը։ Մշակված քարի բազմազան տեսակներ լայնորեն օգտագործվում էին շինարարության, տնտեսության, կենցաղի, արվեստի մեջ։*



Միստական սափոր. Արգիշտիխինիլի

*Շինարարության մեջ լայնորեն օգտագործվում էին լավ մշակված բազալտե վեմերը։ Այդպիսի վեմերից են շարված Էրեբունի քաղաքի (Արին-բերդ) միջնաբերդի մի շարք շենքերի հիմնապատերը։ Թեյշեբաինիի (Կարմիր-բլուր) միջնաբերդի վերին մասերը զարդարված էին լավ հղկված բազալտից կառուցված փոքրիկ աշտարակներով ու քիվերով։ Քարերի վրա սեպագիր արձանագրություններ էին փորագրվում։*

*Հաճախ ոռոգման ջրանցքի հունը հարկ էր լինում լեռներով անցկացնել, որի համար թունել էր փորվում, իսկ ճանապարհներ կառուցելիս ուրարտացիները երբեմն ստիպված էին լինում փորել ժայռերը։*

Ուրարտական ամրոցները վկայում են հին քարտաշների հիանալի վարպետությունը։ Վանի ժայռի վրա պահպանվել են բազմաթիվ աստիճանների, հարթակների, որմնախորշերի, ինչպես նաև ընդարձակ ժայռափոր կառույցների մնացորդներ։

Թեյշեբաինիում և Արգիշտիխինիլիում գտնված բազալտե առարկաների մեջ առանձնանում են խոշոր ու միջին չափի, կանոնավոր կլոր ձևի ու բացառիկ խնամքով պատրաստված սկուտեղներ։

Վանի թագավորությունում խիստ տարածված էին քարե մանր առարկաները։ Փափուկ քարից պատրաստվում էին, օրինակ, կենդանիների գլուխներ, որոնք հայտնի են Թոփրախ-կալեի և Կարմիր-բլուրի պեղումներից։ Ճարպաքարից ու օձաքարից պատրաստվել են մեծ քանակությամբ մեզ հասած սկավառականման, կոնաձև կամ կշռաքարի ձևի, վերին մասում ելուստ ունեցող կնիքներ։ Դրանց ներքևի մասը, երբեմն նաև կողքերը, պատած են մանր, խնամքով փորագրված պատկերներով։

Սակայն քարե մանր առարկաները պատրաստվում էին ոչ միայն փափուկ քարից։ Մեզ են հասել պառկած ցուլի ֆիգուրով կարմրավուն ծիրանաքարից պատրաստված փոքր անոթի բեկորներ և մի փոքրիկ բազալտե պլակետկա (10 սմ երկարությամբ) «կայծակի» պատկերով (հնարավոր է Թեյշեբա աստծու խորհրդանիշով)[77]։

Կարմիր-բլուրի միջնաբերդի հյուսիս-արևմտյան մասի երկու արհեստանոցներից հայտնի են նաև ճարպաքարե երկու տուփիկ, երկուսն էլ կափարիչով։ Դրանցից առաջինը (անվիճելիորեն ուրարտական ծագում ունեցող) ունի առանձնացված մանր գդալանման ելուստներով ներքնամաս։ Տուփի հարթ կափարիչի վրա փորագրված է սրբազան ծառը, որի կողքերին կանգած են թըռչունի գլուխներով թևավոր ոգիների ֆիգուրներ։

Հարկ է հիշատակել նաև կիսաթանկագին քարերից պատրաստված բազմաթիվ ուլունքները։ Հատկապես հարգի էին կարմիր սարդիոնե գնդաձև ուլունքները։ Դրանց մշակումը (զանազան եղանակներով շաղափումը և փայլեցումը) վկայում է քարի մշակման բարձր տեխնիկայի մասին։

**Խեցեգործությունը։** Բազմազան ու բազմաթիվ են Ուրարտուի խեցեգործական իրերը։ Վանի թագավորության ինչպես կենտրոնական մասում, այնպես էլ ծայրամասերում կատարված պեղումները տվել են հսկայական քանակությամբ անոթներ ու դրանց բեկորներ։ Կարմիր-բլուրից հայտնաբերվել են երկու պահեստներ՝ խեցեգործական իրերով։ Դրանցից մեկում կար 1036 սափոր, իսկ մյուսում՝ մոտ 120 զանազան անոթներ։ Ուրարտական խեցեգործության բազմազանությունը ձեռք է բերվել ոչ միայն ձևերի ու չափերի հաշվին (շուրջ 1200 լիտր տարողությամբ մեծ կարասներից մինչև 2 սմ բարձրությամբ փոքր անոթներ), այլև պատրաստման տեխնիկայի։

Հանդիպում են ձեռքով պատրաստված և երբեմն շատ վատ թրծված կոպիտ անոթներ։ Դրանց մի մասը պատրաստված է նաև առանցք չունեցող ա-

[77] Տե՛ս C. F. Lehmann-Haupt, Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens, „Abhandlungen der Königlichen Gesellschaft der Wissenschaften zu Göttingen", Bd. IX, № 3, 1907, էջ 80, նկ. 49—50։

ղատ սյտավող հենարանի վրա։ Եվ, վերջապես, ուրարտական խեցեգործության ամենաբնորոշ խումբը ներկայացված է բրուտագործական դուրգի վրա պատրաստված բարձրորակ արտադրանքով։

Ուրարտական խեցեգործության առարկաները գույնով ևս շատ բազմազան են։ Հանդիպում են տարբեր երանգների դեղին, կարմիր ու սև իրեր, փայլատ ու փայլեցված մակերեսով։ Անոթների գույնը պայմանավորված է ինչպես կավի բաղադրությամբ, այնպես էլ թրծման պայմաններով։ Թրծված կավե շինվածքների մուգ գույնը զգալիորեն կախված է կավի մեջ երկաթի օքսիդների առկայությունից։

Կավե իրերի մակերեսի փայլը ստացվում է ինչպես կավի թրծումից առաջ կատարվող հղկման (փայլեցման), այնպես էլ թրծումից հետո ողորկելու միջոցով։ Այս երկու եղանակն էլ մշտապես կիրառվել է ուրարտացիների կողմից։

Վանի հնագիտական պեղումները տվել են զգալի քանակությամբ գունազարդ խեցեղեն, որ վերաբերում է ուրարտական պատմության վաղ շրջանին, երբ գոյություն ուներ նաև կարմիր փայլով արված խեցեղենը։ Գունազարդ խեցեղենի նախշերը սովորաբար արված են մեծ մասամբ դարչնագույն ներկերով՝ դեղին ֆոնի վրա, և հիմնականում ներկայացնում են պարզ երկրաչափական զարդանկարներ։

Ուրարտական խեցեղենի մեջ շատ են խոր և հարթ ամաններն ու բաժակները, լայն կամ նեղացող վզիկով կճուճները, կարասները, ունկով և առանց ունկի սափորները, ինչպես նաև յուրատեսակ ձևի անոթները (խնկամաններ, ըրագաթասեր, հաղորդակից անոթներ, ամանի պատվանդաններ և այլն)[78]։

Հաճախ ուրարտական խեցեղենը կրկնում է մետաղյա ամանեղենի ձևերը։ Այդպիսին են ունկերով սափորները, որ նմանեցված են մետաղյա վզիկին և ունկին, ինչպես նաև ելուստներով անոթներ, որ կրկնում են մետաղյա թասերի բնորոշ զարդերը։ Այդպիսի կավե անոթների հատկապես արտահայտիչ նմուշներ են գտնվել Արին-բերդի պեղումներից։

Ուրարտական իրերից հատկապես հետաքրքիր են Թեյշեբաինիից և Արգիշտիխինիլիից գտնված բարձր ոտքերի վրա կանգնած թասերն ու թեյնիկի նման երկար ծորակով սափորները, որոնք ցույց են տալիս ուրարտական խեցեղենի ունեցած կապը հնագույն առաջավորասիական խեցեղենի հետ։

Վանի թագավորությունում լայն տարածում են ունեցել մեծ կարասները, որոնք օգտագործվել են ոչ միայն հեղուկների, այլև հացահատիկի պահպանության համար։ Հացահատիկի համար նախատեսված կարասների հատակին միջանցիկ անցք է արված, որպեսզի հացահատիկը չխոնավանա։ Կարասների նախշազարդերը խիստ բազմազան են։ Կան ոլորված պարանի ձևի բարձրաքանդակ զարդեր. կամ ներսեղմված, մեկը մյուսի վրա հենված, եռանկյունիների գոտիներ։ Հաճախ բարձրաքանդակ նախշը զուգակցվում է դրոշմված, քերված կամ փորագրված փայլին։

Կարմիր-բլուրի պեղումներից հայտնաբերված խեցեղենի մեջ պարզորոշ կարելի է տարբերել երեք հիմնական խումբ։ Առաջին խումբը ներկայացված է

---

[78] Ուրարտական խեցեղենի մասին տե՛ս C. F. Lehmann- Haupt, Materialen, էջ 109—120. նույնի՝ Armenien..., II, 2, էջ 559—587։

Վանի թագավորության կենտրոնական մասի խեցեղենի կամ դրա ընդօրինակությունների նմուշներով։ Դա կանթերով որոշակի ձև ունեցող կարմիր անգոբով պատած և փայլեցրած խեցեղեն է՝ պրոֆիլավորված թասեր և փոքրիկ հաղորդակից անոթներ։

Ունկերով սափորները սովորաբար երեքնուկաձև բերանով են և երբեմն նրանց ունկի տակ լինում են ուրարտական պատկերագիր նշաններ։

Երկրորդ խումբը տեղական կոպիտ խեցեղենն է, որն այնքան յուրատեսակ է և իր արտաքին տեսքով արխայիկ, որ նույնիսկ դժվար է հավատալ, թե այն պատրաստված է առաջին խմբի հետ միևնույն ժամանակ։ Անոթները սև են, կոպիտ, հաճախ ունեն լայն եզրերով կճուճի ձև, զարդարված են եղևնաձև նախշով, կորիգանման և կամ ալիքաձև ներսեղմված զարդաքանդակներով։ Պատահում են նաև կոպիտ անոթներ՝ առանց որևէ նախշի։

Երրորդ խումբն այն խեցեղենն է, որ զուգահեռներ ունի VII—VI դարերի Անդրկովկասյան հին գերեզմաններում։ Դրանք սովորաբար մուգ գույնի, փայլով արված նախշերով անոթներ են։ Այս խմբի եռանկյունիների ունկերը մեկը մյուսի վրա բարձրացած ներսեղմված եռանկյունիների շարքի ձևով յուրահատուկ նախշեր ունեն։ Այդպիսի անոթներ են գտնվել նաև Լոռու շրջանում Մորգանի կատարած պեղումներից (Շեյթանդաղի գերեզմանոց)։ Դրա նման խեցեղեն կա նաև Սևանի շրջանում՝ Լալայանի կատարած պեղումներով հայտնաբերված նյութերի մեջ։

**Ուրարտական անոթների պատրաստման տեխնիկան:** Վերոհիշյալ երեք խմբերը չեն սպառում պեղումների ժամանակ գտնված կավե շինվածքների ձևերի ամբողջ բազմազանությունը։ Հայտնաբերվել են մեծ քանակությամբ տարբեր նշանակության փոքրիկ անոթներ։

Ինչպես տեսանք, ուրարտական խեցեղենի հատուկ և խիստ բնորոշ խումբն են կազմում կարմիր, փայլուն մակերեսով ու մեծ անոթները (գերազանցապես սափորներն ու թասերը)։

Անոթները պատող կարմիր փայլուն շերտը հեշտությամբ պոկվում է և իր բաղադրությամբ համանման է հենց անոթի խեցու կավին. Նրանց տարբերությունը թրծման եղանակի մեջ է միայն։ Եթե անոթի խեցին համեմատաբար թույլ է թրծված, ապա կոտրվածքից երևում է, որ միջին մասում ունի գորշավուն գույն, թեև անոթի վրայի անգոբը (կարմիր փայլուն շերտը) շատ լավ է թրծված։

Ուրարտական այդ տիպի խեցեղենի պատրաստման տեխնիկան կարելի է պատկերացնել հետևյալ կերպ. և՛ անոթի և՛ անգոբի համար վերցվում էր միևնույն կավը, սակայն անգոբի կավը ենթարկվում էր նախնական հատուկ մշակման։ Այն թրծում էին բարձր ջերմության տակ, ապա թրծված զանգվածը մանրացնում էին, բացում ջրի մեջ և այդ անգոբով ծածկում անոթի մակերեսը (երբեմն սափորները ներկվում էին)։

Շինվածքի թրծման ժամանակ ջերմաստիճանը այն չափին չէր հասցվում, որ անգոբը ձուլվի անոթի խեցուն, այդ պատճառով էլ այն հեշտությամբ պոկվում էր։ Թրծումից հետո անոթը խնամքով ողորկվում էր։ Այդպիսով, ուրարտական կարմիր խեցեղենը պատրաստման տեխնիկայով լրիվ տարբերվում է հին հունականից կամ հռոմեականից։

Կարմիր անոթների հատակին կամ ներքևի մասում դրոշմման, փայլեցման կամ փորագրման եղանակով արված պատկերներ կան։

Թոփրախ-կալեի, Կարմիր-բլուրի և Արգիշտիխինիլիի մանր սափորների, թասերի վրա կան կնիքների դրոշմներ, որոնք կարելի է արհեստանոցների նշանները համարել։ Դրանք շատ պարզ ձև ունեն. շրջանակներ են, պայտեր, աստղիկներ, 8 թվանշանի ձևի նշաններ, ներգծած խաչով կամ աստիճանաձև նշանով շրջանակ։ Այս բոլորը դրոշմվում էր նախքան թրծումը[79]։

Փայլով արված նշանները նույնպես բազմազան են՝ շրջանակներ ու կիսաշրջանակներ՝ նրանց հետ միացված գծիկներով ու կետերով, կեռագծեր, խաչվող գծեր. հավանաբար, դրանցով արտահայտվում էին տարողության չափերը[80]։ Հատկապես բազմաթիվ են անոթների անգոբի շերտի վրա խազված զանազան պատկերները։ Այստեղ, անկասկած, կան և՛ տարողության չափ և՛ սեփականություն ցույց տվող նշաններ և՛ նույնիսկ հիերոգլիֆիկ մակագրության նման խազեր։ Անոթների վրա արվում էին կենդանիների գլուխների, ծառերի, զանազան ֆիգուրների՝ հնգաթև աստղերի, վերին մասերով իրար կպած եռանկյունիների նկարներ և այլն[81]։

Հատուկ, բայց ոչ մեծաքանակ խումբ է կազմում բարակ պատերով մոխրագույն խեցեղենը՝ զարդարված ուռուցիկ նախշաքանդակով[82]։ Դժբախտաբար, այդ տիպի անոթներից միայն մանր բեկորներ են հասել մեզ։

Ուրարտական անոթներից մի քանիսը, որոնք ծառայում էին որևէ բան պահելու նպատակով, ունեին կավե կափարիչներ կամ կավով շրջածեփված խցաններ, որոնց վրա կնիքներ էին դրոշմված լինում։ Մեծ քանակությամբ այդպիսի կնիքների դրոշմներ հայտնաբերվել են Թոփրախ-կալեում։

**Մանր առարկաներ:** *Ուրարտական շատ բնակավայրերի ու ամրոցների պեղումների ժամանակ գտնվել են մեծ քանակությամբ մածուկային ու ապակե ուլունքներ (ձևավոր ու կլոր)։ Գունավոր մածուկը ծառայում էր բրոնզե իրերի զարդարման համար (ընգելուզում)։ Մածուկային (սմալտայից) ուլունքները պատրաստվում էին ապակենման զանգվածից խողովակներ ձգելու եղանակով, որոնք հետո կտրատվում էին կարճ գլանակների։ Երկնագույն ու կանաչ մածուկի ներկանյութը, հավանաբար, պղինձն էր, իսկ կարմրինը՝ երկաթը։ Ուլունքների մակերեսը երբեմն ծածկվում էր ջրաներկով։ Կարմիր-բլուրում գտնվել են բազմագույն ջնարակով պատած ելուստներով կավե ուլունքներ։ Այնտեղից հայտնաբերվել են դեղին ալիքաձև շերտերով սև ապակե ուլունքներ, ինչպես նաև թափանցիկ ապակուց ձուլված ուլունքներ։*

Կարմիր-բլուրում գտնվել է նաև գունավոր ջնարակով պատած հախճապակե ձևավոր անոթի մի բեկոր, որը պատկերում է կարճ կտրած մազերով ու ցածր գլխարկով կնոջ։ Հետևի կողմից կա օղակ՝ կախիչի համար։ Արտաքինից այդ անոթը մի փոքր հիշեցնում է մեզ հայտնի ասորեստանյան ձևավոր անոթները։

---

79 Տե՛ս *C. F. Lehmann-Haupt*, Armenien.., II, 2, էջ 572—575։

80 Տե՛ս նույն տեղում, էջ 579։

81 Տե՛ս նույն տեղում, էջ 577—579, 586։

82 Տե՛ս նույն տեղում, էջ 576։

**Փայտի, ոսկորի մշակումը, մանելու և ջուլհակային արհեստը:** *Մետաղյա, քարե ու կավե բազմաթիվ առարկաներից բացի մեծ քանակությամբ մեզ են հասել նաև գործվածքների, մանվածքի նմուշներ, եղջյուրից, ոսկրից ու փայտից պատրաստված իրեր։*

*Ըստ Լեման-Հաուպտի տեղեկությունների, Թոփրախ-կալեում գտնված մի անոթի մեջ եղել է մետաքսե գործվածքի մի կտոր[83]։*

*Կարմիր-բլուրում գտնված իրերի մեջ կան կոպտաբուրդ, խիտ գործվածքներ, միջին հաստության և խտության գործվածքներ, այդ թվում՝ մեկը նախշավոր, և բարակ թափանցիկ գործվածքներ։ Հյուսված կտորներից կան խավավոր նախշերով գործվածք, նուրբ ցանց, երիզի, ոլորած թոկի և կտորի հատվածներ, գլանափաթեթված, հավանաբար հատակին փռելու համար նախատեսված, ուղեգորգեր։ Այս ամբողջ գործվածքեղենը, առանց բացառության, բրդի թելից էր պատրաստված։ Մի մասը բազմագույն էր՝ կապույտ, կարմիր և դեղին երանգների օգտագործմամբ։ Խիտ կտորների բազմաթիվ հատվածներ կատարված են ռեպսի միջնաթելային հյուսվածքով, իսկ բարակ կտորները՝ քաթանի պարզ հյուսվածքով։ Այս հյուսվածքների հենքը, առանց էական փոփոխությունների, պահպանվել է Արևելքի ու Արևմուտքի ժամանակակից տեքստիլ արդյունաբերության մեջ։*

*Ածխացած վիճակում մեզ հասած գործվածքների հնագույն նմուշները հայկական պատմական արժեք են ներկայացնում որպես մեր թվականությունից մի քանի դար առաջ գոյություն ունեցած նախշավոր գործման ու հյուսման զարգացման սկզբունքների, գործվածքի նախշման զանազան եղանակների ու նուրբ մանման վարպետության սառույգ վկայություն[84]։*

*Մեզ են հասել եղջյուրից պատրաստված մեծ քանակությամբ մանր իրեր։ Թոփրախ-կալեում Քլեյտոնի կատարած պեղումները տվեցին փղոսկրե քանդակի երկու հրաշալի նմուշ։ Առաջին ֆիգուրը պատկերում է վարդազարդ ապարոշով, ցածր գլխարկը գլխին մերկ աստվածուհու, իսկ երկրորդը, որ վատ է պահպանված, պատկերում է լայն գոտիով ու աջ ուսի վրայով գցած ժապավենով երկար հագուստով քուրմ կամ սպասավոր[85]։ Ոսկրե հրաշալի իրեր են գտնվել նաև Կարմիր-բլուրում։ Դրանք կենդանիների ֆիգուրներ կամ գլուխներ են, զարդանախշված գլանաձև արկղիկներ, սանրեր, կողովների մասեր և այլ մանրուք։*

*Կարմիր-բլուրում գտնվել են նաև զգալի թվով փայտե առարկաներ։ Դրանց մեջ կան կախելու համար արված կեռիկով մի խոշոր գդալ, խառատային հաստոցի վրա պատրաստած գոգաթիակներ, փոքրիկ անոթ և թաս, եղջյուրե դրվագումներով կահույքի մասեր։ Փայտամշակման բազմազան արտադրանքը, ատաղձագործական աշխատանքները, դժբախտաբար, մեզ չեն հասել, սակայն դրանց պատկերներն ու նկարագրությունները շատ են Ուրարտուի և Ասորեստանի արվեստի ու գրավոր հուշարձաններում։ Այստեղ նկատի ունենք ուրար-*

[83] *Տե՛ս C. F. Lehmann-Haupt*, Armenien, II, 2, *էջ 967*։

[84] *Տե՛ս А. Верховская*, Текстильные изделия из раскопок Кармир-блура. „Кармир-блур". III, Ереван, 1955, *էջ 67—71*.

[85] *Տե՛ս R. D. Barnett*, The Excavations of the British Museum at Toprak Kale, near Van, „Iraq" XII, 1, 1950, *տախտակ 14*։



Գարեջրի ամաններ. Արգիշտիխինիլի

տական շինությունների փայտե մասերը, հրաշալի սայլակներն ու ռազմակառքերը, ուրարտական թագավորների գահերը՝ պատրաստված կարմիր կամ սև փայտից, թագավորների ու աստվածների, կենդանիների՝ թերթավոր ոսկով պատած բազմապիսի արձաններն ու արձանիկները և այլն։

Արտադրության տարաբաշխումը Ուրարտուում հասցրեց հատուկ հմտություն ու վարպետություն պահանջող մեծ թվով արհեստների զարգացմանը։ Սակայն, չնայած արհեստագործական տնտեսությունների առկայությանը (հատկապես վարչական կենտրոններում), որոշ առարկաներ պատրաստվում էին տնային պայմաններում։

Այնպիսի խոշոր վարչական կենտրոնում, ինչպիսին Թեյշեբաինին էր, ամբողջ արհեստանոցներում պետք է որ աշխատեին մեծ թվով արհեստավորներ՝ բրուտներ, ջուլհակներ, մետաղագործներ, քարտաշներ, ոսկոր ու եղջյուր փորագրողներ, քունջութի ձեթ պատրաստող վարպետներ, գինեգործներ և այլն։

Առայժմ բացակայում են Ուրարտական պետությունում արհեստավորների դրությունը պարզաբանող նյութերը։ 1949 թվականին Կարմիր-բլուրում գտնված կավե աղյուսակի տեքստում հիշատակություն կա չորս արհեստավորներ ուղարկելու մասին, սակայն տեքստի ընդհանուր իմաստը դեռևս մնում է չպարզված։

Ուրարտուում, ինչպես և Հին Արևելքի մյուս պետություններում, կային նվաճված երկրներում գերված մեծ թվով արհեստավորներ։ Նրանք գտնվում էին կամ ստրուկների վիճակում, կամ դասվում էին ուրարտացիների շարքը, այսինքն՝ ազատ էին։ Վան (Տուշպա) քաղաքի կառուցման մասին եղած ավանդելում, որ բերում է Մովսես Խորենացին, պատմվում է, որ Շամիրամը Ասորեստանից ու նրան ենթակա երկրներից բերել է տասներկու հազար հասարակ աշխատող և վեց հազար վարպետ՝ փայտի, քարի, պղնձի և երկաթի հմուտ փորագրիչներ, որոնք կատարելապես տիրապետում էին իրենց արվեստին։ Նվաճված երկրներից արհեստավորների այսպիսի տեղափոխումների մասին մշտապես հիշատակում են ասորեստանյան տեքստերը։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

# ԱՐՎԵՍՏ, ԿՐՈՆ, ԳԻՐ, ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Ուրարտական մշակույթի բնույթը։** *Երկար ժամանակ համարում էին, թե Ուրարտու պետության մշակույթը զարգանում էր Ասորեստանի անմիջական ազդեցության ներքո և Հին Արևելքի պատմությանը նվիրված շատ աշխատություններում այն դիտվում էր որպես ծայրամասային ասսուրական մշակույթ։*

*Ուրարտական մշակույթում իսկապես կան Ասորեստանից՝ մ. թ. ա. IX—VIII դարերում փոխ առած շատ տարրեր՝ պալատական արվեստի ոճը, ասսուրական սեպագրերը ուրարտերենին հարմարեցնելը՝ ասորեստանյան թագավորների տարեգրություններից փոխ առնված որոշ նույնատիպ բանաձևերով, ասսուրական գաղափարագրերի օգտագործումը ուրարտական պանթեոնի շատ աստվածների անունները նշելու համար, ասսուրական հանդերձանքի և սպառազինության փոխառնումը։*

*Բայց Ուրարտուի մշակույթի մասին նոր գիտելիքների կուտակմանը զուգընթաց, պարզորոշ բացահայտվեց այն հանգամանքը, որ Ասորեստանի հետ կապված՝ տիրող դասակարգի մշակույթի ու արվեստի արտաքին, պաշտոնական կեղևի տակից ցայտուն կերպով երևան է գալիս տեղական ենթաշերտը, որն ամեն ինչով տարբեր է ասսուրական մշակույթից։ Այս երկու մշակույթների կենցաղային իրերի՝ խեցեղենի, գործիքների, զարդերի և այլնի համեմատությունը ցույց է տալիս, որ այդ առարկաների կոմպլեքսները բացահայտորեն տարբեր մշակույթների էին պատկանում։*

*Հնագիտական նյութերը անառարկելիորեն վկայում են, որ Հայկական լեռնաշխարհի տեղական հնագույն մշակույթը, որի հիման վրա ծագել է ուրարտականը, հնուց ի վեր կապված է եղել ոչ միայն Միջագետքի, այլև արևմտյան Փոքր Ասիայի և Հյուսիսային Ասորիքի հետ։*

## 1. ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Տիրող դասակարգի մշակույթի կարիքներին էին ծառայում գեղարվեստական արհեստագործության բազմազան ճյուղերը, մանավանդ մետաղագործությունը։*

*Ինչպես վերը հիշատակվեց, մետաղյա իրերից շատերը նվիրատվական նշանակություն ունեին։ Նրանք պատրաստվում էին ուրարտական թագավորների պատվերներով, իրենց վրա կրում իշխողների ծոնական արձանագրու-*

թյունները, իրենց շքեղ տեսքով, փայլով ու հարուստ զարդամոտիվներով զարդարում վանի թագավորության պալատներն ու տաճարները։ Այդ իրերը պատրաստվում էին բարձր արվեստով, առանձին խնամքով ու հոգատարությամբ։

Կարմիր-բլուրի երկու տասնյակ կապարճներից ամենաշքեղները պատկանում էին Արգիշտիի որդի Սարդուրի թագավորին։ Դրանք բրոնզե ճկած թիթեղից պատրաստված գլանի տեսք ունեն։ Կապարճի երկու ծայրերին օղակներ են ամրացված, որոնց միջով անց էր կացվում կապարճը ուսի վրա կրելու փոկը։ Այդ բանը կարելի է տեսնել նաև Սարգոնի պալատի պատկերների վրա։ Սարգուրիի կապարճները զարդարված են ութ գոտիներով տեղադրված ռազմակառքերի և հեծյալների պատկերներով։

Բրոնզե կապարճների զարդապատկերները կրկնվում են նաև Արգիշտի և Սարդուրի թագավորների արձանագրությունները կրող հրաշալի բրոնզե սաղավարտների վրա, որոնք աչքի են ընկնում զարդամոտիվների նրբությամբ, հարստությամբ, կոմպոզիցիոն կուռ կառուցվածքով և նմանները չունեն ասորեստանյան արվեստում։

Դրանց ճակատամասը զարդարված է սրբազան ծառերի տասնմեկ պատկերներով, որոնց կողքերին կանգնած են աստվածները։ Ծառերին փաթաթված են առյուծի գլխով օձերի ութ ֆիգուրներ։ Սաղավարտների քունքի ու ծոծրակի մասերը զարդարված են երկուական հեծյալ ունեցող ուրարտական ութ մարտակառքերի պատկերներով։

Հատուկ հետաքրքրություն են ներկայացնում Արգիշտի Ա-ի և Սարդուրի Բ-ի՝ 1951 և 1953 թվականներին հայտնաբերված վահանները։ Դրանց միջնամասը զարդարված է երեք համակենտրոն գոտիներով, որոնց վրա տեղավորված են առյուծների ու ցուլերի նուրբ դրվագված պատկերներ։ Նման վահաններ ու դրանց բեկորները տարբեր ժամանակներում գտնվել են նաև Թոփրախկալեում։

Սարգոնի պալատի բարձրաքանդակի վրա պատկերված Մուսասիրի տաճարի վրա կան նույնանման վահաններ, որոնք կախված են պատին և ճակատի սյուներին։ «Լույրի աղյուսակի» տեքստում պատմվում է, որ Խալդի աստծո տաճարում գրավվել է «վեց ոսկե վահան», որոնք նրա տաճարում կախված են եղել աջ ու ձախ կողմերում և փայլել են կուրացուցիչ փայլով. նրանց միջնամասից դուրս են ցցվել ժանիքավոր շների գլուխները և դրանք կշռել են 5 տաղանդ 12 մինա «բոցագույն կարմիր ոսկի»[1]։

Ոսկե վահաններից բացի, Խալդիի տաճարում եղել են «քսան արծաթե վահաններ, որոնց վրա վիշապի, առյուծի, վայրի ցուլի գլուխներ կային»։

Տաճարում եղել են նաև ուրարտական թագավորների բրոնզե մեծ արձաններ։ Տաճարի հարստությունների թվարկման մեջ հիշատակվում են՝ «աղոթքի դիրքով, թագավորական դիրքով Սարդուրիի՝ Իշպուինիի որդու, Ուրարտուի թա-

---

[1] Հավասար է մոտ $6^{1}/_{4}$ կգ-ի։ Հնարավոր է, որ վահանները եղել են բրոնզից և ոսկեպատ։ Բրիտանական թանգարանում պահվում են բրոնզե վահանների բեկորներ, որոնք որևէ (հավանաբար, փայտե) հիմքի վրա ամրացվելու անցքեր ունեն։

գավորի[2], արձանը, որի գահը ձուլված էր բրոնզից. Արգիշտիի, Ուրարտուի թագավորի արձանը՝ աստվածների աստղագույն խույրով, ամբողջը միասին 60 տաղանդ բրոնզի քաշով (մոտ 2 տոննա). Ուրսայի արձանը՝ նրա երկու ձիերով և նրա կառավարով ու պատվանդանով, ամբողջը ձուլածո բրոնզից...»։

Մուսասիրում գրաված ավարը կշռելու տեսարանում, կշեռքի մոտ պատկերված են ասորեստանյան երեք ռազմիկ, որոնք կացիններով ջարդում են տեքստում հիշատակված արձաններից մեկը[3]։

Թագավորների արձաններից բացի, Մուսասիրի տաճարում կար նաև կովի և հորթի մի խոշոր բրոնզե քանդակ, որը ինչպես պատկերված է Սարգոնի պալատի բարձրաքանդակի վրա, կանգնած է եղել տաճարի ճակատային մասում։ Հավանաբար, կովից բացի, տաճարի առջև եղել է նաև ցուլի բրոնզե ֆիգուր։ Դրանց մասին Սարգոնի տեքստում հետևյալն է ասվում. «Ցուլը, կովը և նրա հորթը, որոնց համար Սարդուրին, Իշպուինիի որդին, տվեց խալդիի տան բրոնզը և հրամայեց ձուլել»։

Բրոնզի մոնումենտալ քանդակների այս թվարկումն իսկ վկայում է ուրարտացիների մետաղաձուլական բարձր արվեստի մասին։ Մեզ հասած ուրարտական բրոնզե առարկաները լրիվ արդարացնում են այս պատկերացումը. դրանք գեղարվեստական ու տեխնիկական բարձր վարպետության նմուշներ են։

Թոփրախ-կալեում հայտնաբերվել են գահերի բրոնզե մասեր[4]։ Նման գեղեցիկ գահեր պատկերված են ասորեստանյան քանդակներում, նրանց վրա բազմած են թագավորներ ու աստվածներ։

Արձանիկների դեմքերը պատրաստվում էին սպիտակ քարից, որոնց վրա աչքերն ու հոնքերը դրվագվում էին[5]։

Ուրարտական արվեստում, հավանաբար, հաճախ էր կիրառվում առարկաների զարդարումը ոսկով ու ագուցումը թանկագին քարերով։ Սարգոնի տեքստից հայտնի է, որ Մուսասիրի խալդիի տաճարում գտնվում էր «աստծո մահիճը՝ զարդարված թանկագին քարերով ու ոսկով», ինչպես նաև «ոսկե կնքամատանին, որ նախատեսված էր Բագբարտուի՝ խալդիի կնոջ, որոշումները հաստատելու համար և որի մեջ թանկագին քարեր էին ագուցված»։

Ուրարտական մետաղե քանդակի աչքի ընկնող հուշարձաններից է Կարմիր-բլուրում հայտնաբերված բրոնզե արձանիկը։ Այն պատկերում է Թեյշեբա աստծուն՝ կանգնած վիճակում, անմորուս. Նրա հագուստը երկար է, թևքերը՝ մինչև արմունկները, իսկ գլխին եղջյուրներով զարդարված յուրատեսակ գլխարկ կա։ Առաջ մեկնած աջ ձեռքում աստվածը բռնել է գուրզը, իսկ ծալած ձախ ձեռքում՝ մարտական կացինը։

---

2 Սարդուրին՝ Իշպուինիի որդին, թագավոր չի եղել, տեքստը մեկնաբանման կարիք ունի։ Ցույց խոսքը Սարդուրիի որդի Իշպուինիի մասին է (հմմտ. *N. Adontz*, Histoire d'Arménie, էջ 192)։

3 Տե՛ս *P. E. Botta* et *E. Flandin*, Monuments de Ninive, II, Paris, 1849, տախտակ 141։

4 Տե՛ս *C. F. Lehmann-Haupt*, Armenien, II, 2, էջ 485—487.

5 Տե՛ս *Б. Б. Пиотровский*. Урартские бронзовые статуэтки собрания Эрмитажа, Л., 1939, էջ 57։

**Կավե և փայտե մանր արձանիկներ:** Կարմիր-բլուրի վերջին տարիների պեղումների ժամանակ հայտնաբերվել են փայտից պատրաստված արձանիկներ՝ թիթեղյա շատ փոքրիկ գոտիներով, հերակալներով, զենքերով։ Նրանց դեմքերը և վերնազգեստի մասերը ներկված են։

Հայտնի են նաև կավե մանր արձանիկները։ Կարմիր-բլուրում գտնվել են աստծու երեք արձանիկներ։ Դրանք կանգնած, մորուքավոր մարդկային ֆիգուրներ են, որոնք գլխից մինչև մեջքը ծածկված են ձկան գլխի ձևի գլխարկով և թեփուկավոր մաշկով ու պոչով։ Արձանիկները ներկված են եղել. մեջքին ու գլխարկի վրա պահպանվել են վառ երկնագույն, խիստ անկայուն, փոշու նման թափվող ներկի հետքեր։

Գտնվել է նաև մարդ-կարիճի տեսքով աստծո կավե մի արձանիկ։ Դեմքը ներկված է եղել սպիտակ, աչքերը՝ կարմիր, իսկ մորուքն ու մազերը՝ մուգ դարչնագույն ներկով։ Գլխարկը վառ երկնագույն է եղել, համանման ձկնակերպ աստվածների մեջքին եղած գույնին։

Թեյշեբաինիի միջնաբերդի բակի ժամանակավոր կացարաններում գտնվել են ձիու և ցլիկի կոպիտ կավե ֆիգուրներ, որոնք, հավանաբար, մանկական խաղալիքներ են եղել։

Կենդանիների խմբեր, առանձին ֆիգուրներ կամ պարզապես գլուխներ հանդես են գալիս նաև ուրարտական խեցեղենի վրա։

Թոփրախ-կալեում գտնվել են կարմիր գույնի մեծ կարասների շրթերի բեկորներ, որոնք զարդարված են կենդանիների քանդակներով։ Սովորաբար դա երկու կենդանիներից (ցլիկ և նրա վրա հարձակվող գիշատիչ) բաղկացած հերալդիկ խումբ է[6]։

Ուրարտական խեցեգործական շինվածքները զարդարող կավե ֆիգուրները շատ մոտ են խեթական նմուշներին (այսպես կոչված՝ կապադովկիական խեցեղեն), որոնք լավ հայտնի են Անատոլիայում (Բողազքյոյ, Ալիշար և այլն)[7] կատարված պեղումների նյութերից։ Սակայն այդ տիպի խեթական խեցեղենն ավելի վաղ շրջանի է վերաբերում։

Կարմիր-բլուրից գտնված խեցե շինվածքներից հատուկ ուշադրության է արժանի սև փայլեցրած խոշոր անոթը (մոտ 50 սմ բարձրությամբ), որ զարդարված է նախշավոր գոտիով ու վերը նկարագրված բրոնզե գլուխները հիշեցնող ցլիկների գլուխների երեք քանդակով։ Նախշը արված է շրթի և նրա տակ եղած բարձրաքանդակ գոտու վրա։ Դեղնավուն ֆոնի վրա տեղադրված են դարչնագույն շրջանակներ՝ կենտրոնում սև սկավառակով։ Շրջանակները վերևից սև շերտ ունեն, իսկ ներքևից բոլորապատված են դարչնագույն ու սև գծերով։ Շրթի նախշը կազմված է դեղին և մուգ դարչնագույն հերթագայվող ուղղանկյունիների երկու շարքով։

Քարգործ վարպետների արվեստը չէր սահմանափակվում բրոնզե արձանիկների առանձին մասերը քանդակելով։ Նրանք քանդակում ու փորագրում էին ժայռերի ու պատերի վրա, քարե մեծ արձաններ էին պատրաստում։ Վանի թագավորության քարե խոշոր քանդակներից մեզ է հասել մոխրագույն բազալ-

---

[6] *Տե՛ս C. F. Lehmann-Haupt*, Armenien, II, 2, էջ 567, 576։

[7] *Տե՛ս H. Genouillac*, Céramique cappadocienne. „Musée du Louvre", I—II, 1926.



Սարդուրի Բ–ի արձանագրությունը կրող բրոնզե վահանի մանրամասները. Կարմիր-բլուր

տից պատրաստված միայն մի արձան։ Հավանական է, որ դա ոչ թե աստծու, այլ ուրարտական թագավորի արձան է, այն էլ Վանի թագավորության առաջին շրջանից։

Արձանի գլուխը և ֆիգուրի ամբողջ ներքևի մասը կորսված է։ Պահպանված մասից կարելի է եզրակացնել, որ ամբողջ արձանը եղել է մարդու հասակի չափ։ Բոլոր մանրամասները կատարված են ոչ բարձր քանդակով։ Վերին մասում պահպանվել են մեջքին և ուսերին թափված ոլորուն մազերը ու սրածայր մորուքը։ Ձեռքերը դրած են կրծքին, աջում բռնել է երկտակված ծայրով գավազանը կամ մտրակը, իսկ ձախում՝ աղեղն ու նետերը։ Աջ կողմում պատկերված է երկար սուրը՝ սրակալի հետ։

Թոփրախ-կալեի պեղումներից գտնվել է քարի մի բեկոր (մոտ 17 սմ բարձրությամբ), որի վրա պատկերված է սրբազան ծառին երկրպագելու տեսարանը։ Պահպանվել է միայն քանդակի այն մասը, ուր պատկերված է աջ ձեռքը վեր պարզած, ձախում՝ ծառի ճյուղ բռնած թագավորի ֆիգուրը աղոթողի դիրքով[8]։ Թագավորի ֆիգուրը կատարված է ցածր բարձրաքանդակով և ընդելուզումով, որն այժմ չի պահպանվել։ Դեմքը, ձեռքերը, հագուստի ծոպերիզները և քառակուսի զարդերը, խույրի մանրամասները և ծառի ճյուղը դնովի են եղել։ Այսպիսով, ֆոնի և պատկերների հիմնական կենտրոնների մոխրագույն քարը ագուցված է եղել սպիտակ ու այլ գույնի քարերով, հավանաբար նաև մետաղով։

Քարով ագուցումը ուրարտական արվեստի սիրված եղանակն է։ Հիշենք, թեկուզ, գահերին բազմած թերթավոր ոսկով պատած բրոնզե ֆիգուրները. այդ հեքիաթային կիսամարդ-կիսակենդանի արարածների դեմքերը քանդակված են սպիտակ քարից, աչքերն ու հոնքերը դնովի են, հագուստն ու թևերը նույնպես զարդարված են գունավոր ընդելուզումներով։ Թոփրախ-կալեում գտնվել են բազմաթիվ ձեռքեր՝ բռունցք արած կամ պարզած մատներով, որոնք քանդակված են փափուկ սպիտակ քարից և իրենց վրա փոսիկներ ունեն ամրակների համար։

Այդ կերպարները համարում էին մոգական նշանակություն ունեցող առարկաներ, սակայն ավելի հավանական է թվում, որ դրանք քարե դրվագման մասեր էին։

Ուրարտական շինությունների պատերը նույնպես երբեմն զարդարվում էին փորագրված քարե սալիկներով։ Թոփրախ-կալեում Հ. Ա. Օրբելու կատարած պեղումները տվեցին կարմիր մարմարից զարդարուն բեկորներ, որոնց վրա պատկերված էին ցուլեր (պահպանվել էին միայն մարմնի մասերը) ու ծառեր՝ պարփակված զարդաքանդակ շրջանակի մեջ[9]։

Ադիլջևազից (Արծկե) գտնված բարձրաքանդակների[10] վրայի ցուլի պատկերը իր ոճով նույնպես շատ մոտ է Օրբելու հայտնաբերած սալիկների փորա-

---

[8] Տե՛ս C. F. Lehmann-Haupt, Materialen, էջ 81, նկար 53։ Նույնի՝ Armenien, II, 2, էջ 547—548։

[9] Տե՛ս „Материалы по археологии России", տախտ. 34։ Б. Б. Пиотровский, Урарту, древнейшее государство Закавказья, Л., 1939, էջ 37։ P. Hulin, Urartian stones in the Van museum, AS, VIII, 1958, էջ 235—239։

[10] Պատկերի մասերը էստամպաժների հիման վրա հրատարակել է Լեման-Հաուպտը։




Ուրարտական բարձրաքանդակ (վերակազմություն). Արծկե (Ադիլջևազ)

գրությանը։ Ցուլի ողջ մարմինը պատած է մանր զարդաքանդակով՝ համանման այն փորագրությանը, որը բնորոշ է Թոփրախ-կալեի տաճարից գտնված բրոնզե վահանների վրայի ցուլերի ֆիգուրներին և գահերին բազմած արձանիկներին։

Ի վերջո, անհրաժեշտ է նշել ուրարտական քանդակագործության հիանալի նմուշներից մեկը ևս։ Հին-Բայազետի անձավային շինության մուտքի երկու կողմերում կանգնած են դեպի աջ թեքված երկու հսկայական մարդկային հարթ բարձրաքանդակ ֆիգուրներ, իսկ մուտքի վերևի մասում քանդակված է այծի պատկերը։ Մարդիկ երկար հագուստով են, ոչ մեծ, սրածայր գլխարկով (խույր). Նրանք կանգնած են աղոթողի դիրքով, աջ ձեռքը վեր բարձրացրած։

Բայազետի բարձրաքանդակը ուրարտական մոնումենտալ արվեստի հազվագյուտ նմուշ է։ Վերջերս Ադիլջևազում հայտնաբերվել են մի կառույցի վեց քարեր՝ բարձրաքանդակի մասերով, որոնք պատկերում են ցուլի վրա կանգնած աստծուն (հավանաբար, Թեյշեբային), որի առջևում ու ետևում տեղավորված են «կենաց ծառերը»։ Բարձրաքանդակը ունեցել է մոտ 3 մ բարձրություն[11]։ Բերված նյութերից պարզ երևում է, որ ուրարտական գեղարվեստական արհեստագործության որոշ ճյուղեր բռնել էին ճարտարապետության հետ սինթեզման ուղին, սակայն այդ երևույթը Վանի թագավորության օրոք այդպես էլ չհասավ իր ավարտին։

## 2. ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

**Ամրոցներն ու տաճարները.** Վանի թագավորությունում, որտեղ պետական միասնությունն անկայուն էր և պահպանվում էր գլխավորապես ռազմական ուժի միջոցով, ամրոցները բացառիկ կարևոր նշանակություն ունեին։ Ինչպես ամբողջ Հին Արևելքում, այնպես էլ Ուրարտուում խոշոր բնակատեղիներն ու քաղաքները շրջապատվում էին պարիսպներով կամ ունենում էին երկարատև պաշարմանը դիմանալու ընդունակ խիստ ամրացված միջնաբերդ։ Ամրոցները տարբեր նշանակություն ունեին. ամենից հաճախ դրանք ծառայում էին երկրամասը և նրա բնակչությունը պաշտպանելու նպատակին, իսկ մի քանիսը վարչական կենտրոններ էին կամ խոշոր արշավանքների հենակետեր։ Քանի որ ամրոցները տարբեր նշանակություն ունեին, ուրեմն և նրանց տիպն ու տեղի ընտրությունը ևս տարբեր էր լինում։

Ուրարտուի այս տիպի ճարտարապետական հուշարձաններից ամենից լավ ուսումնասիրված է Թեյշեբաինի քաղաքի բերդը[12]։ Հսկայական կառույցը զբաղեցնում էր մոտ 4 հեկտար տարածություն և կազմված էր շուրջ 150 սենյակից։

Բլուրի զառիթափ լանջերին հարող շինության հյուսիսային ու արևելյան ճակատներն անկանոն դասավորություն ունեին, ատիճանաձև էին, որը համապատասխանում էր Կարմիր-բլուրի մակերևույթին։ Արևմտյան ճակատը բացվում էր բերդապարիսպով շրջապատված ընդարձակ բակի վրա, որ երկու մուտք ուներ. մեկը հարավային կողմից, մյուսը՝ հյուսիս-արևմտյան։ Գլխավո-

---

[11] Տե՛ս *C. A. Burney* and *G. R. Lowson*, Urartian reliefs at Adilcevaz, on lake Van, AS, VIII, 1958, էջ 211—218։



Ուրարտական Խալդի աստծո տաճարը Մուսասիրում. մ. թ. ա. VIII դարի ասորեստանյան բարձրաքանդակ

րը դրանցից առաջինն էր՝ երկու աշտարակներով ու ներսի շինությամբ լավ ամրացված, իսկ երկրորդը մի փոքր դարպաս էր, որի միջոցով սայլը կամ մարտակառքը կարող էր ազատ անցնել, իսկ անցորդների համար կից արված էր մի նեղ դռնակ։ Գլխավոր մուտքը սալահատակված էր անկանոն ձևի հսկայական քարե սալերով, իսկ երկրորդը՝ գետաքարով։

Միջնաբերդի պարիսպները, որոնք սովորականից ավելի էին ամրացված, շարված էին չթրծված խոշոր աղյուսներից։ Պարիսպների ստորին մասը, մոտ երկու մետր բարձրությամբ, շարված էր կոպիտ մշակված հսկա քարերով, որոնք միացված էին առանց շաղախի, բայց պատած էին կավե ծեփով։ Արտաքին պարսպի հաստությունը հասնում էր 3,5 մ, իսկ ներքին պատերինը՝ 2,1 մետրի։

Շինությունն ուներ ուղղագիծ ձևեր, սակայն ճակատային գծերը կտրվում էին որմնահեցերով, միջնաբերդի անկյուններում վեր էին խոյանում վիթխարի աշտարակները։ Տարբեր մասերում պարիսպների բարձրությունը տարբեր էր՝ 6-ից մինչև 12 մետր, քանի որ բլրի ռելյեֆի պատճառով ամբողջ շինությունը աստիճանաձև տեսք ուներ։

Լուսամուտները, հավանաբար, տեղադրված էին պատերի վերին մասում, հենց ծածկի տակ։ Դա երևում է նաև ուրարտական շենքերի ասորեստանյան պատկերներում, մասնավորապես, Սարգոնի պալատի բարձրաքանդակի վրա պատկերված Մուսասիրի գրավման տեսարանում։

Շինությունների հատակը տարբեր մակարդակ ուներ և մի սենյակից մյուսը կարելի էր անցնել փայտե կամ աղյուսե աստիճաններով, իսկ երբեմն նաև հողե թեք հարթության՝ պանդուսի վրայով։ Շինության աստիճանաձևությանը համեմատ, մի հատվածի սենյակների լուսամուտները հարում էին մյուս հատվածի սենյակների տանիքին։ Բացի այդ, կենտրոնական սենյակները լավ լուսավորելու համար թողնվում էին նաև «լուսահորեր»։ Կարմիր-բլուրի միջնաբերդը չուներ ասորեստանյան պալատային կառույցների համար բնորոշ ներքին մեծ բակ։

Ուրարտական Տուշպա, Էրեբունի, Արգիշտիխինիլի քաղաքների պեղումների ժամանակ բացվել են պաշտամունքային խիստ բազմազան կառույցներ՝ տաճարներ, որոնք կանգնեցված են եղել զանազան աստվածությունների պատվին և աչքի են ընկել իրենց բնորոշ մի շարք առանձնահատկություններով։

Ուրարտուի եզակի պաշտամունքային կառույց է Մուսասիրի տաճարը, որի արտաքին տեսքի մասին կարող ենք պատկերացում կազմել Սարգոնի պալատի բարձրաքանդակի վրա եղած պատկերից՝ ասորեստանցիների կողմից Մուսասիրի Խալդի աստծո տաճարի կողոպտման տեսարանից։

Դժվար է որոշել Մուսասիրի տաճարի կառուցման ժամանակը, բայց «Լուվրի աղյուսակի» այն տեղեկությունից, որ տաճարում եղել է Իշպուինիի որդու՝ Սարդուրիի արձանը, կարելի է եզրակացնել որ IX դարի վերջին կամ VIII դարի սկզբին Մուսասիրի տաճարն արդեն գոյություն ուներ։ Շատ հավանական է, որ այն կառուցվել է IX դարի վերջին, ուրարտական թագավոր Մենուայի կողմից, որը դեռևս իր թագավորության սկզբին Մուսասիրը միաց-



Խալդի աստծո տաճարի մնացորդները. Ալթըն-թեփե

ըել էր ուրարտական տիրույթներին, որի մասին պատմում է Քելիշինի կոթողի երկլեզվյան արձանագրությունը։

Մուսասիրի խալդի աստծո տաճարի ճարտարապետական ձևերը բացառիկ հետաքրքրություն են ներկայացնում։ Դրանք լրիվ տարբերվում են Միջագետքի, Ասորեստանի և Բաբելոնի տաճարների հայտնի ձևերից։

Տաճարը կառուցված էր բարձրադիր հարթակի վրա։ Դեպի հարթակը աստիճաններ էին արված, որոնք բարձրաքանդակի վրա, հավանաբար, ներկված են եղել ու այդ պատճառով չեն պահպանվել։ Տաճարն ունեցել է նիզակով ավարտվող փարձր ճակտոնով երկթեք տանիք։ Տաճարի մուտքի ոչ բարձր դուռը, տեղավորված է եղել ճակատի կենտրոնում, մուտքի երկու կողմերում կանգնեցված են եղել երկու մեծ նիզակ ու աղոթողի դիրքով երկու արձան։

Տաճարի ճակատը զարդարել են խոյակներ ու խարիսխներ չունեցող, բայց լայնացող վերնամասով վեց սյուներ կամ որմնամույթեր։

Տաճարի ճակատային պատին երևում են ուռուցիկ միջնամաս ունեցող կլոր վահաններ, որոնք տեղադրված են ինչպես սյուների, այնպես էլ նրանց արանքում եղած պատամասերի վրա։

Այդ դեկորատիվ վահանները ձևով համընկնում են Թոփրախ-կալեում և Կարմիր-բլուրում գտնվածներին և մանրամասնորեն նկարագրված են «Լուվրի աղյուսակի» տեքստում, որտեղ հիշատակվում են նաև տաճարի առջևում դրված բրոնզե արձանները։

Արդեն առաջին հայացքից կարելի է նկատել Մուսասիրի տաճարի կապը Փոքր Ասիայի ճարտարապետական մի շարք հուշարձանների և հին հունական դասական տաճարների նախատիպերի հետ։

Այսպիսով, Մուսասիրի տաճարը բացում է Առաջավոր Ասիայի ճարտարապետության պատմության անհայտ էջեր, իրենից ներկայացնելով ճակտոն և սյունաշար ունեցող տաճարի հայտնի տիպերից հնագույնը, որն ընկել է հին ճարտարապետության հիմքում։

Լեման-Հաուպտը Մուսասիրի տաճարն իրավացիորեն կապում էր Պափլագոնիայի հուշարձանների հետ, իսկ Հերցֆելդը նշում էր, որ տաճարի երկրաչափական նախշազարդերով ճակատը հիշեցնում է փռյուգիական նմուշները։

Փոքրասիականի հետ ուրարտական արվեստի ունեցած կապերը միայն Մուսասիրի տաճարով չեն սահմանափակվում։ Բավական վաղուց արդեն նշվել է, որ հոնիական ոճի սյուների խոյակները ուրարտականին համանման դեկորատիվ տարրեր ունեն։ Այսպես, հոնիական նախշազարդային բնորոշ մոտիվներից մեկը, որ կազմված է տերևներից ոճավորված պսակի ձևով, իր ռեալիստական կերպարը պահպանել է ուրարտական արվեստում, բայց ոչ թե ճարտարապետական հուշարձանների, այլ մետաղյա շինվածքների վրա։ Այստեղ հարկ է նշել ուրարտական ճարտարապետության հետաքրքրական առանձնահատկությունը՝ քարի վրա նախշազարդեր անելու աննշան դերը։ Ուրարտական սյուների մեզ հասած բոլոր բեկորներն ու հատվածները զուրկ են քարի որևէ փորագրությունից. քանդակագործությունը օրգանապես կապված չէր ճարտարապետությունը։ Եվ նույնիսկ անձավային շինություններում, որտեղ փորագրությանը լայն ասպարեզ էր տրամադրվում, արվեստի այդ տեսակը զարգացում չի ստացել։

*Ուրարտուի ճարտարապետական հուշարձանները զարդարվում էին կամ ճարտարապետության հետ օրգանական կապ չունեցող մետաղյա իրերով (վահաններ, արձաններ), կամ քարի բազմագույն ագուցումներով։*

**Ագուցում (ինկրուստացիա) և որմնանկարներ:** *Ուրարտական ճարտարապետության մեջ գույնի հարցը մեծ նշանակություն է ունեցել։ Վերը նշվեց, որ Թոփրախ-կալեի տաճարը կառուցված է եղել բազմագույն քարերից։ Մովսես Խորենացին, հիշատակելով Շամիրամ թագուհու կողմից Վան քաղաքի կառուցման մասին առասպելը, խոսում է զանազան ներկերով ու բազմագույն քարերով զարդարված շքեղ շենքերի մասին։*

*Դեկորատիվ նպատակներով գունավոր քարի օգտագործման արվեստի մասին է վկայում Թոփրախ-կալեում բացված մեկ ուրիշ ճարտարապետական հուշարձան։ Նրա մոտ գտնվում էին հում աղյուսից կառուցված մի ինչ-որ շենքի, հավանաբար պալատի ավերակները ագուցվածքներով զարդարված քարե հատակի ու պատի մնացորդներով։ Հատակի բաց և մուգ գույնի սալերի վրա փոսիկներ էին փորվում, որոնց մեջ բազմագույն՝ սև, մուգկարմիր ու սպիտակ քարից համակենտրոն շրջաններ էին ամրացվում։*

*Արին-բերդում և Կարմիր-բլուրում կատարված պեղումները վկայում են, որ ուրարտական ճարտարապետության մեջ լայն տարածում է ունեցել նաև պատերի նախշանկարումը։*

*Արին-բերդի ավերված շինություններից մեկի պատերի սպիտակ ֆոնի վրա 1950 թվականի հետախուզական պեղումների ժամանակ հիմնականում կապույտ ու կարմիր ներկով արված հիանալի որմնազարդի մնացորդներ են հայտնաբերվել։ Պեղումները թույլ տվեցին վերականգնել նախշազարդային տարրերի հաջորդականությունը։ Պատի վերին մասում՝ դուրս ցցված քիվի վրա, տեղադրված էին շրջանակները, որոնց մեջ ներգծված էին բազմաթև աստղեր։ Դրանից ներքև անցնում էր բնորոշ ասորեստանյան տիպի արմավազարդերի շարքը՝ կապույտ ու կարմիր գույների հաջորդականությամբ, իսկ դրա տակ աստիճանաձև փոքր աշտարակների շարքով լցված մի շերտ, որը նույնպես տարածված է ասորեստանյան որմնանախշերում։ Նախշազարդ այս երեք շարքի տակ անցնում էր ցլիկների ու խոյերի պատկերներով նկարազարդված ոչ լայն ֆրիզը, իսկ ավելի ներքև՝ սրբազան ծառերն ու նրանց կողքին կանգնած աստվածներին պատկերող նկարներ։ Ծառերն իրենց ձևով մոտ են Արգիշտիի ու Սարդուրիի սաղավարտների վրա պատկերված ծառերին, սակայն ավելի սխեմատիկ են. կապույտ ներկով արված են արտաքին ուրվագիծը, բունը և խոշոր պտուղներով վերջավորված ճյուղերը։ Աստվածների կերպարանքները ևս հիշեցնում են սաղավարտների վրայի պատկերները. նրանք անմորուս են ու անթև, ձեռքերին ունեն մի-մի պտուղ և զամբյուղ։ Այդ գոտուց ներքև տեղավորված էին աստվածների ավելի խոշոր պատկերներ (օրինակ, 1952 թվականին հայտնաբերված՝ առյուծի վրա կանգնած աստծու պատկերը)։*

*Կարմիր-բլուրում հայտնաբերվել են, հավանաբար, վերին հարկի սենյակները զարդարող նախշանկարների բեկորներ. պատի կավե ծեփի փոքր բեկորների վրա եղած նախշանկարներ՝ կենտրոնում վարդյակ ունեցող շրջանակների հետ կապվող տրամախաչված շերտեր, թևավոր աստվածների պատկերների մասեր՝ դեմքեր, թևերի ու հագուստի հատվածներ և ճառագայթող շերտերով*

սկավառակների բեկորներ, որոնց ծայրերին տեղավորված են արմավազարդեր ու նռնանման խնձորներ։ Հավանաբար, այդ սկավառակների երկու կողմերում էլ հենց տեղավորվում էին թևավոր աստվածների ծնրադիր պատկերները։

Վերջերս Էրեբունի քաղաքի միջնաբերդի շինություններից մեկում հայտնաբերվել են բազմագույն նոր որմնանկարներ, որոնք հին-արևելյան արվեստի հրաշալիքներ են և իրենց աշխարհիկ բնույթով շատ բարձր մակարդակի վրա են կանգնած։ Այս որմնանկարների մեջ հանդես են գալիս ուրարտական ռազմիկները՝ գույնզգույն հագուստներով, հանդերձանքի ու զինվառության հնտաքրքիր մանրամասներով։ Այստեղ, թագավորական որսի շքեղ տեսարաններում ներկա են նաև Բիայնիլի-Ուրարտուի ճաճանչափայլ թագավորը՝ մարտակառքի վրա, նետաձգության պատրաստ վիճակում, ինչպես և նրան շրջապատող տոհմիկները, հետևազորն ու այրուձին։ Սրանք բոլորը որսի շներով հետապնդում են խուճապահար «հրեղեն» նժույգների, վայրի ցուլերի, առյուծների ու ընձառյուծների։ Այս հսկա «կտավի» ռեալիստորեն կատարված առանձին մանրամասները զարմանք են պատճառում իրենց բարձր վարպետությամբ և մրցում մեծ արվեստի գործերի հետ։ Նման տեսարաններ են թիկունքում թաքնըվող հորթուկի, կենդանուն պատառոտող կատաղի շների, սայլապանի կամ եզներին քշող երկրագործի պատկերները։ Ուրարտական որսի տեսարանները կրկնվում են Էրեբունիի դամբարանադաշտում հայտնաբերված բրոնզե գոտիների վրա[13]։

Ժայռափոր շինություններ: Հայկական բարձրավանդակում գրեթե ամեն քայլափոխի կարելի է հանդիպել հին քարտաշների հրաշալի աշխատանքի հետքերին։ Ժայռերի վրա հարթեցված հսկայական մակերեսները, հարթակները, աստիճանաձև տարածությունները և երբեմն մեկ մետր բարձրության հասնող աստիճանները վկայում են, որ քարի վրա կատարվող աշխատանքը ուրարտացիների մոտ շատ տարածված էր։

Ժայռերի մեջ փորված խորշերն ու շինությունները տարբեր նշանակություն ունեին։ Դրանց մեջ հատկապես առանձնանում էին պաշտամունքային նշանակություն ունեցողները, այդ թվում այնպիսի խորշերը, որոնց ներքին մակերևույթին փորագրվում էր կրոնական կամ ռազմական զեկուցագրի բովանդակություն ունեցող սեպագիր արձանագրություն։ Ուրարտացիներն այդ ժայռախորշերը կոչում էին «Խալդիի դռներ»։ Դրանք մեծ չափեր էին ունենում։ Այսպես, այժմ «Մհերի դուռ» կոչվող նշանավոր ժայռախորշը, որ կրում է Իշպուինիի ու Մենուայի կրոնական արձանագրությունը, հասնում էր 5,18 մ բարձրության։ Դեպի խորշը աստիճան էր տանում, իսկ ժայռի ստորոտում կառուցված էր ստորգետնյա պաշտամունքային մի շինություն։

Վանա և Ուրմիա լճերի միջև ընկած լեռներում, Կապերսու գետի ափին, Սալխանի գյուղից ոչ հեռու գտնվում է ուրարտական այդ նույն թագավորի երկրորդ ժայռախորշը («Աշրութի դուռ»), որը նույնպես կրոնական արձանագրություն ունի։

13 Տե՛ս Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Հ. Մնացականյան, Նոր-Արեշի ուրարտական կոլումբարին, էջ 63—84։



Խալդի աստվածը առյուծի վրա. որմնանկար. Արին-բերդ

*Մաղկերտի ամրոցում, այն խորշում, ուր տեղավորված է Ռուսայի սեպագիր արձանագրությունը, կա դեպի ժայռափոր ընդարձակ շինությունը տանող մի դուռ։ Վանի ժայռախորշում տեղադրված են Արգիշտիի որդի Սարդուրիի տարեգրությունը կրող քարե կոթողները, որոնք իրենց չափով շատ պատկառազդու են։*

*Ժայռի մշակման հետ կապված ուրարտական հուշարձանների մեջ հատուկ ճանաչում են ստացել Վանի ժայռի մեջ փորված արհեստական անձավները և ընդարձակ շինությունները։ Այդ անձավների նշանակության վերաբերյալ մինչև այժմ դեռևս միասնական կարծիք չկա։ Մովսես Խորենացին, նկարագրելով Վանում «Շամիրամի կառուցած» շինությունը, պատմում է, որ*

կարծր ժայռի մեջ փորել են զանազան պալատներ, սենյակներ, գանձապահոցներ։

Պարզվում է, որ Վանի ժայռի խորշերի ու անձավների մեջ կան ոչ միայն կրոնա-պաշտամունքային «դռներ», այլև թաղումային շինություններ։ Դրանցից է Վանի ամրոցում, զինանոցի մոտ 1916 թվականին Ա. Ն. Կազնակովի հայտնաբերած ժայռափոր շինությունների կոմպլեքսը։ Ներսի մասում, դռան առանցքի փոսիկներ ունեցող խորշը տանում էր դեպի մոտ 20 քմ մակերեսով ու 2,55 մ բարձրությամբ քառակուսի սենյակը։ Մուտքից ձախ գտնվող պատի մեջ, հատակից որոշ բարձրության վրա կար մի այլ մուտք՝ դեպի երկու փոքր սենյակները։ Երկրորդ սենյակը շատ ուշագրավ է։ Հարևան սենյակի հատակի մակարդակին այստեղ կար սալն ամրացնելու համար արված կտըրվածք։ Սալը ծառայում էր որպես հատակ և միաժամանակ ծածկում էր հատակատակը, որտեղից անցուղի էր արված դեպի փոքրիկ խցիկը (1,07 մ լայնությամբ և 0,85 մ բարձրությամբ)։ Այս փոքր սենյակների բնույթը թույլ է տալիս միանալ Ա. Ն. Կազնակովի կարծիքին, ըստ որի նկարագրված արհեստական անձավը տապան է եղել։ Քարե դագաղը գտնվել է, հավանաբար, հատակատակում, այն դեպքում, երբ «մեծ քարայրում», «Իչկալայում» և «Նավթ-կույում» սարկոֆագները կարող էին բարձրության վրա դրվել։

Ուրարտական այս հուշարձանների իրանական ու փոքրասիական զուգահեռները ամրապնդում են այն ենթադրությունը, որ Վանի անձավները դամբարաններ են եղել։

XIX դարի կեսին, Արաքսի աջ ափին, Ալիշար պահակակետի դիմաց (ներկայումս Նախիջևանի ԻՍՍՀ-ում) պատահականորեն բացվել է ուրարտական ժամանակաշրջանին վերաբերող ժայռափոր մի դամբարան։ Այն կազմված էր երկու բաժանմունքից՝ կամարաձև առաստաղով մի փոքր նախասենյակից և հարթ առաստաղով ու պատի մեջ եղած ուղղանկյուն խորշերով թաղման խցիկից։ Այս դամբարանում գտնվել են բրոնզե առարկաներ, անկասկած ուրարտական։

Թոփրախ-կալեի հյուսիս-արևմտյան մասում գտնվող ստորգետնյա շինությունը որոշ չափով տարբերվում է Վանի ժայռի նկարագրած շինություններից և, հավանաբար, անձավային տաճար է։

Թոփրախ-կալեում մեծ աստիճաններով կարելի է իջնել դեպի հարթակը, որտեղից մուտքը տանում է ստորգետնյա շինությունը։ Այնտեղ ընկնելու համար հարկավոր է անցնել թեք միջանցքով, որը 56 աստիճանանոց սանդուղք ունի։ Լույսի համար արված փոքր անցքերը լուսավորում են ժայռի մեջ փորված՝ հատակին ուղղանկյուն փոս ունեցող մեծ սենյակը։

Վանի արհեստական անձավները ճիշտ կերպով համադրելով փոքրասիականի հետ և համեմատական նյութեր բերելով Եգիպտոսի, Էտրուրիայի, Հունաստանի, Փյունիկիայի ու Պաղեստինի անձավային շինություններից, Լեման-Հաուպտը լրիվ անտեսում է իրանական համանման շինությունները, որոնք ըստ ժամանակի, մոտ են ուրարտականին։ Սակայն, չնայած այս ամբողջ նմանությանը, Վանի անձավային շինությունները Ուրարտուի վերգետնյա ճարտարապետության հետ կապված բազմաթիվ ինքնատիպ գծեր ունեին և նույնիսկ օգնում են այն որոշ չափով վերականգնելուն։

## 3. ԿՐՈՆԸ ԵՎ ՀԱՎԱՏԱԼԻՔՆԵՐԸ

Վանի թագավորության կրոնն ուսումնասիրելու համար կան երկու հիմնական աղբյուրներ՝ ուրարտական սեպագիր արձանագրությունները և պատկերազարդ հուշարձանները, որոնցում արտացոլված են ոչ միայն ուրարտական պաշտոնական կրոնը, այլև սեպագիր արձանագրություններում չհիշատակվող ժողովրդական հավատալիքները։

Սեպագիր արձանագրությունների հաղորդած տեղեկությունները սահմանափակ են. դրանցում հայտնվում են աստվածների անունները, պատմվում է տաճարների կառուցման մասին և թվարկվում զոհաբերությունները։

Բուն կրոնական բնույթի այնպիսի տեքստեր, ինչպես առասպելները, աղոթքները, մոգական հմայությունները համարյա թե հայտնի չեն։ Պաշտամունքային առարկաներն ու պատկերները լրացնում են գրավոր աղբյուրների տեղեկությունները և բացահայտում կրոնի որոշ կողմերը, որոնց մասին արձանագրությունները լռում են։

Ուրարտական արձանագրությունների ուսումնասիրությունը պարզորոշ ցույց է տալիս, որ ուրարտական գլխավոր աստվածը Խալդին էր, որը բացարձակորեն գերիշխող դիրք ուներ մնացած բոլոր աստվածների նկատմամբ։

Բազմաթիվ արձանագրություններում Խալդիի անվան կողքին հիշատակվում են Թեյշեբա և Շիվինի աստվածների անունները, որոնք Խալդիի հետ միասին առանձնանում են մյուս աստվածների շարքից և կազմում աստվածների գերագույն եռյակը։

Նրանք բացառիկ հետաքրքրություն են ներկայացնում, քանի որ հիշյալ երեք աստվածների զուգորդությունը արտացոլում է Ուրարտուի պատմա-մշակութային կապերը։

Բանն այն է, որ փոքրասիական Թեշուբ աստծու հետ սերտորեն կապված Թեյշեբայի (փոթորկի ու պատերազմի աստված), ինչպես նաև Շիվինիի (արևի աստված) համար ուրարտական գրության մեջ օգտագործված են Ադադ և Շամաշ աստվածների ասորեստանյան գաղափարագրերը, այն դեպքում, երբ Խալդիի անունը միշտ գրվում է վանկանշաններով։ Այս փաստից հետևում է, որ Խալդին տեղական, բուն ուրարտական աստված է, ամենայն հավանականությամբ, ուրարտական պետության կազմի մեջ մտած առաջատար ցեղի աստվածը։ Խալդին իր բացառիկ նշանակությունը ձեռք բերած պետք է լինի նախքան Վանի թագավորությունում ասորեստանյան գրություն մտցնելը։ Այսպիսով, այդ երեք աստվածները որոշ չափով արտացոլում են Վանի թագավորության կրոնի մեջ եղած տարբեր էթնա-մշակութային տարրերը։

Ուրարտացիների կրոնական պատկերացումների մեջ Խալդի աստվածը ռազմիկի կերպարանք ուներ. նա օրհնում էր թագավորին արշավանքի մեկնելիս, օգնում նրան հաղթելու թշնամուն։ Եվ պատահական չէ, որ Մուսասիրի տաճարում որոշակի արտահայտված էր նիզակի ու վահանի պաշտամունքը։ Նիզակով էր պսակավորված տաճարի ճակատոնը. նիզակներ էին տեղադրված մուտքի երկու կողմերում՝ «Մեծ դռնապանների» արձանների կողքին, իսկ վահանները կախված էին ճակատի պատերին ու սյուներին և հենց տաճարն էլ կոչվում էր «վահանի տուն»։

Ինչպես արդեն ասվեց, «Խալդիի դռներ» հասկացության տակ ուրարտական արձանագրությունները նկատի էին ունենում ժայռախորշերը։

Կրոնական հավատալիքների համաձայն, այդ դռներից դուրս էր գալիս ժայռի մեջ գտնվող աստվածը։ Լեռան միջից աստծու դուրս գալը Առաջավոր Ասիայի հին կրոններում սովորական պատկերացում էր։ Այդ են ապացուցում Հարավային Միջագետքի տաճարների զիկուրատները՝ աստիճանաձև պաշտամունքային աշտարակները (Մարդուկի տաճարը Բաբելոնում, Նաննարինը՝ Ուրում, Շամաշինը՝ Սիպպարում, ինչպես նաև Աշշուրի տաճարը Կար-Թուկուլթի-Նինուրթայում), որտեղ տաճարին կից զիկուրատի վրա փորված է խորշ ու կառուցված է դեպի այդ խորշը տանող սանդուղք։

Խալդի աստծու կինը ուրարտական պանթեոնի գլխավոր աստվածուհի Արուբանին կամ Ուարուբանի-Վարուբանին էր, որի անունը մի շարք արձանագրություններում հանդիպում է Խալդիի անվան կողքին։

Հնարավոր է, որ Թոփրախ-կալեում և Կարմիր-բլուրում գտնված մեդալյոնների վրա, ինչպես և Հայաստանի Պետական պատմական թանգարանում գտնվող կրծքազարդի վրա պատկերված լինի Արուբանի աստվածուհին։

Ուրարտական կրոնի ուսումնասիրության համար հատուկ նշանակություն ունի Վանի մոտ գտնվող ժայռախորշում (այսպես կոչված՝ «Մհեր-կապուսի» կամ «Մհերի դուռ») արված արձանագրությունը[14]։

IX դարի վերջին վերաբերող այդ արձանագրության մեջ թվարկվում են ուրարտական աստվածների անունները՝ նրանցից յուրաքանչյուրին մատուցվող զոհերի (այծերի, ցուլերի, կովերի, ոչխարների) քանակով։ Դա վառ կերպով լուսաբանում է Վանի թագավորության պաշտոնական կրոնի կապը նրա պետական կառուցվածքի հետ։ Ուրարտական պանթեոնի մեջ էին մտնում նաև նվաճված մարզերի ու քաղաքների աստվածները, հարևան ժողովուրդների աստվածները, այդ թվում տոտեմիստական ու ոգեպաշտական պատկերացումների հետ կապված աստվածները։

Ուրարտական աստվածներին զոհաբերում էին կենդանիներ. տեղեկություններ չկան բուսական զոհաբերության մասին, ինչպես այդ առկա էր Եգիպտոսում։ Կարմիր-բլուրի շտեմարաններից մեկում հայտնաբերվել են խոշոր ու մանր եղջերավոր անասունների բազմաթիվ այրված ոսկորներ։ Դրանց մշակումից, որ կատարել էր Ս. Կ. Դալը, պարզվեց, որ, նախ, բացակայում էին գանգի ու վերջավորությունների ստորին մասերի ոսկորները և ապա առկա էին մատղաշի (մի քանի օրվա կենդանիների) ոսկորները, որը սննդի համար գրեթե չի օգտագործվում։ Հավանաբար, այդ բոլոր ոսկորները զոհաբերությունների մնացորդներն էին։

Ինչպես վերը նշվեց, ուրարտացիների երեք գլխավոր աստվածներից մեկն էլ Թեյշեբան էր։ Կարմիր-բլուրի հնագիտական նյութերի մեջ պահպանվել է նրա արձանիկը։ Դա երկար հագուստով և աստծու համար բնորոշ եղջերավոր գլխարկով մի անմորուս կերպարանք է. ձախ ձեռքում նա բռնած ունի մարտական կացին, աջում՝ սկավառականման վերնամասով գուրզ։ Արծկեի (Ադիլ-

---

14 Տե՛ս УКН, 27։

չևազ) բարձրաքանդակում պատկերված ցուլի վրա կանգնած անմորուս աստվածը նույնպես, հավանաբար, Թեյշեբան է։

Թեյշեբա աստծու կինը Խուբա աստվածուհին է։ Դիցուհու պատկերը, հավանաբար, պահպանվել է Էրմիտաժում պահվող Հայկաբերդից գտնված կնիքի վրա։ Այնտեղ պատկերված է վեր բարձրացրած ձեռքով դիցուհին, որի դիրքը շատ մոտ է խուրրիական Խեբայի (Խեբատի)՝ Թեշուբի կնոջ սովորական դիրքին։ Դիցուհու աջ կողմում կանգնած է մի այծիկ, ձախում՝ մի ծառ, որի կողքին կան աղոթողի դիրքով կանգնած երկու անձեր՝ գլխավերևում մահիկներ։

Վանի թագավորության գլխավոր աստվածներից երրորդը արևի աստված Շիվինին էր, խուրրիական Շիմիգեն։

Հավանաբար, Շիվինիի խորհրդանշանն էր արևանման սկավառակը, որ հաճախ է հանդիպում պաշտամունքային պատկերներ ունեցող ուրարտական կնիքների վրա։ Այն համընկնում է Շամաշ աստծու ասորեստանյան խորհրդանշանի հետ, որը ուղեկցվում է ձկան, թռչունի և կամ կենդանիների գլուխների պատկերներով։

«Մհերի դռան» արձանագրության մեջ բերված աստվածուհիների անունների հաջորդականության հիման վրա կարելի է ենթադրել, որ Շիվինիի կինն էր համարվում Տուշպուեա աստվածուհին, որը ուրարտական աստվածուհիների գերագույն եռյակում գրավում էր երրորդ տեղը։ Եթե թևավոր արևի սկավառակն իրոք մարմնավորում է Շիվինի աստծուն, ապա պաշտամունքային կաթսաների վրա հաճախակի երևացող թևավոր կանացի պատկերները պետք է որ արտացոլեն Տուշպուեա աստվածուհուն։

**Այլ աստվածներ:** «Մհերի դռան» տեքստում բերված աստվածների ցուցակում հանդիպում է ուրարտացիների լուսնի աստված Շելարդին, որի անունը գրված է վանկագրերով, իսկ զուգահեռ տեքստում՝ լուսնի աստված Սինի ասորեստանյան գաղափարագրով։

Այդ նույն արձանագրության մեջ կան աստվածուհիների ևս երկու միանման անուններ։ Դրանք Սարդի և Ծինույարդի աստվածուհիներն են։ Առաջինի անվան մեջ Գ. Ա. Մելիքիշվիլին տեսնում է ասորեստանյան Իշտար աստվածուհու ուրարտական համապատասխանությունը։ Արձանագրությունների մեջ Սարդուրիի անվան սկզբնամասը սովորաբար գրվում է Իշտար աստվածուհու ասորեստանյան գաղափարագրով։ Սարդին, հավանաբար եղել է կամ աստղի, կամ Վեներա մոլորակի աստվածությունը։ Կարմիր-բլուրում գտնվել է լուսնաձև մի հմայիլ, որի մեջտեղում աղոթքի տեքստ կա, իսկ երկու ծայրերին Շելարդիի խորհրդանշան լուսնեղջյուրը և, հավանաբար, Սարդիին խորհրդանշող աստղը, որը արտաքինից համընկնում է Իշտար աստվածուհու խորհրդանշանին։

Ուրարտացիներն իրենց աստվածներին սովորաբար պատկերում էին մարդկային կերպարանքով, սակայն որոշ դեպքերում կարելի է տեսնել նաև նրանց սկզբնական արմատները՝ կենդանիների ու թռչունների առանձին հատկանիշները։

Այսպես, աստվածների գլխարկը որպես պարտադիր հատկանիշ ունենում էր եղջյուրներ։ Աստվածուհիները, որ ավելի վաղ շրջանում պատկերվում էին թռչունի կերպարանքով, պահպանել էին թևերը, իսկ որոշ աստվածություններ

ընդունել էին մարդկային մարմնով ու կենդանու գլխով երևակայական արարածի տեսք։ Այս ամենը նախկինում կենդանիների ու թռչունների կերպարանք ունեցող աստվածներին մարդակերպ դարձնելու տարբեր փուլերն են։ Առավել առաջադիմած դեպքերն այն էին, երբ աստվածներն արդեն լրիվ մարդակերպ են, իսկ նրանց ակունք ծառայած կենդանին հարատևում է որպես տվյալ աստծուն նվիրված կենդանի։ Այդպիսի դեպքերի թվին է պատկանում ուրարտական պատկերագրության մեջ զանազան կենդանիների վրա կանգած աստվածների պատկերումը։ Արին-բերդի որմնանկարներից մեկի մնացորդները ներկայացնում է աստվածների թափորը։ Պահպանվել է միայն առյուծի վրա կանգնած մորուքավոր աստծու մի կերպարանք։ Հայտնի են ուրարտական գահերի չորս բրոնզե մասեր՝ կենդանիների վրա կանգնած աստվածների տեսքով. աստվածներից մեկը կանգնած է առյուծի, իսկ մյուսները՝ ցուլերի կամ տարբեր կենդանիների մարմնի մասերը ունեցող երևակայական արարածների վրա։ Նման կոմպոզիցիաները սովորական են առաջավորասիական պատկերագրության մեջ։

Որոշ տվյալներից կարելի է եզրակացնել, որ Թեյշեբա աստծու հետ կապված է եղել ցուլը, իսկ Խալդիի հետ՝ առյուծը։ Հենց այդ կենդանիների պատկերներն են հատկապես հաճախ հանդիպում ուրարտական կնիքների ու ծոնական առարկաների վրա։ Այսպես, ուրարտական աստվածների տաճարներում ծոնական վահանները, Սարգոնի տեքստի համաձայն, զարդարված են եղել առյուծի, ցուլի, վիշապի և շան գլխի տեսք ունեցող միջնամասերով (ումբոն)։ Թոփրախ-կալեի և Կարմիր-բլուրի պեղումներից գտնված վահանները ծածկված են համակենտրոն գոտիների վրա զետեղված առյուծների ու ցուլերի պատկերներով։ Սեպագիր համառոտ տեքստեր պարունակող բրոնզե բազմաթիվ իրերի վրա կան առյուծի ու ցուլի գլուխների պատկերներ։

Մարդու, կենդանիների ու թռչունի հատկանիշներն իրենց մեջ զուգակցող աստվածություններից մի քանիսը արհեստականորեն ստեղծված կերպարներ էին, որ կարևոր տեղ էին գրավել կրոնի մեջ։ Այդպիսին են չեզոք աստվածությունները՝ մարդկային դեմքով կամ իրանով թևավոր ցուլերն ու առյուծները, որոնք Ուրարտու են անցել Ասորեստանից, և սրբազան ծառը սպասարկող թևավոր ոգիները՝ երբեմն կենդանիների գլուխներով, որոնք նույնպես սերտորեն կապված են ասորեստանյան պատկերագրության հետ։

Ուրարտական պատկերագրության հետաքրքիր նյութ է տալիս 1956 թվականին Կարմիր-բլուրում գտնված բրոնզե գոտին։ Այստեղ կան առյուծի վրա (Խալդի), ցուլի վրա (Թեյշեբա) կանգնած աստվածների պատկերներ և ձեռքերը վեր պարզած ու արևի թևավոր սկավառակը բռնած ծնրադիր մի կերպարանք (Շիվինի )։ Այս երեք աստվածներից բացի, որոնց կարելի է նույնացնել ուրարտական պանթեոնի գլխավոր աստվածների հետ, գոտու վրա ներկայացված են նաև ասորեստանյան չեզոք հիշեցնող՝ մարդու գլխով մի ցուլ (կամ առյուծ), արմավազարդի վրա տեղադրված գառնանգղի գլխով թևավոր մի կենդանի, ինչպես նաև շրջանակի մեջ առնված խիստ ոճավորված մի սրբազան ծառ։

Ինչպես արդեն նշվեց, ուրարտական աստվածների ցուցակը («Մհերի դուռ») բովանդակում է նաև Վանի թագավորության կազմի մեջ մտնող ցե-

ղերի և ժողովուրդների աստվածների անունները։ Մենք հանդիպում ենք Արդինիի (ասորեստանցիների կողմից՝ Մուսասիր անվանված), Կումենու քաղաքի աստծուն, Ուրարտուի Տուշպա մայրաքաղաքի աստծուն, Խալդիի քաղաքի աստծուն և Արծունիունի քաղաքի աստծուն։

«Մհերի դռան» ցուցակից դուրս, Էրեբունիի և Թեյշեբաինիի արձանագրություններում հանդիպում ենք նաև Իուարշա անունով աստծուն։ Սա, հավանաբար, Արգիշտի Ա-ի կողմից Խաթեից և Ծուփանիից Էրեբունի տեղափոխված ռազմիկների աստվածն էր, որի պաշտամունքը, ինչպես ցույց է տալիս Թեյշեբաինիի արձանագրությունը, այստեղ արմատներ էր գցել։ Թեյշեբաինիի արձանագրության մեջ հիշատակված է նաև Բաբելոնյան Մարդուկ աստվածը[15]։

**Տոտեմիստական պատկերացումներ:** Բացի հիշատակված աստվածների անուններից, կարելի է տեսնել մի խումբ աստվածությունների, որոնք արտացոլում էին հին տոտեմիստական պատկերացումները։ Այսպիսին են «Էբանինաուե», այսինքն՝ «երկրների» (գետնի) աստվածը, «Ծուինինաուե»՝ «ծովերի» (ջրի) աստվածը, «Բաբանինաուե», այսինքն՝ «լեռների» աստվածը, Արնին՝ ուժի (հզորության) աստվածը, Խարան՝ ճանապարհի (արշավանքի) աստվածը և Այրաինին՝ անձավների (՞) աստվածը։

Ուրարտական պատկերահուշարձանները հարուստ նյութ են տալիս նաև այն պաշտամունքների վերաբերյալ, որոնք, չնայած Վանի թագավորությունում իրենց ունեցած լայն տարածմանը, ոչ մի արտացոլում չեն գտել արձանագրություններում։ Օրինակ, ծառի պաշտամունքը։ Սրբազան ծառի՝ կենաց ծառի պատկերը, հատկապես նրա կողքին կանգնած երկու թևավոր ոգիների հետ միասին, հաճախ հանդիպում է Ուրարտուում, մի բան, որը խիստ բնորոշ է և ասորեստանյան արվեստին։

Սրբազան ծառը, երբեմն աստղային խորհրդանշանների հետ համակցված, հաճախ է հանդիպում ուրարտական կնիքների վրա։ Մի կնիքի դրոշմի վրա տեսնում ենք ծառի ու քարե երեք



Թեյշեբա աստծու բրոնզե արձանիկը. Կարմիր-բլուր

15 Տե՛ս *Н. В. Арутюнян*, Новые урартские надписи Кармир-блура, էջ 63, 95—97։



Եռոտանու վրա դրված ուրարտական կաթսա. Ալթըն–թեփե

կոթողների առջև աղոթող դիրքով կանգնած մարդկային կերպարանք, ծառի մոտ՝ ջրով լի մի սափոր, իսկ կոթողների ետևում՝ պաշտամունքային առարկա։

Սրբազան ծառին երկրպագելու նման տեսարան է պատկերված նաև ագուցումներով զարդարված պատի երեսին։ Դրա վրա տեսնում ենք ծառի առջև աղոթողի դիրքով կանգնած ուրարտական թագավորին, որը ձեռքին սրբազան ծառի ճյուղ ունի բռնած։

Ուրարտական այն կնիքների վրա, որոնց դրոշմները գտնվել են Թոփրախկալեի պեղումներից, պատկերված են պաշտամունքի հետ կապված տեսարաններ։ Մի քանիսի վրա պատկերված է թագավորը՝ հավանաբար, քրմապետի դերում. նա կանգնած է հովանոցի տակ, որ բռնել է նրա մերձավորը, ետևում կա եռաժանիի ձևի մի ինչ-որ առարկա։ Երբեմն նկարի վրա թագավորի կողքին լինում է և առյուծ, որը, հավանաբար, որպես սրբազան կենդանի պահվում էր ուրարտական տաճարում։

Հետաքրքրություն է ներկայացնում մի կնիքի վրա պատկերված ձկնակերպ աստվածությունը։ Այսպիսի աստվածությունների երեք կավե կերպարներ գտնըվել են Կարմիր-բլուրում՝ գինու պահպանման համար նախատեսված մի պահեստասենյակում եղած զոհասեղանի մոտ։ Արձանիկները միատիպ են. դրանք կանգնած մորուքավոր կերպարանքներ են, որոնց գլուխներն ու մեջքերը ծածկված են ձկան մաշկով այնպես, որ ձկան գլուխը գլխարկի տեղ է ծառայում։ Աստվածների ձախ ձեռքը դրված է փորին, իսկ աջը՝ մեկնված է առաջ։ Այդ ձեռքի մեջ, հավանաբար, նիզակ կամ ծառի ճյուղ է եղել, քանի որ արձանիկների բոլոր պատվանդանների վրա փոսիկ է արված, որի մեջ ամրացվում էր փայտիկը։ Արձանիկները ներկված են եղել. մեջքի վրա պահպանվել են վառ-կապույտ ներկի հետքերը։

Աշշուրում կատարված պեղումներից հայտնաբերվել են ձկնային հանդերձավորումով, մորուքավոր աստվածների կավե արձանիկներ, ընդ որում աստծու գլխարկը հենց ձկան գլուխ է։

Գինու մեկ ուրիշ պահեստասենյակում նույնպես գտնվել է կավե մի արձանիկ, բայց այս անգամ ոչ թե ձկնակերպ, այլ կարիճի պոչ ունեցող աստծու կերպարանքով։ Նրա վրա պահպանված են ներկի հետքեր։ Դեմքը ներկված է եղել սպիտակ, աչքերը՝ կարմիր, մազերն ու մորուքը՝ մուգ-դարչնագույն, իսկ գըլխարկը՝ վառ-երկնագույն ներկով։ Աստվածների այսպիսի պատկերների հանդիպում ենք և Միջագետքում՝ Ուրի հուշարձանների վրա։ Դրանք հատկապես հաճախ են պատահում ուշ բաբելոնյան ու ասորեստանյան կնիքների վրա։

Բերված նյութի հիման վրա կարելի է եզրակացնել, որ Վանի թագավորության կրոնը սերտորեն կապված է եղել Առաջավոր Ասիայի նրան շրջապատող երկրների կրոնի հետ։ Բացի տեղական ուրարտականից, այդ կրոնի մեջ կարելի է հանդիպել Միջագետքի (ասսուրա-բաբելոնական), Փոքր Ասիայի (խուրրիախեթական), իրանական տարրեր։

Ուրարտուի որոշ կրոնական տարրեր միաժամանակ լայն տարածում են ստացել ողջ Առաջավոր Ասիայում, հասնելով մինչև Միջերկրական ծովի շրջանը։



Ձիու գլուխ. բրոնզ. Կարմիր-բլուր

## 4. ԼԵԶՈՒՆ ՈՒ ԳԻՐԸ

*Ուրարտերեն և նրա ազգակից խուրրիերեն լեզվով խոսող ժողովուրդները մ. թ. ա. II—I հազարամյակներում լայնորեն տարածված էին Հայկական բարձրավանդակի վրա։ Վանա լճից հարավ-արևելք, ներկայիս Ռևանդուզ քաղաքի շրջանում ընկած Մուսասիրի շրջանը, հավանաբար, ուրարտերեն լեզվի տարածման հարավային սահմանն էր։ Այն անմիջապես հարում էր ասորեստանյան լեզվի տարածման տերիտորիային։ Վանա լճի հյուսիսային ափերին գտնվող Ձիուկունի երկրի բնակչությունը նույնպես ուրարտական պիտի լիներ։ Խուրրի-ուրարտական բնակչության հյուսիսային սահմանը պարզ չէ։ Հավանական է, որ այն անցնում էր անդրարաքսյան շրջաններով։*

*Ուրարտերեն լեզվի ուսումնասիրության համար հիմնական նյութ են ծառայում ուրարտական արձանագրությունները։ Լրացուցիչ տեղեկություններ կարելի է քաղել ասորեստանյան աղբյուրներից, որտեղ զգալի թվով հատուկ անուններ են վկայված։ Որոշակի օգնություն են ցույց տալիս խուռրիերեն լեզվի տվյալները, որի հետ ուրարտերենը մոտ ազգակցություն ունի։ Մեզ հասել են ուրարտական մի քանի հարյուր արձանագրություններ, գրված քարի, մետաղի, ոսկրի, վերջապես կավե սալիկների վրա[16]։*



Կոշկաձև կավանոթներ. Կարմիր-բլուր

*Ուրարտական վիմագիր արձանագրությունները ծայրահեղորեն միանման են. մեծ մասամբ պարունակում են հաղորդումներ արշավանքների և հաղթանակների, տեղեկություններ շինարարական աշխատանքների (ամրոցների, պալատների, տաճարների կառուցման, ջրանցքների անցկացման, խաղողի և պտղատու այգիներ գցելու) մասին։ Արձանագրությունների մի փոքր մասը պարունակում է կրոնական և պաշտամունքային բովանդակությամբ տեքստեր։ Արձանագրությունների այդ միանմանությունը դժվարացնում է լեզվական շատ հարցերի լուծումը, ուստի և միշտ չէ, որ հաջողվում է տեքստը թարգմանել լիակատար վավերականությամբ և հիմնավոր։ Ամենից ավելի մեծ դժվարություններ է հարուցում կավե սալիկների տեքստերի մեկնաբանությունը։ Դրանք ուրարտական թագավորների նամակներն են փոխարքաներին կամ տնտեսական դիվանների վավերագրեր։*

---

16 *Սույն բաժնում օգտագործված են Գ. Ա. Մելիքիշվիլու* «Наири-Урарту» *գրքի նյութերը*։

Ուրարտուն ունեցել է և իր հիերոգլիֆ գիրը, որը սահմանափակ տարածում ուներ և դուրս չէր գալիս նեղ տնտեսական ու պաշտամունքային կարիքների սահմաններից։

Կարելի է ենթադրել, որ ուրարտացիները, ինչպես և ասորեստանցիները, քարի և կավի վրա արձանագրելու համար օգտագործվող սեպագրերին զուգահեռ կիրառում էին նաև արամեական գիրը՝ պապիրուսի վրա։ Կարմիր-բլուրում գտնվել է մեկ բուլլա՝ կնիքի դրոշմվածքով, որով, դատելով նրա ստորին մասում եղած դրոշմից, կնքված է եղել հենց պապիրուսի փաթեթը, որն այրվել է հրդեհի ժամանակ։

Վիմագիր արձանագրություններից դատելով, ուրարտական սեպագիրը փոխ է առնվել Նոր-ասորեստանյան սեպագրից՝ IX դարում։ Սակայն մի շարք առանձնահատկություններ, որոնք հատկապես աչքի են ընկնում կավե սալիկների գրության ձևերի մեջ, թույլ են տալիս խոսելու ուրարտական սեպագրի նաև այլ՝ ավելի հին՝ մ. թ. ա. II հազարամյակին վերաբերող խեթա-խուրրիական ակունքների մասին[17]։

Ուրարտական թագավորների մեզ հայտնի հնագույն արձանագրությունները՝ Սարդուրիի՝ Լուտիպրիի որդու (մ. թ. ա. IX դարի 30-ական թվականներ), գրված են ասուրերեն լեզվով։ Ուրարտերենով գրված մեզ հայտնի առաջին արձանագրությունները պատկանում են այդ թագավորի հաջորդին՝ Իշպուինիին։ Այդ ժամանակից սկսած (IX դարի վերջին քառորդ), Ուրարտուում արձանագրությունները կազմում էին հիմնականում ուրարտերեն լեզվով. միայն երկու դեպք է հայտնի, երբ արձանագրությունները կազմվել են երկու լեզվով՝ ուրարտերեն և ասուրերեն (Քելիշինի և Թոփուզավայի երկլեզվյան արձանագրությունները)։

Ուրարտական ամենաուշ սեպագիր տեքստերը պատկանում են մ. թ. ա. VI դարի սկզբի թագավոր Ռուսա Դ-ին («Ռուսա, Ռուսայի որդի»)։ Նրանք գլանաձև կնիքների դրոշմեր են՝ կավե աղյուսակի և բուլլայի վրա։

Ուրարտական դրության մեջ սեպաձև նշանները մոտավորապես նույն գծագրությունն ունեն, ինչ որ Նոր-ասորեստանյան սեպագրի համապատասխան նշանները, սակայն, ի տարբերություն ասորեստանյան նշանների, որոնք եռանկյունի գլխիկ և գծի տեսքով առանցք ունեն, ուրարտական նշանները գրեթե միշտ խիստ ձգված եռանկյունիների տեսք ունեն։ Ուրարտական սեպագիրը ունի և այլ յուրօրինակ գծեր։

Գրի հիմնական սկզբունքները այստեղ նույնն են, ինչ որ ասորեստանյան կամ որևէ այլ սեպագրինը։ Կան նշաններ՝ ձայնավորների, երկձայն վանկերի և եռաձայն վանկերի համար, գաղափարագրեր, այսինքն՝ հասկացություններ արտահայտող նշաններ (օրինակ՝ «երկիր», «ջուր», «աստված» և այլն)։

Պետք է ընդգծել, որ ուրարտական արձանագրությունները ըմբռնելի են զգալի չափով հենց շնորհիվ այդ գաղափարագրերի, ինչպես և նրանց տարատեսակը կազմող սահմանիչների (դետերմինատիվների), որոնք նույն նշանակությունը ունենալով ասուրերեն և ուրարտերեն արձանագրություններում, հաճախ հնարավորություն են տալիս հասկանալու ուրարտական տեքստի իմաստը առանց իմանալու այս կամ այն բառի ուրարտերեն հնչման ձևը։

17 Տե՛ս УПД, էջ 18 և հաջ.։



Սեպագիր հրամանագիր հողի բաժանման մասին. Կարմիր-բլուր

Ուրարտացիները, սակայն, փոխ են առել ասորեստանյան սեպագիր նշանների միայն մի մասը և այն էլ ոչ այն բոլոր նշանակություններով, ինչ որ տրված նշանն ունի ասորեստանյան սեպագրի մեջ։ Այսպիսով, ուրարտական սեպագիրը անհամեմատ ավելի պարզ է, քան ասորեստանյանը։

Ուրարտական, ինչպես և ամեն մի այլ սեպագիր կարդացվում է ձախից աջ։ Սովորաբար ուրարտացիները գրում էին գծագրված տողերում, բառերը ոչնչով չէին բաժանվում միմյանցից, սակայն առանձին բառերի անջատումը

*հեշտանում էր նրանով, որ տողադարձ չէր թույլատրվում, խստորեն պահպանվում էր այն կանոնը, ըստ որի բառը պետք է վերջանար այն նույն տողում, որտեղ նա սկսվել էր։*

*Անհրաժեշտ է հիշել, որ ուրարտական սեպագիր նշանները տառադարձվում են այն նշանակությանը համաձայն, որ նրանք ունեցել են ասորեստանյան սեպագրում։ Միաժամանակ հավանական է, որ սեպագրի ասորեստանյան համակարգը, որն օգտագործվել է այլ լեզվի արտահայտման համար, չկարողանար ճշտորեն հաղորդել ուրարտական լեզվի բոլոր հնչյունները։ Ուստի մի շարք դեպքերում ի վիճակի չենք որոշելու ուրարտական հնչյունների իսկական արտասանությունը։ Ավելի հաստատուն հողի վրա ենք կանգնում ուրարտերենի բառապաշարը, քերականությունը, ձևաբանությունը, շարահյուսությունը և նրա ունեցած լեզվական կապերը ուսումնասիրելիս։ Համեմատաբար լավ է ուսումնասիրված ուրարտական քերականության մեջ անունը, նրա հիմքերը, բայը, նրա խոնարհման համակարգը։ Որոշակի հաջողություններ են ձեռք բերված դերանունների, թվական անունների, անցողական ու անանցողական մասնիկների և այլնի ուսումնասիրման գործում։*

*Ուրարտուի արձանագրական հուշարձանների բառապաշարի ուսումնասիրության ժամանակ ի հայտ են գալիս ուրարտական լեզվի հարավ-արևելյան՝ մուսասիրյան խոսվածքի հետքերը, որը տարբերվում է Վանի թագավորության կենտրոնական մասերի խոսվածքից։*

**Ուրարտերեն լեզվի ազգակցությունը խուռիերենի հետ և ուրարտա-հայկական լեզվական կապերը:** *Հատկապես նկատելի է ուրարտերենի և խուռիերենի մոտ ազգակցության փաստը։ Որքան առաջ են գնում այդ լեզուների մասին մեր գիտելիքները, այնքան ավելի վառ կերպով է հանդես գալիս նրանց միջև եղած ազգակցությունը։ Արդեն հնարավոր է դարձել գրելու նրանց միասնական, համեմատական քերականությունը*[18]*։*

*Ուրարտերենն ու խուռիերենը միմյանց մոտ են կանգնած առաջին հերթին իրենց կառուցվածքով։ Ուրարտերենի մեջ այնքան կարևոր դեր խաղացող էրգատիվ կառուցվածքը ոչ միայն բնորոշ է նաև խուռիերենի համար, այլև գրեթե լրիվ նույնական են այն արտահայտող ածանցները, խիստ մոտ են երկու լեզուների հոլովական վերջավորությունները, երևան են գալիս համանմանություններ դերանունների մեջ և ընդհանուր երևույթներ հնչյունական համակարգում։*

*Այդ երկու լեզուների միջև եղած նմանությունները առանձնապես շատ են նրանց բառապաշարում։ Օրինակ՝ ուրարտ.* **խուրադի** *«ռազմիկ»— խուռր.* **խուրատի**, *ուրարտ.* **պիծուշե** *«ուրախություն»— խուռր.* **պիս** *«ուրախանալ», ուրարտ.* **պիլի** *«ջրանցք»—խուռր.* **պալլա**, *ուրարտ.* **շալի** *«տարի»—խուռր.* **շաւալա**, *ուրարտ. և խուռր.* **խարի** *«ճանապարհ», ուրարտ.* **տարշուանի** *«մարդ»— խուռր.* **տարշու(վ)անի**, *ուրարտ.* **սիլա** *«դուստր»— խուռր.* **շալա** *և այլն*[19]*։*

*Բացի այդ, ուրարտական աստվածությունների գլխավոր եռյակում երկու աստված իրենց անունով ընդհանուր են։ Ինչպես վերը նշվեց, ուրարտական*

---

18 *Տե՛ս И. М. Дьяконов,* Языки древней Передней Азии, М., 1967, *էջ 113—165։*

19 *Տե՛ս* УКН, *էջ 91—92։*

պանթեոնում տեղական Խալդի աստծուց հետո երկրորդ տեղը զբաղեցնում էր Թեյշեբա աստվածը, որն ընդհանուր, խուրրիական գլխավոր աստվածն էր (խուրրիների մոտ՝ Թեշուբ)։ Խուբա աստվածուհին՝ երկրորդը ուրարտական աստվածուհիների մեջ, համապատասխանում է խուրրիական Խեբա աստվածուհուն (Թեշուբի կնոջը)։ Ուրարտական պանթեոնում երրորդ տեղը զբաղեցնող արևի աստված Շիվինին նույնպես համանմանություն ունի խուրրիական արևի աստված Շիմիգեի հետ։ Ուրարտացիների և խուրրիների աստվածների ընդհանուր անունների առկայությունը վկայում է այդ երկու էթնիկական խմբերի ոչ միայն լեզվական, այլև մշակութային, իսկ վերջին հաշվով՝ նրանց կուլտուր-էթնիկական նկարագրի մոտիկության մասին։

Այսուհանդերձ այդ երկու լեզուների միջև եղած բազմաթիվ ու կարևոր տարբերությունները բերում են այն եզրակացության, որ մեր առջև ոչ թե միևնույն լեզվի բարբառներն են, այլ իրար հետ սերտ ազգակցական կապեր ունեցող լեզուներ։

Կարծիք է հայտնված նաև ուրարտերենի՝ հնդեվրոպական նախալեզվի հետ ունեցած ազգակցության մասին[20]։



Ասորեստանի Ասարխադդոն թագավորը։ Ասորական բարձրաքանդակ։ Մ. թ. ա. VII դար

Կարևոր ու հետաքրքրական, բայց միանգամայն այլ տիպի խնդիր է ուրարտերենի և հայերենի միջև եղած ընդհանրությունների խնդիրը։ Այստեղ ազգակցություն չկա, լեզուները տարբեր լեզվական ընտանիքների են պատկանում։ Բայց հայ ժողովրդի կազմավորման պրոցեսում հայկական ցեղերի և ուրարտացիների կողք-կողքի երկարատև գոյակցությունը և ապա ուրարտացիների միաձուլումը կազմավորվող ժողովրդին, հանգեցրել է ուրարտերեն լեզվի բառապաշարի նշանակալից տարրերի ներթափանցմանը հայոց լեզվի մեջ, ինչպես նաև ընդհակառակը՝ հնդեվրոպական-հայկական լեզվի տարրերի ներթափանցմանը ուրարտերենի մեջ։

---

19 Տե՛ս УКН, էջ 91—92։

20 Տե՛ս Г. Б. Джаукян, Урартский и индоевропейские языки, Ереван, 1963.

*Այսպես, ժամանակակից հայերենում պահպանվել են բազմաթիվ պարզորոշ ուրարտական արմատներ, գոյականներ, բայեր, տեղանուններ։ Օրինակ՝ ուր.* **էվրի** *— «տեր», հայերեն* **ատի-որդ||օրի-որդ** *բառի բաղադրատարր, ուր.* **ծուե** *— «ծով, լիճ», հայ.* **ծով**, *ուր.* **պիլի** *— «ջրանցք», հայ.* **պեղ-ել** *բայի արմատ, ուր.* **խուբի** *— հայ.* **հովիտ**, *ուր.* **ուլտու** *— հայ.* **ուղտ**, *ուր.* **աբիլի-դուբի**, *հայ.—* **ավել-ացնել**, *ուր.* **կապի** *(տարողության չափ) — հայ.* **կապիճ**, *ուր.* **ուլ-ադի** *— «ուղևորվեցի» — հայ.* **ուղի**, *ուր.* **շուրի** *— հայ.* **սուր** *(զենք), ուր.* **ծառի՝** *«պտղատու այգի» — հայ.* **ծառ** *և այլն և այլն։*

*Բացառված չէ, որ սրանցից այս կամ այն օրինակը ոչ թե ուրարտերենի ազդեցության հետևանք լինի հայերենի վրա, այլ, ընդհակառակը, հայկական բառ՝ մուծված ուրարտերենի մեջ։*

*Անկասկած է տեղանունների ուրարտա-հայկական լայն ընդհանրությունը. Էրեբունի-Երևան, Աբիլիանի-Աբեղեանք, Աբունի (Ավունի)-Հավունի-Հավնունիք, Տուարածինի խուբի-Տուարածահովիտ, Տուարածատափ, Տարիունի-Դարույնք, Դիաուխի-Տայք, Զարախա-Ջավախք, Գիառնիանի-Գառնի, Ալզի-Աղձնիք, Բիայնիլի-Վան, Տուշպա-Տոսպ, Մելիտեա-Մալաթիա, Ալիա-Աղիովիտ, Նուփա-Նոփք և այլն և այլն։*

* * *

*Այսպիսով, հայ հասարակության անմիջական ակունքներից մեկի՝ Ուրարտուի մշակույթի համառոտ ակնարկը ցույց է տալիս, որ հինարևելյան տիպի ուշ շրջանի այդ պետությունն ունեցել է բարձր զարգացած ինքնատիպ մշակույթ, որը սկզբնապես կապված է եղել խուրրիական աշխարհի հետ, իսկ ավելի ուշ, մ. թ. ա. IX դարից սկսած, կրել է Ասորեստանի ուժեղ ազդեցությունը։ Բայց, չնայած դրան, Ուրարտական պետությունը, համեմատաբար կարճատև գոյության ընթացքում, որ տևել է շուրջ երկու և կես դար, մշտապես պահել է իր մշակույթի ուրույն գծերը և ազդել ոչ միայն իր կազմի մեջ մտած երկրների, այլև այն երկրների մշակույթի զարգացման վրա, որոնց հետ հարաբերություն է ունեցել։ Ուրարտական մշակույթի ազդեցությունը, որոշ առումով, տարածվել է նրա քաղաքական սահմաններից շատ հեռու՝ Կովկասի ու Սկյութիայի, Փոքր Ասիայի ու Միջերկրածովյան շրջանի, ինչպես նաև Իրանի վրա։*

# ԲԱԺԻՆ Դ



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ԱՎԱՐՏԸ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՔԵՄԵՆՅԱՆՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԱԿ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ԱՎԱՐՏԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄՆԵՐԸ

## 1. ԱՐՄԵ-ՇՈՒՊՐԻԱ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

*Ուրարտական թագավորության կործանումից հետո, մարական գերիշխանության և հայկական ցեղային միությունների քաղաքական հեգեմոնիայի իրագրության մեջ, ավարտվեց հայ ժողովրդի կազմավորման պրոցեսը, որի հիման վրա երևան եկան հայկական առաջին պետական կազմավորումները։*

*Գիտության մեջ տակավին քիչ են լուսաբանված քաղաքական այս միավորների առաջացման հարցերը, ինչպես և այն վճռական գերը, որ խաղացին Ուրարտուի ընգերքում ձևավորված հայկական ցեղային միությունները։ Սրանք այն հիմնական միջուկներն էին, որոնց շուրջը համախմբվեցին վաղ հայկական պետական միավորումները[1]։*

*Հայկական պետական միավորումների առաջացման երկու կենտրոններ: Ուրարտական պետության գոյության ժամանակաշրջանում նրա արևմտյան և հարավ արևմտյան մասերում տիրապետող էթնիկական տարրը արմենական ցեղերն էին[2]. սրանց անունով էլ Մշո դաշտը (հին հայկական Տարոնը) և Արևմտյան Տիգրիսի ու Եփրատ-Արածանի գետի ներքին հոսանքի հովիտները (հին հայկական Աղձնիքը) ուրարտական արձանագրություններում կոչվում են Արմե։ Հենց այստեղ՝ Ուրարտուի և Ասորեստանի «բարբարոս ծայրամասերի» ամենաթույլ օղակներում, կազմավորվեցին հայկական ցեղային միությունները։*

*Փոքր Ասիայից մուշկերի, փռյուգացիների և ուրումեացիների (արմեններ) ներխուժումից հետո (մ. թ. ա. 1170—1160) Ասորեստանի պետության մեջ մտնող Շուպրիա կամ Արմե երկրում ստեղծվեց հայերի և նրանց ազգակից ցեղերի միությունը, որը հայտնի էր իբրև «Մուշկերի» թագավորություն։ Սկզբնական շրջանում այստեղ ապրող հայկական և այլ ցեղերը, ըստ երևույթին, Ասորեստանի հարկատուներն էին, սակայն հետագայում նրանք անջատվում են և իրենց ինքնուրույնության համար պայքար մղում ոչ միայն Ասորեստանի, այլև*

---

1 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայկական առաջին պետական կազմավորումները*, ՊԲՀ, 1968, № 3, էջ 91—120։ Գ. Ա. Տիրացյան, *Հին հայկական պետության առաջացումը*, ՊԲՀ, 1966, № 4, էջ 83—102։

2 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայերի ցեղային միությունը Արմե-Շուպրիա երկրում*, ՊԲՀ, 1958, № 3, էջ 59—72։

Ուրարտուի դեմ։ Իր հզորության շրջանում ուրարտական պետությունը, սկսած Մենուայի (810—786) ժամանակներից, արշավանքներ է կատարում Ուրմե (նույն Արմե-Շուպրիա) երկրի վրա, բայց այն հաջողվում է նվաճել միայն Արգիշտի Ա-ի օրոք (786—764)։ Արմե-Շուպրիան, սակայն, Ուրարտուին ենթարկվում է ընդամենը 60 տարի (773—714)։ Շուտով այն ազատագրվում է և մ. թ. ա. VII դարում դառնում Մերձավոր Արևելքում բորբոքված բուռն իրադարձությունների մասնակիցը։

Արևմտյան և Արևելյան Տիգրիսի հովիտներում ընկած երկրները՝ Արմե-Շուպրիան, Նաիրի-Խուբուշկիան և Արդինի-Մուսասիրը (ավելի ուշ հին հայկական Աղձնիք, Մոկք, Անձևացիք, Կորճայք և այլ գավառները) Սարգոն Բ-ի մ. թ. ա. 714 թվականի արշավանքից հետո անջատվում են Ուրարտուից։ Այդ երկրներից Արմե-Շուպրիան վաղուց ընդգրկվել էր հայերի կազմավորման ընդհանուր ընթացքի մեջ։ Նույնիսկ Ռուսա Բ-ի թագավորության շրջանում (685—645), երբ ուրարտական պետությունը նկատելիորեն վերականգնում էր իր հզորությունը, նրան չի հաջողվում վերամիավորել 714 թվականին անջատված հարավային ծայրամասային երկրները՝ Արմե-Շուպրիան, Նաիրի-Խուբուշկիան և Արդինի-Մուսասիրը։ Մ. թ. ա. VII դարի վերջին նշված երկրները միավորվում են մեդացիների հետ և համատեղ հարվածներով կործանում նախ Ասորեստանը, ապա և Ուրարտուն։

Արմե-Շուպրիան առաջատար տեղ է գրավում Հայկական Տավրոսից հարավ, Ուրարտուից անջատված երկրների մեջ և դեպի այն են ձգտում Արևելյան Տիգրիսի հովտում ընկած տերիտորիաները՝ առանձնապես Նաիրի-Խուբուշկիան, որն արդեն VI դարում (մ. թ. ա.) հայացված պիտի լիներ։ Այդ ժամանակաշրջանում, ամենայն հավանականությամբ, Արևելյան Տիգրիսի հովտում էթնիկական տիրապետող տարրը հայերին ազգակից մոկսիանների ցեղերն էին[3]։

Մոկսիանների ցեղերից էլ ծագում է Մեծ Հայքի տասնհինգ նահանգներից մեկի՝ Մոկքի (Մոկսի) անունը, որի տերիտորիան քաղեյա-ասսուրական արձանագրությունների Խուբուշկիան է։ Նրանից հարավ էր գտնվում Հերոդոտի Պակտիկեն (հայկ. Կորդուքը), որը նա համարում է Արմենիայի սատրապության մեջ մտնող երկիր։ Մոկքից հարավ-արևելք տարածվում էր Մատիենեն, որը գտնվում էր Մեծ Զաբի վերին հոսանքում և հնում կոչվում էր Մուսասիր։ Հերոդոտի ասելով՝ Հայաստանը տարածվում էր մինչև այդ երկիրը[4]։

Հայկական ցեղերը Արմե-Շուպրիայից, հավանաբար, Նաիրի-Խուբուշկիայի վրայով, թափանցում են Ուրարտուի կենտրոնական շրջանը՝ ուրարտական պետության մայրաքաղաքի՝ Տուշպա-Վանի տերիտորիան, և ժամանակի ընթացքում դառնում գերակշռող ժողովուրդ։ Հայերի գերակշռությունը Տուշպա-Վանում և Վանա լճի հարավ-արևելյան մերձափնյա շրջանում այնքան ակնառու էր, որ այն խոշոր գետի հովտի հետ միասին սկսեց կոչվել «Հայոց ձոր»։

**Արմե-Շուպրիայի տնտեսությունը:** Արմե-Շուպրիայի տերիտորիայի բնապատմական պայմանները նպաստում էին հողագործության զարգացմանը, ո-

---

[3] Սրանց մի մասը շարունակում էր ապրել Փոքր Ասիայում, Լիկիայի և Կարիայի միջև (տե՛ս Μοξιανοί-Moxiani, *Ptol.*, V, 2, 18) դեռևս մ. թ. սկզբներին (*Plin.*, NH, VI, 10)։

[4] Տե՛ս *Herod.*, V, 40։

րով հնուց անտի զբաղվում էին տեղական խուրրիական ցեղերը։ Շուտով այստեղ ամրացան նաև «մուշկերի» ներթափանցած ցեղերը, որոնք նույնպես զբաղվեցին հողագործությամբ։ Այս ցեղերի մեջ լայն զարգացում ստացավ նաև ձիաբուծությունը, այն աստիճան, որ ձիերը դառան նրանց կողմից ասորեստանցիներին տրվող հարկի հիմնական մասը[5]։ Հայկական Տավրոսի հարավային լեռնաճյուղերի ալպիական մարգագետինները և տափաստանային տարածությունները Արևմտյան Տիգրիսի հովտում նպաստում էին արոտավայրային անասնապահության զարգացմանը։ Ասսուրական ժամանակագրությունները հաղորդում են այդ երկրից խոշոր և մանր եղջերավոր անասուններ տանելու մասին։

Արմե-Շուպրիայում հատկապես մեծ զարգացում է ստանում պղնձահանքերի, ապա և երկաթահանքերի մշակումը։ Հայկական Տավրոսի ընդերքը արդեն այն ժամանակ հայտնի էր իր հանքային հարստություններով։ Մուսասիրից և Դամասկոսից հետո պղնձի պաշարներով առաջնակարգ տեղ էին գրավում Կարքեմիշը և Շուպրիան։ Այս վերջինը աչքի էր ընկնում մանավանդ կապարի պաշարներով։ Հնարավոր է, որ այստեղ եղել են նաև անագի հանքեր[6]։ Ասորեստանցիները դեպի Շուպրիա ձեռնարկած իրենց արշավանքների ժամանակ տեղական արքայիկների գանձարաններում հանդիպում էին նաև ոսկու և արծաթի[7]։ Այս բոլոր փաստերը հնարավորություն են ընձեռում ենթադրելու, որ Տաբալի նման, Շուպրիան ևս իր տերիտորիայում ուներ «հանքանյութի արդյունահանմանը մասնագիտացված երկրագործական-անասնապահական շրջաններ, որոնք ասորեստանցիները չէին կարող գցել իրենց ձեռքը, քանի որ Շուպրիայի բնակավայրերը գտնվում էին դժվարանցանելի լեռներում»[8]։

Մինչև օրս էլ հայտնի են Արղանա-Մադենի երկաթահանքերը՝ Հայկական Տավրոսի ծայր արևմտյան և հարավ-արևմտյան լեռնաճյուղերում, այսինքն՝ Արմե երկրի հարավ-արևմտյան ծայրում (ասորեստանյան աղբյուրների նախկին Ալզի-Պուրուլումզի երկրի հարավում)։ Պատահական չէ, որ Շուպրիայի հարկերի մեջ հաճախ հիշվում է երկաթը։

Հավանական է, որ Հայկական լեռնաշխարհի երկրների թվում Արմե-Շուպրիա երկիրը ամենից արագ է անցնում բրոնզի զարգացման արդյունաբերությանը, որը կենտրոնացած էր բարձր լեռներում։ Մետաղագործության զարգացումը նպաստեց լեռնային անասնապահական շրջաններին ինքնապարփակ զարգացման մակարդակից անցնելու ինտենսիվ երկրագործության։

Երկրագործության արագ զարգացման շնորհիվ բնակչությունը կենտրոնանում է դաշտավայրերում և հարթավայրերում։ Այս ժամանակաշրջանում մեծ նշանակություն են ստանում դեռևս էնեոլիթ-բրոնզեդարյան ժամանակներից երկրագործության բարձր մակարդակով աչքի ընկնող Վանա լճի առափնյա շերտը, Խարբերդի դաշտի ջրարբի հարթավայրերը և Արևմտյան Տիգրիսի վերին

5 Տե՛ս Н. Б. Янковская, Некоторые вопросы экономики Ассирийской державы, ВДИ. 1951, № 1, էջ 38։

6 Տե՛ս «Очерки истории техники Древнего Востока», էջ 84 և 170։

7 Տե՛ս Н. Б. Янковская, Некоторые вопросы экономики Ассирийской державы, էջ 29, 35։

8 Տե՛ս նույն տեղում, էջ 38։

հոսանքների հովիտը։ Երկաթի յուրացման հետ սերտորեն առնչվում է արհեստական ոռոգման ջրովի հողատարածության զարգացումը։ Ասորեստանի թագավոր Աշուրնասիրպալ Բ-ի (884—859) ժամանակագրություններից իմանում ենք, որ այդ երկրում ապրող «մուշկերը» նստակյաց երկրագործներ էին, որոնք պարապում էին խաղողագործությամբ և գինեգործությամբ, ինչպես նաև անասնապահությամբ և մետաղամշակությամբ։ Կադմուխի և Մուշկու երկրներից ստացված հարկերի մեջ հիշատակվում էին բրոնզե անոթներ, խոշոր և մանր եղջերավոր անասուններ, գինի[9]։

Արմե-Շուպրիան մասնակցում է երկաթի տարանցիկ առևտրին և դրա համար էլ հյուսիս-ասորիքյան ու արևելա-փոքրասիական քաղաք-պետությունների հետ միասին վերածվում է կռվախնձորի՝ Ասորեստանի և Ուրարտուի միջև։ Ինչպես առևտուրը, այնպես էլ արտաքին քաղաքական էքսպանսիան արագացնում են նախնադարյան-համայնական հարաբերությունների քայքայման և պետականության տարրերի սկզբնավորման ընթացքը այստեղ ապրող հայկական ցեղերի շրջանում։

Արմե-Շուպրիայում դեռևս զորեղ էր տոհմային դեմոկրատիան։ Այստեղ ապաստան էին գտնում Ասորեստանից և Ուրարտուից դժգոհ բոլոր տարրերը և առաջին հերթին ստրուկներն ու շահագործվող ազատ համայնիկ-երկրագործները։ Այդ են վկայում մ. թ. ա. VII դարի ասորեստանյան արձանագրությունների տեղեկությունները Շուպրիայի մասին։

**Արմե-Շուպրիան և Ասորեստանը:** Արմե-Շուպրիա երկիրը ասսուրա-բաբելոնական աղբյուրներում հանդես է գալիս այն իրադարձության կապակցությամբ, որ տեղի է ունեցել Ասորեստանում 681 թվականին։ «Բաբելոնյան ժամանակագրությունում» կարդում ենք հետևյալը. «Տեբետ ամսի 20-րդ օրը (այսինքն՝ մ. թ . ա. 681 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին) Սինախերիբին, Ասորեստանի թագավորին, խռովության ժամանակ սպանեց նրա որդին»[10]։ Ասարխադդոնի արձանագրությունները լրացնում են այս տեղեկությունը։ Այնտեղ ասված է, որ նրա հայրասպան եղբայրները «լսելով իմ արշավի մոտենալու մասին, թողեցին իրենց հավաքած զորքերը և փախան հայտնի չէ, թե ուր»[11]։ Ավելի կոնկրետ տվյալներ են պարունակվում Աստվածաշնչի Թագավորության չորրորդ գրքում։

«Եվ Ասորեստանի Սենեքերիմ թագավորը չվեց գնաց և վերադառնալով կանգ առավ Նինվե (քաղաքում)։ Եվ այն ժամանակ, երբ նա իր աստծո՝ Նեսրաքի տանը աղոթում էր, նրա որդիները՝ Ադրամելեքը և Սարասարը (Շարեցեր) սպանեցին նրան սրով ու փախան Արարադի երկիրը և նրա փոխարեն թագավորեց որդին՝ Ասորդանը»[12]։

Հետազոտողները Ադրամելեք անվան տակ տեսնում են Արադ-Նինիլին կամ Արադ-Նիլլիլին՝ Սինախերիբի որդիներից մեկին։ Իսկ ի դեմս Շարեցերի (Սարասարի) ենթադրվում է զորապետ, մ. թ. ա. 681 էպոնիմ, Նաբուշարուսուրը։

---

9 Տե՛ս АВИИУ, № 23, (I, 69)։
10 ARAB, II, 505. АВИИУ, 63։
11 ARAB, II, 505. АВИИУ, 62։
12 «Թագավորութեանց չորրորդ գիրք», գլ. ԺԹ, 36—37։

Պարտություն կրելով թագավոր դարձած Ասարխադդոնից (680—669) մարդասպանները փախչում են Շուպրիա[13]։

Մովսես Խորենացու տեղեկությունների համաձայն, այն ժամանակ, երբ Ասորեստանում սպանվեց Սենեքերիմ թագավորը, հայերին կառավարում էր Սկայորդին։ Խորենացին նշում է, որ Սենեքերիմ թագավորի «որդիները՝ Ադրամելեքը և Սանասարը, նրան սպանելով փախան եկան մեզ մոտ»[14]։ Թե որտեղ է այդ «մեզ մոտը», իմանում ենք այդ պատմության շարունակությունից։



Կիմմերներ, 6-րդ դարի կեսերի վազայից

Խորենացին հաղորդում է, թե Հայաստանում ապաստանած ասորեստանյան թագավորի սպանողներից մեկին, այն է Սանասարին՝ «մեր քաջ նախնի Սկայորդին բնակեցնում է նույն Ասորեստանի սահմանների մոտ, մեր աշխարհի հարավ-արևմտյան կողմում։ Նրա սերունդն աճելով ու բազմանալով լցրեց Սիմ կոչվող լեռը»[15]։ Հայկական էպոսը նույնպես հաղորդում է այդ իրադարձության մասին և Սանասուն կամ Սասուն գավառի անվանումը սերում է այդ Սանասարի անունից[16]։

Այսպիսով հայկական պատմական ավանդությունը նշում է, որ Քաղիրթ (այժմ Բաթման-սու) գետի վերին հոսանքում ընկած Սանասունքը կամ Սասունը այն երկիրն է, ուր ապաստան են գտել ասորեստանյան թագավորին սպանողները։ Ուշագրավ է, որ Խորենացին այս Սանասարի սերունդներից է համարում Աղձնյաց աշխարհի բդեշխներին։ Վերը տեսանք, որ Արմե-Շուպրիան իսկական առումով համընկնում էր Սասուն լեռնային բարձրադիր գավառի տերիտորիային[17]։

13 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* О происхождении армянского народа, Ереван, 1946, *էջ 10*; *նույնի*, Ванское царство (Урарту), М., 1959, *էջ 112*։

14 Խորենացի, *Ա, ԻԳ*։

15 *Նույն տեղում*։

16 *«Սասնա ծռեր» էպոսում պահպանվել է Սենեքերիմի և նրա որդիներ Սանասարի և Ադրամելիքի հիշատակությունը։ Սրանցից են սերվել «Սասնա ծռեր» Մհերը և Սասունցի Դավիթը*։

17 Տե՛ս *Б. Б. Пиотровский,* Ванское царство, *էջ 112*։

Նշված դեպքը եզակի չէր։ Ինչպես վերը տեսանք, Շուպրիա էին քաշվում ոչ միայն քաղաքական փախստականները, այլև ընչազուրկ ժողովրդական զանգվածները։ Ասորեստանի և Ուրարտուի ստրուկներն ու շահագործվող բնակչությունն իրենց համար ապաստան էին գտնում լեռնային Շուպրիայի, այժմյան Սասունի, դժվարամատչելի կիրճերում։ Ուրարտական ու ասսուրական ստրկատերերի համար այդ երևույթն այնքան սպառնալից ծավալ էր ընդունել, որ մինչ այդ միմյանց թշնամի երկու պետությունները պիտի ընդհանուր լեզու գտնեին ազատ Արմե-Շուպրիան համատեղ ջանքերով իրենց իշխանությանը ենթարկելու համար։ Դրան առիթ ծառայեց ստրուկների և կախյալ այլ մարդկանց հերթական փախուստը դեպի բարձրադիր Շուպրիան։ Ինչ գնով էլ լիներ Ասորեստանը պետք է վերացներ իր թիկունքում գտնվող այդ մշտական անհանգստության օջախը, որպեսզի հնարավորություն ստանար պայքարելու ապստամբած Մեգիայի դեմ։

Մ. թ. ա. 673 թվականի նոյեմբեր—դեկտեմբերին, Ասարխադդոնը արշավանք ձեռնարկեց դեպի Շուպրիա։ Այդ ժամանակ Ասարխադդոնը բարեկամական հարաբերությունների մեջ էր գտնվում Ռուսա Բ-ի հետ, որի օգնությամբ էլ, հավանաբար, նվաճեց Արմե-Շուպրիան և արյունալի դատաստան տեսավ փախստական ստրուկների նկատմամբ։

Ըստ երևույթին, Արմե-Շուպրիայի հնազանդության բերված ցեղապետը, որը նստում էր Ուպումու (հետագայում Ափում) ամրոցում, պարտավոր էր հանձնել փախստականներին։ Ասարխադդոնին վերադարձվեցին ոչ միայն նրա հպատակները։ Նա Ռուսա Բ-ին հանձնեց Ուրարտուից հեռացած փախստականներին, որ ապաստան էին գտել Արմե-Շուպրիայում։

Աշուր աստծուն ուղղված Ասարխադդոնի ուղերձում, որ բովանդակում է 673 թվականին (մ. թ. ա.) Շուպրիա կատարած արշավանքի նկարագրությունը, պատմվում է փախստական ստրուկների և համայնականների նկատմամբ տեսած դատաստանի մասին. «Փախստականներին, որոնք թողել են իրենց տերերին և փախել Շուպրիա, ես կտրեցի (...) նրանց զրկեցի քթից, աչքից և ականջից, (որպեսզի ոչ ոք) չփախչի ուրիշ երկիր, նրանց վրա սահմանեցի պատիժ (......) վերադարձրի նրանց յուրաքանչյուրին իր երկիրը և իրենց տերերին. (Նրանց տերերը լսեցին) և ուրախացան, ցնծացին, օրհնեցին իմ վեհապանծությունը»[18]։ Այնուհետև տեքստը պատմում է փախստականներին Ռուսա Բ-ին հանձնելու մասին «[Ինչ վերաբերում է փախստական] ուրարտներին, որոնք փախել են Ուրարտուից Շուպրիա— [Ուր]սայը, Ուրարտուի թագավորը, գրել էր իրեն (այսինքն՝ Շուպրիայի թագավորին— հեղ.) նրանց մասին, բայց նա չէր ունկնդրել նրա հրամանին, չէր համաձայնել նրանց հանձնել. հանդգնաբար գրել էր նրան, պատասխանել ատելությամբ։ [Դրանից հետո] ես հույս դնելով Աշուրի՝ իմ տիրոջ վրա, նվաճեցի Շուպրիան և նրա մարդկանց մատնեցի գերության, քանի որ այն բանի համար, որպեսզի երդումները պահպանվեն, ինձ ճշմարտություն և արդարացիություն են պարգևել մեծ աստվածները. այդ մարդկանց մասին ես հարցրել եմ, հարցաքննել, հետաքննել և հավաստիացել,

---

[18] АВИИУ, 67 (к), ARAB, II, 606։

ուրարտացի ոչ մի փախստականի ես չեմ պահել, ոչ մեկին ես չեմ թաքցրել, վերադարձրել եմ իր երկիրը»[19]։

Այսպես նվաճվեց Արմե-Շուպրիան։ Բայց Ասորեստանին նա երկարատև չենթարկվեց. ընդամենը շուրջ 20 տարի։ Հարկեր ու տուրքեր տվող փոխարքայությունների և ենթակա երկրների ցուցակում, որ կազմվել էր Աշշուրբանապալ թագավորի օրոք (668—633), չկան այնպիսի երկրների անուններ, ինչպիսիք են Շուպրիան, Ուլուբան, Նաիրի-Խուբուշկիան և Մուսասիրը[20]։ Ամենայն հավանականությամբ, դրանք Ասորեստանից անջատվել էին 653 թվականին, երբ ապստամբել էր Բաբելոնը և նրան էր միացել Մեդիան (Մարաստանը)։

Հայկական պատմական ավանդություններում Ասորեստանի տիրապետության ժամանակաշրջանի վերաբերյալ պահպանված հուշերը, հավանաբար, վերաբերում են հենց այդ քսանամյակին, թեև նրանց ընդգրկած ժամանակագրական շրջանակները, նույն VII դարին վերաբերելով հանդերձ, որոշ չափով շեղվում են վերը նշվածից[21]։

Անուղղակի մի շարք տեղեկությունները հնարավորություն են տալիս ենթադրելու, որ Ասորեստանը փորձեր է կատարել դաշնակից սկյութների օգնությամբ նորից իրեն ենթարկել 653 թվականին անջատված երկրները, բայց դրանք ընդհակառակն հանգեցրել են Մեդիայում սկյութների 28-ամյա տիրակալության հաստատմանը (մ. թ. ա. 652—624)[22]։ Ասորեստանի հյուսիս-արևելյան սահմաններում սկյութական տիրապետության հաստատումը ասորեստանցիների մեջ լուրջ անհանգստություն պիտի առաջացներ։

Ռուսա Բ-ն էլ, ինչպես և նրա որդի ու հաջորդը՝ Սարդուրի Գ-ն (640—635) իր հերթին սկյութական վտանգին դիմագրավելու համար ձգտում էին բարի դրացիական հարաբերություններ պահպանել Ասորեստանի նկատմամբ։ Այդ մասին են վկայում 655 և 639 թվականների դեսպանությունները Աշշուրբանապալի մոտ[23]։

Բ. Պիոտրովսկին, հենվելով Մովսես Խորենացու հաղորդած տեղեկությունների վրա, ցույց է տվել, որ ուրարտական Սարդուրի Գ թագավորի և նրա հաջորդների ժամանակաշրջանում Արմե-Շուպրիայի կառավարողը Պարույրն էր,

---

19 ARAB, II, 607. АВИИУ, 67 (к)։

20 Տե՛ս АВИИУ, 69, 71։

21 Հայ պատմական երկերում, Կտեսիասի և նրա անտիկ հետևորդների ազդեցությամբ, Ասորեստանի պատմությունը առավելապես կապվում է կիսաառասպելական-կիսապատմական թագուհի Սեմիրամիս—Շամիրամի հետ։ Խոսելով հայերի վրա ասորեստանցիների հաստատած տիրապետության մասին, «Մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ» երկը հաղորդում է, որ Շամիրամ թագուհու ժամանակվանից հայերին. «...Ասորեստանեայց թագաւորքն տիրեցին մինչև ցմեռանելն Սենեքերիմայ (Սինախերիբը, որը սպանվեց մ. թ. ա. 681 թվականին—հեղ.), ապա՝ ապստամբեցին յԱսորոց թագաւորացն ծառայութենէ»։ Այդ նույն երկի մեկ այլ տարբերակում, որի հեղինակը անվանված է Մար Աբաս Կատինա, և որից օգտվել է Մովսես Խորենացին (Ա, իա) հաղորդվում է, թե ասորեստանցիները Հայաստանին տիրել են Շամիրամ թագուհու ժամանակներից մինչև Պարույրի ժամանակները, որն ապրել է Աշշուրբանապալի (մ. թ. ա. 668—633) օրոք։

22 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, М.—Л., 1956, էջ 288—289։

23 Տե՛ս АВИИУ, № 72, 76.

Սկայորգու որդին[24], Ասորեստանի, հավանաբար և Ուրարտուի հետ կապված իրադարձությունների ակտիվ մասնակիցը, սկյութների և մեդացիների դաշնակիցը։

**Մեդական պետության վերելքը: Ասորեստանի անկումը:** Կիմմերների և սկյութների արշավանքները և նրանց պայքարը Փոքր Ասիայում նշանակալից չափով թուլացրին Ասորեստանին ու Ուրարտուին և վերջիններիս ենթակա ու նրանցից կախյալ ժողովուրդներին հնարավորություն տվեցին թոթափելու ասորեստանյան և ուրարտական լուծը։ Դրանով պիտի բացատրել, վերջին հաշվով, Մեդիայի այդչափ մեծ հաջողությունները՝ այն հանգամանքը, որ նա հասավ մինչև Լյուդիայի սահմանները՝ Հալիս գետի մոտ։ Մեդացիների այդ նվաճումներում մեծ դեր պիտի խաղային նրանց դաշնակիցները, այդ թվում՝ հայերը։

Մեդական թագավորության արտաքին նվաճումները հեշտանում էին Ասորեստանի դեմ Բաբելոնի նոր ելույթներով։ Բաբելոնի թագավոր Նաբոպալասարը (626—605)[25] դեռևս մինչև մ. թ. ա. 616 թվականը ապստամբել էր Ասորեստանի թագավոր Սինշարիշկունի («Սարակ» 629—612)[26] դեմ և պատերազմ սկսել, որի ժամանակ մեդացիները բաբելացիների դաշնակիցներն էին[27]։ Որպես Ասորեստանի դաշնակիցներ հանդես եկան Մանան և Եգիպտոսը։

Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմության» հայերեն թարգմանության մեջ պահպանվել են տեղեկություններ, որոնք սկիզբ են առնում պատմաբան Բերոսոսից։ Դրանց համաձայն Բաբելոնի թագավոր Նաբոպալասարը մինչև Ասորեստանի դեմ հանդես գալը (այսինքն՝ մ. թ. ա. 616) կապ է հաստատել Մեդիայի թագավոր Կիաքսարի հետ[28] և դա նրան հնարավորություն է տվել արշավելու ասորեստանյան մայրաքաղաքների՝ Աշշուրի և Նինվեի վրա։ Նաբոպալասարին հաջողվում է Կաբլինի տակ ջախջախել ասորեստանյան և մանայական զորքերին, որոնք միասին էին հանդես եկել[29]։ Դրանից օգտվում է Կիաքսարը։ 616—615 թվականների ընթացքում նա գրավում է ամբողջ Մանան և միացնում Մեդական պետությանը։ Այդ ժամանակվանից ի վեր Մանայի թագավորությունը դադարեց գոյություն ունենալ։ Մանան ավերելուց հետո մեդական զորքերը 615 թվականին (մ. թ. ա.) անցնում են Զագրոսը և հենց նույն տարվա հուլիս—օգոստոս ամիսներին հյուսիսից մոտենում Աշուրին. Ասորեստանի կրոնական և մշակութային այդ հնագույն կենտրոնը կողոպտվում է և ավերվում։ Այսպիսով, Մեդական պետությունը ներգրավվեց բաբելա-ասորեստանյան պատերազմի մեջ նախ իբրև Բաբելոնի դաշնակից[30], ապա և՝ դառնալով ղեկավար ու գերիշխող ուժ։

---

24 Տե՛ս Б. Б. Пиотровский, О происхождении армянского народа, էջ 21։ Տե՛ս նաև И. М. Дьяконов, История Мидии, էջ 313։

25 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 299, ծանոթ. 5 և հավելվածը։

26 Սրա թագավորության մասին տե՛ս նույն տեղում, էջ 299, ծանոթ. 4 և հավելվածը։

27 Տե՛ս АВИИУ, № 81։

28 Եվսեբիոսի հայկական տարբերակում Կիաքսարը հանդես է գալիս Աժդահակ անվամբ, որը հին հայկական էպոսում մարական թագավորի մականունն է։

29 Տե՛ս АВИИУ. № 81։

30 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 304։

*Մեկ տարի անց, 614 թվականին, Աշշուրի փլատակների վրա հանդիպեցին Կիաքսարն ու Նաբոպալասարը և «միմյանց միջև կնքեցին բարեկամություն և դաշինք»[31], որն ամրապնդվեց Բաբելոնի թագավոր Նաբոպալասարի որդի արքայազն Նաբուգոդոնոսորի և մարաց արքայադստեր ամուսնությամբ[32]։*



Մարերի և մանեացիների տիպարներ, ասսուրական բարձրաքանդակից, մ. թ. ա. VIII դարի վերջ

*Վերջապես մ. թ. ա. 612 թվականի հուլիս—օգոստոս ամիսներին Նինվեի մոտ տեղի ունեցած երեք ճակատամարտերից հետո քաղաքը գրավվեց։ Սինշարիշկունը իրեն նետեց այրվող պալատի բոցերի մեջ, Նինվեն՝ հին աշխարհի բռնակալության և կեղեքման այդ հենարանը, առմիշտ ոչնչացվեց[33]։ 610 թվականին նվաճվեց ասորեստանցիների կարևոր հենակետը՝ Խառան քաղաքը, իսկ 605 թվականին, չնայած եգիպտական զորքերի գործուն օգնությանը, ընկավ ասորեստանցիների վերջին հանգրվանը՝ Կարքեմիշը, որով առհավետ վերջ տրվեց Ասորեստանի պետությանը[34]։*

**Ասորեստանի կործանումը և հայերը:** *Անկասկած է, որ Առաջավոր Ասիայի շատ ժողովուրդներ, հատկապես Ասորեստանի և Ուրարտուի ծայրամասերում բնակվողները, անմիջական մասնակցություն են ունեցել պատերազմին որպես Մեդիայի կողմնակիցներ[35]։ Այս կապակցությամբ հիմնավոր է դառնում Մովսես Խորենացու մոտ պահպանված պատմական ավանդությունը՝ Ասորեստանի*

---

31 *Տե՛ս* АВИИУ, 81, ARAB, II 1174։ *N. Adontz,* Histoire d'Arménie, Paris, 1946, *էջ 295—296։*

32 *Տե՛ս И. М. Дьяконов,* История Мидии, *էջ 306, ծանոթ. 1։*

33 *Տե՛ս* АВИИУ, 81, ARAB, II, № 1174։ *Տե՛ս N. Adontz,* Histoire d'Arménie, *էջ 296։ И. М. Дьяконов,* История Мидии, *էջ 306—308։*

34 *Տե՛ս* АВИИУ, 81, ARAB, II, 1183. *И. М. Дьяконов,* История Мидии, *էջ 314—316։*

35 *Տե՛ս И. М. Дьяконов, նույն տեղում, էջ 318։*

ավերմանը հայկական թագավոր Պարույրի, Սկայորդու որդու, ունեցած մասնակցության մասին։

Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ պահպանվել է Ասորեստանի անկման նկարագրությունը, որտեղ Կիաքսարը հանդես է գալիս Արբակ անվան տակ, ինչպես Կտեսիասի մոտ է։ Մովսես Խորենացին սակայն, այդ պատմությանը միահյուսել է նաև տեղեկություններ մեդացիների հետ դաշն կնքած հայերի՝ Ասորեստանի կործանմանը ունեցած մասնակցության մասին։

«Այս վերջիններից մի մասը եղել է ասորեստանցիների թագավորության ժամանակ, մի մասն էլ Շամիրամից կամ Նինոսից հետո, իսկ մեր Պարույրն եղավ Սարդանապալի ժամանակ»,— կարդում ենք Խորենացու մոտ[36]։ Պատմիչի ասելով, այս Պարույրը «քիչ օգնություն ցույց չի տվել մարացի Վարբակեսին (Կտեսիասի Արբակը, այսինքն՝ Կիաքսարը—ենդ.) վերացնելու Ասորեստանի թագավորությունը Սարդանապալի օրոք»[37]։

Կիսաառասպելական-կիսապատմական այդ տեղեկությունները հնարավորություն են տալիս ենթադրելու, որ Նինվեի գրոհի նախօրյակին Կիաքսարին է միանում Արմե-Շուպրիայի ցեղապետը՝ «քաջ նախարար», «որդի Սկայորդւոյ Պարոյր»-ը։

Հերոդոտը հաղորդում է հետևյալը. «Երբ ասորեստանցիների նկատմամբ տարած հաղթանակից հետո Կիաքսարը պաշարեց Նինվեն, հանդես եկավ սկյութների մի մեծ բանակ՝ Պրոտոթիեսի որդու, Մադիոս թագավորի գլխավորությամբ»[38]։ Ակներևաբար Հերոդոտի այս տեղեկության մեջ իրար են խառնվել երկու իրադարձություն. սկյութական թագավորի, Պրոտոթիեսի որդի Մադիոսի կողմից կիմմերների ջախջախումը 654 թվականին, որի մասին վկայություններ են պահպանվել Ստրաբոնի մոտ[39] և ինչ-որ մեկ այլ անձնավորության գլխավորությամբ «սկյութական» զորքերի մասնակցությունը Նինվեի պաշարմանը մ. թ. ա. 612 թվականին, անձնավորություն, որին շփոթել են այս Մադիոսի հետ։

Գր. Ղափանցյանը առաջինը ուշադրություն դարձրեց այն հանգամանքի վրա[40], որ հայկական «Պարոյր» (Paroyr) անունը ծագում է սկյութական Պարտատուա անունից՝ ասորեստանյան հաղորդմամբ, որի հունական ձևը Πρωτοθύης է[41]։ Սակայն ինչպես նշվեց, ասորեստանյան աղբյուրների Պարտատուան, ժամանակագրական նկատառումներով, չէր կարող լինել Խորենացու նշած Պարույրը[42]։ Պարույրը լավագույն դեպքում կարող էր լինել Մադիոսի՝ Պարտատու-

---

36 Խորենացի, Ա, իա։

37 Նույն տեղում։

38 Herod., I, 103։ Հետազոտողները Հերոդոտի նշած Պրոտոթիեսին նույնացնում են ասորեստանյան աղբյուրների Պարտատուայի հետ (673—654) և նրան համարում սկյութների թագավոր, Իշպակայի որդի։ Վերջինիս որդին Մադիոսն է (654—624), որը վերջնականապես ջախջախեց կիմմերներին և Մեդիայում ու հարևան երկրներում հաստատեց սկյութացիների 28-ամյա տիրապետությունը։ Նրան սպանեց Կիաքսարը 623 թվականին։ Այսպիսով այդ Մադիոսը, Պրոտոթիեսի որդին, չէր կարող լինել 614—612 թվականների իրադարձությունների մասնակից։

39 Տե՛ս Strabo I, 3, 21։

40 Տե՛ս Գր. Ղափանցյան, Ուրարտուի պատմություն, Երևան, 1940, էջ 217։

41 Տե՛ս Herod., I, 103։

42 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 313։

այի որդու, կրտսեր ժամանակակիցը միայն։ Այսպիսով, տվյալ տեքստում Հերոդոտը վերոհիշյալ Պրոտոթիեսին շփոթել է, ըստ երևույթին, մի այլ Պրոտոթիես-Պարտատուայի հետ, որը հին հայկական ավանդություններում հայտնի է Պարույր անունով։ Ուստի և Հերոդոտը 612 թվականի իրադարձությունների մասնակից է դարձրել ոչ թե նրան, այլ նրա որդուն՝ սկյութական Մադիոս թագավորին, որը ժամանակով ավելի մոտ էր դրանց։ Այս նկատառումները թույլ են տալիս ենթադրելու, որ Կիաքսարին օգնության եկած «սկյութական» զորքը գլխավորել է ոչ թե Մադիոսը, Պրոտոթիեսի որդին, այլ հին հայկական աղբյուրների նշած Պրոտոթիես-Պարույրը[43]։

Մովսես Խորենացու տեղեկության համաձայն, մարական թագավոր Վարբակ-Կիաքսարը, «զքաջն մեր նախարար յանգուցանէ զՊարոյր թագաւորութեան շուք և ձև նմա խոստանալով»[44]։ Ապա պատմիչն ավելացնում է, թե մեդական թագավորը «զթագաւորութիւն ի Սարդանապալլայ յինքն առեալ՝ տիրէ Ասորեստանի և Նինուէի»։ Այնուհետև, Մովսես Խորենացին թվարկում է հայ առաջին թագավորների անունները և այդ ցուցակը նա սկսում է Պարույրից. «Իսկ մեր առաջին ի Վարբակայ Մարէ պսակեալ Պարոյր, որդի Սկայորդւոյ»,— կարդում ենք պատմիչի գրքում։

Վերը բերված տեղեկություններն ու նկատառումները իրավունք են տալիս ենթադրելու, որ Նինվեի ավերումից և ասորեստանյան պետության կործանումից հետո Կիաքսարը Պարույրին ճանաչում է Արմե-Շուպրիա երկրի թագավոր[45]։

Այսպիսով, Ասորեստանի անկման ժամանակաշրջանում, Հայաստանում կառավարում էր «որդի Սկայորդւոյ» Պարույրը, որը մեդական Վարբակ-Կիաքսար թագավորին ցույց տված օգնության համար նրա կողմից ճանաչվեց Հայաստանի թագավոր[46]։

Նորաստեղծ թագավորության առաջին տարիների լուսաբանման համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում բաբելոնյան այսպես կոչված «Գեդդի

---

43 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Կիմերական և սկյութական ցեղերի արշավանքները և Ուրարտուի ու Ասորեստանի պայքարը քոչվորների դեմ, ՊԲՀ, 1968, № 2, էջ 89—115։

44 Խորենացի, Ա, իա։

45 Մովսես Խորանացին իմացել է, ըստ երևույթին, և այնպիսի աղբյուրներ, որոնք Ասորեստանի կործանումը կապում էին Բաբելոնի թագավոր Նաբուգոդոնոսորի (604—562) հոր Նաբոպալասարի (626—604) հետ։ «Քանզի ի որք ի հօրէն Նաբուգոդոնոսորայ գործք, գրեցան յիւրեանց յիշողութեանց վերակացուացս»,— գրում է Խորենացին (Ա, իա)։ Սակայն նա նախընտրել է Վարբակ-Կիաքսարի անվան հետ կապված տարբերակը, անկասկած այն բանի համար, որ դա համահնչուն էր հայկական ժողովրդական պատմական ավանդությանը։ Ըստ երևույթին բաբելական այդ տարբերակն է ընկած հայ Անանուն հեղինակի տարեգրության հիմքում, տարբերակ, որը Հայաստանի պատմությունը կապել է ոչ թե Մեդիայի, այլ Բաբելոնի հետ, ընդ որում Նաբուգոդոնոսորի ժամանակակցի դերում հանդես է գալիս Հայաստանի կառավարող Փառնավազը. «Այս Փառնաւազ,—գրում է Անանունը,—հնազանդեալ Նաբուգոդոնոսորայ արքայի ի Բաբելոն։ Եւ ապա յայնմհետէ բաբելացւոց և մարաց թագաւորքն տիրեցին մինչև ցԱղեքսանդր Մակեդոնացի. որ զամենայն տիեզերս հնազանդեցոյց ի ծառայութիւն» («Սեբէոսի եպիսկոպոսի պատմութիւն», Երևան, 1939, էջ 7)։

46 Այս հարցի մասին տե՛ս նաև Գ. Ա. Տիրացյանի գրախոսականը «Հ. Ժամկոչյան, Հայաստանը նախնադարյան համայնական հասարակության և ստրկատիրության շրջանում», Տեղ. ՀԳԱՀԳ, 1962, № 4, էջ 89—92։

ժամանակագրության» տեքստի վերջավորությունը, որը ցավոք սրտի, շատ վնասված տեղեր ունի։

Մ. թ. ա. 609 թվականի տակ այդ «ժամանակագրությունը» հաղորդում է, թե Նաբոպալասարը օգնության է գնում Խառանի կայազորին, որը պաշարվել էր ասորեստանցիների և դաշնակից եգիպտացիների կողմից։ Ասորեստանի թագավոր Աշշուրուբալլիտ Բ-ը, հավանաբար, վախենալով մեդական և բաբելական օգնական նոր ուժերի շրջապատումից, նախօրոք թողնում է պաշարված Խառանը և հեռանում դեպի Իզալայի լեռնային շրջանը, որպեսզի այնտեղից շրջանցիկ ճանապարհով վերադառնա Կարքեմիշ։ Նահանջող ասորեստանյան թագավորը Իզալա երկրում թշնամուն ճակատամարտ է տալիս, որի մասին հաղորդում է «Գեդդի ժամանակագրությունը»։ «Նաբոպալասարը,—կարդում ենք այնտեղ,—շարժվեց դեպի հյուսիս. [Ի]ծալա (երկիրը) նա բարձրացավ և շատ քաղաքներ (...) երկրներ նա այրեց կրակով»։ Այնուհետև վնասվածքներով լեցուն տեքստում հնարավոր է կարդալ. «Հենց այդ ժամանակ բաբելական զորքը (հասավ) մինչև Ուրաշտու[47] քաղաքի գավառը»[48], այսինքն՝ մինչև Ասորեստանի ծայր հյուսիսային սահմանները, որոնք հավանաբար հասնում էին մինչև Արևմտյան Տիգրիս գետը։ Ամենայն հավանականությամբ, բաբելացիներն այստեղ ջախջախել են ասորեստանցիների վերջին ուժերը, որից հետո «Աքկադի թագավորը վերադարձավ իր երկիրը»[49]։ Իզալա նահանգից բացվում էր ճանապարհը դեպի Ուրարտուի նախկին տերիտորիայի այն հատվածը, որն այժմ գրավված էր Արմե-Շուպրիա հայկական պետական կազմավորման կողմից։ Ըստ երևույթին, հետապնդելով ասորեստանյան թագավոր Աշշուրուբալլիտ Բ-ին, բաբելացիները 608 թվականին ներխուժում են «ուրարտական գավառը»[50]։ Մեզ հասած ուղղակի և անուղղակի տվյալները վկայում են, որ Ասորեստանի վերջնական ջախջախման տարիներին Արմե-Շուպրիայի տերիտորիայում արդեն գոյություն ուներ հին հայկական պետական կազմավորում։ Հավանորեն, ինչպես հետագայում Բեհիստունի արձանագրության բաբելական տեքստում, Ուրաշտուի տակ նկատի են ունեցել Արմինան, տվյալ տեքստում էլ Ուրաշտու անվան տակ, հանդես է գալիս Արմե-Շուպրիան իբրև հնագույն հայկական թագավորություն։

Սակայն այս հիշատակման և Բեհիստունի արձանագրության կերտման ժամանակի միջև ընկած է մոտ մի դար ժամանակաշրջան։ Այդ ժամանակ էլ տեղի է ունեցել Արմեի փոխարկումը Արմինայի, որն արդեն գրավում էր ոչ միայն Արմե-Շուպրիան, այլև Հայկական լեռնաշխարհի շատ ավելի լայն տարածություններ[51]։

---

47 Տե՛ս АВИИУ, 81, ARAB, II, 1183—1184։

48 Տե՛ս N. Adontz, Histoire d'Arménie, էջ 296։ «Ուրաշտու»-ն «Ուրարտու»-ի արտասանման ձևն է ակկադերեն լեզվի բաբելոնյան բարբառում։

49 АВИИУ, 81։

50 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 315։

51 Տե՛ս Б. Б. Пиотровский, Ванское царство, էջ 124։ Բ. Պիոտրովսկու ճիշտ դիտողությամբ՝ Ar-me, անվան երկրորդ վանկը արտահայտող բնագիրը կարող է հնչվել և՛ me և՛ mi (Ar-me, Ar-mi) իսկ -ni ուրարտական բնագրերին հատուկ վերջածանց է երկրանունների, ուստի Arme անվան կատարյալ ձևն է՝ Arme-ni կամ Armi-ni։

Մարկվարտի կարծիքով, հին պարսկական Armina-ն առաջ է եկել Arm- արմատից և ուրարտական ածանց -ini-ից, որը մարերենի ազդեցության ներքո դարձել է -ina (տե՛ս

## 2. ԵՐՎԱՆԴՈՒՆԻՆԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Քսենոփոնի և հին հայկական ավանդությունների պահպանած տեղեկությունները: *Ակներև է, որ Արմինան որպես ինքնուրույն երկիր գոյություն է ունեցել նաև մինչև 520 թվականը (մ. թ. ա.)։ Բավական է ասել, որ արմեններին հիշատակում է այնպիսի հին հեղինակ, ինչպիսին Հեկատեոս Միլետացին (VI դար մ. թ. ա.) է։ Մեր տրամադրության տակ են նաև գրավոր այնպիսի մի հուշարձան, ինչպիսին Քսենոփոնի «Կյուրոպեդիան» է (գրվել է մ. թ. ա. IV դարում), Մովսես Խորենացու «Հայոց պատմության» առաջին գիրքը (մ. թ. V դար) և Անանուն հեղինակի ներածական գլուխը Սեբեոսի (VII դար) «Պատմության» մեջ[52]։*

*Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ում պահպանված տեղեկություններից իմանում ենք, որ մեդական թագավոր Աստիագեսի (584—553) ժամանակ Հայաստանը Մեդիայից կախյալ երկիր էր։ Հայկական թագավորի անունը չի հիշատակվում այդտեղ, բայց շատ է խոսվում նրա որդի Տիգրանի մասին, որը Աստիագեսի պալատում աքեմենյան Կյուրոսի հասակակիցն ու զինակիցն էր։ Հաճախ «Կյուրոպեդիա»-ի այդ տեղեկությունները պատմագրության մեջ համարել են որևէ արժեքից զուրկ՝ ենթադրելով, թե Քսենոփոնը այդ գիրքը գրել է որպես բարոյախոսական մի վեպ՝ իր ժամանակակիցների համար։*

*Հ. Մանանդյանը գտնում էր, որ «Կյուրոպեդիա»-ի հաղորդած տվյալները արժանի են ուշադրության, քանի որ դրանք միակ հիմնական գրական վկայություններն են արմենների մասին VI դարի առաջին կեսում (մ. թ. ա.)։ Տեղեկությունների ոճից ու բովանդակությունից երևում է, որ վեպի այդ մասում Քսենոփոնին կարող են աղբյուր ծառայած լինել տեղական ավանդությունները և հիշողությունները, որոնց նա հնարավորություն ուներ ծանոթանալու Հայաստանի միջով (մ. թ. ա. 401—400) իր և հույն զորքերի հայտնի նահանջի ժամանակ[53]։ Ի. Մ. Դյակոնովը նույնպես գտնում է, որ «Կյուրոպեդիա»-ի Հայաստանին վերաբերող մասի հիմքում ընկած են VI դարի (մ. թ. ա.) պատմական իրական դեպքերը[54]։*

*«Կյուրոպեդիա»-ի հաղորդած տեղեկությունների համաձայն[55], հայերը մեդացիների հարևաններն են, իսկ հայերի երկիրը՝ Արմենիան, Մեդիային ենթարկվող թագավորություն։ Թշնամիների դեմ Մեդիայի մղած պատերազմի ժամանակ հայ թագավորը պարտավոր էր մեդական թագավորին տրամադրել իր զինվորական ուժի կեսը, այսինքն՝ 20.000 հետևազոր և 4.000 հեծելազոր։ Հայոց թագավորը, իբրև մեդական թագավորի կրտսեր դաշնակից, նրան հարկ էր վճարում 50 տաղանդի չափով։ Իմանում ենք նաև, որ Հայոց թագավորը պատերազմել է նաև Աստիագեսի դեմ, սակայն պարտություն կրելով, պարտա-*

---

*J. Marquart*, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Potsdam, 1919, էջ 67)։

52 *Տե՛ս* Գ. Ա. Տիրացյան, *Երվանդունիները Հայաստանում, Տեղ. ՀԳԱՀԳ, 1958, № 6։*

53 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, Երևան, 1944, էջ 39։*

54 *И. М. Дьяконов*, История Мидии, *էջ 350—351, Տե՛ս նաև N. Adontz*, Histoire d'Arménie։

55 *Տե՛ս Xen.*, Cyrop., *II, 1, 6։*

վորվել է հարկ վճարել, առաջին իսկ պահանջով տրամադրել զորքը և չկառուցել ամրություններ[56]։

Այդ նույն տվյալներից իմանում ենք, որ թագավորի շուրջը համախմբված էր վերնախավը՝ «պատվավոր հայերը»[57]։ Ուշադրության է արժանի նաև հետևյալ տեղեկությունը։ Կյուրոսի այն հարցին, թե «որքան են քո զորքերը և ինչքան դու դրամ ունես», հայոց թագավորը պատասխանում է. «Հայաստանում կա մոտ 8.000 հեծելազոր և 40.000 հետևազոր, իսկ դրամ՝ հորս թողած գանձերի հետ միասին արծաթով հաշված ավելի քան 3.000 տաղանդ»[58]։ Վերջապես իմանում ենք, որ վերոհիշյալ թագավորն իր դինաստիայի առաջին գահակալը չէր։ Նա հիշատակում էր իր հորը, որը նրան թողել էր այդ ժառանգությունը։ Հայոց թագավորի որդիներն էին Տիգրանն ու Սաբարիսը, ընդ որում նրանցից առաջինը, ինչպես ասվեց, Աքեմենյան Կյուրոսի մտերիմն էր։

Մովսես Խորենացու բերած տվյալները լրացնում են այս տեղեկությունները, հատկապես հիշատակում են Քսենոփոնի մոտ անանուն մնացած հայոց թագավորի անունը՝ «Երուանդ»։ Խորենացին բերում է Մարաց թագավորության ժամանակաշրջանից հայ իշխողների մի ամբողջ ցուցակ[59], որը հետևում է «առաջին պսակաւոր Պարույր»-ին, բայց այդ շարքում պատմականորեն պիտի հավաստի համարել միայն երկուսին՝ Երվանդ Սակավակյացին և նրա որդի Տիգրանին։ Առաջինի մասին պատմիչը գրեթե ոչինչ չգիտի, բացի այն բանից, որ նա Տիգրանի հայրն է, իսկ Տիգրան Երվանդյանի վերաբերյալ բերում է մի պատմություն, որոշ չափով նման այն պատմությանը, որ գիտենք «Կյուրոպեդիա»-ից։ Տիգրանը մեդական թագավոր Աժդահակի (Աստիագեսի) և Կյուրոսի ժամանակակիցն է։ Կյուրոսի և Տիգրանի մտերմությունը խիստ անհանգստացնում է Աժդահակին և միանգամայն հիմնավոր. Տիգրանը, հենվելով Կյուրոսի վրա, ըստ ավանդության, ելնում է Աժդահակի դեմ, սպանում նրան և ազատագրում Հայաստանը մարերի գերիշխանությունից[60]։

Հայ բանասիրությունը ցույց է տվել, որ Աստիագեսի և Կյուրոսի ժամանակակից Տիգրանի մասին գոյություն է ունեցել վիպական երկ, որի հատվածները պահպանվել են Հայաստանում գոյություն ունեցող հունաբան դպրոցի քերականության անանուն մեկնողներից մեկի մոտ[61]։ Մեդական տիրապետության

56 Նույն տեղում, III, 1, 10, բերվում է հետևյալ զրույցը Կյուրոսի (այն ժամանակ Աստիագեսի զորահրամանատարի) և հայկական թագավորի միջև։ Կյուրոսը նրան հարցնում է. «Դե ասա ինձ, դու պատերազմե՞լ ես մոր կողմից իմ պապ Աստիագեսի և մեդացիների դեմ»։ Հայ թագավորը պատասխանում է. «Այո՛»։ Կյուրոսը հարցնում է. «Իսկ պարտությունից հետո դու խոստացե՞լ ես, որ կվճարես հարկ, պահանջի դեպքում կտրամադրես զորք և չես ունենա ամրություններ»։

57 Տե՛ս Xen., Cyrop, III, 1։ Պատմվում է այն մասին, որ Կյուրոսը հավաքել է պարսկական և մեդական առաջնորդներին, հրավիրել է նաև պատվավոր հայերին. ճանապարհասայլերում գտնվող կանանց նույնպես նա չհեռացրեց և թույլ տվեց լսելու։

58 Տե՛ս նույն տեղում, III, 1, 33, Հ. Մանանդյանը հաշվել և ցույց է տվել, որ այդ թվերի համաձայն, հայ թագավորի հարստությունը հավասար էր մոտավորապես 12 միլիոն ոսկի ռուբլու։

59 Տե՛ս Խորենացի, Ա, իբ։

60 Տե՛ս Խորենացի, Ա, իդ։

61 Տե՛ս Н. Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи, Петроград, 1915, էջ 129։ Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928։ էջ 9, 221։ Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 42—43։ Մ. Աբեղյան, Հայ վիպական բանահյուսություն, Երկեր, Ա, Երևան, 1966, էջ 134—139։

վերացումը և Հայաստանի ազատագրումը կախյալ վիճակից սերունդների վրա այնքան ուժեղ տպավորություն է թողել, որ այդ իրադարձության շուրջը ստեղծվել են տարբեր ավանդություններ, որոնք կազմել են հայկական էպոսի ամենահին շերտերից մեկը։ Դատելով Մովսես Խորենացու բերած հատվածներից, Տիգրան Երվանդյանի մասին եղած ավանդությունների էպիկական ցիկլը հետագայում միահյուսվել է «Մեծն Տիգրան»-ին, այսինքն՝ Տիգրան Բ-ին վերաբերող տեղեկություններին[62]։

«Երուանդ» անունը Երվանդունի թագավորների տոհմանունն է և ծագում է հավանաբար իրանական Rayavanta անվանաձևից։ Հունարեն հաղորդվում է՝ 'Ορόντης, 'Ορόντας, 'Αροάνδης ձևով[63]։

**Երվանդունիների դինաստիայի սկզբնավորումը:** Երվանդ անունով հայոց թագավորների դինաստիայի մասին մեզ հասած հայկական տեղեկությունները, ըստ մեծի մասի, կիսաառասպելական-կիսապատմական բնույթի են և կապվում են Հայաստանի երկու կենտրոնների՝ Վանի և Արմավիրի հետ։ Դրանք խիստ վերամշակված ձևով և իբրև հետագա վերապրուկներ պահպանվել են Թովմա Արծրունու «Պատմութիւն տանն Արծրունեաց» երկում։ Թ. Արծրունին աղոտ տեղեկություններ է բերում Երուանդ թագավորի մասին, որն, ըստ ավանդության, «գայ բանակի առ ստորոտով լերինն և գլուխս Տոսպ գաւառի և կոչէ զտեղին Երուանդականս»[64]։ Հետաքրքրական է նույնպես, որ Մատենադարանի հայերեն երկու ձեռագրերի հիշատակարաններում, որոնք վերաբերում են XVIII դարին, Վան քաղաքը անվանված է «Երուանդաւան»[65]։

Այդ տվյալներից հավանական է դառնում, որ այն տերիտորիան, որտեղ նախապես գործել է Երուանդունի տոհմը, Վան քաղաքի շրջակայքն է իր Տոսպ գավառով (ուրարտ. Տուշպա) և նրան կից Հայոց ձորը։

Այս տեսակետից չափազանց կարևոր է, որ Վանա լճի և Հայոց ձորի տեղագրության մեջ պահպանվել են Երուանդ անվանն առնչվող տեղանունները.

---

62 Տե՛ս ստորև, էջ 00։

63 Տե՛ս A. Perikhanian, Une inscription araméenne du roi Artašes trouvée a Zanguézour (Siwnik'), REANS, t. III, 1966, էջ 26—27։

64 Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, ՍՊԲ, 1887, էջ 50։

65 Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 5416—պատարագի խորհուրդ, գրչություն 1749, էջ 17բ—18ա.

Գրեցաւ տետրակս այս խորհրդի
Ի Վասպուրականըն նահանգի
Որ է ի սահմանս Հայաստանի
Ի յանառիկ մեծ դղեկին,
Որ ամարաստան կոչի նախկին
Շամիրամայ կերտեալ պօլսին
Երուանդաւան վերաձայնի
Որոյ անունն պարզ և յայտնի
Ցամեն ազգէ այժմ Վան ասի։

Մաշտոցի անվ. Մատենադարանի ձեռ. № 6013 Տօնացոյց, գրչություն 1710 թ., էջ 35ա—35բ. «Աւարտեցի զսուրբ գիրք, որ կոչի տօնացոյց... յամի թվոյ փրկչին ՌՉԺ, իսկ Հայոց մերում ՌՃՇԹ. ապրիէլ ամսոյ մեկ ի դառն և ի նեղ ժամանակի, յորմե յոյժ նեղիմք ի ձեռաց անօրինաց... Արդ ես Սարգիս դպիրս գծագրեցի զայս ի քաղաքն Երուանդաւան...»։

որոնք, հավանաբար, վերաբերում են մեզ հետաքրքրող ժամանակաշրջանին։ Վերը տեսանք, որ ուշ շրջանի տեղեկություններում Տուշպա-Վանը կոչվում է Երվանդավան։ X դարում հիշատակվող Երուանդականք վայրը նույնպես պետք է փնտրել Վանի շրջակայքում, ամենայն հավանականությամբ, ժամանակակից Ջրուանդանց գյուղի տեղում։ Հիմք կա կարծելու, որ Արուանթունիք-Երուանդունիք գավառի անվանումը սկզբում տարածվում էր Ուրարտուի մայրաքաղաք Տուշպայի (Տոսպի) շրջակայքի ամբողջ տերիտորիայի վրա (ներառյալ նաև Ռշտունիք գավառը)[66]։

Այդ վայրերը կապված են Երուանդունիների դինաստիայի թագավորների գործունեության հետ այն ժամանակաշրջանում, երբ նրանք դեռևս Այրարատի իշխողները չէին, այսինքն՝ աքեմենյան և մեդական ժամանակաշրջանում։

Գիտության մեջ ընդունված տեսակետն այն է, որ ուրա՛րտական պետության անկումը տեղի է ունեցել մ. թ. ա. VI դարի սկզբներին՝ 590—585 թվականներին[67]։

Ուրարտուի կենտրոնում քաղաքական իրադրության այդքան անակնկալ փոփոխման համար հող էին նախապատրաստել հենց իրենք՝ ուրարտական թագավորները։ Ապստամբ ցեղերին խաղաղեցնելու և նրանց Բիաինիլի վերաբնակեցնելու քաղաքականությունը հասցրեց բնակչության խայտաբղետության և ուրարտացիների կողմից իրենց գերակշիռ նշանակությունը կորցնելուն, մի երևույթ, որն արագացրեց հայ ժողովրդի կազմավորման ավարտի ընթացքը։

Այսպիսով, Արմե-Շուպրիայում մ. թ. ա. 652—612 թվականների ժամանակահատվածում թագավորում է հայ-սկյութական ծագում ունեցող ցեղապետ Պարույրը, իսկ Բիայնիլիում VI դարի սկզբներին իշխանության գլուխ է անցնում հայկական Երվանդունի տոհմը։ Այնուհետև, Արմե-Շուպրիան և Բիաինիլին միավորվում են և կազմում մի ընդարձակ Հայկական թագավորություն, որը հայերի մեջ կոչվեց Հայք, իսկ հարևանների մեջ՝ Արմինա, Արմենիա։ Հետագայում, երբ Հայկական թագավորությունը նվաճվեց Դարեհ Ա Վշտասպյանի կողմից (520—517), նրա տերիտորիան բաժանվեց երկու վարչական միավորների՝ սատրապությունների, հիմք ունենալով նախկինում գոյություն ունեցող երկու հայկական թագավորությունների տերիտորիան։

Այսպիսով, մեզ մատչելի պատմական ավանդությունների փշրանքների քննական տեսությունը թույլ է տալիս եզրակացնելու, որ մ. թ. ա. VII—VI դա-

---

66 Հետագայում (հավանաբար Արտաշեսյան դինաստիայի հաստատումից հետո), երբ Արտաշիսյան ավանը (ուրարտ. Թարիրիախինիլին) դառնում է առանձին կրոնական կենտրոն՝ Արտեմիդի (հայ. Անահիտ) պաշտամունքով (որտեղից և պիտի առաջանար Արտամետ անունը), նրան է անցնում շրջակա գավառակը։ Այնուհետև նման առանձին վարչական միավոր է դառնում Գուկանք գյուղը իր շրջակայքով և այդպիսով միմյանցից բաժանվում են Վան քաղաքը իր գավառով, որը կոչվում է Տոսպ, և Ռշտունիք գավառը իր Կավաշ կենտրոնով (որը հետագայում կոչվում էր Ոստան)։ Երուանդունիք անվանումը մնում էր միայն Հայոց ձոր (Խոշաբ) գետի հովտին՝ սկսած Իրլ գյուղից մինչև Օրդոք գյուղը։ Նման վիճակում է ներկայանում մեզ Վան քաղաքը և նրա շրջակա տերիտորիան VII դարի «Աշխարհացոյց»-ում։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 51—62։

67 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Ванское царство, էջ 116 և հաշ.։ *И. М. Дьяконов*, Последние годы Урартского государства по ассиро-вавилонским источникам, ВДИ, 1951, № 2 էջ 32։

րերում ուրարտական պետության փլատակների վրա կազմավորվում է հնագույն հայկական պետությունը, որով և նշանավորվում է հայ ժողովրդի ձևավորման ավարտական փուլը։ Ցեղերի միմյանց խառնվելու և խաչաձևվելու պրոցեսները սկսում են գերակշռել նրանց տրոհվելու և տարբերվելու պրոցեսների հանդեպ։ Այդ ժամանակաշրջանում հատկապես ուժեղանում է հայերի էթնիկական միավորման մեջ մտնող ժողովուրդների և ցեղերի միաձուլման պրոցեսը։ Բազմատեսակ այդ պրոցեսների արդյունքը լինում է այն, որ ազգակից ցեղային լեզուներով ու բարբառներով ներկայացված հայոց լեզուն դառնում է տիրապետող լեզու։

Խոսելով հայկական պետության ծագման մասին, հարկ է ընդգծել սկզբունքային այն խոր տարբերությունը, որ գոյություն է ունեցել հին Արևելքի պետությունների՝ Ասորեստանի, Բաբելոնի, Ուրարտուի և այլոց ու սրանց փոխարինելու եկած պետությունների՝ Մեդիայի, Հայաստանի և Պարսկաստանի միջև։ Ուրարտական պետությունը առաջացել է Տուշպա-Բիաինիլի-Վան քաղաքի երկրագործական-անասնապահական օազիսի քաղաքային համայնքի զարգացման հիմքի վրա և հնազանդեցված ցեղերի ու երկրների ռազմա-վարչական բռնի միավորման ճանապարհով։ Այդ պետությունների ներսում ուժեղ էր հակադրությունը նվաճողների և նրանց զենքով ճնշվողների, կեղեքվող ցեղերի ու ժողովուրդների միջև։ Մասամբ դրանով պիտի բացատրել այն փաստը, որ Հայկական լեռնաշխարհում իրենց երեքհարյուրամյա տիրապետության շրջանում ուրարտներին այնպես էլ չհաջողվեց իրենց լեզուն տարածել նվաճված տերիտորիաների վրա և ստեղծել էթնիկական մի մեծ միավորում։ Մինչդեռ հայկական պետությունը սկզբնավորվեց տերիտորիալ կազմակերպությունների տաբերային միավորման հիման վրա։

Հայկական թագավորության տերիտորիան բավականին ընդարձակ է եղել։ Ինչպես երևում է Քսենոփոնի «Կյուրոպեդիայի» որոշակի տվյալներից, Հայկական թագավորությունը հարում էր մի կողմից Մարաստանին, իսկ մյուս կողմից խալդայներին։ Այդ նշանակում է, որ Հայկական թագավորության տերիտորիան տարածվել է Մարական պետության սահմանից (որը ձգվում էր Վանա և Ուրմիա լճերի միջև) մինչև Փոքր և Բարձր Հայքի լեռները։

Այդ տերիտորիայի վրա միակ վայրը, որ կարող էր լինել երկիրը կառավարողի կենտրոն, նույն Վանն էր՝ Տուշպան, և բնական է, որ Ուրարտուի անկումից հետո կազմավորված հայկական պետության մայրաքաղաքը կարող էր լինել հենց Տուշպան։ Այստեղ պետք է լիներ Օրոնտեսների՝ Երվանդունիների դինաստիայի առաջին հայ թագավորների և նրանց հաջորդած Երվանդ Սակավակյացի և նրա որդի Տիգրանի գահանիստ կենտրոնը։

Անուղղակի մի շարք տվյալներ բերում են այն եզրակացության, որ Երվանդունիների դինաստիան ծագել է Մատիեններին-Մանային սահմանակից Արդինի-Մուսասիրի երկրի տերիտորիայից, որի հյուսիս-արևմտյան բարձր լեռնային մասը մտնում էր Ուրարտուի, իսկ ավելի ուշ՝ Հայաստանի կազմի մեջ։ Պլինիոսը[68] այդ երկրամասում հիշատակում է Օրոանդների (Oroandes) ցեղը, որ ապրում էր Գավգամելա քաղաքից արևելք։ Դա համընկնում է ժամանակակից

68 Տե՛ս Plin., NH, VI, 1, 18։

Ռևանդուզի շրջանին[69]։ Հ. Մանանդյանի կարծիքով, այդ Օրոանդների հետ պետք է կապ ունենա Վասպուրականի գավառներից մեկի՝ Արուանթունիքի (Երուանդունիքի)[70] անունը։ Այդ գավառը կոչվում էր նաև Հայոց ձոր և գտնըվում էր Վան քաղաքից հարավ՝ Հայոց ձոր (Խոշաբ) գետի հովտում[71]։ Երվանդունիների նախարարական տոհմը, այդ գավառի ժառանգական իշխանները, գոյություն ունեին դեռևս մ. թ. VII դարում։

Հետաքրքրական է, որ մեղական և հին հայկական դինաստիաները դուրս եկան հենց այդ Մատիեններից, որը, ինչպես տեսանք, համապատասխանում է Մանա երկրին, ներառյալ նաև ուրարտական դարաշրջանի Պարսուան (Պարսուաշը)։ Որոշ ուսումնասիրողների կարծիքով, այստեղից է ծագում նաև Աքեմենյանների իրանական տոհմը[72]։

Այսպիսով գալիս ենք այն եզրակացության, որ հայկական հնագույն պետության տերիտորիան ներառնում էր այն տարածությունները, որոնք երկրորդ հազարամյակի կեսերից սկսած ընդգրկվել էին հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի մեջ։ Եթե Հայասա-Ազզին՝ հայկական հնագույն կենտրոնը՝ Երզընկայի դաշտը, ռազմական դեմոկրատիայի փուլն ապրող ցեղերի միությունն էր՝ «հայկական» էթնոսի գլխավորությամբ, ապա երկրորդ փուլը նշանավորվում է «արմե» կամ «ուրումե» արմենական էթնոսի գերակշռությամբ՝ Արմե-Շուպրիայում (հին հայկական Աղձնիքը՝ Ծոփաց աշխարհի հովտային մասի ընդգրկմամբ, Խարբերդի դաշտը և Արևմտյան Տիգրիսի հովիտը), որտեղ առաջացավ առաջին պետական կազմակերպությունը։ Հայկական էթնոսի տարածման երրորդ և հիմնական երկրամասը Վանա լճի ավազանը հանդիսացավ։ Խուրրի-ուրարտական ենթաշերտի վրա ձևավորված «հայկական» և «արմենական» հիմնական բաղադրատարրերի սինթեզը տեղի է ունենում բուն Ուրարտու-Բիայնիլիում։ Այստեղ մ. թ. ա. VII դարի և VI դարի եզրին գերակշռող է դառնում հայ-արմենական, այսինքն՝ արդեն մեկ ժողովուրդ դարձած հայկական տարրը և Հայոց ձոր (Խոշաբ) գետի հովիտը, որը մինչև այդ էթնիկական կղզի էր ոչ-հայկական խուրրի-ուրարտական ծովում և ի տարբերություն նրան «Հայոց ձոր» էր կոչվում, այժմ շրջապատված էր հայացող տերիտորիայով։ Հայ ժողովրդի ձևավորման պրոցեսը հասել էր ավարտին և արդեն ստեղծվել էր հայկական պետությունը։ Հետագայում տեղի է ունենում հայ ժողովրդի տարածումը Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիս-արևելյան մասերում, որտեղ հայացվում են տեղական ցեղերը։ Բիայնիլիից հյուսիս գտնվում էր Արարատյան դաշտը, որը շուտով դառնում է հայ ժողովրդի տնտեսական-քաղաքական և կուլտուրական կյանքի կենտրոնը, նշանավորելով հայկական էթնոսի տարածման չորրորդ՝ վերջնական փուլը[73]։ Ահա այս չորս օջախների գոյու-

---

69 Տե՛ս Հ. Մանանդյան, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945, էջ 28։*

70 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 51։*

71 Տե՛ս Հ. Մանանդյան, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 29։ Տե՛ս վերը, էջ 440։*

72 Տե՛ս *В. В. Струве,* Арийская проблема, Советская этнография, 1947, VI—VII, *էջ 117—124։*

73 Տե՛ս *С. Т. Еремян,* К вопросу об этногенезе армян, ВИ ,1952, № 7, *էջ 107։*

թյամբ էր պայմանավորված հայ ժողովրդի և նրա պետության կազմավորումը, որով ավարտվում է նրա անցումը առանձին բաղադրատարրերի պատմությունից դեպի միասնական համահայկական («Հայաստանեայց») ժողովրդի պատմությունը։

**Հայ-մեդական փոխհարաբերությունները։** *Մ. թ. ա. VII—VI դարերում* գոյություն ունեցող հայ-մեդական փոխհարաբերությունները բնորոշում են նորակազմ հայկական պետության պատմությունը։ Այդ փոխհարաբերությունները իրենց արտացոլումն են գտել հայկական էպոսում, բանահյուսության մեջ և լեզվում։ Այդ փոխհարաբերություններն անցնում են երեք շրջան[74]։

Առաջին շրջանը բնորոշվում է դաշնակցային հարաբերություններով Մեդիայի հետ։ Հայկական ցեղապետներն իրենց զինվորական աշխարհազորներով մասնակցում են մեդական թագավորների ռազմական արշավանքներին։ Այդ «դաշինքը» ցեղապետներին հնարավորություն էր տալիս վեր բարձրանալու իրենց ցեղակիցներից և գրավելու իշխանության բարձունքները։ Ռազմական այդ դաշինքի շնորհիվ առանձին դինաստիաներ ճանաչվում էին թագավորներ՝ իրենց ցեղակիցների վրա ժառանգաբար կառավարողներ։

Այդ շրջանում հայերի և մեդացիների սերտ համագործակցությունը ուղղված էր առաջին հերթին Ասորեստանի և Ուրարտուի դեմ։ Ավելին, մեդական թագավորների քաղաքականությունը նպաստում էր հայ էթնոսի տարածմանը Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում։ Ինչպես ցույց են տալիս անուղղակի տվյալները, մեդացիների հետ միասին երկրի ռազմա-ստրատեգիական որոշ կետերում տեղակայված էին նաև հայկական կայազորներ։ Ժամանակի ընթացքում այդ վայրերում ամրանում է հայ բնակչության կորիզը։ Միայն թիկունքի ապահովման այդպիսի պայմաններում մեդացիները կարող էին Փոքր Ասիայում հաջող կերպով պատերազմել Լյուդիայի դեմ (մ. թ. ա. 589—585)։ Ինչպես հայտնի է բախումն ավարտվեց մեդացիների հաղթությամբ։

Ինչպես երևում է, մեդական պետությունը այդ հեռավոր սահմանային տարածությունն իր իշխանության տակ էր պահում դաշնակից հայերի օգնությամբ, որոնք այդ մասում փռյուգացիներին ուղղակի հարևաններն էին։ Հենց այդ տեղերում բնակվող հայերի հետ էլ ծանոթացան հույները, նրանցից տեղեկություններ քաղելով Հայաստանի մասին։

Այդ փոխհարաբերությունների երկրորդ շրջանը բնորոշվում է նրանով, որ հզորացած Մեդիան ձգտում էր կեղեքել իր երեկվա դաշնակիցներին։ Այն բանից հետո, երբ Մեդիան տիրեց Արաքսի հովտում և Միջագետքում գտնված հաղորդակցության ուղիներին, հայոց թագավորը պիտի ճանաչեր մեդական թագավորի գերիշխանությունը։ Նման իրադրության մեջ նախկին դաշնակցային և բարեկամական փոխհարաբերությունները փոխարինվեցին թշնամական հարաբերություններով։ Հայաստանն օգտվում է հարմար առիթից, որպեսզի ապստամբի Մեդիայի դեմ։ Հայկական էպոսում և բանահյուսության մեջ արտահայտություն է գտել «վիշապազուն» մար Աժդահակի դեմ ուղղված այդ պայքարը, որ մղում էին Երվանդ Սակավակյացը և նրա որդի Տիգրանը։ Որպես

74 *Տե՛ս И. М. Дьяконов,* Последние годы Урартского государства по ассиро-вавилоиским источникам, *էջ 34*։

վերջինիս որդու՝ ավանդությունը պատկերում է ամպրոպի և կայծակի աստված Վահագն Վիշապաքաղին, այսինքն՝ մեդացիների դեմ կռվողին[75]։

Երրորդ շրջանը, որը կարող էր հանգել Հայաստանի երկարատև հնազանդեցմանը, իր ավարտին չհասավ։ Մեդական պետության սկիզբ առած քայքայման հետևանքով, մեդացիները չկարողացան իրենց ձեռքում պահել Հայաստանը։ Ըստ «Կյուրոպեդիա»-ի[76], տակավին այն ժամանակ, երբ Կյուրոսը մեդական թագավոր Աստիագեսի զորապետներից էր (այսինքն՝ մինչև 553 թվականը մ. թ. ա.), ապստամբում է հայկական թագավորը, և հրաժարվում է հարկ վճարել ու զորք տրամադրել մեդական թագավորին։ Այդ ապստամբությունը ճնշվում է Կյուրոսի օգնությամբ։ Սակայն շուտով Կյուրոսն ինքն է ապստամբում Աստիագես թագավորի դեմ և եռամյա պայքարի ընթացքում (մ. թ. ա. 553—550) կործանում մեդական պետությունն ու դառնում Հին պարսկական պետության հիմնադիր (մ. թ. ա. 550)։

Հենց այդ ժամանակ էլ Հայաստանն անջատվեց Մեդիայից։ Ինչպես ասված է հայկական էպոսում՝ Մովսես Խորենացու հաղորդմամբ, Տիգրանը «Կյուրոսին աջակից եղավ Մարաց իշխանությունը տապալելու»[77]։

Սակայն Մեդիայի կողմից լիովին ստրկանալու վտանգից ազատված Հայաստանը շուտով պետք է այդօրինակ պայքար սկսեր նաև Կյուրոսի հաջորդների դեմ։

**Ուրարտացիները Հայկական թագավորության ուժեղացման ժամանակաշրջանում:** Ըստ Բ. Պիոտրովսկու՝ «Ուրարտացիները, որոնք իրենց պետության մեջ չէին կազմում բնակչության մեծամասնությունը, որովհետև միայն զենքի ուժով էին Վանի թագավորությանը ենթարկել Առաջավոր Ասիայի բազմաթիվ մանր ցեղերին, Ուրարտուի անկումից հետո ոչ մի տեղ չհեռացան, այլ մնացին Վանի շրջանում, պահպանելով իրենց ցեղային անվանումը, որը Հերոդոտը հաղորդել է հունարեն ալարոդներ ձևով»[78]։ Ուրարտա-խուրրիական բնակչության գերակշռող մասը լիովին ձուլվեց կազմավորվող հայ ժողովրդի մեջ, իսկ մի փոքր մասը մաքուր վիճակում հավանաբար իր գոյությունը երկար ժամանակ պահպանեց Վասպուրականի լեռնային բավիղներում, Վան քաղաքի շրջանում և Սասուն-Խութում, որտեղ արաբական հեղինակները հիշատակում են ալ-Արտան (ճիշտ ընթերցումը՝ Ալարտան)[79] լեռնաբնակ ցեղը։ Թովմա Արծրունին սրանց անվանում է «գռեհիկ Ասորոց» և «յորոց անուն ինքեանք Սանասնայք զինքեանս անուանեն»[80]։

Այսպիսով, փաստերը վկայում են, որ ուրարտացիների հիմնական մասը մնաց Բիայնիլիի և Այրարատի տերիտորիայում, երբ այնտեղ սկսվեց հայացման պրոցեսը։

---

75 Տե՛ս Մ. Աբեղյան, *Հայ վիպական բանահյուսություն*, Երկեր, Ա, էջ 72—93, 97—115։

76 Տե՛ս *Xen.*, Cyrop., *II, 4, 12։ III, 3, 5։*

77 Խորենացի, *Ա, իդ։*

78 *Б. Б. Пиотровский*, Ванское царство,, էջ 332։

79 Տե՛ս Հ. Հյուբշման, *Հին հայոց տեղւոյ անունները*, Վիեննա, 1901, էջ 55։ Գ. Ղափանցյան, *Ուրարտուի պատմություն*, Երևան, 1940, էջ 138։

80 Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց*, Բ, է, էջ 121։

*Հայ ժողովրդի ծագման տեսակետից ուրարտացիները հայերի այլալեզու նախնիներն են, և այդ ժողովրդի կազմավորման մեջ նրանք ոչ պակաս, գուցե և առավել կարևոր դործոն էին, քան այն ցեղերն ու ժողովուրդները, որոնք խոսում էին նախահայերենով։ Բարդ և հետաքրքրական հարցերի թվին է պատկանում հայերենի մեջ ուրարտերենի ձուլման և հայոց լեզվի վրա նրա թողած ազդեցության խնդիրը։*

*Հայերենին ուրարտական լեզվի ձուլվելու պրոցեսը պատկերանում է հետևյալ կերպ։ Դեռևս մ. թ. ա. XII դարից հայերենը ընդգրկվում է երկարատև փոխազդեցության պրոցեսի մեջ ուրարտերենի հետ։ Հետագայում, VII դարում ստեղծվում է այնպիսի մի իրավիճակ, երբ միմյանց վրա փոխազդող լեզուներով խոսողների միջև հաստատվում են տիրապետողների և ենթարկվողների հարաբերություններ։ Եթե սկզբում տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման տեսակետից ուրարտերենը գտնվում էր հայերենին համահավասար վիճակում, ապա հետագայում նա սկսում է ետ մնալ։ VI դարի սկզբում ուրարտերենը դադարում է գրավոր լեզու լինելուց։ Այդպիսին մնում է արամերենը, իսկ ուրարտական գիրը ժամանակի ընթացքում մոռացության է տրըվում և դառնում անհասկանալի։*

*Ընկնելով թույլ լեզվի վիճակի մեջ, ուրարտերենը դադարում է աստիճանաբար կատարել մարդկանց միջև հաղորդակցության միջոցի դեր. աստիճանաբար կորցնելով իր գլխավոր ֆունկցիան, այն դառնում է նեղ շրջանի լեզու։ Այդ լեզվով են դեռևս խոսում ավագ սերնդի ներկայացուցիչները, իսկ նոր սերունդը այդ լեզուն ավելի ու ավելի սակավ է օգտագործում և հասկանում։ Այնուհետև ուրարտերենը աստիճանաբար մահանում է։*

*Կազմավորված հայ ժողովուրդը ժառանգեց ուրարտների մշակույթը։ Այդ մասին են վկայում հնագիտական պեղումները։ Հայոց լեզուն հարստացավ նաև ի հաշիվ ուրարտերենի, առավելապես քառային ֆոնդի բնագավառում*[81]*։*

*Շոշափելով այդ հարցը Ի. Մ. Դյակոնովը գրում է. «Հաստատ կարելի է պնդել, որ հայերենում ոչ-հնդեվրոպական բառապաշարի գրեթե ամբողջ մեծ շերտը գալիս է ուրարտերենից։ Երկու հարյուրից մի փոքր ավելի ուրարտերենի բառերից, որոնց նշանակությունը այժմ մեզ հայտնի է բավարար ճշտությամբ, զգալի տոկոս են կազմում այն բառերը, որոնք հայերենում ևս նույնն են»*[82]*։ Նույնպիսի նմանություն է նա նկատում նաև հնչյունաբանության մեջ։ Ի. Մ. Դյակոնովը գտնում է, որ «Հայոց լեզվի հնչյունաբանական համակարգը բացահայտորեն ուրարտական բնույթ է կրում, որը վկայում է անցյալում լայնարձակ տերիտորիայի վրա հայ-ուրարտական երկլեզվային երկարատև գոյակցության մասին»*[83]*։*

---

81 *Օրինակները տե՛ս վերը, էջ 422։*
*«Ուրարտական լեզվից, անշուշտ, ավելի շատ բառեր պետք է պահպանվեին հայերենում,— գրում է Գր. Ղափանցյանը,— սակայն գրավոր նյութ չկա, իսկ ուրարտական այդ բառերի մի հայտնի մասը մնում է անհասկանալի»* (*Գ. Ղափանցյան, Ուրարտուի պատմություն*)։

82 *Տե՛ս И. М. Дьяконов,* Рецензия на книги Г. А. Меликишвили «Урарту», (Тбилиси, 1951) и «О происхождении грузинского народа», (Тбилиси, 1952), ВДИ, 1954, № 3, *էջ 94։*

83 *Նույն տեղում։*

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՔԵՄԵՆՅԱՆ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԵՆԹԱՐԿՈՒՄԸ ԱՔԵՄԵՆՅԱՆ ՏԵՐՈՒԹՅԱՆԸ

**Պարսկական պետության հիմնադրումը:** *Պարսկական պետությանը նախորդած մարական տերությունը կազմված էր սոցիալ-տնտեսական զարգացման տարբեր մակարդակի վրա գտնվող ժողովուրդներից ու ցեղերից, որոնց միջև միասնություն չկար, ուստի այդ պետության հիմքերն էլ խախուտ էին։ Մարական պետության պատմության հատկապես վերջին շրջանում թագավորի և ազնվականության միջև դրսևորվող հակասությունները զգալի չափով նպաստեցին նրա թուլացմանը, իսկ մի շարք արտաքին հանգամանքներ արագացրին նրա անկումը։*

*553 թվականին Պերսիս երկրի (Պարսք) թագավոր Կյուրոսը ապստամբեց մարերի դեմ։ Երեք տարի անց՝ 550 թվականին պարսիկները կատարյալ հաղթանակ տարան, իսկ մարերի Աստիագես (հայկական աղբյուրների՝ Աժդահակ) թագավորը գերի ընկավ։ Այսպիսով Կյուրոսը հիմք դրեց Իրանի Աքեմենյան տերությանը*[1]*։*

*Շուտով պարսիկների դեմ կնքվում է եռյակ դաշնակցություն Եգիպտոսի, Լյուդիայի և Բաբելոնի միջև, բայց Կյուրոսին և ապա նրա որդուն՝ Կամբյուսեսին, հաջողվում է առանձին-առանձին պարտության մատնել դաշնակիցներին և նրանց երկրները կցել Աքեմենյան պետությանը։ 546 թվականին պարսիկները նվաճում են Լյուդիան, իսկ 538 թվականին՝ Բաբելոնը։ Կյուրոսին չվիճակվեց գլուխ բերել Եգիպտոսի հպատակեցումը։ 529 թվականին նա սպանվում է Միջին Ասիայի տափաստաններում՝ սակերի դեմ պատերազմելիս։ Նրա ծրագիրը իրագործեց իր որդի Կամբյուսեսը, որը 525 թվականին նվաճեց Եգիպտոսը։ Սակայն Կամբյուսեսը երկար չվայելեց իր հաղթանակի պտուղները։ Տերության կենտրոնում նրա դեմ ապստամբություն ծագեց մոգ Գաումատայի գլխավորությամբ, որն իրեն ներկայացրել էր որպես Բարդիա՝ Կամբյուսեսի եղ-*

---

1 *Տե՛ս М. М. Дьяконов,* Очерк истории древнего Ирана, М. 1961. *М. А. Дандамаев,* Иран при первых Ахменидах, М., 1963.

բայր, մինչդեռ իրական Բարդիային Կամբյուսեսը սպանել էր տվել եգիպտական արշավանքի նախօրեին։ Կամբյուսեսի անակնկալ մահը ամրապնդեց ապստամբ մոգի դիրքերը։ Նա ձեռնարկեց մի շարք բարեփոխումներ, ըստ երևույթին, որոշ չափով թեթևացնելով տերության կազմի մեջ մտնող ժողովուրդների վիճակը։ Երբ նա կործանվեց, ասում է Հերոդոտը, բոլորը Ասիայում ողբում էին նրա մահը, բացի պարսիկներից։ Պարսկական բարձրատոհմիկ ազնվականությունը չհապաղեց Գաումատայի հետ հաշվեհարդար տեսնելու։ Նրա գահակալումից մի քանի ամիս անց, Դարեհը, Վշտասպի որդին՝ Աքեմենյանների տոհմից, իր զինակիցների հետ դավադրություն կազմակերպեց Գաումատայի դեմ, սպանեց նրան և գահ բարձրացավ 522 թվականին։

Իր թագավորության սկզբնական շրջանում Դարեհը զբաղված էր մի շարք ժողովուրդների և ցեղերի ապստամբությունների ճնշմամբ։ Այդ մասին Դարեհը Բեհիստունի ժայռի վրա՝ ներկայիս Քիրմանշահ քաղաքից ոչ հեռու, թողել է մի մեծ եռալեզու արձանագրություն (հին պարսկերեն, էլամերեն և աքքադերեն)։ Ապստամբ երկրները հպատակեցնելուց հետո Դարեհը ձեռնամուխ է լինում տերության ամրապնդմանը։

Իր նախորդների օրոք պետությունը տուժում էր կենտրոնական իշխանության թուլությունից, միասնական վարչական կարգի բացակայությունից, ինչպես և հարկահանության անկանոնությունից։ Դարեհը տերության կազմի մեջ մտնող երկրների կառավարման կայուն համակարգ մտցրեց։ Երկրի տերիտորիան բաժանվեց 20 մարզերի՝ սատրապությունների, որոնց գլուխ կարգվեցին սատրապները։ Սրանք կենտրոնական իշխանության ներկայացուցիչներն էին և որպես այդպիսիք իրենց ենթակա սատրապություններում իրագործում էին քաղաքացիական և զինվորական իշխանությունը։ Հարկային սիստեմը մշակվեց ամենայն մանրամասնությամբ։ Տարեցտարի գանձվում էր յուրաքանչյուր սատրապության համար որոշված հաստատուն գումար։ Դարեհը ավելի ամրապնդեց բանակը՝ պետության զինվորական կազմակերպությունը, որը դեռևս Կյուրոսի օրոք իշխանության ամենավստահելի հենարանն էր։ Դարեհի օրոք կարգի բերվեցին հաղորդակցության ճանապարհները, կառուցվեց «արքայական ճանապարհ», որը կտրում-անցնում էր տերությունը նրա կենտրոնական մարզերից՝ Շոշ քաղաքից մինչև արևմտյան ծայրը՝ փոքրասիական Սարդես քաղաքը։ Դարեհը դրամական միասնական սիստեմ մտցրեց, որը ճանապարհաշինության հետ մեկտեղ նպաստեց առևտրի կարգավորմանը և տնտեսական կյանքի առաջընթացին։



Աքեմենյան ոսկեդրամ (դարեկան).
IV դ. մ. թ. ա.

Աքեմենյան տերության հասարակական կարգը, եթե մի կողմ թողնենք տնտեսական և սոցիալական բարձր զարգացման հասած երկրները (Եգիպտոս,

*Բաբելոն, Փյունիկիա, Պաղեստին, Փոքր Ասիայի արևմտյան շրջանները), ինչպես և զարգացման ցածր մակարդակի վրա գտնվող Միջնաժամյան կամ միջինասիական շրջանները, երկրի գերակշռող մասում՝ պարսկական և մարական միջնաշխարհում, գտնվում էր արևելյան տիպի ստրկատիրական հասարակության զարգացման սկզբնական փուլում։ Թագավորը, նրա ընտանիքի անդամները և պարսական վարչության ներկայացուցիչները տերության տարբեր վայրերում ունեին իրենց ընդարձակ տնտեսությունները։ Այս տնտեսություններում աշխատող մարդիկ կոչվում էին մանիյա կամ գրդա (էլամերեն՝ կուրտաշ)։ Դրանք ստրուկներ էին կամ ստրկական վիճակի հասած աղքատ համայնականներ։*

**Հայկական թագավորության հպատակեցումը Աքեմենյաններին:** *Հայաստանը դեռևս Կյուրոսի օրոք ենթարկվեց Աքեմենյան կայսրությանը և նրա կազմում մնաց ավելի քան երկու հարյուր տարի։ Հայաստանի պատմության այդ ժամանակաշրջանը լուսաբանող աղբյուրները շատ չեն։ Դրանցից պետք է հիշատակել ամենից առաջ հույն պատմագիր Քսենոփոնի «Կյուրոպեդիա» և «Անաբասիս» աշխատությունները, որոնց մեջ վերին աստիճանի կարևոր տեղեկություններ են պահպանվել Հայաստանի մասին։*

*Քսենոփոնը (մ. թ. ա. 430—355) հույների վարձկան զորքի կազմում մասնակցել է Կյուրոս Կրտսերի արշավանքին ընդդեմ վերջինիս եղբոր՝ պարսից արքա Արտաքսերքսես Բ Մնեմոնի և Կունաքսայի ճակատամարտից ու Կյուրոս Կրտսերի սպանությունից հետո, մ. թ. ա. 401—400 թվականներին, զորքի հետ միասին անցել է Հայաստանի միջով և Տրապիզոնի վրայով վերադարձել Հունաստան։ Հունական զորքի արշավանքը և ապա նահանջը Քսենոփոնը նկարագրել է իր «Անաբասիս» կոչվող երկում, որի մեջ էլ պահպանվել են ականատես հեղինակի կողմից գրի առնված կարևորագույն տվյալներ Հայաստանի ներքին կյանքի մասին։ Քսենոփոնի մյուս աշխատությունը՝ «Կյուրոպեդիան», բարոյագիտական նշանակություն ունեցող վեպ է Կյուրոս Մեծի կյանքից, որտեղից, այնուհանդերձ, պատմաբաններին հաջողվել է գտնել արժանահավատ, կարևոր նյութեր։ Այսպես. վեպում նկարագրված հայ-մարական և հայ-պարսկական հարաբերությունները, որոնց մասին Քսենոփոնը տեղեկություններ կարող է քաղած լինել Հայաստանում գտնվելիս, զուրկ չեն պատմական արժեքից, մանավանդ, երբ դրանք հաստատվում են այլ աղբյուրների՝ մասնավորապես Մովսես Խորենացու «Հայոց պատմության» տվյալներով։*

*Արժեքավոր են նաև այն վկայությունները, որ հույն պատմաբան Հերոդոտը հաղորդում է Հայաստանում կազմակերպված սատրապությունների մասին։*

*Հույն մատենագիրների հաղորդած տեղեկությունները լրացվում են Աքեմենյան թագավորների սեպագիր արձանագրությունների՝ հատկապես Բեհիստունի արձանագրության տվյալներով։*

*Վերջապես, պետք է հիշատակել նաև Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը», որը թեև քիչ, բայց կարևոր տեղեկություններ է հասցրել մեզ, որոնք իրենց հերթին հաստատվում են Քսենոփոնի «Կյուրոպեդիայի» նյութերով։*

*Ինչպես տեսանք, 550 թվականին Մարաստանը պարտության է մատնըվում Կյուրոսի կողմից, և Մարաստանի թագավոր Աստիագեսը գահընկեց արվում։ Մի շարք տվյալներից երևում է, որ հայ արքայազն Տիգրանը դեռևս Աս-*

*տիագեսի օրոք, հավանաբար սրա արքունիքում՝ Էկբատանում, ծանոթացել էր Կյուրոսի հետ և դարձել նրա որսակից ընկերը*[2]։

*Աղբյուրները իրարից անկախ պնդում են, որ մարերի և պարսիկների միջև վճռական ճակատամարտում մարական բանակի մի շարք ժողովուրդների զորամասեր անցել են Կյուրոսի կողմը և հեշտացրել նրա հաղթանակը*[3]։ *Հնարավոր է, որ այդպես են վարվել նաև հայերը՝ թոթափելու համար մարական լուծը։ Մովսես Խորենացին հատկապես նշում է, որ մարերի թագավոր Աժդահակը երկյուղ էր կրում հայերի և պարսիկների դաշնակցությունից։ Մարական թագավորության անկումից հետո, ինչպես երևում է, Հայաստանը միաժամանակ անկախություն է վայելել։ Սակայն մի շարք տվյալներից պարզվում է, որ Կյուրոսը իրեն է ենթարկել նաև Հայաստանը։ Հավանաբար 546 թվականին, լիդիական արշավանքի նախօրեին, Կյուրոսը մտնում է Հայաստան, որպեսզի նրա նվաճումով ապահովի դեպի Փոքր Ասիայի արևմտյան շրջաններ արշավող բանակի թիկունքը։*

*«Կյուրոպեդիայի» հաղորդած տվյալներից երևում է, որ Կյուրոսի օրոք, գեթ նրա իշխանության առաջին տարիներին, Հայաստանը գտնվում էր մոտավորապես նույն վիճակում, ինչ Մարաստանի գերիշխանության ժամանակ, այսինքն՝ տուրք էր վճարում, որը Կյուրոսը կրկնապատկեց, և զորքով մասնակցում պարսիկների ռազմական արշավանքներին, օրինակ, Բաբելոնի դեմ՝ 539 թվականին։ Այդ տվյալների և Մովսես Խորենացու տված տեղեկությունների բաղդատությունից կարելի է եզրակացնել, որ Քսենոփոնի մոտ հիշատակված «Արմենների թագավորի» անունը Երվանդ էր. նրա գահակալությունը հավանաբար կարճատև է եղել, ուստի Խորենացին նրան կոչում է «Սակավակյաց»։ Դատելով Կյուրոսի՝ նվաճված երկրների նկատմամբ վարած քաղաքականության սկզբունքներից, որոնց հատուկ էր որոշ հանդուրժողականություն*[4], *ինչպես նաև Մովսես Խորենացու տվյալներից, կարելի է ենթադրել, որ պարսկական տիրապետության իսկ պայմաններում, Երվանդ թագավորին Հայոց գահի վրա հաջորդեց նրա որդին՝ Տիգրանը, որին Մովսես Խորենացին հիշատակում է որպես թագավոր։ Բացառված չէ սակայն, որ իր կյանքի վերջին տարիներին Կյուրոսը փոփոխություններ մտցրեց Հայաստանի քաղաքական դրության մեջ՝ Հայաստանի, Մարաստանի և կադուսիացիների (կադիշների) սատրապ նշանակեց իր եղբայր Թանաոքսարեսին*[5]։

**Հայերի պայքարը անկախության համար:** *Հայաստանի պատմությունը Կյուրոսի որդի Կամբյուսեսի, ինչպես նաև մոգ Գաումատայի կարճատև իշխանության օրոք մեզ հայտնի չէ։ Պետք է ենթադրել, սակայն, որ հայերը կայսրության մյուս ժողովուրդների նման ողջունեցին Գաումատայի միջոցառումները՝ հարկերը և զորքի մատակարարումը երեք տարով վերացնելու մասին։*

---

2 *Տե՛ս Xen.*, Cyrop., *II, 4, 15, III, 1, 7։* Խորենացի, *Ա, իե—իզ։*

3 *И. М. Дьяконов*, История Мидии, *էջ 419—421։*

4 *Տե՛ս И. М. Дьяконов*, История Мидии, *էջ 422—424. H. Bengtson-ի գրախոսականը* O. Leuze, Die Satrapieneinteilung in Syrien und im Zweistromlande-*ի մասին*, „Gnomon", 1937, *հ. 13, էջ 117—119.*

5 *Տե՛ս. O. Leuze*, Die Satrapieneinteilung in Syrien und in Zweistromlande von 530—320, Halle 1935, *էջ 10—11։*

Երբ Դարեհը սպանեց Գաումատային և բարձրացավ պարսից գահի վրա, տերության ժողովուրդները, այդ թվում և հայերը, ապստամբեցին Աքեմենյանների տիրապետության դեմ։

Ապստամբությունների ճնշման դրվագները վերարտադրված են, ինչպես ասվեց, Դարեհ Ա-ի Բեհիստունյան արձանագրությունում[6]։ Տվյալներից երևում է, որ Հայաստանը նվաճելու համար Դարեհը գործադրել է մեծ ջանքեր և որ հայերը, հավանաբար, որոշ կապերի մեջ են եղել Մարաստանի և Բաբելոնի հետ, ներդաշնակելով իրենց գործողությունը այդ երկրների ապստամբությունների ընթացքի հետ[7]։

Բեհիստունի արձանագրության հայերի ապստամբության վերաբերող մասը հետևյալն է.

«Դարեհ թագավորն ասում է.—«Երբ ես Բաբելոնի մեջ էի գտնվում, իմ դեմ ապստամբեցին հետևյալ երկրները՝ Պարսկաստան, Շուշաստան, Մեդիա, Ասորիք, Եգիպտոս, [Արմինա], Պարթևստան, Մարգիանա...»։

«Դարեհ թագավորն ասում է.—Արդ Արմինա ուղարկեցի մի արմինացի, իմ Դադարշիշ անունով ծառային և այսպես պատվիրեցի. «Գնա և նվաճե այդ ապստամբ զորքը, որ ինձ չէ հպատակվում»։ Դադարշիշը գնաց Արմինան նվաճելու։ Երբ նա եկավ Արմինա՝ ապստամբները դուրս եկան Դադարշիշի դեմ՝ նրան ճակատամարտ տալու համար։ Դադարշիշը ճակատամարտն ընդունեց։ Արմինայի մեջ Զուզա անունով մի ավան կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամու բանակից։ Թուրավահարա ամսի 8-ն էր[8], երբ ճակատամարտը տեղի ունեցավ»։ «Դարեհ թագավորն ասում է.—Ապստամբները երկրորդ անգամ հավաքեցին իրենց ուժերը և նորից դուրս եկան Դադարշիշի դեմ պատերազմի։ Արմինայի մեջ Տիգրա անունով մի բերդ կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը թշնամու բանակը հալածեց։ Թուրահավարա ամսի 18-ն էր, երբ ճակատամարտը տեղի ունեցավ»[9]։

«Դարեհ թագավորն ասում է.— Ապստամբները երրորդ անգամ հավաքվեցին և դուրս եկան Դադարշիշի դեմ պատերազմի։ Արմինայի մեջ Ուհիամա անունով մի բերդ կա. ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամու բանակից։ Թայգրաչի ամսի 9-ն էր, երբ ճակատամարտը տեղի ունեցավ[10]։ Հետո Դադարշիշը, հնազանդվելով իմ հրամանին՝ մնաց Արմինայում, մինչդեռ ես իմ նիզակը ուղղում էի դեպի Մեդիա»։

«Դարեհ թագավորն ասում է.— Այնուհետև Արմինա ուղարկեցի Վահումիսա անունով մի պարսկի, իմ ծառային, և այսպես պատվիրեցի. «Գնա նվաճե այդ ապստամբ զորքը, որ ինձ չէ հնազանդվում»։ Վահումիսան գնաց Արմինան

---

6 Տե՛ս «Хрестоматия по истории древнего Востока», М., 1963, էջ 358—364։

7 Տե՛ս И. М. Дьяконов, История Мидии, էջ 436—437. P. Junge. Dareios I, König der Perser, Leipzig 1944, էջ 169.

8 Ըստ Յուստիի՝ 19 ապրիլի 521 թվականի, ըստ Քյոնիգի՝ 21 մայիսի 521 թվականի։

9 Ըստ Յուստիի՝ 29 ապրիլի 521 թվականի, ըստ Քյոնիգի՝ 31 մայիսի 521 թվականի։

10 Ըստ Յուստիի՝ 20 մայիսի 521 թվականի. ըստ Քյոնիգի՝ 21 հունիսի 521 թվականի։

Նվաճելու։ Ապստամբները հավաքվեցին և դուրս եկան Վահումիսայի դեմ պատերազմի։ Ասորեստանի մեջ Իզալա անունով մի երկիր կա։ Ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ սպանեց ապստամբների բանակից։ Անամակա ամսի 15-ն էր[11], երբ ճակատամարտը տեղի ունեցավ»։

«Դարեհ թագավորն ասում է.— Ապստամբները երկրորդ անգամ հավաքվեցին և դուրս եկան Վահումիսայի դեմ պատերազմի։ Արմինայի մեջ Աուտիյարա անունով մի գավառ կա։ Ճակատամարտը տեղի ունեցավ այնտեղ։ Արամազդն ինձ օգնեց։ Շնորհիվ Արամազդի իմ բանակը շատ մարդ կոտորեց թշնամու բանակից։ Թուրավահարա ամսի վերջն էր[12], երբ ճակատամարտը տեղի ունեցավ։ Հետո Վահումիսան հնազանդվելով իմ հրամանին, մնաց Արմինայում, մինչդեռ ես իմ նիզակը ուղղում էի դեպի Մեդիա»[13]։

Արձանագրության տվյալներից երևում է, որ Դարեհը Հայաստան է ուղարկել երկու զորավար, որոնք հինգ անգամ ստիպված են եղել իրենց ուժերը չափելու ապստամբների հետ։ Հայաստանի հպատակեցումը Դարեհը հանձնարարել էր ծագումով հայ մի զորավարի՝ Դադարշիշին, որը Հայաստանում Զուզա ավանի, Տիգրա և Ուհիամա բերդերի մոտ ճակատամարտ է տալիս հայերին, բայց պարտվում է։ Դադարշիշի անհաջողությունից հետո Դարեհը Հայաստան է ուղարկում մի պարսիկ զորավարի՝ Վահումիսային։ Սա հայերի հետ ընդհարվում է Հայաստանի հարավային սահմաններից դուրս՝ Հյուսիսային Միջագետքում, Իզալայում։ Երկրորդ վճռական ճակատամարտը տեղի է ունենում կրկին Հայաստանում, Աուտիյարա գավառում, որով հայերի համառ դիմադրությունը կոտրվում է և երկիրը հնազանդեցվում պարսիկներին։

Դեպքերի ընթացքի նման պատկերացումը քաղաքացիության իրավունք է ստացել հայագիտական երկերում։ Սակայն մոտիկից ծանոթանալով ճակատամարտերի ժամանակագրական կողմին, պետք է ասել, որ այն չի կարելի վերջնական համարել, ուստի հնարավոր է առաջարկել ճակատամարտերի հաջորդականության տարբեր մեկնաբանում։

Բեհիստունյան արձանագրության նկարագրած դեպքերի զգալի մասի թվագրումը երկար ժամանակ վեճի առարկա լինելուց հետո, քիչ թե շատ բավարար լուծում է գտել, ինչ որ չի կարելի ասել հայերի ապստամբության ընթացքը պատկերող դրվագների ժամանակագրության մասին։ Այդ է պատճառը, որ ի տարբերություն ավանդական մոտեցման, մի շարք աշխատություններում բերված է Քյոնիգի թվագրումների վրա հիմնված ճակատամարտերի հերթականության նոր մեկնաբանում[14]։

Քյոնիգի թվագրման համաձայն, առաջին ճակատամարտը ապստամբ հայերի և պարսիկների միջև տեղի է ունեցել դեռևս 522 թվականի դեկտեմբերին։ Ճակատամարտի վայրը Իզալան է՝ Հյուսիսային Միջագետքում։ Այն հանգամանքը, որ առաջին ընդհարումը տեղի է ունեցել Հայաստանի հարավային

11 Ըստ Յուստիի՝ 18 հունվարի 520 թվականի, ըստ Քյոնիգի՝ 31 դեկտեմբերի 522 թվականի։

12 Ըստ Յուստիի՝ 1 հունիսի 520 թվականի, ըստ Քյոնիգի՝ 12 հունիսի 521 թվականի։

13 Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 48—50։

14 Տե՛ս P. Junge, Dareios I, König der Perser, էջ 53—54, 58; „Хрестоматия по истории Древнего Востока", էջ 360—361։

սահմաններից դուրս, ցույց է տալիս, որ ապստամբները նախահարձակ էին եղել։ Որոշ ուսումնասիրողներ այս փաստի մեջ տեսնում են նաև մի ակնարկ հայերի և բաբելոնացիների հակապարսկական ելույթների միջև գոյություն ունեցած համաձայնեցման մասին[15]։

Հաջորդ ճակատամարտերը, ըստ նույն թվագրման, տեղի են ունեցել 521 թվականի մայիս, հունիս ամիսներին։ Մարտական գործողությունները վարող Վահումիսայի կողքին այժմ հանդես է գալիս նաև Դադարշիշը, որը և հայերին վերջնական պարտության է մատնում հունիսի 21-ին։

Ժամանակագրական նոր մեկնաբանության համաձայն, ոչ թե Դադարշիշն է սկսում ապստամբության ճնշման գործը, իսկ Վահումիսան այն ավարտում է, այլ երկու զորավարները իրարից անկախ են վարում պատերազմական գործողությունները Հայաստանի տերիտորիայում, տարբեր ուղղություններով, մեկը Ասորիքից, մյուսը՝ Ասորեստանից կամ Մարաստանից։

Ըստ Բեհիստունյան արձանագրության տվյալների, ապստամբության ճնշումից հետո երկու զորավարներն էլ՝ Դադարշիշն ու Վահումիսան, մնում են Հայաստանում, սպասելով Դարեհի գալուն։

Դժբախտաբար Բեհիստունյան արձանագրությունում հանդիպող տեղանունների տեղադրումը հաստատուն չէ։ Վահումիսայի բանակը իր գործողությունները սկսելով Ասորիքից, խորացել է Հայաստանի տերիտորիան, ըստ երևույթին շարժվելով դեպի Աղձնիք։ Ինչ վերաբերում է Դադարշիշ զորավարի գործողությունների ռազմաբեմի տեղադրությանը, ապա այդ հարցը դեռևս անորոշ է մնում։ Այս պատճառով էլ հնարավոր չէ Բեհիստունյան արձանագրության տվյալների հիման վրա որոշակի հետևություններ անել ո՛չ Հայաստանի տերիտորիայի հարավային հատվածների մասին, ուր ծավալվում էին ռազմական գործողությունները, և ո՛չ էլ Հայաստանի տերիտորիայի մասին ընդհանրապես[16].

Պետք է կարծել, որ Հայաստանի սահմանները Աքեմենյանների տիրապետության սկզբնական շրջանում, մինչև Դարեհ Ա-ի ռեֆորմները, համընկնում էին մ. թ. ա. VI դարի հայկական թագավորության սահմանների հետ։

Դարեհ Ա-ի օրոք Հայկական լեռնաշխարհը և հարևան շրջանները բաժանվեցին երկու՝ 13-րդ և 18-րդ սատրապությունների միջև։ Հերոդոտը հաղորդում է, որ 13-րդ սատրապությունը ընդգրկում էր Պակտյուիկեն, արմեններին և նրանց հարևաններին՝ մինչև Եվքսինյան ծովը[17]։ Այդ սատրապության տերիտորիան մոտավոր ճշտությամբ որոշվում է Հերոդոտի այլ տվյալների օգնությամբ[18]։ Հյուսիս-արևմուտքում այն հասնում էր մինչև Հալիս գետի ակունքը, որտեղ գտնվում էր Արմենների լեռը, և այնտեղից էլ մինչև Սև ծովի ափերը, իսկ հարավ-արևելքում սահմանակից էր Մատիանային։ Նրա արևմտյան սահմանը Եփրատ գետն էր, որը այն բաժանում էր Կիլիկիայից։ Արևելքից և հյու-

---

15 Տե՛ս P. Junge, նույն տեղում։

16 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսության հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 52—53. Հ. Ժամկոչյան, Հայաստանը նախնադարյան-համայնական հասարակության և ստրկատիրության շրջանում, պրակ. 1, Երևան, 1961, էջ 143—144։

17 Տե՛ս Herod., III, 93։

18 Տե՛ս նույն տեղում, I, 72, 180, V, 49, 52։

սիս-արևելքից այն կից էր 18-րդ սատրապությանը։ Երկու սատրապություն-ների սահմանը դժվարությամբ է որոշվում։ Հնարավոր է, որ Վանա և Ուրմիա լճերի միջև գտնվող շրջանից, այնտեղ, որտեղ Արմենների երկիրը հանդիպում էր Մատիանային, սահմանը ընթանում էր հյուսիսային ուղղությամբ և ապա Հայկական պարի երկայնքով հասնում Արաքս գետի վերին հոսանքի շրջան-ները և այնտեղից գնում դեպի հյուսիս։



Հայերի կողմից մատուցվող ընծա. Պերսեպոլիս

13-րդ սատրապության վարչական կենտրոնը եղել է, հավանաբար, Վանը։ Վանի ժայռի վրա պահպանվել է Աքեմենյան Քսերքսես թագավորի սեպագիր արձանագրությունը, որը հաղորդում է թագավորի շինարարական աշխատանք-ների մասին[19]։

---

[19] Տե՛ս F. H. Weissbach, Die Keilinschriften der Achaemeniden, Leipzig, 1911, էջ 116—119։

13-րդ սատրապությունը որպես հարկ տարեկան մուծում էր 400 տաղանդ արծաթ (1.200.000 ռուբլի. ոսկու արժողությամբ)։ Բացի այս գումարից, որ հայերը վճարում էին իրենց հարևանների հետ միասին, նրանք տարեկան 20.000 նժույգ էին ուղարկում պարսից թագավորին, ինչպես նաև թանկագին մետաղից պատրաստված բարձրարվեստ անոթներ[19]։

Հայկական լեռնաշխարհում կազմավորված մյուս սատրապությունը 18-րդն էր, որը Հերոդոտի վկայությամբ ընդգրկում էր մատիեններին, սասպեյրներին և ալարոդներին[20]։

Սասպեյրները, որոնց անունով է կոչվել Սպեր գավառը, ապրում էին Հայկական լեռնաշխարհի հյուսիսում, Ճորոխ գետի վերին հոսանքից դեպի արևմուտք և հարավ-արևելք։ Ալարոդները՝ ուրարտացիների մնացորդները Հայկական լեռնաշխարհում, հիմնականում բնակվում էին Արարատյան դաշտավայրում, ինչպես նաև Վանա լճի և Արաքս գետի միջև ընկած տերիտորիայում։ Մատիենները բնակվում էին 18-րդ սատրապության հարավային մասում։ Հերոդոտի[21] և Ստրաբոնի[22] տվյալներից երևում է, որ Ուրմիա լճի շրջանում տարածվում էր Մատիենե երկիրը, որը համապատասխանում էր նախկին Մանային։

18-րդ սատրապության վարչական կենտրոնը, հավանաբար, գտնվում էր Արարատյան հարթավայրում, ուրարտական քաղաք Էրեբունիի միջնաբերդում (Արին-բերդ)[23]։ Այս սատրապության վճարած հարկը կազմում էր տարեկան 200 տաղանդ, որը կրկնակի պակաս էր նախորդից։

Աքեմենյան թագավորներից մեզ հասած արձանագրություններում 13-րդ և 18-րդ սատրապությունները չեն հիշատակվում, մինչդեռ Հայկական լեռնաշխարհը հանդես է գալիս միասնաբար Արմինա կամ Ուրաշտու (այսինքն՝ Ուրարտու) անվան տակ։ Այստեղից հետևում է, որ պարսկական տիրապետության օրոք Հայկական լեռնաշխարհի երկու վարչական միավորները, այնուամենայնիվ, ընկալվում էին որպես մի երկիր՝ Հայաստան[24], որը նախկին ուրարտական պետության ժառանգորդն էր դարձել[25]։

Ինչպես մարերի և առաջին Աքեմենյանների, այնպես էլ Դարեհի ու իր հաջորդների օրոք հայերը մասնակցում էին տերության վարած պատերազմներին։ Այսպես, Հերոդոտը հայերին հիշատակում է Քսերքսեսի բանակում, որը 480 թվականին արշավեց դեպի Հունաստան[26]։ Հայերը զինված էին փռյուգացիների նման և սրանց երկուսի առաջնորդը Արտոքմեսն էր, որ ամուսնացած էր Դարեհի աղջկա հետ։

---

19 Տե՛ս Strabo, XI, 14, 9: *E. Schmidt*. Persepolis I, Chicago 1953, տախտակ 29Յ։

20 Տե՛ս Herod., III, 94։

21 Տե՛ս նույն տեղում, V, 52։

22 Տե՛ս Strabo, XI, 14, 8։

23 Տե՛ս Գ. Ա. Տիրացյան, Արին-բերդի սյունազարդ դահլիճը և սատրապային կենտրոնների հարցը Հայկական լեռնաշխարհում, Տեղ. ՀԳԱՀ, 1960, № 7—8։

24 Տե՛ս *И. М. Дьяконов*, История Мидии, էջ 347—348։

25 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Ванское царство, էջ 117։

26 Տե՛ս Herod., VII, 73։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔԸ ԱՔԵՄԵՆՅԱՆՆԵՐԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

**Հայաստանը ըստ Քսենոփոնի «Անաբասիսի»:** *Հայաստանի հաջորդ տասնամյակների պատմության մասին տեղեկություններ չկան։ Հայաստանի միջով նահանջող հունական բանակի հրամանատար Քսենոփոնի «Անաբասիսի» երկի համապատասխան գլուխները նյութ են տալիս արդեն V—IV դարերի սահմանագլխի պատմության համար։*

*Ահա հունական բանակի մոտավոր երթուղին։ Կարդուխների երկրից այն մտել է Հայաստան, անցնելով Կենտրիտես (Արևելյան Տիգրիս) գետը, որը, ըստ Քսենոփոնի, Հայաստանի հարավային սահմանն էր կազմում։ Հյուսիս-արևմտյան ուղղությամբ 5 փարսախ (մոտավորապես 25 կմ) առաջ շարժվելուց հետո հույները անցել են, ըստ պատմիչի, Արևմտյան Տիգրիսի ակունքների մոտով, որը պիտի լինի այժմյան Քաղիրթի ակունքների շրջանը։ Այստեղից շարունակելով իրենց ճանապարհը, գնացել են 15 փարսախ (մոտ 75 կմ)՝ մինչև Տելեբոաս գետը (Արածանիի ձախակողմյան վտակ Մեղրագետը)։ Ըստ երևույթին, արևելյան ուղղությամբ շարժվելով 30 փարսախ (150 կմ), հույները անցել են Արածանին այնպիսի մի կետում, որը հեռու չէր գետի ակունքներից։ Այստեղից հույները գնացել են հյուսիսային և հյուսիս-արևմտյան ուղղությամբ մինչև Փասիս գետը, այսինքն՝ Արաքսի վերին հոսանքը, մոտավորապես 30 փարսախ (150 կմ) կամ գուցե՝ 65 փարսախ (325 կմ)[27]։ Այնուհետև, մոտավորապես 32 փարսախ (160 կմ) ճանապարհ կտրելուց հետո, հույները մտել են տաոխների երկիրը և ապա անցնելով մի շարք այլ ցեղերի տերիտորիաներով, հասել են Տրապիզոն։*



Օրոնտասի (Երվանդ) ոսկե դրամը

*Քսենոփոնը Հայկական լեռնաշխարհում հիշատակում է վարչական երկու միավորներ՝ մեկը Հայաստան ընդհանրապես, մյուսը՝ «Արևմտյան Հայաստան»։ Դեռևս կարդուխների երկրում Քսենոփոնին տեղեկացրել էին, որ այդ երկրի միջով անցնելուց հետո հույները կմտնեն Արմենիա, որը «ընդարձակ և բարեկեցիկ» է, և գտնվում է Օրոնտասի իշխանության տակ[28]։*

*Հայկական լեռնաշխարհի տերիտորիայով առաջ շարժվելիս, Մեղրագետի շրջանում, հույներին հայտնի է դառնում, որ նրանք գտնվում են «Արևմտյան Հայաստանում», որի կառավարիչը Տիրիբազն էր[29]։*

---

27 *Տեքստը այստեղ այնքան էլ պարզ չէ։*

28 *Տե՛ս Xen.*, Anab., *III, 5, 17։*

29 *Տե՛ս նույն տեղում, IV, 4, 4։*

Հայաստանի սատրապ Օրոնտասը բարձրատոհմիկ ազնվականությանն էր պատկանում։ Ստրաբոնի մի վկայությունից երևում է, որ նրա նախնին՝ Դարեհ Ա-ի զինակից Հիդարնեսն էր[30]։ «Անաքսասիսի» տվյալներից, Անտիոքոս Ա Կոմագենացու Նեմրութ-դաղի արձանագրություններից[31] կամ այլ աղբյուրներից երևում է, որ Օրոնտասը խնամիական կապերի մեջ էր իր ժամանակակից Արտաքսերքսես Ա Աքեմենյան թագավորի հետ, ամուսնացած լինելով նրա դուստր Հռոդոգունեի հետ։ Ինչ վերաբերում է Արևմտյան Հայաստանի կառավարչին՝ Տիրիբազին, ապա նա նույնպես Պարսից թագավորին մոտ կանգնած անձնավորություն էր։

Հիշատակված վարչական միավորների տերիտորիանները որոշվում են մոտավոր ճշտությամբ։ «Արմենիան», որը պատմիչի վկայությամբ ընդարձակ մի երկիր էր, հիմնականում ընդգրկում էր Հայկական լեռնաշխարհի հարավային և արևելյան շրջանները։ «Արևմտյան Արմենիան» իր հերթին ամփոփում էր Հայկական լեռնաշխարհի կենտրոնական, հյուսիս-արևմտյան և հյուսիսային շրջանները։ Ակներևաբար այս միավորները Հերոդոտի կողմից վկայակոչված միավորներին (13-րդ և 18-րդ սատրապություններին) չեն համապատասխանում[32]։ Հավանաբար V դարի վերջերին Հայկական լեռնաշխարհը վարչական վերաբաժանման է ենթարկվել և տերիտորիաները այլ ձևով են բաշխվել նորաստեղծ միավորների միջև։



Տիրիբազի արծաթե դրամը

Ըստ երևույթին, V—IV դարերի եզրին Հայկական լեռնաշխարհում կար վարչական մի հիմնական ընդհանուր միավոր՝ Հայաստանը, որի ենթաշրջանըն էր «Արևմտյան Հայաստանը»։ Ի տարբերություն Օրոնտասի՝ Հայաստանի սատրապի, Տիրիբազին Քսենոփոնը անվանում է հյուպարքոս, որը Աքեմենյան պաշտոնյաների սանդուղքի ավելի ցածր աստիճանի վրա էր գտնվում և համապատասխանում էր սատրապության այդ ենթաշրջանի կառավարչի պաշտոնին[33]։

Հայկական ընդհանուր սատրապության կենտրոնը հավանաբար շարունակում էր մնալ Վանը։ Բացի այդ կենտրոնից, երկրի տարբեր վայրերում կային սատրապի նստավայր-ապարանքներ։ Հույն մատենագիրների, առաջին հերթին Քսենոփոնի և Հերոդոտի վկայություններից երևում է, որ Հայկական

---

30 Տե՛ս Strabo, XI, 14, 15։

31 Տե՛ս K. Humann, O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien, Berlin 1890, Textband, էջ 283, 305։

32 Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб, 1908, էջ 309, Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 65—66։

33 Տե՛ս O. Leuze, Die Satrapieneinteilung..., էջ 172, 179, Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 65։

լեռնաշխարհում հայերից բացի բնակվում էին նաև բազմաթիվ այլ ցեղեր։ Ինչպես տեսանք, Հերոդոտը հիշատակում է սասպեյրներին, ալարոդներին, մատիեններին[34], իսկ Քսենոփոնը՝ խալդայներին, խալիբներին, մարգերին, հեսպերիտներին, փասիաններին, տաոխներին[35]։ Այս ցեղերի ծագումը վերջնականապես պարզված չէ, բայց ըստ երևույթին ալարոդները ուրարտացիներն էին, մարդերը իրանական ծագում ունեին, մատիենները և տաոխները՝ խուռիական, սասպեյրները կամ հեսպերիտները, փասիանները, խալդայները (խալիբները)[36] թերևս՝ քարթվելական։ Հիշատակված բոլոր այս ցեղերը, և առաջին հերթին ալարոդները՝ ընդգրկվելով հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի մեջ, հետագայում մեծ մասամբ ձուլվեցին հայերի հետ, հետքեր թողնելով լեզվի, մշակույթի, մարդաբանական տիպի, ինչպես նաև տեղանունների մեջ։ Այսպես, օրինակ, ալարոդներից առաջացել է Արարատը, մարդերից՝ Մարդաստան կամ Մարդուցայք և, ըստ երևույթին, Մարգաղի գավառները, փասիաններից՝ Բասենը, տաոխներից՝ Տայքը, խալդայներից՝ Խաղտիքը, սասպեյրներից կամ հեսպերիտներից՝ Սպերը։

**Հին Հայաստանի տնտեսությունը մ. թ. ա. VI—IV դարերում:** Աքեմենյան ժամանակաշրջանում Հայաստանի տնտեսությանը վերաբերող տեղեկություններ հանդիպում են հիմնականում Քսենոփոնի աշխատություններում։ Հատկապես «Անաբասիսում» գտնում ենք հայերի զբաղմունքի և արտադրության մասին բազմաթիվ մանրամասնություններ։

Հայերի հիմնական զբաղմունքը եղել է գյուղատնտեսությունը։ Կյուրոպեդիայում պատկերված՝ հայերի և խալդայների հողի շուրջը ունեցած վեճերից բխում է, որ գյուղատնտեսությունը հայերի և նրանց հարևանների ապրուստի միջոցն էր[37]։ Իրենց ճանապարհին՝ Կենտրիտես գետի և Տիգրիսի ակունքների միջև, Տելեբոաս գետի ափերին, Տելեբոասից դեպի Արածանիի ակունքները տանող ճանապարհին, Արածանիի վերին հոսանքը անցնելուց հետո հույները հանդիպել են բազմաթիվ գյուղերի կամ գյուղախմբերի։

Քսենոփոնը նշում է Հայաստանի բարեկեցիկ վիճակը, իսկ գյուղերը նկարագրելիս ամեն անգամ ընդգծում նրանց պաշարներով լի ու հարուստ լինելու հանգամանքը։ Հայերի տներում Քսենոփոնի հանդիպած սննդամթերքից և պաշարներից կարելի է որոշ հետևություններ անել Հայաստանի գյուղատնտեսության հիմնական ճյուղերի՝ երկրագործության և անասնապահության մասին։ Պատմիչը հիշատակում է ցորենի հաց և գարեհաց, ցորեն և գարի առանձին, չորացրած խոտ՝ անասունների համար, գարուց պատրաստված գինի (այսինքն՝ գարեջուր), հին անուշահոտ հորած գինիներ, չամիչ, ընդեղեններ, քունջութի,

---

34 Տե՛ս Herod., III, 94։

35 Տե՛ս Xen., Anab., IV, 3, 4, 5, 18։

36 Խալդայների նույնացումը ուրարտացիների հետ վերջնականապես հերքված պետք է համարել։ Բազմաթիվ վկայություններ ուրարտական շրջանից մինչև միջնադար գալիս են հաստատելու, որ խալդայական ցեղախմբերը դեռևս ուրարտական պետության օրերին բնակվելիս են եղել Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիս-արևմտյան ծայրամասերում՝ Պոնտական լեռներում, որպես ուրարտացիներից տարբեր էթնիկական միավոր (տե՛ս Б. Б. Пиотровский, Ванское царство,, էջ 117 և հաջ.)։

37 Տե՛ս Ս. Ն. Հակոբյան, Հայ գյուղացիության պատմություն, Երևան, 1957, էջ 80։

գառը նշի և բևեկնի ձեթ։ Մթերքների այս թվարկումը ցույց է տալիս հին Հայաստանի երկրագործության զարգացման համեմատաբար բարձր աստիճանը և նրա բազմաճյուղայնությունը։ Հացահատիկային բույսերի մշակման կողքին գոյություն ուներ խաղողագործությունը, որի զարգացման բարձր աստիճանի մասին են վկայում հատուկ մշակման միջոցով պատրաստված հին գինիները, ինչպես նաև այն հանգամանքը, որ Հայաստանի գինու մի մասը արտահանվում էր։ Խմիչքի, ընդեղենի և տեխնիկական կուլտուրաների գոյությունը ևս ապացույց է վերելք ապրող երկրագործության, քանի որ այդպիսի կուլտուրաների մշակումը ոչ միայն աշխատատար էր, այլև պահանջում էր դարավոր փորձ և մեծ հմտություն, աչքի ընկնելով իր բացառիկ արդյունավետությամբ։ Տեխնիկական կուլտուրաների առկայությունը մյուս կողմից վկայում է նշված ժամանակաշրջանում Հայաստանում ոռոգման սիստեմի գոյության մասին։ Ընդհանրապես պետք է նշել, որ V—IV դարերի սահմանագլխին Հայաստանի երկրագործության, նրա զարգացման աստիճանի, ինչպես նաև մշակվող կուլտուրաների բազմազանության մասին տեղեկությունները համընկնում են ուրարտական երկրագործության մասին մեզ հայտնի թե՛ գրավոր և թե՛ հնագիտական տվյալներին[38]։

Ինչ վերաբերում է անասնապահությանը, ապա հավանաբար խալդայների հպատակեցումից հետո է՛լ ավելի լավ պայմաններ են ստեղծվում նրա զարգացման համար, քանի որ հայերը տիրում են արոտավայրերով հարուստ նոր տերիտորիաների։ Հերոդոտը հայերին անվանում է «անասուններով հարուստ ժողովուրդ»[39], իսկ Քսենոփոնը թվարկում է իր տեսածը հայերի տներում՝ կով, այծ, ոչխար, ձի, տնային թռչուններ, այնուհետև՝ ոչխարի, այծի և խոզի միս. խոզի ճարպ[40]։ Ինչպես ուրարտացիների օրոք, Հայաստանի անասնապահությունը ներկայացված էր խոշոր և մանր եղջերավոր անասուններով։ Հատկապես կարևոր է Քսենոփոնի վկայությունը բուծվող ձիերի մասին, որոնք թեպետ ավելի փոքր էին, քան պարսկականները, բայց նրանցից ավելի կայտառ էին[41]։ Ստրաբոնը տեղեկացնում է, որ Հայաստանում բուծում էին հատուկ ցեղի ձիեր՝ նեսեական կոչվող՝ տարեկան 20 հազար նժույգ, որպես տուրք պարսից թագավորին տալու համար։ Ձիաբուծության նպատակասլաց, ինտենսիվ զարգացմանը նպաստում էր ընդարձակ արոտավայրերի առկայությունը Հայկական լեռնաշխարհում, որոնց մասին հատկապես հիշատակում է Ստրաբոնը[42]։

Հայերը զբաղվում էին նաև որսորդությամբ։ Հայկական գյուղերից մեկի գյուղապետի փեսան, Քսենոփոնի ասելով, գնացել էր նապաստակ որսալու, իսկ հայերի տներում սեղանի վրա հույները հանդիպել են որսի միս։

Քսենոփոնը հիշատակում է նաև Հայաստանի արհեստավորներին՝ հյուսներին և քարագործ վարպետներին[43]։ Արհեստագործության մասին տվյալները հաստատվում են հնագիտական նյութերով։ Հայաստանի ու Վրաստանի տերի-

---

38 Տե՛ս Б. Б. Пиотровский, Ванское царство. գլուխ 9-րդ։
39 Տե՛ս Herod., V, 49։
40 Տե՛ս Xen., Anab., IV, 5, 25—27, 30—34։
41 Տե՛ս նույն տեղում, IV, 5, 24։
42 Տե՛ս Strabo, XI, 14, 9։
43 Տե՛ս Xen., Cyrop., III, 2, 11։

*տորիայում և Սև ծովի հարավային ափերին հայտնաբերված աքեմենյան տիպի գեղարվեստական մետաղագործության արտադրանքի հարուստ նյութերը թույլ են տալիս կարծելու, որ մետաղյա այս առարկաների գոնե մի մասը պատրաստվել է տեղում։ Այս կապակցությամբ կարելի է ենթադրել, որ ուրարտական ժամանակաշրջանի որոշ արհեստանոցներ իրենց գործունեությունը շարունակել են հայկական թագավորության և աքեմենյան տիրապետության ժամանակաշրջանում։*

*Ուշադրության արժանի են Հայաստանում արտաքին և ներքին առևտրի գոյության մասին եղած թռուցիկ ակնարկները[44]։ Դրանք հաստատվում են Հերոդոտի հետաքրքիր տվյալներով՝ Հայաստանից Բաբելոն արտահանվող գինու մասին[45]։*

*«Արքայական» կոչված ճանապարհի մի հատվածը Հայաստանի միջով անցնում էր 56,5 փարսախ (300—350 կմ) երկարությամբ[46]։ Նրա ուղղությունը, Հ. Մանանդյանի ենթադրությամբ, եղել է Մալաթիայից՝ Խարբերդի դաշտի միջով դեպի Ամիդ—Դիարբեքիր և այստեղից դեպի այժմյան Ջեզիրե, որը գտնվել է մատիենների երկրում։ Արքայական ճանապարհի ամբողջ երկարությամբ, մոտավորապես յուրաքանչյուր 25 կմ վրա, տեղավորված էին սպասարկման շենքերով և անձնակազմով կայաններ. Հերոդոտի վկայությամբ Հայաստանի միջով անցնող հատվածը ուներ 15 այդպիսի կայան։*

*Այս ճանապարհը իր բարեկարգության ու անվտանգության պատճառով նշանակություն ուներ ոչ միայն փոստային և վարչական կապերի, այլ նախ և առաջ ապրանքափոխանակության ու առևտրի զարգացման համար։ Այս տեսակետից Արքայական ճանապարհի ազդեցությունը Հայաստանի հարավ-արևմտյան շրջանների՝ Ծոփք և Աղձնիք նահանգների տնտեսական զարգացման վրա զգալի է եղել[47]։*

**Հայաստանի հասարակարգը VI—IV դարերում:** *Բնական է, որ հին Հայաստանի հասարակարգն ուսումնասիրողները իրենց ուշադրությունը սևեռում են Քսենոփոնի այն կարևոր տվյալների վրա, որ թողել է գյուղական կենցաղի վերաբերյալ։*

*Այդ վկայությունների առաջին լուրջ ուսումնասիրողը եղել է Ն. Ադոնցը, որը հանգել է այն եզրակացության, որ Քսենոփոնի նկարագրած Հայաստանի գյուղերը տոհմական բնույթ են ունեցել[48], իսկ հիշատակված գյուղապետները (կոմարխները) տոհմի առաջնորդներ, տոհմապետներ էին։*

---

44 *Տե՛ս նույն տեղում, II, 4, 32, III, 3, 1։*

45 *Տե՛ս Herod., I, 194։*

46 *Տե՛ս նույն տեղում, V, 52։*

47 *Տե՛ս Я. А. Манандян,* О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н. э.—XV в. н. э.), II изд., Ереван, 1954, *էջ 16—18։*

48 *«Հայաստանը,— գրում է Ադոնցը,— բաղկացած էր բացառապես գյուղերից, որոնց գլուխ կանգնած էր պետը κωμάρχης կամ ἄρχων τῆς κώμης։ Հույն պատմիչի նկարագրած գյուղի նահապետական պատկերից դժվար չէ կռահել, որ կոմարխները տոհմապետեր էին, որոնք ապրում էին գյուղերում։ Գյուղը, իրեն բնորոշ պատնեշներով, նահապետական տնտեսության գետնափոր տներով, որտեղ մարդկանց հետ միասին տեղավորված էին անասունները... այս բոլորը պատկանում են ոչ այլ, քան միայն տոհմային կացութաձևին»։ Այս հանգամանքը, Ադոնցի կարծիքով, հաստատվում է նաև գյուղապետի իր ազգակիցների նկատմամբ կարեկցանքի դրսևոր-*

Հ. Մանանդյանը այս հարցում հիմնականում համերաշխ էր Ն. Ադոնցին, նշելով աքեմենյան ժամանակաշրջանի հայկական գյուղերի տոհմական կազմակերպությունը[49]։

Սովետահայ պատմագրությունը, սակայն, իր զարգացման ընթացքում նոր եզրակացությունների է հանգել այս հարցում։ Ինչպես ցույց է տվել Ս. Տ. Երեմյանը[50], Քսենոփոնի նկարագրած գյուղերը ոչ թե տոհմային կապերի վրա հիմնված միավորներ էին, այլ տերիտորիալ և տնտեսական հատկանիշներով միավորված գյուղական համայնքներ։ Քսենոփոնի նկարագրությունից ինքնաբերաբար երևում է, որ մենամուսնության վրա հիմնված ընտանիքները ունեին իրենց տները, անասունները, գյուղատնտեսական մթերքները։ Ուրիշ խոսքով, առանձին ընտանիքներ արտադրության միջոցների, սպառման առարկաների նկատմամբ մասնավոր սեփականության իրավունք ունեին։ Նման ընտանիքների ամբողջությունը, նրանց կոլեկտիվ կազմակերպությունը կազմում էր հենց գյուղական այն համայնքը, որը միավորված էր նախ և առաջ տնտեսական և ապա միայն, այն էլ մասնակիորեն, ազգակցական կապերով։ Գյուղատնտեսության ուժեղ մասնագիտացումը ուշագրավ երևույթ էր Քսենոփոնի ժամանակաշրջանի Հայաստանի համար։ Խաղողագործության, տեխնիկական կուլտուրաների, բանջարաբուծության, ինչպես նաև ընդհանրապես երկրագործական արտադրանքի վերամշակման բարձր մակարդակը, որի մասին վկայում է Քսենոփոնը, թույլ է տալիս ենթադրելու նաև հողի անհատական տիրակալության և հողօգտագործման առկայության մասին, իսկ տներում ամեն տեսակի մթերքների գոյությունը՝ անհատական և մասնավոր յուրացման մասին։ Նման վիճակը քիչ է համատեղելի տոհմական համայնքի հետ։

Հայկական գյուղերի վճարած տարեկան, որոշակիորեն կարգավորված հարկի մասին եղած վկայությունները[51] նույնպես չեն ներդաշնակում հայկական համայնքների մասին Ն. Ադոնցի ունեցած պատկերացումների հետ։ Վերջապես, Քսենոփոնի ուշագրավ տեղեկությունը գյուղապետի մասին, որն իր ազգակիցներին հանդիպում է իր գյուղից դուրս, այլ գյուղերում, բացահայտում է գյուղական տերիտորիալ համայնքի հիմնական հատկանիշներից մեկը՝ տոհմական համայնքի տարատեղ բնակեցումը։

Այսուհանդերձ, ինչպես երևում է նույնիսկ շատ ավելի ուշ ժամանակաշրջանի նյութերից, գյուղական համայնքի մեջ դեռ շատ ուժեղ էին նախնադարյան համայնքի վերապրուկները։

Քսենոփոնի «Անաբասիսի» տեղեկությունները, որքան էլ դրանք կարևոր լինեն, սակայն չեն տալիս ժամանակակից հայ հասարակության ամբողջական պատկերը, քանի որ վերաբերելով գրեթե բացառապես միայն գյուղական համայնքներին, կրում են սահմանափակ բնույթ։

---

ման փաստով, ինչպես նաև պարսից թագավորին գյուղի կողմից տրվող տուրքի կոլեկտիվ բնույթով։ *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 390—391։

49 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 81։

50 Տե՛ս *С. Т. Еремян*, Основные черты общественного строя Армении эллинистической эпохи, ИАНАОН, 1948, № 11.

51 Տե՛ս *Xen.*, Anab., IV, 9, 24։ *Strabo*, XI, 19, 9։

Քսենոփոնը հիշատակում է նաև երկու գյուղ՝ մեկը ապարանք-ամրոց՝ սատրապի համար, ինչպես նաև պատնեշով ամրացված մի այլ գյուղ, բայց չի թվում և ոչ մի բերդ, ավան, տաճարային կենտրոն կամ քաղաք, ինչպիսիք կային Հայաստանում այդ ժամանակ, և վկայված են գրավոր աղբյուրներով և հնագիտական պեղումների արդյունքներով։ Թերևս նա իր ճանապարհին չի հանդիպել դրանց կամ գուցե գիտակցաբար է խուսափել դրանցից։ Մի ավան է հիշատակվում Բեհիստունի արձանագրության Հայաստանին վերաբերող բաժնում, որը ենթադրաբար տեղադրվում է Հայկական լեռնաշխարհի հարավ արևելյան մասում։ Այստեղ պետք է փնտրել նաև Բեհիստունյան արձանագրության մեջ հիշատակված երկու բերդը։ Մարաստանին սահմանակից այս նույն շրջանում էին գտնվում մ. թ. ա. VI դարի առաջին կեսում հայոց թագավորի կողմից կառուցված մի շարք ամրոցները։ Նույն ժամանակաշրջանին է վերաբերում մի ամրոցի կառուցումը Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասում, խալդայների երկրում։ Մի բերդ էլ հիշատակում է Հերոդոտը արքայական ճանապարհի Հայաստանով անցնող հատվածի նկարագրության կապակցությամբ[52]։

Բազմաթիվ տաճարային կենտրոններով աչքի էին ընկնում արևմտյան և արևելյան Եփրատի (Արածանի) հովիտները։ Սրանք տաճարային համայնքներ, գյուղեր, ավաններ կամ քաղաքներ էին, մեծ մասամբ ամրացված։ Դատելով անուններից, նրանց մեծ մասը առաջացել էր աքեմենյան և նույնիսկ նախաաքեմենյան ժամանակաշրջանում։

Ինչ վերաբերում է VI—IV դարերի քաղաքներին, ապա պետք է ասել, որ ուրարտական ժամանակաշրջանի հետ համեմատած նկատվում է քաղաքային կյանքի որոշակի հետադիմություն։ Այս փաստը, որը երևում է գրավոր աղբյուրների տվյալներից, իր հաստատումն է գտնում նաև հնագիտական պեղումների արդյունքների մեջ։ Ուրարտական տերության հյուսիսային կողմերի հռչակավոր երկու քաղաքներից Թեյշեբաինին և Արգիշտիխինիլին ավերված էին VI—IV դարերում՝ մեկը լրիվ, իսկ մյուսը մեծ մասամբ, և նրանց թաղամասերը, բուն իսկ շենքերը վերածված էին դամբարանադաշտերի։

Դրա հետ մեկտեղ մի շարք ուրարտական քաղաքներ հարատևում են նաև հետուրարտական ժամանակաշրջանում՝ ժառանգական, անմիջական կապ ստեղծելով ուրարտական քաղաքների և հայկական քաղաքների միջև։ Այդպիսի քաղաքներ էին Վանը (նախկին Տուշպան), Արմավիրը (նախկին Արգիշտիխինիլիի արևելյան մասը), Էրեբունին, երկրի քաղաքական և ռազմավարչական կենտրոնները։

Սրանց կողքին հայկական վաղ միջնադարյան աղբյուրներում հիշատակվում են նաև քաղաքատիպ տաճարային համայնքներ Երիզան, Աշտիշատը և Անի-Կամախը, որը նաև վարչական կենտրոն էր։

Քաղաքները տվյալ ժամանակաշրջանում առաջանում էին գյուղական համայնքների հիման վրա, որոնք համապատասխան պայմաններում վերածվում էին քաղաքային համայնքների։ Այդ երևույթին որպես կանոն նախորդում էր

---

52 Տե՛ս Herod., V, 52։

գյուղական համայնքների միավորումը իրար միջև կամ սրբավայրի շուրջ, կամ ռազմավարչական կենտրոնի շուրջ։

Այդ քաղաքների ներքին կազմակերպության և սոցիալական կառուցվածքի մասին ոչինչ հայտնի չէ, բացի այն, որ Արմավիրը քաղաքացիական-տաճարային համայնք կարող էր լինել արդեն աքեմենյան ժամանակաշրջանում։

Չափազանց սակավաթիվ են տեղեկությունները նաև հայ հասարակության վերնախավի մասին, որի գոյությունը, հասարակության սոցիալական շերտավորման պայմաններում, անկասկած է։ «Կյուրոպեդիայում» բազմիցս խոսվում է հասարակության մեջ ձևավորվող վերնախավի, երևելի հայերի մասին, որոնք իրենց թագավորի օրինակով ունեին գանձեր, հարստություններ, սեփական գույք, որն անցնում էր ժառանգաբար։

Թագավորի որդիներից՝ Տիգրանից և Սաբարիսից բացի, հիշատակվում են նաև Էմբաս և Արտուխաս զորավարները, ինչպես նաև սատրապի դուռն ծառայողները։ Բեհիստունյան արձանագրություններում հիշատակվում են Դադարշիշ հայ զորավարը և Բաբելոնի ինքնակոչ հայ թագավորը՝ Խալդիտայի որդի Արախան (կամ Արխան)։

Տոհմային ավագանին, ըստ երևույթին, հետզհետե վերածվում էր ստրկատեր ավագանու և նրա շարքերը համալրվում էին բարձր զինվորականության, վարչական և հարկային պաշտոնեության կամ քրմական դասից։ Տոհմային ավագանու մի մասը երկրի ներքին զարգացման, արտադրողական ուժերի աճին համընթաց, Աքեմենյան կայսրության մեծամեծների օրինակով, հավանաբար կազմակերպում էր իր սեփական տնտեսությունները, օգտագործելով ռազմագերիների կամ այլ ճանապարհներով ստրկացված մարդկանց աշխատանքը։ Այս հարցում որոշակի դեր պետք է վերագրել Հայաստանի սատրապային վարչությանը, նրա կառավարման ապարատի և սատրապական տնտեսության ազդեցությանը։ Այդ հաստատությունները բնութագրող տվյալները սակավաթիվ են, բայց նրանք թույլ են տալիս սատրապային կարգերի մեջ տեսնել մի գործոն, որը որոշ չափով, այն էլ միայն սկզբնական շրջանում, կարող էր խթանել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը[53]։

Աքեմենյան կայսրության մյուս սատրապությունների նմանությամբ հավանաբար Հայաստանում ևս կային սատրապային տիրույթներ։ Քսենոփոնը հիշատակում է առանձին գյուղում կանգնած կամ գյուղերով շրջապատված ապարանք-ամրոցները, որոնք պատկանել են սատրապին կամ նրա ենթակային[54]։ Ինչպես վերը տեսանք, հայկական միջնադարյան աղբյուրները հիշատակում են Արուանթունի կամ Երուանդունիք գավառը՝ Վան քաղաքի մերձակայքում, որը կարող էր Երվանդ սատրապի գլխավոր տիրույթը եղած լինել։ Հայտնի է, որ աքեմենյան կայսրության մեջ նման տիրույթները կառավարվում էին հատուկ պաշտոնյաների, կառավարիչների կողմից, իսկ որպես աշխատող ուժ օգտագործվում էին ստրուկներ կամ աղքատացած համայնականներ։

Սատրապային կառավարման ապարատի գոյության մասին կարևոր է այն տեղեկությունը, ըստ որի հույները հանդիպում են Արևմտյան Հայաստանի

---

53 Տե՛ս Գ. Ա. Տիրացյան, Հին հայկական պետության առաջացումը, էջ 83, 85—86։

54 Տե՛ս Xen., Anab., IV, 4, 2, 7։

հյուպարքոսին ապասարկող հացարարներին և մատովակներին։ Այս և նման մյուս պաշտոնյաները արտոնյալ դիրք էին գրավում հասարակության կյանքում, հանդիսանալով ավելի ուշ ձևավորված թագավորության, նրա արքունիքի վարչության հիմքը։



Աքեմենյան մեծատոհմիկ. արծաթյա պտյակ. Արին-բերդ

Սատրապային կառավարման ապարատի կարևոր հաստատություններից էր նաև սատրապային դիվանատունը, որի մեջ կարևոր դեմք էր դպիրը։ Վերջապես, սատրապության զինվորական կազմակերպությունը ստվարացնում էր ռազմական, ծառայող ավագանու շարքերը։ Պետք է կարծել, որ այս ավագանին նույնպես օժտված էր հողային տիրույթներով։

Աքեմենյանների քաղաքական հենարանը Հայաստանում հավանորեն ավագանու այս նոր, ձևավորվող խավն էր, որը համագործակցում էր պարսիկների հետ։ Տոհմա-ցեղային ավագանին, ընդհակառակն, Աքեմենյանների հակառակորդը պետք է եղած լինի և հայկական թագավորական դինաստիայի ներկայացուցիչների հետ միասին պետք է, գլխավորեր հայերի ապստամբությունը Դարեհ Ա-ի դեմ։

Աքեմենյան ժամանակաշրջանի Հայաստանի հասարակական կարգը Ն. Ադոնցը, ինչպես ասվեց, տոհմատիրական է համարել[55]։ Տոհմատիրական կարգերը, ըստ Ադոնցի, Հայաստանում հարատևել են մինչև մ. թ. ա. II դարի սկիզբը, երբ սկսվել է նրանց քայքայման պրոցեսը[56]։ Հ. Մանանդյանը այդ պրոցեսի սկիզբը ավելի վաղ ժամանակների հետ էր կապում[57]։ Ըստ նրա, արդեն աքեմենյան շրջանում տոհմատիրական հարաբերությունները աստիճանաբար քայքայման էին ենթարկվում, ծնունդ տալով դասային շերտավորմանը։ Այդ ժամանակ հայերը գտնվում էին զինվորական դեմոկրատիայի ընթացաշրջանում, որը Արտաշեսի և Զարեհի օրոք վերածվեց ֆեոդալական կազմակերպության և հիմք ծառայեց նախարարական պետության ստեղծման համար։

Սակայն հետագայում սովետահայ պատմագրությունը պարզեց, որ արդեն մ. թ. ա. VI—IV դարերում Հայաստանի հասարակարգը վաղ դասակարգային բնույթ է ունեցել և որ նույն այդ ժամանակներում առաջացել է հին հայկական պետությունը[58]։ Այդ մասին է վկայում թերևս տերիտորիալ, տնտեսական կապերի վրա հիմնված գյուղական համայնքը։ Գյուղական համայնքի առկայության փաստը հին Հայաստանում մեզ մոտեցնում է հին հայկական հասարակության դասակարգային էության և պետության հետ առնչվող հարցերին, թեպետ հայտնի է, որ գյուղական տերիտորիալ համայնքը սկսում է առաջանալ դեռևս նախնադարյան համայնական հասարակության զարգացման վերջին փուլում, պետական կարգերին անցնելու ժամանակաշրջանում, որոնց համար գյուղական համայնքը երկար ժամանակ շարունակում է մնալ բնորոշ երևույթներից մեկը։ Սոցիալական շերտավորման խորացումը և գույքային անհավասարության առաջացումը, հարստության կուտակումը հասարակության մի բևեռում, տոհմիկ ավագանու կողքին նորելուկ սարկական հողատերերի դասի ներկայացուցիչների հանդես գալը, ըստ երևույթին, շատ ավելի ընդգծված չափեր էր ընդունել, քան կարող էր հատուկ լինել տոհմատիրական կարգերի քայքայման վերջին փուլին։ Մի քանի ակնարկներից երևում է, որ այդ ժամանակաշրջանում դրամական տնտեսության զարգացումը առաջին ճեղքվածքներն էր առաջացնում հին Հայաստանի բնական տնտեսության մեջ։ Քսենոփոնը պատմում է վերնախավի ներկայացուցիչների դրամական սեփականության և հարստությունների մասին։ Դրամական տնտեսության զարգացումը հավաստող առաջին իրեղեն ապացույցները Սովետական Հայաստանի տերիտորիայում հայտնաբերված VI—IV դարերի դրամներն են կտրված Աթենքում, Միլետում և աքեմենյան Իրանի փողերանոցներից մեկում։ Ինչպես հայտնի է, հայերի, գյուղատնտեսությունից բացի, մյուս զբաղմունքների մասին մեզ հասել են սոսկ կցկտուր տեղեկություններ։ Այնուամենայնիվ, գրավոր և հնագիտական նյութերի հիման վրա կարելի է ընդունելի համարել, որ նախքան մեր թվակա-

---

55 Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 390—391։

56 Տե՛ս նույն տեղում, էջ 406—410։

57 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 248 և հաջ. Նույնի՝ Քննական տեսություն, հատ. Ա, էջ 80 և հաջ. նույնի՝ Проблема общественного строя доаршакидской Армении, «Исторические записки», № 15, 1945, էջ 14 և հաջ.։

58 Տե՛ս С. Т. Еремян, Основные черты общественного строя Армении эллинистической эпохи; Գ. Ա. Տիրացյան, Հին հայկական պետության առաջացումը, էջ 94 և հաջորդ։

նության VI—IV դարերը, աշխատանքի երկրորդ մեծ բաժանումը՝ արհեստների անջատումը գյուղատնտեսությունից, հայկական միջավայրում արդեն կատարված մի իրողություն էր։ Վկայություններ կան Հայաստանում առևտրի զարգացման մասին, որն արդեն տարբերվում էր պարզ ապրանքափոխանակությունից։ Հերոդոտը հիշատակում է սեմական այն առևտրականներին, որոնք Եփրատով Հայաստանից գինի էին արտահանում դեպի Բաբելոն։ Այդ գինու դիմաց, ինչպես ճիշտ են նկատել ուսումնասիրողները, հայերը դրամից բացի ուրիշ բան չէին կարող ստանալ։

VI—IV դարերի հին հայկական հասարակության զարգացման մակարդակը որոշելու տեսակետից կարևոր են դասակարգերի ու պետության կազմավորման համար մեծ նշանակություն ունեցող տնտեսության հիմնական ձևերի՝ երկրագործության ու անասնապահության մասին մեզ հասած տվյալները։ Այդ տվյալներից երևում է, որ ինչպես երկրագործությունը, այնպես էլ անասնապահությունը զարգացման համեմատաբար բարձր մակարդակի վրա էին գտնվում, բայց երկրագործության տեսակարար կշիռը երկրի տնտեսության մեջ ավելի նշանակալից էր, մի հանգամանք, որ մեծ նշանակություն ուներ պետության ձևավորման ընթացքի համար։ Երկրագործության ակնհայտ վերելքը, որ Քսենոփոնը նշում է հայկական միջավայրում, զգալի չափով պայմանավորեց հայկական պետության կազմավորման պրոցեսը։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ VI—IV ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՆՅՈՒԹԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԸ

*Ուրարտական պետության անկումից հետո նոր պայմաններ ստեղծվեցին վաղ հայկական մշակույթի ձևավորման համար։*

*Վաղ հայկական մշակույթի ուսումնասիրումը երկար պատմություն չունի, իսկ այն նյութերը, որոնց օգնությամբ կարելի է ուրվագծել հին Հայաստանի նյութական մշակույթի տարբեր կողմերը, նոր են երևան եկել։ Պատճառն այն է, որ Հայաստանի հնագիտությունը ի սկզբանե կողմնորոշված է եղել կամ դեպի հնագույն ժամանակաշրջանների, կամ դեպի միջնադարի ուսումնասիրումը, գրեթե շրջանցելով վաղ հայկական մշակույթը։ Վաղ հայկական սակավաթիվ նյութերը, եթե նրանք ընդհանրապես հայտնաբերվում էին ուրարտական կամ նախաուրարտական հուշարձանների հետազոտման կապակցությամբ, մեծ մասամբ երկար ժամանակ մնում էին չճանաչված և չիմաստավորված։*

*Ուրարտական Էրեբունի քաղաքի միջնաբերդի պեղումները Երևանի հարավ-արևելյան ծայրամասում գտնվող Արին-բերդ կոչված բլրում բացահայտեցին նաև ետուրարտական նյութեր, որոնք թվագրվում են մ. թ. ա. V—IV դարերով։ Մի քանի հետաքրքիր շենքերի մնացորդները որոշ պատկերացում են տալիս վաղ հայկական ժամանակաշրջանի ամրոցատիպ նշանավոր կենտրոնների ճարտարապետության բնույթի մասին*[1]*։*

*Հրազդան գետի վերին հոսանքում գտնվող Հրազդանի շրջանում (պատմական Մազազ գավառում) բրոնզի և երկաթի դարերի հուշարձանների հնագիտական ուսումնասիրման կապակցությամբ, Աթարբեկյան (նախկին Քարվանսարա) և Ջրառատ (նախկին Ոնդամալ) գյուղերում կատարված աշխատանքների ընթացքում հանդես եկան նյութեր, որոնք, ինչպես ցույց տվեցին հետագա ուսումնասիրությունները*[2]*, վերաբերում են վաղ հայկական ժամանակաշրջանին և նպաստում այդ ժամանակաշրջանի մշակույթի որոշ կողմերի բնութագրմա-*

---

1 *Տե՛ս К. Л. Оганесян*, Арин-берд, Архитектура Эребуни, Ереван, 1961. Գ. Ա. Տիրացյան, *Արին-բերդի սյունազարդ դահլիճը և սատրապային կենտրոնների հարցը Հայկական լեռնաշխարհում*։

2 *Տե՛ս А. О. Мнацаканян* и *Г. А. Тирацян*, Новые данные о материальной культуре древней Армении, ИАНАОН, 1961, № 8; *А. О. Мнацаканян*, Раскопки могильников у селения Атарбекян, КСИИМК, вып. 60, 1955.

նը։ Նույն տիպի նյութեր հայտնի են ուրարտական Թեյշեբաինի քաղաքի տերիտորիայում հայտնաբերված դամբարաններից, Գառնիի և Արմավիրի պեղումներից, ինչպես նաև Հայաստանի տարբեր վայրերից՝ Իջևանից, Կույբիշևից (նախկին Ջարխեչ), Կիրովականից, Կամոյից, Գեղադիրից, Նոյեմբերյանից, Ղափանից և այլն[3]։

Նյութերի, գլխավորապես թանկագին մետաղից, մի այլ խումբ հայտնի է Արևմտյան Հայաստանի տերիտորիայից, հիմնականում պատահական հայտնաբերումների շնորհիվ, և տակավին XIV դարում ցրվել է արևմտաեվրոպական թանգարանների միջև։ Խոսքը գերազանցապես պաշտամունքային և սեղանի արծաթյա ամանեղենի մասին է, որը գեղարվեստական արժեքից բացի ունի նաև կուլտուրպատմական նշանակություն[4]։ Նման անոթներ՝ արծաթյա պըտյակներ, գտնվել են Արին-բերդի շրջակայքում։



Կավե սափոր. Ջրառատ

Վերջապես, լրացուցիչ տըվյալներ հնարավոր է քաղել գրավոր աղբյուրներից, գլխավորապես այդ ժամանակաշրջանի հույն պատմիչ Քսենոփոնի «Անաբասիս» երկից։

Վաղ հայկական ժամանակաշրջանի մշակույթի բնութագրմանը ծառայող նյութերը ինքնաբերաբար տրոհվում են երկու մասի, յուրաքանչյուրն իր ուրույն դեմքով և հասարակության կյանքում խաղացած իր դերով։

Առաջին մասին են վերաբերում այն նյութերը, որոնք բնորոշում են հասարակ բնակչության առօրյա կյանքը, այն առարկաներն ու իրերը, որոնք անմիջական կիրառություն են գտնում ժողովրդի կենցաղում։

---

3 Տե՛ս *А. А. Мартиросян*, Город Тейшебаини, Ереван, 1961; *С. А. Есаян*, Археологические находки близ поселка Иджеван, ИАНАОН, 1961, № 4, էջ 73—82; его же, Астхаблурский могильник, ВОН, 1968, № 6; Ժ. Դ. Խաչատրյան, *Հնագիտական հայտնագործություններ Գեղադիրում*, ԼՀԳ. 1966, № 1, էջ 88—93։

4 Տե՛ս *O. M. Dalton*, The treasure of the Oxus with other exemples of early oriental metal-work, London, 1964, III ed; *G. Migeon*, Les acroissements des Musés du Louvre, „Les Arts", № 1, 1901; *A. Furtwängler*, Erwerbungen der Antikensammlungen in Deutscland. „Archäologischer Anzeiger", VII, Berlin, 1892; *Г. А. Тирацян*, К вопросу о торевтике и ювелирном деле Армении в ахеменидское время. ИФЖ, 1969, № 1.

Կավագործություն: *Մ. թ. ա. V—IV դարերից մեզ հասել են լավ թրծված կավից պատրաստված բաց գույնի (մոխրագույն, կարմրավուն, սրճագույն) սափորներ։ Սրանք հարթ հատակով, ուռուցիկ իրանով, գլանաձև վզով և շեփորաձև պսակով անոթներ են, աղեղնաձև երկար կանթերով[6]։ Դրսի կողմից կանթերը տարբեր տեսակի (այդ թվում ակոսավոր) զարդեր ունեն։ Անոթների մեծ մասը դրդի վրա է պատրաստված։ Ընդհանուր առմամբ այդ սափորները իրենց ձևերով ու կերպարով տարբերվում են նախորդ՝ երկաթի դարի կավանոթներից, սակայն որոշ հատկանիշներով, հատկապես կանթերի զարդերով, այնուամենայնիվ, կապվում են նրանց հետ։*



Կավե սափոր. Կարմիր-բլուր

*Մշակութային հետաքրքիր կապեր է դրսևորվում երկկանթանի սափորաձև մի անոթ, հարթ հատակով, դեպի վերև լայնացող իրանով, բարձր պսակով, նարընջագույն արտաքինով[6]։ Ուրարտական խեցեգործությանը հայտնի է անոթների այս տիպը (Արինբերդ և Կարմիր-բլուր), մի հանգամանք, որ ակնարկում է վաղ հայկական խեցեգործության այս ձևի հին ակունքների մասին։ Դրա հետ մեկտեղ նման անոթների ավելի զարգացած ձևերը գերիշխում էին աքեմենյան ժամանակաշրջանի գեղարվեստական մետաղագործության մեջ։ Այդ երևում է պատահական բազմաթիվ հայտնաբերումներից, ինչպես և Պերսեպոլիսի քարձրաքանդակներից։*

*Գնդաձև, երկու փոքր «հաղորդակցվող» կճուճներից կազմված անոթը, որը ևս իր նմաններն ունի ուրարտական նյութերի մեջ, հատկապես հետաքրքիր է կարմրավուն և մուգ սրճագույն իր զարդերով՝ բաց ֆոնի վրա[7]։ Այս զարդերը Հայաստանի վաղ շրջանների գունազարդ խեցեղենի ուշ արձագանքն են թվում, որով այդ անոթը թերևս կարելի է կապող օղակ համարել ուրար-*

---

5 *Տե՛ս А. О. Мнацаканян* и *Г. А. Тирацян,* Новые данные о материальной культуре древней Армении, *տխտ. 3։ А. О. Мнацаканян,* Раскопки могильников у селения Атарбекян, *էջ. 5, նաև Մորիների նյութերը՝ Չարխեչից (Պետ. էրմիտաժ), А. А. Мартиросян,* Город Тейшебаини, *էջ. 67։*

6 *Տե՛ս А. А. Мартиросян, նույն տեղում, էջ. 63*; *Г. А. Тирацян,* Урарту и Армения, ВОН, 1968, № 2.

7 *Տե՛ս А. А. Мартиросян,* Город Тейшебаини, *էջ. 66։*

*տական և հելլենիստական ժամանակաշրջանի գոմազարդ կավանոթների միջև։*

*Նույն վաղ հայկական շրջանին պատկանող կավե ըմպանակները կորագիծ հատակ ունեն և ընդգծված անցնում դեպի բարձր, լայնացող պսակը[8]։ Այս տիպի անոթները աքեմենյան և հետագա դարաշրջաններում լայն տարածում են գտել ընդարձակ տերիտորիայի վրա՝ Փոքր Ասիա (Գորդիոն), Պարսկաստան (Պերսեպոլիս), Անդրկովկաս (Վրաստան, Արևելյան Անդրկովկաս)։ Սրանք ամենայն հավանականությամբ հինարևելյան ծագում ունեն և կապվում են Ասորեստանի և Ուրարտուի մշակույթի հետ։*



Կավե ըմպանակ. Ցամաքաբերդ

**Մետաղագործություն:** *Մարդկային հասարակության զարգացումքի այս հնագույն ճյուղը ներկայացված է զենքերի և հասարակ զարդերի արտադրանքով[9]։*

*Հանդիպում են միջին չափերի նիզակի երկաթե ծայրեր՝ երկաշյավուռ շեղբով և սնամեջ կոթառով։ Այսպիսի նիզակի ծայրերն իրենց տիպաբանական նախորդներն ունեն երկաթի դարի նյութերի մեջ։ Դանակները, նույնպես երկաթից, երկու տիպի են. օղակաձև դաստապանով կամ փոքր չափի ուղիղ դաստապանով։*

*Զարդերի թվում պետք է նշել բրոնզե լարից պատրաստված հյուսածո վզնոցները, տափակ ծայրով։ Սրանք ևս հանդիպում են բրոնզի դարից սկսած։ Ապարանջանների գերակշռող մասը V—IV դարերի համար բնորոշ ներճկումներ ունեն։ Նման տիպի ապարանջաններ, հատկապես ոսկուց, հանդիպում են աքեմենյան մշակույթի հետ առնչվող նյութերում, ինչպես նաև Շոշ (Սուզա) քաղաքի՝ Աքեմենյանների պալատի պատերի վրա պատկերված թիկնապահների ձեռքերին։*

*Հանդիպում են նաև զանգակաձև կախիչներ և ականջի օղեր, կիսաշրջանաձև ողկույզանման երեք ելուստներով։ Օղերը հիշեցնում են ասորեստանյան ժամանակաշրջանի նման առարկաները և վկայում տեղական ու հինարևելյան զարդերի կապերի մասին։*

**Քանդակագործություն:** *Արդեն նախաուրարտական ժամանակաշրջանում տեղի էր ունեցել քարե կուռքերի մարդակերպ դառնալու պրոցեսը, որի մասին վկայում են մի քանի հարթ դեմքերով, պրիմիտիվ քանդակներ։ Սրանց հիման վրա հետագա դարերում մշակվում է մարդակերպ փոքր-ինչ ավելի զարգացած նմուշների մի խումբ, որի մի օրինակը՝ Աղջաղալայից, հավանաբար, ուշ-ուրարտական կամ վաղ-հայկական քանդակագործությանը պետք է վերագրել։ Այս արխայիկ օրինակը կլոր քանդակ է, երեսի մի շարք առանձնացված ման-*

---

8 *Տե՛ս А. О. Мнацаканяч* и *Г. А. Тирацян*, Новые данные о матерпальной культуре древней Армении, *տախտ. 4։*

9 *Տե՛ս նույն տեղում, տախտ. 1, 2։*



Բրոնզյա և երկաթյա զարդեր. Ջրառատ

րամասնություններով, ինչպիսիք են՝ գլխի ծածկ և ճակատ, քիթ, բերան և աչքեր։ Բոլորը մի հարթության վրա են վերարտադրված և բնութագրում են ժողովրդական քանդակագործության առանձնահատկությունները[10]։

**Գյուղական ճարտարապետություն:** Հույն պատմիչ Քսենոփոնը մ. թ. ա. V—IV դարերի եզրին անցնելով Հայկական լեռնաշխարհը հարավից դեպի հյուսիս և տեսնելով իր ճանապարհին ընկած գյուղերը, թողել է գյուղական տների թռուցիկ նկարագրությունը։ Ըստ այդ նկարագրության, Հայկական լեռնաշխարհի հարավային շրջանների գյուղական տների ճարտարապետությունը տարբերվում է կենտրոնական շրջանների տներից։ Հարավային Հայաստանի տները աշտարակավոր էին[11]։ Այդ առանձնահատկությունը բացատրվում է, ըստ երևույթին, պաշտպանողական նկատառումներով։ Քսենոփոնը աշտարակաձև տներ է հանդիպել նաև Պոնտական լեռներում, մոսինոյկների երկրում։ Ըստ երևույթին, նման տների կառուցվածքի ակունքները պետք է որոնել ուրարտական ճարտարապետության մեջ, որին քաջ ծանոթ էին աշտարակաձև կառույցները, այդ թվում, հավանաբար, և աշտարակաձև բնակարանը[12]։

Հայկական լեռնաշխարհի կենտրոնական և հյուսիսային մասերի գյուղերը այլ տիպի տներ ունեին։ Սրանք ստորերկրյա էին, վերևից ջրհորի բերանի նման բացվածքով, որը լայնանում էր ներքևի մասում։ Այս բացվածք-մուտքով մարդիկ սանդուղքով իջնում էին սենյակ։ Անասունների համար հատուկ մուտք էր փորված գետնի միջով[13]։ Այս, ինչպես նաև ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակաշրջանի տների մեջ հնարավոր է տեսնել հայկական ժողովրդական տան վաղ օրինակը, որը հանդիսանում է ճարտարապետական ավելի զարգացած ձևի՝ գլխատան նախատիպը[14]։

**Դամբարանային կառույցներ:** Վաղ-հայկական ժամանակաշրջանի համար հատուկ են ինչպես առանձին, այնպես և կոլեկտիվ թաղումները։ Առաջինները, ինչպես վկայում են Թեյշեբաինի քաղաքի պեղումները, ձվածիր հատակագծով, քարից սարքված գերեզմաններ էին՝ ծածկված կեղծ թաղով[15]։

Կոլեկտիվ թաղումների համար բնորոշ է մեծ չափերի սալերից կառուցված սալարկղը[16]։

Հուշարձանների և առարկաների երկրորդ խումբը առնչվում է հասարակության վերնախավի հետ։ Նրա մեջ մտնում են մի շարք շենքերի մնացորդներ, գեղարվեստական մետաղագործության բազմաթիվ իրեր և այլ նյութեր։

**Պալատական ճարտարապետություն:** Աքեմենյանների օրոք ուրարտական Էրեբունի քաղաքի միջնաբերդը (Արին-բերդ բլուր) շինարարական նոր գործու-

---

10 Տե՛ս А. А. Мартиросян, Город Тейшебаини, էջ 81—84։

11 Տե՛ս Xen., Anab., IV, 4, 2։

12 Տե՛ս Б. Б. Пиотровский, Искусство Урарту, Л., 1962, նկ. 55, 56։

13 Տե՛ս Xen., Anab., IV, 4, 25։

14 Տե՛ս В. Н. Арутюнян, С. А. Сафарян, Памятники армянского зодчества, М., 1951; К. Л. Оганесян, Арин-берд, I, էջ 76։

15 Տե՛ս А. А. Мартиросян, Город Тейшебаини, էջ 141, նկ. 64։

16 Տե՛ս А. О. Мнацаканян и Г. А. Тирацян, Новые данные о материальной культуре древней Армении, էջ 69։

նեության վայր է դառնում։ Հիմնական վերակառուցումները զգալի չափով փոխում են միջնաբերդի շենքերի ճարտարապետական կերպարը։

Մ. թ. ա. VIII դարում կառուցված ուրարտական տաճարի նախամուտքի սյունաշարի ընդլայնումով (հավանաբար V դարի առաջին կեսերին) կազմավորվեց սյունազարդ դահլիճը։ Ի տարբերություն ուրարտական շենքի պատերի, որոնց ներքևի քարե մասի բարձրությունը 1,5—2 մ պակաս չէ, և որոնք օժտված են արտաքին խոշոր ելուստ-որմահեցերով, դահլիճի հավելված հատվածների պատերի քարե մասը ցածր է (0,54 մ), շարված է մաքուր տաշված վեմերից, իսկ որմահեցերը ավելի փոքր չափերի են։



Սյունազարդ դահլիճի հատակագիծ. Արին-բերդ

Դահլիճի մեջ պահպանված սյան հիմքերից երևում է, որ այն ունեցել է սյուների 5 շարք, ամեն մի շարքում 6-ական սյուն, որոնք կրել են դահլիճի հարթ ծածկը։ Ներսից, պատերի երկայնքով, ցածր նստարան էր ձգվում, որի հարավային մասում տեղադրված էր զոհասեղանը[17]։ Ելնելով այն հանգամանքից, որ սա ամրոցի տերիտորիայում միակ սրահն է, այն էլ այնպիսի հսկայական չափերի, որին սյունաշարերը հանդիսավոր երանգ էին հաղորդում, կարելի է նրա մեջ ընդունասրահ, խորհրդակցությունների և ժողովների մի վայր տեսնել։

Աքեմենյան ճարտարապետությունը հարուստ է սյունազարդ նման դահլիճներով (հին պարսկ. ապադանա), որոնց նախատիպերը կարելի է գտնել Ուրարտուում։ Սյուների նույն թվով և նման դասավորությամբ դահլիճներ են հանդիպում Աքեմենյանների հնագույն մայրաքաղաքում՝ Պասարգադում և Պերսեպոլիսում[18]։

V դարում արմատական վերակառուցման ենթարկվեց նաև ուրարտական պալատի միջին մասը, որտեղ ուրարտական «սուսի» կոչվող տաճարի առջև գտնվում էր սյունազարդ ներքին բակ։ Այդ աշխատանքների ընթացքում փակվեցին դեպի բակ նայող դռները, վերացվեցին բակի սյուները, կառուցվեցին նոր պատեր, որի հետևանքով նախկին ուրարտական տաճարը և նրա առջևի բակը մի մեկուսացված ամբողջություն կազմեցին՝ սկզբունքորեն բավականին նման աքեմենյան կրակի տաճարներին։ Ուրարտական «սուսի» տաճարի նախկին շենքում հայտնաբերված մոխրի հաստ շերտը և մուտքի առջև կանգնեցված նոր մույթը վկայում են, որ այն վերափոխվել է մշտական կրակի պահպանման վայրի[19]։

---

17 Տե՛ս К. Л. Оганесян, Арин-берд, I, նկ. 43 և 44։
18 Տե՛ս Գ. Ա. Տիրացյան, Արին-բերդի սյունազարդ դահլիճը, էջ 106։
19 Տե՛ս К. Л. Оганесян, Арин-берд, էջ 88—97, նկ. 46։

*Շատ հավանական է, որ այդ վերակառուցումը արդյունք է աքեմենյան կայսրության մեջ անցկացված կրոնական ռեֆորմի, որով տեղական աստվածությունները և նրանց սրբավայրերը վերացվեցին և նրանց տեղը հաստատվեցին կրակի տաճարները։ Այս տեղեկությունները հայտնի են Քսերքսես թագավորի այդպես կոչված «Դևերի մասին արձանագրությունից»*[20]։



Տաճարի կավե մոդել. Իջևան

*Պալատից արևելք, ուրարտական մի այլ շենքի տեղում հայտնաբերվեց աղյուսից կառուցված մի շինություն՝ մի մեծ երկարավուն և կողքից հարող երկու փոքր սենյակներով։ Շենքը լուսամուտներ կամ լուսավորության այլ աղբյուրներ չի ունեցել, բացի մուտքից։ Մեծ սենյակի պատերը ներսից ունեն կամարակապ խորշեր։ Հնարավոր է, որ այս շենքը ևս, որը հարուստ է մոխրով և պարփակված է ամեն կողմից, հանդիսացել է կրակի տաճար*[21]։ *Արին-բերդում V—IV դարերի շքեղ ընդունասրահի, ինչպես և կրակի տաճարների նման հուշարձանների առկայությունը հավանական է դարձնում այն միտքը, որ Էրեբունին դարձել էր աքեմենյան սատրապության վարչական կենտրոններից մեկը*[22]։

---

20 *Տե՛ս նույն տեղում, էջ 94 և հաջ.*։

21 *Տե՛ս նույն տեղում, էջ 97—102, նկ. 50, 51*։

22 *Տե՛ս* Գ. Ա. Տիրացյան, *Արին-բերդի սյունազարդ դահլիճը...*։

**Գեղարվեստական մետաղագործություն:** *Այս ժամանակաշրջանի համար բնորոշ է սեղանի արծաթե ամանեղենը, որից Հայաստանում գտնվել են բազմաթիվ նմուշներ: Եղջերագավաթները (ռիտոն, պտյակ), որոնք եղջյուր հիշեցնող անոթներ են, ներքևի մասում կենդանակերպ և փոքր անցքով, ներկայացված են բազմաթիվ օրինակներով: Եղջերագավաթներից մեկի պատերը մշակված են հորիզոնական առվակոսներով, իսկ նրա վերևի մասում՝ եզրին, արմավիկներից, լոտոսի ծաղիկներից և բողբոջներից կազմված մի գոտի է պատկերված:*



**Արծաթյա պտյակ. Էրզնկա**

*Գավաթի կենդանակերպ վերջավորությունը տարբեր կենդանիների մասերից է կազմված. իրանը՝ թևավոր առյուծի է, առջևի թաթերով հանդերձ, գլուխը՝ եղջերավոր արծվի[23]: Անոթը պատրաստելիս մի քանի տեսակի տեխնիկա է կիրառվել. դրվագման, ձուլման, փորագրման: Նրա որոշ մասերը ոսկեզօծ են: Պատկերված ճիվաղը, անգղառյուծը (գրիֆոն) ոճական առանձնահատկություններով մոտ է կանգնած աքեմենյան արվեստին և որոշակի զուգահեռներ ունի այդ արվեստի մետաղագործության մեջ՝ թե՛ պալատների պատերի հարդարանքներում և թե՛ քանդակագործության մեջ:*

[23] *Տե՛ս O. M. Dalton*, The treasure of the Oxus..., *տախտ.* XXII, 178, XXIII, 180, *նկ. 72:*

Մյուս եղջերագավաթը ավելի բարձր, հարթ պատերով է։ Կենդանակերպ վերջավորությունը պատկերում է մի քարայծ՝ առջևի ոտքերը ծալած և երկար, դեպի ետ պտտվող եղջյուրներով։ Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Արին-բերդի մոտերքից գտնված մեծ եղջերագավաթը, հեծյալի քանդակով ավարտվող ներքնամասով, որը պատկերում է մի մեծատոհմիկ անձնավորության, գուցե սատրապին։

Ռիտոնները շատ տարածված էին աքեմենյան աշխարհում։ Նման անոթներ ծանոթ էին նաև ուրարտական նյութական մշակույթին, ինչպես այդ երևում է Սարգոն Բ-ի տեքստերից, Արին-բերդում և Գորդիոնում գտնված իրերից։ Դժվար է առայժմ տիպաբանական անմիջական կապ հաստատել ուրարտական այս նյութի և Հայաստանի տերիտորիայում հայտնաբերված վերոհիշյալ եղջերագավաթների միջև։

Գլխավորապես դրվագման եղանակով զարդարված պնակները կամ լայն, ցածր թասերը (փիալաները) աքեմենյան ժամանակաշրջանի Առաջավոր Ասիայի գեղարվեստական մետաղագործության բնորոշ իրերից են։ Զարդերը հորինված են լոտոսի ծաղկի տարբեր մասերի՝ սրածայր պսակաթերթիկների, ձվաձև բողբոջների և հենց իր՝ ծաղկի համադրությամբ։



Արծաթյա պայակ. Արին-բերդ

Նման փիալաներից երեքը գտնվել են Արևմտյան Հայաստանում, ընդ որում երկուսը զարդերով են, երրորդը՝ անզարդ[24]։

Կարևոր է այն հանգամանքը, որ մետաղյա վերոհիշյալ փիալաների զարդերը հիշեցնող վարդյակ հանդիպում է Հայաստանի արևելյան շրջաններում և դրոշմված է կավից պատրաստված մի ըմպանակի հատակին, մի հանգամանք, որը խոսում է Հայաստանի տարբեր շրջանների մետաղագործության և կավագործության կապերի մասին[25]։

Արծաթե ըմպանակները, նույնպես Արևմտյան Հայաստանից, ընդգծված հինարևելյան կերպար ունեն և լայն տարածում են գտել աքեմենյան ժամանակաշրջանում։ Սրանք, որպես կանոն, կիսագնդաձև իրան ունեն. տարբերակնե-

---

24 *Տե՛ս G. Migeon*, Les acroissements des Musées du Louvre, *էջ 18*։ *O. M. Dalton*, The treasure of the Oxus.., *էջ 44*։

25 *Տե՛ս А. О. Мнацаканян* и *Г. А. Тирацян*, Новые данные о материальной культуре древней Армении, *էջ 76*։

րը՝ ավելի ցածրանիստ են, բայց կորագիծ հատակով։ Պսակները բարձր են և թեք, դեպի դուրս լայնացող շուրթներով։ Բնորոշ են ելուստավոր ընդգծված անցումները իրանից դեպի պսակը[26]։ Նույնպես կարևոր է այն հանգամանքը, որ այս անոթները, որոնք երկար ժամանակ մեկուսի էին մնում Հայաստանի նյութական մշակույթի մեջ, այժմ ունեն իրենց զուգահեռները Հայկական լեռնաշխարհի արևելյան շրջաններում հայտնաբերված կավե անոթների մեջ[27]։



Արծաթյա պնակ. Երզնկա

Ըստ երևույթին, նույն ձևի անոթների մասին է խոսում հույն պատմիչ Քսենոփոնը, երբ Հայաստանի տերիտորիայում երկու անգամ հիշատակում է արծաթյա ըմպանակների մասին[28]։ Վաղ-հայկական ժամանակաշրջանում այս տիպի տարածումը բացատրվում է հինարևելյան ավանդույթների կենսունակությամբ։ Վերջին տարիների հնագիտական հայտնաբերումները ցույց են տալիս, որ ուրարտական նյութական մշակույթը ստեղծել էր թասերի և ըմպա-

[26] Տե՛ս O. M. Dalton, The treasure of the Oxus ..., էջ 45։
[27] Տե՛ս А. О. Мнацаканян и Г. А. Тирацян, Новые данные о материальной культуре древней Армении, տխտ. 4։ А. А. Мартиросян, Город Тейшебаини, նկ. 69։
[28] Տե՛ս Xen., Anab., IV. 3, 25, IV, 4, 24։



Ոսկյա կրծքազարդ. Արմավիր



Ոսկյա մանյակ. Դարույնք (Հասան-ղալա)

նակների ձևեր, որոնց ազդեցությունը վաղ-հայկական նման անոթների վրա շատ հավանական է։

Նշված ժամանակաշրջանում Հայաստանում գոյություն են ունեցել երկկանթանի սլացիկ անոթներ, որոնց կանթերը կենդանակերպ են։ Հետևի ոտքերի վրա կանգնած քարայծ պատկերող մի կանթ, որը անկասկած պատկանում է վերոհիշյալ տիպի մի անոթի, գտնվել է Արևմտյան Հայաստանում[29]։ Քարայծի ոճական առանձնահատկությունները, աչքերի, հոնքերի, եղջյուրների և այլ մանրամասնությունների վերարտադրությունը կասկած չեն թողնում աքեմենյան արվեստի շրջանակներին, ըստ որոշ գիտնականների, այդ արվեստի զարգացման վերջին փուլին պատկանելու մասին[30], երբ իրեն զգացնել է տալիս նաև հունական ազդեցությունը։

Երկկանթանի մի հոյակապ անոթ է պատկերված Պերսեպոլսի քարձրաքանդակներում, ընծաներ մատուցող հայերի ձեռքին։ Նա ունի սլացիկ ձև, հարթ մակերես ու գրիֆոնակերպ կանթեր և վերարտադրված է վարպետությամբ ու ռեալիստորեն[31]։ Մետաղյա այս անոթները եւ իրենց զուգահեռներն ունեն վաղ-հայկական խեցեգործության մեջ, որի մասին վկայում է Կարմիր-բլուրի քաղաքային մասում գտնված, վերևում հիշատակված անոթը[32]։ Այս անոթների ծագումը նույնպես գնալով ավելի որոշակիորեն է կապվում ուրարտական կավագործության նման ձևերի հետ։

Այս ժամանակաշրջանի զարդերի մասին պատկերացում են տալիս ծայրերը առյուծակերպ ոսկյա մանյակը, որը գտնվել է Բասենում՝ Դարույնքի (այժմ Հասան-ղալայի) դամբարաններում[33], ինչպես և Արմավիր-բլրում պեղումների ընթացքում հայտնաբերված մահիկաձև կրծքազարդը։ Սա հին ոսկերչական արվեստի մի կատարյալ նմուշ է, զարդարված թռչունների, լոտոսի ծաղիկների և կենաց ծառերի ոճավորված մոտիվներով։ Նման առարկաներ միանգամայն հատուկ էին հինարևելյան արվեստին ու մշակույթին։ Ասորեստանի և Ուրարտուի ծայրամասում՝ Մանա երկրի տերիտորիայում, Զիվիեում հայտնաբերված գանձի կազմում կա նման ձևի մի կրծքազարդ[34]։

Այդպիսիները տարածված էին Ասորեստանում և հատկապես Ուրարտուում։ Նման կրծքազարդեր պատկերված են ուրարտական արձանիկների վրա, կամ հայտնաբերվել են պեղումների ընթացքում (Թոփրախ-կալե, Արին-բերդ)։

Պատրաստման տեխնիկայի մանրամասնություններով (ոսկյա բարակ, նեղ, թերթիկաձև միջնորմներից կազմված բջիջներ՝ բազմագույն քարերով ընդելուզված) և մի շարք այլ առանձնահատկություններով Արմավիրի կրծքազարդը մոտ է կանգնած աքեմենյան ժամանակաշրջանի արվեստի նմուշներին[35]։

---

29 Տե՛ս A. Furtwängler, Erwerbungen der Antikensammlungen in Deutschland... էջ 114։

30 Տե՛ս P. Amandry, Toreutique achéménide, „Antike Kunst“, № 2, 1959, էջ 51։

31 Տե՛ս E. Schmidt, Persepolis, I Chicago, 1953, տախտ. 29 B։

32 Տե՛ս А. А. Мартиросян, Город Тейшебаини, էջ. 63։

33 Տե՛ս С. В. Тер-Аветисян, Курганы Хасан-калы, «Известия Кавказского историко-археологического института», т. IV, Тифлис, 1924, էջ 2։

34 Տե՛ս R. Ghirshman, Notes iraniennes, IV, Le trésor de Sakkez, „Artibus Asiae“, XIII, 3, 1950։

35 Տե՛ս O. M. Dalton, The treasure of the Oxus..., տախտ. 1։

**Քարե անոթներ:** *Հայաստանի տարբեր վայրերում գտնվել են սկահակներ բարձր ոտքի վրա՝ ամբողջական (Գեղարիր, էռնոյին Ղարաբաղ) կամ բեկորների ձևով (Արմավիր, Գառնի, Հացավան, Սևան)։ Այս սկահակները պատրաստված են կանաչավուն-կապտավուն կամ մոխրագույն-կապտավուն քարից և աչքի են ընկնում լավ հղկված, ողորկ մակերեսով։ Ուղեկցող նյութերը, շերտագրական միջավայրը, ինչպես նաև զուգահեռները թույլ են տալիս նման իրերը թվագրել վաղ-հայկական և հելլենիստական ժամանակաշրջանով*[36]։



**Քարե սկահակ. Գեղարիր**

*Հատկանշական է, որ բարձր ոտքի վրա թասի ձևը հայտնի է եղել ուրարտական նյութական մշակույթին, և դատելով հնագիտական բազմաթիվ հուշարձաններում հայտնաբերված կավե նման անոթների քանակից (Թոփրախ-կալե, Կարմիր-բլուր, Մեծամոր, Նոր-Արմավիր, Արմավիր), այն հանդիսացել է ուրարտական խեցեգործության բնորոշ և առաջատար ձևերից մեկը։ Ուրարտական և հայկական ժամանակաշրջանի անոթների միջև գոյություն ունեցող տիպաբանական կապը մեծ նշանակություն ունի քարե սկահակների տեղական, ուրարտական ակունքները պարզելու համար։*

**Կնիքներ:** *Հայաստանի V—IV դարերի, ինչպես և ավելի ուշ ժամանակաշրջանի դամբարաններում և հնագիտական այլ հուշարձաններում հանդիպում են ինքնատիպ կնիքներ՝ սկարաբեաձև (սկարաբեոյիդներ) և բազմանիստ, մի մասը՝ քարի տարբեր տեսակներից (սերդոլիկ, խալցեդոն և այլն), մյուս մասը՝*

36 *Տե՛ս Ժ. Դ.* Խաչատրյան, *Հնագիտական հայտնագործություններ Գեղարիրում, էջ 84—86։*

ապակուց. ընդամենը շուրջ երկու տասնյակ[37]։ Այդ կնիքների տակի հարթ երեսի վրա փորագրված են (քարից պատրաստվածների վրա) կամ դրոշմված են (ապակուց ձուլվածների վրա) տարբեր տեսարաններ. մենամարտի (հեծյալի և հետևակայինի, կամ իրենց՝ հետևակայինների միջև), որսի, ինչպես նաև տարբեր տեսակի կենդանիների և գազանների պատկերներ՝ առյուծի, եղջերուի, արջի, վարազի և այլն, մենակ կամ երկուսեք, տարբեր վիճակում՝ կանգնած, վազելիս, իրար հոշոտելիս և այլն։ Կնիքներից մեկը, որը փորագրված պատկերներ ունի իր երկու, ներքևի՝ հարթ և վերևի՝ ուռուցիկ երեսների վրա, օժտված է նաև արամեական արձանագրությամբ։

Նշված ժամանակաշրջանում արևմտյան Փոքր Ասիայում մշակույթի և արվեստի մեջ զարգանում է մի խառը ոճ, որը հայտնի է «հունա-պարսկական» անունով։ Այդ ոճը, որը առավել ցայտուն կերպով դրսևորվել է քարե կնիքների պատրաստման (գլիպտիկայի) մեջ, խառնուրդ էր գեղարվեստական երեք ուղղությունների՝ տեղական-փոքրասիական, պարսկական և հունական, որոնցից առաջին երկուսը հատկապես որոշիչ են եղել այդ խառը ոճի ձևավորման գործում։

«Հունա-պարսկական» ոճի կնիքների կողքին արևմտյան Փոքր Ասիայի հարևան տերիտորիաներում փորագրվում են կնիքներ, որոնք իրենց մի շարք հատկանիշներով (նյութը, ձևը, սյուժեները) աղերսվում են «հունա-պարսկականների» հետ, բայց ոճի տեսակետից տարբեր մի ուղղություն են ներկայացնում, որի հիմքը հունական արվեստն էր՝ թեպետ արևելյան, պարսկական ուրոշ ազդեցությամբ։ Այդ կնիքները, ավելի ճիշտ նրանց ոճը, հայտնի է «արևելա-հոնիական» անունով։

Կնիքների այս երկու խմբի, հատկապես առաջինի հետ են կապվում Հայաստանում գտնված ուշ-աքեմենյան և վաղ-հելլենիստական ժամանակաշրջանի վերոհիշյալ կնիքները՝ թե՛ իրենց երկու հիմնական ձևերով, թե՛ պատկերված թեմաներով, իսկ մի երկուսը, որոնք ամենայն հավանականությամբ ներմուծված իրեր են, նաև իրենց ոճով։

Այդ կնիքների մեծ մասը, սակայն, նշված ուղղությունների ազդեցությամբ, Փոքր Ասիայում և Հայաստանում առաջացած տեղական, ուրույն ոճին են պատկանում և արտացոլում են գեղարվեստական սեփական սկզբունքներ։

Տեղական կնիքների ոճը բնորոշվում է մարդկային և կենդանական պատկերների դասավորության՝ ընդհանուր կոմպոզիցիայի պայմանականությամբ և սխեմատիկայնությամբ, առանձին կերպարների կառուցվածքի համամասնությունների խախտմամբ, կեցվածքի և շարժումների կաշկանդվածությամբ։

Մոտիկից ծանոթանալիս երևում է նաև, որ տեղական կնիքների այդ հավաքածուի մեջ գոյություն ունեն ոճային առանձին ենթախմբեր, որոնց բացահայտումն ու հիմնավորումը, անկասկած, հույժ կարևոր է։

Քննության առնված նյութերի երկու խմբերից յուրաքանչյուրը մշակութային հետաքրքրական և հատկանշական աղերսներ է դրսևորում։ Շարքային

[37] Տե՛ս А. О. Мнацаканян, Раскопки могильников у селения Атарбекян, էջ. 5, Г. А. Тирацян, Опыт периодизации материальной культуры древней Армении, ИАНАОН, 1957, № 2, էջ 81—82; А. А. Мартиросян, Город Тейшебаини, էջ 148, Ժ. Դ. Խաչատրյան, Հայաստանում հայտնաբերված բազմանիստ կնիքները, ՊԲՀ, 1965, № 1, էջ 271—277։

նյութերը բազմաթիվ թելերով կապված են տեղական նախորդ՝ բրոնզե դարի և վաղ երկաթի մշակույթների հետ, հանդիսանալով նրանց օրգանական շարունակությունը։ Հասարակության վերնախավին վերաբերող նյութերը սերտորեն առնչվում են աքեմենյան Իրանի մշակույթի հետ։

Մի շարք փաստեր գալիս են բացահայտելու Հայաստանի և արևելյան Միջերկրականի երկրների, հունական աշխարհի, փոքր-ասիական երկրամասի միջև հելլենիստական ժամանակաշրջանում գոյություն ունեցող տնտեսական և մշակութային կապերը, որոնց սկզբնավորումը կարելի է գտնել ուրարտական պետության գոյության տարիներին։

Այդ աղերսների հնարավորությունը հաստատող նյութերից են Արին-բերդում գտնված միլետյան դրամները, Աթենքում կտրված դրամը՝ գտնված Ջանաեզուրում, Հայաստանում հայտնաբերված բազմանիստ և սկարաբեաձև կնիքները, գեղարվեստական մետաղագործության որոշ նմուշներ, հոնիական խեցեգործության հետ առնչվող գունազարդ խեցեղենը, Իջևանում պեղումների ընթացքում գտնված շենքի՝ հավանաբար տաճարի, պաշտամունքային նշանակություն ունեցող մոդելը, որը, հնարավոր է, արտացոլում է Հայաստանի՝ Փոքր Ասիայի ճարտարապետության հետ ունեցած որոշ առնչությունները։

Վերը բերված հնագիտական նյութերը հնարավորություն են տալիս նաև եզրակացնելու, որ վաղ հայկական մշակույթի ձևավորման գործում մեծ դեր են խաղացել ուրարտական ավանդները։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ԷՊՈՍԻ ՀՆԱԳՈՒՅՆ ՇԵՐՏԸ

Առասպելները: *Հայ ժողովրդի հոգևոր մշակույթի կարևոր մասն են կազմում հնագույն առասպելները, որոնք մասամբ կապված են նաև հայոց սկզբնական պատմության և կրոնի հետ։*

«Հնագույն բանաստեղծության մի տեսակն են և առասպելները։ Դրանք փոքրիկ զրույցիկներ են, որոնց մեջ, ըստ նախնական աշխարհայեցողության ու հավատալիքների, բնությունն ու հասարակական ձևերը անգիտակցորեն մշակված են ժողովրդի երևակայությամբ։ Դրանց մեջ ոգիների, դյուցազնների կամ աստվածների պատկերով ձևավորված ու դրոշմված են նախնական ժողովուրդների հայացքը, մի կողմից՝ հասարակական հարաբերությունների, մյուս կողմից՝ բնության ուժերի և երևույթների վրա»[38]։

Հայերի հնագույն և ամենանշանավոր առասպելներից է Հայկի և Բելի զրույցը։ Այն բերված է Մովսես Խորենացու «Հայոց պատմության» և Սեբեոսի «Պատմության»՝ Անանուն պատմիչին պատկանող ներածական գլխի մեջ և հիշատակվում է Անանիա Շիրակացու «Տիեզերագիտություն» և «Տոմարագիտություն» աշխատություններում։

Հայկը՝ մի հսկա աղեղնավոր, ըմբոստ և ազատասեր հերոս, չկամենալով ենթարկվել Բելին, որը փորձում է բռնանալ բոլորի վրա, իր որդիների հետ հեռանում և հաստատվում է Հայաստանում։ Բելը նրան առաջարկում է վերադառնալ և հնազանդվել իրեն, սակայն Հայկը մերժում է։ Այն ժամանակ Բելը

38 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հատ. I, Երևան, 1944, էջ 19։

արշավում է Հայկի դեմ, բայց ճակատամարտում սպանվում է Հայկի ձեռքով, որը այդպիսով իր անկախությունն է հաստատում։

Առասպելի հիմնական գծերից մեկը սեփական երկրի պաշտպանությունը և ազատագրումն է օտար տիրապետություններից։ Ճակատամարտի նախօրյակին դիմելով իր քաջերին, Հայկը ասում է. «Կամ մեռցուք և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կայցէ, կամ պաչողութիւն մատանց մերոյ ի նա ցուցեալ՝ ցրուեսցի ամբոխն, և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք»[39]։ Հայկի և Բելի առասպելը որոշակի աղերսներ ունի հայոց նախնական պատմության հետ։ Հայկը հանդես է գալիս որպես հայերի էպոնիմ, որի անվան հետ է կապված հայ ժողովրդի անունը։ Հայկի և Բելի առասպելի մեջ իրենց արտացոլումն են գտել պատմական այնպիսի եղելություններ, ինչպիսին Ասորեստանի և Ուրարտուի դարավոր պայքարն էր կամ Հայկական լեռնաշխարհի բնակեցումը հայերի կողմից։

Մովսես Խորենացու մոտ բերված են զրույցներ նաև Արամի մասին։ Նրանց մեջ առասպելականը նույնպես միախառնվում է պատմականի հետ։ Արամի առասպելներում հեռավոր արձագանքներ են պահպանվել հայերի հարաբերությունների մասին իրենց սահմանակից երկրների՝ Մարաստանի, Ասորեստանի, Կապադովկիայի հետ։ Ինքը՝ Արամը, հավանաբար մի կողմից արձագանք է ուրարտացիների թագավոր Արամեի, մյուս կողմից՝ հանդես է գալիս որպես հայ ժողովրդի կազմավորմանը մասնակցած մյուս շերտի՝ փյուրգացիներին հարևան արմենների էպոնիմ։

Ասորեստանի դեմ Արամի կռվի նկարագրության մեջ երևում է զրույցի առասպելական կողմը։ Արամի հակառակորդը այստեղ Բարշամ աստվածն է («Բարշամին»՝ «երկնքի որդի»), որին պաշտում էին ասորիները։ Առասպելական ընդգծված բնույթ ունի զրույցը նաև այն մասում, որտեղ նկարագրվում են Արամի գործերը Փոքր Ասիայում՝ Կապադովկիայում։ Այստեղ նա ընդհարվում է Տիտանյանների և նրանց առաջնորդ «Պայապիս Քաաղեայ Տիտանեանի» հետ, որին հաղթելով քշում է «ի կղզին ինչ Ասիական ծովուն»։ Զրույցի այս մասի նմանությունը հունական առասպելներին ակնհայտ է։ Արամի վերոհիշյալ ընդհարումները հիշեցնում են Զևսի՝ Տիտանյանների և Տիտան հսկայի դեմ մղված կռիվը, որը և թերևս վկայում է հնագույն ժամանակներում հայերի՝ փոքրասիական և հունական աշխարհների հետ ունեցած կուլտուր-պատմական աղերսների մասին։

Տորքի առասպելի բովանդակությունը նույնպես հասել է մեզ Խորենացու «Հայոց պատմության» միջոցով։ Նրան վերագրվում էր ֆիզիկական աներևակայելի ուժ։ Տորքը ջարդ ու փշուր է անում հսկա ժայռեր, եղունգներով հղկում է քարերը, ինչպես և նրանց վրա փորագրություններ անում։ Ծովի ափերին նավերի հանդիպելով, նրանց վրա հսկա ժայռեր է նետում, և ալիքներից խորտակվում են նավերը։

Առասպելի այդ մասը որոշ չափով հիշեցնում է «Ոդիսականի» կիկլոպ Պոլիփեմի արարքներն ու ևս մի ակնարկ է կուլտուր-պատմական որոշ հարաբերությունների՝ Հայաստանի և նրանից դեպի արևմուտք ընկած ժողովուրդների միջև։ Սակայն ամբողջությամբ վերցրած, ինչպես նաև իր որոշ մանրամասնու-

39 Խորենացի, Ա, ժա։

թյուններով, Տորք Անգեղի առասպելը ունի տեղական բնույթ, կազմավորված լինելով Առաջավոր Ասիայի մշակութային ընդհանուր ատաղձի վրա։

Արայի և Շամիրամի հնագույն առասպելները մեծ հուշակ են վայելել հայերի մեջ։ Նրանք մեզ հասել են բազմաթիվ ճանապարհներով, մատենագրության միջնորդությամբ կամ ժողովրդական զրույցների ձևով։

Հիմնական առասպելը Շամիրամի և Արայի փոխհարաբերությունների մասին գեղեցիկ և ամբողջական ձևով պատմված է Մովսես Խորենացու և Սեբեոսի պատմություններում։ Ասորեստանի թագուհի Շամիրամը սիրահարվում է Հայաստանի թագավորին՝ Արային, և առաջարկում նրան գալ իր մոտ և ապրել միասին։ Արան մերժում է, իսկ Շամիրամը զորքով ներխուժում է Հայաստան։ Ճակատամարտում Արան սպանվում է։

Ըստ առասպելի նախնական ձևի, Շամիրամը վերակենդանացնում է Արային արալեզների օգնությամբ։ Քրիստոնեության գաղափարախոսական բովով անցած առասպելի այս վերջաբանը ննգափոխվում է և, ըստ նոր տարբերակի, Արայի դիակը նեխում է։

Այս առասպելը տարբեր ձևերով կամ նրա որոշ հատվածները կարելի է հանդիպել V—IV դարերի հեղինակ Կտեսիաս Կնիդացու մոտ՝ Դիոդոր Սիկիլիացու միջնորդությամբ, անտիկ ժամանակաշրջանի պապիրուսային մի սիրավեպում, Պլատոնի «Հանրապետություն» աշխատության մեջ և Մ. Խորենացու մոտ[40]։ Մինչև վերջերս հետաքրքրական տարբերակներ են պահպանվել ժողովրդական բանահյուսության մեջ։ Շամիրամի անունը հանդիպում է Հայաստանի, առավելապես Վանի աշխարհագրական անվանումներով, օրինակ, Շամիրամի ջրանցքը, Շամիրամալթի վայրը և այլն։ Ինչպես և մյուս առասպելները, չնայած իր դիցաբանական բնույթին, Արա Գեղեցիկի և Շամիրամի զրույցը արտացոլում է պատմական որոշակի հարաբերություններ՝ Հայկական լեռնաշխարհի հին բնակիչների և հարավից սահմանակից սեմական աշխարհի միջև։

Ասորեստանում մ. թ. ա. IX դարում իշխել է Շամուրամաթ թագուհին, որը Շամիրամի նրկրային նախատիպն է։ Սրա օրոք Ասորեստանի և նրա հյուսիսային հարևանի՝ Ուրարտուի միջև, մի շարք ընդհարումներ են եղել։ Թերևս այս և հաջորդ դարերում չդադարող արշավանքների արձագանքներն իրենց տեղն են գտել Արայի և Շամիրամի առասպելների մեջ[41]։

Հին ճայկական վեպը: «Ի տարբերություն առասպելի, որը դիցաբանական բնավորություն ունի, վեպի նյութը պատմությունն է, իսկական թե կեղծ»[42]։ Վեպի մեջ պահպանվում են պատմական անցքերի հուշերը, սակայն ժամանակագրական տեսակետից մեծ խախտումներով։ Բայց հին վեպը իր հերթին առասպելախառն է, նրա մեջ տեղ են գտնում բազմաթիվ առասպելներ։

Դարեր շարունակ ապրելով վիպասանների շուրթերին, վեպը զգալի փոփոխության է ենթարկվում։ Այդ փոփոխություններն ուժեղանում են նշանավոր իրադարձությունների և պատմական անձերի ազդեցությամբ։

---

40 Տե՛ս Ն. Ադոնց. Հին հայոց աշխարհայացքը, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 223—293։

41 Տե՛ս Գր. Ղափանցյան, Արա Գեղեցիկի պաշտամունքը, Երևան, 1945։

42 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հատ. I, էջ 37 և հաջ.։

Մեր հին վեպը կոչել են «վիպասանք», «երգ վիպասանաց» կամ «զրույց»։ Այն մշակվել է վիպասանների և գուսանների ձեռքով։

Տիգրանի և Աժդահակի վեպը հնագույններից է։ Նրա մեջ արտացոլվել են տարբեր դեպքեր նաև Տիգրան Մեծի հետ կապված։ Բայց նախնական շերտը անդրադարձնում է մ. թ. ա. VI դարի դեպքերը, որոնց մասին կարևոր տեղեկություններ է հաղորդում Քսենոփոնը[43]։ Ինչպես վերը տեսանք, ըստ նրա պատմածի՝ Մարաստանից կախյալ վիճակում գտնվող Հայաստանը ձգտում է անկախության։ Այդ ձգտումը ճնշում է Կյուրոսը, ապագա Աքեմենյան տերության հիմնադիրը, որը առժամանակ մարաց թագավորի զորավար է։ Հանդես է գալիս նաև հայոց արքայազն Տիգրանը, որը Կյուրոսի որսակիցն է և մտերիմ բարեկամը։ Խորենացու մոտ պահպանված վեպի հիմքը ևս երկու հարևան ազգերի թագավորների՝ հայոց Տիգրանի, մարաց Աժդահակի (Աստիագես) և Կյուրոսի հարաբերություններն են։ Անվան զուգադիպության բերումով վեպի հետ է կապվել նաև Աժդահակ (Աժի Դահակա՝ վիշապ Դահակա) վիշապի առասպելը։ Ըստ այդ պարսկա-հնդկական առասպելի, վիշապ Դահակը կռվում է հերոսների կամ աստվածների դեմ և սպանվում։ Մեր առասպելներում Աժդահակի դեմ նախապես դուրս է գալիս, հավանաբար, Վահագնը, որին հետագայում փոխարինում է Տիգրանը[44]։

Տիգրանը սկզբում դաշնակից է Աժդահակին։ Բայց Կյուրոսի և Տիգրանի մտերմությունը փախցրել էր Աժդահակի քունը և նա խորհրդակցում էր իր մարդկանց հետ, թե ինչ հնարքներով պիտի կարողանա խարխլել պարսիկների և բյուրավոր զորք ունեցող հայերի դաշինքը, քանի որ այդ օրերում, պատմում է վեպը, Կյուրոսի և Տիգրանի դաշինքը փոքր վտանգ չէր սպառնում մարաց Աժդահակին։

Առասպելախառն վիպասանությամբ է պատմվում Աժդահակի երազի մասին, որի համաձայն արծվաթև վիշապի վրա նստած Տիգրանը սլանում է դեպի մարերի մայրաքաղաքը և սպանում Աժդահակին։ Վախենալով, որ երազը կարող է իրականանալ, Աժդահակը ամուսնանում է Տիգրանի քրոջ՝ Տիգրանուհու հետ, որպեսզի նրան իր գործակիցը դարձնի Տիգրանի դեմ։ Տիգրանուհին հայտնում է եղբորը Աժդահակի դավադիր խորհուրդը, և հայոց արքան զորք է հավաքում ու շարժվում դեպի Մարաստան։ Պատերազմում Տիգրանը սպանում է Աժդահակին ու հաղթանակ տանում։

Այսպիսով, Քսենոփոնի հետ մեկտեղ, հայկական առասպելախառն այս վեպը ևս, անշուշտ, պատմական կարգի հիշողություններ է հասցրել մեզ և՛ հայերի և՛ հարևան մարերի հարաբերությունների մասին։

Առասպելները և վիպական բանաստեղծությունը հին Հայաստանի մշակույթի անխզելի և արժեքավոր մասն են կազմում։ Նրանք անգնահատելի նշանակություն ունեն հին հայերի կրոնը, հավատալիքները, արվեստը, գրականությունը և պատմությունը ուսումնասիրելու համար։ Խոր արմատներով կապված լինելով հինարևելյան աշխարհայեցողության հետ և դրսևորելով անզուգական

43 Տե՛ս Xen., Cyrop., II, 9, 25։

44 Խորենացի, Ա, ղ, Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հատ. I, էջ 45։

գեղարվեստական հմայք, մեր հին առասպելներն իրենց առինքնող ուժի բերումով երբեմն տարածում են գտել նույնիսկ Հայկական լեռնաշխարհից դուրս։

Առասպելների և վեպի ոճը աչքի է ընկնում վառ գույներով, պատկերավոր դարձվածքներով, դիպուկ բնորոշումներով և մակդիրներով։ Հակառակ քրիստոնեական ոգուն, հավասար չափով մեծ ուշադրություն է դարձվում հերոսների մարմնական և հոգեկան գեղեցկությանը։

Ըստ առասպելի, որը վերարտադրել է Մովսես Խորենացին, Հայկը «գեղապատշաճ է և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ», Տիգրանը «Երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոգարարձն և գեղեցկոտն, պարկեշտն ի կերակուրս և յըմպելիս, և ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին ի հինսն մեր, որք փանդռամբն երգէին, լինել սմա և ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր, մեծիմաստ և պերճաբան»։ Հայ ժողովրդի գրական հուշարձանների միջով կարմիր թելի նման անցնում է հերոսների խրոխտ և ազատասեր ոգին, օտար բռնապետությանը չհնազանդվելու վճռականությունը։ Միևնույն ժամանակ ընդգծվում է նրանց խաղաղասեր շինարարական ոգին, որի արտահայտությունն են նրանց ձեռքով հիմնադրված քաղաքները, ավաններն ու դաստակերտները, տնկված անտառները։

## 3. ՀԱՅԵՐԻ ՀՆԱԳՈՒՅՆ ՀԱՎԱՏԱԼԻՔՆԵՐԸ

Ինչպես տեսանք, Հայաստանի պատմության տոհմա-ցեղային ժամանակաշրջանի կրոնի մեջ մեծ տեղ էր բռնում ոգու հավատքը, բնության և նախնիների պաշտամունքը։ Տոհմատիրական կարգերի զարգացած փուլում և դասակարգային հասարակությանը անցնելու կապակցությամբ տեղի է ունենում աստվածությունների անձնավորում և ձևավորվում է հնագույն աստվածների պանթեոնը։

Վաղ հայկական պանթեոնի ուսումնասիրման համար արժեքավոր աղբյուր են հանդիսանում հին առասպելները, որոնք ունեն ընդգծված դիցաբանական բնույթ։

Հայերի հնագույն աստվածներից է Հայկը։ Նրա պաշտամունքի արմատները մեզ տանում են դեպի տոհմատիրական հասարակության խորքերը։ Ինչպես երևում է մի շարք փաստերից (Սեբեոսի (Անանունի) «Պատմությունը», Աղցի դամբարանի բարձրաքանդակները), Հայկը հանդես է գալիս որպես հսկա որսորդ, որն իր երկու շների հետ հալածում է գազաններին[45]։ Հայկը նաև կոսմոգոնիական հատկություններ է ձեռք բերում, երկինք է բարձրանում և դառնում գեղեցիկ ու լուսավոր աստղերից մեկը։ Այդ երևում է մեր թարգմանական գրականության մի շարք երկերից և Աստվածաշնչից, որտեղ Հայկը հավասարեցվում է Օրիոն համաստեղությանը։ Հայկական ժողովրդական երգերից մեկում մի համաստեղություն ուղղակի Հայկ (Խեկ) է անվանված։

Վաղ դասակարգային հասարակության անցման պայմաններում Հայկը մարմնավորում է հայ ժողովրդի պայքարը նոր հանդես եկող բռնապետության

45 Տե՛ս Բ. Առաքելյան, Հայկ-Օրիոն, Տեղ. ԳԱՀՖ, № 8, 1941, էջ 29—36։

դեմ, որն աշխատում է սարկացնել ուրիշներին։ Այս էտապում Հայկը և նրա հակառակորդ Բելը արդեն առանձին երկրների աստվածներ են։ Բելը՝ Հայաստանի հարավային հարևան սեմական ազգերի աստվածն է։ Բելի դեմ ապըստամբող Հայկը, որը կռվում է ու սպանում նրան, լուսավոր ու պայծառ մի աստված է։ Միևնույն ժամանակ նա պաշտվում է որպես հայերի նախահայր, որը անձնուրաց կռվով հայերի ազատությունն է նվաճել։

Հայերի աստվածներն էին Տորքն ու Անգեղը։ Տորքը Առաջավոր Ասիայի փոքրասիական մի շարք ժողովուրդների ու ցեղերի աստվածն է եղել։ Խեթերի մոտ (Տարքու) նա պաշտվել է հավանաբար որպես պտղաբերության և բուսականության աստված։ Ընելով նրա՝ Անգեղ-տուն գավառի հետ ունեցած աղերսից, հնարավոր է ենթադրել, որ նրա պաշտամունքը առավելապես տարածված է եղել Հայաստանի հարավ-արևմտյան շրջաններում։

Մովսես Խորենացու միջնորդությամբ հասած առասպելում Տորքը հանդես է գալիս որպես Անգեղյա, որը ժողովրդի ու իրեն՝ Խորենացու կողմից ըմբռնվել է որպես «տգեղ»։ Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ իրականում այստեղ խոսքը Տորքի ծագումը բնորոշող մի անվան մասին է։ «Տորք Անգեղյա» նշանակում է, որ Տորքը Անգեղի սերնդից է։ Անգեղը նույնպես հայտնի է որպես հայկական աստվածներից մեկը, որի անունը տոտեմական ծագում ունի (թռչուն)։ Աստվածաշնչի մեջ սեմական անդրերկրյա Ներգալ աստծու անունը հայերենում թարգմանված է Անգեղ։ Անգեղի աստված լինելու մասին վկայում է նաև Սեբեոսը (Անանունը)։

Հայկական պանթեոնի մեջ կարևոր տեղ է գրավում Արա և Շամիրամ աստվածների զույգը։ Արան տեղական հնագույն աստվածներից է։ Իր անունով և իր որոշ գծերով նա կապվում է խեթական և ուրարտական որոշ աստվածների հետ[46]։

Ինչպես ցույց են տվել ուսումնասիրողները, Արայի նախնական կերպարը արտահայտել է գարնան աճող բուսականությունը, երկրագործությունը, ցանքը և ջուրը։ Այս երևում է ի դեպ Արայի առասպելում պահպանված Արայի շրջապատի բուսական բնույթ ունեցող անուններից (Նուարդ, Անուշաւան Սոսանուէր)։ Արայի այս բուսական հին բովանդակության դրսևորումն է նաև նրա հարություն առնելու հանգամանքը։

Ինչպես հայտնի է, մեռնող և հարություն առնող աստվածությունները լայն տարածում էին գտել հինարևելյան երկրներում։ Հայաստանում Արայի պաշտամունքի տարածման մասին վկայում են նաև մի շարք տեղանուններ և նույնիսկ անձնանուններ։ Մովսես Խորենացու «Հայոց պատմությունից» երևում է, որ Շամիրամը կանգնեցրել է Արայի արձանը։

Հինարևելյան հավատալիքների ազդեցության տակ Արան սկսում է հանդես գալ Շամիրամի հետ միասին։ Հին Արևելքում գոյություն ուներ մի շատ սիրված դիցուհի, որը մեծ դեր է խաղացել կրոնական կյանքում։ Զանազան անուններով ու կերպարանքներով նա պաշտվել է բազմաթիվ երկրներում։ Ասորեստանում և Բաբելոնում նա կոչվել է Իշտար, Փյունիկիայում՝ Աստարոթ, Ասորիքում՝ Դերկետո, Աթարգատիս։ Ըստ հին առասպելների, Դերկետոյի

46 Տե՛ս Գր. Ղափանցյան, Արա Գեղեցիկի պաշտամունքը, Երևան, 1945։

դուստրն է Շամիրամը։ Նա իր մոր նման պտղաբերության ու սիրո աստվածուհին է և հայտնի է իր գեղեցկությամբ, պատերազմասեր է և վավաշոտ։ Նրա պաշտամունքը մտել է Հայաստան և կապակցվել է Արայի կերպարի հետ։ Շամիրամի պաշտամունքը Հայաստանում լայն տարածված լինելու մասին առասպելներից բացի, ինչպես ավեց վերը, վկայում են բազմաթիվ տեղանուններ, որոնք կապված են նաև դիցուհու անվան հետ։ Մ. թ. II դարի գրող Լուկիանոս Սամոսատցու ասելով՝ Հայաստանի Շամիրամի երկրպագուները նվերներ էին ուղարկում Նրա տաճարին։

Արայի և Շամիրամի հետ միասին պաշտվում էին նաև Արալեզ կոչված ոգիները։ Հայերը հավատում էին, որ արալեզները լիզում էին հայրենիքի համար կռվի դաշտում ընկած հերոսներին և հարություն տալիս նրանց։ Ըստ մեր մատենագիրների մոտ պահպանված տվյալների, հայերը արալեզներին համարում էին շնից սերված։

Հնագույն հայկական աստվածների թվին է պատկանում Վահագնը։ Վահագնի կերպարը, ինչպես նրան զուգահեռ կազմող հնդկական Ինդրան կամ պարսկական Վերեթրագնան, պահլավական Վարհրանը կամ Բահրամը գեղեցիկ, քաջ և զորեղ երիտասարդներ են, որոնք նշանավորում են բնության ուժերը մարմնավորող աստվածությունների կերպարի զարգացման վերջին փուլը՝ մարդեղացումը (անտրոպոմորֆիզմ), քանի որ աստվածն էլ արդեն մարմնավորում էր ոչ միայն բնության ուժերը, այլև մարդու բանականությունը։

Այսպիսին է նաև Վահագնը ժողովրդական բանաստեղծական զրույցներում, որոնցից Մովսես Խորենացին մեզ է հասցրել երկնքի և երկրի, ծիրանի ծովի և եղեգնի երկունքից ծնված, հուր մազերով և բոց մորուքով խարտյաշ պատանյակ Վահագնի ծննդյան երգը։ Դա ժամանակի մտածողության, պատկերացումների և ժողովրդական չափածո բանահյուսության՝ բնության տարերքի պես արտահայտիչ ու գունեղ, միաժամանակ գրավիչ ու առինքնող մի հատված է.

Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր և ծովն ծիրանի.
Երկն ի ծովուն ունէր և զկարմրիկն եղեգնիկ.
Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր,
Եւ ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ.
Նա հուր հեր ունէր,
Ապա թէ բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք[47]։

Այս սքանչելի երգում տեսնում ենք, որ կյանքի ծնունդը տեղի է ունենում շնորհիվ երկնքում և երկրի վրա գտնվող իրար հակադիր չորս տարրերի՝ հողի (երկիր), ջրի (ծով), կրակի (բոց, ծուխ) և օդի (երկինք) միասնության։ Այստեղ առկա է նաև բուսական աշխարհը, ներկայացված ծովում աճած եղեգնով, որը ծնունդ է տալիս Վահագնին։

47 Խորենացի, Ա, լա։

Մեջ բերելով Վահագնի ծննդին վերաբերող հատվածը, Խորենացին գրում է. «Ջայս երգելով ոմանց փանդռամբ, լուաք մերովք իսկ ականջօք։ Յետ որոյ և ընդ վիշապաց մաքտին յերգին կռուել նմա և յաղթել...»։

Վահագնի զուգահեռը կազմող ամպրոպի աստվածները նույնպես կռվում են վիշապի հետ, որը մարմնավորում է երկնքի ջրերը պահող ամպը։ Հնդկական ամպրոպի աստված Ինդրան, օրինակ, հաղթում է Վրթրային (վիշապին). իր կայծակի զենքով պատռում է ամպերի կամարը և երկնային ջրերը թափվում են երկրի վրա՝ արգասավորում նրան։ Այդպիսին է նաև Վահագնի կռիվը վիշապի դեմ, ըստ որում Վահագնը կարող էր հանդես գալ տարբեր կերպարանքներով, օրինակ, առյուծի, ցուլի, ուղտի, հեծյալ որսորդի, մանավանդ նաև քաջի՝ քարայծի գլխով և կռվել վիշապի դեմ. այդ պատկերը, պահպանվելով միջնադարյան հայ ձեռագրերում, հասել է մեզ։

Վահագնին վերագրվել է նաև եզան կերպարանք ընդունած վիշապին (իմա՝ հողմ, ամպ) երկինք բարձրացնելը, որը ճիշտ է նկատել Մ. Աբեղյանը Եզնիկ Կողբացու մի վկայության հիման վրա[48]։

Անանիա Շիրակացին մեջ է բերում մի զրույց, ըստ որի հայոց նախնի Վահագնը մի ցուրտ ձմեռ գողացել է Ասորեստանի նախնի Բարշամի հարդը և երկնակամարով անցած նրա ճանապարհին թափված հարդից է, որ գոյացել է Հարդագողի ճանապարհը կամ Ծիր Կաթինը[49]։

Հավանական է, որ հնագույն շրջանում հայերի կողմից պաշտվել են նաև այլ աստվածություններ։ Հայաստանում մ. թ. ա. V դարի վերջում արևին երկրպագելու մասին մի կարևոր վկայություն է պահպանվել, որից երևում է, որ արևին ձիեր էին զոհաբերում[50]։

Մի շարք աստվածությունների պաշտամունքը, որի մասին մենք տեղեկություններ ունենք, սկսվել է, թերևս, այդ հնագույն շրջանում, բայց ծավալ ու տարածում է ստացել Հայաստանում պատմության հետագա շրջաններում։ Դրանցից են Անահիտը, Արամազդը, Միհրը, Տիրը և ուրիշ աստվածներ։

---

48 Տե՛ս Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հատ. 1, էջ 36։
49 Տե՛ս Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն և տոմար*, Երևան, 1940, էջ 37։
50 Տե՛ս *Xen.*, Anab., IV, 5, 35։

## ԲԱԺԻՆ Է



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ՍՏՐԿԱՏԻՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

# ՀԵԼԼԵՆԻԶՄԸ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

**Հելլենիզմ. նրա սոցիալ–տնտեսական և քաղաքական նախադրյալները:** *IV դարի վերջերից Հայաստանը ընդգրկվում է հելլենիստական աշխարհի զարգացման ոլորտը։*

*«Հելլենիզմ» («հունականություն») տերմինը պատմագիտության մեջ ներմուծվել է ավելի քան հարյուր տարի առաջ։ Նրանով բնութագրվել է մ. թ. ա. III—I դարերի պատմությունը որպես մի ժամանակաշրջան, որի ընթացքում հունական ազդեցությունը իր ցայտուն դրսևորումը գտավ Հին Արևելքի ժողովուրդների մշակութային, քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքում։ Այդ տերմինը լրիվ բավարարում է նաև արդի բուրժուական պատմագիտությանը, որը, չնայած կատարված անթիվ հետազոտություններին, դեռ շարունակում է վերոհիշյալ երեք հարյուրամյակների պատմության հիմնական բովանդակությունը սպառել «հունականությամբ»։ Ընդսմին որպես կանոն թերագնահատվում է պատմական իրականության այն կողմերի նշանակությունը, որոնք կամ կապ չունեն հունական ազդեցության հետ և կամ, ընդհակառակն, հունականի վրա տեղական կյանքի ազդեցության հետևանք են[1]։*

*Սովետական պատմագրությունը որդեգրել է «հելլենիզմ» տերմինը, սակայն ոչ մեխանիկորեն, այլ ներդնելով նրա մեջ շատ* ավելի լայն բովանդակություն, *որով այդ տերմինը ստացել է զգալի չափով պայմանական բնույթ[2]։ Որքանով որ խոսքը Արևելքի մասին է, սովետական պատմագրությունը հելլենիզմի դարաշրջանը դիտում է որպես հինարևելյան ստրկատիրական երկրների պատմական զարգացման որոշակի փուլ, որը նախապատրաստված էր այդ երկրների բազմադարյան պատմությամբ, բայց որը բնութագրվում էր նաև արևելյան ժողովուրդների և հույն-մակեդոնացիների աննախընթաց մերձեցմամբ ու փոխազդեցությամբ։*

---

1 *Բազմաթիվ աշխատություններից նշենք կարևորագույնները, որոնք հանրագումարային բնույթ են կրում* *I. P. Kaerst*, Geschichte des Hellenismus, I—II, Lpz., 1927. *W. W. Tarn*, Hellenistic civilization, London, 1941—*ռուս. թարգմ.* *В. В. Тарн*, Эллинистическая цивилизация, М., 1949. *M. I. Rostovtzeff*, A Social and Economic History of the Hellenistic World, I—III, Oxford, 1941.

2 *Տե՛ս* *А. Б. Ранович*, Эллинизм и его историческая роль, М.—Л., 1950, «Всемирная история», *հ. II*, М., 1956, *էջ 211—342*։

Հինարևելյան քաղաքակրթությունը հելլենիստական շրջանում արդեն ուներ ավելի քան երկհազարամյա պատմություն։ Արևելյան մի շարք հասարակություններ այդ ընթացքում ստեղծել էին զարգացած տնտեսություն բազմաթիվ գյուղատնտեսական և արհեստագործական ճյուղերով։ Դարերի ընթացքում մշակվել էին քաղաքական կյանքի, պետական կառուցվածքի ու վարչական կառավարման մանրամասն ու բազմազան ձևեր։ Վերջապես, բարձր մակարդակի էր հասել հոգևոր և նյութական մշակույթը։ Հազարամյակների ընթացքում արևելյան ժողովուրդների սոցիալ-տնտեսական հարաբերությունները անցել էին զարգացման հարուստ ուղի, որի հիմնական փուլերն էին դասակարգերի առաջացումը, ստրկատիրական հասարակության կազմավորումը և նրա հետագա ծավալումը[3]։

Իհարկե, ստրկատիրության զարգացումը այստեղ ընթացել էր ուրույն. անտիկ հասարակություններից տարբեր ուղիներով և ժամանակագրական այլ շրջանակներում։ Արդեն հելլենիստական դարաշրջանի նախօրեին ստրկատիրական հասարակարգի ծաղկուն շրջանը Արևելքի զարգացած ժողովուրդների համար պատմական անցյալ էր։ Դեռևս մ. թ. ա. I հազարամյակի սկզբներից այստեղ սկսել էին ծագել նոր երևույթներ։ Նախորդ ժամանակների հետ համեմատած դիտվում էին ստրուկների շահագործման ձևերի որոշ մեղմացում, ստրուկներին իրենց աշխատանքի արդյունքով շահագրգռելու փորձեր։ Հիմնականում այդ կատարվում էր նրանց մի որոշակի հողամասի կամ փոքր ձեռնարկության կցելու, նրանց որոշ գործիքներ տրամադրելու միջոցով և բերքի կամ ստացվածքի մի մասի տնօրինման հնարավորություն ընձեռելով։ Սակայն դրա փոխարեն, ստրուկների շահագործման այդ «մեղմացած» ձևերը տարածվում էին նաև ազատ բնակչության լայն զանգվածների վրա, առաջ բերելով նրանց շահագործման սաստկացում։ Դա ստրկատիրական հարաբերությունների էքստենսիվ զարգացման ու տարածման տենդենցն էր, որն իր հերթին շարժառիթներ էր ստեղծում պետության սահմանների ընդարձակման, նորանոր երկրների գրավման և նրանց բնակչության շահագործման ու կողոպտման համար։ Եթե նախկինում արտաքին երկրների շահագործման համար բավական էին պարբերական ռազմական ասպատակությունները և ավարառությունն ու գերեվարությունը, ապա այժմ անհրաժեշտ էր դարձել ծայրամասային երկրների միակցումն ու բյուրոկրատական ապարատի միջոցով հարկահանության կազմակերպումը։

Այս էր գլխավոր պատճառներից մեկը, որ մ. թ. ա. I հազարամյակի սկզբներից Առաջավոր Ասիայի պատմաբեմում պարբերաբար առաջանում, ուռճանում և կործանվում էին նոր տիպի պետությունները՝ ռազմական ուժի վրա հիմնված աշխարհակալ մեծ քաղաքական միավորումները, որոնք ընդգրկում էին ժամանակի քաղաքակիրթ աշխարհի մի ստվար մասը։ Այդ շարքում առաջինն էր ասորեստանյան մեծ տերությունը, որը մ. թ. ա. VIII դարի երկրորդ կեսի և VII դարի ընթացքում իշխում էր Առաջավոր Ասիայի մեծ մասում, նվաճելով նաև Եգիպտոսը։ Նմանօրինակ մի պետություն էր նաև Ուրար-

---

[3] Տե՛ս В. В. Струве, Исгория Древнего Востока, М., 1941 (երկրորդ հրատ.)։

տուն։ Սրանց անկումից հետո մ. թ. ա. VII դարի վերջին առաջացան երկու նոր աշխարհակալ տերություններ՝ Մարականը և Նոր-Բաբելականը, որոնք գոյատևեցին շուրջ մեկ դար, որից հետո Առաջավոր Ասիան միավորվեց Աքեմենյանների տիրապետության տակ։

Աքեմենյան պետությունը իր էությամբ չէր տարբերվում իր նախորդներից։ Հանդես գալով որպես զուտ քաղաքական միավորում, նա այդպիսին էլ մնաց մինչև իր անկումը։ Մ. թ. ա. IV դարի կեսերին նրան ամրապնդող քաղաքական կապերը և ռազմական ուժը է՛լ ավելի էին թուլացել, մինչդեռ զորեղացել էին կենտրոնախույս ձգտումները։ Փոքր Ասիայի բարձր զարգացած հունական քաղաքները, հարուստ Ասորիքը, հնադարյան Եգիպտոսն ու Բաբելոնը Աքեմենյան տերությանը խոչընդոտ էին համարում իրենց զարգացման ճանապարհին։ Նա նմանվում էր մի խարխլված տան, որը փուլ կգար ամենաթույլ երկրաշարժի դեպքում[4]։

Հարվածը հասավ արևմուտքից՝ Բալկանյան թերակղզուց։ Հունական հասարակությունը մոտեցել էր խնդրո առարկա դարաշրջանին, թեև ավելի կարճատև, բայց առավել փարթամ ուղիով և քաղաքակրթական էլ ավելի մեծ նվաճումներով, քան Արևելքը։ Ինքնիշխան պոլիսների՝ քաղաք-պետությունների, պետական ձևը, որը կյանքի էր կոչված Հունաստանի ստրկատիրության առանձնահատկություններով, ի տարբերություն Արևելքից, այստեղ ստացել էր իր գերագույն զարգացումը։ Պոլիսը սոսկ քաղաք չէր, այլ քաղաքը՝ իրեն շրջապատող և իրեն պատկանող գյուղատնտեսական տերիտորիայի և նրա բնակչության հետ միավորված։ Նա բաղկացած էր քաղաքային համայնքից, որն ընդգրկում էր իրական և պոտենցիալ ստրկատերերին, և շահագործվող դասակարգերից, որոնցից կարևորագույնը ստրուկներն էին և միջանկյալ հասարակաշերտերը։ Քաղաքային համայնքը լիիրավ ստրկատերերի մի կոլեկտիվ էր, որը թեև ներքնապես ենթարկված էր ունեցվածքային շերտավորման, սակայն ամբողջությամբ վերցրած հակադրված էր ստրուկների իրավազուրկ զանգվածին։ Պոլիսային դեմոկրատիան իսկական դեմոկրատիա չէր, քանի որ նրա շրջանակներից դուրս էր մնում բնակչության մի ստվար, երբեմն գերակշռող մասը՝ ստրուկները։ Դա ստրկատերերի դեմոկրատիա էր։ Բայց և այնպես, հասնելով իր զարգացման գագաթնակետին, այդ դեմոկրատիան հանգեցրեց քաղաքակրթության աննախընթաց վերելքի։

Մ. թ. ա. V դարը Հունաստանում քաղաք-պետությունների ծաղկման դասական ժամանակաշրջանն էր։ Այդ հարյուրամյակում հսկայական առաջընթաց կատարվեց տնտեսության և առևտրա-տնտեսական կապերի զարգացման ու ծավալման բնագավառում, ինչպես և աննախընթաց թռիչք՝ մշակույթի բնագավառում, ըստ որում ստեղծվեցին մարդկային հանճարի այնպիսի արժեքներ, որոնք ոչ միայն իրենց կատարելությամբ նմանը չունեին անցյալում, այլև չգերազանցված մնացին նաև հետագայում, ու իրենց խոր դրոշմը թողեցին համամարդկային մշակույթի զարգացման ողջ ընթացքի վրա։

Սակայն հաջորդ, IV դարը իր հետ բերեց պոլիսի՝ քաղաք-պետության ճգնաժամ[5]։ Ճգնաժամի էությունն էր հասարակության ազատ խավերի սոցիա-

4 Տե՛ս *М. М. Дьяконов*, Очерки истории древнего Ирана, М., 1961, էջ 66 և հաջ.։
5 Տե՛ս *А. Б. Ранович*, Эллинизм и его историческая роль, էջ 20 և հաջ.։

լական շերտավորման ծայրահեղ խորացումը, հասարակության բևեռացումը, որի հետևանքով քաղաքացիների միջին խավերը, որոնք կազմել էին պոլիսի հիմնական քաղաքական ու ռազմական ուժը, քայքայվում ու տարրալուծվում էին, նվազեցնելով պոլիսի հզորությունը և որպես ինքնիշխան պետություն պահպանվելու նրա ունակությունը, ինչպես և շահագործվող դասակարգերին՝ ստրուկներին, ինքնուրույնաբար, առանց արտաքին օգնության հնազանդ վիճակում պահելու նրա կարողությունը։ Այս երևույթների հիմքում ընկած էին ստրկատիրական շահագործման ձևերի զարգացման որոշ նոր հանգամանքներ, որոնք իրենց բնույթով համեմատելի են Առաջավոր Ասիայում նշմարվող տեղաշարժերի հետ։ Այստեղ ևս անհրաժեշտություն էր դառնում ստրուկների որոշ շահագրգռումը իրենց աշխատանքի արդյունքով, այսինքն՝ արտատնտեսային հարկադրման որոշ մեղմացումը, որը, սակայն, նույնպես ընթանում էր ի հաշիվ ստրկատիրական տիպի շահագործման մեջ հասարակության նորանոր շերտերի և նոր երկրների ներգրավման։

Այստեղ ևս նկատվում էր խոշոր պետական միավորումներ ստեղծելու ձգտումը, միավորումներ, որոնք քաղաք-պետության ճգնաժամի պայմաններում պիտի ապահովեին իշխող դասակարգի շահերի պաշտպանությունը։

Ահա այս տենդենցն էր, որ գլխավորեց երիտասարդ, բայց ռազմի մարզում կոփված մի պետություն՝ Բալկանյան թերակղզու կենտրոնական մասում ընկած Մակեդոնիան, որն իր շուրջը համախմբեց գրեթե բոլոր հունական քաղաք-պետությունները։ Միավորումը հարկադրական բնույթ էր կրում և քաղաքների «դաշնակիցներ» հորջորջումը չէր համապատասխանում նրանց փաստական դրությանը, բայց դա նրանց միակ հնարավոր գոյավիճակն էր։ Հետագայում պարզվելու էր, որ Մակեդոնիայի հարկադրական դաշնակցի դիրքն իսկ շատ շահավետ էր նրանց համար։

Այս զորեղ կոալիցիայի ստեղծման գործում մեծ ավանդ ուներ Մակեդոնիայի Փիլիպպոս թագավորը (359—336), որը եռանդուն պայքարի գնով մեկը մյուսի ետևից իր ազդեցության ոլորտն էր առել նախկինում ինքնիշխան հունական քաղաք-պետությունները։ Նրա որդի Ալեքսանդրը, որը 336 թվականին ժառանգեց գահը, արդեն կարող էր ստեղծված հզոր քաղաքական ու ռազմական ուժը գործի դնել Առաջավոր Ասիայի երկրները նվաճելու նպատակով։

Ձգտումը դեպի Արևելք, առաջին հերթին Փոքր Ասիայի արևմտյան եզրերի հունական քաղաքները պարսիկների լծից ազատագրելու համար, վաղուց արդեն V դարի հունա-պարսկական պատերազմներից հետո, արմատացել էր հունական աշխարհում։ Այդ ուղղությամբ արդեն արվել էին անհաջող կամ մասնակի հաջողությամբ պսակված փորձեր։ Եվ ահա 20-ամյա Ալեքսանդրը, կանգնելով միավորված Հունաստանի գլուխ, իրեն ի վիճակի էր զգում չափվելու աքեմենյան արքայից-արքայի հետ[6]։ Որպես առաջին քայլ, նրա առաջ ծառանում էր Փոքր Ասիայի հին հունական քաղաքները՝ Եփեսոսը, Միլետը և մյուսները նվաճելու խնդիրը։

---

6 Ալեքսանդր Մակեդոնացու և նրա արշավանքների մասին կա հսկայական գրականություն. նշենք վերջին մենագրություններից կարևորագույնը՝ *W. W. Tarn*, Alexander the Great, I—II, London, 1948:

**Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքները։** 334 թվականի գարնանը մակեդոնա-հունական զորքերը Ալեքսանդրի գլխավորությամբ անցան Հելլեսպոնտոսը և շուտով Գրանիկ գետի ափին պարտության մատնեցին պարսից փոքրասիական սատրապների միացյալ ուժերին։ Ճանապարհը դեպի հունական քաղաքները բաց էր, սակայն այդ քաղաքներից ամեն մեկը մի ամրոց էր և նրանց նվաճումը քիչ ջանքեր չպահանջեց։ Այնուհետև նա կտրեց անցավ Փոքր Ասիան և Կիլիկիայի վրայով իջավ Ասորիք, ուր նրան սպասում էր ինքը՝ Դարեհ Գ-ը, իր բազմահազար զորքերով։ Իսսոսի մոտ 333 թվականի գարնանը պարսից զորքը, չնայած թվական մեծ գերակշռության, ծանր պարտություն կրեց։ Դարեհը փախավ, հաղթողների ձեռքին թողնելով մորը, կնոջը և զավակներին։




Ալեքսանդր Մակեդոնացու դրամը

Այս հաղթանակից հետո Ալեքսանդրը մրցումը Դարեհի հետ հիմնականում շահած համարեց, ուստի և անմիջապես չհետապնդեց նրան, այլ շարունակեց իր շարժումը դեպի հարավ՝ Եգիպտոս։ Ճանապարհին նրան լուրջ խոչընդոտ հանդիսացավ փյունիկյան Տյուրոս քաղաքը, որը առափնյա կղզու վրա կառուցված դժվարամատույց մի ամրոց էր։ Ալեքսանդրին հաջողվեց այդ ամրոցը գրավել միայն 7-ամսյա պաշարումից հետո։ Իսկ Եգիպտոսը, ընդհակառակը, գրավվեց առանց զենքի միջամտության. Աքեմենյանների հետ նրա կապերը միշտ էլ չափազանց թույլ էին եղել։ Այստեղ Ալեքսանդրը իրեն հայտարարեց եգիպտական աստված Ամոնի որդի և փարավոնների ժառանգ, հիմնեց իր ստեղծած քաղաքներից անդրանիկը՝ Ալեքսանդրիան։

Դառնալով Ասիա, Ալեքսանդրը հետապնդեց Դարեհին։ Մինչ այդ նա մերժել էր Դարեհի՝ հաշտության երկիցս արված առաջարկները։ Ճակատամարտը

տեղի ունեցավ Ասորեստանում, Գավգամելա կոչվող բնակավայրի մոտ, 331 թվականի սեպտեմբերին։ Եվ նորից բախտը ժպտաց Ալեքսանդրին։ Ի դեպ, այստեղ, պարսկական զորքի կազմում, նրա դեմ մարտնչում էին նաև հայկական զորքերը՝ Օրոնտեսի (Երվանդ) և Միթրաուստեսի (Միհրվահիշտ) գլխավորությամբ[7]։

Դարեհը կրկին փախուստի դիմեց, փաստորեն հրաժարվելով իր տերությունից։ Ալեքսանդրը արշավեց դեպի Բաբելոն, այնտեղից դարձավ դեպի պարսկական տերության մայրաքաղաք Պերսեպոլիս, գրավելով Աքեմենյանների կուտակած անհամար գանձերը։

Սակայն Դարեհը դեռ կենդանի էր. Ալեքսանդրը շտապեց նրա ետևից և այն է՝ պետք է բռներ, երբ պարսից արքայի սատրապները, որ փախչում էին նրա հետ միասին, հենց իրենք սպանեցին նրան։

Շարունակելով արշավանքը, Ալեքսանդրը հասավ Միջին Ասիա՝ Աքեմենյանների տերության արևելյան ծայրամասը, որտեղ ենթարկվեց մեծամեծ փորձությունների։ Տեղի բնակչությունը նրա դեմ պարտիզանական պատերազմ ծավալեց, ջլատելով բանակի ուժերը։ Այնուամենայնիվ, հաղթահարելով դժվարությունները, հույն-մակեդոնական զորքերը ավարտեցին Միջին Ասիայի նվաճումը։ Ալեքսանդրը շարժվեց դեպի հարավ՝ Հնդկաստան, որ արդեն վկայում է նրա մտադրության մասին՝ հնարավորության դեպքում հասնել աշխարհի ծայրը։ Սակայն հակառակորդի հետ մի շարք ընդհարումներից ու այլ դժվարություններից հետո նվաճող բանակի ուժերը սպառվում են։ Զինվորները միահամուռ պահանջում էին վերադառնալ։ Սկսվեց դարձի ճանապարհը, որն ավարտվեց 324 թվականին։ Ալեքսանդրը հաստատվեց Բաբելոնում, որը հռչակել էր իր տերության մայրաքաղաք։

**Ալեքսանդրի տերության բնույթը:** Բաբելոնում նստած և իր անծայրածիր տերությունը կարգավորող Ալեքսանդրը արդեն այն զորավարը չէր, որը տասը տարի առաջ անցավ Հելլեսպոնտոսը և ոտք դրեց Ասիայի հողը։ Մակեդոնական արքունիքի պարզունակ պայմաններում դաստիարակված և հունական քաղաքակրթության ու դեմոկրատիայի կնիքը կրող նրա շրջապատը դժգոհությամբ ականատես էր լինում իրենց թագավորի, Արիստոտելի երբեմնի աշակերտի, աստիճանական վերասերմանը, մի բան, որ գոհունակություն էր պատճառում միայն նրա նոր շրջապատի պարսից մեծատոհմիկներին։ Թե՛ արտաքուստ և թե՛ ներքուստ երիտասարդ աշխարհակալը հետզհետե ստանում էր արևելյան դեսպոտի կերպարանք։ Նա իրեն հայտարարել էր Ամոնի որդի և. չլսված բան հելլենական աշխարհում, պահանջում էր, որ իրեն՝ կենդանի մարդուն, երկրպագեն որպես աստծու, իրեն ողջունելիս խոնարհվեն մինչև գետին։ Ալեքսանդրը յուրացրել էր արևելյան իշխողների ճիստուկացը, ամուսնացել տեղացի մի մեծատոհմիկի դստեր, իսկ իր հրամանատարներից շատերին ամուսնացրել պարսկուհիների հետ։ Նա բարձր պաշտոններ էր բաշխում պարսիկներին, իր զորքերը համալրում տեղաբնակներով և հրամանատարական պաշտոններ հանձնում նրանց ներկայացուցիչներին։

Ի պատասխան այս քայլերի, Ալեքսանդրի մակեդոնական շրջապատում,

---

7 *Arrian.*, III, 8, 5; 11, 7; *Curt. Ruf.*, IV, 12, 10, 12:

դեռևս արշավանքների բուռն պահին, տեղի ունեցան ընդվզումներ, մի քանի դավադրություններ և նույնիսկ մահափորձեր նրա դեմ, որոնց մասնակիցները և կասկածվողները՝ շատ դեպքերում նրա ամենամոտ բարեկամները՝ անխնա մահվան դատապարտվեցին։

Սակայն այս ամենը չի կարելի դիտել որպես անձնական քմայքի արտահայտություններ։ Ալեքսանդրը իր հետ Ասիա էր բերել մի քանի տասնյակ հազար զորք, որի մի մասը այնուհետև տեղավորել էր իր տերության տարբեր ծայրերում հիմնադրած քաղաքներում ու նորանվաճ գաղութներում։ Հունաստանից չէր դադարում դեպի Արևելք հոսել տարբեր խավերի մարդկանց՝ առևտրականների, արհեստավորների, մշակույթի գործիչների և, վերջապես, սոսկ արկածախնդիրների անընդհատ հոսքը, որը սակայն չէր կարող առանձնապես առատ լինել։ Եկվորները բնակություն էին հաստատում նորաստեղծ քաղաքներում և այլուր։ Իր հունամակեդոնական շրջապատի բազմաթիվ ներկայացուցիչներին Ալեքսանդրը բաշխում էր կենտրոնական և սատրապական իշխանության կարևորագույն պաշտոնները։ Բայց արդյո՞ք այդ բոլորը բավական էր մի այդպիսի ընդարձակ ու տասնյակ միլիոնավոր բնակչություն ունեցող տերություն կառավարելու համար։ Ո՛չ, իհարկե։ Եվ Ալեքսանդրը իր իշխանության հիմքն ամրապնդում էր տիրող դասակարգի մեջ ներգրավելով տեղաբնակներին, նույնիսկ բանակի մեջ մտցնելով նրանց և անձամբ իսկ մերձենալով ու հարազատանալով նրանց հետ։ Նա չէր կարող նաև չորդեգրել իր իշխանության պատմական նախորդ Աքեմենյանների և ավելի վաղ շրջանի տերությունների վարչական կառուցվածքն ու կառավարման ձևերը, քանի որ դրանք պայմանավորված էին Առաջավոր Ասիայում տիրող սոցիալ-տնտեսական կարգերով, և դրանց կիրառումը դյուրացնում էր նորանվաճ երկրների կառավարման գործը։

**Հելլենիստական պետություններ**: Այսուհանդերձ, մակեդոնացի աշխարհակալի ստեղծած տերությունը երկար կյանք չունեցավ։ Ալեքսանդրի մահից հետո, որ տեղի ունեցավ Բաբելոնում 323 թվականին, պետությունը շուտով մասնատվեց մի քանի խոշոր հատվածների, որոնց գլուխ կանգնեցին Ալեքսանդրի զորավարները (այսպես կոչված դիադոխները, այսինքն՝ ժառանգորդները), հիմնելով թագավորական դինաստիաներ։ Դրանցից կարևորագույններն էին. Սելևկյան տերությունը՝ հիմնված զորավար Սելևկոսի կողմից, որը ժառանգեց Ալեքսանդրի տերության տերիտորիայի գերակշռող մասը՝ նրա նվաճած ասիական գրեթե բոլոր հողերը. Եգիպտոսը, որին տիրացավ զորավար Պտղոմեոսը. բուն Մակեդոնիան՝ Հունաստանի հետ միասին. այստեղ էլ գահակալեցին զորավար Անտիգոնոսի հետնորդները[8]։

Արևելյան և հունական տարրերի միաձուլման Ալեքսանդրի կիրառած միջոցները թերևս վաղահաս ու որոշ չափով միամիտ էին, սակայն, դրանք պայմանավորված էին, ինչպես ասվեց, պատմական անհրաժեշտությամբ։

Պատմական նույն անհրաժեշտության առջև էին կանգնած Ալեքսանդրի ժառանգորդները, հատկապես (իրենց տերության բնույթի պատճառով) Սելևկ-

---

8 Տե՛ս В. В. Тарн, Эллинистическая цивилизация, էջ 131 և հաջ., А. Б. Ранович, Эллинизм и его историческая роль, էջ 79 և հաջ.։

յանները, որոնց մոտ տեղական և եկվոր տարրերի փոխթափանցումը շատ ավելի բնական ու կենսական ձևեր ընդունեց։

Անշուշտ, չի կարելի ժխտել, որ հելլենիստական միապետները նախապատվություն էին տալիս ու ավելի վստահում հույներին ու մակեդոնացիներին։ Առաջավոր Ասիայի բազմաթիվ քաղաքների միջև առավել արտոնյալները հելլենիստական պոլիսներն էին, և բանակի կորիզը կազմում էր մակեդոնական փաղանգը։ Սակայն օբյեկտիվ պայմանները, տեղական տարրի տնտեսական, սոցիալական ու քաղաքական հսկայական կշիռը միապետներին մշտապես ստիպում էին էթնիկական նկատառումներից անցնել դասակարգային տեսակետի և իրենց շուրջը համախմբել նաև տեղական իշխող վերնախավի ներկայացուցիչներին։ Դրա արտահայտությունն էր տեղական կիսաինքնավար քաղաքների, հարուստ տաճարների, կիսանկախ իշխանությունների բարգավաճումը, մի բան, որ աչքի է ընկնում մասնավորապես Սելևկյան լայնածավալ տերության մեջ։ Տեղական քաղաքները օգտվում էին գրեթե նույն իրավունքներից, ինչ որ հելլենիստական պոլիսները, տեղական տաճարները վերակառուցվում էին միապետների միջոցներով, նրանցից հարուստ նվերներ ստանում և այլն։ «Հելլենների» հակադրումը «բարբարոսներին», որ այնքան ուժեղ էր նախորդ, դասական շրջանում, այժմ չէր համապատասխանում հասարակության զարգացման հիմնական գծին, որովհետև այդպիսի հակադրման հետևողական իրագործումը կհանգեցներ իշխող դասակարգի տրոհման, տեղական շահագործող տարրի վտարման սոցիալական այն դաշինքից, առանց որի չէր կարող ապահովվել աշխատավոր բնակչության անխափան շահագործումը և պահպանվել պետության քաղաքական ամբողջականությունը։ Այդ է պատճառը, որ նոր պայմաններում հույների հակադրումը ոչ-հույներին շատ մեղմանում է և «հելլեն» տերմինը նշանակալից չափով սոցիալական երանգ ստանում[9]։

Այսպիսով, և՛ Ալեքսանդրի պետությունը, և՛ նրան հաջորդած հելլենիստական պետությունները ոչ թե հելլենների պետություններ էին Արևելքում, ինչպես պատկերվում է բուրժուական պատմագրության մեջ, այլ արևելյան պետություններ էին, հին արևելյան աշխարհակալ տերությունների շղթայի հետագա օղակներ՝ հելլենների եռանդուն մասնակցությամբ կամ ղեկավարությամբ։ Վերջիններիս առաջատար դերը, սակայն, իսկապես որ մեծ է եղել, և այն չի կարելի նսեմացնել։ Արևելքի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքում նրանք ներմուծել էին մի շարք ավելի զարգացած ու կատարյալ, որոշ դեպքերում նաև Առաջավոր Ասիայի համար նորություն հանդիսացող ձևեր, որոնք, մեծապես համապատասխանելով ստրկատիրական հասարակության զարգացման տվյալ աստիճանին, զորեղ խթան հանդիսացան Հին Արևելքի ժողովուրդների զարգացման տեմպերի արագացման գործում։

Տնտեսական ու մշակութային համահարթման ուժերը նոր չէ, որ սկսել էին գործել Առաջավոր Ասիայում, որը աչքի էր ընկնում երկրամասերի էթնիկական-մշակութային և տնտեսական մեծ խայտաբղետությամբ՝ ընդգրկելով և՛

---

9 Տե՛ս *Г. Х. Саркисян*, Самоуправляющийся город селевкидской Вавилонии, ВДИ. 1952, № 1, էջ 82։

զարգացած ստրկատիրական երկրներ, և՛ նախնադարյան համայնական շրջան ապրող ցեղեր, և՛ սրանց միջև ընկած տարաստիճան հասարակություններ։ Նրանց մակարդակի համահարթման գործում իրենց կարևոր ներդրումն էին աբել արդեն նախորդ աշխարհակալ տերությունները։ Սակայն նրանց նվաճումները այդ գործում անհամեմատելի է հելլենիզմի դարաշրջանում ձեռք բերված արդյունքների հետ։

Այս համառարապես վերաբերում Լ և՛ նեղ իմաստով հելլենիստական երկրներին, այսինքն՝ այն պետություններին, որտեղ հունական տարրը նշանակալից շերտ էր կազմում և որտեղ իշխանության գլուխ էին կանգնած հույնմակեդոնացիները, և՛ առաջավոր Ասիայի մնացյալ երկրներին։ Աքեմենյանների և Ալեքսանդր Մակեդոնացու տերությունների փլատակների վրա, ինչպես և սրանց հաջորդած Սելևկյանների տերության մասնակի քայքայման հետևանքով մի շարք ժողովուրդներ ինքնուրույնություն էին ձեռք բերել և ստեղծել իրենց անկախ պետությունները։ Հելլենիստական աշխարհի հյուսիսային եզերքում դրանցից պետք է նշել Հայաստանը, Ատրպատականը, Իբերիան, Կապադովկիան, Պոնտոսը, Բյութանիան, արևելքում՝ Պարթևների պետությունը։

Հունական էթնիկական տարրը այս կամ այն չափով ներթափանցել և արմատավորվել էր նաև այս երկրներում, բերելով իր հետ հելլենիզմի ազդեցությունը, սակայն հելլենիստական աշխարհի զարգացման պրոցեսի մեջ հիշյալ երկրների ներգրավման գործում վճռականը դա չէր։ Ավելի կարևոր էին նրանց ժամանակավոր քաղաքական միավորումը Ալեքսանդրի, այնուհետև երբեմն՝ Սելևկյանների տերությունների հովանու ներքո, դրան նախորդող և ուղեկցող ռազմական բախումներն ու դիվանագիտական և այլ շփումները։ Կարևոր էր մանավանդ տնտեսական առևտրական կապերի լայն զարգացումը, միջազգային տարանցիկ առևտրի ծաղկումը, որը հելլենիստական դարաշրջանի առավել բնորոշ գծերից մեկն էր։

Զարգացման տարբեր աստիճանների վրա գտնվող երկրամասերի մակարդակների համահարթման գործում ամենագլխավոր դերը պատկանում էր, իհարկե, քաղաքային կյանքի աննախընթաց զարգացմանը և հատկապես հելլենիստական պոլիսի տարածմանը՝ որպես սոցիալ-տնտեսական միավորի, որոշակի քաղաքական-վարչական կազմակերպության և մշակութային ձևերի կրողի։ Պետք է նշել, որ ինքնավար քաղաքների գաղափարը խորթ չի եղել Արևելքին, սկսած դեռևս շումերական ժամանակից։ Մ. թ. ա. I հազարամյակի համար նման քաղաքների օրինակ կարող են ծառայել Փյունիկիայի քաղաք-պետությունները, Ասորեստանի և Բաբելոնի մի շարք քաղաքներ և այլն։ Սակայն պոլիսը ուներ այնչափ բարձր զարգացած և մշակված և, որ կարևորագույնն է, ստրկատիրական հասարակարգի տվյալ փուլին այնչափ համապատասխանող կառուցվածք, որ չէր կարող իր ուժեղ դրոշմը չդնել արևելյան կյանքի ու հատկապես քաղաքային կյանքի վրա։ Մյուս կողմից, արմատավորվելով այստեղ, պոլիսը իր հերթին կրում էր տեղական պայմանների ազդեցությունը, որի հետևանքով էական էվոլյուցիա ապրեց և իր հունական նախատիպից նկատելի չափով հեռացավ ինչպես էթնիկական, այնպես էլ սոցիալտնտեսական կազմի տեսակետից, այս առումներով մոտենալով տեղական քաղաքներին։ Նոր հելլենիստական պոլիսը արդեն ոչ թե քաղաք-պետություն

էր, այլ քաղաք՝ արևելյան տիպի պետության մեջ, այստեղից ծագող բոլոր հանգամանքներով։

Հելլենիստական դարաշրջանի երեք հարյուրամյակների ընթացքում Արևելքում ստեղծվեցին հարյուրավոր նոր պոլիսներ[10], որոնցից մի քանիսը, ինչպես, օրինակ, Տիգրիսի Սելևկիան, Ավագն Անտիոքը, Ալեքսանդրիան հասան զարգացման այնպիսի աստիճանի, որ նսեմացրին Հունաստանի դասական քաղաքները՝ Աթենքը, Կորնթոսը և մյուսները։ Բացի դրանից, պոլիսային կյանքը ուժեղ ազդեցություն էր գործում հինարևելյան քաղաքների կյանքի վրա։ Վերջապես, Առաջավոր Ասիայի ծայրամասային երկրներում, որտեղ հունական էթնիկական տարրը աննշան էր, առաջացան բազմաթիվ նոր քաղաքներ, որոնք, պոլիսներ չլինելով հանդերձ, ձևավորվում էին պոլիսի ուժեղ ազդեցության ներքո։

Քաղաքային կյանքի ծաղկումը այդ երկրներում իր հերթին վճռող նշանակություն ուներ նրանց ամբողջ տնտեսական և սոցիալական զարգացման համար։ Քաղաքները շրջապատի բնակչությունը ներգրավում էին ավելի զարգացած սոցիալ-տնտեսական հարաբերությունների մեջ, դյուրացնում ապրանքափոխանակությունը, հասարակությունը դուրս կորզում բնատնտեսության գրկից և նրան ձգում դրամական հարաբերությունների ոլորտը։

Այս ճանապարհներով է, որ հելլենիստական ժամանակաշրջանում ստրկատիրական աշխարհի ծայրամասերը ընդգրկվում էին զարգացման հորձանուտի մեջ, օգտագործում կենտրոնական առաջատար երկրների դարավոր նվաճումները և այդպիսով էապես արագացնում իրենց առաջընթացը։

Չափազանց հետաքրքրական է ու հատկանշական հելլենիստական շրջանի Առաջավոր Ասիայի մշակութային զարգացման պատկերը։ Թեև տեղական երկրները ետ էին մնում հունական մշակույթի մակարդակից, սակայն այստեղ ևս նախորդ շրջանում արվեստի և գրականության բնագավառներում ձեռք էին բերված այնպիսի նվաճումներ, որոնք այսօր էլ զարմանք ու գեղարվեստական հաճույք են պատճառում ընթերցողին ու դիտողին։

Հելլենական մշակույթի հետ հինարևելյան մշակույթի խաչաձևումը չափազանց արգասավոր եղավ։ Ստեղծվեց այսպես կոչված հելլենիստական մշակույթը, որը միաժամանակ և՛ հունական էր, և՛ արևելյան։ Այն ընդգրկում էր երևույթների մի շատ լայնածավալ շրջան, ուր հունական և տեղական տարրերի հարաբերակցությունը փոփոխվում ու տարբեր երանգներ էր ընդունում բնագավառից բնագավառ, ինչպես և երկրից երկիր։

Խաչաձևման հետևանքով ստեղծվեց մի մշակույթ, որը, ի տարբերություն նախորդ պատմական դարաշրջանի մշակույթի, չգիտեր տեղական, պետական ու էթնիկական սահմաններ, տարածված էր հսկայական տերիտորիայի վրա և որոշ իմաստով կրում էր աշխարհա-քաղաքացիական (կոսմոպոլիտիկ) բնույթ։ Դրա փոխարեն, սակայն, այն սահմանափակ էր հասարակական-սոցիալական առումով. այդ մշակույթը բոլոր երկրներում էլ տիրող դասակարգի և քաղաքա-

---

[10] *W. Tscherikower*. Die hellenistischen Städtegründungen von Alexander dem Grossen bis auf Römerzeit, „Philologus", Supplementband. XIX, H. 1, Lpz.. 1927.

ին բնակչության (գերազանցապես՝ վերնախավի) մշակույթն էր, և այն գրեթե չէր ներթափանցում ժողովրդական լայն զանգվածների ընդերքը։ Այսուհանդերձ, նրա դերը մարդկային քաղաքակրթության զարգացման մեջ շատ մեծ է և ակնբախ։

Հելլենիստական աշխարհի զարգացման այս բոլոր օրինաչափությունները և յուրահատկությունները այս կամ այն ձևով դրսևորվել են նաև Հայաստանում, որն այդ աշխարհի կարևորագույն երկրներից մեկը հանդիսացավ, և մեծ դեր են կատարել հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական ու քաղաքական, ինչպես և նրա մշակույթի պատմության մեջ։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԱՂ ՀԵԼԼԵՆԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՆԿԱԽ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ

*Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքները և դրանց հետևանքները Արևելքում ուժեղ արձագանքներ ունեցան ինչպես ժամանակակից, այնպես էլ հետագա դարերի պատմագիրների երկերում։ Հունական և հռոմեական պատմիչների աշխատություններում այդ կապակցությամբ պահպանված տեղեկությունները ու ակնարկները թույլ են տալիս ընդհանուր պատկերացում կազմելու մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսի Հայաստանի պատմության մասին[1]։ Երրորդ դարի աղբյուրների հաղորդած տվյալները ավելի սուղ են։ Այդ հանգամանքը վերաբերում է ոչ միայն Հայաստանի, այլև այդ ժամանակաշրջանի ամբողջ Փոքր Ասիայի պատմության աղբյուրներին, որոնք անհետացել են[2], բացառությամբ Պոլիբիոսի պատմության, որի մեջ, սակայն, շարադրանքը սկսվում է միայն մ. թ. ա. 220 թվականից և Հայաստանի անցյալին վերաբերող տեղեկությունները, կարևոր լինելով հանդերձ, սահմանափակ են։*

*Սակայն անփոխարինելի տվյալներ են մատուցում վիմագրական նյութերը։ Կոմմագենե երկրի արձանագրությունները իրազեկ են դարձնում Երվանդունի իշխողների հաջորդականության մասին (թեև ոչ լրիվ) և փաստորեն այն առանցքն են, որի շուրջը հնարավոր է խմբավորել մյուս աղբյուրների միջնորդությամբ մեզ հասած սուղ տեղեկությունները[3]։ Առանձնապես կարևոր են Արմավիրի հունարեն արձանագրությունները, որոնք լուսաբանում են թե՛ մշակութային (լեզու, դրականություն, պաշտամունք) և թե՛ քաղաքական ու սո-*

---

[1] *Դրանք են Փլավիոս Արրիանոսի «Ալեքսանդրի արշավանքը» (մ. թ. II դար), Դիոդոր Սիկիլիացու «Պատմական գրադարանը» (մ. թ. ա. I դար), Կուրտիոս Ռուփոսի «Մեծն Ալեքսանդր Մակեդոնացու պատմությունը» (մ. թ. I դար), Պլուտարքոսի «Զուգակշիռքը» (մ. թ. II դար) և այլն։*

[2] *Տես E. Meyer.* Die Grenzen der hellenistischen Staaten in Kleinasien, Zürich, 1925. *Ներածականը։*

[3] *Տես K. Humann und O. Puchstein,* Reisen in Kleinasien und Nordsyrien, Berlin, 1890. Textband, *էջ 308—309*։

ցիալ-տնտեսական պատմության հարցեր[4]։ Մեծ արժեք են ներկայացնում նաև Մովսես Խորենացու «Հայոց պատմության» Երվանդ և Արտաշես թագավորներին վերաբերող նյութերը, որոնց մի մասի արժանահավատությունը այժմ ապացուցված է[5]։

Կարևոր նշանակություն ունի այն հարցը, թե ազատագրվելով պարսկական տիրապետությունից, Հայաստանը արդյո՞ք ենթարկվեց Ալեքսանդր Մակեդոնացու իշխանությանը, թե՞ կարողացավ պահպանել և ամրապնդել ձեռք բերած անկախությունը։ Ալեքսանդրի ռազմերթի հանրահայտ նկարագրություններից երևում է, որ մակեդոնական արշավող բանակը գտնվել է Հայկական լեռնաշխարհի հարևանությամբ նախ՝ Հալիս գետի ափերին, ապա՝ Հյուսիսային Ասորիքում և հյուսիսային Միջագետքում։ Ալեքսանդրը Մենոն զորավարի գլխավորությամբ նույնիսկ մի ջոկատ է ուղարկել հյուսիս-արևմտյան Հայաստանի Սպեր գավառը, որը սակայն կատարյալ պարտություն է կրել, իսկ ինքը՝ Մենոնը՝ սպանվել[6]։

Ալեքսանդր Մակեդոնացու թողած հսկայածավալ ժառանգության բաժանման մանրամասն ցուցակները հասել են մեզ ու պատկերացում են տալիս, թե այս կամ այն երկիրը զորավարներից ու բարձրաստիճան պաշտոնյաներից ում է բաժին ընկել[7]։ Հատկանշական է, որ դրանց մեջ Հայաստանը ոչ մի անգամ չի հիշատակվում։ Այսպես, Արրիանոսը, որ առանց որևէ միջնորդի օգտվել է Մակեդոնացու զորարշավի օրագրերից, ինչպես նաև արշավի անմիջական մասնակիցներ Պտղոմեոսի և Արիստոբուլոսի աշխատություններից, բազմիցս խոսելով Ալեքսանդրի նվաճումների մասին և մանրամասն թվարկելով հպատակեցված երկրները, Հայաստանի անունը չի տալիս։ Ստրաբոնը հաղորդում է, որ Հայաստանին հնում տիրել են պարսիկները, մակեդոնացիները, սելևկյանները[8]։ Սակայն համապատասխան հատվածի նորագույն մեկնաբանությունները ցույց են տալիս, որ վերոհիշյալ թվարկման մեջ ըստ էության նկատի են առնված սոսկ պարսիկները և մակեդոնացիները, ընդ որում վերջինների անվան տակ պետք է հասկանալ ոչ թե Ալեքսանդր Մակեդոնացուն, այլ նույն Սելևկյաններին, մի նույնացում, որը հաստատվում է բազմաթիվ, այդ թվում նաև հենց Ստրաբոնի բերած փաստերով[9]։

---

4 Տե՛ս *А. И. Болтунова*, Греческие надписи Армавира, ИАФАН, 1942, № 1—2; Հ. Մանանդյան, *Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946*։ *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953, էջ 104—156։

5 Տե՛ս Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, Երևան, 1944, էջ 124 և հաջ.*։ *Նույնի՝ Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946, էջ 11 և հաջ.*։ Գ. Խ. Սարգսյան, *Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, գլուխ III*։

6 Տե՛ս *Strabo*, XI, 14, 9.

7 Տե՛ս *P. Jouguet*, L'imperialisme macedonien et l'hellenisation de l'Orient, Paris, 1927, էջ 140—142։

8 Տե՛ս *Strabo*, XI, 14, 15:

9 Տե՛ս *Ch. Edson*, Imperium Macedonicum. The Seleucid Empire and the literary evidence, „Classical Philology", VIII, № 3, July, 1958, Chicago:

*Ճիշտ է, պահպանվել են և այնպիսի վկայություններ, որոնցից կարելի կլիներ եզրակացնել, թե Հայաստանը ենթարկված է եղել Ալեքսանդր Մակեդոնացուն, մտնելով նրա կայսրության կազմի մեջ։ Այդպիսին է տեղեկությունը Լիդիայի նախկին կառավարիչ Միթրենեսին Հայաստանի սատրապ նշանակելու մասին[10]։ Բայց այդ տեղեկությունը ոչ միայն չի հաստատվում որևէ այլ փաստով, այլ հերքվում է մի շարք իրարից անկախ աղբյուրներից քաղված տվյալների համադրությամբ, որից երևում է, որ մակեդոնական արշավանքի օրերին կամ նույնիսկ դրանից էլ առաջ, Հայաստանում շարունակաբար իշխում էր միևնույն անձնավորությունը՝ սատրապ Օրոնտեսը, որը Աքեմենյան տերության կործանումից հետո հանդես եկավ որպես երկրի անկախ կառավարիչ ու թագավոր[11]։*



Արմավիր բլուրը հարավ-արևմուտքից

*Հայտնի չէ, թե ինչ աղբյուրներով է առաջնորդվում այնպիսի արժանահավատ պատմիչ, ինչպիսին Պլինիոսն է[12], երբ պնդում է, թե դեպի Արևելք արշավելիս մակեդոնական զորքը անցել է ի թիվս այլ երկրների «նաև Հայաստանի, Իբերիայի, Աղվանքի վրայով, հաղթահարելով Տավրոսից բացի, նաև Կովկասի լեռնաշղթան»։ Սակայն արշավանքի երթուղին, ինչպես արդեն նշվեց, լավ հայտնի է և վերականգնվում է մի շարք վստահելի հեղինակների տվյալների հիման վրա։ Այն երբեք չի անցել ոչ Հայաստանի, ոչ էլ անդրկովկասյան երկրների տերիտորիայով։ Այստեղ Պլինիոսը Կովկասը պարզապես շփոթում է Պամիրի (Պարոպամիս-Կովկասի) հետ։*

---

10. *Տե՛ս Arrian.*, III, 16; *Curt. Ruf.*, V. 1:

11 *Այս հարցերի մասին տե՛ս C. Toumanoff*, The Orontids of Armenia („Studies in Christian Caucasian History"), Washington, *1963 և Գ. Տիրացյանի գրախոսականը, «Բանբեր Երևանի համալսարանի», 1967, № 2։*

12 *Տե՛ս Plin.*, N. H., IV, 10:

*Այսպիսով, եղած վկայությունների համադրումը բերում է այն եզրակացության, որ Հայաստանը, որը Աքեմենյանների անկումից հետո վերականգնել էր իր երբեմնի անկախությունը, չէր ենթարկվել Ալեքսանդր Մակեդոնացուն։*

*Հայկական թագավորության վերականգնումը կարևոր երևույթ էր հայ ժողովրդի պատմական զարգացման ճանապարհին։ Մ. թ. ա. VI դարի թագավորության վերացումից հետո Հայաստանը երկու հարյուրամյակից ավելի գտնըվում էր Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ներքո։ Հայկական թագավորության վերականգնումը, անկախ պետության կազմավորումը, արդյունք էին ոչ միայն Աքեմենյանների տիրության անկման, այլև Հայաստանի հասարակության ներքին զարգացման, նրա հասունացման, պետական իշխանության նոր, ավելի բարդ ձևերը ստեղծելու ունակության։ Այս երևույթը օրինաչափ էր նաև ընդհանուր, Առաջավոր Ասիայի քաղաքական կյանքի զարգացման առումով, քանի որ այստեղ նույն ժամանակաշրջանում ձևավորվել էին մի շարք ուրիշ անկախ պետություններ։*




Արմավիրի միջնաբերդի հատակագիծը

**Երվանդունիները, նրանց ծագումը:** *Աքեմենյանների պետության փլուզումը բացի իր այլևայլ հետևանքներից, հանգեցրեց նաև Հայաստանի անկախացմանը։ Այստեղ որպես ինքնուրույն թագավորներ հաստատվեցին նախկին սատրապները Երվանդունի տոհմից։ Դրանով հայ պետականության զարգաց-*

ման պրոցեսը, որ ընդհատվել էր VI դարի վերջին, այժմ գտավ իր շարունակությունը։ Նոր թագավորության իրավական հիմքերի տեսակետից մեծ նշանակություն ուներ իշխող դինաստիայի ազգակցական կապը Աքեմենյանների տոհմի հետ, որ կարևոր պայման էր հելլենիստական Առաջավոր Ասիայի թագավորական դինաստիաների իշխանության օրինականությունը շեշտելու համար։

Հայտնի է, որ մայրական գծով Հայաստանի Երվանդունի թագավորները իսկապես սերվում էին Աքեմենյաններից (Արտաքսերքսես Բ-ի դստեր՝ Հռոդոգունեի միջոցով, որը Երվանդունի թագավորների նախնի՝ սատրապ Երվանդի կինն էր)[13]։ Ստրաբոնը իր հերթին Երվանդունիներին սերված էր համարում Դարեհ Ա-ի զինակիցներից մեկից՝ Հիդարնեսից[14]։

Նաև այն կարծիքն է արտահայտվել, թե Երվանդունիների դինաստիան իր ծագմամբ կապված է եղել մ. թ. ա. VI դարի Հայաստանի թագավորների հետ[15]։ Այդ տեսակետի օգտին վկայում է երկու դինաստիաներում Երվանդ անվան առկայության փաստը։

Մ. թ. ա. V—IV դարերի եզրին Հայաստանի կառավարիչներ Օրոնտասի և Տիրիբազի մասին Քսենոփոնի հանրահայտ տեղեկություններից հետո չնչին վկայություններ ունենք հաջորդ տասնամյակների իշխողների մասին։

Տրոգոս Պոմպեոսի հաղորդման համաձայն[16], 360-ական թվականներին Հայաստանի սատրապի պաշտոնը վերստանձնել էր Քսենոփոնի հիշատակած Օրոնտասը[17]։

Հայտնի է, որ Աքեմենյան Արտաքսերքսես Գ Օքոս թագավորի օրոք Հայաստանի սատրապ էր Կոդոմանոսը, հետագայում՝ Դարեհ Գ-ը, Աքեմենյան վերջին թագավորը (336—330)։

Գավգամելայի ճակատամարտին հայկական այրուձին և հետևակը մասնակցում էին Օրոնտեսի և Միթրաուստեսի գլխավորությամբ[18]։ Այս տեղեկությունները հիմք են տալիս կարծելու, որ այդ ժամանակ հայկական սատրապիայի կառավարիչն էր մ. թ. ա. V դարի վերջի և IV դարի սկզբի Հայաստանի սատրապի նույնանուն որդին կամ թոռը։

Կարելի է պնդել, որ Աքեմենյան կայսրության կործանումից անմիջապես հետո՝ 331—330 թվականներին, այդ Օրոնտեսը (Երվանդը) իրեն հայտարարեց Հայաստանի անկախ կառավարիչ[19]։ Օրոնտեսին հիշատակում են Դիոդոր Սիկիլիացին և Պոլիենոսը[20] 317 թվականի դեպքերի, դիադոխների պատերազ-

---

13 Տե՛ս Xen., Anab., III, 14, 13. Plut., Artax., 33; K. Humann und O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 283, 305։

14 Տե՛ս Strabo, XI, 14, 15:

15 Տե՛ս С. Т. Еремян, К вопросу об этногенезе армян, ВИ, 1951, № 7.

16 Տե՛ս Trog., Epith. X:

17 Տե՛ս W. Judeich, Kleinasiatische Studien, Marburg, 1892, էջ 224։

18 Տե՛ս Arrian., III, 8, 5:

19 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, Ա, Երևան, 1944, էջ 92—93։

20 Տե՛ս Diod., XIX. 23; Polyaen., Strateg., IV. 8:

մի կապակցությամբ։ Շատ հնարավոր է, որ նույն Դիոդորի հիշատակած Արմենիայի Արդոատես թագավորը, որի օգնությամբ մ. թ. ա. IV դարի վերջերին Կապադովկիայի նախկին սատրապ Արիարաթեսը բարձրացավ հայրենի գահի վրա, նույն ինքը Օրոնտիսն էր՝ արդեն թագավորի տիտղոսով[21]։

Անտիոքոս Կոմմագենացու Նեմրութ-դաղում թողած արձանագրություններից ևս պարզվում է, որ IV դարի վերջերին Հայաստանում իշխում էր Արոանդես (Երվանդ) թագավորը։ Սա հիշատակվում է Անտիոքոս Ա-ի նախնիների շարքում՝ Հայաստանի Արոանդես սատրապից հետո[22]։



Արմավիրի միջնաբերդի ճարավային պարսպի մի ճատված

Մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին Հայաստանում իշխողը հիշատակվում է նաև Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ։ Խորենացին գրում է, որ Սանատրուկ թագավորի մահից հետո, Հայաստանում ծագեց խառնաշփոթություն «քանզի Երուանդ ոմն, որդի կնոջ Արշակունւոյ, թագաւորէ յութերորդ ամի Դարեհի վերջնոյ»։ «Հայոց պատմության» տվյալ գլուխներում պատկերված անձնավորություններն ու իրադարձությունները Խորենացին տեղադրում է մ. թ. ա. I դարում, բայց ինչպես ցույց է տվել Հ. Մանանդյանը, իրականում խոսքը այստեղ մ. թ. ա. III—II դարերի եղրի եղելությունների մասին է[23]։ Այս

21 Տե՛ս Diod., XXXI, 19. Այս վկայության շուրջը ծագած վեճերի մասին տե՛ս Հ. Մանանդյանի նույն աշխատությունը, էջ 97—99։

22 Տե՛ս K. Humann und O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 307։

23 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1930, էջ 96—98։ Գ. Տիրացյան, Երվանդունիները Հայաստանում, Տեղ. ՀԳԱՀԳ, 1958, № 6, էջ 68։

*ճիշտ մեկնաբանությանը պետք է ավելացնել նաև հետևյալը. փաստերը ցույց են տալիս, որ Խորենացու հիշատակած Երվանդը մարմնավորում է ինչպես վերջին Դարեհի (այսինքն՝ Դարեհ Գ Կոդոմանոսի) թագավորության 8-րդ տարում գահակալած Երվանդին, որը նախապես որպես Հայաստանի սատրապ մասնակցել էր Գավգամելայի ճակատամարտին, այնպես էլ մ. թ. ա. III դարի վերջին թագավորած և Արտաշես Ա-ի կողմից տապալված Երվանդին։ Ուշադրության է արժանի նաև այն, որ Երվանդը, ըստ Խորենացու, մոր կողմից թագավորական՝ Արշակունի, ծագում ուներ։ Այս տեղեկությունը ներդաշնակում է այն փաստի հետ, որ ինչպես ասվեց, Հայաստանի սատրապ Օրոնտասը ամուսնացած էր աքեմենյան թագավոր Արտաքսերքսես Բ-ի դստեր՝ Հռոդոգունեի հետ, հետևաբար նրա որդին մոր կողմից թագավորական ծագում ուներ։ Մովսես Խորենացու նշած Արշակունի ծագումը պիտի հասկանալ իբրև ծագում պարսկական գահակալի տոհմից։*

**Փոքր Հայքի կազմավորումը:** *Աքեմենյան տերության անկումից հետո Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան հատվածում կազմակերպվում է հայկական քաղաքական նաև երկրորդ միավորը՝ Փոքր Հայքը։ Գավգամելայի ճակատամարտի նկարագրության մեջ խոսելով հայերի մասնակցության մասին, Կուրտիոս Ռուփոսը Մեծ Հայքի կողքին հիշատակում է նաև Փոքր Հայքը[24]։ Նույն ճակատամարտին վերաբերող՝ Արրիանոսի արդեն մեջ բերված տվյալներից երևաց, որ Օրոնտեսից բացի, հայերին առաջնորդում էր նաև Միթրաուստեսը (Միհրվահիշտ)։ Վերջինս, ամենայն հավանականությամբ, հենց Փոքր Հայքի կառավարիչն էր։*

*Ի տարբերություն Երվանդունիների հայկական պետության, Փոքր Հայքը շուտով ենթարկվեց մակեդոնացիներին։ Ալեքսանդրի մահից հետո Բաբելոնի 323 թվականի ժողովում, որտեղ կատարվեց կայսրության առաջին բաժանումը, որոշվեց նվաճել և Էվմենես Կարդիացուն հանձնել Հայաստանի հարևան Կապադովկիան։ Այս երկրի մի մասը նվաճել էր դեռևս Ալեքսանդրը, սակայն նրա հեռանալուց հետո Կապադովկիայի ինքնուրույն իշխան էր հռչակվել նախկին սատրապ Արիարաթեսը։ Բաբելոնի ժողովի վերոհիշյալ որոշումը իրագործեց կայսրության խնամակալ Պերդիկկասը, որը նվաճեց երկիրը և հանձնեց Էվմենեսին[25]։ Այստեղից մակեդոնացիները փորձեցին տիրանալ Փոքր Հայքին, որը Կապադովկիայի անմիջական հարևանն էր։ 322 թվականին Նեոպտոլեմոսը ուղղվում է Փոքր Հայք, բայց ժողովուրդը դիմադրում է նրան[26]։ Միայն իրեն՝ Էվմենեսին է հաջողվում հնազանդեցնել երկիրը։ Պլուտարքոսը պատմում է, որ դիադոխների պատերազմների ժամանակամիջոցում Էվմենեսը Փոքր Հայքի և Կապադովկիայի զորքերի գլխավոր հրամանատարն էր։ Էվմենեսի հեռանալուց և նրա սպանությունից հետո Փոքր Հայքը հավանաբար անցնում է մյուս դիադոխներին։*

*Փոքր Հայքի հաջորդ ժամանակաշրջանի պատմությունը սկզբնաղբյուրներում համարյա լուսաբանված չէ։ Ստրաբոնի վկայությամբ Փոքր Հայքը*

---

[24] *Տե՛ս* *Curt. Ruf.*, IV, 12:

[25] *Տե՛ս* *Plut.*, Eumenes, III, 3:

[26] *Նույն տեղում, III, 4։*

*կառավարում էին սեփական իշխանները։ Որոշ հետաքրքրություն են ներկայացնում Տևրիկի և Սեբաստիայի միջև ընկած Աղջակալա կոչվող վայրի երկլեզվյան (հունարեն և արամեերեն) արձանագրության կցկտուր տվյալները, որոնցից երևում է, որ երկիրը կառավարվում էր սատրապի ձեռքով։ Արձանագրությունը, որը հավանաբար վերաբերում է մ. թ. ա. III դարին, հաղորդում է նաև Արանդա քաղաքի հիմնադրման մասին*[27]։



**Արմավիրի միջնաբերդի պարսպի վեմերը «ծիծեռնակապոչի» ձևի փոսվածքներով կապերի համար**

**Երվանդունիների հայկական պետության տերիտորիան։** *Արդեն նախորդ դարերում Հայկական բարձրավանդակի զգալի տարածություններ ներգրավված էին հայ ժողովրդի կազմավորման պրոցեսի մեջ։ Հայկական ցեղերը տարածվել էին ու հաստատվել բազմաթիվ երկրամասերում, թափանցել դեպի աշխարհագրական և տնտեսական մի միավոր կազմող Հայկական լեռնաշխարհի բնական սահմանները։ Երվանդունիների պետության առաջացումը ժողովրդակազմավորման ավարտված պրոցեսի քաղաքական ձևավորման մի նոր փուլ հանդիսացավ։*

*Որպես տնտեսական հիմք պետությունը ժառանգել էր Հայկական սատրապության երկրագործության, անասնապահության և արհեստագործության զարգացման համեմատաբար բարձր մակարդակը, որի մասին վկայում են Քսենոփոնը և առկա հնագիտական նյութերը։ Հայկական պետության տերիտորիալ հիմքը Հայկական սատրապությունն էր, որի սահմանների մասին որոշ տեղեկություններ են պահպանվել։*

[27] *Th. Reinach*, „Revue des études grecques". XVII, 1905, *էջ 135։ C. F. Lehmann-Haupt*, „Satrap" *հոդվածը* Pauly—Wissowa—Kroll „Realencyklopädie der Altertumswissenschaft", Neue Bearbeitung, 1924, *էջ 90— 91։*

Հայաստանի և Ատրպատականի սահմանը հավանաբար անցնում էր Արաքսի միջին հոսանքի շրջանից Ուրմիա և Վանա լճերի միջով մինչև Ջերմ գետի (Բոհտան-սու) ակունքների շրջանը։ Ջերմ գետով հարավային սահմանը ձգվում էր դեպի արևմուտք և շարունակվում Արևմտյան Տիգրիսով կամ Մասիոս (Տուր-աբդին) լեռնաշղթայով մինչև Եփրատ։ Հայաստանի արևմտյան սահմանի մի մասը պետք է անցած լինի Ամանոսի լեռներով և Կոմմագենե երկրի արևմտյան եզրով։ Եփրատ գետից սահմանը անցնում էր Եկեղիքի հարավային մասով։ Արևմտյան Եփրատից դեպի արևմուտք և հյուսիս գտնվում էր Փոքր Հայքը՝ մինչև Կապադովկիա և Պոնտական լեռները։ Եփրատի վերին հոսանքից հյուսիսային սահմանը ընթանում էր դեպի արևելք, հավանաբար՝ Ճորոխով, իր մեջ ամփոփելով արդեն փասիանների և հեսպերիտների, ինչպես նաև տաոխների երկրները։ Հայկական պետության հյուսիս-արևելյան սահմանը ամենայն հավանականությամբ Կուր գետն էր։ Արևելյան Անդրկովկասի այդ ժամանակաշրջանի պատմության տվյալներից երևում է, որ Կուր գետից արևելք ձգվող տարածությունները, որտեղ բնակվում էին աղվանական և կասպիական բազմաթիվ քոչվոր ցեղեր, գտնվում էին մարական սատրապության և ապա Ատրպատականի պետության հսկողության տակ։

Այսպիսով, մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին Հայկական լեռնաշխարհում առաջացած Երվանդյան պետության կազմի մեջ մտնում էին Կոմմագենեն, Ծոփքը, Աղձնիքը, Մոկաց աշխարհը, Վասպուրականի զգալի տարածությունները և Տուրուբերանը, Այրարատը, Գուգարքը, Տայքը, Սյունիքը, Արցախը և Ուտիքը։

Հայկական պետականության ոլորտի մեջ Արարատյան դաշտի ներգրավման և այդ դաշտի տնտեսական մեծ նշանակության հետևանքով պետության մայրաքաղաքը, ինչպես երևում է Մովսես Խորենացու հաղորդած տվյալներից, հաստատված էր Արմավիրում։ Նախաուրարտական և հատկապես ուրարտական շրջանում ստեղծված ջրանցքների խիտ ցանցը նորից կենդանություն է առնում, զարկ տալով Արարատյան դաշտի հնամենի երկրագործությանը։ Նախալեռնային և լեռնային արոտների առկայությունը ապահովում էր անասնապահության զարգացումը, իսկ Արմավիրի աշխարհագրական դիրքը՝ առևտրական լայն կապերի մեծ հնարավորություն էր ընձեռում։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՒ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ՕՐՈՔ

Աղբյուրներում պահպանված մի քանի վկայություններից ելնելով, կարելի է բնորոշել Երվանդունիների հայկական պետության դիրքը Առաջավոր Ասիայում, Ալեքսանդր Մակեդոնացու հաջորդների օրոք։

Ինչպես մատնանշվեց նախորդ գլխում, Ալեքսանդրը իշխանության սոցիալական բազան ամրապնդելու նպատակով իր տերության վարչական զինվորական ապարատի մեջ որոշ տեղ էր հատկացնում նաև պարսկական ազնվականությանը։

*Այս քաղաքականությունը մակեդոնական ազնվականության մի ստվար մասի կողմից հանդիպում էր թշնամական վերաբերմունքի, որ իր արտահայտությունը գտավ նաև Ալեքսանդրի դեմ կազմակերպված մի քանի դավադրություններում։*

*Սակայն ազնվականության մյուս մասը, եթե չյուրացրեց էլ Ալեքսանդրի արևելյան քաղաքականության սկզբունքները, այնուհանդերձ ստիպված եղավ հետևել նրա օրինակին։ Դա այն մասն էր, որը Ալեքսանդրի մահից հետո սկսեց պայքար մղել տերության ամբողջականության պահպանման համար։ Այդ խմբավորման ղեկավարներն էին տերության խնամակալ Պերդիկկասը, ինչպես նաև Էվմենես Կարդիացին և Պոլիպերքոնը։*



Գուճագարդ կավանոթ. Արմավիր

*Հակառակորդ խմբավորումը ձըգտում էր, ընդհակառակը, տերության մասնատման, ինքնուրույն պետությունների ստեղծման։ Այս խմբավորման գլխավոր դեմքերից էր Անտիգոնոս Միականին։*

*Միանգամայն բացատրելի է, որ Հայկական պետության վերնախավը՝ Երվանդի գլխավորությամբ, փորձում էր օժանդակել այն ուժերին, որոնք ամեն կերպ աշխատում էին պահպանել Ալեքսանդրից ժառանգած իրավիճակը և համեմատաբար տանելի պայմաններ ապահովել հպատակ ժողովուրդների համար, և հարձակումներից պաշտպանելու երաշխիք՝ անկախություն ձեռք բերած պետությունների համար։ Միևնույն ժամանակ պետք է ենթադրել, որ նույն Երվանդը թշնամական վերաբերմունք պետք է դրսևորեր մակեդոնական ազնվականության անզիջողական ձգտումների նկատմամբ, քանի որ այդ ազնըվականությունը նվաճողական լայն ծրագրեր ուներ։ Հատկապես մեծ վտանգ էր սպառնում Անտիգոնոսի արդեն ուրվագծվող միապետությունը։ Հայաստանի նման դիրքորոշումը ի հայտ է գալիս մի շարք փաստերից։ Այդ երևում է նախ և առաջ Դիոդորոս Սիկիլիացու այն վկայությունից, ըստ որի Էվմենեսը պատերազմական գործողությունների ընթացքում 320 թվականին անհաջողության մատնվելով Կապադովկիայում, որոշում է ապաստանել Հայաստանում և դաշնակիցներ ձեռք բերել այնտեղ[28]։ Ապա, ինչպես հայտնի է, Անտիգոնոսի դեմ ուղղված Էվմենես Կարդիացու և Պոլիպերքոնի՝ Ալեքսանդրի ամենահին զինակցի և պետության գլխավոր հրամանատարի խմբավորմանը հարում էին Ասիայի*

---

[28] Տե՛ս *Diod.*, XVIII, 1, 40, 41:

սատրապները, որոնց ղեկավարն էր Պևկեստասը՝ Ալեքսանդրի արքայական դնդի նախկին անդամը։ Պևկեստասը երկար տարիներ վարում էր Պերսիսի (Պարսք) սատրապությունը և մեծ հեղինակություն էր վայելում ինչպես բնիկների, այնպես էլ մակեդոնացիների մեջ[29]։ Երկու խմբավորումների միջև ծավալվող պատերազմական գործողությունների ընթացքում Հայաստանի կառավարիչ Օրոնտեսի անունից Պերսիսի կառավարիչ Պևկեստասին հասցեագրված նամակից[30] ոչ միայն երևում է, որ Օրոնտեսը և Պևկեստասը լավ բարեկամներ են, այլև, որ Օրոնտեսը բարեհաճ դիրք է բռնել էվմենեսի խմբավորման նկատմամբ[31]։ Հայաստանի դիրքորոշման մասին այդ ակնարկները հաստատվում են նաև վճռական ճակատամարտի նախօրեին Հայաստանի նկատմամբ երկու հակառակորդների՝ էվմենեսի և Անտիգոնոսի ունեցած մտադրություններով[32]։ Եթե Անտիգոնոսը լուրեր էր տարածել, թե պատրաստվում էր արշավելու Հայաստանի՝ որպես թշնամի երկրի վրա, ապա էվմենեսը մտածում էր Մարաստանի և Հայաստանի (որպես իր դաշնակցի) վրայով ապաստանել Կապադովկիայում։

Երվանդունիների հայկական պետության վարած քաղաքականության իրավացիությունը հաստատվեց դիադոխների պատերազմների ողջ ընթացքով, քանի որ Հայաստանը ոչ միայն չնվաճվեց, այլ ըստ որոշ տեղեկությունների, նույնիսկ ակտիվ դեր է խաղացել Փոքր Ասիայի քաղաքական կյանքում։ Միայն IV դարի վերջին կամ III դարի սկզբին է, որ Առաջավոր Ասիայում, քաղաքական կյանքի կայունացման պայմաններում, Սելևկյան նորաստեղծ պետությանը հաջողվեց ժամանակավորապես իր իշխանության տակ գցել հայկական պետությունը։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ Մ. Թ. Ա. III ԴԱՐՈՒՄ

Հայկական պետությունը, որը կազմավորվել էր մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին և ընդգրկում էր Հայկական լեռնաշխարհի զգալի մասը, լուրջ փոփոխությունների ենթարկվեց մ. թ. ա. III դարի ընթացքում։ Դասակարգային հասարակության զարգացման անհավասարությունը կայուն նախադրյալ չէր պետության ամրապնդման համար։ Երկրի տարբեր մասերը սոցիալ-տնտեսական զարգացման տարբեր մակարդակների վրա էին գտնվում և չէին կարող երկար ժամանակ սերտորեն կապված մնալ։ Այսպես, արևմտյան շրջանները՝ Ծոփքն ու Կոմմագենեն, Առաջավոր Ասիայի հելլենիստական երկրների տնտեսական վերելքի մեջ ներգրավվելով ավելի վաղ, քան Հայկական լեռնաշխարհի մնա-

---

29 Տե՛ս Diod., XIX, 13։

30 Այդ նամակը ճիշտ է, որոշակի նպատակով հորինված էր էվմենեսի կողմից, սակայն հենց հորինման հնարավորության հանգամանքը թույլ է տալիս հանգելու վերը շարադրված եզրակացություններին։

31 Տե՛ս Diod., XIX, 23։

32 *Plut.*, Eumenes, XXIII, *Diod.*, XIX, 3—7:

ցած մասերը, III դարի կեսերին անջատվեցին և կազմեցին մի առանձին պետություն, որի թագավորները նույնպես Երվանդունիների տոհմից էին[33]։

Երկրի թուլացմանը նպաստում էին նաև Հայաստանին տիրանալու Սելևկյանների անընդհատ փորձերը, որոնք երբեմն հաջողությամբ էին պսակվում։ Ինչպես տեսանք, Ստրաբոնին հայտնի էր Հայաստանի՝ Սելևկյանների գերիշխանության տակ անցնելու փաստը։ Այդ կատարվել է Սելևկոս Ա-ի օրոք, հնարավոր է շուրջ 301 թվականին[34]։



Գունազարդ կավանոթ, Արմավիր

Ըստ Անտիոքոս Ա-ի Նեմրութ-դաղի արձանագրությունների, մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին թագավորած Երվանդից հետո իշխել է «-անես» վերջավորությամբ անուն կրող մի թագավոր, որի կառավարման տարիները համընկնում են հավանաբար մ. թ. ա. III դարի առաջին տասնամյակներին[35]։ Հայտնի չէ, արդյոք նա թագավորե՞լ է Սելևկյանների իշխանության ներքո, թե՞ եղել է ինքնուրույն։ Սակայն III դարի 60-ական թվականներին հաստատապես Հա-

---

33 Տե՛ս *Я. А. Манандян*, О торговле и городах Армении, Ереван, 1954, 16—18, 30—35: *E. Honigmann*, Kommagene, Pauly's Realencyklopädie der klassischen Altertumswissenschaft. Supplementband IV, 1924. *Г. А. Тирацян*, Страна Коммагена и Армения, ИАНАОН, 1956, № 3:

34 Տե՛ս *App.*, Syr., 55:

35 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 307։

յաստանը այլևս չէր գտնվում Սելևկյանների իշխանության տակ։ Ըստ Դիոդոր Սիկիլիացու վկայության, Հայաստանի օգնությամբ Կապադովկիայում հիմնադրվել էր անկախ թագավորություն։ Այդ դեպքը տեղի ունեցած պիտի լինի 260—255 թվականներին։ Վերոհիշյալ փաստը ինքնին արդեն խոսում է հայկական պետության ինքնուրույնության մասին, մանավանդ, եթե հաշվի առնենք այդ գործողության բացարձակ հակասելևկյան բնույթը, քանի որ Հայաստանի միջամտության շնորհիվ է, որ Կապադովկիան թոթափեց Սելևկյանների լուծը։ Հայտնի է նաև նմանօրինակ մի այլ փաստ, որը վերաբերում է նույն ժամանակաշրջանին։ Բյութանիայի Նիկոմեդես թագավորի որդին՝ Զիաելասը, ապաստան է գտել Հայաստանի թագավորի մոտ և ապա օտար ուժերի, գուցե հենց Հայաստանի օգնությամբ վերանվաճել իր գահը[36]։

Այս դեպքերի մասնակից Հայաստանի թագավորի անունը հիշատակված չէ։ Այն չի պահպանվել նաև Կոմմագենեի արձանագրություններում։

**Ծոփքի և Կոմմագենեի միացյալ թագավորությունը:** Ըստ կոմմագենյան արձանագրությունների, հաջորդ իշխողը եղել է Սամոս թագավորը[37]։ Տեղանվանական տվյալներից, ինչպես և մատենագիրների մի շարք անուղղակի վկայություններից երևում է, որ Սամոսի օրոք Երվանդունիների դինաստիան ճյուղավորվել էր և Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմուտքում առաջացել էր առանձին Ծոփք-Կոմմագենեի պետությունը։ Այդ պետության հիմնադրման և Սամոսի գահակալման թվականը հայտնի չէ, բայց հնարավոր է ենթադրել, որ այն տեղի է ունեցել III դարի կեսից ոչ ուշ։ Հույն աշխարհագիր Էրատոսթենեսի մի վկայությունից պարզվում է, որ 245 թվականին արդեն գոյություն ուներ Սամոս թագավորի հիմնադրած Սամոսատ քաղաքը, հետևապես այդ թվականից առաջ Սամոսը արդեն իշխել է[38]։ Սամոսի հիմնադրած մյուս քաղաքը՝ Սամոկարտը, վաղ բյուզանդական պատմիչների վկայությամբ, գտնվում էր Ծոփքի արևելյան մասում, գուցե նույնիսկ՝ Աղձնիքում[39], Եփրատի աջակողմյան տերիտորիաներում։ Նույն թագավորի անունը կրող քաղաքների առկայությունը վկայում է այդ հողերի՝ միևնույն պետության կազմի մեջ մտնելու մասին։ Սամոսին հաջորդում է Արսամեսը (Արշամը), որի իշխանության տարիները համընկնում են հավանաբար III դարի 40-ական թվականներին[40]։ Իր նախորդի նման սա քաղաքաշինությամբ է զբաղվել Եփրատի երկու՝ արևմտյան և արևելյան կողմերում։ Ծոփքում նա հիմնադրում է պետության նոր մայրաքաղաքը՝ Արշամաշատը, իսկ Կոմմագենեում կառուցում երկու նույնանուն քաղաք՝ Արսամեյաները[41]։

III դարի 40—30-ական թվականներին Արշամը օժանդակում էր Սելևկյան

---

[36] Տե՛ս *Memn.*, 23:

[37] Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 186։

[38] Տե՛ս *Strabo*, XVI, 2, 29:

[39] Տե՛ս *E. Honigmann*. Kommagene, էջ 933։

[40] Տե՛ս Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության*, հատ. Ա, էջ 107—108։

[41] Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 353, նաև՝ *F. K. Dörner*, *T. Goell*, Arsameia am Nymphaios. „Istanbuler Forschungen", Bd. 23, 1963:

Անտիոքոս Հիերաքսին ընդդեմ վերջինի եղբոր՝ օրինավոր թագավոր Սելևկոս Բ-ի[42]։ Եթե նկատի ունենանք, որ մի շարք հարևան երկրներ ևս պաշտպանում էին Սելևկոսի խռովարար եղբորը, ապա Արշամ թագավորի քաղաքականության մեջ կարելի էր տեսնել միահամուռ ջանքերով Սելևկյան պետությունը թուլացնելու ձգտում։

Արշամից հետո Ծոփք-Կոմմագենեի թագավորությունն, ըստ երևույթին, բաժանվել էր երկու մասի։ Հայտնի է, որ 212 թվականին Ծոփքում (բայց ոչ Կոմմագենեում) իշխում էր Քսերքսես թագավորը[43]։ Սա ստիպված եղավ հպատակվել իր երկրի վրա արշավող Սելևկյան թագավոր Անտիոքոս Գ-ին և որոշ պարտավորություններ ստանձնել։ Հաղորդումից հրևում է, որ մինչ այդ ո՛չ Քսերքսեսը և ո՛չ էլ իր հայրը[44] հարկ չէին վճարել Սելևկյաններին։ Ծոփքի պետության կիսահպատակ վիճակը, ըստ երևույթին, չի բավարարում Անտիոքոս Գ-ին, և նա որոշ ժամանակ անց վերացնել է տալիս Քսերքսեսին[45]։ Ծոփքը դառնում է Սելևկյան տերիտորիա և որպես ստրատեգոս, այսինքն՝ ռազմավարչական իշխանությամբ օժտված կառավարիչ, այստեղ կարգվում է Զարիադրիսը (Զարեհը)։

Երվանդունիների միասնական պետության տրոհումից հետո քիչ տվյալներ ունենք Հայաստանի կենտրոնական և արևելյան շրջանների պատմության մասին։ Վրացական պետության հիմնադրման (մ. թ. ա. 270-ական թվականներ) հաջորդող տարիներին Հայկական լեռնաշխարհի որոշ՝ հյուսիսային և հյուսիս-արևելյան շրջաններն անցան այդ պետության տնօրինության տակ և այդ վիճակում մնացին մինչև մ. թ. ա. II դարի սկիզբը, երբ Արտաշեսի օրոք նորից միացվեցին Հայաստանին։ Պոլիբիոսի մ. թ. ա. 220-ական թվականներին վերաբերող տվյալների համաձայն, Ատրպատական պետությունը զգալի չափով ընդարձակել էր իր տիրույթները Անդրկովկասում, որի արևելյան հատվածները, ինչպես տեսանք, դեռևս մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին նրա ազդեցության ոլորտի մեջ էին գտնվում։ Հաջորդ, III դարի կեսին, հավանաբար, էլ ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Ատրպատականի քաղաքական էքսպանսիայի համար, որի ընթացքում Արևելյան Հայաստանի որոշ շրջաններում կարող էր հաստատված լինել Ատրպատականի գերիշխանությունը։ Ատրպատականի մեծապետական ձգտումների առաջն առավ Սելևկյան Անտիոքոս Գ-ը, որը 220 թվականին արշավեց Ատրպատական և հպատակեցրեց իրեն։ Նման պայմաններում է, որ Արևելյան Հայաստանում տեղի է ունենում հայ Երվանդունիների վերջին թագավոր Երվանդի գահակալումը։

Հայկական պետությունների պատմական զարգացման վրա Սելևկյան պետության ազդեցությունը ուժեղացավ հատկապես III դարի վերջին, երբ Հայաստանը կարճ ժամանակով նորից հպատակվեց նրան։ Ինչ վերաբերում է նախորդ ժամանակաշրջանին, ապա իրավացի է ակադ. Հ. Մանանդյանը, երբ գրում է. «Պետք է ասել, որ Սելևկյանների իշխանությունը չէր կարողացել հիմ-

---

[43] Տե՛ս Polyaeni. Strateg., 17:

[43] Տե՛ս Polyb., VIII, 25։

[44] Ոմանց կարծիքով Քսերքսեսի հայրը Արշամն էր։ Տե՛ս J. Beloch, Griechische Geschichte, III, էջ 295։ Sandalgian, Histoire documentaire de l'Armén'e:

[45] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 106։

*նավորապես հաստատվել նաև արմենական այսրեփրատյան երկրներում։ Նրանց իշխանությունը այս լեռնային ու դժվարամատչելի երկրում, ընդհանրապես, ավելի անվանական էր, քան իրական։ Ճանաչելով Սելևկյան թագավորներին իբրև գերագույն պետ՝ Մեծ Հայքը, ըստ երևույթին, նաև Ծոփքը պահպանել էին իրենց ներքին ինքնուրույնությունը և կառավարվում էին բնիկ իշխանների ձեռքով, որոնք սկզբնաղբյուրների մեջ անվանվում են երբեմն թագավորներ»*[46]։

*Հիրավի միանգամայն հավանական է, որ Երվանդունիների թագավորական դինաստիան շարունակեց անընդհատ իշխել III դարի ընթացքում։ Հատկանշական է, որ հայկական պետական միավորումները ակտիվորեն մասնակցում էին Փոքր Ասիայի քաղաքական կյանքին։*

**Երվանդ Վերջին:** *Ստրաբոնի վկայությամբ, Արտաշես և Զարեհ ստրատեգոսներից առաջ Հայաստանի վերջին իշխողն էր Օրոնտեսը (Երվանդը), որից հետո երկիրը անցավ Սելևկյանների տիրապետությանը և բաժանվեց երկու ստրատեգոսների միջև։ Այդ նույն վկայության համաձայն Երվանդը սերում էր Աքեմենյան Դարեհ Ա թագավորի զինակից Հիդարնեսից*[47]։

*Մովսես Խորենացին հաղորդում է, որ Երվանդը իշխել է քսան տարի, բայց առայժմ դժվար է որոշել այդ թվի ստուգությունը։ Հավանաբար, նա իշխել է III դարի վերջին քսանամյակում։*

*Մովսես Խորենացու հաղորդումից երևում է, որ Երվանդի աթոռանիստը շարունակում էր մնալ Արմավիրը*[18]*, որը Երվանդունիների մայրաքաղաքն էր IV դարի 2-րդ կեսից սկսած։ Արմավիրը նաև պետության պաշտամունքային գլխավոր կենտրոնն էր։ Այստեղ էր գտնվում Արեգի (Ապոլլոնի) և Լուսնի (Արտեմիս-Անահիտի) տաճարը։ Բացառված չէ, որ դեռևս այն ժամանակ այդ տաճարի մեջ կանգած էին նաև իշխողների՝ Երվանդունի և Աքեմենյան նախնիների արձանները, որով հայկական պետության մեջ հիմք էր դրվում քաղաքական նպատակներ հետապնդող նախնիների պաշտամունքին*[49]*։ Հնուց ի վեր գոյություն ունեցող Արմավիրի պատգամախոսը շարունակում էր գործել Երվանդի օրոք ես, ընդունելով, ըստ երևույթին, հելլենիստական որոշ երանգ*[50]։

*Երվանդի արքունիքը կազմված էր հելլենիստական մյուս պետությունների օրինակով։ Նրա եղբայր Երվազը գերագույն քրմապետն էր*[51]*։ Ինչպես երևում է պետական նշանակություն ունեցող գրագրության պահպանված նմուշներից*[52]*, թագավորի դիվանի գործերը վարվում էին հունարեն լեզվով։ Երվան-*

---

46 **Հ. Մանանդյան**, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, Ա, Երևան, 1944, էջ 102։*

47 *Տե՛ս* Strabo, *XI, 14, 15։*

48 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, լթ։*

49 *Տե՛ս Г. Х. Саркисян,* Тигранакерт. Из истории древнеармянских городских общин, М., *1960, էջ 33 և հաջ.։* **Գ. Տիրացյան**, *Մովսես Խորենացու «Հայոց Պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ Հայաստանի Ն. մ. թ. III—II դարերի պատմության մասին, «Բանբեր Մատենադարանի», № 6, 1962, էջ 12—14։*

50 *Տե՛ս К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953. *էջ 104 և հաջ.։*

51 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, խ։*

52 *Տե՛ս А. И. Болтунова,* Греческие надписи Армавира. ИАФАН, 1942, № 1—2.

գի օրոք Հայաստանում օգտվում էին մակեդոնա-սելևկյան տոմարից[53]։ Թագավորը շրջապատված էր հայ հասարակության հելլենացած վերնախավի ներկայացուցիչներով, որոնց թվում կարող էին լինել նաև հույներ։ Թագավորը և իր շրջապատը գնահատում և վայելում էին նույն գրականությունը[54]։ Հույն ողբերգակների և դրամատուրգների, գլխավորապես Եվրիպիդեսի երկերի քաղվածքներից կազմված և քարի վրա փորագրված փոքր ժողովածուն ունեը, ըստ հրևույթին, ուսուցողական բնույթ և այս հանգամանքը թերևս ակնարկում է Արմավիրում հունական դպրոցի գոյության մասին[55]։

Երվանդի թագավորության տարիները նշանավորվեցին շինարարական գործունեությամբ, որը հիմնականում ծավալվում էր Այրարատում։ Խորենացու վկայությամբ, Երվանդը հեռանում է Արմավիրից և Ախուրյանի ու Արաքսի գետախառնուրդի մոտ միակտուր ապառաժ բլրի վրա կառուցում իր նոր մայրաքաղաքը՝ Երվանդաշատը[56]։ Նոր մայրաքաղաքի գոյության մասին ակնարկում են նաև Արմավիրի հունարեն արձանագրությունները[57]։ Մայրաքաղաքից մի փոքր հյուսիս, Ախուրյանի ափին կառուցվում է Երվանդակերտ դաստակերտը, իսկ էլ ավելի հեռու, նույն հյուսիսային ուղղությամբ՝ Երվանդավանը։ Ախուրյանի աջ ափին թագավորն ստեղծում է պաշտամունքային նոր կենտրոն՝ Բագարանը։

Երվանդի իշխանությունը հաստատուն չէր։ Խորենացին լավ է պատկերում այն շիկացած մթնոլորտը, որի մեջ թագավորը բոլորեց իր վերջին տարիները։ Երվանդը վախենում էր իր շրջապատից, ինչպես նաև ժողովրդից։ Նա չի կամենում կուռքերը տեղափոխել իր նոր մայրաքաղաք, երկյուղ կրելով, որ միգուցե, երբ ժողովուրդը զոհաբերության համար հավաքվի այդտեղ, հնարավոր չլինի ապահովել իր անվտանգությունը[58]։ Դժգոհություն էր տիրում երկրի մեծամեծների, նախարարների մեջ։ Մյուս կողմից, ելնելով Արմավիրի արձանագրությունների տվյալներից, Արմավիր քաղաքը, նրա քաղաքացիների կոլեկտիվը՝ հանձին իր քրմապետի, բարեմաղթություններ էր անում թագավորին[59], դրանով գուցե արտահայտելով իր նվիրվածությունը նրան։

Այս պայմաններում էր, որ սկսվեց Արտաշեսի պատերազմը Երվանդի դեմ, որը վերջացավ Երվանդի պարտությամբ ու մահով։ Այս պատերազմը, որի մասին դրվագներ են պահպանվել Մովսես Խորենացու մոտ, հրահրվեց Սելևկյան Անտիոքոս Գ թագավորի կողմից[60]։ Ծրագրվող արևմտյան արշավանքի կապակցությամբ, որը պետք է վերահաստատեր Սելևկյան տիրապետությունը

---

53 Տե՛ս Ս. Տեր-Հակոբյան, Արմավիրի երկրորդ նորագյուտ արձանագրությունը. «Նյութեր հին Հայաստանի պատմության», Երևան, 1935։

54 Տե՛ս Հ. Մանանդյան, Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946, էջ 17։

55 Chr. Habicht, Über eine armenische Inschrift mit Versen des Euripides, „Hermes", 81, 1953. էջ 236։

56 Տե՛ս Խորենացի, Բ, լթ։

57 Տե՛ս Հ. Մանանդյան, Արմավիրի հունարեն արձանագրությունները, էջ 27 և հաջ.։

58 Տե՛ս Խորենացի, Բ, խ։

59 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, էջ 134—135։

60 Տե՛ս Գ. Տիրացյան. Մովսես Խորենացու «Պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ, էջ 18։

*Փոքր Ասիայում և դուրս բերեր նրանց Եվրոպա, Սելևկյանների առաջ պետք է ծառանար Հայկական լեռնաշխարհի վերջնական հպատակեցման, այսինքն, Ծոփքի թագավոր Քսերքսեսին վերացնելուց հետո Հայաստանի մյուս մասերի վրա (որտեղ իշխում էր Երվանդը), իրենց տիրապետությունը տարածելու խնդիրը[61]։ Անտիոքոսը ձեռնամուխ է լինում նաև այդ խնդրի լուծմանը, նախապես Երվանդի արքունիքը ուղարկելով իր ներկայացուցչին՝ Նումենիոսին, ըստ երևույթին, դիվանագիտական հատուկ առաքելությամբ[62], որը հաջողությամբ չի պսակվում։ Այն ժամանակ նա Երվանդի դեմ է հանում Արտաշեսին։ Վերջինս, հավանաբար, ծագում էր Հայկական լեռնաշխարհի Ատրպատականին հարող շրջանների ավագանուց և Երվանդից դժգոհ տարրերի ներկայացուցիչն էր։ Մովսես Խորենացին այսպես է նկարագրում ծագած պատերազմը։ Արտաշեսը Ուտիքի վրայով, Սևանի հյուսիս-արևելյան ափով և Արագածի թիկունքով շարժվում է Երվանդի բանակի դեմ, որը գտնվում էր Երվանդաշատից 300 ասպարեզ հեռավորության վրա, Ախուրյանի հյուսիսային կողմերում։ Ճակատամարտը տեղի է ունենում Երվանդավան վայրում, և Երվանդի բանակը խիստ պարտություն է կրում։*

*Երվանդը փախուստի է դիմում դեպի մայրաքաղաք՝ այնտեղ պատսպարվելու համար։ Արտաշեսի զորավար Սմբատը, հետապնդելով նրան, գալիս է ու պաշարում Երվանդաշատը։ Այստեղ նրան միանում է Արտաշեսը, որը արդեն տիրացել էր Երվանդի դաստակերտին՝ Երվանդակերտին։ Արտաշեսի բանակը խուժում է քաղաք և զինվորներից մեկը վաղրով (դաշույնով) սպանում է Երվանդին։ Դրանից հետո Արտաշեսը վերացնում է Երվանդի իշխանության վերջին մնացորդը, գրավելով Բագարանը և սպանելով Երվանդի եղբորը՝ Երվազին[63]։ Դեպքերի այդօրինակ ընթացքը հաստատվում է նաև Արմավիրի հունարեն արձանագրությունների տվյալներով։ Նրանց մեջ նույնպես խոսվում է պատերազմում թագավորի մահվան և երկրի նվաճման մասին[64]։*

*Այսպիսով, III դարի վերջում Երվանդունիների դինաստիան դադարում է իշխելուց։ Հայկական լեռնաշխարհում հաստատվում է Սելևկյան գերիշխանությունը, որի ներկայացուցիչները ստրատեգոսներն էին՝ Զարեհը՝ արևմուտքում, Արտաշեսը՝ արևելքում։*

## 4. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ: ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ

*Մ. թ. ա. IV—III դարերի եզրին Հայաստանը նահապետական ստրկատիրության վիճակից թևակոխում է ստրկատիրական տնտեսական զարգացման ավելի բարձր աստիճանը[65]։*

---

61 *Տե՛ս* Գ. Սարգսյան, *Անտիոքոս Գ. Սելևկյանը և հայկական պետությունները, «Բանբեր Երևանի համալսարանի», 1969, № 1, էջ 49 և հաջ.։*

62 *Տե՛ս А. И. Болтунова,* Греческие надписи Армавира, *էջ 52,* Գ. Տիրացյան, *Մովսես Խորենացու «Պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ, էջ 19—20։*

63 *Տե՛ս* Խորենացի, *Բ, խ։*

64 *Տե՛ս К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении, *էջ 142։*

65 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении в эллинистическую эпоху, ИАНАОН, 1948, № 11, *նույնի՝* О рабстве и рабовладении в древней Ар-

Դա պայմանավորված էր գլխավորապես երկրի նախորդ ժամանակշրջանի զարգացումով, որի ընթացքում երկրագործության ու անասնապահության աշխուժացումը ազդակ հանդիսացավ նոր փուլ թևակոխելու համար։ Դրա հետ մեկտեղ այդ նույն ժամանակաշրջանում Հայաստանը մասնակից դարձավ Առաջավոր Ասիայի հելլենիստական երկրների տնտեսական վերելքին։ Երկրի սոցիալ-տնտեսական առաջադիմության համար պակաս կարևորություն չուներ նաև հայկական պետականության վերականգնումը։

Հայաստանի հասարակական զարգացման այս նոր ժամանակաշրջանի համար հատկապես բնորոշ է մի կողմից քաղաքների աճը, քաղաքաշինության պրոցեսի ծավալումը, մյուս կողմից՝ հողատիրության տարկատիրական ձևերի զարգացումն ու բյուրեղացումը։ Ուրարտական պետության անկումից հետո քիչ բան է հայտնի ուրարտական քաղաքների ճակատագրի մասին։ Թեյշեբաինի (Կարմիր-բլուր) և Արգիշտիխինիլիի (Նոր Արմավիր) քաղաքների օրինակը, որոնց փլատակները մ. թ. ա. V դարից սկսած վերածվում են դամբարանադաշտերի, ցույց է տալիս, որ հին քաղաքների մեծ մասը դադարել էր գոյություն ունենալուց[66]։ Փաստերը վկայում են, որ որպես կանոն, վերակենդանանում են ուրարտական այն հին կենտրոնները, որոնք դադարել էին նախկին դերը խաղալուց ուրարտական պետության երկրորդ շրջանում[67]։ Այդպիսիներն էին Տուշպան (Վանը), Էրեբունին (Երևանը), Արգիշտիխինիլին (Արմավիրը)։ Սրանցից Վանն ու թերևս Էրեբունին, աքեմենյան ժամանակաշրջանում սատրապությունների կենտրոններ էին, որոնք ռազմա-վարչական նշանակություն ունեին[68]։ Ինչ վերաբերում է Արմավիրին, ապա նրա նշանակության ուժեղացումը պետք է վերագրել մ. թ. ա. IV դարին։ Արմավիրի շրջակայքում ուրարտական ժամանակաշրջանից մեզ հասել է թերևս մի ամբողջական քաղաքի մասը կազմող երկու հուշարձան՝ Արմավիր-բլուրը և Դավթի բլուրը։ Վերջինիս վրա տեղադրված հզոր ամրոցից դեպի արևելք, Արմավիր-բլրի ուղղությամբ ձգվում է միայն հիմնապատերը պահպանած կառույցների մի ամբողջ շղթա, որոնք, ինչպես նաև ամրոցը, հելլենիստական ժամանակաշրջանի նյութեր կամ չունեին, կամ այդ նյութերը սակավաթիվ են[69]։

Հայկական Արմավիր քաղաքը հիմնադրվել է ուրարտական մյուս հուշարձանի՝ Արմավիր-բլրի տեղում և նրա շրջակայքում։ Այստեղ հայտնաբերված հելլենիստական ժամանակաշրջանի հնագիտական նյութերը, ինչպես նաև հունական արձանագրությունների առկայությունը՝ բլրի հարավային ստորոտում, այդ մասին ոչ մի կասկած չեն թողնում։ Բլրի վրա տեղադրված ուրարտական

---

мении, ВДИ, 1950, № 1, նույնի՝ Рабовладельческое общество древней Армении, М., 1953 (դոկտորական դիսերտացիայի ավտոռեֆերատ)։ Գ. Խ. Սարգսյան, Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ուղիների մասին, Երևան, 1962։

66 Տե՛ս *А. А. Мартиросян*, Город Тейшебаини, Ереван, 1964, էջ 137, նույնի՝ Раскопки Аргиштихинили, «Советская археология», 1967, № 4.

67 Տե՛ս *Б. Б. Пиотровский*, Ванское царство, М., 1959, էջ 113։

68 Տե՛ս Գ. Տիրացյան, *Արինբերդի սյունազարդ դահլիճը և սատրապային կենտրոնների հարցը Հայկական լեռնաշխարհում*, Տեղ. ՀԳԱՀԳ, 1960, № 7—8։

69 Տե՛ս *А. А. Мартиросян*, Раскопки Аргиштихинили, «Советская археология», 1967, № 4.

ժամանակաշրջանի միջնաբերդը հոյակապ պարսպապատերով, հուժկու աշտարակներով, ներսում՝ մեծ շենքերով, հարմար վայր էր Երվանդունի թագավորների նստավայր և ընդհանրապես պետության ռազմա-քաղաքական կենտրոն դառնալու համար։ Այդ կենտրոնի շուրջը կազմակերպվում է բուն քաղաքը, որը ներգրավվում է հելլենիստական քաղաքաշինության ընդհանուր պրոցեսի մեջ։ Արմավիրը ունեցել է շեշտված կրոնական բնույթ, հետևաբար հնարավոր է, որ քաղաքը առաջացել է նաև որպես կրոնական կենտրոն, սերտորեն կապված լինելով տաճարի, նրա տերիտորիայի և տնտեսության հետ[70]։

Մ. թ. ա. III դարի վերջերին, ինչպես վկայում են Արմավիրի արձանագրությունները, այստեղ գոյություն ուներ քաղաքային համայնք։ «Արմավիրցիների» հիշատակումը արձանագրություններում, հունական նմանօրինակ տերմինների նմանությամբ, վկայում է, որ խոսքը ոչ թե քաղաքի բնակիչների մասին է ընդհանրապես, այլ միայն նրա որոշ խավի՝ լիիրավ քաղաքացիների, և հետևապես, հելլենիստական մյուս քաղաքների օրինակով այստեղ գոյություն ուներ քաղաքային համայնք կամ քաղաքացիական-տաճարային համայնք՝ ի նկատի ունենալով տվյալ արձանագրության կրոնական որոշ երանգը[71]։

Արարատյան դաշտը երկրագործության հզոր կենտրոն լինելուց բացի, առևտրական ճանապարհների կարևոր հանգույց էր։ Արմավիրի մոտով էին անցնում իրանական սարահարթից Արաքսի հովտով դեպի Սև ծովի ափերը և Միջագետքից ու Ասորիքից դեպի Անդրկովկասի խորքերը ձգվող ճանապարհները։

Հայաստանը անմասն չմնաց հելլենիստական աշխարհում ծավալվող քաղաքաշինության պրոցեսից։ Այն ենթադրում էր տնտեսական համապատասխան միջոցներով օժտված կենտրոնական իշխանության միջամտությունը քաղաքների կառուցման և զարգացման գործում։ Երկրի թագավորը հանդիսանում էր հիմնադիրը քաղաքների, որոնք կրում էին նրա անունը։ Հայկական քաղաքների շինարարությունը իրականացվում է III դարից սկսած, և այն կապվում է արևմուտքում Ծոփքի և Կոմմագենեի թագավորների, իսկ արևելքում՝ Երվանդ Վերջինի անվան հետ։

Քաղաքաշինության վաղ օջախը Ծոփքի ու Կոմմագենեի միացյալ պետության տերիտորիան էր։ Հնագույն քաղաքներից են Սամոսատը՝ Եփրատի աջ ափին, և Սամոկարտը՝ Ծոփքի արևելքում կամ նույնիսկ Աղձնիքում։ Սամոսատը առևտրական կարևոր կենտրոն էր։ Դեռևս III դարի կեսերին գոյություն ուներ Տավրոսի լեռնաշղթայով անցնող ճանապարհը, որը Սամոսատից տանում էր Տոմիսա և Եփրատից դեպի արևելք։ Երկու քաղաքներն էլ, ինչպես ասվեց վերևում, հիմնադրված են Սամոս թագավորի կողմից, որն իշխել է III դարի կեսերին։

Պոլիբիոսի վկայությամբ, Արածանիի և Տիգրիսի միջև ընկած ագեղեցիկ

---

70 Տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Դիտողություններ հին հայկական տաճարային քաղաքների առաջացման մասին, Տեղ. ՀԳԱՀԳ, 1963, № 9, էջ 55 և հաջ.։ А. А. Мартиросян, Раскопки Аргиштихинили, 1967, СА, № 4, էջ 234—235, 226—227։

71 Տե՛ս Г. Х. Саркисян, Тигранакерт, Из истории древнеармянских городских общин, М., 1960, էջ 40—41։

*գաշտում» Արածանիին ավելի մոտ, գտնվում էր Արշամաշատ քաղաքը*[72]*։ Այն հիշատակվում է մ. թ. ա. 212 թվականին, բայց նրա հիմնադրումը, ելնելով անվան ընդհանրությունից, պետք է վերագրել մ. թ. ա. III դարի 40-ական թվականներին իշխած Արշամ թագավորին։ Արշամը Եփրատի այն կողմը, Կոմմագենում՝ Եփրատ և Նյումփայոս գետերի վրա կառուցել է, ինչպես վերը նշվեց այլ կապակցությամբ, երկու քաղաք ևս Արսամեյա անունով, որոնք պաշտամունքային կարևոր կենտրոններ էին*[73]*։*

*Երկրորդ դարի վերջերին Երվանդ թագավորը Արաքսի և Ախուրյանի դետախառնուրդի մոտ կառուցում է Երվանդաշատ քաղաքը, որը Արմավիրի փոխարեն դառնում է պետության նոր մայրաքաղաք։ Մինչև այսօր պահպանվել են պարիսպների, տարբեր շենքերի, այդ թվում ճարտարապետական ամբողջական կոմպլեքսների հետքեր, որոնք հանդիպում են մեծ տարածությունների վրա։ Մեր թվականության IV դարում Երվանդաշատը Հայաստանի ամենամեծ քաղաքներից մեկն էր։ Դատելով Ախուրյանի աջ և ձախ ափին, Երվանդակերտի թագավորական դաստակերտի ենթադրվող վայրում սփռված բազմաթիվ շենքերի ավերակներից, այն քաղաքատիպ բնակավայր էր*[74]*։ Այդ մասին է վկայում նաև «կերտ» վերջավորությունը։ Նույնը կարելի է ասել նաև Երվանդաշատից ավելի հեռու գտնվող Երվանդավանի մասին։ Այրարատում, հավանաբար, նույն այս ժամանակաշրջանում հիմք է դրվում Վարդգեսավանին՝ ապագա Վաղարշապատ քաղաքի տեղում*[75]*։ Ի վերջո, քաղաքատիպ բնակավայր էր նաև Բագարանը՝ տաճարների քաղաքը։ Քաղաքային կյանքի բուռն զարգացումը երկրի տնտեսական վերելքի ցուցանիշներից մեկն էր։*

*Նշված ժամանակաշրջանի հողատիրության ու նրա ձևերի մասին սկզբնաղբյուրները աննշան տեղեկություններ են ընձեռում։ Ամենաընդհանուր գաղափար կարելի է կազմել թագավորական դաստակերտների ու տաճարային հողատիրության մասին։ Երվանդակերտի թագավորական դաստակերտի՝ Մովսես Խորենացու հանրահայտ նկարագրությունից երևում է, որ խոսքը վարելահողերից, պարտեզներից ու այգիներից, ինչպես նաև հողագործների բնակարաններից և թագավորի ապարանքից կազմված մի կարևոր կոմպլեքսի մասին է*[76]*։ Արտադրական նման օբյեկտների նշանակությունը երկրի տնտեսական կյանքում շատ մեծ պիտի լիներ։ Թագավորական այս դաստակերտի դաշտերում բանող անմիջական արտադրողների մասին Պատմահայրը ոչինչ չի հաղորդում։ Ավելի ուշ ժամանակաշրջանին վերաբերող տվյալներից ուսումնասիրողները հանգում են այն եզրակացության, որ Երվանդակերտը հիմնականում ստրկական, հողին ամրացված մշակների աշխատանքն օգտագործող տնտեսական կոմպլեքս էր*[77]*։*

---

73 **Տե՛ս** *F. K. Dörner, T. Goell,* Arsameia am Nymphaios, Berlin, 1963։

73 **Տե՛ս** *Polyb.*, VIII. 25։

74 **Տե՛ս Թ. Ն. Առաքելյան,** *Որտե՞ղ են գտնվել Երվանդաշատ և Երվանդակերտ քաղաքները, ՊԲՀ, 1965, № 3։*

75 **Տե՛ս Խորենացի,** *Բ, կ։*

76 **Տե՛ս Խորենացի,** *Բ, ձ։*

77 *С. Т. Еремян,* О рабстве и рабовладении в древней Армении, ВДИ 1950, № 1.

*Նույն Խորենացին աղոտ, բայց ուշագրավ տեղեկություններ է հաղորդում Հայաստանում վաղ-հելլենիստական տաճարային հողագործության մասին։ Երվանդ Թագավորի և ապա նրա եղբոր՝ Երվազ քրմապետի սպանությունից հետո, Արտաշեսի զորավար Սմբատը տիրանում է Բագարանին, որը տաճարային կարևոր կենտրոն էր և պետության քրմապետ Երվազի աթոռանիստը։ Պատմահոր վկայությամբ, գանձերից բացի այստեղ գերեվարվում են 500 ծառաներ*[78]*։*

*Հարևան երկրների և բուն Հայաստանի ավելի ուշ, բայց նույն հելլենիստական ժամանակաշրջանին վերաբերող տվյալներից երևում է, որ տաճարային կենտրոններին կից կային կալվածներ, դաստակերտներ և գյուղեր, որտեղ բնակեցված էին տաճարային ստրուկներ (հունարեն՝ հիերոդուլներ, հայերեն՝ սպասավորներ), ինչպես նաև տաճարային գյուղացիներ*[79]*։*

*Խորենացու վկայությունից երևում է, որ Բագարանում ևս գոյություն պետք է ունեցած լինեին դաստակերտներ, որտեղ որպես անմիջական արտադրողներ աշխատում էին հիշատակված 500 ծառաները։ Սրանք մշակում էին տաճարային հողը, իսկ արտադրվող բարիքների տերը քրմապետն էր ու տաճարային համայնքի վերնախավը։*

---

Գ. Խ. Սարգսյան, *Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ուղիների մասին, էջ 34 և հաջորդ։*

78 *Տե՛ս* Խորենացի, *Բ. խը։*

79 *Տե՛ս А. Г. Периханян*, Храмовые объединения Малой Азии и Армении, М., 1959.

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՀԶՈՐԱՑՈՒՄԸ ԱՐՏԱՇԵՍ Ա-Ի ՕՐՈՔ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ ՍԵԼԵՎԿՅԱՆՆԵՐԻ ԳԵՐԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԻՑ

**Մեծ Հայք, Ծոփք:** *Ինչպես հիշատակվեց նախորդ գլխում, III դարի վերջերին Սելևկյանները ինքնավարությունից զրկեցին Մեծ Հայքը և Ծոփքը, այնտեղ վերացրին թագավորական իշխանությունը և նշանակեցին իրենց կառավարիչները՝ Արտաշեսին (Արտաքսիաս) Մեծ Հայքում, և Զարեհին (Զարիադրիս)՝ Ծոփքում։ Ծոփքում թագավորական իշխանության վերացման թվականը որոշվում է բավական մեծ ճշտությամբ, Հովհաննես Անտիոքացի պատմիչի համապատասխան ցուցմամբ։ Մ. թ. ա. 212 թվականին Սելևկյան Անտիոքոս Գ թագավորը Ծոփքի թագավոր Քսերքսեսին ամուսնացրեց իր քրոջ՝ Անտիոքիսի հետ*[1]*, և հետագայում նույն Անտիոքիսի միջոցով սպանել տվեց նրան, այն ժամանակ, երբ «Հաննիբալը պայքարի մեջ էր հռոմեացիների հետ, իսկ... Անտիոքոսը պատերազմում էր Եգիպտոսի... դեմ», այսինքն՝ 202 կամ 201 թվականին*[2]*։ Այդ ժամանակ է, ահա, Ծոփքը վերածվել սելևկյան սատրապության և այնտեղ կառավարիչ (ստրատեգոս) է կարգվել Զարեհը։*

*Նույնը միաժամանակ տեղի է ունեցել և Մեծ Հայքում. վերացվել է Երվանդ Վերջինի (Օրոնտեսի) իշխանությունը և հաստատվել Արտաշեսի ստրատեգությունը։ Որ Ծոփքում ու Մեծ Հայքում այս փոփոխությունները միաժամանակ են տեղի ունեցել, պարզորոշ երևում է Ստրաբոնի այն հաղորդումից, թե «այնուհետև երկիրը երկու մասի բաժանվեց... Անտիոքոս Մեծի ստրատեգոսներ Արտաշեսի և Զարեհի կողմից»*[3]*։*

---

1 *Տե՛ս Polyb., VIII, 25։*

2 *Joh. Ant.*, Frag. 53. *C. Müller*, Fragmenta historicorum graecorum, IV. *էջ 557։ Հաննիբալի կամ երկրորդ Փունիկյան պատերազմը տեղի է ունեցել մ. թ. ա. 218—201 թվականներին, Անտիոքոսը Եգիպտոսի դեմ պատերազմել է երկիցս, առաջին պատերազմն ավարտվել է 217 թվականին, երկրորդն սկսվել է 202 թ.։ Հովհ. Անտիոքացու նշած տարեթիվն է, ուրեմն, կամ 218—217 թվականները, կամ 202—201 թվականները։ Բնականաբար, պետք է ընտրել վերջինը, քանի որ 218—217 թվականներին Քսերքսեսը դեռևս ամուսնացած չէր Անտիոքիսի հետ, այդ տեղի է ունեցել, ըստ Պոլիբիոսի, 212 թվականին։*

3 *Strabo, XI, 14, 15. Հմմտ.* Գ. Տիրացյան, *Մովսես Խորենացու «Հայոց պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ, էջ 18, ծան. 32։*

**Փոքր Հայք, Կոմմագենե**։ Նույնն է կատարվել, ինչպես պարզվում է, նաև Փոքր Հայքի և Կոմմագենեի նկատմամբ։ Կոմմագենեն, որտեղ, ինչպես տեսանք, ողջ III դարի ընթացքում տիրում էին Երվանդունի տոհմին պատկանող թագավորները, դարավերջին, ըստ երևույթին, նույնպես նվաճվել է Սելևկյանների կողմից, և այստեղ կառավարիչ է նշանակվել հույն Պտղեմայոսը (Պտողեմեոս)[4]։ Մեծ Հայքի և Ծոփքի համեմատությամբ, հելլենականությունն այստեղ շատ էր առաջադիմել, և դա միանգամայն հասկանալի է. Կոմմագենեն անմիջապես հարում էր հելլենիզմի օջախներից մեկին՝ առափնյա հյուսիսային Ասորիքին։ Բացի դրանից, Կոմմագենեի բնակչությունը շատ խայտաբղետ էր՝ նրա աշխարհագրական դիրքի համեմատ։ Այն տեղավորված էր երեք էթնիկական խոշոր զանգվածների՝ սեմականի, հայկականի, փոքրասիականի (որտեղ գերակշռում էր խեթ-խաթական տարրը) հանգուցակետում, և նրա բնակչությունը բաղկացած էր այդ երեք տարրերից, որոնց վրա հելլենիստական դարաշրջանում ավելացել էր հելլենական բնակչության մի նշանակալից շերտ։ Սրանով էլ կարելի է բացատրել, որ ի տարբերություն Մեծ Հայքի ու Ծոփքի, որտեղ սելևկյան կառավարիչները հայեր էին, այստեղ հույն կառավարիչ էր կարգված։

Ամենայն հավանականությամբ հենց այդ ժամանակ է Անտիոքոսը նվաճել նաև Փոքր Հայքը և այստեղ էլ առանձին սատրապություն ստեղծելով, կառավարիչ կարգել Միհրդատին։ Այս Միհրդատի մայրը Անտիոքոս Գ-ի հարազատ քույրն էր, որին ժամանակին կնության էին տվել մի հայ մեծատոհմիկի, որի անունը հայտնի չէ։ Միգուցե Միհրդատի հայրը Երվանդունի տոհմից էր կամ հենց Փոքր Հայքի իշխողների տոհմից, որովհետև դժվար թե Սելևկյանները աղջիկ տային ոչ-արքայական տոհմի ներկայացուցչի։ Դեռևս 212 թվականին, երբ Ծոփքի թագավոր Քսերքսեսը փախուստի էր դիմել երկիր ներխուժած Անտիոքոսի առջև, վերջինիս շրջապատում հորդորներ էին լսվում Քսերքսեսին Անտիոքոսի քրոջ որդի Միհրդատով փոխարինելու մասին[5], ըստ որում Միհրդատը, հավանաբար, Ծոփքի գահի համար հարմար թեկնածու էր դիտվում հենց որպես հայ մեծատոհմիկի որդի։ Անտիոքոսը չդիմեց այդ քայլին, բայց այն, ինչ չարվեց Ծոփքի նկատմամբ, մեկ տասնամյակ անց արվեց նորանվաճ Փոքր Հայքի նկատմամբ. Միհրդատն այստեղ սատրապ կարգվեց[6]։

Ինչո՞վ բացատրել Անտիոքոսի այս հախուռն էքսպանսիան իր տերության հյուսիսային սահմանը եզերող հայկական պետությունների նկատմամբ։ Դա իր բացատրությունն է գտնում ի դեմս նրա երկու՝ ավարտված՝ արևելյան և ծրագրված՝ արևմտյան արշավանքների։ Իր արևելյան հաղթարշավից հետո, որ սի-

---

4 Տե՛ս Diod., XXXI, 19a. Դիոդորի հաղորդման ժամանակագրական կովանների մասին տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Անտիոքոս Գ Սելևկյանը և հայկական պետությունները, էջ 49 և հաջ.։

5 Տե՛ս Polyb., VIII, 25։

6 Տե՛ս Th. Reinach, Mithradates Eupator, König von Pontos, Leipzig. 1895, էջ 35։ M. Holleaux, Etudes d'épigraphie et d'histoire grecques, III, Lagides et Séleucides, 1942, XVI, էջ 92, անհիմն է համարում Ռեյնաքի կարծիքը, բայց միանգամայն իզուր. տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Անտիոքոս Գ. Սելևկյանը և հայկական պետությունները, էջ 48։

րում են համեմատել Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների հետ, Անտիոքոսը իրեն շատ ավելի ուժեղ ու հաստատուն էր զգում, քան գահակալման սկզբնական շրջանում՝ 20-ական ու նույնիսկ 10-ական թվականներին, և անհրաժեշտություն չէր զգում այլևս շարունակելու «օրինականության» պահպանման քաղաքականությունը, որը նա նախապես բանեցնում էր[7]։

Սրան նպաստում էր և մեզ հետաքրքրող իրադարձությունների պահին Պտղոմյանների դեմ Անտիոքոսի կողմից վարվող հաղթական պատերազմը, որի ընթացքում վերանվաճվել էին Կոյլեսիրիան ու Փյունիկիան՝ Սելևկյան տերության խիստ կենսական մարզերը։

Մյուս կողմից, Անտիոքոսը, ինչպես ցույց տվեցին հետագայի՝ 190-ական թվականների դեպքերը, նոր արշավանքի ծրագիր էր հղացել, այս անգամ՝ դեպի արևմուտք, ցանկանալով լայնացնել փոքրասիական իր տիրույթները և հաստատորեն ոտք դնել Եվրոպա։ Անտիոքոսն, իհարկե, կանխատեսում էր օրըստօրե հզորացող Հռոմեական հանրապետության հետ բախման անխուսափելիությունը։ Հռոմը՝ անցյալում քաղաք-պետություն, հետզհետե գրավել էր ամբողջ Ապենինյան թերակղզին, մոտակա կղզիները՝ Սիցիլիան, Կորսիկան, Սարդինիան, ջախջախել Արևմտյան Միջերկրականում իր գլխավոր ախոյանին՝ Կարթագենի պետությունն ու տիրացել Միջերկրականի ափերի մեծ մասին։ Այժմ նրա ուշադրության կենտրոնում էր գտնվում Բալկանյան թերակղզին՝ հունական քաղաքները և հելլենիստական Մակեդոնիան։ Հասկանալի է, որ Անտիոքոսը, արշավանքի պատրաստվելիս, անհրաժեշտ էր համարում հատուկ ուշադրություն դարձնել իր թիկունքի, մասնավորապես՝ մերձավոր թիկունքի (որպիսին էին հենց Հայկական լեռնաշխարհը և նրան արևմուտքից հարող շրջանները՝ Փոքր Ասիայի նկատմամբ) ապահովմանը, և ապագան ցույց տվեց, որ նրա անհանգստությունը միանգամայն տեղին էր։

**Սելևկյանները, Հռոմը և Հայաստանը մ. թ. ա. II դարի սկզբին:** Թե ինչ փոխհարաբերություններ են հաստատվել հայկական սատրապությունների միջև, որոշակի դժվար է ասել։ Հավանական է, որ նրանք կամ նրանց մի մասը փոխադարձ, հակասելևկյան երանգ ունեցող կապեր են հաստատել, որոնք գնալով ամրապնդվել են Անտիոքոսի անհաջողությունների աճմանը համընթաց։ Եթե նրանց ղեկավարներից մեկը պետք է առաջնորդի դիրք ունենար, ապա այդ դիրքը ամենից ավելի պատշաճում է Արտաշեսին՝ որպես առավել հզոր ու ընդարձակ երկրամասի տիրակալի։ Թե որքան սերտ են եղել այդ հարաբերությունները, ինչ կերպարանք են ունեցել և որքան են տևել, կարելի է դատել միայն Արտաշեսի և Զարեհի ընկերակցության ու դաշնակցության մասին այն եզրակացությունների հիման վրա, որոնց տեղիք են տալիս Ստրաբոնի հաղորդումները նրանց համատեղ գործողությունների մասին[8]։

Գալով Անտիոքոսին, ապա սա, ոգեշնչված իր հաղթանակներով, 200

---

[7] Տե՛ս *H. H. Schmitt*, Untersuchungen zur Geschichte Antiochos' des Grossen und seiner Zeit („Historia", Zeitschrift für alte Geschichte, Einzelschriften. H. 6) Wiesbaden, 1964, էջ 87 և հաջ.։

[8] Տե՛ս ստորև, էջ 542։

թվականից անցավ Փոքր Ասիայի հողերի նվաճմանը։ Այստեղ ունեցած խոշոր հաջողություններից հետո, նա Հելլեսպոնտոսի վրայով անցնում է Եվրոպա և սկսում քաղաքներ ու ամրություններ կառուցել։

Արդյոք հայկական սատրապությունները իրենց զորքերով մասնակցե՞լ են Անտիոքոսի՝ Փոքր Ասիայում և Եվրոպայում մղած պատերազմներին։ Տեղեկություն կա միայն Փոքր Հայքի սատրապ Միհրդատի մասին, որը Փոքր Ասիայի նվաճման կարևորագույն մասնակիցներից է եղել որպես Անտիոքոսի զորավար, և հատկապես, գրավել է Արիկանդա քաղաքը[9]։

Անտիոքոսի ծրագրի բաղադրիչ մասն էր Հունաստանի լրիվ նվաճումը, իսկ թե ուր էին տանում նրա հետագա ծրագրերը՝ դժվար է ասել։ Համենայն դեպս, Հռոմի հետ ունենալիք անխուսափելի բախումը չէր կանգնեցնում Անտիոքոսին։ Նրա մոտ էր ապաստանել կարթագենցի Հաննիբալը, որը Հունաստանի նվաճման փոխարեն, Անտիոքոսին անմիջականորեն Իտալիայի նվաճման պլաններ էր առաջարկում, սակայն Անտիոքոսը չընդունեց դրանք, հավանաբար վաղաժամ համարելով[10]։ Հռոմի դիվանագիտական քայլերն ու ցույցերը ազդեցություն չէին գործում Անտիոքոսի վրա։ 192 թվականին հռոմեացիներից դժգոհ էտոլացիների հրավերով նա մտավ Հունաստան։ Այստեղ, սակայն, իրադրությունը բարենպաստ չեղավ նրա համար։ Կարևորագույն հունական քաղաքները, վախենալով Հռոմից, օժանդակություն ցույց չտվեցին նրան, ինչպես և Մակեդոնիայի արքա Փիլիպպոսը, որի օգնությունը Անտիոքոսը ակնկալում էր, բայց որը նույնիսկ թշնամական դիրք գրավեց։ Հռոմը պատերազմ հայտարարեց Անտիոքոսին[11]։

Շուտով Անտիոքոսի նավատորմիղը պարտություն կրեց հռոմեացիներից, նույնը և նրա ցամաքային բանակը՝ Թերմոպյուլեի մոտ՝ Հունաստանում, 191 թվականին։ Անտիոքոսը հապճեպ քաշվեց Եվրոպայից և նույնիսկ փորձ չարեց՝ հռոմեական զորքերին արգելելու նեղուցներով անցնել Ասիա։ Հռոմեական բանակն, այսպիսով, առաջին անգամ ոտք դրեց Ասիայի հողը։ Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ Մագնեսիա քաղաքի մոտ 190 թվականին։ Հռոմեական զորքը կրկնակի պակաս էր Անտիոքոսի զորքից, բայց նա հաղթեց, և պարտությունը ծանրագույն հետևանքներ ունեցավ Սելևկյանների պետության համար։ Ապամեայում 188 թվականին կնքված պայմանագրի համաձայն, նրանք զրկվեցին գրեթե ողջ Փոքր Ասիայից, պարտավորվեցին վճարել ռազմատուգանք և բազմաթիվ այլ զիջումներ արեցին[12]։ Անտիոքոսը դրանից հետո միայն մեկ տարի ապրեց։

Մագնեսիայի ճակատամարտը միաժամանակ հայտանշեց մի նոր երևույթ. Առաջավոր Ասիայի պատմաբեմ դուրս եկավ մի նոր, հզորագույն ուժ՝ Հռոմի հանրապետությունը։

---

[9] Տե՛ս *H. H. Schmitt*, Untersuchungen zur Geschichte Antiochos' des Grossen, էջ 30։

[10] Տե՛ս *App.*, Syr., 14:

[11] Տե՛ս նույն տեղում, 15։

[12] Տե՛ս նույն տեղում, 38։ Նաև *H. Bengtson*, Griechische Geschichte von Anfängen bis in die römische Kaiserzeit, München, 1960, էջ 470 և հաջ.։

**Հայկական երկրների ազատագրումը Սելևկյանների լծից:** Անկախ այն դատողություններից, որ հետագայում Հռոմը պիտի բերեր Հայաստանին, նրա այս առաջին մուտքը Ասիա բարենպաստ հանգամանք եղավ հայկական պետությունների համար։ Արտաշեսն ու Զարեհը, հաղորդում է Ստրաբոնը, Անտիոքոսի կրած պարտությունից հետո հարելով հռոմեացիներին, նրանց կողմն անցան և իրենց թագավորներ հայտարարեցին։ Ուրեմն Մագնեսիայի ճակատամարտը ոչ միայն հայկական երկրների՝ Սելևկյանների դեմ ապստամբելու ազդանշան է ծառայել, այլև նրանք անմիջական ու բարեկամական շփման մեջ են մտել հռոմեացիների հետ և ստացել նրանց հավանությունն ու օժանդակությունը։

Սելևկյանների կրած պարտությունը հանգեցրեց նաև Փոքր Հայքի ու Կոմմագենեի ազատագրմանը և անկախ պետություններ կազմելուն։ «Կոմմագենեի կառավարիչ Պտղոմեոսը,—պատմում է Դիոդոր Սիկիլիացին,—որը նախապես էլ արհամարհում էր Ասորիքի թագավորներին (Սելևկյաններին— հեղ.), ապըստամբ դարձավ, և որովհետև նրանք ներգրավված էին իրենց հոգսերի մեջ, առանց երկյուղի տիրացավ երկրին»[13]։ Փոքր Հայքի նկատմամբ նույն եզրակացությունը բխում է այն հանգամանքից, որ քիչ անց, 180-ական թվականների վերջերին և 170-ական թվականների սկզբներին նրա «սատրապ» Միհրդատին ևս տեսնում ենք միանգամայն անկախ միապետի դերում[14]։

Ահա, ուրեմն, հայկական պետությունները, որոնք III դարի վերջին միաժամանակ ընկել էին Սելևկյանների լծի տակ, մեկ տասնամյակ անց, միասնաբար էլ ազատագրվեցին նրանից։ Վերջին հանգամանքը թույլ է տալիս, բացի Արտաշեսի և Զարեհի դաշնակցության փաստից, որը հավաստվում է Ստրաբոնի հաղորդումներով, առաջ քաշել նաև մյուս հայկական պետությունների սույն դաշնակցության մեջ ներգրավված լինելու ենթադրությունը։ Իսկ ավելի լայն առումով, պատմական այս ամբողջ դրվագը ցուցադրում է հայկական երկրների պատմական զարգացման ընդհանուր գծի և նրան հատուկ որոշակի օրինաչափությունների առկայությունը։

Պետք է նշել նաև, որ Սելևկյանների տերությունից հայկական երկրների վերջնական անջատումը օրինաչափ երևույթ էր նաև առաջինի զարգացման համար։ Սելևկյան տերությունը մի մեծ, բայց անկայուն քաղաքական միավորում էր, որն սկսել էր կազմալուծվել գրեթե իր ստեղծման օրվանից։ Դեռևս IV դարի վերջին անջատվեցին Հնդկական սատրապությունները։ Սելևկոս Ա-ի ձեռք բերած Փոքր Ասիայում շուտով ստեղծվեցին անկախ պետություններ՝ Կապադովկիան, Պոնտոսը, Բյութանիան. այնուհետև անկախություն նվաճեց Պերգամոնը։ III դարի կեսերին անջատվեց Բակտրիան։ Նույն ժամանակաշրջանում իրենց անկախ հայտարարեցին պարթևները, և ահա այժմ՝ Հայաստանը։

---

13 Տե՛ս Diod., XXXI, 19։

14 Տե՛ս Polyb., XXV, 2. Հակառակ Հ. Մանանդյանի կարծիքի («Քննական տեսություն...», հատ. Ա, էջ 123, ծան. 1), որ Միհրդատը այդ ժամանակ իսկապես անկախ միապետ էր, հետևվում է այսպիսի հանգամանքներից. ա) խաղաղության պայմանագրում (տես ստորև, էջ 545 նա հանդես է գալիս որպես չիրրմի կողմ, բ) առանձին ռազմատուգանք է վճարում և դ) հիշատակվում է, որ նա նախօրոք երկկողմանի պայմանագիր էր կնքել Պերգամոնի հետ։

Սակայն հայկական սատրապությունների միջև եղած կապերը, այսուհանդերձ, այնքան սերտ և այնպիսի բնույթ չէին կրում, որ կարողանային նրանց ազատագրումից հետո հանգեցնել մեկ միացյալ մեծ հայկական պետության ստեղծմանը։ Վերականգնվեցին արդեն առաջ գոյություն ունեցած թագավորությունները, ճիշտ է՝ զորեղացած ու ընդարձակված։ Հատկապես հզոր վերելք ապրեց Մեծ Հայքի համար, որի թագավորներն այսուհետև պիտի ստանձնեին հայկական աշխարհը քաղաքականապես միավորելու խնդիրը։

## 2. ՄԵԾ ՀԱՅՔԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ԸՆԴԱՐՁԱԿՈՒՄԸ

Հայաստանը մ. թ. ա. II դարի սկզբներին։ *Հայկական պետությունները III դարի ընթացքում, թեև, ինչպես տեսանք, մեծ մասամբ ինքնուրույն թագավորություններ էին կազմել*[15], *բայց և այնպես գտնվում էին հարավային հզոր հարևանի ուժեղ ազդեցության ոլորտում և քաղաքական ու տերիտորիալ զարգացման հնարավորությունների առումով անբարենպաստ պայմաններում էին։ Սակայն նույն այդ ազդեցությունը, ինչպես նաև հելլենիստական երկրների, մասնավորապես Սելևկյանների տերության մեջ մտնող և բարձր զարգացման հասած երկրների հետ բազմակողմանի շփումը, հելլենիստական դարաշրջանի հենց սկզբից նշանակալից դրական դեր էին խաղացել երկրի ներքին սոցիալ-տնտեսական կյանքի ասպարեզում, մեծապես նպաստելով նրա զարգացմանը ստրկատիրական հասարակարգի ուղիներով։ Հայաստանը ներգրավվել էր Առաջավոր Ասիայի տնտեսական բուռն առաջընթացի հորձանքի մեջ։*

*Այս երկու հակասական և իրարամերժ հանգամանքները՝ տնտեսական բուռն զարգացումը՝ մի կողմից, և քաղաքական կաշկանդվածությունը՝ մյուս կողմից, չէին կարող երկար ժամանակ կողք-կողքի գոյություն ունենալ. արտաքին պատնեշները պետք է տեղի տային ներքին աճին ու հզորացմանը, մանավանդ, որ գոյություն ուներ և հասունացել էր դրա կարևորագույն մի նախապայմանը։ Հայկական լեռնաշխարհի ծայրամասերը արդեն մեծ մասամբ ներգրավվել էին հայկական էթնոսի և հայերեն լեզվի ոլորտի մեջ, բայց ժամանակավորապես գտնվում էին պետական այլ միավորումների կազմում։ Այս պայմաններում լեռնաշխարհի կենտրոնական շրջանները գրավող Երվանդունիների թագավորությունը պետք է դառնար այն կորիզը, որից աճելու էր միացյալ հայկական պետությունը։*

*Հայ ժողովրդի պատմական կյանքի այս վճռական պահին մեծ դեր էր վիճակված Արտաշես Ա-ին (մ. թ. ա. 189—մոտ 160), որը մինչ այժմ պատմագիտական երկերում իր արժանի գնահատականը չի ստացել։ Արտաշես Ա-ը հայ ժողովրդի ողջ պատմական կյանքի ընթացքում հանդես եկած քաղաքական ու ռազմական ամենախոշոր գործիչներից մեկն է։*

Պատմական աղբյուրները: *Արտաշես Ա-ի ու նրա ժամանակի մասին մեզ հասած տեղեկությունները միաժամանակ նշանակալից են և սուղ։ Սուղ է նրանց ընդհանուր գումարը, որը անհամեմատ ավելի փոքր է, քան, ասենք, մի*

[15] *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 100 և հաջ.։*

այլ խոշորագույն գործչի՝ Տիգրան Բ-ի ու նրա ժամանակի մասին եղած տեղեկությունները։ Նշանակալից են, նախ, որովհետև պահպանված տեղեկություններից յուրաքանչյուրը, թեև հակիրճ ու անմանրամասն, բայց կարևոր ու վառ է, ապա և այնու, որ աղբյուրները բազմաբնույթ են. այստեղ կան և՛ անտիկ հեղինակների հիշատակություններ, և՛ հայկական պատմական ավանդություն, և՛, վերջապես, հին Հայաստանի պատմության համար խիստ հազվագյուտ, թեև ամենակարևոր տեսակը՝ իսկական վավերագրեր։ Պակասում են, ցավոք, դրամները, բայց պետք է հուսալ, որ դրանք էլ մի օր կհայտնաբերվեն[16]։

Արտաշեսի ու նրա ժամանակի մասին անտիկ պատմագրության ներկայացուցիչներից տեղեկություններ են հաղորդում Պոլիբիոսը, Դիոդորը, Ստրաբոնը, Պլուտարքոսը, Ապպիանոսը, Պորփյուրը և Հիերոնիմոսը։ Բովանդակությամբ ու կարևորությամբ այս բոլորի շարքում հատկապես առանձնանում է Ստրաբոնը, որը նաև տեղական աղբյուրներ կամ աղբյուր է օգտագործել։ Թերևս սրա հետ մրցեր Պոլիբիոսը՝ Արտաշեսի ժամանակակիցը, եթե նրա երկը լրիվ պահպանված լիներ։ Անտիկ պատմագրության պահպանած տեղեկությունների բազմազան բնույթը թույլ է տալիս, համենայն դեպս, պնդելու, որ հնում այդ թեմայի շոշափող ուրիշ երկեր էլ են գոյություն ունեցել, որոնք մեզ չեն հասել։ Պորփյուրի և Հիերոնիմոսի տվյալները վկայում են, որ Արտաշեսի հիշատակը հարատևել է մինչև ուշ անտիկ շրջանը և նույնիսկ մինչև վաղ միջնադար։

Հատուկ հետաքրքրություն է ներկայացնում Մովսես Խորենացու «Հայոց պատմության» էջերում պահպանված Արտաշես թագավորի պատմությունը։ Խորենացին հաղորդում է, որ այն շարադրելիս որպես հիմք է ընդունել Դարանաղյաց Անիի՝ Արամազդ-Զևսի տաճարի քուրմ Ողյումպի (Օլիմպիոսի) գրած «Մեհենական պատմությունը»։ Հիրավի, Խորենացին մեզ հաղորդում է մի հնագույն գրավոր աղբյուրի տվյալները Արտաշեսի ու նրա ժամանակի Հայաստանի մասին, որոնք իրենց հավաստիության փայլուն հաստատումն են գտնում անտիկ հեղինակների հաղորդածի և Արտաշեսի թողած վավերագրերի մեջ, այլև մեծապես ավելացնում են մեր գիտելիքները երկրի ներքին կյանքի մասին, որ գրեթե շրջանցված է հունական պատմագրության կողմից։ Այն հանգամանքը, որ Ողյումպ քրմի «Մեհենական պատմությունից» Արտաշեսի մասին քաղված դրվագները Խորենացին սխալմամբ տեղավորել է ժամանակագրական տեսակետից օտար միջավայրում՝ մ. թ. I դարի վերջերին—II դարի սկզբներին, երկար ժամանակ շղարշված է պահել գիտնականների աչքից այս աղբյուրի բուն նշանակությունը[17]։

Աղբյուրների երկրորդ խումբը Արտաշես Ա-ի արամեերեն լեզվով թողած արձանագրություններն են, որոնց թիվը դանդաղ, բայց անընդհատ ավելանում է, առայժմ շնորհիվ պատահական գյուտերի։ Առ այսօր հայտնի է վեց այդպի-

---

16 „ქართლის ცხოვრება"-ում հիշատակված է, որ Արտաշեսի անունը կրող դրամներ հատվել են, տե՛ս ստորև, էջ 532։

17 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին. Երևան, 1966, գլ. 3, նույնի՝ Նախամեսրոպյան շրջանի պատմագրությունը, ՊԲՀ, 1969, էջ 115 և հաջ.։

սի արձանագրություն, որոնցից հինգը միօրինակ են, իսկ մեկը, վերջերս Սիսիանում հայտնաբերվածը՝ միանգամայն տարբեր[18]։

Թվարկված աղբյուրները թույլ են տալիս ամբողջական պատկեր կազմել Արտաշեսի ժամանակի հիմնական գծերի մասին։

**Արտաշես Ա Թարի, Երվանդական. Նրա ծագումը:** Պատմական խոշոր դեմքերի շուրջ միշտ ավանդություններ են հյուսվում, որոնք հաճախ արտացոլում են իրական դեպքերը։ Ավանդությունների մի որոշակի տարատեսակ գոյություն ունի հատկապես նոր դինաստիաների հիմնադիրների ծագման, մանկական տարիների ու գահակալման մասին։ Այս ավանդությունների համաձայն, հերոսը ի սկզբանե անտի, կամ նույնիսկ դեռևս չծնված, կոչված է իշխելու, և ոչ մի փորձություն ու վտանգ չէր կարող շեղել նրա ճակատագրի կանխորոշված ելքը։ Այդ է պատճառը, որ նման ավանդությունները, անկախ իրենց ծագման վայրից ու դարաշրջանից, ընդհանուր սյուժե ունեն։ Նրանց համար, որպես կանոն, ընդհանուր է այն, որ հերոսը նախորդ թագավորի ազգականն է, սովորաբար՝ իգական գծով, որ թագավորը ինչ-ինչ պատճառներով, մեծ մասամբ իշխանությունից զրկվելու երկյուղից դրդված, հետապնդում է մանուկ հերոսին, փորձում սպանել նրան։ Սա հրաշքով ազատվում է, երկար տարիներ անցկացնում անհայտության մեջ, մի հասարակ մարդու՝ հովվի կամ հողագործի ընտանիքում, ապա վերադառնալով, տիրանում գահին ու պատժում իրեն հետապնդողին։ Նման ավանդություններ, որոնք ընդգրկում են կամ ամբողջ այս սյուժեն, կամ նրա մի մասը, գոյություն ունեն աքկադական դինաստիայի հիմնադիր Սարգոնի (մ. թ. ա. XXIV դար)[19], առասպելական Հռոմուլոսի[20], Կյուրոս մեծի[21] և շատ ուրիշների մասին։ Դրանցից մեկն էլ հյուսվել է հայոց Արտաշեսի շուրջը և հասել մեզ Խորենացու «Հայոց պատմության» էջերում։ Երվանդ թագավորը, իշխանությունը կորցնելու երկյուղից դրդված, հետապնդում և մահ է սպառնում մանուկ Արտաշեսին։ Վերջինս փախչում է և ապաստանում հովիվների մոտ։ Տարիներ անց հարևան երկրի թագավորի օգնությամբ Արտաշեսը տիրանում է հայոց գահին, իսկ Երվանդը ընկնում է պայքարում[22]։

Ի տարբերություն Ստրաբոնի տվյալների, Խորենացու միջոցով մեզ հասած ավանդության մեջ Երվանդը ներկայանում է ոչ թե որպես օրինական, այլ բռնակալ թագավոր, թագավորական տոհմին պատկանող կանանցից մեկի ապօրինի զավակ, իսկ Արտաշեսը՝ որպես գահից զրկված թագաժառանգ։ Քանի որ կասկածից վեր է Երվանդի՝ Հայաստանում դարեր իշխած Երվանդունի դինաստիայի վերջին ներկայացուցիչ, ուրեմն և օրինական թագավոր լինելու հանգամանքը, ապա վերոհիշյալ երանգավորումը պետք է դիտել որպես Արտաշեսյան դինաստիայի կողմից հետագայում իր ծագման կապակցությամբ

---

18 Տե՛ս *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении *էջ 162 և հաջ.*, Գ. Տիրացյան, *Արտաշես Ա-ի արամեատառ նորագյուտ արձանագրությունը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1957*, № 10, *А. Г. Периханян*, Арамейская надпись из Зангезура, *ՊԲՀ, 1965, № 4*։

19 Տե՛ս *В. В. Струве*, Хрестоматия по древней истории, М., 1936, *էջ 42*։

20 Տե՛ս *Plut.*, Romul., *3 և հաջ.*։

21 Տե՛ս *Herod.*, *I, 108 և հաջ.*։

22 Տե՛ս Խորենացի, *Բ, լէ և հաջ.*։

առաջադրված պաշտոնական տեսակետի արտացոլում։ Այսուհանդերձ, այն նաև պատմական որոշ հիմք ունի։

Հայտնի է, որ Արտաշեսը Սևանի ափին գտնված արամեերեն արձանագրություններում իրեն անվանում է «Արտաշես արքա, Զարեհի որդի Երվանդական»[23], իսկ Սիսիանի արձանագրության մեջ նաև՝ «Բարի»[24], այսինքն՝ իրեն համարում է իր իսկ տապալած Երվանդունի դինաստիայի շառավիղ։ Պետք է ասել, որ այս քայլի մեջ արտառոց ոչինչ չկա. հին աշխարհում դա, եթե ոչ սովորական, գոնե հաճախակի հանդիպող երևույթ էր, որի դրդապատճառները զուտ քաղաքական բնույթ էին կրում։ Իշխանությունը գրաված նոր տիրակալը իրեն հայտարարում էր նախորդ դինաստիայի շարունակող, որպեսզի դրանով ամրապնդեր իր իշխանության իրավական հիմքերը և բարձրացներ իր հեղինակությունը։ Հեռու չգնալու համար, որպես օրինակ կարելի է հիշատակել հենց նույն Երվանդունիներին, որոնք, ըստ Ստրաբոնի, լինելով Դարեհ Վշտասպյանին ժամանակակից պարսկական մի մեծատոհմիկի՝ Հյուդարնեսի (Վիդարնա) սերունդը[25], իրենց հայտարարում էին Աքեմենյանների շառավիղը[26]։

Նմանօրինակ քայլ է կատարել և Արտաշեսը, որին, հավանորեն, հատկապես հրապուրել է Երվանդունիների միջոցով Աքեմենյանների տան հետ առնչվելու հնարավորությունը[27]։ Սակայն Երվանդունիները իրենց հավակնությունների համար իրական հիմք ունեին. նրանցից մեկը՝ Հայաստանի սատրապ Երվանդը (մ. թ. ա. V—IV դարերի եզրին) իսկապես որ ամուսնացած է եղել Աքեմենյան Արտաքսերքս Գ-ի դստեր՝ Հռոդոգունեի հետ[28]։ Այսպիսի մի հիմք ունեցած պիտի լինի նաև Արտաշեսը։ Հավանական է, որ նա իգական գծով ծագում էր իշխող դինաստիայից։ Արտաշեսի հայրը՝ Զարեհը, Հայաստանի մեծատոհմիկներից մեկը, կարող է եղած լինել Երվանդունի թագավորող տոհմին պատկանող կանանցից մեկի ամուսին, այստեղից էլ՝ Արտաշեսի առնչությունը այդ դինաստիային։

Արտաշեսը ծնված պիտի լինի մ. թ. ա. 230-ական թվականներին։ Նա հասունացել է այնպիսի մի ժամանակ, երբ Սելևկյանները հաստատել էին իրենց գերիշխանությունը Հայաստանի վրա։ Ինչպես իր սերնդի և ծագման շատ մարդիկ, նա ծառայել է Սելևկյանների բանակում, հասել բարձր պաշտոնների և ի վերջո Անտիոքոս Մեծի կողմից Հայաստանի ստրատեգ (կառավարիչ) նշանակվել։ Նրա հետ միաժամանակ Հայաստանի հարավ-արևմտյան մասում՝ Ծոփքում, ստրատեգ է կարգվել Արտաշեսի զինակիցը, միգուցե նաև տոհմա-

---

23 Տե՛ս *И. М. Дьяконов, К. Б. Старкова*, Надписи Артаксия (Арташеса I), царя Армении, ВДИ, 1955, № 2, էջ 168, ծան. 1, Գ. Տիրացյան, Արտաշես Ա-ի արամեատառ նորագյուտ արձանագրությունը, էջ 108։

24 Տե՛ս *А. Г. Периханян*, Арамейская надпись из Зангезура, էջ 108։

25 Տե՛ս *Strabo*, XI, 14, 15։

26 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, 1890, էջ 303։

27 Տե՛ս Գ. Տիրացյան, Խորենացու «Պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ, էջ 14։

28 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 283 և 305։

*կիցը՝ Զարեհը[29]։ Նրանք այնուհետև, ինչպես ասվեց, ապստամբել են և անկախ թագավորներ դարձել։*

**Ստրաբոնը հայկական պետության սահմանների ընդարձակման մասին։** *Հույն պատմագիր ու աշխարհագիր Ստրաբոնը տալիս է այդ իրադարձությանը հաջորդած պատմական անցքերի հակիրճ, բայց զարմանալի վառ նկարագրությունը[30]։ «Պատմում են,— գրում է Ստրաբոնը, —որ Հայաստանը սկզբում փոքր է եղել և աճել է Արտաքսիասի ու Զարիադրիսի ջանքերով, որոնք նախապես Անտիոքոս Մեծի ստրատեգներն էին։ Այնուհետև, սրա պարտությունից հետո, մեկը թագավորելով Սոփքում, Ակիսենեում, Օդոմանտիսում և այլ երկրների վրա, իսկ մյուսը՝ Արտաքսատայի շուրջը ընկած հողերի վրա, ծավալվեցին հարևան ժողովուրդներից երկրամասեր գրավելով։ Մեդացիներից (գրավվեցին) Կասպիանեն, Փավնիտիսը և Բասորոպեդան, իբերներից՝ Պարիադրեսի ստորոտի հողերը, Խորձենեն, Գոգարենեն, որը ընկած է Կուր գետի մյուս կողմում, խալիբներից և մոսսինոյկներից՝ Կարենիտիսը և Դերքսենեն[31], որոնք սահմանակից են Փոքր Հայքին կամ նրա մասն են կազմում, կատաոններից՝ Ակիլիսենեն և Անտիտավրոսի շուրջն ընկած հողերը, ասորիներից՝ Տամորիտիսը[32]։ Այսպիսով, բոլորը միալեզու են»։*

*«Այսպիսով բոլորը միալեզու են»․ Ստրաբոնը այս վիճակը գնահատում է որպես իր նկարագրած նվաճումների անմիջական հետևանք։ Սակայն մի հայացք ձգելով ժամանակի պետական բազմատարր ու խայտաբղետ միավորումների վրա (վերը որպես օրինակ բերվեց Սելևկյանների պետությունը), համոզվում ենք, որ տարբեր էթնիկական տարրերի զուտ քաղաքական միավորումը, անգամ երկարատև ժամանակով, երբեք չէր հանգեցնում այդ տարրերի միալեզու դառնալուն, թեև տեղի էին ունենում համահարթման այլ եռանդուն պրոցեսներ։ Սելևկյանների պետությունը իր գոյության երկուհարյուր տարիների ընթացքում ամենևին միալեզու չդարձավ։ Միալեզու դառնալու պատճառն, ուրեմն, այստեղ նվաճումների մեջ չէր, այլ շատ առավել չափով նրանց նախորդած ազգակազմավորման (էթնոգենեզի) այն պրոցեսների, որոնցով, ինչպես ասվեց, արդեն մեկ հազարամյակ է, ինչ համակվել էր Հայկական լեռնաշխարհը։ Նվաճումները քաղաքական ձևավորում տվեցին արդեն էական չափով գոյություն ունեցած էթնիկական այդ իրավիճակին, և իհարկե, նպաստեցին նրա հետագա ամրապնդմանը, այսինքն՝ հայկական էթնոսի զարգացմանը։ Ստրաբոնի նկարագրած իրադարձությունները, այսպիսով, ավելի ճիշտ է բնութագրել «միավորում» և ոչ «նվաճում» բառով։*

*Պատմական այս իրողությունների մեջ Ծոփքի դերը անհամեմատ ավելի համեստ էր, քան բուն Հայաստանինը։ Առաջինին է վերաբերում Ստրաբոնի թված երկրներից թերևս միայն Ծոփքին հարող Ակիլիսենեի, ինչպես և Անտի-*

---

*29 Արտաշեսի և Զարեհի տոհմակցության օգտին է խոսում վերջինի անվան և առաջինի հոր անվան զուգադիպումը։ «Զարեհ» անունը հետագայում ևս ընդունված է եղել Արտաշեսյանների տոհմում։ Այսպես, այդ անունն են կրել Արտաշես Ա-ի որդիներից մեկը և Տիգրան Բ-ի անդրանիկ որդին։*

*30 Տե՛ս Strabo, XI, 14, 5։*

*31 Բնագրում՝ սխալմամբ Քսերքսենե։*

*32 Բնագրում՝ Տամոնիտիս (տե՛ս ստորև, էջ 547, ծան. 81)։*

տավրոսի ստորոտներում ընկած հողերի ձեռք բերումը. մնացածը կապվում է բուն Հայաստանի հետ։

Ստրաբոնի պատմածից երևում է, որ հայկական պետությունը ընդարձակվել է բոլոր չորս ուղղություններով, դեպի արևելք՝ Ատրպատական—Մարաստանի կողմը, հյուսիս՝ Վիրքի կողմը, արևմուտք՝ Փոքր Հայքի կողմը և վերջապես հարավ՝ Ասորիքի, այսինքն՝ Սելևկյանների պետության կողմը։ Այս առաջխաղացման առանձին փուլերի հերթականության ժամանակագրությունը պարզ չէ, բայց հիմք կա կարծելու, որ Ստրաբոնի մոտ տեղ գտած թվարկման կարգը հիմնված է ժամանակագրական հերթականության վրա։ Իսկապես, դժվար է պատկերացնել, թե Արտաշեսը իր գործունեությունը սկսել է, խորացնելով կոնֆլիկտը Սելևկյանների պետության հետ, որը թեև պատերազմում պարտություն էր կրել Հռոմից, բայց դեռևս հզոր պետություն էր, կամ էլ նոր կոնֆլիկտ ստեղծելով արևմուտքի՝ Կապադովկիայի ու Պոնտոսի ոչ մեծ, բայց ուժեղ պետությունների հետ[33]։ Նրա հայացքը նախ և առաջ պետք է դառնար դեպի արևելք և հյուսիս, դեպի Ատրպատական—Մարաստանի քաղաքականապես դեռևս թույլ կազմակերպված հյուսիսային ծայրամասերը և դեպի Վիրք։

**Արտաշեսի արևելյան և հյուսիսային արշավանքները:** Արևելյան ուղղությամբ կատարված արշավանքների հետևանքով ձեռք բերված երեք երկրամասերից (Կասպիանե, Փավնիտիս, Բասորոպեդա) վերջինն, ըստ Ս. Տ. Երեմյանի համոզիչ կարծիքի, համընկնում է Պարսպատունիք գավառին, երկրորդի տեղը պարզ չէ, իսկ առաջինը՝ Կասպիանեն, քաջ հայտնի է։ Դա Կուրի և Արաքսի գետախառնուրդի շրջանն է և նրանից արևելք, մինչև Կասպից ծովն ընկած երկիրը, որը նույնանում է Փայտակարանի հետ[34]։ Խորենացին այն անվանում է Կասբից երկիր[35] և հենվելով Օղյումպ քրմի պատմածի վրա, մանրամասնություններ հաղորդում Արտաշեսի՝ դեպի այդ կողմ կատարած արշավանքի մասին[36]։ Խորենացու հաղորդմամբ, այդ երկիրը նախապես էլ Հայաստանի իշխանության տակ է եղել և Արտաշեսի օրոք ապստամբել է։ Արտաշեսը զորք է ուղարկում զորավար Սմբատի ղեկավարությամբ, որը ճնշում է ապստամբությունը և դեպի Հայաստան գերեվարում երկրի թագավոր Զարդմանոսին ու բնակչության մեծ զանգվածներ։ Այն հանգամանքը, որ այստեղ Կասբից երկիրը (Ստրաբոնի Կասպիանեն) դիտվում է որպես հայկական պետության ապստամբած մաս և ոչ նվաճվող երկիր, թերևս արտացոլումն է այն իրողության, որ հայկական էթնոսը արդեն նախապես տարածված պիտի լիներ այս երկրամասում։ Ուստի և նրա քաղաքական միավորումը հայկական պետության հետ կարող էր ընկալվել որպես վերամիավորում։

Խորենացու «Հայոց պատմության» նույն այդ դրվագում հաղորդվում է Արտաշեսի նաև հյուսիսային այն արշավանքների մասին, որոնք հիշատակ-

33 Հմմտ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 118։
34 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, Երևան, 1963, էջ 57։
35 Տե՛ս Խորենացի, Բ, ծգ։ Տես նաև՝ Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 67, 88։
36 Տե՛ս Գ. Տիրացյան, Խորենացու «Հայոց Պատմության» և Ստրաբոնի «Աշխարհագրության» մի քանի տվյալներ, էջ 8 և հաջ.։

ված են Ստրաբոնի մոտ։ Վրաց արքան, պատմում է Խորենացին, ապստամբեցնում է հյուսիսային կողմերը և գերի վերցնում հայոց արքայորդիներից մեկին՝ Զարեհին, որը նշանակված էր հյուսիսային զորքի հրամանատար։ Արտաշեսը զորք է ուղարկում Վրաստան և ազատագրում Զարեհին[37]։ Նույն այս արշավանքների պատմության ավելի մանրամասն մի տարբերակ պահպանվել է «Քարթլիս ցխովրեբա»-ում[38]։ Այստեղ նկարագրված է երեք արշավանք։ Առաջին անգամ զորքով գալիս է ինքը՝ Արտաշեսը, գրավում Մցխեթան, հպատակեցնում երկիրը և հեռանում։ Երկրորդ անգամ գալիս է նրա որդի Զարեհը՝ ճնշելու վրացիների և օսերի (իմա՝ ալանների) ապստամբությունը։ Զարեհը գերի է ընկնում։ Երրորդ անգամ գալիս է Արտաշեսի Սմբատ զորավարը՝ Արտավազդ և Տիգրան արքայորդիների հետ։ Սրանք ազատում են Զարեհին և դաշնագիր կնքում, որի համաձայն վրացիները և օսերը պարտավորվում են պատերազմի դեպքում օժանդակ զորք տրամադրել Արտաշեսին և նրա պատկերով դրամ հատել։

Թերևս նույն հյուսիսային արշավանքների արձագանքն է հնչում նաև հայերի և Հյուսիսային Կովկասի լեռնաբնակ ալանական ցեղերի՝ Վրաստանի տերիտորիայի վրա տեղի ունեցած պատերազմի պատմության մեջ[39]։ Այս ցեղերի նվաճման մասին պատմելիս Խորենացին նորից հիշատակում է մեծաթիվ մարդկանց գերեվարությունը դեպի Հայաստան։

Ստրաբոնի տեղեկությունները հյուսիսային արշավանքների մասին շատ որոշակի են. նրանց հետևանքով հայկական պետությանն են միացվել Պարիադրես (Պարխար) լեռների ստորոտի հողերը, Խորձենեն, այսինքն՝ Կղարջք գավառը և Գոգարենեն՝ Գուգարքը[40]։ Վրացական աղբյուրի վկայակոչված տվյալների մեջ հատկապես հետաքրքրական է այն, որ Արտաշեսի իրականացրած արշավանքները կապված են Ջավախքի ու Թռեղքի հետ, գավառներ, որոնք հենց Ստրաբոնի մոտ հիշատակված Գոգարենեի (Գուգարքի) մասն են կազմել։

Ս. Տ. Երեմյանի կարծիքով, Ստրաբոնի հիշատակած Պարիադրես (Պարխար) լեռների ստորոտը համապատասխանում է Գողերձական գավառին, և երեք հիշյալ երկրամասերը, այսինքն, նաև Գոգարենեն ու Խորձենեն (Կղարջքը և Արտահանը) լինելով Հայաստանը ներառնող Աքեմենյան սատրապության մասեր, ողջ III դարի ընթացքում ընդգրկված են եղել Երվանդունիների պետության մեջ ու միայն դարավերջում են անցել Վրաստանին։ Այս դատողությամբ, Արտաշեսի կողմից նրանց նվաճումը պետք է դիտել որպես վերամիավորում։

37 Խորենացի, Բ, ծգ։

38 Տե՛ս Լ. Մ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934, էջ 158—160։

39 Մ. Խորենացու հաղորդած այս ավանդության մեջ (Բ, ծբ) թերևս շփոթված են երկու պատմական անձնավորություններ. Արտաշես Ա-ը իր հյուսիսային արշավանքներով և Տրդատ Ա-ը (մ. թ. 66—մոտ 80) ալանների դեմ մղած պատերազմներով։

40 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 59, հմմտ. նաև՝ Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 117։











Արտաշես Ա-ի սահմանաքարերը արամեերեն արձանագրություններով

Արտաշեսի՝ արևմտյան ու հարավային ուղղություններով առաջխաղացման կապակցությամբ նշենք, որ վիճակն այստեղ ավելի հատկանշական էր. հայկական հզորացող պետության քաղաքական իշխանությունը տարածվում էր այնպիսի երկրամասերի վրա, որոնք վաղուց ի վեր դարձել էին հայկական էթնոսի տարածման ասպարեզ։ Եթե խոսենք Դերքսենեի (Դերջան) և Ակիլիսենեի (Եկեղիք) մասին, ապա սրանք հայերի հնագույն բնօրրանի՝ Հայասայի մասերն էին կազմում։ Ինչ վերաբերում է Տամորիտիսին (Տմորիք), ապա հունական պատմական ավանդությունը հայերին է վերագրում ոչ միայն այդ շրջանի, այլև շատ ավելի հարավ ընկած Ադիաբենեի և Կալաքենեի (Ասորեստանի հին մայրաքաղաք Կալխուի շրջակայքը) շրջանների գաղթեցումը հայերի կողմից հնագույն ժամանակաշրջանում[41]։

## 3. ԵՐԿՐԻ ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔԸ

Արտաքին ընդարձակմանը զուգընթաց, հայկական պետությունը ապրում էր ներքին սրընթաց զարգացման ժամանակաշրջան։ Մոտ անցյալի համեմատաբար փոքր ու թույլ թագավորությունից, որի մեջ պահպանվում էին աքեմենյան սատրապության վարչական կառուցվածքի շատ գծեր, Հայաստանը վերաճում էր տնտեսապես զորեղ, ինքնուրույն ու ընդարձակ պետության և բնականաբար կարիք էր զգում բազմաթիվ բարեփոխումների՝ տնտեսական, վարչաքաղաքական, ռազմական, մշակութային և այլ մարզերում, որոնք և հետզհետե պետք է իրականանային։

**Արտաշեսի հողային ռեֆորմը։**— Այդ բարեփոխումների շարքում կարևոր տեղ է գրավում հողային ռեֆորմը, որի անհրաժեշտությունը թելադրվում էր երկրում մասնավոր հողատիրության և ստրկատիրության զարգացման բուռն ընթացքով։ Այդ պրոցեսները, որոնց մասին մանրամասն պատկերացում կտրվի համապատասխան գլխում, անշուշտ, ծայր էին առել դեռ շատ վաղուց, դեռևս Աքեմենյանների տիրապետության օրոք, բայց առանձնապես ուժեղացել էին հելլենիստական պետությունների առաջացման ժամանակաշրջանից սկսած։ Մ. թ. ա. II դարի սկզբներին Հայաստանում ստեղծվեցին մասնավոր հողատիրության ծավալման նոր ազդակներ։ Դրանք էին՝ մի կողմից շահագործող դասակարգի շարքերի ընդլայնումը ի հաշիվ ուժեղացող և ուռճացող ռազմական ու վարչական ապարատի բարձր և ստորին ներկայացուցիչների, նորաստեղծ քաղաքների վերնախավի ու տաճարների քրմության և մյուս կողմից՝ ռազմական արշավանքների ընթացքում նորանոր հողերի ձեռք բերումը և հատկապես մարդկային զանգվածների, այսինքն՝ էժանագին աշխատուժի գերեվարությունը Հայաստան։

Վերջին հանգամանքը առանձնապես մեծ նշանակություն ուներ մասնատիրական նոր տիպի, ստրկական աշխատանքով վարվող տնտեսությունների՝ դաստակերտ-ագարակների առաջացման և բազմացման համար։

Հողի մասնավոր սեփականության զարգացումը մեծ վտանգ էր ներկայաց-

---

[41] Տե՛ս Strabo, XI, 14, 12։

նում համայնական հողատիրության համար։ Սկզբնապես մասնավոր հողատերերի բաժին էին դառնում խամ ու խոպան, գյուղական համայնքների կողմից չօգտագործվող ու նրանց սահմաններից դուրս գտնվող հողերը։ Այնուհետև հերթը պիտի հասներ նաև համայնքային հողերին։ Հարուստ և ուժեղ հողատեր-ստրկատերերը այս կամ այն ձևով փորձում էին յուրացնել նաև այդ հողերի մի մասը։ Համայնքը չէր կարող հանդուրժել իր հողերի մասնատումը և ծավալված պայքարը ուղեկցված պիտի լիներ սուր ընդհարումներով։

Այս վիճակին վերջ պիտի դներ հողային ռեֆորմը՝ մեզ հայտնի առաջին ագրարային ռեֆորմը հայ իրականության մեջ։ Այդ իրողության մասին մեզ հաղորդում են Արտաշեսի կանգնեցրած և մեզ մի քանի նմուշներով հասած հողաբաժան սահմանաքարերը[42] և Խորենացու «Հայոց պատմությունը»։ Վերջինիս Բ գրքի ծղ գլխում կարդում ենք. Արտաշեսը «հրամայում է որոշել գյուղերի և ագարակների սահմանները, որովհետև բազմամարդացրել էր Հայոց աշխարհը՝ բազմաթիվ ազգեր ներմուծելով և բնակեցնելով լեռներում, հովիտներում և դաշտերում։ Եվ հաստատեց սահմանների այսպիսի նշաններ. հրաման տվեց կոփել քառակուսի քարեր և վրանները պնակաձև փոսեր անելով, տնկել հողի մեջ, իսկ դրանց վրա կանգնեցնել երկրի մակերևույթից փոքր բարձրություն ունեցող քառակուսի աշտարակներ... Եվ ասում են,— եզրափակում է հեղինակը,— որ Արտաշեսի օրոք Հայոց աշխարհում անմշակ հող չկար՝ ոչ լեռնային, ոչ էլ դաշտային, այնքան շեն էր երկիրը»։

Քարերի այս նկարագրությունը, մանավանդ Խորենացու՝ նրանց տրված մեկնաբանությունը, երկար ժամանակ համարվել են Խորենացու երևակայության արդյունք[43]։ Հետագայում, քարերի նմուշների հայտնաբերումից հետո, նկարագրությունը համարվել է վավերական[44], իսկ մեկնաբանությունն ընդունվել որպես Արտաշեսի ժամանակից շուրջ 700 տարի հետո ապրած Խորենացու կռահում։ Ներկայումս արդեն հիմք կա կարծելու, որ Խորենացին բացի քարերից, իր ձեռքի տակ նրանց մասին ունեցել է նաև գրավոր հիշատակություն՝ Օղյումպ քրմի «Մեհենական պատմության» մեջ, որտեղից էլ առել է նրանց մեկնաբանությունը։ Սրանով, հասկանալի է, վերջինիս արժեքը կրկնապատկվում է[45]։

---

42 Տե՛ս վերը, էջ 529, ծանոթ. 18։ Տե՛ս նաև A. Dupont-Sommer, Deux inscriptions araméens trouvées près du lac Sevan (Arménie), „Syria", XXV (1946—1948), № 1—2 և հաջ., որը այլ մեկնաբանություն է տալիս այս արձանագրություններին։

43 Տե՛ս Г. Халатьянц, Армянские Аршакиды в Истории Армении Моисея Хоренского. Опыт критики источников, մաս 1, էջ 278։

44 Առաջին անգամ Հ. Ա. Օրբելու կողմից՝ 1941 թվականին, հենվելով արձանագրության՝ Ա. Յա. Բորիսովի ընթերցման վրա, որը հրատարակվեց ավելի ուշ (А. Я. Борисов, Надписи Артаксия (Арташеса) царя Армении, ВДИ, 1946, № 2).

45 Բացառված չէ նույնիսկ, որ Խորենացու տված նկարագրությունն հիմնված լինի ոչ թե անմիջականորեն սահմանաքարերի, այլ նրանց նկարագրության վրա, որի օգտին են խոսում քարերի տեսքի և Խորենացու նկարագրածի միջև եղած տարբերությունները, առաջին հերթին այն, որ Խորենացու մոտ խոսք չկա քարերի վրա արձանագրությունների առկայության մասին (տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, էջ 186 և հաջ.)։

Հիրավի, մեկնաբանության բոլոր կետերն էլ այնպիսի շեշտակիությամբ են բնութագրում արտաշեսյան Հայաստանի տնտեսական վերելքի էությունը, որ չեն կարող Խորենացու ժամանակի ծնունդ լինել։ Նկատի ունենք այն, որ հողերի սահմանազատման անհրաժեշտությունը բխեցվում է երկրի բազմամարդացման հանգամանքից, հատկապես նորանվաճ երկրներից բերված մարդկային զանգվածների առկայությունից, իսկ վերջինս էլ կապակցվում անմշակ հողերի սպառման հետ, որը, ինչպես վերը նշվեց, էժան, ստրկական, հիմնականում գերեվարյալների ձեռքերով վարվող մասնավոր հողային տնտեսությունների ծաղկման հետևանք էր։ Վերջապես, ամենայն հստակությամբ բնորոշվում է Արտաշեսի կատարած գործողությունը, որպես մասնատիրական տնտեսություններին (ագարակներին) առնչվող հողերի սահմանազատումը գյուղերին (գյուղական համայնքներին) պատկանող հողերից։

Վերջին նշումը («հրամայում է որոշել գյուղերի և ագարակների սահմանները») միանգամից լույս է սփռում իրականացված ռեֆորմի սոցիալական էության վրա, որը այլապես մթության մեջ կմնար, որովհետև մեզ հասած սահմանաքարերի արձանագրությունները այդ էությունը չեն բացահայտում, չեզոք ձևով հայտնելով պարզապես, որ Արտաշեսը հողի բաժանում է կատարել[46]։

Ունենալով Խորենացու պահպանած ցուցումը, կարելի է արդեն եզրակացնել, որ ռեֆորմը ելնում էր թագավորի հիմնական նեցուկը հանդիսացող նորելուկ հողատեր-ստրկատերերի՝ ռազմա-վարչական ազնվականության, շահերից, քանի որ օրինականացվում էին տեղի ունեցած փոփոխությունները, այսինքն՝ այդ դասի ունեցած նվաճումները։ Բայց միևնույն ժամանակ այն ուղղված էր համայնքի դիրքերի եթե ոչ հետագա ամրապնդմանը, ապա գոնե պահպանմանը ինչ-որ հաստատուն մակարդակի վրա։ Չպետք է մոռանալ, որ համայնքն էր հիմնական հարկային միավորը, և նա էր թագավորին տալիս հետևակ զորքի մեծ մասը և օժանդակ զորամասեր։

Այլ նորամուծություններ: Ընդարձակ պետության կառավարման գործի դյուրացման նպատակն է հետապնդել երկրի վարչական բաժանման ռեֆորմը, որ կատարվել է Արտաշեսի կամ գուցե նրա հաջորդների օրոք։ Հայաստանի տերիտորիան բաժանվել է 120 ստրատեգիաների, որոնք ղեկավարվում էին թագավորի կողմից կարգված կառավարիչների՝ ստրատեգոսների միջոցով։ Միաժամանակ տնօրինվել է ստրատեգիաների ներքին կառուցվածքը՝ նրա վարչա-տնտեսական և ռազմական ապարատը, որը փոքրացված չափերով հավանորեն կրկնում էր պետական ապարատի պատկերը։

Կատարված բազմաթիվ արշավանքները վկայում են, որ բարենորոգման պետք է ենթարկված լիներ նաև ռազմական բնագավառը՝ զորքի հավաքագրման, կազմավորման ու ղեկավարման գործը։ Անտիկ հեղինակները այս մասին որոշակի տեղեկություններ չեն հայտնել։ Խորենացին է, որ հաղորդում է մի բարեփոխության մասին. Արտաշեսը զորքի իշխանությունը բաժանել է չորս մասի, կազմելով արևելյան, արևմտյան, հարավային և հյուսիսային զորա-

---

46 Տե՛ս Գ. Տիրացյան, Արտաշես Ա-ի արամեատառ նորագյուտ արձանագրությունը, էջ 107։

*վարություններ[47]։ Այս հաղորդումը փոխարձագանքում է Ստրաբոնի վերոհիշյալ վկայությանը նույն չորս ուղղություններով կատարված արշավանքների մասին։*

*Խորենացու մոտ պահպանվել են նաև այլ տեղեկություններ այդ ժամանակ կատարված նորամուծությունների մասին, ինչպես, օրինակ, տոմարի նորոգման, երկրի լճերի և գետերի վրայով նավագնացության գործի բարեկարգման, ինչպես և այլևայլ «մեծամեծ արվեստների ու գիտությունների» զարգացման և այլնի մասին[48], սակայն այս տվյալները դեռ հետազոտման ու ստուգման են կարոտ[49]։*

*Նոր վարչական բաժանման, երկրի հողային կադաստրի (հաշվառման ցուցակի, առանց որի հողային ռեֆորմը չէր կարող իրականացվել) կազմման և այլ հանգամանքները, կենտրոնական իշխանության ամրապնդումը պիտի հանգեցնեին արքունի նոր դիվանի (գրասենյակի) ստեղծմանը կամ առնվազն՝ հնի կանոնավորմանը, քանի որ Երվանդունիները ևս պետք է այդպիսի դիվան ունենային, գեթ պահպանած լինեին աքեմենյան սատրապական դիվանը։ Արքունի դիվանի լեզուն Արտաշեսի օրոք, դատելով նրա արձանագրություններից, արամեերենն էր, ասել է, թե նա ժառանգաբար ընդունել էր աքեմենյան տերության դիվանի լեզուն[50]։ Բայց հունարենը ևս, ինչպես ցույց են տալիս Արմավիրի արձանագրությունները, արդեն Հայաստան էր մուտք գործել Արտաշեսից էլ առաջ, և, իհարկե, հավակնորդ էր պետական լեզու լինելու, մանավանդ, որ նրանով պիտի հաղորդակցվեին հարևան հելլենիստական երկրների հետ։*

**Արքունիքը:** *Նոր պայմաններում շեշտակիորեն աճում էր թագավորի, նրա տոհմի ու շրջապատի՝ արքունիքի, դերը երկրի կառավարման գործում և քայլեր պիտի արվեին դրանց դրության ամրապնդման ու հեղինակության բարձրացման ուղղությամբ։*

*Այժմ շոշափելի հիմք ունենք եզրակացնելու, որ հայոց արքունիքի այն բարդ կառուցվածքը, նրա մեջ ընդգրկված տասնյակ պաշտոնները, որոնց մասին ամբողջական պատկերացում ենք ստանում միայն IV դարի հայ Արշակունյաց արքունիքի մասին եղած մանրամասն հաղորդումներից, զարգացման որոշ աստիճանի էր հասել արդեն Արտաշեսի օրոք։ Այդ է հաստատում Սիսիանում գտնված արձանագրությունը, որի որպես հեղինակակից՝ Արտաշես թագավորի կողքին ու նրա հետ «և» շաղկապով առնչված հանդես է գալիս «թագադիր» Նիկեփորը (կամ Նեկփառը), Ախշահրասարտի որդին[51]։ Այստեղից ոչ միայն պարզվում է, որ այն ժամանակ Հայաստանում արդեն գոյություն է ունեցել «թագադրի» պաշտոնը, և որ դրա կրողը մեծ դեր է խաղացել պետության մեջ ու եղել թագավորի մերձավորը, այլև կամուրջ է ձգվում դեպի Խորենացու նկարագրած Սմբատ «թագադիր ասպետը»՝ Արտաշես թագավորի աջ ձեռքը, նրա բոլոր ձեռնարկումների մասնակիցն ու իրագործողը։ Ավելի ճիշտ, այդ*

47 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, ծգ։*

48 *Տե՛ս նույն տեղում. Բ, ծթ։*

49 *Հմմտ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 130։*

50 *Տե՛ս Г. А. Тирацян,* Ахеменидские традиции в древней Армении, *էջ 3։*

51 *Տե՛ս A. Perikhanian*, Une inscription araméene du roi Artašes trouves à Zanguézour (Siwnik') REANS, № 5, т. III, 1966, *էջ 18 և հաջ.։*

երկու դեմքերը նույնանում են, ենթադրել տալով, որ այդ անձի անունը Խորենացու (թե նրա աղբյուր Օղյումպի՞) մոտ ինչ-ինչ պատճառով փոխվել է, կամ էլ, որ նա երկու (մի տեղական և մի հունական) անուն է կրել, երևույթ, որ հելլենիստական աշխարհում հաճախ է հանդիպում[52]։

Հավանական է, որ պատմական դեմք է Խորենացու մոտ հանդես եկող Արգամը (Արշա՞մը) ևս։ Հայ մեծատոհմիկ է, որը Երվանդի ու Արտաշեսի պայքարի պատասխանատու պահին անցել էր փայլուն հավակնորդի ճամբարը և դյուրացրել նրա գահակալումը։ Սա, իբր, Արտաշեսից ստացել է «երկրորդական գահը», պաշտոն, որի մասին հետագայում ոչինչ չի լսվում, բայց որը հնում թերևս եղել է։ Արգամը շուտով զոհ գնաց արքունիքում ծավալված ներքին պայքարին[53]։

Խորենացին հիշատակում է նաև սպարապետություն ու հազարապետություն (որն ընդգրկում էր «զամենայն գործ տանն արքունի») պաշտոնները, որոնք հանձնարարված էին երկու արքայազուններին, և քրմապետությունը, որ ստացել էր երրորդ արքայազնը[54]։

**Թագավորը, նրա տոհմը:** *Թագավորը միջոցներ էր ձեռք առնում իր անձը անհասանելի բարձրության վրա կացուցանելու։ Հելլենիստական աշխարհում լայն կիրառում ունեին թագավորական պատվատիտղոսները, որոնցով շեշտվում էր այս կամ այն տիրակալի գործունեության կամ խառնվածքի հատկանշական կողմը։ Այսպես. թագավորները անվանվում էին Նիկատոր («Հաղթական»), Եվերգետես («Բարեգործ»), Սոտեր («Փրկիչ»), Եվսեբես («Բարեպաշտ»), Փիլադելփոս («Եղբայրասեր») և այլն[55]։ Արտաշեսը ևս ունեցել է իր պատվատիտղոսը, բայց այն արտահայտված լինելով արամեերեն արձանագրության մեջ և արամեերեն տերմինով, դժվար է վճռաբար որոշել, թե հունական պատվատիտղոսներից որ մեկի համարժեքը կամ թարգմանությունն է հանդիսանում։ Արտաշեսը ընտրել է իր համար «Բարի» պատվատիտղոսը («Արտաշես արքա Երվանդական Բարի, որդի Զարեհի»), որը մեր կարծիքով ավելի շուտ հավասարազոր է «Եվսեբեսին» («Բարեպաշտ»), քան թե «Եվերգետես»-ին կամ մի ուրիշի։*

Այս պատվատիտղոսի յուրացումը թերևս կապ ունի թագավորական նախնիների, դինաստիայի պաշտամունքի հետ, որը սկիզբ է առել կամ որին թափ

---

52 Այսպես, հելլենիստական Բաբելոնիայում դեռևս III դարի կեսերին հունական անունները հազվագյուտ էին և տեղացիներին շնորհվում էին սելևկյան թագավորի կողմից։ II դարի կեսերին միայն հունական անունները, հաճախ տեղական անունների կից՝ սովորական են դառնում տեղացիների համար (*Г. Х. Саркисян,* Частные клинописные контракты из собрания Государственого Эрмитажа, ВДИ, 1955, № 4, էջ 148, ծան. 1—2)։ Գուցե «Նիկեփոր»-ը («Հաղթաբեր») Սմբատի երկրորդ անունն էր (պատվանուն), շնորհված նրան Սելևկյան թագավորի կողմից, երբ նա դեռևս (Արտաշեսի հետ մեկտեղ) ծառայելիս կարող էր լինել Սելևկյաններին։

53 Տե՛ս Խորենացի, Բ, ծա և այլն։ Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, էջ 156 և հաջ.։

54 Տե՛ս Խորենացի, Բ, ծզ։

55 Տե՛ս *A. Gutschmid*, Ueber die Beinamen der hellenistischen Könige, Kleine Schriften, IV, Lpz., 1893, էջ 115։

է հաղորդվել Արտաշեսի օրոք։ Այս երևույթը ևս հելլենիստական դարաշրջանի ամենաբնորոշ երևույթների թվին է պատկանում։ Համակված իրենց անձի ու իշխանության հեղինակության բարձրացման հոգսով, հելլենիստական շըրջանի միապետները ջանք ու միջոցներ չեն խնայել արծարծելու այդ յուրատեսակ «քաղաքական կրոնը», որի շրջանակներում նրանց աստվածային ծագում, շատ դեպքերում հենց աստվածային բնություն էր վերագրվում[56]։

Մեծ Հայքի հզոր տիրակալը ևս կարող էր աստվածային ծագման ակընկալություն ունենալ, մանավանդ, որ առնչված էր Երվանդունիների ու սրանց միջոցով՝ հզոր Աքեմենյան աշխարհակալ տան հետ։ Խորենացու հաղորդմամբ, Արտաշեսը իր նոր մայրաքաղաքում՝ Արտաշատում, նախնիների պաշտամունքին նվիրված տաճար է հիմնադրել[57], որտեղ ներկայացված էր նախնիների պատկերաշարը։ Պետք է ենթադրել, որ բացի վերոհիշյալ հռչակավոր երկու տոհմերի ներկայացուցիչներից, այդտեղ պատկերված էր նաև Արտաշեսի հայրը՝ Զարեհը (ու նրա նախնիները), որի նկատմամբ իր հարգանքը Արտաշեսը ցուցադրել է իր հիմնադրած քաղաքներից մի քանիսը նրա անունով կոչելով։

«Քաղաքական» այս կրոնի զարգացման հաջորդ քայլին՝ ապրող թագավոր անձի պաշտամունքին, Արտաշեսը, ըստ երևույթին, չի դիմել։ Համենայն դեպս թագավորող անձի պաշտամունքը հաստատող նյութեր առայժմ չկան։ Այդ քայլը կատարել է հետագայում Տիգրան Բ-ը[58]։

Արտաշեսի ռեֆորմների ու նորամուծությունների մասին մեզ հասած տեղեկությունները, իհարկե, անհամեմատ ավելի քիչ է իրականացվածից, բայց այդ քիչն էլ, ընդգրկելով հասարակական կյանքի շատ բնագավառներ, ցույց է տալիս, որ ի դեմս այդ իշխողի պատմության ասպարեզ է իջել ոչ միայն տաղանդավոր ու հաջողակ մի զորավար, այլև մեծ քաղաքագետ և պետական գործիչ։

**Նոր մայրաքաղաքի հիմնադրումը:** Ժամանակի կարևոր երևույթներից էր նաև քաղաքաշինությունը։ Հելլենիստական Առաջավոր Ասիան ընդգրկած այդ հզոր պրոցեսը, որի ընթացքում ստեղծվել էին հարյուրավոր նորանոր քաղաքներ, Հայաստանում, ինչպես տեսանք վերը, իր արդյունքներն էր տվել արդեն մ. թ. ա. III դարում։ II դարում այդ գործը շարունակվեց ավելի մեծ չափերով։ Նրա լավագույն արտահայտությունն էր Հայաստանի նոր մայրաքաղաքը՝ Արտաշատը։ Պատահական չէ, որ այն կառուցվել է Արաքսի միջին հոսանքի հովտում՝ Արարատյան դաշտում։ Այստեղ են գտնվել պատմական Հայաստանի գրեթե բոլոր մայրաքաղաքները՝ Արմավիրը, Երվանդաշատը, հետագայում Վաղարշապատը, Դվինը (այժմ էլ՝ Երևանը)։ Արարատյան դաշտը, սկսած մ. թ. ա. IV դարից, գուցե և ավելի վաղ, դառնում է Հայաստանի սիրտը։ Այստեղ

---

56 Այսպես, Պտղոմեոս Բ-ը աստվածներ էր հայտարարել իր հորն ու մորը, Անտիոքոս Ա-ը՝ իր հորը։ Հետագայում գտնում ենք Սելևկյան թագավորների աստվածացված ողջ շարանը։ Մահվանից հետո աստված էին համարվում Պերգամոնի թագավորներն ու թագուհիները, նույն սովորությունը կար Բյութանիայում, Կապադովկիայում, պարթև Արշակունիների մեջ։ Նախնիներին հատուկ սրբավայրեր ու տաճարներ էին նվիրվում։

57 Տե՛ս Խորենացի, Բ, ԽԹ։

58 Տե՛ս անդ, էջ 571։

*էին խաչաձևվում հարավից դեպի հյուսիս և Արաքսի վրայով՝ արևելքից դեպի արևմուտք տանող տարանցիկ առևտրական ուղիները, մի հանգամանք, որ վճռական նշանակություն ուներ Արարատյան դաշտի քաղաքների համար։ Ռազմա-ստրատեգիական նկատառումներն էլ, անշուշտ, իրենց դերն են խաղացել քաղաքի տեղը որոշելիս։ Ըստ Պլուտարքոսի, Արտաշատի տեղանքի ընտրողն է եղել Հաննիբալը՝ Հռոմի երբեմնի ահեղ թշնամին, որն իր պարտությունից հետո անցել էր արևելք և իր հովանավոր Անտիոքոս Գ-ի պարտությունից ու մահվանից հետո ապաստանել Հայաստանում, «բազմաթիվ օգտավետ գործերում խորհրդատու լինելով Արտաշեսին»։ Նկատելով «չօգտագործված ու անտեսված հարմարագույն ու խիստ հաճելի մի վայր, նա տեղում ուրվագծեց քաղաքի հատակագիծը»։ Թագավորը հավանեց և՛ տեղանքը, և՛ հատակագիծը ու այսպիսով կառուցվեց «Մի մեծ ու շատ գեղեցիկ քաղաք, որն անվանվեց թագավորի անունով ու հայտարարվեց Հայաստանի մայրաքաղաք»[59]։*

*Հայաստանում Հաննիբալի լինելու և Արտաշատի հիմնադրմանը մասնակցելու հնարավորության մասին[60] գիտնականների տարակուսանքը չի նսեմացնում սույն հաղորդման կարևորությունը։ Անկախ նրա հավաստիության խնդրից, այն կարող է որոշ կռվան ծառայել Արտաշատի հիմնադրումը թվագրելու համար։ Գրականության մեջ առաջարկված 166 թվականը[61] չափազանց ուշ է թվում, մանավանդ, չի համընկնում Դիոդորի այն հաղորդմանը, թե «Արտաշեսը... ապստամբելով Անտիոքոսից, իր անունով քաղաք հիմնադրեց...»[62], ըստ որի Արտաշեսի գահակալումը (189) և Արտաշատի հիմնադրումը ժամանակով իրար մոտ են եղել։ Որպեսզի Հաննիբալի առասպելի գոյացման որևէ հիմք լիներ, պետք է որ գոնե Արտաշատը հիմնադրված լիներ, եթե ոչ նրա մասնակցությամբ, գոնե նրա կենդանության օրոք, այսինքն՝ 183 թվականից առաջ։ Ընդունելի է թվում շուրջ 185 թվականը, երբ Արտաշեսը արդեն ավարտած պիտի լիներ իր հյուսիսային ու արևելյան արշավանքները։*

*Հաննիբալի մասին հաղորդումը, եթե այն վավերական էլ չէ, նաև մի երկրորդ եզրահանգման հիմք է տալիս։ Ուժի մեջ է մնում Պլուտարքոսի հաղորդման այն կետը, ուր խոսքը Արտաշատի հատակագծի մասին է։ Անշուշտ քաղաքի արտաքին տեսքը այնպիսին է եղել, որ հնարավորություն և հիմք է տվել Պլուտարքոսին (եթե սա անձամբ է տեսել քաղաքը, իսկ հակառակ դեպքում՝ նրան աղբյուր ծառայած հեղինակին) պնդելու, թե Արտաշատ քաղաքի հիմքում մեկ միասնական հատակագիծ է եղել ընկած հենց սկզբից։ Անշուշտ, քաղաքը պիտի կառուցապատված լիներ ժամանակի հելլենիստական քաղաքաշինության բոլոր կանոններով, ուղղանկյուն թաղամասեր կազմող խաչավորված փողոցներով ու շրջափակված լիներ հզոր պարիսպներով։ Հենց այդ հան-*

---

[59] *Plut.*, Lucul , 33.

[60] *Տե՛ս, օրինակ Т. Моммзен,* История Рима, т. I, М., *էջ 709։ С. М. Кркяшарян,* Возникновение городов в Армении во II в. до н. э.—III в. н. э., «Научные доклады высшей школы, Исторические науки», 1961, № 4, *էջ 154։*

[61] *Տե՛ս Fabricius*, Theophanes von Mitylene und Q. Dellius als Quellen der Geographie des Strabons, Strassburg, 1888, *էջ 32 և 131, և Հ.* Մանանդյան, *Քննական տեսություն, հատ. Ա, էջ 120։*

[62] *Diod.*, *XXXI*, *17*a.

դամանքներն են, որ առիթ են տվել նույն Պլուտարքոսին հիշատակելու Արտաշատին հռոմեացիների կողմից տրված «Հայկական Կարթագեն» մականունը, իսկ Ստրաբոնին՝ ասելու, թե Արտաշատը «գեղեցկապես շինված-բնակեցված է և երկրի թագավորանիստ քաղաքն է։ Գտնվում է գետի թերակղզի կազմող անկյունում, պարսպապատ է գետափի երկայնքով, բացի պարանոցից, իսկ պարանոցը փակված է խրամով և պատվարով»[63]։

Արտաշատի հիմնադրման մասին պատմում է նաև Խորենացին։ «Արտաշեսը գնում է այն տեղը, ուր խառնվում են Արաքսը և Մեծամորը և հավանելով բլուրը՝ այստեղ քաղաք է շինում անվանելով այն իր անունով Արտաշատ... և հանելով Երվանդի քաղաքից գերի հրեաների բազմությունը, նստեցնում է նրանց Արտաշատում»[64]։ Այստեղից իմանում ենք, որ Արտաշատ է տեղափոխվել Երվանդաշատի բնակչության մի մասը[65]։ Նորաստեղծ քաղաքը երկրի մյուս քաղաքների բնակիչներով շենացնելը այդպիսի քաղաքների բնակեցման կաղապարագույն ձևն էր հելլենիստական աշխարհում և հունարեն կոչվում էր συνοικισμός, այսինքն՝ «միասին բնակեցում», «համաբնակեցում»։ Հենց այս բառն է օգտագործում Ստրաբոնը Արտաշատ քաղաքի հիմնադրման մասին վերևում մեջբերված հաղորդման մեջ[66], դրանով իսկ հաստատելով Խորենացու ասածը։ Սակայն Հայաստանում քաղաքային կյանքը թույլ էր զարգացած և քաղաքների թիվը փոքր էր, ուստի հնարավոր չէր սահմանափակվել բնակեցման սոսկ այդ ձևով։ Անշուշտ, նորաստեղծ Արտաշատում էր տեղավորվել նաև ռազմական արշավանքների ընթացքում գերեվարված բնակչության մի մասը։

Արտաշատը գտնվել է այժմյան Խոր-Վիրապի վանքի շրջակայքում, Արաքսի ափին, և ձգվել է մինչև Փոքր Վեդի՝ Տրայանոսի արձանագրության հայտնաբերման վայրը[67]։

**Քաղաքաշինություն:** *Հետաքրքրական է նշել, որ Արտաշատ (հունական ձևը՝ Արտաքսատա) անվանաձևը որոշ զարգացման արդյունք է։ Ըստ Ստրաբոնի, քաղաքը սկզբնապես կոչվել է Արտաքսիասատա, այսինքն՝ հայերեն տառվազմ՝ Արտաշաշատ, եթե ոչ Արտաշեսաշատ[68]։ Նույն հեղինակը հիշատա-*

---

63 *Strabo*, XI, 14, 6։

64 Խորենացի, Բ, խԹ։

65 Հրեաների հիշատակությունը Խորենացու մոտ տվյալ կոնտեքստում պատմական անաքրոնիզմ է։ Իրականում հրեաները մասսայաբար Հայաստան են վերաբնակեցվել Արտաշեսի ժամանակից մեկ դար անց՝ Տիգրան Բ-ի օրոք։ Անաքրոնիզմի պատճառը Խորենացու ժամանակագրության այն յուրահատկությունն է, որի հետևանքով նրա մոտ Տիգրանի թագավորությունը ընկնում է Արտաշեսի թագավորությունից առաջ։ Վերոհիշյալ հաղորդումը պետք է հասկանալ այնպես, որ Արտաշատ էր տեղափոխվել Երվանդաշատի բնակչության մի մասը։

66 Տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, *Սինոյկիզմոսը հելլենիստական Փոքր Ասիայում և Հայաստանում*, ՊԲՀ, 1964, № 1, էջ 107—118։

67 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, *Լատիներեն արձանագրություններ Արտաշատ մայրաքաղաքից*. ՊԲՀ, 1967, № 1։

68 Որ Ստրաբոնի այս ցուցումը արհեստական մի բան չէ, ցույց է տալիս Արտաշատի քաղաքային մի դրամի վրայի արձանագրությունը, որտեղ քաղաքանունը հաղորդված է որպես— Արտաքսիսատա, այսինքն հայերեն՝ Արտաշիշատ, որ շատ նման է Ստրաբոնի հիշատակած ձևին։ Տե՛ս Ատրպետ, *Հայ թագավորների և քաղաքների դրամներ*, «Ազգագրական հանդես», XXIV գիրք, 1913, № 1։

*կում է հայկական մի այլ քաղաք ևս, դարձյալ Արաքսի վրա, Ատրպատականի սահմանների մոտ, այսինքն՝ մոտավորապես Նախճավանի կողմերը,* Arxata *անունով, որ հայերեն պիտի հնչեր Արշատ։ Հավանական է թվում, որ այս քաղաքը ևս Արտաշեսի հիմնադրածն է, և կրել է նրա անունը, միայն այդ անունը իր սղման պրոցեսի մեջ էլ ավելի հեռուն է ընթացել, քան մայրաքաղաքինը. և կամ կրճատ է արտասանվել ի տարբերումն բավական մոտիկ գտնվող մայրաքաղաքի անվան։ Նույն անունը կրող բազմաթիվ քաղաքների հիմնադրման դեպքերը չափազանց շատ են հելլենիստական դարաշրջանում, ինչպես կտեսնենք ստորև, և Արտաշեսի անունը կրող երրորդ ու չորրորդ քաղաքների առկայությունը ևս զարմանք չէր պատճառի։ Ի դեպ, հիմք կա կարծելու, որ Վանա լճի ափին այդպիսի մի քաղաք է եղել՝ «Արտաշիսյան» անունով*[69]*։*

*Վերադառնալով նորաստեղծ քաղաքների բնակեցման խնդրին, նշենք, որ միայն մայրաքաղաքը չէր բնակչության կարոտ։ Բացի թվարկվածներից, Արտաշեսի օրոք հիմնադրվել են նաև մի շարք այլ քաղաքներ, որոնք անվանվել են ոչ թե իր՝ Արտաշեսի, այլ նրա հոր՝ Զարեհի անունով. դրանք են՝ Նորշիրականի Զարեհավանը, Բագրևանդի Զարեհավանը, Հավնունիքի Զարեհավանը, Աղիովիտի Զարիշատը և Վանանդի Զարիշատը (Զարեհաշատ—Զարիշատ՝ սղման մի նոր օրինակ)։ Նոր հիմնադրված քաղաքը իշխող թագավորի հոր անունով կոչելը նույնպես եղել է հելլենիստական քաղաքաշինության մեջ ընդունված սովորույթներից մեկը*[70]*։*

*Հայաստանում քաղաքների ծաղկումը և քաղաքային կյանքի աշխուժացումը հայկական ստրկատիրական հասարակության բուռն վերելքի դրսևորումներից էին, վերելք, որ տեղի էր ունենում հելլենիստական Առաջավոր Ասիայի սոցիալ-տնտեսական նույնքան շեշտակի զարգացման հետնախորքի վրա։*

## 4. ՀԱՅԱՍՏԱՆԸ, ՓՈՔՐ ԱՍԻԱՆ ԵՎ ՍԵԼԵՎԿՅԱՆՆԵՐԸ

**Մեծ Հայքի և Ծոփքի դաշինքը:** *Ծոփքի թագավորության զարգացման մասին մեր ունեցած տեղեկությունները անհամեմատ սակավ են։ Դա մասամբ բացատրվում է այն հանգամանքով, որ նրա մաշտաբներն ու միջազգային նշանակությունը զգալիորեն զիջում էին Մեծ Հայքին։ Այսուհանդերձ, Ստրաբոնը Ծոփքի անկախացմանը հաջորդած զարգացման համար նույն ուղղությունն է նշում, ինչ որ Մեծ Հայքի համար, և ընդհանրապես Հայաստանի ընդարձակումը վերագրում է ոչ թե սոսկ Արտաշեսի, այլ սրա և Զարեհի միասնական ջանքերին՝ առանց սահմանազատելու յուրաքանչյուրի կատարածը։ Այստեղից պետք է եզրակացնել, որ նրանք ինչ-որ սահմաններում և ինչ-որ ժամանակա-*

---

69 *Տե՛ս С. Т. Еремян,* Развитие городов и городской жизни в древней Армении, ВДИ, *1953, № 3, էջ 14։*

70 *Այսպես, Սելևկյան դինաստիայի հիմնադիր Սելևկոս Նիկատորը իր հիմնադրած քաղաքներից 16-ը իր հոր՝ Անտիոքոսի, անունով անվանել է Անտիոքներ։ Նրա որդի Անտիոքոս Ա-ը հիմնադրել է մի քանի Սելևկիաներ և այլն (App., Syr., 57)։*

*հատվածում միասնաբար, ձեռք-ձեռքի տված են գործել։ Նվազ հավանական ենթադրություն կլիներ, թե Զարեհի օժանդակ զորամասերը մասնակցել են Արտաշեսի բոլոր արշավանքներին և՝ հակառակը։ Շատ ավելի ընդունելի է, որ Արտաշեսն ու Զարեհը գործակցել են այնպիսի մի ուղղության վրա, որտեղ նրանց նպատակները և շահերը կարող էին համընկնել։ Այդպիսի ուղղություն էր միայն փոքրասիականը։*





Սելևկոս Դ-ի (187—175) դրամը

*Ստրաբոնի հիշատակած երկրամասերից այս ուղղության վրա էին գտնըվում Անտիտավրոսի ստորոտի հողերը, Ակիլիսենեն (Եկեղյաց), Դերքսենեն (Դերջան), մասամբ Կարենիտիսը (Կարին)։ Սրանք էլ, ուրեմն, հանդիսացել են Արտաշեսի ու Զարեհի համատեղ ջանքերի կիրարկման կետ։ Թե ինչ ձևով են բաժանվել այս տերիտորիաները երկուսի միջև՝ լրիվ պարզ չէ։ Եթե կարելի է վստահ լինել, որ Կարենիտիսն ու Դերքսենեն անցել են Մեծ Հայքին, իսկ Անտիտավրոսի ստորոտի հողերը՝ Ծոփքին, ապա Ակիլիսենեի մասին, որն այն ժամանակ էապես ավելի մեծ էր, քան նրա ժառանգորդ՝ Եկեղյաց գավառը, և ընդգրկում էր Արևմտյան Եփրատի ամբողջ միջին հոսանքի հողերը, այդպիսի վստահություն չկա։ Այն հարում էր երկու պետություններին էլ, և բացառված չէ, որ կարող էր բաժանված լինել երկուսի միջև։*

*Ե՞րբ են տեղի ունեցել այս իրադարձությունները։ Հետևելով Ստրաբոնի մոտ Արտաշեսի արշավանքների թվարկման հերթականությանը (արևելյան, հյուսիսային, արևմտյան, հարավային), կարելի է ասել՝ հյուսիսային արշավանքներից հետո, և ավելացնել՝ Զարեհի մահվանից առաջ։ Անկախացումից (189) հետո արևելյան ու հյուսիսային արշավանքներն իրականացնելու համար անհրաժեշտ կլիներ առնվազն հինգ տարի։ Մյուս կողմից, Զարեհի մահվանից մինչև Անտիոքոս Դ-ի 165 թվականի արշավանքը, Ծոփքում, ըստ երևույթին թագավորել է Զարեհի որդիներից մեկը, որի անունը պահպանել է միայն նրա*

հիմնադրած քաղաքը՝ Արկաթիակերտը[71]։ Արդ, սա պիտի հասցրած լիներ մինչև Անտիոքոս Դ-ի արշավանքը հիմնադրել այդ քաղաքը, քանի որ այն գրավվել է Անտիոքոսի կողմից և վերանվանվել Եպիփանիա[72]։ Ուրեմն Արտաշեսի և Զարեհի համատեղ գործողությունները կարող են ծավալված լինել մոտավորապես 185 և 175 թվականների միջև։ Թվագրությունը ավելի ճշգրտելու համար անհրաժեշտ է մի ակնարկ ձգել փոքրասիական գործերի վրա։

**Փոքր Ասիայի երկրները Մագնեսիայի ճակատամարտից հետո:** *Մ. թ. ա. 190 թվականից հետո քաղաքական իրավիճակը Փոքր Ասիայում լուրջ փոփոխություններ էր կրել։ Արևմտյան գործոնը, որ առաջ ներկայացված լինելով միայն Մակեդոնիայի թագավորությամբ, էական դեր չէր խաղում, այժմ ներկայացված էր հզոր Հռոմեական հանրապետությամբ։ Բնական է, որ փոքրասիական երկրները բաժանվեցին երկու քաղաքական խմբավորումների, որոնցից մեկը հարում էր Հռոմին, իսկ մյուսը, ավանդաբար կամ տեփական շահերից դրդված, շարունակում էր հարել Սելևկյաններին։ Առաջին խմբավորման առանցքն էին կազմում Կապադովկիան և Պերգամոնը, որը ժամանակին շատ էր դյուրացրել Փոքր Ասիայում հռոմեական զենքի հաղթանակը։ Արդեն 188 թվականից նրանց դաշինքն ամրապնդվեց դինաստիական ամուսնությամբ՝ Արիարաթ Դ-ի դուստրը կնության տրվեց Եվմենես Բ-ին[73]։ Մյուս խմբավորման կորիզն էր Պոնտոսը, որը պարբերաբար դաշնակիցներ էր փնտրում ու գտնում արևմտյան և արևելյան հարևանների միջև, և մեզ հետաքրքրող շրջանում սերտորեն կապված էր Փոքր Հայքի հետ։*

*Պոնտոսի թագավորությունը կազմավորվել էր դեռևս IV դարի վերջում, Կապադովկիայի մերձսևծովյան հողերի (Պոնտական Կապադովկիա) վրա, պարսիկ մի մեծատոհմիկից սերվող, բայց Դարեհից ծագած լինելու հավակնություն ունեցող տոհմի իշխանության ներքո[74]։ Պոնտոսի թագավորներ Միհրդատ Բ-ը և Միհրդատ Գ-ը երկիրն ընդարձակել էին ի հաշիվ ծովափի երկայնքով շարված հունական քաղաքների և ցամաքի կողմից Պոնտոսը շրջապատող ժողովուրդների ու ցեղերի։ Այժմ, մ. թ. ա. II դարի երկրորդ տասնամյակում, պոնտական գահի վրա էր Միհրդատ Գ-ի որդի Փառնակ Ա-ը, եռանդուն և ագրեսիվ իշխող, իր թոռան՝ Միհրդատ Զ Եվպատորի գործի նախակարապետը։ Սա իր թագավորությունն սկսել էր հունական կարևոր ու հարուստ Սինոպ նավահանգստի նվաճմամբ, և պատրաստվում էր ընդարձակել իր տերության ցամաքային մասը։ Նա Միհրդատ Եվպատորի նախատիպարն էր նաև նրանով, որ սերտ կապեր էր հաստատել հյուսիսային մերձսևծովյան հու-*

---

71 *Այդ քաղաքը սովոր ենք անվանել Արկաթիակերտ և նրա հիմնադրին՝ Արկաթիաս, բայց սա պայմանական է, որովհետև այս քաղաքանվան աղբյուրներում հանդիպող տարբերակները բազմազան են, և չափանիշ չունենք նրանցից մեկն ու մեկին որոշակի նախապատվություն տալու։ Այսպես, կա Կարկաթիոկերտա (Ստրաբոն), Արգիաթիոկերտա, Արգուկտիոկերտա և այլն (Պլին.), Արկեսիկերտա և հիմնադրի անունը՝ Արկեսիոս (Ստ. Բյուզ.), Արտագիգարտա (Պտղոմ.), Էտագիգարտա (Պեւտ. քարտ.)։*

72 *Տե՛ս Steph. Byz.*, Ἐπιφάνεια *բառի տակ։*

73 *Տե՛ս O. Morkholm*, Antiochus of Syria, Kobenhavn, 1966, *էջ 28։*

74 *Տե՛ս* CAH IX, Cambridge, 1932, *էջ 216 և հաջ.* (M. Rostovtzeff)։

նական և ոչ հունական պետությունների (խերսոնեսի, սարմատների և այլն) հետ[75]։

183 թվականին Փառնակը, ռազմական դաշինք կնքելով Փոքր Հայքի կառավարիչ Միհրդատի հետ, պատերազմ սկսեց հակառակ խմբավորման դեմ, ներխուժելով նախ Գալաթիայի, ապա և Կապադովկիայի հողերը։ Նախահարձակ դաշնակիցների սկզբնական հաջողություններին, սակայն, հաջորդեցին դժվարությունները։ Սելևկոս Դ-ը, որը Փառնակից 500 տաղանդ ստացած լինելով, արդեն պատրաստվում էր անցնել Տավրոսը և օգնության ձեռք մեկնել՝ հրաժարվեց իր մտադրությունից, ընկրկելով հռոմեացիների սպառնալիքների առջև։ Ի վերջո, Փառնակն ու Միհրդատը պարտություն կրեցին և ստիպված եղան ընդունել հաղթողների՝ Պերգամոնի, Կապադովկիայի և մյուս տուժած երկրների առաջադրած բավական ծանր պայմանները, որոնցով, գրավված հողերը դատարկելուց բացի, նախատեսվում էր և մեծ ռազմատուգանք[76]։ Պայմանագիրը, որ կնքվել է 179 թվականին, հասել է մեզ, Պոլիբիոսի երկի ֆրագմենտներից մեկում։ Հիմնական մասը բերված է, ըստ երևույթին, բառացի, իսկ եզրափակիչ մասը՝ ընդհանրացված ձևով։

Այնտեղ կարդում ենք. «Պայմանագրի մեջ ընդգրկվել են. Ասիայի իշխաններից Հայաստանի մեծ մասի տիրակալ Արտաքսիասը (Արտաշեսը) և Ակուսիլոքոսը, Եվրոպայի իշխաններից՝ սարմատ Գաթալոսը, ինքնավար քաղաքներից՝ հերակլեացիները, մեսեմբրիացիները, խերսոնեսցիները և սրանց հետ՝ կիզիկեցիները»[77]։

Հայաստանի մասնակցությունը 183—179 թվականների պատերազմին։ Պոլիբիոսը չի հայտնում, թե ինչ պայմաններով են պայմանագրի մեջ ընդգրկվել պատերազմի այս անուղղակի մասնակիցները, կամ թե նրանցից որը որ խմբավորմանն էր հարում։ Սակայն որոշ բան պարզ է առանց այդ էլ։ Եթե Ղրիմի խերսոնես քաղաքը և սարմատների Գաթալոս իշխանը, ինչպես և Հերակլեա, Մեսեմբրիա, Կիզիկոս քաղաքները Պոնտոսի (և Փոքր Հայքի) կողմնակիցներն ու դաշնակիցներն էին[78], ապա Արտաշեսն, անշուշտ, հակառակ խմբավորմանն էր պատկանում։ Դա բխում է նրա և՛ ընդհանուր, և՛ մասնավոր շահերից։

190 թվականից սկսած Արտաշեսը պայքարի մեջ է եղել Սելևկյանների հետ և, ինչպես կտեսնենք, եռանդուն կերպով պիտի շարունակեր այդ պայքարը մինչև իր կյանքի վերջը։ Պոնտոսը, ընդհակառակն, Սելևկյանների հովանավորյալն էր և նրանցից օգնություն էր ակնկալում։ Հռոմը Պերգամոնի և Կապադովկիայի հովանավորն էր, իսկ Արտաշեսի, ինչպես և Զարեհի, հարաբերությունները Հռոմի հետ այնքան լավ էին, որ խոսք կարող է լինել նույնիսկ ինչ-որ, թեկուզ և բանավոր, դաշինքի մասին («անցան Հռոմի կողմը», ասում

75 Տե՛ս նույն տեղում, էջ 220։

76 Տե՛ս B. Niese, Geschichte der griechischen und makedonischen Staaten seit der Schlacht bei Chaeronea, 3. Teil, Von 188 bis 120 v. Chr. Gotha 1903, էջ 74 և հաջ.։

77 Polyb., XXV, 2.

78 Տե՛ս CAH, IX, էջ 220։

է նրանց մասին Ստրաբոնը)։ Պերգամոնի հետ Արտաշեսը լավ հարաբերություններ է պահպանել հետագայում ևս[79]։

Նույն կողմնորոշման էր մղում Արտաշեսին նաև նրա հիմնական՝ հայկական հողերը միավորելու նպատակը։ Նրա նշանախեցն էր տվյալ դեպքում Փոքր Հայքը, որը նա ձգտում էր ամբողջությամբ կամ մասամբ միացնել իր պետությանը։ Տարակույս չկա, ուրեմն, որ վերոհիշյալ պայմանագրում նա հանդես է գալիս որպես հակապոնտական խմբավորման ներկայացուցիչ։

Արտաշեսի ու Զարեհի համագործակցության մասին վերը նշված տվյալներից ելնելով, սպասելի էր, որ սույն պայմանագրի մեջ ներկայացված կլինի նաև Զարեհը։ Սակայն նրա փոխարեն Արտաշեսի կողքին հիշատակված է ոմն Ակուսիլոքոս, որը այլ աղբյուրներից հայտնի չէ. Պոլիբիոսի մոտ էլ, իր հունական անունով հանդերձ, բնութագրված է սոսկ որպես «Ասիայի իշխաններից» մեկը, հորջորջում, որ շատ կհարմարվեր Զարեհին։ Հնարավոր չէ՞ արդյոք ի դեմս Ակուսիլոքոսի տեսնել Զարեհի որդուն, ենթադրելով, որ ինքը՝ Զարեհը, այդ միջոցին մահացել էր[80]։

Անկախ դրանից, ճիշտ կլինի Ստրաբոնի նշած՝ «Փոքր Հայքին հարող կամ նրա մասը կազմող» երկրամասերի (Կարենիտիս, Դերքսենե), ինչպես և փոքրասիական մյուս երկու երկրամասերի (Ակիլիսենե, Անտիտավրոսի ստորոտ) միացումը Մեծ Հայքին ու Ծոփքին համարել 183—179 թվականների պատերազմի արդյունքներից մեկը։

**Տամորիտիսի (Տմորիքի) նվաճումը։** Մեծ մտահոգության առարկա էր Հայաստանի հարավային սահմանը, որի մյուս կողմում Սելևկյաններն էին։ Սելևկյան պետությունը, թեև նախկին իր հզորությունից զրկված, այսուհանդերձ վտանգավոր հարևան էր, մանավանդ այնպիսի երկրների համար, ինչպիսիք էին Մեծ Հայքը և Ծոփքը, որոնք ընդվզել ու անջատվել էին նրանից։ Անշուշտ, հարավից սպառնացող վտանգը արտաքին հարաբերությունների բնագավառում կարևոր գործոն պիտի հանդիսանար Հայաստանի համար, մանավանդ, որ ինքը՝ Արտաշեսը, հայկական հողերին տիրացել էր սկզբնապես որպես Սելևկյանների ներկայացուցիչ։

Բայց ժամանակը անցնում էր ու Սելևկյանները չէին անդրադառնում Հայաստանին։ Մագնեսիայի ճակատամարտից երեք տարի անց մահացավ Անտիոքոս Գ-ը։ Նրան հաջորդեց Սելևկոս Դ-ը (187—175), որը գերադասում էր ընդհանրապես պատերազմներ չմղել, քան պարտության վտանգի ենթարկվել (նա էր, որ ետ կանգնեց իր դաշնակից Պոնտոսին օգնելուց)։ Այդ ժամանակամիջոցում Մեծ Հայքը դարձավ խոշոր և ուժեղ պետություն, ծավալվելով մինչև

---

79 Տե՛ս *C Niese*, Geschichte der griechischen und makedonischen Staaten, 3. էջ 79 ծան. 1։

80 Ակուսի-լոքոս անվան առաջին մասը իր հնչմամբ հեռու չէ Արկաթիասից, առավել ևս Արկեսի-ոսից կամ Արդուկտի-ոսից, որոնք, ինչպես նշվեց (վերը, էջ 544, ծան. 71), Զարեհի որդու անվան հնարավոր տարբերակներից են։ Տեղական անունը Պոլիբիոսի գրչի տակ կարող էր դառնալ նմանահնչյուն հունական անուն և կամ, ընդհակառակն, հունական անունը քաղաքանվան կազմում կարող էր աղճատվել, մանավանդ սղվել, ինչպես վերը տեսանք Արտաքսիասատա—Արտաքսատա—Արշատա-ի օրինակով։ Կարելի է բերել նաև Արսամոսատա-ի՝ Արմոսատա դառնալու օրինակը նույն Պոլիբիոսի ինչպես և Պլինիոսի մոտ։

Հայկական բարձրավանդակի գրեթե բոլոր ծայրերը։ Իսկ հարավային կողմում գեռ կային հայաբնակ երկրամասեր, որոնք դուրս էին մնացել պետության սահմաններից։ Եվ ահա, 160-ական թվականների սկզբներին, հայկական զորքը ներխուժում է դրանցից մեկը՝ Տամորիտիս (Տմորիք)[81] ու նրա հարևան վայրերը և դրանք միացնում է Մեծ Հայքին[82]։

Այդ ժամանակ Սելևկյան պետության գլուխ էր կանգնած արդեն Անտիոքոս Դ Եպիփանեսը (175—164), որը վերջ էր տվել նախորդ իշխողի թուլամորթ քաղաքականությանը և բռնել տերության նախկին հզորության վերականգնման ուղին, արտաքնապես բարեկամական հարաբերություններ պահպանելով Հռոմի հետ։ Սկզբում նրա ուշադրությունը ամբողջովին ուղղված էր Եգիպտոսի կողմը։ Երկու արշավանքների ընթացքում (169 և 168) նրան հաջողվեց ընկճել Պտղոմյաններին, նա պաշարեց Ալեքսանդրիան։ Հռոմեացիները խիստ անհանգստացան և նրան ստիպեցին հեռանալ Եգիպտոսից։

Սա հենց այն ժամանակ էր, երբ Անտիոքոսը լուր ստացավ, թե Մեծ Հայքի թագավոր Արտաշեսը, որը մինչ այդ զբաղված էր այլ գործերով, անցել է սահմանը և ներխուժել Միջագետք։ Այս տեղեկությունը, որ հաղորդում է Պորփյուրը[82ա], համադրելով Ստրաբոնի համապատասխան հաղորդման հետ, ստանում ենք Տմորիքի՝ Մեծ Հայքի պետությանը միացման տարեթիվը՝ 168 թվականը։

Տմորիքի մասին, բացի Ստրաբոնից, տվյալներ կան նաև Մովսես Խորենացու մոտ[82բ]։ Այստեղից իմանում ենք, որ Սմբատ «թագակապ ասպետը» (արամեերեն արձանագրության Նիկեփոր «թագադիրը») Արտաշեսի հրամանով անցել է Տմորիք և տարել նստեցրել այնտեղ նախորդ արշավանքների ժամանակ գերեվարյալների մի մեծ ղանգված։ Քիչ անց, նույն գլխում, տեղեկանում ենք, որ Սմբատը նշանակվել էր հարավային զորաբանակի հրամանատար։ Այս բոլորից կարելի է եզրակացնել, որ 168 թվականին միացված Տմորիքի յուրացումը մեծ թափով առաջ էր գնում, այնտեղ ռազմական լայն ֆունկցիաներով կառավարիչ էր նշանակվել Արտաշեսի ամենամերձավոր գործակիցներից մեկը և նա եռանդուն կերպով գործի էր անցել, գաղթականների շարաններ տեղափոխելով նորանվաճ հողերը։

---

81 Ստրաբոնի մեզ հասած ձեռագրերում պահպանվել է Ταμωνῖτις ձևը, որը սրբագրելու երկու փորձ է եղել. Ταρωνῖτις՝ Տարոն հասկանալու միտումով (Կիպերտ) և Ταμωρῖτις՝ Տմորիքի իմաստով (Տոմաշեկ, Մարկվարտ, որոնց միանում է Հ. Մանանդյանը, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 117)։ Առաջինն անհավանական է. Տարոնը, Երվանդունիների պետության մշտական մասը լինելով, չէր կարող բնութագրվել որպես Արտաշեսի կողմից Հայաստանին միացվող մաս։ Տմորիքը այս տեսակետից միանգամայն հարմար է։ Բացի այդ, Տմորիքն է, որ նույն Արտաշեսի գործունեության կապակցությամբ հիշատակվում էր Խորենացու մոտ ևս (տե՛ս ստորև)։ Ս. Երեմյանը («Հայաստանը ըստ Աշխարհացոյց»-ի, էջ 60, 68, 86 և այլն) ենթադրում է, որ Ταμωνῖτις ձևը Ստրաբոնի մոտ անաղարտ է և նշանակում է՝ Թման գյուղն ու նրա շրջակայքը։ Սրանով գործն ըստ էության չի փոխվում, քանի որ Թմանը գտնվում էր Կորդուքում, որի մի մասն էր կազմում Տմորիքը։

82 Տե՛ս Strabo, XI, 14, 5։

82ա Տե՛ս F. Jakoby, Die Fragmente der griechischen Historiker, II № 260, Fr. 56.

82բ Տե՛ս Խորենացի, Բ, ծգ։

**Հայ-ասորական պատերազմը:** *Միայն երեք տարի անց՝ 165 թվականին, Անտիոքոս Եպիփանեսը կարողացավ անդրադառնալ Մեծ Հայքին[83]։ Իր զորքերով նա անցավ Եփրատը և արշավեց Արտաշեսի դեմ։ Տեղի ունեցած արյունահեղ ճակատամարտի ելքը Դիոդորն ու Ապպիանոսը բնութագրում են որպես հայերի պարտություն։ Ապպիանոսը հաղորդում է, թե Անտիոքոսը «արշավեց նաև հայոց թագավոր Արտաքսիասի դեմ. սրան հաղթելուց փոքր անց նա մահացավ»[84], իսկ մի այլ տեղ նույնիսկ, թե Անտիոքոսը «գերի վերցրեց հայոց թագավոր Արտաքսիասին»[85]։ Որ սա ակնհայտ չափազանցություն է, հետևում է Դիոդորի հաղորդումից, ըստ որի Անտիոքոսին հաջողվել էր միայն «հնազանդեցնել» Արտաշեսին[86]։*

*Բայց ճակատամարտի այսպիսի ելքը կասկածի առարկա է դառնում՝ Պորփյուրի և Հիերոնիմոսի հաղորդածի լույսի տակ։ Հիերոնիմոսի մոտ կարդում ենք. «Հայտնի է, որ Անտիոքոսն իսկապես մարտնչել է Արտաքսիասի դեմ, բայց և (հայտնի է), որ վերջինս պահպանեց իր իշխանությունը»[87]։ Եվ սա ներկայացվում է որպես հանրահայտ փաստ։ Պորփյուրը, Հիերոնիմոսի պահպանած հատվածի մեջ, հայտնում է, որ Անտիոքոսը «շարունակում է արշավանքը Հայաստանի թագավոր Արտաշեսի դեմ… և կոտորելով շատերին, հաստատում իր վրանը Ափեդոն կոչված վայրում, որ գտնվում է երկու լայնահուն գետերի՝ Տիգրիսի և Եփրատի միջև»[88]։*

*Բացի այն, որ վերջին երկու հեղինակները չեն խոսում Անտիոքոսի՝ Արտաշեսի նկատմամբ տարած բացահայտ հաղթանակի մասին, հետաքրքրական է նաև, որ Անտիոքոսը իր «վրանը» այսինքն՝ ճամբարը, ճակատամարտից հետո խփել է ոչ թե Հայաստանում, ինչպես կսպասվեր հաղթարշավից հետո, այլ Հայաստանից և նույնիսկ նրա հարավային ծայրամասը կազմող Ծոփքից շատ հեռու՝ Միջագետքում, ուրեմն, նույնիսկ Տիգրիսը չի անցել։ Եզրակացնում ենք, որ Արտաշեսին, թեև մեծ կորուստների գնով, հաջողվել էր ետ մղել սելևկյան զորքերի հարձակումը։*

*Անտիոքոսը, ետ քաշվելով, ըստ երևույթին, այնուհետև արշավել է Ծոփք, գրավել Արկաթիակերտ քաղաքը և իր մականվամբ վերանվանել «Եպիփանիա»[89]։ Ծոփքի թագավորը, հավանաբար, սպանվել է, իսկ նրա երկու եղբայրները փախուստի են դիմել։ Ավագը՝ Միթրոբուզանեսը (Մեհրուժանը), պատսպարվել է Կապադովկիայում, իսկ կրտսերը, որի անունը հայտնի չէ, Մեծ Հայքում՝ Արտաշեսի մոտ[90]։ Այստեղից Անտիոքոսն անցնում է Մեդիա, գրավում Էկբատան մայրաքաղաքը և նույնպես վերանվանում Եպիփանիա[91]։ Մե-*

---

[83] *Տե՛ս O. Morkholm*, Antiochus of Syria, *էջ 98 և հաջ.։*

[84] *App.*, Syr., *45.*

[85] *Նույն տեղում, 66։*

[86] *Տե՛ս Diod., XXXI, 17* a.

[87] „Patrologiae cursus complectus", Tomus XXV, *S.*' Hieronymi, tomus V, Parisiis, 1845, *էջ 667։*

[88] *Նույն տեղում, էջ 722 կամ* Jacoby, FGH, II, № 260, Fr. 56:

[89] *Տե՛ս Steph. Byz.*, Ἐπιφάνεια *բառի տակ։*

[90] *Տե՛ս Diod., XXXI, 22։*

[91] *Տե՛ս Steph. Byz.*, Ἐπιφάνεια *բառի տակ։*

*դիայի կառավարիչ նա նշանակում է իր մերձավորներից Տիմարքոսին։ 164 թվականի վերջերին Անտիոքոսը մահանում է Արևելքում*[92]։

*Անտիոքոսի արևելյան արշավանքը, որ նրա հոր՝ Անտիոքոս Մեծի արևելյան արշավանքի թույլ ընդօրինակումն էր, եղավ Սելևկյանների վերջին փորձերից մեկը՝ կրկին միավորել իրենց լայնածավալ տերությունը։ Սելևկյաններին այն ոչինչ չտվեց։ Գալով Մեծ Հայքի համար նրա ունեցած նշանակությանը, ապա եթե նույնիսկ Անտիոքոսը ճակատամարտը ձևականորեն շահել էր, այսուհանդերձ, դա ոչ մի դեր չխաղաց Մեծ Հայքի ապագայի համար. 165 թվականից քիչ անց Արտաշեսին գտնում ենք եռանդուն կերպով կրկին արտաքին խնդիրներով զբաղվելիս*[93]։

**Ծոփքի ճգնաժամը**: *163 թվականին, երբ Կապադովկիայում թագավորեց Արիարաթ Ե-ը, Ծոփքի գահը, ըստ երևույթին, տակավին թափուր էր. գահի հավակնորդները՝ երկու արքաեղբայրները, գտնվում էին Ծոփքից դուրս, մեկը՝ Մեծ Հայքում, մյուսը՝ Կապադովկիայում։ Արտաշեսը, հայկական հողերը միավորելու իր մշտական ձգտմամբ, իհարկե, չէր կարող նման պահը բաց թողնել, մանավանդ, որ նրա ձեռքին էր Ծոփքի արքայազուններից մեկը։*

*Նախապես Արտաշեսը պիտի փորձ աներ՝ Ծոփքի գահին նստեցնել իր մոտ գտնվող արքայազնին (անունը անհայտ է), հուսալով ամուր պահել նրան իր ազդեցության ոլորտում։ Սակայն Արիարաթի մոտ գտնվող Մեհրուժանը եղբայրներից ավագն էր և ժառանգի իրավունքը նրան էր պատկանում։ Արիարաթը իր կողմից պիտի ձգտեր ապահովել Մեհրուժանի շահերը՝ Ծոփքը Կապադովկիայի ազդեցության ոլորտում պահելու համար, որով նա, Ծոփքի անմիջական հարևանը լինելով, պակաս շահագրգռված չէր, քան Մեծ Հայքը։*

*Այս խնդրում, ուրեմն, Մեծ Հայքի և Կապադովկիայի՝ երեկվա դաշնակիցների, շահերը լրջորեն բախվում էին, և Արտաշեսի ջանքերը ոչ մի փոխըմբռնում չէին կարող գտնել Արիարաթի մոտ։ Կոտրել նրա դիմադրությունը ռազմական ուժով, այն միջոցը, որին Արտաշեսը այլ պարագաներում թերևս և կդիմեր, տվյալ դեպքում, ըստ երևույթին, կասեցնում էին ինչ-որ զորեղ հանգամանքներ, թերևս հակասելևկյան խմբավորման ընդհանուր շահերը կամ Հռոմի հնարավոր միջամտությունը։*

*Այս պայմաններում Արտաշեսը որոշեց Կապադովկիային ներկայացնել մի կոմպրոմիսային առաջարկ, որի մասին էլ հաղորդում է Դիոդորը, այն է՝ մեջտեղից վերացնել Ծոփքի գահի երկու հավակնորդներին և երկիրը բաժանել Կապադովկիայի և Մեծ Հայքի միջև։ Սա հարցի միայն մասնակի լուծում կլիներ, բայց Արտաշեսը փորձված քաղաքագետ էր ու գիտեր նաև մասնակի հաջողությունների արժեքը։ Սակայն այս առաջարկը Արիարաթին ձեռնտու չթվաց, հավանաբար, այն պատճառով, որ նա հնարավորություն ուներ Ծոփքը հանձնել Մեհրուժանին, և նա իր պատասխան նամակում կոչ արեց Արտաշեսին «ձեռք քաշել նման գործերից»։ Արտաշեսն իսկապես հրաժարվեց իր ծրագրից, ինչպես բացի Դիոդորից հաղորդում է նաև Պոլիբիոսը (դա վերագրելով Արիա-*

---

92 *Տե՛ս O. Morkholm*, Antiochus of Syria, *էջ 171*։

93 *Տե՛ս նույն տեղում, էջ 190*։

*րաթի բարոյական ազդեցությանը) և թույլ տվեց, որ Արիարաթը անզորությամբ Ծոփքի գահին բազմեցնի Մեհրուժանին*[94]*։*

*Ծոփքը Մեծ Հայքին միացնելու խնդիրն, այսպիսով, հետաձգվեց շուրջ 70 տարով, և լուծվեց միայն Տիգրան Բ-ի կողմից՝ նրա գահակալման հենց առաջին տարիներին։*

**Տիմարքոսի ապստամբությունը և Արտաշեսը:** *Արտաշեսի գործունեության մեզ հայտնի դրվագներից վերջինը կապված է Սելևկյան սատրապ Տիմարքոսի 162—160 թվականների ապստամբության հետ։ Տիմարքոսը նախ եղել էր Բաբելոնիայի, ապա Մեդիայի*[95] *սատրապ և կամ Մեդիայի սատրապ նշանակվելով, ստացել էր նաև սելևկյան արևելյան սատրապությունների (ներառյալ Բաբելոնիայի) գերագույն կառավարչությունը*[96]*։*

*Անտիոքոսի մահվանից հետո Տիմարքոսը չցանկացավ հպատակվել Սելևկյան գահի վրա նրան հաջորդած Դեմետրիոս Ա-ին և ապստամբություն բարձրացրեց։ Անցնելով Հռոմ, նա այնտեղ բարեհաճ վերաբերմունք գտավ իր ձեռնարկության նկատմամբ, և օգտագործելով իր վաղեմի կապերը, ստացավ ծերակույտի համաձայնությունը՝ իրեն թագավոր հայտարարելու։ Վերադառնալով, նա սկսեց պայքարի պատրաստվել, զորքեր հավաքել ու դաշնակիցներ որոնել արևելքի՝ Սելևկյաններից դժգոհ տարրերի մեջ։ Այդ ժամանակ է ահա, որ նա համաձայնության եկավ Արտաշեսի հետ, որն, իհարկե, պատրաստ էր օժանդակելու սելևկյանների դեմ ուղղված այդ շարժմանը*[97]*։ Տիմարքոսի աթոռանիստն էր Էկբատանը, որտեղ նա հասցրել էր կարգավորել դրամահատության գործը և հատել էր տվել դրամներ՝ «Մեծ թագավոր Տիմարքոսի» արձանագրությամբ*[98]*։*

*160 թվականին Տիմարքոսն իր զորքով շարժվում է Սելևկյան նոր թագավոր Դեմետրիոսի դեմ, բայց պարտություն է կրում և սպանվում*[99]*։ Մեդիան, սակայն, այլևս չընկավ Սելևկյանների ձեռքը. քիչ անց նվաճվեց պարթևների կողմից, ինչպես երկու տասնամյակ անց Բաբելոնիան։*

*Տիմարքոսի պատմությունը շատ գծերով նմանվում է Զարեհի և Արտաշեսի բախտին (վերջիններս ևս Հռոմի կողմից օժանդակություն ստացած սելևկյան ապստամբած սատրապներ էին), այն վճռական տարբերությամբ, սակայն, որ նրա գործը ձախողվեց։ Տիմարքոսի անհաջողության հիմնական պատճառն այն էր, որ նա չուներ միասնական էթնիկական բազա, և Սելևկյանների էթնիկապես խայտաբղետ պետությանը նա հակադրում էր նույնքան խայտաբղետ մի ռազմա-քաղաքական միավորում։ Մինչդեռ նման պետությունների դարն անցնում էր, և նրանց օրերը հաշված էին։ Կազմավորվում էին նոր տիպի*

---

94 *Տե՛ս Diod.*, XXXI, 22, *Polyb.*, XXXI, 16:

95 *Տե՛ս App.*, Syr., 45; *Diod.*, XXXI, 27a:

96 *Տե՛ս H. Bengtson*, Die Strategie in der hellenistischen Zeit, II. München, 1944, *էջ 78։*

97 *Տե՛ս Diod., XXXI, 27* a։

98 *Նորագույն մի օրինակ տե՛ս G. Le Rider*, Monnaies grecques acquises par le Cabinet de médailles en 1959, „Revue numismatique", 1659—1960, *էջ 14—16։*

99 *Տե՛ս App.*, Syr., *47։*

պետություններ, որոնց հիմքը կազմում էր մեկ միասնական էթնոսը, և դրանք էին, որ առավել կենսունակ դուրս եկան, ի վիճակի լինելով դիմագրավելու ամեն տեսակի քաղաքական ու ռազմական արհավիրքների, և դրանց բովում ամրապնդվելու ու կոփվելու, և ոչ՝ թուլանալու ու փլվելու։ Այդպիսի պետություններից մեկն էր Մեծ Հայքը[100]։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐՏԱՇԵՍ Ա-Ի ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

**Արտաշեսի հաջորդները**: *Տիմարքոսի միջադեպից հետո Արտաշեսի մասին այլևս տեղեկություններ չունենք։ Ենթադրվում է, որ նա մահացել է շուրջ 160 թվականին, բայց սա, իհարկե, պայմանական տարեթիվ է։ Արտաշեսը կարող է դրանից հետո ևս մի շարք տարիներ թագավորած լինել։*

*Արտաշեսը, ըստ Խորենացու մոտ պահպանված ավանդության, ունեցել է վեց որդի՝ Արտավազդ, Վրույր, Մաժան, Զարեհ, Տիրան, Տիգրան, որոնցից երեքը՝ Արտավազդը, Տիրանը և Տիգրանը, հաջորդաբար թագավորել են հորից հետո։ Վաղուց արդեն նշված է, որ այս տեղեկությունները բավական մոտ են պատմական իրականությանը*[101]*։ Միանգամայն հավանական է, որ Արտաշեսի որդիներից մեկը անվանվեր Զարեհ, քանի որ Արտաշեսի հայրը հենց այդ անունն էր կրում*[102]*։ Ինչ վերաբերում է գահի վրա Արտաշեսին հաջորդած նրա որդիներին, ապա այլ աղբյուրներում հիշատակվում են Արտավազդը՝ որպես մ. թ. ա. II դարի վերջերի հայոց թագավոր* [103]*, և Տիրանը՝ Տիգրան ձևով՝ որպես Տիգրան Բ-ի հայր*[104]*։*

*Այս երկու իշխողների՝ Արտավազդ Ա-ի և Տիգրան Ա-ի ժամանակաշրջանը, ըստ երևույթին, համեմատաբար հանգիստ է եղել, հարուստ չի եղել արտաքին իրադարձություններով ու պատերազմներով, որի մասին վկայում է նաև նրանց իշխանության երկարատևությունը՝ շուրջ 60 տարի։ Միևնույն ժամանակ նրանք իշխել են միջազգային իրավիճակի արմատական փոփոխության, Առաջավոր Ասիայի քաղաքական ուժերի նոր տեղաբաշխման շրջանում։ Այն ուժը, որը նոր-նոր սկսել էր դրսևորվել Արտաշեսի ժամանակ և որի հետ վերջինս չհաջողեց որևէ շփման մեջ մտնել, այսինքն՝ Պարթևական պետությունը, ըստ ամենայնի ծավալվեց նրա մահվանից հետո։ Նրա ախոյանը, սակայն, մ. թ. ա. II դարում դեռևս Հայաստանը չէր, այլ Սելևկյան պետությունը։*

**Պարթև Արշակունիների թագավորությունը**: *Մ. թ. ա. շուրջ 250 թվականին արևելքից ներխուժած պարների ցեղը հաստատվում է Կասպից ծովից հարավ-արևելք ընկած երկրամասում և 247 թվականին նրա առաջնորդ Արշակը թագա-*

---

100 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении в эллинистическую эпоху, ИАНАОН, *1948, № 11, էջ 44—45։*

101 *Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա., էջ 135։*

102 *Տե՛ս նույն տեղում, էջ 131։*

103 *Տե՛ս Just., XXXIII, 31։*

104 *Տե՛ս App.*, Syr., *48։ Խորենացու հիշատակած Տիգրանը թերևս նույն Տիգրան Բ-ն է, Արտաշեսի թոռը, որ ավանդության մեջ դարձել է նրա որդին։ Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 135։*

*վոր է հայտարարվում։ Արշակը եռանդուն գործողություններով ընդարձակում է իր երկիրը և կարողանում է դիմագրավել Սելևկոս Բ-ի ճնշմանը, որը ստիպված է լինում ճանաչել նրա ինքնուրույնությունը՝ իր գերիշխանության ներքո։ Մոտ 217 թվականին Արշակ Ա-ին հաջորդում է Արշակ Բ-ը*[105]*։ Անտիոքոս Գ-ի արևելյան արշավանքի ժամանակ նա հպատակվում է, բայց նրա հաջորդները՝ Փրիապատիոսը (191—176) և Հրահատ Ա-ը (176—171) Մագնեսիայի մոտ Ան-*




**Միհրդատ Բ-ի (123—87) դրամը**

*տիոքոսի կրած պարտությունից հետո սկսում են իրենց ազատ զգալ։ Սրանց փոխարինած Միհրդատ Ա Մեծը (171—138) դառնում է պարթևական աշխարհակալության հիմնադիր։ Տիմարքոսի անկումից հետո նա ձեռնարկում է Մեդիայի թագավորության նվաճման գործը և մի քանի տարի անց հաջողության հասնում*[106]*։*

*Ճանապարհը դեպի արևմուտք պարթևների համար արդեն բաց էր, բայց նրանք մեծ հոգսեր ունեին արևելքում, որտեղ շարժման մեջ էին մտել քոչվորական ցեղերի խոշոր զանգվածներ*[107]*։ Միհրդատ Բ-ին հաջողվել էր ամրապնդել արևելյան սահմանները և 145 թվականին նա սկսում է իր առաջխաղացումը դեպի արևմուտք, առնում է Տիգրիսյան Սելևկիան, նվաճում Բաբելոնիան, գրավում է Շոշը (Սուզան)։ Սելևկյան Դեմետրիոս Բ Նիկատորը (145—140) փորձում է վերականգնել իր տերության սահմանները, բայց մասնակի հաջողություններից հետո պարտություն է կրում և գերի ընկնում պարթևներին։ Սրա եղբայր Անտիոքոս Սիդետեսը (138—129) 130 թվականին արշավում է*

---

105 *Այսպես է ներկայանում առաջին երկու պարթև Արշակունի թագավորների ժամանակագրությունը ըստ նոր ուսումնասիրությունների. տե՛ս J. Wolski*, Arsace I le fondateur du royaume parthe, „Eos", XXIX, 2 (1938), *էջ 165 և հաջ.։ Նույնի՝* Arsace II et la généologie des prémiers Arsacides, „Historia", Bd. IX April, 1962, Heft 2, *էջ 138 և հաջ.։*

106 *Տե՛ս N. Debevoise*, A Political History of Parthia, Chicago, 1938, *էջ 21։*

107 *Տե՛ս P. J. Junge*, Parthia, Pauly-Wissowa-Kroll, Realenzyklopädie, 36. Halbband, 1949, *էջ 1968—2029։*

*պարթևների դեմ, բայց նորից անհաջող։ Երեք ճակատամարտերում հաղթանակ տանելուց հետո, չորրորդում նրա զորքերը ջախջախվում են և ինքը սպանվում է։*

*Սրանով հիմնականում Սելևկյանների դիմադրությունը կոտրված էր։*

*Պարթև Միհրդատ Բ-ը (մ. թ. ա. 123—87) ևս մի քանի հաջող արշավանքներ է կատարում դեպի արևմուտք և պարթևների տերության սահմանագիծը հասցնում մինչև Եփրատ*[108]*։ Համաձայն Հուստինոսի հաղորդման, Միհրդատ Բ-ը պատերազմել է նաև հայոց թագավոր Արտավազդի դեմ*[109] *և պատանդ վերցրել թագաժառանգ Տիգրանին։*

*Սրանով ավարտվում է պարթևների աշխարհակալական ձգտումների իրականացման առաջին ալիքը։ Այն կանգ առավ, ինչպես կտեսնենք, դեմ առնելով մի այլ երկրի՝ ստրկատիրական Հայաստանի հզորացմանը և աշխարհակալական ձգտումներին, որոնց իրականացնողը եղավ Տիգրան Բ-ը։*

---

108 *Տե՛ս N. Debevoise*, A Political History of Parthia, էջ 266 և հաջ., *P. J. Junge*, Parthia, նույն տեղում։

109 *Տե՛ս Just., XXXIII, 3, 1; LXII, 2, 6*։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ՏԵՐՈՒԹՅՈՒՆԸ: ՏԻԳՐԱՆ Բ

## 1. ՏԻԳՐԱՆ Բ-Ի ԳԱՀԱԿԱԼՈՒՄԸ

*Մ. թ. ա. I դարի առաջին տասնամյակները հայ ժողովրդի պատմության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում։ Դա այն ժամանակաշրջանն է, որի ընթացքում Հայաստանը բռնեց արտաքին նվաճումների ուղին և ստեղծեց մի աշխարհակալ տերություն, մեկն այն տերություններից, որոնք պարբերաբար առաջանում ու տրոհվում էին Առաջավոր Ասիայում հին-արևելյան և հելլենիստական դարաշրջանում։ Հայկական պետության տերիտորիան ընդլայնվեց ի հաշիվ շրջակա մոտ ու հեռու երկրների, և Հայաստանը դարձավ ժամանակի հզորագույն քաղաքական ուժերից մեկը։*

*Այս է պատճառը, որ պատմագրության հայացքը միշտ էլ գամված է եղել հայ ժողովրդի պատմության այդ դրվագին ու ժամանակի ամենակարկառուն հայ գործչին՝ Տիգրան Բ-ին։ Հնում արդեն նա դարձել էր անտիկ (հունա-հռոմեական) պատմագրության սևեռուն ուշադրության առարկա և նրա ժամանակաշրջանի մասին այնտեղ գտնում ենք անհամեմատ շատ տեղեկություններ, քան հայ ժողովրդի պատմության որևէ այլ փուլի վերաբերյալ։ Չնայած դրան, Տիգրան Բ-ի ժամանակաշրջանի ճշմարտացի լուսաբանությունը դժվարին խնդիր է, և դժվարությունն այս անգամ գալիս է ոչ թե աղբյուրների սակավությունից, որ սովորական երևույթ է հին պատմության համար, այլ առկա ոչ սակավաթիվ աղբյուրների մեջ պատմական դեպքերը միակողմանի, անբարյացակամ, հաճախ էլ թշնամական դիրքերից արտացոլված լինելու փաստից։ Հայաստանի և Հռոմի միջև մղված պայքարի խնդրում անտիկ հեղինակների գերակշռող մասը հանդես է գալիս որպես հռոմեական նվաճողների ջատագով։*

*Սկզբնաղբյուրների այդ եվրոպակենտրոն գաղափարախոսությունը և հռոմեասիրական շահագրգռությունները ժառանգել է նաև Արևմուտքի բուրժուական պատմագրությունը ի դեմս իր մի շարք մեծանուն ներկայացուցիչների՝ Թ. Մոմզենի, Թ. Ռեյնաքի[1] և ուրիշների։ Սրանց աշխատություններում Հայաստանի պատմության այս դրվագը մեկուսացվում է հայ ժողովրդի պատմության*

---

[1] *Տե՛ս Т. Моммзен*, История Рима, III, М., 1941, *էջ 12 և հաջ.*, *Th. Reinach*, Mithradates Eupator, König von Pontos, Lpz., 1895.

ընդհանուր ֆոնից և դիտվում որպես պատահական հաջողությունների մի շըրջան, իսկ Տիգրանի գործունեությունը՝ անջատվում նրան համակած հելլենիստական ավանդույթներից և ներկայացվում որպես մի «բարբարոսի» քմահաճ ցանկությունների իրականացում։ Նույն այդ միտումները հստակորեն դրսևորվում են նաև արդի բուրժուական պատմագրության մեջ[2] և հատկապես ուժեղ են թուրքական ժամանակակից պատմագրության էջերում[3]։

Սրանց կողքին, սակայն, հանդիպում ենք և ֆրանսիացի խոշոր պատմաբան Ռընե Գրուսեի՝ պատմական գործչի գերագույն գնահատական հանդիսացող հետևյալ խոսքերին. «...Տիգրանը, թերագնահատված այդ մեծ տիրակալը.. անշուշտ, շատ ավելի է արժանի պատմության հիացմունքին, քան նրա ժամանակակից Միհրդատ Եվպատորը, եթե ցանկանանք նկատել, որ Միհրդատը փայլուն կերպով «ինքնասպանության հասցրեց իր երկիրը», մինչդեռ Տիգրանը ապահովեց իր ժողովրդի հավերժական հարատևումը»[4]։



Տիգրան Բ-ի դրամներից

Սովետահայ պատմագրության անդրանիկ և առայժմ միակ փորձը՝ լուսաբանելու Տիգրան Բ-ի ժամանակաշրջանը, կատարել է Հ. Մանանդյանը։ Նորից ու հիմնովին ուսումնասիրելով սկզբնաղբյուրները և հատուկ ուշադրություն դարձնելով դրանցից փոքրասիական ծագում ու համեմատաբար չեզոք դիրքավորում ունեցողների վրա, նա տվել է ժամանակի նոր ու ճշմարտացի լուսաբանությունը[5]։ Գրքի մեջ մասնավորապես, ցույց է տրված, որ Հայաստանի զարգացումն ու զորեղացումը, հատկապես նաև հելլենիստական ավանդույթների և ազդեցության ներթափանցումն ու հելլենիստական տիպի քաղաքների առաջացումը սկսվել է Տիգրանից առաջ, և նրա օրոք տեղի է ունենում այդ պրոցեսների հետագա զարգացումը։ Ցույց է տրված, որ Տիգրանի պայքարը ընդդեմ Հռոմի ոչ թե ռեակցիա էր Հռոմի քաղաքակրթական ազդեցության դեմ, այլ, ընդհակառակն, հելլենիստական աշխարհի նվաճումների պաշտպանություն։ Հակառակ այն պատմաբանների, որոնք Տիգրան Բ-ին համարում էին սոսկ

---

2 Տես, օրինակ, *A. Heuss*, Römische Geschichte, Braunschweig, 1960, էջ 260։

3 Տե՛ս Մ. Ջուպայյան, *Պատմության նենգափոխման մի արտառոց օրինակ*, ՊԲՀ, 1966, № 1, էջ 274։

4 *Rene' Grousset*, Préface, „N. Adontz, Histoire d'Arménie, Paris, 1946" գրքում, էջ VII.

5 Տե՛ս Հ. Մանանդյան, *Տիգրան Երկրորդը և Հռոմը*, Երևան, 1940։

*Միհրդատ Եվպատորի դաշնակից, Մանանդյանը ցույց տվեց նրա արտաքին քաղաքականության ինքնուրույն, հայկական պետության շահերով պայմանավորված բնույթը։ Վերջապես, նոր լուսաբանություն ստացավ հայ-հռոմեական պատերազմների ողջ ընթացքը։*

*Նմանօրինակ մի փորձ է կատարել նաև ամերիկահայ պատմաբան Հրանդ Արմենը*[6]*։*

**Տիգրան Բ-ի գահակալությունը։** *Մ. թ. ա. 95 թվականին հայոց գահը թափուր էր։ Վախճանվել էր Տիգրան Ա թագավորը՝ Արտաշես Ա-ի կրտսեր որդին։*



**Միհրդատ Պոնտացու (111—63) դրամը**

*Թագաժառանգ Տիգրանը՝ Տիգրան Ա թագավորի որդին ու Արտաշես Ա-ի թոռը, որպես պատանդ պարթևների արքունիքում էր գտնվում վերջին հայ-պարթևական պատերազմի ժամանակից*[7]*։ Տիգրանը ծնվել է մ. թ. ա. մոտավորապես 140 թվականին և 95 թվականին պետք է արդեն 45 տարեկան հասուն մարդ լիներ*[8]*։ Նրա կյանքի շուրջ մի տասնամյակ անցել էր պարթևների արքունիքում և սրանք Տիգրանին պետք է իրենց մտերիմն ու, հետևաբար, հայկական գահի ցանկալի թեկնածու համարեին։ Այս է հավանական պատճառը, որ Միհրդատ Բ-ը արձակեց նրան ու նաև օժանդակեց նրա գահակալմանը, պահանջելով և ստանալով միայն որպես փրկագին «Յոթանասուն հովիտներ» կոչված տեղանքը, որը գտնվում էր Հայաստանի հարավ-արևելյան մասում՝ մարական սահ-*

6 *Տե՛ս* Հրանդ Ք. Արմեն, *Մեծն Տիգրան, Գահիրե, 1957։*

7 *Տե՛ս* Strabo, *XI, 14, 15;* *Just., XLII, 2։*

8 *Տե՛ս* Luc., Macr., *15։ Ըստ Լուկիանոսի Տիգրանը 85 տարի է ապրել, իսկ քանի որ նա մահացել է մ. թ. ա. 55 թվականի մոտերքը, ապա ծննդյան թվականն է մ. թ. ա. 140-ը։*

*մանի մոտ[9]։ Ապպիանոսի ասելով, Տիգրանը թագադրվեց այն տեղում, որտեղ նա հետագայում հիմնեց Տիգրանակերտ քաղաքը[10]։*

*Տիգրան Բ-ի գահակալության սկզբում Հայաստանի քաղաքական սահմանները, համեմատած Արտաշես Ա-ի ժամանակաշրջանի հետ, ըստ երևույթին, էական փոփոխություն չէին կրել, վերջին 50—60 տարիներն էլ համեմատաբար հանգիստ էին անցել։ Սակայն այդ արտաքին անշարժության տակ թաքնված էին երկրի սոցիալ-տնտեսական կյանքի զարգացման բազմաթիվ տեղաշարժեր, որոնք ստրկատիրական Հայաստանի համար շուտով պետք է հնարավորություն ստեղծեին դուրս գալու միջավգային լայն ասպարեզ և վարելու ներգործուն արտաքին քաղաքականություն։ Դրանք էին դեռևս IV—III*



Տիգրան Բ-ի դրամներից

*դարերում ծայր առած և II դարում մեծ թափ ստացած հողի մասնավոր սեփականության աճը, սրա հետ կապված մասնատիրական տնտեսությունների բազմացումը, դասակարգային շերտավորման խորացումը, արքայական իշխանության անմիջական նեցուկը կազմող ռազմա-ստրկատիրական ավագանու հզորացումը, քաղաքային կյանքի վերելքը, տեղական և տարանցիկ առևտրի աշխուժացումը և ընդհանրապես երկրի ստրկատիրական տնտեսության զարգացման պրոցեսները։ Ինչպես տնտեսական վերելք ապրող ամեն մի ստրկատիրական երկրի, այնպես էլ Հայաստանի իշխող դասակարգը ձգտում էր արտաքին ծավալման, նորանոր հողերի ու մարդկային զանգվածների նվաճման։*

*Արտաքին հանգամանքները ևս բարենպաստ էին այդ ձգտումների իրականացման համար։ Հարավից՝ Սելևկյաններից եկող հիմնական ու դարավոր վտանգը չեզոքացված էր՝ պարթևներից կրած պարտությունների, ապա նաև*

---

9 *Տե՛ս Iust., XXXVIII, 3; Strabo*, *XI, 14, 15. «Յոթանասուն հովիտների» տեղադրման մասին տե՛ս J. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen nach den griechischen und arabischen Geographen, Wien, 1930, *էջ 119*։

10. *Տե՛ս App.*, Mithr., *67*։

իրենց իսկ ներդինաստիական պայքարի և կռիվների պատճառով։ Հյուսիսում գոյություն չուներ այնպիսի ուժ, որ կարողանար արգելք հանդիսանալ Հայաստանի ծավալմանը։ Ամենավտանգավոր ուժը, որի հետ հաշվի պետք է նստեր Հայաստանը, պարթևներն էին՝ իրենց աշխարհակալական ձգտումներով, սակայն այդ ձգտումների մեջ այժմ, Միհրդատ Բ-ի կառավարման վերջին շրջանում, որոշ տեղատվություն էր նկատվում։ Անշուշտ Տիգրանը սերտ կապեր պիտի ունեցած լիներ այդ թագավորի հետ, որոնք ծայր էին առել պարթևական արքունիքում։ Այդ մասին է վկայում, միանգամայն որոշակիորեն, այն հանգամանքը, որ Տիգրանի դուստր Ավտոման ամուսնացած էր Միհրդատ Բ-ի հետ[11]։ Հնարավոր է, որ այդ ամուսնությունը տեղի է ունեցել Տիգրանի գահակալման ժամանակ և հենց այդ կապակցությամբ՝ երկու պետությունների հարաբերությունները կայուն դարձնելու նպատակով։ Ինչևիցե, Տիգրանը պարթևների նկատմամբ սկզբնապես զգուշավոր քաղաքականություն էր վարում և ամբողջ 7—8 տարի, մինչև Միհրդատ Բ-ի մահը, ոչ մի քայլ չարեց նրանց դեմ։

Ինչ վերաբերում է Հայաստանի արևմտյան սահմաններին, ապա առայժմ, դարասկզբին, Հռոմը հեռու էր Հայաստանի սահմաններից, և նրա կողմից սպառնացող վտանգը որոշակիորեն չէր գծագրվում։

Այդ շրջանում, թերևս, պետք է որ ավանդաբար շարունակվեր այն բարենպաստ մթնոլորտը, որ ստեղծվել էր մեկ դար առաջ Սելևկյաններից, Հռոմի այդ թշնամիներից, Հայաստանի անջատվելու ու նրանց դեմ պայքարելու կապակցությամբ։ Բուռն աճ էր ապրում Պոնտոսի թագավորությունը, որը հաջողությամբ իրականացնում էր ամբողջ Փոքր Ասիային, ինչպես նաև սևծովյան առափնյա մյուս երկրներին, հատկապես Բոսպորի թագավորությանը տիրանալու իր ձգտումները։ Սակայն ապագան ցույց տվեց, որ Հայաստանի և Պոնտոսի շահերը չպետք է բախվեին, որ նրանք պետք է հանդես գային որպես դաշնակիցներ և ոչ մրցակիցներ, պետք է միավորեին իրենց ջանքերը ժամանակի հզորագույն ուժին՝ Հռոմեական ագրեսիային դիմագրավելու համար։

## 2. ՏԻԳՐԱՆ Բ-Ի ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

**Առաջին նվաճումների սկիզբը։ Հայ-պոնտական դաշինքը։** *Հետագա իրադարձությունները թույլ են տալիս ենթադրելու, որ Տիգրանը դեռևս իշխանության գլուխ անցնելուց առաջ, պատանդ եղած ժամանակ, հղացել էր Հայաստանի ներքին ու արտաքին քաղաքականության ծավալուն մի ծրագիր, որն այժմ սկսեց իրագործել*[12]։

Նա սկսեց հենց այն կետից, որտեղ կանգ էր առել իր պապը՝ Արտաշես Ա-ը, և որտեղ նա սայթաքել էր. դա Ծոփքի միացման խնդիրն էր, որով կիրականանար Մեծ Հայքի տերիտորիայի ամբողջացումը։ Ծոփքում իշխում էր Արտանեսը՝ Զարեհի շառավիղը։ Արդեն 94 թվականին հայկական զորքը ներխու-

[11] Տես *E. H. Minns*, Parchments of the Parthian Period from Avroman in Kurdistan, „The Journal of Hellenic Studies", vol. XXXV, part I 1915, էջ 40—42։

[12] Տե՛ս Հրանդ Արմեն, *Մեծն Տիգրան*, Գահիրե, 1957, էջ 84 և հաջ.։

*ժեց Ծոփաց աշխարհը և առանց դժվարության գրավեց։ Զարեհյանների թագավորական իշխանությանը վերջ տրվեց, և երկիրը միացվեց Մեծ Հայքին[12ա]։ Արտանեսը սպանվեց, սակայն հավանական է, որ նրա փոխարեն, արդեն որպես Տիգրանի կուսակալ, նշանակվել է Զարեհի տոհմի մի այլ ներկայացուցիչ՝ Միթրոբուզանես (Մեհրուժան) անունով[13]։*

*Ծոփքի միացումը Հայաստանը միանգամից դուրս բերեց ժամանակի միջազգային հարաբերությունների ոլորտը։ Հարցն այն է, որ Ծոփքը վաղուց ի վեր քաղաքական կապեր ուներ իր արևմտյան հարևան Կապադովկիայի հետ, որի ջանքերով էլ հնուց ի վեր պահպանում էր իր ինքնավարությունը։ Հայաստանն, այսպիսով, հին հաշիվներ ուներ Կապադովկիայի հետ լուծելու։ Այժմ Պոնտոսն սպառնում էր կլանել Կապադովկիան։ Կապադովկիային հարվածելու առիթը չափազանց գայթակղիչ էր նաև Տիգրան Բ-ի համար, մանավանդ, որ Պոնտոսի թագավորը՝ Միհրդատ Զ Եվպատորը մեծ շահագրգռվածություն ցուցաբերեց Հայաստանի զինակցության հանդեպ։*

*Միհրդատ Զ Եվպատորի բոլոր նախնիները շարունակում էին Փառնակ Ա-ի ակտիվ քաղաքականությունը Փոքր Ասիայում և ըստ հնարավորության ընդարձակում Պոնտոսի տերիտորիան։ Միհրդատ Ե-ը գործուն մասնակցություն ունեցավ Արիստոնիկոսի ապստամբության ճնշմանը, որից հետո նրան հաջողվեց իրեն ենթարկել Փռյուգիան, ինչպես և գերիշխանություն հաստատել Պափլագոնիայի և Գալատիայի վրա։ Նա նույն վիճակի մեջ էր դրել նաև Կապադովկիան, նրա գահին նստեցնելով իր դրածո Արիարաթ Եպիփանեսին, որին ամուսնացրել էր իր դստեր հետ[14]։*

*Պոնտոսի թագավորները մեծ չափով հենվում էին իրենց պետության կազմի մեջ մտնող Սև ծովի հարավային ափերի երկարությամբ շարված հունական քաղաքների վրա թե՛ զորքի ու վարչական ապարատի կազմակերպման, թե՛ առևտրի, դիվանագիտության ու մշակույթի հարցերում[15]։*

*Պոնտական պետության աշխարհակալական ձգտումների փայլուն իրագործողը եղավ Միհրդատ Եվերգետեսի որդի և Փառնակ Ա-ի թոռ Միհրդատ Զ Եվպատորը (111—63)։ Այս արտակարգ անձնավորությունը Հռոմի երկարամյա ոխերիմ թշնամին լինելու հանգամանքով իր վառ արտացոլումն է գտել ժամանակի հունա-հռոմեական պատմագրության մեջ, որտեղ նա բնութագրված է որպես կարող, բայց բարոյական որևէ արգելակից զուրկ մի գործիչ։ Եռանդուն գործունեության հետևանքով նա նվաճեց Բոսփորի թագավորությունը, վերահաստատեց Պոնտոսի իշխանությունը Պափլագոնիայի և Գալատիայի վրա[16]։*

*Այնուհետև տեղի է ունեցել Փոքր Հայքի և նրանից հյուսիս և հյուսիս-արևմուտք ընկած մերձսևծովյան շրջանների միացումը Պոնտոսի պետությանը[17]։*

---

12ա *Տե՛ս Strabo, XI, 14, 15։*

13 *Հմմտ. J. Marquart*, Erānšahr, *էջ 176.*

14 *Տե՛ս* CAH, *IX, էջ 221 և հաջ. (*M. Rostovtzeff*)։*

15 *Տե՛ս նույն տեղում, էջ 222։*

16 *Տե՛ս նույն տեղում, էջ 225 և հաջ.։*

17 *Տե՛ս Strabo, XII, 3, 28։*

Միհրդատի օրոք այստեղ կառուցվեց 75 բերդ, որոնցից շատերում պահվում էին նրա գանձերը։

Հաջորդ զոհը պիտի դառնար Կապադովկիան։ Այս երկիրը, որը վերը հիշատակված Արիարաթ Ե-ի (163—130) օրոք իր ծաղկման շրջանն էր ապրել, այժմ թշվառ վիճակում էր, լինելով փաստորեն Պոնտոսի դրածոների իշխանության տակ։ Դարավերջին այնտեղ թագավորում էր Միհրդատ Պոնտացու քույրը՝ իր որդի Արիարաթ Է-ի անունից։ Կապադովկիայի խնդրում դաշնակիցները՝ Միհրդատն ու Նիկոմեդեսը, գժտվեցին։ Վերջինս ներխուժեց Կապադովկիա և տիրացավ նրան, կնության վերցնելով թագուհուն։ Որոշ պայքարից հետո Միհրդատին հաջողվեց կապադովկիական գահին նստեցնել իր որդիներից մեկին՝ Արիարաթին, իսկ սրա մահից հետո երկիրը միացրեց իր պետությանը։ Սակայն Հռոմի միջամտությամբ Կապադովկիան նորից ազատագրվեց և ստացավ նոր թագավոր՝ ի դեմս Արիոբարզանի (մ. թ. ա. 95)։



Տիգրան Բ-ի դիմանկարը ըստ դրամի

Միհրդատը սկսեց այլ ուղիներ որոնել Կապադովկիայի միացման համար և նոր դաշնակից փնտրել։ Այդ դաշնակիցը եղավ Տիգրան Բ-ը։ Միհրդատը հատուկ դեսպան ուղարկեց Տիգրանի մոտ՝ դաշինք կռելու առաջարկով։

Դաշինքը կնքվում ու ամրապնդվում է Տիգրանի ամուսնությամբ Միհրդատի դստեր՝ Կլեոպատրայի հետ։ Կողմերը պայմանավորվում են, որ Կապադովկիայի տերիտորիան կանցնի Պոնտոսի գերիշխանության տակ, իսկ այն ամենը, ինչ կարելի է տեղաշարժել՝ մարդիկ, անասունները, հարստությունը՝ կտնօրինի Հայաստանը[18]։

Առաջին հայացքից թվում է, թե այս պայմանագրում շահողը Միհրդատն է։ Սակայն վիճակը գնահատելիս պետք է հաշվի առնել, որ Հայաստանը այդ պահին բացարձակապես ոչ մի կախում չուներ Պոնտոսից, ոչ էլ որևէ այլ երկրից, ուստի և բացառված է, որ Տիգրանը համաձայներ անհավասար պայմանների, կնքեր այնպիսի պայմանագիր, որով Հայաստանի շահերը որևէ չափով տուժեին։ Պետք է, ուրեմն, ընդունել, որ այդօրինակ պայմանագիրն իր բիմաստն ուներ Հայաստանի համար և անհրաժեշտ չափով շահավետ էր։ Ի դեպ, միայն այդպիսի հանգամանքներում նման դաշնակցությունը կարող էր հարատևել, իսկ այն իսկապես հարատևեց։ Կապադովկիան ստրկատիրական Հայաստանի համար դարձավ մարդկային զանգվածների մի շտեմարան, որից

18 Տե՛ս Just., XXXVIII, 3;

քանիցս ձեռնարկված արշավանքների ընթացքում լրացվում էր ինչպես քաղաքային բնակչության, այնպես էլ ստրուկների՝ Հայաստանում նկատվող պակասը։

Սակայն Կապադովկիայի կարևոր մարզերից մեկը՝ Մելիտենեն, Տիգրանը հավանաբար հատել ու կցել է նախապես Մեծ Հայքին միացված Ծոփքին[19]։

Հայ-պոնտական դաշինքն այսպիսով կապված էր Կապադովկիայի հանդեպ տարվող քաղաքականության հետ և երկար ժամանակ հեռու էր բուն իմաստով հակահռոմեական լինելուց. գոնե այդպիսին էր Հայաստանի վերաբերմունքը հիշյալ դաշինքի նկատմամբ, ինչպես այդ երևում է հետագա անցքերից։ Ճիշտ է, Հռոմն իր շահերն ուներ Կապադովկիայում, ինչպես նաև, ընդհանրապես, Փոքր Ասիայի արևելյան մասերում և զգաստ քաղաքագետը պետք է մշտապես հիշեր այդ մասին, սակայն Կապադովկիան ասպատակելը դեռևս չէր նշանակում ելնել Հռոմի դեմ։

Առաջին արշավանքը դեպի Կապադովկիա հայկական զորքը կատարեց Ծոփքի միացման հաջորդ տարում՝ 93 թվականին։ Արիոբարզանը՝ Կապադովկիայի թագավորը, փախավ Հռոմ։ Հռոմը հանձնարարեց Լուկիոս Կոռնելիոս Սուլլային, որն այդ ժամանակ հռոմեական պրովինցիա Լեռնային Կիլիկիայի վարչապետն էր, վերականգնել իրերի նախկին վիճակը, որը և կատարվեց 92 թվականին[20]։ Սակայն արդեն հաջորդ՝ 91 թվականին, հայոց զորավարներ Միթրաասը և Բագոասը նորից ասպատակեցին Կապադովկիան, և Արիոբարզանը կրկին փախուստի դիմեց, թողնելով ասպարեզը դաշնակիցներին։ Հռոմում սրան բողոքակից դարձավ Բյութանիայի Նիկոմեդես թագավորը, որին իր հայրենի գահից քշել էր Միհրդատ Պոնտացին։ Երկու տարի անց Հռոմին հաջողվեց առանց զենքի ուժի վերականգնել Նիկոմեդեսին և կրկին անգամ Արիոբարզանին, իրենց երկրներում[21]։

**Պարթևական պետության ընկնումը:** Կապադովկիական այս անցուդարձերին հաջորդող նվաճումների հերթականությունն ու ժամանակագրությունը միշտ չէ, որ պարզորոշ դրսևորվում է առկա աղբյուրներում։ Մասնավորապես, եթե հետևելու լինենք Հուստինոսի հաղորդմանը, թե Ասորիքը Տիգրանի կողմից նվաճվել է դեռևս պարթև Միհրդատ Բ-ի կենդանության ժամանակ և քանի դեռ Տիգրանը պայքարի մեջ չէր մտել պարթևների հետ, ապա կընկնենք հակասության մեջ, որովհետև Միհրդատը մահացել է 88—87 թվականին, իսկ Ասորիքը Տիգրանի կողմից նվաճվեց միայն 83 թվականին։ Անշուշտ, իրավացի են այն գիտնականները, որոնց կարծիքով պատերազմը պարթևների հետ և նրանց գերիշխանության տակ եղած երկրների նվաճումը նախորդել է Ասորիքի նվաճմանը և ոչ միայն նախորդել է, այլև դարձել նախապայման։ Ասորիքի նվաճման ճանապարհին կանգնած էին առաջին հերթին պարթևները, որոնք

---

19 Այդպես է կարծում Թ. Մոմզենը (История Рима, III, М., 1941, էջ 43), որի հետ համաձայն չէ Հ. Մանանդյանը (Քննական տեսություն, հատ. Ա, էջ 154—155)։

20 Տե՛ս Just., XXXVIII, 3; Plut., Sulla, 5; App., Mithr., 57։

21 Տե՛ս App., Mithr., 11։

տիրել էին Ատրպատականին, Մարաստանին ու Հյուսիսային Միջագետքի երկրներին և, բացի դրանից, իրենց ձեռքին էին պահում հայկական «Յոթանասուն հովիտները»։

Պարթևները ներքին դժվարություններ ունեին։ Բաբելոնի «սատրապաց սատրապ» Գոդերձը 91 թվականին ապստամբել և իրեն անկախ թագավոր էր հռչակել[22]։ Սակայն քանի դեռ կենդանի էր Տիգրանի դաշնակիցը և փեսան՝ Միհրդատ Բ-ը, Տիգրանը խուսափում էր բախումներից։ Վիճակը փոխվեց 87 թվականին, երբ Միհրդատ Բ-ը մահացավ և թագավորեց Գոդերձը։ Հայկական զորքերը մտան «Յոթանասուն հովիտները»։ Լուրջ դիմադրության չհանդիպելով, նրանք շարունակեցին առաջխաղացումը և ներխուժեցին Ատրոպատյան Մարաստանի հողերն ու կտրելով-անցնելով երկիրը, մտան բուն Մարաստան։ Հետապնդելով պարթևական զորքերին, նրանք հասան մինչև Էկբատան՝ պարթևական արքայից-արքայի նստավայրերից մեկը[23]։ Էկբատանի պաշարման ժամանակ հրի մատնվեց պարիսպներից դուրս գտնվող թագավորական դղյակը՝ Ադրաբանան։ Ահաբեկված պարթևական թագավորը՝ Գոդերձը, շտապեց հաշտություն կնքել ու հրաժարվեց ոչ միայն «Յոթանասուն հովիտներից», այլև Ատրոպատյան Մարաստանի և Հյուսիսային Միջագետքի երկրների գերիշխանությունից[24]։ Նա հրաժարվեց նաև «արքայից-արքա» տիտղոսից, որն այնուհետև սկսեց կրել Տիգրանը։

Տիգրանը ամրապնդեց ստեղծված իրավիճակը դինաստիական մի նոր ամուսնությամբ, իր դստերը կնության տալով իր գերիշխանության տակ ընկած Ատրպատականի թագավոր Միհրդատին[25]։

Այնուհետև Տիգրանն ուղղվեց դեպի հարավ՝ գրավելու պարթևներից առնըված երկրները։ Այստեղ մեկ դար առաջ Հայաստանին էր միացվել Ծոփքը, իսկ այժմ հայկական բանակը նվաճեց նրա արևմտյան կողմում ընկած Կորդուքը (Գորդիենեն) և ավելի հարավ՝ Տիգրիսի միջին հոսանքի շուրջը տեղավորված Ադիաբենեն՝ պատմական Ասորեստանը։ Տիգրիսն անցնելով, զորքերը դուրս եկան Հյուսիսային Միջագետքի արգավանդ դաշտերը և գրավեցին Միգդոնիան՝ Մծբին (Նիսիբին) մայրաքաղաքով և Օսրոյենեն՝ Ուռհա (Եդեսիա, Էդեսսա) կենտրոնով[26]։ Այսուհետև Եփրատն էր միայն, որ Տիգրանի տերությունը բաժանում էր Սելևկյանների ձեռքին պահպանված հողերից։

**Տիգրանը Միջերկրականի ափերին. սելևկյան Ասորիքի նվաճումը։** Սկսվեց արտաքին նվաճումների հաջորդ փուլը՝ պայքարը Սելևկյանների դեմ։ Վերջիններս արդեն իսպառ կորցրել էին իրենց երբեմնի հզորությունը, որի առջև դողում էր ամբողջ Արևելքը։

---

[22] Տե՛ս N. Debevoise, A Political History of Parthia, Chicago, 1938, էջ 48։

[23] Տե՛ս Isid. Char., Geographi graeci minores, ed. C. Müller, I, էջ 250։

[24] Տե՛ս Strabo, XI, 14, 15; Memn., 58, 2։ Դաշինքի մասին խոսում է Հուստինոսը (XL, 1)։

[25] Տե՛ս Dio. XXXVI, 14։

[26] Տե՛ս Strabo, XI, 14, 15; XVI, 12, 4; Eutr., VI, 8; Plut., Luc., 14; 21; Dio. XXXVI, 6, 2։

130 թվականի Անտիոքոս Է-ի արած վերջին փորձը՝ վերականգնել Սելևկյանների արևելյան տիրույթները, հարվածելով պարթևներին, ձախողվեց. Արևելքը վերջնականորեն կորսված էր նրանց համար։ Սելևկյան պետությունը մնաց պարփակված Ասորիքի, Փյունիկիայի և Կիլիկիայի սահմաններում։ Պարթևական գերությունից վերադարձած Դեմետրիոս Բ-ի երկրորդ թագավորությունից (129—125) սկսվում է պետության անդառնալի անկումը, որը հանգեցրեց երկրի նախ՝ հայկական պետության, ապա և Հռոմի նահանգ դառնալուն։



Արտավան Բ-ի (128—123) դրամը

125 թվականին Ասորիքում թագավորեց Կլեոպատրա Թեայի և Դեմետրիոս Բ-ի որդի Անտիոքոս Ը Գրյուպոսը՝ իր մոր հետ մեկտեղ։ 121 թվականին մայրը փորձ արեց թունավորելու որդուն (նախապես նա այդպես էր վարվել իր ավագ որդու՝ Սելևկոսի հետ), սակայն ինքը զոհ գնաց այդ փորձին։ Անտիոքոս Ը-ը թագավորեց միայնակ։ Բայց արդեն 114 թվականին Ասորիքում մի նոր թագավոր ի հայտ եկավ՝ Անտիոքոս Թ Կիզիկեցին (114—95)՝ իշխող թագավորի կրտսեր եղբայրը։ Եղբայր թագավորների միջև ծավալվեց երկարամյա քաղաքացիական կռիվ։

96 թվականին Անտիոքոս Ը Գրյուպոսը սպանվեց Անտիոքում՝ դավադրության հետևանքով։ Անտիոքոս Թ-ը գրավեց մայրաքաղաքը և կնության առավ Գրյուպոսի կնոջը՝ Սելենեին։ Սակայն նույն 96 թվականին Պտղոմեոս Ը Լաթյուրոսը Դամասկոսում Ասորիքի թագավոր կարգեց Գրյուպոսի և Սելենեի որդիներից Դեմետրիոսին (Դեմետրիոս Գ՝ 96—88)։ Կար և երրորդ հավակնորդը՝ այս Դեմետրիոսի ավագ եղբայրը, որը ևս իրեն թագավոր հռչակեց որպես Սելևկոս Զ (96—95) և հաջորդ տարին պարտության մատնեց ու սպանեց Անտիոքոս Թ Կիզիկեցուն։ Քաղաքացիական կռիվը շարունակվեց նոր ախոյանների միջև, որոնց իսկույն միացավ մի երրորդը՝ Կիզիկեցու որդին, թագադրվելով որպես Անտիոքոս Ժ Եվսեբես (95—92)։ Սա ամուսնացավ իր խորթ մայր Սելենեի հետ և սպանեց Սելևկոս Զ-ին (95)։

Երկու տարի անց սրան ախոյան դարձան իր իսկ երկու կրտսեր եղբայրները, որոնք իրենց հռչակեցին զույգ թագավորներ՝ Անտիոքոս ԺԱ (93) և Փիլիպպոս Ա (93—84) անուններով։ Անտիոքոս ԺԱ-ը շուտով մահացավ, իսկ Փիլիպպոսը, միանալով Դեմետրիոս Գ-ի հետ, դուրս արեց Ասորիքից Անտիոքոս Ժ Եվսեբեսին, որը շուտով սպանվեց պարթևական մի զորամասի հետ ընդհարվելիս (92)։ Դեմետրիոսը ևս 88 թվականին դադարեց թագավորելուց, գերի ընկնելով պարթևների ձեռքը։ Փիլիպպոսը կարող էր հուսալ, որ, վերջապես, Ասորիքում ինքը մնաց որպես միակ իշխող։ Բայց իզուր, որովհետև հաջորդ տարին նրա կրտսեր եղբայրը՝ Անտիոքոս Ը Գրյուպոսի և Սելենեի մյուս որդին,

Դամասկոսում իրեն թագավոր հռչակեց որպես Անտիոքոս ԺԲ Փիլադելփոս։ Երկու թագավորներն էլ իրենց վախճանը գտան 84 թվականին[27]։

Այս պարագաներում ամենևին զարմանալի չէ, որ կենտրոնական իշխանությունը ուժ չուներ այլևս պահպանելու երկրի քաղաքական ամբողջությունը, առևտրի անվտանգությունը, իշխող դասակարգի պահանջները, այն ամենը, ինչ ստիպում էր նրա շուրջը համախմբվել պետության կարևորագույն մասը՝ հելլենիստական քաղաքները։ Եվ բնական է, որ իշխող դասակարգը մտածում էր նոր տիրոջ մասին և գտավ նրան ի դեմս հայոց թագավոր Տիգրան Բ-ի։

Հուստինոսը պատմում է. «Եղբայրների փոխադարձ ատելությունը, ապա և նրանց որդիներին ժառանգաբար անցած թշնամությունը անընդհատ պատերազմներ ծնեցին, որոնք ծայրահեղ թուլության հասցրին Ասորիքը ու նրա թագավորներին. ի վերջո ժողովուրդը դիմեց օտարի օգնությանը և սկսեց փնտրել օտարերկրացի թագավոր։ Ոմանք կարծում էին, որ պետք է հրավիրել Միհրդատ Պոնտացուն, մյուսները՝ Եգիպտոսի Պտղեմայոսին։ Սակայն իրերի բերմամբ Միհրդատը պատերազմների մեջ էր հռոմեացիների դեմ, իսկ Պտղեմայոսը Ասորիքի մշտական թշնամին է եղել։ Այսպիսով, բոլորը համաձայնության եկան Հայաստանի թագավոր Տիգրանի շուրջը, որը սեփական ռազմական ուժ ունենալուց բացի, պարթևների թագավորության դաշնակիցն էր ու Միհրդատի խնամին։ Եվ այսպես, հրավիրված լինելով Ասորիքի գահին բազմելու, նա 17 տարի շարունակ կառավարում էր ամենայն անդորրությամբ, չէր խանգարում պատերազմներով ուրիշների հանգիստը և ոչ ոք նրան չէր անհանգստացնում. այնպես որ պատերազմելու անհրաժեշտություն չկար»[28]։

Սակայն ինչպես երևում է այլ վկայություններից, Սելևկյանների տերության նվաճումը Տիգրանի կողմից այդչափ դյուրին չի եղել[29]։ Թեև այդ միջոցին, 83 թվականին, Սելևկյան թագավոր չկար (երկու եղբայր ուախոյան թագավորները՝ Անտիոքոս ԺԲ Փիլադելփոսը և Փիլիպպոս Ա Փիլադելփոսը մահացել էին նախորդ տարին), բայց կար հավակնորդ՝ Անտիոքոս Ժ Եվսեբեսի կինը՝ Սելենե թագուհին, ի դեմս իր մանկահասակ որդու[30]։ Եթե գոյություն ունեցող կուսակցություններից մեկը հրավիրել էր Տիգրանին, ապա մյուսները պետք է որ դիմադրեին[31]։ Այսպես թե այնպես, Տիգրանը 83 թվականին նստեց Անտիոքում Սելևկյանների գահին։ Հայկական բանակը շարունակեց առաջխաղացումը Միջերկրականի ափով և մտավ Փյունիկիա[32], հասնելով այդպիսով մինչև Եգիպ-

---

[27] Վերջին Սելևկյանների պատմությունը տես *A. R. Bellinger*, The End of the Seleucids, „Transactions of Connecticut Academy of Arts and Sciences", vol. 38, June 1949, էջ 51—102։

[28] *Just.*, XL, 1։ Ըստ Ապպիանոսի՝ Տիգրանի իշխանությունը Ասորիքում տևել է ընդամենը 14 տարի՝ 83-ից մինչև 69 թվականը։ Հուստինոսի մոտ հավանաբար հաշիվը հասնում է մինչև 66 թվականը՝ Տիգրանի և Պոմպեոսի միջև կնքված պայմանագրի ժամանակը։

[29] Համե. *App.*, Syr., 48։ *Plut.*, Lucul., 14։ *Strabo*, XI, 14, 15։

[30] Տես *A. R. Bellinger*, The End of the Seleucids, էջ 78—80։

[31] Տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 51։

[32] Տե՛ս *Strabo*, XI, 14, 15։

տոսին սահմանամերձ Պտղեմայիս քաղաքը[33], ուր պատսպարվել էր Սելենե թագուհին։ Այն ժամանակ, սակայն, չհաջողվեց նվաճել քաղաքը. այդ տեղի ունեցավ ավելի ուշ՝ 70 թվականին՝ հայ-հռոմեական պատերազմի նախօրեին։ Առափնյա Ասորիքում հայկական իշխանությունից դուրս մնաց միայն Սելևկիա խոշոր նավահանգիստը[34]։ Ասորիքի ցամաքային մասի՝ Կելեսիրիայի նվաճման մասին հստակ տեղեկություններ չկան, սակայն նրա մասնակի գրավումը հավանական է. հայտնի են Դամասկոսում Տիգրանի հատած դրամները[35]։

Հաջորդ քայլը Դաշտային Կիլիկիայի նվաճումն էր[36], որով նորաստեղծ հայկական տերությունը դարձավ Հռոմեական հանրապետության անմիջական հարևան. վերջինս հաստատվել էր Սելևկյան պետությունից նվիճված Լեռնային Կիլիկիայում։

Վերջապես, Կոմմագենեի նվաճմամբ Տիգրանը ավարտեց իր հսկայական երթը Առաջավոր Ասիայի երկրների վրայով և հարավ-արևմուտքից դուրս եկավ Ծոփքի ու Մեծ Հայքի սահմանները։

## 3. ՀԱՅԿԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆԸ, ՆՐԱ ՏԵՂՆ ՈՒ ԴԵՐԸ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅՈՒՄ

**Նորաստեղծ տերության կազմը և բնույթը։** *Ստեղծված տերությունն ընդգրկում էր Առաջավոր Ասիայի մի նշանակալից մասը. այն տարածված էր Միջերկրական ծովից ու Եգիպտոսից մինչև Կասպիականը և Քուռ գետից մինչև Միջագետք։ Ինչպես ամեն մի հզոր պետություն, նա իր ազդեցության ոլորտի մեջ առավ հարևան ավելի թույլ երկրները. դրանցից էին Վիրքը և Աղվանքը՝ հյուսիսում, բազմաթիվ արաբական ցեղերը՝ հարավում։ Տիգրանի անունը արձանագրվում է անգամ հեռավոր Բաբելոնիայում, մի սեպագիր վավերագրի մեջ[37]։ Նրա տերության մեջ խոսում էին 15-ից ավելի լեզուներով։*

*Նորաստեղծ տերությունը տիպիկ հելլենիստական պետություն էր, հար և նման նրան նախորդած Սելևկյանների ու Ալեքսանդր Մակեդոնացու տերություններին, որոնք իրենց հերթին նախատիպ ունեին ի դեմս Աքեմենյան, Նոր-Բաբելոնյան, Մարական ու Ասորեստանյան պետությունների։ Սրանք բոլորը, ինչպես և Տիգրանի պետությունը, տնտեսական ու էթնիկական կապերով չամրապնդված ռազմա-քաղաքական միավորումներ էին՝ կազմված բազմազգ ու զարգացման ամենատարբեր մակարդակի վրա գտնվող տարրերից։*

*Նվաճված երկրներից կարևորագույնը և տնտեսության ու մշակույթի տեսակետից ամենից զարգացածը Ասորիքն էր։ Սա այն երկիրն էր, որ կազմում*

---

33 *Տե՛ս Jos. Flav.*, AJ, *XIII, 16, 4։*

34 *Տե՛ս Strabo, XVI, 2, 8; Eutrop., VI, 14, 2։*

35 *Տիգրանի կողմից Ասորիքի նվաճման մասին մանրամասն տե՛ս A. Kuhn*, Beiträge zur Geschichte der Seleukiden vom Tode Antiochos VII Sidetes bis auf Antiochos XIII Asiaticos (129—64 v. chr.), Altkirch, 1891, *էջ 39—43։*

36 *Տե՛ս App.*, Syr., *48, Plut.*, Lucul., *21*, Pomp., *28; Dio, XXXVI, 37, 6։*

37 *Տե՛ս W. Belck*, Aus den Berichten über die armenische Expedition, ZE, 1899, *էջ 269—270։*

էր Սելևկյանների երբեմնի ընդարձակ տերության կորիզը։ Ասորիքը այդ դիրքին արժանացել էր թե՛ իր բնական առանձնահատուկ բարենպաստ պայմանների ու բերրիության, և թե՛ ռազմական ու առևտրական հարմար դիրքի շնորհիվ։ Ասորիքի կենտրոնական մասն էր կազմում այսպես կոչված Սելևկիսը, որի մեջ մտնում էին, իրենց լայնատարած հողային տերիտորիաներով հանդերձ, Սելևկյանների գլխավոր ռազմական կենտրոն Ապամեյա քաղաքը, նրանց կարևորագույն նավահանգիստները՝ Լաոդիկեյան ու Սելևկիան և, վերջապես, աշխարհահռչակ Անտիոքը՝ Սելևկյանների մայրաքաղաքը։ Այդ քաղաքը դարձավ նորաստեղծ հայկական տերության հարավային մայրաքաղաք։ Արտաշատը մնացել էր հեռու հյուսիսում։

Անտիոքը հիմնադրել էր Սելևկոս Ա-ը մ. թ. ա. 300 թվականին և անվանել իր հոր անունով։ Սելևկոսը այստեղ վերաբնակեցրել էր Անտիգոնիա քաղաքի բնակիչներին և մարդիկ տեղափոխել Փոքր Ասիայի ու Արշիպելագոսի հունական քաղաքներից։ Այդ ժամանակ կառուցվել է քաղաքի հետագայի չորս թաղամասերից միայն առաջինը։ Թաղամասերից չորրորդը կառուցվել է Անտիոքոս Դ Եպիփանեսի ժամանակ (մ. թ. ա. 175—163), իսկ մ. թ. ա. I դարում քաղաքն արդեն դուրս էր հորդել չորս թաղամասերի սահմաններից։ Անտիոքացի հռետոր Լիբանիոսը գրում է, որ Սելևկյանները «մտածում էին միայն մի բանի մասին՝ յուրաքանչյուրն ուզում էր թողնել քաղաքը ավելի աճած վիճակում» և «...ավելի հեշտ էր չափել ծովի ջուրը, քան փորձել բառերով նկարագրել, թե ինչ շենքերով է գեղեցկացրել քաղաքը յուրաքանչյուր թագավորը»[38]։ Հավանական է, որ Տիգրանը ևս, մեկ ու կես տասնամյակ իշխելով այստեղ, իր ներդրումն է արել քաղաքի կառուցապատման ասպարեզում։ Քաղաքը աչքի էր ընկնում իր կոմունալ հարմարություններով։ Հայտնի էր Անտիոքի ջրմուղը, որը սառն ու լավորակ ջուր էր հասցնում քաղաքի բոլոր տներին։ Ըստ Պլինիոսի տվյալների, քաղաքն ուներ 500 հազար բնակիչ և հին աշխարհի խոշորագույն քաղաքներից մեկն էր։ Անտիոքի արվարձանը՝ Դափնե զբոսավայրը, այնպիսի հռչակ էր վայելում իր շքեղությամբ, որ Անտիոքը հաճախ անվանում էին «Դափնեին կից Անտիոք»։ Անտիոքը, բացի իր քաղաքական նշանակությունից, արհեստագործական արտադրության մեծագույն կենտրոն էր, ինչպես և հելլենիստական մշակույթի օջախ ու հին աշխարհում հայտնի էր իր թատերական ներկայացումներով։

Քաղաքի բարեկեցությունը և շքեղությունը խարսխված էին նրա բնակչության մի ստվար մասը կազմող ստրուկների ծանր աշխատանքի և չարքաշ առօրյայի վրա։ Ասորիքի տասնյակ մյուս մեծ ու փոքր քաղաքները ևս բարձր զարգացած ստրկատիրական պոլիսներ էին։ Ստրկատիրությունը լայն տարածում ուներ, սակայն, ոչ միայն քաղաքներում, այլև գյուղատնտեսության բնագավառում՝ Ասորիքի բերրի հողերի վրա սփռված արքունի, տաճարային և մասնատիրական տնտեսություններում։

Ավելի հարավ, Միջերկրականի արևելյան ափի երկայնքով մեկ ընկած էր Փյունիկիան, որը Ասորիքի մասն էր կազմում։ Նրա ներկան գրեթե նույնքան փայլուն էր տնտեսական տեսակետից, որքան Հյուսիսային Ասորիքինը, իսկ

---

[38] Libanius, 124, 126.

անցյալը՝ առավել ևս։ Փյունիկյան քաղաքները՝ Տյուրոսը, Սիդոնը, Բերիթը, Արադը և մյուսները, որ մի ժամանակ ինքնուրույն քաղաք-պետություններ էին, մ. թ. ա. II հազարամյակում և I հազարամյակի սկզբներին ոչ միայն գերիշխում էին միջերկրածովյան ավազանում, այլև հաջող փորձեր էին անում դուրս գալու Հերակլյան սյուներից (Ջիբրալթար) այն կողմը։ Նրանք իրենց գաղութներն էին հիմնում Միջերկրականի ափերին։ Այս գաղութներից մեկն էր հռչակավոր Կարթագենը։ Մ. թ. ա. I դարում փյունիկյան քաղաքները պահպանում էին իրենց նշանակությունը արևելքի և արևմուտքի տարանցիկ առևտրի մեջ։ Նրանք նաև ստրկավաճառության խոշոր շուկաներ էին։

Ասորիքից հյուսիս-արևմուտք ընկած էր բազմաթիվ ոչ մեծ, բայց նշանավոր քաղաքներով հարուստ Դաշտային Կիլիկիան։ Կիլիկիայի քաղաքներն էին Տարսոնը, Սոլեն, Մոփսուեստիան, Անազարբան, Ադանան, Էպիփանեյան, Մալլոսը և այլն։ Սրանք մեծ մասամբ հին քաղաքներ էին՝ հելլենիստական իշխողների ձեռքից պոլիսային կառուցվածք և իրավունքներ ստացած։ Այսպես, Սոլեն պոլիս էր դարձել Ալեքսանդր Մակեդոնացու օրոք, որը նախօրոք նրան պարսկական կողմնորոշման համար տուգանել էր 50 տաղանդ արծաթով (գումարը վկայում է քաղաքի հարստության մասին)։ Քաղաքն ուներ իր շքեղ թատրոնը։ Մալլոսը և Ադանան իրենց սեփական դրամներն են հատելիս եղել դեռևս Աքեմենյանների տիրապետության ժամանակ։ Կիլիկյան ահա այս քաղաքների բնակչությունն էր, որ տեղահան եղավ և վերաբնակեցվեց Հայաստանում, տանելով իր հետ իր հելլենիստական քաղաքային կուլտուրան ու սովորույթները։

Հետաքրքրական է Ստրաբոնի[39] այն հաղորդումը, թե հայերը «ծովը (խոսքը, իհարկե, Միջերկրականի մասին է—հեղ.) հանձնել էին կիլիկեցիներին»։ Սա կարծես հակասում է բերված փաստերին։ Բայց ըստ երևույթին «կիլիկեցիներ» բառը պետք է տվյալ դեպքում հասկանալ հատուկ իմաստով, տեսնելով նրա մեջ Միջերկրականի ծովահեններին[40], որոնք այդ ժամանակ մի իսկական պետություն էին ստեղծել ծովի վրա։ Մանրամասն խոսելով նրանց մասին, Ապպիանոսը ավելացնում է. «Նրանց բոլորի գլխավոր կայանը կամ ճամբարը այսպես կոչված Դաժան (լեռնային—հեղ.) Կիլիկիան էր... այդ պատճառով նրանք բոլորը սկսեցին անվանվել «կիլիկեցիներ», ընդհանուր անվամբ...» և այլն[41]։

Հայտնի է, որ Հռոմի դեմ պայքարի պատրաստվելիս ծովահենների այս «պետության» հետ դաշինք էր կնքել Միհրդատը[42], ինչպես և Սերտորիոսը[43]։ Նմանօրինակ մի դաշինքի կարող էր դիմած լինել և Տիգրանը, որը, ինչպես հայտնի է, սեփական նավատորմիղ չուներ։

Իր բնակչության մի մասը, Կիլիկիայի նման, Հայաստանին տվեց նաև քանիցս Տիգրանի հեծելազորի սմբակներով տրորված Կապադովկիան, հատ-

---

39 Տե՛ս Strabo, XIV, 5, 2։

40 Տե՛ս A. R. Bellinger, The End of the Seleucids, էջ 84, Ժ. Ելչիբեկյան, Ասորիքը հայկական տերության կազմում, ԼՀԳ, 1970, № 6։

41 App., Mithr., 92.

42 CAH, IX, էջ 242—350, 372։

43 Տե՛ս նույն տեղում, էջ 321։

կապես նրա մայրաքաղաք Մաժակը (հետագայի Կեսարիան), հինավուրց քաղաք, որը ղեկավարվում էր ավանդական (իբրև թե մ. թ. ա. VI դարում ապրած՝ կիպրացի օրենսդիր Քարոնդասի հանձնարարած) օրենքներով։

Սելևկյաններից նվաճած երկրների վրա վարչապետ նշանակվեց Տիգրանի մերձավորներից Բագադատեսը (Բագարատը), որի նստավայրը դարձավ Անտիոքը։

Հայաստանի հարավային սահմանին էին հարում Օսրոյենեն՝ Եդեսիա (Ուռհա) մայրաքաղաքով և Միգդոնիան՝ Մծբին (Նիսիբին) կենտրոնով, որոնք Հյուսիսային Միջագետքի ամենաքարբեր երկրներն էին։ Իր ժամանակ մակեդոնացի նվաճողները, ելնելով տեղանքի բարենպաստ պայմաններից, ցանկացել են այս վայրերը դարձնել երկրորդ հայրենիք, Ուռհան վերանվանելով Էդեսա (հայկական ավանդույթով՝ Եդեսիա)՝ Մակեդոնիայի թագավորանիստ քաղաքի անունով, հարևան երկրամասը՝ Միգդոնիա՝ մակեդոնական մի մարզի անունով։ Մծբինը վերանվանվել էր Անտիոք։ Այս երկրների և Հայաստանի միջև Տիգրանի օրոք հաստատված կապերը՝ տնտեսական, հատկապես մշակութային, հակառակ հետագայի անբարենպաստ քաղաքական իրադարձություններին, գնալով ամրապնդվեցին։ Ուռհան ու Մծբինը նշանակալից դեր էին խաղալու հայ ժողովրդի կյանքում։

Միջագետքի երկրների վրա վերակացու էր կարգված թագավորի Գուրաս եղբայրը, որը նստում էր Մծբինում[44]։ Մծբինը, ըստ Դիոն Կասսիոսի և Պլուտարքոսի նկարագրության, ոչ միայն բազմամարդ ու հարուստ քաղաք էր, այլև ուժեղ ամրոց, շրջապատված երկու շարք հաստ ու բարձրաբերձ պարիսպներով և շուրջը փորված լայն խրամով[45]։ Գուրասի իշխանության ներքո էին գտնվում նաև Միջագետքի՝ Օսրոյենեից և Միգդոնիայից հարավ ընկած տափաստանները, որոնք զբաղեցված էին արաբական քոչվոր ցեղերով։

Միգդոնիայից դեպի արևելք, Տիգրիսի ձախ ափին, ընկած էր Կորդուքը (Գորդիենեն), որը այդ ժամանակ արդեն կիսահայացած էր և հետագայում կազմեց պատմական Հայաստանի մի մասը։ Մի շարք անառիկ բերդերի առկայությունը առիթ էր տվել Ստրաբոնին ասելու, որ այս երկրի բնակիչները հմուտ շինարարներ են։ Տիգրանը լայնորեն օգտագործում էր նրանց շինարարական արվեստը։ Ստրաբոնը այստեղ հիշատակում է երեք բերդ-քաղաք՝ Սարիսա, Սատալկա և Պինակա[46]։ Կորդուքը, որը մեծ մասամբ լեռնային երկիր էր, հասարակական-տնտեսական զարգացման տեսակետից շատ էր ետ մնում վերը հիշատակված երկրներից։

Տիգրիսի հոսանքն ի վար ձգված էր Ադիաբենե երկիրը. այն ընդգրկում էր պատմական բուն Ասորեստանի մեծ մասը և հատկապես նրա Նինվե մայրաքաղաքը։ Ադիաբենեի կենտրոնն էր Արբելա քաղաքը, որի անունով երկիրը երբեմն կոչվում էր Արբելիտիս[47]։ Ադիաբենեում ևս կար հոծ հայկական բնակչություն[48]։

44 Տե՛ս Plut., Lucul, 32. Մի գուցե Կյուրո՞ս, որ հին պարսկերեն հնչել է Կուրաշ։
45 Տե՛ս Plut., նույն տեղում, Dio, XXXVI, 6։
46 Տե՛ս Strabo, XVI, 1, 24։
47 Տե՛ս Plut., Pomp., 36։
48 Տե՛ս Strabo, XVI, 1, 19։

*Վերջապես, այդ երկրներից արևելք ու մինչև Կասպից ծովը տարածվում էր Ատրոպատյան Մարաստանը[49], Գանձակ և Փրաասպա քաղաքներով։ Երկրի լայնատարած տերիտորիան համեմատաբար նոսր էր բնակեցված ու բնակչությունը գտնվում էր սոցիալական զարգացման դեռևս ցածր մակարդակի վրա։ Նա նոր էր թևակոխել ստրկատիրական հասարակարգը։*

*Ահա այն երկրները՝ արևմուտքից արևելք, որոնք առաջին դարի սկզբին ընկել էին Հայաստանի գերիշխանության տակ։ Ինչպես տեսնում ենք, դրանք շատ տարբեր էին թե՛ իրենց պատմական անցյալով և թե՛ զարգացման մակարդակով։*

*Տերության հիմքը կազմող Հայաստանը իր զարգացման աստիճանի տեսակետից ևս ամենևին միատարր չէր։ Խորունկ ձորերով ու բարձր լեռներով կտրտված Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում ապրում էր հասարակական զարգացման տարբեր մակարդակի բնակչություն, սկսած տոհմատիրական հասարակության քայքայման փուլում գտնվող ցեղերից մինչև ստրկատիրական զարգացած հելլենիստական տիպի քաղաքները։*

*Ինչպես նշվեց, այս հսկայական ու բազմատարր միավորման բնույթը քաղաքական էր, ինչպես և նրա նախորդներ Սելևկյանների, Ալեքսանդրի և սրանց նախորդող միավորումների բնույթը։ Ուստի և այդ պետությունների բախտը մեծապես կախված էր քաղաքական իրադրությունից ու իրադարձություններից, ռազմական հաջողություններից ու անհաջողություններից։ Ալեքսանդրի պետությունը գոյություն ունեցավ տասը տարվանից քիչ ավելի միայն. մոտ հարյուրական տարի գոյատևեցին Մարական և Նոր-Բաբելոնյան պետությունները, ավելի երկար կյանք էր վիճակված Աքեմենյանների և Սելևկյանների պետություններին։ Տիգրանի պետությունը գոյություն ունեցավ շուրջ երկու տասնամյակ միայն։*

*Նման պետությունների առաջացումը օրինաչափ երևույթ էր Առաջավոր Ասիայում մ. թ. ա. I հազարամյակում, մասնավորապես նրա վերջին երրորդին, այսինքն՝ պատմության հելլենիստական շրջանի ընթացքում։ Դրանց առաջացման տնտեսական հիմնական պատճառն էր այդ ժամանակաշրջանի համար բնորոշ, ստրկատիրական հարաբերությունների ծավալումը, նրանց տարածումը նորանոր, պակաս չափով զարգացած, հաճախ նախադասակարգային հասարակությունների վրա և սրանց ներգրավումը ստրկատիրական աշխարհի ոլորտը։ Հելլենիստական այդ պետությունների գոյության համար կարևորագույն ազդակ էր նաև օրըստօրե աճող տեղական և տարանցիկ առևտրի կարգավորման անհրաժեշտությունը, իսկ նման մի կարգավորում ի վիճակի էին ապահովելու միայն այնպիսի պետություններ, որոնց վերահսկողության ներքո գտնվում էին լայնածավալ երկրներ, երկար առևտրական ուղիներ, բազմաթիվ առևտրական հանգույցներ։*

Տիգրանի ներքին քաղաքականությունը: *Չնայած տերության սահմանների ընդարձակմանը և այն հանգամանքին, որ այդ սահմանների մեջ էին մտել տնտեսապես զարգացած այնպիսի երկրներ, ինչպիսիք էին Ասորիքը, Հյուսի-*

49 *Այսինքն՝ Ատրպատականը։*

սային Միջագետքը, Կիլիկիան, չնայած այդ երկրների քաղաքային կյանքի ու մշակույթի փայլին, նորաստեղծ տերության միջուկը և կենտրոնը մնում էր Հայաստանը։ Նվաճողներին չհաջողվեց այդ փայլը և նրանք փորձ չարին փոխելու իրենց իշխանության աշխարհագրական և էթնիկական բազան, թերևս զգալով ստեղծված միավորման վաղանցուկ բնույթը։ Այս տեսակետը հետագայի քաղաքական արհավիրքների ժամանակ, ինչպես կհամոզվենք, իրեն լրիվ արդարացրեց։

Այդ քաղաքականության ամենավառ դրսևորումներից էր նվաճված երկրների բնակչության բռնի վերաբնակեցումը, որ հսկայական մասշտաբներով կատարվում էր Տիգրանի ժամանակ։ Հայաստանի աճող ստրկատիրական տնտեսությունը, զարգացող քաղաքային կյանքը պահանջում էին մարդկային ուժի նորանոր զանգվածներ, և այդ պահանջն էր, որ բավարարում էին վերաբնակեցումները։ Բացի արդեն հիշատակված կիլիկեցիներից ու կապադովկիացիներից, Հայաստան են բերվել նաև ասորիների, ադիաբենցիների, կորդվացիների և հրեաների հոծ զանգվածներ[50]։ Մոտավոր հաշիվներով Տիգրանի օրոք Հայաստան է բերվել կես միլիոնից ոչ պակաս օտարերկրացի[51]։ Իսկ գյուղատնտեսության մեջ հողատեր-ստրկատերերի՝ ռազմական ու վարչական ապարատի ուռճացմանը համընթաց աճող ու զարգացող դասակարգը, որը միապետի հիմնական հենարաններից մեկն էր ու նրա հատուկ մտահոգության առարկան, նորանոր հողեր էր ստանում, ինչպես և զավթում, և իր դաստակերտները մշակելու համար ավելի ու ավելի լայն չափերով օգտագործում ստրկական աշխատանքը։

Նվաճված երկրներից գանձվում էին հարկեր ու տուրքեր, որոնք, դատելով Տիգրանի կուտակած հարստություններից[52], արքունիքի շքեղությունից, շինարարության թափից, ռազմական ծախսերի մեծությունից և այլն, թեթև չպետք է լինեին։ Հասկանալի է, որ հարկերի մի զգալի մասն էլ գանձվում էր Հայաստանի բնակչությունից։ Նվաճված երկրները պարտավոր էին ըստ պահանջի զորք տրամադրել Հայաստանին։ Նման պարտավորություններ ունեին նաև տերության մեջ չմտնող, բայց նրա ազդեցության ոլորտի մասը կազմող այնպիսի երկրներ, ինչպիսիք էին, օրինակ, Վիրքն ու Աղվանքը։ Տիգրանի զորքը, Պլուտարքոսի նկարագրությամբ, բացի հայերից, բաղկացած էր Ատրպատականի մարերից, ադիաբենցիներից, կորդվացիներից, արաբներից, մարգերից, իբերներից (վրացիներ), աղվաններից և այլ ժողովուրդների ներկայացուցիչներից[53]։

Սակայն Տիգրանը իր գործունեության մեջ հանդես էր գալիս ոչ միայն

---

50 Տե՛ս *Plut*., Lucul., *26*, Փավստոս, Դ, ծե։

51 *Г. Х. Саркисян*, Тигранакерт. Из истории древнеармянских городских общин, М, 1960, էջ 60։

52 Միայն Տիգրանակերտից Լուկուլլոսը, քաղաքը գրավելուց հետո, տարել է 8 հազար տաղանդ արծաթ (*Plut*., Lucul., *29*), որ հավասար է մոտ 17 միլիոն ռուբլու՝ ոսկով, իսկ Պոմպեոսին Տիգրանը վճարել է 6 հազար տաղանդ ռազմատուգանք (*Strabo*, XI, 14, 10; *Plut*., Pomp., 33; *App*., Mithr., 104), որ հավասար է մոտավորապես 12,5 միլիոն ռուբլու՝ ոսկով։

53 Տե՛ս *Plut*, Lucul., 26. 31։

որպես Մեծ Հայքի թագավոր, այլև որպես աշխարհակալ տերության միապետ, և նրա ձեռնարկումների մի ստվար մասն էլ կապված էր իր այդ դիրքի ամրապնդման ու տերության լայնածավալ տերիտորիաների կարգավորման հետ։

Իշխող թագավորական դինաստիայի պաշտամունքը, որը հելլենիստական աշխարհի խոշոր ու հզոր պետություններից հետզհետե ընդօրինակել էին գրեթե բոլոր թագավորները և որը Հայաստանում ընդունված էր առնվազն Արտաշես Ա-ի ժամանակից, Տիգրանը վերանորոգեց։ Աստվածացված նախնիների կողքին նա պաշտամունքի առարկա դարձրեց նաև իշխող թագավորի անձը՝ իր սեփական անձը, ընդունելով «աստված» մականունը, ու թերևս նույնացնելով իրեն Վահագն-Հերակլես աստծու հետ[54]։

Մյուս քայլը, որին դիմեց Տիգրանը նույն նպատակներով, «արքայից արքա» տիտղոսի սեփականումն էր։ Տվյալ տիտղոսը կարող էր կրել այնպիսի մի թագավոր, որի իշխանության ներքո կային այլ թագավորություններ[55]։ Տիգրանից առաջ այն պատկանում էր պարթև Արշակունիներին, սկսած Միհրդատ Ա-ից (մ. թ. ա. 171—138)[56]։ Թե ինչպիսի մեծ նշանակություն էր վերագրում Տիգրանը այդ տիտղոսին, ցույց է տալիս նրա հիվանդագին վերաբերմունքը, երբ Լուկուլլոսի գրած նամակում նա իրեն սոսկ «արքա» անվանված տեսավ։ Տիգրանի արքունիքի փարթամությունը, որի մասին հատուկ հիշատակում են անտիկ պատմագիրները, նրա ստվար ու փայլուն շքախումբը՝ արքային մշտապես ուղեկցող չորս թագավորներով հանդերձ, նրա շքեղագույն զգեստը, այս ամենը ծառայում էր նույն նպատակին՝ բարձրացնել միապետի հեղինակությունը։

Նվաճված երկրների իրավական վիճակը որոշելիս Տիգրանը, ըստ երևույթին, առաջնորդվում էր ոչ թե որևէ սխեմայով, այլ կոնկրետ նպատակահարմարությամբ։ Այսպես, եթե Ատրպատականի և Կորդուքի թագավորները մնացին իրենց գահերին[57], և դեռ սրանցից առաջինը դարձավ հայոց թագավորի փեսան, ապա Միջագետքը և Ասորիքը վերածվեցին նահանգների, որոնք կառավարվում էին Տիգրանի կողմից կարգված վարչապետների միջոցով։ Համապատասխան գործակալների ձեռքով սրանք տնօրինում էին իրենց հանձնարարված երկրների ռազմական ու տնտեսա-ֆինանսական գործերը[58]։ Նվաճված երկրների վարչակարգի մեջ որևէ էական փոփոխություն չէր մտցվում, օգտագործվում էր գոյություն ունեցող կարգն ու վարչական ապարատը, մանավանդ զարգացած երկրներում։

Տերության ներքին կազմակերպման կարևորագույն միջոցառումներից

[54] Տե՛ս Trog., Prol., XLII:

[55] Տե՛ս App., Syr., 48. A. Gutschmid, Ueber die Beinamen der hellenistischen Könige, „Kleine Schriften", IV, Lpz., 1893, էջ 119։ Ս. Մ. Կրկյաշարյան, Բդեշխությունների առաջացումը Հայաստանում, ՊԲՀ, 1966, № 4, էջ 257—262։

[56] Տե՛ս N. Debevoise, A Political History of Parthia, էջ 51։

[57] Տե՛ս Plut., Lucul., 29։ Կորդուքի թագավոր Զարբիենոսը հետագայում դավաճանության համար մահապատժի ենթարկվեց, և երկրում հավանորեն կարգվեց արքունի վարչապետ։

[58] Այսպես, Միջագետքի վարչապետի՝ արքաեղբայր Գուրասի ռազմական օգնականն էր հույն Կալլիմաքոսը (տե՛ս Plut., Lucul., 32; Dio, XXXVI, 6, 7)։

մեկն էր առևտրի կարգավորման գործը. բնականաբար, այս հարցում իշխող դասը, անկախ իր ազգացեղային պատկանելությունից, մեծ սպասելիքներ ուներ։ Այն կարևոր էր ոչ միայն առևտրականների, այլև հողատերերի, անասնատերերի, արհեստավորական գործատների տերերի համար։

Եթե առաջ էլ Հայաստանի, Արարատյան դաշտի վրայով էր անցնում Առաջավոր Ասիայի տարանցիկ առևտրական ճանապարհներից մեկը, որը ծայրագույն Արևելքի երկրները, Չինաստանը, Միջին Ասիան, Կասպից և Սև ծովերի վրայով կապում էր Եվրոպայի հետ, և այդ ուղու առկայությամբ էր մասամբ պայմանավորված հայկական մայրաքաղաքներ Արմավիրի, Երվանդաշատի, Արտաշատի առաջացումը հենց Արարատյան դաշտում, Արաքսի հովտի երկայնությամբ, ապա այժմ հայկական պետության նշանակությունը տարանցիկ առևտրում էլ ավելի կարևոր դարձավ։ Նրա աշխարհագրական դիրքն այժմ այնպիսին էր, որ նա ներառել էր նաև հարավային այն տարանցիկ ուղիները, որոնք միացնում էին արևելյան երկրները Միջերկրականի նավահանգիստներին, ինչպես և կլանել էր հենց այդ նավահանգիստները[59]։

Ճանապարհները դյուրին ու անվտանգ դարձնելու նպատակով և, իհարկե, մաքսերի գանձման գործը կարգավորելու ու պետության ձեռքում կենտրոնացնելու համար Միջագետքի տափաստանների արաբական քոչվորական ողջ ցեղեր բնակեցվեցին առևտրական ուղիների երկայնքով, հատկապես դրանց հանգուցակետերում, օրինակ, Եփրատի կարևոր գետանցում՝ Զեգմայում, և Կիլիկիան Ասորիքից բաժանող Ամանոս լեռների լեռնանցքում[60]։

Տիգրանը լավ էր ըմբռնել քաղաքների, հատկապես Ասորիքի հարուստ և ազդեցիկ քաղաքների հսկայական նշանակությունը իր պետության համակարգում և համապատասխան վերաբերմունք ցուցաբերեց նրանց հանդեպ։ Նրա օրոք լրիվ պահպանվեց սելևկյան քաղաքների արտոնյալ վիճակը։ Դեռ ավելին։ Վերջին հետազոտություններից պարզվում է, որ այնպիսի քաղաքներ, ինչպիսիք էին Լաոդիկեյան և Բերիթը (Բեյրութ), հայկական տիրապետության ժամանակ է, որ ստացել են «ազատություն» կոչվող արտոնությունը, որը հելլենիստական շրջանում նշանակում էր ինքնավարության սովորականից ավելի լայն իրավունք, և որից նրանք զրկված են եղել Սելևկյանների ժամանակ։ Ի նշանավորումն այդ իրադարձության, որ տեղի է ունեցել մ. թ. ա. 81 թվականին, հիշյալ քաղաքները այդ տարեթիվը համարել են իրենց քաղաքային տոմարի սկիզբը և իրենց հատած (քաղաքային) դրամները թվագրել այդ տոմարով[61]։ Ապամեա քաղաքը 76 թվականին իրավունք է ստացել հատելու իր սեփական քաղաքային դրամները, որպիսի իրավունք Սելևկյանների ժամանակ նա չի ունեցել[62]։ Այս և նմանօրինակ այլ փաստերը հաստատում են Հուստինոսի վե-

---

59 Տե՛ս Я. А. Манандян. О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н э.—XV в. и. э.), изд. 2-е, Ереван, 1954, էջ 3։

60 Տե՛ս Plut., Luc., 21, Plin., Nat. hist., VI, 28, Я. А. Манандян, О торговле и городах, изд. 2-е, էջ 71։

61 Տե՛ս H. Seyrig, Antiquitées syriennes, 42, Sur les ères de quelques villes de Syrie, „Syria", 1950, XXVII, էջ 26 և հաջ. 38 և հաջ.։

62 Տե՛ս նույն տեղում, էջ 18 և հաջ.։

*րևում մեջ բերված հաղորդումը, ըստ որի Տիգրանի իշխանության ժամանակաշրջանում Ասորիքի համար ստեղծված են եղել ապահով և բարենպաստ պայմաններ։*

## 4. ՄԵԾ ՀԱՅՔԸ ՏԻԳՐԱՆ Բ-Ի ՏԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Տիգրանակերտի հիմնադրումը:** *Քաղաքային կյանքի զարգացման մակարդակի տեսակետից Հայաստանը հետ էր մնում թե՛ Ասորիքից, թե՛ Փոքր Ասիայից։ Տերության սահմաններում բարձր զարգացած երկրների առկայությունը անխուսափելիորեն իր զորեղ ազդեցությունը պիտի գործեր Հայաստանի վրա բոլոր բնագավառներում՝ ինչպես սոցիալ-տնտեսական, այնպես էլ մշակութային. հատկապես ուժեղ էր այդ ազդեցությունը քաղաքային կյանքի զարգացման վրա։ Հելլենիստական քաղաքների նկատմամբ վարած քաղաքականության անմիջական շարունակությունն էր Հայաստանի քաղաքների աճին ու բազմացմանը զարկ տալու ձգտումը։*

*Հայաստանի հին մայրաքաղաքը՝ Արտաշատը, մնացել էր տերության հյուսիսային ծայրամասում, նորը՝ Անտիոքը, հայկական բնաշխարհից դուրս էր գտնվում։ Անհրաժեշտ էր բուն Հայաստանում ստեղծել նոր մայրաքաղաք, որը միաժամանակ ընկած լիներ նաև ամբողջ տերության կենտրոնում։ Եվ ահա 80-ական թվականների վերջերին սկիզբ դրվեց այդպիսի մի քաղաքի շինարարության[63], Տիգրիսի վերին հոսանքի ձախակողմյան վտակներից մեկի՝ Նիկեփորիոնի (ներկայիս Ֆարկին-սու) հարմարավետ հովտում, Աղձնիք նահանգում[64]։*

*Ապպիանոսի հաղորդմամբ՝ հենց այս տեղում է, որ Տիգրանը թագադրվել է մ. թ. ա. 95 թվականին[65]։ Կարելի է եզրակացնել, ուրեմն, որ տեղանքը աչքի է ընկել ոչ միայն հարմարությամբ, այլև կապված է եղել հայ ժողովրդի պատմական ինչ-որ ավանդությունների հետ։ Չպետք է մոռանալ, որ Աղձնիքը հայ ժողովրդի կազմավորման հնագույն օջախներից է։ Հնարավոր է, որ քաղաքի հիմնադրման պահին այստեղ գոյություն ունեցած լիներ բնակավայր։*

*Հելլենիստական աշխարհում ընդունված են եղել նորաստեղծ քաղաքների բնակեցման որոշակի մեթոդներ, որոնք Հայաստանում ևս կիրառվել են դեռ*

---

63 *Թ. Ռեյնաքի կարծիքով (*Mithradates Eupator, *էջ 342) Տիգրանակերտը հիմնադրվել է մ. թ. ա. 77 թվականին։ Ավելի հավանական է, որ այդ տեղի է ունեցել Կիլիկիայի նվաճումից անմիջապես հետո, 82 կամ 81 թվականներին։*

64 *Տիգրանակերտի տեղադրության հարցը գիտնականների միջև իր ժամանակ մեծ վեճ էր առաջացրել։ Բոլոր աղբյուրները ցույց են տալիս այդ տեղը Տիգրիսի վերին հոսանքի շրջանում, բայց մի մասը քաղաքը տեղադրում է Տիգրիսից հյուսիս (Plin.,* NH, *VI, 9; Eutrop., VI; Ptol., V, 13, 22;* Փավստոս Բուզանդ, *Դ, իդ), մյուս մասը՝ հարավ (Strabo, XI, 12, 4; Tac., Ann., XV, 5)։ Ներկայումս ընդհանուր համաքում ունի Լեհման-Հաուպտի կարծիքը, ըստ որի քաղաքը գտնվել է Տիգրիսից հյուսիս, նրա ձախ վտակ Ֆարկին-սու գետի (անտիկ հեղինակների Նիկեփորիոն) ափին, Աղձնիքի Նփրկերտ գավառում (C. F. Lehmann-Haupt,* Armenien einst und jetzt, I, Berlin, 1910, *էջ 381 և հաջ.)։ Տիգրանակերտի տեղադրությանը նվիրված գրականության տեսությունը տե՛ս K. Eckhardt,* Die armenischen Feldzüge des Lucullus, „Klio“, IX, 1909, *էջ 76—79։*

65 *Տե՛ս App.,* Mithr., *67։*

Արտաշես Ա-ի ժամանակներից։ Տիգրանը կիրառում է նույն մեթոդները, բայց շատ ավելի լայն չափերով։ Նոր հիմնադրված քաղաքում բնակեցվել են հայ ավագանու շատ ներկայացուցիչներ[66]։ Բայց բնակչության նշանակալից մասը օտարերկրացիներ են եղել։ Օգտագործելով նվաճված երկրներում քաղաքային բնակչության առատությունը, Տիգրանը հարկադրական մի շարք վերաբնակեցումներ կատարեց Կիլիկիայից, Կապադովկիայից, Միջագետքից։ Այսպես, Կապադովկիայից վերաբնակեցվեց ամբողջ մայրաքաղաքը՝ Մաժակը, Կիլիկիայից՝ Սոլի, Մալլոս, Ադանա, Էպիփանեյա և մի շարք այլ, ընդամենը 12. հելլենիստական քաղաքներ[67]։

Իհարկե, այդ հսկայական զանգվածները չէին կարող տեղավորվել միայն Տիգրանակերտում։ Տիգրանակերտը անտիկ պատմագիրների երկերում նկարագրվում է որպես խոշոր, շքեղորեն կառուցապատված և հարուստ քաղաք, 25 մ բարձրություն ունեցող պարիսպներով և պարիսպներից դուրս գտնվող արքայական պալատներով ու պարտեզներով[68]։ Սակայն այդ քաղաքի կյանքի առաջին փուլը, մինչև նրա ավերումը հռոմեացիների կողմից, տևեց միայն 10—15 տարի, և այդ ժամանակի ընթացքում քաղաքի բնակչությունը չէր կարող հասնել մի քանի հարյուր հազարի, քանի, որին իրենց գոյության հարյուրամյակների ընթացքում հազիվ-հազ հասել էին ժամանակի խոշորագույն քաղաքները՝ Անտիոքը, Ալեքսանդրիան, Հռոմը։ Երևի Տիգրանակերտի բնակչությունը 100 հազարից չէր անցնում։ Մնացյալ վերաբնակեցվածները տեղավորվում էին այլ վայրերում ու քաղաքներում։ Հայտնի է, որ Տիգրանակերտ անունով, այսինքն՝ Տիգրանի օրոք հիմնադրված քաղաքներ, գոյություն են ունեցել բացի Աղձնիքից, նաև Արցախում և Ուտիքում, Տիգրանավան՝ Գողթնում (թերևս Պտղոմեոսի հիշատակած Տիգրանոամա քաղաքը)[69]։ Սրանք ևս պետք է ստացած լինեին վերաբնակեցվածների մի մասը։ Հայտնի է, որ վերջիններս տեղավորվում էին ոչ միայն բուն Հայաստանում, այլև Մարաստանում, որտեղ Պտղոմեոսը իսկապես հիշատակում է Տիգրանա վայրը, Ամանոսում, ուր գոյություն են ունեցել Տիգրանուկոմե անունով բնակավայրեր[70]։ Այս բոլորից բացի, հայկական աղբյուրներից հայտնի է, որ օտարերկրացիները տեղավորվել են մասամբ նաև հին հայկական քաղաքներում, որպիսիք են՝ Արտաշատը, Արմավիրը, Երվանդաշատը, Բագրևանդի Զարեհավանը, Աղիովիտի Զարիշատը և այլն[71]։

Հելլենիզմի ազդեցության ուժեղացումը։ Հելլենիստական երկրների բազմակողմանի ազդեցությունը Հայաստանի վրա զգացվում էր դեռևս մ. թ. ա. III դարում, իսկ II դարում այն հասավ նշանակալից չափերի։ Այնպես, որ հարկ չկա նրա սկզբնավորումը կապել Տիգրանի ժամանակի հետ, ինչպես երբեմն արվում է։ Բայց մ. թ. ա. I դարի սկզբներին այդ ազդեցությունը անհա-

66 Տե՛ս App., Mithr., 83։
67 Տե՛ս Strabo, XI, 14, 15։
68 Տե՛ս App., Mithr., 84։
69 Տե՛ս Ptol., V, 12, 10։
70 Տե՛ս Plut., Lucul., 14; Ptol., VI, 2, 9; Plin., N. H., V, 81։
71 Փավստոս, Դ, ծե։ Խորենացի, Բ, ժզ։

մեմատ զորեղացավ շնորհիվ երկու նոր հանգամանքների։ Դրանցից առաջինն այն էր, որ Հայաստանը, թեկուզ և կարճ ժամանակով, դարձավ հելլենիստական մի պետության միջուկ, որով նրա կապերը հարևան զարգացած երկրների հետ մեծապես ուժեղացան։ Երկրորդ՝ Հայաստանը լցվեց այդ երկրների բնակչության հոծ զանգվածներով, որոնք հանդես եկան որպես հելլենիզմի ավանդույթների կենդանի կրողներ։ Նշված գործոններով ուժեղացած ազդեցության հորձանքը առաջին հերթին ողողեց, և դա բնական է, հայկական քաղաքները։



Անահիտ դիցուհու արձանի գլուխը. Սատաղ

Եկվորները բերում էին իրենց հետ բազմադարյան քաղաքային կյանքի ընթացքում մշակված սոցիալական, քաղաքական ու մշակութային հիմնարկություններ ու սովորույթներ։ Այս բոլորը իր դրոշմն էր դնում հայկական քաղաքների վրա։ Այդ կարգի երևույթ պետք է համարել, օրինակ, հույն դերասանների մասնակցությամբ թատրոնը Տիգրանակերտում[72], որի ստեղծումը մասամբ կապված էր հելլենիստական քաղաքներից այստեղ տեղափոխված բնակիչների առկայության հետ։ Նման թատրոն ունեցել է հավանաբար և Արտաշատը, ու չի

72 Տե՛ս Plut., Lucul., 29։

բացառված, որ նրանից զուրկ չեն եղել նաև Հայաստանի այլ խոշոր քաղաքներ։ Կասկածից դուրս է այդ բնակչության ազդեցությունը քաղաքային կյանքի վրա նաև վարչական, կրոնական, առևտրական, արտադրական բնագավառներում։

Հայկական քաղաքների նորեկ բնակչությունը, ճիշտ է, շուտով բռնեց հայերի հետ մերվելու ուղին։ Բացառություն կազմեցին հրեաները, որոնց ներքաղաքային համայնքները Հայաստանում պահպանվել էին տակավին մ. թ. IV դարում[73]։ Բայց նորեկների ազդեցության հետևանքները դեռևս երկար ժամանակ զգալի էին։

Հելլենիզմի ուժեղ ազդեցությանն էր ենթարկվել իշխող դասակարգի բարձրագույն շերտը, հատկապես արքունիքը։ Սա բացառություն չէր, այլ օրենք հելլենիստական շրջանի Արևելքի համար, ուր հելլենիստական մշակույթը ստացել էր մի տեսակ կոսմոպոլիտական բնույթ, դյուրությամբ ներթափանցում էր բոլոր երկրները և պատրաստակամորեն որդեգրվում հասարակության վերնախավի կողմից։ Հունական մշակույթի համար ուղի էր հարթում հունարեն լեզուն, առանց որի իր կյանքը չէր պատկերացնում իրեն հարգող ոչ մի թագավոր կամ իշխան։ Հունարենը դարձել էր միջազգային հարաբերությունների և առևտրի լեզու։

Տիգրանի արքունիքում ապրում ու գործում էին հույն փիլիսոփաներ, հռետորներ, պատմագիրներ, որոնցից մեզ հայտնի են աթենացի Ամփիկրատեսը և Մետրոդորոս Սկեփսիացին՝ «Հռոմեատյաց» մականվամբ[74]։ Վերջինս գրել է Տիգրանի և հավանաբար նաև նրա նախորդների պատմությունը[75], որը եթե հասած լիներ մեզ, անգնահատելի օգնություն ցույց կտար ժամանակի պատկերը վերարտադրելու գործում։ Դժբախտաբար նրանից չնչին մի բեկոր է պահպանվել միայն։

Տիգրանի արքունիքից է դուրս եկել նրա որդի և հաջորդ Արտավազդ Բ-ը՝ հելլենական բարձր կրթության տեր անձնավորություն։

Իհարկե, անհամեմատ ավելի նվազ է եղել հելլենիստական մշակույթի ազդեցությունը բուն ժողովրդի վրա։ Այս փաստին չի հակասում նաև այն հանգամանքը, որ հունարենը դարձել էր, հավանորեն՝ արամեերենին զուգահեռ, պետական լեզու. ժողովուրդը քիչ մասնակցություն ուներ պետական գործին, իսկ այն, ինչ անհրաժեշտ էր՝ նրան հասկացնողներ շատ կային, ի դեմս ծավալուն բյուրոկրատական ապարատի ներկայացուցիչների։ Ինչպես հարյուր տարի առաջ Արտաշես Ա-ի օրոք արամեերեն անհասկանալի լեզվով գրված սահմանաքարերը իրենց տեսքով իսկ արգելում էին գյուղացուն անցնելու սեփականատիրական հողի սահմանը, այնպես էլ այժմ հունարենով գրված վավերագրի գոյության փաստն արդեն արգելում էր նրան խախտելու կնքված գործարքի պայմանները[76]։

---

73 Տե՛ս Փավստոս, Դ, ծե։

74 Տե՛ս Plut., Luc., 22։ Strabo, XIII, 1, 55; XVI, 4, 16։ Plin., Nat. hist., XXXIV, 16; Memn., LV:

75 Տե՛ս „Fragmenta historicorum graecorum", III, ed. C. Müller, P., 1849, էջ 204։

76 Հայաստանի տերիտորիայում, ինչպես հայտնի է, հին շրջանին վերաբերող վավերագրեր դեռևս չեն գտնվել (չհաշված հատուկենտ վիմագիր արձանագրությունները)։ Տվյալ դեպքում

*Նույնը վերաբերում է կրոնին։ Հայաստան էին ներթափանցել նաև հելլենական պանթեոնի աստվածները, որոնք խառնվելով տեղական պանթեոնի հետ, տվել էին այնպիսի սինկրետիկ աստվածություններ, ինչպես Զևս-Արամազդը, Հերակլես-Վահագնը, Արև-Ապոլլոն-Տիրը, Լուսին-Արտեմիս-Անահիտը, Աֆրոդիտե-Աստղիկը և այլն։ Բառացիորեն նույնը մ. թ. ա. I դարի 60—50-ական թվականներին հանդիպում ենք Հայաստանի հարևան Կոմմագենե երկրում։ Սա ընդհանուր երևույթ էր հելլենիստական Արևելքի համար*[77]*։ Բայց այս սինկրետիկ աստվածները տիրող դասակարգինն էին։ Ժողովուրդն ապրում էր կրոնական իր հնամենի պատկերացումներով։*

*Մենք լավատեղյակ չենք այս շրջանի հայկական նյութական մշակույթին, բայց անկասկած է, որ, ասենք, ճարտարապետության մեջ հելլենիզմի ազդեցությունը նույնքան շեշտված պիտի հանդես գար, և Տիգրանակերտի թատրոնի շենքը, օրինակ, կերտված պիտի լիներ նույն ոճով, ինչ որ Անտիոքի, Ապամեայի, Տարսոնի կամ հելլենիստական այլ քաղաքների թատրոնների շենքերը։ Այս ենթադրությունը կարելի է հանգել հենվելով հաջորդ դարում կերտված Գառնիի հեթանոսական տաճարի ցայտուն օրինակի վրա։*

*Սրա հետ մեկտեղ Հայաստանում, անտարակույս, զարգանում և հասունանում էր նաև մի այլ մշակույթ, որի ակունքներն ու սոցիալական ընդգրկումը բոլորովին այլ էին։ Այն գալիս էր դարերի խորքից և նրա հիմքի վրա էր, որ նախապատրաստվեց հայկական ազգային մշակույթի, հատկապես մատենագրության ու ճարտարապետության, հետագայում, V դարում, սկսված զարմանալի վերելքը։ Այդ մշակույթի կարևորագույն բաղկացուցիչ մասն էր և ինքը՝ հայոց լեզուն։*

*Սակայն հելլենիստական աշխարհի հետ սերտ շփման արդյունքները չէին սպառվում միայն բարձր դասին վերաբերող մշակութային երևույթների և հունարենի ներթափանցմամբ։ Դրանք դրսևորվեցին բուռն տեղաշարժեր ապրող հայ հասարակության նաև տնտեսական կյանքի ասպարեզում՝ ավելի մեծ թափ հաղորդելով նրա զարգացմանը։ Շեշտակի աճում էր ստրկատիրությունը և ընդլայնվում ստրկական ուժի կիրառման ոլորտը։ Քաղաքների և առևտրի ծավալումը, դրամական տնտեսության զարգացումը զորեղ հարվածներ է՛ հասցնում գյուղական համայնքի ներքին հավասարակշռությանը և ինք՝ փոփվածությանը, ուժեղանում էր նաև նրա շահագործումը պետության խող դասակարգի այլևայլ ներկայացուցիչների կողմից։ Սրվում էր ա՛*

---

*նկատի ունենք պարթևական. Ավրոմանում՝ Հայաստանին սահմանամերձ վայրում բանին ժամանակակից ու նրա անունը հիշատակող մագաղաթյա վավերագրերը, են տալիս, թե Հայաստանում ես գործարքների լեզուն այդ ժամանակ կարող էր (տե՛ս E. Minns*, Parchments of the parthian period from Avroman in journal of hellenic studies", vol XXXV, p. I, 1915, *էջ 28—29)։*

*77 Հայկական աղբյուրները (Մ. Խորենացի, Փավստոս Բուզանդ, Ագաթանգեղոս) բություն են տալիս բացահայտելու հին Հայաստանում տարածում գտած այդ ցցում կերպով այն դրսևորվում է Հայաստանի հարևան Կոմմագենեի հուշարձանագրությունների մեջ (տե՛ս K. Humann und O. Puchstein*, Reisen Nordsyrien, *էջ 230 և հաջ.)։*

նիզմը քաղաքի և գյուղի միջև։ Դասակարգային հասարակության ոլորտն էին ընդգրկվում նորանոր տերիտորիաներ։

Հելլենիստական շրջանին հատուկ համահարթման այս պրոցեսները, որոնց ապարեզ էր դարձել ամբողջ Առաջավոր Ասիան դեռևս երկու դար առաջ, Հայաստանի տնտեսական ու մշակութային վերելքի կարևոր ազդակ հանդիսացան։ Զինված իր բոլոր նվաճումներով, Հայաստանը Տիգրան Բ-ի օրոք թևակոխեց զարգացման մի նոր փուլ, որի բնորոշ գիծն էր, համեմատած նախորդ շրջանի հետ, նրա քաղաքական ազդեցության տարածումը հարևան երկրների վրա, որը հետագա դարերի ընթացքում վերափոխվեց քաղաքակրթական ազդեցության։

**Հայկական ավանդությունը Տիգրան Բ-ի մասին:** Տիգրանի դարը հայ պատմագրության սկզբնավորման ժամանակից բաժանված է հինգ հարյուրամյակներով, սակայն ժողովրդի հիշողությունից այդ կարկառուն գործիչը չի ջնջվել։ Նրա մասին երգվել են երգեր, պահպանվել են ավանդություններ, ու դրանց մի մասը հասել է մեզ Մովսես Խորենացու «Հայոց պատմության» էջերում[78]։ Ահա դրանցից երկու հատված. «...Սա (Տիգրանը) մեր թագավորներից հզորագույնը և խոհեմագույնն էր և նրանցից ու բոլոր մարդկանցից քաջ։ Նա էր, որ[79]... մարաց իշխանությանը վերջ տալով ու հույներին նվաճելով ոչ սակավ ժամանակով իրեն հնազանդեցրեց։ Եվ մեր սահմաններն ընդարձակելով՝ բնակության հին եզերքներին հասցրեց. իր ժամանակակիցներին նախանձելի էր նա, հետագա սերունդներին՝ ցանկալի ինքը և իր ժամանակը»։ «...Կանգնելով արանց գլուխ և քաջություն ցուցաբերելով, մեր ազգը բարձրացրեց, լծի տակ եղածներին՝ շատերի վրա լծադիր և հարկապահանջ դարձրեց. բոլոր տղամարդկանց ու կանանց համար առատացրեց ոսկյա և արծաթյա զարդերը, պես-պես գույների պատվական քարերը և զգեստները, որոնցով տգեղները գեղեցիկ էին երևում, իսկ գեղեցիկները իրենց ժամանակի դյուցազուններն էին դառնում։ Հետևակը ձիերի վրա նստեց, պարսավորները դարձան դիպուկ աղեղնավորներ, գուրզ կրողները զինվեցին սրերով ու նիզակներով, մերկերը ծածկվեցին վահաններով ու զրահներով։ Թշնամուն հալածելու համար բավական էր ի ᴵʰ հավաքված այդ զորքի տեսքը միայն, նրա զենք ու զրահի փայլը և շողշո- ˈ ։ Խաղաղություն ու շենություն բերող, բոլոր հասակի մարդկանց յուղով ᴸ ˈղրով սնող (էր նա)»։

րի ։ս նկարագրության մեջ, նրա գոմեզությամբ ու չափազանցություննե- մանւ դերձ, մենք ճանաչում ենք Տիգրանին ու նրա գործունեությունը, մականա

րագրի ˉ. ծարբի պ ˈցի, Ա, իդ-ւ (Թարգմանությունը Սա. Մալխասյանի)։ Այս ավանդության տվյալ- ոը սխալմամբ վերագրել է մի այլ Տիգրանի, որը ապրած պիտի լինի մ. թ. ա.

---

73 Տե՛ս Տիգրան Բ-ի մասին պատմել է գրեթե միայն այն կցկտուր տեղեկությունները, անտիկ պատմագրության ներկայացուցիչներից մեկից՝ Հովսեպոս Փլավիոսից,

74 Տե՛ս ։ Թյուր պատկերացում է ստացվում Տիգրանի գործունեության մասին (տե՛ս Memn., LV: ժողովրդական առասպելները Մ. Խորենացու «Հայոց պատմության» մեջ, էջ-

75 Տես ․\ 447 և հաջ.)։

76 Հայասնը (Հայ ժող. առասպելները, էջ 463) ցույց է տալիս, որ տեքստի այս տեղում դեռևս չեն գտ.Կյուրոսի հիշատակությունը նախորդ ծանոթության մեջ նշված շփոթման ա-

նավանդ այնպիսի մանրամասներում, որպիսիք են մարերին (այսինքն՝ մեդացիներին ու պարթևներին) և հույներին (այսինքն՝ Սելևկյան պետությունը) նվաճելու, երկրի սահմանների ընդարձակման, ձեռք բերված հարստությունների, զորքի հզորության մասին պատմածները։

Պահպանվել են նաև տեղեկություններ Տիգրանակերտի հիմնադրման մասին[80]։ Այն պատմական փաստը, որ Տիգրանի երկու դուստրերը ամուսնացած են եղել մեկը մարերի, մյուսը՝ պարթևների թագավորների հետ, իր արտացոլումն է գտել Տիգրանի քրոջ՝ Տիգրանուհու պատմության մեջ, ըստ որի նրա ամուսինը, մարաց թագավորը, փորձել է նրա միջոցով դավեր նյութել Տիգրանի դեմ, բայց Տիգրանուհուն հաջողվել է կանխել վտանգը։ Այս բոլորը հիմք է տալիս ենթադրելու, որ Խորենացու ձեռքի տակ, ժողովրդական երգերից բացի, եղել է նաև գրավոր աղբյուր։

Պահպանվել են նաև տեղեկություններ Տիգրանի կատարած գերեվարությունների և վերաբնակեցումների մասին։ Փավստոս Բուզանդը պատմում է բազմահազար հրեական բնակչության մասին, որը «բնակեցրեց հայոց քաղաքներում մեծ արքա Տիգրանը իր դարում և իր ժամանակ»[81]։ Նույնը հաստատում է և Խորենացին։

Պահպանված այս փշուրները, իհարկե, Տիգրանի մասին մի ժամանակ երգվածի ու պատմածի մի չնչին մասն են կազմում։

---

80 Տե՛ս Խորենացի, Ա, իը և հաշ.։

81 Տե՛ս Փավստոս, Դ, ծե։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

## 1. ՀՌՈՄԻ ԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄԸ ԴԵՊԻ ԱՐԵՎԵԼՔ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Հռոմի առաջխաղացումը դեպի Արևելք:** *Մինչդեռ Հայաստանում զբաղված էին նորաստեղծ տերության կազմակերպմամբ, քաղաքների հիմնադրմամբ ու շինարարությամբ, արևմուտքում տեղի էին ունենում մեծ հետևանքներով լեցուն իրադարձություններ և հռոմեական վտանգը քայլ առ քայլ մոտենում էր Հայաստանի սահմաններին։*

*Շուրջ մեկ դար էր անցել այն ժամանակից, երբ Արտաշես Ա-ի օրոք տեղի ունեցավ Հայաստանի առաջին, նրա համար բարենպաստ, շփումը հռոմեական հանրապետության հետ։ Այն ժամանակ Հռոմը դրական վերաբերմունք դրսևորեց իր ախոյան Սելևկյանների թշնամի Հայաստանի նկատմամբ և ողջունեց նրա անկախացումը[1]։ Հռոմը դեռ իր առաջին քայլերն էր անում Ասիայում։*

*Անցած հարյուրամյակի ընթացքում Հռոմը տիրույթների իր ուրույն համակենտրոն, տարեցտարի ավելի ու ավելի երկար շառավղով շրջագծվող ծավալման ճանապարհին հսկայական հաջողությունների էր հասել։ Սելևկյանների դեմ մղած և 190 թվականի Մագնեսիայի ճակատամարտով ավարտված հաղթական պայքարին հաջորդել էր Երրորդ մակեդոնյան պատերազմը (171—167), որի հետևանքով Մակեդոնիան ջլատվեց, բաժանվեց չորս շրջանների և դարձավ Հռոմի գերիշխանության տակ գտնվող վասալական պետություն։ Գնալով ավելի էր խորանում խզումը Հռոմի արտաքին քաղաքականության գաղափարախոսական ձևավորման և նրա գործնական ընթացքի ու նպատակների միջև[2]։ Պարզ էր դառնում, որ Հռոմի հայտարարած վսեմ սկզբունքները այլ բան չեն, քան նրա նվաճողական ձգտումների, նրա ընչաքաղց նպատակների քողարկում։ Դա հատկապես հստակորեն դրսևորվեց հաջորդ շրջանում տեղի ունեցած Երրորդ փունիկյան պատերազմի (149—146) և նույն ժամանակ կատարած՝ Հունաստանի նվաճման պարագաներում։*

*Երկու տարի շարունակ Կարթագենը ետ էր մղում հռոմեական բանակի հարձակումները, բայց ի վերջո, չկարողացավ դիմանալ նրա գերակշռող ուժին։ Քաղաքը նվաճվեց երկարատև պաշարմանը հաջորդած գրոհով։ Հատկանշական*

---

1 *Տե՛ս վերը, էջ 525։*

2 *Տե՛ս Н. А. Машкин,* История древнего Рима, М., 1947, *էջ 115։*

է Հռոմի ծերակույտի որոշումը Կարթագենի նկատմամբ. հինավուրց ու հարստագույն այդ քաղաքը հրի մատնվեց ու գետնին հավասարվեց. Նրա տեղը անիծվեց և հայտարարվեց հետագայում բնակության աննենթակա վայր։ Բնակչությունը ստրկացվեց։ Այդ 146 թվականին էր։ Նույն 146-ին Հռոմը մի նոր եղեռն կատարեց. ծերակույտի հրամանով ոչնչացվեց Հունաստանի հռչակավոր ու ամենափայլուն կենտրոններից մեկը՝ հոյակապ Կորնթոսը, և նրա բնակչությունը վիճակվեց կարթագենացիների բախտը։ Այս գործողությամբ էր, որ «պսակվեց» Հունաստանի վերջնական նվաճումը Հռոմի կողմից։

Հաջորդ քայլը դեպի արևելք՝ Հռոմի վաղեմի դաշնակից և օգնական Պերգամոնի միացումն էր Հռոմեական հանրապետությանը, որ տեղի ունեցավ 133—129 թվականներին, այստեղ բռնկված Արիստոնիկոսի ապստամբությունը ճնշվելուց հետո։ Պերգամոնը, Հռոմի առաջին տիրույթը ասիական հողի վրա, վերանվանվեց «պրովինցիա Ասիա»։ 123—122 թվականներին գործած Գայոս Գրակքոսի օրենքներից մեկով Ասիա պրովինցիայում մտցվեց տասանորդ հարկ, որի գանձման իրավունքը վաճառվում էր հռոմեական կապալառուներին և այն էլ աճուրդով։ Հասկանալի է, թե ինչպիսի եռանդով պետք է դուրս կորզվեր նահանգի բնակիչներից ծախսված գումարի բազմապատիկը։ Ինչպես Հռոմի մնացած տիրույթները, Փոքր Ասիան էլ անմիջապես ողողվեց հռոմեական առևտրականներով ու այլևայլ ձեռնարկուներով, որոնց մուտքը հայտնանշվում էր կեղեքման ու ստրակցման սաստկացմամբ։

Հռոմի ռազմական, քաղաքական ու տնտեսական ճնշումը Փոքր Ասիայում շարունակում էր արագորեն աճել հաջորդ տասնամյակների ընթացքում և անշուշտ հենց սա էր Պոնտոսի արքա Միհրդատ Զ Եվպատորի հակահռոմեական քաղաքականության հաջողության կարևորագույն նախադրյալը։

**Միհրդատյան պատերազմները**: Մինչև 71 թվականը, երբ Տիգրան Բ-ը առաջին անգամ դիվանագիտական շփում ունեցավ հռոմեացիների հետ, Հայաստանի հարևան Պոնտոսը արդեն երեք պատերազմ էր մղել Հռոմի դեմ[3]։ Առաջին պատերազմը տեղի ունեցավ 88—84 թվականներին, այսինքն՝ հենց այն տարիներին, երբ հիմնականում կատարվեցին Տիգրանի նվաճումները։ Պատերազմի առիթ ծառայեց տեղական մի կոնֆլիկտ Պոնտոսի և նրա հարևան Բյութանիայի միջև՝ վերջինիս մեղքով։ Հռոմը օժանդակեց իր դաշնակից ու բարեկամ Բյութանիային, և կոնֆլիկտը վերաճեց հռոմեա-պոնտական մեծ պատերազմի, որի առաջին շրջանում Պոնտոսի թագավոր Միհրդատ Զ Եվպատորը բացառիկ հաջողություններ ունեցավ։ Պոնտոսը հենվում էր Փոքր Ասիայի այն ժողովուրդների վրա, որոնք արդեն կրել էին հռոմեական լուծը և ատելությամբ լցված հռոմեացիների հանդեպ, միայն հարմար առիթի էին սպասում նրանցից ազատագրվելու համար։ Նրանք ոչ միայն օժանդակեցին Միհրդատին, այլև նրա տված ազդանշանով կազմակերպեցին Փոքր Ասիայի հռոմեական բնակչության մեծ ջարդ, որտեղ զոհվեց 80 հազար մարդ։ Մի քանի ճակատամարտեր շահելով, Միհրդատը տիրացավ գրեթե ողջ Փոքր Ասիային և տեղափոխեց պատերազմի թատերաբեմը Բալկանյան թերակղզի։ Այստեղ

3 Պատերազմները մանրամասն նկարագրում են Ապպիանոսը՝ «Միհրդատյան պատերազմներ» գործում և Պլուտարքոսը՝ Սուլլայի, Լուկուլլոսի և Պոմպեոսի կենսագրություններում։

ևս մի շարք հունական քաղաքներ, մասնավորապես Աթենքը, միացան նրան։ Սակայն Հունաստանում ուժեղ էր նաև հռոմեական կուսակցությունը, և երբ 87 թվականին իր բանակով Հունաստան ժամանեց Սուլլան, որին հանձնարարված էր վարել Միհրդատի դեմ մղվող պատերազմը, նա հաստատուն հենարան գտավ ի դեմս հունական օլիգարխիայի։ Սուլլային հաջողվեց երկու ճակատամարտերում (Քերոնեայի և Օրքոմենի մոտ) ջարդել Պոնտոսի զորքերն ու, թեև մեծ ջանքերով, առնել Աթենքը, որն ավերվեց և ավարի մատնըվեց[4]։ Պատերազմը ավարտվեց 84 թվականին Դարդանոսի բանավոր պայմանագրով, որով Միհրդատը հրաժարվեց իր արտաքին նվաճումներից և պարտավորվեց մեծ ռազմատուգանք վճարել։

Պոնտոսի երկրորդ պատերազմը Հռոմի դեմ (83—81) տեղական բնույթ էր կրում և էական հետևանքներ չունեցավ։

Ապացուցված է, որ Հայաստանը այդ երկու պատերազմներին մասնակցություն չի ունեցել, ինչպես նաև չի մասնակցել Միհրդատի՝ Հռոմի դեմ վարած երրորդ պատերազմի սկզբնավորմանը (մ. թ. ա. 73)[5]։ Միայն այս պատերազմի նախօրեին՝ 74 թվականին հայերը երրորդ անգամ ասպատակել են Կապադովկիան և այնտեղից գերեվարել, ըստ Ապպիանոսի տվյալների, 30 բյուր (300 հազար) մարդ[6]։

Միհրդատյան երրորդ պատերազմի պատճառը Բյութանիայի միացումն էր Հռոմին, որը Հռոմի տրամադրության տակ դնելով Սևծովյան նեղուցները, մահացու վտանգ էր ներկայացնում Պոնտոսի տնտեսության համար։ Միհրդատը մեծ պատրաստություններ էր տեսել ինչպես զորք հավաքագրելու և մարզելու, այնպես էլ հռոմեացիների թիկունքը թուլացնելու ուղղությամբ։ Նա դաշնակցել էր Իսպանիայում Հռոմի դեմ ապստամբած Սերտորիոսի հետ ու բավական մեծ գումարներ հատկացրել նրան։ Իր կողմից վերջինս Միհրդատին տրամադրել էր մի խումբ ռազմական հրահանգիչներ, որոնք պոնտական զորքերին վարժեցնում էին հռոմեական արվեստի ոգով[7]։ Սկզբում բախտը ժպտում էր Պոնտոսին ու նա նորից տիրացավ գրեթե ամբողջ Փոքր Ասիային, բայց հետո սկսվեցին անհաջողությունները։ Այդ պատերազմում Միհրդատի ախոյանն էր Լուկիոս Լուկուլլոսը՝ Հռոմի լավագույն զորավարներից մեկը։ Նրան հաջողվեց հետզհետե Միհրդատին ստիպել քաշվելու Պոնտոս, ուր Կաբիրա քաղաքի մոտ, նա ծանր պարտություն հասցրեց Միհրդատին (71)։ Միհրդատը փախավ Հայաստան[8]. հռոմեացիները պահանջեցին նրան հանձնել իրենց։

Ահա այստեղից սկսվեց այն բախումը Հռոմի հետ, որը վերաճեց Հայաստանի համար ծանր հետևանքներ ունեցող հայ-հռոմեական պատերազմի։ Սա, իհարկե, սոսկ մի առիթ էր, որով բացահայտվեցին նախորդ տարիների ընթացքում կուտակված հայ-հռոմեական հակասությունները։

Հայաստանը և Հռոմը: Տիգրանը, անշուշտ, գերազանց զորավար էր և լավ քաղաքագետ։ Այդ մասին են վկայում նախորդ գլխում հիշատակված բազմա-

4 Տե՛ս H. Bengtson, Griechische Geschichte, München, 1960, էջ 197։

5 Տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 48։

6 Տե՛ս App., Mithr., 67։

7 Տե՛ս A. Heuss, Römische Geschichte, Braunschweig, 1960, էջ 240 և հաջ.։

8 Տե՛ս App., Mithr., 82։

թիվ փաստերը։ Բայց իր գործունեության սկզբնական շրջանում, զբաղված ու տարված լինելով տերության կարգավորման գործերով, նա թերագնահատել է Հռոմի վտանգը։ Հայաստանը, թեև Պոնտոսի դաշնակից, մասնակցություն ցույց չի տվել հռոմեա-պոնտական պատերազմներին, հուսալով, ըստ երևույթին, թե այդպիսով կխուսափի Հռոմի շահերին դիպչելուց, հետևաբար և նրա հետ բախվելուց։ Աչքաթող է արվել մի հանգամանք, որ այն գործողությունները, որոնք ուղղված էին աշխարհակալ տերության կազմավորմանը և թվում էին ներքին, գոնե Հռոմի հետ ամենևին չառնչվող ձեռնարկումներ, դրանք էին հենց, որ առաջին հերթին դիպչում էին Հռոմի շահերին։ Դիպչում էին անհամեմատ ավելի, քան եթե գոյություն ունենար աննշան Հայաստան ու ակտիվորեն պայքարեր Հռոմի դեմ։

Վաղ թե ուշ Հռոմը պետք է բախվեր նորաստեղծ տերության հետ։ Այս անխուսափելիությունը Տիգրանը անհրաժեշտ չափով հաշվի չէր առել։ Եվ երբ իրադարձությունների ճնշման ներքո նա սկսեց հաշվի առնել այդ, հարմար պահը կորսված էր։ Ըստ Պլուտարքոսի, պատերազմի հենց նախօրյակին Տիգրանը և իր մոտ ապաստանած Միհրդատը մտադրվել էին ներխուժել Փոքր Ասիայի հռոմեական մարզերը։ Լուկուլլոսը, ասում է Պլուտարքոսը, իմանալով այդ մասին, «շատ զարմացավ. եթե հայոց թագավորը մտադիր էր հարձակվել հռոմեացիների վրա, ապա ինչո՞ւ չդաշնակցեց Միհրդատի հետ, երբ պոնտացին իր հզորության գագաթնակետին էր, ինչո՞ւ չմիացրեց իր զորքերը նրա ուժին, երբ դեռ վերջինը իր ծաղկման մեջ էր, ինչո՞ւ թույլ տվեց, որ նա ընկնի ու թուլանա, և նոր միայն պատերազմ սկսի հաջողության աննշան հույսերով...»[9]։ Անկախ այն տեղեկության հավաստիությունից, թե Տիգրանը մտադրվել էր նախահարձակ լինել (որը շատ կասկածելի է և հակասում է մեզ հայտնի տվյալներին), տեղին է Լուկուլլոսի զարմանքը։ Քաջատեղյակ լինելով Հռոմի քաղաքականությանը և ախորժակներին, Տիգրանը պետք է, որ նախատեսեր բախման անխուսափելիությունը և ընտրեր դրա համար ավելի բարենպաստ իրադրություն[10]։

**Ապպիոս Կլավդիոսի պատվիրակությունը:** 71 թվականի վերջերին Լուկուլլոսը Տիգրանի մոտ որպես պատվիրակ ուղարկեց իր մերձավորներից Ապպիոս Կլավդիոսին։ Պատվիրակության պաշտոնական նպատակն էր համոզել Տիգրանին՝ հռոմեացիներին հանձնելու իր մոտ պատսպարված Միհրդատ Եվպատորին, Հռոմում կայանալիք հաղթահանդեսում նրան ցուցադրելու նպատակով[11]։

Ապպիոս Կլավդիոսը ժամանեց Անտիոք, Տիգրանի հարավային մայրաքաղաքը, բայց այնտեղ չգտավ արքային, որը զբաղված էր Փյունիկիայի քաղաքների նվաճմամբ։ Հետաքրքրական է նշել, թե որքան ապահով է զգացել իրեն հայոց թագավորը, որ այն պահին, երբ իր դաշնակից Միհրդատը պարտված էր և պատերազմը բառացիորեն բախում էր հայկական պետության դուռը, նա գտնվել է ծայրագույն հարավում, ակներևաբար մտահոգված ոչ թե

9 *Plut.*, Lucul., *21*։

10 *Հմմտ.* **Հ. Մանանդյան**, *Տիգրան Երկրորդը և Հռոմը*, էջ 98 և հաջ.։

11 *Տե՛ս Plut.*, Lucul., *21*; *Memn.*, XLVI։

հռոմեացիներով, այլ նրանով, որ նվաճեր Սելևկյանների պետության վերջին հենակետերը (այդ թվում Պտղոմայիս քաղաքը, որտեղ փակվել էր Սելենե թագուհին)[12]։

Երբ Լուկուլլոսի պատվիրակի և Տիգրանի հանդիպումը վերջապես տեղի ունեցավ, Տիգրանը կտրականապես մերժեց հանձնել Միհրդատին, «ասելով, որ բոլոր մարդիկ իրեն կպախարակեն, եթե նա Լուկուլլոսի ձեռքը հանձնի իր աներոջը»[13]։ Հակառակ Պլուտարքոսի հաղորդման, թե Ապպիոս Կլավդիոսը, ի պատասխան մերժման, պատերազմ հայտարարեց Տիգրանին, այլ տվյալների հիման վրա, հետևելով Մանանդյանին, կարելի է եզրակացնել, որ հռոմեացիները կույ տվին մերժումը, քանի որ Պոնտոսի նվաճումը դեռ ավարտված չէր և Փոքր Ասիայում վիճակը խառն էր։ Որ Կլավդիոսը հրաժեշտ է տվել Տիգրանին առանց պատերազմ հայտարարելու, երևում է նաև այն հանգամանքից, որ Տիգրանը դրանից հետո էլ, մինչև 69 թվականի գարունը, ինչպես կտեսնենք, շարունակեց զբաղվել իր տերության ծայրագույն հարավային սահմանների ընդլայնման ու կարգավորման գործերով։

Սակայն, եթե ձախողվեց հռոմեական պատվիրակության պաշտոնական նպատակը, ապա նշանակալից հաջողությամբ պսակվեց նրա անպաշտոն, գաղտնի, բայց թերևս հենց բուն նպատակը, որի մասին, սակայն, Պլուտարքոսը բացեիբաց է հայտնում։ «Այդ միջոցին,— պատմում է նա, նկատի ունենալով այն պահը, երբ պատվիրակը սպասում էր Տիգրանի հետ հանդիպման,— Ապպիոսն իր կողմը գրավեց իշխանավորներից շատերին, որոնք ներքուստ մեծ դժվարությամբ էին հնազանդվել Տիգրան Արմենին։ Սրանցից մեկն էր և Զարբիենոսը՝ Կորդվաց թագավորը։ Նաև Տիգրանի նվաճած քաղաքներից շատերին, որոնք նրա մոտ ծածուկ սուրհանդակներ էին ուղարկել, Ապպիոսը խոստացավ, որ Լուկուլլոսը կօգնի նրանց, բայց պատվիրեց, որ առայժմ դեռ հանգիստ մնան»[14]։

Ահա, Լուկուլլոսի պատվիրակը եռանդուն կերպով պառակտում էր սերմանում Տիգրանի ճամբարում, անշուշտ, օգտագործելով հռոմեական դիվանագիտության փորձված միջոցները՝ կաշառքն ու խոստումները, հող նախապատրաստելով ապագա բախման պահին Տիգրանի թիկունքը խախուտ դարձնելու համար։ Կասկածից վեր է նաև, որ Կլավդիոսը բազմաթիվ լրտեսական տեղեկություններ տարավ իր հետ, որ հավաքել էր ինչպես Անտիոքում, այնպես էլ նախքան այնտեղ հասնելը Հայաստանի մի շարք շրջաններում դեգերելիս[15]։

## ② ՀԱՅ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿԻԶԲԸ

Հռոմեական բանակի ներխուժումը Հայաստան։ 69 թվականի գարնանը Տիգրանը, ինչպես ասվեց, տակավին գտնվում էր իր տերության սահմանամերձ հարավային վայրերում, ուր նա պաշարել էր Պտղոմայիս քաղաքը՝ Սե-

12 Հմմտ. Հրանդ Արմեն, Մեծն Տիգրան. Գահիրե, 1957, էջ 159։
13 Memn., XLVI։
14 Plut., Lucul., 21։
15 Տե՛ս նույն տեղում։ Նաև Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 87։

լևկյան Սելենե թագուհու նստավայրը, որը Սելևկյան գահին հավակնություններ էր ներկայացնում իր որդիների անունից։

Պտղոմայիսը դեռ դիմադրում էր, երբ Տիգրանի ճամբար ժամանեց հրեական Ալեքսանդրա թագուհու դեսպանությունը՝ հարուստ ընծաներով, նպատակ ունենալով կասեցնել Տիգրանի հետագա առաջխաղացումը դեպի Պաղեստին։ Ծրագրվե՞լ էր արդյոք այդպիսի մի արշավանք, թե՞ այն Սելևկյաններից բազմաթիվ հարվածներ կրած հրեաների մտավախության ծնունդ էր սոսկ՝ դժվար է ասել։ Հաշվի առնելով, որ Տիգրանը Սելևկյանների պետության հետ միասին ժառանգել էր նաև նրանց քաղաքականության բազմաթիվ գծեր, նման մի արշավանքի ծրագրի առկայությունը անհավանական չէ։ Այսուհանդերձ, թագավորը բարյացկամ վերաբերմունք ցուցաբերեց դեսպանության նկատմամբ և պատվիրակներին հանգստացրեց խաղաղ ապագայի հեռանկարով[16]։

Այնուհետև ընկավ Պտղոմայիսը, և Սելենե թագուհին գերի վերցվեց։ Վերջինս հետագայում մահապատժի ենթարկվեց[17]։ Տիգրանը դեռ տոնում էր իր հաղթանակը, երբ սուրհանդակը լուր բերեց, որ Լուկուլլոսը ներխուժել է Հայաստանի սահմանները և եռանդագին առաջ է շարժվում։

Իսկապես, հռոմեական զորավարը, որը Ապպիոս Կլավդիոսի պատվիրակությունից հետո մեկ տարուց ավելի ժամանակը ծախսել էր նախ՝ Պոնտոսի նվաճումն ավարտելու և ապա Փոքր Ասիայի տնտեսական կացության կարգավորման վրա, այժմ որոշել էր նվաճել մի թագավորություն ևս[18]։ Կտրելով-անցնելով բարեկամական Կապպադովկիան, Լուկուլլոսը Տոմիսայի գետանցով մտել էր Ծոփքի հողերը և այժմ շարժվում էր դեպի Տիգրանակերտ։ Աղբյուրներում կան մի շարք տվյալներ, որոնք վկայում են, որ Ծոփքի իշխանավորների միջև ևս Ապպիոս Կլավդիոսը ժամանակին կարողացել էր Տիգրանի դեմ թշնամություն սերմանել, նրանց հիշեցնելով թերևս Ծոփքի ոչ հեռու անցյալում վայելած անկախությունը և Լուկուլլոսի անունից խոստանալով վերականգնել այդ վիճակը։ Համենայն դեպս Ծոփքի վրայով ևս Լուկուլլոսը ընթանում էր անխոչընդոտ, ստանալով անհրաժեշտ կենսամթերք[19]։

Վերահասու լինելով իրադրությանը, Տիգրանը թողեց ամեն ինչ և իր վեց հազարանոց դրանիկ գնդի ուղեկցությամբ շտապեց Հայաստան։ Սակայն նա իրենից առաջ ուղարկեց մի այլ ջոկատ՝ երկու կամ երեք հազարանոց հեծելագունդ, որը սրընթաց պիտի հասներ Ծոփք և խոչընդոտեր Լուկուլլոսի առաջխաղացումը[20]։ «Երբ Տիգրանն այնուհետև,—կարդում ենք Ապպիանոսի մոտ,—հաստատ իմացավ (Լուկուլլոսի ներխուժման մասին), նա ուղարկեց Մեհրուժանին երկու հազար հեծելազորով, որպեսզի ուշացնի Լուկուլլոսի գրոհը»[21]։ Այստեղ հիշատակված Մեհրուժանը (Միթրոբուզան), հավանաբար, Ծոփքի

---

16 Տե՛ս Jos. Flav., AJ, XIII, 16, 4; BJ, I, 3, 5։

17 Տե՛ս Strabo, XVI, 2, 3։

18 Տե՛ս App., Mithr., 83 և հաջ.։

19 Տե՛ս App., Mithr., 84; Plut., Lucul., 24։

20 Տե՛ս Ս. Կրկյաշարյան, Տիգրան II-ին վերաբերող մի կարևոր ուղղում, ՊԲՀ, 1967, № 4, էջ 278։

21 App., Mithr., 84. նաև՝ Plut., Lucul., 25։

*սատրապն էր, որը նշանակվել էր Տիգրանի կողմից այդ երկրամասը նվաճվելուց ու նրա թագավոր Արտանեսի սպանվելուց հետո։ Իր ծագմամբ Մեհրուժանը թերևս պատկանել է Ծոփքի թագավորական տանը՝ Զարեհյաններին։ Ինչևիցե, Մեհրուժանը կատարեց իր պարտքը, քաջաբար կովի բռնվելով Լուկուլլոսի զորքերի հետ և իր մահը գտավ այդ կռվում*[22]*։*

*Բացի դրանից, Տիգրանը դիմել էր նաև մի ուրիշ քայլի. նա հրամայել էր Ասորիքի հայկական կուսակալ Բագարատին (Մագադատես) հավաքելով զորքերը, իր հետքերով շարժվել դեպի Հայաստան*[23]*։*

**Տիգրանակերտի պաշարումը։** *Երբ Տիգրանը իր դրանիկ գնդի հետ միասին, կտրելով հազարից ավելի կիլոմետր տարածություն, հասավ Հայաստան, նա արդեն Տիգրանակերտը պաշարված գտավ հռոմեական զորքերի կողմից*[24]*։ Առայժմ, քանի դեռ չէր հավաքել իր ուժերը, նա ի վիճակի չէր ճակատամարտ տալու նրանց։ Սակայն, մյուս կողմից, Տիգրանակերտում էին գտնվում նրա կանանոցը և գանձերի մի մասը, որ նա չէր ցանկանում վտանգի ենթարկել։ Եվ ահա, անակնկալ հարձակում է ձեռնարկում եղած ուժերով։ Վեց հազարանոց հայկական զորամասը ճեղքում-անցնում է քաղաքը պաշարող հռոմեական զորքերի օղակը և ներս թափանցում։ Վերցնելով ինչ հարկն է, զորամասը նույն կարգով դուրս է գալիս քաղաքից*[25]*։ Տիգրանակերտում որպես պաշարյալների ղեկավար, թողնվում է Տիգրանի մերձավորներից Մանկայոսը։*

*Տիգրանի հաջորդ քայլը եղավ տեսակցել և խորհրդակցել իր աներ Միհրդատ Եվպատորի հետ, որն արդեն մեկուկես տարի ապրում էր իրեն հատկացված հայկական մի ամրոցում, բայց հայոց արքայի հետ դեռևս չէր տեսնվել։ Երկու թագավորների կարծիքները ծագած պատերազմում կիրառվելիք ռազմական տակտիկայի վերաբերյալ՝ բաժանվեցին։ Միհրդատի խորհուրդն էր, համաձայն Ապպիանոսի հաղորդման, որ Տիգրանը «հռոմեացիների հետ կռվի չբռնվի, այլ միայն հեծելազորով ապատակի ու ավերի երկիրը և աշխատի, եթե կարելի է, նրանց սովի մատնել»*[26]*։ Տիգրանը համաձայն չէր այս տակտիկային, ըստ երևույթին, նկատի ունենալով ավելի արագ լուծել պատերազմի բախտը և երկիրը չենթարկել տևական փորձությունների։ Նա որոշեց ճակատամարտ տալ Լուկուլլոսին։*

*Մինչ այդ, Տիգրանակերտը համառորեն դիմադրում էր հռոմեական բանակին։ Սրանք գրավել էին պարիսպներից դուրս գտնվող թագավորական պալատը և, հայկական զորամասի իրականացրած ճեղքումից ազդված, ու նման դեպքերը կանխելու նպատակով, բուն քաղաքը շրջապատել էին պատնեշով ու խրամով, որով պաշարվածներին զրկել էին դրսի հետ հաղորդվելու հնարավորություններից։ Ավելին անել, սակայն, հռոմեացիները ի վիճակի չէին։ Քաղաքն առնելու նրանց բոլոր փորձերը ապարդյուն էին մնում։ Քաղաքի հզոր*

---

22 *Տե՛ս նույն տեղում։*

23 *Տե՛ս App.,* Syr., *48։*

24 *Տե՛ս* Ս. Կրկյաշարյան, *Տիգրան II-ին վերաբերող մի կարևոր ճշտում, էջ 278։*

25 *Տե՛ս App.,* Mithr., *85; Memn., 56։*

26 *Նույն տեղում։*

պարիսպները դիմանում էին փորվող ականներին, իսկ պաշտպանները՝ թըշնամու գրոհներին։ Նրանք նետերի տարափ էին տեղում պարիսպներին մերձեցողների վրա, իսկ փայտյա պաշարողական մեքենաները հրի ճարակ դարձնում, նրանց վրա պարիսպներից այրվող նավթ թափելով[27]։ Այսպես շարունակվեց շուրջ կես տարի՝ 69 թվականի գարնանից մինչև աշուն։ Անշուշտ Տիգրանակերտի պաշտպանները ապրում ու փործում էին այն հույսով, որ ուր որ է կերևա Տիգրանը և կճեղքի քաղաքը շրջափակած հռոմեական զորքերի օղակը։

**Հայկական և հռոմեական բանակները։** 69 թվականի աշնանը Տիգրանն խկապես անցավ Տավրոսի լեռնաշղթան և իր զորքով հայտնվեց Տիգրանակերտի մոտերքում՝ հռոմեայիններին ճակատամարտ տալու մտադրությամբ։ Հոկտեմբերի սկզբին հայկական զորքերը ընդհուպ մոտեցան Տիգրանակերտին և տեսանելի դարձան քաղաքի պարիսպներից դիտող պաշտպանների համար։

Տիգրանի ժողոված զորքի քանակության մասին անտիկ պատմիչների հաղորդած տվյալները խիստ հակասական են։ Եթե Պլուտարքոսը խոսում է շուրջ 270 հազար մարտիկների, իսկ Ապպիանոսը նույնիսկ 300 հազարի մասին, հռոմեական Եվտրոպիոս պատմիչը հիշատակում է 107. 500 զորք, իսկ փոքրասիական պատմիչներ Մեմնոնն ու Փլեգոնը՝ էլ ավելի պակաս, առաջինը՝ 80 հազար, երկրորդը՝ 70 հազար[28]։ Իրավացի են, անշուշտ, այն գիտնականները, որոնք նախապատվությունը տալիս են այս երրորդ խմբին, ելնելով այն հանգամանքից, որ Պլուտարքոսն ու Ապպիանոսը անվերապահորեն հավատ են ընծայել Լուկուլլոսի՝ Հռոմ հղած զեկույցներում բերված թվերին՝ իսկ սրանց հեղինակը, ինչպես հայտնի է և բազմիցս նշված է գրականության մեջ, ամենևին չէր ձգտում տարբերվել մյուս հռոմեական զորավարներից, որոնք իրենց հաղթանակներն ու նվաճումները ահավոր չափազանցությամբ էին ներկայացնում ծերակույտին[29]։ Թվում է, թե Պլուտարքոսի և Ապպիանոսի հաղորդած տվյալները բնութագրում են ոչ թե Տիգրանակերտի ճակատամարտին մասնակցած հայկական զորքի քանակությունը, այլ Տիգրանի բանակի թիվն ընդհանրապես, այն բանակի, որ նա ի վիճակի էր հավաքելու իր լայնածավալ տերության մեջ։ Այս կապակցությամբ հետաքրքրական է, որ այդ թվերը համընկնում են այն թվին, որ հաղորդում է Հովսեպոսը Տիգրանի բանակը Ասորիք մտնելու առիթով[30]։ Մեմնոնն ու Փլեգոնը, ընդհակառակն, տալիս են հայկական զորքերի այն քանակությունը, որ անմիջականորեն մասնակցել է Տիգրանակերտի ճակատամարտին՝ 70—80 հազար։

Միևնույն հռոմեական հեղինակները, դառնալով Լուկուլլոսի բանակի ուժերին, ընդհակառակն, խիստ փոքրացնում են դրանց քանակը, նորից հավատալով վերոհիշյալ զեկույցներից եկող թվերին, որոնց մեջ Լուկուլլոսն, իհարկե, ջանք չպիտի խնայեր նսեմացնելու իր ունեցած զորքի և նյութական ռեսուրսների քանակությունը մի պատերազմում, որը, ինչպես հայտնի է, վա-

---

27 Տե՛ս Dio, XXXVI, 1, 6։

28 Տե՛ս Memn., XLVII; Phleg., Frag. 12։

29 Տվյալների մանրամասն վերլուծությունը տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 116—119։ Տե՛ս նաև CAH, IX, էջ 366 (Ormerod)։

30 Տե՛ս Jos. Flav., AJ, XIII, 16, 4։

*րում էր առանց ծերակույտի համաձայնությունը ստացած լինելու։ Պլուտարքոսը հիշատակում է 14 հազար մարտիկ՝ Տիգրանակերտի ճակատամարտում, իսկ Ապպիանոսը էլ ավելի հեռուն է գնում՝ նշելով զորքի նույն այդ քանակությունը ընդհանրապես Հայաստան արշաված հռոմեական զորքի համար։ Հետազոտողները նշել են Պլուտարքոսի տվյալների ներքին հակասությունները*[31], *իսկ Հ. Մանանդյանը հավանական կարծիք է հայտնել, որ վերոհիշյալ թվերը վերաբերում են միմիայն հռոմեացիներից կազմված մասին, առանց դաշնակիցների տրամադրած զորքերի, որոնց հետ միասին Լուկուլլոսի բանակը իր քանակությամբ արդեն համեմատելի էր դառնում Տիգրանի բանակին և թերևս միայն կիսով չափ էր պակաս նրանից և ոչ քսան անգամ, ինչպես ջանում են ցույց տալ հռոմեական կողմի ջատագով պատմիչները և սրանց անվերապահ հավատ ընծայած որոշ պատմաբաններ։*

**Տիգրանակերտի ճակատամարտը:** *Վերջապես 69 թվականի հոկտեմբերի 6-ին տեղի ունեցավ Տիգրանակերտի ճակատամարտը։ Նրա ելքի մասին եղած տեղեկությունները միահամուռ են. հայերը պարտություն կրեցին. բայց ճակատամարտի ընթացքը խիստ տարբեր է ներկայացված Պլուտարքոսի և Ապպիանոսի մոտ։ Ուսումնասիրողները ավելի նշանակություն են տվել Պլուտարքոսի նկարագրությանը, սակայն Հ. Մանանդյանի հետազոտությունը թույլ է տալիս պնդել, որ Ապպիանոսի նկարագրությունը շատ ավելի հարազատ է իրականությանը, որովհետև սա օգտվել է տվյալ դեպքում ոչ թե հռոմեական աչառու աղբյուրներից, այլ փոքրասիական աղբյուրներից կամ գուցե Նիկողայոս Դամասկացուց*[32]*։*

*Ըստ Ապպիանոսի նկարագրության, Լուկուլլոսը փոքրաթիվ այրուձիով ճակատային հարձակման ցույց է արել, իսկ ինքը՝ հիմնական ուժերի գլուխ կանգնած, շրջանցել է հայկական զորքի դասավորությունը և դիրք բռնել նրա թիկունքում գտնված մի բլրի վրա։ Երբ Տիգրանը, ետ մղելով հակառակորդի հեծելազորի գրոհը, սկսել է հետապնդել նրան, Լուկուլլոսը հարվածել է թիկունքից, ըստ որում՝ նախ գրոհել է Տիգրանի զորքի դասավորության խորքում գտնվող գումակի վրա, ապա, խուճապահար գումակի ետևից՝ խուժել բուն զորքի արդեն իսկ խախտված դասավորության մեջ։ Հետևանքը եղել է սաստիկ իրարանցումն ու անկանոն նահանջը, որը վերածվել է փախուստի*[33]*։*

*Բանակների կորուստների մասին եղած տվյալները ևս խիստ հակասական են։ Պլուտարքոսի պատմելով կոտորվել է 100 հազարից ավելի հայ և 5 (!) հռոմեացի (100 հռոմեացի էլ վիրավորվել է)։ Եթե չլինեին էլ զուգահեռ այլ տվյալներ, այս թվերը կարելի էր հանգիստ խղճով մի կողմ նետել, որպես քմածին։ Բայց տվյալները կան և, օրինակ, Փլեգոնը խոսում է ընդամենը 5 հազար հայերի կորստյան մասին*[34]*։ Ըստ երևույթին, նախապատվությունը*

---

[31] Տե՛ս *K. Eckhardt*, Die armenischen Feldzüge des Lukullus, „Klio", Bd. X, Heft 1, էջ 78 և հաջ.։

[32] Տե՛ս *Th. Reinach*, Mithridate Eupator roi du Pont, Paris, 1890, էջ 443 և հաջ.։

[33] Տե՛ս *App.*, Mithr., 85։

[34] Տե՛ս *Phleg.*, frag. 12. *Th. Reinach*, Mithridate Eupator, էջ 367. Թյուրիմացաբար Փլեգոնի այս տվյալը վերաբերում է 68 թվականին տեղի ունեցած Արածանիի ճակատամարտին։

պետք է տալ այս թվին, և ոչ միայն այն պատճառով, որ դա ավելի տրամաբանական է, այլ առաջին հերթին, որովհետև Փլեգոնը փոքրասիական պատմիչ է, չեզոք աղբյուրների վրա հենվող, ինչպես և այն պատճառով, որ թե՛ Ապպիանոսի նկարագրածի, և թե՛ հենց Պլուտարքոսի պատմածի համաձայն, ըստ էության, տևական ճակատամարտ տեղի չի ունեցել[35], որպեսզի կողմերից մեկը այդչափ կորուստներ տար։

Իր տարած կարևոր հաղթանակից հետո Լուկուլլոսը նոր եռանդով դարձավ Տիգրանակերտի պաշարմանը։ Իրադրությունը փոխվել էր այն իմաստով, որ քաղաքն արդեն հույս չուներ կամ համենայն դեպս մոտ ժամանակներում չէր կարող հույս ունենալ, թե դրսից օգնություն կստանա։ Քաղաքացիները բարձրաբերձ պարիսպներից ականատես էին եղել ճակատամարտի ողջ ընթացքին։ Հռոմեացիներն այժմ փոխում են իրենց տակտիկան, գրոհների փոխարեն դիմելով դավադրական միջոցների։

Տիգրանակերտի անկման մասին առկա են չորս հեղինակների վկայություններ, որոնց հաղորդածները, որքան էլ տարբեր են իրարից, բայց մի խնդրում համերաշխ են՝ քաղաքը դավադրաբար հռոմեացիներին են հանձնել Տիգրանակերտում գտնվող օտարերկրացիները։ Ըստ Ապպիանոսի՝ Մանկայոսի մոտ ծառայող հույն վարձկան զինվորներն էին, որ ապստամբելով, ներս թողեցին հռոմեացիներին։ Կասսիոս Դիոնը հաղորդում է, որ այդ արել են Տիգրանակերտի օտարերկրացի բնակիչները։ Պլուտարքոսը խոսում է ընդհանրապես «հելլենների ապստամբության» մասին՝ «բարբարոսների դեմ»։ Վերջապես, Մեմնոնի ասելով, դավադիրները Միհրդատ Եվպատորի՝ Տիգրանկերտում գտնվող զորապետներն էին[36]։ Ինչևէ, քաղաքն ընկավ հռոմեացիների ձեռքը, սաստիկ կողոպուտի ենթարկվեց ու քարուքանդ արվեց։

Սակայն հաջորդ տասնամյակների ընթացքում այն վերածնվեց և մ. թ. I դարի կեսերին նորից դարձավ Հայաստանի կարևորագույն կենտրոններից մեկը[37]։

## 3. ՀՌՈՄԵԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՆԱՀԱՆՋԸ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ

Լուկուլլոսը Կորդուքում: Վրա հասավ ձմեռը, և հակառակորդները յուրովի օգտագործեցին այն. մեկը՝ հանգստի, մյուսը՝ նոր ուժեր կուտակելու համար։ Լուկուլլոսը իր բանակով քաշվեց Կորդուք՝ ձմեռելու։ Այս երկիրը, Ստրաբոնի հաղորդմամբ, հատկապես բարենպաստ էր տրամադրված հռոմեացիների նկատմամբ։ Կորդվաց թագավոր Զարբիենոսը, ինչպես նշվեց, դեռևս Ապպիոս Կլավդիոսի պատվիրակության օրերին էր գայթակղվել հռոմեացիների խոստումներով և իր ծառայություններն առաջարկել նրանց։ Տեղեկանալով Զարբիենոսի դավաճանությանը, Տիգրանը մահապատժի էր ենթարկել նրան՝ իր ընտանիքի հետ միասին։ Այժմ կորդվաց ավագանին կարող էր հագուրդ տալ Տիգրանի նկատմամբ ունեցած թշնամանքին, հանգիստ տրամադրելով և այլևայլ ծառայություններ մատուցելով Լուկուլլոսին ու նրա բանակին։ Վերջինս

35 Հմմտ. Հրանդ Արմեն, Մեծն Տիգրան, էջ 179 և հաջ.։
36 Տե՛ս App., Mithr., 86; Dio, XXXVI, 2, 3; Plut., Lucul., 29; Memn., 57։
37 Տե՛ս Tac., Ann., XV, 4։

էլ երախտահատույց եղավ, կատարելով Զարբիենոսի հուղարկավորման ծեսը՝ հնարավոր ճոխությամբ ու թանկարժեք մահարձան կանգնեցնելով նրան։ Այս պատմությունն անող Պլուտարքոսը շարունակության մեջ ակամա ի հայտ է բերում Լուկուլլոսի այս քնքշությունների իրական պատճառը։ «Զարբիենոսի արքունիքում,— գրում է նա,— գտել էին մեծ քանակությամբ ոսկի և արծաթ, իսկ պահեստներում կար երեք միլիոն մեդիմն ցորեն։ Այսպիսով և՛ զինվորները հարստացան, և՛ Լուկուլլոսը զարմացավ, որ ինքը մեկ դրամ անգամ չստանալով հասարակական գանձարանից, պատերազմը վարում է միայն իր միջոցներով»[38]։

Լուկուլլոսը, հիրավի, կարող էր գոհ լինել։ Տիգրանի նկատմամբ տարած հաղթանակից հետո նրան հնազանդվել էին Տիգրանի նախկին հպատակները՝ արաբական ցեղերի առաջնորդները, Կոմմագենե թագավորության իշխող Երվանդունի Անտիոքոս Ա-ը։ Նրան հաջողվել էր Ասորիքից հայերի նահանջելուց հետո թափուր մնացած Սելևկյանների գահին նստեցնել Սելևկյան Անտիոքոս ԺԳ-ին՝ Տիգրանի կողմից մահապատժի ենթարկված Կլեոպատրա-Սելենե թագուհու որդուն։ Ծոփքը ևս հարել էր Լուկուլլոսին։

Ոգևորված այս բոլորով, Լուկուլլոսը, համաձայն որոշ տվյալների, մտադրվել էր շարունակել իր երթը դեպի Արևելք և հարձակվել պարթևների վրա։ Մի շարք հետազոտողներ կասկածում են այս հաղորդման ճշտությանը[39], ենթադրելով, որ Լուկուլլոսը չէր կարող նման բախտախնդրական քայլի մասին մտածել, թիկունքում ունենալով Տիգրանին ու Միհրդատին։ Գուցե և այդպես է, բայց հայտնի է, որ Արևելքում որոշ հաջողությունների հասած հռոմեական գրեթե բոլոր զորավարները երազել են տիրանալու Ալեքսանդր Մակեդոնացու փառքին, և Լուկուլլոսն էլ կարող է տառապած լինել այդ ցավով։ Ինչևիցե, նրա բանակում գտնվել են սառնարյուն մարդիկ, որոնք կտրականապես հակադրվել են այդ ծրագրին և կասեցրել այն[40]։ Պարթևների դեմ արշավանք ոչ միայն տեղի չունեցավ, այլև նրանց մոտ պատվիրակություն ուղարկվեց՝ դաշինք կնքելու առաջարկությամբ[41]։

**Պատերազմի հետագա ընթացքը: Պարթևների դիրքը:** Հիրավի, Լուկուլլոսի համար հայկական պատերազմը ոչ միայն ավարտված չէր, այլև դեռ նոր էր մտնում իր վճռական փուլը։ Իսկ ինչո՞վ էր զբաղված Տիգրանը այդ միջոցին։ Ծակատամարտից հետո նա խիստ ընկճված վիճակում քաշվել էր մի ապահով վայր։ Չէ՞ որ սա առաջին պարտությունն էր՝ երկուսուկես տասնամյակների ընթացքում նրա տարած անընդմեջ հաղթություններից հետո։ Նրա մոտ անմիջապես եկավ Միհրդատ Եվպատորը, որն ուշացել էր Տիգրանակերտի ճակատամարտից։ Կորովի պոնտացին, որ իր կյանքում բազմաթիվ ճախրումներ ու անկումներ էր ապրել, իր մեջ ուժ գտավ քաջալերելու Տիգրանին և նրա ուշադրությունը դարձնելու հերթական խնդիրների վրա։

---

38 *Plut.*, Lucul., *29*։

39 *Տե՛ս* *K. Eckhardt*, Die armenischen Feldzüge des Lukullus, „Klio" X, *էջ 195*, *Հ.* Մանանդյան, *Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 138*։

40 *Տե՛ս* *Plut.*, Lucul., *30*։

41 *Տե՛ս* *Dio*, *XXXVI*, *3*, *1*; *App.*, Mithr., *87*։

*Անհրաժեշտ էր նոր ուժեր հավաքել հռոմեացիների դեմ պատերազմը շարունակելու համար և հոգ տանել երկրի արտաքին հարաբերությունների կարգավորման մասին։ Ասորիքը Տիգրանի համար, ըստ երևույթին, գործնականորեն կորսված էր։ Անհավանական չէ, սակայն ինչպես կտեսնենք, որ այնտեղից կուսակալ Բագարատի հեռանալուց և Անտիոքոս ԺԳ Սելևկյանի գահակալումից հետո էլ հայերն Ասորիքում ինչ-որ դիրքեր դեռ շարունակում էին պահպանել[42]։ Այնուամենայնիվ, օգնություն սպասել այնտեղից՝ ավելորդ էր։ Արևելքում վիճակը անհամեմատ կայուն էր։ Նվաճված Ատրոպատյան Մարաստանը տակավին շարունակում էր մնալ Հայկական տերության կազմում, իսկ նրա թագավոր Միհրդատը՝ Տիգրանի փեսան, հռոմեացիների դեմ մղվող պայքարում գործուն մասնակցություն էր ցույց տալիս՝ իր զորքի հետ միասին։ Այդ պայքարին շարունակում էին մասնակցել նաև իբերական ու աղվանական ուժերը. հյուսիսում ևս, ուրեմն, Տիգրանի ազդեցությունը պահպանվում էր։*

*Կարևոր էր պարթևների դիրքորոշման խնդիրը։ Տիգրանն ընկճել էր նրանց, խլել մի շարք երկրամասեր և դրանց հետ՝ «արքայից-արքա» տիտղոսը կրելու իրավունքը։ Ինչպե՞ս պիտի վարվեին պարթևները Հայաստանի համար այս ծանր ժամին։ Այդ հարցը առաջնակարգ նշանակություն ուներ Լուկուլլոսի դեմ պատերազմի շարունակման հեռանկարները գծելիս։ Այստեղ առաջին անգամ ու դեռևս սաղմնային վիճակում Հայաստանի առջև ծառացավ մի խնդիր, որը հետագայում պիտի դառնար և դարեր շարունակ պիտի մնար նրա արտաքին քաղաքականության և ընդհանրապես նրա կյանքի կարևորագույն խնդիրը՝ Արևմուտքի ու Արևելքի պայքարը և Հայաստանի վիճակը կռանի ու սալի միջև։*

*Տիգրանն ու Միհրդատը դիմում են պարթևների թագավոր Հրահատ Գ-ին, նրան հորդորելով՝ դաշնակցել Հռոմի դեմ մղվող պատերազմում։ Նրանք ջանում են համոզել Հրահատին, որ Հռոմն իր առաջխաղացման մեջ կանգ չի առնելու, և իրենց հաղթելու դեպքում հաջորդ զոհը լինելու է Պարթևստանը[43]։ Տիգրանը խոստանում է վերադարձնել «Յոթանասուն հովիտները»՝ պատանդությունից ազատվելու իր փրկագինը, որ հետո ետ էր խլել, ինչպես և Հյուսիսային Միջագետքի նախկինում պարթևներին պատկանած հողերը[44]։*

*Հրահատը կանգնած էր երկընտրանքի առջև. դաշինքի առաջարկ էին անել նրան, ինչպես կսպասվեր, նաև հռոմեացիները։ Պարթևները գրեթե դեռ շփման առիթներ չէին ունեցել հռոմեացիների հետ (միայն 93 թվականին նրանց պատվիրակ Օրոբազոսը դաշնագրի նման մի բան էր կնքել այն ժամանակ Կապադովկիայում գտնվող Սուլլայի հետ)[45] և նրանց հանդեպ քաղաքականության մշակված գիծ չունեին։ Հրահատը բավարարվեց երկու կողմերին էլ տարտամ խոստումներ տալով և առժամանակ իր երկիրը հեռու պահեց արևմուտքում տեղի ունեցող բուռն իրադարձություններից[46]։*

42 *Տե՛ս ստորև, էջ 598։*

43 *Տե՛ս Sallust., IV, fr., 20։*

44 *Տե՛ս App.*, Mithr., *87*; *Memn., 58։*

45 *Տե՛ս Plut.*, Sulla, 5: *Տե՛ս J. Doblaš*, Les prémiers rapports des romaines avec les parthes, „Archiv orientálni", 3 (1931), *էջ 244։*

46 *Տե՛ս App.*, Mithr., *87։*

Այսպիսով, Հայաստանը, եթե ի դեմս պարթևների ձեռք չբերեց դաշնակից, ապա թշնամի էլ չունեցավ, իսկ տվյալ իրադրության մեջ դա խիստ բարենպաստ հանգամանք էր։ Տիգրանը կարող էր բոլոր ուժերն ուղղել հռոմեական զավթիչների դեմ։

**Լուկուլլոսի արշավանքը դեպի Արտաշատ:** Տիգրանի հերթական մտահոգությունը նոր զորք հավաքելն էր։ Այս խնդրում ևս Միհրդատը զորավիգ եղավ նրան։ Ձմռան ընթացքում զորքեր հավաքվեցին ողջ Հայաստանից, և ստացվեց մի ստվար զանգված։ Սակայն դա դեռևս զորք չէր և այդպիսին դարձնելու համար նախ և առաջ զտում կատարվեց՝ թողնվեցին ամենաուժեղները, Ապպիանոսի տսելով, մոտ 100 հազար, երկու երրորդը՝ հետևակ, մնացածը՝ այրուձի։ Սրանք սկսեցին մարզվել՝ պատերազմի անցած դրվագներում ձեռք բերված փորձի հաշվառմամբ, իսկ հռոմեական տակտիկան լավագույնս ուսումնասիրելու համար Միհրդատը գործի լծեց իր զորահրամանատարներից շատերին, որոնք հռոմեական բանակի հետ պատերազմելու մեծ փորձ ունեին։ Այսպիսի միջոցներով կարճ ժամանակի ընթացքում ստեղծվեց մի նոր մարտունակ բանակ, որը և պիտի շարունակեր պայքարը Լուկուլլոսի դեմ։

Լուկուլլոսի նոր, 68 թվականի ռազմարշավի նպատակն էր Հայաստանի երկրորդ մայրաքաղաքի՝ Արտաշատի նվաճումը, որով, ըստ երևույթին, հույս ուներ վերջնական հաղթանակ տանել Հայաստանի նկատմամբ. և, իհարկե, նորանոր հարստություններ ձեռք գցել։ Գարնանը նա շարժվեց դեպի Տարոն՝ Մշո դաշտը՝ Տիգրանակերտի վրայով։ Սակայն սա արդեն այն արշավանքը չէր, որ նա իրականացրել էր պատերազմի առաջին փուլում՝ իր նկատմամբ բարենպաստ տրամադրված Ծոփքի վրայով սրընթաց հասնելով Տիգրանակերտ։ Իսկական պատերազմը հայ ժողովրդի ուժերի բուն մասնակցությամբ՝ նոր էր սկսվում։ Հայկական զորքերը անընդհատ հարվածներ էին տեղում հռոմեական բանակի վրա՝ մերթ թևերից, մերթ ճակատից կամ թիկունքից, մեծ կորուստներ պատճառում և դժվարացնում պարենավորումը։ Երբ Լուկուլլոսը ի վերջո հասավ Մշո դաշտ, արդեն ամառ էր։ Սակայն տեղի բարձրության պատճառով, հացահատիկի արտերը դեռ կանաչ էին, հանգամանք, որ էլ ավելի դժվարացրեց հռոմեացիների կացությունը։

Տիգրանն ու Միհրդատը, երկու մասի բաժանված զորքի գլուխ կանգնած, հաջորդաբար հարձակումներ էին գործում հռոմեական զորքի վրա, խուսափելով, սակայն, վճռական ճակատամարտ տալուց։ Լուկուլլոսին, ընդհակառակն, միակ ելքն էր թվում այդպիսի ճակատամարտը։ Ջգտելով այն պարտադրել հակառակորդին, Լուկուլլոսը պաշարեց Միհրդատի ճամբարը, բայց իր նպատակին չհասավ, որովհետև թիկունքից վրա հասավ Տիգրանը[47]։ Այսպես անցավ ամառը և վրա հասավ աշունը, իր փոփոխական եղանակով։ Ձմեռն հեռու չէր և Լուկուլլոսը երկընտրանքի առջև էր կանգնած՝ կամ դադարեցնել արշավանքը և հեռանալ Հայաստանից, որ հավասարազոր կլիներ պարտության և կամ ինչ գնով էլ լինի, ճակատամարտ տալ հայկական զորքերին։ Նա ընտրեց վերջինը և, որպես միջոց, իր արշավն ուղղեց անմիջապես Արտաշատի վրա, ենթադրելով, որ Տիգրանը կկանգնի իր ճանապարհին։

47 Տե՛ս Plut., Lucul., 31; Dio., XXXVI, 4, 2։

**Արածանիի ճակատամարտը և հռոմեական բանակի նահանջը:** *Ինչպես, Արածանիի գետանցի մոտ Տիգրանը սպասում էր նրան իր զորքով։ Պլուտարքոսը աղբյուր ունենալով Լիվիոսի երկը, որը հենված էր իրեն՝ Լուկուլլոսի զեկույցների վրա, փորձում է Արածանիի ճակատամարտը ներկայացնել որպես Տիգրանակերտի ճակատամարտի մի կրկնություն, այն տարբերությամբ, որ, ինչպես Պլուտարքոսի վկայությամբ Լիվիոսն է ասում՝ «թշնամու կորուստը ավելի մեծ է եղել առաջին (Տիգրանակերտի) կռվում, սակայն այս (Արածանիի) կռվում սպանվել ու գերի էին ընկել ավելի անվանիները»[48]։ Ի տարբերություն սրանից, Դիոն Կասսիոսի մոտ կարդում ենք. «Հարձակման ժամանակ թշնամու այրուձին խիստ նեղը գցեց հռոմեական հեծելազորին, բայց հետևակի հետ ոչ ոք նրանցից դուրս չեկավ ձեռնամարտի, այլ նրանք իսկույն ետ էին քաշվում, երբ Լուկուլլոսը հեծելազորին օգնության էր տանում վաշտականներին։ Չնայած դրան, թշնամիները որևէ վնաս չկրեցին, այլ նրանք, ետ դառնալով՝ նետեր էին արձակում հետապնդողների վրա, և շատերին իսկույն սպանեցին ու շատերին էլ վիրավորեցին»[49]։*

*Պլուտարքոսի և Դիոնի պատմած տարբերակների միջև ընտրություն կատարելու և ընդհանրապես իրադրության ճիշտ գնահատման համար բավական է ուշադրություն դարձնել ճակատամարտին հաջորդած օրերի ընթացքում տեղի ունեցած իրադարձությունների վրա, որից էլ կպարզվի, որ հռոմեացիների տարած ինչ-որ հաղթանակի մասին խոսք անգամ լինել չի կարող. նրանք պարզապես պարտվել էին։*

*Բանն այն է, որ շանցավ մի քանի օր և Լուկուլլոսը ընդհատեց իր արշավը, հրաժարվեց Արտաշատ հասնելու մտքից և բռնեց նահանջի ուղին. Հարց է ծագում, թե ինչո՞ւ հաղթանակած բանակը պետք է այդպես վարվեր։ Պլուտարքոսը մանրամասն պատմում է, որ այդպիսին էր զորքի կամքը, որը ապստամբեց Լուկուլլոսի դեմ և պահանջեց վերադառնալ։ Ինքը՝ զորավարը, պնդում էր համառորեն ու խնդրում, որ նրանք մի փոքր էլ համբերեն, մինչև որ կվերցնեն Հայաստանի Կարթագենը (Արտաշատը—ծեղ.)[50], բայց զինվորները մնացին անդրդվելի։ Աննկուն զորավարի և թուլամորթ զորքի այս հակադրման մեջ անշուշտ, զորավարը խիստ շահում է, որը և Պլուտարքոսի բուն նպատակն է։ Բայց կարևորը, իհարկե, այդ չէ, այլ նահանջի իրական պատճառները։ Որպես այդպիսիք, Պլուտարքոսը ներկայացնում է հանկարծակի վրա հասած ցրտերը, ձյունը, գետերի սառցապատումը և այլն։ Մի շարք գիտնականներ հավատ են ընծայել այս պատճառաբանությանը, առանց մտաբերելու, որ նկարագրված իրադարձությունները տեղի են ունեցել վաղ աշնանը, ընդամենը սեպտեմբերի կեսերին, մինչդեռ հայտնի է, որ Հայաստանում ցրտերը վրա են հասնում ավելի ուշ։ Պետք է մերժել, ուրեմն, Պլուտարքոսի և սրան հարող Ապպիանոսի բացատրությունը և լսել Դիոնին, որը նահանջի պատճառ է համարում զորքի կրած մեծ կորուստները և սննդամթերքի պա-*

48 *Plut.*, Lucul., *31.*
49 *Dio, XXXVI, 3, 4.*
50 *Տե՛ս Plut.*, Lucul., *31։*

*կասությունը[51]։ Նույն ոգով է արտահայտվում և դեպքերին ժամանակակից Կիկերոնը[52]։*

*Պարզվում է, որ հռոմեական բանակի կարգ ու կանոնը սնվում էր ռազմական հաջողություններով միայն, և ոչ այնքան հաջողություններով, որքան դրանց հետ կապված ավարի առատությամբ։ Երբ զորքը ընկնում է նեղ վիճակի մեջ, մեծ կորուստներ տալիս, եղանակն էլ անբարենպաստ է, ուտեստը՝ անբավարար, նա դադարում է հրամաններին ենթարկվելուց։ Բանակի բարեհաճ վերաբերմունքը գեթ նահանջի ճանապարհին շահելու համար հռոմեական զորավարը որոշում է առնել Մծբին քաղաքը և նրա հարստություններով բավարարել լեգեոներներին։ Մծբինի վերակացուն էր Տիգրանի եղբայր Գուրասը, իսկ զինվորական ուժերի ղեկավարը՝ հույն Կալլիմաքոսը, որը նախկինում ծառայել էր Միհրդատին և ղեկավարել Պոնտոսի Ամիսոս քաղաքի պաշտպանությունը՝ Լուկուլլոսի դեմ։ Մծբինը, որը լավ ամրացված էր (շրջապատված էր երկու զուգահեռ պարիսպներով) մի քանի ամիս դիմադրում է, բայց ի վերջո Լուկուլլոսին հաջողվում է առնել այն ու կողոպտել ինչպես մինչ այդ՝ Տիգրանակերտը[53]։ Գուրասին Լուկուլլոսը չվնասեց, բայց Կալլիմաքոսին՝ իր հին թշնամուն, շղթայել տվեց։ Հռոմեական զորքը ձմեռեց Մծբինում։*

**Միհրդատի և Տիգրանի հակահարձակումը**: *Մծբինի առումը Լուկուլլոսի և նրա բանակի կարապի երգն էր։ Հայերն ակտիվորեն վերսկսել էին ռազմական գործողությունները։ Հայկական մի զորամասի գլուխ կանգնած, Միհրդատը նորից մտել էր Պոնտոս ու վերանվաճում էր իր թագավորությունը, իսկ Տիգրանը Հայաստանի հարավային մասերն էր մաքրում հռոմեացիներից[54]։ Միհրդատը պարտության մատնեց Ֆաբիոսին՝ Լուկուլլոսի զորավարներից մեկին, որի տնօրինությանն էր հանձնված Պոնտոսը, և հետամուտ եղավ նրա մյուս զորավարին՝ Տրիարիոսին։*

*Տեղեկանալով սրանց ծանր վիճակին, Լուկուլլոսը մտադրվեց շարժվել Միջագետքից դեպի Պոնտոս՝ օգնելու Տրիարիոսին։ Զորքը, սակայն, որը մի անգամ սովորել էր չենթարկվել իր հրամանատարին, հրաժարվեց տեղից շարժվել մինչև եղանակները չտաքանան[55]։ Լուկուլլոսին, այսպիսով, միայն 67 թվականի գարնանը հաջողվեց տեղից շարժվել և մտնել Պոնտոս։ Բայց դա դրական ոչինչ չտվեց նրան, որովհետև դրանով նա փաստորեն թողեց ու հեռացավ Հայաստանից, ընդմիշտ հրաժարվելով նրա նվաճման մտքից, ուր իրականացման համար նա այդքան զոհեր էր տվել և եռանդ ծախսել։ Տրիարիոսին ևս նա չկարողացավ օգնել, որովհետև մինչև նրա տեղ հասնելը՝ ամեն ինչ վերջացած էր. Միհրդատը ահավոր ջարդ էր տվել նրա զորքին, որի հետևանքով հռոմեացիները կորցրել էին 7000 զինվոր[56]։*

*Այնուհետև, Լուկուլլոսը իսպառ անկարող դարձավ ղեկավարել իր բարոյալքված բանակը և ինքը խաղալիք դարձավ իր զինվորների ձեռքին։ Սրանց*

---

51 *Տե՛ս Dio, XXXVI, 6, 1։*

52 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 155 և հաջ.։*

53 *Տե՛ս Plut.,* Lucul., *32; Dio, XXXVI, 6, 7։*

54 *Տե՛ս App.,* Mithr., *88; Dio, XXXVI, 8, 10։*

55 *Plut.,* Lucul., *34։*

56 *Տե՛ս App.,* Mithr., *84; Plut.,* Lucul., *35։*

պահանջով էր, որ նա քաշվեց Գալատիա և չկարողացավ դիմագրավել Տիգրանի ձեռնարկած արշավանքին՝ դեպի արևմուտք։ Ավարտելով հայկական հողերի ազատագրումը, Տիգրանը, իր փեսա՝ Ատրոպատյան Մարաստանի թագավոր Միհրդատի օժանդակությամբ կրկին ներխուժել էր Կապադովկիա և դուրս վռնդել նրա թագավոր, հռոմեացիների դրածո Արիոբարզանին[57]։

**Տիգրան Կրտսերի ապստամբությունը:** *Թվում էր, թե Հայաստանի համար հանգամանքները բարենպաստ են և կարելի է փորձ անել վերականգնելու տերությունը՝ իր նախապատերազմյան կերպարանքով։ Բայց դրան խանգարեցին ներքին պառակտումները, որոնք հատկապես ուժգնորեն ծավալվեցին հենց այդ տարիներին։ Անցյալում արդեն եղել էին խլրտումներ ու դավադրություններ, որոնց ժամանակ զոհվել էին Տիգրանի երկու որդիները (ավագի անունն էր Զարեհ)՝ երկուսն էլ Միհրդատի դուստր Կլեոպատրայից[58]։ Այժմ էլ դավադրություն կազմակերպեց սրա երրորդ որդին՝ Տիգրանը, որին պատմագիրները Կրտսեր են անվանել։ Դեռ 67 թվականին նա ապստամբեց, բայց, պարտություն կրելով, փախավ պարթևների մոտ։ Սրանց հետ էր սկզբնապես կապում իր հույսերը բախտախնդիր ու անկայուն երիտասարդը[59]։ Հրահատ Գ-ը ընդունեց նրան գուրգուրանքով, ամուսնացրեց իր դստեր հետ և հարմար առիթի էր սպասում այս Տիգրանին նստեցնելու հայկական գահին, հոր փոխարեն։ Լուրեր կային, որ Տիգրան Կրտսերին օժանդակում է նաև նրա հորից դժգոհ Միհրդատ Պոնտացին՝ իր պապը[60]։ Հաջորդ տարին, 66 թվականին Հրահատը հարձակվեց Հայաստանի վրա՝ իր մտադրությունը իրագործելու նպատակով։ Սկզբում պարթևների գործը հաջող էր ընթանում. նրանք հասան մինչև Արտաշատ և պաշարեցին այն։ Տիգրանը հեռացավ սարերը։ Սակայն Արտաշատի ուժեղ դիմադրությունից ընկճված, Հրահատը ետ քաշվեց իր երկիրը, Տիգրան Կրտսերին թողնելով զորքի մի մասը. Տիգրանը վերադարձավ և ջախջախեց այդ զորամասերը, իսկ որդին, հույսը կտրելով պարթևներից, փախավ այս անգամ արդեն հռոմեացիների մոտ[61]։*

## 4. ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՆՈՐ ՀԱՐՁԱԿՈՒՄԸ։ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԻ ԴԱՇՆԱԿԻՑ

**Պոմպեոսը Արևելքում: Ծովահենների ջախջախումը:** *Հռոմում խիստ դժգոհ էին Լուկուլլոսից, նախ՝ այն պատճառով, որ սրա ավետած հաղթանակները Տիգրանի և Միհրդատի դեմ մղված պայքարում, ավելի նմանվում էին պարտությունների։ Տիգրանի դեմ պատերազմը սկսվել էր նույնիսկ առանց ծերակույտի որոշման, Լուկուլլոսի սեփական նախաձեռնությամբ, և եթե հաղթողին կներվեր նման մի խախտում, և նույնիսկ նա կփառաբանվեր, քանի որ նոր նվաճումները Հռոմին խիստ ձեռնտու էին, ապա ձեռնարկության ձախողում, իհարկե, լայն հնարավորություններ էր ընձեռում Լուկուլլոսի թշնամի-*

---

57 Տե՛ս *Plut.*, Lucul., *35*; *Dio*, *XXXVI*, *17*, *1*։

58 Տե՛ս *App.*, Mithr., *104*; *Val. Max.*, *IX*, *11*։

59 *Dio*, *XXXVI*, *51*, *1—2*, *App.*, Mithr., *104*։

60 Տե՛ս *Dio*, *XXXVI*, *50*, *1*։

61 Տե՛ս նույն տեղում, *XXXVI*, *52*, *2*, *3*։

ներին՝ նրան վարկաբեկելու համար։ Իսկ այդ թշնամիները շատ էին ու զորեղ։ Իր ժամանակ Լուկուլլոսը եղել էր Սուլլայի մերձավորագույն մարդկանցից, իսկ այժմ, երբ ծավալվում էր Սուլլայի մահվանից հետո սկսված հակասուլլայական ռեակցիան, Լուկուլլոսը կարող էր իր դիրքը պահպանել միայն արտակարգ հաջողությունների գնով։ Քանի որ դրանք չկային, հաղթանակեց նրան պաշտոնանկ անելու կարծիքը, և իշխանությունը Արևելքում հանձնվեց Լուկուլլոսի ախոյան Պոմպեոսին։

Պոմպեոսի վերելքի կարևոր աստիճաններից մեկն էր ծովահենների դեմ նրա ղեկավարած գործողությունը 67 թվականին[62]։ Ծովահենները, որոնց, ինչպես նշվեց, հաճախ «կիլիկեցիներ» էին կոչում և որոնց հետ Տիգրանը թերևս հարաբերություններ ուներ, իսկական աղետ էին դարձել Միջերկրականի շուրջն ընկած երկրների համար։ Նրանք անպատիժ կողոպտում էին պատահած նավերը և այդպիսով խախտում Հռոմի համար ամենակենսական նշանակություն ունեցող առևտրական կապերը։ Ծովահենների դեմ Հռոմի ձեռնարկած նախորդ միջոցառումները էական արդյունք չէին տվել, և ահա 67 թվականին, Գաբինիոսի մտցրած օրենքով Պոմպեոսը օժտվեց արտակարգ իրավունքներով՝ իր հայեցողությամբ գործելու Միջերկրականի ողջ ավազանում, հսկայական գումարներով, մեծ զորքով և 500 ռազմանավերով՝ ծովահեններին վերջ տալու համար։

Պոմպեոսը ծովը բաժանեց 30 շրջանների, և, սկսած արևմտյան ջրերից, հերթականությամբ դրանք մաքրեց ծովահեններից։ Նրա եռանդուն գործունեության շնորհիվ արդեն երեք ամսից հետո ծովահենները սեղմված էին իրենց հիմնական բազայի՝ Կիլիկիայի ափերին։ Պոմպեոսը գրավեց նրանց կայանները, ավերեց բերդերը։ Ծովահենների մի մասը սպանվեց, մի մասը՝ գերի վերցվեց, մի երրորդ մասն էլ բնակեցվեց Կիլիկիայի առափնյա քաղաքներում, որոնց բնակիչներին Տիգրան Բ-ը գաղթեցրել և բնակեցրել էր Հայաստանի քաղաքներում[63]։

**Միհրդատի փախուստը:** 66 թվականին, Մանլիոսի օրենքով, արևելյան պատերազմի ղեկավարության գործը հանձնարարվեց Պոմպեոսին։ Վերջինս, որ տակավին Կիլիկիայում էր գտնվում, անմիջապես գործի անցավ։ Նրա առաջին քայլերից մեկը եղավ պարթևների հետ կապերի հաստատումը, որի նպատակն էր դաշինք ստեղծել Պոնտոսի ու Հայաստանի դեմ[64]։ Պարթևների հետ կնքած նրա դաշինքի արդյունքն էր հենց Հրահատ Գ-ի վերը հիշատակված ռազմերթը դեպի Արտաշատ, որի ժամանակ պարթևաց թագավորը ջանում էր Տիգրան Կրտսերին նստեցնել հայոց գահի վրա և որի ձախողումից հետո այս հավակնորդը փախավ Պոմպեոսի մոտ։

Պոմպեոսը, ընդունելով հրամանատարությունը Լուկուլլոսից, վերսկսել էր պատերազմը Միհրդատի դեմ։ Սկզբնապես նա էական հաջողություններ չունեցավ։ Միհրդատը կիրառում էր արդեն փորձված պարտիզանական տակտիկան, ամայացնելով երկիրը և անընդհատ հարձակումներով մաշեցնելով հռո-

62 Տե՛ս САН, IX, էջ 372 և հաջ.։
63 Տե՛ս Г. Х. Саркисян, Тигранакерт, էջ 53։
64 Տե՛ս САН, IX, էջ 376։

մեացիների բանակը։ Պոմպեոսի իղձն էր՝ ճակատամարտ տալ նրան։ Վերջապես, Փոքր Հայքում նրան հաջողվեց փակել Միհրդատին մի կիրճում և պարտության մատնել նրա բանակը։ Պոնտացին փախավ փոքրաթիվ մի ջոկատի հետ[65]։

Փախչող թագավորի սկզբնական նպատակն էր՝ հասնել Հայաստան, իր փեսա և դաշնակից Տիգրանի երկիրը։ Բայց իրադրությունը փոխվել էր։ Զհաշված այն, որ Միհրդատը ինքն էր խախտել դաշինքի հիմքերը, խրախուսելով իր թոռան՝ Տիգրան Կրտսերի ապստամբությունը, հոր դեմ, Տիգրանը այժմ նոր ելք էր որոնում հռոմեացիների հետ համաձայնության եզրեր գտնելու և ոչ միայն չողջունեց Միհրդատին Հայաստանում պատսպարվելու գաղափարը, այլև մեծ գումար նշանակեց նրա գլուխը բերողին[66]։ Պոնտացին թեքեց իր ճանապարհը և դիմեց Կողքիս, այնտեղից՝ դեպի Բոսպոր, իր որդի Փառնակի կողմից ղեկավարվող թագավորությանը հասնելու համար։

**Հռոմեական նոր արշավանքը Հայաստանի վրա:** Պոմպեոսը Միհրդատին հետապնդելուց ավելի կարևոր համարելով Տիգրանի հետ հաշիվների մաքրումը, ներխուժեց Հայաստան և սկսեց շարժվել դեպի Արտաշատ։ Նրան միացավ Տիգրան Կրտսերը[67]։

Հայաստանը կանգնած էր մի նոր ու առավել ծանր փորձության առջև։ Եթե նախկինում խոսքը արտաքին, նվաճված երկրամասերի կորստյան մասին էր միայն, ապա այժմ վտանգի տակ էր բուն եկրի անկախությունը։ Իրադրությունը բարդանում էր երկու կարևոր հանգամանքներով։ Նախ՝ ավելի ու ավելի շեշտակի էր ուրվագծվում այն գոյավիճակը, որը հետագայում երկար դարերի ընթացքում պետք է սովորական և աղետաբեր դառնար երկրի համար. Հայաստանը ընկնում է երկու հզոր տերությունների՝ պարթևների ու Հռոմի արանքը։ Երկրորդ՝ Պոմպեոսի ձեռքին գործիք էր դարձել Տիգրան Կրտսերը՝ հայկական գահի հավակնորդը։ Այս պարագաներում զինված պայքարի նետվելը որքան խիզախ, այնքան էլ կործանաբեր քայլ կլիներ։ Տիգրանը այլ ուղի ընտրեց։ 75-ամյա ծերունին մենակ ու անզեն ներկայացավ Պոմպեոսի ճամբարը[68]։ Այս քայլը, ինչպես էլ որ այն գնահատելիս լինեն անտիկ պատմագիրները, իմաստուն քայլ էր, դիվանագիտական ու հոգեբանական տեսակետից՝ անվրեպ. հաշվի էր առնված հավանորեն նաև Պոմպեոսի բարեսիրտ ու սնապարծ բնավորությունը[69]։ Սրանով միանգամից Տիգրան Կրտսերը գրեթե դուրս մղվեց խաղից, կորցնելով Պոմպեոսի «բարեկամ» լինելու իր մենաշնորհը։ Տիգրանը գնաց մինչև վերջ՝ նա հանեց և մի կողմ դրեց իր թագը։ Իհարկե, սա փուցե ավելորդ էր, բայց նույնպես մտածված էր։ Զգացված Պոմպեոսը, տակավին երիտասարդ, իսկույն գրկեց ծերունուն և բազմեցրեց իր կողքին։ Ինչպես ստորև կտեսնենք, Պոմպեոսի սիրալիր վերաբերմունքը հետապնդում էր ռազմա-դիվանագիտական ու քաղաքական հեռահայաց նպատակներ։

---

65 Տե՛ս Նույն տեղում, էջ 378։

66 Տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 187։

67 Տե՛ս Plut., Pomp., 33։

68 Տե՛ս Dio, XXXVI, 51, 1—4 և ուրիշները։

69 Հմմտ. Հրանդ Արմեն, Մեծն Տիգրան, էջ 213 և հաջ.։

**Հաշտության կնքումը:** *Տիգրանի և Պոմպեոսի միջև կնքվեց հաշտություն, որի պայմանները թեթև համարել չի կարելի, բայց որը, այնուամենայնիվ, մի դրական կողմ ուներ։ Բուն Հայաստանի ամբողջականությունը չէր խախտվում, Տիգրանը շարունակում էր իշխել հայ ժողովրդի դարերով զբաղեցրած հողերի վրա։*

*Ըստ պայմանագրի, Հայաստանը հրաժարվում է արտաքին նվաճված երկրներից՝ Ասորիքից, Կիլիկիայից, Փյունիկիայից և այլն։ Այս կրկնում են հաշտության հանգամանքները նկարագրող երեք հեղինակներն էլ[70]։ Որ 66 թվականին խոսք է բացվում այն նահանգներից Հայաստանի հրաժարվելու մասին, որտեղից նա, ինչպես նշվեց, հեռացել էր դեռևս 69 թվականին, կարող է երկու իմաստ ունենալ։ Կամ այդ կետը ունեցել է զուտ միջազգային-իրավական իմաստ, և նրանով Պոմպեոսը ցանկանում էր շեշտել, որ ինքը չի ճանաչում Լուկուլլոսի՝ ջանքերով Ասորիքում 69 թվականից հետո թագավորած Անտիոքոս ԺԳ և Փիլիպպոս Բ Սելևկյաններին ու Ասորիքի իրավական տեր է համարում Տիգրանին և նրանից է ստանում այդ երկրամասը, կամ, գուցե, հակառակ իր գլխով անցած արհավիրքներին, Տիգրանը շարունակում էր ինչ-որ դիրքեր պահպանել Միջերկրականի ափերին։ Վերջինիս կարծես համաձայն է այն հանգամանքը, որ Հուստինոսը, հակառակ Ապպիանոսի, որը 14 տարի է հատկացնում Ասորիքում Տիգրանի իշխանությանը (83—69), այդ շրջանը հաշվում է 17 տարի (83—66)[71]։*

*Տիգրան Կրտսերը հաստատվում է Ծոփքի թագավոր, այսինքն, ըստ էության, ոչինչ չի ստանում, քանի որ այդ երկիրը նրա տնօրինության տակ էր դրել ինքը՝ Տիգրան Մեծը, դեռևս ապստամբությունից առաջ։ Որդին խիստ դժգոհ է մնում Պոմպեոսի այս որոշումից. իսկապես, նա հավակնություն ուներ նստելու Հայաստանի գահին։ Պոմպեոսի հաշիվները այս խնդրում, սակայն, միանգամայն այլ էին։ Ճիշտ է, Տիգրան Կրտսերը հարել էր իրեն, առաջնորդել դեպի Արտաշատ և այլն, բայց նա եղել էր և մնում էր պարթևների բարեկամ, Հրահատին մոտ անձնավորություն և նույնիսկ՝ ազգական։ Այս պարագաներում Հռոմի աչքում անհամեմատ շահում էր Տիգրան Մեծը՝ պարթևների մահացու թշնամին[72]։ Եթե վերջինս հակադրվեր Պոմպեոսին, թերևս այդ դեպքում ծագեր Տիգրան Կրտսերի գահակալելու հարցը։ Բայց նա ոչ միայն չհակադրվեց, այլ, ընդհակառակն, շատ դյուրացրեց, և, անշուշտ, միանգամայն գիտակցաբար, հռոմեացիների ընտրության գործը։*

*Պայմանագրի երրորդ կետն էր ռազմատուգանքի գանձումը Հայաստանից։ Գումարը հսկայական էր՝ 6000 տաղանդ՝ Պոմպեոսին[73], և մի ստվար գումար էլ՝ նրա հրամանատարներին ու զինվորներին։ Այս խնդրի կոնկրետ լուծումը ևս դարձավ Տիգրան Կրտսերի դժգոհության պատճառներից մեկը։ Բանն այն է, որ Տիգրանի այն գանձարանները, որոնցից վճարվեցին այդ գումարները, Ծոփքում էին գտնվում։ Տիգրան Կրտսերը ընդվզեց իր հոր և Պոմպեոսի դեմ և*

---

70 *Տես Dio*, XXXVI, 53,2: *App.*, Mithr., 104 *և հաջ.*, *Plut.*, Pomp., 23.

71 *Տե՛ս Just.*, XL, *1*; *App.*, Syr., *70*։

72 *Տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 198*։

73 *Մոտ 12,5 միլիոն ոսկի ռուբլի (տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 193)*։

*ի վերջո կալանքի ենթարկվեց վերջինիս կողմից։ Հետագայում նա իր ընտանիքի հետ միասին ուղարկվեց Հռոմ՝ Պոմպեոսի հաղթահանդեսն իբրև գերի զարդարելու*[74]*։ Ծոփքը մնաց Տիգրան Բ-ի իշխանության ներքո։*

*Պայմանագրի մի այլ կետի համաձայն, Հայաստանը հայտարարվեց «Հռոմեական ժողովրդի դաշնակից և բարեկամ», հորջորջում, որը փաստորեն կախյալ վիճակի մեջ էր դնում Հայաստանը կամ համենայն դեպս՝ նրա արտաքին քաղաքականությունը Հռոմի հանրապետությունից։*

**Պոմպեոսը Վրաստանում և Աղվանքում:** *Հայաստանում գործերն ավարտելով, Պոմպեոսը նորից մտահոգվեց Միհրդատ Պոնտացու խնդրով։ Քանի դեռ Միհրդատը կենդանի էր և ազատ, Հռոմը չէր կարող իրեն ապահով զգալ նորանոր վտանգներից։ Վրա էր հասնում ձմեռը, որը Պոմպեոսը որոշեց անցկացնել Քուռ գետի հովտում, գարնանն անմիջականորեն Միհրդատի հետապնդմանը ձեռնամուխ լինելու նպատակով։ Դեկտեմբերի կեսերին նրա ձմեռող զորքերը անսպասելի հարձակման ենթարկվեցին իբերների և աղվանների կողմից, հակառակ նրանց թագավորների՝ Արտոկեսի (Արտակ) և Օրոյզեսի նախապես Պոմպեոսին տված համաձայնությանը՝ թույլ տալ հռոմեացիներին անցնել իրենց հողերով։ Հռոմեացիներին, սակայն, հաջողվեց ետ մղել հարձակումը և շարունակել հանգիստը մինչև 65 թվականի գարունը*[75]*։*

*Գարնանը Պոմպեոսն արշավեց իբերների վրա և ստիպեց հպատակվել ու պատանդներ տալ։ Սրանից հետո նա, վերջապես, բռնեց Միհրդատի հետապնդման ուղին, բայց շուտով իմացավ, որ սա արդեն հասել է Ղրիմ և իր ձեռքը վերցրել Բոսպորյան թագավորության իշխանությունը։ Պոմպեոսը թողեց Միհրդատին հետապնդելու միտքը և որոշեց պատժել ձմեռային հարձակման նաև երկրորդ մասնակցին՝ աղվանից Օրոյզես թագավորին։ Սրան ևս ընկճելով ճակատամարտում, Պոմպեոսը դիմեց Փոքր Հայք՝ ձմեռելու*[76]*։ 64 թվականի գարնանը նա զբաղված էր Պոնտոսի նախապես չնվաճված բերդերի ու գանձարանների յուրացմամբ, որի ընթացքում նրա ձեռքն ընկան ոչ միայն Միհրդատի գանձերը, այլև նրա խիստ հետաքրքրական դիվանը, որից շատ բան պարզվեց այդ արտակարգ անձնավորության կյանքի ու գործունեության որոշ գաղտնի կողմերի մասին։*

*Այնուհետև, Պոմպեոսն ուղղվեց դեպի հարավ՝ Ասորիք, Հայկական տերությունից հատած այս երկրամասում նոր կարգեր հաստատելու մտադրությամբ։ Լուկուլլոսի հովանավորած՝ Սելևկյանների վերջին շառավիղներ՝ Անտիոքոս ԺԳ Ասիացու և Փիլիպպոս Բ-ի իշխանությունը նա ապօրինի հայտարարեց և Ասորիքը վերածեց հռոմեական պրովինցիայի*[77]*։*

---

74 *Տե՛ս* *Dio*, *XXXVI*, *53*, *3—5*։
75 *Տե՛ս* CAH, *IX*, *էջ 379 և հաջ.*։
76 *Տե՛ս* *Plut.*, Pomp., *36*։
77 *Տե՛ս* *A. R. Bellinger*, The End of the Seleucids, *էջ 85*։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՊԱՐԹԵՎԱ-ՀՌՈՄԵԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԳՈՐԾՈՆ

**Պարթևների ռազմատենչ քաղաքականությունը:** *Մինչ այդ, Արևելքում սկսում էին դրսևորվել պարթևների աշխարհակալական ձգտումների մի նոր ալիքի առաջին նշանները։ Տիգրանը, ինչպես տեսանք, պարթևներին ընկճել էր մ. թ. ա. 87 թվականին մահացած հզոր Միհրդատ Բ-ին հաջորդած Գոդերձ (Գոտարզ) թագավորի օրոք։ Գոդերձը իշխեց մինչև 81—80 թվականները, երբ նրան հաջորդեց Օրոդես Ա-ը, որը ևս փորձ չարեց հակադրվել Տիգրանին, ինչպես և նրանից հետո, 76—75 թվականներին թագավորած Սինատրուկը (Սանատրուկը), որը տարեց մարդ էր։ Սրա մահվանից հետո, որ տեղի ունեցավ 70 թվականին, պարթևական գահին նստեց Հրահատ Գ-ը։ Նախապես սա էլ զգուշավոր էր Հայաստանի նկատմամբ, թեև վերջինս ծանր օրեր էր ապրում։ 69 թվականին դաշինքի առաջարկներ ստանալով մի կողմից Լուկուլլոսից, մյուս կողմից՝ Տիգրանից ու Միհրդատից, Հրահատը, ինչպես նշվեց, չեզոք դիրք էր բռնել[78]։*

*Սակայն արդեն 66 թվականին, վերագնահատման ենթարկելով միջազգային դրությունը և հենվելով Պոմպեոսի հետ կնքած դաշինքի վրա, Հրահատ Գ-ը ռազմերթի ելավ Հայաստանի դեմ, մտադրվելով Տիգրան Բ-ին հայոց գահի վրա փոխարինել Տիգրան Կրտսերով։ Արշավանքը ձախողվեց, բայց Հրահատը, ինչպես ասում են, սովորել էր ճանապարհը։ 65 թվականին նա նորից արշավեց այնտեղ և գրավեց Կորդուքը։ Պոմպեոսը, սակայն, որ արդեն, առաջին հերթին, Հայաստանի դաշնակիցն էր, իսկ պարթևներին կասկածանքով էր նայում, իմանալով այդ մասին, իր զորավար Աֆրանիոսին հղեց վերականգնելու իրերի նախկին վիճակը, որ վերջինս կատարեց ամենայն փութով՝ վռնդելով պարթևներին և երկիրը վերադարձնելով Տիգրանի իշխանությանը[79]։*

*Սակայն բանը սրանով չվերջացավ։ 64 թվականի գարնանը Հրահատը նորից շարժվեց դեպի Հայաստան։ Տիգրանը բողոքի պատվիրակություն ուղարկեց Պոմպեոսի մոտ, հուսալով, որ հռոմեացին այս անգամ ևս կմիջամտի։ Հայոց պատվիրակները Պոմպեոսի դռանը հանդիպեցին պարթևական պատվիրակներին, որոնց նպատակն էր հիմնավորել Հրահատի՝ Հայաստանի հողերի նկատմամբ ունեցած ակնկալությունները։ Պոմպեոսը, սակայն, այս անգամ զենք չշարժեց, այլ ուղարկեց երեք միջնորդ դատավորների, հանձնարարելով տեղում ծանոթանալ գործի հանգամանքներին և համապատասխան վճիռ ընդունել[80]։ Սրանց եզրակացությունը Տիգրանի օգտին էր. Հայաստանը ոչ միայն պահպանեց Կորդուքը, որ պարթևներից մաքրել էր Աֆրանիոսը, այլև ձեռք բերեց Հյուսիսային Միջագետքի որոշ հողեր՝ Մծբին քաղաքով։ Պետք է ավելացնել որ նույն Պոմպեոսի աջակցությամբ Հայաստանին էր միացվել նաև Ակիլիսենե գավառը, որը այդ ժամանակ բուն Եկեղիքից բացի ընդգրկում էր նաև Դարանաղին, Մանանաղին, Աղյունն ու Մզուրը և գտնվում էր պոնտական*

---

[78] *Տե՛ս N. Debevoise*, A Political History of Parthia, *էջ 70 և հաջ.։*

[79] *Տե՛ս Plut.*, Pomp., *36։*

[80] *Տե՛ս Dio, XXXVII, 7, 3* b; *Plut.*, Pomp., *39*; *App.*, Mithr., *106։*

պետության կազմում[81]։ Տիգրանը պահպանել էր նաև «արքայից-արքա» տիտղոսը[82]։

**Հայաստանը նոր իրավիճակում:** Այս հետևողական բարյացակամությունը և հովանավորությունը, որ վերջին տարիներին ցուցաբերում էր Հռոմը Հայաստանի նկատմամբ, շատ հեռու էր անշահախնդիր լինելուց և իր հստակ բացատրությունն է գտնում Առաջավոր Ասիայում հաստատված նոր իրադրության մեջ։ Հայաստանը հրաժարվել էր աշխարհակալական ձգտումներից և դարձել սոսկ հայկական մի երկիր, որի հետագա խնդիրը պետք է լիներ՝ պաշտպանել իր անկախությունը և պահպանել մեծ ջանքերով ձեռք բերված տերիտորիալ ամբողջականությունը։ Այս խնդիրները որքան էլ համեստ ու չեզոք էին իրենց բնույթով, այնուհանդերձ, դիպչում էին հարևան երկու պետությունների շահերին և ահա թե ինչու։ Հռոմեացիները արդեն կլանել էին Փոքր Ասիայի մեծ մասը և Սելևկյանների ժառանգության արևմտյան բաժինը։ Դաշնագրեր էին կնքել իրենց արևելյան սահմաններին հարող մի շարք երկրների հետ, որոնց թվում էր և Հայաստանը։ Նրանց հաջորդ քայլը պետք է լիներ բախումը պարթևների հետ։ Պարթևական տերությունը իր հերթին արդեն դուրս էր եկել այն ճնշված վիճակից, որի մեջ նրան գցել էր Տիգրան Բ-ը։ Նա ամենևին մտադիր չէր զիջողաբար վարվելու Հռոմի նվաճողական քաղաքականության նկատմամբ և նահանջելու նրա առջև. նա ինքն ուներ իր նվաճողական ծրագրերը։ Այդ պարագաներում Հայաստանի համար ամենանպաստավոր քաղաքականությունը չեզոքությունը, երկու հզոր տերություններից ոչ մեկին չէր բավարարելու։ Նրանք Հայաստանից պահանջելու էին ակտիվորեն մասնակցելու իրենց ռազմական ձեռնարկումներին՝ մեծ չափով դրա մեջ տեսնելով հաջողության առհավատչյան։

Հռոմը, ահա, առայժմ Հայաստանին սիրաշահելու քաղաքականություն էր վարում։ Այդ միջոցով էր նա փորձում ապահովել նրա աջակցությունը պարթևների հետ սպասվող բախումներում։ Շուտով, սակայն, Տիգրանի որդի Արտավազդի օրոք, ինչպես կտեսնենք, այդ սիրաշահման միջոցները պիտի փոխարինվեին բռնությամբ. հռոմեական զորավարները բռնությամբ պիտի ստանային Հայաստանի օգնությունը։

Հետաքրքրական է, որ արդեն 64 թվականին Պոմպեոսի առաջած երեք դատավորների՝ պարթևների համար աննպաստ վճիռ կայացնելուց հետո, պարթևները նույնպես լրիվ ըմբռնեցին այդ իրավիճակը, ու իրենց հերթին սիրաշահման քայլ արեցին Հայաստանի նկատմամբ. նրանք առանց վեճի և հոժարակամ ընդունեցին այն վճիռը, որով Հայաստանին էին մնում հնում պարթևներին պատկանած որոշ հողեր։ Այդ մասին բացեիբաց խոսում է Դիոնը, հայտնելով, որ դրանով պարթևները հույս ունեին հաշտվել հայերի հետ և դաշնակից ձեռք բերել Հռոմի հետ ապագա պայքարում[83]։

81 Տե՛ս Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 210։ *J. Marquart*, Die Genealogie der Bagratiden, „Caucasica", 6, 2, Lpz., 1930, էջ 63։ *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб, 1908, էջ 54։

82 *Dio*, XXXVII 7, 4։

83 Տե՛ս նույն տեղում։

63 թվականին տարածվեց Միհրդատ Պոնտացու մահվան լուրը, որը Հռոմն ընդունեց մեծագույն հրճվանքով։ Աննկուն ծերունին մինչև իր կյանքի վերջին օրը չէր հրաժարվում Հռոմը ծունկի բերելու մտքից։ Բոսպորում նա կարողացել էր հավաքագրել ու մարզել մի ուժեղ բանակ, որի օգնությամբ մտադիր էր Սև ծովի հյուսիսային ափերով՝ Թրակիայի վրայով, ներխուժել Իտալիա՝ Հաննիբալի օրինակով, և այստեղ հաշիվ տեսնել հռոմեացիների հետ։ Զպետք է կասկածել, որ նա կփորձեր իրականացնել այս ծրագիրը, այնպես որ նրա որդի Փառնակի դավադրությունը և ապստամբությունը հոր դեմ, որ հանգեցրեց Միհրդատի ինքնասպանությանը, իսկապես մեծ ծառայություն էր Հռոմի նկատմամբ, որի համար Փառնակը ստացավ Բոսպորում թագավորելու իրավունք։

Սրան հաջորդած տարիները Հայաստանի համար եղել են խաղաղության տարիներ։ Գոնե առկա աղբյուրներում այդ ժամանակ տեղի ունեցած ու Հայաստանի հետ կապված պատերազմների մասին որևէ տեղեկություն չենք գտնում։ Երկիրը փոքր-ինչ շունչ քաշեց անցած ռազմական ու քաղաքական մրրիկներից։

Այդ տարիների Հայաստանի ներքին կյանքի մասին ևս տեղեկություններ չկան։ Թերևս որոշ հետևությունների տեղիք է տալիս Հռոմում կատարված մի դեպք։ Հռոմեական հռետոր Ասկոնիոսի 58 թվականի ճառերից մեկում մեղադրանք է ներկայացված ժողովրդական տրիբուն Կլոդիոսին, որ նա ինքնագլուխ կերպով բանտից արձակել է տվել Տիգրան Կրտսերին[84], որը, ինչպես տեսանք, իր ընտանիքի հետ գերեվարվել էր Հռոմ և ցուցադրվել Պոմպեոսի հաղթահանդեսում։ Հ. Արմենը հավանական ենթադրություն է անում, թե կաշառակերությամբ հայտնի Կլոդիոսը այդ քայլը արած պիտի լինի կաշառքի գնով, և ոչ կաշառողները եղած պիտի լինեն Հայաստանի պարթևասեր կուսակցության ներկայացուցիչները[85]։ Եթե այդպես է, ապա, ուրեմն, Հայաստանի արտաքին քաղաքական վիճակը արդեն իսկ իր անդրադարձումն էր սկսել գտնել նրա ներքին քաղաքական կյանքում, այսինքն՝ այստեղ արդեն սկսել էին ձևավորվել հռոմեասեր և պարթևասեր կուսակցությունները, որոնց գործունեությունը հետագա ժամանակներում քաջ հայտնի է։

Համենայն դեպս Տիգրան Կրտսերի ազատվելը որևէ բան չփոխեց Հայաստանի կյանքում։ Տիգրան Բ-ը թագավորեց քառասուն տարի՝ մինչև խոր ծերություն և մահացավ 85 տարեկան հասակում[86], մոտավորապես 55 թվականին[87]։ Հայոց գահի վրա նրան հաջորդեց իր որդիներից Արտավազդը։

84 Տե՛ս *Ascon*., Pro Milone, 37։

85 Տե՛ս Հրանդ Արմեն, Մեծն Տիգրան, էջ 230 և հաջ.։

86 Տե՛ս վերը, էջ 556։

87 56 թվականին Տիգրանը հիշատակվում է դեռ որպես իշխող թագավոր Կիկերոնի ճառերից մեկում (տե՛ս Pro Sestio, XXVII, 59), իսկ 54 թվականին որպես հայոց թագավոր հանդես է գալիս արդեն Արտավազդ Բ-ը (տե՛ս Plut., ‚Crass.‚ 19)։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՐՏԱՎԱԶԴ Բ-Ի ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ԿՐԱՍՍՈՍԻ ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Առաջին եռապետությունը**: *Արտավազդ Բ-ի թագավորության սկիզբը՝ 55 թվականին, զուգադիպեց մի այլ «գահակալման» հետ, որ տեղի ունեցավ հանրապետական Հռոմում։ Կոնսուլներ դարձան Կրասսոսը և Պոմպեոսը։ Դեռևս 60 թվականից Հռոմում գործում էր անպաշտոն մի ընկերակցություն, այսպես կոչված Առաջին եռապետությունը, որի երեք անդամներից մեկը արդեն հայտնի Պոմպեոսն էր, իսկ մյուս երկուսը՝ Մարկոս Լիկինիոս Կրասսոսը և Գայոս Հուլիոս Կեսարը։ Եռապետության իրական կազմակերպիչն ու մղիչ ուժը հենց վերջինս էր և նրա մտադրությունն էր Հռոմի երկու առավել ազդեցիկ քաղաքացիների հեղինակությունն օգտագործել հասնելու համար միանձնյա իշխանության։*

*Եռապետների նպատակները, իրենց անձնական բնույթով հանդերձ, հարազատորեն արտահայտում էին հռոմեական պետության ներքին ու արտաքին զարգացման օրինաչափությունները։ Դրանք էին հանրապետական կարգերի թուլացումը, որ սկսվել էր դեռ նախորդ դարի վերջերից, միապետական կարգերի աստիճանական ստեղծումը՝ ներքին բնագավառում, և նորանոր երկրների հափշտակումը, յուրացումն ու կեղեքումը՝ արտաքին բնագավառում։*

*Կրասսոսի մասին Պլուտարքոսը գրում է, թե «Հռոմեացիների պնդմամբ Կրասսոսի բազմաթիվ բարեմասնությունների փայլը նսեմանում էր նրա մեկ արատի՝ ընչաքաղցության պատճառով։ Կարծում եմ, սակայն, որ այդ արատը. գերազանցելով նրա մնացած արատներին, պարզապես ստվերում էր պահում դրանք»*[1]։

*Կրասսոսն ուներ նաև խոշոր զորավար լինելու հավակնություն և նրա այդ մոլուցքին հագուրդ չէր տվել Սպարտակի ապստամբության ճնշումը, որ նա կատարել էր եզակի դաժանությամբ։ Նա տենչում էր արտաքին նվաճումների, որոնք միաժամանակ իր կարողությունն ավելացնելու լավագույն միջոց էին հայթայթում նրան։*

1 *Plut.*, Crass., 2։

*Պոմպեոսի ցանկությունն էր, հաղթահարելով Լուկուլլոսի և նրա կողմնակիցների դիմադրությունը, օրինական ձևավորում տալ Արևելքում տնօրինած իր գործողություններին, որոնք մասամբ (Տիգրանի հետ կնքած պայմանագիրը. Ասորիքի՝ հռոմեական պրովինցիայի վերածումը և այլն) վերը բնութագրվեցին։*

*Նորընտիր կոնսուլները երկարաձգեցին Կեսարի կառավարչության ժամկետը՝ Գալլիայում, և իրենց համար հնգական տարով նախատեսեցին պրոկոնսուլական նահանգները (Պոմպեոսին՝ Իսպանիան, Կրասսոսին՝ իր փափագած Ասորիքը)*[2]։

Կրասսոսը Ասորիքում։ *Կրասսոսին այստեղ հրապուրում էր ոչ միայն կեղեքմամբ ու կաշառակերությամբ հարստություն դիզելու հնարավորությունը, որ ստանում էր ամեն մի հռոմեական նահանգապետ, այլ դրանից շատ ավելի՝ պարթևների դեմ արշավանք կազմակերպելու ծրագիրը, որ նա վաղուց ի վեր փայփայում էր։ Պարթևների հարստության մասին հրաշքներ էին պատմում։ Բայց Կրասսոսը սրանով էլ չէր բավարարվում։ Նա երազում էր Ալեքսանդրի հետքերով հասնել «մինչև բակտրիացիները, հնդիկները և նրանցից այն կողմ գտնվող ծովը»*[3]։

*Կրասսոսը Ասորիք է ժամանում 54 թվականի գարնանը և Գաբինիոսից ընդունում զորքերի հրամանատարությունը։ Ծերակույտը դեմ էր պարթևների հետ պատերազմ սկսելուն։ Կրասսոսը, սակայն, ստացավ իր ընկերակից-եռապետների քաջալերանքը և այդ բավական էր, որպեսզի նա նույն տարին ծավալեր նախնական-հետախուզական բնույթի որոշ ռազմական գործողություններ։ Կրասսոսն անցնում է Եփրատը՝ պարթևների տերության սահմանը, ետ շպրտում սատրապ Սիլլակի փոքրաքանակ զորքը և գրավում մի քանի քաղաքներ։ Այս չնչին հաջողությունը Կրասսոսը բավարար համարեց՝ զորքին թույլ տալու իրեն «իմպերատոր» հայտարարել*[4]*։ Այնուհետև, նա կայազորներ թողնելով, քաշվում է Ասորիք՝ ձմեռելու և հիմնական արշավանքը նախապատրաստելու։ Դրամ հայթայթելու նպատակով նա կանգ չառավ տաճարներ կողոպտելու առջև*[5]։

*Գարնան կողմը ժամանեցին պարթևական թագավոր Օրոդեսի դեսպանները, նպատակ ունենալով շոշափելու Կրասսոսի մտադրությունները։ Կրասսոսը հայտարարում է, թե պատասխանը կտա Տիգրիսյան Սելևկիայում (այսինքն՝ պարթևներին նվաճելուց հետո)։ Դեսպանը նկատում է, թե ավելի շուտ իր ձեռքի ափին մազեր կբուսնեն, քան Կրասսոսը կտեսնի Սելևկիան*[6]։

---

2 *Տե՛ս A. Heuss*, Römisehe Geschichte, Braunschweig, 1960, *էջ 192 և հաջ.։ Հանրապետական Հռոմի գերագույն պաշտոնյաները, զույգ կոնսուլները իրենց կառավարման տարին ավարտվելուց հետո ուղարկվում էին յուրաքանչյուրը մի առանձին պրովինցիա կառավարելու և անվանվում պրոկոնսուլներ. իրենց դիրքը սրանք սովորաբար օգտագործում էին կոնսուլության ժամկետում արած ծախսերը բազմապատիկ հատուցելու համար։*

3 *Տե՛ս Plut.*, Crass., *16։*

4 *Տե՛ս նույն տեղում, 17։*

5 *Տե՛ս N. Debevoise*, A political history of Parthia, Chicago. *1938, էջ 81 և հաջ.։*

6 *Տե՛ս Plut.*, Crass., *18։*

*Նույն այդ ժամանակները Կրասսոսին այցելության է գալիս հայոց Արտավազդ թագավորը, 6000-անոց հեծյալ դրանիկ գնդի ուղեկցությամբ*[7]։

**Հայերի նախնական կողմնորոշումը:** *Իր նախորդ պատմության ընթացքում Հայաստանը պայքարել էր պարթևների դեմ՝ փոփոխական հաջողությամբ (մ. թ. ա. II դարի վերջերին՝ հօգուտ, իսկ Տիգրանի օրոք՝ ի վնաս պարթևների)։ Պայքարել էր և Հռոմի դեմ, բայց շատ ավելի աննպաստ վախճանով։ Սակայն կարևորն այն է, որ պայքարել էր մերթ մեկի, մերթ մյուսի դեմ, և երբեք չէր եղել այնպիսի իրադրություն, որ Հայաստանը սեղմված լիներ այդ երկու ուժերի միջև։*




Արտավազդ Բ–ի դրամներից

*Եթե Արտավազդը չգնար Կրասսոսի մոտ և անցներ պարթևների կողմը, կնշանակեր, որ նա համոզված է կամ գոնե ենթադրում է, թե պարթևները ապագա պատերազմում հաղթող կհանդիսանան։ Իսկ հայերը, Արտավազդը, ավելի շատ հակառակ համոզմունքին պիտի լինեին, ելնելով մոտիկ անցյալի իրադարձություններից, որոնց ընթացքում Հռոմը դրսևորել էր իրեն որպես անպարտելի ուժ։ Ուրեմն, պետք էր գնալ, որ միաժամանակ նշանակում էր՝ միանալ հռոմեացիներին։*

*Որ Արտավազդին այսպիսի բևեռացած, սև ու սպիտակ, «կամ՝ կամ» ձևով էր ներկայանում իրադրությունը, այդ մասին պարզորոշ վկայում է նրա մշակած այն ծրագիրը, որ նա ներկայացրեց Կրասսոսին։ Պետք է ասել, որ Արտավազդի ցուցաբերած մոտեցումը այս ծանր խնդրին՝ նշանակալից չափով դիվանագիտական չէր։ Բայց այստեղ պատճառը ամենևին Արտավազդի դիվանագիտական ունակությունների պակասը չէր (նա դեռ կդրսևորի դրանք Անտոնիոսի արշավանքի կապակցությամբ)։ Պատճառն այն էր, որ Հայաստանը,*

*7 Կրասսոսի ու Արտավազդի փոխհարաբերությունները և Կրասսոսի արշավանքի մանրամասնությունները հայտնի են Պլուտարքոսի գրչին պատկանող՝ Կրասսոսի կենսագրությունից։*

հայ ժողովուրդն ինքը դեռ կռանի և սալի միջև ընկածի դժվարին քաղաքականությունը վարելու պատմական փորձ չուներ։

Արտավազդի ծրագիրը։ *Արտավազդի առաջարկները հիմնականում երկուսն են, և երկուսն էլ վկայում են, որ Արտավազդը լուրջ վճիռ էր կայացրել իր կողմնորոշման հարցում*[8]։

*ա) Ի հակադրումն Կրասսոսի ծրագրի, այն է՝ արշավել պարթևների դեմ Միջագետքի տափաստանների ու անապատների միջով, Արտավազդը գտնում էր, որ ներխուժումը պիտի կատարել Հայաստանի վրայով՝ հռոմեական բանակը հեռու պահելու պարթևական բանակի հիմնական ուժը կազմող հեծելազորի գործողությունների համար նպաստավոր տափարակ վայրերից և Հայաստանն ապահովելու պարթևների պատասխան հարվածից։*

*բ) Արտավազդը ի հավելումն իր հետ բերած 6000 հեծյալների, Կրասսոսին առաջարկեց ես 10.000 հեծելազոր և 30.000 հետևակ, այսինքն՝ նա հռոմեական զորավարի տրամադրության տակ էր դնում Հայաստանի զորքերի մի ստվար մասը։*

*Իր այս առաջարկներով Արտավազդը փաստորեն հիմնովին լծվում էր հռոմեական ռազմական կառքին։ Հիրավի, ուրիշ բան չի կարող նշանակել հռոմեական զորքը Հայաստանի տերիտորիա մտցնելը և հայկական զինված ուժերի շուրջ կեսը նրան միացնելը։*

*Սակայն այս անգամ բախտը ժպտաց Արտավազդին, հանդիման հանելով նրան իր հռոմեական գոռոզության մեջ կարծրացած ու բթացած այնպիսի մեկին, որպիսին էր Մարկոս Կրասսոսը։ Արտավազդը իմացավ Ասորիքում, որ պատերազմն սկսվել է առանց Հռոմի ծերակույտի համաձայնության, ուրեմն և իր ու Հայաստանի՝ այդ պատերազմին մասնակցելու անհրաժեշտությունը կախված է միայն Կրասսոսի հզորության աստիճանից։ Նա տեսավ, որ այդ ուժերը այնքան էլ ահավոր չեն, որ արշավանքն ընդհանրապես վատ է նախապատրաստված։ Եվ. վերջապես, համոզվեց, որ ինքը՝ Կրասսոսը, ապիկար մարդ է, անընդունակ իր ծրագրածը իրագործելու, անչափ ինքնահավան, թշնամուն թերագնահատող, բարեկամների հետ հաշվի չնստող։ Նա տեսավ, որ արշավանքի բոլոր հնարավոր երթուղիներից Կրասսոսն անդառնալիորեն ընտրել է ամենավտանգավորն ու աղետաբերը՝ տափաստանների միջով, ուր նրա զորքին հետամուտ էր լինելու ոչ միայն պարթևների այրուձին, այլև սովն ու ծարավը։*

*Պետք է կարծել, որ Արտավազդի մտադրությունների և ընդհանրապես տվյալ պատերազմի ու նրա հեռանկարների մասին նրա պատկերացումների բեկումը տեղի ունեցավ հենց այստեղ, արշավանքի իր ծրագիրը Կրասսոսի կողմից մերժվելուց հետո։ Հակառակ դեպքում Արտավազդը կամ պիտի մնար Կրասսոսի բանակում իր հետ բերած գնդի հետ և մասնակցեր արշավանքին, կամ հեռանալու դեպքում՝ անհապաղ ուղարկեր խոստացած զորքերը։ Այնինչ Արտավազդը թողեց ու հեռացավ Հայաստան, առկախ թողնելով իր խոստացած զորքի ուղարկման ժամկետը։*

---

8 *Տե՛ս Plut.*, Crass., *19*։

Կրասսոսը կարծես թե մեծ նշանակություն չտվեց դրան, իր հույսերը կապելով հռոմեական լեգեոնների և մյուս դաշնակիցների հետ, որոնցից մեզ հասել են արաբ Ալքաուդոնիոսի և Եդեսիայի արքա Աբգարի անունները[9]։

**Կրասսոսի արշավանքի սկիզբը։** 53 թվականի գարնանը Կրասսոսն անցավ Եփրատը Զևգմայի մոտ, ունենալով 42 հազար զինվոր, որոնցից 4 հազարը՝ այրուձի, նույնքան թեթևազեններ. մնացածը հռոմեական լեգեոններն էին կազմում[10]։ Նրա օգնականներից Կասսիոսը (հետագայում Հուլիոս Կեսարին սպանողներից մեկը) ունակ զինվորական, խորհուրդ էր տալիս գործել առանց շտապողականության, ավելի տեղեկություններ ձեռք բերել հակառակորդի ուժերի քանակի և բնույթի մասին և այլն, բայց Կրասսոսն անդրդվելի էր։

Պլուտարքոսի պատմելով, երբ հռոմեական բանակն արդեն բավական խորացել էր դեպի չոր տափաստանները, «ժամանեցին հայոց Արտավազդի պատվիրակները և պատմեցին, թե ինչ դժվարության մեջ է նա, ստիպված լինելով պայքարել իր երկիր ներխուժած Օրոդեսի դեմ։ Հնարավորություն չունենալով օգնություն ուղարկել Կրասսոսին, նա խորհուրդ էր տալիս կամ թեքվել իր ճանապարհից, միանալ հայերին և ընդհանուր ուժերով պայքարել Օրոդեսի դեմ, որ լավագույնը կլիներ, և կամ առաջ ընթանալու դեպքում, ճամբար զարկել միայն բարձունքների վրա, խուսափելով այրուձիի հարձակման համար նպաստավոր վայրերից։ «Կրասսոսը, սակայն,— շարունակում է Պլուտարքոսը,— զայրույթով ու անխոհեմությամբ լի, գրավոր պատասխան չտվեց և հրամայեց հայտնել միայն, թե այժմ ժամանակ չունի Հայաստանի համար, բայց հետո կգա և Արտավազդի հետ հաշիվ կտեսնի նրա դավաճանության համար»[11]։

Կրասսոսին ուղարկած այս դեսպանությունը թերևս Արտավազդի վերջին փորձն էր՝ հետևելու իր նախապես մշակած ծրագրին և կամ դիվանագիտական քայլ՝ հռոմեացիների ապագա մեղադրանքներից իրեն ու Հայաստանը ապահովագրելու ուղղությամբ։

Մինչ այդ, Օրոդեսը, անշուշտ, տեղյակ լինելով հռոմեացիների ուժերի քանակին, իր զորքերը երկու մասի էր բաժանել և մեկը՝ այրուձիի գերակշռությամբ, ուղարկել Կրասսոսի դեմ, հրամանատարությունը հանձնելով Սուրեն զորավարին, որը չնայած երիտասարդ, բայց փորձված ռազմիկ էր։ Մյուս մասը՝ հետևակի գերակշռությամբ, Օրոդեսը անձամբ վարեց Հայաստան և սկսեց ասպատակել երկիրը[12]։ Պարթևների Հայաստան ներխուժելու անմիջական պատճառը՝ այն դեպքում, երբ Արտավազդը դեռ չէր հասցրել մասնակցել Կրասսոսի արշավանքին, դժվար է որոշել։ Հավանաբար ճիշտ է այն կարծիքը[13], որ նրանք տեղեկացել էին Արտավազդի այցելությանը և որոշել նախահարձակ լինել։ Ինչևիցե, այս փաստը մի ավելորդ անգամ ամրապնդում է այն դրույթը, որ չեզոքությունը Հայաստանի համար անիրագործելի մի բան էր։

Եթե այդպես է, ապա Արտավազդի միակ ճիշտ և բնական քայլը պիտի լի-

---

[9] Տես N. Debevoise, A Political History of Parthia, էջ 80։
10 Տե՛ս նույն տեղում, էջ 83։
11 Plut., Crass., 22։
12 Տե՛ս Dio, XL, 16, 1—3։
13 Տե՛ս Հրանդ Արմեն, Անկում Արտաշեսյան հարստության, Պեյրութ, 1967, էջ 47։

նիր փորձել խաղաղեցնել ներխուժած պարթևներին, համաձայնության գալով նրանց հետ։ Օրոդեսը, որ Հայաստանի հետ պատերազմելու կամ այն նվաճելու հատուկ ծրագրեր չէր որոճում, առիթ չուներ չընդառաջելու հայերի այդ ձգտմանը, նկատի ունենալով, բացի ներկա իրավիճակից, նաև ապագայի փոթորիկները, որոնց մեջ Հայաստանի դիրքավորումը կարող էր վճռող դեր խաղալ։

Այսպիսի պարագաներում հայերի և պարթևների միջև համաձայնություն կնքվեց, որը իրերի տրամաբանական ընթացքով վերաճեց դաշնակցության։ Վերջինս էլ ամրապնդվում է դինաստիական ամուսնությամբ՝ Արտավազդի քույրը կնության է տրվում պարթևական թագաժառանգ Բակուրին։

Հարսանիքով պսակված դաշնագրի կնքումը, ինչպես պատմում է Պլուտարքոսը, ուղեկցվել է փոխադարձ հրավերներով ու խնճույքներով։ Այս բոլորը տեղի էր ունենում, իհարկե, հայկական հողի վրա, ամենայն հավանականությամբ՝ Արտաշատում։ Խնճույքներից մեկի պահին, երբ ճաշասեղաններն արդեն հավաքված էին և երկու արքաներն էլ ու նրանց շրջապատը զմայլվելիս էին լինում տրալլացի Յասոն ողբերգակի և նրա խմբի ներկայացրած՝ Եվրիպիդեսի «Բաքոսուհիներով», ներս է մտնում Սիլլակ սատրապը և դահլիճի մեջտեղը նետում Մարկոս Կրասսոսի գլուխը[14]։ Մինչդեռ Արտավազդն ու Օրոդեսը տոնում են իրենց դաշինքը, ռազմադաշտում տեղի էին ունեցել մեծ իրադարձություններ։

**Խառանի ճակատամարտը**: Մերժելով Արտավազդի խորհուրդը, Կրասսոսը շարունակել է ճամփան և հասել Միջագետքի Խառան (Կառռա) քաղաքի մոտերքը։ Նահանջ ձևացնող պարթևների համար տեղանքը բարենպաստ էր և Սուրեն զորավարը որոշում է կանգնեցնել հռոմեացիների երթը և ճակատամարտ տալ[15]։ Կրասսոսը իր ռազմական կարգերի մի թևը հանձնարարում է Կասիոսին, իսկ մյուսը՝ իր որդի Պուբլիոսին, իրեն վերապահելով կենտրոնը։ Զարմանալի փաստ է, որ այդքան ժամանակ իր հետապնդած պարթևական ուժերի մասին Կրասսոսը պարզ պատկերացում չուներ ոչ քանակի և ոչ էլ տակտիկայի առումով։ Փաստորեն նա ճակատ էր տալու անհայտ թշնամու դեմ, ինքը, սակայն, շատ լավ հայտնի լինելով նրան։

Այդ մասին է վկայում ճակատամարտի ողջ ընթացքը։ Նախապես պարթևները լաթեր ու կաշիներ ձգելով իրենց զենք ու զրահի վրա, մեղմել էին նրանց փայլը և այն տպավորությունը գործել հակառակորդի վրա, թե փոքրաքանակ են։ Այնուհետև, մոտենալով մինչև նետընկեց հեռավորության վրա, սկսում են նետերի տարափ տեղալ և նոսրացնել հակառակորդի շարքերը։ Կրասսոսի սպասածին հակառակ, այդ տարափը ոչ դադարում է, ոչ իսկ թուլանում՝ նետերի սպառման պատճառով, որովհետև պարզվում է, որ նետաձիգները անընդհատ լրացնում են իրենց պաշարները թիկունքում շարված ուղտերի բեռներից։ Միևնույն ժամանակ պարթևները սկսում են շրջանցել հռոմեական զորքի թևերը։ Կրասսոսը, տեսնելով այս, հրամայում է իր որդուն՝ Պուբլիոսին, հարձակում սկսել իր ղեկավարած թևով։ Պարթևները նահանջի, ապա

14 Տե՛ս Plut., Crass., 33։

15 Ճակատամարտի նկարագրությունը տե՛ս Plut., Crass., 23—31։

և փախուստի ցույց են անում, և ոգևորված երիտասարդը նետվում է նրանց ետևից իր չորս հազարանոց ջոկատով։ Սակայն բավական տարածություն անցնելուց հետո, պարթևները ետ են դառնում և շրջապատում այդ ջոկատը։ Մեծ մասը սպանվում է, ներառյալ՝ Պուբլիոս Կրասսոսը, որն իր զինակրին հրամայում է սուրը իր կողը մխրճել. մի մասն էլ գերի է ընկնում։ Պուբլիոսի գլուխը՝ աշտեի վրա ցցած, տանում են ցուցադրելու Կրասսոսին և նրա բանակին։

Հռոմեացիները, բոլորովին հուսալքված, սկսում են նահանջը, որը տևում է մի քանի օր։ Այդ միջոցին պարթևները անընդհատ հարվածներով մաշում էին թշնամու զորքը և ի վերջո շրջապատում ու գերի են վերցնում նրա մեծ մասը՝ Կրասսոսի հետ միասին։ Մի փոքր մասին՝ Կասսիոսի գլխավորությամբ, հաջողվում է փախչել ու վերադառնալ Ասորիք։ Արշավանքի ընթացքում հռոմեացիները 20 հազար զոհ տվին և կորցրին լեգեոնների արծվեկիր դրոշները։

Գլխատելով իր ձեռքն ընկած Կրասսոսին, Սուրեն զորավարը նրա գլուխն ուղարկում է Օրոդեսին, որը և ստանում է այն Հայաստանում՝ խնճույքի պահին։

Իր գոհունակությունը Սուրենին պարթև արքան արտահայտում է առատ նվերներով։

Սակայն այդ գոհունակության զգացումը շուտով նախանձի և երկյուղի փոխվեց Սուրեն զորավարի նկատմամբ։ Վերջինս ոչ միայն տաղանդավոր ռազմիկ էր, այլև թագավորական Արշակունի տոհմից հետո, իր նշանակությամբ ու հարստությամբ երկրորդ՝ Սուրեն տոհմի ներկայացուցիչ, մի տոհմ, որին վերապահվում էր արքային թագադրելու պատիվը[16]։ Սուրենը, հիրավի, հրճված իր տարած հաղթանակով, Տիգրիսի ափի Սելևկիայում հաղթահանդես է կազմակերպում ի զավեշտ Հռոմում ընդունված նման հանդեսների, որի ժամանակ Կրասսոսի փոխարեն ցուցադրում է նրա նման մի հռոմացու՝ պարթևական կանացի զգեստով։ Թափորը եզրափակում է Սելևկիայի պոռնիկների բազմությունը։

Օրոդեսին դուր չի գալիս Սուրենի վաստակած փառքը և նրա վարվելաձևը։ Թերևս, նա վախենում էր, չլինի թե Սուրենը իր թագադրողի իրավունքն օգտագործի ինքն իր գլխին թագ դնելու համար, ուստի սպանել է տալիս իր զորապետին[17]։

Հռոմի առաջին փորձը՝ նվաճել պարթևներին, այսպիսով, ավարտվում է ահավոր պարտությամբ, որի մասին սոսկումով պիտի հիշեին հռոմեացիների մի քանի սերունդներ։ Այն ցույց տվեց նաև, որ Հայաստանի դիրքը վճռական նշանակություն ուներ Արևմուտքի և Արևելքի բախումներում։

## 2. ՊԱՐԹԵՎԱ-ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՇԻՆՔԸ՝ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ասորիքի ապստամբությունը 51—50 թվականներին:** Հռոմեացիների հարձակմանը հաջորդեց պարթևների հակահարձակումը։ Զորքի գլուխ էր կանգնած թագաժառանգ Բակուրը։ Բայց որովհետև սա տակավին երիտասարդ ու

16 Տե՛ս Plut., Crass., 21։

17 Տե՛ս Plut., Crass., 32, 33։

անփորձ էր, ապա նրան, որպես խորհրդատու, կցվեց ոմն Վասակ (Օսակես) զորավար։ Բացառված չէ, որ սա հայ է եղել և իր հետ ունեցել է հայկական զորքերի մի ջոկատ։ Այդպիսի ենթադրության է մղում Կիկերոնի այն վկայությունը, ըստ որի Ասորիք արշաված պարթևական ռազմական ուժերի կազմում կային և դաշնակիցների զորքեր, իսկ պարթևների համար տվյալ պահին ավելի մոտիկ դաշնակիցներ, քան հայերն ու Արտավազդը՝ թագաժառանգ ու զորահրամանատար Բակուրի աները, դժվար է պատկերացնել։ Դաշնակիցների թվում թերևս կային և արաբներ[18]։

51 թվականի օգոստոսին նրանք հասան Եփրատի գետանցը, սեպտեմբերին անցան գետը և մտան Ասորիք։ Մյուս կողմից, երևի հռոմեացիների ուժերը ցրատելու և նրանց ուշադրությունը շեղելու նպատակով, Արտավազդը Հայաստանի արևմտյան սահմանի վրա ռազմական ցույց է կազմակերպում, իբր մտադիր է ներխուժել Կապադովկիա[19]։ Թեև ներխուժումը տեղի չունեցավ, բայց այդ հանգամանքն ապացուցում է, որ հայերը իսկապես մասնակից էին արշավանքին։

Պարթևների մուտքն Ասորիք կենդանություն հաղորդեց պարթևասեր տարրերին. բնակչությունը հուսալով ազատվել հռոմեական իշխանությունների բռնություններից և կեղեքումներից՝ ուրախությամբ էր ընդունում նրանց[20]։

Սրանք կտրեցին-անցան Կոմմագենեն և պաշարեցին Անտիոքը, որտեղ գտնվում էր Կասսիոսը։ Պարթևների առանձին զորամասեր թափանցեցին Կիլիկիա։ Սակայն ակներևաբար, այս արշավը սոսկ ասպատակության բնույթ էր կրում։ Ավարի առնելով Անտիոքի շրջակայքը, նրանք դադարեցրին պաշարումը և շարժվեցին դեպի Անտիգոնիա քաղաքը[21]։ Կասսիոսը, դուրս գալով Անտիոքից, հետապնդում էր նրանց, կիրառելով պարթևական նահանջ-հակահարվածի տակտիկան։ Մարտերից մեկում սպանվեց Վասակ զորավարը։ Բակուրը մնաց ձմեռելու Ասորիքում[22]։

Կիկերոնը հայտնում է, որ 50 թվականի գարնանը Ասորիքում լուրեր էին պտտվում ռազմական գործողությունների ծավալման մասին, թե իբր հռոմեացիներին գլխավորելու համար Արևելք պիտի ժամանի ինքը՝ Կեսարը կամ Պոմպեոսը։ Սպասվում էր և Օրոդեսի գալուստը։ Այս բոլորը, սակայն, տեղի չունեցավ։ Ընդհակառակը, ամռանը Բակուրը հետ կանչվեց Ասորիքից[23]։

**Հուլիոս Կեսարը և արևելյան նոր արշավանքի ծրագիրը:** Կեսարի կամ Պոմպեոսի գալստյան լուրերը սոսկ խոսակցություններ էին, որոնց հիմքը թերևս պարթևներից ունեցած վախն էր, իսկ իրականում այդ երկու նախկին դաշնակիցները միմյանց դեմ ահեղ պայքարի էին նախապատրաստվում։

---

18 Տես *Cicero*, Epist. ad fam., XV, 9, 2; 4, 7; Epist. ad Att., V. 20, 3; Dio, XL 28։ Կիկերոնն այդ տարիներին հռոմեական պրովինցիա Կիլիկիայի նահանգապետն էր և նրա հաղորդած տվյալները ոչ միայն ժամանակակցի, այլև ականատեսի վկայություններն են։

19 Տես *Cicero* Epist. ad fam., XV, 3, 1:

20 Տես *N. Debevoise*, A. Political History of Parthia, էջ 30։

21 Տե՛ս *Malalas*, *VIII*, *201*։

22 Տես *N. Debevoise*, A Political History of Parthia, էջ 101 և հաջ.։

23 Տես *Just*., XLIII, 4, 5:

Ծերակույտի՝ իր համար աննպաստ մի որոշումից կառչելով, Կեսարը 49 թվականի սկզբին՝ իր բանակի գլուխ անցած, շտապում է Հռոմ։ Օպտիմատների պարագլուխները, Պոմպեոսի գլխավորությամբ, փախչում են Հունաստան և պատրաստվում պատերազմի։ Նույն տարվա վերջերին Հունաստանի ափն է իջնում Կեսարը և շարժվում պոմպեականների դեմ։ 48 թվականի հունիսի 6-ին Փարսալի մոտ տեղի ունեցած ճակատամարտը ջախջախիչ պարտություն է բերում Պոմպեոսին (որը փախչում է Եգիպտոս և այնտեղ սպանվում), իսկ Կեսարին դարձնում է Հռոմի միանձնյա ղեկավար։ Քիչ անց Կեսարը Փոքր Ասիայում ճնշում է Միհրդատ Զ-ի որդի Փառնակի փորձը՝ վերականգնել և ընդլայնել Պոնտոսի թագավորությունը։

Պարթևները հեռացել էին Ասորիքից, բայց նրանց ներխուժման վտանգը դարձյալ կախված էր Հռոմի արևելյան նահանգների վրա։ Քաղաքացիական պատերազմի ժամանակ պարթևները ցուցաբերել էին հակակեսարական տրամադրություն։ Հայաստանն օգնել էր Պոմպեոսին, ուղարկելով մի զորամաս, որը կուսակալ Մեգաբաթեսի հրամանատարությամբ մասնակցեց Փարսալի ճակատամարտին[24]։ Հայտնի էր, որ Պոմպեոսը պարտությունից հետո մի պահ մտադրություն ուներ պատսպարվել պարթևների մոտ[25]։ Վերջապես, Կրասսոսի պարտությունը դեռ չհատուցված էր մնում և նրա լեգեոնների արծվեկիր դրոշակները տակավին պարթևների մոտ էին։ Մի խոսքով, դեպի արևելք արշավելու բավական պատճառներ կային։

Կեսարը իր այլևայլ ձեռնարկումների թվում, սկսեց եռանդագին պատրաստվել նաև պարթևական արշավանքին։ Նրա քրոջ որդի Օկտավիանոսը (ապագա Օգոստոս կայսրը) ուղարկվել էր Հունաստան՝ պատրաստվելու առաջիկա պատերազմին։ Այստեղ կազմակերպվում էր հատուկ բանակ, ուսումնասիրվում էին առաջիկա արշավի պայմանները, մշակվում ծրագրերը։ Արդեն հավաքվել էին երկու տասնյակից ավելի լեգեոններ, որոնք իրենց հարվածը այս անգամ պիտի իրականացնեին Հայաստանի վրայով[26]։ Մի խոսքով, նախապատրաստությունները կատարվում էին կեսարյան թափով ու մանրակրկիտությամբ։

Դրանք արդեն թևակոխել էին իրենց եռուն շրջանը, և պարթևներին ու Հայաստանին սկսում էր մերձենալ փորձության ժամը, երբ Կեսարը Հռոմում սպանվեց մի խումբ դավադիր հանրապետականների կողմից (44 թվականի մարտի 15-ին)։ Սկսված քաղաքացիական նոր պատերազմը հռոմեացիներին առժամանակ հեռու պահեց արևելյան գործերից։

**Երկրորդ եռապետությունը. Մարկոս Անտոնիոս:** Հանրապետականների պարագլուխներն էին Կեսարի սպանությանը մասնակցած Մարկոս Բրուտոսը և Գայոս Կասսիոսը։ Նրանք իրենց կողմնակիցների հետ հեռացել էին Հունաստան։ Կեսարականների առաջնորդները՝ Մարկոս Անտոնիոսը և Օկտավիանոսը, ներգրավելով մի երրորդի, Մարկոս Լեպիդոսին, կազմեցին մի նոր եռապետություն։

---

24 Տե՛ս App., Bell. civ., II, 71։

25 Տե՛ս Plut., Pomp., 76; App., Bell. civ., II, 83 և այլն։

26 Տե՛ս N. Debevoise, A Political History of Parthia, էջ 106 և հաջ.։

*Վճռական ճակատամարտը հանրապետականների և կեսարականների միջև տեղի ունեցավ 42 թվականի աշնանը Հունաստանի Փիլիպպե քաղաքի մոտ և ավարտվեց կեսարականների հաղթանակով։ Բրուտոսը և Կասսիոսը ինքնասպան եղան։*

*Պետության տերեր դարձած եռապետները այն բաժանեցին իրար մեջ. Անտոնիոսին բաժին ընկավ Արևելքը և Կեսարից ժառանգություն մնացած պարթևական արշավանքի ծրագիրը։*

*41 թվականին Անտոնիոսը Կիլիկիայի Տարսոն քաղաքում հանդիպեց Եգիպտոսի թագուհի Պտղոմյան Կլեոպատրա Է-ին, որին հատուկ կանչել էր այդտեղ՝ պատասխան պահանջելու Կասսիոսին ցույց տված օժանդակության համար։ Սակայն Կլեոպատրան, Տարսոն ժամանելով որպես մեղադրյալ, այնտեղից մեկնեց որպես Անտոնիոսի սիրուհի։ Խելոք, գեղեցիկ ու խորամանկ այդ կինը կարողացել էր հմայել անսանձ կրքերի տեր հռոմեացուն և այսուհետև կարևոր դեր պիտի խաղար նրա քաղաքականության և գործունեության մեջ։ Անտոնիոսը ուղեկցեց Կլեոպատրային նրա մայրաքաղաքը՝ Ալեքսանդրիա*[27]*։*

**Ասորիքի նվաճումը պարթևների կողմից:** *Անտոնիոսը տակավին Ալեքսանդրիայում էր, երբ պարթևները 40 թվականի գարնանը կրկին ներխուժեցին Ասորիք։ Պարթևների զորքն առաջնորդում էին թագաժառանգ Բակուրը, որ արդեն փորձված զորավար էր, և հռոմեացի Քվինտոս Լաբիենոսը*[28]*։ Վերջինս Կասսիոսի և Բրուտոսի գործակիցներից էր։ Պարտությունից հետո նա փախել էր պարթևների մոտ, որտեղ արդեն մեկ անգամ եղել էր որպես հանրապետականների դեսպան՝ պարթևներից օգնություն ստանալու առաջադրանքով։*

*Ասորիքի նահանգապետ Սաքսան պարտության մատնվեց, փախավ Կիլիկիա և այնտեղ սպանվեց։ Բակուրը և Լաբիենոսը բաժանեցին զորքը և արշավեցին առաջինը՝ դեպի հարավ, Միջերկրականի ափերի երկայնքով, երկրորդը՝ դեպի արևմուտք, Փոքր Ասիայի հարավային եզրով։ Բակուրը գրավում է ամբողջ Ասորիքը և Փյունիկիան, բացառյալ Տյուրոս քաղաքը և հասնում Պտղոմաիս՝ Պաղեստինի սահմանը*[29]*։*

*Բակուրի և նրա գործակից, զորավար Բարզափառնայի հաջորդ գործողությունների մասին, որ կապված են Պաղեստինի հետ, մանրամասն տեղեկություններ են պահպանել Հովսեպոս Փլավիոսը և Մովսես Խորենացին։ Այս դրվագը հատկապես կարևոր է նրանով, որ վկայում է սույն արշավանքին եւ հայկական զորքերի մասնակցության, այսինքն՝ հայ-պարթևական դաշինքի շարունակման մասին։*

*Պաղեստինում այդ ժամանակ քահանայապետ էր Հյուրկանոսը։ Սրա եղբորորդին՝ Անտիգոնոսը, հետամուտ էր նրա պաշտոնին։ Նա դիմում է պարթև ղեկավարներին՝ 1000 տաղանդ և 500 կին նրանց նվիրելու առաջարկով, փոխարենը իրեն Հուդայում թագավոր կացուցանելու պայմանով։ Բակուրն ու Բարզափառնան համաձայնում են այդ առաջարկին։ Պարթևները ավարի են առնում Երուսաղեմը և մոտակայքում գտնվող Մարիսա քաղաքը։ Անտիգոնոսը*

---

27 *Տե՛ս* CAH, X, *էջ 35 և հաջ.* (W. W. Tarn)։

28 *Տե՛ս Just.*, XLII, *4,7*; *Dio*, XLVIII, *25*; *Plut.*, Ant., *28*։

29 *Տե՛ս N. Debevoise*, A Political History of Parthia, *էջ 110 և հաջ.*։

թագավոր է հռչակվում Պաղեստինում։ Հյուրկանոսը գերեվարվում է պարթևների կողմից և բնակեցվում Բաբելոնում[30]։

Հայկական զորքերի մասնակցությունը Ասորիքի նվաճմանը։ Նույն այս իրողությունները պատմում է և Մովսես Խորենացին, ամենայն հարազատությամբ ընդօրինակելով Փլավիոսից, սակայն թույլ տալով մի կարևոր և խիստ հետաքրքրական շեղում։ Ըստ Խորենացու, արշավանքը ոչ թե պարթևական է, այլ պարթևա-հայկական, կազմակերպված հայոց թագավոր Տիգրանի և նրան ժամանակակից պարթևական թագավորի համատեղ ջանքերով. Բարզափռանն հայ նախարար է՝ Բարզափրան Ռշտունի և այլն։ Ըստ այդմ, Հյուրկանոսը՝ հրեաների քահանայապետը, գերավարվում է Հայաստան և ոչ թե Բաբելոն, այն էլ՝ հրեական բնակչության մի զանգվածի հետ միասին, որ բնակեցվում է հայկական քաղաքներում, մասնավորապես Վանում[31]։

Այս բոլորը պատահական չէ։ Փավստոս Բուզանդը, IV դարի կեսերին Շապուհ Բ-ի կողմից հայկական քաղաքների բնակչության տեղահանությունը նկարագրելիս, յուրաքանչյուր քաղաքի համար հիշատակում է առանձին-առանձին հայ և հրեա ընտանիքների թվաքանակը, նշելով, որ նրանք այն հրեաների հետնորդներն են, որոնց իր ժամանակ Պաղեստինացոց երկրից գերեվարել է Տիգրան թագավորը՝ նրանց քահանայապետ Հյուրկանոսի (Փավստոսի մոտ՝ Հյուրկանդոս) հետ միասին, և բնակեցրել հայկական քաղաքներում[32]։ Ակներևաբար Հայաստանում գոյություն է ունեցել Հյուրկանոսի գերեվարման և հարակից խնդիրների վերաբերյալ մի ավանդություն՝ տարբեր Փլավիոսի հաղորդածից, որ արտացոլված ենք գտնում Փավստոսի մոտ և որը հենց Փավստոսի միջնորդությամբ կամ անմիջականորեն դրդել է Խորենացուն կատարել վերոհիշյալ փոփոխությունները, կամ Խորենացու ընկալմամբ, ուղղումները՝ Փլավիոսի պատմածի մեջ[33]։

Հարցն այն չէ, թե որն է պատմականորեն ավելի ճշմարտացի՝ Փլավիոսի վերսիան, թե Փավստոսի մոտ արտացոլվածը։ Փլավիոսի պատմածը տվյալ դեպքում առիթ չունենք կասկածի ենթարկելու։ Խնդիրն է՝ գտնել հայկական վերսիայի առաջացման պատմական հիմքը, և այդ հիմքը Փլավիոսի մոտ իր արտացոլումը չգտած այնպիսի մի երևույթի մեջ է, ինչպիսին էր հայկական զորամասերի մասնակցությունը պարթևների ասորիք-պաղեստինյան արշավանքին (մի բան, որ ենթադրել էր դեռևս Հ. Մանանդյանը), և որպես դրա հետևանք, հրեական բնակչության մի զանգվածի գերեվարությունը Հայաստան՝ նաև Արտավազդի օրոք[34]։

---

30 Տե՛ս Jos Flav., Ant. Jud., XIV, 13, 1 և հաջ.; Bel. Jud., I, 13, 1—11:

31 Տե՛ս Խորենացի, Բ, ԺԹ, Գ, ԼԵ։

32 Տե՛ս Փավստոս, Դ, ԾԵ։

33 Մանրամասն տե՛ս Գ. Սարգսյան, Աղբյուրների օգտագործման եղանակը Մ. Խորենացու մոտ, ԲՄ, № 3, 1956։

34 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н. э.—XV в.н.э.), Ереван, 1930. Ավանդության մեջ թագավոր Արտավազդը փոխարինվել է Տիգրան Մեծով, մի բան, որ դժվար չէ բացատրել Տիգրանի փառքով և ինչպես կատարած գերեվարություններով, այդ թվում՝ հրեաների։

Այսպիսով, հայկական զորքերը, Տիգրանի կատարած հաղթանակից 30 տարի անց, նորից եղան հեռավոր Պտղոմայիս քաղաքի պարիսպների տակ, բայց արդեն ոչ որպես աշխարհակալ տերության բանակներ, այլ սոսկ մի այլ աշխարհակալ տերության դաշնակիցներ։

**Բենտիդիոսի ճակաճարվածը պարթևներին:** Ասորիքում ու Պաղեստինում տեղի ունեցող այս սպառնալից իրադարձությունները վերջապես սթափեցրին տակավին Ալեքսանդրիայում գտնվող Անտոնիոսին և սա շարժվեց դեպի ռազմաբեմ։ Բայց հազիվ հասած՝ նա շտապ լքեց Ասորիքը, Իտալիա մեկնելու համար, որտեղ գործերը ավելի վտանգավոր ընթացք էին ընդունել և պահանջում էին նրա ներկայությունը։ Իր փոխարեն Անտոնիոսը պարթևա-հայկական ուժերի դեմ ուղարկեց իր լավագույն զորավար Բենտիդիոս Բասսոսին։ Սա իր առաջին հարվածը ուղղեց Լաբիենոսի դեմ, ջախջախեց նրա զորքերը Փոքր Ասիայում, գերի վերցրեց նրան ու մահապատժի ենթարկեց[35]։

Բակուրի դեմ նրա ծավալած գործողությունները սկզբում անհաջող էին։ Հռոմեացիների մի զորամաս պարտություն կրեց պարթևական զորավար Փառնապատեսի կողմից։ Սակայն Բենտիդիոսին հաջողվեց նախաձեռնությունը խլել պարթևներից[36]։

39 թվականի սկզբին Բակուրը ժամանակավորապես ետ է քաշում իր զորքերը Ասորիքից, բայց Բենտիդիոսը պարթևների բացակայությամբ էլ մեծ դժվարությամբ էր տիրանում երկրին։ Նրան դիմադրում էր բնակչությունը, որը չէր ցանկանում վերադառնալ հռոմեական կարգերին։ 38 թվականի գարնանը Բակուրը նորից մտնում է Ասորիք։ Սակայն Գինդարոս լեռան մոտ տեղի ունեցած ճակատամարտում հռոմեացիները հաղթանակ են տանում և Բակուրն էլ սպանվում է[37]։

Ավարտելով Ասորիքի վերանվաճումը, Բենտիդիոսը դիմում է Կոմմագենե, որի թագավոր Անտիոքոս Ա-ը, Օրոդեսի աները լինելով, հարել էր պարթևներին, և պաշարում Սամոսատը։ Այստեղ վրա է հասնում Անտոնիոսը, որն Իտալիայում կարգավորել էր իր գործերը և որին ամենևին դուր չէին գալիս իր զորավարի հաջողությունները. ստանձնելով զորքերի հրամանատարությունը, Անտոնիոսը ավարտում է պաշարումը (38 թ.)[38]։

Այնուհետև Անտոնիոսը սկսում է պատրաստվել պարթևական արշավանքին, որն իրականացվեց 36 թվականին։

**Հայաստանը 50—40-ական թվականներին:** Անշուշտ, հարց կծագի, թե որո՞նք էին այն դրդապատճառները, որ Հայաստանին մղում էին մասնակցելու արևմուտքում պարթևների ծավալած ակտիվ քաղաքականությանը, նրանց արշավանքներին ու նվաճումներին։ Պատասխանը առաջին հայացքից պարզ է թվում։ Հայաստանը դաշնակից էր պարթևներին և այդ դաշինքը կնքված լի-

---

35 Տե՛ս Dio, XLVIII, 39—40; Strabo, XIV, 2, 24։

36 Տե՛ս Frontinus, Strateg., II, 57, Dio XLVIII, 41 և այլն։

37 Տե՛ս Dio, XLIX, 25; Plut., Ant., 37: Համեմ. N. Debevoise, A Political History of Parthia, էջ 119 և հաջ.։

38 Տե՛ս Jos. Flav., Ant. Jud., XIV, 15, 8; Bel. Jud., I, 17, 8—9; Plut., Ant., 3, 4։ Խորենացի, Բ, ԻԱ։

նելով պատերազմի պահին, անշուշտ, պետք է նախատեսներ նաև ռազմական փոխօգնություն, այդ թվում հենց Հռոմի դեմ։ Սակայն ճիշտ լինելով հանդերձ, այս պատասխանը ոչ միայն լրիվ չէ, այլև չի ընդգրկում գործի ողջ էությունը։

Իհարկե, Հայաստանը այդ արշավանքներին երբեք չէր մասնակցի միայն դաշնագրի զորությամբ, առանց ներքին դրդապատճառների։ Այդ դրդապատճառները որոնելիս պետք է նախ և առաջ նկատի ունենալ, որ Հայաստանը հելլենիստական տիպի ստրկատիրական պետություն էր, որը ոչ հեռու անցյալում հսկայական տերիտորիալ նվաճումներ էր կատարել և նվաճված երկրներից մեծ եկամուտ էր ստանում՝ հարկեր ու տուրքեր, ստրուկների զանգվածներ, տեղահանված քաղաքային հոծ բնակչություն և այլն։ Եվ այս բոլորը՝ ոչ թե միապետի՝ Տիգրանի քմահաճույքով, այլ բուռն զարգացում ապրող ստրկատիրական հասարակության ներքին պահանջմունքների հետևանքով, իսկ միապետը դրանց միայն արտահայտիչն էր։

Այնուհետև, եկամուտների աղբյուրները խիստ կրճատվել էին, բայց պահանջմունքները՝ մնացել։ Եվ ահա Արտավազդի օրոք ևս դրանք պետք է որ իրենց զգացնել տային և բավարարվեին ըստ հնարավորության, այսինքն՝ մասնակիորեն, ասենք, պարթևների ձեռնարկումներին միանալու և եկամտի համապատասխան բաժինը ստանալու միջոցով։ Այդ են ակնարկում Արտավազդի օրոք հրեական ազգաբնակչության մի զանգվածի Հայաստան տեղափոխելու մասին վերը ներկայացված տվյալները։ Դրանք միաժամանակ լուսաբանում են Արտաշես Ա-ի օրոք սկսված և Տիգրան Բ-ի ժամանակ մեծ թափ ու ծավալ ստացած գերեվարությունների քաղաքականության հաջորդականությունը և վկայում, որ դա ուներ դարավոր հիմքեր, այսինքն՝ կապված էր երկրի և հասարակության պահանջմունքների հետ։

Դարաշրջանին վերաբերող առաջին հայացքից հարուստ թվացող աղբյուրները իրականում չափազանց միակողմանի են։ Դրանք լույս են սփռում բացառապես այն անցքերի ու երևույթների վրա, որոնք կապված են Հռոմի պատմության հետ։ Մնացածը թանձր մշուշի մեջ է։ Հայաստանի այս շրջանի ներքին կյանքի մասին չի պահպանվել ոչ մի տվյալ։ Մինչդեռ երկիրը շարունակում էր իր զարգացումը, 69—66 թվականների հայ-հռոմեական պատերազմներից հետո Հայաստանի հողի վրա ռազմական լուրջ ընդհարումներ չէին եղել։ Այս խաղաղ տասնամյակներում երկիրը պետք է բարգավաճեր ու շենանար, առաջանային նոր քաղաքներ, ծաղկեին հները։ Այս մասին ոչինչ հայտնի չէ, չհաշված մի աղոտ ակնարկ, մի տեղանուն՝ «Արտավազդական», որը թույլ է տալիս մտածելու Արտավազդի օրոք հիմնադրված մի քաղաքի մասին[39]։

Պետք է շարունակվեր և մշակույթի զարգացումը։ Որ հելլենիստական մշակույթի Հայաստանում Տիգրանի օրոք սկսված տարածումը շարունակվել է նաև Արտավազդի ժամանակ, այդ մասին առկա են Պլուտարքոսի ուղղակի տվյալները՝ դարձյալ հաղորդված Հռոմի պատմության կապակցությամբ։ Արտավազդը չի բավարարվել, Տիգրանի նման, իրեն կրթված ու ստեղծագործ հույներով շրջապատելով, այլ ինքն էլ է դիմել գրչի, հեղինակելով ճառեր, ող-

39 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 41։

բերգությունններ ու պատմական երկեր, որոնցից մի մասն ընթերցվում էր դեռ Պլուտարքոսի ժամանակ (մ. թ. II դարում)[40]։ Սրանց բովանդակության մասին կարելի է միայն ենթադրություններ անել[41], բայց բավականաչափ պերճախոս է ինքը փաստը, որից համենայն դեպս, հետևում է, որ Արտավազդը այդ գործում միայնակ լինել չէր կարող, ուրեմն և նրա շուրջը ստեղծված պիտի լիներ համապատասխան մթնոլորտ, թեկուզ և արքունիքի նեղ սահմաններում։

Ըստ որոշ տվյալների, Արտավազդի օրոք շարունակել է գոյություն ունենալ թագավորական նախնիների պաշտամունքը՝ որպես պետության կողմից հովանավորվող երևույթ։ Այդ պաշտամունքը, ինչպես տեսանք, Տիգրան Բ-ի ժամանակ լրացվել էր նաև իշխող թագավորի անձի աստվածացմամբ և պաշտամունքով, ըստ որում Տիգրանը նույնացված պիտի լիներ Վահագն-Հերակլես աստծո հետ։ Արտավազդը թերևս այդ յուրատեսակ «քաղաքական կրոնում» նույնացվել է Միհր աստծո հետ[42]։

## 3. ԱՆՏՈՆԻՈՍԻ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Իրադրությունը արշավանքի նախօրեին:** *Իրադրությունն այս անգամ էապես այլ էր և ավելի բարդ, քան Կրասսոսի արշավանքի նախօրեին։ Խնդիրն այն է, որ Անտոնիոսի ծրագրած երթուղին միանգամայն տարբեր էր Կրասսոսի ընտրածից։ Հայտնի է, որ Կեսարի ամբողջ դիվանը նրա մահվանից հետո ընկել էր Անտոնիոսի ձեռքը։ Նրան էր անցել նաև Կեսարի կազմած պարթևական արշավանքի ծրագիրը, չհաշված այն, որ ինքն էլ գործուն մասնակցություն էր ունեցել դրա մշակմանը։ Պարզ է, որ այժմ նա այն որդեգրելու էր[43]։*

*Ըստ այդ ծրագրի, արշավանքը ինչպես արդեն նշվել է, պիտի կատարվեր Հայաստանի վրայով։ Այսպիսով, հռոմեական ռազմական միտքը, ի դեմս նրա ամենափայլուն ներկայացուցիչներից մեկի՝ Կեսարի, այս խնդրում ի վերջո հանգել էր նույն այն գաղափարին, որ իր ժամանակին հղացել ու Կրասսոսին էր հաղորդել Արտավազդը։ Բացառված չէ, որ Կեսարի ծրագրի մշակման ժամանակ այդ խորհուրդը իր դերն է ունեցել։*

*Նորից Արտավազդը կանգնած էր երկընտրանքի առջև, բայց պայմանները տարբեր էին. նախ Հայաստանն այժմ դաշնակից էր ոչ թե Հռոմի, այլ պարթևների և այն էլ՝ 53 թվականից, այսինքն ավելի քան մեկ ու կես տասնամյակ։ Եվ ոչ թե անվանական դաշնակից, այլև պարթևների հետ միասին ծավալել էր ռազմական գործունեություն՝ ուղղված հենց Հռոմի դեմ։ Բայց եթե չլինեին նույնիսկ այդ դաշինքն ու գործողությունները, Արտավազդն այժմ այլ, շատ ավելի իրական պատկերացում ուներ Հռոմի և պարթևների ուժերի փոխհարաբերության մասին։ Ուստի և այժմ նրա մտքովը չէր անցնի Հայաստանը լծել հռոմեական ռազմակառքին, մի բան, որին նա պատրաստ էր Կրասսոսի արշավանքի սկզբներին։*

---

40 Տե՛ս Plut., Crass., 33։

41 Տե՛ս ստորև, հին Հայաստանի մշակույթի բաժնում։

42 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, էջ 57։

43 Տե՛ս Н. А. Машкин, Принципат Августа, էջ 267։

Սակայն, Անտոնիոսի բախտից, Հայաստանի և Պարթևստանի միջև սառնություն էր սկսվել։ 38 թվականին սպանվել էր թագաժառանգ Բակուրը, որով խզվել էին երկու թագավորների խնամիական կապերը, այնուհետև Օրոդես թագավորը խաղից դուրս էր եկել, զիջելով գահը իր որդի Հրահատին (Հրահատ Դ), որը չբավարարվելով դրանով, թունավորեց իր ծերունի հորը[44]։

Պարթևների նոր տիրակալը ակտիվ քայլեր չարեց գալիք պատերազմում Հայաստանի աջակցությունն ապահովելու ուղղությամբ, այլ ընդհակառակը, կապվեց Հայաստանի պոտենցիալ թշնամու՝ Ատրպատական-Մարաստանի (Մեդիա-Ատրոպատենե) թագավորի հետ, որը նույնպես Արտավազդ անունն էր կրում (ստորև նրան կանվանենք մար Արտավազդ)[45]։

Այդպես չէր գործում Անտոնիոսը։ Ըմբռնելով Հայաստանի դիրքորոշման վճռող նշանակությունը իր ձեռնարկության մեջ, նա ջանք չխնայեց Արտավազդին մասնակից դարձնելու իր արշավանքին։ Անտոնիոսը զորքով Հայաստան ուղարկեց իր զորավար Կանիդիոսին, հանձնարարելով՝ ինչ գնով էլ լինի ապահովել Հայաստանի լոյալությունը։ Կորզելով Արտավազդի համաձայնությունը, Կանիդիոսը շարժվեց դեպի հյուսիս, Վիրք և Աղվանք, սրանց ևս պարտադրելու մասնակցությունը արշավանքին, որ և նրան հաջողվեց[46]։

**Արտավազդի վերաբերմունքը Անտոնիոսի ձեռնարկությանը:** 36 թվականի գարնան վերջերին Անտոնիոսը Զեոմայի մոտ անցնում է Եփրատը և գալիս բանակ է զարկում Կարնո դաշտում։ Այստեղ նա զորատես է անցկացնում։ Հավաքված էր հսկայական բանակ. մոտ 100.000 զինվոր՝ 60.000 լեգեոներ (15 լեգեոն), 10.000 իսպանական և կելտական այրուձի և 30.000 դաշնակից զորք։ Արտավազդը տրամադրել էր 7000 հետևակ և 6000 հեծյալ[47]։ Պլուտարքոսի մի այլ հաղորդման համաձայն, Արտավազդի տրամադրած զորքը հասնում էր 16 հազարի[48]։

Այս թվերը համեմատելով Կրասոսի զորքերի թվի հետ, տեսնում ենք, որ Անտոնիոսի բանակը կրկնակի անգամ մեծ էր։ Սակայն Արտավազդի տրամադրած զորքի նկատմամբ պատկերը միանգամայն այլ է։ Եթե Կրասոսին նա խոստացել էր, ինչպես նշվեց, 40 կամ 46 հազար զորք, որից 10 կամ 16 հազարը՝ այրուձի, 30 հազարը՝ հետևակ, ապա Անտոնիոսին տրամադրել էր միայն 13 կամ 16 հազար զինվոր՝ եռակի պակաս։ Այս թվերը պերճախոս են։ Հարկավ, հայկական զորքի ընդհանուր քանակը 53 թվականի համեմատությամբ չէր նվազել, գուցե և՝ ավելացել էր։ Ուրեմն, տրամադրվող զորքի թիվը արտահայտությունն էր ոչ թե նոր հնարավորությունների, այլ նոր քաղաքականության։

Այդ քաղաքականությունը շատ ավելի հասուն, զգաստ ու ճկուն բնույթ էր ստացել։ Եթե Արտավազդը, իր կամքին հակառակ, միանում էլ էր հռոմեական արշավանքին, ապա նա այդ ջանում էր անել այնպես, որպեսզի Հայաստանը

---

44 Տե՛ս N. Debevoise. A Political History of Parthia, էջ 121։

45 Տե՛ս CAH, X, էջ 72 (W. W. Tarn)։

46 Տե՛ս Dio, XLXI, 24։

47 Տե՛ս Plut., Ant., 38։

48 Տե՛ս նույն տեղում, 50։

*ըստ հնարավորին քիչ տուժի, նրա մասնակցությունը երկու օտար ուժերի բախմանը՝ որքան կարելի է փոքր լինի, եթե առհասարակ հնարավոր չէ խույս տալ մասնակցությունից։ Այստեղից բխում է, որ նա հենց սկզբից հակված պիտի լիներ հարմար պահին իսպառ լքելու իրեն պարտադրված այս ձեռնարկությունը, որը և տեղի ունեցավ։*

*Անտոնիոսի հակառակորդն էր, ինչպես ասվեց, Հրահատ Դ-ը (մոտ մ. թ. ա. 38—32), որը չբավարարվելով իր հոր սպանությամբ, սրի էր մատնել նաև եղբայրներին, որպեսզի ոչնչացնի իր գահին սպառնացող ամեն մի վտանգ։ Նա սկսել էր ոչնչացնել իր այս արարքներից դժգոհ ավագանու ներկայացուցիչներին, և սրանց մի մասը ապաստան էր գտել հռոմեացիների մոտ։ Դրանցից մեկն էր զորավար Մոնեսը, որին Անտոնիոսը սիրով ընդունել էր ու դարձրել Ասորիքի երեք քաղաքների տեր, խոստանալով նրան պարթևական գահը։ Սակայն արշավանքի հենց նախօրեին Հրահատը ետ է կանչում Մոնեսին և հանձնարարում իր զորքերի հրամանատարությունը։ Կարելի է եզրակացնել, ուրեմն, որ սա սոսկ մի խաղ է եղել, որի նպատակն էր հռոմեական կողմի իրավիճակի խոր հետախուզությունը։ Պարթևների տեղեկատու ծառայությունը անհամեմատ ավելի լավ էր կազմակերպված, քան Հռոմինը*[49]*։*

**Արտավազդի վերջնական դիրքորոշումը:** *Կարնո դաշտից Անտոնիոսի բանակը շարժվում է դեպի հարավ-արևելք՝*[50] *Կապուտան (Ուրմիա) լճի ուղղությամբ, նախնական նպատակակետ ունենալով Հրահատի դաշնակից մար Արտավազդի երկիրն ու մայրաքաղաքը՝ Փրաասպան։ Անտոնիոսը շտապում էր, որպեսզի այնտեղ հասներ պարթևական զորքերից առաջ, թեև իրական պատկերացում չուներ նրանց գործողությունների մասին։ Մոնեսը, ընդհակառակը, նրան չէր կորցնում իր տեսադաշտից։ Հռոմեացիները պաշարողական տեխնիկային մեծ պատրաստություն էին տեսել, որը անհրաժեշտ ժամին անփոխարինելի կլիներ, քանի որ ռազմական գործողությունների վայրերում համապատասխան որակի փայտանյութ չկար։ Սակայն դրանք իրենց ծանր ու դանդաղ ընթացքով Անտոնիոսին խանգարում էին արագացնելու արշավը։ Եվ ահա, նա կատարում է աններելի սխալ, լքում մեքենաները, նրանց պաշտպանության համար թողնելով միայն երկու լեգեոն՝ Օպիոս Ստատիանոսի հրամանատարությամբ, և դաշնակիցների որոշ քանակությամբ զորք, իսկ ինքն առաջ անցնում. պատվիրելով հնարավորին չափ արագորեն հետևել իրեն։*

*Երբ նա արդեն շատ էր առաջ անցել և մոտենում էր Փրաասպային, պարթևները գերակշռող ուժերով, ըստ երևույթին, մար Արտավազդի ղեկավարությամբ, հարձակվում են Ստատիանոսի զորամասերի վրա և շրջապատելով նրանց, սպանում կամ գերի են վերցնում զինվորներին և կրակի տալիս պաշարողական մեքենաները։ Գերիների թվում էր Անտոնիոսի արշավանքի մասնակից Պոնտոսի թագավոր Պոլեմոնը։ Թշնամու ձեռքն են ընկնում հռոմեական լեգեոնների արծվեկիր դրոշները*[51]*։*

---

49 *Տե՛ս* CAH, X, *էջ 71 և հաջ.* (W. W. Tarn)։

50 *Անտոնիոսի արևելյան արշավանքի պատմությունը մեզ է հասել հիմնականում Պլուտարքոսի և Դիոն Կասսիոսի գործերում։*

51 *Տե՛ս Plut.*, Ant., *38*։

Հռոմեացիների այս պարտությունը հայերին մղեց ավելի որոշակիորեն դրսևորել իրենց վերաբերմունքը այս՝ իրենց համար բոլոր տեսակետներից անձեռնտու և աղետաբեր, արշավանքի նկատմամբ։ Արտավազդը ետ քաշեց իր ուժերը և հրաժարվեց հետագա գործողություններին մասնակցելուց[52]։ Ապագայի իրադարձությունները ցույց տվեցին, որ Հայաստանի շահերի տեսակետից այս քայլը ժամանակին էր և ճիշտ, թեև Արտավազդը անձամբ պիտի տուժեր դրա հետևանքով։

Անտոնիոսը շարունակում էր Փրաասպայի պաշարումը, ջանալով իր փութկոտության հետևանքով կորված պաշարողական տեխնիկան փոխարինել ինքնագործ միջոցներով՝ հողաբլուրներով և այլն։ Սակայն լավ պարենավորված և ուժեղ կայազոր ունեցող ամուր բերդաքաղաքը հաջողությամբ պաշտպանվում էր։ Պաշարողների դժվարություններին ավելանում էր սննդամթերքի ծայրահեղ պակասը. զորքը մթերքով ապահովելու նպատակով, Անտոնիոսը ստիպված էր լինում խոշոր ուժեր առանձնացնել և հեռավոր արշավներ կազմակերպել, մի բան, որ չլատում էր պաշարողների ուժերը։ Իսկ երբ մոտերքում երևացին Հրահատի և մար Արտավազդի զորքերը, հռոմեացիների վիճակը դարձավ հուսահատական։ Զորքի կարգապահությունն ընկնում է այն աստիճան, որ մի անգամ, երբ զորամասերից մեկը փախուստի էր մատնվել, Անտոնիոսը դիմում է դեցիմացիայի՝ հռոմեական հին պատժամիջոցին, երբ մեղավորներին բաժանում էին տասնյակների և յուրաքանչյուր տասնյակից մի զինվորի մահապատժի ենթարկում[53]։

Հռոմեական բանակի նահանջը։ Ի վերջո, հռոմեացիները ստիպված եղան բռնել նահանջի ճամփան, որը նույնքան աղետաբեր եղավ, որքան կլիներ տանուլ տված մի ճակատամարտ[54]։ Պարթևները կրնկակոխ հետևում էին հռոմեացիներին և ամենափոքր առիթն անգամ բաց չէին թողնում աջից ու ձախից հարվածելու նրանց։ Եղավ մի պահ, երբ Անտոնիոսը պատրաստ էր անձնասպան լինելու, իսկ ընդհանրապես, ըստ Պլուտարքոսի պատմածի, «հաճախ բացականչում էր «ո՜, բյուրք» զարմանքով հիշելով Քսենոփոնին և նրա ընկերակիցներին, որոնք նահանջելով Բաբելոնից, ավելի երկար ճանապարհ էին կտրել և իրենցից շատ ավելի զորեղ թշնամու դեմ պայքարել, և այնուհանդերձ փրկվել էին»[55]։

Վերջապես, 27 օր տևած այդ դառն նահանջից հետո, հռոմեական լեգեոնները հասան Հայաստանի սահմանագլուխը՝ Արաքս գետին։ «Երբ,— հաղորդում է Պլուտարքոսը,— նրանք բարեհաջող անցան գետի մյուս ափը և ոտք դրին հայկական հողը՝ ապա ասես բաց ծովում երկար դեգերելուց հետո առաջին անգամ ցամաք տեսնելով, նրանք սկսեցին համբուրել քարերը ու ավազը և լալ ուրախությունից, միմյանց գրկախառնվելով»[56]։ Այս պատկերն իսկապես հիշեցնում է Քսենոփոնի «Նահանջ բյուրոցի» հանրահայտ այն դրվագը, երբ հույ-

---

52 Տե՛ս Plut., Ant., 39; Dio, XLIX, 25, 5։

53 Տե՛ս Plut., Ant., 39։ ,

54 Տե՛ս D. Debevoise, A Political History of Parthia, 128 և հաջ.:

55 Plut., Ant., 46.

56 Plut., Ant., 49.

*ները, վերջապես, տեսնելով հեռավոր Սև ծովը, իրենց փրկության հանգրվանը, այն ողջունում են «ծո՜վը, ծո՜վը» ցնծագին աղաղակներով[57]։*

*Այս նկարագրությունից, ինչպես և այնուհետև, Արտավազդի՝ հռոմեացիների նկատմամբ ցուցաբերած բարյացակամ վերաբերմունքից հետևում է, որ նա ետ կանգնելով Անտոնիոսի արշավանքին մասնակցելուց, սակայն, ամենևին չէր անցել պարթևների կողմը։ Նա բավարարվել էր Հայաստանը աղետաբեր ու վտանգավոր ձեռնարկությունից դուրս բերելով։ Այսուհանդերձ, Պլուտարքոսի մոտ, որպես շարունակություն հռոմեացիների՝ Հայաստան հասնելու կապակցությամբ հրճվանքի նկարագրության, կարդում ենք. «բնական է, որ բոլորը գազազած էին և պահանջում էին հաշիվ տեսնել հայոց թագավորի հետ»[58]։*

**Արտավազդի դիրքի սխալ գնահատականը:** *Հունա-հռոմեական պատմագրությունը, հատկապես Ստրաբոնը[59] հակված է Արտավազդի վարվելակերպը գնահատել որպես դասալքություն, նույնիսկ դավաճանություն. Նոր ժամանակի հետազոտողների մի մասը ևս կուրորեն հետևում է այս գնահատականին[60]։ Նման որակում, սակայն, կարելի է տալ միայն մի դեպքում, եթե անվերապահորեն կանգնենք հռոմեական տեսակետի վրա և այն էլ՝ ելնենք ոչ թե Հռոմի ժողովրդի բարօրության, ոչ թե նրա երկրի անվտանգության շահերից, այլ սոսկ հռոմեական ստրկատիրական պետության նվաճողական քաղաքականության, ինչպես և նրա ընչաքաղց ներկայացուցիչների անձնական շահերից։ Հունա-հռոմեական պատմագրությունը, որպես կանոն, ինչպես հայտնի է, հենց այդ տեսակետի վրա էր կանգնած, համարելով, որ «բարբարոս» ժողովուրդները իրավունք չունեն իրենց բախտի տերը լինելու և պաշտպանելու իրենց շահերը, մանավանդ գերադասելու դրանք Հռոմի շահերից։*

*Հռոմեական այս տեսակետի ընդունելը Արտավազդի կողմից հենց կլիներ իսկական դավաճանություն իր ժողովրդի ու երկրի նկատմամբ։ Իսկ այն, ինչ նա արեց, սխրագործություն էր։ Նա փրկում էր Հայաստանը, սակայն ոչ թե իր խիզախությամբ, սուրը ձեռքին, մի բան, որ ժամանակի կոնկրետ պայմաններում կբերեր հակառակ արդյունքի, այլ խորաթափանց հայրենասերի իմաստությամբ ու շրջահայեցությամբ։ Միևնույն ժամանակ, նրա անձնական խիզախությունը ամեն կասկածից վեր է, քանի որ այն գտավ իր ահավոր ապա-*

---

57 *Տե՛ս Xen.*, Anab., *IV, 7, 24։*

58 *Plut.*, Ant., *50.*

59 *Տե՛ս Strabo, XI, 13, 4; 14, 15։*

60 *Սակայն ոչ բոլորը. տե՛ս H. Buchheim*, Die Orientpolitik des Triumvirn M. Antonius, Heidelberg, 1960, *էջ 32 և հաջ., ուր գրված է. «Անտոնիոսի բախտն էր, որ թագավորը (Արտավազդը,* ծնդ.) *չանցավ պարթևների կողմը, այլ տուն վերադարձավ և դեռ Անտոնիոսի ակնհայտ պարտությունից հետո էլ չեզոք մնաց։ Ոչինչ չէր խանգարում և Անտոնիոսի բարեմասնությունները չէին, որ պիտի ետ պահեին Արտավազդին Ստատիանոսի վրա հարձակվելուց և կամ օգնելուց հռոմեական զորքի վերջնական ջարդի գործին՝ նրա նահանջի պահին... Այսպիսով Արտավազդը ոչ թե դավաճանել է, այլ գթացել է հռոմեացիներին, պարտությունից հետո էլ չեզոքություն պահպանելով»։*

*Շոշափվող խնդրի կապակցությամբ տե՛ս նաև Հ.* Մանանդյան, *Քննական տեսություն, հատ. Ա. և* Հրանտ Արմեն, *Անկում Արտաշիսյան հարստության աշխատությունների համապատասխան բաժինները, որտեղ Արտավազդի քայլին ճիշտ գնահատական է տրված։*

*ցույցը նրա գերության ու եղերական վախճանի պահերին. այդ ընդունում ու գնահատում են, ինչպես կտեսնենք, նույնիսկ հույն-հռոմեական պատմիչները։*

*Արտավազդի «դավաճանության» վարկածի բուն ակունքը թերևս ինքը Անտոնիոսն էր։ Սնապարծ զորավարը իր նահանջի ճանապարհին արդեն արշավանքի ձախողման արդարացումն էր հորինում և դրանցից գլխավորը պիտի դարձներ Արտավազդի դիրքորոշումը։ Բայց դա հետագայում միայն պիտի հայտարարեր բացարձակ կերպով, իսկ առայժմ, քանի դեռ իր ծեծված զորքերի ու իր սեփական բախտը կապված էր Արտավազդից, Անտոնիոսը, դավը հոգու խորքում պահած, քաղցրալեզու բանակցություններ էր սկսել նրա հետ։ Ահա նույն Պլուտարքոսի խոսքերը՝ «Անտոնիոսը լավ էր հասկանում, որ իր զորքը թուլացած է և կարոտ ամենաանհրաժեշտ բաների, ուստի և անսաց իր բանականությանը և չներկայացրեց Արտավազդին դավաճանության մեղադրանքը. առաջվա պես բարեկամաբար էր վարվում նրա հետ և պատշաճ պատիվներ մատուցում։ Հետագայում նակայն, նա վերադարձավ Հայաստան, բազմաթիվ խոստումներով ու հավաստիացումներով դրդեց Արտավազդին իրեն հանձնվել, ապա և ձերբակալեց, շղթայակապ վարեց Ալեքսանդրիա և ցուցադրեց իր հաղթահանդեսի ժամանակ»[61]։ Նկատի ունենալով հետագայի այս իրադարձությունները, որոնք ավարտվեցին Արտավազդի սպանությամբ, կարելի է թերևս համաձայնվել վերը մեջբերված այն կարծիքին, թե Արտավազդը ավելի ճիշտ կվարվեր, եթե ոչնչացներ բախտի բերմամբ իր ձեռքն ընկած հռոմեական նվաճողին և նրա զորքը։*

*Ստանալով Արտավազդի համաձայնությունը, որ հռոմեական զորքերը ձմեռեն Հայաստանում, Անտոնիոսը թողեց բանակը և շտապեց Կլեոպատրայի մոտ, որին տեսակցություն էր նշանակել Ասորիքի գյուղերից մեկում։*

*Այսպիսի վախճան ունեցավ Անտոնիոսի արշավանքը, որի ժամանակ հռոմեացիները կորցրին շուրջ 35 հազար զինվոր[62]։ Պարթևներին ընկճելու այս երկրորդ փորձը նույնպես ձախողվեց։*

**Իրադրությունն արշավանքից հետո։** *Ջանալով փրկել իր հեղինակությունը, Անտոնիոսը ձգտում էր հռոմեացիներից թաքցնել իր արշավանքի արդյունքները և նույնիսկ ծերակույտին հաղթանակ էր հավաստիացրել։ Բայց նման փորձերը տևական հաջողություն ունենալ չէին կարող, մանավանդ որ Օկտավիանոսը, որի փոխհարաբերությունները Անտոնիոսի հետ՝ եռապետության կնքման պահից սկսած, բազմաթիվ փորձությունների էին ենթարկվել և գնալով ավելի էին վատթարանում, շահագրգռված էր հանրահայտ դարձնել ճշմարտությունը[63]։ Ահա այստեղ էր, որ Անտոնիոսը սկսեց իր մեքենայությունները Հայաստանի և Արտավազդի դեմ։ Նրա նպատակն էր, ոչ միայն իր տանուլ տված խաղը Արտավազդի վրա գցելով՝ նրան դարձնել քավության նոխազ, այլև Հայաստանի հաշվին վերականգնել իր խախտված հեղինակությունը։*

*Մինչ այդ, պարթևների թագավոր Հրահատը և նրա դաշնակից՝ մար Արտավազդը, գժտվել էին գրավված ավարի բաշխման կապակցությամբ։ Մար*

---

61 *Plut.*, Ant., *50.*

62 *Տե՛ս N. Debevoise,* A Political History of Parthia, *էջ 131։*

63 *Տե՛ս Н. А. Машкин,* Принципат Августа, *էջ 267։*

*Արտավազդը Անտոնիոսի մոտ է հղում Ստատիանոսի լեգեոնների ջախջախման ժամանակ գերի վերցված Պոլեմոնին (Պոնտոսի թագավորին) դաշնակցության առաջարկությամբ*[64]*։ Անտոնիոսն, իհարկե, ուրախությամբ համաձայնվում է և Պոլեմոնին խսկ կարգում Փոքր Հայքի թագավոր, նրա կորցրած Պոնտոսի թագավորության փոխարեն։ Անտոնիոսի և մար Արտավազդի դաշինքը իրականում ուղղված էր Հայաստանի դեմ*[65]*։*

*35 թվականին Անտոնիոսը ձեռնարկում է առաջին փորձը՝ իր ձեռքը գցելու հայոց թագավորին։ Հրավիրում է նրան գալ իր մոտ՝ իբրև պարթևների դեմ նոր արշավանքի ծրագրման կապակցությամբ։ Հասկանալի է, որ Անտոնիոսն այդ ժամանակ պարթևների վրա արշավելու ոչ մի հնարավորություն չուներ և Դիոն Կասսիոսը պարզորոշ կարծիք է հայտնում, որ հրավերքի նպատակը Արտավազդի ձերբակալումն էր*[66]*։ Զգալով այդ, Արտավազդը չի ներկայանում։ Քիչ անց, Անտոնիոսը ձեռնարկում է երկրորդ փորձը։ Հայոց արքունիք է ուղարկում իր մերձավորներից մեկին՝ Դելլիոսին, Արտավազդի դստեր և Անտոնիոսի ու Կլեոպատրայի Ալեքսանդր որդու ամուսնության առաջարկությամբ, որը Դիոն Կասսիոսի վկայությամբ*[67] *Արտավազդի դեմ լարած մի նոր ծուղակ էր։*

**Անտոնիոսի արշավը դեպի Հայաստան. Արտավազդի գերեվարումը:** *Դելլիոսը մեկնում է ձեռնունայն։ Տեսնելով, որ դիվանագիտական խաղերը ապարդյուն են անցնում, Անտոնիոսը անձամբ կանգնում է զորքերի գլուխ և արշավում Հայաստան։ Պարթևներից կրած պարտության վրեժը նա ուզում էր առնել Արտավազդից, արդարանալ իրեն մեղադրողների առջև և կողոպուտով լրացնել իր դատարկված գանձարանը։ Կլեոպատրան ուղեկցում է նրան մինչև Եփրատ։ Անտոնիոսը նախ շարժվում է դեպի Փոքր Հայք՝ իր դաշնակից Պոլեմոնի երկիրը, և դադար առնում Նիկոպոլսում։ Այստեղից նա կրկին անգամ իր մոտ է կանչում Արտավազդին։*

*Այս ծայրահեղ պարագաներում ևս Արտավազդը չի արձագանքում։ Որոշակի տվյալներ կան եզրակացնելու, որ Արտավազդի այս քաղաքականության մեջ իր դերն էր խաղում մի կարևոր գործոն ևս՝ Օկտավիանոսի աջակցությունը։ Դիոն Կասսիոսը հաղորդում է Արտավազդի և Օկտավիանոսի նամակագրության մասին*[68]*։ Օկտավիանոսը այն դեռևս հեռավոր, բայց սրընթաց աճող ուժն էր, որը շուտով պիտի ոչնչացներ Անտոնիոսին։*

*Սակայն Անտոնիոսի լեգեոնները ներխուժում են Հայաստան։ Վտանգն օրհասական է դառնում։ Թիկունքում՝ զենքը ձեռքին, հարվածելու առիթ էր որոնում մար Արտավազդը. պարթևների հետ հարաբերությունները հեռու էին լավ*

---

64 *Տե՛ս* *Dio*, XLIX, *33։*

65 *Տե՛ս* Հրանտ Արմեն, *Անկում Արտաշեսյան հարստության, էջ 108։*

66 *Տե՛ս* *Dio*, XLIX, *33, 1—3։*

67 *Տե՛ս* *Dio*, XLIX, *39, 2—6։*

68 *Տե՛ս N. Debevoise*, A Political History of Parthia, *էջ 134, որը փորձում է Անտոնիոսի կողմից Արտավազդի կալանավորումը արդարացնել հայոց թագավորի և Անտոնիոսի ախոյան Օկտավիանոսի միջև եղած բանակցություններով։*

լինելուց, իսկ հռոմեական լեգեոնները կանգնած էին մայրաքաղաքի դարբասների տակ։ Արտավազդը գնում է Անտոնիոսի ճամբարը։ Զավակների ամուսնության մասին խոսակցության փոխարեն, նրան անմիջապես ձերբակալում են։ Ճիշտ է, ի պատիվ նրա թագավորական կոչման, նրան շղթայում են արծաթե շղթաներով, որոնք հետագայում պիտի փոխարինվեին նույնիսկ ոսկյա կապանքներով, բայց դրանք բնավ չէին մեղմացնում Անտոնիոսի ուխտադրուժ վարմունքը[69]։ Անտոնիոսի ձեռքն են ընկնում նաև հայոց թագուհին և երկու արքայազունները՝ Տիգրանն ու Արտավազդը, իսկ ավագ որդուն՝ թագաժառանգ Արտաշեսին, հաջողվում է խույս տալ[70]։

Անտոնիոսը, ինչպես հաղորդում է Դիոն Կասսիոսը, սկսում է շրջագայել Արտավազդի հետ ամրոցից-ամրոց և քաղաքից-քաղաք՝ փրկագնի գանձման պատրվակով կողոպուտի ենթարկելով դրանք։ Հռոմեական զորքերի հետքերով Հայաստան էին լցվել հռոմեական վաճառականներ և աշխատում էին բույն դնել այստեղ, ինչպես մի ժամանակ՝ նորանվաճ Փոքր Ասիայում կամ Ասորիքում, Հայաստանը համարելով հռոմեական նահանգ[71]։ Անտոնիոսը նաև հռոմեական կայազորներ է տեղաբաշխում Հայաստանի բերդերում։

Սրանից հետո նա հեռանում է Եգիպտոս, իր հետ տանելով՝ բացի հայոց թագավորից ու նրա ընտանիքից, նաև հսկայական ավար[72], այդ թվում Անահիտ դիցուհու ոսկյա արձանը՝ Եկեղյաց գավառում գտնվող նրա տաճարից։ Հայաստանի մի շարք արևելյան շրջաններ նա անջատել ու հանձնել էր մար Արտավազդին, իսկ հայոց թագավոր էր հայտարարել իր ու Կլեոպատրայի վեցամյա որդի Ալեքսանդրին, որին նա նախապես ցանկանում էր ամուսնացնել Արտավազդի դուստրերից մեկի հետ, անշուշտ, Հայաստանին «օրինավոր» կերպով տիրանալու նպատակով։ Չհանդուրժելով այս ամենը, հայերն ապստամբում են, համախմբվելով թագաժառանգ Արտաշեսի շուրջը։ Նա հավաքում է զորքերի մի մասը և փորձ անում ազատագրել երկիրը, բայց առժամանակ ապարդյուն։

Պարտություն կրելով հռոմեացիներից, նա ստիպված է լինում ապաստան որոնել պարթևների մոտ, այն միակ տեղում, ուր այժմ հնարավոր էր օժանդակություն և օգնություն որոնել[73]։

**Ալեքսանդրիայի հաղթահանդեսը:** 34 թվականի աշնանը, առիթ ունենալով Հայաստանի գրավումը, Անտոնիոսը վերջապես իրագործեց իր բաղձանքը՝ իր տարած «հաղթությունների» կապակցությամբ շքեղագույն հաղթահանդես կազմակերպեց Ալեքսանդրիայում։

Անտոնիոսը «քաղաք մտավ մարտակառքով,— պատմում է Դիոն Կասսիոսը,— և բացի այլ ամենից, որ շնորհեց Կլեոպատրային՝ ընտանյոք հանդերձ նրան նվիրեց նաև հայոց թագավորին, որ շղթայված էր ոսկե շղթաներով։ Իսկ Կլեոպատրան բազմության մեջ նստած էր ոսկեզօծ գահույքին, արծաթապատ բեմում։ Սակայն բարբարոսները (խոսքը Արտավազդի և իր ընտանիքի մասին

69 Տե՛ս Dio, XLIX, 39, 2—6։
70 Տե՛ս Jos. Flav., AJ, XV, 4, 3։
71 Տե՛ս CAH, X, էջ 78 (W. W. Tarn)։
72 Տե՛ս Jos. Flav., BJ, I, 18, 5։
73 Տե՛ս Dio, XLIX, 39, 4։

է— Ներ.)․ *Թեև նրանց շատ էին ստիպում և շատ էին հորդորում, տալով ազատության խոստում՝ չդիմեցին նրան աղերսանքով, ոչ էլ գլուխ խոնարհեցին։ Եվ որովհետև միայն նրա անունն էին տալիս (այսինքն՝ նույնիսկ «թագուհի» չէին անվանում նրան—*Ներ.), *նրանք վեհամիտ անձերի համբավ ստացան, բայց և նույն այդ պատճառով անգութ վերաբերմունքի ենթարկվեցին»*[74]։ *Հիրավի, Կլեոպատրան այնքան խելոք էր, որ չէր շլանում Անտոնիոսի ցուցամոլությամբ, բայց և այնքան փառասեր ու դաժան էր, որ չհանդուրժեց այդօրինակ վերաբերմունքը, նրանց զնդան նետեց։*

*Հաղթահանդեսին հաջորդեց մի արարողություն, որ հայտնի է «Ալեքսանդրիայի նվիրատվությունններ» անվան տակ*[75]։ *Այն կազմակերպվեց քաղաքի գիմնասիոնում։ Անտոնիոսն այստեղ հանդես էր գալիս ոչ թե որպես մահկանացու, թեև շատ զորավոր, այլ որպես գերագույն էակ, աստվածություն, Դիոնիսոս-Օսիրիս։ Բազմաթիվ նվիրաբերումների թվում Անտոնիոսը իր և Կլեոպատրայի որդի Ալեքսանդրին նվիրաբերեց Եփրատից այն կողմ (արևելք) ընկած երկրները, այսինքն՝ ոչ միայն Հայաստանը, այլև ամենևին չնվաճված Պարթևստանը և Մեդիան։ Այս առիթով Ալեքսանդրը ներկայացել էր պարսկական տարազով և շրջապատված հայ դրանիկներով։ Մյուս որդին՝ Պտղոմեոսը, որ մակեդոնական տարազ էր կրում և շրջապատված էր մակեդոնացի դրանիկներով, ստացավ համապատասխանաբար Ասորիքն ու Կիլիկիան և ընդհանրապես Եփրատից այս կողմ (արևմուտք) գտնվող երկրների գերիշխանությունը՝ մինչև Հելլեսպոնտոս և այլն*[76]։

*Այսպիսի սին ներկայացմամբ Անտոնիոսը հագուրդ տվեց իր անսահման փառամոլությանը և փորձեց ապաքինել իր խոցված գոռոզությունը։ Բայց նրա միակ ու իրական «նվաճումը» մնաց ոչ թե Հայաստանը, որը շատ շուտով ազատագրվեց, այլ հայ ժողովրդի անջնջելի ատելությունը դեպի ինքը և դեպի հռոմեացիները*[77]։

Անտոնիոս և Օկտավիանոս: *33 թվականին Անտոնիոսը իր դաշնակից մար Արտավազդի հետ տեսակցություն ունեցավ Արաքսի ափին։ Սրանք մշակեցին համագործակցության ծրագրեր. հռոմեացին մարին պիտի օգներ պարթևների դեմ։ Անտոնիոսը մար Արտավազդին տրամադրեց Հայաստանում գտնվող իր զորաբանակի մի մասը և փոխարենը ստացավ մարական հեծելազորի մի ջոկատ։ Որոշվեց ամուսնացնել մար Արտավազդի դուստր Իոտապեին «հայոց թագավոր» Ալեքսանդրի հետ։ Մի դեր, որը առաջ Անտոնիոսը հատկացնում էր հայոց Արտավազդի դստերը։ Մարը Անտոնիոսին վերադարձրեց Ստատիանոսի լեգեոնների ջախջախման ժամանակ վերցված արծվեկիր դրոշները*[78]։

*Փոքր անց հայոց թագաժառանգ Արտաշեսը, որը տակավին պարթևների մոտ էր գտնվում, փորձ արեց տիրանալ հայրենի գահին։ Սակայն մեդացոն. հռոմեական զորքերի օգնությամբ, այս անգամ հաջողվեց վանել նրա գրոհը*[79]։

---

74 *Տե՛ս նույն տեղում։*

75 *Տե՛ս* CAH, X, *էջ 80 և հաջ.* (W. W. Tarn)։

76 *Տե՛ս նույն տեղում, էջ 81։*

77 *Տե՛ս Tacit.,* Annal., *III, 1։*

78 *Տե՛ս Dio,* XLIX, *44, 1—4։*

79 *Տե՛ս նույն տեղում։*

32 թվականին Անտոնիոսի և Օկտավիանոսի հարաբերությունները վերջնականապես խզվում են։ Պատերազմը նրանց միջև դառնում է անխուսափելի։ Անտոնիոսի կողմնակիցները լքում են Հռոմը և փախչում Արևելք։ Անտոնիոսը հայտարարվում է պետության թշնամի։ Քանի որ օրենքի տեսակետից հնարավոր չէր պաշտոնապես պատերազմ հայտարարել Անտոնիոսին, ապա պատերազմը հայտարարվում է Կլեոպատրային։

Երկու կողմերն սկսում են տենդագին պատրաստություններ տեսնել, օգտագործվում են բոլոր հնարավորությունները։ Անտոնիոսը նույնիսկ ետ է կանչում մեր Արտավազդին տրամադրված զորքը։ Ստեղծվում են հսկայական նավատորմիղներ[80]։

31 թվականի սեպտեմբերի 2-ին Հունաստանի Ակտիում քաղաքի մոտ, ծովի վրա տեղի է ունենում վճռական ճակատամարտը։ Կռվի թեժ պահին, երբ ելքը դեռ որոշ չէր, Կլեոպատրան հրամայում է շրջել իր նավերը դեպի Եգիպտոս։ Անտոնիոսը հետևում է նրան։ Ճակատամարտը ավարտվում է Օկտավիանոսի հաղթանակով։



Արտաշեսյան հայ թագուհի

**Արտավազդի վախճանը:** Անտոնիոսը, լրիվ հուսալքված, սպասում էր իր վախճանին։ Կլեոպատրան, իր եռանդուն խառնվածքով, նետվում էր դեպի նորանոր ձեռնարկություններ, իր կամ գոնե իր զավակների իշխանությունը պահպանելու համար։ Նա տենդորեն դաշնակիցներ էր փնտրում, առկա պարագաներում պիտանի էր թվում նույնիսկ այնպիսի անձնավորություն, ինչպիսին էր մեր Արտավազդը։ Սրան սիրաշահելու համար Կլեոպատրան զոհաբերում է հայ Արտավազդին. հրամայում է գլխատել նրան և գլուխն ուղարկել մարին[81]։

Այսպիսի ողբերգությամբ է ընդհատվում Արտավազդի կյանքի թելը։ Այդ ժամանակ նա, ըստ երևույթին, դեռ վաթսունը չէր բոլորել[82]։ Կռանի և սալի միջև ընկած հայ ժողո-

80 Տե՛ս Н. А. Машкин, Принципат Августа, էջ 271 և հաջ.։

81 Տե՛ս Dio, LI, 5։

82 Արտավազդի մոտավոր տարիքը որոշվում է հետևյալ տվյալներով. 53 թվականին երիտասարդ պարթև արքայազնը ամուսնացել էր Արտավազդի քրոջ հետ, որը 15—20 տարեկան կարող էր լինել, իսկ Արտավազդը՝ Տիգրան Բ-ի կրտսեր որդին, նրանից ամենաշատը 20 տարով մեծ, այսինքն՝ 35—40 տարեկան։ 35 թվականին Անտոնիոսը իր 6-ամյա որդուն ուզում է

վըրդի՝ դարերի ընթացքում տված բազմաթիվ զոհերից նա եղավ առաջինը, որն իր մահով նշանավորեց ժողովրդի պատմության մի նոր ու դառն դրվագի սկիզբը[83]։ Բայց և ուսանելի էր նրա մահը. այն կենսափորձ հաղորդեց հայ ժողովրդին, փր դժվարին ճանապարհին, սովորեցրեց ճանաչել թշնամիներին, դիմագրավել նրանց կամ նրանցից խուսափելու միջոցներ գտնել։ Հատկապես մեծ էր կորուստը այն պատճառով, որ Արտավազդը սովորական թագավոր չէր, բախտի բերմամբ թագաժառանգ ծնված ու գահը ժառանգած։ Նա մեզ հայտնի հայ առաջին մտավորականն էր։

Անտոնիոսը Արտավազդից շատ երկար չապրեց. նա ինքնասպան եղավ։

Կլեոպատրան, սակայն դեռ կենդանի էր և վերջին ճիգերն էր գործադրում՝ համոզելու Օկտավիանոսին՝ պահպանել իր զավակների իշխանությունը։ Օկտավիանոսը իր նամակներով հուսադրում էր նրան, միակ նպատակ ունենալով կենդանի պահպանել՝ իր հաղթահանդեսում ցուցադրելու համար։ Այսպիսով, Կլեոպատրային սպասում էր հայոց թագավորի բախտը։ Սակայն, երբ 30 թվականի ամռանը Օկտավիանոսը ժամանեց Եգիպտոս, Կլեոպատրան ըմբռնեց նրա մտադրությունը և հետևեց Անտոնիոսի օրինակին[84]։

## 4. ՊԱՅՔԱՐ ՀՌՈՄԻ ԴԵՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԱՐՏԱՇԵՍ Բ-Ի ՕՐՈՔ

Հայաստանի ազատագրումը հռոմեական լծից: Արտաշես Բ: Մանկահասակ «հայոց թագավոր» Ալեքսանդրը, Անտոնիոսի և Կլեոպատրայի որդին, այդպես էլ առիթ չունեցավ ոտք դնելու Հայաստանի հողը։ Նա բախտակից եղավ հայոց թագավոր Արտավազդի Տիգրան և Արտավազդ որդիներին, նրանց նման Օկտավիանոսի կողմից Ալեքսանդրիայից Հռոմ տարվելով։ Եվ դեռ ավելին. Կլեոպատրայի զավակները ցուցադրվեցին Օկտավիանոսի հաղթահանդեսի ժամանակ[85]։

Ալեքսանդրի «իրավունքները» փորձեց բանեցնել, սակայն, նրա «աները»՝ մար Արտավազդը, գործելով հավանաբար, իր դուստր Իոտապեի՝ «Հայոց թագուհու» անունից։ Հայոց Արտաշես թագաժառանգի՝ հոր գահին տիրանալու 33 թվականին ձեռնարկած անհաջող փորձից հետո, մարը ձգտում էր տիրանալ ողջ Հայաստանին և սկզբում որոշ հաջողություն ունեցավ։ Անտոնիոսը դեռ կար և հովանավորում էր նրան։

---

ամուսնացնել Արտավազդի դստեր հետ, որը հետևաբար կարող էր ամենաշատը 5—10 տարեկան լինել, իսկ ինքը Արտավազդը՝ շուրջ 55։

83 Ճիշտ է նշում Հ. Արմենը, թե «Արտավազդ թագավորի իրական ողբերգությունը ոչ թե իր թագավորության սկզբին ու վերջին երկու ավազակաբարո հռոմեացիների հետ գործ ունենալն էր, այլ այն իրողությունը, թե իր օրով սկսավ Հայաստանի համար այնքան ծանրակշիռ, երբեմն քստմնելի և միշտ վնասակար քաղաքականությունը, երկու իրերամարտ հսկա կայսրությունների միջև կռվախնձոր ըլլալու քաղաքականությունը... այս դժնդակ դրության առաջին զոհն ալ ինքը եղավ...» (տե՛ս «Անկում Արտաշեսյան հարստության», էջ 127)։

84 Տե՛ս CAH, X, էջ 108 և հաջ. (W. W. Tarn)։

85 Տե՛ս նույն տեղում, էջ 102 և հաջ.։

Սակայն Ակտիումի ճակատամարտից հետո վիճակը փոխվեց։ Դրանից քիչ առաջ մեր Արտավազդի տրամադրության տակ եղած հռոմեական զորամասերը ետ էին կանչվել քաղաքացիական կռվին մասնակցելու համար և մեր Արտավազդի դիրքերը թուլացել էին։

Ահա Արտաշեսը, պարթևների տրամադրած զորքի օժանդակությամբ, բայց ապավինելով հիմնականում հայկական ուժերին, քանի որ, ինչպես կտեսնենք, Հրահատ Դ-ը այդ պահին հոգսերով էր տարված, մտավ Հայաստան, ջախջախեց մեր Արտավազդի զորքերը և իրեն էլ գերի վերցրեց[86]։

30 թվականին նա հաստատվեց Հայաստանի գահի վրա։

Իր առաջին իսկ քայլով Արտաշես Բ-ը հագուրդ տվեց իր վրիժառության զգացումին՝ հոր գերեվարման ու սպանության համար. նա, ինչպես մի ժամանակ Միհրդատ Եվպատորը, հրամայեց բնաջինջ անել երկրում գտնվող բոլոր հռոմեացիներին[87]։ Սրանց մեջ էին և՛ Հայաստանի այս ու այն բերդերում ու քաղաքներում մնացած կայազորները, և՛ 34 թվականից սկսած այստեղ հետզհետե կուտակված առևտրականներն ու այլևայլ մարդիկ, որոնց Հայաստան էին բերել տեղական «անմշակ» շուկայի յուրացման հեռանկարները։ Այսպիսով, Հայաստանը միանգամից ու վճռականորեն Հռոմին ազդարարեց իր անկախությունը։

**Օկտավիանոսը և Հայաստանը:** *Խիստ հետաքրքրական է, որ Օկտավիանոսը, որը ինչպես ասվեց, 30 թվականի ամռանից սկսած գտնվում էր Արևելքում և այժմ էլ զբաղված էր Ասորիքի ու Փոքր Ասիայի գործերով, ոչ մի անմիջական արձագանք չցուցաբերեց Հայաստանում կատարված այս ահավոր իրադարձության նկատմամբ։*

Սակայն սխալ կլիներ կարծել, թե սա Օկտավիանոսի թուլության կամ Արևելքի երկրների նկատմամբ ցուցաբերվող անուշադրության ու անհոգության հետևանք էր, կամ որ Օկտավիանոսը նվազ վտանգ էր ներկայացնում նրանց համար, քան Անտոնիոսը։ Արևելյան հարցը և նրա կարևորագույն ու դժվարին տարրերից մեկը՝ հայկական հարցը, արդեն կես դարից ավելի կախված էր Հռոմի վրա և այժմ գտնվում էր սպառնալից վիճակում. հռոմեական երկու արշավանքները (Կրասսոսի և Անտոնիոսի) լիովին ձախողված էին, «նվաճված» Հայաստանը՝ ազատագրված, իսկ միակ դաշնակիցը՝ մեր Արտավազդը, պարտված և գերության մեջ։

Ասենք, վերջինիս հաջողվել էր փախչել գերությունից և նա միանգամայն տրամաբանորեն ապաստան էր փնտրել ու գտել Օկտավիանոսի մոտ, որը Անտոնիոսի թշնամին լինելով հանդերձ, նրա ժառանգորդն էր Արևելքում, և պիտի վարեր նույն հռոմեական քաղաքականությունը, միայն, նոր ձևավորում ստացած՝ շնորհիվ նոր իրադրության և Օկտավիանոսի անձնական խառնվածքի։ Եվ ահա, Հայաստանի անկախացմանը Օկտավիանոսի արձագանքն այն եղավ, որ նա գուրգուրանքով ընդունեց Հայաստանի ոխերիմ թշնամի մեր Արտավազդին և ի թիվս Փոքր Ասիայում իր կատարած այլևայլ վերաբաժանումների, նրան տվեց Փոքր Հայքի թագավորությունը, նախապես այդտեղ Անտոնիոսի

---

86 Տե՛ս Dio, XLIX, 44, 1—4։

87 Տե՛ս նույն տեղում, LI, 16, 2։

կողմից նստեցված Պոլեմոնին իր հայրենի Պոնտոսի թագավորության գահին վերահաստատելուց հետո[88]։

Պարթևների նկատմամբ Օկտավիանոսը մի ուրիշ խաղ էր սկսել։ Նա օժանդակեց ոմն Տրդատի, որը 31 թվականին ապստամբել էր Հրահատ Դ-ի դեմ և նրան քշել «սկյութների» երկիրը։ 30 թվականին Հրահատը վերադառնում է և վռնդում հավակնորդին, որն ապաստան է գտնում Օկտավիանոսի մոտ։ Օկտավիանոսը բնակեցնում է նրան Ասորիքում, պահպանելով իր ապագա մեքենայությունների համար, մանավանդ որ Տրդատին հաջողվել էր առևանգել ու իր հետ բերել Հրահատի մանկահասակ որդուն[89]։

Այսօրինակ «խաղաղ» քաղաքականության կարևորագույն դրդապատճառներից մեկն այն էր, որ հռոմեական հասարակությունը հոգնել էր անվերջ պատերազմներից և իր ընտրյալից սպասում էր առաջին հերթին խաղաղություն։ Օկտավիանոսի առաջնակարգ խնդիրն էլ արտաքին նվաճումները չէին, այլ իր միապետական իշխանության հաստատումը և ամրապնդումը։

II դարի վերջերից սկսված սոցիալական ու քաղաքական պայքարի և քաղաքացիական կռիվների տրամաբանական արդյունքը պիտի լիներ միանձնյա դիկտատուրայի հաստատումը. այն վերջնականապես հաստատվեց Օկտավիանոսի օրոք, որն իրեն այդ կապակցությամբ վերանվանեց Օգոստոս («Սրբազան»)։

Օգոստոսի օրոք Հռոմի հանրապետական մարմինները, ծերակույտը, ժողովրդական հավաքը, մագիստրատները, արտաքնապես շարունակում էին իրենց գոյությունը և նույնիսկ գործունեությունը։ Սակայն իրականում իշխանության ամբողջությունը կուտակված էր Օգոստոսի ձեռքում, իսկ նրա հիմնական հենարանը՝ բանակն էր, որի մասին նա շատ էր հոգ տանում[90]։

Հռոմն, այսպիսով, ազատվելով ներքին երկպառակություններից, որոնք նախորդ շրջանում նշանակալից չափով թուլացնում էին նրան, այժմ ավելի մեծ վտանգ էր ներկայացնում հարևան սահմանակից երկրների և այդ թվում Հայաստանի համար։

**Հայաստանի պարթևական կողմնորոշումը:** *Իր հերթին, Հայաստանը արդեն բավական պատմական փորձառություն էր ձեռք բերել և կարող էր ըստ արժանվույն գնահատել իր երկու հզոր հարևաններին։ Նրա ղեկավարները, կշռադատելիս, դժվար թե տեղ ունեին տարակուսելու, թե որ վտանգն է ավելի մեծ՝ արևելյանը, թե արևմտյանը։ Առաջավոր Ասիայի վերջին մեկ ու կես հարյուրամյակի պատմությունը ցույց էր տալիս, որ Հռոմի գերիշխանությունը կամ տիրապետությունը անհամեմատ ավելի դաժան ու խիստ է, քան պարթևներինը[91]։ Վերջիններս ընդհանուր առմամբ շարունակում էին հելլենիստական մեծ տերությունների, հատկապես՝ Սելևկյանների կառավարման ձևերով առաջնորդվել, ձևեր, որոնց մեջ մեծ տեղ էր հատկացվում ինքնավարության սկզբունքին։ Բացի դրանից, հենց հելլենիստական ավանդույթների, այնուհետև մշակույթի, կրոնի, բարքերի, տնտեսաձևի, պետական կառուցվածքի և այլ տե-*

88 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 286։

89 Տե՛ս N. Debevoise. A Political History of Parthia, էջ 136։

90 Տե՛ս Н. А. Машкин, Принципат Августа, էջ 507 և հաջ.։

91 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 293։

սակետներից, հայերը շատ ավելի մոտ էին պարթևներին։ Ուստի և ընտրությունը կատարվեց հօգուտ պարթևների, և այդ դրությունը, ընդհանուր առմամբ (մի կողմ թողնելով առանձին միջադեպերը), շարունակվեց այնքան ժամանակ, որքան հարատևեց պարթևական պետությունը, այսինքն՝ մինչև մ. թ. 226 թվականը։

Անշուշտ, այս նոր քաղաքական կողմնորոշումն էր[92], որ այլ հանգամանքների հետ մեկտեղ թույլ տվեց Արտաշես Բ-ին դիմել այնպիսի վճռական քայլի, որպիսին էր հռոմեացիների բնաջնջումը Հայաստանում։ Նշանակալից չափով նույն այդ կողմնորոշման ու պարթևների օժանդակության հետևանք պիտի համարել նաև այն, որ Արտաշեսին հաջողվեց, մար Արտավազդին պարտությունից մատնելուց ու գերելուց հետո, իր պետությանը միացնել նաև նրա բուն թագավորությունը՝ Ատրպատական-Մարաստանը[93]։ Թերևս այստեղ պետականիրավական դեր պիտի խաղար և այն հանգամանքը, որ սրա դուստր Իոտապեն ժամանակին հռչակվել էր «հայոց թագուհի»։ Արտաշեսն իրեն այնքան հաստատուն էր զգում, որ 29 թվականին Օգոստոսից պահանջեց ետ ուղարկել իր եղբայրներ՝ Տիգրանին ու Արտավազդին, որոնք Հռոմում էին ապրում որպես պատանդներ։ Օգոստոսը պատասխանեց մերժմամբ, դա հիմնավորելով վերոհիշյալ կոտորածով[94]։

Արտաշես Բ-ի դրամների վրա դրոշմված է «արքայից-արքա» տիտղոսը։ Նրա կառավարման տասնամյակը (մ. թ. ա. 30—20) Հայաստանի համար խաղաղության ու անկախության շրջան եղավ։ Դժբախտաբար, մենք այդ շրջանի Հայաստանի ներքին կյանքի մասին շատ քիչ բան գիտենք։

**Հռոմեասեր և պարթևասեր կուսակցությունները Հայաստանում:** Այս բոլորի հետ միասին, Հայաստանի արտաքին քաղաքական բուֆերային վիճակի հետևանքները անխուսափելիորեն սկսում են թափանցել և Հայաստանի ներքին կյանքը ու այստեղ ևս դառնում արհավիրքների աղբյուր։ Վերն ասվեց, որ Արտաշեսը վճռականորեն ընտրել էր պարթևական կողմնորոշումը։ Բայց այդ չի նշանակում, թե ողջ հայ հասարակությունը նույն ձևով էր կողմնորոշված։ Եթե երկու հակադիր արտաքին ուժերից յուրաքանչյուրն իր կողմն էր ձգում երկիրը, ապա երկրի ներսում ևս պիտի առաջանային կուսակցություններ, տվյալ դեպքում՝ պարթևասեր և հռոմեասեր, որոնք տարբեր ձևով էին պատկերացնում երկրի շահերը, քաղաքականությունը, ապագան...[95]։ Անխուսափելիորեն այդ կուսակցությունների միջև պայքար պիտի ծագեր, և այդ ներքին պայքարի առաջին զոհը չպիտի հապաղեր հանդես գալ, ինչպես քիչ առաջ հանդես եկավ արտաքին պայքարի առաջին զոհը։

Էլ չենք խոսում այն մասին, որ կուսակցությունների առաջացման բնական ընթացքը արագացվում ու խորացվում էր արհեստականորեն Հռոմի կողմից՝ գործակալների, կաշառքի և այլնի օգնությամբ, որպիսի գործունեության մեջ

---

92 Տե՛ս Tacit., Annal., II, 3։

93 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 285։

94 Տե՛ս Dio, LI, 16, 2։

95 Հրանդ Արմենի ենթադրությամբ (տե՛ս «Անկում Արտաշեսյան հարստության», էջ 111), այդ կուսակցությունները սկսել են կազմավորվել դեռևս Արտավազդ Բ-ի, նույնիսկ Տիգրան Բ-ի օրոք։

Հռոմն արդեն շատ վաղուց էր հմտացել։ Եվ Հայաստանը առաջին երկիրը չէր, ուրտեղ Հռոմը վարպետորեն հրահրում էր ներքին երկպառակություններ, բոլոր միջոցներով օժանդակելով իր կողմնակիցներին։ 31—30 թվականներին ծավալված և Հռոմի կողմից օժանդակություն ստացած՝ Տրդատի ապստամբության մասին Հրահատ Դ-ի դեմ արդեն ասվեց։ Պարթև արքայազնը, որն ընկավ Հռոմի ձեռքը, նույնպես օգտագործվեց դիվանագիտական նկատառումներով. Օգոստոսը ցանկանում էր նրա վերադարձի գնով ետ ստանալ Կրասոսի լեգեոնների արծվեկիր դրոշները։ Պարթևները, սակայն, ետ ստանալով արքայազնին, չշտապեցին բավարարել նրա պահանջը[96]։

Այն ժամանակ նորից հանդես բերվեց Տրդատը, որը 26—25 թվականների ընթացքում երկու անգամ գրոհեց Հրահատի վրա և երկու անգամ էլ վտանգի ենթարկեց նրա կյանքն ու իշխանությունը, բայց վերջնական հաջողության չհասավ և հեռացավ պատմության բեմից, այս անգամ ընդմիշտ[97]։

Այժմ նորից սկսեցին մշակվել պարթևների դեմ արշավանքի ծրագրեր, ըստ որոնց զորքերի առնվազն մի մասը պետք է հարվածեր Հայաստանին և նրա միջով ներխուժեր Պարթևստան. Նորից հարություն առան Բակտրիայի և Հնդկաստանի մասին երազները...[98]։ Օգոստոսը ժամանեց Ասորիք։

Պարթևները, սակայն տեղի տվին և 20 թվականի մայիսի 12-ին, Կրասոսի պարտությունից 33 տարի անց, հանդիսավոր կերպով հռոմեացիներին վերադարձրին նրանց լեգեոնների արծվեկիր դրոշները և դեռևս կենդանի մնացած գերիներին։ Այս իրադարձությունը լայն արձագանք գտավ հռոմեական հասարակության մեջ և նշվեց հանդեսներով, դրամների հատուկ թողարկումներով, Հռոմում հաղթակամարի շինությամբ և այլն։

Արտաշես Բ-ի սպանությունը: Պարթևների այս նահանջը ծանր վիճակի մեջ է դնում Հայոց թագավորին։ Աշխուժանում ու գլուխ է բարձրացնում հռոմեասեր կուսակցությունը Հայաստանում։ Սրա ոգևորությունն էլ ավելի է աճում, երբ լուրեր են ստացվում, որ Հայաստանի վրա է արշավում մի մեծ հռոմեական բանակ, Օգոստոսի որդեգիր Տիբերիոս Կլավդիոս Ներոնի գլխավորությամբ, որն իր հետ բերում է արքաեղբայր Տիգրանին, հռոմեացիներին ատելի Արտաշեսին նրանով փոխարինելու համար։ Մինչ այդ, մահացել էր մար Արտավազդը, և Փոքր Հայքի թագավորությունը տրվել էր Արքելաոս Կապադովկացուն, իսկ մար Արտավազդի որդի Արիոբարզանին որոշվել էր վերականգնել Ատրոպատյան Մարաստանի գահի վրա, երբ կկործանվի այդ երկրին ևս տիրացած՝ Հայոց Արտաշեսը[99]։

Հայկական հռոմեասերները ընդառաջելով Օգոստոսի ձգտումներին և գուցե նաև նրա ուղղակի ցուցումներով, դավադրություն են կազմակերպում ու սպանում Արտաշեսին։ Միաժամանակ նրանք դիմում են Օգոստոսին, Տիգրանին Հայաստանի վրա թագավորեցնելու խնդրանքով, որ և Տիբերիոսը իրակա-

---

[96] Տե՛ս *N. Debevoise*, A Political History of Parthia, էջ 136.

[97] Տե՛ս նույն տեղում, էջ 137։

[98] Տե՛ս նույն տեղում, էջ 139։

[99] Տե՛ս *Strabo*, XVII, 1, 54; *Dio*, LIV, 9, 2; *Suet.*, Tib., 9, 1.

նացնում է առանց այլևայլի[100]։ Արտաշեսի մահվամբ Հայաստանը զրկվեց Արտաշեսյան հարստության վերջին զորեղ տիրակալից, ակտիվ և ուժեղ կազմակերպչից, որի մեջ դեռ վառ էին երկրի հզորության ու անկախության ավանդները։

## 5. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏԱԴԱ ԴԻՄԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԱԳՐԵՍԻԱՅԻՆ ԵՎ ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ԴԻՆԱՍՏԻԱՅԻ ԱՆԿՈՒՄԸ

**Տիգրան Գ-ը գահի վրա:** Այնուհետև կատարվեց երկրորդ ծրագրված քայլը՝ Ատրոպատյան Մարաստանը անջատվեց հայկական պետությունից և այնտեղ թագավոր նշանակվեց Արիոբարզանը՝ մար Արտավազդի որդին։ Երկու նոր թագավորները՝ Տիգրան Գ-ը և Արիոբարզանը, Հռոմում էին ստացել իրենց դաստիարակությունը, մասնավորապես Տիգրանը ուղիղ տասը տարի անց էր կացրել Հռոմում, յուրացրել հռոմեական բարքերը, լատիներեն լեզուն և հռոմեացիների կարծիքով իրենց հլու կամակատարը պիտի լիներ։ Օտարի և հայկական գահի վրա կատարված այս փոփոխությունը Հռոմում դիտվում էր որպես մեծ հաղթանակ, որի կապակցությամբ լավագույն բանաստեղծները՝ Օվիդիոսը, Վերգիլիոսը, Հորացիոսը ներբողներ էին գրում, մեծ քանակությամբ ոսկե ու արծաթե դրամներ էին հատվում՝ համապատասխան պատկերներով ու գրություններով՝ «Հայաստանը նվաճված», «Հայաստանը վերստին նվաճված» („Armenia capta," „Armenia recepta") և այլն[101]։

Օգոստոսն իր հանրահայտ կտակում այսպես է գրում. «Մեծ Հայքը նրա Արտաշես թագավորի սպանությունից հետո թեև ես կարող էի դարձնել նահանգ, սակայն ավելի լավ համարեցի, հետևելով մեր նախնիների օրինակին՝ այդ թագավորությունը տալ Տիգրանին, որն Արտավազդի որդին էր և Տիգրան թագավորի թոռը»[102]։

«Նախնիների օրինակին հետևելը», իհարկե պատրվակ էր Օգոստոսի համար. դրանով նա քողարկում էր իր քաղաքականության ձախողումը հայկական հարցում։ Ներկայիս պատմաբանները հաճախ լրիվ հավատ են ընծայում Օգոստոսի այն խոսքին, թե նա ինքն է կամավոր կերպով խուսափել Հայաստանը հռոմեական նահանգի վերածելուց, մինչդեռ ցանկության դեպքում կարող էր այդ անել[103]։ Բանն այստեղ ամենևին էլ հռոմեացիների ցանկության բացակայությունը չէր, որը ի դեպ, երբեք զգացնել չէր տվել իրեն Իսպանիայի, Գալլիայի, Բրիտանիայի կամ Փոքր Ասիայի ու Եգիպտոսի գրավման ու նահանգների վերածման պարագաներում։ Բանն այն էր, որ Օգոստոսը լավ էր հասկանում, որ Հայաստանի նկատմամբ այդօրինակ քայլը կլիներ արկածախնդ-

---

100 Տես „Res Gestae Divi Augusti", 25—28: *Dio*, LIV, 9, 4—5; *Tacit.*, Annal., II, 3 և այլն։

101 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 292։

102 «Res Gestae», 25—32։ Տե՛ս նաև Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 301։.

103 Հմմտ. CAH, X, էջ 260 և հաջ. (J. G. C. Anderson)։

բական ու տևական միջոցառում, որի ընթացքում Հռոմը շատ ավելի ուժեր կվատներ, քան օգուտ կստանար։ Եվ խոսքն այստեղ վերաբերում է ոչ միայն պարթևների, կարելի է ասել նույնիսկ՝ ոչ այնքան պարթևների ուժին և հնարավոր միջամտությանը, քանի որ հենց այդ տասնամյակներում, 20 թվականից սկսած, պարթևները առանձնապես չէին հակադրվում Հռոմին, տեղի էին տալիս Օգոստոսի եռանդուն դիվանագիտական ճնշմանը։ Վտանգավորը հենց ինքը՝ Հայաստանն էր, նրա ժողովուրդը, նրա ներքին հնարավորությունները, հռոմեացի զավթիչների նկատմամբ նրա տածած ատելությունը[104]։

Ահա այս վերջին գործոններն էին, որոնք կամ կերպարանափոխում էին Հռոմում դաստիարակված և նրա հույսերը մարմնավորող, հայկական գահին նստեցված արտաշեսյան արքայազուններին, օտարասերներից դարձնելով հայրենասերներ, կամ կարճ ժամանակից հետո վերջ էին տալիս նրանց իշխանությանը։

Այսպես, Տիգրան Գ-ը, որի իշխանության տասից ավելի տարիների ընթացքում ծավալված իրադարձությունների մասին տեղեկություններ չեն պահպանվել, իր թագավորության վերջին (այսինքն՝ մ. թ. ա. մոտ 10) լքում է հռոմեական կողմնորոշումը և իր հատած դրամների վրա սկսում է պահլավերեն մակագրություններ անել[105]։ Սրա մահվանից հետո, առանց Հռոմի համաձայնության[106], գահակալում են Տիգրան Դ-ը և նրա քույր Էրատոն, Տիգրան Գ-ի զավակները[107]։

**Տիգրան Դ-ի գահակալությունը։** Տիգրան Դ-ի թագավորության շրջանի մասին (մոտ մ. թ. ա. 8-ից մինչև մ. թ. ա. 1 թվականները՝ որոշ ընդմիջմամբ, հավանաբար՝ մ. թ. ա. 5—2 թվականները) քիչ ավելի բան է հայտնի, քան նրա հոր շրջանի մասին։ Նա իր թողած դրամների վրա կրում է «արքայից-արքա» տիտղոսը, որը նշանակում է, թե անկախ էր Հռոմից (Հռոմից կախում ունեցող հայոց թագավորները «մեծ թագավոր» տիտղոսն էին կրում)[108]։

Հռոմեական պատմիչ Սեքստոս Ռուփոսը նշում է, որ Տիգրան Դ-ի ժամանակ հայերը ավելի հզոր էին, քան պարթևները[109]։ Անշուշտ, այս վկայությունը որոշակի պատմական հիմք ունի և իրավացի է այն չափով, որ չափով խոսքը վերաբերում է այդ ժամանակներում Հայաստանի և Պարթևստանի՝ Հռոմի ճնշմանը դիմագրավելուն։ Մինչդեռ Հայաստանում հռոմեասեր թագավորը ձեռք էր քաշում Հռոմից, իսկ նրա գահակալած որդին արդեն պարզորոշ հակադրվում նրան, պարթևների մոտ հակառակ երևույթներ էին տեղի ունենում։

Հրահատ Դ-ը, Անտոնիոսի լեգեոնների երբեմնի հաղթողը, այժմ կորցրել էր իր նախկին դեմքը։ 20 թվականին, ինչպես ասվեց, նա՝ ահաբեկված հռոմեական ռազմական ցույցից, Օգոստոսին հանձնեց Կրասոսի լեգեոնների արծվեկիր դրոշները և գերյալներին։ Որպես Օգոստոսի բարեհաճության նշան,

---

104 Հմմտ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 288 և հաջ.։
105 Տես N. Debevoise, A Political History of Parthia, էջ 191 և հաջ.։
106 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Ա, էջ 295։
107 Տե՛ս Tacit., Annal., III, 2։
108 Տե՛ս Հ. Մանանդյան, նույն տեղում, էջ 298։
109 Տե՛ս նույն տեղում, էջ 296։

Հրահատին նվեր է ուղարկվում մի գեղանի իտալուհի՝ Մուսա անունով մի ստրկուհի։ Դժվար է ենթադրել, թե նա հատուկ առաջադրանք չէր ունեցել Օգոստոսի կողմից։ Համենայն դեպս, նրա գործողությունները պարթևական արքունիքում սկզբից մինչև վերջ քայքայիչ բնույթ ունեցան։ Հրահատ Դ-ը ստրկուհուն դարձրեց իր հարճը և երբ նա մի տղա ունեցավ՝ թագուհի դարձրեց։ 10 թվականի մոտերքը Մուսան, որն անսահման ազդեցություն էր ձեռք բերել ամուսնու վրա, հայտնի չէ, թե ինչ փաստարկներով, համոզում է նրան՝ իր ավագ որդիներին՝ նրանց կանանց ու զավակների հետ միասին, ուղարկել Հռոմ։ Այսպիսով նա իր որդու՝ Հրահատակի համար ճանապարհ է հարթում դեպի պարթևական գահը[110]։ Մ. թ. ա. 2 թվականին Մուսան կատարում է իր եզրափակիչ քայլը. թունավորում է ամուսնուն՝ Հրահատ Դ-ին և գահ բարձրացնում Հրահատակին։ Վերջինս սկզբում փորձ է անում ընդվզել Հռոմի դեմ, միանալով Հայաստանին և ետ պահանջելով Հռոմ ուղարկված իր չորս եղբայրներին (անշուշտ, նրանց սպանելու նպատակով, քանի որ նրանք իրական վտանգ էին նրա իշխանության համար)։ Սակայն այդ երկար չի տևում։ Օգոստոսը մեծ բանակ է ուղարկում Արևելք՝ իր որդեգիր Գայոս Կեսարի հրամանատարությամբ և Հրահատակը տեղի է տալիս, հանձն առնելով այլևս չմիջամտել հայկական գործերին։ Մ. թ. 1 թվականին նա այդ հավաստում է Գայոս Կեսարի հետ անձնական հանդիպման ժամանակ՝ Եփրատի կղզիներից մեկի վրա[111]։

**Արտաշեսյան հարստության անկումը**: Մինչ այդ Հայաստանում տեղի էին ունեցել հետևյալ իրադարձությունները։ Օգոստոսը մ. թ. ա. 6 թվականին՝ խիստ անհանգստացած Տիգրան Դ-ի ինքնուրույն քաղաքականությունից, Տիբերիոսին կրկին հանձնարարել էր միջամտել հայկական գործերին։ Վերջինս հրաժարվել էր, բայց հռոմեական բանակը, մի այլ հրամանատարի գլխավորությամբ մոտ 5 թվականին մտել էր Հայաստան և գահընկեց արել Տիգրանին ու Էրատոյին։ Հայկական գահը տրվել էր Արտավազդին՝ Տիգրան Գ-ի եղբորը և Արտավազդ Բ-ի որդուն, որը արդեն 25 տարի է, ինչ Հռոմում էր ապրում։ Սա, ըստ երևույթին, իր եղբոր նման ճկուն չգտնվեց և կամ ժամանակ չունեցավ վերակողմնորոշվելու, որովհետև մ. թ. ա. 2 թվականին երկիրն ապստամբեց և դուրս մղելով հռոմեական դրածոյին, գահը նորից հանձնեց Տիգրան Դ-ին և Էրատոյին։ «Օգոստոսի հրամանով,— հաղորդում է Տակիտոսը,— թագավոր դրվեց Արտավազդը, որը գահընկեց արվեց ոչ առանց մեր կորստի»[112]։

Իսկապես որ հայ ժողովուրդն արդարացնում էր «Կամուրջներ չհանդուրժող Արաքսի» մասին գրած Վերգիլիոսի հայտնի տողերը[113]։

Հետաքրքրական է, որ իր «կտակի» մեջ Օգոստոսը քար լռությամբ է անցնում Տիգրան Դ-ի իշխած շուրջ տասը տարիների վրայով, չհիշատակելով ոչ միայն նրա անունը, այլև նրան Արտավազդով փոխարինելու իր անհաջող փորձը։

---

110 Տե՛ս N. Debevoise, A Political History of Parthia, էջ 143 և հաջ.։

111 Տե՛ս նույն տեղում, էջ 147 և հաջ.։

112 Tacit., Annal., II, 4։

113 Տե՛ս Vergil., Aen., VIII, 726։

Իր վերադարձից քիչ անց, Տիգրան Դ-ը, տեսնելով իր դաշնակից պարթևների զիջողական քաղաքականությունը Հռոմի նկատմամբ, ինքը ևս դիմում է Օգոստոսին, ընծաներ հղելով նրան և խնդրելով հաստատել իր թագավորական տիտղոսը։ Օգոստոսն ընդունում է Տիգրան Դ-ի ընծաները և հանձնարարում նրան՝ գնալ Արևելքի գործերը տնօրինելու ուղարկված Գայոս Կեսարի մոտ[114]։

Հայտնի չէ, թե ինչպես կընթանային դեպքերը, եթե Տիգրանի այցելությունը Գայոս Կեսարին իրականանար։ Սակայն դա տեղի չի ունենում մի նոր արհավիրքի պատճառով, որն այսուհետև հաճախ պիտի վրդովի Հայաստանի հանգիստը՝ լեռնային ցեղերի (ըստ երևույթին կովկասյան լեռնականների) ասպատակության պատճառով։ Հայոց թագավորը ստիպված է լինում գնալ ասպատակիչների դեմ և սպանվում է «բարբարոսների դեմ մղված պատերազմում»[115]։ Էրատոն հրաժարվում է գահից։

Տիգրան Դ-ի մահով շուրջ երկու դար իշխած (մ. թ. ա. 189—մ. թ. 1) Արտաշիսյան հարստությունը վերջանում է։ Այս ժամանակաշրջանը հայ ժողովրդի պատմության ամենանշանակալից փուլերից մեկն է կազմում։

---

114 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ., Ա, էջ 297։

115 Տե՛ս Dio, LV, 10 a, 5։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՐԳԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ

*Հին Հայաստանի պատմության գրավոր աղբյուրները միջնադարյան Հայաստանի պատմության աղբյուրների հետ համեմատելիս, աչքի է զարնում մի էական տարբերություն։ Առատ ու հարուստ հայ պատմական գրականությունը սկիզբ է առնում մեր թվականության V դարից. հայկական մատենագրության ծաղկման ժամանակներից, միջնադարի պատմաբաններին մատուցելով այնպիսի տվյալներ, որոնց հանդեպ դալկանում է Հայաստանի պատմության այդ ժամանակաշրջանին վերաբերող օտար, թեկուզ և շատ արժեքավոր, աղբյուրների նշանակությունը։ Նախընթաց, մինչև մ. թ. IV դարն ընկած ժամանակաշրջանը հակառակ պատկերն է ներկայացնում։ Այստեղ առաջին գծի վրա հանդես է գալիս օտար՝ հատկապես հունական ու լատինական, ինչպես և ասորական, պահլավական և այլ աղբյուրների խումբը, կազմելով այն նյութը, որով հիմնականում վերարտադրվում է հելլենիստական դարաշրջանի Հայաստանի պատմությունը։ Իհարկե, չի կարելի թերագնահատել նաև աղբյուրների մյուս, տեղական, հայկական խումբը (վաղ միջնադարի հայ հեղինակների տեղեկությունները հեռավոր անցյալի մասին և հնագիտական ու վիմագրական նյութը), որը գնալով աճում է և պատմագրական նոր մեկնաբանում ստանում։*

*Հեշտ է պատկերացնել, թե որքան տարաբնույթ է միջնադարյան և հին շրջանին վերաբերող աղբյուրներից եկող ինֆորմացիան։ Առաջին դեպքում, քաղված լինելով առավելապես ներքին աղբյուրներից, նա բազմակողմանի կերպով բնութագրում է հայ հասարակության ներքին կառուցվածքը, այն է՝ ֆեոդալական հասարակարգը։ Երկրորդ դեպքում՝ հին շրջանի պատմությունը լուսաբանելու համար, մեր տրամադրության տակ եղած օտար աղբյուրները պարունակում են լոկ կցկտուր, պատահական տվյալներ իրենց շարադրանքի հիմնական նյութը չհանդիսացող Հայաստանի մասին, ըստ որում այդ տվյալներն էլ, շրջանցելով երկրի ներքին կյանքը, վերաբերում են գրեթե բացառապես արտաքին պատմությանը, դիվանագիտությանը և այլն։*

*Հասկանալի է, ուրեմն, թե ինչու հին Հայաստանի հասարակարգի ուսումնասիրման սկզբնական փուլերում վաղ միջնադարյան առկա աղբյուրների հի-*

ման վրա Հայաստանի ներքին կյանքի մասին ստեղծված պատկերացումները ավելի կամ պակաս չափով մեքենայորեն տեղափոխվում էին նաև հին շրջանի վրա, որով և վերջինիս վերագրվում էին նույնպիսի ֆեոդալական կարգեր, որպիսիք բնորոշ են եղել հայկական միջնադարի համար։ Այս ուղղությամբ կատարված հետազոտությունները, հատկապես Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի աշխատությունները, խոշոր նվաճումների են հանգեցրել հայկական ֆեոդալիզմի, մասնավորապես նրա վաղ շրջանի ուսումնասիրման գործում[1]։ Սակայն, նրանք չեն բացահայտել հին նախաֆեոդալական Հայաստանի դասակարգային հասարակարգի բնորոշ գծերը։

Այս կարևոր խնդրին ձեռնամուխ է եղել Ս. Տ. Երեմյանը, որին հաջողվել է ցույց տալ, որ ստրկատիրական հասարակարգը հին աշխարհի մնացյալ երկրների նման չի շրջանցել նաև Հայաստանը։ Նոր տեսակետը հիմնված է մի կողմից հայկական մատենագրական աղբյուրների հատկապես այն տվյալների ուսումնասիրման վրա, որոնք վերաբերում են կամ հին շրջանին, կամ հնից եկող երևույթներին, մյուս կողմից՝ Հայաստանի հարևան երկրներից (Իրան, Միջագետք, Փոքր Ասիա) ծագող համապատասխան նյութի քննական համեմատական վերլուծության վրա[2]։

Չի կարելի ժխտել, որ այս նոր տեսակետի երևան գալը էական չափով կապված է եղել Հին Արևելքի հասարակությունների ստրկատիրական բնույթի մասին 30-ական թվականներից սկսած սովետական պատմագրության մեջ մշակվող կոնցեպցիան[3] հին Հայաստանի վրա տարածելու հետ։ Սակայն նման տարածման հնարավորությունը հենց պայմանավորված է եղել Հայաստանի հին պատմությանը, մասնավորապես ստրկատիրությանը վերաբերող նյութերի մինչ այդ կատարված ուսումնասիրությամբ։

Հայաստանում ստրկատիրական հասարակարգի գոյության մասին, ելնելով տեսական դրույթներից, կարծիք է հայտնել դեռևս Բ. Բորյանը[4]։ Ընդգծելի է, որ հին Հայաստանում ստրկատիրության գոյության հարցը առաջին անգամ որոշակի կերպով փաստական տվյալների հիման վրա տրված է Հ. Մանանդյանի աշխատություններում։ «Ստրկությունը,—գրել է Հ. Մանանդյանը,—համատարած և ընդհանուր մի երևույթ էր հին աշխարհում, ուստի ինքնըստինքյան

---

1 Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана. Политическое состояние на основе нахарарского строя, СПб, 1908. Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում (Արշակունիների և մարզպանության շրջան), Երևան, 1934։

2 Տե՛ս «История СССР с древнейших времен до образования древнерусского государства» (на правах рукописи), ч. I—II, М.—Л., 1939, էջ 316 և հաջ., Ս. Երեմյանի բաժինը, *С. Т. Еремян*, Основные черты общественного строя Армении в эллинистическую эпоху, ИАНАОН, 1948, № 11, նույնի՝ О рабстве и рабовладении в древней Армении, ВДИ. 1950, № 1, նույնի՝ Развитие городов и городской жизни в древней Армении. ВДИ, 1953 № 3, նույնի՝ Рабовладельческое общество древней Армении, М., 1953 (ավտոռեֆերատ)։ Очерки истории СССР (III—IX), М., 1958, էջ 168 և հաջ. (Ս. Երեմյանի բաժինը)։

3 Տե՛ս *В. В. Струве*, Проблема зарождения, развития и разложения рабовладельческих обществ Древнего Востока, ИГАИМК, № 77, Ленинград, 1934.

4 Տե՛ս *Б. А. Борьян*, Армения, международная дипломатия и СССР, т. I, М., 1928.

հասկանալի է, որ բացառություն չէր կարող կազմել նաև Հին Հայաստանը[5]։ Իր «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» ուսումնասիրության մեջ Հ. Մանանդյանը հանգամանորեն մշակել է ստրկական ուժի աղբյուրների և նրա կիրառման տնտեսական ասպարեզների հարցը։ Դրա հետ մեկտեղ նա նախազգուշացնում էր Հին Հայաստանում ստրկության նշանակությունը չափազանցելուց, գտնելով, որ այն Հայաստանում սոսկ նահապետական բնույթ է կրել, և քիչ թե շատ էապես չի թափանցել արտադրության բնագավառը[6]։

Ստրկության պրոբլեմին հատուկ ուսումնասիրություն է նվիրել Խ. Սամուելյանը[7]։ Ըստ նրա եզրահանգումների, Հին Հայաստանում գոյություն են ունեցել չորս կարգի ստրուկներ, արքունի, ճորտացված, տնային և տաճարական։ Հենվելով ստրկացված ռազմագերիների վերաբերյալ եղած թվական տվյալների վրա, ստրուկների թիվը նա համարում էր խիստ զգալի։ Ստրուկները Հին Հայաստանում, նրա կարծիքով, ունեցել են որոշ, թեպետ և խիստ սահմանափակ իրավունքներ. տիրոջ թույլատվությամբ ձեռք բերել անհրաժեշտ իրեր, ազատվել որոշ պայմաններով և այլն։ Խ. Սամուելյանի աշխատությունը արժեքավոր ներդրում է Հին Հայաստանի հասարակարգի ուսումնասիրման գործում, չնայած իր որոշակի սխեմայականության և, մասամբ, դեկլարատիվության։ Նրա թերությունների թվին է պատկանում նաև որոշակի անհամաձայնությունը Հին Հայաստանի հասարակարգի մասին իր ընդհանուր կոնցեպցիայի և ստրկատիրության կոնկրետ խնդրին տված լուծման միջև։ Վեր հանելով ստրկատիրության մի զարգացած համակարգ, հեղինակը այն համարում է սոսկ բաղկացուցիչ մաս ֆեոդալական հասարակության, որի ծագումը նա վերագրում է նախաուրարտական շրջանին։

Ս. Երեմյանը այս աշխատությունների վրա հենվելով հանդերձ և բերելով նոր նյութեր, ինչպես ասվեց, առաջադրել է սկզբունքորեն այլ տեսակետ, որ Հայաստանում գոյություն է ունեցել ստրկատիրական հասարակարգ և այն հանդիսացել է առաջին դասակարգային հասարակարգը։

Այս նոր տեսակետը սովետական պատմաբանների մեծամասնության կողմից ընդունված լինելով հանդերձ, առանձին դեպքերում վիճարկվել է։ Վիճարկման հիմնական թեզն այն է եղել, թե Հին Հայաստանում ստրկատիրական կարգերի գոյության տեսակետը հիմնված է միայն ու միայն Հին Հայաստանի հասարակարգը հունա-հռոմեական ստրկատիրական կարգերի հետ համանմանեցնելու կամ հենց նույնացնելու վրա։ Դարձնելով այդ թեզը ելակետ, մերժվել է մեկը մյուսի ետևից հունական և հռոմեական ստրկատիրությանը հատուկ այս ու այն երևույթների ու հաստատությունների գոյությունը Հայաստանում[8]։ Նման մեղադրանքը նպատակին չի հասնում։ Ոչ ոք այսօր չի նույնացնում Հին Հայաստանի հասարակարգը հունական կամ հռոմեական հասարակարգերի հետ և այդպիսի նույնացումը ամենևին պարտադիր չէ ապացու-

---

5 Հ. Մանանդյան, *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում*, էջ 233։

6 *Տե՛ս նույն տեղում, էջ 239*։

7 *Տե՛ս* Խ. Սամուելյան, *Ստրկությունը Հին Հայաստանում*, «Տեղեկագիր ՀՍԽՀ Պատմության և գրականության ինստիտուտի», № 2, Երևան, 1937։

8 *Я. А. Манандян*, Проблема общественного строя доаршакидской Армении, ИЗ, № 5, 1945, էջ 5 և հաջ.։

ցնելու համար, որ Հայաստանն ապրել է ստրկատիրական հասարակարգի շրջանը։ Ստրկատիրական երկիր լինելու համար ոչ միայն անհրաժեշտ չէր կրկնել հունական կամ հռոմեական ստրկատիրական հասարակությունների զարգացման ուղին, այլև իրենք՝ այդ երկու հասարակությունները, իրարից խիստ տարբերվում էին, իսկ եթե համեմատելու լինենք տնտեսության առանձին բնագավառներ, ապա կտեսնենք, որ նրանք ամենևին էլ նման չեն եղել միմյանց։

Օրինակ, գյուղատնտեսության մեջ հռոմեական կլասիկ ստրկատիրության համար բնորոշ էին խոշոր արտաքաղաքային տնտեսությունները՝ վիլլաներն ու լատիֆունդիաները՝ ստրուկների մեծ ջոկատների օգտագործմամբ։ Իսկ հունական կլասիկ ստրկատիրության մեջ (նկատի ունենք մ. թ. ա. V դարի Ատտիկան) լատիֆունդիաներին նմանվող որևէ բան չի նկատվում։ Այստեղ բնորոշ էր մանր պոլիսիային (քաղաքային) հողատիրությունը՝ ստրկական աշխատանքի թույլ կիրառմամբ։ Նույն այդ ժամանակաշրջանի Հունաստանի մյուս մարզերի գյուղատնտեսության մեջ իշխում էին ստրկատիրության այլ ձևեր։ Օրինակ, Սպարտայում գյուղատնտեսությունը վարում էին հելոտների շահագործման միջոցով՝ արտադրողների մի կատեգորիա, որը դժվարությամբ է տեղավորվում ստրուկների մասին դպրոցական պատկերացումների շրջանակներում, թեև հելոտներն իսկական ստրուկներ էին, իսկ Սպարտան ինքը՝ տիպիկ ստրկատիրական պետություն։

Ստրկատիրական հասարակարգի սովետական հետազոտողները վաղուց ի վեր հրաժարվել են տարբեր ժամանակաշրջանների և երկրների տնտեսական ձևերի ու սոցիալ-տնտեսական հարաբերությունների ողջ բազմազանությունը ստրկատիրական հասարակարգի մասին կանխապես տրված պարզունակ և քարացած պատկերացումների մեջ խցկելու փորձերից։ Դրան առանձնապես օգնեց հինարևելյան հասարակությունների մարքսիստական խոր ուսումնասիրությունը, որը հետազոտողների առջև բաց արեց ստրկատիրական արտադրական հարաբերությունների նորանոր կոնկրետ ձևեր, մերթ միմյանց և հունա-հռոմեական աշխարհի ձևերին նման, հաճախ՝ միանգամայն տարբեր։

Հին Հայաստանի ստրկատիրական հասարակարգի տեսակետի դեմ ուղղված գլխավոր առարկություններից երկրորդը հիմնված է այն նկատառման վրա, թե արտադրության մեջ համայնական գյուղացիության դերը այստեղ այնքան մեծ է եղել, որ ստրուկների համար լոկ աննշան տեղ է թողել[9]։

Ստրուկների ու համայնականների քանակական հարաբերության խնդիրը շատ կարևոր է, սակայն առայժմ անլուծելի, որովհետև վիճակագրական կամ դրանց փոխարինող որևէ տվյալ չկա։ Սակայն այն հարցը, թե համայնքի դերը արտադրության մեջ որքան մեծ է եղել, իր հույժ կարևորությամբ հանդերձ, կենտրոնական ու վճռական չէ հին Հայաստանի հասարակության սոցիալ-տնտեսական բնույթը որոշելու գործում[10]. վճռական է այն հարցը, թե որպիսին է

---

[9] *Я. А. Манандян,* Проблема общественного строя, էջ 20—25 և այլն։ Տե՛ս նաև Ս. Ե. Հակոբյան, Հայ գյուղացիության պատմություն (վաղ ֆեոդալիզմի շրջան), հատ. 1, Երևան, 1957, գլ. 3 և 4, հատկապես էջ 220, 248։

[10] Հմմ. *С. Л. Утченко, Е. М. Штаерман,* О некоторых вопросах истории рабства, ВДИ, 1960, № 4, էջ 9, և հաջ.։ Հեղինակների կարծիքով, այս կամ այն հասարակությանը ստրկատիրական ֆորմացիա վերագրելիս «Ստրուկների թվի չափանիշից հարկավոր է հրաժար-

եղել հին Հայաստանի գյուղական համայնքի բնույթը՝ ստրկատիրական թե՞ ֆեոդալական, որովհետև գյուղական համայնքը չէ, որ իրենով բնորոշում է այս կամ այն ֆորմացիան, այլ իշխող ֆորմացիան է, որ իր կնիքն է գնում գյուղական համայնքի վրա, որը նպաստավոր պայմանների առկայության դեպքում, կարող է գոյություն ունենալ ամեն մի ֆորմացիայի տիրապետման ժամանակ։

Այս ամենը բնավ չի նշանակում, թե հին Հայաստանի հասարակարգի բոլոր խնդիրները պետք է լուծված համարել։ Ընդհակառակը, շատ հարցեր դեռևս մութ են, ուրիշներն էլ, այսօր պարզաբանված թվալով, վաղը կարող են լուծման այլ ընթացք ստանալ։ Եվ այս վերաբերում է ոչ միայն մասնավոր խնդիրներին, այլև կենտրոնական ու սկզբունքային հարցերին։ Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական կարգի մասին մեր պատկերացումների զարգացումը այսուհետև էլ սերտորեն կապված է լինելու Հին Արևելքի և հելլենիստական աշխարհի երկրների սոցիալ-տնտեսական նկարագրի ուսումնասիրման բնագավառում գիտության առաջիկա նվաճումների հետ։

Որքան խորանում ենք այս խնդրում, այնքան համոզվում ենք, որ հին Հայաստանի հասարակարգը սկզբունքորեն տարբերվել է միջնադարյան ֆեոդալական Հայաստանի հասարակարգից։ Այդ եզրահանգմանն է մղում ոչ միայն սոցիալ-տնտեսական զարգացումը ցուցադրող փաստերի շարանը, այլև, ու նույնիսկ ավելի ցցուն կերպով, հայ հասարակության զարգացման մյուս՝ քաղաքական, մշակութային և այլ բնագավառների փաստերի ամբողջությունը[11]։

Հիրավի հին Հայաստանի կյանքի տարբեր կողմերի ընթացքի վրա ձգած ընդհանուր հայացքը ցույց է տալիս, որ հելլենիստական ժամանակաշրջանր հայ հասարակության համար դարձավ հզոր մղման և հետագա քուռն վերելքի շրջան։ Կազմավորվեց Մեծ Հայքի միացյալ պետությունը, աշխուժացավ միջազգային և տեղական առևտուրը և սրա, ինչպես և այլ հանգամանքների հիման վրա աճեցին, բազմացան ու զարգացան հայկական քաղաքները։ Ծաղկեց առաջավոր հունական մշակույթի տարրերով բեղմնավորված հայկական հելլենիստական մշակույթը, որի արգասիքն են Տիգրանի ու Արտավազդի թատրոնները, Գառնիի հոյակապ տաճարը, նույն Գառնիի բաղնիքի խճանկարազարդ հատակը, հունարեն լեզուն և գիրը, հունարեն արձանագրությունները։ Իր նոր ձևավորումը ստացավ հայկական հեթանոսական կրոնը՝ հելլենիստական կրոնի տարրերով հարստացած։ Ընդամենը երկու հարյուրամյակի ընթացքում Հայաստանր, Աքեմենյան տերության հյուսիսային ծայրամասում ընկած սատրապությունը, մ. թ. ա. I դարում դարձավ Առաջավոր Ասիայի ամենահզոր պետությունը։

Այնուհետև, պարզորոշ տեսնում ենք, որ այս բոլոր պրոցեսները անցնե-

---

վել ամենավճռական կերպով»։ «Ստրկատիրական աշխատանքը, ստրկությունը որպես շահագործման ձև... զարգացած ստրկատիրական պետությունների ազդեցության տակ գտնվող հասարակությունների մեջ կարող էին և շահագործման (ու աշխատանքի) գերակշռող ձևեր չլինել։ Բայց դա ոչ մի դեպքում չպետք է խախտի մեր պատկերացումը ստրկատիրական ֆորմացիայի մասին։ Եթե աշխատանքի կամ ստրկատիրական շահագործման ձևը չէր գերակշռում քանակապես, ապա այն անկասկած, գերակշռում էր որակապես» (էջ 11)։

11 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ուղիների մասին, Երևան, 1962, էջ 62—72։

լով մի շարք աստիճաններ, իրենց ավարտին են հասնում մոտավորապես միևնույն ժամանակ՝ մ. թ. IV դարի շուրջը։ Կենտրոնացած պետությունը կիսվում է այդ դարի վերջին և վերանում հաջորդ դարի սկզբին, քաղաքային կյանքը անկում է ապրում, քաղաքները գրեթե իսպառ վերանում են, վերածնվելով միայն կես հազարամյակ հետո։ Հեթանոսական կրոնը IV դարի սկզբին տեղի է տալիս քրիստոնեությանը։ Հելլենիստական տիպի մշակույթը իր տեղը զիջում է էլ ավելի փայլուն, արդեն զուտ ազգային մշակույթին, որի մուտքը հայտանշվում է հայ գրերի գյուտով։

Միանգամայն ակներև է, որ հայ հասարակության վերնաշենքի այս բոլոր կողմերի զարգացման ծիրերը իրենցով ներփակելով որոշակի ժամանակաշրջան, պատմական զարգացման առանձին, ինքնուրույն դարաշրջան, իրենց հիմքում ենթադրում են համապատասխան բազիսի. սոցիալ-տնտեսական մի առանձին հասարակարգի առկայությունը, որը, ինչպես ասվեց, սկզբունքորեն տարբեր է հաջորդ, ֆեոդալական դարաշրջանի հասարակարգից, այսինքն՝ հենց այն հասարակարգի, որն այսօր անվանում ենք ստրկատիրական։ Այդ հասարակարգի անկման ժամանակը որոշելիս պետք է հաշվի առնել, որ վերոհիշյալ երևույթները, ինչպես այդ հատուկ է ընդհանրապես վերնաշենքային երևույթներին, ավելի երկար կյանք են ունեցել, քան նրանց բազիսը, նրա անկումից հետո որոշ ժամանակ հարատևելով նաև նոր հասարակարգի սկզբնավորման փուլերում։

Այժմ փորձենք հնարավորին չափ բնութագրել հին Հայաստանի սոցիալ-տնտեսական կարգը, հենվելով բացի խիստ սահմանափակ ուղղակի տվյալներից, նաև վաղ միջնադարյան հայ աղբյուրների մատուցած տեղեկությունների վրա, որոնք պատկերելով մեզ հետաքրքրող պրոցեսների եզրափակիչ փուլերը կամ վերապրուկները, դրանով իսկ կարող են հենակետ ծառայել նախորդ փուլերի բացահայտման գործում։ Հաճախակի ապավինելու ենք նաև Հայաստանի հարևան երկրներին վերաբերող համապատասխան նյութին, ելնելով այն հանգամանքից, որ դա հասարակության զարգացման նույն այն օրինաչափությունների դրսևորումն է, որոնք գործել են և Հայաստանում։

## 2. ՀՈՂԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։ ԳՅՈՒՂԱԿԱՆ ՀԱՄԱՅՆՔԸ

**Հողային հարաբերությունները։** Հին Արևելքի կյանքում խոշորագույն դեր են խաղացել հողային հարաբերությունները, որոնք եղել են ժամանակի արտադրական հարաբերությունների կարևորագույն դրսևորումները։ Հելլենիստական շրջանում վիճակը չփոխվեց։ Հիմնական արտադրամիջոցի՝ հողի հանդեպ ունեցած այս կամ այն առնչությամբ էր գլխավորապես պայմանավորված հասարակության անդամների սոցիալական էությունը, նրանց դիրքն ու դերը երկրի տնտեսական ու հասարակական կյանքում։

Հելլենիստական աշխարհի երկրներում, ներառյալ նաև Հայաստանը, հողային հարաբերություններն ունեին բավականին բարդ կառուցվածք։ Նախ և առաջ տվյալ պետության սահմաններում գտնվող ամբողջ հողը բաժանված էր երկու մասի. նրա մի մասը կազմում էր միապետի անմիջական սեփականու-

թյունը, որտեղ միաբանը հանդես էր գալիս որպես անմիջական շահագործող (իհարկե իր գործակալների օգնությամբ)[12]։ Արքունի հողային ֆոնդը մեծ չափերի էր հասնում, բայց կրճատման տենդենց ուներ, որը գնալով պիտի ուժեղանար։ Այդ ֆոնդից է, որ կատարվում էին արքունի նվիրատվությունները տաճարներին[13], նորաստեղծ քաղաքներին[14], զինվորական ու վարչական ավագանուն. հայտնի է, որ հելլենիստական շրջանում անընդհատ նորանոր տաճարներ ու քաղաքներ էին հիմնադրվում, ուռճանում էր պետական ու վարչական ապարատը։

Ռազմական արշավանքներում, նվաճված երկրների կազմակերպման ու կառավարման բնագավառում, ինչպես նաև բուն երկրում իրագործվող այլևայլ ձեռնարկումներում առաջ էր քաշվում ավագանու նոր շերտ՝ ծառայող ավագանին, որը համալրում էր իշխող դասակարգի շարքերը, որոշ իմաստով հակադրվելով մեծատոհմիկ ավագանուն։ Իշխող դասակարգի այս նոր շերտը բավարարված չէր հողային գույքով, ինչպես որ հագեցած էր ժառանգական ավագանին, և անընդհատ կարիք էր զգում ու պահանջում հողային նորանոր տարածություններ, որ և առատաձեռնորեն տրամադրում էր թագավորը, քանի որ նրա իշխանությունը մեծապես հենված էր այդ շերտի վրա։

Բացի դրանից, արքունի հողն էին օգտագործում նաև պետական (թե՛ զինվորական և թե՛ վարչական) միջակ ու մանր պաշտոնյաները (աստիճանավորներ, հրամանատարներ, պարզապես զինվորներ)։ Հին արևելյան երկրներում հողօգտագործման այդ ձևը մեծ տարածում ուներ։ Աքեմենյան շրջանի Բաբելոնիայից հայտնի են «աղեղի հողը», «ձիու հողը», «մարտակարգի հողը» և այլն, որոնք համապատասխան զինվորական ծառայողներին տրվում էին իրենց ծառայության դիմաց և օտարման ենթակա չէին։ Այս հաստատությունը իր հետագա զարգացումն ունեցավ հելլենիստական աշխարհում, ինչպես և Հայաստանում, որտեղ այդ տիպի հողատերերը սկսեցին անվանվել ոստանիկներ։ Սրանք իրենց ծառայության դիմաց պայմանականորեն ստանում էին արքունական հողակտորներ՝ անձնական կամ ժառանգական օգտագործման համար։ Պայմանով նախատեսված հանգամանքների բացառման կամ այս ու այն ձևով վերանալու կապակցությամբ հողը կարող էր ետ վերցվել, և հավանորեն բազմաթիվ դեպքերում ետ էր վերցվում թագավորի կողմից, սակայն հողի մասնավոր սեփականության զարգացմանը համընթաց երևի քիչ չէին և այն դեպքերը, երբ պայմանականորեն տրված հողը հետզհետե դառնում էր օգտագործողների ժառանգական սեփականությունը[15]։

Երկրի հողերի մյուս մասը, այն, որի նկատմամբ թագավորը հանդես էր գալիս ոչ որպես սեփականատեր, այլ միայն որպես տնօրեն՝ պետության ներ-

---

12 Տե՛ս *С. Т. Еремян,* Рабовладельческое общество древней Армении, М., 1953, էջ 36; *А. Г. Периханян,* Древнеармянские востаники, ВДИ, 1956, № 2, էջ 52։

13 Տե՛ս *А. Г. Периханян,* Храмовые объединения Малой Азии и Армении (IV в. до н. э.—III в. н. э.), М., 1959, էջ 104, 106։

14 Տե՛ս *Г. Х. Саркисян,* Тигранакерт. Из истории древнеармянских городских общин, էջ 100 և հաջ.։

15 Տե՛ս *А. Г. Периханян,* Древнеармянские востаники, էջ 56 և հաջ.։

կայացուցիչ, ինչպես արդեն ցույց տրվեց, տենդենց ուներ դեպի ընդլայնումը՝ ի հաշիվ վերը հիշատակված երևույթների։ Այս հողը առաջին հերթին պատկանում էր տեղական տոհմապետ-իշխողներին, թագավորի հարազատներին, մեծատոհմիկ և այլ ժառանգական ավագանուն, այնուհետև կոլեկտիվ հողատերերին, քաղաքներին, տաճարներին, ինչպես նաև առանձին քաղաքացիներին ու քուրմերին։ Սակայն այդ բոլորի սեփականատիրական իրավունքները հավասար հիմունքներով չէր, որ իրականանում էին։ Սեփականությունը կարող էր լինել անմիջական և միջնորդված։ Այսպես, ցեղապետերը, մեծատոհմիկները, քաղաքները, տաճարները հանդես էին գալիս մասամբ որպես անմիջական, մասամբ էլ որպես գերագույն հողատերեր, որոնց ներքո որպես հողի անմիջական տերեր ու օգտագործողներ կարող էին հանդես գալ այլևայլ անձինք ու համայնքներ։

Հողային հարաբերությունների յուրատեսակ այս սանդուղքի վրա ստորին տեղ էր գրավում գյուղացիությունը։ Նա ուներ հողօգտագործման իրավունք, որի կրողը լիիրավ էր միայն որպես համայնքի անդամ, բայց ոչ անձնապես։ Հին Հայաստանի, ինչպես և արևելյան այլ երկրների հողային հարաբերությունների բնագավառում-համայնական հողատիրությունը այն հիմքն էր, որի վրա բարձրանում էր հողային հարաբերությունների շենքը։ Թվարկված բոլոր օղակներից գյուղական համայնքը որակապես տարբերվում էր նրանով, որ մինչդեռ նա հողի անմիջական մշակողն էր, նյութական բարիքների անմիջական արտադրողը, մյուսները հանդես էին գալիս որպես այդ բարիքների յուրացնողներ։ Գյուղական համայնքի և նրանց միջև ընկած էր շահագործվողներին շահագործողներից սահմանազատող անջրպետը։ Դրանք հակամարտ դասակարգեր էին։

Համայնական գյուղացիության հետ մեկտեղ նյութական բարիքների անմիջական արտադրողների մի մեծ զանգված էր կազմում ստրուկների դասակարգը[16]։ Ստրուկները հելլենիստական շրջանի Հայաստանում հիմնականում աշխատում էին արտահամայնային կամ համայնական տերիտորիաներից հատված հողերի վրա առաջացած մասնատիրական տնտեսություններում, որոնք պատկանում էին շահագործող դասակարգի մեծ ու փոքր ներկայացուցիչներին։ Հողային տիրույթները սովորաբար իրենցից ներկայացնում էին համայնքներից (գյուղեր, շեներ) և տնտեսություններից (դաստակերտ-ագարակներ) բաղկացած կոմպլեքսներ, որոնք տիրոջ կողմից շահագործվում էին տարբեր հիմունքներով[17]։ Հողային հարաբերությունների բնագավառում ստրուկները բոլորովին իրավազուրկ էին և նրանց վիճակը համայնական գյուղացիության հետ համեմատած շատ ավելի վատթար էր։ Ի տարբերություն գյուղացի-

---

16 Տե՛ս *С. Т. Еремян*, О рабстве и рабовладении в древней Армении, ВДИ, 1950, № 1.

17 Այդ ձևով են ներկայացված նախարարների, տաճարային և այլ տիրույթները հայկական հնագույն աղբյուրներում (Փավստոս, Գ, ա, Եղիշե, էջ 17, Խորենացի, Բ, ժէ, Գ, ի և իը և այլն)։ Տե՛ս Ն. Ադոնց, Հին հայ շինականությունը, «Պատմական ուսումնասիրություններ», Պարիս, 1948, էջ 202։ Այս իրավիճակը գալիս է շատ հնից և լայն տարածում է գտել հելլենիստական աշխարհում, որի մասին վկայում է մ. թ. ա. III դարի հողային հարաբերությունների պատմության կարևորագույն աղբյուրներից մեկը՝ ոմն Մնեսիմաքոսի՝ Փոքր Ասիայից ծագող հունարեն արձանագրությունը (տե՛ս *M. N. Buckler* and *D. M. Robinson*, Greek inscriptions from Sardes, I, „American Journal of Archaeology". XVI, էջ 12 և հաջ.)։

ների, որոնք անձնապես ազատ էին և իրենց արտադրանքից վճարում էին թեև ծանր ու հարստահարիչ, բայց որպես օրենք, որոշակիորեն սահմանված քանակությամբ հարկեր ու տուրքեր, ստրուկների ամբողջ արտադրանքը, ինչպես և իրենք՝ ստրուկները, պատկանում էին տիրոջը, որն ըստ իր հայեցողության, կամ հետևելով ընդունված կանոններին, ստրուկին էր թողնում նրա արտադրանքի մի մասը։

Սակայն շահագործման այս երկու ձևերը իրարից անջրպետված չէին, այլ գտնվում էին փոխադդեցության մեջ։ Ինչպես կտեսնենք, ստրկական շահագործման ձևը իր ծանր կնիքն էր դնում համայնքային գյուղացիության շահագործման վրա և մյուս կողմից համայնական կարգերը տանում էին դեպի իրենց աշխատանքի հանդեպ ստրուկների տնտեսական շահագրգռության աճ։ Այս երկու հանդիպակաց տենդենցները կազմում էին հելլենիստական շրջանի արտադրական հարաբերությունների զարգացման կարևորագույն կողմերից մեկը։

**Գյուղական համայնքը**: Գյուղական տերիտորիալ համայնքը նույնքան և էլ ավելի հին է, որքան դասակարգային հասարակությունը։ Նա առաջ է գալիս նախնադարյան համայնական հասարակության քայքայման պահին, որպես սրան հատուկ տոհմական համայնքի ֆունկցիաների ժառանգորդ, ձեռք բերելով, իհարկե, մի շարք նոր գծեր։ Արտադրական կապերի ուժեղացմամբ համայնքի միավորման ու համախմբման գործում հետին պլան է մղվում ազգակցական կապերի դերը։ Գյուղական համայնքի առաջացման ու գոյության սկզբնապատճառը և հիմքը բավարար քանակությամբ կենսամթերքների արտադրության անհրաժեշտությունն է, որի իրականացումը թույլ զարգացած կամ առանձնահատուկ աշխարհագրական ու կլիմայական պայմաններում գտնվող հասարակություններում անհնարին է այլ կերպ, քան կոլեկտիվի, այսինքն՝ համայնքի ընդհանուր ջանքերով։ Հետագայում համայնքի հարատևմանը սկսում են նպաստել և այլ գործոններ։ Նրան ներքնապես շաղկապում է համայնքի անդամների՝ իրենց ունեցած ու ձեռք բերած իրավունքները միասնական ուժերով պաշտպանելու ձգտումը պետության, ինչպես և իշխող դասակարգի այլևայլ ներկայացուցիչների ճնշումից։ Ստրկատիրական հասարակարգի ավելի ուշ շրջաններում համայնքի գոյության հարցում մեծ շահագրգռվածություն է հանդես բերում ինքը պետությունը, արհեստականորեն պահպանելով այն որպես հարկման չափազանց հարմար միավոր։

Համայնքն, այսպիսով, հարատևում է այնտեղ և այնքանով, որտեղ և որքանով պահպանվում են նրա գոյության պատճառները կամ նրանց մի մասը. ըստ որում այդ պատճառները, ինչպես ցույց են տալիս զանազան երկրների համայնքների ուսումնասիրությունը, կապված չեն անպայման արտադրողական ուժերի ցածր մակարդակի հետ, այսինքն միշտ չէ, որ ինչքան բարձր է նրանց մակարդակը, այնքան քիչ են համայնքի պահպանման պայմանները։ Ինչպես հայտնի է, Հին Արևելքի շատ երկրներում համայնքը շարունակում է իր գոյությունը պահպանել նաև արդեն համեմատաբար բարձր արտադրամակարդակի առկայությամբ, որովհետև հողերի գերակշռող մասը ջրովի էր, իսկ ոռոգման սիստեմի ստեղծումը, պահպանումը և ընդլայնումը ի վիճակի են ապահովել միմիայն կոլեկտիվները և նրանց միավորումները։ Այլ երկրներում համայնքի պահպանման պատճառները կարող են ուրիշ լինել։

Հայաստանում գյուղական համայնքը, իր կրած փոփոխություններով հանդերձ, գոյություն է ունեցել հնագույն ժամանակներից սկսած մինչև XX դարի սկիզբը[18]։

Գյուղական համայնքը իրավահավասար անդամների մի կոլեկտիվ է, որն ունի հողի ընդհանուր՝ համայնական սեփականություն։ Հողը բաժանվում և պարբերաբար վերաբաժանվում է համայնքը կազմող ընտանիքների միջև՝ ըստ շնչերի քանակության, այսինքն ըստ հողի մշակման ֆիզիկական հնարավորության և սպառման պահանջի։ Հետևաբար վարելահողի օգտագործումը կրում էր անձնական բնույթ։ Հողի մի մասը՝ արոտավայրերը, անտառները, լճերը և այլն, մնում է չբաժանված՝ համայնքի անդամների հանրային օգտագործման համար։ Բացի իրենց հողաբաժինները մշակելուց, համայնականները կատարում են և համայնքի ընդհանուր կարիքների հետ կապված աշխատանքներ՝ ոռոգման, բնակավայրերը և ցանքսերը գարնանը հեղեղումներից պաշտպանելու և այլ բնագավառներում։

Արտադրական հարաբերությունների այս հիմքի վրա էլ հանգչում է համապատասխան վերնաշենքը՝ համայնքի ղեկավարությունը։ Այն իրականացվում է համայնքի անդամների ժողովի, նրա կողմից ընտրված ավագների խորհրդի, վերջիններիս գլուխ կանգնած գեղջավագի և սրա ձեռքի տակ գտնվող, նորից ընտրովի, լիազորված անձնավորությունների միջոցով։

Պետության առջև համայնքը ներկայանում է միասնաբար, որպես միավոր։ Վերուստ գանձվող հարկերը և տուրքերը վճարվում են կոլեկտիվ կերպով, ինչպես և կոլեկտիվի համաձայնությամբ համայնականներն են առանձնացվում պետական պարհակի համար[19]։

Գյուղական համայնքի այսպիսի անաղարտ պատկեր, սակայն, քիչ է պատահում։ Դասակարգային տվյալ հասարակության մեջ գոյատևելով, այն կրում է այդ հասարակության դրոշմը, այս կամ այն ձևով արտացոլում նրա առանձնահատկությունները։ Դասակարգերի ստեղծման պրոցեսը տեղի է ունենում նաև գյուղական համայնքներում, որոնք տնտեսապես շերտավորվում են։

Քանի որ մի մասի տնտեսական ուժեղացումը անհնարին է առանց մի այլ մասի տնտեսական թուլացման, ապա համայնքում առաջանում են և այնպիսի տներ, որոնք հետզհետե կորցնում են իրենց տնտեսական անկախությունը։ Առաջանում են պարտատերեր և պարտապաններ։ Համայնքի ներսում ստեղծվում է շահագործման հնարավորություն, որը հետզհետե դառնում է իրականություն։ Այսպիսով գյուղական համայնքը թեև ծանրաշարժ ու պահպանողական, բայց այնուհանդերձ զարգացման ընդունակ մարմին է, որը էվոլյուցիա է ապրում այն հասարակության զարգացմանը համընթաց, որի մասնիկն է կազմում[20]։

---

18 Տե՛ս С. Т. Еремян, Рабовладельческое общество древней Армении, էջ 14 և հաջ.։ Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում։ Արշակունիների և մարզպանության շրջան, էջ 148։ С. Егиазаров, Исследования по истории учреждений в Закавказье, ч. I, Сельская община, Казань, 1889.

19 Տե՛ս С. Т. Еремян, Рабовладельческое общество древней Армении, էջ 16։

20 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ուղիների մասին, էջ 53 և հաջ.։

*Սակայն գյուղական համայնքը ինքնին երբեք երբևէ սոցիալ-տնտեսական ֆորմացիայի հատկանիշ չի հանդիսացել։ Անհրաժեշտ պայմանների առկայության դեպքում այն կարող էր գոյություն ունենալ թե՛ ստրկատիրական հասարակարգի ժամանակ, թե՛ ֆեոդալիզմի և թե՛ նույնիսկ կապիտալիզմի օրոք, և ընդհակառակն, պայմանների բացակայության դեպքում, կարող էր բացակայել այդ հասարակություններում։*

*Ստրկատիրական երկրների գյուղական համայնքներում առաջանում էին ստրկատիրական հարաբերություններ, իհարկե, համայնական կյանքի յուրահատուկ պայմանների ազդեցության ներքո՝ որոշակիորեն ձևափոխված վիճակում։ Խոսքը վերաբերում է հիմնականում պարտային ստրկությանը՝ համայնքների ներսում, բայց նաև այն ստրուկներին, որոնց հարուստ համայնականները ձեռք էին բերում դրսից։ Ստրկատիրական հարաբերությունները թափանցում էին նաև ընտանիք՝ համայնքի բաղկացուցիչ մասը, և ազդում կանանց ու երեխաների վիճակի վրա։ Այս երևույթները հստակորեն դրսևորվում են Հայկական բնաշխարհի հարավային շրջաններում հայերին նախորդած խուրրիների գյուղական համայնքներում*[21]*։*

*Այս բոլոր երևույթներն, իհարկե, հայտանշում էին համայնքի, նրա կենսաձևերի քայքայումը, բայց համայնքը քայքայվելով հանդերձ, չէր կազմալուծվում այն պատճառով, որ նախ, նրա գոյության ներքին հիմքերը դեռևս պահպանում էին իրենց նշանակությունը և երկրորդ՝ ավելի ու ավելի էին զորեղանում արտաքին պատճառները։ Հելլենիստական շրջանում համայնքը դառնում է պետական հարկային սիստեմի կարևոր հանգույց և պետությունը, շահագրգռված նրա պահպանմամբ, իր հովանավորության տակ էր առնում նրա երևելի անդամներին, դարձնելով սրանց պետական պաշտոնյաներ, իսկ համայնականներին հաճախ զրկում համայնքը լքելու իրավունքից*[21ա]*։*

*Հիմնվելով հնագույն հայկական աղբյուրների վրա, Ն. Ադոնցը, ինչպես և Հ. Մանանդյանը մ. թ. IV դարի հայ շինականության մի մասը համեմատում*

---

[21] *Տես վերը՝ էջ 183 և հաջ.։ Տես նաև И. М. Дьяконов*, Развитие земельных отношений в Ассирии, Л., 1949, *Պարտքը չվճարելու դեպքում պարտատերը ձեռք էր բերում ստրկացվածի վրա իշխելու լրիվ իրավունք և նույնիսկ կարող էր այդ ստրուկին վաճառել Ասորեստանի սահմաններից դուրս (էջ 68 և հաջ.)։ «Բացի անմիջական ստրկացումից, որի օբյեկտ էին դառնում անվճարունակ պարտապանները... նկատվում են նաև քողարկված ձևեր՝ թշվառության մեջ ընկած համայնականների կամ նրանց երեխաների «վերակենդանացումը», «որդեգրումը» ունեվոր համայնականների կողմից» (էջ 64 և հաջ.)։ «Հոր և ամուսնու իշխանությունը երեխաների և կնոջ նկատմամբ քիչ էր տարբերվում տիրոջ իշխանությունից ստրուկի նկատմամբ. այսպես, դեռ հին ասորեստանյան ժամանակներում երեխաները և ստրուկները հավասարապես դասվում էին այն գույքի շարքը, որից պարտատերը կարող էր հատուցում վերցնել պարտքի դիմաց» և այլն (էջ 63 և հաջ.)։*

[21ա] *Մ. թ. ա. III դարի կեսերին պատկանող փոքրասիական մի արձանագրության մեջ թագավորը նշում է, որ նվիրում է մի որոշակի անձնավորության մի գյուղ իր գյուղացիներով և սրանց ունեցվածքով; ըստ որում նաև այն գյուղացիներին, որոնք լինելով այդ գյուղի բնակիչները, տեղափոխվել են այլ վայրեր (տես C. B. Welles*, Royal Correspondence in the Hellenistic Period, New Haven, 1934, № 19)։

*են փոքրասիական կոլոնների հետ, իսկ Մանանդյանը անգամ նաև «կիսազատ ճորտեր» է համարում նրանց[22]։ Ուրեմն Սելևկյան շրջանի հիշատակված արձանագրության մեջ բնութագրված վիճակը (պետության ու անմիջական հողատերերի կողմից համայնական գյուղացիության շահագործման սաստկացումը) այս կամ այն ձևով հատուկ է եղել նաև հին Հայաստանին։*

*Պետք է ընդգծել, որ համայնքի ներքին քայքայումը ամենևին չէր կասեցնում վերուստ իրականացվող շահագործումը և հանգեցնում էր միայն այն վիճակին, որ հերթական ու արտահերթ հարկերը, տուրքերն ու պարհակները անհավասարաչափ էին բաշխվում համայնականների միջև։ Հիմնական ծանրությունն ընկնում էր շարքայինների և տնտեսապես թույլերի վրա։ Նրանց վրա ծանր բեռ էին հատկապես պարհակները, որոնց հաշվին էր նշանակալից չափով իրականացվում հելլենիստական շրջանում մեծ ծավալ ստացած պետական շինարարությունը։ Դրանք լայնորեն կիրառվում էին Հայաստանում դեռևս մ. թ. IV դարում «գուգազ» և «խաշար» անունների տակ, ինչպես հաղորդում է Փավստոս Բուզանդը։ Աշխատողների վիճակը նման պայմաններում չէր տարբերվում ստրկականից։ Նրանք փաստորեն ժամանակավոր ստրուկներ էին դառնում[23]։*

*Գյուղական համայնքը մատակարարում էր զորքի մի ստվար մասը։ Առհասարակ գյուղացիության վիճակը նույնը չէր երկրի տարբեր շրջաններում։ Որպես օրենք այն ավելի տանելի էր արքունի հողերում, որտեղ միակ տերն ու շահագործողը թագավորն էր։ Այն ավելի ծանր էր մնացած հողերում, որտեղ պետության կողմից գանձվող հարկերի ու տուրքերի վրա ավելանում էր մասնատիրոջ տրվելիքը։ Հավանական է, որ գոյություն են ունեցել համայնական գյուղացիության տարբեր կատեգորիաներ։ Դրա օգտին է վկայում համայնքի համար երկու՝ «գիւղ», «շէն», իսկ գյուղացիության համար երեք տերմինի առկայությունը հայոց լեզվում՝ «գեղջուկ», «շինական», «ռամիկ», որոնք հետզհետե կորցրել են նրանց մեջ նախապես գոյություն ունեցած իմաստային տարբերությունը։*

## 3. ՍՏՐԿԱՏԻՐՈՒԹՅՈՒՆ։ ՍՏՐԿԱԿԱՆ ՈՒԺԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

**Մասնատիրական տնտեսություններ՝ դաստակերտ–ագարակներ:** *Հողի մասնավոր սեփականության զարգացման այն պրոցեսը, որ թեթևակի հիշատակվեց գյուղական համայնքի մեջ տեղի ունեցած փոփոխությունների կապակցությամբ, իր իսկական ու գլխավոր ասպարեզն ուներ արտահամայնական հողերի վրա։ Այստեղ է, որ դարեր առաջ այն ծայր էր առել, այստեղ է, որ հելլենիստական շրջանում այն սրընթաց աճում էր։*

*Երկրի բնակչության համեմատական նոսրության պայմաններում երկրագործության համար պիտանի և հատուկ մելիորատիվ աշխատանք չպահանջող բոլոր հողերը չէին, որ սկզբնապես մշակվում էին։ Այսպես, Քսենոփոնի կտրած անցած Հայաստանում գյուղերը կամ ավելի ճիշտ՝ գյուղախմբերը մի-*

22 *Տե՛ս* Ն. Ադոնց, *Պատմական ուսումնասիրություններ, էջ 199,* Հ. Մանանդյան, *Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 160։*

23 *Տե՛ս С. Т. Еремян,* Рабовладельческое общество древней Армении, *էջ 15։*

մյանցից բավականին հեռու տարածության վրա էին գտնվում[24], խնդիրն այն է, որ համայնքի կողմից հողի մշակման հնարավորությունը չէր կարող անցնել որոշակի սահմաններ նաև ազատ հողերի գոյության դեպքում, որովհետև այն սահմանափակված էր համայնականների առկա աշխատավոր ձեռքերով, որոնց թիվը շատ դանդաղ էր աճում։

Այլ բան է մասնատիրական տնտեսությունը, որի մեջ կիրառվող ստրկական ուժի աճը կախված էր միայն տիրոջ կարողության սահմաններից, այսինքն՝ ընդունակ էր հասնելու մեծ չափերի։ Սկզբնապես մասնատիրական մանր և հատուկենտ բջիջները, որոնք առաջանում էին ազատ ու խոպան հողերի վրա, անմեղ ու անվնաս բան պիտի թվային, բայց իրականում նրանք ունեին աճման մեծ հեռանկարներ և լուրջ վտանգ էին ներկայացնում համայնական հողատիրության համար։

Հելլենիստական ժամանակաշրջանում մասնատիրական տնտեսությունների զարգացման համար ստեղծվեցին շատ բարենպաստ պայմաններ։ Տնտեսական ընդհանուր վերելքը (ներառյալ տարանցիկ ու ներքին առևտրի ընդլայնումը), որի մեջ էր ներգրավվել նաև Հայաստանը, ստրկական ուժի բազմապատկման արտաքին, ինչպես նաև ներքին մեծ հնարավորությունները, որոնք ընձեռվում էին մի կողմից բազմաթիվ նվաճողական պատերազմներով, մյուս կողմից՝ հասարակության սոցիալական շերտավորման ու բևեռացման ուժեղացմամբ, վերջապես, նորանոր հողերի յուրացումը, մի բան, որ պետությունը խրախուսում և օժանդակում էր, բոլոր այս հանգամանքները խթանում էին Հայաստանի գյուղատնտեսության զարգացումը ստրկատիրության ուղիներով։

Ահա այդ ժամանակ էր, երբ պիտի ծագեր «դաստակերտ», այսինքն՝ «ձեռքով մշակված» հողի հասկացությունը, «երբ զինվորական ավագանին յուրացնում ու կենդանացնում էր խոպան մնացած հողերը, որոնց վրա չէր տարածվում գյուղական համայնքների տիրապետման իրավունքը»[25]։ Այդ հասկացությունը առաջ էր գալիս ի տարբերություն հնից եկող «ագարակ»-ի, որ նշանակում էր, ընդհանրապես, վարելադաշտ, վարելահող։ Հետագայում այդ տերմինները նույնացան և հավասարապես օգտագործվում էին մասնատիրական տնտեսությունների նկատմամբ[26]։

Աղբյուրների ներկա սուղ պայմաններում սկզբնական «ձեռքով մշակված վարելադաշտի»՝ Հայաստանում կատարված հետագա էվոլյուցիայի առանձին փուլերը չեն նշմարվում ու սահմանազատվում։ Նման տնտեսության ամենա-

---

24 Տե՛ս Xen., Anab., IV, 4—5։

25 С. Т. Ерзмян, О рабстве и рабовладении в древней Армении, էջ 79։

26 Տես նույն տեղում։ Տես նաև Г. Х. Саркисян, О двух значениях термина „дастакерт“ в ранних армянских источниках, „Эллинистический Ближний Восток, Византия и Иран“, М., 1957, էջ 97. V դարի հայկական աղբյուրներում «դաստակերտ» և «ագարակ» տերմինները մի կողմից հանդես են գալիս հար և նման կոնտեքստերում (օրինակ, հայ նախարարները լքում են «իւրաքանչիւր զգեւղս զաւանս և զագարակս». Եղիշե, էջ 124, «...ոմանք աւագ-աւագ աւանաց, գեղից և գանձուց տեարք լեալ են, և պէսպէս դաստակերտացն», Փավստոս, Դ, ծա, բոլոր կոնտեքստների թվարկումը տե՛ս վկայակոչված հոդվածում), մյուս կողմից՝ այդ երկու տերմինները երբեք չեն օգտագործվում միասին, այսինքն մեկի ներկայությունը բացառում է մյուսի գործածությունը։ Ուրեմն նրանք իրենց իմաստով նույնական են։

հին նկարագրությունը հայկական աղբյուրների մեջ գալիս է միայն վաղ միջնադարից, թեև վերաբերում է մ. թ. ա. III—II դարերի եզրին իշխած Երվանդ թագավորի ժամանակին։

Ահա այդ նկարագրությունը. «Ինձ համար քաղցր է պատմել նաև գեղեցիկ Երվանդակերտ դաստակերտի մասին, որ նույն Երվանդը շինեց գեղեցիկ և շքեղ հորինվածքով։ Որովհետև մեծ հովտի միջին մասը լցնում է բնակչությամբ և պայծառ շինություններով, լուսավոր ինչպես աչքի բիբը, իսկ բնակության շուրջը կազմում է ծաղկանոցներ և բուրաստաններ, ինչպես բբի շուրջը աչքի մյուս բոլորակը։ Իսկ այգիների բազմությունը նմանվում է խիտ արտևանուքի գեղեցիկ գծին, որի հյուսիսային կողմի կամարաձև դիրքը իսկապես համեմատվում էր գեղեցիկ կույսերի հոնքերին։ Իսկ հարավային կողմից հարթ դաշտերը հիշեցնում էին ծնոտների գեղեցիկ ողորկությունը։ Իսկ գետն իր երկու ափերի բարձրություններով պատկերում էր մի բերան, իր երկու շրթունքներով։ Եվ այս գեղեցիկ դիրքը կարծես անթարթ հայացքն ուղղել է թագավորանիստ բարձրավանդակի վրա։ Արդարև բերրի և թագավորական դաստակերտ»[27]։

Խորենացու տված այս նկարագրությունը, իր պերճ ու գունեղ համեմատություններից անկախ, վկայում է, որ դաստակերտ անվանվող տնտեսական կոմպլեքսի միջին մասը հատկացվում էր հողագործների բնակարանների համար, իսկ սրանց շուրջը տարածված էին լինում պարտեզները, խաղողի այգիները, վարելահողերը և այլն։ Այստեղ էր գտնվում նաև տիրոջ, տվյալ դեպքում՝ թագավորի, աթոռանիստը։

Միանգամայն պարզ է, որ այստեղ գործ ունենք ոչ թե հելլենիստական շրջանի կոնկրետ մի դաստակերտի նկարագրության, այլ դաստակերտների մասին Խորենացու պատկերացման հետ, բայց սա էլ քիչ արժեք չունի. ինչպես Խորենացու մի շարք այլ տվյալների մեջ, որոնց կանդրադառնանք, այստեղ ևս արտացոլված է մի երևույթ, որի արմատները հասնում են մինչև հելլենիստական շրջան։

Դաստակերտի ավելի հին շրջանից եկող բնութագիրը պահպանվել է այսպես կոչված «Բաբելոնյան թալմուդում», որը բացառիկ կարևոր տեղեկություններ է պարունակում Միջագետքի մ. թ. առաջին դդ. սոցիալ-տնտեսական պատմության վերաբերյալ[28]։ Այստեղ նկարագրված «դաստկարտա դե ավդե»-ները («դաստակերտ՝ ստրուկներով») կարող են մոտավոր օրինակ ծառայել հին Հայաստանի դաստակերտները պատկերացնելու համար[29]։ Մասնատիրական տնտեսության էլ ավելի հին (մ. թ. ա. III դար) բնութագիր է պահպանվել արդեն հիշատակված Մնեսիմաքոսի արձանագրության մեջ, որը ծագում է Փոքր Ասիայից[30]։

Հավանական է, որ ինչպես այդ երկրներում, այնպես էլ Հայաստանում, դաստակերտները, կամ որ Հայաստանում նույնն էր՝ ագարակները, տարբեր

---

27 Խորենացի, Բ, խբ։

28 Տե՛ս Ю. А. Солодухо, Значение еврейских источников раннего средневековья для истории Ближнего Востока, СВ, 1941, 11, էջ 39, նույնի К вопросу о социальной структуре Ирака, «Ученые записки ЛГУ», т. XIV, № 78, серия ист. наук, вып. 9, էջ 79 և հաջ.։

29 Տե՛ս С. Т. Еремян, О рабстве и рабовладении в древней Армении. ВДИ, 1950, № 1.

30 Տե՛ս վերը, էջ 642, ծանոթ. 17։

տիպի էին լինում։ Խորենացու նկարագրածը մեծ թագավորական դաստակերտի օրինակ է. պարզ է, որ իրականում դաստակերտ-ագարակները կարող էին ունենալ տարբեր մեծություն, նայած տիրոջ կարողությանը և զանազան տնտեսական մասնագիտացում՝ այգեգործական, հացահատիկային կամ անասնապահական, համաձայն տեղի պայմանների։

V դարի աղբյուրներում դրանք ներկայանում են նաև մերթ որպես բնակավայր, ուր եկեղեցի է կառուցվել[31], մերթ որպես պարզապես այգի[32]։ Դաստակերտ-ագարակները պատկանում էին թագավորին[33], նախարարներին (բազմաթիվ տեղեկություններ), տաճարներին՝ նախ հեթանոսական, ապա՝ քրիստոնեական[34], ոստանիկներին[35], ազատներին, քաղաքներին[36] ու ամրոցներին[37], ավաններին[38], գյուղերին[39] և նույնիսկ աղքատների ապաստարաններին[40]։

Դաստակերտ-ագարակներում աշխատողների՝ «ծառայ»-ների և մշակների վիճակը: «Բաբելոնյան թալմուդում» նկարագրված՝ Միջագետքի «Դասկարտա դե ավդե»-ների աշխատողները, ինչպես հենց դաստակերտի անվանումից է երևում, ստրուկներ էին։ Սրանք սակայն այն կլասիկ ստրուկները չեն, որոնց հանդիպում ենք հունական կամ հռոմեական ստրկատիրական հասարակություններում՝ նրանց ծաղկման շրջանում։ «Դասկարտա դե ավդե»-ի ստրուկները, իհարկե, ընչազուրկ են և անվերապահորեն գտնվում են տիրոջ տրամադրության ներքո, բայց նրանց հատկացվում են հողակտորներ (որոնց հետ միասին էլ, ի դեպ, նրանք օտարվում են), տրվում հողագործական որոշ գործիքներ. նրանք իրավունք ունեն ընտանիք կազմելու։ Նախապես ստրուկներին տրվել է տիրոջ կողմից սահմանված քանակությամբ կենսամթերք, որ կոչվել է «ապրուստ»։ Հետագայում նրանք սկսել են իրենց կցված հողամասի բերքից բաժին ստանալ[41]։

Հայաստանում բնակչության այս կատեգորիայի վիճակի մասին առանձին ակնարկներ են պահպանվել V դարի մատենագրական աղբյուրներում։ Խորենացին, վկայակոչելով «մեհենական պատմությունների» հեղինակ Օղյումպ քրմին, հաղորդում է, որ Արտաշես թագավորի զորավար Սմբատը որպես նվեր ստանալով քրմապետ Երվազի աթոռանիստ Բագարանում բռնագրավված 500 «ծառայ»-ներին, տանում բնակեցնում է նրանց Մասիսի թիկունքին իր հիմնած դաստակերտում[42]։ «Ծառայ»-ներին որպես ագարակում աշխատողների,

31 Տե՛ս Ագաթանգեղայ պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, էջ 407, 426, 431։
32 Տե՛ս Փավստոս, Գ, ժթ։
33 Տե՛ս Ագաթ., էջ 438, Խորենացի, Բ, խբ։
34 Տե՛ս Ագաթ., էջ 406, Փավստոս, Դ, ժզ, ժթ։
35 Տե՛ս Խորենացի, Բ, է։
36 Տե՛ս Մովսեսի Կաղանկատուացոյ պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 102։
37 Տե՛ս Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 69։
38 Տե՛ս Խորենացի, Բ, ծ, Գ, խդ։
39 Տե՛ս Ագաթ., էջ 408։
40 Տե՛ս Խորենացի, Գ, ի։
41 Տե՛ս Ю. В. Солодухо, К вопросу о социальной структуре Ирака, էջ 76։
42 Խորենացի, Բ, խը։

*հանդիպում ենք Աստվածաշնչի՝ V դարում կատարված հայերեն թարգմանության մեջ[43]։ Հունարեն բնագրում «ծառայ»-ներին համապատասխանում է δοῦλος-ը որը «ստրուկ» հասկացողության ամենաընդհանուր արտահայտությունն է և ներառնում է բոլոր կատեգորիաների ստրուկներին (այդ դերն է խաղում գրաբարում հենց «ծառայ» տերմինը)։*

*Որոշ դեպքերում ագարակներում աշխատողները հանդես են գալիս ավելի կոնկրետ՝ «մշակ» անվան տակ։ Մշակ բառը ընդհանրապես նշանակում է հողի մշակությամբ զբաղվող մարդ, հողագործ, շատ դեպքերում այն գործ է ածված նաև փոխաբերական՝ կրոնական իմաստով, որպես «աստծո մշակ», ընդ որում պատկերներն ու համեմատությունները այդ դեպքերում ևս միշտ վերցվում են դարձյալ հողագործության բնագավառից[44]։*

*Սոցիալական գունավորում ունեցող կոնտեքստներից պարզվում է, որ մշակ կոչվել է ոչ թե ամեն մի հողագործ, այլ ուրիշի հողը մշակող հողագործը[45], ասենք՝ վարձու աշխատողը, որն իր աշխատանքի համար ստանում է դրամական վարձատրություն[46]։ Թեև դաստակերտ-ագարակներում վարձու աշխատանքի կիրառումը միանգամայն հնարավոր էր, սակայն այս, մեծ մասամբ բնակավայրի կերպարանք ստացած, տնտեսությունների բնույթը թույլ է տալիս ենթադրել, որ նրանց հիմնական արտադրողները վարձու աշխատողներ չեն եղել, որ վարձու աշխատանքը այդտեղ կարող էր ունենալ միայն լրացուցիչ, սեզոնային բնույթ[47]։*

*Շատ ավելի որոշակի է այն տեղեկությունը, որ տալիս է Ղ. Փարպեցին[48] պարսիկների ձեռքն ընկած երկու հայ հոգևորականների ճակատագրի մասին։ Նրանց առաջարկված է եղել ուրացություն ընդունել, իսկ հրաժարվելու դեպքում թագավորի վճիռն է եղել, որ նրանք պատժվեն և ուղարկվելով Ասորեստան, «մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն և հարկի[49] կայցեն» մինչև իրենց վախճանը։*

*Քանի որ նրանք խսկապես հրաժարվում են, ապա կտրելով երկուսի ականջները ուղարկում են Ասորեստան, «կալ անդ նոցա ի հարկի և առնել մշա-*

43 *Տե՛ս С. Т. Еремян*, О рабстве и рабовладении в древней Армении. Գ. Խ. Սարգսյան, *Դաստակերտները և ագարակները V դարի հայկական աղբյուրներում, ՊԲՀ, 1962, № 3, էջ 87։*

44 *Տե՛ս* Ղազար Փարպեցի, *(Տփղիս, 1904), էջ 159։* Ագաթ., *63, 257, 340, 392 և այլն,* Փավստոս, *Դ, դ և այլն։*

45 Ագաթ., *188, 313։*

46 Ագաթ., *էջ 128,* Մատթ., *Ի, 1, 2, 8։*

47 *Կան նաև մշակ բառի այնպիսի կոնտեքստներ, որոնք տեղիք են տալիս տիրոջ ու մշակի փոխհարաբերության շատ լայն մեկնաբանության, սկսած վարձակալական հարաբերություններից մինչև ճորտական կախումը։*

48 *Տե՛ս* Ղազար Փարպեցի, *էջ 105 և հաջ.։*

49 *«ի հարկի», «ընդ հարկի» արտահայտության կապակցությամբ տարակարծություններ գոյություն ունեն Ն. Ադոնցի, որը իմաստավորում է այն «ի հնազանդութեան» (տե՛ս «*Армения в эпоху Юстиниана*», էջ 480) և Հ. Մանանդյանի միջև, որը մեկնաբանում է այն որպես «հարկի տակ, տուրքի տակ» (տե՛ս «Ֆեոդալիզմը հին Հայաստանում», էջ 154 և հաջ.)։ Հ. Մանանդյանի մեկնաբանությունը հիմնված է Փավստոս Բուզանդի «Պատմության» որոշ տվյալների վրա (Ե, ժ, ժա և ուրիշ.), որոնք չեն հակասում այդ մեկնաբանությանը, բայց և չեն կարող նրա անվիճապահ հաստատումը լինել։ Իսկ տվյալ կոնտեքստում Ն. Ադոնցի մեկնաբանությունը ավելի համոզիչ է երևում։*

կումին արքունին»։ Նրանցից մեկը մեռնում է, իսկ մյուսը տեղական քրիստոնյաների օգնությամբ ազատվում և վերադառնում է Հայաստան։ Նրանք իրենց տներն ու ունեցվածքը «փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս ցվախճան նորա, և կատարեցին ըկարգեալն անվեհեր յաղագս նորա»։

Ղազար Փարպեցու տեքստից երևում է, որ պատժի էությունը, բացի ականջներից զրկվելուց, ոչ թե աքսորելն է, այլ ազատ մարդկանց «արքունի մշակների» կատեգորիան փոխադրելը (Համմտ. ոճրագործների ստրկացման հնում ընդունված սովորույթը, ինչպես նաև «արքունի ստրուկների» կատեգորիան Հայաստանում)[50], իսկ այդ կատեգորիայի մարդիկ իրենցից ներկայացնում են ոչ թե պատիժ կրող աքսորյալներ, այլ արքունական տնտեսության մեջ անմիջական արտադրողների՝ հողագործների, սոցիալական որոշակի խումբ։ Երկրորդ՝ տեքստը այդ սոցիալական կատեգորիայի վիճակը բնութագրում է որպես ստրկական կամ ստրկականին մոտ։

Մշակների մասին այս պատկերացումները վերագրելով Հայաստանի թագավորական և մասնատիրական տնտեսություններին՝ դաստակերտ-ագարակներին, կստանանք այնտեղ աշխատող հողագործների սոցիալական դրության եթե ոչ լրիվ, գոնե մոտավոր բնութագիրը։

Այդպիսի բնութագրի համար կարևոր լրացում է հանդիսանում Ագաթանգեղոսի այն հաղորդումը, թե Տրդատ Գ թագավորը յուրաքանչյուր ավանում հոգևորականության համար առանձնացնելով յոթ «հող երդոյ», չորսական նույնպիսի հողամաս էլ հատկացրել է ագարակներում[51]։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ ագարակներում ևս հողը բաժանվում էր «հող երդոյ»-ների, որ համայնական հողատիրության ազդեցության որոշակի դրսևորում է, սակայն այստեղ, մասնավոր հողատիրության պայմաններում, ի տարբերություն կոլեկտիվի անդամներին հողամասեր տալու համայնական կարգերի, տիրոջ խնդիրն է եղել ոչ թե արտադրողներին հողաբաժիններով բավարարելը, այլ ընդհակառակն՝ հողը արտադրողներով ապահովելը։

Ղազար Փարպեցու մի այլ հաղորդման մեջ նշված է, որ մշակներն ունեին իրենց տները[52], հետևաբար և իրենց ընտանիքները։

Դաստակերտ-ագարակների բնակիչների նկարագրվող հատկանիշները հիշեցնում են Միջագետքի «դասկարտա դե ավդե»-ների ստրուկներին։

Այդ տիպի ստրուկներին գիտության մեջ ընդունված է, ի տարբերություն կլասիկ տիպի ստրուկների, անվանել «հողի վրա բնակեցված (կամ նստեցված) ստրուկներ»։ Նրանց սոցիալ-տնտեսական վիճակը նմանության որոշ գծեր է ցուցաբերում հետագայի ֆեոդալական ճորտ գյուղացիների հետ, սակայն կարիք չկա ստրուկների այդ կատեգորիայի առաջացումը կապել անպայմանորեն հասարակության ֆեոդալականացման հետ։ Առաջավոր Ասիայում այդ երևույթը շատ վաղուց է նկատվում։

Այսպես, դեռևս մ. թ. ա. VIII—VII դարերում Ասորեստանյան տերության տերիտորիայում, այսինքն՝ Առաջավոր Ասիայի մեծ մասում, նկատվում է մի

50 Տե՛ս Փավստոս, Դ, ժէ։
51 Տե՛ս Ագաթ., էջ 436։
52 Տե՛ս Ղազար Փարպեցի, էջ 159։

կողմից ստրկության ուժեղ աճ ի հաշիվ ռազմագերիների, վերաբնակեցվածների և ազատ գյուղացիների ստրկատիրական հարաբերությունների մեջ ներգրավելու, մյուս կողմից մասսայական հեռացում ստրկատիրական տնտեսության «կլասիկ» (իհարկե հին-արևելյան առումով) ձևերից, որոնք հիմնված էին արտադրամիջոցներից իսպառ զրկված ստրուկների աշխատանքի վրա։ Լայն տարածում է ստանում սոցիալական նոր կատեգորիան՝ հողի վրա բնակեցված ստրուկները։ Դրանք, թվով 5—10-ական մարդ, ընտանիքներով ապրել ու աշխատել են թագավորներին, տաճարներին, մասնավոր անձանց պատկանող ոչ մեծ բնակավայրերում և կալվածքներում մոտավորապես նույն հիմունքներով, ինչ որ «դաստկարտա դե աբդե»-ի ստրուկները։

Աքեմենյան տերության մեջ մ. թ. ա. V—IV դարերում պարսկական մեծատոհմիկների կալվածներում (համենայն դեպս Բաբելոնիայի տերիտորիայում գտնվող կալվածներում) աշխատած ստրուկների մի մասին տրամադրված էր հողակտոր, որոշ շարժական գույք, ընտանիք կազմելու իրավունք[53]։

Հողի վրա բնակեցված ստրուկները, ինչպես հայտնի է, էլ ավելի մեծ դեր էին խաղում հելլենիստական շրջանի Առաջավոր Ասիայի երկրների տնտեսության մեջ։

Այսպիսով, ստրուկների՝ հողին կից լինելը, այսինքն իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ նրանց որոշ շահագրգռության ստեղծումը, թեև իսկապես հայտանշում է ստրկատիրական շահագործման «կլասիկ» ստրուկի շահագրգռվածությունն անտեսող ձևերի ճգնաժամը, բայց այդ ճգնաժամի առաջին նշաններից մինչև ստրկատիրական հասարակարգի ընդհանուր ճգնաժամը, որն ավարտվում է ֆեոդալական արտադրաձևերի հաղթանակով, դեռևս շատ ու շատ հեռու է։ Դեռ ավելին. հիշյալ նշանները սկզբնապես ուղեկցվում են ստրկատիրական արտադրաեղանակի էքստենսիվ աճմամբ ու ճյուղավորմամբ, որոնք ունեն ներքին և արտաքին արտահայտություն։ Մի կողմից ստրկական տիպի շահագործման ոլորտի մեջ են ներգրավվում տվյալ երկրի բնակչության նորանոր տարրեր, հատկապես, նախապես ազատ համայնական գյուղացիությունը, մյուս կողմից՝ ստրկատիրական հասարակությունների աշխարհագրական ընդգրկումը սրընթաց լայնանում է համահարթման զորեղ պրոցեսների միջոցով, ի հաշիվ համեմատաբար ավելի թույլ զարգացած ծայրամասային երկրների։

Հայաստանում ևս, որը սկզբնապես ծայրամասային այդպիսի երկրներից մեկն էր հելլենիստական աշխարհի կենտրոնական ավելի զարգացած երկրների նկատմամբ, հողի վրա նստած ստրուկների շահագործման սիստեմի ծնունդը կարելի է վերագրել զգալիորեն ավելի հեռավոր ժամանակաշրջանի, քան ֆեոդալացման պրոցեսը։ Ընդսմին Հայաստանում, ի տարբերություն զարգացած ստրկատիրական երկրների, այդ սիստեմի ներքին ակունքները պետք է տեսնել ոչ թե անպայման զարգացած «կլասիկ» ստրկատիրության տնտեսաձևերի մեջ, որոնք Հայաստանը ամենայն հավանականությամբ երբեք էլ չի ունեցել, այլ հենց արխայիկ նահապետական ստրկության պայմաններում։

---

[53] Տե՛ս *И. М. Дьяконов*, Развитие земельных отношений в Ассирии, էջ 118, նույնի՝ Рабовладельческие имения персидских вельмож, ВДИ, 1959, № 4, էջ 88 և հաջ.։

Ստրկական ուժի աղբյուրները. գերեվարություններ: Հայաստանում, ինչպես և ստրկատիրական այլ երկրներում, գոյություն է ունեցել ստրկական ուժի երկու հիմնական աղբյուր՝ ներքին և արտաքին։ Արևելյան երկրներում ներքին աղբյուրը հատկապես մեծ նշանակություն է ունեցել։ Մ. թ. ա. II—I դարերի Առաջավոր Ասիայի երկրներից պերճախոս տեղեկություններ են պահպանվել պարտային ստրկության, տաճարներին նվիրված ստրուկների, երեխաների վաճառքի, ինքնավաճառքի, հանցագործների ստրկացման և այլ երևույթների մասին, որոնց հանրագումարը հենց կազմում է ստրկական ուժի ներքին աղբյուրը։ Այս մասին մեզ հասած տեղեկությունները ծագում են Եփրատի միջին հոսանքում տեղավորված Դուրա-Եվրոպոսում, Բաբելոնիայի քաղաքներում, Շոշում և այլ վայրերում գտնված վավերագրերից։ Հայաստանից, դժբախտաբար, նման տիպի (այսինքն՝ վավերագրական) աղբյուրների հետ միասին գրեթե բացակայում են նաև ստրկության ներքին աղբյուրներին վերաբերող տեղեկությունները։

Դրա փոխարեն առկա աղբյուրները՝ անտիկ հեղինակների գործերի Հայաստանին վերաբերող հատվածները և V դարի հայկական մատենագրությունը, մի շարք տեղեկություններ են տալիս ստրկական ուժի արտաքին աղբյուրների՝ պատերազմների և նվաճումների ժամանակ կատարված գերեվարությունների մասին։ Կարևորագույն տվյալները վերաբերում են Տիգրան Բ-ի ժամանակաշրջանին։ Ինչպես հայտնում են անտիկ պատմիչները, այդ իշխողի օրոք նվաճված երկրներից հարյուր-հազարավոր մարդիկ են բռնագաղթվել Հայաստան։ Միայն Կապադովկիայից, ըստ Ապպիանոսի[54], գերեվարվել է 300 հազար մարդ, ըստ Ստրաբոնի, Հայաստան է բերվել Փոքր Ասիայի հելլենիստական 12 քաղաքների բնակչությունը[55]։ Պլուտարքոսը հայտնում է, որ այստեղ են տեղափոխվել նաև կորդվացիների, ադիաբենցիների և ասորիների զանգվածներ[56]։ Թեև նա մարդկանց թիվը չի նշում, բայց դատելով նախորդ թվերից, այդ զանգվածները ևս բավականաչափ հոծ պիտի լինեին։ Անտիկ պատմիչների այդ տվյալները լրացվում են հայ պատմիչների տեղեկություններով՝ հրեաների բռնագաղթի մասին։ Փավստոս Բուզանդը և Մովսես Խորենացին[57] հաղորդում են, որ Տիգրան Բ-ի օրոք Հայաստան են գերեվարվել այնքան հրեաներ, որ նրանց հետնորդների թիվը այստեղ մ. թ. IV դարի կեսերին՝ համեստագույն հաշիվներով, անցնում էր 100 հազարից։

Հայկական աղբյուրները ցույց են տալիս նաև, որ գերեվարությունները հին Հայաստանի կյանքում պատահական երևույթներ չեն եղել, հատուկ միայն Տիգրան Բ-ի ժամանակաշրջանին, այլ կիրառվել են ինչպես նրանից առաջ՝ մ. թ. ա. II դարի առաջին կեսին, այնպես էլ նրանից հետո, և հանդիսացել են Հայաստանի ստրկատիրական տնտեսության կարևոր գործոններից մեկը։

Մովսես Խորենացին, նկարագրելով Արտաշես Ա-ի օրոք կատարված գերեվարությունները, եզրափակում է իր պատմածը հետևյալ խոսքերով. «Արտա-

54 Տե՛ս App., Mithr., 67։
55 Տե՛ս Strabo. XI, 14, 15։
56 Տե՛ս Plut., Lucul., 26։
57 Տե՛ս Փավստոս, Դ, ծե, Խորենացի, Բ, ժդ, ժզ, ժթ, կե, Գ, լե։

*շեսը բազմամարդացրեց Հայոց աշխարհը բազմաթիվ ազգեր բերելով և բնակեցնելով լեռներում, դաշտերում և հովիտներում»[58]։ Այս տեղեկությունները կողմնակի հաստատումն են գտնում Ստրաբոնի վերը մեջբերված տվյալներում, որոնք թեև չհիշատակելով գերեվարությունների մասին, տալիս են Արտաշեսի օրոք կատարված նվաճումների վառ պատկերը[59]։*

*Որոշ տեղեկություններ կան նաև Արտավազդ Բ-ի օրոք կատարված ավելի փոքր մասշտաբի գերեվարության մասին, որն իրականացվել է մ. թ. ա. 40 թվականին՝ դեպի Փյունիկիա և Պաղեստին պարթև-հայկական համատեղ արշավանքի ընթացքում[60]։*

*Գերեվարությունները կիրառվել են մարդկության պատմության բոլոր փուլերում, սակայն տարբեր նպատակներ են ունեցել, նայած դարաշրջանի և երկրի կոնկրետ պահանջներին։ Հունաստանում և Հռոմում գերիների ամբողջ կանգվածներ վաճառվում էին ստրկության[61]։ Արևելքում ստրկացումը այդպիսի մասսայական բնույթ չէր կրում։ Հատկապես Հայաստանում, որը ստրկական ուժի պահանջից ոչ պակաս քաղաքային ազատ բնակչության պահանջ էր զգում, գերեվարվածների մի ստվար մասը, մասնավորապես հելլենիստական քաղաքներից վերաբնակեցվածները, լրացնում էին հայկական նորակերտ, ինչպես և հին քաղաքների բնակչության կազմը։*

*Մյուս մասն էլ, իհարկե, ստրկացվում էր։ Ռազմագերիների ստրկացման մասին Խորենացու մոտ պահպանվել է հնագույն ժողովրդական էպոսից մի հատված, ուր խոսքը նորից Արտաշես Ա-ի մասին է։ Այստեղ այդ գործողությունը բնութագրված է որպես «ծառայեցուցանելով ի ստրկաց կարգի պահել» (այսինքն՝ «ծառայ» դարձնելով պահել ստրուկների կարգում), արտահայտություն, որն իր հակիրճությամբ ու հստակությամբ ավելի շուտ նման է իրավաբանական ձևակերպման և մի գուցե այդպիսին էլ հանդիսացել է[62]։*

*Ստրկացված գերիները օգտագործվում էին տնտեսության տարբեր ճյուղերում։ Մի կապակցությամբ Խորենացին հիշատակում է, որ գերի մարերը բնակեցվել են դաստակերտներում[63], այսինքն՝ վերածվել են մասնատիրական տնտեսություններում աշխատող մշակների՝ հողի վրա նստած ստրուկների։ Նույն կերպ պետք է ըմբռնել նաև Խորենացու այն հաղորդումները, ըստ որոնց Արտաշեսի հյուսիսային արշավանքների ժամանակ տարված գերիները նստեցվել են մի դեպքում Մասիսի արևելյան լանջին, մյուս դեպքում՝ Արտազ գավառում[64]։ Չափազանց կարևոր է, որ Խորենացին այդ օտարազգի բնակչու-*

---

58 Խորենացի, *Բ, ծզ։*

59 *Տե՛ս* Strabo. *XI, 14, 5։*

60 *Տե՛ս Я. А. Манандян,* О торговле и городах Армении, *էջ 84։* Գ. Սարգսյան, *Աղբյուրների օգտագործման եղանակը Մովսես Խորենացու մոտ, էջ 32 և հաջ.։*

61 *Տե՛ս H. Volkman,* Die Massensklavungen der Einwohner eroberter Städte in der hellenistisch-römischen Zeit, Wiesbaden, 1961:

62 *Տե՛ս* Խորենացի. *Բ, ծ։ С. Т. Еремян,* О рабстве и рабовладении в древней Армении, ВДИ, 1950, № 1.

63 *Տե՛ս* Խորենացի. *Ա, լ։*

64 *Տե՛ս նույն տեղում, Բ, ծբ, ծզ։*

*թյան մուտքն է դրդապատճառ համարում մասնատիրական ու համայնական հողերի այն սահմանազատման, որ ձեռնարկել էր Արտաշեսը, կանգնեցնելով իր անունը կրող հատուկ սահմանաքարեր[65]։ Մասնատիրական տնտեսություն-ները՝ դաստակերտ-ագարակները, ունենալով էժան ստրկական ուժի առատության պայմաններում՝ իրենց հողերի սահմանները ընդլայնում էին ի հաշիվ համայնական հողերի, որով և անհրաժեշտ դարձավ վերոհիշյալ ռեֆորմը, այդ խնդրի մեջ որոշ կարգ ու կանոն մտցնելու նպատակով։*

*Բացի գյուղատնտեսությունից, ստրուկների աշխատանքը կիրառվում էր նաև մի շարք այլ ասպարեզներում։ Մ. թ. ա. II—I դարերի Հայաստանում պետության նախաձեռնությամբ հսկայական շինարարական աշխատանքներ էին տարվում։ Ճանապարհների շինարարությունը և վերանորոգումը, որ տեղական և տարանցիկ առևտրի անհրաժեշտ նախապայմանն էր, ջրանցքների կառուցումը, ուր Հայաստանը հին, մինչուրարտական և մանավանդ ուրարտական ավանդույթներ ուներ, տաճարների շինարարությունը, որ միշտ գտնվել ու գտնըվում էր միապետների ուշադրության կենտրոնում, ռազմական շինարարությունը, որ անհրաժեշտ էր ժամանակի պատերազմներով լի իրականության մեջ, վերջապես նշված ժամանակաշրջանում մեծ թափ ու ծավալ ստացած քաղաքաշինությունը, այս բոլորը լայն ասպարեզ էր ստեղծում պետական կամ արքունի ստրուկների բանեցման, ինչպես նաև ստրկատիրական մեթոդներով կազմակերպված՝ պետական պարհակներ կատարող գյուղացի համայնականների աշխատանքի համար։*

*Ստրկական ուժը կիրառվում էր հատկապես առավել ծանր պայմաններում կատարվող աշխատանքներում՝ մետաղահանքերի, աղահանքերի մշակման գործում, որ հելլենիստական երկրներում սովորաբար թագավորի մենաշնորհն էր կազմում։ Այստեղ էին ուղարկվում նաև ստրկացված հանցագործները։*

*Արտադրության բնագավառից բացի, ստրուկները լայն կիրառում ունեին նաև տնային աշխատանքներում, իշխող դասակարգի ներկայացուցիչների սպասարկման գործում։*

## Դ. ՔԱՂԱՔԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հելլենիստական դարաշրջանի քաղաքը: *Հելլենիստական դարաշրջանում սոցիալ-տնտեսական կյանքի ու զարգացման կարևոր ասպարեզ է եղել քաղաքը[66]։ Հին Հայաստանի համար այդ հանգամանքը այնքան էլ պարզ չի դըրսևորվում երկու պատճառով։ Նախ, որ քաղաքային կյանքն այստեղ չհասավ զարգացման այն աստիճանին, որին հասավ, ասենք, Ասորիքում, Փոքր Ասիայում և Միջագետքում։ Երկրորդ, ըստ երևույթին, գլխավոր պատճառը մնում է աղբյուրների սղությունն ու յուրահատուկ բնույթը, որոնց հետևանքով Հայաստանի քաղաքների մասին շատ քիչ տեղեկություններ են հասել մեզ։*

56 *Տե՛ս* Խորենացի, *Բ, ծզ։ Այդ ռեֆորմի մասին մանրամասն տե՛ս վերը, էջ 534 և հաջ.։*

66 *Տե՛ս С. Т. Еремян,* Развитие городов и городской жизни в древней Армении, ВДИ, 1953, № 3.

Այսուհանդերձ, պահպանվածը, դիտվելով Առաջավոր Ասիայի քաղաքային կյանքի ընդհանուր պատկերի վրա, թույլ է տալիս մի շարք արմատական եզրակացությունների հանգել, որոնք աներկբայորեն որոշում են հելլենիստական դարաշրջանի հայկական քաղաքների հիմնական բնույթը։

Մ. թ. ա. III—I դարերի Առաջավոր Ասիային ծանոթ էին ստրկատիրական քաղաքի մի շարք տիպեր[67]։ Դրանցից մեկը և կարևորագույնը հելլենիստական պոլիսն էր, որը կլասիկ հելլենական պոլսից ժառանգել էր նրա կազմակերպական ձևերը, բայց նրանից շատ էր հեռացել իր սոցիալ-տնտեսական ու քաղաքական էությամբ, դադարելով լինել ինքնուրույն քաղաք-պետություն և դառնալով կիսաինքնավար քաղաք՝ մեծ պետության սիստեմում։

Այս տեսակետից հելլենիստական պոլիսը ավելի մոտ էր. կանգնած նույն շրջանի քաղաքների մյուս տիպերին։ Վերջիններից հայտնի են բաբելական քաղաքները՝ տեղական քաղաքային կյանքի երկարատև զարգացման արգասիք, Փոքր Ասիայի, Ասորիքի (հատկապես Փյունիկիայի) նույնպես հին արմատներ ունեցող քաղաքներն ու քաղաք-տաճարները, Պաղեստինի քաղաքները և ուրիշներ։

Բոլոր այս քաղաքները, որոնք ծագումով, արտաքին տեսքով, վարչական կառուցվածքով միմյանցից տարբեր էին, երևան են բերում բացահայտ նմանության գծեր, երբ համեմատում ենք նրանց ներքին սոցիալական կազմը և հելլենիստական միապետությունների համակարգում կատարած դերը։ Նրանք բոլորը բաղկացած էին բնակչության երկու հիմնական խավից՝ 1) տվյալ քաղաքի քաղաքացիական կոլեկտիվի, համայնքի մեջ միավորված լիիրավ քաղաքացիների համեմատաբար նեղ ու պարզորոշ գծագրված շրջանից և 2) քաղաքի մեջ և նրան շրջապատող (մասամբ քաղաքային համայնքին, մասամբ առանձին քաղաքացիներին պատկանող) հողային տերիտորիայի վրա ապրող ու աշխատող ստրուկների ու կիսակախյալ ազատների զանգվածից։ Ահա բնակչության առաջին խավը՝ քաղաքացիական համայնքները, որոնք իրական և պոտենցիալ ստրկատերերի կոլեկտիվներ էին և դրանով իսկ հակադրված ու վեբադասված էին ոչ լիիրավ և իրավազուրկ մնացյալ բնակչությանը, հելլենիստական պետություններում օժտված են եղել մի շարք արտոնություններով և իրավունքներով՝ մասնակի ինքնավարության իրավունքով, շատ տուրքերից ու պարհակներից ազատ լինելու արտոնությամբ և այլն։ Քաղաքային համայնքներն ունեին ինքնավարության մարմիններ, միապետների հետ գրագրություն էին վարում իրենց կյանքին վերաբերող զանազան հարցերի շուրջ։ Թագավորները ընդարձակ հողային տարածություններ էին նվիրաբերում քաղաքներին։ Հելլենիստական երկրներում կենտրոնական իշխանության և քաղաքների միջև այդպիսի հարաբերությունները իշխող ու շահագործող դասակարգի տարբեր խավերի համերաշխության և դաշինքի արտահայտություն էին։ Նման դաշինքն ու համերաշխությունը ուղղված էին շահագործվող զանգվածներին ճնշելու և սանձահարված պահելու, ինչպես և պետության քաղաքական՝ երկու կողմերին ձեռնտու ամբողջականությունը պահպանելու նպատակին։

---

67 Տե՛ս Г. Х. Саркисян, Тигранакерт. Из истории городских общин древней Армении, էջ 3 և հաջ.։

Միապետների և քաղաքների միջև, իհարկե, կային և հակասություններ. եթե կիսաինքնավար քաղաքները ձգտում էին ավելի ու ավելի անկախության ու արտոնվածության, ապա միապետները, ընդհակառակն, ջանում էին արգելել այդ ձգտումների քաղաքական տեսակետից վտանգավոր, իսկ տնտեսական առումով վնասաբեր չափերի հասնող դրսևորումները։ Կային նաև էթնիկական հակասություններ՝ մի կողմից հելլենիստական միապետների ու նրանց հունամակեդոնական շրջապատի և մյուս կողմից՝ տեղական քաղաքների բնիկ ավագանու միջև։ Սակայն այդ հակասությունները երկրորդ պլան էին մղվում շահագործողների դասակարգային շահերի միասնականության հանդեպ։

Այդ փոխադարձ շահագրգռությունը և որպես սրա հետևանք՝ քաղաքների զարգացման ու աճման համար թագավորների ցուցաբերած հատուկ հոգատարությունը քաղաքների աճման մշտական դրդիչներ՝ տարանցիկ ու տեղական առևտրի ու արհեստների բուռն զարգացման հետ մեկտեղ, հիմք հանդիսացան քաղաքային կյանքի վերելքի ու քաղաքաշինության վիթխարի այն երևույթի համար, որն ընդգրկեց ամբողջ Մերձավոր ու Միջին Արևելքը և ծնեց հարյուրավոր նոր քաղաքներ։

**Նոր քաղաքների հիմնադրումը Հայաստանում:** Այդ նույն ժամանակամիջոցում Հայաստանում հիմնվեցին տասից ավելի նոր քաղաքներ։ Լինելով երկրի ներքին զարգացման արտահայտությունը, Հայաստանի քաղաքների բուռն աճը, դրա հետ մեկտեղ, նաև հելլենիստական քաղաքաշինության ընդհանուր պրոցեսի օղակներից մեկն էր։ Այստեղ, ինչպես և հելլենիստական աշխարհի մյուս երկրներում, թագավորների հիմնած քաղաքները կրում էին դինաստիական անուններ։ Բազմաթիվ Ալեքսանդրիաների, Սելևկիաների, Անտիոքների և այլնի նման Հայաստանում երևան եկան Երվանդաշատը, Երվանդավանը, Արշամաշատը, Արկաթիակերտը, Արտաշատը, մի քանի Զարեհավաններ, Զարիշատներ, Տիգրանակերտներ, Վաղարշապատը և այլն։

Իրենց նկարագրի ու կառուցվածքի տեսակետից հին Հայաստանի քաղաքները մի տարատեսակ էին կազմում հելլենիստական աշխարհի քաղաքների վերը թվարկված շարքում։ Սկսենք նրանից, որ Հայաստանի մի շարք հնագույն քաղաքներ,-ինչպես, օրինակ, Արմավիրը, Բագարանը, Անի-Կամախը ի սկզբանե ունեին և պահպանում էին տաճարային քաղաքների բնույթ։ Ըստ Արմավիրի հունարեն արձանագրություններից մեկի, «արմավիրցիների», այսինքն, ըստ երևույթին, Արմավիրի քաղաքային համայնքի ղեկավարը քրմապետն էր, ուրեմն և համայնքը պետք է կրեր թեոկրատիկ, տաճարա-քաղաքային բնույթ[68], որն այնքան բնորոշ է Միջագետքի, Ասորիքի, Փոքր Ասիայի համար։ Սակայն տաճարային բնույթ ունենալով հանդերձ, դրանք իսկական քաղաքներ էին՝ արհեստագործական կենտրոններ, վաճառաշահ կետեր՝ երկրի ներքին առևտրի համար և միջազգային տարանցիկ առևտրական ճանապարհների վրա հանգույցներ կամ կայաններ[69]։ Սրա հետ մեկտեղ, նրանք երկրագործության կենտրոններ էին։ Նրանց ծնունդն ու գոյությունն իսկ մեծապես պայմանավոր-

---

68 Հ. Մանանդյան, Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946, էջ 49։ Г. Х. Саркисян, Тигранакерт էջ 40 և հաջ.։

69 Տե՛ս ստորև, էջ 665։

ված էր այս հանգամանքներով։ Այժմ այդ հնագույն քաղաքներին սկսեցին ավելանալ նոր, արդեն թագավորների կողմից հիմնադրվող ու նրանց հատուկ հոգատարության առարկա հանդիսացող քաղաքներ։

Նորաստեղծ այդ քաղաքների բնակեցումը կազմակերպվում էր, այսպես կոչված, «սինոյկիսմոսի», այն է՝ համաբնակեցման միջոցով, որն ընդունված էր ողջ հելլենիստական աշխարհում որպես նոր հիմնադրվող քաղաքների շենացման հիմնական եղանակ։ Նոր քաղաքին իրենց բնակչության մի մասն էին զիջում հին քաղաքները՝ կամավոր կամ հարկադրաբար։ Երբեմն բնակչությունը բերվում էր բավականին հեռու տեղերից։ Այսպես, Սելևկյանների մայրաքաղաք Անտիոքի «սինոյկացման»՝ համաբնակեցման ժամանակ, բնակչության մի մասը բերվել է Իոնիայի և Արշիպելագոսի քաղաքներից։ Հայաստանում, տեղական քաղաքային բնակչության սղության պայմաններում, օտարերկրյա քաղաքային բնակչության ներգրավումը մեծ չափերի պիտի հասներ։ Այն, հավանաբար, իր դերն է խաղացել արդեն Արտաշատի «սինոյկացման» ժամանակ[70], որպիսի տերմինով է հենց բնութագրում Ստրաբոնը հայկական մայրաքաղաքի հիմնադրումը[71]։ Իսկ որ Տիգրանակերտի բնակչությունը մեծ չափով բաղկացած էր վերաբնակեցված օտարերկրացիներից, դա հանրահայտ փաստ է՝ վկայված բազմաթիվ հույն-հռոմեական պատմիչների կողմից։

Տիգրան Բ-ի ժամանակ նվաճված երկրների քաղաքային բնակչության գաղթեցված զանգվածները Հայաստանում տեղաբաշխելու մասին անտիկ հեղինակների տված պատկերացումը խիստ միակողմանի է։ Հետևելով նրանց, պետք է կարծել, որ ամբողջ այդ կեսմիլիոնանոց զանգվածը նստեցվել է միայն մեկ քաղաքում՝ Տիգրանակերտում։ Որ դա չի համապատասխանում իրականությանը, երևում է ոչ միայն նման մի հսկայական քաղաքի ստեղծման անհնարինությունից՝ այդքան կարճ ժամանակում (մի քանի տարի, այնինչ հին աշխարհի հարյուրհազարանոց բնակչություն ունեցող քաղաքները գոյանում էին դարերի ընթացքում), այլև հայկական աղբյուրների (Փավստոս, Խորենացի) պարզորոշ ցուցումներից։ Սրանցից պարզվում է, որ գաղթեցվածները բնակեցվել են, բացի Տիգրանակերտից, նաև Հայաստանի բազմաթիվ այլ հին ու նոր քաղաքներում։

**Քաղաքների բնակչության սոցիալական կազմը:** Վերաբնակեցվածների սոցիալ-տնտեսական վիճակը գնահատելու համար կարևոր է հաշվի առնել այն հանգամանքը, որ Տիգրանը ոչ թե տեղահանում էր տվյալ նվաճված քաղաքի բնակչության մի մասը, կամ որոշակի, ասենք, առևտրա-արհեստագործական, խավերը (այդպիսի տեսակետ է եղել գիտության մեջ), այլ Հայաստան էր տեղափոխվում ամբողջական քաղաքային համայնքներ՝ իրենց լրիվ կազմով։ Ըստ Ստրաբոնի, օրինակ, նա «ամբողջ Մաժակը տեղահան անելով քշեց Միջագետք և նրանով բնակեցրեց Տիգրանակերտի մեծ մասը»[72], իսկ ըստ Պլուտարքոսի, նա «տեղահան էր անում հունական քաղաքային համայնքները»[73] և

---

70 Տե՛ս *Г. Х. Саркисян*, Тигранакерт, էջ 42։

71 Տե՛ս *Strabo*. XI, 14, 6։ Ս. Կրկյաշարյան, *Սինոյկիսմոսը հելլենիստական Փոքր Ասիայում և Հայաստանում*, ՊԲՀ, 1964, № 1, էջ 111։

72 Տե՛ս *Strabo*, XII, 2, 9։

73 Տե՛ս *Plut*., Lucul., 14։

այլն։ Քանի որ սրանք կազմած էին լիիրավ քաղաքացիների կոլեկտիվներից, ոչ լիիրավ, սակայն ազատ բնակիչներից և ստրուկների զանգվածներից, ապա բոլոր այս սոցիալական կատեգորիաները համալրում էին հայկական քաղաքների բնակչության համապատասխան խավերը։ Նույնը պիտի ասել և նրանց գրավումքի վերաբերյալ. վաճառականները, արհեստագործները, հողագործները շարունակում էին մնալ իրենց պարապմունքներին նաև նոր պայմաններում։ Այս եզրակացությունը հենվում է նաև այն նկատառման վրա, որ նշված տեղահանումները սոսկ հելլենիստական քաղաքների նկատմամբ կիրառված գործողություններ չէին, այլ Հայաստանում քաղաքային կյանքը զարգացնելուն ուղղված քայլեր։ Ընդհակառակն, Տիգրանի հակումները և նրան հաջորդած Արտաշեսյանների կրած «հելլենասեր» տիտղոսը ցուցաբերում են նրանց բարյացակամ վերաբերմունքը գաղթեցված բնակչության նկատմամբ։

Այստեղից կարելի է ենթադրել նաև, որ վերաբնակված համայնքները հայկական քաղաքների մեծ համայնքների ընդերքում պահպանում էին նաև ինքնուրույնության որոշ տարրեր, ընդհանուր խնդիրներում միայն ստորադաս լինելով քաղաքային իշխանություններին։ Սակայն հույների մեջ սա երկար չտևեց, որովհետև նրանք շուտով ձուլվեցին հայերի հետ։ Ու եթե մենք ի վիճակի ենք դատել այդպիսի երևույթի մասին, ապա դա հրեական համայնքների օրինակով է, որոնք նույնպես Հայաստանի քաղաքներում բնակեցվել էին Տիգրան Բ-ի օրոք, բայց ավելի հակված լինելով իրենց կղզիացմանը, անաղարտ էին պահպանվում դեռևս մ. թ. IV դարի կեսերին, ինչպես հետևում է Փավստոսի և Խորենացու հաղորդումներից[74]։

Եթե հայկական քաղաքների բնակչության մասին խոսելիս նախ նշվեցին օտարերկրացիները, ապա դա իհարկե, չի նշանակում, թե նրանք էին կազմում այդ քաղաքների հիմնական բնակչությունը։ Պարզապես նրանք, իրերի բերմամբ, ավելի ցայտուն են ներկայացված առկա աղբյուրների մեջ։ Ինչ խոսք, որ Հայաստանի քաղաքների բնակչության հիմքը կազմում էին հայերը։ Անշուշտ, նոր քաղաքի բնակեցման ժամանակ, բացի տեղական քաղաքներից վերցվող բնակչությունից, ներգրավվում էր և գյուղական բնակչությունը, մասամբ հենց քաղաքի համար, մեծ մասամբ՝ նրա հողագործական գոտու համար, որի մասին դեռ խոսք կլինի։ Բացի դրանից, առկա է Ապպիանոսի ուղղակի վկայությունը այն մասին, որ Տիգրանը իր հիմնադրած քաղաքում բնակեցրեց նաև հայ ավագանու շատ ներկայացուցիչների, ըստ որում երբեմն հարկադրաբար՝ ունեցվածքը բռնագրավելու սպառնալիքով[75]։ Անշուշտ, սրանց հատուկ դեր էր վերապահված՝ կազմել քաղաքի վերնախավը[76] և ստանձնել համայնքի տնօրինման գործը։ Ըստ երևույթին ավագանու այդ ներկայացուցիչները շուտով ըմբռնեցին իրենց նոր գոյավիճակի դրական կողմերը և եռանդուն կերպով գործի անցան։ Պլուտարքոսի հաղորդման համաձայն, «որովհետև բոլոր մասնավոր անձինք և մեծատոհմիկները արքայի հանդեպ տածած սիրուց և

---

74 Տե՛ս Փավստոս, Դ, ծե։ Խորենացի, Բ, ժթ, Գ, խե։

75 Տե՛ս App., Mithr., 84։

76 Տե՛ս С. Т. Еремян, Развитие городов и городской жизни в древней Армении, էջ 24։

հարգանքից դրդված (հոգում էին) քաղաքի աճի ու շենացման մասին, ապա այն լի է գանձերով ու կառույցներով»[77]։

**Քաղաքների հողագործական գոտին:** Քաղաքները, ինչպես ասվեց, ունեին իրենց գյուղատնտեսական գոտին՝ կազմված գյուղերից ու դաստակերտ-ագարակներից։ Այս առթիվ տեղեկությունները գալիս են V դարի հայկական աղբյուրներից, բայց երևույթը հին է և ծագում է հելլենիստական շրջանից։ Եղիշեն հիշատակում է «Մեծն Արտաշատը՝ իր ավաններով հանդերձ», Գառնի, Անի և Արտագերս բերդաքաղաքները՝ իրենց ավաններով և եզրափակում՝ «Այս բոլորը, յուրաքանչյուրը գյուղերով և ագարակներով»։ Մի այլ տեղ նույն հեղինակը նորից հիշատակում է «նահանգն Արտաշատի, և Արտաշատն ամբողջությամբ և բոլոր գյուղերն ու ավանները, որ նրա շուրջն էին»։ Խորենացին խոսում է «Երվանդի քաղաքի և նրա գավառի» մասին, Փավստոսը՝ Արտագերս բերդաքաղաքի և նրան «յուտեստ» տրված գավառի մասին[78]։ Հողագործական այս գոտու գյուղերն ու ագարակները պատկանում էին մասամբ քաղաքային համայնքին, մասամբ՝ մեծատուն քաղաքացիներին։

Ահա այս մերձքաղաքային հողերի բնակչության և նրան վերադաս՝ քաղաքային համայնքի փոխհարաբերություններն են, որ ծնել են Խորենացու մոտ հանդես եկող այն սահմանումը, որ նա վերագրում է Վաղարշակ թագավորին. «Հրաման է տալիս, որ քաղաքացիների հարգն ու պատիվը ավելի լինի, քան գյուղացիներինը, որ գյուղացիները պատվեն քաղաքացիներին, ինչպես իշխանների»[79]։

Ահա թե որքան սուր պետք է եղած լինի հակասությունը, եթե գյուղացիները հակադրվում են քաղաքացիներին՝ որպես իշխանների։ Խորենացու այս հաղորդումը, իհարկե, արտացոլում է ոչ թե հայկական վաղ միջնադարի իրավիճակը, որը բնութագրվում է, ընդհակառակը, քաղաքների թուլացմամբ ու անկմամբ, քաղաքների և գյուղերի տարբերությունների աստիճանական անհետացմամբ, այլ շատ ավելի վաղ՝ հելլենիստական ժամանակաշրջանի պատկերը, որին հենց խիստ բնորոշ էր գյուղի և քաղաքի հակամարտությունը։ Նման պատկեր տեսնում ենք ասորական Կարկա դե Բետ Սելոխ քաղաքի մ. թ. VI դարին վերաբերող ժամանակագրության մեջ, ուր հաղորդվում է, թե Սելևկոս Ա-ը (մ. թ. ա. 312—281) հիմնելով քաղաքը՝ կոչել է այն իր անունով և «տվել նրան ամբողջ մարզը... որպես ստրուկներ»[80]։ Այս հաղորդումը, ծագելով մոտավորապես Խորենացու ժամանակներից, նույնքան հարազատորեն է արտացոլում հելլենիստական ժամանակաշրջանի իրավիճակը, որքան Խորենացու վկայությունը։

Այս պարագաներում, հասկանալի է, դաշինք պիտի գոյություն ունեցած լինի թագավորական իշխանության և քաղաքային համայնքների, նրանց բարձր խավի միջև։ Այդ դաշինքի դասակարգային արմատների մասին ասված է վե-

77 *Plut.*, Lucul., 26։

78 Եղիշե, էջ 68, 79։ Խորենացի, Բ, ղ։ Փավստոս. Դ, ժթ և այլն։

79 Խորենացի, Բ, ը։

80 Տե՛ս *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье. М.—Л., 1966, էջ 38 և հաջ.։

րը։ Նրա առաջին դրսևորումը հենց այն հանգամանքն է, որ քաղաքների գոյացումը նախապես տարերային երևույթ լինելով, այժմ ընդունել էր նրանց՝ թագավորների կողմից հիմնադրման ու կազմակերպման ձև. թագավորական իշխանությունը շահագրգռված էր նրանց բազմապատկմամբ և աճով։ Երկրորդ դրսևորումը այն արտոնյալ վիճակն էր, որում գտնվում էին քաղաքները՝ գյուղական միջավայրի համեմատությամբ։ Հելլենիստական աշխարհի այլ երկրների համար այս երևույթը իր իսկ ժամանակի աղբյուրներով լուսաբանված լինելով, Հայաստանի վերաբերյալ տեղեկությունները դարձյալ ուշ շրջանից են գալիս՝ III—IV դարերի սահմանագծին պատկանող Տիգրանակերտի հունարեն արձանագրությունից և V դարի հայ պատմիչներից։

**Առևտուր և արհեստագործություն:** Հին Հայաստանի քաղաքների առևտրական կապերի, միջազգային առևտրի մեջ նրանց՝ որպես առևտրական ճանապարհների վրա գտնվող կարևոր տարանցիկ կետերի ու հանգույցների, խաղացած դերի մասին պահպանվել են որոշ տեղեկություններ։ Հելլենիստական աշխարհի կարևորագույն տարանցիկ առևտրական ուղին, որ Պարսից ծոցից Տիգրիսյան Սելևկիայի, Տիգրիսի հովտի ու Ջեզմայի վրայով տանում էր դեպի Անտիոք, անցնելիս է եղել Ծոփքի վրայով (Նախկինում՝ Աքեմենյան շրջանում, այստեղով էր անցնում «արքայական ճանապարհ»-ը)։ Ծոփքի Արշամաշատ և Արկաթիակերտ քաղաքները այդ ճանապարհին կարևոր տարանցիկ կետեր էին։ Ծոփքի թագավորները հատում էին իրենց դրամները՝ հունարեն մակագրություններով[81]։

Հելլենիստական աշխարհի մյուս, հյուսիսային առևտրական տարանցիկ ուղու վրա խոշորագույն դեր էր խաղում Մեծ Հայքի մայրաքաղաք Արտաշատը։ Նա էկբատանից՝ Ատրպատականի Գանձակ քաղաքի վրայով եկող ու Արաքսի հովտով դեպի սևծովյան նավահանգիստները տանող տարանցիկ ուղու կարևորագույն հանգուցակետն էր և որպես այդպիսին՝ Անդրկովկասի ամենամեծ ու ամենահարուստ քաղաքը[82]։

Կասկածից դուրս է, որ լայն ծավալ ստացած միջազգային առևտուրը, իսկ էլ ավելի մեծ չափով՝ երկրի ներքին պահանջմունքները և հատկապես իշխող դասակարգի ու արքունիքի պահանջմունքները, պետք է խթանեին արհեստագործական արտադրության շատ ճյուղերի զարգացումը։ Սակայն մի կողմից պահպանված գրավոր աղբյուրների առանձնահատկության և մյուս կողմից՝ հայկական քաղաքների թույլ հնագիտական ուսումնասիրության հետևանքով, նյութական աղբյուրների սղության պատճառով է, որ այդ արտադրությանը, մասնավորապես մ. թ. ա. վերջին դարերի ժամանակաշրջանին վերաբերող ուղղակի տվյալները աննշան են։ Պետք է նշել, սակայն, որ ժամանակին անցկացված Վաղարշապատի պեղումները, մանավանդ Գառնիի ամրոցի և դամբարանադաշտի պեղումները, որոշակի նյութ են տալիս դատելու համար մ. թ. առաջին դարերի արհեստագործության և դրանով իսկ մի փոքր ավելի վաղ ընկած բուն հելլենիստական ժամանակաշրջանի արհեստագործության ընդհանուր նկարագրի մասին։ Այդ ուղղությամբ մեր գիտելիքների բազմապատկմա-

81 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах Армении, изд. 2-е, էջ 30 և հաջ.։

82 Տե՛ս նույն տեղում, էջ 62։

նը անշուշտ կնպաստեն նաև այժմ սիստեմատիկորեն տարվող Արմավիրի պեղումները։

*Առայժմ գոյություն ունեցող հնագիտական և մատենագրական նյութերի հիման վրա աներկբայելիորեն կարելի է նշել հայկական քաղաքներում այնպիսի արհեստների գոյությունը, ինչպիսիք են մետաղագործությունը՝ իր տարատեսակներով, երկաթագործությունը, թերևս պողպատյա իրերի արտադրանքը, պղնձագործությունը, որոնց արգասիքն են պեղումների ժամանակ հայտնագործված զենքերը, աշխատանքային գործիքները, առօրյա կյանքը սպասարկող առարկաները և զարդերը, քարտաշությունն ու ընդհանրապես քարագործությունը, որոնց վկաներն են այլևայլ բերդերն ու շինությունները և նրանց պատկանող քարե նրբակերտ զարդերը, բրուտագործությունն իր ճյուղավորումներով, սկսած կավե մեծ ու փոքր անոթների արտադրանքից մինչև նրբին տերակոտյա քանդակները, արծնագործությունը, ապակեգործությունը, փայտամշակման գործը, ոսկրագործությունը, ջուլհակությունը, ոսկերչությունը և այլն, և այլն[83]։*

*Սրանց գոյության պերճախոս վկաներն են, ինչպես ասվեց, պեղումներով հայտնաբերված բազմաթիվ իրերը, որոնց թվում, շարքային արտադրանքի զանգվածի մեջ, հաճախ հանդիպում են այնպիսի բարձրարվեստ շինվածքներ, որոնք խոսում են թե՛ Հայաստանում ամենահին կուռ արհեստագործական ավանդույթների գոյության, թե՛ հելլենիստական շրջանում այստեղ ձեռք բերված բարձր մակարդակի մասին։*

*Այսուհանդերձ, տվյալների սղությունը և յուրատեսակությունը թույլ չեն տալիս անհրաժեշտ չափով բացահայտելու արհեստագործության սոցիալական նկարագիրը, հատկապես դատելու համար, ասենք, այդ արտադրության մեջ ստրուկների մասնակցության չափերի մասին, Հայաստանի պայմաններում նրանց աշխատանքի շահագործման առանձնահատկությունների մասին՝ հելլենիստական աշխարհի մյուս երկրների համեմատությամբ։*

**Հին հայկական քաղաքների անկումը:** *Հին Հայաստանի քաղաքների, որպես պատմական որոշակի դարաշրջանին հատուկ և նրա ծնունդ հանդիսացող երևույթների համար, բնորոշ են նաև նրանց անկման հանգամանքները։ Այդ քաղաքներից գրեթե ոչ մեկը չհարատևեց մ. թ. IV դարից այս կողմ[84]։*

*Խիստ բնորոշ է, որ V դարի աղբյուրներում Հայաստանի բաղկացուցիչ մասերի կամ հայ ժողովրդի սոցիալական կազմի թվարկման ժամանակ քաղաքները՝ որպես բնակավայրերի տարատեսակներ կամ քաղաքացիները՝ որպես բնակչության որոշակի կարգ, երբեք չեն հիշատակվում։ Այս բոլորը վկայում է հին, հելլենիստական շրջանում գոյացած քաղաքների անդառնալի անկման մասին[85]։*

*Քաղաքների անկումը Հայաստանում շարունակվեց շուրջ հինգ դար։ Քաղաքային կյանքն սկսեց աշխուժանալ միայն IX—XI դարերում և նոր ծաղկման*

---

83 *Տե՛ս* «Гарни, II», *Б. Н. Аракелян,* Результаты работы гарнийской археологической экспедиции 1951—1955 гг. (античный период), Ереван, 1957. *էջ 42 և հաջ., 86 և հաջ.։ С. Т. Еремян,* Развитие городов и городской жизни в Древней Армении, *էջ 26 և հաջ.։*

84 *Տե՛ս* Փավստոս, *Դ, իդ, ծե։* Խորենացի, *Գ, լե։* Ղազար Փարպեցի, *էջ 63, 121, 144։*

85 *Տե՛ս Г. Х. Саркисян,* Тигранакерт, *էջ 102, 135։*

հասավ XII—XIII դարերում։ Սակայն հին քաղաքներից գրեթե ոչ մեկը չվերածնվեց։ Քաղաքային նոր կենտրոնները առաջացել են աշխարհագրական նոր վայրերում և նոր սոցիալ-տնտեսական զարգացման պայմաններում։

## 5. ՔՐՄՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԱՃԱՐԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Հին աշխարհում կարևոր սոցիալական դաս էր հանդիսանում քրմությունը, որը համախմբված էր տաճարների շուրջը և հսկայական դեր էր կատարում երկրի հասարակական, ինչպես նաև տնտեսական կյանքում։ Նրա հասարակական կշիռը պայմանավորված էր պոլիթեիստական կրոնի՝ որպես տիրապետող գաղափարախոսության, դերով, տնտեսական նշանակությունը՝ տաճարների հարստությամբ, որի նշանակալից մասն էին կազմում հողային տարածությունները[86]։

Ինչպես հինարևելյան և հելլենիստական երկրներում, Հայաստանում ևս պանթեոնի բոլոր աստվածներն ունեին իրենց պաշտամունքի վայրերը՝ տաճարները, և ինչքան բարձր էր աստվածության կարգը, այնքան բազմաթիվ էին ու ճոխ նրա պաշտամունքին նվիրված սրբատեղիները։ Հին Հայաստանը, ինչպես ասվեց, բացառություն չէր կազմում նաև այն երկրների միջև, որտեղ գոյություն ուներ իշխող դինաստիայի պաշտամունք։ Դինաստիայի մեռած, հետագայում նաև կենդանի անդամները նույնպես պաշտամունքի առարկա էին աստվածների կողքին՝ և նրանց ևս նվիրված էին տաճարներ։

Ստրաբոնի «Աշխարհագրության» մեջ տեղեկություններ են պահպանվել հին Հայաստանի հեթանոսական տաճարներից մեկի՝ Անահիտ դիցուհուն նվիրված տաճարի մասին. «...հայերը առանձնապես պաշտում են Անահիտին, որին տաճարներ են նվիրված բազմաթիվ տեղերում և մանավանդ Եկեղիքում. և նվիրաբերում են այդ տաճարներին ստրուկներ և ստրկուհիներ»[87]։ Հայտնի է, որ դիցուհու անունով Եկեղյաց գավառը կոչվել է Անահտական. այդ փաստը նշում են թե՛ անտիկ և թե՛ հայ պատմիչները։ Վերջիններիս մոտ Անահիտի տաճարից բացի՝ տեղեկություններ են պահպանվել մի շարք այլ տաճարների մասին, որոնք Անահիտի տաճարի նման ծագում են դեռ հելլենիստական կամ նույնիսկ շատ ավելի վաղ շրջանից։ Դրանք են Արամազդ-Զևսի տաճարը Դարանաղյաց Անիում, Վահագն-Հերակլեսի տաճարը Աշտիշատում, Նանեի տաճարը Թիլում[88] և այլն և այլն։

Անահիտի տաճարի պատկերմանը զուգահեռ Ստրաբոնը Փոքր Ասիայի՝ Հայաստանին սահմանամերձ գոտու մի շարք տաճարներ է նկարագրում Պոնտական Կոմանայում, Կապադովկիայի Կոմանայում, Զելայում և մի շարք այլ վայրերում։ Այստեղ նա հիշատակում է տաճարների քրմական կոլեկտիվները, լայնատարած տաճարային հողերը, նրանց վրա աշխատող հազարավոր հիե-

86 Տե՛ս *А. Г. Периханян*, Храмовые объединения Малой Азии и Армении (IV в. до н. э.—III в. н. э.), М., 1958.

87 *Strabo*, *XI, 14, 16*։

88 Տե՛ս Ագաթ., էջ 409, 410, 422։ Փավստոս, Գ, ժդ։

բողովներին՝ տաճարային ստրուկներին[89]։ Այսպես, կապադովկիական Կոմանայի մասին կարդում ենք. «Քուրմը տաճարի ղեկավարն է և տաճարային ստրուկների տերը. իմ այցելության ժամանակ դրանցից կային 6000-ից ավելի տղամարդ և կին։ Տաճարին է պատկանում մի մեծ հողամաս, որի եկամուտներից օգտվում է քուրմը։ Իր նշանակությամբ նա Կապադովկիայում, թագավորից հետո, երկրորդ դեմքն է։ Սովորաբար քրմերը պատկանել են նույն տոհմին, ինչ որ թագավորները»[90]։

Այստեղ ամեն ինչ հիշեցնում է Խորենացու նկարագրած՝ Հայաստանի գլխավոր սրբավայր հանդիսացած Բագարանը՝ իր բազմաթիվ «ծառայ»-ներով և քրմապետով, որ թագավորի հարազատ եղբայրն էր[91]։

Երվանդունի հայկական դինաստիայի կոմմագենյան ճյուղի ներկայացուցիչ Անտիոքոս Ա-ը, որ Կոմմագենեում բազմաթիվ տաճարներ էր հիմնադրել, դրանցում թողած արձանագրություններում հատկապես նշում է, որ նվիրել է տվյալ տաճարին «բավարար քանակությամբ հողեր և նրանցից անվթար ստացվող եկամուտը»։ Այս հողերը դառնում էին տաճարի անօտարելի սեփականությունը։ «Ոչ ոք,—նախազգուշացնում է Անտիոքոսը,—իրավասու չէ որևէ ձևով յուրացնելու կամ օտարելու այն գյուղերն ու եկամուտները, որ ես նվիրել եմ... աստվածներին»[92]։

Հողային լայնարձակ տարածություններ են ունեցել նաև բուն հայկական հեթանոսական տաճարները՝ ինչպես Անահիտի, այնպես էլ բոլոր մյուսները։ Դրանք պահպանվել են ընդհուպ մինչև քրիստոնեության հաստատումը Հայաստանում, որից հետո ամբողջությամբ անցել են քրիստոնեական եկեղեցուն։ Այդ մասին է վկայում Ագաթանգեղոսը, որը նկարագրելով հեթանոսական տաճարների կործանումը, հիշատակում է, որ նրանց «դաստակերտները, սպասավորներին... հողերով ու սահմաններով հանդերձ նվիրեցին եկեղեցու սպասավորության ծառայության» կամ «ամբողջ գյուղը դաստակերտներով և սահմաններով հանդերձ նվիրեցին եկեղեցուն»։ Տաճարային այդ հողերը բացի տաճարային ստրուկներից, որոնք աշխատում էին դաստակերտ-ագարակներում և հողի վրա նստած ստրուկների վիճակում էին գտնվում, մշակվում էին նաև տաճարից կիսակախյալ վիճակում գտնվող գյուղացիների կողմից[93]։

Տաճարային այդ կոմպլեքսները, այսինքն՝ տաճարներն իրենց քրմական կոլեկտիվներով, իրենց հողերով ու դրանք մշակող անմիջական արտադրող-

89 Տե՛ս *Strabo*, XII, 2, 3—5. 3, 31—37։

90 *Strabo*, XII, 2, 3։

91 Տե՛ս Խորենացի, Բ, խ։

92 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, Textband, Berlin, 1890, հունարեն մեծ արձանագրությունը։

93 «Եւ զդաստակերտսն և զսպասաւորսն... և նոցին գետնովք և սահմանօքն ի ծառայութեան նուիրէին եկեղեցւոյ սպասաւորութեան» (Ագաթ., էջ 406)։ «Եւ գեղջն ամենայն դաստակերտօքն հանդերձ և սահմանօքն յանուն եկեղեցւոյ նուիրէին» (Ագաթ., էջ 408)։ Տեքստի հապավված տեղում հիշատակված են որպես եկեղեցուն նվիրվածներ նաև քուրմերը՝ «քրմօքն հանդերձ»։ Ա. Փերիխանյանը հիմնավորված կերպով ենթադրում է, որ այստեղ «քուրմ» (ἱερεύς) բառի փոխարեն սկզբնապես եղել է «տաճարային» (ἱερός), որի փոխանակումը տեղի է ունեցել հունական վերսիայի մեջ կատարված փոփոխության հետևանքով։ Ἱεροί —հողագործները Փոքր Ասիայի և մի շարք այլ երկրների տաճարային հողերի մշակողներն էին (տե՛ս *А. Г. Периханян*, Храмовые объединения Малой Азии и Армении, էջ 132)։

ներով հանդերձ, իրենց ներքին սոցիալական շերտավորման առումով հար և նման էին քաղաքներին։ Սրանց նման նրանք կիսաինքնավար էին և թագավորների հետ պահպանում էին նույնանման հարաբերություններ. քրմությունը դաշնակից էր պետությանը, կապված նրա հետ ընդհանուր դասակարգային շահերով։ Թագավորները տաճարներին առատորեն նվիրաբերում էին նորանոր հողային տարածություններ, ստրուկների զանգվածներ։ Իրենց հերթին տաճարները թագավորական իշխանության ամուր հենարանն էին հանդիսանում[94]։ Այս բոլորը չի բացառում այդ երկու ուժերի միջև եղած որոշ հակասությունները, բայց դրանք, ինչպես և քաղաքների ու թագավորների փոխհարաբերության դեպքում, այստեղ ևս հետին պլան էին մղվում հիմնական շահերի ընդհանրության հանդեպ։

Տաճարային կենտրոնները հաճախ նմանվում էին քաղաքներին նաև իրենց արտաքին տեսքով, արհեստագործական ու առևտրական նշանակությամբ։ Ստրաբոնի նկարագրած փոքրասիական տաճարային կենտրոններից մի քանիսը իսկական քաղաքներ են, տեղական ու տարանցիկ առևտրի հանգույցներ, տոնավաճառների վայրեր, արհեստների կենտրոններ։ Դրանցից մեկը՝ պոնտական Կոմանան, նա համեմատում է նույնիսկ հունական Կորնթոս քաղաքի հետ և նշում, որ դա Հայաստանից եկած վաճառականների հայտնի վաճառատեղի է[95]։ Այդ յուրօրինակ տաճար-քաղաքները հելլենիստական շրջանի Առաջավոր Ասիայում լայն տարածում էին ստացել բացի Փոքր Ասիայից նաև Բաբելոնիայում, Ասորիքում, Պաղեստինում[96]։

Ինչպես ասվեց, Հայաստանում ևս գոյություն են ունեցել նման տաճարային քաղաքներ։ Այդպիսին պիտի եղած լինի իր զարգացման որոշ շրջանում Հայաստանի երբեմնի մայրաքաղաք Արմավիրը, որտեղ պաշտամունքի առարկա էին Արև-Տիր-Ապոլլոնը, Լուսին-Անահիտ-Արտեմիսը և փշխող դինաստիայի ներկայացուցիչները։ Արմավիրի տաճար-քաղաքային համայնքի գլուխ կանգնած է եղել քրմապետը, կրելով անգամ «թագավոր» տիտղոսը։ Այդպիսին են եղել Բագարանը, որը Մովսես Խորենացին անվանում է «կուռքերի քաղաք», Դարանաղյաց Անին (Անի-Կամախը) և այլ տաճարներ և քաղաքներ։

**Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման առանձնահատկությունները:** *Հելլենիստական շրջանի Հայաստանի սոցիալ-տնտեսական վիճակի բնութագիրը, որքան էլ այն տեղ-տեղ անխուսափելիորեն սխեմատիկ է ու ենթադրական, թույլ է տալիս խոսելու նրա զարգացման որոշ առանձնահատկությունների մասին։*

Հելլենիստական ժամանակաշրջանը հին արևելքի երկրների համար եղել է ստրկատիրական հասարակության ավելի քան երկուհազարամյա պատմության եզրափակիչ փուլ, մի ժամանակաշրջան, որն անմիջականորեն հանգեցրեց ֆեոդալական հասարակության անցմանը։ Հելլենիզմի ժամանակ, իսկ Արևելքի երկրների համար մասամբ էլ դրանից առաջ, նկատվում է աշխատա-

94 Տե՛ս А. Г. Периханян, Храмовые объединения, էջ 157։

95 Տե՛ս Strabo, XII, 3, 36։ Տե՛ս և Ս. Կրկյաշարյան, Դիտողություններ հին Հայաստանի տաճարային քաղաքների առաջացման մասին, Տեղ. ՀԳԱՀԳ, 1963, № 9, էջ 65։

96 Տե՛ս И. Д. Амусин, «Народ земли», ВДИ, 1955, № 2.

վոր, մասնավորապես հողագործական բնակչության շահագործման ձևերի մեծ բազմազանություն։ Դրանցից մի քանիսը հիշեցնում են ֆեոդալական շահագործման ձևերը։ Բնորոշ է դառնում հողի վրա նստեցված ստրուկը իր ոչ մեծ տնտեսությամբ, որը, սակայն իր անձով հանդերձ տակավին պատկանում է ստրկատիրոջը։ Սաստկանում է ազատ գյուղացիության շահագործումը, բարձրանում նրա կախման աստիճանը և տեղի է ունենում նրա՝ հողին կցման պրոցեսը։ Մի կողմից այդ և նման երևույթները դեռևս դուրս չեն գալիս ստրկատիրական հասարակարգի շրջանակներից, հայտանշելով նրան հատուկ շահագործման կլասիկ ձևերի ճգնաժամը և իրենցից ներկայացնելով այնպիսի մեթոդների որոնումներ, որոնք ընդունակ են երկարաձգել նրա գոյության ժամկետը։ Մյուս կողմից դրանք բարենպաստ միջավայր են ստեղծում ապագա ֆեոդալական հասարակության տարրերի զարգացման համար, տարրեր, որոնք առաջանում ու աճում են ստրկատիրական հասարակության ընդերքում և նախապատրաստում նրա անկումը։

Հենց այդ բարդ, ճգնաժամի գծեր կրող տնտեսական իրադրության մեջ էլ ներգրավվեց Հայաստանը հելլենիստական շրջանում, նախապես անցած լինելով պրիմիտիվ, նահապետական ստրկատիրության ճանապարհ։ Արևելյան երկրին հատուկ դանդաղությամբ սկզբնապես ընթանալով այդ ճանապարհով, հելլենիզմի շրջանում Հայաստանը միանգամից մուտք գործեց ստրկատիրության հասարակության այն փուլը, որը նախորդել է ֆեոդալիզմին։ Այն դրույթը, թե Հայաստանը հելլենիզմի դարաշրջանում իր զարգացման մեջ ցատկ է կատարել, հիմնավորվում է ոչ միայն նրա սոցիալ-տնտեսական զարգացման ուրույն կորագծով, այլ նաև նրա կյանքի մնացած բոլոր բնագավառների էվոլյուցիայի պատկերով։ Այսպես, եթե վերցնելու լինենք հայկական հասարակության քաղաքական զարգացումը, ապա Մեծ Հայքի պետության կազմավորումը հայ ժողովրդի պատմական ճանապարհին կարևորագույն հանգուցակետերից մեկն է, որովհետև հենց այդ իրողությամբ էր, որ Հայաստանը դարձավ Առաջավոր Ասիայի կարևոր երկրներից մեկը, գցվեցին այն պետականության հիմքերը, որի գոյությունը շարունակվեց ամբողջ վեց հարյուրամյակ, մինչև մ. թ. V դարի սկիզբը։ Մշակույթի ասպարեզում մ. թ. V դարում կատարված թռիչքին նախորդում է հելլենիստական շրջանում տեղի ունեցած թռիչքը, որը միանգամից Հայաստանին կանգնեցրեց ժամանակի զարգացած երկրների շարքում։ Քաղաքային կյանքի վերելքը, ինչպես արդեն ասվեց, նույնպես կապված է հելլենիստական ժամանակաշրջանի հետ։

Այսպիսով, Հայաստանը փաստորեն չի ապրել ստրկատիրական հասարակության ծաղկման այն «կլասիկ» ժամանակաշրջանը, որը տարբեր ժամանակներում և տարբեր ձևերով հատուկ է եղել Հին Արևելքի երկրներին և հունահռոմեական աշխարհին, և հետևաբար չի կարողացել լրիվ չափով ստեղծել ստրկատիրական հասարակրգի համար բնորոշ մի շարք սոցիալական և քաղաքական ձևեր ու հիմնարկներ։

Սակայն նույն այդ պատճառով Հայաստանի զարգացման տեմպերը հինարևելյան հասարակությունների համեմատությամբ սրընթաց էին և հետագայում ավելի դյուրությամբ կատարվեց նրա անցումը ֆեոդալական հասարակությանը։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Աղբյուրների ներկա վիճակում հին Հայաստանի պետական կառուցվածքի մասին շատ բան անհայտ է մնում, այդ թվում և կարևոր, հիմնական երևույթներ, իսկ այն, ինչ հայտնի է, գիտենք մեծ մասամբ հատվածաբար ու միակողմանի կամ թեթևակի ու հեռավոր ակնարկների միջոցով։ Այս պարագաներում անհնարին է տալ ինչ-որ սիստեմատիկ և ավարտուն նկարագրություն, և մնում է ակնարկային ձևով շարադրել այն, ինչ այսօր հնարավոր է ասել։*

**Թագավորական իշխանության ժառանգականությունը:** *Հայաստանում ստեղծված պետականության ձևը, ինչպես այդ հատուկ էր Հին Արևելքի և հելլենիստական շրջանի պետություններին, այսպես կոչված, անսահմանափակ միապետությունն էր։ Պետական ապարատի գլուխ կանգնած էր թագավորը, որի իշխանությունը ժառանգական էր, հորից անցնում էր որդուն։ Այդ սովորույթը դրսևորվում է արդեն մ. թ. ա. IV—III դարերում՝ Երվանդունի թագավորական դինաստիայի օրոք և իր արմատներով խորանում է մինչև Աքեմենյանների տիրապետության ու նախաաքեմենյան շրջանները, երբ Հայաստանի թագավորական, իսկ հետագայում սատրապական իշխանությունն էլ ժառանգական էր ու գտնվում էր Երվանդունի տոհմի ձեռքին։ Ինչ վերաբերում է Արտաշես Ա-ի հետնորդներին, ապա Ստրաբոնը շատ որոշակի հայտնում է, որ Տիգրան Բ-ը ծագում էր Արտաշես Ա-ից ուղիղ գծով[1], իսկ ըստ Ապպիանոսի՝ նա որդին է եղել Տիգրան Ա-ի[2]։ Տիգրան Բ-ից մինչև մ. թ. I դարի վերջը հայոց թագավորների հաջորդականությունը պարզորոշ արտացոլված է աղբյուրների մեջ։ Արտավազդ Բ-ը որդին էր Տիգրան Բ-ի, Արտաշես Բ-ը՝ Արտավազդ Բ-ի։ Արտաշես Բ-ին հաջորդեց, հռոմեացիների միջնորդությամբ, Տիգրան Գ-ը՝ Արտավազդ Բ-ի երկրորդ որդին։ Հետո թագավորել են նրա զավակները՝ Տիգրան Դ և Էրատո, որոնց թագավորությունն ընդմիջվել է, նորից Հռոմի թելադրանքով, Արտավազդ Բ-ի երրորդ որդի Արտավազդ Դ-ի կարճատև թագավորությամբ։ Հայաստանում թագավորական իշխանության ժառանգականության հաստատուն հիմքերի մասին է վկայում այն հանգամանքը, որ հռոմեա-*

1 *Տե՛ս* Strabo, *XI, 14, 15*։
2 *Տե՛ս App., Syr., 48*։

*ցիները հայկական գահի իրենց թեկնածուներին ընտրել են անպայմանորեն իշխող տան անմիջական ներկայացուցիչներից, ինչպես և այն հանգամանքը, որ Արտաշեսյան վերջին թագավորի մահանալուց հետո էլ հայերը, ձգտելով պահպանել դինաստիան՝ թագուհի էին հայտարարել Էրատոյին։*

**Հայոց թագավորների տիտղոսները:** *Իշխանության բնույթը էական չափով դրսևորվում է թագավորների կրած տիտղոսների մեջ։ Այս խնդրում դժվար է հենվել պատմիչների տվյալների վրա, իսկ վավերագրական տվյալներ թեև կան, բայց քիչ են և միակողմանի. այնուհանդերձ, նրանք որոշ պատկերացում են տալիս, թե ինչ հիմնական և վերադիր տիտղոսներ են կրել հայոց թագավորները։ Մ. թ. ա. III դարից հայտնի են Ծոփքի թագավորների դրամները, որոնց վրա սրանք հորջորջվում են սոսկ որպես «թագավոր»* (βασιλεύς)[3]*։ Այդպես են կոչվել նաև Մեծ Հայքի Երվանդունիները, եթե միայն Արմավիրի հունարեն արձանագրություններից մեկում հիշատակված* 'Ε[.]ρόντης *թագավորը նրանց թվին է պատկանում*[4]*։*

*Արտաշես Ա-ը նույնպես իրեն անվանում է սոսկ «թագավոր»* (MLK *«մելիխ»՝ արամեերեն իր արձանագրությունների մեջ)։ Տիգրան Բ-ի դրամների վրա հանդիպում ենք երեք տեսակ տիտղոսների՝ «թագավոր»* (βασιλεύς), *«մեծ թագավոր»* (βασιλεύς μέγας) *և «թագավորների թագավոր»* (βασιλεύς βασιλέων)*։ Տարբերությունը գալիս է և՛ այդ դրամների՝ նրա թագավորության տարբեր տարիներին պատկանելուց (նա սկսած պիտի լինի սոսկ «թագավորից» և ավարտած «թագավորների թագավորով»), և՛ դրանց հատման վայրից։ Եթե Հայաստանում՝ Արտաշատում, հատված դրամների վրա հաճախակի հանդիպում է «թագավորների թագավոր»-ը, ապա այն երբեք չի պատահում Ասորիքում, Անտիոքում և այլուր հատվածների վրա*[5]*։*

*Արտավազդ Բ-ը շարունակում է կրել «թագավորների թագավոր» տիտղոսը, նույնը և նրա հաջորդն ու որդին՝ Արտաշես Բ-ը։ Սրանից հետո նկատվում է հետաքրքրական օրինաչափություն. Հռոմից կախում ունեցող հայոց թագավորները անվանվում են «մեծ թագավոր», անկախները՝ «թագավորների թագավոր»*[6]*։*

*Այն փաստը, որ նույնիսկ Հռոմից կախյալ թագավորները կրում են «մեծ թագավոր» և ոչ սոսկ «թագավոր» տիտղոսը, իր բավարար հիմնավորումն է գտնում Հայաստանի մեծության, հզորության և միջազգային հարաբերության մեջ խաղացած դերի մեջ։ Սակայն ինչո՞վ բացատրել «թագավորների թագավոր» տիտղոսի պահպանումը, արդյոք՝ սա սոսկ հիշատա՞կ էր մնացել Տիգրան Բ-ի ժամանակվանից, երբ հայոց թագավորը իսկապես մի շարք կլանված երկրների գերագույն տեր էր ու մի շարք այլ մերձավոր երկրների վեհապետ, ուստի և իրավամբ խլել էր այդ տիտղոսը իրենից առաջ այն կրած պարթև*

---

3 *Տե՛ս E. Babelon*, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, *էջ*. CXCIII:

4 *Տե՛ս А. И. Болтунова*, Греческие надписи Армавира, ИАФАН, 1942, № 1—2, *էջ 44*, 'Ερρόντης: *Г. Х. Саркисян*, Тигранакерт, *էջ 40, վերականգնում է՝* Εὐρόντης.

5 *Տե՛ս H. Seyrig*, Trésor monetaire de Nisibe, RN, Paris, 1955.

6 *Տե՛ս Հ. Մանանդյան. Քննական տեսություն, հատ. Ա, էջ 298։*



Կոմմագենյան Երվանդունիների սրբավայր Նեմրութ լեռան վրա

թագավորներից[7]։ Թե՞ Տիգրանից հետո էլ հայոց թագավորների կողմից այդ տիտղոսի պահպանումը որոշակի իրավական հիմք ուներ։ Եթե վերջինն է, ուրեմն պետք է ենթադրել, որ Հայաստանի կազմի մեջ ընդգրկված առանձին շրջաններ, ասենք Կորդուքը (Գորդիենե) կամ Ծոփքը, շարունակում էին ունենալ տեղական իշխանության ինչ-որ մնացորդներ, որոնք և հիմք էին տալիս հայոց թագավորին կրելու վերոհիշյալ տիտղոսը[8]։

Արտաշեսյան թագավորները կրել են նաև պատվատիտղոսներ։ Արտաշես Ա-ը կրել է նաև «Երվանդական» ('RWNDKN) տոհմանունը[9]։ Այս տոհմանունը ուրիշ թագավորների տիտղոսաշարում չի հանդիպում։ Այնուհետև, Արտաշես Ա-ը, ըստ Սխիանի արձանագրության, ստացել է TB արամեերեն «լավ», «բարի» պատվատիտղոսը[10]։ Ինչպես արդեն ասվեց, սա անշուշտ հելլենիստական թագավորների պատվատիտղոսների համակարգից մի նմուշ է, հավանաբար համապատասխան հունարեն Εὐσεβής-ին («բարեպաշտ») կամ գուցե Εὐεργέτης-ին («բարերար», «բարեգործ»)։ Առաջին դեպքում հավանական է, որ նա այդ պատվատիտղոսը ստացել է թագավորական նախնիների պաշտամունքի հաստատման կապակցությամբ։

Տիգրան Բ-ը, ըստ Հուստինոսի հաղորդման[11], դրամներից մեկի վրա էլ կրել է θεός—«աստված» հելլենիստական և պարթև թագավորների մեջ բավական տարածված պատվատիտղոսը, որ նշանակում է, թե նրա կրողը դեռ կենդանության օրոք աստվածացված է եղել[12]։ Տիգրանի հաջորդներից ոմանք կրել են «հռոմեասեր» կամ «հունասեր» (φιλορώμαιος, φιλέλλην) պատվատիտղոսները։ Այս երկուսը իրենց արտաքին նմանությամբ հանդերձ, միանգամայն տարաբնույթ էին իրենց իմաստով։ «Հունասեր»-ը նշանակում է իր հպատակների մեջ հույներ, հույն բնակչություն ունեցող և այդ բնակչությանն ու ընդհանրապես հունական մշակույթին և քաղաքակրթությանը բարյացակամ վերաբերմունք ցուցաբերող[13]։ Ի տարբերություն սրան «հռոմեասերն» ունի քաղաքական իմաստ, այն նշանակում էր Հռոմին ու հռոմեական քաղաքականությանը համակրող։ Այս պատվատիտղոսներն, ուրեմն, բացահայտում էին իրենց կրողների հակումները։

Հայազգի թագավորների միջև իր տիտղոսաշարի առումով առանձնակի տեղ էր գրավում Կոմմագենեի Երվանդունի դինաստիայի ներկայացուցիչ Ան-

---

7 Տե՛ս Just., XL, 3։

8 Տե՛ս ստորև, ծան. 13։

9 Այս տոհմանվան մասին տե՛ս վերը, էջ 529։

10 Տե՛ս *А. Г. Периханян*, Армейская надпись из Зангезура, էջ 108։

11 Տե՛ս *Trog*, prol., XLII։

12 Դրամի կապակցությամբ համոզմունք չկա, թե այն պատկանում է անպայման Տիգրան Բ-ին (*Le Rider*, Monnaies grecques acquises par le Cabinet des medailles en 1959. RN. 1959—1960, պատկեր՝ աղյուսակ III, № 32)։ Բացառված չէ, որ այն պատկանում է հաջորդ Տիգրաններից մեկին։ Այդ դեպքում դրամը ավելի կարևորություն կստանա, վկայելով մի այլ հայոց թագավորի աստվածացման մասին ևս։

13 Տե՛ս *A. Gutschmid*. Ueber die Beinamen der hellenistischen Könige. „Kleine Schriften", IV, Leipzig, 1893, էջ 111։

տիոքոս Ա-ը, որը Տիգրան Բ-ի և Արտավազդ Բ-ի ժամանակակիցն էր։ Սա, լինելով իր տերիտորիայով ու նշանակությամբ մի չնչին թագավորության իշխող, այսուհանդերձ, կրում էր հելլենիստական աշխարհում ընդունված գրեթե բոլոր պատվանունները։ Իր տիտղոսաշարով՝ մեծ թագավոր, աստված, արդարադատ, հայտնված (աստված), հռոմեասեր և հունասեր (Θεὸς Δίκαιος Ἐπιφανὴς Φιλορώμαιος καὶ Φιλέλλην)[14], Անտիոքոսը ջանում էր բարձրացնել իր իշխանության հեղինակությունը։

**Թագավորական իշխանության ֆունկցիաները:** *Սրանք կարելի է բաժանել ներքին և արտաքին քաղաքականության բնագավառների։ Արտաքին քաղաքականությունը թագավորը վարում էր հենվելով միջազգային հարաբերությունների իրավական նորմերի ու կանոնների վրա։ Նրա ֆունկցիաների մեջ կարևոր տեղ էին գրավում պատերազմի և հաշտության խնդիրները։ Պատերազմ հայտարարելը, հաշտության պայմանագրեր, հարձակողական կամ պաշտպանողական դաշնագրեր կնքելը, բազմակողմանի համաձայնագրերում իր երկիրը ներկայացնելը և այլն, այս բոլորը կատարում էր թագավորն անձամբ կամ պատվիրակների միջոցով։*

Հայտնի են Արտաշես Ա-ի համաձայնությունը Հռոմի հետ՝ երկրի անկախացման պահին, երբ նա ի դեմս Հռոմի հենարան էր փնտրում Սելևկյանների դեմ, նրա դաշինքը՝ Սելևկյանների դեմ ապստամբած Տիմարքոսի հետ։ Հայտնի է նաև Արտաշես Ա-ի գրագրությունը Կապադովկիայի արքա Արիարաթ Ե-ի հետ՝ Սոփքի թափուր գահի ժառանգությունը տնօրինելու կապակցությամբ[15], Միջազգային քաղաքականությանը Հայաստանի և նրա թագավորի մասնակցության կարկառուն օրինակ է Պոլիբիոսի պատմածը պոնտա-կապադովկիական պատերազմին հաջորդած բազմակողմ համաձայնագրի կնքման մասին, որին բացի անմիջական պատերազմող կողմերից՝ Պերգամոնի, Բյութանիայի, Կապադովկիայի, Պոնտոսի և Փոքր Հայքի իշխողներից, մասնակից էին նաև միջնորդներ, որոնց թվում նաև Պոլիբիոսի հորջորջմամբ՝ «Հայաստանի մեծ մասի կառավարիչ Արտաշեսը»[16]։

Արտաքին քաղաքականությունը հատկապես բարդանում ու ճյուղավորվում է Տիգրան Բ-ի օրոք, երբ Հայաստանը դառնում է հին աշխարհի միջազգային կյանքի կարևորագույն գործոն, բազմաթիվ համաձայնագրեր ու դաշնագրեր կնքում, պատվիրակություններ ընդունում, կանոնավորում իր հարաբերությունները վասալական պետությունների հետ։

Արտաքին քաղաքականության կարևոր գործոն էին դինաստիական ամուսնությունները։ Տիգրանի երկու դուստրերը ամուսնացած էին պարթևների և Մեդիայի թագավորների հետ, ինքը կնության էր առել Միհրդատ Եվպատորի դստերը՝ Կլեոպատրային։ Տիգրանի մի երրորդ դստերը, արդեն իր հոր մահվանից հետո, 53 թվականին Արտավազդ Բ-ը կնության տվեց պարթևական թագա-

---

[14] Տե՛ս K. Humann und O. Puchstein, Reisen in Kleinasien und Nordsyrien էջ 323 և հաջ.։

[15] Տե՛ս Diod., XXXI, 22։

[16] Տե՛ս Polyb., XXV, 2, 12։

ժառանգին, ի ամրապնդումն այդ ժամանակ կնքված հայ-պարթևական դաշինքի, իսկ իր սեփական դստերը՝ Փոքր Հայքի և Գալաթիայի թագավոր Դեյոտարի որդունː Արտավազդից սկսած, դիվանագիտությունը ավելի ու ավելի մեծ դեր է խաղում հայկական պետության արտաքին քաղաքականության մեջ (նրա հարաբերությունները Կրասսոսի, Անտոնիոսի հետ), քանի որ Հայաստանը բուֆերային պետության վիճակի մեջ էր ընկել Հռոմի և պարթևների միջև և դարձել սրանց կռվախնձորըː Հայտնի է Արտավազդի հաջորդների դիվանագիտական գործունեությունը, երբ վերջիններիս հակառակորդն էր այնպիսի մի դիվանագետ, ինչպիսին էր Օգոստոս կայսրըː

Ներքին քաղաքականության բնագավառում ևս թագավորը շատ լայն իրավունքներ ուներ, ավելի ճիշտ՝ ինքն է իրավունքի աղբյուրը. կարող էր գործել ավանդական կամ պետության կողմից սահմանված օրենքներով ու կանոններով, կարող էր և վերանայել դրանք ու սահմանել նորերըː Հենց այդպիսի մի գործողություն է կատարվել Արտաշես Ա-ի օրոք, որի մասին հաղորդում են Սևանի ափերին գտնված ու Արտաշեսի անունը կրող սահմանաքարերը, ինչպես նաև Մովսես Խորենացինː Արտաշեսը թագավորական իշխանությամբ օրինականացրել էր մասնավոր հողատիրության նվաճումները, որոնք կատարվել էին ի հաշիվ համայնական հողերի[17]ː Ապպիանոսի հաղորդումը այն մասին, որ Տիգրան Բ-ը հրամայեց հայ ավագանու ներկայացուցիչներին բնակվել նորակառույց Տիգրանակերտում, սպառնալով բռնագրավել չենթարկվողների գույքը, նորից նույնն է հաստատում[18]ː

Թագավորի ֆունկցիաների մեջ էր մտնում նաև նոր քաղաքների հիմնադրումը և անվանակոչումըː Այդ մասին առկա են ուղղակի ցուցումներː Ստրաբոնը և Պլուտարքոսը[19] հաղորդում են Արտաշատի հիմնադրմանը կարթագենացի Հաննիբալի մասնակցության մասին, բայց և նշում, որ նրա դերը սոսկ կատարողի տեխնիկական դեր է եղել, իսկ հիմնադիրը Արտաշեսն է[20]ː

Բոլոր անտիկ աղբյուրները ձայնակցում են Ստրաբոնին, որն ասում է, թե Տիգրանը «հիմնադրեց մի քաղաք... և անունը դրեց Տիգրանակերտ»[21]ː Այս երևույթը, որ խիստ բնորոշ էր հելլենիստական երկրների համար, Հայաստանում շարունակվում էր նաև հետագա շրջանում՝ կյանքի կոչելով նորանոր քաղաքներ (ընդհուպ մինչև IV դարում Արշակ Բ-ի հիմնադրած Արշակավանը)։ Իրականում, սակայն, ինչպես կտեսնենք ստորև, լիտուրգիա երևույթի մասին խոսելիս, թագավորը հաճախ անվանական հիմնադրողն էր հանդիսանում. մինչդեռ հիմնադրման հետ կապված աշխատանքների ծախքերը հոգում էին այլ անձնավորություններ[22]ː

---

17 Տե՛ս վերը, էջ 534 և հաջ.։

18 Տե՛ս App., Mithr., 84։

19 Տե՛ս Strabo, XI, 14, 6։ Plut., Lucul., 31։

20 Դիոդորը ուղղակի նշում է՝ «հիմնադրեց իր անունը կրող քաղաքը» (XXXI, 22)։ Նույնը և Խորենացին (Բ, խը)։

21 Strabo, XI, 14, 15։

22 Տե՛ս Գ. Սարգսյան, Գառնիի հունարեն արձանագրության շուրջը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1956. № 3, էջ 55։

Թագավորը երկրի բովանդակ զինված ուժերի գլխավոր հրամանատարն էր և ընդհանրապես ղեկավարում էր ներքին կյանքի բոլոր բնագավառները։

**Թագավորի շրջապատը:** Այս ամենը, իհարկե, բնավ չի նշանակում, թե միապետի իշխանությունը իսկապես անսահմանափակ էր և որ նա ամենազոր էր։ Իր գործողություններում թե՛ ներքին և թե՛ արտաքին բնագավառներում, նա առաջնորդվում էր իշխանության սոցիալական բազա հանդիսացող տիրող դասակարգի ձգտումներով, շահերով ու պահանջներով, որոնք նա կոչված էր պաշտպանել ու իրագործել։ Բռնանալով անգամ ավագանու այս կամ այն ներկայացուցչի վրա, նա ելնում էր իշխող դասակարգի ընդհանուր շահերից։

Երկրի կառավարման և թագավորի կողմնորոշման հարցում կարևոր նշանակություն ուներ հատկապես իշխող դասակարգի բարձրագույն խավը՝ թագավորի անմիջական շրջապատը, որը կազմում էր արքունիքը։ Այստեղ առաջին դերերը բաժանված էին թագավորի հարազատների միջև՝ նախ և առաջ նրա որդիների և եղբայրների։

Սրանց կողքին գործում էին մեծատոհմիկ, ինչպես և նորելուկ ծառայող ավագանու բարձր խավի ներկայացուցիչները։ Շնորհիվ Արտաշես Ա-ի նորագյուտ արամեերեն արձանագրության, այժմ հայտնի է նրա մերձավորագույն գործակիցներից մեկը՝ Ախշահրսարտի որդի Նիկեփորը[23]։ Տիգրան Բ-ի կողմից Լուկուլլոսի արշավը կասեցնելու նպատակով առաքված զորավարն էր Միթրոբուզանը (Մեհրուժան), որը, հավանորեն, Ծոփքի թագավորական ընտանիքից էր՝ Զարեհի հետնորդներից մեկը։ Սելևկյաններից նվաճված երկրների վրա կարգված էր Բագադատեսը (Բագարատ)։ Մայրաքաղաքի՝ Տիգրանակերտի, տնօրինությունը Լուկուլլոսի արշավանքի պահին հանձնարարված էր Մանկայոսին։ Սրանք բոլորը հետագայում հայտնի նախարարական տոհմերի նախնիներն են[24]։ Որոշ դեր էր վերապահվում նաև հելլենիստական շրջանի բոլոր պետություններ մուտք գործած հույն պատմիչներին։ Մետրոդորոս Սկեփսիացին, նախքան Տիգրանի արքունիք տեղափոխվելը, ծառայել է Միհրդատ Պոնտացուն, կատարելով Պոնտոսի գերագույն դատավորի պաշտոնը[25], հնարավոր է. որ Հայաստանում ևս նա որևէ նման պաշտոն էր վարում։ Նման անձնավորություններից մեկն էլ Գուրասի ռազմական օգնական հույն Կալիմաքոսն էր[26]։

Հայաստանի պետական առանձին մարմինների և նրանց գործունեության մասին հունա-հռոմեական աղբյուրներում բնականաբար սիստեմատիկ տվյալներ չկան և մնում է միայն ենթադրել, որ այստեղ ևս հելլենիստական այլ պետությունների նման, գոյություն պետք է ունենային երկրի ներքին կյանքի տարբեր բնագավառները ղեկավարող ռազմական, ֆինանսական, իրավական և այլ գերատեսչություններ, որոնց հետագա զարգացման արգասիքը հանդիսացան հայ Արշակունիների ժամանակաշրջանի գործակալությունները՝ սպարապետությունը, հազարապետությունը, սենեկապետությունը և այլն և այլն։

---

23 Տե՛ս *A. Perikhanian*, Une inscription araméenne du roi Artašes, trouvée a Zanguezour (Siwnik'), էջ 18։

24 Տե՛ս ստորև, էջ 679։

25 Տե՛ս *Strabo*, XIII, 1, 55։

26 Տե՛ս *Plut.*, Lucul., 32։

Խորենացին իր «Պատմության», հատկապես, Վաղարշակ թագավորի գահակալությանը վերաբերող դրվագում[27] ներկայացրել է այնպիսի և այնքան նորամուծություններ պետության կյանքի տարբեր բնագավառներում, որոնք, իհարկե, հնարավոր չէ պատմականորեն վերագրել մեկ, այն էլ այնպիսի կիսառասպելական անձնավորության, որպիսին է Վաղարշակը։



Արամազդի (Զևս-Օրոմազդեսի) ճոկոյակաճ արձաճի գլուխը. Նեմրուդ լեռ

Ինչպես ինքը՝ Վաղարշակը հավաքական անձ է, բաղկացած Արտաշես Ա-ի, Տրդատ Ա-ի և այլ հայ իշխողների առանձին գծերից, այնպես էլ Խորենացու կողմից նրան վերագրված նորամուծություններն ու բարեփոխումները իրականում երկարատև դարաշրջանի արգասիք են և իրականացված պիտի լինեն մի շարք թագավորների օրոք։

Փաստերը ցույց են տալիս, որ դրանց մի որոշակի մասը հիմնավոր կերպով կարելի է վերագրել նախաարշակունյան շրջանին, ինչպես, օրինակ, Խորենացու Վաղարշակին վերագրած հենց առաջին նորամուծությունը՝ «թագադիրի» կամ «թագակապի» պաշտոնի ստեղծումը։ Արտաշես Ա-ի Սիսիանում գտնված արամեերեն արձանագրության մեջ հանդիպում ենք «թագադիր» տիտղոսով մի անձնավորության՝ արդեն հիշատակված Ախշահրսարտի որդի Նիկեփորին։ Ուրեմն, «թագակապի» պաշտոնը գոյություն է ունեցել դեռևս Արտաշեսյանների դինաստիայի սկզբում, գուցե և ավելի վաղ։

Մ. թ. IV դարի Հայաստանում գոյություն է ունեցել «մարդպետություն» գործակալությունը, որի անունով նույնիսկ մի գավառ կոչվել է «Մարդպետական», որը և հատկացված է եղել այդ գործակալներին։ Դրանք սովորաբար

27 Տե՛ս Խորենացի, Բ, է, ը։

ներքինի են եղել և կրել են նաև «հայր» տիտղոսը։ Ահա այդ «հայր» կամ «թագավորի հայր» տիտղոսը հայտնի է դեռևս Սելևկյանների շրջանից։ Նույն տիտղոսը գոյություն է ունեցել Պոնտոսի թագավորությունում, մասնավորապես Միհրդատ Եվպատորի օրոք։ Այդ տիտղոսը ի դեպ կրել է մեզ հայտնի Մետրոդորոս Սկեփսիացին, որը Միհրդատի մոտ գերագույն դատավորի պաշտոն էր վարում։

Արշակունյաց Հայաստանում կարևոր դեր խաղացած «հազարապետություն» գործակալությունը ևս կարող էր գոյություն ունեցած լինել Արտաշեսյան շրջանում, փոխառված լինելով կամ Աքեմենյաններից՝ Երվանդունիների միջոցով և կամ Սելևկյաններից, որոնց մոտ այդ պաշտոնը «խիլիարխիա» (հազարապետություն) անվամբ և հայկականին հար և նման բովանդակությամբ ընդունված է եղել ամենավաղ ժամանակներից։ Ինքը՝ Սելևկոս Ա-ը, Ալեքսանդրր Մակեդոնացու օրոք «խիլիարխոս»—հազարապետ է եղել։

Խորենացին Վաղարշակին է վերագրում նաև դատավարության (մասնավորապես թագավորական դատավարության, այսինքն՝ թագավորի կողմից երկրի ստորաբաժանումներում նշանակվող դատավորների) հիմնադրումը՝ «Սահմանում է իրավարարներ արքունի տանը, իրավարարներ քաղաքներում և ավաններում»։ Պարթևների մոտ թագավորական դատավարության մասին հաստատուն տվյալներ ունենք մ. թ. I դարի վերաբերյալ։ Ենթադրվում է, որ այդ հիմնարկությունը պարթևները ժառանգել էին Սելևկյաններից[28]։ Նույն ճանապարհով այն կարող էր ի հայտ գալ և Հայաստանում՝ Արտաշեսյանների օրոք։ Մեզ հետաքրքրող դրվագում կան նմանօրինակ նաև այլ հաղորդումներ, որոնք արժանի են ուշադրության և ուսումնասիրման։

**Իշխող դինաստիայի պաշտամունքը:** Խորենացու մոտ կարդում ենք նաև, որ Վաղարշակը «Արմավիրում մեհյան շինելով՝ արձաններ է կանգնեցնում Արեգակին (=Ապոլոն, Տիր), Լուսնին (=Անահիտ, Արտեմիս) և իր նախնիներին»։ Մի քանի այլ առիթներով Խորենացին վերադառնում է այդ խնդրին[29] և իմանում ենք, որ նմանօրինակ տաճարներ՝ նվիրված թագավորական նախնիների պաշտամունքին, կառուցվել են նաև Բագարանում ու երկրի մայրաքաղաք Արտաշատում։

Խորենացու այս հաղորդումներով ուրվագծվող թագավորական նախնիների պաշտամունքը լայն տարածում է ունեցել ողջ հելլենիստական աշխարհում։ Սելևկյանների մոտ տարածված պաշտամունքի տարատեսակը հատկապես հարազատություն է ցուցաբերում հայկականի հետ. օրինակ, մի արձանագրության մեջ հիշատակվում է Զևսի, Ապոլոնի, թագավորական նախնիների և Սելևկոս թագավորի պաշտամունքն իրականացնող քուրմը[30], որ շատ նման է Խորենացու վերը մեջբերված տեղեկությանը[31]։

---

[28] Տե՛ս C. B. Welles, Dura Pergament 21. Hypotheck und Execution am Euphratufer im I. Jahrhundert n. Chr., „Zeitschrift der Savigny-Stiftung für Rechtsgeschichte", Romanische Abteilung. LVI, 1936, էջ 101 և հաջ.։

29 Տե՛ս Խորենացի, Բ, Թ, ԺԲ, ԺԴ, ԻԴ, Խ, ԽԲ, ՀԷ։

30 Տե՛ս M. Rostovtzeff, Πρόγονοι, „The Journal of Hellenic Studies", vol. LV, 1935, էջ 56։

31 Տե՛ս Խորենացի, Բ, Ը։



Միհրի (Ապոլլոնի) հսկայական արձանի գլուխը. Նեմրութ լեռ

Սելևկյանների, Պտղոմյանների, ինչպես և այլ դինաստիաներում նախնիների հետ մեկտեղ կրոնական պաշտամունքի առարկա է դարձվել նաև իշխող, կենդանի թագավորի անձը, ըստ որում հաճախ թագավորները նույնացվել են այս կամ այն աստծո հետ։ Այսպես, հանդիպում ենք Սելևկոս-Զևս-Նիկատորին (Սելևկոս Ա), Անտիոքոս-Ապոլոն-Սոտերին (Անտիոքոս Ա) և այլն։

Բաց ծանոթ Պոնտոսի արքա Միհրդատ Եվպատորը նույնացվել է Դիոնիսոս աստծուն[32]։

Հարուստ փաստեր են գտնվել դինաստիայի և իշխող թագավորի պաշտամունքի վերաբերյալ Կոմմագենեի Երվանդունիների կապակցությամբ, հատկապես՝ Անտիոքոս Ա. Կոմմագենացու (մ. թ. ա. 69—38)։ Սրա հիմնադրած բազմաթիվ սրբավայրերը, հակառակ երկրի փոքր հնարավորություններին, օժտված են եղել փառահեղ պաշտամունքային կառույցներով։ Եփրատի արևմտյան արմունկի մոտերքը Նեմրուդ լեռան վրա պեղված, Անտիոքոսի հիմնադրած սրբավայրում կանգնեցված են եղել աստվածների և իրեն՝ Անտիոքոսի հսկայական 8—9 մ բարձրություն ունեցող քարե արձաններ, իսկ նախնիներին՝ 3 մ բարձրություն ունեցող սալերի վրա արված նրանց բարձրաքանդակ պատկերները, չհաշված մյուս, նույնքան ճոխ պաշտամունքային պարագաները։ Այստեղ դինաստիական պաշտամունքի կապակցությամբ ներկայացված աստվածները նույն Զևս-Արամազդն է, Ապոլոն-Միհր-Հելիոս-Հերմեսը և Հերակլես-Վահագն-Արեսը[33]։

Սպասելի է, որ Հայաստանում ևս այսօրինակ կառույցներ են եղել, թեև արդեն իսկ առկա սուղ տվյալները թույլ են տալիս խոսելու որոշ առանձնահատկությունների մասին։ Այսպես, ի տարբերություն Կոմմագենեի, Հայաստանում Զևս-Արմազդի, Արև-Տիր-Ապոլոնի և Լուսին-Անահիտ-Արտեմիսի արձանները, ըստ Խորենացու, ոչ թե քարից են եղել, այլ «պղնձաձույլ» և «ոսկեզօծ», իսկ թագավորական նախնիների համար կանգնեցվել են «կուռքեր», որոնք ըստ երևույթին եղել են, ինչպես Կոմմագենեում, բարձրաքանդակներ[34]։

Թագավորական դինաստիայի պաշտամունքը, նախապես որպես միայն նախնիների պաշտամունք, սկզբնավորված պիտի լինի Հայաստանում Արտաշես Ա-ի օրոք, և իր հետագա զարգացումն է ապրում Տիգրան Բ-ի ժամանակ, երբ այն լրացվում է իշխող թագավորի աստվածացմամբ և նույնացմամբ մի կոնկրետ աստծո հետ։ Տիգրան Բ-ի դեպքում այդ քայլը դյուրանում էր այն հանգամանքով, որ նա, գրավելով Սելևկյանների գահը 14 տարի շարունակ, կարող էր յուրացնել՝ տարբեր սելևկյան ավանդույթների թվում, նաև վերոհիշյալը։ Տիգրանի աստվածացման մասին խոսում է նրա θεός պատվանունը, իսկ նրա նույնացման մասին հատկապես Հերակլ-Վահագն աստծո հետ՝ այն հանգամանքը, որ Խորենացու հաղորդած Աժդահակի և Տիգրանի առասպելում վերջինս փաստորեն հանդես է գալիս վիշապաքաղ Վահագն աստծո դերում[35]։ Այս տեսակետը հաստատվում է նաև Տիգրանի այն դրամներով, որոնց հակառակ կողմին պատկերված է Հերակլես-Վահագնը։ Նման ձևով Արտավազդ Բ

32 Տե՛ս *M. P. Nilsson*, Geschichte der griechischen Religion, II Band, Die hellenistische und die römische Zeit, երկրորդ հրատ., München, 1961, էջ 164 և հաջ.։ *L. Cerfaux et J. Tondriau*, Un concurent de christianisme, Le culte des souveraines, „Bibliothèque de theologie", série III, vol. 5, Paris, 1957, էջ 240 և հաջ.։

33 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, էջ 232—252։

34 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, *Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին*, էջ 44։

35 Համե՛մ. Մ. Աբեղյան, *Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու «Հայոց պատմության» մեջ*, Վաղարշապատ, 1899, էջ 502 և հաջ.։

*թագավորը, ըստ երևույթին, նույնացված է եղել Միհր աստծուն, որտեղից էլ ծագում է բնորոշ միհրական առասպելներում Արտավազդի՝ Միհրի դերում հանդես գալը*[36]։

*Հետագայում ևս, Արշակունյաց օրոք, այդ պաշտամունքը պահպանվել է, սնվելով մի կողմից Արտաշեսյանների ավանդույթներից, մյուս կողմից էլ հենց պարթև Արշակունիների մոտ լայն տարածում գտած նմանօրինակ պաշտամունքից։*

*Թագավորական դինաստիայի պաշտամունքը, որը հաճախ անվանում են «քաղաքական կրոն», պետական իշխանության այլ միջոցների շարքում ունեցել է կարևոր ու լուրջ սոցիալական ֆունկցիա՝ օժանդակել տիրող դասակարգին նրա տիրապետության ապահովման գործում։*

## 2. ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՏԱՐՐԵՐ

**Երկրի վարչական բաժանումը:** *Պլինիոս Ավագը հիշատակում է, թե «Հայաստանը բաժանվում է 120 պրեֆեկտուրաների՝ բարբարոսական անուններով, որոնք կոչվում են* **ստրատեգիաներ.** *դրանցից մի քանիսը նախապես առանձին իշխանություններ* (regna) *պետք է եղած լինեն»*[37]։ *Այս հաղորդումը բազմաթիվ վեճեր է հարուցել, թե՛ այդ միավորների էության և թե՛ նրանց ծագման ժամանակի շուրջը։*

*Այն կարծիքը, թե դրանք ֆեոդալական տիպի «տիրակալական իշխանություններ» են եղել*[38]*, չի արդարանում ոչ նրանց «ստրատեգիա» հորջորջմամբ, որը հին աշխարհում ունեցել է վարչա-տերիտորիալ (թերևս ռազմական երանգով) միավորի նշանակություն, ոչ էլ Պլինիոսի կողմից այդ տերմինին տրված «պրեֆեկտուրա» պարզաբանմամբ, որը նույնպես չի կարող մեկնաբանվել այլ կերպ, քան վարչական-տերիտորիալ միավոր։ Դեռ ավելին, հենց նույն հատվածում առկա է նաև «իշխանություն» կամ «թագավորություն» բառը, որը պարզորոշ հակադրված է նախորդ երկու տերմիններին և ավելի ցայտուն է դարձնում նրանց զուտ վարչա-տերիտորիալ իմաստը։ Իսկապես Պլինիոսն այստեղ հաղորդում է, որ Հայաստանի ստրատեգիաների մի մասը նախապես եղել են* regna՝ *«իշխանություններ» կամ «թագավորություններ» և ապա նոր վերածվել վարչա-տերիտորիալ միավորների՝ ստրատեգիա-պրեֆեկտուրաների։ Այս պարագաներում ստրատեգիաները «տիրակալական իշխանություններ» համարելը նշանակում է ոչ միայն տերմինի կոնկրետ իմաստի անտեսում, այլև այդ միավորների զարգացման՝ Պլինիոսի կողմից ակնարկած պրոցեսի անտեսում։*

*Ե՞րբ է Հայաստանում արմատավորվել այդ վարչական բաժանումը։ Շատ քիչ հավանականություն կա, որ դա Տրդատ Ա Արշակունու գործն է. որովհետև նրա գահակալման և ստրատեգիաների մասին հաղորդող Պլինիոսի մահվան թվականների միջև ընկած էր ընդամենը 13 տարի (մ. թ. 66—79), և հռոմեացի*

---

36 *Տե՛ս նույն տեղում, էջ 366։ Բաղ. Ավդալբեկյան, Միհրը հայոց մեջ, Վիեննա, 1930, էջ 54 և հաջ.։*

37 *Plin.,* NH, *VI, 9։*

38 *Տե՛ս Н. Адонц,* Армения в эпоху Юстиниана, *էջ 483 և հաջ.։*

հեղինակը դժվար թե հասցներ Հայաստանի ներքին կյանքի վերջին նորություններից մեկը հիշատակել այդքան մեծ արագությամբ, չխոսելով այն մասին, որ նա կարող է իր այդ աշխատության համապատասխան բաժինը գրած լինել դեռևս 66 թվականից առաջ։ (Այս շատ հավանական է, քանի որ Պլինիոսը հետադարձել է Հայաստանը Կլավդիոս կայսեր (մ. թ. 41—54) պատվերով)։

Անհամեմատ ավելի հավանական է, որ վարչական այդ բաժանման սկիզբը դրվել է նախորդ շրջանում, այսինքն (եթե բացառվի մ. թ. I դարի առաջին կեսի խառն ու անկայուն ժամանակաշրջանը)՝ Արտաշեսյանների օրոք, նրանցից մեկնումեկի ձեռքով, գուցե և հենց՝ Արտաշես Ա-ի։

Ստրաբոնի հաղորդմամբ, տասը ստրատեգիաների է բաժանված եղել նաև Հայաստանի հարևան Կապադովկիան[39], սակայն թվերի հարաբերությունից բխում է, որ այդ երկրում ստրատեգիաները, ի տարբերություն Հայաստանի, եղել են ամենախոշոր վարչական միավորները. սրանք իրենց բնույթով համապատասխանել են, ասենք, Սելևկյանների սատրապիաներին, որոնց թիվը չէր անցնում երեք տասնյակից։ Հայկական ստրատեգիաները համապատասխանել են ավելի շուտ սատրապիաների ստորաբաժանումներին՝ հիպարխիաներին, որոնց թիվը Սելևկյանների մոտ եղել է 72։ Այդ դեպքում Հայաստանում պիտի գոյություն ունեցած լինեն նաև ավելի խոշոր, յուրաքանչյուրը մի շարք ստրատեգիաներից բաղկացած միավորներ, որոնք, հավանաբար, կոչվել են հենց սատրապություններ։ Թերևս այդպիսի սատրապություններ են Պտղոմեոսի հիշատակած Հայաստանի քսան մարզերը[40]։

**Նախարարության և նախարարական տոհմերի ծագումը:** Պլինիոսի հիշատակած ստրատեգիաները[41], մի քանի բացառությամբ, սկզբում եղել են վարչա-տերիտորիալ միավորներ։ Այսուհանդերձ, դրանց սահմանները ոչ թե պայմանավորված են եղել սրանք հիմնադրած տիրակալի քմահաճույքով, այլ, անշուշտ, հիմք են ունեցել երկրի բնական պայմանները՝ լեռներն ու գետերը, ինչպես և էթնիկական այն երանգները, որոնք, չնայած հայ ժողովրդի կազմավորման ավարտին, դեռ երկար ժամանակ պիտի պահպանվեին։ Ուստի այդ վարչա-տերիտորիալ միավորները կայուն են եղել և իրենց աշխարհագրական նկարագիրը հաղորդել են հետագայի նախարարություններին, հետզհետե վերափոխվելով ֆեոդալական «տիրակալական իշխանությունների», որպիսիք և հանդիպում ենք մ. թ. ա. IV—V դարերում։

Նախարարությունների առաջացման հետ չպետք է շփոթել առանձին նախարարական տոհմերի ծագման խնդիրը։ Դրանք կարող են շատ ու շատ հին

---

39 Տե՛ս Strabo, XII, 1, 4։

40 Տե՛ս Ptol., V, 12, 4, 9։ Պլինիոսի «Բնական պատմության» տեքստի հրատարակիչը, հենվելով Պտղոմեոսի թվարկած մարզերի այս քանակության վրա՝ 20, ենթադրում է, թե գուցե հենց Պլինիոսի մոտ էլ պիտի կարդալ 20, հարյուրավորի նիշը հետագա աղավաղում համարելով (տե՛ս C. Plinii Secundi Naturalis historiae..., ed. C. Mayhoff, I, Lipsiae, 1904, էջ 553)։ Այս կնշանակեր, որ Հայաստանը բաժանված է եղել ընդամենը 20 ստրատեգիաների։ Տեսակետը հավանական է և ներդաշնակություն է մտցնում Հայաստանի ու հարևան Կապադովկիայի վարչական բաժանումների բնույթի մեջ, թերևս նաև Սելևկյանների, որոնց սատրապությունները, լինելով ստրատեգոսների իշխանության ներքո, կարող էին և ստրատեգիաներ կոչվել։

41 Ստրատեգիաների մասին տես և ստորև, 32-րդ գլխում։

*լինել և փաստերը ցույց են տալիս, որ շատերը հենց այդպիսին են։ Տոհմերի բազմադարյան հարատևումը ամենևին ֆեոդալական հասարակարգի մենաշնորհը չէ, ինչպես ընդունված է կարծել։ Ստրկատիրական Հռոմում քիչ չեն*



Վահագնի (Հերակլես-Արտագնեսի) հսկայական արձանի գլուխը. Նեմրութ լեռ

*այնպիսի տոհմերը, որոնք գոյատևել են երեք, չորս, հինգ և ավելի դար և գործիչներ են տվել հռեոմեական պետությանը։ Հայոց Արծրունիներին մերթ սերում են Սոփքի թագավոր Զարեհի տոհմից*[42]*, մերթ նույնիսկ ուրարտական ծա-*

---

[42] *Տե՛ս J. Marquart*, Eränšahr nach der Geographie des Ps. Moses Xorenaci, Berlin, 1901, *էջ 177։ Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, *էջ 390։*

գում վերագրում[43], որ ամենևին անհավանական չէ ոչ Արծրունիների, ոչ էլ մի քանի այլ նախարարական տոհմերի համար։ Տիգրան Բ-ի զինակից, Ասորիքում սատրապ նշանակված Բագադատեսը (Բագարատ) հիմնավոր կերպով համարվում է Բագրատունիների տոհմի նախահայրը[44], կամ ավելի ճիշտ՝ պետք է համարվի նրա ներկայացուցիչ, որովհետև նույն այդ տոհմի մի այլ ներկայացուցչի թերևս հանդիպում ենք ավելի վաղ, ի դեմս Արտաշես Ա-ի «թագադիր» Ախշահրսարտի որդի Նիկեփորի[45]։ Նույնպես և Տիգրանի կողմից իր մայրաքաղաքի վերակացու նշանակված Մանկայոսը (Մամկայոս, Մամիկ, սեռ.՝ Մամկայ) Մամիկոնյան է համարվում միանգամայն համոզիչ կերպով[46]։ Մ. թ. ա. I դարի կեսերին Տակիտոսի հիշատակած հայ մեծատոհմիկ Դեմոնաքսը իրավամբ Դիմաքսյան տոհմի ներկայացուցիչ է համարվում[47]։ Այս ցանկը կարելի է, հավանաբար, շարունակել, բայց այսքանն էլ բավական է ցույց տալու համար, որ հետագայում նախարարական դարձած տոհմերը շատ ավելի հին կարող էին լինել, քան ֆեոդալիզմի սկիզբը Հայաստանում և նախարարական դասի կազմավորումը։

**Քաղաքները պետության սիստեմում:** Ստրատեգիաների կողքին առանձին վարչական միավորներ էին հանդիսանում Հայաստանի առավել նշանավոր քաղաքները՝ իրենց շրջակա տերիտորիաներով (պակաս նշանավորները մտնում էին ստրատեգիաների կազմի մեջ)։ Այդ քաղաքների վարչական կառուցվածքը առանձնահատուկ էր [48], և այս կամ այն չափով մոտենում էր հելլենիստական Առաջավոր Ասիայի քաղաքների կառուցվածքին։ Այդ մասին կան վկայություններ, որոնք, ճիշտ է, ծագում են ավելի ուշ ժամանակաշրջանից, բայց վերաբերում են հին, հելլենիստական շրջանում ստեղծված քաղաքներին։ Դրանք մասնավորապես առկա են Տիգրանակերտի հունարեն արձանագրության մեջ (մ. թ. IV դարի սկիզբ), որի տվյալները հաստատվում են V դարի հայ պատմիչների տեղեկություններով. գոյություն է ունեցել քաղաքի կառավարման խորհրդակցական մարմին և սրա կողքին կամ սրանից վեր՝ թագավորի կողմից նշանակված կառավարիչ, «քաղաքի վերակացու», որը թերևս կոչվել է նաև «շահապ»[49]։ Քաղաքները անմիջապես կախված են եղել կենտրոնական իշխանությունից և թագավորի հետ նամակագրություն են ունեցել իրենց կյանքի տարբեր հարցերի շուրջը։

Տիգրանակերտի արձանագրության մեջ հայոց թագավորը դիմում է քաղաքին ὑμεῖς «դուք» կամ ἡ πολιτεία ὑμῶν «ձեր քաղաքային համայնքը» խոս-

---

43 Տե՛ս *С. Г. Бархударян*, Урартское происхождение армянского нахарарского рода Арцруни, «Сборник в честь академика И. А .Орбели», М.—Л., 1960, էջ 29 և հաջ.։

44 Տե՛ս *J. Marquart*, Ērānšahr, էջ 174։

45 Տե՛ս *A. Perikhanian*, Une inscription, էջ 18։

46 Տե՛ս *J. Marquart*, Ērānšahr, էջ 176։

47 Տե՛ս **Հ. Մանանդյան**, *Քննական տեսություն*, հատ. Ա, էջ 320։

48 Տե՛ս *Г. Х. Саркисян*, Тигранакерт, *Ներածություն*։

49 Տե՛ս *С. Т. Еремян*, Развитие городов и городской жизни в древней Армении, էջ 25; *Г. Х. Саркисян*, Из истории городской общины в Армении (IV в. н. э.), ВДИ, 1955, № 3, էջ 54։

*քերով, այդ «դուքս»-ի տակ նկատի ունենալով քաղաքի խորհուրդը, որի անդամները հետագայում «երիցանի» կամ «ավագանի» անունն էին կրում։*

*Պետք է ընդգծել, որ հելլենիստական աշխարհում քաղաքների և թագավորների միջև նամակագրությունը չափազանց տարածված երևույթ է եղել*[50] *և այնքան փնորոշ, որ հենց միայն այդպիսի նամակների առկայությունը այդ ժամանակաշրջանի որևէ պետությունում՝ բավարար վկայական է այդտեղ վերոհիշյալ կիսաինքնավար քաղաքների գոյության փաստը ընդունելու համար։ Իսկ Հայաստանում, բացի այդօրինակ նամակագրության ուշ նմուշ հանդիսացող՝ Տիգրանակերտի արձանագրությունից, կարելի է նշել նաև Արմավիրի հունարեն արձանագրություններից մեկը (մ. թ. ա. III—II դարերի եզրին պատկանող), որպես այդ նամակագրության վաղ նմուշ։ Այդտեղ ոմն Միթրաս, «արմավիրցիների թագավորը», այսինքն՝ հավանորեն նրանց համայնքի ղեկավարը, դիմում է Երվանդ թագավորին։*

*Հայկական քաղաքների ներսում, հավանաբար, որոշ ինքնավարություն են վայելել այլազգի բնակիչները՝ հույները, հրեաները, կազմելով առանձին համայնքներ՝ օժտված ներքին հարցեր տնօրինելու իրավունքով։*

*Վարչական ստորին օղակներն էին գյուղական համայնքները, որոնք մեծամասնությամբ ստրատեգիաների մեջ էին մտնում, իսկ մի մասն էլ՝ քաղաքների հողային տերիտորիայի վրա էր գտնվում։ Այստեղ ևս պետությունը սովորաբար օգտագործում էր ավանդական համայնական ղեկավար մարմինները, դարձնելով դրանք իր վարչական ապարատի յուրատեսակ բաղադրիչ մասը։*

**Ֆինանսներ, արքունի դիվանատուն:** *Պետական վարչական ապարատի ամենակարևոր ֆունկցիաներից մեկն էր հարկահանությունը։ Պետության ծախսերը մեծ գումարների էին հասնում։ Այդ ծախսերը ապահովելու համար պետությունը պետք է ունենար հզոր հարկային մեքենա, և ինչպես ցույց են տալիս հինարևելյան ու հելլենիստական մի շարք երկրների օրինակները, պետության աչքից չի վրիպել հարկման որևէ քիչ թե շատ էական օբյեկտ*[51]*։*

*Հայաստանի կյանքի այս բնագավառի մասին էլ մեր տեղեկությունները չափազանց աղոտ են աղբյուրների՝ վերը քանիցս նշված յուրահատուկ բնույթի և սղության պատճառով։ Սակայն չպետք է տարակուսել, որ հելլենիստական աշխարհում հանդիպող սիստեմը իր հիմնական գծերով պետք է այստեղ ևս գոյություն ունենար, այլապես հնարավոր չէր լինի պետության ռազմական, քաղաքական և շինարարական այն հսկայածավալ գործունեությունը, որին քաջածանոթ ենք։ Որպես այդ սիստեմի նմուշ կարելի է հիշատակել տարանցիկ առևտրի ուղիների վրա Տիգրան Բ-ի ժամանակ հաստատված պետական վերահսկողությունը, որի նպատակներից մեկն էլ, անշուշտ, մաքսերի գանձումն էր։*

*Հարկերը գյուղական համայնքից ու քաղաքներից ու հարկման ենթակա այլ օբյեկտներից տեղական մարմինների միջոցով հավաքվում էին ստրատե-*

---

[50] *Տես C. B. Welles*, Royal Correspondence in the Hellenistic World, New Haven, 1934.

[51] *Տես M. Rostovtzeff*, The Social and Economic History of the Hellenistic World, I, Oxford, 1941.

գիաների ֆինանսական օրգաններում, իսկ այնտեղից ուղարկվում արքունի գիվանատուն՝ պետական գանձարան։ Այստեղ էր կուտակվում նաև նվաճողական պատերազմներից ստացված ավարը։ Արտաշեսյանների գանձարանի հարստության մասին պատկերացում է տալիս Տիգրանի կողմից Պոմպեոսին հանձնած ռազմատուգանքի քանակությունը՝ 6000 տաղանդ (12,5 միլիոն ոսկե ռուբլի), չհաշված այն հսկայական գումարը, որ նա նվիրեց Պոմպեոսի զինվորներին ու զորահրամանատարներին[52]։ Գանձարանի կազմակերպումը պարզ չէ։ Գիտենք միայն, որ խուսափում էին կուտակված միջոցները մի տեղ, մանավանդ՝ մայրաքաղաքում կենտրոնացնելուց, երկյուղ կրելով հավանաբար, ներքին ու արտաքին արհավիրքներից։ Պետական գանձարանը տեղավորվում էր հատուկ բերդերում։ «Քաղաքից (Արտաշատից) ոչ շատ հեռու,— հաղորդում է Ստրաբոնը, — գտնվում են Տիգրանի և Արտավազդի գանձարանները՝ անառիկ ամրոցներ Բաբյուրսան և Օլանեն»[53]։ Արտաշեսյան հարստության վերջին շրջանում դրանց թվին էր պատկանում նաև Արտագերսը։ Դրանցում նշանակված էին հատուկ գանձապահներ[54]։ Նույնը շարունակվել է նաև Արշակունիների օրոք։ Սրանց գանձարաններն էին Անգեղ և Դարանաղյաց Անի բերդերը, որոնք միաժամանակ նաև թագավորների դինաստիական հանգստարաններն էին. այստեղ էին թաղվում բոլոր թագավորները[55]։

Արտաշեսյանների հիմնական փողերանոցը գտնվում էր Արտաշատում։ Տիգրան Բ-ը իր դրամները, բացի Արտաշատից հատում էր նաև Անտիոքում, Դամասկոսում և այլուր։ Մեզ հասել են Արտաշեսյան թագավորների հատած բազմաթիվ արծաթյա և պղնձյա դրամներ, որոնք պահվում են աշխարհի մի շարք թանգարաններում[56]։ Դրամահատության այդպիսի մեծ թափը վկայում է ներքին ու արտաքին առևտրի մեծ ծավալի մասին։

Պետության կյանքի բոլոր բնագավառների մասին գրավոր տվյալները մշակվում էին արքունի դիվանատանը և կուտակվում դիվանում։ Հին Հայաստանում նման դիվանի գոյության անուղղակի, բայց և անառարկելի ապացույցներն են մեզ հասած թագավորական՝ արամեերեն կամ հունարեն լեզվով գրած վիմական արձանագրությունները։ Դրանք այնպիսի բնույթի են, որ նրանց տեքստերը անպայման մշակված պիտի լինեին դիվանատանը, և նրանց մագաղաթյա պատճենները պիտի պահպանվեին արքունի դիվանում։ Այդպիսիք են, օրինակ, Արտաշես Ա-ի հողաբաժան սահմանաքարերի արձանագրությունները։ Գառնիի հունարեն արձանագրությունը տիպիկ գրասենյակային փաստաթղթերի «ձև» ունի։ Շինարարական որևէ ձեռնարկության իրականացման ժամանակ բաց էին թողնվում կատարողի և վկայի անունները, և լրացվում գործը կատարելուց հետո[57]։ Փաստաթղթի այս «ձևը» պիտի մշակվեր անշուշտ արքունի դիվանատանը։ Ապարանի հունարեն արձանագրությունը արքունական

52 App., Mithr., 104 և այլ աղբյուրներ։

53 Strabo, XI, 14, 6։

54 Տե՛ս Dio, XLIX, 39։

55 Փավստոս, Դ, իգ։ Խորենացի, Գ, իէ, խե։

56 Դրամների մասին մանրամասն տե՛ս ստորև, էջ 689 և հաջ.։

57 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, էջ 181։

մի պարգևագիր է, որով թագավորը նախարարներից մեկին բնակավայր է ընծայում։ Անկասկած, սրա մագաղաթյա պատճենը կամ ավելի ճիշտ, երկու՝ նվիրողի և ստացողի մոտ պահպանվող սկզբնօրինակներից մեկը, պիտի պահպանվեր արքունի դիվանում։ Էլ ավելի փնորոշ է Տիգրանակերտի հունարեն արձանագրությունը, որը քաղաքին ուղղված արքայական մի ուղերձ-հրովարտակ է։

Այս բոլորը վկայում են հին Հայաստանում պետական աշխույժ կյանքի, պետական հիմնարկների բարդ ու տարբերակված գործունեության մասին նաև այլ բնագավառներում, որոնց մասին տեղեկություններ չեն պահպանվել։ Նշենք փաստերով որոշ չափով հաստատված մի երևույթ ևս։

**Լիտուրգիա (հասարակական աշխատանք)**: Լիտուրգիա էր կոչվում հունական քաղաք-պետություններում որևէ քաղաքացու՝ իր ծախքով կատարած հանրօգուտ գործը, ասենք, մի նավի կամ մի հանրային շենքի կառուցումը՝ պետության համար։ Հայաստանում այդ երևույթը ներկայացված է նույն անունով, բայց՝ միապետական կարգերի ազդեցության տակ ձևափոխված վիճակում։ Խոսքը Գառնիի արձանագրության մասին է, որտեղ հիշատակված է ոմն Մեննեաս, «լիտուրգոս» λιτουργός հորջորջմամբ, որն իր վրա է վերցրել թագավորական ամրոցի հիմնադրման (կամ ավելի ճիշտ նորոգման) ծախսը[58]։ Այդ կապակցությամբ նրա անունը և գործարքին ներկա վկայի անունը գրանցվում են նախապես պատրաստված, ինչպես ասվեց՝ բաց թողնված տեղեր ունեցող ստանդարտ արձանագրության մեջ, որը կազմված է նմանօրինակ դեպքերի համար մշակված հատուկ բանաձևով։ Այստեղ հիշատակված են թագավորը իր տիտղոսներով և δεσόπτης «գերագույն տեր» հորջորջմամբ, շինարարության օբյեկտը և թվագրումը՝ ըստ թագավորի իշխանության տարիների։ Գործն այնպես է ներկայացվում, թե հիմնադրողը թագավորն է, որպես գերագույն տեր, իսկ վճարողը՝ Մեննեասը, որպես լիտուրգոս[59]։ Վերը ասվեց, որ քաղաքներ հիմնադրելու ֆունկցիան վերապահված էր թագավորին։ Արձանագրությունը ցույց է տալիս, որ այդ ֆունկցիան հաճախ անվանական բնույթ է կրում, և իսկական հիմնադրողները, այսինքն՝ աշխատանքը ֆինանսավորողները միանգամայն այլ անձնավորություններ էին։

Արձանագրության ստանդարտ բնույթը համոզում է, որ Գառնիի լիտուրգիայի դեպքը եզակի չէր հին Հայաստանում, այլ ընդունված գործելակերպ էր պետական կյանքում։ Հավանական է, որ այն երբեմն իրականացվում էր պարտադրական ձևով, իհարկե նաև թագավորին հաճոյանալու համար։ Ավելի վաղ՝ Տիգրան Բ-ի ժամանակին վերաբերող մի հաղորդում հենց այդ մասին է խոսում և միաժամանակ հաստատում լիտուրգիայի գոյությունը Հայաստանում երկար ժամանակ։ «Որովհետև,— գրում է Պլուտարքոսը,— մասնավոր անձինք և մեծատոհմիկները՝ թագավորի նկատմամբ ունեցած սիրուց և հարգանքից դրդված (հոգ էին տանում) քաղաքի շենության մասին, ապա և այն հարուստ էր գանձերով ու կառույցներով»։ Նման լիտուրգիան, համահունչ լինելով տե-

---

58 Տե՛ս նույն տեղում, էջ 206 և հաջ.։

59 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Գառնիի հունարեն արձանագրության շուրջը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1956, № 3, էջ 45—46։



Կոմմագենեի թագավոր Երվանդունի Անտիոքոս Ա-ը՝ հայկական թագով և Վահագն-Հերակլես աստվածը. Նեմրութ լեռ

ղական որոշ պարհակներին և այլն, ըստ երևույթին խոր արմատներ էր գցել հայ իրականության մեջ[60]։

**Զինված ուժեր:** *Պետական մեքենայի կարևորագույն մասն էին կազմում զինված ուժերը։ Հայկական բանակի մեծության մասին աղբյուրները պահպանել են մի շարք տվյալներ, որոնց միջից պետք է զատել Տիգրան Բ-ին վերաբերվող թվերը, քանի որ դրանք արտահայտում են, և այն էլ թերևս չափազանցված ձևով, ոչ բուն Հայաստանի, այլ հայկական մեծ տերության ռազմական ուժերի քանակը։ Այսպես, Ասորիքի վրա արշավելու պահին Տիգրանն իբրև թե ունեցել է 300 հազար զորք[61], Տիգրանակերտի ճակատամարտում՝ 250—300 հազար[62]։ Վերջինի կապակցությամբ կան և այլ տվյալներ՝ 70—80 հազար[63], որոնք ավելի ճշմարտացի են թվում, քանի որ հանգամանքները դժվար թե թագավորին թույլ տային կարճ ժամանակում ավելի մեծ զորք գումարել։ Սակայն անկասկած է, որ նվաճելով մի շարք երկրներ և իր ազդեցության տակ պահելով մի քանի ուրիշները, Տիգրանը ի վիճակի էր հարյուր հազարներով զորք հավաքել։*

*Բուն հայկական զորքի քանակության մասին դատելու համար ավելի պիտանի է Ապպիանոսի այն հաղորդումը, թե Տիգրանակերտի ճակատամարտում հայերի կրած պարտությունից հետո Միհրդատ Եվպատորը հայկական «բոլոր քաղաքներում զենք էր պատրաստում և զորակոչեց գրեթե բոլոր հայերին։ Նրանցից ընտրելով լավագույններին՝ մոտ 70.000 հետևակ և այդ քանակության կեսի չափ հեծյալ զորք, նա մնացածին բաց թողեց»[64]։ Շուրջ 100 հազար մարտիկներ, ըստ երևույթին, այսքան զորք կարող էր տալ Հայաստանը։ Արտավազդ Բ-ի ժամանակի մասին Պլուտարքոսը հաղորդում է, որ թագավորը ներկայացավ Կրասսոսին 6 հազար հեծելազորով և նրան խոստացավ ևս 10 հազար հեծելազոր ու 30 հազար հետևակ զորք[65]։ Այս թվերը, որոնց գումարն անում է 46 հազար, արդեն որևէ չափազանցություն չեն պարունակում. ընդհակառակն, պետք է ընդունել, որ Արտավազդը չէր կարող Կրասսոսին խոստանալ հայկական բոլոր զորքերը, այլ նա բեռ մի քանի տասնյակ հազար զորք, թերևս խոստացածի չափ, պետք է պահպաներ այլ դեպքերի և անակնկալների համար։ Այսպիսով, 90—100 հազար, որ համերաշխ է նախորդ տեղեկության հետ։*

*Հայկական զորքի հիմնական հարվածող ուժն էր զրահավոր հեծելազորը, որի հարձակումը պետք է անհրաժեշտ պահին բեկում մտցներ ճակատամարտի մեջ և վճռեր նրա ելքը։ Բացի դրանից, կար նաև ավելի բազմամարդ թեթև հե-*

---

60 *Plut.*, Lucul., *27։ Գուցե Գառնիի բաղնիքի խճանկարի (մ. թ. III դար) հունարեն արձանագրությունը «աշխատեցինք՝ ոչինչ չստանալով»— լիտուրգիայի դեպք է արձանագրում (տե՛ս* Ս. Կրկյաշարյան, *Եվս մի անգամ Գառնիի հունարեն արձանագրության մասին, ՊԲՀ, 1965, № 3, էջ 235—238)։ Բագրատունյաց մայրաքաղաք Անիում քաղաքային պարիսպները պետության կողմից կառուցվելուց հետո այս կամ այն մեծատունը կարող էր վճարել պարսպի մի հատվածի ծախքը, որի դիմաց իրավունք էր ստանում համապատասխան արձանագրություն անելու պարսպի կառուցման ժամանակ նախապատրաստված հատուկ վեմերի վրա (տե՛ս И. А. Орбели.* О двух терминах в надписях Ани, «Избранные труды», Ереван, 1963, *էջ 480)։*

61 *Տե՛ս Jos. Flav.:*

62 *Տե՛ս Plut.*, Lucul., *27*; *App.*, Mithr., *85։*

63 *Տե՛ս Memn., 57*; *Phleg.*, Fr. *12։*

64 *Տե՛ս App.*, Mithr., *87:*

65 *Տե՛ս Plut.*, Crass., *19։*

ծելազոր, որի խնդիրն էր՝ արագ տեղաշարժերով խուճապի մատնել հակառակորդին և կորուստներ պատճառել նրան, իսկ հաղթանակի պահին՝ հետապնդել նահանջող կամ փախուստի մատնված թշնամուն։ Սակայն զորքի ամենաստվար բաժինը, ինչպես ցույց են տալիս մեզ հասած թվերը, կազմում էր հետևակը, որն իր հերթին բաղկացած էր մի կողմից պարսավորներից ու նետաձիգներից, մյուս կողմից և մեծ մասամբ՝ զրահավոր նիզակակիրներից[66]։ Այս խնդրում հայկական զորքը էապես տարբերվում էր պարթևական զորքից, որի ամենաստվար մասը կազմում էր այրուձին։ Իրեն զգացնել էր տալիս բնական պայմանների տարբերությունը. պարթևների մոտ՝ լայնարձակ, հեծելազորի համար բարենպաստ տափաստանների առկայությունը, Հայաստանում՝ երկրի լեռնային ռելիեֆը։

Օժանդակ զորամասերի թվին էին պատկանում պաշարողական տեխնիկայի ստորաբաժանումները, որոնք պետք է համալրվեին Տիգրան Բ-ի նվաճողական պատերազմների ժամանակաշրջանում։ Ստրաբոնը հաղորդում է, որ Տիգրանն այս գործերում օգտագործում էր հատկապես կորդվացիներին, որոնք «լավ ճարտարապետներ էին և պաշարողական գործերի մեջ հմուտ»[67]։ Մեծ թիվ էին կազմում սակրավորների զորամասերը, որոնք հարթում էին զորքի ճանապարհը և ապահովում գետանցները[68]։ Վերջապես, բանակի կազմում որոշակի տեղ էր գրավում գումակը, որի վրա էր դրված զորքի պարենավորումը։

Թագավորն անձամբ ուներ իր արքայական գվարդիան, դրանիկ գունդը, «արքայի թիկնապահները և ուղեկիցները»՝ ընտիր հեծյալ մի գունդ, որը Արտավազդ Բ-ի ժամանակ կազմված էր 6 հազար մարտիկներից։

Զորքերի գերագույն հրամանատարը թագավորն էր և եթե նրա ռազմական ունակությունները թույլ էին տալիս, ապա նա հանդես էր գալիս նաև որպես իրական հրամանատար, մանավանդ կարևոր ստրատեգիական նշանակություն ունեցող արշավանքներում կամ ճակատամարտերում[69]։ Զորքի մի մասը շարժուն էր, հատկացված լինելով արշավանքների ու պաշտպանողական գործողությունների համար, մյուս մասը կայազորների ձևով տեղավորված էր Հայաստանի բազմաթիվ ամրոցներում ու քաղաքներում։ Ավելի ուշ շրջանի տվյալների համաձայն, որոշ քաղաքներ ունեին իրենց սեփական զինված ուժերը։

Հայկական բանակի էթնիկական կազմի մասին մեզ հասած տեղեկություններից ես պետք է զտել նրանք, որոնք վերաբերում են Տիգրան Բ-ի ժամանակին։ Վերջինիս զորքերում կային նվաճված երկրների կողմից տրամադրված զորամասեր։ Բնական է, որ այս վիճակը բնորոշ չէր Մեծ Հայքի զորքի համար, որը կազմված է եղել հայերից։ Հենց Տիգրանի զորքի կորիզն էլ հանդիսացել են այն շուրջ 100 հազար զինվորները, որ հավաքագրվել են Հայաստանում։

Տիգրանակերտի մոտ կրած պարտությունից հետո ամբողջ Հայաստանով մեկ նոր զորքի հավաքագրման մասին Ապպիանոսի վերոհիշյալ հաղորդումը

66 Հայկական զորքի կազմի մասին մանրամասն և հետաքրքրական տեղեկություններ է տալիս Պլուտարքոսը (տե՛ս Luc., 27)։

67 Strabo, XVI, 1, 24։

68 Տե՛ս Plut., Lucul., 26։

69 Տե՛ս նույն տեղում, 27։

լույս է սփռում ոչ միայն զորքի էթնիկական կորիզի հարցի վրա, այլև օժանդակում մի այլ խնդրի՝ զորքի սոցիալական կազմի պարզաբանմանը։ Հայկական զորքի գերակշռող մասը բաղկացած էր հասարակության ամենաստվար դասակարգի՝ համայնական գյուղացիության ներկայացուցիչներից։ Նրանք պետք է կազմեին ամբողջ հետևակը և թեթև հեծելազորը կամ սրա մի մասը։ Ջրահավոր հեծելազորի մեջ հավաքագրվում էր արտոնյալ շերտը։ Կարելի է հաստատապես ասել, որ պատերազմի դեպքում դաստակերտ-ագարակների բնակիչները (հողի վրա բնակեցված ստրուկները) ևս ներգրավվում էին բանակի մեջ, մասամբ, հավանական է, հետևակի զորքի կազմում, հիմնականում՝ օժանդակ զորամասերում։ Այդ մասին պարզորոշ խոսում է Հուստինոսը, նկատի ունենալով ճիշտ է, ոչ թե հայկական, այլ պարթևական զորքը, սակայն նույնը, ինչպես ցույց է տվել Հ. Մանանդյանը, վերաբերում է նաև հայկական իրականությանը[70]։

Հին Հայաստանում, դատելով ոստանիկների մասին Մ. Խորենացու պահպանած տեղեկություններից, առկա է եղել Հին արևելքի և հելլենիստական աշխարհի երկրներում լայն տարածում գտած այն երևույթը, երբ զինվորներին իրենց ծառայության դիմաց տրվում էին հողաբաժիններ՝ անձնական կամ ժառանգական օգտագործման համար[71]։ Սրանով ստեղծվում էր կադրային զինվորականների մի խավ, որը մեծապես ամրապնդում էր բանակը։

**Հայաստանի պետական կարգի առանձնահատկությունը:** Նախորդ շարադրանքում հաճախակի շեշտվում էր Հայաստանի պետական, ինչպես և սոցիալ-տնտեսական կարգի նմանությունը հելլենիստական աշխարհի այլ երկրների համապատասխան կարգերի հետ։ Այդ նմանությունն իրոք մեծ է եղել. նրա հիման վրա է, որ հնարավոր է դառնում վերականգնել հայկական իրականության մի շարք այնպիսի կողմերը, որոնց մասին պահպանված աղոտ ակնարկները առանձին վերցրած թույլ չէին տա որոշակի եզրակացության հանգելու։

Սակայն, ինչպես յուրաքանչյուր երկիր, Հայաստանն էլ ունեցել է իր առանձնահատկությունը։ Սոցիալ-տնտեսական կառուցվածքի առանձնահատկությունների մասին վերը խոսվեց։ Ինչ վերաբերում է պետական կարգի առանձնահատկությանը, ապա պիտի շեշտել, որ ի տարբերություն ցեղերի և ազգությունների զուտ քաղաքական միավորումներ հանդիսացող հելլենիստական ժամանակաշրջանի մի շարք պետությունների, Հայաստանը պատկանում էր այն պետությունների թվին, որոնք կազմավորվել էին միասնական, միալեզու ժողովրդի հիմքի վրա։ Այդ իսկ պատճառով նա իր մեջ կրում էր քայքայման ավելի փոքր վտանգ, իսկ արտաքին քաղաքական արհավիրքները այնպիսի երկրի համար, ինչպիսին էր Հայաստանը, ընդհակառակն, որոշ շրջանում ամրապնդող ու միավորող գործոն էին, վտանգի պահին ապահովում էին պետության լայն պաշտպանությունը հասարակության տարբեր խավերի կողմից։ Այդ հանգամանքը դրսևորվեց, օրինակ, մ. թ. ա. I դարի վերջերին, երբ՝ Թա-

---

70 Տե՛ս *Iust.*, XII, 2. *Я. А. Манандян,* Заметки о феоде и феодальном войске Парфии и аршакидской Армении, Тифлис, 1932, էջ 3 և հաջ.։ *А. Г. Периханян,* К вопросу о рабовладении и землевладении в Иране парфянского времени, ВДИ, 1952, № 4, էջ 20։

71 Տե՛ս *А. Г. Периханян,* Древнеармянские востаники, ВДИ, 1956, № 2, էջ 56 և հաջ.։

գավորական իշխանության թուլության պայմաններում, երկրի պաշտպանության խնդիրը փաստորեն, ժողովրդի հոգսն է դարձել։

Հայկական պետության՝ այս պարագաներով պայմանավորված առանձնահատկությունը նաև այն է, որ նա հնարավորություն ուներ խուսափելու վարձկան զորք պահելուց, մինչդեռ հելլենիստական բազմատարր երկրների զինվորական ուժերի գերակշռող մասը վարձկաններ էին, որոնք շատ անկայուն էին դարձնում զորքի դիմադրողականությունը։ Վարձկանները գերադասում էին ծառայել այն տերերին, որոնք ավելի բարձր էին վարձատրում, և նրանց համար խորթ էր հայրենիքի պաշտպանության գաղափարը։ Տիգրան Բ-ի բանակում ևս կային որոշակի քանակությամբ վարձկան հունական զորամասեր, որոնք, ինչպես հայտնի է, իրենց շարդարացրին Տիգրանակերտի պաշտպանության ժամանակ, քաղաքը դավաճանությամբ հանձնելով Լուկուլլոսին[72]։ Սակայն վարձկանների ներկայությունը հայկական բանակում պատահական երևույթ էր։

Նույն պատճառներով, այսինքն շնորհիվ էթնիկական միատարրության, հայկական պետական վարչական ապարատը՝ բյուրոկրատիան, մեծ ու փոքր աստիճանավորները, չհասան ուռճացման ու ճյուղավորման այն բարձր աստիճանին, որը պատճառ էր դառնում հելլենիստական պետությունների տկարության ու քայքայման։

## 3. ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ: ՀԱՅԿԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐ

**Հայաստանի դրամական տնտեսությունը նախահելլենիստական շրջանում:** Նախահելլենիստական շրջանում, մ. թ. ա. VI—IV դարերում Հայաստանի դրամական տնտեսությունը զարգանում էր Աքեմենյան Պարսկաստանի դրամակշռային սիստեմով։ Դրամների թողարկման իրավունքը վերապահված էր Աքեմենյան արքաներին։ Հիմնական միավորը ոսկու գծով կոչվում էր δαρειχός (դահեկան, դարհեկան), Աքեմենյան Դարեհ Ա. թագավորի անունով։ Դրանք գրվագվում էին բարձր որակի ոսկուց։ Յուրաքանչյուր միավորի օրինական քաշը սահմանված էր 8,40 գրամ և կազմում էր բաբելոնյան «մնա» (հայերեն՝ «մնաս») կշռային չափի 1/60 մասը։ Արծաթի գծով հիմնական միավորը կոչվում էր «սիկլոս» (հայերեն «սիկղ»), որը օրենքով սահմանված էր 5,60 գրամ, կազմելով մնասի 1/100 մասը[73]։

Առևտրում մեկ ոսկյա դահեկանը փոխանակվում էր 20 արծաթյա սիկղով։ Այլ կերպ ասած՝ 8,40 գրամ ոսկին ընդունվում էր 112 գրամ արծաթի դիմաց։ Ինչպես դահեկանները, այնպես էլ սիկղները նախապես կնքվում էին միայն մի կողմից։ Հատուկ կաղապարներում ոսկին ձուլում էին սահմանված կշռային չափերով և շիկացած կլորակ հատաձույլների վրա դրոշմում Աքեմենյան

---

72 Տե՛ս App., Mithr., 86։

73 Տես F. Schrötter, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930, էջ 120—121, 632; А. Н. Зограф. Античные монеты, „Материалы и исследования по археологии СССР". № 16, 1951, էջ 42; J. de Morgan, Manuel de numismatique orientale de l'Antiquite et du Moyen Age, tome I, Paris, 1923—1936, էջ 11—14։

արքայի փորագրված պատկերը սխեմատիկ տեսքով՝ ողջ հասակով. մի ոտքով ծնկաչոք, նետ ու աղեղ և կամ գայիսոն բռնած, գլուխը զարդարված ճառագայթաձև թագով, դեմքը մորուքավոր, մարմինը կրծքից մինչև ոտքերը արքայական ծիրանու մեջ։ Այդ դրամների վրա գրություններ չկային[74]։

Սակայն ինչպես բուն Իրանում, այնպես էլ Հայաստանում դրամական շրջանառությունը թույլ էր զարգացած, ապրանքափոխանակությունը կատարվում էր առավելապես բնատուր ձևով և թանկարժեք մետաղների կշռային ձուլվածքներով։

Հայաստանում հայտնաբերվել են սոսկ հատ ու կենտ նմուշներով արխայիկ պատկերատիպի արծաթյա դրամներ, որոնք չեն կարող պատկերացում տալ ժամանակի դրամական տնտեսության մասին։ Դրանցից մեկը աքեմենյան սիկղն է, գտնված նախկին Երևանյան նահանգում։ Մյուսը VI—V դարերի ատտիկյան չորեքդրամյան է, որը դրվագվել է Աթենք քաղաքում և հավանաբար առևտրի շնորհիվ բերվել է Սիսիան, ուր հայտնաբերվել է տեղի շինարարական աշխատանքների միջոցին։ Երրորդ և չորրորդ օրինակները բացահայտվել են 1956 թվականին, Էրեբունի ամրոցի հնագիտական պեղումների ժամանակ և վերաբերում են VI—V դարերին։ Սրանք նույնանման, սակայն տարբեր կնիքներով դրվագված խիստ փոքր արժեչափի (արծաթի քաշով մոտ 0,8 գրամ) դրամական միավորներ են, որոնք արխայիկ շրջանում մասսայաբար թողարկվում էին Փոքր Ասիայի հոնիական քաղաքներում, առավելապես Միլետում, և հայտնի էին նաև «միլետյան» անունով։

**Սատրապական դրամներ:** Աքեմենյանների տիրակալության վերջին շրջանում՝ մ. թ. ա. V դարի վերջերից և առավելապես IV դարում, տեղական սատրապները նվաճել էին սեփական դրամներ թողարկելու իրավունքը։ Այդ սատրապական դրամների շարքում պահպանվել են այնպիսի դրամական միավորներ, որոնք թողարկվել են Հայաստանի աքեմենյան կառավարիչների՝ Տիրիբազի և Օրոնտասի կողմից։

Տիրիբազի դրամները դրվագվել են Կիլիկիայի Իսսոս, Սոլի, Մալլոս և Տարսոն քաղաքներում, մ. թ. ա. 386—380 թվականներին։ Դրանց վրա նշված են Տիրիբազի և հիշյալ քաղաքների անունները. ըստ որում թե՛ միայն հունարեն և թե՛ երկլեզվյան՝ հունարեն ու արամեերեն արձանագրություններով։ Տիրիբազի դրամները կրում էին իրենց վրա Ահուրամազդայի, Բահալի, Հերակլեսի, Անահիտի, Դիոնիսի պատկերները, ինչպես նաև իրեն Տիրիբազի դիմանկարները[75]։ Կշռային տվյալներով դրանք պատկանում են աքեմենյան սիստեմին. ըստ որում թողարկվել են բացառապես արծաթից։ Դրանք մեծ մասամբ կրկնակի դրախմաներ (11,20 գրամ) և այդ նույն սիստեմի փոքր արժեչափի միավորներ՝ օբողոսներ (ὀβολός) են։ Ծագելով Կիլիկիայից, Տիրիբազի դրամները շրջանառության մեջ են եղել ոչ միայն Կիլիկիայում, այլև Փոքր Ասիայի ու Միջագետքի տարանցիկ առևտրի համար կարևոր նշանակություն ու-

---

[74] Տե՛ս *V. Head*, Historia Numorum, A Manual of Greek Numismatics, London, 1963, էջ 827—829։

[75] Տե՛ս *G. F. Hill*, Catalogue of the Greek coins of Lycaonia, Isauria and Cilicta, London, 1900, էջ 90, № 3, էջ 100 № 28, էջ 148 № 26, էջ 149 № 27, էջ 164 № 12, աղ. XV № 3, աղ. XXVI №№ 2, 3, աղ. XXIX № 1։

նեցող Ծոփքի և հավանաբար Փոքր Հայքի տնտեսական կենտրոններում, որոնք ենթակա էին նրա անմիջական իշխանությանը։

Հայաստանի սատրապ Օրոնտասի (Երվանդ) դրամները հայտնի են ոսկյա, արծաթյա և պղնձյա օրինակներով, թողարկված մ. թ. ա. 362 թվականին Լամպսակ, Կլազոմեն և այլ քաղաքներում։ Դրանց թողարկումը պայմանավորված էր տեղական պահանջներով։ Օրոնտասի դրամների վրա դրոշմվել են հեթանոսական աստվածներ Զևսի, Աթենասի պատկերները և արևի պաշտամունքին վերաբերող խորհրդանշաններ, ինչպես նաև աքեմենյան տիրակալների ու իրեն՝ Օրոնտասի դիմանկարները[76]։

**Դրամական տնտեսությունը վաղ-հելլենիստական շրջանում:** Չորրորդ դարի վերջերից Հայաստանն ընդգրկվում է հելլենիստական դրամների շրջանառության ոլորտը։ Հայկական շուկաներն են թափանցում ատտիկյան սիստեմի ոսկյա ու արծաթյա դրամները։ Վերջիններս լայն ճանաչում էին գտել միջազգային առևտրում։

Ատտիկյան սիստեմի հիմնական միավորն ոսկու գծով կոչվում էր ստատեր στατήρ (հայերենում՝ «սատեր»), որի օրինական կշիռը սահմանված էր 8,60 գրամ։ Ոսկու և արծաթի փոխհարաբերությունը հելլենիստական դարաշրջանում արդեն դարձել էր 1:10։ Հիմնական միավորն արծաթի գծով կոչվում էր դրախմե (δραχμή)— 4,36 գրամ օրինական քաշով (հայկական աղբյուրներում հիշատակվում է որպես «դրաքմե» կամ «դրամ»)։ Առևտրում մեկ ոսկյա ստատերը փոխանակվում էր 20 արծաթե դրախմեի հետ։ Ատտիկյան սիստեմի կշռային ստորաբաժանումների շարքում փոքր միավորները հանդիսանում էին քաղկոսը (χαλκοῦς)՝ 0,091 գրամ և այնուհետև օբոլոսը՝ 0,728 գրամ։ Մեկ օբոլոսը կազմված էր 8 քաղկոսից։ Ամենամեծ միավորը տաղանտն էր (τάλαντον—հայերեն՝ «քանքար») որը կշռում էր 26196,2 գրամ և դրանից հետո մնասը՝ 436,60 գրամ։ Մեկ տաղանտը հավասար էր 60 մնասի։ Սակայն հիմնական դրամային միավորը, ինչպես նշվեց, դրախմեն էր, որի օրինական քաշը հավասար էր վեց օբոլոսի, այսինքն 4,366 գրամի։ Խոշոր քաշի միավորները՝ տաղանտը և մնասը, դրամական շրջանառության մեջ ունեին առավելապես հաշվային նշանակություն։ Ոսկյա դրամներ համեմատաբար քիչ էին թողարկվում, վճարումը կատարվում էր հիմնականում արծաթյա դրախմեներով (դրամյաններով) և տետրադրախմոններով (չորեքդրամյաններով), որոնք դրվագվում էին մասսայաբար։ Չորեքդրամյանի (τετράδραχμον) օրինական կշիռը կազմում էր 17,46 գրամ։

Սակայն մինչև IV դարի վերջը աքեմենյանների դրամական սիստեմը դեռևս չէր կորցրել իր տեղական նշանակությունը։ Այսպես, երբ Ալեքսանդր Մակեդոնացու զորքերը նվաճել էին Իրանը, բռնագրավված ոսկու պաշարներից դրվագում էին կրկնակի դահեկաններ՝ նույն հին պարսկական կշռային սիստեմի սկզբունքով և անցյալում ընդունված աքեմենյան դրամների պատկերատիպով։ Փոքր Հայքում Ալեքսանդր Մակեդոնացուն ենթակա սատրապ Միթրենեսին

---

[76] Տես E. Babelon, Inventaire sommaire de la collection Waddington, Paris, 1898, էջ 75, №№ 1361—1363, աղ. III, №№ 1—3.

(Միհրան) վերագրված արծաթյա դրամները[77] նույնպես իրենց կշռային տըվյալներով աքեմենյան կրկնակի դրախմանոցներ էին։ Դրանք թողարկվել են 331—330 թվականներին։

Բայց այս կարգի դրամները, շրջանառության համար բնորոշ չէին։ Նրանց թողարկումը գնալով դադարում էր, մինչդեռ առատորեն տարածվում էին Մակեդոնացու արծաթյա դրախմանոցներն ու տետրադրախմանոցները, որոնց վրա միշտ որպես կանոն դրոշմված էր Հերակլեսի գլուխը՝ Ալեքսանդրի դիմագծերով և աստվածահայր Զևսի կերպարը՝ իր պաշտամունքի խորհրդանշաններով։ Հայաստանի վաճառաշահ քաղաքներում ամենուրեք հայտնի էին նմանօրինակ արծաթյա դրամները[78]։ Վերջիններից բացի, Ալեքսանդրի անվան հունատառ գրությամբ շուկա էին մտնում նաև ոսկյա դրամներ Աթենասի և հաղթանակի պատկերներով[79]։

Հետագայում միջազգային առևտրի բերումով Հայաստան են թափանցում սելևկյան, ինչպես նաև պարթևական արծաթյա դրամները։ Սրանց շրջանառությունն արդեն մ. թ. ա. II դարի վերջերից ընթանում էր Հռոմի հանրապետական դրամների հետ միաժամանակ[80]։

**Հայկական առաջին դրամները:** Հայաստանի դրամական տնտեսության զարգացման այս փուլում (մ. թ. ա. III—II դարեր) ծագում են հայկական դրամների անդրանիկ օրինակները։ Նրանց թողարկումը կատարվում էր Ծոփքում և Փոքր Հայքում առաջացած հայկական թագավորությունների կողմից[81]։ Այս շրջանի հայկական դրամները ոչ թե ոսկուց կամ արծաթից էին, այլ պղնձից և ունեին զուտ տեղական նշանակություն՝ ներքին շուկայի ոլորտից դուրս չէին անցնում։ Դրանով էլ նշվում է այն իրողությունը, որ Փոքր Հայքի ու Ծոփքի մեջ III—II դարերում ապրանքա-դրամական հարաբերությունների զարգացումը այնպիսի աստիճանի էր հասել, որ մանր առևտուրն անգամ կատարվում էր դրամով, մի հանգամանք, որ կարող է առաջանալ դրամի ֆունկցիոնալ նշանակության լիակատար ծավալման, քաղաքային կյանքի և նրա առևտրի խորացման պայմաններում։

Ծոփքի կամ Փոքր Հայքի հայկական դրամներն իրենց կշռային տվյալներով ատտիկյան էին։ Դրանք թողարկվել են. Քարասպես (մ. թ. ա. III դար (?)),

[77] Տե՛ս O. Blau Die Herren von Sophene und deren Münzen, „Numismatische Zeitschrift", IX, 1877, Wien, էջ 99—102։

[78] Տե՛ս Е .Д. Пахомов, Монетные клады Азербайджана, «Труды общества обследования и изучения Азербайджана», вып. 3, Баку, 1926, էջ 15։

[79] Տե՛ս L. Müller, Numismatique d'Alexandre le Grand, Basel—Stuttgart, 1957:

[80] Տե՛ս Ա. Շահնազարյան, Սիսիանի շրջանի Սառնակունք գյուղի մոտ հայտնաբերված գանձը, «Հայաստանի Պետական պատմական թանգարանի աշխատություններ», հատ. II, Երևան, 1949, էջ 9։

[81] Տե՛ս E. Q. Visconti, Iconographie grecque, tome second, Paris, 1811 էջ 243—273, աղ. XLV; J. Eckhel, Doctrina numorum veterum, Pars I, De numis urbium, populorum, regium, vol. III, editio secunda, Vindobonae, 1828, էջ 202—208, 247—248։ V. Langlois, Numismatique génerale de l'Arménie, Paris, 1859, էջ 11—12; O. Blau, Die Herren von Sophene und deren Münzen, էջ 113—114; J. Friedlaender, Satrapenmünzen, „Zeitschrift für Numismatik, IV Band, էջ 266—267; E. Babelon, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, էջ CXCI—CC, աղ. XXIX.

*Արշամ (մ. թ. ա. 230 թ. շուրջ), Աբդիսարես և Քսերքսես (մ. թ. ա. II դարի վերջը) թագավորների իշխանության տարիներին։*

*Ըստ պատկերատիպի այդ դրամներն ունենալով տեղական բնորոշ գծեր, արտացոլում են նաև աղերսներ սելևկյան, պարթևական և կապադովկիական դրամների հետ։ Հելլենիստական դարաշրջանին յուրահատուկ հայկական այդ դրամների վրա պատկերված են մի կողմից թագավորների դիմանկարները, իսկ մյուս կողմից՝ պաշտամունքային խորհրդանշաններ՝ արծիվ, ձի, ինչպես նաև հաղթության, Աթենաս և Անահիտ դիցուհիների կերպարները։ Վերջիններիս շուրջ հունարեն գրվում էին միապետների անունները ու երբեմն հայրանունները։ Հեթանոսական պատկերների հետ միասին միապետի անձնանվան հիշատակումը դրամների վրա թերևս արտացոլում էր թագավորի պաշտամունքի գաղափարը։ Վերոհիշյալ հայ թագավորների դրամները թողարկվել են հավանաբար Արշամաշատ, Արկաթիակերտ և այլ հայկական քաղաքներում։*

**Արտաշեսյան թագավորների դրամները**: *Երկրի հետագա զարգացումը, նրա քաղաքական-տնտեսական հզորացումը II—I դարերում պայմանավորեց հայկական դրամների ավելի ծավալուն թողարկումը Արտաշեսյանների օրոք։ Հայաստանի դրամական շրջանառության մեջ նշանակալից է դառնում տեղական դրամների դերը։ Սրանք միջազգային ճանաչում գտան մասնավորապես Տիգրան Մեծի թագավորության տարիներին։ Ըստ նորագույն դասակարգման[82], Արտաշեսյաններից դրամներ են թողարկել հետևյալ արքաները.*

*Տիգրան Ա (?—95) . . . . . պղնձյա դրամներ*
*Տիգրան Մեծ (95—55) . . . . արծաթյա և պղնձյա դրամներ*
*Արտավազդ Բ (55—34) . . . . արծաթյա և պղնձյա դրամներ*
*Արտաշես Բ (30—20) . . . . պղնձյա դրամներ*
*Տիգրան Գ (20—8) . . . . . արծաթյա և պղնձյա դրամներ*
*Տիգրան Դ (8—5) . . . . . . պղնձյա դրամներ*
*և հտարտաշեսյան շրջանում՝*
*Արտավազդ Դ (4—6) . . . . . արծաթյա դրամներ*
*Տիգրան Ե (6) . . . . . . . . պղնձյա դրամներ*

*Սրանցից յուրաքանչյուրին պատկանող դրամների վրա մի կողմից դրոշմըված էր արքայի դիմանկարը։ Դրամներով է, որ պահպանվել են Արտաշեսյան արքաների պաշտոնական դիմանկարները, կերտված նրանց անհատականությունների բնորոշ գծերով։ Հելլենիստական դարաշրջանի Հայաստանում շրջանառության մեջ եղած բազմատեսակ օտարամուտ դրամների շարքում հայոց ազգային դրամական միավորները ճանաչելի են առաջին իսկ հայացքից՝ նրանց վրա պատկերված արքայական այն թագի ձևով, որ կրում էին Արտաշեսյան թագավորները։*

*Դրամների մյուս կողմերին նշված պատկերներով, խորհրդանիշերով և արձանագրություններով հաղորդվում էին առաջնահերթ տեղեկություններ Հա-*

[82] *Տես P. Z. Bedoukian*, A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia, Reprinted from the American Numismatic Society, „Museum Notes", 14, New-York, 1968, *էջ.* IX—XI;

յաստանի վիճակի մասին, կապված թագավորի անվան հետ, որի պատկերը դիտվում էր դրամի վրա։ Այսպես, օրինակ, Տիգրան Ա-ին վերագրվող դրամների մյուս կողմերին մերթ աստվածահայր Արամազդն է՝ իր պաշտամունքի խորհրդանիշներով, մերթ հաղթանակի դիցուհին և երբեմն իրեն՝ ինքնակալի կերպարը ողջ հասակով։ Արձանագրությունները նվիրված էին նրա արքայական տիտղոսներին և հայտնի են երեք տարբերակներով. ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ—«Արքայի Մեծի Տիգրանի», ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ—«Արքայի Տիգրանի հելլենասերի» և ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ—«Արքայի Մեծի Տիգրանի հելլենասերի»։

*Հիշյալ գրություններով հանդերձ Տիգրան Ա-ի դրամները միջազգային շրջանառություն չեն ունեցել։ Նրանք սպասարկել են տեղական շուկայի պահանջները Հայաստանի հարավ-արևմտյան գավառներում*[83]։

**Տիգրան Բ-ի դրամները:** *Տիգրան Մեծի իշխանության տարիներին ընդլայնվում է հայկական դրամների շրջանառության ոլորտը։ Նրանք ընդունվում են ոչ միայն ներքին, այլ նաև արտաքին առևտրի միջազգային գործարքներում։ Դրանք թողարկվում էին ինչպես Հայաստանում, այնպես էլ Տիգրանի հզորության տարիներին, Ասորիքում։ Հայաստանում նրա փողերանոցները գործում էին Տիգրանակերտում և Արտաշատում, իսկ Ասորիքում՝ վաճառաշահ Անտիոքում (Օրոնտ գետի վրա) և ավելի հարավ՝ Դամասկոսում*[84]*։ Իրենց կշռային չափերով, Տիգրան Մեծի դրամները հարազատորեն պահպանում էին ատտիկյան սիստեմի սկզբունքները։ Տարածված էին առավելապես նրա արծաթյա դրախմանոցները (մեկդրամյան) և տետրադրախմանոցները (չորեքդրամյան), իսկ ներքին մանր առ ու ծախի համար՝ պղնձյա մեկ, կես և քառորդ միավորները։*

*Տիգրան Մեծը դրամների վրա հաճախ պատկերված է կիսանդրու չափով, դասական արվեստի ռեալիստական ոճով, երիտասարդ դիմագծերով, Արևելքի հելլենիստական միապետների նման ածիլված երեսով, բայց գլխին այնպիսի թագով, որի նմանը չկար ժամանակակից և ոչ մի վեհապետի մոտ, ոչ Արևելքում և ոչ էլ Արևմուտքում*[85]*, բացառյալ Տիգրանին ենթակա Կոմմագենեի արքայի թագը։ Այդ թագը վերևում ավարտված է ճառագայթաձև ելուստներով, երբեմն սղոցի ատամների նման, իսկ ներքևից երկար, մինչև ուսերն հասնողականջակալներով ու վզկալով, ըստ որում ճակատային մասում թագի վրայից կապված է արքայական ժապավենը և կենտրոնը զարդարված է արևի պաշտամունքի խորհրդանիշներով՝ աստղ՝ երկու արծիվների միջև։ Հաճախ դիտվում են նաև ծիրանու ծալքերը, ճարմանդված աջ ուսի մոտ։ Առնական խրոխտ հայացքով Տիգրան Մեծի պատկերը (միշտ պրոֆիլ դեպի աջ) դրամի վրա վերցված է բուսական նախշերից կամ ուլունքներից հյուսված շրջանակի մեջ։ Դրամի հակառակ կողմերին դրոշմում էին պաշտամունքային իմաստի*

---

[83] *Տե՛ս H. Seyrig*, Trésor monetaire de Nisibe, RN, Paris, 1955, *էջ 84—88, աղ. 1։*

[84] *Տե՛ս E. T. Newell*, Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus, „Numismatic Notes and Monographs", № 84, „The American Numismatic Society", New York, 1939, *էջ 95—107։*

[85] *Տե՛ս P. Gardner*, The Seleucid Kings of Syria, A Catalogue of the Greek Coins in the British Museum, Bologna, 1963, *էջ 103—105, աղ.* XXVII.

խորհրդանշաններ, առավելապես երկրի մայր աստվածուհու կերպարը՝ բազմած ժայռաբեկորի վրա, ձեռքին արմավենու ճյուղ, բրգաձև թագը գլխին, իսկ ոտքերի տակ ջրի աստվածության անձնավորումը՝ լողացող մարդու մերկամարմին կերպարանքով։

Դեռևս Սելևկյանների վաղ ժամանակներից երկրի ապահովության համար կանգնեցվել էր այդ դիցուհու արձանը մայրաքաղաքի՝ Անտիոքի մոտ, բարձրության վրա, Օրոնտ գետի ափին։ Տիգրանի օրոք պետության անվտանգության այդ գաղափարը՝ նույն արձանի ձևով, դարձել էր գլխավոր խորհրդանշանը նրա դրամների վրա, այն տարբերությամբ, սակայն, որ ցորենի հասկի փոխարեն, որ կրում էր իր ձեռքում Անտիոքի դիցուհին հուշարձանում, դրամի վրա նա ուներ արմավենու ճյուղ։

Դամասկոսում կտրված դրամների վրա այդ նույն կերպարը պատկերված է առատության եղջյուրով[86]։ Հայկական քաղաքներում այն դիտվում էր իբրև ողջ երկրի բախտի, բերքի, պաշտպանության ու փրկության մայր աստվածուհին՝ Անահիտը։ Բացի այդ կերպարից, Տիգրան Մեծի դրամների դրոշմը, հատկապես պղնձյա միավորների գծով, ներկայացնում է հաղթանակի թևավոր դիցուհուն և կամ դյուցազն Վահագնին[87], ինչպես նաև պաշտամունքային այլ նշաններ։ Իրենց վրա ունեցած արձանագրություններով, Տիգրան Մեծի դրամները բաժանվում են երկու հիմնական խմբի՝ ΒΑΣΙΛΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ— «Արքայի Տիգրանի» և ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ—համատառ խորագրերով՝ «Արքայից-արքայի Տիգրանի»։

Խորագրերի առաջին ձևն առավել բնորոշ է եղել Ասորիքի քաղաքներում թողարկված դրամների համար։ Ավագն Անտիոքում նման տետրադրախմեներ դրվագվել են մ. թ. ա. 83-78 թվականներին, իսկ Դամասկոսում՝ 72-69 թվականներին, ըստ որում դամասկոսյան դրամների վրա նշվում էին նաև նրանց թողարկման տարեթվերը, հաշված Սելևկյան տոմարով[88]։ Բուն Հայաստանում հավանաբար՝ Արտաշատում, թողարկված՝ Տիգրան Մեծի արծաթյա դրամները իրենց վրա կրում էին առավելապես «Արքայից-արքա» տիտղոսը[89]։ Այդպիսիները պահպանվել են մ. թ. ա. 77-73 թվականներից։

Այս հիմնականից բացի, Տիգրան Մեծի օրոք հայկական դրամների պատկերատիպը լրացվում էր նաև փողերանոցներին և նրանց կառավարիչներին վերաբերող մենագրերով[90]։

**Արտավազդ Բ-ի և նրա հաջորդների դրամները:** Արտավազդ Բ (55—34) թագավորի իշխանության տարիներին դրամների թողարկումը կատարվում էր գերազանցապես Հայաստանում։ Հետևելով անցյալում ընդունված կանոննե-

86 Տե՛ս *E. T. Newell*, Late Seleucid mints in Ake-Ptolemais and Damascus, տղ. XVII № 148—152։

87 Տե՛ս *P. Gardner*, The Seleucid Kings of Syria, էջ 105 № 18. տղ. XXVIII № 11, *A. von Petrowicz*, Arsaciden-Münzen, Wien, 1904, էջ 191։

88 Տե՛ս *G. Macdonald*, Catalogue of Greek Coins in the Hunterian collection University of Glasgow, vol. III, Glasgow, 1905 էջ 1—5, տղ. XLIII, № 4; *E. T. Newell*, Late Seleucid Mints in Ake-Ptolemais and Damascus, էջ 95—107։

89 Տե՛ս *H. Seyrig*, Trésor monetaire de Nisibe, էջ 121։

90 Տե՛ս *T. Newell*, Late Seleucid Mints, էջ 107։

րին, դրամների մի կողմի վրա դրոշմում էին Արտավազդի դիմաքանդակը, կիսանդրու չափով, հայկական թագը գլխին, երիտասարդ դեմքով, արքայական զարդարանքներով՝ ականջին օղ, պարանոցին մանյակներ, ուսին՝ ծիրանի, իսկ հակառակ կողմին պատկերվում էր չորս ձիերով լծված երկանիվ մի մարտակառք՝ արշավի ընթացքում։ Մարտակառքը վարող կերպարանքը հավանաբար ինքը հայոց արքան էր, որին վերևից պսակ էր բերում հաղթանակի դիցուհին։ Այդ ողջ պատկերի շուրջ նշվում է ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΑΡΤΑΥΑΖΔΟΥ հունատառ խորագիրը՝ «Արքայից-արքա Արտավազդի», այն տիտղոսաձևը, որն ընդունված էր Տիգրան Մեծի հզորության ժամանակներից։ Հայկական դրամների թողարկումը Արտավազդ Բ-ի օրոք նույնպես կատարվում էր ատտիկյան սիստեմով։ Պահպանվել են առավելապես դրախմանոցները[91], իսկ տետրադրախմանոցները և պղնձյա միավորները հազվագյուտ են։ Հայաստանում գտնված մի բացառիկ տետրադրախմեի վրա Արտավազդը բացի իր հիմնական տիտղոսից, հուշակված է նաև ΘΕΙΟΥ այսինքն «Աստվածայինի» մակդիրով[92]։ Արտավազդ Բ-ի պղնձյա դրամների վրա ընդունված էր դրոշմել հաղթանակի թևավոր դիցուհու կերպարը[93]։ Նրա թագավորության վերջին տարիներին հռոմեական զորքի արշավանքները, Արտավազդի ձերբակալությունը և ի վերջո նահատակությունը առժամանակ կասեցրին հայկական ազգային դրամների թողարկումը։ Հաջորդ տարիներից հայտնի է Արտավազդի որդու՝ Արտաշես Բ (30-20) հայոց թագավորի պղնձյա դրամը, որի մի կողմին դրոշմած է տակավին երիտասարդ դիմագծերով Արտաշես Բ-ի դիմաքանդակը՝ կիսանդրու չափով, գլխին պապենական թագը, ներկայացված ճիշտ այն ձևով, ինչ հայտնի է իր հոր դրամներով։ Մյուս կողմին ցույց է տրված հաղթություն բերող դիցուհին՝ պսակը ձեռքին, սլացիկ վազքի մեջ և հունատառ արձանագրությամբ։ Արտաշեսը հուշակված է իբրև «Մեծ արքա»։ Հիրավի, նա շուրջ տասը տարի գլխավորեց իր ժողովրդի պայքարը հռոմեական նվաճողների դեմ՝ երկրի անկախության համար, և նրա «Մեծ արքա» կոչվելը հայերի համար միանգամայն օրինական էր։ Անշուշտ այս եզակի պղնձյա դրամով[94] հնարավոր չէ պատկերացում կազմել 30-20 թվականների հայկական դրամների մասին։ Ըստ էության այդ ժամանակամիջոցը մնում է բաց։

Արդեն հաջորդ հայոց թագավորի՝ Տիգրան Գ-ի իշխանության տարիներից պահպանված հայկական դրամները հայտնի են որոշակի պատկերատիպերով։ Բացի արքայի դիմաքանդակից, Տիգրան Գ-ի դրամների վրա (հակառակ կողմերին) հունատառ արձանագրությունները և պատկերները հայտնի են երկու հիմնական տեսակներով։

---

91 Տե՛ս *W. Wroth*, Catalogue of the Greek Coins of Galatia, Cappadocia and Syria, Bologna, 1964, էջ 101 աղ. XIV № 2։

92 Տե՛ս *Ch. Muschegjan*, Eine tetradrachme Artavazdes II, „Bibliotheca classica orientalis", 11 Jahrgang, Heft 4, Berlin, 1966, էջ 208—209։

93 Տե՛ս Հայաստանի պատմության պետական թանգարան, Գալաճյան ժողովածու, դրամ № 17620 (պղինձ)։

94 Տե՛ս *P. Z. Bedoukian*, A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia, էջ 63։

ա. ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΟΠΑΤΟΡΟΣ ΚΑΙ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ, այսինքն «Արքայի Մեծի Տիգրանի հայրասերի և հելլենասերի» տիտղոսով, Թագավորի կերպարը կանգնած դեպի ձախ, հագին երկար պատմուճան, գլխին հայոց Թագը, աջ ձեռքը պարզած առաջ, իսկ ձախով երկար գավազանը բռնած։

բ) ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΘΕΟΥ, այսինքն՝ «Արքայի Մեծի Տիգրանի աստծու», ըստ որում արձանագրությունը նշված է հաղթանակի թևավոր դիցուհու շուրջ, որ պատկերված է դրամի կենտրոնում։

Այս երկրորդ տեսակից հայտնի են պղնձյա դրամական միավորներ, որոնց շարքում կան որոշ տարբերակներ։ Հաղթանակի դիցուհին մերթ փոխարինվում է փղի պատկերով, մի այլ տարբերակի վրա նույն արձանագրությունը նշվում է առյուծի գլխի և կամ միայնակ վազող ձիու շուրջ։ Բոլոր դեպքերում արձանագրությունը պահպանվում է «Արքայի Մեծի Տիգրանի աստծու» ձևով։ Հիշյալ դրամների թողարկման հիմնական կենտրոնը հավանաբար Արտաշատն էր և նրանց շրջանառությունը հայկական շուկաներից դուրս չի անցել[95]։

**Վերջին Արտաշեսյանների դրամները:** Վերջին Արտաշեսյանների օրոք Հայաստանում ազգային դրամների թողարկումը խիստ սահմանափակ է դառնում։ Արդեն Տիգրան Դ արքայի պատկերով դրամները հայտնի են բացառապես պղնձյա միավորներով, մի իրողություն, որ վկայում է նրանց զուտ տեղական նշանակության մասին։ Ի տարբերություն իր զարմի բոլոր նախորդ արքաների, Արտաշեսյան Տիգրան Դ հայոց թագավորը դրամների վրա պատկերված է միանգամայն ինքնատիպ. նա կրում է պատկառելի մորուք և ունի տարեց մարդուն բնորոշ դիմագծեր, որով մեծապես հեռացած է հելլենիստական Արևմուտքի արքայական կերպարներից։ Չլիներ նրա գլխին Արտաշեսյան թագը, հազիվ թե կարելի լիներ տարբերել նրան պարթևական արքաներից։ Այս Տիգրան Դ-ի դրամների վրա նշված արձանագրությունները հանդես են բերված երեք հիմնական տարբերակով. ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ—«Արքայի Տիգրանի», ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ—«Արքայի Մեծի Տիգրանի հելլենասերի» և ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ—«Արքայի Մեծի Տիգրանի»։

Առաջին տիտղոսաձևը նշված է բարի ճակատագրի կամ հաղթանակի դիցուհու պատկերների հետ։ Երկրորդը՝ հանդես է բերված Աթենասի կերպարի, իսկ երրորդը՝ Վահագնի և կամ փղի պատկերների հետ։ Նման դրամներ թողարկվել են Տիգրան Դ-ի թագավորության առաջին շրջանում մ. թ. ա. 8-5 թվականներին[96]։ Հետագայում, երբ Տիգրան Դ-ը երկրորդ անգամ հաստատվեց հայոց գահի վրա, իր քրոջ՝ Էրատոյի հետ միասին (մ. թ. ա. 2-ից մինչև մ. թ. 1 թվականը), այդ շուրջ երեք տարիների ընթացքում ևս թողարկվել են պղնձյա դրամներ, որոնց վրա մի կողմից պատկերված է Տիգրան Դ-ը, իսկ մյուս կողմից՝ Էրատո թագուհին, ըստ որում երկուսն էլ կիսանդրու չափով[97]։

---

95 Տե՛ս նույն տեղում, էջ 63—64։

96 Տե՛ս նույն տեղում, էջ 64—65։

97 Տե՛ս Государственный Эрмитаж, Собрание античных монет, рукописный каталог, № 19416; *E. Babelon*, Les Rois de Syrie, d'Arménie et de Commagène, աղ. XXIX, № 21։

Ուշագրավ է, որ Տիգրան Դ-ի այս դրամների վրա դեռևս նշվում է իր պապերից ժառանգած տիտղոսը՝ ΒΑΣΙΛΕΥΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΗΣ («Արքայից-արքա») ձևով։ Իսկ էրատո թագուհու դիմանկարի շուրջն արձանագրվում է պարզապես ΕΡΑΤΩ ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ ΑΔΕΛΦΗ այսինքն «էրատո՝ արքայի Տիգրանի քույրը»։

Տիգրան Դ-ի և էրատոյի դրամներով ավարտվում է Արտաշեսյան հարստության դրամահատական գործունեությունը։ Արտաշեսյաններից հետո հայ ազգային դրամների թողարկումը դարերով կանգ առավ։

**Հռոմեական վաղ չքադրամներ Հայաստանի հիշատակմամբ:** Դեռևս հանրապետության անկման տարիներից առանձին հռոմեական զորավարներ սովորություն էին դարձրել իրենց արշավանքների ու հաղթանակների փառքը հավերժացնելու համար ոսկյա, արծաթյա և պղնձյա չքադրամներ թողարկել։ Հայաստանի կապակցությամբ առաջին հռոմեական չքադրամները թողարկվել են Մարկոս Անտոնիոսի կողմից։ Դրանք դենարներ էին, դրվագված մ. թ. ա. 35-34 թվականներին Փոքր Ասիայում և հավանաբար Հայաստանի մայրաքաղաք Արտաշատում։ Նրանց մի կողմին դրոշմված է Մ. Անտոնիոսի դիմաքանդակը և շուրջը անձնանունը՝ տիտղոսների հիշատակությամբ՝ ANTONIVS AVGVR COS. DES. ITER. ET TERT.: Դրամի մյուս կողմին պատկերված է հայկական թագը՝ նետ ու աղեղի միջև, և լատինատառ կրճատ արձանագրված Անտոնիոսի տիտղոսները. «ինքնակալ երրորդ անգամ, եռապետ, հանրապետության օրենքով հաստատված»։

Հայտնի են նաև Մ. Անտոնիոսի 32—31 թվականներին թողարկված արծաթյա դրամները, որոնց վրա Անտոնիոսի գլխահետևում նշված է հայոց թագը, և շուրջը գրված՝ ANTONI ARMENIA DEVICTA, այսինքն՝ «Անտոնիոս. Հայաստանը հաղթված»։ Մյուս երեսին ներկայացված է Եգիպտոսի թագուհի Կլեոպատրայի կիսանդրին, շուրջը արձանագրված՝ «Կլեոպատրայի, թագավորների և թագավորների որդիների թագուհու»։

Կայսրության հաստատման տարիներին այդ դրամները շրջանառությունից դուրս չեն եկել։ Օգոստոսը, հետևելով Մ. Անտոնիոսին, ինքը ևս արդեն մ. թ. ա. 20—18 թվականներին թողարկում է չքադրամներ, նվիրված Հայաստանին։ Այդ չքադրամներից պահպանվել են ոսկյա ու արծաթյա նմուշներ, ըստ որում տարբեր պատկերներով և արձանագրություններով։ Դրանցից մեկի վրա հստակորեն դիտվում է Օգոստոս Օկտավիանոսի դիմաքանդակը, տակը գրված՝ AVGVSTVS: Մյուս կողմին պատկերված է Հաղթանակի թևավոր դիցուհին, որը գետին է տապալում ցուլին։ Այդ տեսարանի վերևում գրված է՝ ARMENIA, ներքևում՝ CAPTA, այսինքն՝ «Հայաստանը նվաճված»։ Ոսկյա այդ դրամը թողարկվել էր Արևելքում, թերևս հայկական քաղաքներում այդ տարիներին գործող փողերանոցներից մեկում։

Հռոմում մ. թ. ա. 13 թվականին թողարկվեցին նաև արծաթյա չքադրամներ, որոնց վրա պատկերված է մարդկային կերպարանք՝ հայոց թագը գլխին, ծնկաչոք դիրքով, ձեռքերը պարզած և շուրջը գրված CAESAR DIVI F. ARME. CAPT. («Կեսար, աստծո որդի. Հայաստանը նվաճված»)։ Այդ

նույն դինարի հակառակ կողմի վրա Հռոմը ներկայացված է Ազատության դիցուհու կերպարով։

Նմանօրինակ արծաթյա շքադրամներից պահպանվել են տարբերակներ, որոնց վրա Ազատության դիցուհու կերպարը փոխարինված է արիության աստվածուհու՝ Վիրտուսի պատկերով, իսկ Հայաստանը ներկայացված է իբրև ռազմիկ, գլխին թագ կամ սաղավարտ, ձեռքերը հնազանդորեն իրանին մոտ պահած և կամ զենքերով հանդերձ (նիզակ, աղեղ) մարմնին կապված։ Օգոստոս Օկտավիանոսի մ. թ. ա. 20—18 թվականներին թողարկված արծաթ շքադրամներից հայտնի են նաև այնպիսիները, որոնց վրա պատկերված է հայոց թագը, զենքերը (նետ ու աղեղ) և վերևից ու ներքևից արձանագրված՝ ARMENIA CAPTA («Հայաստանը նվաճված») կամ՝ ARMENIA RECEPTA («Հայաստանը վերստին նվաճված») խոսքերը։ Այս շքադրամները մասսայական թողարկում չեն ունեցել, հետևաբար Հայաստանում և ընդհանրապես միջազգային շրջանառության մեջ լայն տարածում չէին կարող ունենալ։

Այս շքադրամների թողարկման փաստը ցույց է տալիս, թե որքան մեծ նշանակություն էր տալիս Հռոմը Հայաստանին՝ իր արևելյան քաղաքականության մեջ։

ԲԱԺԻՆ Զ



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՄԵԾ ՀԱՅՔԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԱՐՏԱՇԵՍՅԱՆ ԴԻՆԱՍՏԻԱՅԻ ԱՆԿՈՒՄԻՑ ՀԵՏՈ

## 1. ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ I ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ: ՀՌՈՄԸ, ՊԱՐԹԵՎՍՏԱՆԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Հռոմեական քաղաքականությունը Հայաստանում մ. թ. ա. I դարի վերջերին և մ. թ. I դարի սկզբներին:** Արտաշեսյան հարստության անկումից հետո Մեծ Հայքի թագավորությունը իրավական տեսակետից մնում էր Հռոմեական կայսրության քաղաքական ոլորտում։ Հայոց թագավորը, իբրև «հռոմեական կայսեր և ժողովրդի բարեկամ ու դաշնակից», պարտավոր էր չխախտել այն քաղաքական վիճակը, որ ստեղծվել էր Պոմպեոսի և Տիգրան Բ-ի միջև մ. թ. ա. 66 թվականին կնքված Արտաշատի դաշնագրից հետո։

Արտաշեսյան դինաստիան այլևս չկար, բայց մնում էին Հռոմի իրավունքները Մեծ Հայքի թագավորության նկատմամբ։ Հռոմեական կայսրն իրեն իրավասու էր համարում միջամտելու Մեծ Հայքի գահակալական վեճերին և սովորաբար «Մեծ Հայքի թագավորի» տիտղոսը շնորհում էր իրեն ցանկալի կամ իր առաջադրած թեկնածուին։ Այդ թեկնածուները, սովորաբար, արենակցական կապ չունեին Արտաշեսյան դինաստիայի հետ կամ ունեին շատ հեռավոր կապեր, բայց դրանք հայտարարվում էին «օրինավոր» ժառանգներ և երբեմն ստանում էին դինաստիական «Արտաշես» կամ «Տիգրան» անունները։

Ստեղծված իրադրությունը սկզբնական շրջանում մի կերպ հանդուրժում էին պարթև Արշակունիները, քանի դեռ կլանված էին ներքին գահակալական կռիվներով և հնարավորություն չունեին միջամտելու հայկական հարցին։

Հռոմը իր քաղաքական ազդեցությունը Հայաստանում և Պարթևստանում օրըստօրե ուժեղացնում էր պատանդներ ստանալու միջոցով, քաղաքականություն, որ իր ձևակերպումն ստացավ Օգոստոս կայսեր (մ. թ. ա. 31—մ. թ. 14) օրոք։

Այսպես, մ. թ. ա. 30 թվականին, երբ Օգոստոսը գրավեց Եգիպտոսի մայրաքաղաք Ալեքսանդրիան, իր հետ Հռոմ տարավ Արտավազդ Բ-ի գերությունից «փրկված» ընտանիքի անդամներին, որտեղ սրանք մեծանում ու դաստիարակվում էին հռոմեական ոգով։ Սրանցից որևէ մեկը, Հռոմի շնորհիվ թագավորելով Հայաստանում, սովորաբար իրեն հայտարարում էր «հռոմեասեր» (φιλορώμαιος) և իր շուրջն էր համախմբում իր համախոհներին և հայ

ավագանու անդամներին, որոնք ստանում էին բարձր պաշտոններ՝ «արքունի գործակալություններ»։ Այսպես ժամանակի ընթացքում հայ ավագանու մեջ առաջ է գալիս «հռոմեասեր» թևը, որը Հռոմի քաղաքականության հենարանն է դառնում երկրում[1]։

Այսպես նաև Պարթևստանում կայսրին ուղարկված պատանդը մի միջոց էր գահի «օրինական ժառանգի» համար՝ ազատվելու իր ախոյանից։ Սակայն հաճախ այդ պատանդը, որն անպայման Արշակունիների տոհմից էր, դառնում էր Հռոմի ձեռքին մի կարևոր գործիք, պարթևական պետության ներքին գործերին խառնվելու համար։ Այս հողի վրա պարթևական արքունիքում տեղի ունեցող մշտական գահակալական կռիվները թուլացնում էին Արշակունիների պետությունը, և հաճախ պարթև Արշակունիները ևս բավարարում էին Հռոմի պահանջները՝ պատանդ ուղարկելու կայսեր, որպեսզի այդ միջոցով պարթևական գահի «օրինական ժառանգը» ազատվեր իր ախոյանից։

Այսպիսով, ինչպես Հայաստանում, այնպես էլ Պարթևստանում Հռոմը կարողանում էր ստեղծել իր կողմնակիցների խմբավորում, որը աշխարհակալական քաղաքականության շահերին էր ծառայում։

**Հռոմեական կայսրության նվաճողական քաղաքականության ճգնաժամը:** Հռոմի նվաճողական քաղաքականությունը կայսրության սահմանները հասցրել էր մինչև Հռենոս, Դանուբ և Եփրատ գետերը։ Այդ լայնածավալ սահմանագծերը հարկավոր էր պաշտպանել և անհրաժեշտ էր ունենալ սահմանապահ զորամասեր, իսկ զինվորական ռեզերվները շատ ավելի դանդաղ էին աճում, քան տերիտորիաները։

Այդ կապակցությամբ հռոմեական բանակի վատթարացած վիճակը դարձավ կայսրության տկարացման հիմնական պատճառը։

Առաջինը, որ գիտակցեց ստեղծված դրությունը, Օգոստոս կայսրն էր։ Նա թագավորության վերջին տարիներին իր հաջորդներին կտակեց չընդլայնել կայսրության սահմանները։ Համաձայն Դիոն Կասսիոսի, Օգոստոսն իր արքունիքին «խորհուրդ տվեց սահմանափակվել եղածով և ցանկություն չունենալ ընդլայնելու կայսրությունը, որովհետև այն դժվար կլինի պահպանել»[2]։

Հռոմին, այսպիսով, այլ բան չէր մնում Արևելքում, քան հանդուրժել կախյալ թագավորությունների սիստեմը[3]։ Նման կախյալ թագավորություններ էին Պոնտոսը, «Հենիոխների և մաքելոնների թագավորությունը», Փոքր Հայքը, Կոմմագենեն, Քալկիսը[4]՝ Կելեսիրիայում, Պալմիրան, Հրեաստանը, որոնք ընկած էին երկու ախոյանների՝ Հռոմի ու պարթև Արշակունիների միջև և մի կերպ ստանում էին կայսրության գերիշխանությունը։

---

1 Տե՛ս Հ. Ց. Ասատուրյան, Քաղաքական վերաբերությունները ընդ մեջ Հայաստանի և Հռովմա 190-են ն. ք. մինչև 428 թ. հ. ք., Վենետիկ, 1912, էջ 134—140։

2 Dio, LXI, 33, 5։

3 Տե՛ս О. В. Кудрявцев, Римская политика в Армении и Парфии в первой половине правления Нерона, ВДИ, 1948, № 3, էջ 54։

4 Քալկիսի փոքրիկ թագավորությունը գլխավորում էր հռոմեացիների կողմից նշանակված հայազգի դինաստներից մեկը (հավանաբար, Արտավազդ Բ-ի որդիներից), որոնք հայկական գահի հավակնորդ էին համարվում։

Կախյալ թագավորությունների սիստեմը, որ կայսրությունը իբրև ժառանգություն ստացել էր հանրապետությունից, մի միջոց էր, որով հռոմեական կառավարությունը պահում էր արևելյան սահմանագիծը։ Սակայն հարձակողական գործողությունների համար Հռոմի «բարեկամ ու դաշնակից» թագավորների զորամասերը ամենևին պիտանի չէին[5]։ Մ. թ. ա. I դարի վերջին և մ. թ. I դարի սկզբին հռոմեական արևելյան սահմանագծից այն կողմը (Մեծ Հայք և Պարթևական թագավորություն) այնպիսի վիճակ էր ստեղծվել, որ թելադրող կողմը մնում էր Հռոմը։



Հայաստանը անձնավորող արձան. Նեապոլիս

**Անկայուն վիճակ պարթևական թագավորության թիկունքում:** *Պարթևական աշխարհակալությունը ներքուստ միատարր չէր և բացակայում էր անհրաժեշտ էթնիկական ու քաղաքական զոդվածությունը։ Արշակունիների պետությունը ոչ միայն բաժանված էր առանձին կախյալ թագավորությունների, այլև խայտաբղետ պատկեր էր ներկայացնում էթնիկական, սոցիալ-տնտեսական և մշակութային զարգացման տեսակետից։*

*Պարթև Արշակունիների աշխարհակալությունը բաժանված էր երկու տարբնույթ մասերի՝ արևմտյան և արևելյան սատրապությունների։*

*Արևմուտքում պարթևներին ենթակա էին Միջագետքը և Զագրոսյան լեռ-*

5 Տե՛ս *О. В. Кудрявцев*, Римская политика в Армении и Парфии, էջ 55։

նաստանը, որը ձգվում էր մինչև Մարաստան։ Այս երկրամասերի ազգաբնակչության հիմնական տարրերն էին սեմական լեզուներով խոսող արամեացիներն ու արաբական ցեղերը, ինչպես և հույները, մասամբ՝ պարթևները և այլ իրանալեզու ցեղերը, որոնք, սակայն տնտեսապես և կուլտուրապես կապված էին ինքնավար քաղաքների հելլենացված վերնախավի հետ։ Ահա պարթևներին խորթ այս միջավայրը՝ Ստորին Միջագետքը, անխուսափելիորեն դարձավ պարթև Արշակունիների քաղաքական կենտրոնը։ Այն ժամանակվանից, երբ Տիգրան Բ Մեծը (95—55) նվաճեց պարթևների մայրաքաղաք Էկբատանան (մ. թ. ա. շուրջ 89—85), պիտի հարց առաջանար պարթևական արքունիքը փոխադրելու Հյուսիսային Միջագետքից և Հայաստանից հեռու մի վայր։ Միհրդատ Բ-ի հաջորդ, նոր գահ բարձրացած Որոդես Բ-ը (55—38/37) իր մայրաքաղաքը դարձրեց Տիզբոնը, որը աճել էր հելլենիստական աշխարհի երեք խոշորագույն կենտրոններից մեկի՝ Տիգրիսյան Սելևկիայի կողքին։

Քաղաքական տեսակետից պարթևական պետության արևմտյան սատրապությունների հելլենացված քաղաքների վերնախավը, այդ թվում նաև այստեղ հաստատված պարթևական ավագանու մի մասը, դեմ չէր ընդհանուր լեզու գտնելու Հռոմի հետ և այդ գնով ամրապնդելու իր քաղաքական դիրքերը ու անկախ լինելու ինչպես Արշակունիներից, այնպես էլ՝ Հռոմից[6]։

Արևմտյան այս նահանգներին հակադրվում էին Պարթևստանի արևելյան և հյուսիս-արևելյան նահանգները՝ Մարաստանը, Պարթևաց աշխարհը՝ «Ապար աշխարհը», Մարգիանեն, Աստավանը, Ապավորդենեն (Ապավարկտիկենեն), Սակաստանը և սրանց հարակից երկրամասերը։ Սրանք հելլենականության դեմ պայքար էին մղում դեռևս Սելևկյանների տիրապետության ժամանակաշրջանում, իսկ այժմ, երբ Դրանգիանա-Սակաստանում ամրացած ռազմատենչ սակերն իրենց ձեռքն են վերցնում երկրի տնօրինությունը, այդ պայքարը ավելի մեծ ծավալ է ընդունում։

Պարթևական Իրանի այս արևելյան և հյուսիս-արևելյան սատրապություններում մեծ շարժում էր սկսվել տեղաբնակ ցեղերի միջև, որոնց մեջ ներքին զարգացումը հանգել էր դասակարգային հասարակարգի և պետականության ձևավորման։ Ներքին զարգացման այս պրոցեսները հակադրվում էին հույն-մակեդոնական նվաճողների ստեղծած հելլենիստական քաղաքներին, որոնք օազիսներ էին դարձել և հետզհետե չքանում էին։ Պետական ապարատում հունարենի փոխարեն գերիշխող էր դառնում պարթևների լեզուն՝ պահլավերենը։

Արդեն մ. թ. ա. I դարի երկրորդ կեսից սկսած պարթև Արշակունիների դինաստիայի ներսում գահակալական կռիվներ էին գնում այդ դինաստիայի երկու թևերի միջև, որոնց հիմնական մասը հենվում էր արևելյան և հյուսիս-արևելյան իրանական նահանգների վրա, իսկ նրանց հակառակորդները հենարան էին գտնում Միջագետքի հելլենացված վերնախավերի մոտ և սովորաբար հովանավորություն էին ստանում հռոմեական կայսրների կողմից, որոնք

---

6 Տե՛ս *Г. А. Кошеленко*, Внутриполитическая борьба в Парфии (вторая половина I в. до н. э.). ВДИ, 1963, № 3, էջ 58 և հաջ.։

ակտիվ մասնակցություն էին ունենում բոլոր այդ բանսարկությունների և գաղտնի ու բացահայտ պայքարի մեջ։

Ներքին ուժերի վրա հենվող պարթև Արշակունիների հիմնական նեցուկն էր սակերից կազմված այրուձին՝ «սկյութական զորամասերը», որոնք, հավանորեն, հավաքագրվում էին Միջին Ասիայի քոչվոր ցեղերից, հատկապես ապարհացիներից-դահերից։ Այս «սկյութների» մոտ, ըստ երևույթին, առաջնահերթ գեր էր խաղում անդրկասպյան ափերին հիմնված Մազքթաց Արշակունիների թագավորությունը, որտեղ գերիշխում էին ապարհացիները և այլ իրանական ցեղերը[7]։

**Մեծ Հայքի թագավորությունը երկու մարտնչող պետությունների միջև:** Երկու մեծ աշխարհակալությունների՝ Հռոմի ու Պարթևստանի միջև ընկած Հայաստանը՝ Մեծ Հայքի թագավորությունը, իր տերիտորիալ ընդարձակությամբ և քաղաքական կշռով հին աշխարհի երրորդ պետությունն էր։ Մեր թվականության I դարի սկզբին գրված Պոմպեոս Տրոգոսի „Historiae Philippicae" պատմական երկում կարդում ենք. «Չի կարելի լռությամբ անցնել այդպիսի մեծ թագավորության կողքից, ինչպիսին է Հայաստանը, քանի որ նրա սահմանները, Պարթևստանից հետո, իրենց ընդարձակությամբ գերազանցում են բոլոր մյուս թագավորությունների սահմաններն, ըստ որում Հայաստանը Կապադովկիայից մինչև Կասպից ծովը տասնմեկ հազար քայլ տարածություն ունի, իսկ լայնքով նրա երկարությունն է յոթ հարյուր հազար քայլ»[8]։

Հիրավի, Մեծ Հայքի թագավորության սահմաններում, որ Հռոմը ճանաչել է մ. թ. ա. 66 թ. Արտաշատի դաշնագրով, տակավին մ. թ. I դարի սկզբներին ընդգրկված էր շուրջ 310.000 քառակուսի կիլոմետր տարածություն[9]։ Սակայն Մեծ Հայքը ոչ միայն նրանով էր աչքի ընկնում, որ Հին Աշխարհի երրորդ մեծ պետությունն էր, այլև տարբերվում էր Հռոմից ու Պարթևստանից մի կական գծով։ Մեծ Հայքի թագավորությունն իրենից ներկայացնում էր մի միաձույլ էթնիկական թագավորություն։ Այն բնակեցված էր մեկ ժողովրդով, որը խոսում էր մի լեզվով, այդ հայ ժողովուրդն էր, որը, ինչպես վկայում է Ստրաբոնը, միալեզու էր (ὁμόγλωττος)[10]:

Ահա այս հանգամանքներն էին, որ նշանակալից պատմական գործոն էին հանդիսանում և Մեծ Հայքին հնարավորություն էին տալիս տոկալու և գոյատևելու երկու մրցակից աշխարհակալությունների միջև և նույնիսկ հարկադրելու, որ նրանք իրենց արտաքին քաղաքականությունը վարելիս հաշվի նստեին Մեծ Հայքի պետության հետ։ Հարկավ, պարթև Արշակունիների համար հարցի լավագույն լուծումը կլիներ Մեծ Հայքի գահի վրա հաստատելու իրենց

7 Տե՛ս С. Т. *Еремян*, Страна «Махелония» надписи Кааба-и-Зардушт, ВДИ, 1967, № 4, էջ 56.

8 „Sed quoniam in Armeniam transitum facimus, origo eius paulo altius repetenda est. Neque enim silentio regnum tantum praeteriti fos est, eum fines post Parthiam omnium regnorum magnitudinem superent, siquidem Armenia a Cappadocia usque mare Caspium indecies centum milia patet, sed in latitudinem milia passum, septigenta porrigitur" (Justini Epitoma *Pomp. Trogi*, XLII, 2. Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի*, Երևան, 1963, էջ 68, ծան. 1։

9 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի*, էջ 118։

10 Տե՛ս *Strabo*, XI, 14, 5։

արքայական տոհմի ներկայացուցիչներին, որի համար և ճիգեր էին գործադրում։ Հռոմը, ընդհակառակն, արտաքուստ հանդես էր գալիս իբրև Արտաշեսյան դինաստիայի շառավիղների օրինական իրավունքների պաշտպան և, ձգտելով իր քաղաքական ազդեցության ներքո պահել Ատրպատականի թագավորությունը, հայկական գահի վրա հաստատում էր այդ պետության թագավորող դինաստիայի ներկայացուցիչներին, որոնք արյունակցական կապեր ունեին Արտաշեսյանների հետ։ Հետագայում, երբ Ատրպատականում հաստատվեց պարթև Արշակունիների դինաստիան, և այդ երկիրը վերջնականապես ազատվեց Հռոմի ազդեցությունից, հռոմեական կայսրները դիմում են Հրեաստանի, Քալկիսի, Պոնտոսի և Վրաց աշխարհի (Իբերիայի) թագավորական տներին, որոնք արյունակցական կապեր ունեին Արտաշեսյանների ու նրանց նախորդած Երվանդունիների հետ և այդ պատճառով համարվում էին հայկական գահի օրինավոր հավակնորդներ։ Այս ժամանակաշրջանում ապրող Տակիտոսը գրում է. «Մեծագույն պետությունների միջև է տեղավորված Հայաստանը և շատ հաճախ հայերը երկպառակ են, որովհետև նրանք թե՛ ատում են հռոմեացիներին և թե՛ նախանձում են պարթևներին»[11]։ Ահա քաղաքական իրադրության այն պատկերը, որ գերիշխում էր մ. թ. I դարի սկզբներին։

## 2. ՀՌՈՄԵԱԿԱՆ ԴՐԱԾՈՆԵՐԸ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՀԻ ՎՐԱ Մ. Թ. I ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ

**Ատրպատականի արքայական դինաստիայի ներկայացուցիչները հայկական գահի վրա:** Արտաշեսյան հարստության վերջին շառավիղ Տիգրան Դ-ի մահվանից հետո մնացել էր նրա քույր Էրատոն, որը հրաժարվեց գահից (մ. թ. 1-ին թվական)։ Ստեղծված վիճակն օգտագործեց հարևան Ատրպատականի արքայական տունը, որը խնամիական կապեր ուներ Արտաշեսյանների հետ և հավակնորդ էր համարվում հայկական գահի։ Սրան նպաստում էին Ատրպատականի թագավորության և Հռոմեական կայսրության քաղաքական հարաբերությունները։ Ատրպատականը այս ժամանակաշրջանում ընդգրկվել էր Հռոմի ագրեսիվ քաղաքականության ծիրի մեջ և հակադրվել ինչպես պարթև Արշակունիներին, այնպես էլ Մեծ Հայքի թագավորությանը։ Մեր թվականության 1-ին թվականին հռոմեական կայսր Օգոստոսի կողմից Արևելք ուղարկված իր թոռը և որդեգիրը՝ Կայոս Կեսարը Մեծ Հայքի թագավոր ճանաչեց Ատրպատականի Արիոբարզան թագավորին (մ. թ. 2—4)։ Վերջինս Անտոնիոսի բարեկամ Ատրպատականի թագավոր Արտավազդի որդին էր։

Արիոբարզանը կողմնակիցներ ուներ նաև հայ ավագանու մեջ, սակայն ավագանու մեծ մասը չընդունեց օտար թագավորի իշխանությունը և ընդվզեց։ Այդ հասկանալի կլինի, եթե նկատի ունենանք, որ ինչպես Արիոբարզանը, այնպես էլ նրան հաջորդած իր որդին՝ Արտավազդը, մնում էին միևնույն ժամանակ Ատրպատականի թագավորներ և փաստորեն Մեծ Հայքի թագավորությունը միացվում էր Ատրպատականի թագավորությանը[12]։

---

11 Տակիտոս, Քաղեց և լատիներենից թարգմանեց Գ. Ստեփանյան, Երևան, 1941, էջ 15։

12 Տե՛ս Հ. Ց. Աստուրյան, Քաղաքական վերաբերություններ ընդ մեջ Հայաստանի և Հռոմա..., էջ 142։

Հայ ժողովրդի ապստամբությունը Կայոս Կեսարը ճնշեց հռոմեական զենքի ուժով, մ. թ. 2 թվականին, որը, սակայն, օրհասական եղավ հենց իր՝ Կայոս Կեսարի համար։ Վերջինս եկել էր Արշարունյաց գավառի Արտագերս ամրոցին տիրանալու և այնտեղ պահվող արքունի գանձերը տանելու։ Արտագերսի վերակացու հրամանատար Ադդոնը (Ատո՞մ)[13], որը բերդից իջել էր բանակցելու Կայոս Կեսարի հետ, ցույց տվեց բերդում պահվող արքունի գանձերի ցու-



Գառնիի անտիկ դարաշրջանի պարիսպը

ցակը, սակայն մինչև հռոմեական զորավարը կարդում էր ցուցակը, Ադդոնը ծանր վիրավորեց նրան դաշույնով (մ. թ. 2 թվականի սեպտեմբերի 9-ին)։ Հռոմ վերադառնալիս Կայոս Կեսարը մահացավ ճանապարհին (մ. թ. 4 թվականի փետրվարի 21-ին), իսկ Արտագերսը երկար պաշարումից հետո գրավվեց հռոմեական զորքի կողմից, կողոպտվեց և ավերվեց[14]։

Մեծ Հայքի և Ատրպատականի թագավոր Արիոբարզանը մահացավ այս նույն ժամանակ և Օգոստոսի համաձայնությամբ Մեծ Հայքի ու Ատրպատականի թագավոր հռչակվեց Արիոբարզանի որդին՝ մար Արտավազդը։ Մեծ Հայքի գահի վրա սա Արտավազդ Դ-ն էր և թագավորեց շուրջ 4—6 թվականները։ Սակայն հայերը սրան ևս չուզեցին ճանաչել և, ապստամբելով, սպանեցին նրան։

Տեսնելով հայերի համառ դիմադրությունը Ատրպատականի արքայական տան թեկնածուների նկատմամբ, Օգոստոս կայսրը դիմեց Հրեաստանի արքայական տան ներկայացուցիչներին, որոնք նույնպես խնամիական կապեր ունեին Արտաշեսյան տան հետ և կարող էին հայկական գահի հավակնորդ հա-

13 Տե՛ս նույն տեղում, էջ 143։

14 Տե՛ս Strabo, XI, 14, 6։

մարվել։ Օգոստոս կայսրը Մեծ Հայքի թագավոր նշանակեց Հրեաստանի թագավոր Հերովդես Ա Մեծի (մ. թ. ա. 70—4) թոռ Տիգրան Ե-ին (շուրջ 6 թվական)։ Սակայն սա ևս գահընկեց արվեց կարճատև թագավորությունից հետո, և նրա փոխարեն հայ ավագանին հայկական գահի վրա բազմեցրեց վերստին Էրատո թագուհուն (6 թվականից հետո—11 թվական)։ Բայց սա ևս կարճ ժամանակից հետո հեռացվում է գահից և երկիրը անտերունչ վիճակում է մնում մի քանի տարի, մաքառելով հռոմեական ագրեսիայի դեմ։ Անդրադառնալով երկրում ստեղծված քաղաքական իրադրությանը, Հ. Մանանդյանը շատ ճիշտ եզրակացնում է, որ «Արտաշեսյան Մեծ Հայաստանը ոչ ընկճվել էր, ոչ էլ խոնարհվել, այլ հերոսաբար ու գրեթե անընդհատ պայքար էր մղել իր ազատության ու անկախության համար»[15]։

**Պարթև Արշակունիների վերահզորացումը: Արտավան Գ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը:** *Հրահատ Ե-ին հաջորդած Որոդես Գ-ի կարճատև գահակալությունից հետո պարթևները հարկադրված դիմեցին Օգոստոսին, խնդրելով Հռոմում գտնվող արքայազն Վոնոնին, որը Հրահատ Դ-ի ավագ որդին էր, նշանակել Պարթևստանի թագավոր։ Սակայն հռոմեական դաստիարակություն ստացած Վոնոնը (7—11 թթ.) հենարան չուներ պարթևական ավագանու շրջանում։ Նրա դեմ համախմբվում էին հայրենասիրական ուժերը։ Հռոմեական դրածոյի դեմ պարթևների պետության արևելյան նահանգներում սկսված պայքարը հատկապես ուղղվում է հելլենիստական քաղաքակրթության՝ իբրև Արևմուտքի նվաճողական քաղաքականության արտահայտության դեմ։ Այս պայքարը Վոնոնի դեմ գլխավորում էր Վրկանից աշխարհի և Կրմանի կառավարչի որդի Արտավանը, որը մոր կողմից Արշակունի էր և հիմնադիր դարձավ Արշակունյաց հարստության կրտսեր ճյուղի։*

*Արտավանի գլխավորած պայքարի ընթացքում երկրից արտաքսվեց, ապա ոչնչացվեց նրա հիմնական քաղաքական հակառակորդ, պարթևական գահի հավակնորդ Տրդատ Գ-ը և ինքը հաստատվեց պարթևական գահի վրա։*

*Գահազուրկ Վոնոնը հարկադրված է լինում ապաստան գտնել Հայաստանում, որտեղ հռչակվում է Մեծ Հայքի թագավոր (11—16 թթ.)։*

*Հաղթանակ տարած Արտավան Գ-ը (12—38 թթ.) կարողանում է իր կողմը գրավել Միջագետքի քաղաքների վերնախավը, մանավանդ հրեաներին, որոնք նրան օգնում են պայքարելու Հռոմի կողմնակիցների դեմ։ Այդպիսով, հաղթանակը տանում է հնամենի պարթևական և հակահունական-հակահռոմեական քաղաքական գիծը, և Արտավան Գ-ով սկսվում է Պարթևական պետության զարգացման նոր ժամանակաշրջան*[16]։

*Պետական ապարատում հունարենի փոխարեն գերիշխող է դառնում պարթևների լեզուն՝ պահլավերենը, և պաշտոնապես ճանաչում են ստանում տեղական կրոնական հավատալիքները։ Մեծ պայքար է մղվում հելլենիստական սինկրետիկ պաշտամունքների դեմ և իբրև պետական կրոն ձևավորվում է զրադաշտականությունը։*

---

15 Հ. Մանանդյան, *Քննական տեսություն...*, *հատոր Ա*, *էջ 301—302*։

16 *Տե՛ս Г. А. Кошеленко*, Внутриполитическая борьба в Парфии, *էջ 59—67*։

Պայքարի ուժեղացումը հայկական գահի շուրջը Հռոմի և պարթևների միջև: Վերականգնելով պարթևական պետության նախկին հզորությունը Արտավան Գ-ը հարձակումներ ձեռնարկեց Արևելքում քաղաքական գերիշխանության ձգտող Հռոմի դեմ։ Նա գիտակցում էր, թե որքան մեծ նշանակություն ուներ Հռոմեական կայսրության համար Հայաստանը, որին տիրելուց հետո հերթը պիտի հասներ Միջագետքին։

Հնարավորություն չունենալով մեծ ռազմարշավ կազմակերպելու, հռոմեացիները Պարթևական Միջագետքում դաշնակիցներ էին փնտրում հելլենիստական ինքնավար քաղաքների ազգաբնակչության վերնախավի մեջ, որոնք պայքարում էին իրենց քաղաքային ինքնավարությունը և դրա հետ կապված արտոնությունները վերացնելու՝ պարթև Արշակունիների ոտնձգությունների դեմ։ Սրանց հետ էր նաև արաբա-արամեական ավագանին, որի համար վերստին ուժեղացած պարթև Արշակունիները օտար իշխաններ էին, և որը ձգտում էր թոթափել նրանց գերիշխանությունը[17]։

Պարթևական աշխարհակալության միասնությունը ամրապնդելու համար Արտավան Գ-ը աշխատում էր ենթակա թագավորությունների գահերի վրա բարձրացնել պարթև Արշակունիների հարստության ներկայացուցիչներին և առաջին հերթին հոգսերի առարկա էր Ատրպատականը, որի թագավորող դինաստիան հռոմեական քաղաքականության ջերմ պաշտպան էր և օգտվում էր Հռոմի հովանավորությունից։ Արտավան Գ-ը կարողացավ գրավել իր պետության թիկունքում գտնվող Ատրպատականը և վերացնել տեղական դինաստիան։ Այդ երկրի արքայական գահը նա դարձրեց իր տոհմի ժառանգական սեփականություն։ Ատրպատականի գահի վրա բազմեց Արտավան Գ-ի եղբայր Վոնոնը և այդպիսով այս երկիրը հանվեց Հռոմի քաղաքական ազդեցության ոլորտից։

Սակայն պարթևական պետության աշխարհակալ դիրքը պահպանելու համար ավելի կարևոր էր Մեծ Հայքի գահը հանձնել Արշակունի գահաժառանգին. այդպես առաջ եկավ Հայաստանը Արշակունիների թագավորության երկրորդ պետություն դարձնելու քաղաքական ծրագիրը, որի համար այնուհետև հռոմեական կայսրերի դեմ պայքար են մղում Արտավան Գ-ը և նրա հաջորդները։

Հայաստանում, սակայն, դեռ հարկավոր էր պայքար մղել հռոմեասեր քաղաքական հոսանքի դեմ, որը հայոց թագավոր էր հռչակել նրանց մոտ ապաստան գտած Վոնոնին։ Սակայն Վոնոնը Մեծ Հայքում թագավորեց միայն հինգ տարի (11—16 թթ.), որ պայմանավորված էր այն մեծ անհաջողություններով, որ հռոմեական կայսրությունը կրեց իր հեռավոր հյուսիս-արևմտյան ծայրամասերում։

Հռոմեացիների համար ստեղծված այս անբարենպաստ վիճակը շտապեց օգտագործել Արտավան Գ-ը։ Հայաստանի ներսում արդեն որոշ աշխատանք էր տարված հակահռոմեական տրամադրությունները աշխուժացնելու համար, այստեղ լուրեր էին տարածվում հռոմեացիների անհաջողությունների մասին

[17] Տե՛ս М. М. Дьяконов, Очерки истории древнего Ирана, М., 1961, էջ 220—223։

հեռավոր Գերմանիայում ու Պանոնիայում։ Երբ Արտավան Գ-ը սպառնաց հռոմեացիների դեմ պատերազմ սկսել, եթե նրանք պաշտպանեն իրենց դրածո Վոնոնին, հայ մեծամեծներն իսկույն անցան նրա կողմը։ Հովսեպոս Փլավիոսի վկայությամբ՝ «Վոնոնը թագավոր դառնալու ոչ մի այլ հնարավորություն չուներ, քանի որ Նպատ լեռան շուրջ բնակվող հայ մեծամեծները հարել էին Արտավանին և նրան (Վոնոնին) հանձնեցին Սիրիայի ստրատեգոս Սիլանոսին»[18]։ Ասել է, թե հայ ավագանին հավաքվում է Նպատ լեռան ստորոտում (որտեղ գտնվում էր Բագավան սրբավայրը և որտեղ նավասարդյան օրերին գումարվում էր երբեմնի համաժողովրդական, իսկ այժմ հայ ժողովրդի տիրող վերնախավի խորհրդակցական մարմինը՝ Աշխարհաժողովը), ապօրինի է համարում Վոնոնի թագավորությունը Հայաստանում և գահընկեց է անում նրան։ Այդ որոշումը, հարկավ պաշտպանություն է գտնում Արտավան Գ-ի կողմից, որը ուզում էր հայկական գահը տալ իր որդի Որոդեսին։ Ինչպես հաղորդում է Հովսեպոս Փլավիոսը Վոնոնը «հանուն Հռոմում իր ստացած դաստիարակության, ապաստան գտավ Սիրիայում, իսկ Հայաստանը Արտաբանոսը տալիս էր իր որդիներից մեկին՝ Որոդեսին»[19]։



Օգոստոս Օկտավիանոսի (մ. թ. ա. 27—մ. թ. 14) դրամը

Նոր գահ բարձրացած Տիբերիոս կայսրը (14—37) ամեն գնով խուսափում էր պատերազմից։ Նա Վոնոնին չճանաչեց Հայաստանի թագավոր. Ասորիքի կուսակալ Կրետիկոս Սիլանոսը 16 թվականին իր մոտ՝ Անտիոք, հրավիրեց Վոնոնին, որին հսկողության տակ վերցրեց՝ թողնելով, սակայն, նրա արքայական պատվանշանները։

**Զենոն-Արտաշեսը Մեծ Հայքի թագավոր:** Ստեղծված իրադրությունը ստանահարում էր Հռոմի քաղաքական հեղինակությունը Արևելքում և անհրաժեշտ էր նոր միջոցառումներով վերականգնել այն։ 17 թվականին Տիբերիոսը մեծ լիազորություններով Արևելք ուղարկեց իր եղբորը՝ Գերմանիկոսին, որն առաջին հերթին վերացրեց Մեծ Հայքին սահմանակից թագավորությունները՝ Կապադովկիան, Կոմմագենեն ու Կիլիկիան և դրանք դարձրեց հռոմեական պրովինցիաներ։ Եփրատի հանդիպակաց ափից այնուհետև Մեծ Հայքին սպառնում էին այդտեղի ամրություններում տեղավորված հռոմեական լեգեոնները։ Այս միջոցառումներով կայսրությունը աշխատում էր արտաքին աշխարհին ցուցադրել իր ռազմական հզորությունը, որ այնքան էլ չէր համապատասխանում իրական վիճակին։ Ամրապնդելով հռոմեացիների դիրքերը Եփրատի վրա, Գերմանիկոսը հարաբերությունների մեջ է մտնում հայ ավագանու հետ, ջանալով դիվանագիտական ճանապարհով լուծել հայկական գահի հարցը։

18 թվականին Գերմանիկոսն անձամբ եկավ Հայաստան՝ Արտաշատ մայ-

18 Հովսեպոս Փլավիոս, Քաղեց և թարգմանեց Ս. Կրկյաշարյան (ձեռագիր), էջ 92։ Jos. Flav., Ant., XVIII, 51։

19 Նույն տեղում,, XVIII, 52։

քաղաքը, որտեղ հայ ավագանու համաձայնությամբ Մեծ Հայքի թագավոր հռչակվեց Զենոնը՝ Պոնտոսի թագավոր Պոլեմոնի և նրա երկրորդ կնոջ՝ հռոմեական կայսեր ազգականուհի Պյութոդորիսի որդին, որը դաստիարակություն էր ստացել Հռոմում։ Թագավորության ժամանակ Զենոնն ընդունեց դինաստիական «Արտաշէս» անունը, որը այնքան սիրելի էր հայերին և հիշեցնում էր Մեծ Հայքի հզորության օրերը։

Զենոն-Արտաշեսի համեմատաբար երկարատև թագավորության ընթացքում (18—34 թթ.) Հայաստանն ապրեց փաղաղության ու ներքին անդորրության մի շրջան։ Արտավան Գ-ը հարկադրված եղավ ճանաչել Զենոն-Արտաշեսի թագավորությունը, բայց Գերմանիկոսից նախօրոք պահանջեց, որ Վոնոնը Անտիոքից հեռացվի, և վերջինս փոխադրվեց պարթևական սահմաններից ավելի հեռու գտնվող Կիլիկիայի Պոմպեուպոլիս քաղաքը։

Ստեղծված պայմաններում Վոնոնը իրեն զգում էր պատվավոր գերության մեջ և մտածում էր օր առաջ ազատվել այդ վիճակից։ Տակիտոսը գրում է, որ Վոնոնը կաշառում է իրեն հսկող պահակազորի պարագլուխներին և փորձ անում փախչել Հայաստան, որպեսզի աղվանների ու հենիոխների երկրների վրայով հասներ «իրեն արյունակից սկյութական թագավորի մոտ»[20]։ Սակայն փախուստը չի հաջողվում, նա սպանվում է հռոմեացիների կողմից (19 թվական)[21]։

Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել այն հանգամանքի վրա, որ հայ ավագանին պարթև Որոդեսից գերադասեց պոնտական թագավորազն Զենոնին։ Անշուշտ, այս ընտրության մեջ դեր է խաղացել Հռոմի քաղաքական ճնշումը։ Սակայն միևնույն ժամանակ չի կարելի աչքաթող անել Հայաստանի ներսում առկա սոցիալական այն խավը, որի համար ընդունելի էր Զենոնի թագավորացումը։ Մեծ Հայքը, ինչ խոսք, ավելի մոտ էր պարթևներին, սակայն Պարթևստանի ներքին նահանգներում ծավալված հակահելլենական շարժումն ու զրադաշտական կրոնի տարածումը խորթ էին հայկական միջավայրին, որը, ի վերջո պիտի հանգեր քրիստոնեության։ Զենոն-Արտաշեսը իր դաստիարակությամբ ավելի մոտ էր հայ իրականությանը, քան թէ կիսաքոչվորական Իրանի ներքին նահանգներից դուրս եկած Արտավան Գ-ի որդի Որոդեսը։

Այսպիսով, հռոմեացիների ոտնձգությունների դեմ ժողովրդի բազմաթիվ ապստամբությունները վերջացան հայ ավագանու հաղթանակով, որը վերականգնեց իր արտոնյալ վիճակը։ Ըստ էության դա մի զիջում էր, որ Հռոմը կատարեց Հայաստանում իր քաղաքական դիրքերը պահպանելու համար։

---

20 Tacit., Annal., II, 68։

21 Վոնոնը ուզում էր ապաստան գտնել Մերձկասպյան շրջանում գոյություն ունեցող, հետագայում հայ մատենագրության մեջ հայտնի Մազքթաց թագավորությունում, որտեղ իշխում էր պարթև Արշակունիների հարստության ճյուղերից մեկը։ Հայտնի է, որ պարթև Արշակունիները ծագում էին միջինասիական սկյութական «պառն» կամ «ապառն» ցեղերից, որոնց մի մասը բնակություն էր հաստատել Կասպից ծովի արևմտյան ափերին՝ Մեծ Հայքի Բաղասական երկրում և դեռևս Եղիշեն գիտեր նրանց «ապառհացի» անվան տակ։ Այս ցեղի մի հատվածը, ինչպես կարելի է ենթադրել, մ. թ. I դարում հաստատվել է Հայաստանում Վանա լճից հյուսիս։ Այս ցեղի անունով այստեղ գտնվող գավառը Մանազկերտ քաղաքով կոչվել է «Ապա(ր)հունիք»։ Այս անունով հայտնի էր վաղ միջնադարյան Հայաստանում «Ապահունյաց» նախարարական տոհմը (տե՛ս С. Т. Еремян, Страна «Махелония» надписи Кааба-и-Зардушт, էջ 56)։

## 3. ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ԱՌԱՋՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Արշակը (Սանատրուկ Ա) Մեծ Հայքի թագավոր:** 34 թվականին, երբ մահացավ Զենոն-Արտաշեսը, խաղաղ իրադրությունը Հայաստանում և Միջագետքում նորից խախտվեց։ Պարթևական արքայից-արքա Արտավան Գ-ը որոշեց օգտվել հարմար առիթից և իրականացնել վաղեմի ծրագիրը՝ նվաճել ոչ միայն Հայաստանը, այլև Կապադովկիան ու ամբողջ Փոքր Ասիան, ընդհուպ մինչև Միջերկրական ծովը, և վերականգնել Աքեմենյան Պարսկաստանի սահմանները[22]։ Այս ծրագրի իրագործման նպատակով նա ներխուժեց հռոմեական պրովինցիա Կապադովկիա, իսկ Մեծ Հայք ուղարկեց իր ավագ որդուն՝ թագաժառանգ Արշակին, որի անունը, ըստ հայկական ավանդությունների, թերևս Սանատրուկ էր[23]։ Սրան հայ ավագանին թագավոր հռչակեց։ Դա համազոր էր Հռոմի առաջնության ոչնչացմանը Հայաստանում, ուստի կայսրությունը ամեն ինչ արեց, որպեսզի պահպանի իր դիրքերը Մեծ Հայքում։

Սանատրուկ թագավորի մասին բերվող տեղեկությունները Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ հաստատվում են Հովսեպոս Փլավիոսի տեղեկություններով և հնարավորություն են տալիս եզրակացնելու, որ Սանատրուկի մայրաքաղաքն է եղել Մծբին քաղաքը[24]։

Սանատրուկի կատարած գործերի մեջ Խորենացին հատկապես արժանի է համարում հիշատակության Մծբին քաղաքի կառուցումը, որը, ըստ նրա հաղորդման, ավերվել էր երկրաշարժից[25]։

**Մեծ Հայքի նշանակությունը հռոմեա-պարթևական հակամարտություննե-րի մեջ:** Երկու աշխարհակալությունների միջև գահակալական վեճերի պատճառով սկսված ընդհարումները դուրս էին գալիս Մեծ Հայքի հարցի սահմաններից և ստանում միջազգային քաղաքականության թատերաբեմում առաջնության հասնելու համար մղվող պայքարի բնույթ։ Գտնվելով ռազմական գործողությունների մերձեփրատյան թևում, Հայաստանն հավասարազոր ռազմաստրատեգիական նշանակություն ուներ թե՛ Հռոմի և թե՛ Պարթևստանի համար։ Հայաստանի անցումը ախոյաններից մեկի կողմը՝ մեծ սպառնալիք էր ստեղծում մյուսի համար. «երկու պետությունների համար կարևորը ոչ թե Հայաստանի զավթումն էր, այլ այն, որ հակառակորդ պետությանը թույլ չտրվեր հասնել դրան»[26]։

Ծերունազարդ Տիբերիոսը վճռական միջոցների դիմեց միայն այն ժամանակ, երբ տեղեկություն ստացավ, որ Արտավան Գ-ը սպառնում է Հռոմի ասիական պրովինցիաներին։

---

22 Տե՛ս Tacit., Annal., VI, 31։

23 Տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, հատ. Ա, Երևան, 1966, էջ 168։

24 Տե՛ս Խորենացի, Բ, լե։

25 Տե՛ս նույն տեղում, Բ, լզ։

26 О. В. Кудрявцев, Римская политика в Армении и Парфии в первой половине правления Нерона, էջ 57։

Արշակունիների հիմնական ճյուղի շառավիղները դեռ մնում էին Հռոմում և միշտ կարելի էր նրանց հակադրել նորաթուխ և կասկածելի Արշակունի Արտավանին։ Եվ ահա, այդ ժամանակ պարթև ավագանու կողմից գաղտնի պատգամավորություն է գալիս կայսեր դուռը՝ նրանից «օրինավոր ժառանգ» խնդրելու պարթևական գահի համար։ «Որովհետև Արշակունիների ցեղից ոչ ոքի չէին պետության գլուխ դրել,— ասում է Տակիտոսը,— քանի որ մեծ մասը սպանված էր Արտավանի կողմից կամ թե դեռ չէր հասունացած, սրանք հրավիրեցին նաև այլ մեծամեծների ու Հռոմից պահանջում էին Փրաատ թագավորի որդի Փրաատին»[27]։

Սա լավագույն միջոցն էր Արտավանի ախորժակը չափավորելու համար։ Տիբերիոս կայսրը «շքազարդում է Փրաատին, և նախապատրաստելով հայրական թագի համար, գոտի է կապում նրան» [28]։ «Երբ Արտավանն իմանում է դավադրության մասին, վախը նրան կանգնեցնում է»,— հաղորդում է Տակիտոսը[29]։ Ահա այս հանգամանքն է, որ թուլացնում է պարթևների դիրքերը Հայաստանում, որտեղ Հռոմը ձգտում է ամրապնդել իր դիրքերը, այս անգամ արդեն հայկական գահի «օրինավոր ժառանգ» հայտարարելով վրացական արքայական տան ներկայացուցիչներին։

**Վրացական արքայական տան հավակնությունը Մեծ Հայքի գահին։** Պատմագրության մեջ անուշադրության է մատնված այն փաստը, որ Մեծ Հայքի գահի նկատմամբ իր հավակնություններն ուներ նաև վրացական արքայական տունը, որն իրեն արյունակից էր համարում Երվանդունիներին և Արտաշեսյաններին։ Այս հանգամանքը չի հասկացված ոչ Տակիտոսի, ոչ էլ մյուս անտիկ հեղինակների կողմից, որոնք անդրադառնում են այս դեպքերին։

Օգոստոս Օկտավիանոսի (մ.թ.ա.27—մ.թ.14) դրամը

Հարցը լուսաբանելու համար անհրաժեշտ է ներգրավել վրացական աղբյուրները, որոնք մեզ հասել են հատկապես XI դարի սկզբի հեղինակ Լեոնտի Մռովելու (Լեոնտիոս Ռուիսեցի) «Պատմություն վրաց թագավորների» (ცხოვრება ქართველთა მეფეთა)[30] աշխատության միջոցով։ Լեոնտի Մռովելին օգտվել է ոչ միայն Մովսես Խորենացու «Հայոց պատմություն»-ից, այլև վրացական կիսաավանդական-կիսապատմական տեղեկություններից, որոնք հավաքել և գրի է առել։ Վրացական ու հայկական պատմագրության տվյալների և Տակիտոսի, Դիոն Կասսիոսի, Հովսեպոս Փլավիոսի տեղեկությունների համատեղ ուսումնասիրությունը ցույց է

27 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 23 *Tacit.*, Annal., *VI, 31*։ Այս Փրաատ-Հրահատը Փրաատ-Հրահատ Դ թագավորի կրտսեր որդին էր։

28 *Tacit.*, Annal., *VI, 32*։

29 Նույն տեղում։

30 „ქართლის ცხოვრება", ტექსტი დადგენილი ყველა ძირითადი ხელნაწერის მიხედვით ს. ყაუხჩიშვილის მიერ, ტომი I (*այդուհետև* ქ. ც., I), თბილისი, 1955, էջ 3—71։

*տալիս, որ պատահական չէ այն փաստը, որ Փարսմանի եղբայր Միհրդատը համարվում էր հայկական գահի հավակնորդ։*

*Արդեն վրացական թագավորության սկզբնավորության շրջանից իսկ (մ. թ. ա. III—II դդ.) վրացական Փառնավազյան («Փառաւազեանք») դինաստիան հաճախ էր խնամիական կապերով կապվել հայկական թագավորական տների հետ։ Բնական է, որ երբ Արտաշեսյան հարստությունը դադարեց գոյություն ունենալուց, հարևան Վրաց աշխարհում թագավորող հարստությունը հանձին Փառնավազյան Փարսման Ա-ի, նրա եղբոր՝ Միհրդատի և որդու՝ Հռադամիզդի, կարող էր հայկական գահին հավակնել հենց դինաստիական կապերի հիման վրա։*

*Նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մ. թ. 1-ին թվականից Վրաց աշխարհի (Իբերիայի) թագավոր է հռչակվում Ադերկը (շուրջ 1—27 թթ.), որը Տիգրան Բ-ի ժամանակակից, Արտաշեսյան տոհմից սերված վրաց Արտակ թագավորի (66—65 թթ.) թոռնորդին էր։*

*Ադերկից սկսած վրացական գահի վրա վերստին բազմում են, հավանաբար, մոր կողմից, հայկական Երվանդունի-Արտաշեսյան դինաստիայի ներկայացուցիչները և նշանակալից է, որ հետևելով հայկական պատմական ավանդությանը, վրացական ավանդական պատմությունն այս դինաստիան անվանում է «Արշակունյան»* (არშაკუნიანნი)։ *Ադերկից հետո թագավորել են Տակիտոսի կողմից հիշատակված Միհրդատը (շուրջ 27—35 թթ.) և նրա որդի հայտնի Փարսմանը (35—74 թթ.)։ Վերջինիս կինն էր Մցխեթա մայրաքաղաքի 75 թվականի հունարեն արձանագրության մեջ հիշատակված* ’Ιαμασασποι *Համազասպուհին, որ հայ արքայադուստր եղած պետք է լինի, թերևս արդեն վերացած Արտաշեսյան դինաստիայի շառավիղներից*[31]։ *Սրանց որդին էր արքայազն Համազասպը, Տրայանոսի արշավանքների մասնակիցը (114—116 թթ)։ Համազասպուհի թագուհին էլ, ըստ երևույթին, Փարսմանի որդի, թագաժառանգ Հռադամիզդի խորթ մայրն էր*[32]։ *Վրացական աղբյուրները Համազասպուհու փոխարեն հիշատակում են միայն Փարսման թագավորի մի այլ կնոջ՝ Դադանային, որը «Հայոց թագավորի դուստրն էր»*[33] *և նրա որդուն, որի անունը մեզ աղճատված ձևով հասած «Ադամի»*[34] *կամ «Ղադամի»-ն է, որ պետք է ուղղել «[Ռ]ադամի»* [რ]ადამი *ձևով։ Վերջինս անտիկ աղբյուրների Հռադամիզդն է։*

*Տիբերիոս կայսրը մեծ լիազորություններով Արևելք ուղարկեց ճարպիկ ու համարձակ զորահրամանատար և դիվանագետ Լուկիոս Վիտելլիոսին, որին հաջողվեց հռոմեական ոսկու օգնությամբ պառակտում մտցնել հայերի ու պարթևների միջև։ Արտավան Գ-ի դեմ նա հրահրեց պարթևական գահի հավակնորդ Հրահատին (սա Հրահատ Դ-ի կրտսեր որդին էր), սակայն վերջինս մահացավ Ասորիքում, ուստի Վիտելլիոսը իր հետ վերցրեց պարթևական գահի մի այլ հավակնորդ, Տրդատին, որը Հրահատ Դ-ի թոռն էր։ Միևնույն ժամանակ*

---

31 *Տե՛ս* გ. წ ე რ ე თ ე ლ ი, მცხეთის ბერძნული წარწერა ვესპასიანეს ხანისა. *Г. В. Церетели,* Греческая надпись Мцхета эпохи Веспасиана, Тбилиси, 1958, *էջ 11—20։*

32 *Տե՛ս Г. А. Меликишвили,* К истории древней Грузии, Тбилиси, 1959, *էջ 343—344։*

33 *Տե՛ս* ქ. ც., *I, էջ 53։*

34 *Տե՛ս նույն տեղում, էջ 53—54։*

վրաց Միհրդատ թագավորը հրաման ստացավ ներխուժել Հայաստան[35]։ Եվ ահա այն ժամանակ, երբ Արտավան Գ-ը գրավում էր Կապադովկիան, Հայաստան ներխուժեց «հռոմեական կայսեր և ժողովրդի բարեկամ ու դաշնակից» վրաց թագավոր Միհրդատի որդի Փարսմանը, որը այդ դեպքերից քիչ հետո թագավորեց Վիրքում (35—74 թթ)։ Նա նպատակ ուներ դուրս քշել Արշակին և հայկական գահի վրա բազմեցնել իր եղբայր Միհրդատին՝ իբրև Արտաշեսյանների շառավիղ։ Այս Միհրդատին էլ խոստացել է Տիբերոս կայսրը հայկական գահը, որ դեռ հարկավոր էր նվաճել։

Միհրդատին հաջողվեց կաշառել պալատականներին և Արշակը թունավորվեց (35 թվական), որից հետո վրացական ու նրանց դաշնակից «սարմատական» զորքերը մտան Հայաստան ու գրավեցին Արտաշատ մայրաքաղաքը։ Սա արդեն վրացիների բացահայտ ելույթն էր պարթևների դեմ այն ժամանակ, երբ Արտավան Գ-ը իր զորամասերը ցրել էր Կապադովկիայի լեռներում ու կիրճերում։

Ստանալով իր որդու՝ Արշակի մահվան լուրը, Արտավան Գ-ը հանձնարարում է իր մյուս որդուն՝ Որոդեսին, վրեժ լուծել եղբոր սպանության համար, վրացիներին դուրս քշել Հայաստանից և տիրանալ հայկական գահին։

Որոդեսը ի մի է հավաքում բոլոր ուժերը և շռայլ նվերներ ուղարկում սարմատներին (հավանորեն ալանների) առաջնորդին, սրան իր կողմը գրավելու նպատակով[36]։

Սակայն, ինչպես Տակիտոսն է վկայում, սկյութական այս առաջնորդները նույնպիսի նվերներ էին ստանում Փարսման թագավորից և «ըստ իրենց ցեղի սովորության, օգնում էին և՛ մեկին, և՛ մյուսին»[37]։ Բացի դրանից, վրացիների դաշնակիցներն էին նաև աղվանները, իսկ այդ ժամանակաշրջանում նրանց հսկողության տակ էին գտնվում Կովկասյան լեռների բոլոր հիմնական լեռնանցները, որոնցով պիտի անցնեին սարմատները՝ պարթևներին օգնության հասնելու համար։

Տակիտոսը հաղորդում է, որ «հիբերները (այսինքն՝ իվերները կամ վրացիները) այդ տեղերի տերը հանդիսանալով, կասպյան ճանապարհով Հայաստանի վրա արագորեն բաց են թողնում սարմատներին, իսկ ովքեր գալիս էին պարթևներին օգնելու, հեշտությամբ ետ էին մղվում, որովհետև թշնամին փակել էր մյուս մուտքերը»[38]։

«Պարթևը դատում էր, թե կռվում է Արևելքի պետության և Արշակունիների փառքի համար ընդդեմ անհայտ հիբերի, իր վարձկան զորքով։ Փարսմանն ասում է, որ իրենք ենթակա չեն պարթևական տիրապետության։ Որքան ավելի ձգտեն, այնքան ավելի արժանապատվություն կվայելեն իբրև հաղթողներ,

35 Տե՛ս Dio, XXVI, 3, 4։

36 Այս «սարմատական» առաջնորդների թվում էր, ըստ երևույթին, նաև «Մազքթաց» Արշակունիների թագավորության այն գահակալը, որի մոտ ուզում էր ապաստան գտնել Հայաստանում թագավորած Վոնոնը։

37 Tacit., Annal., VI, 33։

38 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 27։ Tacit., Annal., VI, 53. Ըստ Հովսեպոս Փլավիոսի, իբերները և աղվանները «Կասպյան դռները բաց անելով ալանների առաջ, իրենց երկրի միջով ճանապարհ տվեցին նրանց Արտաբանոսի դեմ» (Jos. Flav., Antiq., XVIII, 97)։

իսկ եթե փախչեն, ավելի շատ խայտառակություն պիտի կրեն և ենթարկվեն ավելի մեծ վտանգի։ Միաժամանակ նա ցույց տվեց յուրայինների սարսափելի մարտաշարքը, մյուս կողմից՝ մեգերի ոսկով զարդարված զորքը և ավելացրեց. «այստեղ քաջերն են, իսկ այնտեղ՝ ավարը»[39]։

Տեղի ունեցած ճակատամարտերում վրացիները, նրանց դաշնակիցները՝ աղվաններն ու սարմատները հաղթեցին։ Օրոդեսը պարտության մատնվեց ու ծանր վիրավորվեց։ Արտավան Գ-ը շտապեց որդուն օգնության, բայց լուր տարածվեց, որ հռոմեական զորքերը՝ Վիտելլիոսի գլխավորությամբ, մոտեցել են Եփրատին և սպառնում են Միջագետքին։ Արտավան Գ-ը հարկադրված էր ետ դառնալ, բայց արդեն ուշ էր։ «Այսպիսով,— եզրակացնում է Հովսեպոս Փլավիոսը,— Հայաստանը շուտով վերանվաճվեց, քանի որ պարթևների երկիրը պատերազմով բռնկվեց, և այնտեղ բնակվող մարդկանցից լավագույնները սպանվեցին ու նրանց երկիրն ավերվեց, և թագավորի որդին այդ կռիվներում ընկավ ու նրա հետ բազում բյուրավոր զորք»[40]։

36 թվականին Վիտելլիոսին հաջողվում է Արտավան Գ-ի դեմ գրգռել պարթևական ավագանու մի մասը, որը պարթևական թագավոր է հռչակում Հռոմում պատանդ գտնվող և Վիտելլիոսի հետ Եփրատն անցած Տրդատ Գ-ին (Հրահատ Դ-ի թոռը)։ Թվում էր, թե Արտավան Գ-ի բոլոր հաղթանակները հօդս ցնդեցին։ Նա նույնիսկ հարկադրված է լինում փախչել Վրկանից երկիրը և մի տարի անց միայն (37 թվական) նրան հաջողվում է վերագրավել իր գահը[41]։ Վերադարձած Արտավանին վիճակված էր թագավորել միայն մեկ տարի. 38 թվականի մոտերքը նա մահանում է։ Սակայն Արտավան Գ-ին, այնուամենայնիվ, հաջողվել էր հաղթանակով պսակել իր պայքարը, պարթևական արևմտյան սահմանը հասցնելով մինչև Վերին Միջագետք։ Դա ամրապնդվում էր 37 թվականի դաշնագրով, որը քիչ է լուսաբանված գիտության մեջ։

**37 թվականի դաշնագիրը: Հայաստանի տերիտորիալ կորուստները:** Հռոմը վրաց Փառնավազյան դինաստիայի ներկայացուցիչ Միհրդատին հաստատելով հայկական գահի վրա, հանգստացավ, և օգտվելով ստեղծված վիճակից, ուզում էր պարթևական գահին նորից տիրած Արտավան Գ-ին հարկադրել, որ նա ճանաչի իր դրածոյի թագավորությունը Հայաստանում։

Տիբերիոս կայսեր կարգադրությամբ Վիտելլիոսը նորից հռոմեական լեգեոնները առաջնորդեց դեպի Եփրատ գետը և հաշտության բանակցություններ սկսեց Արտավան Գ-ի հետ։ Երկու բանակցող կողմերը հանդիպեցին Եփրատի ափին և հաշտության դաշինք կնքեցին։ Հովսեպոս Փլավիոսի հաղորդման համաձայն, Տիբերիոսը «ձգտում էր բարեկամություն հաստատել Արտավանի հետ» և վերջինս «հաճույքով ընդունեց» այդ։ Խաղաղության դաշինք կնքած Արտավանը, «որպես պատանդ Տիբերիոսին ուղարկում է իր Դարեհ որդուն՝ բազում ընծաներով»[42]։

---

39 Նույն տեղում, էջ 29 (տե՛ս Tacit., Annal., VI 34)։

40 Վերը հիշատակված գահի հավակնորդ Հրահատը քիչ առաջ հիվանդացել ու մահացել էր (տե՛ս Jos. Flav., Antiq., XVIII, 98)։

41 Տե՛ս Т. Моммзен, История Рима, т. V, М., 1949, էջ 342—343։

42 Հովսեպոս Փլավիոս, հայերեն թարգմ. Ս. Կրկյաշարյանի (ձեռագիր), էջ 39—94. Jos. Flav., Antiq., XVII, 101—102։

Ըստ այդ դաշնակցության, հռոմեական կայսրը Արտավան Գ-ին ճանաչում է Պարթևստանի թագավոր, իսկ Արտավանը Մեծ Հայքի թագավոր է ճանաչում Միհրդատին՝ վրաց Փարսման Ա թագավորի եղբորը։ Միաժամանակ նա ընդունում է Հռոմի հովանավորությունը Մեծ Հայքի թագավորության նկատմամբ։ Մեծ Հայքի թագավորը համարվում է «հռոմեական կայսեր և ժողովրդի բարեկամ ու դաշնակից» և գահ բարձրանալիս անպայման հաստատվում է հռոմեական կայսեր կողմից։

Սակայն պատմաբանները կանգ չեն առել մի այլ կարևոր հանգամանքի վրա։ Այս հաշտության պայմանագիրն այդքան միակողմանի չէր, ինչպես կարծում են. պարթևները կարողացան հռոմեացիներին ստիպել տերիտորիալ զիջումներ անել ի հաշիվ Հայաստանի։

Արտավան Գ-ը, պայքարելով Տրդատ Գ-ի դեմ, պատսպարվել էր Ադիաբենեի թագավոր Իզատեսի (35—59 թթ.) մոտ



Գերմանիկոս և Արտաշես Զենոն

Իզատեսը, որն իր մոր՝ Հելենե (Հեղինե) թագուհու հետ, ընդունել էր հրեական կրոնը, մեծ պատիվների ու պարգևների արժանացավ նորից գահին տիրած երախտապարտ Արտավանի կողմից, որը «նաև պարգևեց նրան ընդարձակ բերրի մի երկիր, այն վերցնելով հայոց թագավորից։ Այդ երկիրը,— գրում է Հովսեպոսը,— կոչվում է Նիսիբիս և այնտեղ նախկինում մակեդոնացիները կառուցել էին Անտիոք քաղաքը, որը կոչեցին նաև Եպիմիգդոնիա»։

Այս տեղեկությունից ակնհայտ է դառնում, որ պարթևա-հռոմեա-վրացական կռիվների ժամանակ Արտավան Գ-ը գրավել է Մեծ Հայքի հարավային ծայրամասը, որն ընկած էր Տիգրիս գետից հարավ։ Այդ երկրամասը Հայկական Միջագետքն էր[43]՝ Ամիդ քաղաքով, և Միգդոնիա-Արվաստան նահանգը՝ Մծբին քաղաքով, ընդամին նաև նրան կից Ծավդեքը (Zabdicenae— Տուր Աբդին գավառը), որոնց ընդհանուր տարածությունն էր շուրջ 18.000 քառ. կմ[44]։ Այսպիսով, ի հատուցումն զիջումների, պարթևներն ստանում են Մեծ Հայքից կորղված Միգդոնիա նահանգը՝ Մծբին քաղաքով, և այս կարևոր առևտրական կենտրոնի քաղաքային տերիտորիայով՝ Միգդոնիա-Արվաստանով, և Հայկական Միջագետքը միացվում է պարթևներից կախում ունեցող Ադիաբենեի թագավորությանը։

Մեծ Հայքի հարավում կատարված այս տերիտորիալ փոփոխությունների մասին տեղեկություններ են եղել նաև Պլինիոսի (23—79 թթ.) մեզ չհասած

43 Խորենացու մոտ պահպանված «Վիպասանքից» բերված ավանդական տեղեկությունների համաձայն Հայաստանը Միջագետքը կորցրել է Երվանդի թագավորության ժամանակ։ Այս Երվանդ թագավորը, ավանդության համաձայն, թիկունք է դարձնում հռոմեացիներին «թողնելով ի նոսա Միջագետս» (տե՛ս Խորենացի, Բ, լը)։ Ինչպես ճիշտ դիտում է Մ. Աբեղյանը (տե՛ս Երկեր, Ա, էջ 122), այս «Երվանդը» տվյալ դեպքում ներկայացնում է վրաց արքայական տան ներկայացուցիչ Հրադամիզդին։

44 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 118։

*«Պատմության» մեջ, որի հատվածները պահպանվել են նրա հանրահայտ «Բնական պատմության» („Naturalis historia“) մեջ[45]։ Այդ տեղեկություններից երևում է, որ 37 թվականի հռոմեա-պարթևական պայմանագրի համաձայն, երբ վերոհիշյալ գավառները հանվեցին Մեծ Հայքի թագավորության կազմից, ապա նրանք Արտավան Գ-ի կամքով կցվեցին Ադիաբենեի (Հեդայաբ) կախյալ թագավորությանը։ Ադիաբենեն, ըստ երևույթին, վերածվեց սահմանամերձ կուսակալության՝ բդեշխության։*

*Այս տերիտորիալ փոփոխությունները նկատի ունենալով, Մովսես Խորենացին հաղորդում է, որ Սանատրուկ թագավորի մահվանից հետո Միջագետքը, իր վերականգնված մայրաքաղաք Մծբինի հետ միասին, անցնում է հռոմեացիներին, ապա պարթևներին։ «Այս ժամանակվանից սկսած,— հաղորդում է նա,— Միջագետքի վրայից վերացավ հայոց իշխանությունը»[46]։*

*Խոսելով Մեծ Հայքի տերիտորիալ փոփոխությունների մասին, ըստ 37 թվականի դաշնագրի, անհրաժեշտ է նշել, որ հյուսիսում էլ անջատվեց և վրաց թագավորությանը միացվեց Մեծ Հայքի հյուսիսային կուսակալությունը՝ Գուգարքը, որն ընդգրկում էր վրացական մեսխ կամ մոսխ ցեղով բնակված Աճարա և Սամցխե գավառները[47] մինչև այժմյան Դվիրի գյուղը Կուր գետի ափին և նրա դիմաց՝ Ղադո (Մեսխական) լեռների փեշերին գտնվող Դեմոթի ամրոցը[48]։*

*Ըստ Ն. Բերձենիշվիլու կարծիքի, այժմյան Դվիրի գյուղի անունը առաջ է եկել հայերեն «դուռն» բառից[49], որովհետև մինչև 37 թվականը այդտեղ է գտնվել Մեծ Հայքը Վիրքից բաժանող սահմանը։ Սրանով էլ բացատրվում է, թե ինչու «Աշխարհացոյց»-ում, «Թուր գաւառը» (վրաց. «Թորի»), որը մտնում էր*

---

*45 Կարելի է նշել, որ Արևելքում տեղի ունեցած պատերազմական գործողությունների նկարագրության հիմնական աղբյուրը այս երկում եղել են Կորբուլոնի զեկուցագրերը։*

46 Խորենացի, *Բ, լը*։

*47 Գուգարքը Պտղոմեոսի (V, 12, 4) մոտ կոչվում է* Κωταρζηνή, *իսկ Ստրաբոնի մոտ (XI, 2, 18)՝ Մոսխիկե* (Μωσχική)։

*48 Ըստ վրացական ավանդական տվյալների, այս տերիտորիաները, այսինքն՝ Սամցխե գավառը մինչև Դեմոթի ամրոցը և այժմ էլ գոյություն ունեցող Դվիրի գյուղը, սահմանակից են եղել Վիրք-Քարթլիին սկսած Արտաշես Ա-ի (189—160) ժամանակներից, որից հետո նորից ետ են խլվել հայերից, անշուշտ նկատի ունենալով 37 թվականի սահմանային փոփոխությունները, երբ Գուգարական երկիրը վերադարձվեց Վիրքին (տե՛ս* გ. მამულია, გადმოცემები სუმბატ ბივრიტიანის შესახებ როგორც ლეონტი მროველის წყარო. *Տե՛ս նրան կից ռուսերեն ամփոփումը՝* Г. С. Мамулия, Предания о Сумбате Бивритиане, как источник Леонтия Мровели. „ძველი ისტორიის საკითხები (კავკასიურ-ახლოაღმოსავლური კრებული, III“). „Вопросы древней истории (кавказско ближневосточный сборник. III“), Тбилиси. 1970, *էջ 147—163)։ Տակիտոսը* (Annal., *26), անդրադառնալով այս տերիտորիալ փոփոխություններին, սահմանափակվում է անորոշ տեղեկությամբ, որ 60 թվականին հռոմեական հաղթանակներից հետո Մեծ Հայքի սահմանամերձ շրջանը տրվել է Փարսմանին։ Սակայն տերիտորիալ այս անջատումը Հայաստանից պետք տեղի ունենար արդեն 37 թվականին (թերևս նույնիսկ մ. թ. I դարի սկզբներին), երբ վրացական արքունիքը ակնկալություն ուներ հայկական գահին։ Այս ժամանակաշրջանից պետք է Իբերիան՝ վրաց թագավորությունը, ելք ունենար Պոնտական ծովի ափին՝ Ճորոխի դետաբերանի շրջանում (տե՛ս Г. А. Меликишвили,* К истории древней Грузии, *էջ 353—354)։*

*49 Տե՛ս* ნ. ბერძენიშვილი, საქართველოს ისტორიის საკითხები, წიგნი I, 1964, *էջ 247, 251։*

«Վերին աշխարհ վրաց» երկրամասը, այս գծով էր սահմանակցվում Սամցխե գավառին[50]։

Այսպիսով, Հայոց Միջագետքը և Գոդերձականը ընդմիշտ դուրս են մնում Մեծ Հայքի սահմաններից և այս թագավորության տերիտորիան այնուհետև ընդգրկում է այն տարածությունը, որ հայտնի է մեզ ըստ «Աշխարհացույց»-ի՝ շուրջ 285.000 քառ. կմ[51]։

## 4. ՀԱՅԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՀՌՈՄԵԱԿԱՆ ԴՐԱԾՈՆԵՐԻ ԴԵՄ

**Քաղաքական իրադրությունը Կալիգուլայի ժամանակ:** Տիբերիոսին հաջորդեց Կայոս Կեսար Գերմանիկոսը, որի մականունն էր Կալիգուլա (37—41 թթ.)։ Վերջինս իր իշխանության չորս տարվա ընթացքում բոլորովին նոր քաղաքականություն վարեց Արևելքում։ Կալիգուլան առաջին հերթին վերականգնեց Տիբերիոսի կողմից 17 թվականին հռոմեական պրովինցիաների վերածված Կոմմագենեի և Կապադովկիայի թագավորությունները, ըստ որում Կոմմագենեի թագավորությունը 37 թվականին վերականգնվեց ավելի ընդարձակ տերիտորիայով և հանձին Անտիոքոս Գ թագավորի որդու՝ Անտիոքոս Դ-ի[52] նորից քաղաքական ասպարեզ իջավ Կոմմագենեի հինավուրց դինաստիան, որը հայկական Երվանդունի հարստության ճյուղերից մեկն էր։

Վերականգնվեց նաև Փոքր Հայքի թագավորությունը։ Այստեղ թագավոր նշանակվեց Պոնտոսի Պոլեմոն Ա թագավորի թոռ Կոտիսը։ Վերջինս Պոլեմոնի դստեր՝ Տրիփոնիայի ու Թրակիայի Կոտիս թագավորի որդին էր և այդպիսով ազգական էր գալիս Զենոն-Արտաշեսին, ուստի հայ ավագանու մի մասը ցանկություն ուներ նորից Փոքր Հայքի գահը միացնել Մեծ Հայքի գահին և Կոտիսին դիտում էր որպես այդ միացյալ թագավորության թեկնածու։ Ըստ երևույթին, այդ ցանկությունը իրագործվել է. Կոտիսը 37—43 թվականների միջև համարվել է նաև Մեծ Հայքի թագավոր։ Պետք է ենթադրել, որ դա կատարվել է Կալիգուլայի համաձայնությամբ։

Կալիգուլայի այս քաղաքականության ճիշտ մեկնաբանությունը տալիս է Ակադ. Մանանդյանը։ Նրա կարծիքով, «Կապադովկիայի և Կոմմագենեի հռոմեական նահանգների վերածվելը, հավանորեն, մեծ դժգոհություն էր առաջ բերել տեղական արտոնյալ ազնվականության մեջ, և կարելի է ենթադրել, որ Արտավան Գ-ը, 36 թվականին Կապադովկիա արշավելուց առաջ, ուզքի էր հանել ու ապստամբեցրել այդ երկրները, որոնց մեջ ուժեղ էր իրանական տարրը։

50 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 53, 104 և գրքին կցված քարտեզը՝ Բ 5։

51 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 118։ Այս ժամանակաշրջանից մեզ-հասել է Պտղոմեոսի «Ասիայի երրորդ քարտեզը» (շուրջ 150 թ.), որտեղ Մեծ Հայքը ('Αρμενία Μεγάλη) ցույց է տրված մինչև 37 թվականի սահմաններում, իսկ ավելի ուշ շրջանի (VII դարի) «Աշխարհացույց»-ը տալիս է Մեծ Հայքի ամենամանրակրկիտ քաղաքական և վարչական բաժանման պատկերը, որ վերաբերում է 37-387 թվականներին։

52 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953. էջ 88։

Եվ գուցե հենց այդ խռովություններն էին եղել գլխավոր պատճառը Կալիգուլայի նոր քաղաքականության։ Առանձնապես ուշագրավ է այն, որ Կլավդիոսը ևս, Կալիգուլայի հաջորդը, որը հետևում էր Օգոստոսի և Տիբերիոսի քաղաքականության՝ հարկ չհամարեց միացնել Կոմմագենը և Փոքր Հայքը Հռոմեական կայսրության և այդ երկրները նաև նրա իշխանության ժամանակ մնացին իբրև առանձին թագավորություններ»[53]։ Համաձայնելով այս եզրակացության հետ, այնուամենայնիվ, հարկավոր է հիմնական շեշտը դնել այն հանգամանքի վրա, որ հռոմեական կայսրության զորամասերը սահմանափակ էին և հնարավորություն չէին տալիս բացահայտ նվաճողական քաղաքականություն վարելու, ուստի նորից գերադասելի էր կայսրության այս մասում շարունակել կախյալ թագավորությունների պահպանման սիստեմը, որոնք իրենց լոյալ էին պահում, կատարում էին իրենց վրա դրված պարտականությունները և որ գլխավորն է, շահագրգռված էին իրենց հայրենի երկիրը պաշտպանելու՝ պարթևների ներխուժման դեպքում։

Գիսակ Դիմաքսյան: Հայ ժողովրդի պայքարը երկրի անկախության համար: *Կալիգուլան Հռոմ կանչեց Հայաստանում թագավորող Միհրդատին, նրան կալանքի տակ առավ և ապա աքսորեց[54]։ Կայսեր այս գործողության դրդապատճառները մնում են անհայտ, աղբյուրների լռության պատճառով։ Տակիտոսի հաղորդումից երևում է, որ նա (պատմիչը) նախքան այս հաղորդել է Միհրդատի ձերբակալման մասին, սակայն նրա «Տարեգրությունների» այդ մասը չի պահպանվել։ Միհրդատի գահընկեցության մասին հայտնվել են զանազան կարծիքներ, որոնք, սակայն, զուրկ են գիտական հիմքից։ Այս հարցը պարզաբանելու համար անհրաժեշտ է նկատի ունենալ աղբյուրներում պահպանված տեղեկությունները այն մասին, որ Կալիգուլայի օրոք վերականգնված Փոքր Հայքի թագավորության գահակալ նշանակվեց Կոտիսը, որը պատանի հասակից մինչև կայսեր մահը եղել է նրա մտերիմ բարեկամը[55]։ Կարելի է ենթադրել, որ Կալիգուլան վերականգնեց այն վիճակը, որ գոյություն ուներ Զենոն-Արտաշեսի ժամանակ (18—34 թթ.), երբ Մեծ Հայքին էր միացված Փոքր Հայքի թագավորությունը։*

*Եթե այս ենթադրությունը ճիշտ է, ուրեմն Զենոն-Արտաշեսի քրոջ որդին՝ Կոտիսը, համարվել է Մեծ Հայքի և Փոքր Հայքի թագավոր 37—43 թվականների ընթացքում, այսինքն՝ վեց տարի։ Սակայն Կոտիսի թագավորությունը Մեծ Հայքում ունեցել է զուտ ձևական բնույթ և երկիրը փաստորեն կառավարվել է հայ ավագանու կողմից՝ Գիսակ Դիմաքսյան նահապետի գլխավորությամբ։*

*Այս վեց տարվա ժամանակաշրջանի մասին անորոշ կարծիքներ գոյություն ունեն։ Ինչպես եվրոպական, այնպես էլ հայկական պատմագրության մեջ, առանց փաստերը ստուգելու, պնդում են, իբր 37 թվականից առանց թագավոր մնացած Մեծ Հայքը դարձել է պարթևական մարզպանություն և 37—41 թվականներին կառավարվել է ինչ-որ պարթև մարզպան «Դեմոնաքսի» կողմից[56]։*

---

53 Հ. Մանանդյան, *Քննական տեսություն...*, հատ. Ա, էջ 317։

54 Տե՛ս *Tacit.*, Annal., *XI*. 8; *Dio*, *LIX*, 3; *Seneca*, Dia., *IX*, 11, 12։

55 Տե՛ս *Sueton.*, Calig., 20։

56 Տե՛ս *Г. А. Халатьянц*, Очерки истории древней Армении, М., 1910, էջ 264։

*Այսպես պնդողները մոռանում են այն անտերունչ վիճակը, որ ստեղծվել էր Պարթևստանում այդ ժամանակ։ 38 թվականին մահանում է Արտավան Գ-ը և նորից ծայր են առնում գահակալական կռիվները։ Պարթևական գահին տիրանալու համար պայքարում էին երկու եղբայրները՝ Գոտարզը (Գոդերձը) և Վարդանը, որոնք Ատրպատականի Վոնոն թագավորի որդիներն էին։ Այս Վոնոնը Արտավան Գ-ի եղբայրն էր և վերջինիս կողմից էր նշանակվել Ատրպատականի թագավոր։ Այս երկպառակությունները շարունակվեցին Վարդանի (42—45 թթ.) և Գոտարզի (45—51 թթ.) թագավորության ողջ ընթացքում։ Միայն Վոնոն Բ-ի կարճատև թագավորությունից հետո (51 թվական) պարթևական գահ է բարձրանում վերջինիս որդին՝ խոշոր քաղաքական գործիչ, շրջահայաց և խոհեմ Վաղարշ Ա-ը (51—75 թթ.)։ Վերջինս, վճռական միջոցների դիմելով, կարողացավ Մեծ Հայքի թագավորության հարցը լուծել, որով երկար ժամանակ խաղաղություն տիրեց Արևելքում։*



Օգոստոս Օկտավիանոս և Արտավազդ 4-րդ

*Այս փաստերը ցույց են տալիս, որ 37 թվականից հետո, մինչև Վաղարշ Ա-ի գահակալությունը, հայերը չէին կարող հույս դնել պարթևների վրա, որոնք նորից թուլացել էին գահի շուրջը ծագած ներքին երկպառակությունների հետևանքով։ Հաստատվում է Հ. Մանանդյանի բացատրությունը։ Նա գրում է, որ «Դեմոնաքսը, որի անունը Տակիտոսի մոտ աղճատված է, հայ իշխան է և Հայաստանի սպարապետն է, որն այս խառն ու անտերունչ շրջանում աշխատել է պահպանել Հայաստանի անկախությունը...։ Հայերը, հույս չունենալով օգնություն ստանալ պարթևներից, Հայաստանի անկախությունը փորձեցին պաշտպանել սեփական ուժերով և հռոմեա-իբերական միացյալ ուժերին դիմադրեցին Դեմոնաքսի առաջնորդությամբ»[57]։ «Ըստ երևույթին,— շարունակում է Մանանդյանը,— նրանք ուզում էին հայկական գահը հանձնել Փոքր Հայքի թագավոր Կոտիսին, որը Զենոն-Արտաշես Գ-ի քրոջ որդին էր»։ Դեմոնաքսն* (Demonax praefectus), *ըստ Հ. Մանանդյանի, «կարող է լինել*

57 Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հատոր Ա, էջ 318—319։*

*Դիմաքսյան հին տոհմի իշխաններից մեկը, որ նույն այս ժամանակաշրջանի կապակցությամբ հիշատակված է Խորենացու պատմության մեջ»[58]։*

*Մանանդյանի այս եզրակացությունը հաստատվում է նաև այլ փաստերով։ Այս պայքարի և Դիմաքսյանների մասնակցության մասին աղոտ տեղեկություններ են պահպանվել, բացի Մովսես Խորենացուց, նաև Զենոբ Գլակի կամ Հովհան Մամիկոնյանի «Պատմութիւն Տարօնոյ» երկում, որտեղ ուշադրություն է գրավում հետևյալ հատվածը. «Դեմետր և Գիսանեն հնդկաց իշխաններ էին և ծագումով եղբայրներ։ Սրանք դավադրություն են սարքում իրենց Դինաքսե թագավորի դեմ, որը իրազեկ լինելով, զորք է ուղարկում նրանց դեմ, որպեսզի նրանց կամ սպանեն, կամ աքսորեն երկրից։ Իսկ նրանք, մազապուրծ լինելով, գալիս են Վաղարշակ թագավորի մոտ, և նա նրանց իշխանությանն է հանձնում Տարոնի երկիրը»[59]։*

*«Գիսանէ» անունը ավանդությունը ստուգաբանում է՝ «զի գիսաւոր էր, վասն այնորիկ նորա պաշտաւնեայքն գէսս էին թողեալ»[60], իսկ Գիսակ կամ Գիսանէ անունը կապվում է տոհմական «Դիմաքսեան» անվան[61] և «Դիմաքսեան նահապետութեան» հետ, որով և իր բացատրությունն է ստանում «Տարօնի պատմութեան» մեջ հանդիպող «Դինաքսե» կամ «Դինասքե» ձևով հանդիպող անունը՝ իբրև թագավորի անուն։ Վաղարշակը իր հերթին նույնանում է պարթևաց արքայից-արքայ Վաղարշ Ա-ի (51—75 թթ.) եղբոր՝ Մեծ Հայքի թագավոր Տրդատ Ա-ի հետ։ Ահա այս «Դինաքսե»||«Դինասքե» թագավորն է, որ առնչվում է Տակիտոսի* Demonax praefectus *և Խորենացու «Դիմաքսեան»-ի հետ։ Այսպիսով, նոր հենարան է ստանում Հ. Մանանդյանի այն եզրակացությունը, որ վրաց Փարսման թագավորի և նրա եղբոր՝ Միհրդատի, ու որդու՝ Հռադամիզդի դեմ համաժողովրդական պայքարը ղեկավարել է հիրավի Գիսակ Դիմաքսյանը։*

---

58 *Նույն տեղում, էջ 320։ Մովսես Խորենացու «Հայոց պատմության» երկրորդ գրքում պահպանվել է մի ամբողջ հյուսվածք ժողովրդական ավանդությունների, որոնք երգվել են ու հայտնի էին «Հայոց երգ վիպասանաց» անունով* (Մ. Աբեղյան, Երկեր, *հատ. Ա, էջ 115)։ Ժողովրդական ստեղծագործության մեջ միահյուսվել են տարբեր պատմական ժամանակաշրջանների դեպքերը, և վերագրվել են մեկ հավաքական անձնավորության՝ «Արտաշէս»-ին։ Խորենացու «Հայոց պատմության» երկրորդ գրքի ԽԶ գլխում միահյուսվում են հիմնականում երկու պատմական դեպք՝ Արտաշես Ա-ի պայքարը Երվանդունիների հարստության վերջին թագավոր Երվանդի հետ և Տրդատ Ա Արշակունու կռիվները ալանների դեմ։ Ահա սրանց ժամանակակիցն է այդ գրույցներում հիշատակված Գիսակ Դիմաքսյանը։*

59 Հովհան Մամիկոնյան, *Պատմութիւն Տարօնոյ։ Աշխատությամբ և առաջաբանով Աշոտ Աբրահամյանի, Երևան, 1941, էջ 107—109։ Տե՛ս նաև՝ С. Т. Еремян,* О некоторых историко-географических параллелях в «Повести временных лет» и «Истории Тарона» Иоанна Мамиконяна, «Исторические связи и дружба украинского и армянского народов» (сборник материалов второй украинско-армянской научной сессии), Киев, 1965, *էջ 158—159*

60 *Տե՛ս նույն տեղում, էջ 109։*

61 *Գիսակը՝ «որդի սննդեան Արտաշիսի», հալածելով պատերազմում նրա ախոյան Երվանդին, ժանր վիրավորվել է՝ «կէս դիմաց նորա ի վայր բերեալ սուսերաւ, զյաղթութիւն ստացեալ. մեռանի ի վերայ այսպիսեացս։ Ահա այստեղից է առաջ եկել, ըստ Մովսես Խորենացու ստուգաբանության, «Դիմակիսեան»—«Դիմաքսեան» տոհմանունը։*

Վրացական կիսաավանդական և կիսապատմական տեղեկությունները ցույց են տալիս, որ դեռևս Երվանդ Վերջինի (220—201) և Արտաշես Ա-ի (189—160) ժամանակ Հայաստանին էր միացվել Մեսխերի երկրի այն մասը, որն ընդգրկում էր Սամցխե և Աճարա գավառները[62]։ Ինչպես տեսանք, այստեղ գոյություն ուներ Մեծ Հայքի թագավորության սահմանապահ կուսակալություն, որը կոչվում էր «Գոդերձական» (համապատասխանում է Պտղոմեոսի Κο:αρζηνή-ին), որը մ. թ. 37 թվականի պայմանագրի համաձայն նորից անցավ Իբերիայի թագավորությանը՝ Վրաց աշխարհին։ Այդ դեպքից հետո այս երկրի կառավարիչները, անշուշտ պիտի հեռանային այդտեղից։ Անհավանական չէ, որ վերը բերված ավանդությունը հենց այդ դեպքի մասին է խոսում։ Ըստ այդ ավանդության, Դինասքե թագավորից փախչում և գալիս են Վաղարշակի (Տրդատ Ա-ի) մոտ Դեմետրե և Գիսանե եղբայրները, որոնք ստանում են Տարոնը իբրև ժառանգական կալվածք։ Գիսանեն ապստամբ Գիսակ Դիմաքսյանն է, որի տոհմը ապաստանում է Տայքի Բուխա գավառում[63]։ Այստեղ էին հետագայում «Գառհնամակում» և «Ջորանամակում» հայտնի «Բոխա Դիմաքսեանք»[64], իրենց կենտրոն Բողբերդ ամրոցով (այժմ՝ Բուղա-Կալա)։ Այս եզրակացությունները ցույց են տալիս, որ «Դինասքե» անունը[65] նույն Դիմաքսյանների տոհմական անունն է և զրույցի մեջ շփոթված է տեղական (իմա՝ վրացական) թագավորի հետ։

Իր երկրամասից և կալվածքներից զրկված Գիսակ Դիմաքսյանը (Գիսանե—Դեմոնաքս) պետք է գլխավորեր հայ ժողովրդի պայքարը Միհրդատի դեմ՝ հայկական գահի օրինավոր թեկնածու համարելով Զենոն-Արտաշեսի քրոջ որդի՝ Փոքր Հայքի թագավոր Կոտիսին։

**Կլավդիոս կայսեր քաղաքականությունը Հայաստանում:** Կալիգուլայի հաջորդ Կլավդիոսը (41—51 թթ.) հայկական հարցում շեշտակիորեն փոխեց իր նախորդի քաղաքականությունը. վերադարձավ Օգոստոսի և Տիբերիոսի գծին։ Հայաստանը Հռոմի հովանավորության ներքո պահելու նպատակով նա նորից օգտվեց իբերների ծառայություններից։ 43 թվականին կալանքից ազատելով Միհրդատին, օժանդակ հռոմեական զորքով ուղարկում է Հայաստան, ըստ որում առաջարկում է Փարսման Ա թագավորին, որ նա իր եղբայր Միհրդատին օգնի՝ հայկական գահին նստելու։

---

62 Տե՛ս Յ. Ց., I, էջ 47։

63 Տե՛ս С .Т. Еремян, О некоторых историко-географических параллелях..., էջ 158։

64 Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПБ. 1908, էջ 263։

65 Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել, որ «Դինասքէ» անունը մեգրելա-ճանական լեզվով է բացատրվում իբրև «Դինոսքուա», որ նշանակում է «իշխանազն», «ազնվական» կամ բառացի «Դինո ցեղի որդի»։ (Տե՛ս Н. Я Марр, Книжные легенды об основании Куара в Армении и Киева на Руси. Н. Я. Марр Избранные работы, т. V, էջ 63)։ Հավանաբար «Դիմաքսյան»-ի (Դիմաքսէ) նախնական ձևը պիտի լինի «Դինասքէ»-ն։ Եթե նկատի ունենանք, որ Դիմաքսյանները սկզբնական շրջանում, Կողքիս-Եգերաց աշխարհի հարևան Գոդերձական երկրամասի կառավարիչներն էին, պարզ է, թե ինչու այս անունը բացատրվում է մեգրելա-ճանական լեզվով։ Դիմաքսյանների նախնին՝ Գիսակը կամ Գիսանեն Գոդերձականից Հայաստան է փախել 37 թվականից հետո, երբ այդ երկրամասն ընդմիշտ մտավ Վրաց-Իբերիայի թագավորության կազմի մեջ։

*Երբ Միհրդատը հռոմեական զորքով մտավ Հայաստան, այստեղ նրան հանդիպեց զինված ժողովուրդը՝ Գիսակ Դիմաքսյանի գլխավորությամբ, և Փոքր Հայքի Կոտիս թագավորի հետ միասին համառ դիմադրություն ցույց տվեց անկոչ հյուրին։ Տակիտոսի ասելով՝ «Միթրիդատին պատեհ առիթ տրվեց գրավելու Հայաստանը, ընդ որում ամրացված բարձունքները պիտի ոչնչացվեին հռոմեական զինվորների ուժով, միաժամանակ իբերների (վրացիների) զորքերը պիտի ասպատակեին դաշտերը*[66]*։ Այդ ժամանակ, պատմագրի ասելով, «հայերը չդիմադրեցին, երբ ճակատամարտի հանդգնած պրեֆեկտ Դեմոնաքսի* (Demonax praefectus) *ուժերը ցրվեցին»*[67]*։ Երկրի սպարապետի ուժերը ցրվում են, ըստ երևույթին, այն պատճառով, որ տարաձայնություն է առաջ գալիս հայ ավագանու մեջ, որի մի մասը հակված էր Հռոմի և նրա դրածոների կողմը և Միհրդատի հետ կապեր էր ստեղծել նրա թագավորության սկզբնական շրջանում։ Հայկական ավագանու ազդեցիկ մասը համախմբվել էր Կոտիսի շուրջը և փորձում էր դիմադրել թշնամուն, սակայն ինքը՝ Կոտիսը, Փոքր Հայքի և Մեծ Հայքի թագավոր էր դարձել հռոմեական կայսեր շնորհիվ և իր գործողությունների մեջ զուրկ էր ինքնուրույնությունից և վճռականությունից։ Տակիտոսը հաղորդում է, որ Դեմոնաքսի պարտվելուց հետո Միհրդատը արդեն հաղթանակ էր տարել, սակայն Կոտիսը իր շուրջը համախմբված հայ ավագանիով շարունակում էր դիմադրությունը։ «Փոքր ինչ դանդաղեցրեց գործը Փոքր Հայքի թագավոր Կոտիսը, որի կողմն էին անցել մեծամեծներից ոմանք»։ Սակայն Տակիտոսի ասելով, Կոտիսը զսպվեց շնորհիվ Կեսարի նամակի, և բոլորն անցան Միհրդատի կողմը*[68]*։ Կոտիսը մնում է միայն իբրև Փոքր Հայքի թագավոր։ Դրանից հետո հռոմեական ու վրացական զորքերը ընկճում են հայերի դիմադրությունը (43 թվական) և տիրանում երկրի կարևորագույն պաշտպանական կետերին։ Արյունահեղ մարտերից հետո Միհրդատը վերստին հաստատվում է հայոց գահի վրա և թագավորում մոտ չորս տարի (47—51 թթ.)։*

**Փարսման Ա և Հռադամիզդ։** *Բարդ էր վիճակը վրացական արքունիքում՝ Մցխեթացում։ Փարսման Ա-ը, որը գահ էր բարձրացել իր հոր՝ Միհրդատի (27—35 թթ.) մահից հետո, խոշոր քաղաքական և ռազմական դեմք էր։ Հիրավի, նրա ժամանակ առաջին անգամ փոքրիկ Իբերիայի թագավորությունը դուրս է գալիս միջազգային քաղաքականության ասպարեզ։ Սակայն, որքան էլ մեծ լիներ Վրաց թագավորության օժանդակությունը հռոմեական նվաճողական քաղաքականությանը Արևելքում, այնուամենայնիվ, Հռոմը շահագրգռված չէր, որ Իբերիա-Վիրքը դառնար ուժեղ պետություն, ուստի նրան ձեռնտու էին այն թշնամական փոխհարաբերությունները, որ հետզհետե խորանում էին Միհրդատի և Փարսմանի միջև*[69]*։*

*Փառնավազյանների միջև ծագած գահակալական և ընտանեկան վեճերը*

---

66 Տակիտոս, *հայերեն թարգմ., էջ 43։ Tacit.*, Annal., *XI, 9։*

67 *Նույն տեղում։*

68 *Տե՛ս նույն տեղում, էջ 45։ Tacit.*, Annal., *XI, 9։*

69 *Տե՛ս Г. А. Меликишвили*, К истории древней Грузии, *էջ 341։*

միայն խրախուսվում էին Հռոմի գործակալների կողմից։ Մի քանի տարուց հետո, 51 թվականին, Փարսմանը իր գահի հավակնորդ Հռադամիզդ որդուն հրահրում է Հայաստանում թագավորող եղբոր՝ Միհրդատի դեմ։ Սակայն, եթե Փարսմանը պատերազմեր ընդդեմ Միհրդատի, այդ կնշանակեր, որ նա հռոմեական շահերի դեմ է դուրս գալիս, ուստի հարկավոր էր արտաքուստ ցույց տալ, թե ինքը եղբոր դեմ պայքարում է, ելնելով հռոմեական պետության շահերից[70]։

Հայաստանում թագավորող Միհրդատը Փարսմանի եղբայրն էր և միևնույն ժամանակ նրա փեսան՝ դստեր ամուսինը, իսկ սրանցից ծնված աղջիկը՝ Զենոբիան, Փարսմանի որդի՝ գահաժառանգ Հռադամիզդի կինն էր։ Արքունիքում միևնույն ժամանակ պայքար էր գնում Փարսմանի երկու կանանց՝ Համազասպուհի և Դադանա թագուհիների միջև։ Համազասպուհին ատում էր Հռադամիզդին և գահաժանգ էր համարում իր դեռահաս Համազասպ որդուն, իսկ Դադանան ամեն կերպ հրահրում էր Հռադամիզդին գրավելու հոր գահը։ Հռադամիզդը որոշ կողմնակիցներ ուներ թե՛ երկրի ներսում և թե՛ նրանից դուրս։ Տակիտոսը հաղորդում է, որ Փարսմանն իր ծերության պատճառով վախենում էր ճարպիկ կարողության տեր պատանուց, որը հենվում էր իր համերկրացիների ուժեղ համակրանքի վրա[71]։ Այսպիսի պայմաններում հասկանալի է, որ Փարսմանը պետք է աշխատեր ըմբոստ որդուն մի կերպ հեռացնել արքունիքից։

Փարսմանը իր որդուն ներշնչում էր, որ պետք խուսափել Միհրդատի դեմ բացահայտ պատերազմից, որովհետև այդ կնշանակեր պատերազմել հռոմեացիների դեմ, որ Իբերիայի ուժերից վեր էր, բայց կարելի է այդ նպատակին հասնել դավադրաբար։

Ահա այսպիսի հանձնարարություններով 51 թվականին Հռադամիզդը «ձևացնելով, թե գժտված է հոր հետ՝ իբր թե խորթ մոր ատելությունը չտանելու պատճառով ուղևորվում է հորեղբոր մոտ», այսինքն՝ Հայաստանի թագավոր Միհրդատի մոտ, որը նրան ընդունում է «իբրև որդու մեծ սիրալիրությամբ ու հարգանքով»։ Օգտվելով այս վստահությունից, Հռադամիզդը կապեր է հաստատում Միհրդատից դժգոհ հայ ավագանու հետ, որը չէր կարողանում տանել հռոմեական դրածոյի դաժանությունները, և «գայթակղեցնում է հեղաշրջում կատարելու»[72]։

Միհրդատի դեմ հող պատրաստելով հայ մեծամեծների մեջ, Հռադամիզդը, հոր հետ հաշտվելու պատրվակով, վերադառնում է հայրենիք։ Վերադարձած Հռադամիզդը Փարսմանին հայտնում է. «Ինչ որ կարելի էր կատարել նենգամտությամբ, պատրաստ է, մնացածը պետք է զենքով ձեռք գցել»[73]։

Փարսմանը պետք է պատերազմ հայտարարեր Միհրդատին, բայց այնպես, որ այդ չդիպչեր հռոմեացիների շահերին, և պատրվակը գտնվում է։ Նա իր մարդկանց միջոցով Միհրդատին հայտնում է իր դժգոհությունը նրա հան-

---

70 Տե՛ս նույն տեղում։

71 Տե՛ս Տակիտոս. հայերեն թարգմ., էջ 55։ Tacit., Annal., XII, 44։

72 Նույն տեղում։

73 Նույն տեղում։ Tacit., Annal., XII, 45։

դեպ և ավելացնում, որ «երբ ինքը կռվում էր աղվանների դեմ և օգնության էր կանչում հռոմեացիներին, եղբայրը նրան ընդդիմանում էր», ուստի «ինքն այդ վիրավորանքի համար պիտի գնա վրեժ առնելու և կործանելու նրան»[74]։

Փարսմանը մեծ զորք է ուղարկում Հռադամիզդին, որը հանկարծակի ներխուժում է Հայաստան։ Անհաբեկված Միհրդատը փակվում է Գառնիի անմատչելի ամրոցում, որն «ապահով էր թե՛ տեղադրության և թե՛ հռոմեական կայազորի պաշտպանության հետևանքով»[75]։

Գառնիում տեղավորված հռոմեացի կայազորի հրամանատարներն էին պրեֆեկտ Կելիոս Պոլիոնը և ցենտուրիոն Կասպերիոսը։

Չկարողանալով վերցնել պաշարված Գառնին, Հռադամիզդը կաշառում է ագահ պրեֆեկտ Կելիոս Պոլիոնին։ Հրավիրվում է ռազմական գաղտնի խորհրդակցություն, որտեղ կաշառված հռոմեական պրեֆեկտի դեմ դուրս է գալիս ցենտուրիոն Կասպերիոսը։ Վերջինս աղերսում է՝ «թույլ չտալ, որ դաշնակից թագավորը և հռոմեական ժողովրդի նվեր՝ Հայաստանը, տապալվեն հանցագործության և կաշառակերության պատճառով»[76]։

Սակայն Պոլիոնը մատնանշում է իբերական զորքի մեծաքանակությունը, իսկ Հռադամիզդը ազդարարում է, որ հոր հրամանով է եկել։ Ցենտուրիոն Կասպերիոսը, որը հռոմեական իշխանության ներկայացուցիչն էր երկրում և պատասխանատու էր այդ գործողությունների համար, խնդրում է պատերազմական գործողությունները հետաձգել, և զինադադար կնքելով հեռանում է, որպեսզի, եթե չկարողանա վախեցնել Փարսմանին, ետ կանգնեցնել պատերազմից, տեղեկացնի Ասորիքի կառավարիչ Ումիդիոս Քվադրատոսին, թե ինչ գրության մեջ է Հայաստանը[77]։

Իրադրությունը բարդանում է։ Ցենտուրիոն Կասպերիոսը անմիջապես ուղևորվում է վրաց աշխարհ, գալիս Փարսմանի մոտ և «ազդու կերպով պահանջում է, որպեսզի փոքրերը հետ կանգնեն պաշարումից»[78]։ Փարսմանը երկմիտ և գիջող պատասխաններ է տալիս Հռոմի ներկայացուցչին և միևնույն ժամանակ գաղտնի սուրհանդակների միջոցով Հռադամիզդին հաղորդում է՝ շտապեցնել Գառնիի գրավումը ինչ գնով էլ լինի։ Այդ նույն ժամանակ պրեֆեկտ Պոլիոնը ամեն կերպ հորդորում է Միհրդատին ընդունել զինադադարը, և այդ միջոցով հաջողվում է Միհրդատին իր ապաստարանից դուրս բերել։ Հռադամիզդը գրկախառնվում է նրա հետ «երդվելով, թե բռնություն չի գործադրի, ոչ Ցրով, ոչ էլ թույնով»[79]։ Եվ Հռադամիզդը՝ «իբրև թե հավատարիմ իր երդմանը, իր քրոջ ու հորեղբոր դեմ չգործադրեց ոչ թուր, ոչ էլ թույն, այլ սպանում է նրանց՝ գցելով գետին և ծածկելով բազմաթիվ ու ծանր գորգերով»։ Սպանվում են նույնպես Միհրդատի որդիները, «որովհետև ողբացել են ծնողների սպանությունը»[80]։

---

74 Նույն տեղում։

75 *Tacit.*, Annal., *XII*, *45*։

76 Նույն տեղում։

77 *Տե՛ս* Տակիտոս, *հայերեն թարգմ.*, *էջ 57*։

78 Նույն տեղում, էջ 59։ *Tacit.*, Annal., *XII*, *46*։

79 Նույն տեղում, էջ 59։ *Tacit.*, Annal., *XII*, *47*։

80 Նույն տեղում, էջ 61։ *Tacit.*, Annal., *XII*, *47*։

Ահա այս ոճրագործության գնով Հռադամիզդը նստում է հայկական գահի վրա, իսկ Փարսմանը ազատվում է իր անհանգիստ որդու հավակնություններից։ Սակայն, այդ հանգիստը նա վայելում է միառժամանակ միայն։

Ցենտուրիոն Կասպերիոսը, որը Միհրդատի և Հռադամիզդի միջև ժամանակավոր զինադադար կնքելուց հետո գնացել էր Փարսմանի մոտ՝ համոզելու վերացնել Գառնիի պաշարումը և Միհրդատին թողնել հայկական գահի վրա, համոզվում է, որ իր ջանքերը իզուր են անցնում։ Նա կանգնում է կատարված փաստի առջև, ուստի և մեկնում է Ասորիք ու կառավարիչ Ումիդիոս Քվադրատոսին տեղեկացնում Հայաստանում տիրող վիճակի մասին։ Վերջինս հրավիրում է խորհրդակցություն և հաղորդում, որ «Միթրիդատը դավաճանորեն սպանված է և թագավորությունը գրավել են մարդասպանները», և խորհուրդ է հարցնում՝ «արդյոք վրեժ չառնի՞»։ Բայց ու. ինքը՝ Ումիդիոս Քվադրատոսը այլ կարծիք է հայտնում. «Բոլոր արտաքին հանցագործությունները պետք է ուրախությամբ ընդունվեն, նույնիսկ ատելության սերմեր պետք է ցանել, ինչպես հաճախ հռոմեական պրինցեպսները հենց նույն Հայաստանը՝ առատաձեռնության պատրվակի տակ՝ շնորհել են, բարբարոսներին՝ նրանց ոգին խառնակելու նպատակով։ Թող իշխի Հռադամիզդը հանցանքով ձեռք բերվածին, միայն թե լինի ատելի, փառազուրկ, որովհետև այդ ավելի ձեռնտու է, քան թե նա փառքով արտաքսված լիներ»[81]։ Պատմագրի ասելով «Այդ կարծիքը հավանություն ստացավ։ Սակայն, որպեսզի չթվա, թե հանցանքը խրախուսվել է և կայսրը տարբեր կարգադրություն չանի, Փարսմանի մոտ ուղարկվում են սուրհանդակներ, ասելու, որ նա հեռանա Հայաստանի սահմաններից ու հետ կանչի իր որդուն»[82]։ Տակիտոսի կողմից հռոմեական այս պաշտոնյային վերագրված խոսքերը Հռոմի «բաժանիր, որպեսզի տիրես» (divide et impera) քաղաքականության սկզբունքի լավագույն արտացոլումն են։

Չնայած նրան, որ Ումիդիոս Քվադրատոսը Փարսմանին և նրա որդուն՝ Հռադամիզդին, կարգադրել էր թողնել Հայաստանն ու հեռանալ, այնուամենայնիվ, Կապադովկիայի կուսակալ Պելիգնոսը, կաշառված լինելով Հռադամիզդից, անցնում է նրա կողմը և անձամբ 51 թվականին նրան թագադրում է Արտաշատում։

Այս բոլոր գործողությունները Հռոմին վարկաբեկում էին Արևելքի ժողովուրդների աչքում։ «Երբ այս խայտառակության լուրը տարածվեց, և որպեսզի ուրիշները հռոմեացիների մասին կարծիք չկազմեն Պելիգնոսի օրինակի հիման վրա, ուղարկվում է լեգատ Հելվիդիուս Պրիսկուսը մի լեգեոնով, որպեսզի միջոցներ ձեռք առնի երկրում նորից բարձրացող խառնակությունների դեմ»։ Տակիտոսի ասելով լեգատը «շտապ անցնելով Տավրոսի լեռները», ավելի խաղաղեցնում է իր չափավորությամբ, քան բռնի ուժով։

81 Նույն տեղում։

82 Նույն տեղում, էջ 61—63։ Tacit., Annal., XII, 48։

## 5. ՏՐԴԱՏ ԱՐՇԱԿՈՒՆԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՀԻ ԹԵԿՆԱԾՈՒ

**Պարթևների նոր հզորացումը Վաղարշ Ա-ի օրոք:** *Այս ժամանակամիջոցում, Արտավան Գ-ի մահից հետո սկսված գահակալական կռիվները պարթևների մոտ վերջանում են։ 51 թվականի կեսերին մահացել էր Գոտարզը (Գոդերձը), և նրան հաջորդեց Վոնոն Բ-ը, որը Արտավանի եղբայրն էր և նստած էր Ատրպատականի գահի վրա։ Վոնոն Բ-ը պարթևական գահի վրա մնաց նստած ընդամենը մի քանի ամիս և մահացավ, թողնելով երեք որդի՝ Վաղարշ, Բակուր և Տրդատ եղբայրներին։ Վերջին երկուսի՝ Բակուրի և Տրդատի, համաձայնությամբ իր հորը՝ Վոնոն Բ-ին պարթևական գահի վրա հաջորդեց ավագ որդին՝ Վաղարշ Ա-ը (51—75 թթ.)։ Սա պարթև Արշակունիների դինաստիայի ամենաուժեղ և ամենաեռանդուն պետական ու զինվորական գործիչներից էր։ Սրա ժամանակ Պարթևստանը նորից հասնում է իր հզորության գագաթնակետին։*

*Վաղարշ Ա-ի ժամանակ մեծ շարժում է սկսվում հունականության դեմ, նույնիսկ աշխարհագրական անունների բնագավառում։ Այսպես, օրինակ, «Ալեքսանդրիա Արաքոզիայի» քաղաքը սկսվում է անվանվել տեղական՝ «Փանջվեյ» կամ «Անտիոքիա Մարգիանան» այնուհետև կոչվում է տեղական «Մարվ» անունով և այլն։ Պարթևական դրամների վրա հունարեն գրությունները փոխարինվում են պարթևականով՝ տեղական արամեական գրի տառատեսակներով։*

*Նույն այդ ժամանակ մեծ հետաքրքրություն է առաջ գալիս դեպի ժողովրդական ավանդությունները, էպոսը, երգերը և բանավոր գրականությունը։*

*Վաղարշ Ա-ի օրոք գրի են առնվում «Ավեստայի» կարևոր մասերը, կազմըվում նրա առաջին խմբագրությունը։ Հետագայում տեղի է ունենում սրանց կանոնացումը և վեր է ածվում «զրադաշտականության»՝ իբրև որոշ կրոնական համակարգի, որը այնուհետև դառնում է պետական կրոն։ Օրեցօր հզորացող մազդեական կրոնի՝ զրադաշտականության կենտրոնն են դառնում Ատրպատականի մայրաքաղաք Գանձակը (այժմ՝ Լայլան գյուղը)[83] և Ֆրաասպան կամ Գիշը (արաբական աղբյուրների Ջիշը կամ Շիզը)[84]։*

*Վաղարշ Ա-ը նույնիսկ փորձ արեց իր մայրաքաղաքը հելլենացված Տիզբոնից փոխադրել Եփրատի աջ ափին հիմնադրած Վոլոգեսակերտ (Վաղարշակերտ) քաղաքը, որտեղ ժամանակի ընթացքում պիտի փոխադրվեր Պալմիրայի միջազգային առևտուրը, սակայն հաջողություն չունեցավ[85]։*

*Վաղարշ Ա-ը, իբրև խոշոր պետական գործիչ, իր եղբորը՝ Բակուրին, նշանակեց Ատրպատականի թագավոր, իսկ Տրդատին որոշել էր թագավորեցնել*

---

83 *Այստեղ էր գտնվում «զրադինս Հրատին Մեծի. որում Վշասպն կոչեին» (տե՛ս «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, էջ 93)։*

84 *Համաձայն Մովսես Կաղանկատվացու տեղեկության (Բ, Ժ), այս «Գայլ ատանց-ում ամբոցներ կային և շոգ ամիսներին պարսից թագավորների կողմից այն ընտրված էր իբրև հովասուն ու առողջարար վայր և գտնվում էր Մարաստանի սահմաններում (տե՛ս* Մովսես Կաղանկատվացի, *Պատմություն Աղվանից աշխարհի (աշխարհ. թրգմ., Երևան, 1965, էջ 100)։*

85 *Տե՛ս М. Е. Массон,* Народы и области южной части Туркменистана в составе Парфянского государства, «Труды ЮТАКЭ», т. V, Ашхабад, 1955, *էջ 14—15։*

Հայաստանում, որով պիտի իրագործվեր Արտավան Գ-ի ծրագիրը՝ Հայաստանը դարձնել պարթևական երկրորդ թագավորություն և դրանով իսկ ամրապնդել այնտեղ պարթևների քաղաքական ազդեցությունը։

**Տրդատ Ա Արշակունու թագավորումը Մեծ Հայքում:** Հայաստանում հռոմեացիների վարած քաղաքականության հետևանքով ծայրահեղ դժգոհություն էր տիրում նրանց դեմ։ Հենց այս հանգամանքը օգտագործեց Վաղարշ Ա-ը։

Տակիտոսը հաղորդում է, որ «Վոլոգեսը (Վաղարշը) կարծում էր, որ հասել է առիթը հարձակվելու Հայաստանի վրա, որը իր նախնիների տիրապետության տակ էր[86] և որին տիրում է օտար թագավորը՝ շնորհիվ զազրելի արարքի»[87]։

Պարթևների այս քաղաքական ծրագրի իրագործումը լրիվ համապատասխանում էր Հայաստանում տիրող տրամադրություններին՝ ծայրահեղ ատելություն դեպի Հռոմը և համակրանք պարթևների հանդեպ։ Հայաստանի հայրենասեր վերնախավի պահանջը՝ Փոքր Հայքի թագավոր Կոտիսին նշանակել Մեծ Հայքի թագավոր, փաստորեն մատնվում է անհաջողության։ Եթե Հռոմի ծերակույտը Կոտիսին նույնիսկ ճանաչել է Մեծ Հայքի թագավոր, ապա այդ ունեցել է ձևական բնույթ։ Բավական էր Հռոմից նոր ցուցում ստանալ, որպեսզի նա հրաժարվեր Մեծ Հայքի գահից և լքեր հայ ավագանուն, որը պայքարում էր վերստին թագավորած Միհրդատի, ապա Հռադամիզդի դեմ։ Ահա այս հանգամանքներն էին պատճառը, որ հայ ավագանին, որին Վաղարշ Ա թագավորը խոստանում էր երկրում կայուն իշխանություն ստեղծել, վճռականորեն անցավ պարթևների կողմը։ Հայ հայրենասերների հիմնական մասի անցումը պարթևների կողմը Տակիտոսը ուզում է բացատրել նրանով, որ «հայերը տեղադրությամբ և բարքերի նմանությամբ պարթևներին ավելի մոտ էին կանգնած և խառնված էին նրանց հետ ամուսնություններով»[88]։ Սակայն հայերի պարթևական կողմնորոշման հիմնական պատճառը այս չէր, այլ այն, որ Վաղարշ Ա-ը կարողացել էր վերջ տալ գահակալական կռիվներին։

Տրդատին թագավոր նշանակելու լուրը Հայաստանում ցնծությամբ է ընդունվում։ Երբ Տրդատը, պարթևական զորքի գլուխ անցած, 52 թվականին մտնում է Հայաստան, երկրի գլխավոր քաղաքները՝ Արտաշատն ու Տիգրանակերտը, հոժարակամ հանձնվում են նրան։ Հռադամիզդը մազապուրծ փախչում է Իբերիա—Վրաց աշխարհը, իր հոր՝ Փարսման Ա-ի մոտ։

Տակիտոսի ասելով «Ռադամիստին չէր մնում այլ միջոց, քան ապավինել ձիերի արագավազությանը»[89]։ Արագավազ ձիեր հեծած՝ շտապում էին Արտաշատից հեռանալ ինքը՝ Հռադամիզդը, և իր կինը՝ Զենոբիան, որը հղի էր։ Սոսկալի ցավեր զգալով և վախենալով, որ կընկնի թշնամու ձեռքը և անարգանքի կմատնվի, նա աղաչում է իր ամուսնուն, սպանել իրեն։ Հռադամիզդը «սիրո ազդեցության տակ և անծանոթ չլինելով հանցագործություններին... մերկացնում է ակինակը (արևելյան թուրը) և վիրավոր կնոջը քարշ է տալիս Արաքսի

86 Ըստ երևույթին, նկատի ունի Աքեմենյանների տիրապետությունը Հայաստանում։

87 Tacit., Annal., XII, 50։

88 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 73։ Tacit., Annal., XII, 34։

89 Նույն տեղում։ Tacit., Annal., XII, 51։

ափ ու հանձնում գետին, որպեսզի նույնիսկ մարմինը տարվի, հեռանա»։ Ինքը գլխապատառ սլանում է հայրենական թագավորությունը՝ Իբերիա։ Սակայն հովիվները տեսնելով դեռ շնչող մարմինը, փրկում են Զենոբիային, «կապում են նրա վերքը և գործադրում են գյուղական դեղամիջոցներ. անունը և արկածը իմանալուց հետո տանում են նրան Արտաքսատա (Արտաշատ) քաղաքը. այնտեղից հասարակական ծախքով կինն ուղարկվում է Տիրիդատի մոտ, ընդունվում է սիրալիր և ապրում է թագավորական կենցաղով»[90]։ Տրդատի արքունիքում էր ապրում հղի Զենոբիան, երբ ազատվեց և արու զավակ ունեցավ։ Վրացական աղբյուրների համաձայն, Հռադամիզդ-Ռադամին թագավորեց երեք տարի և մահացավ, թողնելով մեկ տարեկան արու զավակ, որի անունն էր Փարսման[91]։ Վրացական աղբյուրների այս տեղեկությունը վերաբերում է Հռադամիզդի թագավորությանը Մեծ Հայքում, որը տևել է մոտավորապես երեք տարի (51—54 թթ.) և այդպիսով, իմանում ենք, որ Զենոբիայից ծնված զավակի անունն էր Փարսման, որը հետո թագավորեց Վրաց աշխարհում իբրև Փարսման Բ (100—114 թթ.)։

Գալով վրացական արքունիք, Հռադամիզդը երկար չի մնում հայրենիքում և նոր ռազմական ուժով գալիս է Հայաստան՝ Տրդատին հեռացնելու մտադրությամբ, և այդ հաջողվում է նրան։ Դաժան ձմեռը, պարենամթերքի պակասությունը և բռնկված ժանտախտը պարթևներին ստիպում են նահանջել։ 53 թվականին ներխուժելով Հայաստան, նա վերադարձնում է իր գահը, ըստ երևույթին, կնոջն ու որդուն։ Հռադամիզդը ժողովրդի հետ վարվում է «ավելի դաժանորեն, քան առաջ, որպես դավաճանների, որոնք առաջին իսկ հարմար առիթին կարող են նորից ընդվզել»։ Սակայն նա երկար չի վայելում իր հաղթանակի պտուղները։ 54 թվականին ժողովուրդը ապստամբում է և զենքը ձեռքին պաշարում պալատը։ Հռադամիզդը մի կերպ խուսափելով մահից, նորից փախչում է Իբերիա, իր հետ տանելով, ըստ երևույթին, կնոջն ու երեխային։

Վրացական արքունիքում Հռադամիզդը նորից դիմում է բոլոր միջոցներին, որպեսզի տիրանա հոր գահին և նրան հաջողվում է այդ։ Պահպանվել է «Մոքցեվայ Քարթլիսայ» արքայացանկի լակոնիկ հաղորդումը. «եվ թագավորում էր Ղադամին (պիտի լինի՝ Ռադամին) 20 օր»[92]։ Ինչպես երևում է, Հռադամիզդը, վրացական արքունիքում հենվելով իր կողմնակիցների վրա, գահազուրկ է արել հորը՝ Փարսման Ա-ին, սակայն վերջինս կարողացել է հաղթել իր ըմբոստ որդուն. 20 օր թագավորելուց հետո վերջինս սպանվում է։ Տակիտոսի հաղորդման համաձայն՝ «Փարսմանը սպանելով իր որդի Ռադամիստին, իբրև դավաճանի, որպեսզի դրանով վկայվի նրա հավատարմությունը դեպի մեզ, հայերի վրա ավելի եռանդուն կերպով էր թափում իր հին ատելությունը»[93]։

Սակայն, ինչպես երևում է, Փարսմանը Ա-ը անմիջապես չի վերականգնվել

---

90 Տակիտոս. Հայերեն թարգմ., էջ 65—67։ Tacit., Annal., XII, 51։

91 Տե՛ս ქ. ც. I, էջ 54։

92 და მეფობდა ლადამი: და დღე კ: მოქცევაჲ ქართლისაჲ, II, იც, „ძველი ქართული აგიოგრაფული ლიტერატურის ძეგლები", წიგნი I (V—X სს.), თბილისი, 1963, էջ 83։

93 Տակիտոս, նույն տեղում, էջ 77։

իր գահի վրա։ Անհայտ պատճառներով կարճ ժամանակ թագավոր է հռչակվել Հռադամիզդի մեկ տարեկան որդի Փարսման Բ-ը, բայց փաստական կառավարիչն է եղել Փարսման Ա-ի կինը և Հռադամիզդի մայրը՝ Դադանա թագուհին։ Ինչևիցե, 55 թվականի մոտերքը Փարսման Ա-ը նորից Իբերիայի գահի վրա է և ծառայում է հռոմեացիներին։ Նա մեսխերին ուղարկում է ներխուժելու Հայաստան, որտեղ 54 թվականին նորից իր զորքով եկել էր Տրդատը։ Մեսխերը այն քարթվելական ցեղն էր, որը 37 թվականի պայմանագրով Իբերիա-Վիրքին անցած Գոդերձական երկրի հիմնական ազգաբնակչությունն էր։ Ինչպես վկայում է Տակիտոսը. «Հռադամիզդին սպանելուց հետո առաջին անգամ մեր կողմը գրավված մոսխերը հարձակվեցին Հայաստանի հեռավոր վայրերի վրա»։ Ապա ավելացնում է, որ «Այս ցեղն ուրիշներից ավելի հավատարիմ է հռոմեացիներին»[94]։

---

94 Նույն տեղում, *Tacit*., Annal., *XIII*, *37*։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԻՆՆԵՐՈՐԴ

# ՏԱՍՆԱՄՅԱ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ԵՎ ՀԱՅ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ԶՈՐՔԵՐԻ ՄԻՋԵՎ: ՏՐԴԱՏ Ա ԱՐՇԱԿՈՒՆՈՒ ԳԱՀԱԿԱԼՈՒՄԸ

## 1. ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԿՈՐԲՈՒԼՈՆԻ ԳԼԽԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ

**Պատերազմի նախապատրաստումը:** *54 թվականին Տրդատը, ինչպես տեսանք, պարթևական զորքի գլուխ անցած, առանց դիմադրության հանդիպելու, նորից գրավում է Հայաստանը։ Հռոմեական օկուպացիոն բանակը խուսափելով պարթևների հետ ընդհարումից, մինչև այդ արդեն հեռացել էր Ասորեստան։ Ահա այս ժամանակ է, որ Կլավդիոսը մահանում է և գահ է բարձրանում Ներոնը (54—68)։*

*Սկզբնական շրջանում, քանի դեռ նախկինի պես կառավարության ղեկը գտնվում էր գահակալի մոր՝ Ագրիպինեի ձեռքին, Հռոմի քաղաքականությունը Հայաստանի հանդեպ մնում էր նույնը, ինչպիսին Կլավդիոսի օրոք էր։ Հայաստանը կառավարվում էր Հռոմից ուղարկվող երկու պաշտոնյաների՝ պրեֆեկտի և ցենտուրիոնի ձեռքով, որոնց թելադրանքով էլ վարում էր իր քաղաքականությունը Մեծ Հայքի թագավորը։ Երբ Ներոնը գահ բարձրացավ, իբրև պրեֆեկտ Հայաստան ուղարկվեց ոմն Լելիանոս, որը, ինչպես հաղորդում է Դիոն Կասսիոսը, ավելի լավ չէր, քան Պոլիոնը և ավելի ագահ էր ու դրամաշորթ, քան իր նախորդը[1]։ Լելիանոսի ներկայությունը Հայաստանում ունեցավ միայն բացասական հետևանքներ։*

*Վերաբերմունքը Հայաստանի հանդեպ արմատապես փոխվեց, երբ մեկ տարի անց, իշխանությունը փաստորեն իրենց ձեռքը վերցրին Ներոնի դաստիարակ, հռչակավոր Սենեկան և պրետորիաների պրեֆեկտ Բուռը։*

*Պարթևական զորքերի կողմից Հայաստանի գրավումը և Տրդատի գահ բարձրանալը փաստորեն նշանակում էր պատերազմ Հռոմի դեմ, որի դրածո Հռադամիզդը ստիպված էր փախուստի դիմել։*

*Ներոնը գործի դրեց հռոմեական հետախուզության ու դիվանագիտության ողջ ապարատը։ Հռոմեական լեգեոնները հայտնվեցին Եփրատի ափին։ Ներոնը*

---

1 *Տե՛ս* Dio LXI. *6. 6*։

Մեծ Հայքին սահմանակից կախյալ թագավորություններում ուժեղացնում է հակապարթևական և հակահայկական տարրերը։ Կոտիսը հեռացվում է Փոքր Հայքի գահից և նրա փոխարեն թագավոր նշանակվում Արիստոբուլոսը, Քաղկիդիկեի (Խալկիդիկեի) թագավորի որդին՝ Հերովդես Մեծի սերնդից։ Ծոփքը, որի վերնախավը հելլենականացած էր և հռոմեական կողմնորոշում ուներ, 55 թվականին անջատվեց Մեծ Հայքից և կրկին վերածվեց առանձին թագավորության։ Ներոնը Ծոփաց աշխարհի թագավոր նշանակեց Սոհեմոսին, որը, սակայն, պիտի թագավորած լինի միայն մինչև Հռանդեայի 63 թվականի համաձայնագիրը[2]։ Այնուհետև Ծոփքը, իբրև առանձին թագավորություն, այլևս չի հիշատակվում։ Կոմմագենեի, Քաղկիդիկեի և Իբերիայի թագավորներ Անտիոքոս Դ-ին, Ագրիպպային և Փարսման Ա-ին հրաման էր տրված զորքերը մարտական վիճակում պահել։ Վերջապես, Կապադովկիայի կուսակալ, լեգատ և հռոմեական զորքերի գլխավոր հրամանատար է նշանակվել խոշոր զորավար և քաղաքական գործիչ Գնեյոս Դոմիտիոս Կորբուլոնը[3]։ Նրա հրամանատարության ներքո պետք է կռվեին նաև Հռոմի դաշնակից թագավորները։ Կորբուլոնը Արևելք ժամանեց 55 թվականին։

Վաղարշ Ա-ի դեմ հռոմեացիները դուրս են բերում նոր հավակնորդ՝ մեռած պարթևական թագավոր Վարդանի որդուն։ Նույն այդ ժամանակ հեռավոր Վրկանում նոր ապստամբություն է ծագում։ Վաղարշ Ա-ը հարկադրված է լինում ամբողջ ուշադրությունը դարձնել իր թագավորության հյուսիս-արևելյան երկրամասերի վրա։ Կորբուլոնը դեսպաններ է ուղարկում Տիզբոն, որպեսզի հաշտության բանակցություններ սկսի Վաղարշ Ա-ի հետ։ Միաժամանակ վերջինիս մոտ նման դեսպանություն է ուղարկում նաև Սիրիայի լեգատ Ումիդիոս Քվադրատոսը։ Ստեղծված պայմանների ճնշման տակ, իր եղբայր Տրդատին օգնության հասնելու հնարավորությունից զրկված, Վաղարշ Ա-ը 55 թվականին ստիպված է լինում վերականգնել պարթևական արքունիքի նախկին փոխհարաբերությունները Հռոմի հետ և պատանդներ ուղարկել։ Տակիտոսը գոհունակությամբ հաղորդում է, որ «Պարթևները հեռացան Հայաստանից. կարծես թե պատերազմը հետաձգվում էր»[4]։ Պատմագրի ասելով, «Վոլոգեսը, որպեսզի թե՛ պատերազմին նախապատրաստվի, թե՛ պատանդների անվան տակ իրենից հեռացնի կասկածելի մրցակիցներին, հանձնում է Արշակունիների ընտանիքից ամենաերևելիներին»[5]։

Ահա այս եղանակով հռոմեական կայսրությունը ժամանակավոր հավասարակշռություն հաստատեց, որպեսզի հնարավորություն ունենա պատերազ-

---

2 Վ. Շուր, Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը, Վիեննա, 1930, էջ 20, 37։ Այս Սոհեմոսը Ծոփաց արքայական դինաստիայի շառավիղն էր և հռոմեացիների կողմից ստեղծված Էմեսա քաղաքի փոքրիկ «թագավորության» գահակալը։

3 Թերևս սա է, որ հայկական ավանդություններում հիշատակվում է «Դոմետ» անունով (տե՛ս Խորենացի, Բ, ծդ)։ Ինքը՝ Խորենացին, «Դոմետ» ասելով հասկանում է Դոմիտիանոս կայսրին։

4 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 69։ Tacit., Annal., XIII, 9, 7։

5 Նույն տեղում, էջ 71։ Tacit., Annal., XIII,, 9։

մին պատրաստվելու[6]։ Ամբողջ 56 թվականը Կորբուլոնը գտնվում էր պատերազմական պատրաստությունների մեջ[7]։

Օ. Վ. Կուդրյավցևը սխալ է համարում գրականության մեջ գերիշխող այն կարծիքը, թե իբրև Կորբուլոնը և Քվադրատոսը 56 թվականին զբաղված էին Տրդատի հետ բանակցություններ վարելով և որ իբր նրանք փաստորեն ճանաչել էին նրա թագավորությունը Հայաստանում։ Պարզվում է, որ հռոմեա-պարթևական բանակցությունների ժամանակ Տիզբոնում Հայաստանը առհասարակ չի հիշատակվում։ Հռոմեացիները այս խնդրում ոչ մի պարտավորություն չեն ստանձնում և միայն ձգտում են որ պահպանվի անորոշ իրադրությունը։ Ամբողջ այս գործողությունները միայն միջոց էին, որ անակնկալի եկած Հռոմը ժամանակ շահի և պատերազմական պատրաստություններ տեսնի։ Վաղարշը, իր կողմից, մնում է այն կարծիքին, որ Մեծ Հայքի գահը պետք է գրավի իր եղբայր Տրդատը։ Տակիտոսի ասելով՝ «Վոլոգեսը թույլ չէր տալիս, որ իր եղբայր Տիրիդատը հեռացվի այն թագավորությունից, որը ինքն էր տվել նրան կամ թե ուրիշ պետությունից ընդունի այն իբրև նվեր»[8]։

Կորբուլոնը արձակում է Ասորիքից բերված անգործությունից ծուլացած և զորական կենցաղին խորթացած զինվորներին։ Տակիտոսը հաղորդում է, որ «Զորահավաք կատարվեց Գալատիայում ու Կապադովկիայում, ավելացրին Գերմանիայից մի լեգեոն, ինչպես նաև օժանդակ հեծելազոր ու հետիոտն կոհորտներ»[9]։

57 թվականին Կորբուլոնն արդեն լիովին պատրաստ էր ռազմական ներխուժում կատարելու Հայաստան։ Խարբերդի դաշտից նա գերադասում է Հայաստանի հյուսիսում ընկած Սատալայից դեպի Արտաշատ տանող ճանապարհը ոչ միայն նրա համար, որ այդ տեղերը մոտ էին Պոնտական ծովափին և հեշտ էր զորքերի պարենավորումը[10], այլև նրա համար, որ այստեղից ճանապարհը տանում էր ուղղակի դեպի Հայաստանի սիրտը՝ Այրարատը և Արտաշատ մայրաքաղաքը, որտեղ գտնվում էին Տրդատը և հայկական ավագանուց նրան հարած համախոհները։ 57—58 թվականների ձմեռը նրա բանակն անց է կացնում Կարնո դաշտում, անշուշտ, Էլեգիայի ջերմուկների (հայկ. Եղեգիս, այժմ՝ Իլիջա) առողջարար և բարեբեր վայրում։

58 թվականի գարունը բացվելուն պես Կորբուլոնը սկսեց ռազմական գործողությունները։ Տրդատ թագավորը միայնակ, զուտ հայկական ուժերով պետք է կռվեր հռոմեացիների դեմ, քանի որ Վաղարշ Ա-ը զբաղված էր Վրկանում ծագած ապստամբությունը ճնշելով։ Տրդատը խուսափում էր բաց ճակատամարտից և պարտիզանական կռվի բնույթ էր տալիս պատերազմին, ջլատելով թշնամու ուժերը, դժվարացնելով պարենի և անասնակերի մատակարարումը։ Կորբուլոնն էլ, իր հերթին, իր զորքը տրոհել էր առանձին ջոկատների, որոնք հետ էին մղում հայերի առանձին հարձակումները։ Միաժամանակ, արևմուտ-

6 Տե՛ս О. В. Кудрявцев, Римская политика в Армении и Парфии в первой половине правления Нерона, էջ 60։

7 Տե՛ս նույն տեղում, էջ 61։

8 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 71—73։ Tacit., Annal., XIII, 35։

9 Նույն տեղում, էջ 73։ Tacit., Annal., XIII, 35։

10 Տե՛ս նույն տեղում, XIII, 39։

քից Հայաստան ներխուժեցին Կոմմագենեի, Փոքր Հայքի և Ծոփքի թագավորների իրենց զորքերով, իսկ հյուսիսից՝ հենիոխների և մաքելոնների թագավորի հրոսակախմբերը։ Սրանց հետևեցին Փարսման Ա-ի գլխավորությամբ ներխուժող մոսխերն ու իբերները։

Տրդատը դժվար կացության մեջ ընկավ և ոչ մի տեղից օգնություն չստանալով, հաշտության բանակցություններ սկսեց Կորբուլոնի հետ։ Տրդատի պատվիրակները հարց էին տալիս, թե ինչո՞ւ 55 թվականին կնքված հաշտության պայմանագրից հետո «ինքը Տրդատը պիտի վտարվի Հայաստանի հին տիրապետություններից», և հիշեցնում էին նաև, որ «Եթե հռոմեացիները պիտի պնդեն պատերազմի վրա, Արշակունիներին չի պակասի ոչ արիություն, ոչ էլ բախտ, որ հռոմեացիները շատ հաճախ փորձել են կրած պարտություններում»[11]։

Կորբուլոնին քաջ հայտնի էր այն աննպաստ վիճակը, որում գտնվում էին Տրդատը և Վաղարշը, նա գիտեր, որ վերջինս «հապաղում է օգնության գալ Տրդատին Հիրկանիայի (Վրկանաց աշխարհ) անջատման պատճառով», ուստի առաջարկում է Տրդատին «գնալ խնդրել կայսեր, և նա կարող է կայսրից ստանալ հաստատուն թագավորություն»[12]։

Կորբուլոնի այս առաջարկն ուներ իր խորը պատճառները։ Պատերազմի պաշտոնական ծրագիրն այն էր, որ «Լուկուլլոսի և Պոմպեոսի երբեմնի նվաճած երկիրը հետ ստացվի»[13], այսինքն՝ վերականգնվի այն իրավական վիճակը, որ ստեղծվել էր Մեծ Հայքի թագավորության և Հռոմի միջև՝ Տիգրան Բ Մեծի և Պոմպեոսի մ. թ. ա. 66 թվականին Արտաշատում կնքած հաշտության պայմանագրի համաձայն։ Կորբուլոնը այս առաջարկը արել էր Տրդատին, որպեսզի վերջինից մերժում ստանա և հիմք ունենա մեղադրելու, որ պատերազմական գործողության նախահարձակը եղել են հայերն ու պարթևները։

**Կորբուլոնի արշավանքը դեպի Արտաշատ և նրա ավերումը:** Համոզվելով, որ պարթևները և Տրդատը համաձայն չեն իր առաջարկին, Կորբուլոնը շարունակեց պատերազմական գործողությունները։ Գարունը բացվելուն պես նա իր բանակով Կարինից շարժվեց դեպի Արտաշատ։ Բասենը, Բագրևանդը անցնելուց և Կոգովիտ գավառը մտնելուց հետո, հռոմեական բանակի առջև ծառացավ Հայկական պարի պատնեշը, որտեղից Գայլատու լճից դեպի արևելք ընկած Ջորի լեռնանցքը տանում է դեպի Արարատյան դաշտը և Արտաշատ մայրաքաղաքը։

Մանանդյանը ճիշտ որոշել է հռոմեական զորքերի անցումը Հայկական պարով դեպի Արտաշատ՝ Կուջաղի կամ Քարվանսարայի լեռնանցքով, որտեղ գոյություն ուներ ամրությունների մի ամբողջ շարք[14]։ Նրա կարծիքով, այստեղ էր գտնվում Տակիտոսի մոտ հիշատակվող Վոլանդ ամրոցը (castellum Volandum),[15] որի պաշարումը Կորբուլոնը անձամբ ղեկավարեց և գրավեց այն։

11 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 77—79։ Tacit., Annal., XIII, 37։

12 Տակիտոս, նույն տեղում, էջ 79։ Tacit., Annal., XIII, 37։

13 Նույն տեղում, էջ 73։ Tacit., Annal., XIII, 34։

14 Տե՛ս Հ. Մանանդյան, Հին Հայաստանի գլխավոր ճանապարհներն ըստ Պևտինգերյան քարտեզի, Երևան, 1936, էջ 35։ Նույնի, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Ա, էջ 335։

15 Volandum-ը ըստ երևույթին «Գայլատու» անվան սխալ տարադարձությունն է։

*Գայլատու լեռնանցքի ամրությունները գրավելուց հետո հռոմեական բանակը իջնում է Արարատյան դաշտը, որտեղ Երասխի ափին գտնվում էր Արտաշատ մայրաքաղաքը։*

*Հռոմեական նվաճողները տեղական բնակչությանը դիտում էին իբրև սրտենցիալ ստրուկների, որոնց կարելի էր գերեվարել և վաճառելով՝ մեծ միջոցների տեր դառնալ։ Կորբուլոնը իր բանակով անցնում է հայկական գավառները, ահաբեկելով տեղական բնակչությանը։ Տակիտոսի ասելով՝ «ամրությունները գրավվեցին գրոհով ու բոլոր չափահասները (այսինքն՝ զենք կրելու և կռվելու ընդունակները) սրախողխող եղան», իսկ «անռազմունակ ժողովուրդը ստրկության վաճառվեց. մնացած ավարը հաղթողներին անցավ»[16]։*



Գառնիի հունարեն արձանագրությունը

*Հռոմեական զորքը Մասյացոտն գավառով շարժվում է «արքունի պողոտայով» դեպի Արտաշատ, և պիտի անցներ Արաքս գետը այժմյան Խոր Վիրապի մոտ գտնվող Տափերական կամրջով, սակայն այստեղ նրան սպասում էր մայրաքաղաքը պաշտպանող հայկական զորամասերի դիմադրությունը, ուստի Կորբուլոնը գերադասեց շրջանցել այդ վայրը «հեռու տեղից ու ավելի լայն ծանծաղուտներով»։[17]*

*Մանանդյանի ճիշտ ենթադրությամբ, հռոմեական բանակը անցել է Վարդանակերտ ավանի գետանցով (այժմյան Մարգարայի կամրջի մոտ) և այնտեղից մոտեցել Արտաշատին[18]։ Տրդատը, որ խուսափում էր կռվի բռնվել հռո-*

16 Տակիտոս, *Հայերեն թարգմ., էջ 83։ Tacit.*, Annal., *XIII, 39։*

17 Նույն *տեղում։ Tacit.*, Annal., *XIII, 40։*

18 Հ. Մանանդյան. *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Ա, էջ 335։*

մեական զորքերի հետ և բավարարվում էր մանր հարձակումներով, Արտաշատի մատույցներում հարձակվում է թշնամու բանակի վրա, սակայն պարտվում է և շտապում հեռանալ Հայաստանից ու պատսպարվել Ատրպատականում։

Տրդատի հեռանալուց հետո Արտաշատի դռները բացվում են, և քաղաքը անձնատուր է լինում Կորբուլոնի ողորմածությանը[19], ենթադրում են, որ 58/59 թվականի ձմեռը հռոմեական զորքը անց է կացրել Արտաշատում[20]։ 59 թվականի գարնանը Կորբուլոնը իր բանակով որոշում է շարժվել «արքունի պողոտայով», որը անցնում էր Հայաստանի միջով և Արտաշատը միացնում Տիգրանակերտի հետ, և վերցնել երկրի երկրորդ մայրաքաղաքը։

Նախապես, սակայն Կորբուլոնը պետք է ապահովեր իր թիկունքը Արտաշատի կողմից։ Հռոմեական զորավարը դիվական ծրագիր է իրագործում. կործանում է Հայաստանի բարգավաճ մայրաքաղաքը։ Տակիտոսը ջանում է արդարացնել նրան. «Արտաքսատան,— գրում է նա,— հրդեհվեց, քարուքանդ արվեց և հավասարվեց հողին, որովհետև պարիսպների ձգվածության պատճառով առանց ուժեղ պահակազորի չէր կարելի պահել այն, ոչ էլ մենք այնքան ուժ ունեինք, որ զորքը բաժանվեր թե՛ պահակազորն ուժեղացնելու և թե՛ պատերազմը վարելու համար, իսկ եթե մայրաքաղաքն անվթար մնար և առանց պահակզորի, ոչ մի օգուտ և փառք չկար նրանից, որ քաղաքն առնված է»[21]։

Արտաշատի նվաճումը մեծ ցնծություն առաջ բերեց Հռոմում։ «Այս հաղթության պատճառով,— գրում է Տակիտոսը,— Ներոնը բարձրաձայն ողջունվում է իբրև իմպերատոր, ծերակույտի որոշմամբ մաղթանք է կատարվում, որոշվում է պրինցեպսի համար արձաններ կանգնեցնել, հաղթակամարներ կառուցել և տալ շարունակական կոնսուլություններ, որոշվում է, որ տոնական հայտարարվեն թե՛ տարած հաղթանակի, թե՛ այդ մասին հայտարարելու և զեկուցելու օրերը, ինչպես նաև ընդունվում են այլ, նման ձևի որոշումներ...»[22]։

**Կորբուլոնի արշավանքը դեպի Տիգրանակերտ և նրա նվաճումը:** Այնուհետև հռոմեական զորքը շարժվում է դեպի Տիգրանակերտ։ Սակայն իր արարքով Կորբուլոնը իր դեմ է գրգռում ժողովրդի ատելությունը և ավելի է ուժեղանում համակրանքը պարթևների հանդեպ։ Արտաշատից Տիգրանակերտ շարժվելու ընթացքում, անցնելով «արքունի պողոտայով», որը այդ կողմերում միակ հարմար ճանապարհն էր հռոմեական պաշարող մեքենաների համար, հռոմեական զորավարը ստիպված է լինում ետ մղել լեռնային ապաստարաններից հարձակվող հայ գյուղացիների պարտիզանական ջոկատների անհամար գրոհները։ Հայ շինականի զայրույթը շատ մեծ պետք է լիներ, որովհետև դեպի Տիգրանակերտ շարժվող հռոմեական բանակն իր առջևից քշում էր ստրկության դատապարտված նրա ընտանիքի, գերդաստանի ու համայնքի անդամներին և բոլոր աշխատունակ տղամարդկանց ու կանանց՝ երեխաներով հանդերձ։ Կորբուլոնին առանձնապես դժվար կացության մեջ է գցում լեռնցի մարդերի ռազմատենչ ցեղը։ Այն ժամանակ Կորբուլոնն օգնության է կանչում ի-

19 Տե՛ս Tacit., Annal., XIII, 41։

20 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, Ա, էջ 336։

21 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 85։ Tacit., Annal., XIII, 41։

22 Նույն տեղում. էջ 87։ Tacit., Annal., XIII, 41։

բերներին և ավերում մարդերի երկիրը[23]։ Կորբուլոնին մեծ դժվարությամբ է հաջողվում գրոհով վերցնել Բագավան և Ծումբ ամրությունները[24]։ Ճանապարհին ամեն ինչ սրի ու հրի մատնելով, Կորբուլոնն իր բանակով հասնում է Տարոն (Մշո դաշտ)։ Տակիտոսը նշում է, որ «Այդ պայմաններում շատ էին նեղվում թե՛ պաշարի պակասությունից, և թե՛ լարվածությունից, ստիպված էին քաղցը (լոկ) կենդանիների մսով հագեցնել. սրան ավելացրած՝ ջրի պակասությունը կիզիչ ամռանը. երկար ճանապարհների դժվարությունները մեղմվում էին միայն առաջնորդի համբերատարությամբ, որը տանում էր նույնն ու ավելին, քան շարքային զինվորը»[25]։ Բագրևանդից ու Աղիովիտից հռոմեական զորքը իջնում է Հարքի (Բուլանըխ) և Տարոնի (Մշո դաշտ) բարեբեր հովիտները, որոնք մշակված վայրեր էին և «որտեղ ցանքերը հնձված էին»[26]։

Ճանապարհին ամեն ինչ հրի ու սրի մատնելով, Կորբուլոնն իր բանակով հասնում է Տարոն և Հայկական Տավրոս, որտեղից լեռնանցները տանում էին ուղիղ դեպի Տիգրանակերտ, որի հելլենացած հայ, ասորի և հույն ազգաբնակչությունը սպասում էր հռոմեացիներին։ Ահա այստեղ, Սասունը անցնելուց առաջ, «Տիգրանակերտից ուղարկված պատգամավորները հայտնում են, որ քաղաքի պարիսպները բաց են, և քաղաքացիները սպասում են հրամանի ու միաժամանակ հանձնում են ոսկե պսակ՝ իբրև նվեր հյուրին»։ Պատմագրի ասելով, «Կորբուլոնն ընդունեց սրանց պատվով, և քաղաքից ոչինչ չհափշտակեց, որպեսզի չթալանված ժողովուրդն ավելի պատրաստ լինի հնազանդության»[27]։

59 թվականի վերջերին Կորբուլոնը գրավեց Տիգրանակերտը և այնուհետև անցավ դեպի Արածանիի հովիտը, որտեղ գտնվում էր Ծոփքի նորոգված թագավորության մայրաքաղաք Արշամաշատը։ Այստեղ էր նստած 55 թվականին թագավոր նշանակված Սոհեմը։ Ճանապարհին, սակայն, հռոմեական զորամասերը դեռ պիտի պաշարեին Լեգերդա ամրոցը[28], որտեղ փակվել էր անվախ երիտասարդությունը[29]։ Համառ գրոհից հետո նվաճվում է նաև այս ամրությունը, և հռոմեական բանակը մտնում է Ծոփաց թագավորության սահմանները։

Այդ ժամանակ Տրդատը կրկին փորձ է անում տիրանալ հայկական գահին։ Ըստ երևույթին, Ատրպատականի կողմից նա ներխուժում է Հայաստան, բայց պարտություն կրելով՝ նորից ետ է վերադառնում։

**Տիգրան Զ «Մեծ թագավոր Հայոց Մեծաց»:** Արտաշատի և Տիգրանակերտի գրավումից հետո Մեծ Հայքի թագավորությունը համարվում էր վերջնականապես նվաճված և «հավերժական քաղաքը» այդ նշեց փառավոր հանդեսներով, սակայն այդ միայն արտաքին փայլն էր, որն ի վիճակի չէր ծածկելու Հռոմի

---

23 Տվյալ դեպքում մարդերի երկրին համապատասխանում է Մարդուցայք կամ Մարդաստան գավառը, Կոգովիտ գավառից հարավ-արևելք և նրան հարևան Ծաղկանց լեռների շրջանը (տե՛ս Tacit., Annal., XIV, 23)։

24 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 338։

25 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 89։ Tacit., Annal., XIV, 24։

26 Նույն տեղում։

27 Նույն տեղում։

28 Ավելի ճիշտ՝ Elegerda. 'Ηλέγερδα (Ptol. V, 12,8).

29 Տե՛ս Տակիտոս, էջ 91։ Tacit., Annal., XIV, 25։

թուլությունը։ Հայաստանը նվաճված էր, բայց կայսրությունը չէր կարող իր ցանկացած քաղաքականությունը վարել այդ երկրում։ «Հուլիոսների և Կլավդիոսների կայսրությունը ի վիճակի չէր Հայաստանը պրովինցիա դարձնելու և իր ազդեցությունը երկրում պահպանելու միակ միջոցը կախյալ թագավորի նշանակումն էր»[30]։ Նորից մնում էր իբրև հնարավորից լավագույնը՝ վերականգնել նախկին status quo-ն, որ գոյություն ուներ մ. թ. ա. 66 թվականից Արտաշատում կնքված պայմանագրի համաձայն։ Մեծ Հայքի գահը տրվեց «օրինավոր հավակնորդ» ոմն Տիգրանի (60—61), որը Հերովդես Մեծի ծոռն էր (նա հայոց թագավոր Տիգրան Ե-ի եղբոր՝ Ալեքսանդրի որդին էր). սա ևս հեռավոր առնչություն ունենալով Արտաշեսյանների հետ, Մեծ Հայքի գահը ստացել էր Հռոմի շնորհիվ, ուստի նա պիտի լիներ կայսրության հլու կամակատարը։ Տակիտոսի ասելով, այս Տիգրանը այնքան երկար էր մնացել Հռոմում իբրև պատանդ, որ «իջել էր մինչև ստրկական համբերությունը»[31]։ Պատմագրի տեղեկություններից երևում է, որ հայկական ավագանու մի զգալի մասը դժգոհ էր նոր թագավորի նշանակումից, իսկ մյուս մասը մի կերպ համակերպվում էր[32]։ Անշուշտ, հելլենասեր և հռոմեասեր տարրերն էին Հռոմի դրածոյի հենարանը։ «Մեծ թագավոր Հայոց Մեծաց» Տիգրան Զ-ը իր մայրաքաղաքը դարձրեց Տիգրանակերտը, ոչ միայն նրա համար, որ Արտաշատն ավերված էր, այլև այն պատճառով, որ նոր աթոռանիստ Տիգրանակերտի հելլենացած խավը իր իշխանության սոցիալական հենարանն էր լինելու։

Կորբուլոնը Տիգրանակերտում թողնում է պահակազորք՝ բաղկացած երեք դաշնակից վոհորտներից և հեծելազորային երկու ջոկատից[33]։ Այդ զորամասերը պետք է հենարան լինեին երկրի հիմնական բնակչության կողմից համակրանք չվայելող Տիգրան Զ-ի համար։ Տակիտոսի ասելով, «...որպեսզի ավելի հեշտ լինի նոր թագավորությունը պահպանել, Հայաստանի որոշ մասերը, նայած թե ում էին սահմանակից, հրաման ստացան հնազանդվել Փարսմանին, Պոլեմոնին, Արիստոբուլոսին և Անտիոքոսին»[34]։ Այդպիսով, դաշնակից թագավորները, ի հատուցումն իրենց ծառայության, բաժին էին ստանում Մեծ Հայքի տերիտորիայից, յուրաքանչյուրն՝ իր թագավորության սահմանակից հողերից։ Ըստ այդմ. Հայաստանից անջատվող երկրամասերը գտնվում էին հյուսիսարևմտյան մասերում։ Անշուշտ, Մեծ Հայքի թագավորության տերիտորիայի ջլատման ու փոքրացման քաղաքականության հիմքում ընկած էր Հռոմի ձգտումը՝ հայկական պետությունը դարձնել մի այնպիսի երկրորդական, երրորդական կարգի «դաշնակից» թագավորություն, ինչպիսիք էին՝ Կոմմագենեն, Ծոփքը, Փոքր Հայքը և Քաղկիդիկեն, որոնց գահակալները խաղալիք էին Հռոմի ձեռքին։

Մեծ Հայքից անջատված հողերից Պոնտոսի Պոլեմոն Բ թագավորը պետք

30 *О. В. Кудрявцев*, Римская политика в Армении и Парфии в первой половине правления Нерона, էջ 61։ Տիգրան Զ-ը ևս պիտի լիներ Քաղկիդիկեի «թագավոր» և Արտաշեսյան դինաստիայի շառավիղը։

31 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 91։ *Tacit.*, Annal., XIV, 26։

32 Նույն տեղում։

33 Տե՛ս *Tacit.*, Annal., XIV, 26։

34 Նույն տեղում։

է, որ ստացած լիներ արմենոխալիբներով բնակեցված Ճորոխի վերին հոսանքում գտնվող Սպեր գավառը. Իբերիայի Փարսման Ա-ը, բացի 37 թվականի պայմանագրով ստացած մոսխերի երկիր Գոդերձականից, այժմ պետք է, որ ստանար ամբողջ Գուգարքը։ Փոքր Հայքի Արիստոբուլոս թագավորը պիտի ստացած լինի Ակիլիսենե-Եկեղյաց երկրամասը, որը բաղկացած էր Եկեղյաց, Դարանաղի, Աղիվն և Մուզուր գավառներից։ Իսկ թե ո՞ր երկրամասն էր ստացել Կոմմագենեի թագավոր Անտիոքոս Դ-ը, դժվար է ասել, որովհետև այդ թագավորության տերիտորիան 37 թվականից հետո, երբ Հայոց Միջագետքը անցավ պարթևներին ենթակա Ադիաբենեի թագավորությանը, ընդհանուր սահման չուներ Մեծ Հայքի հետ, մանավանդ որ այժմ, բացի դրանից, գոյություն ուներ Ծոփաց թագավորությունը, որն ընկած էր Կոմմագենեի և Մեծ Հայքի միջև։ Այս փաստերը ցույց են տալիս, որ Տակիտոսի այն տեղեկությունը, թե Կոմմագենեն ևս բաժին ստացավ Մեծ Հայքի տերիտորիայից, թերևս ճիշտ չէ[35]։

Այս բոլոր գործերը կարգավորելուց հետո Կորբուլոնը նշանակվեց Սիրիայի լեգատ, մահացած Քվադրատոսի փոխարեն։

**Տիգրան Զ-ի փորձերը վերադարձնելու պարթևներին անցած Հայոց Միջագետքը։** Մեծ Հայքի թագավորությունը նվաճելուց հետո, նրա վերականգնումը իբրև կախյալ թագավորություն համարվում էր լիակատար հաղթանակ պարթևների հանդեպ և այժմ անհրաժեշտ էր վերադարձնել Մեծ Հայքի այն տերիտորիաները, որոնք ըստ 37 թվականի համաձայնագրի անցել էին պարթևներին, այսինքն, պարթևներին ենթարկվող սահմանամերձ Ադիաբենե կախյալ թագավորության կազմի մեջ մտնող Հայոց Միջագետքը, Միգդոնիա-Արուաստանը և Սավգեքը։ Տիգրան Զ-ի ներխուժումը Ադիաբենե, ավելի ճիշտ, վերջինիս «թագավորության» կազմի մեջ մտնող Հայոց Միջագետքը, պատմագրության մեջ համարվել է անհասկանալի և չպատճառաբանված փաստ։ Սակայն դա հասկանալի է դառնում, երբ այդ դեպքը դիտում ենք 37 թվականի համաձայնագրի հետևանքով տեղի ունեցած տերիտորիալ փոփոխությունների[36] և այդ տերիտորիաների ռազմաստրատեգիական նշանակության տեսանկյունից։

Տիգրան Զ-ի մայրաքաղաք Տիգրանակերտը համարյա սահմանակից էր պարթևների թագավորության մեջ մտնող Ադիաբենեի կախյալ թագավորությանը, որտեղ այժմ թագավորում էր Մոնոբազ (Մանուազ) Բ-ը։ Տիգրան Զ-ը մի քանի անգամ անցել է սահմանագիծ հանդիսացող Տիգրիս գետը, որպեսզի ետ նվաճի Հայոց Միջագետքը, որտեղ գտնվում էր Մեծ Հայքի երրորդ խոշորագույն կենտրոնը՝ Մծբին քաղաքը։

Մի շարք անուղղակի տեղեկություններ կռահել են տալիս, որ պարթևների

---

35 Կոմմագենեի փոքրիկ թագավորությունը կարող էր որոշ տերիտորիաներ ստանալ արևմուտքի կողմից՝ Կիլիկիայի արևելյան սահմանամերձ շրջաններից և Կապադովկիայի մերձեփրատյան Առավենե գավառից (այժմ՝ Արաբան-օվասի գետի հովիտը), որը նախկինում էլ նրան է պատկանելիս եղել։

36 Օ. Վ. Կուդրյավցևի փորձերը՝ բացատրելու Տիգրանի Ադիաբենե ներխուժելու պատճառները, հիմնավորված չեն (տե՛ս О. В. Кудрявцев, Рим, Армения и Парфия во второй половине правления Нерона, ВДИ, 1949, № 3, էջ 52)։ Ադիաբենեի դեպքերը անհասկանալի են մնացել նաև Հ. Մանանդյանին (տե՛ս նրա «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. Ա, էջ 340)։

պետության սահմաններում ապաստան գտած հայոց թագավոր նշանակված Տրդատը իր ժամանակավոր հենակետն է դարձրել Հայոց Միջագետքը, կենտրոն ունենալով Մծբին քաղաքը։ Սա Հայաստանի այն մասն էր, որը Հռոմի կողմից 37 թվականի համաձայնագրով ճանաչվել էր իբրև պարթևական տերիտորիա, ուստի նրա և իր դրածո Տիգրան Զ-ի իրավասությունից դուրս էր։ Ինչպես Արշակ-Սանատրուկի ժամանակ, այժմ ևս Մծբինը ժամանակավորապես դառնում է Հայաստանի Հռոմից չնվաճված մասի մայրաքաղաք։ Մի այլ հենակետ Տրդատը պիտի ունենար Ատրպատականում, որտեղ թագավոր էր իր եղբայր Բակուրը[37]։

Հռոմեա-պարթևական 10-ամյա պատերազմի ընթացքում Մծբինը դառնում է այն հենարանը, որը թույլ է տալիս պարթևներին և նրանց կողմնակից հայերին համախմբվելու և ռազմական պատրաստություններ տեսնելու՝ պատերազմը շահելու համար։ Այս հանգամանքները նկատի ունենալով, պարզ է դառնում Տիգրան Զ-ի ռազմական գործողությունների իմաստը պարթևների դեմ։ Նրա ներխուժումների հիմնական նպատակն էր, ուրեմն, խանգարել պարթևներին և անձամբ Տրդատին, պատերազմական պատրաստություններ տեսնելու։

## 2. ՆՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐԹԵՎՍՏԱՆՈՒՄ ԵՎ ՀԱՅ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՀՌՈՄԵԱՑԻՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

**Քաղաքական իրադրության բարդացումը Պարթևստանի արևելքում։** Վրկանաց աշխարհի ապստամբությունն ու անջատումը այնպիսի վիճակ էր ստեղծել, որ պարթևները իրենց ամբողջ ռազմական ուժերը կենտրոնացրել էին պետության հյուսիս-արևելյան ծայրամասերում։

Հռոմի հետ Վրկանաց երկրի թագավորի բանակցությունները Վաղարշ Ա-ին հարկադրում են ապստամբների դեմ պատերազմական գործողությունները վերջացնել խաղաղությամբ։ 61 թվականի գարնանը կնքվում է հաշտության պայմանագիր, ըստ որի ճանաչվում է Վրկանաց թագավորության անկախությունը և, այսպիսով, պարթևները ապահովում են իրենց թիկունքն ու հնարավորություն ունենում կարգավորելու խճճված գործերը Արևմուտքում, հատկապես՝ Հայաստանում։ Տիգրան Զ-ի ներխուժումը Ադիաբենեի թագավորության սահմանները առիթ հանդիսացավ, որպեսզի Վաղարշ Ա-ը նորից զբաղվի հայկական հարցով, իսկ դրա համար ստեղծվել էին նպաստավոր պայմաններ։

Տակիտոսը հաղորդում է, որ «Վոլոգեզ (իմա՝ Վաղարշ Ա) թագավորը, իմանալով Կորբուլոնի հաջողությունների մասին, և թե Հայաստանի գահին է

37 Այստեղ Վաղարշ Ա-ը Հայաստանի թագավոր նշանակված Տրդատին, իբրև «Ձեռական իշխանութեան երկիր» («Ձեռական իշխանութեան» մասին տե՛ս հետևյալ գլխում), հանձնում է Կապուտան (Ուրմիա) լճի հյուսիս-արևելյան ափերին գտնվող երկրամասը, որտեղ և քաշվում է Տրդատը, երբ Կորբուլոնը գրավում է Արտաշատը։ Այս երկրամասը Փավստոս Բուզանդի մոտ (Դ, ծ) հայտնի է իբրև «ձեռին իշխանութեան տունն թագաւորին Հայոց, որ է զԱտրպատական աշխարհաւն»։

բազմեցվել օտար ծագում ունեցող Տիգրանը, թե միաժամանակ իր եղբայր Տիրիդատն արտաքսված է, Արշակունիների արժանապատվությունն արհամարհված է, ցանկանում է գնալ վրեժխնդիր լինելու»[38]։

Միևնույն ժամանակ Վաղարշ Ա-ը նկատի էր առնում «Հռոմի մեծությունն ու շարունակվող դաշինքը... գտնվելով Հիրկանիայի անշատման ազդեցության տակ, Հիրկանիայի, որը պատկանում է ուժեղ ժողովրդի, և գիտակցելով, որ այդ անջատման պատճառով ինքը կաշկանդված էր մի շարք պատերազմներով, գտնվում էր անորոշ վիճակում»[39]։ Այս տարտամ վիճակից պարթևական արքայից-արքային հանում է լուրը, որ «դուրս գալով Հայաստանից, Տիգրանն ավերել էր Ադիաբենեն, սահմանակից երկիրը»[40], իսկ այս երկրի կառավարիչ



Գառնիի ներանոսական տաճարը

Մոնոբազը (Մանավազը) սպառնում էր, որ եթե պարթևները օգնության չգան, նա հարկադրված կլինի ենթարկվել Հռոմին[41]։ Ահա այս հանգամանքներն էին, որ արագացրին հետագա դեպքերը, և օգտագործեց գահազուրկ Տրդատը։ «Գահազուրկ Տիրիդատն ավելի ևս ծանր էր իր լռությամբ կամ զսպված տրտունջներով, ասելով, թե անգործությամբ չէ, որ պահվում են մեծ պետությունները, այլ մարդկանց ու զենքերի մրցակցությամբ»[42]։ Վաղարշ Ա-ը համարում էր, որ

38 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 93։ Tacit., Annal., XV, 1։
39 Տակիտոս, նույն տեղում, էջ 93։
40 Նույն տեղում։
41 Տե՛ս նույն տեղում։
42 Նույն տեղում։

«Հռոմեացիները խախտում են խաղաղությունը»[43], ուստի այժմ գնում է պատերազմելու արդարությունը վերականգնելու համար։

**Ներոնի նոր քաղաքականությունը:** 60-ական թվականների սկզբին Հռոմում հանդես եկան նոր ուժեր, որոնք բեկում առաջացրին նաև Հայաստանի հանդեպ վարած քաղաքականության մեջ։ Ներոնի իշխանության հնգամյակի սկզբնական շրջանում, արտաքին քաղաքականությունը փաստորեն վարում էին, ինչպես ասվեց, Սենեկան և Բուռը, որոնք «չէին ձգտում նոր նվաճումների Արևելքում, այլ ուզում էին կայսրությանը վերադարձնել այն, ինչ նրան պատկանելիս էր եղել, այսինքն՝ և ներքին և արտաքին քաղաքականության մեջ նրանք հետևում էին Օգոստոսի օրինակին»[44]։

Ներոնը հաշիվ էր տանում իր ղեկավարների խնամակալությունը, և Բուռի մահը ազատում է նրան այդ իշխանատենչ պրեֆեկտից, իսկ ասպարեզից նրա հեռանալուց հետո թուլանում է նաև Սենեկայի ազդեցությունը։

Ներոնի կառավարության երկրորդ կեսը նշանակալից է պրինցեպսի ու սենատի հակամարտությամբ և Հռոմի արտաքին քաղաքականության ակտիվությամբ։

Ներոնը գտնում էր, որ Հայաստանը գրավվել է հռոմեական զենքի ուժով և խոսք անգամ չի կարող լինել պարթևների հետ հետագա բանակցությունների մասին։ Այսպիսով, պարթևների նոր զորեղացման պայմաններում անխուսափելի էր դառնում պատերազմական ընդհարումը։ Պարթևների համար պատըրվակ հանդիսացավ 37 թվականի համաձայնագրի խախտումը։

**Տրդատ Արշակունու թագադրումը Մծբինում:** Թիկունքն ապահովելով հնարավոր բարդություններից, Վաղարշ Ա-ը իր ռազմական ուժերը տեղափոխեց Արևմուտքի՝ Տիգրան Զ-ի և նրա թիկունքում գտնվող Հռոմի դեմ կռվելու համար։

Նա իր զորամասերով մտնում է Ադիաբենե և ժամանակավոր կենտրոն դարձնում Մծբին քաղաքը[45], որ, ինչպես տեսանք, Տրդատի ժամանակավոր նստավայրն էր։ Այստեղ են կենտրոնանում նաև նրան հարող հայկական զորամասերը։ Այսպիսով, Մծբինից Վաղարշ Ա-ը իր ռազմական ուժերով սպառնում էր միաժամանակ Տիգրան Զ-ին՝ Հայաստանում և Կորբուլոնին՝ Ասորիքում։

Մծբինում Վաղարշ Ա-ը հրավիրում է խորհրդակցություն, ուր հրապարակվում է իր անելիքների ծրագիրը, որի մասին կարելի է որոշ գաղափար կազմել անգամ Տակիտոսի միտումնավոր տեղեկություններից[46]։ Պարթևների արքայից արքան, նշելով իր տոհմի մեջ տիրող համերաշխությունը, առաջարկում է Տրդատին իր մոտ նստել, և դիմում է ներկաներին, ասելով. «Ես ու սա ծնված ենք միևնույն հորից, և տարիքով ավելի երիտասարդ լինելով, քան թե ես, զիջեց ինձ երիցությունը. ես նրան տվի Հայոց թագավորությունը, որը մեր տոհմում համարվում է տիրակալության երրորդ աստիճանը, որովհետև դրա-

43. *Tacit.*, Annal., XV, 2։

44 *О. В. Кудрявцев*, Римская политика в Армении и Парфии в первой половине правления Нерона, էջ 65։

45 *Տե՛ս Tacit.*, Annal., XV 5։

46 *Տե՛ս Tacit.*, Annal., XV, 2։

նից առաջ ստանձնել էր մարերին Պակորը (Բակուրը)։ Եվ ինձ թվում էր, թե հակառակ եղբայրների առաջվա ատելության ու մրցակցության, ես կանոնավորեցի մեր ընտանիքի գործերը ինչպես վայել է»։ Սակայն «հռոմայեցիները,— նշում է Վաղարշ Ա-ը,— խանգարում ու խառնում են խաղաղությունը, որը երբեք չեն խախտած իրենց համար հաշող կերպով, իսկ այժմ խախտել են իրենց՝ ի կորուստ»։ Ահա այս հայտարարությունից հետո տեղի է ունենում Տրդատի հանդիսավոր թագադրումը որպես Մեծ Հայքի թագավոր։ «Միաժամանակ,— շարունակում է Տակիտոսը,— նա Տիրիդատի գլուխը թագ կապեց, ապա պատրաստի հեծելազորային գունդը, որն ըստ սովորության ուղեկցում էր արքային, հանձնեց մեծատոհմիկ Մոնեսին, ավելացրեց ադիաբենցիների օժանդակ զորքը և հանձնարարեց դուրս վտարել Տիգրանին Հայաստանից»[47]։

Մծբինում Տրդատ Արշակունու թագադրությունը արտացոլվել է նաև հայկական ավանդություններում, որոնք Մովսես Խորենացին անվանում է «զրույց պատմության»[48]։ Նրա և Սեբեոսի հավաքած զրույցներում Արշակունիների հարստության հիմնադիրը մերթ կոչվում է իր եղբոր՝ Վաղարշ Ա-ի անունով՝ «Վաղարշակ», մերթ՝ «Արշակ փոքր», իսկ Վաղարշ Ա-ը հիշատակվում է իր դինաստիական «Արշակ Մեծ» անունով։ Ըստ Մովսես Խորենացու[49] պահպանած տեղեկության՝ «Պատմում են, որ Արշակ Մեծը, Պարսից և Պարթևների թագավորը, իր եղբորը՝ Վաղարշակին թագավորեցնում է Հայաստանի վրա, այսպես նպատակահարմար համարելով, որպեսզի իր թագավորությունն անխախտ մնա։ Նրան մայրաքաղաք է տալիս Մծբինը»[50]։ Անշուշտ, Մծբինը Տրդատ Ա-ի մայրաքաղաքը չդարձավ, այլ միայն ժամանակավոր կայան էր մինչև Մեծ Հայքի ազատագրումը հռոմեական նվաճողներից։ Այստեղ ուշագրավ է բնագրի շարունակությունը, որ բացակայում է հռոմեական պատմիչների մոտ։ Այդ այն է, որ Տրդատը թագավորում էր Մեծ Հայքում ոչ միայն նրա համար, որ հայկական գահը դառնա պարթևական դինաստիայի ժառանգական սեփականություն, այլև Հայաստանի հարցը միջոց էր այն ավելի մեծ նպատակների հասնելու համար, որ առաջին անգամ արտահայտել էր Արտավան Գ-ը։ Այդ նպատակն էր՝ Արևմուտքում վերականգնել աքեմենյան ժամանակաշրջանի տերիտորիան։ Ըստ այդմ, Արշակ Մեծ-Վաղարշ Ա-ը «Վաղարշակի» (Տրդատի)՝ «համար սահմաններ է որոշում՝ Ասորիքի արևմտյան կողմի մի մասը, Պաղեստինը, Ասիան, ամբողջ Միջերկրյայքը[51] և Թետալիան՝ Պոնտոս ծովից մինչև այնտեղ, ուր Կովկասը վերջանում է արևմտյան ծովի մոտ, նաև Ատրպատականը և էլի որքան քո միտքն ու քաջությունը կհասնեն, որովհետև ասում են՝ քաջերի սահմանը նրանց զենքն է, որքան կտրում է, այնքան էլ գրավում է»[52]։ Այս էր պարթև Արշակունիների կրտսեր ճյուղի քաղաքական ծրագիրը, որին, սակայն, երբեք վիճակված չի եղել իրականանալու։

47 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 95—97։
48 Տե՛ս Խորենացի, Ա, է։
49 Նույն տեղում, Ա, բ։
50 Նույն տեղում։
51 «Միջերկրեայք» է կոչվել վաղ միջնադարի հայ մատենագրության մեջ Փոքր Ասիան։
52 Խորենացի, Ա, ը։

*Անդրադառնալով Տրդատ Արշակունու թագադրության հանդեսներին, անհրաժեշտ է նշել այն փաստերը, որոնք զրույցների ձևով պահպանվել են Մովսես Խորենացու և Սեբեոսի (Անանունի) մոտ։*

*Մովսես Խորենացու մոտ հայտնի Շամբատ Բագարատը (Անանունի Բագարատ Փառազյանը) ժամանակակից էր Վաղարշ Ա-ին և Տրդատ Ա-ին, և Ադիաբենեի թագավորներին հետևելով, ընդունել էր հրեական կրոնը (ավելի ճիշտ՝ նախնական քրիստոնեության ուսմունքներից մեկը)։ Ինչպես երևում է, այս Բագարատը պարթևներին կողմնակից հայ մեծամեծներին* (μεγιστᾶνες) *էր գլխավորում և նրանց հետ միասին ապաստան էր գտել Մծբինում։ Անանունի տեղեկություններից ակնհայտ է դառնում, որ Բագարատ Փառազյանը (ըստ Խորենացու՝ Շամբատ Բագարատը), իբրև հայ ավագանու ներկայացուցիչ և պարթև Արշակունիների արքունիքի ամենամոտ և հավատարիմ անձնավորություններից մեկը, մասնակցում է Տրդատին Մեծ Հայքի թագավոր հռչակելու արարողություններին, հանդես գալով իբրև թագադիր-թագակապ։*

*Այս ժամանակներում Բագրատունիների հայրենի կալվածքը գտնվում էր Տմորիք կամ Կորդրիք գավառում, կենտրոն ունենալով Ալկի ամրոցը*[53]*։ Բագրատունիների նախնական տերիտորիան Պտղոմեոսի (90—168) «Աշխարհագրության» մեջ հայտնի է* Σαμβαται ἔθνος[54] *և համապատասխանում է հայ մատենագիրների «Մարաց ամուր աշխարհին»։*

**Հայ-պարթևական զորքերի հարձակման անցնելը:** *Տրդատի թագադրումից հետո Վաղարշ Ա-ը իր բանակը բաժանեց երկու մասի։ Մի մասը Տրդատի զորահրամանատար Մոնեսի և Ադիաբենեի թագավոր Մոնոբազ (Մանավազ) Բ-ի գլխավորությամբ անցնում է Տիգրիսը և մտնում Հայաստան, որպեսզի դուրս քշի Տիգրան Զ-ին և Տրդատին վերահաստատի հայոց գահի վրա։ Առաջին հերթին պաշարվում է Տիգրանակերտը։ Տիգրան Զ-ը խուսափելով բաց ճակատամարտից, հռոմեական լեգեոնների հետ փակվում է պաշարված մայրաքաղաքում*[55]*։ Պարթևական զորքերի մյուս մասը, Վաղարշ Ա-ի գլխավորությամբ, շարժվում է Հայոց Միջագետքով դեպի Եփրատի ափը, որպեսզի այնտեղից սպառնա հռոմեական պրովինցիա Ասորիքին, որի կառավարիչն էր այս ժամանակաշրջանում Դոմիտիոս Կորբուլոնը։*

*Հաշվի առնելով ստեղծված դրության լրջությունը, Կորբուլոնը շտապ դիմում է Ներոնին, տեղեկացնելով, որ ինքը, որպես Ասորիքի կուսակալ, պարտավոր է պաշտպանել իրեն վստահված պրովինցիան և խնդրում է Հայաստանում պատերազմ վարելու համար նոր զորավար նշանակել*[56]*։ Այսպիսով, պատերազմական գործողությունների հենց սկզբից Կորբուլոնն իրենից վանում է մեծ վտանգով հղի նոր պատերազմի ողջ պատասխանատվությունը։ Նա սահմանափակվեց լոկ նրանով, որ Տիգրան Զ-ին օգնության ուղարկեց ևս եր-*

---

53 *Ստրաբոնի բնագրում (XI, 1, 24) Ալկի ամրոցը անվանվում է* Σάταλκα, *որ առաջացել է հայերեն «Շատ-Ալկի» ձևից։*

54 *Տե՛ս Ptol., VI, 1, 2։*

55 *Տե՛ս Tacit.*, Annal., *XV, 4—5; Dio, LXII, 20, 3։*

56 *Տե՛ս Tacit.*, Annal., *XV, 3, 6։*

կու հռոմեական լեգեոն, իսկ ինքն ամրացավ Եփրատի ափին, որպեսզի արգելի՝ պարթևների մուտքը Ասորիք[57]։

Տակիտոսի հաղորդումից երևում է, որ Կորբուլոնը դժգոհ էր Տիգրան Զ-ի ներխուժումից Ադիաբենեին ենթարկված Հայոց Միջագետքը, որով նա առիթ էր ստեղծել պարթևների համար նորից բարձրացնելու Հայաստանին տիրելու հարցը։ Այդ դժգոհությունը փաստորեն Ներոնի դեմ էր, որը անխոհեմ կարգադրություն էր արել։ Այսուհետև տարաձայնությունները արևելյան քաղաքականության հարցերում Կորբուլոնի և Ներոնի միջև անընդհատ խորանում են[58]։ Կորբուլոնը, հետևելով Սենեկայի քաղաքական վարքագծին, չէր ուզում մասնակցել կայսեր կողմից հրահրվող պատերազմին, մանավանդ, երկար ժամանակ գտնվելով Արևելքում, համոզվել էր, որ Հայաստանը նման միջոցներով պահել անհնարին է[59]։

Կորբուլոնը ինքնակամ կերպով փորձեր է անում հաշտության բանակցությունների միջոցով հետաձգել պատերազմական գործողությունների սկիզբը մինչև նոր զորահրամանատարի նշանակումը, որպեսզի ստիպված չլինի ինքը վարել պատերազմը[60]։ Ցենտուրիոն Կասպերիոսին նա ուղարկում է Մծբին՝ Վաղարշ Ա-ի մոտ, և պահանջում, որ պարթևական զորքը դադարեցնի Տիգրանակերտի պաշարումը, այլապես սպառնալով, թե իր բանակով պարթևների երկիրը կներխուժի Ասորիքի կողմից[61]։

Խուսափելով նոր պատերազմական ընդհարումներից, Վաղարշ Ա-ը որոշեց ձեռնպահ մնալ հետագա հարձակումներից և խաղաղ ճանապարհով լուծել Հայաստանի հարցը[62]։ Նա, Տակիտոսի ասելով՝ «ուներ հին և խոր թափանցած կանոն՝ խուսափել հռոմեական պատերազմից. ներկայումս էլ գործերը հաջող չէին ընթանում»։ Հռոմեական կողմը Վաղարշ Ա-ին ներշնչում էր, որ «Պաշարումն իզուր է. Տիգրանն ապահով է թե՛ զորքի և թե՛ պաշարի տեսակետից։ Փախուստի են մատնված նրանք, ովքեր պաշարում ձեռնարկեցին»։ Պարթևներին սպառնում էին, որ «Հայաստան են ուղարկված լեգեոններ, իսկ մյուս լեգեոնները Սիրիայի սահմաններումն են և պատրաստ են այս կողմը ներխուժելու»։ Բացի այդ, հռոմեական հետախուզությանը հայտնի էր, որ Վաղարշ Ա-ի մոտ «հեծելազորը կերի պակասության պատճառով թույլ է, որովհետև հսկայական քանակով առաջ եկած մորեխը կերել էր այն, ինչ ծածկված էր խոտով կամ տերևով»։

Վաղարշ Ա-ը համաձայնում է հաշտություն կնքել, պայմանով, որ «հռոմեացիներն ու պարթևները նախապես իրենց զորքերը հանեն Հայաստանից և վերականգնեն նրա նախկին տերիտորիան, որից հետո Տրդատը պետք է գահ բարձրանա Հայաստանում որպես հռոմեական կեսարի ու ժողովրդի դաշնակից և բարեկամ»։

57 Տե՛ս Dio, LXII, 20, 3։
58 Տե՛ս Tacit., Annal., XV, 3։
59 Տե՛ս Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 53։
60 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 343։
61 Տե՛ս Tacit., Annal., XV, 5։
62 Տե՛ս Tacit., Annal., XV, 5; Dio., 20, 3։

Այս համաձայնության հիման վրա Վաղարշ Ա-ը իր զորավար Մոնեսին կարգադրում է դադարեցնել Տիգրանակերտի պաշարումը և պարթևական զորքերը դուրս բերել Հայաստանից։ Կորբուլոնն էլ իր հերթին Տիգրանակերտից ետ է կանչում Տիգրան Զ-ին պաշտպանող հռոմեական լեգեոնները, և վերջինս հայտարարվում է գահընկեց[63]։ Իբրև Հայաստանի թագավոր մնում է Տրդատը։ Այսպիսով, Վաղարշ Ա-ը համաձայնության գալով Հռոմի ներկայացուցչի հետ, փոխադարձ զիջում էր անում։ Եթե նա սկզբնապես համարում էր, որ Մեծ Հայքի թագավորությունը ինքն է տվել իր եղբայր Տրդատին և թույլ չի տա, որ վերջինս «ուրիշ պետությունից ընդունի այն իբրև նվեր»[64], ապա այժմ դեպքերն այնպես են ընթանում, որ պարթևական թագավորը հրաժարվում է այս սկզբունքից, միայն թե Արշակունիները հաստատվեին հայկական գահի վրա։ Տակիտոսը հաղորդում է, որ Վոլոգեսը «պատասխանում է, թե մտադիր է պատգամավորներ ուղարկել Հռոմեական կայսեր մոտ՝ թե՛ Հայաստանը պահանջելու, թե՛ խաղաղությունն ամրապնդելու համար»[65]։ Այս համաձայնագրի առաջարկվող պայմանները փաստորեն երկու խելացի և խորամիտ գործիչների՝ Վաղարշ Ա-ի և Կորբուլոնի, հեռատես քաղաքականության արգասիքն էին, ի վերջո պիտի հաղթանակեր սրանց տեսակետը։ Սակայն Ներոնը համառում էր և դեմ էր հին ավագանու այդ քաղաքականությանը։ Միայն հետագա դեպքերը՝ հռոմեական բանակի մեծ պարտությունը և Բոսպորի թագավորությանը տիրելու խնդիրը հարկադրեցին նրան համաձայնել առաջադրված պայմաններին։

Պետոսը Հայաստանում: Տակիտոսը հաղորդում է, որ «Վոլոգեսի պատգամավորները..., որ ուղարկվել են հռոմեական պրինցեպսի մոտ, վերադարձան ձեռնունայն»[66]։ Ներոնը չի ընդունում Վաղարշ Ա-ի և Կորբուլոնի մշակած հաշտության պայմանները. նա չէր կորցնում հռոմեական զենքի նոր հաղթանակի հույսը և պարթև արքայի դեսպաններին խուսափողական ու անորոշ պատասխան է տրվում[67]։

Ներոնը հաստատ որոշել էր նվաճել Հայաստանը և այն դարձնել հռոմեական պրովինցիա։ Այդ նպատակով նա 61 թվականին Կապադովկիայի կուսակալ և Հայաստան ուղարկված բանակի գերագույն հրամանատար է նշանակում Կեսեննիոս Պետոսին։ Պետոսը Ներոնի մտերիմ մարդկանցից էր և արքունիքում դառնում է ամենաազդեցիկ անձնավորություններից մեկը։ Սակայն Պետոսը անտաղանդ զորավար էր, նա չէր կարողանում ոչ իր որոշումները կենսագործել, ոչ էլ լսել ուրիշի խորհուրդները և իր բարձրացումով պարտական էր միայն Ներոնի մտերմությանը։

61 թվականի աշնանը Պետոսը ժամանում է Կապադովկիա և Հայաստանի

63 Ըստ երևույթին, Տիգրան Զ-ին գահընկեց անելու պատրվակ էին բերում այն փաստը, որ նա առանց Կորբուլոնի կարգադրության ներխուժել է Ադիաբենե։

64 Tacit., Annal., XIII, 34։

65 Տակիտոս. Հայերեն թարգմ., էջ 101։ Tacit., Annal., XV, 5։ Տե՛ս Т. Моммзен, История Рима, т. V, էջ 351։ Տե՛ս և Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 343։

66 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 103։ Tacit., Annal., XV, 7։

67 Տե՛ս Cass. Dio, LXII, 20, 4։ Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 343։

սահմանները[68]։ «Այդպիսով, ինչպես Ներոնի կառավարության սկզբում, Հայաստանը դուրս բերվեց Սիրիայի լեգատի՝ Կորբուլոնի ենթակայությունից և այնտեղ նշանակվեց հատուկ լեգատ, հանձին Պետոսի։ Երկու լեգատները միմյանցից բոլորովին անկախ էին։ Շուտով, սակայն, նրանց միջև առաջ է գալիս խուլ թշնամություն, որի պատճառը ոչ այնքան անձնական մրցակցությունն էր, որքան տեսակետների տարբերությունը հայկական հարցում»[69]։

Հասնելով Կապադովկիա, Պետոսը չի հապաղում հայտնել Հռոմի քաղաքականության նոր ուղղության մասին։ Նա բացահայտում է հռոմեական ծրագրի ողջ էությունը, հայտարարելով, որ ինքը պետք է նվաճի Հայաստանը, հարկեր դնի ժողովրդի վրա և ենթարկի հռոմեական օրենքներին ու իշխանություններին։ Տակիտոսը հաղորդում է, որ Պետոսը «արհամարհում էր Կորբուլոնի սխրագործությունները և հաճախ ասում էր, թե նա (Կորբուլոնը) չի կոտորել, ավար չի վերցրել, թե պաշարման միջոցով քաղաքներ նա վերցնում է երևակայության մեջ, թե ինքը (Պետոսը) հաղթվածների վրա հարկ կդնի ու օրենքների կենթարկի և թագավորի ստվերի փոխարեն հռոմեական գերիշխանություն կսահմանի»[70]։

Ինչպես տեսնում ենք, Ներոնը և նրա շրջապատը բացահայտորեն հրաժարվում են Օգոստոսի քաղաքականությունից, որը Անկյուրայի իր արձանագրության մեջ բացորոշ ասում է, որ կարող էր Հայաստանը դարձնել պրովինցիա, բայց այդ չարեց։ Այդպիսով, պարզ երևում էր Հայաստանի հարցը որոշելու երկու ուղի[71] և բախտախաղի էր դրվում Հայկական պետության գոյությունն իսկ։

**Հռոմեական զորքերի պարտությունը Հռանդեայի մոտ:** 61 թվականի աշնանը, Հռոմից Կապադովկիա ժամանած Պետոսը Մելիտենեի մոտ, Տոմիսայի գետանցով (այժմ՝ Իզոլու) անցնում է Եփրատը և թափանցում Ծոփք, որտեղ դեռ գոյություն ուներ Տակիտոսի բառերով ասած «թագավորի ստվերներից» մեկը՝ Սոհեմը, իբրև Ծոփքի թագավոր։ Անձիտ գավառը մտնելով, Պետոսը մտադիր էր Հայկական Տավրոսի լեռնանցքներով թափանցել Տիգրիսի հովիտը և պաշարել Տիգրանակերտը։ Բայց նրա զորքերը նոր էին հասել Ծոփք լիճը և Տիգրիսի ակունքներին, երբ վրա է հասնում ձմեռը, և Պետոսը անցնում է Խարբերդի դաշտը՝ ձմեռելու Անձիտ գավառում։ Կորբուլոնը, որը անբարյացակամ էր տրամադրված Պետոսի հանդեպ, չէր խառնվում պատերազմական գործողություններին։ Եփրատի գլխավոր գետանցներից մեկի մոտ, Զևգմայի շրջանում, Կորբուլոնը ամրություններ ու նավակամուրջ էր կառուցել և իր երեք լեգեոններով պաշտպանում էր Ասորիքը պարթևների ներխուժումից, որոնց զորքերը, Վաղարշ Ա-ի գլխավորությամբ, գտնվում էին Եփրատի հակառակ ափին, Միջագետքում։

Կորբուլոնը ամեն ինչ արեց, որպեսզի վերացնի պարթևների՝ Ասորիք

---

68 Տե՛ս O. B. Кудрявцев, Рим, Армения и Парфия..., էջ 54։ *Tacit.*, Annal., XV, 10, XV, 6. *Cass. Dio.*, LXII, 20, 4.

69 Տե՛ս O. B. Кудрявцев, նույն տեղում։

70 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 101—103։ *Tacit.*, Annal., XV, 6։

71 Տե՛ս O. B. Кудрявцев, Рим, Армения и Парфия..., էջ 54։

ներխուժելու վտանգը։ Նա նույնիսկ իր բանակի մի մասով անցավ Եփրատը և ամրացավ այդ գետի արևմտյան ափին։ Սակայն այս լոկ ռազմական ցույց էր. նա մտադիր չէր խորանալու Միջագետքի ավազուտները և ընկնել Կրասսոսի վիճակի մեջ։ Ըստ երևույթին, այս էր ակնկալում Վաղարշ Ա-ը, երբ շտապ հեռացավ Զևգմայից, հույս ունենալով, թե իր ետևից կտանի հռոմեական զորքը։



Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասեր

Հասկանալի է, որ Պետոսի անցումը Եփրատի վրայով և նրա զորքերի ներկայությունը Խարբերդի դաշտում, Վաղարշ Ա-ի և Կորբուլոնի մշակած հաշտության համաձայնագրի բացահայտ խախտում էին, ուստի հայ-պարթևական զորքերը շտապում են գրավել Տիգրանակերտը և ամրացնել իրենց դիրքերը։ Համոզվելով, որ Ասորիք թափանցելը անհնար է, Վաղարշ Ա-ը 62 թվականի գարնանը իր բանակով Եփրատի ձախ ափով դեպի հյուսիս է շարժվում, և հեշտությամբ հաղթահարելով Հայկական Տավրոսի լեռնանցքները պաշտպանող հռոմեական զորքերի դիմադրությունը, իր ահարկու բանակով մտնում է Հայաստան և Տիգրիսի վտակի՝ Արկանիայի (այժմ՝ Արղանա-սու) վերին հոսանքի հովտով շարժվում դեպի Անձիտ-Խարբերդի դաշտը, որտեղ գտնվում էր Պետոսի ճամբարը։

Վաղարշ Ա-ի բանակը իջնում է Խարբերդի դաշտը, որտեղ գտնվում էր Պետոսի հեծելազորի մեծ մասը։ Իր կնոջն ու որդուն և շարքից դուրս եկած զինվորներին Պետոսը տեղավորել էր Արշամաշատում, իսկ զորքի այն մասը, որ

պատերազմական գործողություններ էր վարում, պահվում էր ամրացված ճամբարում, Արածանի գետի հարավային ափին, Հռանդեա վայրում[72]։

Վախով համակված հռոմեական զորքը չէր համարձակվում դուրս գալ իր ամրացված դիրքերից։ Զինվորների կարգապահությունը թուլացել էր, դասալքությունը մեծ չափերի հասել։ Այս պայմաններում պարթևների համար շատ հեշտ էր օղակի մեջ առնել հռոմեական ճամբարը։ Պարթևների հարվածներից «Հետևակ զորքից անվնաս մնացողները գնացին հեռավոր և խուլ անկյունները, վիրավորվածները վերադարձան ճամբար, նրանք պատմում էին թագավորի քաջության, բազմացեղ զորքի դաժանության մասին, ամեն ինչ վախից մեծացնելով»[73]։ Տիգրանակերտը արդեն գրավված էր պարթևների ու դաշնակից հայերի կողմից։

Հուսալքված Պետոսը, մի կողմ դնելով իր մեծամտությունն ու գոռոզությունը, լսում է իր խորհրդատուներին և օգնություն խնդրում Կորբուլոնից ու միաժամանակ հաշտության բանակցություններ սկսում Վաղարշ Ա-ի հետ։ Սակայն Կորբուլոնը չի շտապում, «որպեսզի վտանգների աճման զուգընթաց աճի նաև օգնության գովասանքը» և ավելի ընդգծվի Պետոսի խեղճությունը։ Վերջինս «վերստին ուղարկեց Կորբուլոնի մոտ խնդրելու, որ շտապ գա պաշտպանելու թե՛ դրոշակներն ու արծիվները և թե՛ դժբախտ զորքի մնացած լոկ անունը»[74]։

Կորբուլոնը իր զորամասերով, անցնելով Կոմմագենեն, հասել էր Մելիտենե քաղաքը և պատրաստվում էր անցնել Եփրատի գետանցը՝ Ծոփքի սահմանագլխին, երբ Պետոսը, Կորբուլոնի օժանդակ ուժերի տեղ հասնելուց ընդամենը երեք օր առաջ, 62 թվականի գարնանը Հռանդեայում խայտառակ հաշտություն է կնքում, որի համաձայն ինքը՝ Պետոսը, իր ողջ բանակով կամովին հանձնվում էր պարթևներին։

Նախապես Պետոսը փորձում է հատուկ նամակով համոզել Վաղարշ Ա-ին, որ վերջինս չմոռանա իր խոհեմությունը և հիշի հռոմեացիների հզորությունը։ Տակիտոսը հաղորդում է, որ հուսահատված Պետոսը «առաջին նամակն է գրում Վոլոգեսին (իմա՝ Վաղարշին) ոչ աղերսական, այլ գաղտնի ձևով կազմած, գանգատվում է, թե Վոլոգեսը թշնամություն է անում հայերի պատճառով, որոնք միշտ կամ Հռոմի իշխանության տակ են կամ ենթակա կայսեր կողմից ընտրված թագավորի, թե խաղաղությունը հավասարապես երկուսին էլ օգտավետ է, թե միայն ներկան չէ, որ պետք է ուշադրության առնել, թե ինքը Վոլոգեսը երկու լեգեոնների դեմ եկել է ամբողջ թագավորության ուժերով, այնինչ հռոմեացիների մոտ պատերազմին օգնելու համար մնում է մի ամբողջ աշխարհ»[75]։

Անշուշտ, այս բոլորը Վաղարշ Ա-ը հաշվի էր առնում, նրան հայտնի էր նաև այն, որ Կորբուլոնն իր բանակով Ասորիքից շարժվում է՝ օգնելու Պետոսին, ուստի գերադասեց չոչնչացնել թշնամու բանակը, այլ թույլ տալ հեռա-

72 Տե՛ս Tacit., Annal., XV, 10։

73 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 109։ Tacit., Annal., XV, 11։

74 Նույն տեղում, XV, 10։

75 Նույն տեղում, էջ 111—113։ Tacit., Annal., XV, 13։

նալու երկրից։ Միևնույն ժամանակ դա միջոց էր՝ պահպանելու լավ հարաբերությունները Հռոմի հետ[76]։

Վաղարշ Ա-ը փոխանակ անմիջապես պատասխանելու դրված հարցերին, գրում է, որ ինքը սպասում է իր եղբայրներին՝ Բակուրին և Տրդատին, և «որոշեց տեղն ու ժամանակն այն խորհրդակցության, ուր պիտի որոշվի Հայաստանի բախտը»[77]։ Այս նամակից հետո «Պետոսի կողմից պատգամավորներ ուղարկվեցին խնդրելու թագավորից, որ բանակցություն տեղի ունենա»։ Պետոսի հետ բանակցությունները վարելու համար Վաղարշ Ա-ը ուղարկում է «հեծելազորի պետ Վասակին», որ, հավանաբար, հայ ազնվականության ներկայացուցիչներից մեկն էր։

Բանակցությունների ժամանակ Պետոսը «հիշատակում է Լուկուլլոսներին, Պոմպեոսներին և այն, ինչ արել են կայսրները Հայաստանին տիրելու... համար», Վասակը պատասխանում է, որ «իրական ուժը պարթևների ձեռքին է», նրանք են հաղթողները, իսկ հռոմեացիների մոտ «Հայաստանը պահելու կամ պարգևելու միայն պատրանքն է» մնացել։ Այնուհետև Տակիտոսը շարունակում է, որ «Փոխադարձ երկար քննարկումից հետո, հետևյալ օրը նրանց միանում է ադիաբենցի Մոնոբազոսը (Մանավազը)՝ իբրև վկա կնքվելիք պայմանագրի։ Որոշվում է, որ լեգեոնները պաշարված դրությունից պիտի ազատվեն, որ ամբողջ հռոմեական զորաբանակը պիտի թողնի Հայաստանի սահմանները, որ ամրությունները և պաշարեղենը պիտի հանձնվեն պարթևներին. որոշվում է՝ այդ բոլորը կատարելուց հետո, Վոլոգեսին տալ հնարավորություն՝ պատգամավորներ ուղարկելու Ներոնի մոտ»[78]։

Այդպիսով, Վասակը Պետոսին ստիպում է ընդունել հաշտության ստորացուցիչ պայմանները։ Պետոսը հաղթողներին հանձնելու էր իր գրաված բոլոր ամրությունները, ամբողջ զենքն ու պարենը և պարտավորվում էր հեռանալ Հայաստանից իր զորքերի հետ միասին։

Հռանդեայի մոտ հռոմեական զորքերի պարտությունը վճռական նշանակություն ունեցավ Հայաստանի հարցի լուծման գործում։ Հռոմը հարկադրված էր հաշվի նստել հայ-պարթևական միության հետ, պետք է հրաժարվեր Հայաստանը հռոմեական պրովինցիա դարձնելու նոր ծրագրերից և հաշտվեր ստիպողական կոմպրոմիսի մտքին։

Չնայած այս ամենին, Վաղարշ Ա-ը, որը ձգտում էր խաղաղ ճանապարհով կարգավորել հայկական հարցը, դարձյալ համաձայն էր դեսպաններ ուղարկելու Հռոմ, կայսեր մոտ՝ հայկական թագը Տրդատին հանձնելու խնդրանքով։ Պետոսը հարկադրված էր երդվել, որ ոչ մի հռոմեական զինվոր ոտք չի դնի Հայաստան, քանի դեռ Հռոմում բանակցությունները չեն վերջացել։

Հայաստանից հռոմեացիների էվակուացիան ամոթալի փախուստի տեսք ընդունեց։ Տակիտոսի տեղեկությունների համաձայն, մեկ օրում Պետոսը անցնում է քառասուն հռոմեական մղոն (մոտ 62 կմ), ճանապարհին թողնելով վիրավորներին ու հիվանդներին։

---

76 Տե՛ս Cass. Dio, LXII, 21, 3։

77 Tacit., Annal., XV, 14։

78 Նույն տեղում, էջ 113։ Tacit., Annal., XV, 14։

Տակիտոսի վկայությամբ, հռոմեացիների դեմ տարած հաղթանակը առանձնահատուկ ցնծությամբ են տոնում հայերը, որոնք հռոմեացիներին որպես պարտվողների, ամեն տեսակ ստորացուցիչ վիրավորանքների են ենթարկում։ Հռոմում լուրեր են հասնում, «թե լեգեոններն անց են կացվել լծի տակով[79] և պատմում էին այլ անհաջողություններ»[80]։

Տեղի հայ բնակչությունը գերությունից ազատում է իր հայրենակիցներին, դուրս կորզելով նրանց հեռացող զինվորների ձեռքից։ Հայերը խլում են հռոմեացիներից նրանց կողոպտած ողջ ավարը։ Վախեցած հռոմեացիները տալիս են ամեն ինչ, միայն թե փրկեն իրենց կյանքը։ Անհրաժեշտ է նշել, որ այս պատերազմների ընթացքում կողոպտվել ու գերեվարվել էին հատկապես համայնական գյուղացիները՝ շինականներն ու քաղաքային համայնքների ստորին խավերը՝ ռամիկներն ու ստրուկները, որոնց ևս հայ ավագանին փրկում է այլ ավարի հետ միասին։ Տակիտոսը հաղորդում է. «Հռոմեական զորքի հեռանալուց առաջ՝ թշնամիները մտան ճամբարի ամրությունները, շրջապատեցին ճանապարհները. նրանք ճանաչում էին մի ժամանակ հռոմեացիների կողմից գերի վերցրած ստրուկներին ու գրաստը և հետ էին խլում»[81]։ Արածանի գետի հարավային ափին գտնվող Հռանդեան դարձնելով իր զորքերի ճամբարը, Պետոսը կառուցել էր տվել կամուրջ, որի մոտ մինչև այժմ գոյություն ունի լատիներեն արձանագրություն։ Պարթևներն ու հայերը Հռանդեայում, շրջապատելով հռոմեական բանակը, ուզում էին անցնել Արածանիի հյուսիսային ափը, սակայն «լուր էր տարածվել, թե կամուրջը՝ շնորհիվ կառուցողների նենգության, ծանրության չի դիմանա», ուստի Վաղարշ Ա-ը «փիղ նստած, իսկ նրա մերձավորներից յուրաքանչյուրը ձիու վրա՝ ճեղքում են Արսանիա գետը»[82]։

Տագնապալի փախուստի դիմած Պետոսը նույնիսկ փորձ է անում խախտել պարթևների հետ կնքած համաձայնագիրը և, օգտվելով նրանից, որ պարթևական բանակը թողել է Հայաստանը, Կորբուլոնին խորհուրդ է տալիս, որ իրենց զորամասերով միասին հետ «դարձնեն արծիվները և միացած հարձակվեն Վոլոգեսի հեռանալուց հետո անպաշտպան մնացած Հայաստանի վրա»։ Այդ ստոր և բախտախնդիր առաջարկին Կորբուլոնը պատասխանում է, որ «կայսրից նա չունի այդպիսի հանձնարարականներ» և իր քաղաքացիական պարտքը կատարելով՝ փրկել հռոմեական բանակը իսպառ կորստից՝ վերադառնում է Ասորիք։ Պետոսին մնում էր ձմեռել Կապադովկիայում[83]։

Ասորիք վերադարձած Կորբուլոնի մոտ Վաղարշ Ա-ը ուղարկում է սուրհանդակներ, պահանջելով, որ Կորբուլոնը քանդի անդրեփրատյան ամրությունները և գետը, ինչպես մի ժամանակ էր, լինի սահմանագիծ։ Կորբուլոնը իր հերթին պահանջում է, որ «թագավորը, զանազան պահակախմբերը հեռաց-

79 Գետնի մեջ խրված երկու նիզակների վրա դրվում էր երրորդը և պարտվածները հանելով սպառազինությունն ու վերնազգեստը, պետք է անցնեին նրա տակով։

80 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 115։ Tacit., Annal., XV, 15։

81 Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 115։ Tacit., Annal., XV, 15։

82 Նույն տեղում։

83 Տակիտոս, Հայերեն թարգմ., էջ 117։ Tacit., Annal., XV, 17։

նելով, դատարկի Հայաստանը»։ Երկու կողմից զիջումներ են լինում. «Կորբուլոնի կառուցած անդրեփրատյան ամրությունները քանդվեցին, Հայաստանն էլ մնաց առանց միջնորդ իշխանավորի»[84]։ Տակիտոսը տվյալ դեպքում դիտում է հարցի պաշտոնական կողմը, իսկ իրականում Հայաստանում տերն ու տնօրենն էին հայ-պարթևական զորքերը և Տրդատ թագավորը։

## 3. ՏՐԴԱՏ Ա ԱՐՇԱԿՈՒՆՈՒ ՃԱՆԱՉՈՒՄԸ ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐ

**Պարթևների պատվիրակները Հռոմում:** 63 թվականի գարնանը Վաղարշ Ա-ը դեսպաններ է ուղարկում Հռոմ և Ներոնին հղած նամակով տեղեկացնում պարթևների ռազմական հզորության մասին, բայց ավելացնում է, որ հանուն ընդհանուր խաղաղության նա համաձայն է, որ Տրդատը, որին քրմապետական պարտականությունները թույլ չեն տալիս անձամբ գնալ Հռոմ, արքայական թագն ստանա հռոմեական դրոշների ներքո, կայսեր կիսանդրու առաջ, հռոմեական լեգեոնների ներկայությամբ[85]։

Հռոմի համար այս առաջարկի ընդունումը հավասարազոր էր ճանաչել Պետոսի խայտառակ պարտության արգասիքը հանդիսացող Հռանդեայի համաձայնագիրը։ Ներոնը Վաղարշ Ա-ի դեսպանների առաջարկի հետ համաձայն չէր, նա ուզում էր շարունակել պատերազմը մինչև հաղթանակ։ Դեսպաններին ուղեկցող հռոմեական ցենտուրիոնին կայսրը հարցնում է. «Թե ի՞նչ վիճակում է Հայաստանը», վերջինս պատասխանում է, որ «այնտեղից բոլոր հռոմեացիները դուրս են եկել»։ Ներոնի համար պարզ է դառնում «բարբարոսների ծաղրանքը, որոնք պահանջում էին այն, ինչ խլած ունեին»[86]։ Կայսրության հեղինակությունը անհրաժեշտ էր փրկել։

Ներոնը հատուկ խորհրդակցության է հրավիրում և ներկա գտնվող «պետության ամենակարևոր մարդկանց» առաջ հարց է դնում, «Թե ի՞նչն են գերադասում՝ պատերա՞զմ՝ անհայտ ելքով, թե՞ անպատիվ խաղաղություն»[87]։ Որոշվում է պատերազմը շարունակել և զորահրամանատար է նշանակվում Կորբուլոնը, «որովհետև Պետոսի դեպքն ափսոսանք էր առաջ բերել»[88]։ Վաղարշ Ա-ի պատգամավորները «ձեռնունայն հետ են ուղարկվում, սակայն տրվում են նվերներ, որպեսզի Տրդատը, եթե անձամբ խնդրելու լինի, չզրկվի նույնը ստանալու ոչ ապարդյուն հույսից»[89]։ Այսպիսով՝ խորհրդակցությունից հետո Ներոնը որոշում է շարունակել պատերազմը, իսկ Վաղարշ Ա-ի դեսպաններին առատ ընծաներով ետ է ուղարկում և պատասխանում, որ նա այնուամենայնիվ պատրաստ է հայկական թագը հանձնելու Տրդատին, պայմանով միայն, որ նա անձամբ գա Հռոմ և իրեն համարի կայսրության հպատակ։

Հարցի այսօրինակ լուծմանը նպաստում էր հետևյալը։ Հռոմեական կայս-

---

84 Նույն տեղում, էջ 117—118։ Tacit., նույն տեղում, XV, 17։

85 Տե՛ս Tacit., Annal., XV, 24։

86 Նույն տեղում, էջ 119—121։ Tacit., Annal., XV, 25։

87 Նույն տեղում։

88 Նույն տեղում։

89 Նույն տեղում։

*րությունը այս նույն ժամանակ հատուկ քաղաքականություն էր տանում, որի հիմնական նպատակն էր Պոնտական (Սև) ծովը դարձնել ներքին ծով, այսինքն՝ տեր ու տիրակալ դառնալ Սև ծովի բոլոր ափերին, հատկապես Կովկասյան ծովափին և Բոսպորի թագավորությանը Տավրիկյան թերակղզում (Ղրիմում)։ Հետևյալ՝ 64 թվականին, հռոմեական պրովինցիայի վերածվեց Պոնտոսի թագավորությունը, իսկ Բոսպորի թագավորություն ուղարկվեց հատուկ հռոմեական նավատորմ։ Հռոմեական կայսրության հզորության ու ներքին ապահովության համար այս հարցերի լուծումը պակաս նշանակություն չուներ, քան հատկապես հայկական հարցի լուծումը։ Ահա այս է հիմնական պատճառը, որ Ներոնը մի կողմից շարունակում էր պատերազմը Արևելքում, իսկ մյուս կողմից դեմ չէր, որ այն վերջանա փոխադարձ զիջումներով, բայց գոնե արտաքուստ պահպանելով Հռոմի հզորությունը և փայլը։*

**Կորբուլոնի միջոցառումները:** *Խոշոր պետական գործիչ և զորավար Կորբուլոնը շատ լավ էր ըմբռնում բարդ իրադրությունը և գիտակցում, թե ինչ պետք է անի Հռոմի վարկը պատշաճ բարձրության վրա պահելու համար։ Ասորիքի լեգատ էր նշանակվել Կայոս Կեստիոսը, իսկ Կորբուլոնը մյուս բոլոր պաշտոններից ազատվել էր, որպեսզի վարեր պատերազմը, որը երկու կողմերի համար էլ ցանկալի չէր։*

*Կորբուլոնի հրամաններին պետք է ենթարկվեին տետրարքները (չորրորդապետները, այսինքն՝ Հռոմին ենթակա մասնատված թագավորությունների իշխանները), թագավորները, պրեֆեկտները (դաշնակից զորքերի հռոմեական հրամանատարները), պրոկուրատորները (Հռոմի փոքր պրովինցիաների կառավարիչները) և այն պրետորները, որոնք կառավարում էին պարթևների թագավորության սահմանակից պրովինցիաները։ Բացի դրանից, Պաննոնիայից օգնության էր եկել 15-րդ լեգեոնը Մարիոս Կելսոսի հրամանատարությամբ։ Ինչպես հաղորդում է Տակիտոսը, Կորբուլոնի «իշխանությունը համարյա անչափ աճեց, ինչպիսի իշխանություն հռոմեական ժողովուրդը տվել էր Գնեյոս Պոմպեոսին՝ ծովահենների պատերազմը վարելու համար»[90]։ Սակայն նա ընտրություն կատարեց. 4-րդ և 12-րդ լեգեոնները, որոնք քիչ էին ռազմունակ, փոխադրեց Սիրիա, իսկ Հայաստան հասան Կորբուլոնի 6-րդ և 7-րդ լեգեոնները, «որոնց զինվորական կազմը մնացել էր անվթար և վարժված էր հաճախակի ու հաջող ռազմական գործողությունների մեջ»։ Այնուհետև, Կորբուլոնը «ավելացրեց նաև տասնհինգերորդականներին, որոնք նոր էին բերված, ավելացան նաև ընտիր ջոկատներ Իլլիրիայից ու Եգիպտոսից և եղած բոլոր հեծելազորային ու հետևակ ջոկատները և թագավորների օժանդակ զորքերը, որ ի մի էր հավաքել Կորբուլոնը Մելիտինեի մոտ. այդտեղից նա պատրաստվում էր անցնել Եփրատը»[91]։*

*Այնուամենայնիվ, Կորբուլոնը նորից փորձում է Վաղարշ Ա-ին համոզելու*

---

90 *Նույն տեղում, էջ 121։* *Tacit.*, Annal., *XV, 25։*

91 *Նույն տեղում. էջ 121, 123։* *Tacit.*, Annal., *XV, 26։ Մելիտենեից ոչ հեռու գտնվում էր Տոմիսա ամրոցամերձ գետանցը Եփրատի վրա, որը մի ժամանակ օգտագործել էր Լուկիոս Լուկուլլոսը և մտել Հայաստանի Ծոփաց աշխարհը (Տե՛ս Հ.* **Մանանդյան,** *Տիգրան Բ և Հռոմը, էջ 97—99)։*

համաձայնության գալ՝ հաշտություն կնքել և Տրդատին Հռոմ ուղարկել Ներոնի ձեռքից թագ ստանալու համար։ Այդ միջոցով Կորբուլոնը ձգտում էր «վերականգնել Հռոմի հեղինակությունն ու պատիվը խաղաղ ճանապարհով»[92]։

Հետատես ու խելոք Վաղարշ Ա-ը հենց դրան էր սպասում։ Պատերազմական գործողությունները դեռ չէին սկսվել, երբ հաշտության բանակցությունների համար Կորբուլոնին են ներկայանում Վաղարշի և Տրդատի դեսպանները։ Դրանից հետո, 64 թվականի գարնանը, երբ հռոմեական բանակը անցնում է Եփրատ գետը և մտնում Հայաստան, ներկայանում են Տրդատի և Վաղարշի հաշտության բանագնացները, որոնց Կորբուլոնն ընդունում է և ետ ուղարկում ցենտուրիոնների հետ միասին, վերջիններիս լիազորելով պարթևների հետ բանակցել, իբրև Հռոմի ներկայացուցիչներ։

Հռանդեայի դաշնագիրը: Տակիտոսի բառերով ասած «Վոլոգեսն ընդհանրապես համառ չէր և ձգտում էր մի քանի պրեֆեկտուրաների համար զինադադար կնքել»[93]։ Այս բանակցություններից հետո Վաղարշ Ա-ը թողնում է Տրդատին իբրև Հռոմի կողմից նշանակված Հայաստանի թագավոր և, ձևացնելով, թե այլևս չի միջամտելու նրա հետագա գործերին, մեկնում է իր թագավորության ամառային մայրաքաղաքը՝ Էկբատանա (այժմ՝ Համադան), որտեղից, այնուամենայնիվ, ուշի-ուշով հետևում է դեպքերի ընթացքին։ Նախնական բանակցություններից հետո տեղի է ունենում Կորբուլոնի հանդիպումը Տրդատի հետ Հռանդեայում, այն տեղում, որտեղ պարտություն էր կրել Պետոսը։ Սրանով պարթևները ցույց են տալիս, որ հաղթողներն իրենք են, իսկ Կորբուլոնն էլ համաձայնում է այդ առաջարկին, «որպեսզի բախտի տարբերությունն էլ ավելի բարձրացնի իր փառքը»[94]։

Հռոմեական կողմը ամեն կերպ ձգտում էր ցույց տալ իր հարգանքն ու համակրանքը Տրդատին։ «Տիրիդատի ճամբարն եկան՝ վերջինին պատիվ ցույց տալու համարականավոր հռոմեական հեծելազորական՝ Տիբերիոս Ալեքսանդրը, որը տրված էր Կորբուլոնին իբրև օգնական պատերազմում, և Կորբուլոնի փեսան՝ Վինիկիանոս Աննիոսը, որը թեպետ սենատորական տարիք չուներ, բայց նշանակված էր հինգերորդ լեգեոնի լեգատի փոխանորդ. այդ ապահովությունը տրվեց, որպեսզի Տիրիդատը չվախենա դավադրությունից. հետո վերջերին քսանական հեծվորներ։ Եվ Կորբուլոնին տեսնելուն պես թագավորն առաջին ցատկեց ձիուց. Կորբուլոնն էլ սպասեցնել չտվեց իրեն, այլ ոտքի վրա կանգնած նրանք իրար աջ ձեռքը տվին»[95]։ Այնուհետև տեղի է ունենում դիվանագետներին պատշաճ փոխադարձ հաճոյախոսություն։ «Կորբուլոնը,— պատմում է Տակիտոսը,— գովեց երիտասարդին, որը թողնելով վտանգավոր ճանապարհը, բռնել է ապահով փրկարար ուղին»։ Տրդատը իր հերթին «շատ խոսելով իր ցեղի մեծատոհմիկության մասին, համեստորեն հիշեցնում էր, որ չնայած դրան, ինքն այնուամենայնիվ կերթա Հռոմ և կտանի կայսեր նոր պատիվ՝ աղերսարկու Արշակունուն, թեպետ պարթևները պարտված չեն պա-

92 Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 348։
93 *Tacit.*, Annal., *XV*, *27*։
94 *Cass. Dio*, *LXII*, *23*, *2*; *Tacit.*, Annal., *XV*, *28*։
95 *Tacit.*, Annal., *XV*, *29*։

տերազմում»։ Փոխադարձ սիրալիրություններից հետո «որոշվեց, որ Տիրիդատը կայսեր արձանի մոտ դնի թագավորական նշանը և հետ վերցնի միայն Ներոնի ձեռքից. բանակցությունն ավարտվեց ողջագուրանքով»[96]։

Մի քանի օր անց տեղի է ունենում հանդիսավոր ծիսակատարությունը. «Երկու կողմերից էլ փայլուն տեսքով հանդես եկան և կանգնեցին զորքերը՝ այնտեղ դասակներով դասավորված պարթևական հեծելազորն իր հայրենի զարդարանքներով, այստեղ՝ հռոմեական լեգեոնները՝ փայլուն արծիվներով, դրոշակներով և աստվածների արձաններով, կարծես տաճարում լինեին. մեջտեղում կառուցված էր բեմ, բեմի վրա դրված էր կուրուլ աթոռ և կուրուլ աթոռի վրա Ներոնի արձանը»։ Այս հանդիսավորությունը բոլոր ներկաների վրա մեծ տպավորություն է թողնում։ Տակիտոսը, շարունակելով իր նկարագրությունը, հաղորդում է, որ այդ կուրուլ աթոռին «մոտեցավ Տիրիդատը՝ համաձայն սովորության զոհեր մատուցանելով. գլխից վերցրած ապարոշը մոտեցնում է Ներոնի արձանի ստորին մասին։ Ընդ որում բոլորի սրտերը շատ հուզվեցին. սրանց հույզն ավելի ևս սաստկանում էր նրանից, որ հռոմեական զորքերի աչքերի առաջ մինչև այժմ պատկերանում էր սպանությունը կամ պաշարումը, իսկ այժմ դեպքերը հեղաշրջվեցին»։ Հաղորդելով այս, Տակիտոսը ավելացնում է. «Տիրիդատը պիտի գնա ի ցույց ժողովուրդներին, թե որչափ է նա հեռու գերի լինելուց»[97]։ Սույն ոգով է արտահայտվում նաև Պլինիոսը[98]։

Այսպիսով, մի քանի օրից Հռանդեայում տեղի է ունենում հանդիսավոր արարողություն։ Հրապարակորեն, հռոմեական և հայ-պարթևական բանակի ներկայությամբ Տրդատը հանում է իր գլխից արքայական խույրը և դնում գահի վրա, կայսեր կիսանդրու առաջ, որպեսզի Հռոմում այն վերստանա Ներոնի ձեռքից։ Հարկավ, կայսեր արձանին երկրպագելը ուխտի արարողության սովորական ձև էր, որ Հռոմից կախման մեջ գտնվող թագավորները պետք է կատարեին գահ բարձրանալիս[99]։ Սակայն նախորդ դեպքերից հետո արարողության այս ձևը այլևս անբավարար էր։ Անհրաժեշտ էր, որ Տրդատը գնար Հռոմ և կայսեր ձեռքից ստանար հայկական թագը։

«Այս էր Կորբուլոնի արշավանքի նպատակը։ Մյուս և ավելի կարևոր նպատակն էր՝ պահպանել Արևելքում Հռոմի ռազմական արժանապատվությունը։ Արշավանքը հասել էր իր նպատակին և ոչ մի դեպքում չի կարելի պնդել, թե Կորբուլոնը պայմանագիրը կնքել էր կառավարության կողմից մերժված պայմաններով։ Հակառակ դեպքում կառավարությունը հազիվ թե վավերացներ այդ պայմանագիրը։ Սակայն ոչ այնքան Կորբուլոնն էր հետևում կառավարության ցուցումներին, որոնք ինքը կառավարությունը թույլ տվեց պատերազմը վարելու՝ ըստ իր սեփական հայեցողության։ Տրդատի թագադրումը Հռոմում պետք է Ներոնին հատուցեր նրա ռազմական ծրագրերի ձախողման դիմաց»[100]։

---

96 Տակիտոս, հայերեն թարգմ., էջ 127։ Tacit., Annal., XV, 28։

97 Նույն տեղում, XV, 29։

98 Տե՛ս Plin., NH., VI 23։

99 Տե՛ս Tacit., Annal., XII, 17։

100 О. В. Кудрявцев, Рим, Армения и Парфия..., էջ 58։

Հանդեսները և խրախճանքը վերջանում են փոխադարձ համաձայնությամբ, և հետևյալ օրը Տրդատը «խնդրեց ժամանակ, որպեսզի նա այդպիսի երկար ճանապարհ ընկնելուց առաջ տեսնի իր եղբայրներին ու մորը. այդ միջոցին նա իբրև պատանդ թողեց իր աղջկան» և, եթե հավատանք Տակիտոսին, «աղերսական նամակ ուղարկեց Ներոնին»[101]։

Տրդատը գնում է տեսության իր եղբայրներին՝ Ատրպատականի մայրաքաղաք Գանձակում՝ իր եղբայր Բակուրին, իսկ Մեդիայի կենտրոն Էկբատանայում՝ Վաղարշ Ա-ին։ Վերջինս հետևում էր, որ պարթևական կողմի համաձայնողական քաղաքականությունը նվաստացման չհասնի։ Վաղարշ Ա-ը «հոգում էր իր եղբոր մասին» և «սեփական սուրհանդակների միջոցով Կորբուլոնից պահանջում, որ Տիրիդատը չկրի ստրկության նման որևէ վիճակ, ստիպված չլինի զենքը հանձնել, պահանջում էր, որ պրովինցիաների կառավարիչները չհրաժարվեն եղբայրաբար գրկախառնվելուց և չստիպեն իրենց սպասել դուրսը, որ Հռոմում ցույց տրվի կոնսուլին հավասար պատիվ»[102]։

**Տրդատ Ա-ի թագադրումը Հռոմում:** Տրդատի ուղևորությունը Հռոմ՝ թագադրության համար, բավական մանրամասնորեն նկարագրել է Դիոն Կասիոսը[103]։ Տրդատը իր շքախմբով ճանապարհ է ընկել, հավանաբար, 65 թվականին։ Ըստ Դիոն Կասսիոսի վկայության, Տրդատը ուղևորվել է իր ընտանիքով՝ կնոջ ու զավակների հետ, որոնց հետ էին նաև իր եղբայրների՝ Վաղարշ Ա-ի ու Բակուրի և Ադիաբենեի թագավոր Մոնոբազի (Մանավազի) որդիները։ Սրանց ուղեկցում է 3000 հայերից ու պարթևներից բաղկացած շքախումբը, ինչպես և հռոմեական հատուկ զորամաս։ Գնում էին միայն ցամաքային ճանապարհով, քանի որ Տրդատը, որպես զրադաշտական և գլխավոր քրմապետ, չէր կարող «պղծել» ջուրը։ Հայաստանից մինչև Հռոմ ընկած ողջ տարածությունը հայոց թագավորն ու թագուհին լինելով ուժի ու գեղեցկության ծաղկման շրջանում, անցնում են ձիեր հեծած։ Ճանապարհորդությունը տևում է ինն ամիս և յուրաքանչյուր օրը Հռոմի գանձարանի վրա նստում է 300.000 դրամ կամ 800.000 սեստերց (մոտ 200.000 ոսկի ֆրանկ)։ Ամենուրեք Տրդատին ու նրա շքախմբին հանդիսավոր ընդունելություն են ցույց տալիս։ Իսկ երբ հասնում են Իտալիա, հայոց թագավորին ու թագուհուն դիմավորում են կայսեր կողմից ուղարկված կառքերը, որոնցով նրանք հասնում են Նեապոլիս, որտեղ նրանց սպասում էր Ներոնը։ Այստեղ Տրդատն ու նրա շքախումբը ընդունվում են մեծ պատիվներով։ Ավելորդ չէ հիշատակել հետևյալ մանրամասնությունները։ Երբ Տրդատը գնում է ներկայանալու Ներոնին, ինչպես ընդունված էր կայսերական ընդունելությունների ժամանակ, նա պետք է արձակեր սուրը, սակայն նա հրաժարվում է այդ անել, այլ գամերով ամրացնում է պատյանին։ Մոտենալով կայսերը՝ Տրդատը կատարում է ուխտ բերելու ծիսակատարությունը, ինչպես այդ սովորաբար արվում էր յուրաքանչյուր կախյալ թագավորի կողմից, երբ թագ էր ստանում կայսրից։ Տրդատը խոնարհվում է կայսեր առջև մի ծնկի վրա չոքած ու ձեռքերը կրծքին խաչաձև բռնած և նրան անվանում է տեր։ Ապա Նե-

---

101 **Տակիտոս**, *հայերեն թարգմ.*, էջ 129։ *Tacit.*, Annal., XV, 30։

102 Նույն տեղում, XV, 31։

103 Տե՛ս *Cass. Dio*, LXIII, 1—7։

րոնը իր մեծարգո հյուրի պատվին Պուտեոլում գլադիատորական խաղեր է կազմակերպում և սուսերամարտություններ, և Դիոն Կասսիոսի վկայությամբ[104], Տրդատը նետեր է արձակում գազանների վրա և մի անգամից մի նետով սպանում երկու ցուլ։ Անշուշտ այս դեպքն է, որ իր արտացոլումն է գտել հայկական ավանդություններում, և հայ մատենագիրներն իբրև եկեղեցու շատագովներ, այս սխրագործությունները վերագրել են առաջին քրիստոնյա թագավոր Տրդատ Գ Արշակունուն (287—332)։

Այնուհետև, Ներոնը Տրդատին իր շքախմբով տանում է Հռոմ, ուր կատարվում է թագադրության հանդեսը։

Թագադրությունը մեծ հանդիսավորությամբ տեղի է ունենում «Փորոնում»[105] (ֆորումում), որտեղ Ներոնը Տրդատի գլխին դնում է հայկական թագը։ Բոլոր ներկա գտնվողները ցնծությամբ շնորհավորում են Հայոց թագավորին։ Երեկոյան ներկայացում է տրվում Պոմպեյ քաղաքի մեծ թատրոնում, որն այդ առիթով զարդարված էր շքեղ դիպակներով, ծիրանիով ու ոսկով, որի համար այդ օրը հռոմեացիներն անվանում են «ոսկե օր»։ Ներկայացումն ավարտվում է ճոխ խնջույքով[106]։

**Տրդատ Ա Արշակունին հայկական գահի վրա։** 66 թվականին Տրդատը իր շքախմբով վերադառնում է Հայաստան իբրև «մեծ թագավոր Հայոց մեծաց» և սկսում իր բուռն գործունեությունը՝ վերականգնելու շուրջ տասնամյա պատերազմներից տուժած երկիրը։

Տրդատի թագավորությունը կարելի է բաժանել երկու ժամանակաշրջանի։ Առաջին շրջանն էր 54—63 թվականները, երբ նրա թագավորացումը պաշտոնապես չէր ճանաչվել Հռոմի կողմից և իր կենտրոնն էր 37 թվականից պարթևներին անցած Մծբին քաղաքը. երկրորդ շրջանն սկսվում է 63 թվականից, երբ նա պաշտոնապես ճանաչվեց Հռոմի ծերակույտի կողմից, սակայն թագադրության արարողությունը Հռոմում տեղի է ունենում 66 թվականին։ Սրանից հետո միայն Տրդատը վերադառնում է իբրև Հայոց երկրի օրինավոր տիրակալ։ Տրդատ Ա-ի թագավորությունը տևած պիտի լինի մինչև մ. թ. 88 թվականը։

Վերադարձող Տրդատ թագավորին Ներոն կայսրը տվել էր «նվերներ» 50 միլիոն դենար արժողությամբ[107], և թույլտվություն՝ վերականգնելու Կորբուլոնի զորքերի կողմից ավերված Արտաշատ մայրաքաղաքը։ Փառամոլ կայսրը ցանկություն էր հայտնել, որպեսզի Հայաստանի վերականգնվող մայրաքաղաքը իր անունով կոչվեր Neroneia, սակայն երեք տարի չանցած Ներոնը մահանում է և նրան հաջորդած կայսրները նրան առանձնապես չէին համակրում և այդ հանձնարարությունը չի իրագործվում։ Հայաստանի վերականգնված մայրաքաղաքը շարունակում էր նախկինի պես կոչվել Արտաշատ։

Տրդատ Ա-ը մեծ եռանդ ու ձեռներեցություն է հանդես բերում երկրի վերականգնման ու շենացման հարցում։ Դիոն Կասսիոսը հաղորդում է, որ Ներոն

---

104 Տե՛ս Cass. Dio, LXIII, 1—7։

105 Այսպես է կոչվում Հռոմի ֆորումը Խորենացու բնագրում (Բ, ծը,)։

106 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 350—352։

107 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, էջ 199—200։

կայսրը Տրդատին տվել էր նաև բազմաթիվ արհեստավորներ, որոնք պետք է գլխավորեին Արտաշատի վերականգնման աշխատանքները։ Սակայն Տրդատը չի բավարարվում սրանցով. նա մեծ դրամ խոստանալով, ձգտում էր իր հետ Հայաստան տանել այլ վարպետների ու արհեստավորների, բայց Կորբուլոնը արգելք էր հանդիսանում, թույլ տալով թագավորին տանել միայն նրանց, որոնց տվել էր կայսրը[108]։

Կորբուլոնի կողմից ավերված մայրաքաղաք Արտաշատը վերականգնվում է, դառնալով ավելի փարթամ և շքեղ քաղաք։ Անուղղակի տվյալները ցույց են տալիս, որ Տրդատ Ա-ը, հետևելով իր տոհմի նախորդների ավանդույթներին, իր գահակալությունը սրբագործելու համար, մայրաքաղաք Արտաշատի հյուսիսային արվարձաններում հիմնում է սրբավայր, որը պիտի կոչվեր «Դուին-Ասաակ»[109]։ Ագաթանգեղոսի տեղեկություններից երևում է, որ Ասաակ արվարձանում հիմնված տաճարը նվիրված էր Տիր աստծուն և «իբրև ուսման նարտարութեան մեհեան» և «երազահան պաշտաման Տրի դից», կոչվում էր «Երազամոյն»[110]։ Սրա ուխտի օրը Տրդատ Ա-ը սահմանում է հայկական ամսի 17-րդ օրը, որը այնուհետև կոչվում է «Ասաակ»[111]։ Այս տաճարի շենքը պիտի լինի Դվինի պեղումների ժամանակ հայտնաբերված I դարում կառուցված եռանավ բազիլիկան, որը քրիստոնեությունը ընդունելուց հետո դարձել է քրիստոնեական տաճար[112]։

Ինչպես ճիշտ ենթադրում է Կ. Վ. Տրեվերը, Հայաստան բերված հռոմեական վարպետների խումբը մասնակցել է ոչ միայն Արտաշատ մայրաքաղաքի վերականգնման աշխատանքներին, այլև հայոց թագավորների ամառային նստավայրի՝ Գառնիի, մասնավորապես Գառնիի Արեգ-Տիրին-Միհրին նվիրված հոչակավոր տաճարի շինարարական աշխատանքներին[113]։ Ինչպես երևում է Գառնիի հունարեն արձանագրությունից, իր թագավորության 11-րդ տարում, այսինքն՝ մ. թ. 77 թվականին, թագավորը վերականգնել է նաև խիստ վնաս-

---

108 Տե՛ս նույն տեղում, էջ 71։

109 Ասաակ ('Ασαάκ—«Աշխարհացոյց»-ում հիշատակվում է աղճատված՝ Դզին—Աւազակ ձևով [պիտի լինի՝ Դվին—Ազաակ], տե՛ս J. Marquart, Eransahr, էջ 9)— անունով քաղաքը գտնվում էր պարթևական թագավորության հյուսիս-արևելյան ծայրամասում ընկած Ոստովա ('Ασταυηνή) նահանգում, այժմյան Քուչանի տեղը, որը XIII դարում հայտնի էր Դավին անունով։ Այս Ասաակ քաղաքի տաճարում թագադրվեց պարթևական Արշակունիների դինաստիայի հիմնադիր Արշակ Ա-ը (մ. թ. ա. շուրջ 250) և այնուհետև դարձավ այս դինաստիայի հիմնական սրբավայրը. (Isidori Characeni, Mansiones Parthicae, § 11, „Geographi graeci minores", t. I, 1965, էջ 251—252։ Տե՛ս M. V. Minorsky. Le nom de Dvin, „Revue des études arméniennes" tome X, fasc. 1. Paris, 1930 էջ 117—120։

110 Տե՛ս Ագաթ., էջ 404։

111 Տե՛ս Հ. Ղևոնդ Ալիշան, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց, Վենետիկ, 1910, էջ 158։

Ագաթանգեղոսը հաղորդում է, որ մ. թ. IV դարի սկզբին Տրդատ Գ-ը և Գրիգոր Լուսավորիչը առաջին հերթին կործանեցին Արտաշատ քաղաքում գտնվող «զԲրազգինան Անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղիսն անուանեալ կայր»։

112 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952, էջ 88, 91, 92, 94, 266։

113 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры..., էջ 200։

ված ամրոցի պարիսպը։ Այդ շինարարությունը տեղի է ունեցել ուրեմն Վեսպասիանոս կայսեր (70—79) ժամանակաշրջանում, երբ Հայաստանը իրեն ավելի անկախ էր զգում և Տրդատը Գառնիի հունարեն արձանագրության մեջ իրեն անվանում է δεσπότης, այսինքն՝ «ինքնակալ»[114]։

Սեփական դեմքը պահպանելու ձգտումը մենք տեսնում ենք մշակույթի բնագավառում։ Արտաքինից թվում էր, թե այսուհետև Հայաստանում պիտի ավելի ուժեղանային իրանական պետականությունը և իրանական մշակույթը։ Այդպես չընթացավ Արշակունյաց Հայաստանի հետագա պատմությունը։ Հակադրվելով Հռոմին, Հայաստանը միևնույն ժամանակ չորդեգրեց զարգացման այն միտումը, որը պարթևներին ու ամբողջ Իրանը տանում էր դեպի հելլենիստական մշակույթի վերացումը և զրադաշտականության ձևավորումը իբրև պետական կրոնի։ Մեծ Հայքում զրադաշտականությունը հող չգտավ, և Հայաստանը մնաց իբրև հելլենիստական մշակույթի կենտրոններից մեկը։ Այդ մշակույթի հետագա էվոլյուցիայի արգասիքն էր քրիստոնեական գաղափարախոսության ձևավորումը, որը գաղափարական նշանաբան դարձավ զարգացող ֆեոդալական դասակարգի համար։

Քաղաքական կյանքում հայ ժողովրդի ինքնատիպությունը արտահայտվեց նաև նրանում, որ Հայաստանում թագավորող Արշակունիները, Տրդատ Ա-ից սկսած, ձգտում էին ստեղծել այդ դինաստիայի հայկական ճյուղը, որը հաջողվում է միայն II—III դարերի եզրին։

Այդ ժամանակվանից սկսած հայ Արշակունիների արքունիքում մշակվում է այն տեսությունը, ըստ որի հայ Արշակունիներից առաջ Հայաստանում թագավորած դինաստիան—ծագել էր առաջին պարթև Արշակունիներից։ Սրանով ապացուցվում էր Մեծ Հայքում թագավորող հայ Արշակունիների «բնիկ ժառանգական տեր» լինելու հանգամանքը։ Հինգերորդ դարում, երբ բուռն զարգացում ապրեց հայ մատենագրությունը, Մովսես Խորենացին իր «Հայոց պատմության» մեջ ընդունեց այդ տեսակետը, որը գերիշխեց նույնիսկ XIX դարի հայ պատմագրության մեջ[115]։

**Հայաստանում Արշակունիների հաստատման նշանակությունը:** Տրդատ Ա-ի գահակալմամբ Հայաստանում մոտավորապես վերականգնվեց այն իրավիճակը, որ հաստատվել էր Պոմպեոսի և Տիգրան Բ-ի միջև մ. թ. ա. 66 թվականին՝ Արտաշատում կնքված պայմանագրի համաձայն, երբ մնում էր տեղական դինաստիան, իսկ Հռոմը միայն հաստատում էր նոր գահ բարձրացող թագաժառանգին, որը համարվում էր «հռոմեական ժողովրդի դաշնակից և բարեկամ», իսկ սկսած Օգոստոս կայսրից՝ «հռոմեական կայսեր և ժողովրդի դաշնակից և բարեկամ»։

Տարբերությունն այն էր, որ հայկական գահի վրա հայ Արտաշեսյաններին փոխարինեցին պարթև Արշակունի տոհմի ներկայացուցիչները, որոնք, սակայն, շուտով բռնեցին հայացման ուղին։ Բայց արդեն Տրդատ Ա-ը հայերի համար այնքան է հարազատ եղել, որ ժողովրդական զրույցներում նրա կեր-

---

114 Տե՛ս նույն տեղում, էջ 200—201։

115 Ա. Մ. Գարագաշյան, Քննական պատմություն հայոց, մասն Բ, Արշակունիք ի ժամանակի հեթանոսության, Թիֆլիս, 1895, passim։

պարը համաձուլվել է Արտաշես Ա-ի կերպարին[116]։ Այս բացատրվում է նաև երկու իշխողների գործունեության որոշ նմանությամբ[117]։

Քանի որ վերականգնվում էր մ. թ. ա. 66 թվականի պայմանագիրը, վերականգնվում էր նաև Մեծ Հայքի թագավորության խախտված տերիտորիալ ամբողջությունը, սակայն որոշ վիրապահումներով հարավում և հյուսիսում։



Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասեր

Ընդմիշտ վերացվում է Ծոփքի կարճատև թագավորությունը[118], որը Հայաստանից անջատված ծայրագավառների հետ միասին վերստին միացվում է Մեծ Հայքի թագավորության տերիտորիային։ Մեծ Հայքի թագավորության տերիտորիայի մասին Պլինիոսի, Պտղոմեոսի և այլ անտիկ հեղինակների տըվ-

---

116 Հ. Մանանդյանը նույնիսկ սնդում է, թե (տե՛ս «Քննական տեսություն...», հատ. Ա, էջ 353) «Վիպասանքի համապատասխան հատվածներից պարզ երևում է, որ առաջին Արշակունի թագավորը Հայաստանում, ինչպես և Պոլեմոն Ա-ի որդին՝ Զենոնը (Արտաշես Գ-ը), կոչվել էին Արտաշեսյան թագավորության հիմնադրի անունով՝ Արտաշես, որ եղել է, հավանորեն, Հայաստանի թագավորների տիտղոսը, ինչպես Արշակը՝ պարթևների և Կեսարը՝ հռոմեացիների մոտ»։

117 Մ. Աբեղյան, Հայ վիպական բանահյուսություն, Երկեր, հատ. Ա, էջ 118—119, 122—123։ Աներկբայելի է, որ Վիպասանքում հիշատակված Արտաշեսի կռիվը ալանների դեմ և Սաթենիկի առևանգումը առնչվում է միայն և միայն Տրդատ Ա-ի հետ։ Ալանների ներխուժումը Վիրք և Հայաստան տեղի է ունեցել մ. թ. 72—74 թվականներին։

118 Սոհեմոս թագավորը, հեռացվելով Ծոփքից, ժառանգական կալվածքներ ստացավ Ասորիքում՝ Էմեսա (Հոմս) քաղաքը՝ Օրոնտես գետի ափին։ Այս նոր իշխանությունը հռոմեացիների կողմից ստեղծվեց՝ ապագայում նրա իշխողներին Հայաստանում թագավորող Արշակունիներին հակադրելու համար։

յալները համապատասխանում են այդ երկրի այն քաղաքական ու վարչական բաժանմանը, որ պահպանվել է «Աշխարհացոյց»-ում։

Հայաստանին տիրանալու համար Պարթևստանի դեմ Հռոմի մղած համարյա մեկդարյա պայքարի փորձը ցույց տվեց, որ կայսրության ուժին ծանր բեռի նման նստած հսկայական ծախսերն ու զոհողությունները չէին արդարացվում հռոմեական զենքի դիպվածային հաջողություններով, որոնք Հայաստանում միայն ժամանակավորապես և ձևականորեն էին հաստատում Հռոմի տիրապետությունը։ Փաստորեն երկիրը մնում էր ավելի ու ավելի զորեղացող հայ ավագանու իշխանության ներքո, որը ժողովրդական զանգվածների գլուխ անցած պաշտպանում էր երկրի անկախությունը։ Եվ այժմ էլ, եթե փաստորեն հաղթող կողմը պարթևները հանդիսացան, ապա այդ առաջին հերթին բացատրվում է նրանով, որ հայ ավագանին և ժողովուրդը նրանց հետ միասին պայքարում էին հռոմեական զավթիչների դեմ։

Ներոնի ձեռքից Տրդատի թագ ստանալու արարողության հանդիսությունն ու փքունությունը չէր կարող մքողել այն փաստը, որ հաղթողները պարթևներն ու հայերն էին։ Հռոմեական բանակը դուրս էր բերվել Հայաստանից, և երկիրը փաստորեն լիակատար անկախություն էր ձեռք բերել։ Հռոմի հովանավորությունը սոսկ ձևականություն էր և հանգեցվում էր այն բանին, որ Հայաստանի թագավորը իր իշխանության սիմվոլիկ նշաններն ստանար Հռոմի կայսեր ձեռքից։

Հայաստանում վերջնականապես հաստատվում է Արշակունիների հարստությունը, և Մեծ Հայքը, Պարթևստանից հետո, դառնում է Արշակունյաց երկրորդ (secundogenitur) թագավորությունը։ Արևելքում հաստատվում է լիակատար խաղաղության տևական մի շրջան։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ Մ. Թ. II ԴԱՐՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ Մ. Թ. I ԴԱՐԻ ՎԵՐՋԵՐԻՆ ԵՎ II ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ

**Տրդատ Ա-ի թագավորության վերջին տարիները:** *Հայաստանի պատմությունը առաջին դարի վերջին քառորդում և երկրորդ դարում բավական մութն է։ Փաստական տվյալները կցկտուր ու սուղ են, բայց, այնուամենայնիվ, հնարավորություն են տալիս, ղեկավարվելով միջազգային հարաբերությունների ընդհանուր ֆոնով, տալ պատմական պրոցեսի ընդհանուր պատկերը։*

*Տրդատ Ա Արշակունու թագավորության վերջին տարիները մշուշով են պատած. թերևս նա մահացել է Բակուրակերտ (Փիլադելփիա) ավանում[1], Մարանդ քաղաքի մոտերքը, 88 թվականին։*

*Թեպետև Հռանդեայի պայմանագիրը նպաստավոր պայմաններ էր ստեղծում պարթևների համար, բայց նրանք ուրիշ դժվարություններ ունեին։ Պարթևների թիկունքում առաջացել էր հզոր Քուշանաց թագավորությունը, որը նույնպես դեր խաղաց, որպեսզի պարթևների պետության հյուսիսային ծայրամասում գտնվող Վրկանից աշխարհը անկախություն ձեռք բերեր։ Այս երկու՝ հյուսիսային և հյուսիս-արևելյան պետությունների սպառնալիքը և մյուս կողմից հաճախակի դարձած՝ Հյուսիսային Կովկասից վաչկատուն ցեղերի ներխուժումը՝ ալանների գլխավորությամբ, ինչպես և Մազքթաց Արշակունիների (որ նույն ալաններն էին) հարձակումը մերձկասպյան տափաստաններից Մեծ Հայքի և Ատրպատականի հյուսիս-արևելյան ծայրամասերի վրա, բավական տարտամ վիճակ էին ստեղծել Պարթևստանի և նրա զինակիցներ՝ Տեծ Հայքի և Ատրպատականի թագավորության համար։ Պարթևական թագավորությունը իր դաշնակիցներով ուրիշ ելք չուներ, քան խնդրելու հռոմեական կայսրին միջոցներ ձեռնարկել Հյուսիսային Կովկասի հրոսակախմբերի ներխուժման դեմ։ Եվ Հռոմի «օգնությունը» արտահայտվեց նրանով, որ Դոմիտիանոս կայսեր (81—96) հռոմեական զորամասերը 83 թվականին հասցրեց մինչև Կասպից*

---

1 Տե՛ս Խորենացի, Բ, կ։ Խորենացու հաղորդումը վերաբերում է Վաղարշակ թագավորին, բայց հավանական է, որ նրան վերաբերող ուրիշ տեղեկությունների հետ միասին այս հաղորդումը ևս կապված է Տրդատ Ա-ի հետ։

*ծովի ափերը*[2] *և, փաստորեն, իր ձեռքը գցեց Կովկասի բոլոր հաղորդակցության այն ուղիները, որտեղից ներխուժում էին «բարբարոսները»։*

*Հռոմեական կայսրությունը հաստատվելով այդ վայրերում, պետք եղած ժամանակ «սարմատներին» թույլ էր տալիս ներխուժելու Անդրկովկաս։*

**Սանատրուկ (Բ՞) Հայոց թագավոր:** *Տրդատ Ա-ի մահից հետո հայոց գահն է զբաղեցնում Սանատրուկը*[3]*։ Պետք ենթադրել, որ Տրդատ Ա-ի մահից հետո պարթևների առաջարկով Հռոմը հաստատել էր սրան։ Մի անուղղակի ցուցմունք հնարավորություն է տալիս որոշելու նրա թագավորության առաջին տարին։ Գուտշմիդը Օսրոյենեի թագավորությանը նվիրված իր ուսումնասիրության մեջ ուշադրություն է դարձրել, որ Եդեսիայի թագավորների շարքի մեջ 18 տարվա ընդհատում կա և այդ տարիներն են 91—109 թվականները*[4]*։ Ահա այս տարիներին, Գուտշմիդի կարծիքով, Սանատրուկը կարող էր լինել Եդեսիայի թագավոր։ Այս եզրակացությանը նա եկել է Խորենացու տվյալներից ելնելով, որը հաղորդում է Սանատրուկի արշավանքի մասին Եդեսիայի Աբգար Ջ թագավորի (71—91) դեմ*[5]*։*

*Խորենացին նշում է, որ Վաղարշակը (իմա՝ Տրդատ Ա) թագավորել է 22 տարի*[6]*։ Եթե Տրդատ Ա-ի թագավորության պաշտոնական թիվը վերցնենք 66 թվականը և ավելացնենք 22 տարի, կստանանք 88 թվականը, որ պիտի լիներ նրա մահվան տարեթիվը։ Այդ թվականի մոտերքը պետք է թագավորեր Սանատրուկը, որը 91 թվականին, այսինքն՝ իր գահակալության երրորդ տարում դարձել է նաև Եդեսիայի թագավոր, և մնացել որպես այդպիսին մինչև 109 թվականը։*

*Այս Սանատրուկը հիշատակվում է Սուիդասի բառգրքում* Σανατρούκης *բառի տակ*[7] *հետևյալ հատվածում։*

*«Հայոց թագավոր Սանատրուկը»,—վկայում է Արրիանոսը,—ուներ միջակ հասակ, բայց հակում ուներ դեպի ամեն մի մեծ բան և, մանավանդ, դեպի պատերազմական գործերը։ Նա հավասարիմ պահապան էր արդարադատու-*

---

2 *Այժմյան Բաքվից դեպի հարավ-արևմուտք, ծովափին գտնվող Դուվաննի կայարանից չորս կիլոմետր դեպի արևմուտք՝ Քաբիրիստանի Բեյուքդաշ լեռան ստորոտում 1948 թվականին գտնվեց լատիներեն արձանագրություն։ Արձանագրության բնագրից կարելի է մակաբերել, որ այս տեղում 84—86 թվականներին կանգնած է եղել հռոմեական XII լեգեոնը և ինչ-որ ամրություն է կառուցել լեռան վրա (տե՛ս* *К. В. Тревер,* Очерки по истории и культуре Кавказской Албании, IV в. до н. э.—VII в. н. э., М.—Л., 1959, *էջ 127)։*

3 *Տե՛ս* Հ. Ց. Աստուրյան, *Քաղաքական վերաբերությունններ ընդ մեջ Հայաստանի և Հռոմա, 190- են ն. Ք. մինչև 428 հ. Ք., էջ 198։*

4 *Տես A. Gutschmid*, Untersuchungen über die Geschichte des Königreichs Osroene, St.-Petersburg, *1887, էջ 27—28, 49։* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն, հատ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 18—19։*

5 *Տե՛ս* Հ. Ց. Աստուրյան, *Քաղաքական վերաբերությունններ..., էջ 198։*

6 *Տե՛ս* Խորենացի. *Բ, ը։*

7 *Ապացուցված է (տես J. Marquart*, Untersuchungen zur Geschichte Erans, I. Göttingen, 1896, *էջ 221), որ այս հատվածը Սուիդասը վերցրել է Արրիանոսի «Պարթևականք»* (Παρθικά) *գրքից։ Արրիանոսը ժամանակակից է եղել Հադրիանոսի (117—138) և Անտոնինոս Պիոսի (138—161) կայսրներին։*

*թյան և իր կենցաղավարության մեջ զուսպ էր, նաև չափավոր ու ողջամիտ էր, ինչպես լավագույնները հույների և հռոմեացիների մեջ»*[8]։

*Սանատրուկը հայտնի է նաև իր շինարար գործունեությամբ։ Փավստոսի տեղեկությունների համաձայն Սանատրուկը հիմնել է Մծուրք քաղաքը, որտեղ փոխադրել է իր արքունիքը*[9]*։ Մծուրքը տեղադրվում է Արածանի գետի հովտում, Բյուրակն գետի թափվելու տեղում*[10]*։ Այս քաղաքի արվարձանում, դեպի արևմուտք, գտնվում էր Աշտիշատը, որը հնագույն կրոնական կենտրոն էր։ Մծուրք քաղաքը կառուցվել է Արտաշատը Տիգրանակերտի հետ կապող «արքունի պողոտայի» վրա, սակայն IV դարի կեսերին արդեն ավերակ էր։*

*Նորակառույց Մծուրք քաղաքը եղել է մշակութային կենտրոն։ Ըստ Սեբեոսի վկայության, այդտեղ է ապրել «Մարաբաս փիլիսոփաս Մծուրնացի» ասորի գիտնականը, որը գրել է (ըստ երևույթին հունարեն լեզվով) Հայոց պատմություն*[11]*։ Նույն Սեբեոսը հաղորդում է, որ ավերված Մծուրքի՝ Սանատրուկ թագավորի ապարանքի ավերակների մեջ, արքայական պալատի դռան դիմաց, գտնվել է քարի վրա փորագրված հունարեն արձանագրություն, որը պարունակում էր ժամանակագրական տեղեկություններ հայ և պարթև առաջին թագավորների մասին*[12]*։ Այս փաստերը հիմք են տալիս Մանանդյանին ենթադրելու, որ Մծուրքը եղել է Սանատրուկ թագավորի աթոռանիստ քաղաքը*[13]*։*

*Սանատրուկի շինարարական կոթողներից է եղել նաև իր շիրիմը Դարանաղյաց Անի բերդում՝ Արշակունիների հանգստարանում, որը Պարսից Շապուհ Բ թագավորը 369 թվականին չի կարողացել վերցնել, «որովհետև խիստ հսկայաշեն, հաստատպինդ ու ճարտարագործ կառուցվածք էր»*[14]*։*

**Սանատրուկի հաջորդները։** *Սանատրուկից հետո Տրայանոսի (98—117) համաձայնությամբ թագավորել է պարթևական Բակուր Բ թագավորի (78—110) որդի Աշխադարը (Շիդարր—110—113)։ Բակուր Բ-ին հաջորդած Խոսրովը (110—129), գտնելով, որ Աշխադարը անհամապատասխան է իր գրաված դիրքին, առանց Տրայանոսի կարծիքը հաշվի առնելու, գահընկեց է անում նրան և փոխարենը Հայոց թագավոր նշանակում Բակուր Բ-ի մյուս որդուն՝ Պարթամասիրին (113 թվական)։ Այս ինքնակամ նշանակումը առիթ է ծառայում նոր ընդհարումների՝ կայսրության և պարթևների միջև։ Տրայանոսը օգտագործում է այս հանգամանքը և պատերազմ հայտարարում պարթևներին ու հայերին, որպեսզի չեղյալ հայտարարի Հռանդեայի դաշնագիրը և Մեծ Հայքը դարձնի հռոմեական պրովինցիա։ Այսպիսով, 50 տարի տևող (63—113) խաղաղությունը նորից խանգարվում է։*

---

8 *Flavii Arriani* quae exstant omnia, edidit A. G. Roos, vol. II, Scripta minora et fragmenta, Lipsiae, 1967, էջ 247։ *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հատոր Բ, մասն Ա, էջ 15։*

9 *Տե՛ս* Փավստոս, Դ, *ժդ*։

10 *Սովորաբար Մծուրքը տեղադրում են Մեղրագետի Արածանին թափվելու տեղում (տե՛ս «Էջ մը հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն», «Հանդէս ամսօրեայ», 1906, փետր., էջ 43)։*

11 *Տե՛ս Սեբեոսի «Պատմութիւն», էջ 1—2։*

12 *Տե՛ս Նույն տեղում։*

13 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հատ. Բ, մասն Ա, էջ 17։*

14 Փավստոս, Դ, *իդ*։

## 2. ՏՐԱՅԱՆՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

**Պարթևա–հռոմեական հակասությունների սրումը:** Ինչպես տեսանք, Հայաստանը նվաճելու փորձերը Ներոնի օրոք մատնվեցին անհաջողության։ Հայ ժողովուրդը, օգտվելով պարթևների և հռոմեական զավթիչների տարաձայնություններից, պայքարի գնով Հռոմին հարկադրեց դիմելու կոմպրոմիսային համաձայնության, ըստ որի հռոմեացիները պիտի բավարարվեին հայկական գահի վրա պարթևական թեկնածուներին հաստատելու անվանական իրավունքով։ Սակայն հետագայում Պարթևական թագավորության միջազգային վիճակը տարտամ և թույլ էր, իսկ Մեծ Հայքի ներսում էլ աճում էին պարթևական, թեկուզ և անվանական, գերապետությունից լրիվին ազատագրվելու ձգտումները։ Այս տեսնելով, Հռոմի կառավարող շրջանները նոր միջոցներ էին փնտրում Հայաստանում պարթևների ազդեցությունը իսպառ վերացնելու համար։

Հռոմեական կայսրությունը գտնվում էր իր հզորության գագաթնակետին։ Նա մեկը մյուսի ետևից վերացրեց իր արևելյան սահմաններում գտնվող կախյալ թագավորությունները, վերածելով դրանք հռոմեական պրովինցիաների։ Ի հատուցումն փաստորեն կորցրած Մեծ Հայքի, Ներոնը 63 թվականին վերացրեց Պոլեմոն Բ-ի կախյալ թագավորությունը, դարձնելով Պոնտոսը պրովինցիա, իսկ Բոսպորի թագավորությունը լրիվ ենթարկվեց կայսրությանը։ Վարչական տեսակետից Բոսպորի թագավորության օկուպացված տերիտորիան պիտի կազմեր Պոնտական պրովինցիայի հյուսիսային ծայրամասը՝ ներառյալ Կողքիսը և Հենիոխների երկիրը[15]։

Վեսպասիանոսի օրոք, 72 թվականին Կապադովկիային միացվեցին Կոմմագենեն, Փոքր Հայքն ու Պոլեմոնական Պոնտոսը։ Այդպիսով, վերանում են Փոքր Հայքի ու Կոմմագենեի թագավորությունները։ Ուժեղացվում էին հռոմեական զորակայանները, մանավանդ Եփրատի հռոմեական ափը, նրա ամբողջ ուղղությամբ՝ հյուսիսից հարավ, որը սահմանագիծ էր Մեծ Հայքի և Հռոմեական կայսրության միջև։

Այս միջոցառումները արդարացվում էին պարթևների աչքում, մանավանդ, որ 72 և 74 թվականներին տեղի ունեցան ալանների և «սարմատական» այլ ցեղերի նոր ներխուժումներ, որոնք հարկադրեցին Հռոմին ամրություններ կառուցել այժմյան ռազմավիրական ճանապարհի և Ալանաց դռների (Դարիալի կիրճի) շրջանում։ Այս ժամանակաշրջանում ավելի զգացվեց «Հռոմի բարեկամ և դաշնակից» Իբերիայի՝ Վրաց թագավորության կարևորությունը Կովկասյան լեռնանցքում հսկողություն սահմանելու համար։ 74 թվականին, ալանների հերթական ներխուժման ժամանակ, ավերվել էր նաև Վրաց աշխարհը և, ինչպես երևում է, թշնամուն դիմադրելիս, ընկել է կռվի դաշտում Փարսման Ա թագավորը։ Նրան հաջորդել էր իր որդին՝ Միհրդատը։ Մայրաքաղաք Մցխեթայում գտնված հունարեն արձանագրությունից իմանում ենք, որ Վեսպասիանոս կայսրը ամրացրել է քաղաքի պարիսպները Միհրդատի և նրա մոր՝ Համազասպուհի թագուհու համար[16]։ Ինչպես տեսնում ենք, Իբերիա-Վիրքը

---

15 Տե՛ս *В. Ф. Гайдукевич*, Боспорское царство, М.—Л., 1949, էջ 133—134։

16 Տե՛ս *Г. А. Меликишвили*, К истории древней Грузии, էջ 54, 348—349։

*այդ շրջանում շարունակում էր մնալ Հռոմի պլացդարմ կայսրության ծայրագույն արևելյան սահմանում։ Արմազի-Մցխեթայի ամրությունները պետք է կայսրության մատույցները պաշտպանեին ինչպես պարթևներից, այնպես էլ հյուսիսային վաչկատուններից, իսկ անհրաժեշտության դեպքում այդ նույն վաչկատուններին կարելի էր ներս թողնել՝ պարթևների դեմ ուղղելու համար։*

*Կորբուլոնի արշավանքը Մեծ Հայքի խորքերը՝ Սատաղ—Արտաշատ մայրուղիով, ակնհայտ դարձրեց այն մեծ դերը, որ Պոնտոսը և Պոնտական ծովափն ունեին հռոմեական զորամասերը պարենավորելու գործում, ինչպես և կայսրության հսկողության տակ առնելու համար այն կարևոր լեռնանցները, որոնք տանում էին դեպի Արևելք՝ Հայաստան, Վիրք և Աղվանք և առհասարակ դեպի Պարթևական աշխարհակալության ոլորտում գտնվող արևելյան երկրները։ Սևծովյան նավահանգիստներ Ամիսոսը, Փառնակիան, Տրապեզունտը, Փասիսը, Սեբաստոպոլիս-Դիոսկուրիան և Պիտիունտը կայսրության այն կե-*




Տրայանոսի (98—117) դրամը

*տերն էին, որտեղ գտնվում էին նավատորմը և հիմնական զորամասերը, որոնք այդ կողմից ապահովելու էին Հռոմեական կայսրության անվտանգությունը։ Նոր պրովինցիա Պոնտոսում բարելավվում էին հին ռազմական ճանապարհները և անցկացվում նորերը։ Այդ միջոցառումների մեջ առանձնահատուկ տեղ ուներ Տրապեզունտ-Սատաղ ճանապարհի ստեղծումը։ Այդ ճանապարհը սկզբում միայն ռազմական նշանակություն ուներ (Տրապեզունտ քաղաքում էր գտնվում Սև ծովի արևելյան ափերը հսկող հռոմեական նավատորմի կայանը)։ Բայց երբ Հադրիանոսը (117—138) Տրապեզունտում հարմար նավահանգիստ կառուցեց, քաղաքը կարևոր նշանակություն ձեռք բերեց Մերձավոր Արևելքի առևտրում[17]։*

**Տրայանոսի արշավանքը Հայաստան: Պարթամասիրի գահընկեցությունը:** *Փլավիոսներից (68—98) հետո իշխանության եկած Տրայանոսը (98—117) Եվրոպայում ընկճեց և նվաճեց Դակիան, իսկ Ասիայում՝ հեռավոր Ապառաժ Ա-*

---

17 *Տե՛ս նույն տեղում։*

րաբիան[18]։ Հերթը անխուսափելիորեն պիտի հասներ Հայաստանին, և կայսրը առիթ գտավ պատերազմ հայտարարելու պարթևներին։ Այդ առիթն էր Պարթամասիրի նշանակումը Հայաստանի թագավոր՝ առանց կայսեր կարծիքը հարցնելու[19]։

Տրայանոսի ագրեսիվ մտահղացումներին խթան էին տվել դեռևս պարթևական Բակուր Բ թագավորի (77—110) բարեկամական կապերը դակերի Դեկեբալ թագավորի հետ[20], որին ոչնչացնելու համար (107 թվական) այնքան զոհեր էր տվել Հռոմը։ Այժմ կայսրը, հրաժարվելով Փլավիոսների խաղաղասեր քաղաքականությունից, մեկնում էր Արևելք, նվաճելու ամբողջ Առաջավոր Ասիան։

113 թվականի հոկտեմբերի 27-ին Տրայանոսը մեկնում է Հռոմից։ Նա «ռազմերթի ելավ հայերի և պարթևների դեմ այն պատրվակով, որ Հայոց թագավորն իր թագը իրենից չէր ստացել, այլ Պարթևաց թագավորից, բայց,—շարունակում է Դիոն Կասսիոսը,—իրավապես նա տոգորված էր խիստ փառամոլությամբ»[21]։ Ճանապարհին, երբ հասնում է Աթենք, այնտեղ նրան են ներկայանում պարթևական թագավոր Խոսրովի (109—129) դեսպանները, որոնք եկել էին խաղաղություն խնդրելու և նվերներ էին բերել։ Արշակունի թագավորը «իր հպարտությունը չափավորելով՝ ուղարկել էր, որպեսզի աղաչեն նրան, որ պատերազմ չսկսի. նաև խնդրում էր նրան, որ Հայաստանը տրվի Բակուրի Պարթամասիր որդուն, ու թախանձագին խնդրում էր նույնպես, որ սրան ուղարկվի թագը։ Նա ասում էր,— շարունակում է պատմիչը,— որ Աշխադարին, որը հարմար չէր ոչ հռոմեացիների և ոչ էլ պարթևների համար՝ ինքը գահընկեց էր արել»[22]։ Կայսրը ոչ նվերներն է ընդունում, ոչ էլ պատասխանում, միայն հայտարարում է, որ «բարեկամությունը հայտնի է լինում գործերից և ոչ խոսքերից, ուստի և, երբ ինքը կգա Ասորիք՝ կանե այն ամենը, ինչ որ պատշաճ է»[23]։ Այնուհետև կայսրը պրովինցիա Ասիայի, Լյուկիայի և Կիլիկիայի վրայով հասնում է Սելևկիա, Օրոնտի գետաբերանին, որը Անտիոքի («Աւագն Անտիոք») նավահանգիստն էր։

Անտիոքում Տրայանոսը նամակ է ստանում Պարթամասիրից։ Երբ վերջինս կայսրից պատասխան չի ստանում, ուղարկում է երկրորդ նամակը, որի մեջ արդեն իրեն չէր անվանել Հայոց թագավոր։ Կայսրը այս անգամ սահմա-

---

18 Խոսքը վերաբերում է 106 թվականին Ապառաժ Արաբիայում գտնվող երկու թագավորությունների (Նաբատեական Պետրայի և Հրեական Կեսարիա-Պանեադիսի) հռոմեական պրովինցիաների վերածելուն (տե՛ս *Т. Моммзен*, История Рима, т. V, էջ 359)։

19 Տրայանոսի դեպի Արևելք կատարած արշավանքի և նրա ձախողման պատմության դրվագները հետաքրքրել են շատ պատմաբանների։ Հ. Մանանդյանը տալիս է դեպքերի գիտականորեն հիմնականում ճիշտ վերլուծությունը (տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Բ, մասն Ա, էջ 22, ծան. 1)։ Նա իրավամբ Մոմզենի ժամանակագրական տվյալներին և դիտողություններին գերադասում է Գուտշմիդի և Լոնգդենի տեսակետը (տե՛ս այդ մասին Լոնգդենի նկատողությունները, САН աշխատության XI հատորի վերջում, էջ 858—859)։

20 Տե՛ս *Плиний Младший*, Переписка с Траяном, 74 (XVI), ВДИ, 1946, № 2, էջ 247։

21 Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Բ, մասն Ա, էջ 22։ Նաև՝ Cass. Dio, XVIII, 17, 1—3։

22 Cass. Dio, XVIII, 17, 1—3։

23 Նույն տեղում։

նախակվում է միայն առաջարկով, որ Պարթամասիրը ներկայանա իրեն անձամբ։ Դեպքերի հետագա ընթացքը ցույց է տալիս, որ կայսրի կողմից սա մի խորամանկ քայլ էր, որպեսզի առանց բարդությունների իր ձեռքը գցի Հայոց թագավորին, գահընկեց անի նրան և վերջ տա Մեծ Հայքի թագավորությանը։

114 թվականի գարնանը Տրայանոսը պատերազմ է հայտարարում հայերին ու պարթևներին և Ասորիքից շարժվում դեպի Հայաստան։ Կայսրի ռազմերթի ուղին դեպի Մեծ Հայք ճիշտ է որոշված Հ. Մանանդյանի կողմից։ Տրայանոսը գալիս է Մելիտենե, որտեղից Եփրատի հայտնի գետանցով Տոմիսայի (Թմնիս) մոտ, կարելի էր մտնել Հայաստան։ Նա գերադասում է հյուսիսային ճանապարհը՝ Սատաղ—Արտաշատ, որով անցել էր Կորբուլոնը։ Սակայն Մելիտենեից ուղարկում է մի զորաբանակ, Խարբերդի դաշտի վրայով, ապահովելու իր թիկունքը։ Այս զորամասը առանց ճակատամարտի գրավում է Արածանիի վրա գտնվող Արշամաշատ քաղաքը։ Վերջինս լինելով հանգուցակետ բոլոր կողմերից եկող ճանապարհների, ուներ կարևոր ռազմա-ստրատեգիական նշանակություն[24]։

Մելիտենեից Տրայանոսը շարժվում է դեպի Սատաղ՝ Ջիմարայի վրայով գնացող ճանապարհով։ Փոքր Հայքում գտնվող Սատաղը հռոմեական լեգեոնների ամենահյուսիսային բանակատեղին էր։ Այստեղից սկսվում էր Մեծ Հայքի սահմանը։

Սատաղից Տրայանոսը մտնում է Մեծ Հայքի սահմանները և դեպի Արտաշատ տանող մայրուղիով հասնում մինչև Եղեգիսի ջերմուկները՝ անտիկ հեղինակների Էլեգեյան (այժմ՝ Իլիջա՝ Կարինից արևմուտք), որտեղ նա իր բանակով ժամանակավորապես կանգ է առնում հանգստանալու։

Ահա այստեղ կայսրը ներկայանում է երիտասարդ Պարթամասիրը։ «Հայաստանի մեջ,— պատմում է Դիոնը,— Տրայանոսն ընդունեց Պարթամասիրին։ Կայսրը նստած էր բարձր տեղում՝ պատնեշի ծայրին։ Պարթամասիրը, ողջունելով նրան, թագը գլխից հանեց, դրեց նրա ոտքերի մոտ և լուռ կանգնեց, սպասելով, որ նա թագը կվերցնի։ Արդ՝ երբ զինվորները մեծ աղաղակ բարձրացրին և Տրայանոսին, իբր ինչ-որ հաղթություն տանելու համար, որ անարյուն էր՝ կոչեցին իմպերատոր (որովհետև նրանք տեսան, որ Արշակունի թագավորը՝ Բակուրի որդին, կայսեր առաջ կանգնած է առանց թագի՝ որպես գերի)։ Պարթամասիրը սարսափեց և կարծեց, թե ինքը ծաղրուծանակի է ենթարկվում ու մատնվելու է կորստի[25]։ Նա շուռ եկավ և ուզեց փախչել, բայց, տեսնելով, որ ինքը շրջապատված է, խնդրեց շնորհ անել, որ ամբոխի մեջ չխոսի»։

---

24 Այս դեպքի մասին պատմելիս Դիոն Կասսիոսի բնագրում սխալմամբ հիշատակվում է «Սամոսատա» (Շամշատ), փոխանակ «Արսամոսատա»-ի (Արշամաշատ)։ Այս հանգամանքը շփոթություն է ստեղծել պատմագրության մեջ, երբ հռոմեացիները Տրայանոսի արշավանքի ժամանակ գրավել են Կոմմագենեի մայրաքաղաք Սամոսատան, որը առանց այդ էլ պատկանում էր իրենց։ Առաջին անգամ այս թյուրիմացության վրա ուշադրություն է դարձրել Գուտշմիդը (տե՛ս Geschichte Irans, էջ 141) և առաջարկել է «Արսամոսատա» ուղիղ ընթերցումը։

25 Այս տեսարանը քանդակված է Կոստանդիանոս Մեծի հաղթական կամարի վրա, որի այս մասը վերցված է Տրայանոսի կոթողից և այժմ էլ կարելի է տեսնել Հռոմում (տե՛ս Yisconti, Iconogr. gr., II, 269)։

Շարունակելով իր խոսքը, պատմիչն ասում է, որ Պարթամասիրը ներս տարվեց կայսեր վրանը, բայց անորոշ վիճակը չվերացավ։ «Երբ նա բարկացած դուրս եկավ, Տրայանոսը նրան կանչեց դարձյալ նույն տեղը, բանակը, և բարձրանալով նորից բեմ, հրամայեց, որ նա ասե բոլորի ներկայությամբ այն, ինչ կամենում է, որպեսզի մարդիկ, անգետ լինելով իրենց երկուսի մեն-մենակ խոսակցությանը՝ այդ մասին չտան զանազան հնարովի տեղեկություններ։

Երբ Պարթամասիրը այս լսեց, այլևս չլռեց, այլ խոսեց մեծ համարձակությամբ և ասաց, ի միջի այլոց, որ նա ոչ պատերազմի մեջ է հաղթվել, ոչ էլ գերի է վերցվել, այլ եկել է կամավոր կերպով, հավատացած լինելով, թե իրեն որևէ վիրավորանք չեն հասցնի, և թե ինքը կստանա իր թագավորությունը, ինչպես որ Տրդատը ստացել էր Ներոնից»։ Սակայն Տրայանոսի պատասխանը ցրեց նրա բոլոր հույսերը։ «Տրայանոսը,—շարունակում է Դիոն Կասսիոսը,— նրա բոլոր ասածներին պատշաճ կերպով պատասխան տվեց և ասաց, որ Հայաստանը նա ոչ ոքի չի տալու և որ այդ երկիրը պատկանում է հռոմեացիներին և ունենալու է հռոմեական կուսակալ։ Իսկ իրեն նա թույլ կտա, որ գնա՝ ուր որ կամենում է»։

«Տրայանոսը,— պատմիչի ասելով,— Պարթամասիրին և նրա հետ եկած պարթևներին բաց թողեց, տալով նրանց ձիավոր ուղեկիցներ, որպեսզի նրանք ոչ ոքի հետ չբանակցեն և որևէ թշնամություն չանեն։ Իսկ բոլոր հայերին, որ եկել էին Պարթամասիրի հետ՝ հրամայեց մնալ իրենց երկրում, որովհետև նրանք այժմ իր հպատակներն էին»[26]։

Ինչպես վկայում են սկզբնաղբյուրները, Պարթամասիրը փորձում է փախչել և ազատվել իրեն ուղեկցող հռոմեացիներից, բայց հռոմեական հեծելազորի հետ ընդհարման ժամանակ բռնվում է և գլխատվում կայսեր հրամանով[27]։

**Հայաստանը հռոմեական պրովինցիա:** Հայաստանը հռչակվում է հռոմեական պրովինցիա և այդ առթիվ 115 թվականին Արևելքում թողարկվում է պղնձե սեստերցիա, որը հասել է մեզ[28]։

Տրայանոսը, այնուհետև, հաղթական երթով շարժվում է մինչև Արտաշատ[29]։ Դիոնի վկայության համաձայն Տրայանոսը նվաճված Հայաստանում տեղավորում է պահապան զորքեր։ Մեծ Հայքի թագավորությունը անվանվում է «Պրովինցիա Արմենիա» և իբրև կառավարիչ Legatus Augusti pro praetore այստեղ նշանակվում է բարձրադրույն անձնավորություն՝ Գ. Ատիլիոս Հուլիանոս Կլավդիոս Ռուփինոսը[30]։

---

26 Հ. Մանանդյան, *Քննական տեսություն...*, հատ. Բ, մասն Ա, էջ 25-26։ Նաև՝ Dio, LXIII, 19, 3-5, 20, 1-4։

27 Տե՛ս Հ. Ց. Աստուրյան, *Քաղաքական վերաբերություններ...*, էջ 204, ծան. 1։

28 Տե՛ս անդև։

29 Հ. Մանանդյանը (*Քննական տեսություն...*, հատ. Բ, էջ 27) սխալվում է, ենթադրելով, որ Տրայանոսը իր բանակով շարժվել է դեպի Միջագետք Էլեգեյայից անցնելով և Թենուսի ու Մանազկերտի վրայով դեպի Մշո դաշտը և այնտեղից Տիգրանակերտի վրայով դեպի Մծբին։

30 Հ. Ց. Աստուրյան, *Քաղաքական վերաբերություններ...*, էջ 205։ Նաև՝ Dio, LXIII, 21, 1։

Իսկ Կապադովկիայի ռազմական մարզի, որի մեջ մտնում էր Հայաստանը, լեգատն էր Լ. Կատիլիոս Սևերոսը, որը կոնսուլ էր դեռևս 110 թվականին[31]։

Արտաշատում Տրայանոսը թողել է լատիներեն վիմական արձանագրություն, որը գտնվեց 1966 թվականին Փոքր Վեդի գյուղում[32]։ Պահպանվել է նաև մի դրամ՝ դենար, թողարկված 116—117 թվականներին, Արտաշատի փողերանոցում, Հայաստանի նվաճման առթիվ[33]։ Արտաշատը, այդպիսով, մնում էր իբրև Հայաստանի գլխավոր կենտրոն, և ինչպես կարծում է Օ. Վ. Կուդրյավցևը, Արմենիա պրովինցիայում ևս, Արևելքի հռոմեական այլ պրովինցիաների օրինակով, ստեղծվել է քաղաքների տեղական միությունը («կոյնոն»)[34]։

Հայաստանը իբրև հռոմեական պրովինցիա պետք է ընդուներ հռոմեական կայսեր պաշտամունքը և նրա արձանը պետք է դրվեր Հայաստանի տաճարներում։

Խորենացին հաղորդում է, որ «Հայաստան ուղարկվեցին հռոմեական գործակալներ, որոնք իրենց հետ բերին Օգոստոս կայսեր արձանը և կանգնեցրին բոլոր մեհյաններում»[35]։ Այս կարգադրությունը պատմահայրը կապում է Օգոստոս կայսեր (մ. թ. ա. 27—մ. թ. 14) ժամանակաշրջանի հետ, բայց այդ կարող է վերաբերվել նաև «Օգոստոս» Տրայանոսի ժամանակներին։ Կ. Վ. Տրևերը ենթադրում է, որ կայսեր մի արձան կարող էր դրվել Գառնիի տաճարում, Արեգ աստվածության կողքին[36]։

Արտաշատում (և ոչ Սատաղում, ինչպես սովորաբար կարծում են) եղած ժամանակ Տրայանոսին ներկայանում են Վրաց աշխարհի թագավորը կամ նրա դեսպանները և մերձսևծովյան մի շարք «արքայիկներ»։ Այս դեպքերի մասին տեղեկություններ են պահպանել Եվտրոպիոսը և Փեստոսը[37]։ Վերջինս, հանրագումարի բերելով Տրայանոսի գործունեությունը Հայաստանում և Անդրկովկասում, հաղորդում է. «Տրայանոսը... ետ խլեց պարթևներից Հայաստանը, ոչնչացնելով թագը, նա զրկեց Մեծ Հայքի թագավորին իշխանությունից։ Աղվաններին տվեց թագավոր, ընդունեց հռոմեական հպատակության մեջ իբերներին (վրացիներին), բոսպորցիներին, կոլխերին (եգերացիներին)»։ Այս հաղորդումից երևում է, որ նշված դեպքերը տեղի են ունեցել Մեծ Հայքի թագավորության վերանալուց հետո, այսինքն՝ Տրայանոսի էլեգեյա և Արտաշատ գալուց հետո միայն։ Ուրեմն, Աղվանքը ևս ճանաչել է իր կախումը Հռոմից և

---

31 Մեզ հասել է նաև հռոմեական բանաստեղծ Ստատիոս Պուբլիոս Պապինիոսի ձոնը, ուղղված Կապադովկիայի մի այլ լեգատ՝ Գայոս Ռուտիլիոս Գալլիկուսին, որտեղ ասվում է, որ «Նրանից ահաբեկված էին Հայաստանը և Արաքսը, համբերությամբ տանելով իր վրա լատինական կամուրջը» (տե՛ս *Т. Моммзен*, История Рима, т. V, էջ 358, ծան. 2)։ Անհրաժեշտ է պարզել Կապադովկիայի ռազմական մարզի այս լեգատի ով լինելը։

32 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Լատիներեն արձանագրություններ Արտաշատ մայրաքաղաքից, ՊԲՀ, 1967, № 4, էջ 308։

33 Տե՛ս նույնը։

34 Տե՛ս „Всемирная история", т. II, М., 1956, էջ 684։

35 Խորենացի, Բ, իգ։

36 Տե՛ս *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, էջ 60—61, 63—64։

37 *Eutrop*. Brev., VIII, 3, *Festus*, Breviarium rerum gestarum Populi Romani, XX.

*աղվանների թագավորը իր իշխանությունը ստացել է Տրայանոսից։ Նույնիսկ իբերների Միհրդատ թագավորի եղբայր Համազասպը իր զորամասով մասնակցել է Տրայանոսի արշավանքին դեպի Միջագետք, սակայն մահացել է Մծբինի մոտ*[38]։

**Տրայանոսի արշավանքի շարունակությունը։** *Հայաստանում հռոմեական գերիշխանությունը հաստատելուց հետո, Տրայանոսը դուրս է գալիս Արտաշատից, շարունակում իր հաղթական ռազմերթը դեպի հարավ՝ Միջագետք, ըստ երևույթին, նույն ճանապարհով, ինչ-որ նրանից առաջ անցել էր Կորբուլոնը, այն է՝ «արքունի ճանապարհով», որը Արտաշատը կապում էր Տիգրանակերտի հետ։ Ինչպես երևում է, Վանա լճի հյուսիսային կողմերով անցնելիս, կայսրը դեպի հարավ է ուղարկում իր զորավարներից մեկին՝ Լուսիոս Կվիետոսին։ Հայաստանի հարավում հռոմեական գերիշխանությունը հրաժարվում է ճանաչել Կորդուքի Մանիսար իշխանը (թերևս Կորդվաց աշխարհի բդեշխը)։ Լուսիոս Կվիետոսը, Վանա լճի արևելյան ափերով անցնելով, ներխուժում է Կորդուք (երևի Կրերյաց չեռնանցքով) և գրավում նրա ամբողջ երկիրը։ Այստեղից հռոմեական զորավարը մտնում է այժմյան Ռևանդուզի շրջանը՝ «Մարաց ամուր աշխարհը», որտեղ ապրում էր մարգերի ցեղերից մեկը* Mardomedi-*ները*[39]*։ Ըստ երևույթին, այս ռազմական գործողությունը նպատակ էր հետապնդում փակել Ատրպատականի կողմից Զագրոսի լեռների ճանապարհը և ապահովել Տիգրիսի հովտով անցնող Տրայանոսի զորքը պարթևների հնարավոր հարձակումներից։*

*Տրայանոսը ոտք դրեց Միջագետք այն բարենպաստ ժամանակ, երբ պարթևները զբաղված էին երկպառակություններով և ի վիճակի չէին դիմադրել հռոմեական զորքերին։ Տրայանոսի զորքերը Կորդվաց աշխարհից իջան Միջագետք, որի մեծագույն մասը զբաղեցնում էր պարթևներից կախյալ Ադիաբենեի թագավորությունը։ Այստեղի թագավորն էր Մեբարսասպեսը, որը, ըստ երևույթին, փակվեց իր Արբելա մայրաքաղաքում։*

*Հռոմեական զորքը առանց կռվի գրավում է Բատնա, Մծբին և Սինգարա քաղաքները։ Այստեղից հռոմեացիները շարժվում են դեպի Եդեսիա, որի Աբգար է թագավորը (109—116) շտապում է հայտնել իր հպատակությունը, ուղարկելով իր որդի Արբանդեսին (Երվա՞նդ) և ճանաչվում է Օսրոյենեի թագավոր։ 114 թվականին Հռոմեական կայսրությանը միացվում է Տիգրիս ու Եփրատ գետերի միջև գտնվող հարթավայրերը և վերածվում նոր պրովինցիայի՝ «Մեսոպոտամիա» (Միջագետք) անունով*[40]*։*

*Տրայանոսը Եփրատի և Տիգրիսի վրա հիմնում է նոր մաքսատներ, որից հետո վերադառնում է Անտիոք ձմեռելու։*

---

38 *Տե՛ս Г. А. Меликишвили*, К истории древней Грузии, *էջ 352—353 և А. И. Амиранашвили (Болтунова)*, Иберия и римская экспансия в Азии, ВДИ, 1938, № 4, *էջ 161*, *Fest.*, Brev., XX:

39 *Հռոմեական աղբյուրներում սխալմամբ անվանված է* Marcomedi *(տե՛ս Հ. Մանանդյան, Քամմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, Երևան, 1945, էջ 35-36)։*

40 *Մեզ հասել է ասեստերցիա, թողարկված 116—117 թվականներին Հռոմում, Հայաստանի և Միջագետքի նվաճման առթիվ։*

**Տրայանոսի արշավանքը դեպի Հարավային Միջագետք և նրա ձախողումը:** 115 թվականի գարնան սկզբներին Տրայանոսը մտավ Ադիաբենե և այս թագավորությունը հայտարարեց հռոմեական պրովինցիա՝ «Ասսիրիա» (Ասորեստան) անունով։ Այնուհետև ընթանալով դեպի հարավ՝ Տիգրիսի երկայնքով, և չհանդիպելով լուրջ դիմադրության, Տրայանոսը հասավ Բաբելոնիա։ Ինչպես ճիշտ նշում է Լեոն՝ «Պարթևները պատերազմ չէին արել, այլ էին քաշվել երկրի խորքը, ինչպես սովորություն ունեին թշնամու հարձակման դեպքում, որպեսզի պատրաստվեն փոխադարձ հարձակումների»[41]։

Բաբելոնիայում Տրայանոսի ձեռքն ընկան մայրաքաղաք Տիզբոնը և Տիգրիսի հանդիպակաց ափին գտնվող հռչակավոր Սելևկիան։ Այս հարուստ քաղաքները հանձնվեցին զինվորներին՝ կողոպտման։ Խոսրով թագավորը փախչում է, ապաստանելով Հայաստանի հյուսիս-արևելյան մասերը, իսկ Շոշում կայսեր ձեռքն են ընկնում արքայադուստրը և արքայական ոսկե գահը։



Մարկոս Ավրելիոսի (161—180) դրամը

Հաղթանակներով հղփացած Տրայանոսը 116 թվականին հասավ մինչև պարթևական սատրապություն Մեսենեն (Մեշան)՝ Պարսից ծոցի ափին, և գրավեց Տիգրիսի գետաբերանին գտնվող Խարաքս-Սպասինու վաճառաշահ քաղաքը։ Վերջինս այժմյան Քուվեյտի տեղը գտնված արաբական կախյալ Խարաքս կամ Խարակենե փոքրիկ թագավորության կենտրոնն էր, որտեղ իշխում էր Արշակունիների մի ճյուղը։ Բոլոր այս երկրամասերը կցվեցին նոր հռոմեական պրովինցիա «Մեսոպոտամիային»։

Այստեղից Պարսից ծոցով ճանապարհը տանում էր դեպի հեքիաթային Հնդկաստանը և շատ գայթակղեցուցիչ էր կրկնել Ալեքսանդր Մակեդոնացու երթուղին դեպի այդ երկիրը։ Բայց հաղթական կայսեր թիկունքում սկսվեց նվաճված ժողովուրդների այնպիսի հուժկու շարժում, որ հօդս ցնդեցին նրա բոլոր հաղթանակները։

Տրայանոսը Բաբելոնում տեղեկանում է երեք նոր պրովինցիաների՝ Հայաստանի, Միջագետքի և Ադիաբենեի ապստամբության մասին։

Միջագետքում ապստամբների գլուխ է կանգնում պարթևական թագի թեկնածուներից մեկը՝ Միհրդատ Զ-ը, Խոսրով թագավորի եղբայրը։ Միհրդատ Զ-ը վերագրավում է ողջ Միջագետքը և հասնում մինչև Կոմմագենե, սակայն այդ արշավանքի ժամանակ ձիուց վայր է ընկնում և մահանում (116 թվականին)։

Սրան հաջորդեց իր որդին՝ Սանատրուկը, որին օգնության հասավ Հայաստանից ուղարկված զորքը Խոսրովի որդու՝ Պարթամասպատի առաջնոր-

41 Լեո, Երկերի ժողովածու, հատ. Ա, Երևան, 1966, էջ 355։

ղությամբ։ Հայաստանում այս ժամանակ ապստամբ ժողովրդի գլուխն էր անցել Վաղարշը, որ հայոց Սանատրուկ թագավորի (88—109) որդին էր[42]։

Ապստամբական շարժումը անընդհատ ծավալվում էր, ընդգրկելով բոլոր նվաճված երկրները։ Տիգրիսի Սելևկիայի, Մծբինի և Եդեսիայի ազգաբնակչությունը ոչնչացրեց հռոմեական կայազորները և փակեց քաղաքային դռները։

Տրայանոսը հարկադրված էր բաժանել իր բանակը և առանձին զորամասերով ուղարկել ապստամբության հիմնական օջախները։ Ուղարկված լեգեոններից մեկը՝ Ապպիոս Մաքսիմոսի գլխավորությամբ, լրիվ սրախողխող եղավ։ Այնուամենայնիվ, Տրայանոսին հաջողվեց ջլատել պարթևների ուժերը իր մի այլ զորավարի՝ Լուսիոս Կուիետոսի միջոցով։ Վերջինս կարողացավ իր կողմը գրավել Պարթամասպատին, հռչակելով նրան պարթևական թագավոր, իսկ Պարթևստանը՝ Հռոմից կախյալ թագավորություն։ Սանատրուկը, մենակ մնալով, հաղթվեց և փախչելիս սպանվեց։ Կարծես հաղթանակը հռոմեացիների կողմն էր։ Կայսրը շտապեց դեպի հյուսիս, դաժանաբար ճնշելով ապստամբ քաղաքները։ Հռոմեացիները նորից վերցրին Մծբինը, Եդեսիան և Սելևկիան (Զեգմայի դիմաց), որոնք ավերվեցին և կործանվեցին։ Տրայանոսը, այնուամենայնիվ, նույն ճանապարհով վերադարձավ հյուսիս, շտապելով դեպի Ասորիք։ Բայց այստեղ Ասորական անապատում նրան հերոսական դիմադրություն ցույց տվեց արաբական Հատրենե փոքրիկ թագավորությունը՝ Հատրա կենտրոնով։ Հատրա քաղաքի տակ տեղի ունեցած արյունահեղ ճակատամարտը վերջին մարտն էր, որը տարվում էր 60-ամյա Տրայանոսի ղեկավարությամբ։ Հատրան չկարողանալով վերցնել, նա գնաց Ասորիք, մտադրություն ունենալով վերսկսել կռիվը հետևյալ տարվա գարնանը, սակայն ծանր հիվանդացավ և Հռոմ վերադառնալիս վախճանվեց Կիլիկիայի Սելինունտ քաղաքում 117 թվականի օգոստոսի 7-ին։ Զորքերի հրամանատարությունը Տրայանոսը հանձնում է իր որդեգիր Հադրիանոսին։ Մոմզենի պատկերավոր արտահայտությամբ՝ «Տրայանոսի արևելյան նվաճումները լուսավորեցին հռոմեական կայսրության մռայլ մայրամուտը այնպես, ինչպես կայծակն է մի ակնթարթ ցրում խավարը գիշերվա, բայց այս վերջինիս նման նոր արշալույսի նախագուշակներ չէին»[43]։ Հ. Մանանդյանը նշում է, որ «Տրայանոսի աշխարհակալական նոր քաղաքականությունը, որ վրկնությունն էր Կրասսոսի և Անտոնիոսի ագրեսիվ ու նվաճողական արևելյան քաղաքականության, չտվեց դրական հետևանքներ։ Հռոմեական 114—117 թվականների հաղթական արշավանքները փաստորեն ուժերի ու նյութական միջոցների զուր ու անօգուտ վատնումն էին։ Հադրիանոսի ժամանակ... Հռոմեական կայսրության սահմանն արևելքում նորից դարձավ, ինչպես և առաջ, Եփրատ գետը»[44]։

---

42 Տե՛ս Հ. Յ. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ..., էջ 207։

43 Т. Моммзен, История Рима, т. V, էջ 364։

44 Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 32։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՎԱՂԱՐՇ Ա-Ի ԺԱՄԱՆԱԿ

**Նախկին դրության վերականգնումը Հայաստանում:** *Տրայանոսի հաջորդներ Հադրիանոսը (117—138) և Անտոնինոս Պիոսը (138—161) ըստ էության հրաժարվեցին իրենց նախորդի բոլոր նվաճումներից և հարձակողական քաղաքականությունից անցան պաշտպանողականի։ Արևելքում վերականգնվեց նախկին վիճակը։*

*Հադրիանոսը կանգնած էր երկընտրանքի առաջ՝ պահե՞լ Հայաստանը որպես հռոմեական պրովինցիա, թե վերադառնալ Տրայանոսի արշավանքից առաջ գոյություն ունեցած իրավիճակին։ Տրայանոսը Հայաստանը իբրև պրովինցիա պահելու համար վերակառուցել էր Փոքր Ասիայի բաժանումը՝ ստեղծելով Կապադովկիայի զինվորական շրջանը, որի մեջ մտնում էր Մեծ Հայքը և գոյություն ունեցող լեգեոնին ավելացրել էր Ապոլինարյան լեգեոնը, որով ընդարձակվում էին Կապադովկիայի կուսակալի (լեգատի) լիազորությունները։ Բայց երկու լեգեոնների ուժերն էլ բավական չէին Հայաստանը հյուսիսում պաշտպանելու ալանների ներխուժումներից, իսկ արևելքում՝ պարթևներից, մանավանդ, որ նույն լեգեոնները պետք է պաշտպանեին նաև Սև ծովի ծովեզրյա շերտը՝ Տրապեզունտից մինչև Սեբաստուպոլիս (այժմ՝ Սուխումի)։ Ուստի մնում էր վերադառնալ նախկին կարգին, ըստ որի սահմանների պաշտպանությունը հանձնարարվում էր իրենց՝ հայոց թագավորներին, ինչպես այդ արվում էր Բոսպորում։ Այդ պատճառով Հադրիանոսը գերադասեց Հայաստանը վերստին թողնել Արշակունի թագավորներին և ուժեղացնել Պոնտական ծովեզերքի ու Կապադովկիայի սահմանի պաշտպանությունը։*

*Հռոմեական բանակները հեռանում են Հայաստանից, Միջագետքից ու Ադիաբենեից, Տիզբոնում վերահաստատվում է Խոսրովը, որին Հադրիանոսը վերադարձնում է նրա գերված դստերը։ Կողմերը պարտավորվում են պահպանել 63 թվականի Հռանդեայի դաշնագրի պայմանները։*

**Վաղարշ Ա-ը Հայոց թագավոր:** *Հայաստանի գահի վրա, Հռոմի կայսեր համաձայնությամբ, հաստատվում է Հայոց թագավոր Սանատրուկ Բ-ի որդին՝ Վաղարշ Ա-ը (117—140)։ Վաղարշ Ա-ը ընդունելի անձնավորություն էր Հռոմի համար, քանի որ բուն պարթևական Արշակունիներից չէր, այլ այս դինաստիայի հայկական նոր ձևավորվող ճյուղից, որը վաղ թե ուշ ինքնուրույնության ձգտելով, հակադրվելու էր պարթևներին։*

*Հայկական գահի Արշակունի թեկնածուների խնդիրը այս ժամանակաշրջանում տակավին կարիք ունի պարզաբանման։ Աստուրյանը[45] և Հ. Մանանդյանը[46] հերքում են պատմագրության մեջ գոյություն ունեցող կարծիքը, որ իբր թե Պարթամասպատն իր հորից, պարթևական թագավոր Խոսրովից, 116 թվականին ստացել էր Հայաստանի գահը։ Ինչպես ճիշտ նշում է Հ. Մանանդյանը, «116 թվականին՝ Միջագետքում, Ասորեստանում ու Հայաստանում ծագած ապստամբությունների ժամանակ Հայաստանը վերագրված է եղել Սանատրուկի որդին՝ Վաղարշը» և ի հաստատություն այս պնդման բերում է Դիոն*

45 Տե՛ս Հ. Յ. Աստուրյան, Քաղաքական վերաբերությունները..., էջ 209, ծան. 1։
46 Տե՛ս Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ..., էջ 30։

Կասսիոսի հետևյալ վկայությունը. «Որովհետև Վաղարշը, Սանատրուկի որդին, Սեվերոսի բանակի դեմ մարտի պատրաստվելիս՝ ընդհարումից առաջ զինադադար էր խնդրել և կնքել՝ (Տրայանոս կայսրը) նրա մոտ պատգամավորներ ուղարկեց և Հայաստանի մեկ մասը շնորհեց նրան հաշտության պատճառով»[47]։

Այս վկայության մեջ նշված Սեվերոսը վերոհիշյալ Լ. Կատիլիոս Սեվերոսն է, որը 114 թվականին նշանակվել էր նորաստեղծ Կապադովկիական զինվորական շրջանի լեգատ։ Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել այն հանգամանքի վրա, որ «116 թվականի ապստամբությունների ճնշումից հետո, Հյուսիսային Միջագետքը և Հայաստանը մնացել էին իբրև հռոմեական նահանգներ։ Ըստ այսմ,— շարունակում է Հ. Մանանդյանը,— հասկանալի է դառնում, թե ինչու Վաղարշին տրվեց միայն Հայաստանի մի մասը»[48]։ Այդ մի մասը, ըստ Հ. Մանանդյանի, «Ինչպես հավանական է ենթադրել, հյուսիս-արևելյան Հայաստանն էր, որին հռոմեացիները չէին կարողացել հաստատուն կերպով տիրապետել»[49]։ Իշխանության եկած Հադրիանոսը Վաղարշին ճանաչել է ամբողջ Մեծ Հայքի թագավոր։ Հադրիանոսի կենսագիր Էլիոս Սպարտիանը հաղորդում է, որ Հադրիանոսը «թույլ տվեց, որ հայերն ունենան թագավոր, մինչդեռ Տրայանոսի ժամանակ նրանք ունեցել են տեղակալ»[50]։

Վերոհիշյալ Պարթամասպատը Հադրիանոսից ստացել է Օսրոյենե (Եդեսիայի) թագավորությունը։ Այսպիսով, այս անձնավորությունը մնում էր իբրև պարթևական գահի համար վտանգավոր թեկնածու և ախոյան ու վայելում հռոմեական կայսեր հովանավորությունը։ Այս հանգամանքը սրեց փոխհարաբերությունները պարթևների և Հռոմի միջև։ Պարթևական թագավոր Վաղարշ Բ-ը (105—147) հայտնում էր իր դժգոհությունը։ Խաղաղասեր Հադրիանոսը հաշվի առնելով այս հանգամանքը, 123 թվականին բանակցությունների մեջ մտավ և Պարթամասպատը հեռացվեց իր նոր թագավորությունից ևս։ Եդեսիայի գահը նորից տրվեց նախկին դինաստիային։

**Առևտրական-տնտեսական նոր վերելքը:** Երկարատև խաղաղության ժամանակաշրջանը նպաստավոր եղավ տնտեսական և մշակութային հետագա վերելքի համար Հայաստանում և ամբողջ Մերձավոր Արևելքում, հատկապես միջազգային առևտրի զարգացման համար։ Տրայանոսը հատուկ ուշադրություն է դարձրել ապրանքների փոխադրության մաքսերի գանձումը կազմակերպելու վրա Եփրատ ու Տիգրիս գետերի մոտ[51]։ Ըստ երևույթին, առևտուրը Ասորիքի արևելյան սահմանների վրա գոյություն ունեցող պահեստակետերի և Եփրատի վրա եղած քաղաքների միջև ոչ մի ժամանակ այնքան աշխուժացած չէր, որքան Հադրիանոսի և Պիոսի ժամանակաշրջանում[52]։ Սակայն այդ զարգացումը տեսնում ենք նաև հյուսիսային մայրուղիների վրա գտնվող կենտրոններում, ինչպիսին էին Արտաշատը և Մծբինը։

---

47 Նույն տեղում, էջ 30, 31, նաև՝ Cass. Dio, LXXV, 9,6։

48 Նույն տեղում, էջ 31, 34։

49 Նույն տեղում։

50 Նույն տեղում, էջ 34։ Նաև՝ Էլիոս Սպարտիան, § 21։

51 Տե՛ս նույն տեղում, էջ 30։ Т. *Моммзен*, История Рима, т. V, էջ 363 և ծան. 1։

52 Տե՛ս Т. *Моммзен*, История Рима, т. V, էջ 364։

**Վաղարշապատ քաղաքի հիմնադրումը:** Հասարակության զարգացումը և միջազգային առևտրի նոր աշխուժացումը, որի կենտրոնում գտնվում էր Հայաստանը, նոր քաղաքների հիմնադրման անհրաժեշտություն է ստեղծում։ Վաղարշ Ա-ի թագավորության տարիներին հիմնադրվել է Վաղարշապատ քաղաքը, որի մասին տեղեկություններ է պահպանել Մովսես Խորենացին։

Ըստ նրա տեղեկությունների, Շրեշ-Բլուրի մոտերքն է գտնվել դեռևս Երվանդունիների ժամանակներից հայտնի Վարդգեսավան քաղաքը. Վաղարշ Ա-ը նրանից հարավ՝ այժմյան Էջմիածնի վանքի և նրա շրջակայքի տերիտորիայի վրա հիմնադրել է քաղաք, որը իր անունով կոչել է Վաղարշապատ[53]։

Նոր քաղաքային համայնքի համար թագավորը տրամադրել է հատուկ մերձքաղաքային տերիտորիա, որը կոչվել է «Քաղաքուդաշտ»։ Վաղարշապատ է փոխադրում Վաղարշը իր արքունիքը։ Սակայն ինչպես նրա ժամանակ, այնպես էլ հետագայում, իբրև մայրաքաղաք, փաստորեն մնում էր Արտաշատը։ Վաղարշապատը երկրորդ մայրաքաղաքն էր[54]։

Խորենացին հաղորդում է նաև, որ Վաղարշ Ա-ն է հիմնադրել Բասեն գավառում, Մուրց և Երասխ գետերի միախառնման տեղում գտնվող Վաղարշավան ավանը[55] (այժմ՝ Քյոփրի-քյոյ գյուղը)։

**Ալանների ներխուժումները Հայաստան:** Տրայանոսի մահը և նրան հետևած կայսրության թուլությունը ունենում է նաև այն հետևանքը, որ նորից աշխուժանում են ալանների ներխուժումները, որոնք ավերում էին Հայաստանի և Ատրպատականի սահմանամերձ շրջանները, այլև թափանցում էին մինչև Կապադովկիա։ Տիրող վիճակը օգտագործեց Միհրդատ Գ-ից հետո գահ բարձրացած վրաց թագավոր Փարսման Բ-ը (II դարի 30—50-ական թվականներ)։ Սա ընդարձակեց իր տերիտորիան, դուրս գալով ծովափ, այն է՝ զիդրիտների

---

53 Վաղարշը, հաղորդում է Խորենացին, «պարսպով պատեց նաև Վարդգեսի հզոր ավանը... որտեղ և Արշակունի Տիգրան Միջինը (Տիգրան Բ Մեծը—ծեղ.) նստեցրեց հրեա գերիների կեսը, որը և վաճառաշահ քաղաքագյուղ դարձավ։ Այժմ Վաղարշը պատեց այն պարսպով և ամուր պատվարով և կոչեց Վաղարշապատ, որ (կոչվում է նաև) «Նոր քաղաք» (Խորենացի, Բ, կե)։

54 Մոմզենը, հիմնվելով Սուիդասի բառգրքի «Մարտիոս» բառի վրա (նրա ենթադրությամբ՝ Դիոն Կասսիոսի պատառիկներից մեկը), պնդում էր, թե հռոմեական զորավար Պրիսկոսը, որը 163 թվականին գրավել էր Հայաստանը ու ավերել Արտաշատը, նրանից ոչ հեռու հիմնել է նոր մայրաքաղաք՝ Կայնեպոլիսը (Καινήπολις) հայերեն՝ «Նոր քաղաք», որը և Վաղարշապատն է (Տե՛ս Т. Моммзен, История Рима, т. V, էջ 367, ծան. 2)։ Պատմագրության մեջ ընդունված այս սխալ կարծիքը առաջին անգամ հերքեց Ասատուրյանը։ Վերջինս նշում է, որ Դիոնի այս պատառիկում ասված չէ, թե քաղաքը հիմնադրել է Պրիսկոսը (Հ. Յ. Աստուրյան, Քաղաքական վերաբերությունները..., էջ 214 և ծան. 7)։ Այդ հատվածում, նշում է Հ. Մանանդյանը, «հիշված է միայն, որ Մարտիոս Վերոսը, հայերի պարտամության ճնշելուց հետո, Կայնեպոլիսը հայտարարել է իբրև Հայաստանի մայրաքաղաք» (Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 37)։ Ասատուրյանը և Հ. Մանանդյանը ընդունում են Մ. Խորենացու տեղեկությունը, որ Վաղարշապատի հիմնադիրը եղել է հայոց Վաղարշ Ա Արշակունին։

55 Տե՛ս *Я. А. Манандян,* О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н. э.—XV в. н. э.), Ереван, 1954, էջ 91—94։

ցեղով բնակեցված ծովափը, որը տարածվում էր Պարխարյան լեռներից հյուսիս՝ մինչև Ճորոխի գետաբերանը[56]։ Փարսման Բ-ը հաղորդակցության մեջ էր Հյուսիսային Կովկասի վաչկատուն ցեղերի, հատկապես ալանների հետ։ Ինչպես հաղորդում են Դիոն Կասսիոսը և Փլավիոս Արրիանոսը, որն այդ ժամանակ Կապադովկիայի զինվորական շրջանի լեգատն էր, ալանները Փարսման Բ-ի աջակցությամբ նորից ներխուժում են Աղվանք և Ատրպատական, ապա Հայաստանի վրայով անցնում նաև Կապադովկիա։ Հայոց թագավոր Վաղարշ Ա-ը[57] կարողացավ կանգնեցնել նրանց հարձակումները «նվերներով», իսկ Կապադովկիայի լեգատ Փլավիոս Արրիանոսը ռազմական պատրաստություններ է տեսնում։ Դիոնի վկայությամբ, ահաբեկված ալանները դադարեցնում են իրենց ներխուժումները[58]։ 138 թվականին Վաղարշ Ա-ը դեսպաններ է ուղարկում Հռոմ և գանգատվում Փարսման Բ-ի դեմ, և կայսրը հրավիրում է վրաց թագավորին իր մոտ, իբր ենթարկելու պատասխանատվության, սակայն Փարսման Բ-ը հայրենիք է վերադառնում կայսրից նոր շնորհների արժանացած։

Փլավիոս Արրիանոսի ուշագրավ մի հաղորդումից երևում է, որ Հադրիանոսի ժամանակ Կապադովկիայի լեգատի զորքի մեջ եղել է հայ զորամաս[59]։ Այս փաստը ենթադրել է տալիս, որ այն ռազմական կազմակերպությունը, որ հիմնադրել էր դեռևս Տրայանոսը, այսինքն, որ Հայաստանը ռազմական տեսակետից մտնում էր Կապադովկիայի զինվորական շրջանում, ինչ-որ չափով պահպանվում էր նաև Վաղարշ Ա-ի ժամանակ ու, թերևս, նաև հետագայում։

**Սոհեմոս թագավորը**: Նոր գահ բարձրացած Անտոնինոս Պիոսը (138—161) դժգոհ լինելով Հայոց թագավոր Վաղարշ Ա-ի քաղաքականության ինչ-որ կողմերից, հավանաբար 144 թվականին, գահընկեց է անում նրան և փոխարենը Հայոց թագավոր է նշանակում Սոհեմոսին[60], որը Ասորիքի էմեսա քաղաքի «թագավորն» էր և իբրև շառավիղ հռչակավոր Աքեմենյան տոհմի, համարվում էր հայկական գահի արժանի թեկնածու։

Պահպանվել է պղնձե սեստերցիա, թողարկված Հռոմում Անտոնինոս Պիոսի ձեռքով՝ Սոհեմոսին Հայոց թագավոր կարգելու առթիվ, որը և հնարավորություն է տալիս որոշելու Վաղարշ Ա-ի գահընկեցության տարին՝ 144 թվականը։

Սոհեմոսի մասին պահպանվել են հետաքրքիր տեղեկություններ, որոնք մեզ հասել են Փոտի (858—867) միջոցով։ Խոսելով քանատեղծ Յամբլիքոսի մասին, որը հեղինակ է եղել «Բաբելոնականք» („Βαβυλωνιακά") վեպի,

---

[56] Տե՛ս Г. А. Меликишвили, К истории древней Грузии, էջ 353—354։

[57] Պատմագրության մեջ գերիշխող էր այն կարծիքը, որ Դիոնի հիշատակած Վաղարշը պարթևների թագավոր Վաղարշ Բ-ն է (130—148)։ Գուտշմիդը առաջին անգամ հերքեց այդ, ապացուցելով, որ այդ Վաղարշը Հայաստանի Վաղարշ Ա թագավորն էր (տե՛ս Gutschmid, Geschichte Irans, էջ 147)։

[58] Տե՛ս Г. А. Меликишвили, К истории древней Грузии, էջ 357—362։

[59] Տե՛ս Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 35։

[60] Տե՛ս Հ. Յ. Ասատուրյան, Քաղաքական վերաբերություններ..., էջ 214։

գրված Արտաշատում[61], Փոտը հաղորդում է. «Իր մասին մատենագիրը ասում է, որ բաբելոնացի էր... և ծաղկում էր Աքեմենյան Արշակունյան Սոհեմոսի ժամանակ, որը թագավոր էր և հաջորդել էր իր նախնիներին, որոնք նույնպես եղել են թագավորներ։ Բայց նա նաև Հռոմի ծերակույտի անդամ եղավ ու նաև հյուպատոս և հետո կրկին անգամ դարձավ թագավոր Մեծ Հայքի։ Արդ ինքը (Յամբլիքոսը) ծաղկում էր, ինչպես ասում է նա, հենց սրա օրով։ Իսկ Հռոմայեցոց թագավորությունը ժառանգեց Անտոնինոսը»[62]։



Մարկոս Ավրելիոսի (161—180) դրամը

Հելլենիստական Արևելքի փոքր թագավորությունների դինաստիաների համար սովորական երևույթ էր՝ իրենց տոհմը համարել Աքեմենյանների շառավիղ։ Սրանցից էին սերված համարվում, օրինակ, Ծոփքի և Կոմմագենեի Երվանդունիները, իսկ Արշակունի կոչումը, հավանաբար, սոսկ ձև էր, ցույց տալու համար, որ Հռոմը չի խախտում համաձայնագիրը, դնելով հայկական գահի վրա «Արշակունիների» դինաստիայի ներկայացուցչի։ Ենթադրվում է, որ այս Սոհեմոսը ազգական էր մի այլ Սոհեմոսի, որ Ներոնի ժամանակ գահակալեց իբրև Ծոփքի թագավոր (54—63)[63]։

Ըստ Խորենացու ժամանակագրության, Սոհեմոսին համապատասխանում է Տիգրան Վերջինը[64], որը նրա հաղորդմամբ, թագավորել է 42 տարի[65]։ Տարիների այս քանակը կարելի է վերագրել Սոհեմոսին։ Եթե Սոհեմոսի գահակալության առաջին տարին ընդունենք Վաղարշ Բ-ի թագավորության 23-րդ տարում, այսինքն՝ 144 թվականին, այդ դեպքում նրա թագավորության վերջին տարին պիտի լինի 186 թվականը[66]։ Խորենացու մոտ, ուրեմն, անտես է արված Բակուրի կարճատև թագավորությունը՝ 161—163 թվականներին։

---

61 Տե՛ս *Т. Моммзен,* История Рима, т. V, էջ 367, ծան. 3։

62 Տե՛ս Հ. Մանանդյան. *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ,* էջ 38—39, *Photii,* Bibliotheca , 94.

63 Տե՛ս *К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении, էջ 225։ Սոհեմոսի տոհմի դինաստիայի մասին տե՛ս *J. Marquart,* Römische Staatsverw., I էջ 403—404։

64 Համե. Մ. Չամչյան, *Պատմութիւն Հայոց,* հատ. Ա, Վենետիկ, 1784, էջ 355—357։ *К. Костанянц,* История Армении (краткий очерк), М., 1941, էջ 42։ *К. В. Тревер,* Очерки по истории..., էջ 225։

65 Խորենացի, Բ, կդ։

66 Տե՛ս Հ. Մանանդյան, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ,* էջ 43—49։

## 4. ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅՔԱՐԸ ՄԵԾ ՀԱՅՔԸ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊՐՈՎԻՆՑԻԱՅԻ ՎԵՐԱԾԵԼՈՒ ՆՈՐ ՓՈՐՁԵՐԻ ԴԵՄ

**Պարթև-հռոմեական բախումները Հայաստանի շուրջը:** *Վաղարշ Ա-ի գահընկեցությունը և Սոհեմոսի նշանակումը Մեծ Հայքի թագավոր խախտումն էր Հռանդեայի համաձայնագրի և այս անգամ խախտողը հռոմեական կողմն էր։ Այս հանգամանքը պարթևական արքունիքը չէր կարող երկար հանդուրժել և Վաղարշ Բ-ը պատրաստվում էր պատերազմի, բայց ինչպես հաղորդում է Հուլիոս Կապիտոլինոսը, Անտոնինոս Պիոսը կարողացավ սոսկ նամակներով ետ կանգնեցնել նրան այդ մտադրությունից։*

*Երբ պարթևական գահը բարձրացավ Վաղարշ Գ Պերոզը (148—191), Պարթևստանը նորից ուժեղացավ և անցավ ակտիվ արտաքին քաղաքականության։ Վաղարշ Գ-ը արդեն 154—155 թվականներին պատրաստվում էր արշավել Հայաստան, սակայն Անտոնինոս Պիոսը Եփրատ գետի մոտ անձամբ տեսակցություն ունեցավ նրա հետ և կանխեց նոր պատերազմի վտանգը։ Այդ դեպքից վեց տարի անց մահացավ Անտոնինոս Պիոսը և գահ բարձրացավ Մարկոս Ավրելիոս Փիլիսոփան (161—180), որի գահակալության առաջին տարում Վաղարշ Գ-ի հրամանով Հայաստան ներխուժեց նրա Խոսրով զորավարը իր բանակով։ Սոհեմոսը փախավ Հռոմ, իսկ նրա փոխարեն պարթևները Հայոց թագավոր կարգեցին Արշակունի Բակուրին (161—163)։ Հռոմ փախած Սոհեմոսը սենատորի կոչում ստացավ և շարունակում էր հայկական գահի հավակնորդ համարվել ապագայի համար։*

**Բակուր Ա Արշակունին Մեծ Հայքի թագավոր:** *Այս դեպքերի մասին ճիշտ տեղեկություններ է պահպանել Մ. Խորենացին։ Վերջինս հաղորդում է, որ «Երբ վախճանվեց հռոմեացիների Տիտոս Երկրորդ թագավորը, որ կոչվեց Անտոնինոս Ավգուստոս, պարսից Պերոզ թագավորն արշավեց հռոմեացիների իշխանության վրա, որի պատճառով և «Պերոզ» կոչումն ստացավ, որ նշանակում է «Հաղթող», որովհետև նա առաջ հունարեն կոչվում էր Վաղեգեսոս»[67]։*

*Հանկարծակի եկած Կապադովկիայի ռազմական շրջանի հրամանատար, լեգատ Էլիուս Սեվերիանոսը հազիվ կարողանում է հասնել Կարնո գավառի ջերմուկները՝ Էլեգեյան (այժմ՝ Իլիջա), բայց ծանր պարտության է մատնվում պարթևական զորավար Խոսրովի կողմից։ Հռոմեական զորքն իսպառ ջնջվում է, իսկ ինքը՝ Սեվերիանոսը, անձնասպան է լինում (161 թվական)։*

*Հաղթական պարթևական բանակը շարունակում է իր երթը դեպի Արևմուտք (ըստ երևույթին Սատաղի կողմից) և ներխուժում Կապադովկիա, ապա Ասորիք, որի լեգատ Ատտիդիոս Կոռնելիոսը, չարաչար պարտվելով, դիմում է փախուստի։ Պարթևական զորքերը գրավում են Մծբինը և Եդեսիան, որից հետո նվաճում են Ասորիքի քաղաքները։ Խորենացին նորից պահպանել է ճիշտ տեղեկություն, որ «Պերոզն Ասորիքի վրայով ասպատակում էր պաղեստինացիների կողմերը»[68]։*

*Բակուրի երկամյա թագավորության մասին շատ քիչ տեղեկություններ են*

---

67 **Խորենացի**, *Բ, կգ։*

68 **Խորենացի**, *նույն տեղում։*

*պահպանվել։ Մեզ հասել են Ասինիոս Քվադրատոսի (160—230) «Պարթևականք» աշխատության պատառիկները Ստեփան Բյուզանդացու միջոցով։ Պատառիկներից մեկում ասված է. «Այդ ժամանակ հայոց թագավոր Պակորը (Բակուրը) գտնվում էր Հայաստանում՝ Արտաշատի մոտ և Ուտիքում»[69]։ Խոսքը վերաբերում է այն պահին, երբ նոր գահակալած Բակուրը գտնվում էր հիմնական ձմեռանոցում՝ Ուտիքում (այժմյան Ղարաբաղի դաշտավայրը), «Մյուս Տիգրանակերտ» կոչվող վայրում (այժմ՝ Թառնաուտ և Շահբուլաղ[70]), Արցախ նահանգին սահմանակից։ Ինչպես ճիշտ նշում է Կ. Վ. Տրեվերը, այս դեպքը պետք է տեղի ունեցած լինի մինչև Արտաշատի գրավումը Պրիսկոսի կողմից՝ 163 թվականին[71]։*

**Հայկական և պարթևական արշավանքները:** *Մարկոս Ավրելիոս կայսրը (161—180) դիմում է կտրուկ միջոցների, Արևելք նետելով կայսրության ամբողջ ռազմական ուժը։ 163 թվականի գարնանը Անտիոք է ժամանում կայսեր եղբայր և հոգեզավակ, գահակից Լուկիոս Վերոս կայսրը (161—169), որը իր հետ բերել էր նոր ռազմական ուժեր։ Սրանց հրամանատարությունը Լուկիոս Վերոսը հանձնում է իր լավագույն զորավարներին՝ Ավիդիոս Կասսիոսին, Ստատիոս Պրիսկոսին և Մարտիոս Վերոսին։ Սկզբում հռոմեացիները առաջարկում են հաշտության բանակցություններ սկսել, սակայն Վաղարշ Գ-ը մերժում է։ Սրանից հետո, միայն 163 թվականի ամռանը հռոմեական զորքը ընդհանուր հարձակման է անցնում Ասորիքում, Հայաստանում և Միջագետքում։*

*Ստատիոս Պրիսկոսը, որը նշանակված էր Կապադովկիայի ռազմական շրջանի հրամանատար, բնական է, պիտի մղեր կռվները Հայաստանում, որտեղ նա մտնում է, ըստ երևույթին, նույն Սատաղի կողմից։ Համառ կռիվներից հետո նա նվաճում է Հայաստանը և 163 թվականի վերջերին հռոմեական զորքերը, պաշարումից հետո, գրոհով վերցնում են Արտաշատը, որը ենթարկվում է կողոպուտի և ավերածության, սակայն սխալ է այն կարծիքը, իբր Հայաստանի մայրաքաղաքը հիմնահատակ կործանվում է[72]։*

*Նույն այս ժամանակ Եփրատի ափին, Եվրոպոս քաղաքի մոտ (Ջեգմայից հարավ), Վաղարշ Գ-ը պարտություն է կրում հռոմեական այն զորամասերից, որոնք գործում էին Ասորիքում և Միջագետքում և որոնց հրամանատարն էր Ավիդիոս Կասսիոսը։ Վաղարշ Գ-ը անընդհատ նահանջելով, թողնում է Միջագետքը և անցնում Տիգրիսի արևելյան ափը։ Կասսիոսը հետապնդելով նրան, վերցնում է Հյուսիսային Միջագետքի Եդեսիա և Մծբին քաղաքները և հասնում Բաբելոնիա։ Հելլենիստական աշխարհի խոշորագույն կենտրոն Սելևկիա քաղաքը մատնվում է ավարառության և հրդեհի։ Նույն բախտը վիճակվում է Տիզբոն մայրաքաղաքին, որի արքայական դղյակը հողին է հավասարեցվում (164 թվական)։*

---

69 *Տե՛ս К. В. Тревер*, Очерки по истории..., *էջ 232։*

70 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 86։*

71 *Տե՛ս К. В. Тревер*, Очерки по истории..., *էջ 232։*

72 *Տե՛ս նույն տեղում, էջ 228 և* Հ. Յ. Մանուրյան, *Քաղաքական վերաբերությունները..., էջ 220, ծան. 1։*

Ինչպես վկայում է Հուլիոս Կապիտոլինոսը[73], Մարկոս Ավրելիոսը և Լուկիոս Վերոսը ստանում են «Հայկական» (Armeniacus) պատվանունը, իսկ «երբ պարթևական պատերազմը ես հաջողությամբ գլուխ բերվեց, երկուսն էլ ստացան նաև «Պարթևական» (Parthicus) անունը»[74]։

Կասսիոս Դիոնի վկայությամբ Ավիդիոս Կասսիոսը ժանտախտի համաճարակի պատճառով Սելևկիայից և Տիզբոնից ետ քաշվելով հյուսիս՝ «վերադարձի ժամանակ... կորցրեց իր զինվորների մեծագույն մասը սովի ու հիվանդության պատճառով, բայց ետ եկավ Ասորիք իր զորաբանակի մնացորդների հետ»[75]։

Հայաստանը և Արտաշատ մայրաքաղաքը նվաճելուց հետո, ըստ երևույթին, ապստամբ հայերի կողմից սպանված Ստատիոս Պրիսկոսին փոխարինել էր հռոմեական զորավար Մարտիոս Վերոսը։ Հռոմեացիների վարմունքը նվաճված Հայաստանում ստացավ պատժիչ արշավախմբի բնույթ։ Նրանք տեղավորեցին իրենց զորամասերի հիմնական մասը Վաղարշապատում և մտադրվեցին վերացնել թագավորությունը և Հայաստանը հռչակել հռոմեական պրովինցիա։ Այս բոլորը լցրեց համբերության բաժակը և առաջ բերեց համաժողովրդական ապստամբական շարժում։

**Ապստամբություն Հայաստանում սատրապ Տրդատի գլխավորությամբ:** Սուիդասի բառգրքում (Μάρτιος բառի տակ) պահպանվել է Կասսիոս Դիոնին վերագրվող հատվածներից մեկը, որից երևում է, որ հռոմեական զավթիչների դեմ Հայաստանում բռնկվել է մեծ ապստամբություն, որն իր մեղմ վարմունքով կարողացել է հանդարտեցնել Մարտիոս Վերոսը։

Այս ապստամբության առթիվ Դիոն Կասսիոսը հաղորդում է. «Մարտիոս Վերոսն ուղարկել էր Թուկիդիդեսին, որպեսզի նա Սոհեմոսին վերստին բերե Հայաստան։ Սա զենքի ազդած ահով ու նաև բոլոր իրեն հանդիպողների վերաբերմամբ ցուցաբերած բարեմտության շնորհիվ հաստատուն կերպով առաջանում էր։ Իսկ Մարտիոսն ընդունակ անձնավորություն էր և ոչ միայն զենքով էր զսպում ընդդիմադրողներին կամ կանխում էր վտանգը արագ գործողությամբ և կամ խաբում էր խորամանկությամբ, որ հատուկ պաշտպանության միջոց էր զորավարների, այլև հավանեցնում էր համոզիչ խոսքերով և բարեկամություն էր շահում վեհապանծ պարգևներով կամ հրապուրում էր բարի հուսադրմամբ»[76]։

Ապստամբական շարժման մանրամասնությունների մասին շատ քիչ տեղեկություններ են հասել[77]։ Միայն հայտնի է, որ ապստամբությունը գլխավորել է կորովի, համարձակ «սատրապ Տիրիդատեսը» (այսինքն՝ նախարար Տրդատը) և այն աչնպիսի ծավալ է ստացել, որ Լուկիոս Վերոսը օգնության է կանչել հենիոխների թագավորին։ Սրան Տրդատը սպանել է, և հաղիվ է նրա

---

[73] Տե՛ս *Jul. Capit.*, Marcus Aurelius, VIII և IX.

[74] Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 42։

[75] *К. В. Тревер*, Очерки по истории..., էջ 228—229։ Նաև *Dio*, LXXI 1, 3, 2, 1—4:

[76] Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 44։ Նաև՝ *Dio*, LXXI, 2, 3։

[77] Տե՛ս Լեո, Երկերի ժողովածու, հատ. Ա, էջ 356։

*մահացու հարվածից զերծ մնացել հռոմեական կայսրը և զորավարը՝ Լուկիոս Վերոսը։ Կասսիոս Դիոնը հետևյալն է պատմում այս անցքերի մասին։ «Եվ Տրդատ սատրապին, որը Հայաստանում խռովություններ էր առաջ բերել և սպանել էր հենիոխների թագավորին ու նաև սուրը հանել էր, սպառնալով Վերոսին, որն այդ բանի համար նրան հանդիմանել էր՝ Մարկոս Ավրելիոսը փոխանակ սպանել տալու՝ աքսորեց Բրիտանիա»*[78]*։*

*Ինչպես տեսնում ենք, ապստամբության ղեկավար նախարար Տրդատը ընկել է հռոմեացիների ձեռքը, որոնք «մարդասիրաբար» վերաբերվելով, բավարարվել են միայն նրա աքսորով հեռավոր Բրիտանիա*[79]*։ Տրդատի դեմ հռոմեացիների դուրս բերած հենիոքների թագավորը, անշուշտ, «Մաքելոնների և հենիոքների թագավորության» արքայիկն էր, որի տերիտորիան գտնվում էր Պարխարյան լեռների ծովահայաց անտառախիտ փեշերին և հասնում էր Սև ծովի ափերը, այժմյան Ռիզեի և Աթինայի միջև, այսինքն՝ ըստ հին հայկական աղբյուրների՝ Խաղտիքում։ Սրանց հարևան էր Պոնտական-Պարխարյան լեռների հարավային փեշերին գտնվող Բագրատունիների «ձեռական իշխանության» գավառը, որը Սպերն էր՝ Ճորոխի հովտում։ Մաքելոնները և հենիոքները առաջին անգամ չէր, որ Հռոմի սադրանքով այս կողմերից ներխուժում էին Հայաստան և ավարառության ենթարկում։ Եթե այդ այդպես է, ապա նախարար Տրդատը պետք է լինի այն Տրդատ Բագրատունին, որի մասին Խորենացին խոսում է «Տիգրան Վերջինին» նվիրված նախորդ գլխում*[80]*։*

**Մեծ Հայքի թագավորության վերականգնումը։** *Ապստամբությունը ճնշվել էր, բայց միևնույն ժամանակ հարկադրել էր հռոմեացիներին ետ կանգնել իրենց ծրագրից՝ Հայաստանը հռոմեական պրովինցիա դարձնելու, և նորից վերականգնվեց նախկին դրությունը, այսինքն՝ Հայկական թագավորությունը պահպանվեց և այն նորից հանձնվեց Սոհեմոսին։*

*Լուկիոս Վերոսը, գալով Նոր քաղաք, որը (մահացած) Պրիսկոսի դրած հռոմեական կայազորն էր իր ձեռքում պահում, և ապստամբության փորձ անողներին խոսքով ու գործով հնազանդեցնելուց հետո հայտարարեց, որ «Նոր քաղաքը» կլինի Հայաստանի գլխավոր քաղաքը»*[81]*։*

*Նոր քաղաք-Վաղարշապատը, այդպիսով պաշտոնապես հայտարարվում է Մեծ Հայքի թագավորության «գլխավոր քաղաք», այսինքն՝ մայրաքաղաք, որտեղ մնում են հռոմեական լեգեոնները։ Սրան հետևեց կարգադրությունը՝ Սոհեմոսին բերել Հռոմից և նորից բազմեցնել հայկական գահին։ Կապադովկիայում տեղավորված հռոմեական երկու լեգեոններից* (XII Fulminata *և* XV Apollinaris) *մեկի զորահրամանատար Թուկիդիդեսին Լուկիոս Վերոսը հանձնարարում է Սոհեմոսին վերադարձնել Հայաստան։ Հռոմեական գրող Կոռնելիոս Փրոնտոնը (մահացած 170 թվականի մոտերքը), երբև դեպքերի ժամանա-*

---

78 **Հ. Մանանդյան**, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 44։ Նաև Dio, LXXI, 14, 2։*

79 *Տե՛ս K. B. Тревер,* Очерки по истории..., *էջ 230։*

80 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, կզ։*

81 *Dio*, LXXI, *2—3։ Տե՛ս* **Հ. Մանանդյան**, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 44։ Նաև K. B. Тревер,* Очерки по истории..., *էջ 238։ Dio, LXXI, 1, 2, 3, 1—4։*

կակից, նշում է, որ «Մարկոս Ավրելիոսը գերադասեց թագավորությունը Հայաստանում հանձնել Սոհեմոսին, և ոչ թե Վաղարշին, իսկ Բակուրին զրկեց թագավորությունից»[82]։ Տվյալ դեպքում հազիվ թե Վաղարշ անվան տակ պարթևական թագավոր Վաղարշ Գ-ին պիտի հասկանալ, ինչպես այդ կարծում է Կ. Վ. Տրևերը[83]. կարելի է ենթադրել, որ սա գահընկեց արված հայոց թագավոր Վաղարշն է[84]։ Հավանաբար, այս Վաղարշը ևս տարվել է Հռոմ և համարվել հայկական գահի հնարավոր թեկնածու։ Ինչպես տեսանք, այնուամենայնիվ, գերադասվել է Սոհեմոսը, որը և թագավորել է Հայաստանում երկրորդ անգամ՝ 164—186 թվականներին։

**166 թվականի խաղաղության պայմանագիրը:** Հայկական պատերազմի վերջանալուց հետո, 165 թվականին հռոմեական զորքերը, հավանաբար, Մարտիոս Վերոսի գլխավորությամբ, մտնում են Մեդիա-Ատրպատական, որը այդ ժամանակ, ըստ երևույթին, ինքնուրույն պետություն էր։ Այս երկիրը ևս նվաճելուց հետո Մարկոս Ավրելիոս և Լուկիոս Վերոս կայսրներն ընդունում են նաև «Մեդական» (Medicus) տիտղոսը։

Պարթևները լրիվ հաղթահարված էին և ավելի քան չորս տարվա պատերազմից հետո, 166 թվականի վերջերին խաղաղություն է հաստատվում։

Ըստ խաղաղության պայմանագրի, կայսրության սահմանն անցավ Միջագետքի արևմտյան մասը, մինչև Խաբուր գետը։ Օսրոյենե-Եդեսիայի թագավորությունը դարձավ Հռոմից կախյալ պետություն, իսկ հելլենականացված հինավուրց Խառան քաղաքը հայտարարվեց ազատ քաղաք՝ կայսրության հովանավորության ներքո։ Միջագետքից հյուսիս գտնվող Մեծ Հայքը դարձավ Հռոմից կախյալ թագավորություն։ Ինչպես նշում է Կ. Վ. Տրևերը «Պարթևստանի հետ 166 թվականին կայացած խաղաղությունը վերականգնեց այն դրությունը, որ գոյություն ուներ մինչև 161 թվականը, այսինքն՝ Հայաստանը անվանապես հռչակվում էր անկախ, բայց պայմանով, որ նրա թագավորները լինեն Հռոմի դրածոները. այս այն առավելագույնն էր, ինչին կարող էր հասնել Հայաստանը տվյալ էտապում»[85]։

Լուկիոս Վերոսը գահընկեց Բակուր թագավորի հետ վերադարձավ Հռոմ։ Այստեղ Բակուրը վայելել է Մարկոս Ավրելիոս կայսեր հովանավորությունը և իր եղբոր Միհրդատի հետ ընդունվել կայսերական Ավրելյան ազգակցության մեջ[86]։ Ինքը և իր եղբայրը կրում էին «Ավրելիոս» պատվանունը։ Բակուրը չի կորցրել իր արքայական ատրիճանները։ Դեռևս XVI դարի վերջում Հռոմում մի մարմարե զոհասեղանի վրա պահպանվում էր Բակուրի հունարեն մի արձանագրությունը, փորագրված 164 թվականին և նվիրված նրա մահացած եղբոր՝ Ավրելիոս-Միհրդատի (բնագրում Μεριθάτι) հիշատակին, ուր Բակուրը ան-

---

82 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории..., էջ 236։

83 Նույն տեղում։

84 Վաղարշ Ա-ը Հայաստանում թագավորել է 25 տարուց ավելի (117—144)։ Գահընկեցությունից հետո Վաղարշը պիտի լիներ 45 տարեկան, իսկ 164 թվականին՝ 65 տարեկան։ (Տե՛ս նաև Հ. Ց. Աստուրյան, Քաղաքական վերաբերությունններ..., էջ 220—221)։

85 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории..., էջ 237։

86 Տե՛ս Հ. Ց. Աստուրյան, Քաղաքական վերաբերություններ..., էջ 222—223։

վանված է «Ավրելիոս Պակորոս, թագավոր Մեծ Հայքի» (Αὐρήλιος Πάκορος Βασιλεὺς Μεγάλης Ἀρμενίας)[87]:

Որոշ տվյալներից կարելի է ենթադրել, որ Հռոմ տարված գահընկեց Բակուրի անունը դեռևս արծարծվում էր Հռոմի պետական շրջաններում իբրև հայկական գահի հնարավոր թեկնածու՝ Սոհեմոսի և Վաղարշի կողքին[88]։

Մարկոս Ավրելիոս և Լուկիոս Վերոս կայսրները իրենց հաղթահանդեսը Հռոմում տոնեցին 166 թվականի օգոստոսի 23-ին։ Նրանց հաղթանակները հավերժացնելու համար Մարկոս Ավրելիոսի հրամանով Հռոմում կառուցվեց մի հոյակապ կոթող, որի վրա քանդակված էին վերոհիշյալ անցքերը։ Այժմ էլ կարելի է Հռոմում տեսնել այդ կոթողը, որի վրա գրված է. «Ավրելիոս կայսրը՝ հայերին, պարթևներին և գերմանացիներին մեծ պատերազմում հաղթելուց հետո՝ հաղթանակի այս կոթողը, իբրև կատարված գործերի հիշատակ, նվիրել է իր հորը՝ Անտոնինոս Պիոս կայսրին»[89]։



Լուկիոս Վերոսի (161—169) դրամը

Նոր իրադրության մասին արտաքին աշխարհին իրազեկ պահելու համար, կայսրության փողերանոցներում 163—168 թվականներին թողարկվում են ոսկյա, արծաթյա ու բրոնզե շքադրամներ։

166 թվականի խաղաղության պայմանագիրը ունեցավ շատ մեծ նշանակություն։ Այն սահմանագիծը, որ որոշվեց Միջագետքում, գոյություն ունեցավ գրեթե մինչև արաբների նվաճումները VII դարի կեսերին։ Իսկ Մեծ Հայքի թագավորության սահմանները հարատևեցին մինչև նրա բաժանումը՝ 387 թվականին։

## Հայաստանը Սոհեմոսի կրկին անգամ թագավորության տարիներին.

166 թվականից հետո, մինչև Սեպտիմիոս Սևերոս կայսրը (193—211), մոտ քառորդ դար, գրեթե ոչ մի տեղեկություն չունենք Հայաստանում տեղի ունեցած անցքերի մասին։ Այդ միջոցը որոշ չափով լուսավորում են Վաղարշապատում գտնված հունարեն և երկու լատիներեն արձանագրությունները։

165 թվականին հռոմեական բանակը վերադառնալով Հարավային Միջագետքից, իր հետ բերեց ժանտախտը, որը տարածվեց ամբողջ Առաջավոր Ա-

87 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории..., էջ 237—242։
88 Տե՛ս Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 43։
89 Նույն տեղում, էջ 45։

*սիայում ու Եվրոպայում։ Վաղարշապատում գտնված հունարեն արձանագրությունը պետք է փորագրված լինի հենց այդ տարին[90]։ Արձանագրության բնագրից իմանում ենք, որ Էլիոս Վալենտը, որը Վաղարշապատում կանգնած Ապոլլինարյան լեգեոնի խիլիարքոս էր, տապանաքար է դնում միաժամանակ մահացած 35 տարեկան կնոջը և 10 տարեկան դստերը[91]։*

*Արձանագրության մեջ հիշատակված Էլիոս Վալենտը հանդիսանում էր Հայաստանում և թերևս Իբերիայում (Վիրք) ու Ալբանիայում (Աղվանք) տեղավորված հռոմեական բանակի առաջին հրամանատարներից մեկը[92]։ Հայաստանի պահպանումը, հավանաբար, հանձնարարվել է XV* Apollinaris *լեգեոնին։*

*Վաղարշապատի մ. թ. 176 թվականի լատիներեն արձանագրությունը տեղեկացնում է, որ Մարկոս Ավրելիոս կայսեր ժամանակ 173—176 թվականներին Վաղարշապատում էր տեղավորված հռոմեական կայազորը, Կապադովկիայի լեգատ Արիոս Անտոնինոսի հրամանատարության ներքո, որը բաղկացած էր XII* Fulminata *և XV* Apollinaris *լեգեոնների երկու ջոկատներից* (vexillatio) *և այլ զորամասերից։ Իմանում ենք նաև, որ կառուցվել է ամրություն, որի պատի մեջ դրված է եղել տվյալ արձանագրությունը[93]։*

*Մյուս լատիներեն արձանագրությունը թվագրվում է 185 թվականով։ Կայսեր՝ Կոմմոդոսի (180—192) անունը ջնջված էր նրա մահից հետո, ինչպես և շատ ուրիշ արձանագրությունների մեջ։ Արձանագրությունից իմանում ենք, որ շարունակվում էին Վաղարշապատի միջնաբերդի ամրությունների շինարարական աշխատանքները XV* Apollinaris *լեգեոնի զորամասերի կողմից, Կապադովկյան զինվորական շրջանի լեգատ Կելիոս Կալվինի ընդհանուր հրամանատարության ներքո. աշխատանքների անմիջական ղեկավարն էր ցենտուրիոն Ավրելիոս Լաբրասը։*

*Հիշատակված արձանագրություններից կարելի է եզրակացնել, որ Սոհեմոսի գահակալության տարիներին՝ 163—186 թվականներին (23 տարի), Վաղարշապատում տեղավորված են եղել հռոմեական զորամասերը, որոնք պիտի պաշտպանեին Հռոմի շահերը[94]։*

## 5. ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Վաղարշ Բ՝ թագավոր Մեծ Հայքի:** *Անտիկ աղբյուրներում տեղեկություններ չեն պահպանվել, թե Սոհեմոսից հետո ով է թագավորել Հայաստանում։ Մնում են Մովսես Խորենացու տվյալները, որոնք այս ժամանակաշրջանի համար ավելի հավաստի են։ Միայն պիտի նշել, որ Պատմահայրը Վաղարշ Ա-ին և Բ-ին միացնում է և խոսում մեկ թագավորի՝ Վաղարշի մասին, որը գահա-*

---

90 Տե՛ս *К. В. Тревер,* Очерки по истории..., էջ 251—261, հատկապես էջ 259։

91 Տե՛ս նույն տեղում։

92 Տե՛ս *М. И. Ростовцев,* Новая греческая надпись из Эчмиадзина, «Христианский Восток», т. III, вып. 3, СПБ, 1915, էջ 245—246։

93 Տե՛ս *К. В. Тревер,* Очерки по истории..., էջ 262—267։

94 Տե՛ս նույն տեղում, էջ 270։ Նաև՝ Հ. Գ. Ասդուրյան, *Քաղաքական վերաբերությունները...*, էջ 223, ծան. 2։

կալել է Տիգրան Վերջինի (իմա՝ Սոհեմոսի) մահից հետո[95]։ Հերոդիանոսի (շուրջ 170—240) կցկտուր տեղեկություններից երևում է, որ հայոց թագավորը վերին աստիճանի զգույշ և չափավոր քաղաքականություն է վարում, չեզոք դիրք բռնելով պարթևների հանդեպ և խուսափելով օգնել նրանց։ Այս հանգամանքը իրավունք է տալիս ենթադրելու, որ Վաղարշ Բ-ը Վաղարշ Ա-ի սերնդից էր, նրա թոռն էր կամ եղբորորդին, և ոչ պարթևների նոր դրածո։ Ապագայում թերևս նոր նյութեր գտնվեն այս հարցին որոշակի պատասխան տալու համար։

Հ. Մանանդյանը, հիմնվելով Հերոդիանոսի վկայությունների վրա, ցույց է տալիս, որ Հռոմեական կայսրության մեջ ծագած գահակալական կռիվների ժամանակ իբրև հռոմեական կայսր Պեսկեննիոս Նիգերին են ճանաչել պարթևաց թագավոր Վաղարշ Դ-ը (191—208), Օսրոյենե-Եդեսիայի թագավոր Աբգար Թ-ը և Հատրայի թագավոր Բարսեմիոսը։ Վերջին երկու թագավորները նույնիսկ ռազմական օգնություն են ցույց տվել նրան։ Միայն Մեծ Հայքի թագավոր Վաղարշ Բ-ն էր, որ մնաց չեզոք և հրաժարվեց օգնել Նիգերին։

Այս տեղեկությունները հիմք են տալիս եզրակացնելու, որ Սոհեմոսի մահից հետո (186 թվական), Հռոմեական կայսրության մեջ տեղի ունեցող գահակալական կռիվների պայմաններում, Հայաստանից վռնդվել են Վաղարշապատում կանգնած հռոմեական ռազմական ուժերը։

«Նիգերը,— վկայում է Հերոդիանոսը,— մարդ ուղարկեց Պարթևաց, Հայոց և Հատրացոց թագավորների մոտ՝ խնդրելու նրանցից օգնություն։ Արդ՝ Հայոց թագավորը պատասխանեց, որ նա ոչ ոքին չէ օգնելու, սակայն եթե Սեվերոսն իր վրա հարձակվելու լինի՝ ինքը պատրաստ է իր երկիրը պաշտպանել, իսկ Պարթևաց թագավորն ասաց, որ կկարգադրե իր կուսակալներին զորք գումարել. այսպես էին նրանք սովորաբար անում, երբ հարկավոր էր զորք հավաքել, որովհետև չունեին վարձկան զորք և մնայուն գինապարտներ։ Հատրացոց թագավորն ուղարկեց օգնության Նիգերին աղեղնավորների մի գունդ»[96]։

Հռոմեական կայսրության խառնակ վիճակին վերջ է դնում Սեպտիմիոս Սեվերոս կայսրը, որը հաղթեց իր ախոյան Նիգերին (վերջինս սպանվեց Կիլիկիայում 194 թվականի աշնան սկզբներին) և եկավ Միջագետք, որպեսզի պատժի Նիգերի դաշնակիցներին։ Հերոդիանոսը պատմում է.

«Արդ՝ պատրվակ բռնելով, որ Հատրացոց Բարսեմիոս թագավորը դաշնակից է եղել Նիգերին՝ նա (Սեվերոսը) արշավեց Արևելք։ Գալով այստեղ նա ուզեց ներխուժել Հայաստան։ Բայց հայոց թագավորը շտապեց թախանձանքով կանխել այդ և ուղարկեց նրան փող, նվերներ ու պատանդներ, խոստանալով նրան զինակցություն ու բարեկամություն։ Եվ Սեվերոսը, երբ հայկական գործերը հաջողվեցին ըստ իր ցանկության, առաջ շարժվեց հատրացոց դեմ»[97]։

Ինչպես տեսնում ենք, Հռոմի և Հայաստանի միջև ձևավորվում էին քաղաքական փոխհարաբերությունների այն ձևերը, որոնք բնորոշ էին հետագայի համար (IV դարում)։

Վաղարշ Բ-ի ճիշտ դիրքորոշումը երևան եկավ նաև Միջագետքում։ Այս-

95 Տե՛ս Խորենացի, Բ, կի։

96 Մ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 52։

97 Նույն տեղում, էջ 52—53։

*տեղ ևս, ինչպես Հայաստանում Սոհեմոսի մահից հետո, տեղական կախյալ թագավորությունները՝ Ադիաբենեն և Հատրենեն, գրավել էին հռոմեական ամրությունները և պահանջում էին, որ կայսրության օկուպացիոն զորամասերը դուրս գան այն տեղերից և այդ երկրամասերը վերադարձվեն իրենց։ Սակայն վերստին ուժեղացած կայսրությունը հասկանում էր այդ վայրերի ռազմաստրատեգիական նշանակությունը Արևելքում՝ Հռոմի գերիշխանությունը ամրապնդելու համար, ուստի Սեպտիմիոս Սևերոսը 195 թվականին, գալով Միջագետք, փտարեց ապստամբներին և նույնիսկ նվաճեց նոր երկրամասեր։ Սակայն մեկ տարի հետո (196 թվական) Սևերոսի և Ալբինոսի միջև ծագեց գահակալական նոր պատերազմ, որը օգտագործեց պարթևների թագավոր Վաղարշ Դ-ը (191—208), վերադրավելով Միջագետքը և պաշարելով Մծբին քաղաքը։*

*197 թվականին Սևերոսը Ալբինոսին հաղթեց և նորից եկավ Ասորիք։ Օսրոյենե-Եդեսիայի թագավոր Աբգար Թ-ը վերստին հայտնեց իր հպատակությունը կայսրության, իսկ Վաղարշ Դ-ը Մծբինի պաշարումը վերացրեց և ետ քաշվեց։ Սևերոսը կարգավորելով գործերը Միջագետքում, 198 թվականին, իր զորքով Եփրատի ափով իջավ Բաբելոնիա։ Այստեղ հռոմեական զորքերը նորից վերցրին Բաբելոն և Սելևկիա քաղաքները, որոնք պարթևների կարգադրությամբ արդեն ավերված ու դատարկված էին, իսկ Տիզբոն քաղաքը մատնվեց կողոպուտի ու կոտորածի*[98]*։*

*Հռոմեական կայսրության սահմանները, այդպիսով, առաջ քաշվեցին դեպի արևելք՝ մինչև Տիգրիս գետը։ Կայսրության այս ավանպոստում Միջագետքի ռազմական կենտրոնը դարձավ Մծբինը, իսկ նրա թիկունքում մնացած Օսրոյենե-Եդեսիայի թագավորությունը շարունակում էր մնալ Հռոմից կախյալ պետություն։*

**Հայաստանի ռազմական նոր կազմակերպությունները:** *Սեպտիմիոս Սևերոսի արշավանքների ժամանակ Արևելքում Մեծ Հայքը ոչ միայն չտուժեց, այլև որոշ արտոնություններ ձեռք բերեց։ Կցկտուր տեղեկություններից կարելի է եզրակացնել, որ այն ռազմական սիստեմը, որը սկսեց ձևավորվել դեռևս 166 թվականից սկսած, ավարտվեց Վաղարշ Բ-ի և Սեպտիմիոս Սևերոսի ժամանակ։ Մեծ Հայքի թագավորությունը և, ինչպես երևում է, նաև Վիրքը և Աղվանքը, մտնում էին Կապադովկյան փինվորական համակարգի մեջ, կազմակերպություն, որ նախատիպ էր հանդիսանում հետագայում Բյուզանդիայում հայտնի բանակաթեմերի։*

*Ըստ այդ սիստեմի, Մեծ Հայքը պահպանելու էր մշտական հեծելազոր, որի գերագույն հրամանատարը պիտի լիներ հայոց սպարապետը։ Հայկական հեծելազորի պահպանության համար կայսրությունը համաձայնել էր յուրաքանչյուր տարի վճարել որոշ դրամական նպաստ։ Մարկվարտը ենթադրում է, որ Սեպտիմիոս Սևերոսից սկսած հայկական հեծելազորը այս նպաստը ստանում էր Կովկասյան անցքերը պաշտպանելու համար*[99]*։ Օրինակ, 217 թվա-*

---

98 *Տե՛ս Cass. Dio, LXXV, 9, 4։ Նաև՝ Հ.* **Մանանդյան,** *Քաղաքական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 53—54։*

99 *Տե՛ս J. Marquart,* Ērānšahr nach der Geographie des Ps. Moses Xorenac'i' Berlin, 1901, *էջ 102։*

կանին, երբ Հայաստանում թագավորեց Տրդատ Բ-ը, Դիոն Կասիոսի վկայությամբ, այն «փողը, որը ստացվում էր հռոմեացիներից յուրաքանչյուր տարի՝ Տրդատը հույս ուներ, որ կստանա»[100]։ Այս փաստը, անշուշտ, ինքնին վկայում է այն կարևորության մասին, որ ունեցել է հայկական հեծելազորը Հռոմեական կայսրության համար և, բնական է, այս ժամանակաշրջանից բարձրանում է Հայոց սպարապետի դերը հայկական արքունիքում։ Սպարապետության գործակալությունը պիտի հետին պլան մղեր մյուս գործակալությունները։

Այս ժամանակաշրջանում տակավին շարունակվում էին ալանների ներխուժումները Անդրկովկաս և Հայաստան։ Ալաններին ցեղակից էին մասքութները, վաչկատուն ցեղ, որ տարածված էր Կուրի գետաբերանից հյուսիս՝ մինչև Սամուր գետը։ Այստեղ էր գտնվում Մազքթաց Արշակունիների թագավորությունը, որը մշտական սպառնալիք էր հանդիսանում Աղվանքի, Հայաստանի և Ատրպատականի համար։ Թեպետ Խորենացին գործ է ածում ուշ շրջանի ցեղանուններ (խազիրներ, բասիլներ), այնուամենայնիվ պարզ է, որ ներխուժումը տեղի է ունեցել «Ճորա դռնից», որի տակ պատմագիրը հասկանում է Դերբենդի անցքը, իսկ այդ վաղ շրջանում այդ անունը պիտի կրեր այժմյան Շամախուց և Բաքվից հյուսիս գտնվող լեռնային անցքերից մեկը։ «Նրանց դեմ է դուրս գալիս Վաղարշը մեծ բազմությամբ և քաջամարտիկ մարդկանցով, նրանց բազմությունը կոտորելով՝ դիակները սփռում է դաշտի երեսին, և երկար տեղ նրանց հալածելով անցնում է Ճորա կապանով», այսինքն՝ դուրս է գալիս այժմյան Խաչմազի դաշտը, որտեղ գտնվում էր «Մազքութք» երկիրը։ «Այստեղ թշնամիները նորից ճակատամարտ կազմեցին, թեպետ քաջերը նրանց փախուստի մատնեցին, բայց Վաղարշը սպանվեց կորովի աղեղնավորների ձեռքով»[101]։ Այս դեպքը, ըստ Մարկվարտի ենթադրության, տեղի է ունեցել 198 թվականին[102]։ Խորենացին բնութագրելով Վաղարշին, նշում է. «Ուրիշները լավ ապրել են, բայց ես ասում եմ, որ սա մահից հետո էլ ապրում է իր բարի անունով, քան շատերը թույլ թագավորներից»[103]։

**Խոսրով Ա՝ թագավոր Հայոց:** Պատերազմի դաշտում ընկած Վաղարշ Բ-ին հաջորդում է նրա որդին՝ Խոսրով Ա-ը, ինչպես ասում է Խորենացին, «պարսից Արտավան թագավորի երրորդ տարում», այսինքն՝ ըստ Խորենացու ժամանակագրության, 196 թվականին, որ մոտավորապես ճիշտ է։

---

100 *Т. Моммзен*. История Рима, т. V, էջ 370, ծան 2։ Նաև *Cass. Dio*, LXXVIII, 27, 4:

101 Խորենացի, Բ, կե։

103 Տե՛ս *J. Marquart*, Eranšahr nach der Geographie des Ps. Moses Xorenac'i, էջ 102, ծան. 4։

103 Խորենացի, Բ, կե։ Պատմագրության մեջ հետաքրքրություն է առաջացրել Վաղարշ Բ-ի և Խորենացու «Վաղարշակի» նույնացման հարցը։ Այդ նույնացմանը նպաստում է հայ Արշակունիների դինաստիայի ժառանգական դառնալը՝ Վաղարշ Բ-ի ժամանակներից։ Հ. Մանանդյանը այս կապակցությամբ եզրակացրել է, որ կարելի է ենթադրել, թե Խորենացու «Պատմության» Վաղարշակը, որը հայ Արշակունիների նախահայրն էր, հիշողություն և ոչ թե Տրդատ Ա-ի կամ պարթևական թագավոր Վաղարշ Ա-ի, ինչպես այդ ընդունում են հայագետներից ոմանք, այլ Խոսրով Ա-ի հայր Վաղարշ Բ-ի (Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 58)։ Թերևս «Վաղարշակի» մեջ կան և Վաղարշ Բ-ի գծերը, բայց միևնույն ժամանակ անհրաժեշտ է նշել, որ նա հիմնականում, այնուամենայնիվ, կապվում է Տրդատ Ա-ի և նրա եղբոր՝ պարթևական թագավոր Վաղարշ Ա-ի հետ։

Խոսրով Ա-ը իր թագավորության սկզբում «անցնում է Մեծ լեռը (Կովկասյան լեռները), իր հոր մահվան վրեժն առնելու»[104]։ Հաղթանակով վերադառնալով, նա «մի արձան է կանգնեցնում հունարեն գրով, որպեսզի հայտնի լինի, թե ինքը հնազանդվում է հռոմեացիներին»[105]։ Բանասիրության մեջ ենթադրվում է, որ Եգիպտոսում, Թեբե քաղաքում գտնված հունարեն արձանագրությունը՝ «Խոսրով հայ տեսել զարմացայ» (Χοσρόης Ἀρμένιος ἰδὼν ἐθαύμασα) վերաբերում է այս Խոսրով թագավորին[106]։ Այս փաստերը ցուցանիշ են այն բանի, որ Խոսրով Ա-ի ժամանակ Հայաստանը գտնվել է նույն քաղաքական վիճակում, ինչ որ նրա հոր՝ Վաղարշ Բ-ի օրոք։

Այսպիսով, Վաղարշ Բ-ի և Խոսրով Ա-ի ժամանակից արդեն հաստատապես կարելի է խոսել հայ Արշակունիների ժառանգական դինաստիայի մասին, դինաստիա, որն այնուհետև հարատևեց մինչև 428 թվականը։ Եղած տվյալները հաստատվում են այժմ նոր փաստերով, որոնք պարունակում են Գառնիի նորագյուտ արամեերեն արձանագրությունը, որը հասել է խիստ թերի վիճակում։ Այնտեղ կարդացվում է. «(....) թագավոր Մեծ Հայքի, որդի Վոլոգաս (այսինքն՝ Վաղարշ) թագավորի»[107]։ Արձանագրությունը հնագրական տեսակետից թվագրվում է II դարի վերջերով—III դարի սկզբներով, այսինքն՝ ճենց համընկնում է Վաղարշ Բ-ի որդի Խոսրով Ա հայոց թագավորի տարիներին ու պակասող անունը նրանը պիտի լիներ[108]։

Ամենևին բացառված չէ, սակայն, որ հորից-որդի իշխանության ժառանգականությունը հայ Արշակունիների մոտ սկսվել է էլ ավելի վաղ ժամանակներից[109]։

**Կարակալլայի արևելյան արշավանքները:** Այս տարիներին Պարթևստանը՝ Արևելքի երբեմնի հզոր պետությունը, գտնվում էր իր անկման նախօրյակին։ 208 թվականին վախճանվեց Վաղարշ Դ-ը և պարթևական գահը ժառանգեց նրա որդին՝ Վաղարշ Ե-ը, իսկ Հռոմում Սեպտիմիոս Սևերոսին հաջորդեց Անտոնինոս Կարակալլան (211—217), որը փորձեց օգտագործել պարթևների թուլացումը և մեկ հարվածով նվաճել ամբողջ Առաջավոր Ասիան։ Այդ ժամանակ գահակալական կռիվներ էին սկսվել Վաղարշ Ե-ի և իր եղբոր, Արտավան Ե-ի (213—226) միջև, որը պարթև Արշակունիների դինաստիայի վերջին ներկայացուցիչը եղավ։

---

104 Խորենացի, Բ, կե։

105 Նույն տեղում։

106 Տե՛ս Հ. Տաշյան, Ագաթանգեղոս առ Գեորգայ ասորի եպիսկոպոսին և ուսումնասիրութիւն Ագաթանգեղայ գրոց, Վիեննա, 1891, էջ 108 և շար.։ A. Böckh and Franz. Corpus inscriptionum graecarum, III (1853), 394, № 4821.

107 Տե՛ս А. Г. Периханян, Арамейская надпись из Гарни. ИФЖ, 1964, № 3, էջ 122։

108 Նույն տեղում, էջ 125։

109 II դ. Հայաստանի պատմության աղբյուրների աղոթյան պայմաններում անհավանական չէ նույնիսկ, որ հայ Արշակունիների մոտ իշխանության ժառանգական անցման մեզ հայտնի խախտումները սոսկ բացառություններ են և բացատրվում են կոնկրետ պայմաններով, մինչդեռ ի սկզբանե օրինական է եղել ժառանգական անցումը։ Այս խնդիրը դեռ կարոտ է ուսումնասիրման (Ծան. խմբ.)։

Անտոնինոս Կարակալլա կայսրը, որը իրեն երևակայում էր մի նոր Ալեքսանդր Մակեդոնացի և տարված էր ամբողջ Առաջավոր Ասիան նվաճելու երազանքով, մտադրվել էր առաջին հերթին վերացնել Հայաստանի և Օսրոյենեի թագավորությունները, դրանք դարձնելով հռոմեական պրովինցիաներ։ Այդ նպատակով 215 թվականին կայսրը գալիս է Ասորիք, գերի է վերցնում Օսրոյենեի Աբգար թագավորին, իսկ նրա երկիրը հռչակում հռոմեական պրովինցիա։ Այնուհետև Կարակալլան սիրալիր նամակ է ուղարկում հայոց Խոսրով Ա թագավորին, նրան ևս հրավիրելով իր մոտ։ Բայց երբ Խոսրով Ա-ը գնում է կայսեր մոտ, իսկույն ևեթ բանտարկվում է (216 թվական)։ Այս փաստը ցույց տվեց հայկական ավագանուն, որ հռոմեացիները միայն ժամանակավորապես էին «հովանավորում» Հայաստանը. որքան ամրապնդվում էր հռոմեական կայսեր իշխանությունը Տիգրիսի վրա, այնքան քիչ էին հաշվի առնում հռոմեացիները «բարեկամ և դաշնակից» Հայաստանի շահերը։ Հայ ժողովուրդը ապստամբություն է բարձրացնում։ Նրանց դեմ ուղարկվում է Թեոկրիտես զորավարը, սակայն չարաչար հաղթվում և դուրս է շպրտվում հայկական սահմաններից[110]։ Հայաստանում թագավորեց Խոսրով Ա-ի որդի Տրդատ Բ-ը։



Լուկիոս Վերուսի (161—169) դրամը

Տեսնելով, որ պարթևական Արշակունիների պետությունը փլուզման առաջ է կանգնած, Կարակալլան միջոցներ էր փնտրում դառնալ պարթևական գահի ժառանգ և տիրել պարթևական թագավորությանը։ Այդ նպատակին հասնելու համար նա խնդրում է Արտավան Ե-ից իր դուստրը տալ նրան կնության, սակայն մերժում է ստանում։

Այս հանգամանքը կայսրը առիթ դարձրեց պատերազմ հայտարարելու պարթևներին։ Անցնելով Տիգրիս գետը, նա մտավ Ադիաբենե և առնելով մայրաքաղաք Արբելան, քանդել տվեց թագավորների գերեզմանները, և կարգադրեց նրանց աճյունը ցրիվ տալ, որից հետո նա վերադարձավ Եդեսիա՝ ձմեռելու (216 թվականի վերջերին)։ 217 թվականի գարնանը Կարակալլան նորից արշավանքի ելավ պարթևների դեմ, սակայն, դուրս գալով Եդեսիայից և դեռ Խառանին չհասած, ապրիլի 8-ին սպանվեց իր զինվորներից մեկի ձեռքով։

**Տրդատ Բ և Մակրինոս:** Կարակալլային հաջորդեց Մակրինոսը (217 թվական), որը երկու անգամ պարտություն կրեց պարթևներից Մծբինի մոտ, որից հետո հարկադրված նահանջեց Ասորիք։ Կայսրը Արտավան Ե-ի հետ խաղա-

110 Տե՛ս Cass. Dio, LXXVII, 1—3։ Նաև՝ Հ. Մանանդյան, Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 60։

ղության պայմանագիր կնքեց, ըստ որի Միջագետքը տրվեց Հռոմին, իսկ Օսրոյենեի թագավորությունը վերականգնվեց իբրև կայսրության ենթակա պետություն։ Ի հատուցումն պարթևներին հասցրած վնասների, Մակրինոսը պարտավորվեց վճարել նրանց 50 միլիոն դինար։

Մակրինոսը զիջողական քաղաքականություն վարեց նաև Մեծ Հայքի թագավորության հանդեպ։ 217 թվականին բանտում մահացել էր Հայոց Խոսրով Ա թագավորը, ուստի կայսրը ոսկե թագ ուղարկեց նրա որդուն, Տրդատ Բ-ին, որն արդեն թագավորում էր Հայաստանում։ Մակրինոսը վերադարձրեց Հայաստան Տրդատ Բ-ի մորը, որը 11 ամիս բանտում էր եղել, վերադարձրեց նաև հայերից առնված ավարը և ետ տվեց Տրդատ Բ-ին հայրենի կալվածքները Կապադովկիայում։ Նոր գահակալած Տրդատ Բ-ը հույս ուներ նույնպես, որ հռոմեացիներից կստանա տարեկան այն նպաստը, որ տրվում էր իր հորը[111]։

**Պարթև Արշակունիների անկումը և Հայաստանի նոր գոյավիճակը:** Առաջավոր Ասիայում այնպիսի իրադրություն էր ստեղծվել, որ Հռոմը այսուհետև պետք է շահագրգռված լիներ իր քաղաքականության ոլորտում ունենալ Մեծ Հայքի թագավորությունը։ Պարթևները, հանձին Արտավան Ե-ի, վերջին հաղթանակներն էին տոնում իրենց ախոյան Հռոմեական կայսրության հանդեպ։ Մի քանի տարի հետո՝ 224—227 թվականներին, Պարթևական թագավորության Պարսք երկրում ապստամբեց Արտաշիր Ա Պապականը (224—241), Սասանի տոհմից, որը հիմնադիր եղավ պարսկական Սասանյան դինաստիայի։ Պարթևական թագավորությունը վերացվեց և նրա փոխարեն համաշխարհային պատմության թատերաբեմ իջավ մի նոր, ավելի ուժեղ աշխարհակալություն՝ Սասանյան Իրանի թագավորությունը, որը տանում էր հակաարշակունյան քաղաքականություն, իսկ գաղափարախոսության բնագավառում նրա համար զորեղ զենք հանդիսացավ արդեն ձևավորված զրադաշտականությունը, որը խիստ թշնամական դիրք բռնեց հելլենիզմի հանդեպ։ Սասանյանները ձգտում էին վերացնել Արշակունի դինաստիայի բոլոր այն ճյուղերը, որոնք դեռ թագավորում էին։ Հայաստանը դառնում է Արշակունի դինաստիայի հալածական անդամների ապաստարան։ Սասանյանները արդեն ժառանգաբար փշխող հայ Արշակունիներին, ինչպես նաև Հայաստանում ապաստան գտած պարթև Արշակունիներին դիտում էին իբրև պարսկական գահի պոտենցիալ թեկնածուներ, ուստի և ձգտում էին վերացնել հայ Արշակունիների թագավորությունը։

Ստեղծված պայմաններում հայ Արշակունիները կառչում են կայսրությանը, իբրև միակ ուժի, որ կարող էր պահպանել նրանց գոյությունը։ Իսկ Հռոմը այսուհետև Մեծ Հայքի թագավորության «հովանավորի» դերում է հանդես գալիս։ Հռոմը շահագրգռված էր Արևելքում ունենալ որքան կարելի է ընդարձակ տերիտորիայով հայկական թագավորություն, որը միշտ ապահովում էր կայսրության թիկունքը Եփրատի կողմից։ Սասանյանները, ընդհակառակը, շահագրգռված էին ունենալ փոքրիկ Հայաստան, իրենց դրածո թագավորներով, որոնք պետք է լինեին Սասանյան դինաստիայից։

---

111 *Տե՛ս Cass. Dio, LXXVIII, 26, 1—3, 27, 4։ Նաև՝* Հ. Մանանդյան, *Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ, էջ 61—62։*

Այս հանգամանքները մեծ դեր խաղացին, որ ուշ-հելլենիստական Հայաստանը չընկալեց գրադաշտականությունը և հայ ժողովրդի մշակութային ու կրոնա-գաղափարախոսական կողմնորոշումը էլ ավելի է դառնում արևմտյան։ Հայաստանը այս տեսակետից մի շարքումն էր գտնվում Եգիպտոսի, Պաղեստինի, Ասորիքի, Կապադովկիայի, Օսրոյենեի և Ադիաբենեի, Իբերիայի ու Աղվանքի հետ։ Ուշ-հելլենիստական Հայաստանը կրոնա-գաղափարական տեսակետից պետք է հանգեր քրիստոնեական ուսմունքին և այդ բնագավառում ես հակադրվեց Սասանյան Իրանին։ Ստրկատիրական կարգերի համատարած ճգնաժամը, որ համակել էր ամբողջ Հին Աշխարհը, նպաստում էր այն ներքին պրոցեսներին, որ տեղի էին ունենում Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքում։ Այդ զարգացումը ընթանում էր ֆեոդալական հարաբերությունների ձևավորման նշանաբանի տակ։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ Մ. Թ. I—II ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԱԳՐԱՐԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**«Երկիր արքունի»:** *Մեծ Հայքի թագավորության ամբողջ տերիտորիան տեսականորեն հայոց թագավորի ժառանգական սեփականությունն էր և համարվում էր «երկիր արքունի»։ Իրականում, սակայն, այդ տերիտորիաները կազմում էին ռազմա-ստրկատիրական, քրմական և ցեղային-տոհմական ավագանու ժառանգական սեփականությունը, բայց թագավորի գերագույն տիրակալական իրավունքները արտահայտվում էին նրանում, որ, սովորաբար, այդ տերիտորիաները մտնում էին այս կամ այն վարչական միավորման մեջ, որոնց գլուխ կանգնած էին թագավորի կողմից նշանակվող ստրատեգոս-կողմնակալները, որոնց պաշտոնը ևս սովորաբար դառնում էր ժառանգական։ Սակայն թագավորը, իբրև երկրի գերագույն տեր, այս կամ այն հանցանքի համար կարող էր զրկել բոլոր կարգի հողատերերին ժառանգական իրավունքներից և համապատասխան տերիտորիան «գրավել յարքունիս», մանավանդ, եթե նրա կառավարիչը մեղադրվում էր պետական դավաճանության մեջ։ Թագավորը իրական տերն էր միայն այն տերիտորիաների, որոնք ժառանգական կամ նվաճման իրավունքով դարձել էին նրա սեփականությունը, ուստի այդ դինաստիական հողերը համարվում էին «երկիրք արքունականք», իսկ բոլորը միասին՝ «Արքունի տուն»։ Արշակունիների կենտրոնական գավառը, որտեղ գտնվում էր նրանց մայրաքաղաք Արտաշատը, կոչվում էր «Ոստան» կամ «Ոստան Հայոց»։ Ըստ երևույթին, «ոստան» բառը, որը պարթևական ծագում ունի, Հայաստանում տարածվել է՝ սկսած Տրդատ Ա-ի ժամանակներից։*

*Հայոց հազարապետի վերահսկողության ներքո էին գտնվում արոտավայրերն ու անտառները, արքունի էին համարվում երկրի ընդերքի հարստությունները՝ ոսկու, արծաթի, պղնձի, երկաթի և այլ մետաղների հանքերը— «բովք», ինչպես և աղահանքերը— «աղտք» և հանքային ջրերը, ջերմուկները։ «Արքունական» էին համարվում գլխավոր ձկնորսարանները՝ լճերի և գետերի վրա։ Ըստ երևույթին, արքունի մենաշնորհն էր նաև «որդան կարմիր» ներկը, որը ստացվում էր մայրաքաղաք Արտաշատի շրջակայքում, իսկ Արտաշատ քաղաքի հատուկ թաղամասում զբաղված էին «հայկական ներկ» արտադրելու գործով, որտեղից և տարածվում էր աշխարհով մեկ։*

**Գյուղատնտեսական տերիտորիան: Նոր աշխարհագիրը:** *Մեծ Հայքի թագավորության գյուղատնտեսական տերիտորիան բաժանված էր թագավորական-արքունական և ռազմա-հողատիրական ավագանու մասնատիրական տնտեսությունների ու քաղաքային, տաճարային և գյուղական համայնքների միջև։ Գյուղական համայնքների հողերից բացի, մյուս բոլոր տեսակի մշակվելիք հողային տարածությունները մասնատիրական տնտեսություններ էին և կոչվում էին դաստակերտ (կամ ձեռակերտ) ու ագարակ։*

*Գյուղատնտեսական տերիտորիայի հիմնական մասը կազմում էին գյուղական համայնքները՝ «շէն»-երը, «գեւղ»-երը, «դեհ»-երը և այլն։ Համայնականների հիմնական զբաղմունքն էր հողագործությունը, մասամբ և անասնապահությունը. սրանք կոչվում էին «շինական» կամ «գեղջուկ» և համապատասխանում էին հելլենիստական աշխարհի հիմնական այն արտադրողներին, որոնք բնորոշվում էին* λαοί *բառով։*

*Ինչպես Արտաշես Ա-ի ժամանակ (189—161), այնպես էլ Տրդատ Ա-ի ժամանակ (66—88), իբրև նոր ռինաստիայի հիմնադիրի, անց է կացվում գյուղատնտեսային տերիտորիայի բոլոր տեսակի հողերի հաշվառում և սահմանազատում՝* **հողային կադաստր**, *որ հայերեն արտահայտվում էր «աշխարհագիր» բառով։ Տրդատ Ա-ը Մեծ Հայքի թագավորության երկարատև անկայուն վիճակին վերջ է տալիս իր մի շարք միջոցառումներով, որոնց թվումն էր նաև նոր աշխարհագիրը։ Խորենացու մոտ պահպանված մատենագրական վկայությունները ցույց են տալիս, որ Տրդատ Ա-ը, աշխարհագիր անցկացնելով, թողնում է հին սահմանաքարերը, որոնք շարունակում էին կոչվել «Արտաշիսական»[1]։ Այս սահմանազատումով գյուղատնտեսական տերիտորիայի հիմնական մասը, որը գյուղական համայնքներին էր պատկանում, և որից ստացվում էին հայոց արքունիքի հիմնական եկամուտները, ապահովվում էր մասնատիրական տնտեսությունների չարաշահումներից։*

*Գյուղերում ապրող համայնական գյուղացիությունը կազմում էր Հին Հայաստանի անմիջական արտադրողների հիմնական մասը։ Գյուղական համայնքներին պատկանող գյուղատնտեսական տերիտորիան համարվում էր «երկիր արքունի», իսկ իրենք՝ համայնական գյուղացիները համարվում էին «մշակք արքունի» կամ «ծառայք արքունի»։ Նրանք պատկանում էին «ի հարկի ծառայութեան» գտնվող ազգաբնակչության կարգին և, իբրև այդպիսիք, գտնվում հայոց հազարապետի իրավասության ներքո։*

**Գյուղական համայնքը հին Հայաստանում:** *Մեծ Հայքի թագավորության հզորության ու բարգավաճման տնտեսական հիմքը գյուղատնտեսական համայնքն էր, և համայնական գյուղացիությունը կազմում էր երկրի ազգաբնակչության հիմնական մասը։ Մ. թ. I—II դարերում գյուղական համայնքը հարատևում է Հայաստանում իր ավանդական ձևերով[2]։*

*Համայնական գյուղացիությունը ապրում էր առանձին բնակավայրերով. գյուղերով, որոնք աղբյուրներում հիշատակվում են իբրև «շէն», «գեւղ»* (κώμη):

1 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Նախշ-ի Ռուստեմի «Քաաբա ի Զարդուշտ» հուշարձանի արձանագրության վկայությունները Հայաստանի մասին, ՊԲՀ, 1966, № 2(33), էջ 66։*

2 *Մանրամասն տե՛ս վերը, գլուխ 26-րդ։*

Յուրաքանչյուր համայնական կոչվում էր «շինական» կամ «գեղջուկ», իսկ «շինականություն» բառը ուներ հավաքական իմաստ։ Յուրաքանչյուր գյուղական համայնք բաղկացած էր առանձին ընտանիքներից («ընդ տանիք»՝ նշանակում է «մի հարկի տակ ապրող»)։ Բնակատեղին կոչվում էր «տուն», որ իրենից ներկայացնում էր ազգագրության մեջ հայտնի գլխատունը կամ հազարաշենը, մեջտեղը երդիկով, ուստի յուրաքանչյուր այդպիսի տան մեջ ապրող ընտանիքը կամ գերդաստանը բնորոշվում էր «երդ» բառով. սա հարկահանության մեկ միավոր էր։ Յուրաքանչյուր «երդ» ուներ որոշ իրավունքներ ու պարտավորություններ համայնքի և պետության առաջ։

Այսպես, համայնքի յուրաքանչյուր «երդը» հողօգտագործման իրավունքով ստանում էր վարուցանք անելու համար «հող երդոյ», որը Ագաթանգեղոսի հունարեն վերսիայում նշվում է ἄρουρα բառով[3]։ Ինչպես հայտնի է, հելլենիստական ժամանակաշրջանում «արուրա»-ն հողային տարածության հիմնական միավորն էր և համապատասխանում էր հռոմեական յուգերին (շուրջ 1/4 հեկտար)[4]։

«Հող երդոյ»-ների քանակը փոփոխական էր և պարբերաբար՝ հողաբաժանման ժամանակ, «ըստ մարդաթուի» և «հաւասար» ենթարկվում էր փոփոխման։ Այդպիսով, «հող երդոյ»-ի քանակը կախված էր յուրաքանչյուր «երդի»՝ գյուղացիական գերդաստանի շնչի քանակից[5]։

Հողօգտագործման կարգով ստացած «հող երդոյ»-ները կարող էին վաճառվել կամ գրավ դրվել ամբողջապես կամ մասամբ։ Սակայն գյուղական համայնքի հանդեպ այդ հողամասը մնում էր իբրև անօտարելի մեծություն, իսկ հողազուրկ գյուղացին դառնում էր «նժդեհ», այսինքն՝ համայնական գյուղացու իրավունքներից զրկված մի մարդ, որը սովորաբար դառնում էր մասնատիրական տնտեսությունների, դաստակերտների ու ագարակների «վարձկան» կամ «մշակ» և նրա իրավական ու տնտեսական վիճակը քիչ էր տարբերվում ստրուկի՝ «ծառայի» վիճակից։

Գյուղական համայնքը գլխավորում էր «աւագ շինին» կամ «գեղջաւագը», որը կոչվում էր նաև պարսկերեն ծագում ունեցող բառով՝ «դեհկան»։ «Աւագ շինին» համապատասխանում է հունարեն κωμάρχης-ին։[6]

Գեղջավագը կամ դեհկանը ենթարկվում էր հայոց հազարապետին՝ ֆինանսական և հանրային աշխատանքների դիվանին։ Հողօգտագործման համար համայնական-շինականը պետությանը տալիս էր «հարկ արքունական» կամ «բաժ»[7] և կրում էր պետական հերթական և արտահերթ պարհակների ծանրությունը։ Պատերազմի դեպքում գեղջավագը հավաքագրում էր աշխար-

---

3 Տե՛ս Agathangelus, Herausgegeben von Paul de Lagarde, Göttingen, 1887, էջ 76։

4 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 190—195։ С. Т. Еремян, Основные черты общественного строя Армении в эллинистическую эпоху, ИАНАОН, 1948, № 11, էջ 46։

5 Տե՛ս С. Т. Еремян, Основные черты..., էջ 46։

6 Այսպես էին կոչվում հայկական գյուղերի գյուղապետները ըստ Քսենոփոնի (Xen., Anab., IV, 5, 10)։

7 Տե՛ս А. Г. Периханян, К вопросу о рабовладении и землевладении в Иране парфянского времени, ВДИ, 1952, № 4, էջ 24։

հազորը իբրև «դասապետ շինականաց»։ Համայնական երկրագործները կազմում էին գերազանցապես հետևակ զորքը։

Անհրաժեշտ է նշել, որ համայնական գյուղացին բոլոր հարկային և աշխատանքային պարտավորությունները կատարում էր համայնքի համապարտ համերաշխիքի հիման վրա[8]։

Հայաստանի համայնական գյուղացիությունը իր սոցիալական դիրքով մոտենում էր Իբերիայի (Վրաց աշխարհի)՝ Ստրաբոնի հիշատակած «երրորդ կարգի մարդկանց»։ Ստրաբոնի տեղեկության համաձայն, սրանք հասարակ ժողովուրդն են՝ «լաոյ» (λαοί), և իբրև արքունի մշակներ (Βασιλικοὶ δοῦλοι), արտադրում են կյանքի անհրաժեշտ միջոցները։ Սրանք ունեին որոշ գույք, որը ընդհանուր էր ըստ տոհմերի և գտնվում էր տոհմի ավագի (ըստ տարիքի) տնօրինության ներքո[9]։

Համայնական գյուղացիության շահագործման ձևերը Հին Հայաստանում: Աստվածաշնչի հայերեն թարգմանությունը պահպանել է հարկահանման այն տերմինները, որ գոյություն են ունեցել Հայաստանում դեռևս այդ հուշարձանի թարգմանությունից (այսինքն՝ V դարից) շատ առաջ։ Այստեղ «Մակաբայեցւոց» գրքից մեջ բերված հայկական տերմիններից կարևոր է նշել՝ «հարկ» (ունեցել է ընդհանուր նշանակություն), «բաժ աղտիցն», «բաժ պսակաց», «յերրորդաց սերմանն», «հասարակաց այգւոյն և զծառոցն» և «զամենայն հարկս հասի և մաքսի և գրաստու»[10], «արքունական մուտ», որ թագավորը առաջ ստանում էր «յարմտեաց երկրին և ի բերոյ ծառոցն պտղոց» և «այլ որ ինչ տարազք արքունի կամ տասանորդք, կամ մաքս, կամ ինչ որ ինչ մուտք յարքունիս իցեն»[11]։ Հիշատակվում են այնուհետև ազահանքերից և ամուսնություններից ստացվող տուրքերը՝ «բաժ աղտից» և «տարազ պսակաց»։

Հայկական այս տերմինները պատահում են վաղ շրջանի հայ մատենագրության նաև այլ հուշարձաններում։

Այստեղ թվարկվող հարկերը և հասույթները կարելի է բաժանել չորս խմբի.

1) Բերքից ստացվող տուրքեր, որոնց ընդհանուր արտահայտությունն էր հայերեն լեզվով «պտուղ» բառը, որը համապատասխանում է հունարեն տեքստի («Յոթանասնից թարգմանության») ἐκφόριον-ին։ Այդ տուրքերը գանձվում էին՝ «յարմտեաց երկրին և ի բերոյ ծառոցն պտղոց» և վերցնում էին իբրև «յերրորդաց սերմանն» և «զհասարակաց (այսինքն՝ կեսը) այգւոյն և զծառոցն»։

2) Աշխատանքային պարհակներ, այսպես կոչված «աշխատանք արքունի տան համար» (φόρος λιτουργικός), որը հայերենում արտահայտվում էր «հարկ» ընդհանուր իմաստով, իբրև հարկադրական «աշխատանք», որը տարբեր բնույթ ուներ՝ «մարդահարկ», «պարհակ» և «խաշար»։ Այս պարտադիր ձրի աշխատանքը թագավորի և պետության օգտին տարածվում էր ինչպես

8 Նույն երևույթը տեսնում ենք պարթևական Իրանում (տե՛ս նույն տեղում, էջ 22)։

9 Տե՛ս А. И. Болтунова, Описание Иберии в «Географии» Страбона, ВДИ, 1947, № 4. էջ 152։

10 Տե՛ս «Մակաբայեցւոց», գիրք առաջին, Ժ, 30։

11 Տե՛ս նույն տեղում, ԺԱ, 34։

գյուղական համայնքների, այնպես էլ քաղաքային համայնքների վրա, սակայն այն տարբերությամբ, որ ունևոր քաղաքացու փոխարեն, որը, սովորաբար, վաշխառու էր կամ առևտրական, այդ «պատարագը»—«լիտուրգիան» տանում էր իր կողմից վարձված ընչազուրկ քաղաքացին՝ «ռամիկը» կամ գյուղացին՝ «գեղջուկը», բայց շինարարական արձանագրության մեջ գրվում էր վարձողի անունը։ Այդ պետական շինարարության կարգին էին պատկանում




**Երկաթե կացին. Գառնի**

ամրոցների և պարիսպների կառուցումը, ճանապարհների և կամուրջների շինարարությունը, ջրանցքների անցկացումը և այլն[12]։

3) Դրամական գանձումներ (φόρος ἀρουρικός), *որոնք հայերենում արտահայտվում էին «բաժ» բառով։ «Մակաբայեցւոց» գրքում նման գանձումներից հիշատակվում են՝ «բաժ աղտից» (աղահանքերից գանձվող հարկը) և «տարրաց պսակաց» (ամուսնացողներից գանձվող հարկը)։*

4) Խառը գանձումներ, *որոնք արվում էին դրամով և բնատուրքով։ Սրանց թվին է պատկանում «տասանորդը»* (δεκάτη)։

*Բացի «Մակաբայեցւոց» գրքից առկա են նաև հրեական Թալմուդի տվյալները, որոնք վերաբերում են մ. թ. I դարի Իրաքին, բայց նույն երևույթները պետք է որ Հայաստանում ևս գոյություն ունենային։ Այստեղ նշվում է հարկերի երկու հիմնական տեսակ՝* հողահարկ tasqâ *(«տասկա») և* գլխահարկ kargâ *(«քարգա»), որոնք կազմում էին հողագործի եկամտի մեկ վեցերորդից մինչև մեկ երրորդը*[13]։

Հողահարկը *իր սկզբնական արտահայտությամբ, իբրև բնատուրք ստացված բերքից՝ հայերենում պետք է արտահայտվեր «պտուղ» բառով. օրինակ՝ «պտուղք ի ժողովրդենէ», սակայն գոյություն ուներ նույն իմաստն ունեցող «հաս» բառը։ Վերջինս նշանակել է այն հողային հարկը, որ հարկատու ազգաբնակչությունը մուծում էր պետության-արքունիքին*[14], *անկախ նրանից, թե դրանք բերքով էին, դրամով, թե խառը՝ և՛ նատուրալ, և՛ դրամական։ «Հաս»-ը, այդպիսով, համապատասխանում էր հելլենիստական աշխարհի* ἐκφόριον-*ին,*

---

[12] *Տե՛ս К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении, *էջ 205—209*։

[13] *Տե՛ս Ю. А. Солодухо,* Социально-экономическая структура еврейского общества Ирака и Сирии во II—IV вв. н. э., «Ученые записки ЛГУ», № 78, серия историч. наук, вып. 9, 1941, *էջ 54*։

[14] *Տե՛ս Հ.* **Մանանդյան**, *Ֆեոդալիզմը հին Հայաստանում, էջ 131—132*։

*բայց քանի որ «հասը» սովորաբար գանձվում էր բերքից, կոչվում էր «պտուղ»։ Այդպիսով՝ և՛ «հասը», և՛ «պտուղը» համապատասխանում են հրեական աղբյուրների* ṭasqā *-ին*[15]*։ Ինչպես հաղորդում է Թալմուդը, ըստ մ. թ. առաջին դարերի պարսկական օրենքների՝ «ով որ տալիս է հողահարկ* (ṭasqā)*, նա օգտվում է հողից»*[16]*։*

*Հրեական Թալմուդի* kargā*-ն համապատասխանում է հայերեն «հարկ» և իրանական «խարագ» (որից վրացերեն՝ «խարկի» և արաբերեն՝ «խարաջ») բառին։ «Հարկ» բառը բառացի նշանակում է «հնազանդեցնել, ծառայության բերել»*[17]*. սկզբնական շրջանում պիտի նշանակեր աշխատանքային պարհակություն և համապատասխան պիտի լիներ «պարհակ» բառին։ Եթե «հարկը» դրվում էր մարդու վրա (այսինքն՝ նա տանում էր ձրի ֆիզիկական աշխատանք), այս դեպքում այդ պարտավորությունը արտահայտվում էր «մարդահարկ» բառով, եթե իր փոխարեն գյուղացին տալիս էր աշխատանքի իր անասունը, այդ դեպքում այն կոչվում էր «հարկ գրաստու»։ Գոյություն են ունեցել նաև «հարկ հասի» և «հարկ մաքսի» պարտավորությունները, որոնց իսկական իմաստը դժվար է պարզել։*

*Անշուշտ, մեր տեղեկությունները գյուղական համայնքների կողմից վճարվող հարկերի ու կատարվող պարհակների մասին դեռևս նշանակալից չափով պայմանական բնույթ են կրում և կարոտ են նոր, հայ իրականությունը անմիջականորեն արտացոլող տվյալների, որոնք առայժմ պակասում են։*

**Մասնատիրական տնտեսությունները:** *Գյուղական համայնքների կողքին շարունակում էին գոյություն ունենալ մասնատիրական տնտեսությունները՝ ագարակները կամ դաստակերտները*[18]*։*

*Դաստակերտի մասին, իբրև մասնատիրական խոշոր տնտեսության, տեղեկություններ են պահպանվել եբրայերեն գրականության մեջ, հատկապես «Բաբելոնյան Թալմուդում»։ Այստեղից իմանում ենք մ. թ. III դարում գոյություն ունեցող* dasqartā*-ների մասին, որ խոշոր կալվածներ էին՝ մեծ հողային տարածություններով և վաճառվում էին նրանց ընդգրկած հողերը մշակող ստրուկների հետ միասին։ Նման* dasqartā d'avde, *այսինքն՝ դաստակերտ ստրուկներով, հատկապես շատ էին Միջագետքում և Ասորիքում*[19]*։ Պահպանվել է VI դարում կոդիֆիկացված, Սասանյան Իրանում գործող օրենքների պահլավերեն դատաստանագիրքը՝ «Մատեան հազար դատաստանի»* (Matikān e hazār datastān)*: Ըստ այս բնագրի, մ. թ. առաջին դարերում Իրանում գոյություն են ունեցել երկու կարգի ստրուկներ՝* bandak *և* anšahrik:

*Առաջինը «ստրուկ» նշանակող ընդհանուր բառ է, իսկ երկրորդը հոմանիշ է հայերեն «անաշխարհիկ»-ին և նշանակում է «օտարածին»։ Սրանք, ըստ ե-*

---

15 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении..., *էջ 49։*

16 *Տե՛ս Ю. А. Солодухо.* Социально-экономическая структура еврейского общества Ирака и Сирии, *էջ 54։*

17 *Տե՛ս Ն. Ադոնց, Հայ հին շինականությունը, «Պատմական ուսումնասիրություններ». Փարիզ, 1948, էջ 184։*

18 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении, *նույն տեղում։*

19 *Տե՛ս Ю. А. Солодухо,* Значение еврейских источников раннего средневековья для истории Ближнего Востока, СВ, II, 1941, *էջ 39։*

*բնույթին, այն ռազմագերիներն էին, որոնց ստրկացնում էին և նրանց աշխատանքը օգտագործում գլխավորապես գյուղատնտեսության մեջ*[20]*։ Սրանց կարող էին նվիրել, ժամանակավորապես տրամադրել այլ կալվածատիրոջ տնտեսության մեջ աշխատելու կամ կարելի էր գրավ դնել* (girobkan), *իսկ սրա ամբողջ աշխատանքի վճարը* (vičartan) *տրվում էր նրա տիրոջը*[21]*։*

*Անաշխարհիկները աշխատում էին տաճարներին պատկանող տնտեսություններում, բայց իբրև ստրուկ նրանք չէին կարող սպասարկել անմիջապես տաճարում։ Նրանց աշխատանքը առանձնապես լայն կերպով էր օգտագործվում դաստակերտներում և վաճառքի կամ նվիրատվության ժամանակ նրանք ևս փոխանցվում էին նոր տիրոջը այդ գույքի հետ միասին*[22]*։*

*Նշված պահլավական դատաստանագրքում դաստակարտ-դաստակերտը հիշատակվում է նաև* xvâstak *տերմինով, որ համապատասխանում է հայերեն «խոստակ» բառին և նշանակում գույք ընդհանրապես*[23]*։ Գույքատիրոջը նշելու համար գործ է ածվում* xvâstak-dar *(հայերեն՝ «խոստակդար») բառը։ Հայկական և վրացական աղբյուրներում հայերեն «խոստակը» և վրացերեն* „ხუასტაგი“. *«խվաստագի» բառերը նույն իմաստն ունեն՝ գույք, հատկապես հող և անասուն, ինչպես հայերեն «խոստակդարը» նշանակում է այդ գույքի հողի, անասունի տերը*[24]*։ Առանձնապես բազմաթիվ էին թագավորին պատկանող դաստակերտները, որոնք հիշատակվում են ասորական բնագրերում* (dasqartâ d’malka):

*Ստրկական աշխատանքը շարունակում էր գերիշխող լինել հատկապես թագավորի, ավագանու և տաճարային մասնատիրական տնտեսություններում։ Գրականությունից հայտնի է շուրջ 10 բառ, որոնք ունեն ստրուկ իմաստը և բնորոշում են նրանց ծագումը։ Իրենց ծագումով ստրուկները բաժանվում էին երկու կարգի՝ «ընդոծին» (այսինքն՝ ընտանիքում ծնված)*[25] *և «օտարածին»։ «Աղախին», որ նշանակում է կին-ստրուկ՝ ստրկուհի, կապվում է հնագույն «աղխ» բառի հետ, որ ուրարտերեն* alḫi *բառն է և նշանակում է «ընտանիք»։*

*«Օտարածին» ստրուկների կարգին էին պատկանում՝ «ստրուկ»-ը (առաջացել է սանսկրիտերեն* satru՝ *«ռազմագերի» բառից) և «արծաթագին-աղախնայք»։ Սակայն ժամանակի ընթացքում այս բոլոր կատեգորիայի ստրուկները համահարթվում են իրենց սոցիալական վիճակով, անկախ իրենց ծագումից։ Գյուղատնտեսության մեջ աշխատող ստրուկները հայտնի էին ընդհանուր «մշակ» բառով, որը թերևս առաջացել է ասուրա-բաբելական «մուշկենու» բառից*[26]*։ Մշակները կարող էին լինել և սեզոնային, գլխավորապես այն սնանկացած համայնականներից, որոնք պարտքի դիմաց պետք է իրենց ընտանիքի*

---

20 *Տե՛ս А. Г. Периханян,* К вопросу о рабовладении и землевладении в Иране парфянского времени, *էջ 14—16։*

21 *Տե՛ս նույն տեղում, էջ 17։*

22 *Տե՛ս նույն տեղում, էջ 18—19։*

23 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении, *էջ 17։*

24 *Տե՛ս նույն տեղում, էջ 17—18։*

25 *Հայերեն «ընդոծիններին» հունարենում և վրացերենում համապատասխանում են* οἰκογενής *և* სახლის წული *(սախլիս ծուլի) բառերը։*

26 *Տե՛ս* ВДИ, *1947, № 1(19), էջ 263։*

անդամներով մշակություն անեին հողատիրոջ տնտեսության մեջ։ Նման համայնականներից էին նաև «վարձկանները», որոնք պիտի նույն աշխատանքները կատարեին վարձով։

Դաստակերտներում և ագարակներում աշխատող հիմնական արտադրողները ամրացվում էին հողին առանձին երդերով և գուցե բնորոշվել են «երդումարդ» բառով։ Սրանք կազմում էին ամբողջ գյուղեր՝ դաստակերտներին ու ագարակներին կից, և իրենց սոցիալական ու տնտեսական վիճակով համապատասխանում էին պարթևական Իրանի «անշահրիկներին»-անաշխարհիկներին։

## 2. ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Հելլենիստական ժամանակաշրջանում երկրագործությունն արդեն անցել էր զարգացման երկար ուղի և ուներ բարդ ու բազմազան աշխատանքային պրոցեսների մշակված սիստեմ։*

*Սորկատիրական Հայաստանի գյուղատնտեսության մեջ գերիշխող էր վարելահողային երկրագործությունը, բայց Հայաստանի ծայրամասային շրջաններում, մանավանդ ցեղային տերիտորիաների վրա, ուր դեռևս պահպանվում էին նախնադարյան-համայնական հարաբերությունների բազմաթիվ մնացուկներ, շարունակում էր տիրել մինչվարելահողային՝ մարկեղային երկրագործությունը, իսկ այնտեղ, որտեղ խիտ անտառներ էին, կիրառվում էր անտառոտ շրջաններին հատուկ անտառահատման սիստեմը և խոպանային սիստեմը։*

**Երկրագործության անտառահատման սիստեմը:** *Հայաստանում այս սիստեմը կարող էր գոյություն ունենալ միայն հյուսիսային և հարավային ծայրամասային շրջաններում, որոնք այն ժամանակ առանձնապես հարուստ էին անտառային մասսիվներով։ Մարդը վարի համար հողը մաքրում էր անտառից, իսկ հյուծումից հետո հողը թողնում էին անմշակ, որպեսզի նորից անտառ աճի։ Սակայն ծառերը կտրելու ժամանակ գյուղացին անտառում թողնում էր վայրի վիճակում գոյություն ունեցող պտղատու ծառերը։ Բարձրաբերձ լեռներում հողագործությունը հնարավոր էր այնպիսի պարզունակ վարելահողային գործիքով, ինչպիսին էր «երկմատնի փայտատը», որ պահպանվում էր Սասունում դեռևս X դարում[27]։ Ավելի պրիմիտիվ գործիքներ էին «թոխը» (մարկեղ) և «բարհը» (բահ), որոնք գոյություն ունեին մինչև վերջերս և գործ էին ածվում բանջարանոցներում, պարտեզներում ու այգիներում։ Մարկեղ-թոխը հնագույն շրջանում հանդիսանում էր հողի մշակման ունիվերսալ գործիք։ Այն տեղերում, որտեղ գերիշխող էին բրածո և անտառային հողերը, հումուսի հարուստ պարունակությամբ, հնարավոր էր հողը մշակել պրիմիտիվ փայտե գործիքներով, ինչպիսին էր «կեռը»։*

---

27 *Տե՛ս С. Т. Ереман,* Происхождение некоторых орудий пашенного земледелия в древней Армении *(տե՛ս «Նյութեր Հայաստանի գյուղատնտեսության և գյուղացիության պատմության», հատ. 1, Երևան, 1964, էջ 16—17)։*

Այդպիսի պրիմիտիվ գործիքներով, և այն էլ ձեռքով, ստիպված էին լինում երեսանց վարել և ցանել հիմնականում այնպիսի անպահանջկոտ բույս, ինչպիսին կորեկն է, «զոր ոմանք ի մով ժամանակի հաց անուանեն»[28]։

Թովմա Արծրունու մոտ պահպանված սասունցիների ներքին կյանքի մասին տեղեկության մեջ ասված է. «Եվ զնոյն ռոգեալ ոտիւք ի միջոցս պրակացն, կամ երկմատնի փայտատովք սերմանեալ»[29]։ Այս հատվածից իմանում ենք, որ սասունցիների կորեկի ցանքերը գտնվում էին անտառի եզրին և պուրակների միջև, որը վկայում է անտառահատման մասին, երբ անտառային մասսիվում հողի մի մասը մաքրվում է ծառերից ցանքի համար։ Այդպիսի մաքրված հողակտորը սասունցիները վարում էին երկժանի քլունգի՝ «փայտատ երմատնի»-ի օգնությամբ և դրա օգնությամբ էլ ջրում էին ոտքերով, ինչպես ասում է պատմաբանը, որը պետք է հասկանալ այսպես՝ հողը երկժանի քլունգով-մարկեղով փորելիս միաժամանակ առաջացնում էին ակոսներ, որոնց միջով հոսում էր ոռոգման համար բաց թողնվող ջուրը։ Անշուշտ, սրանից շատ տարբեր չի եղել հողի մշակումը նաև մ. թ. առաջին դարերում։

«Երկմատնի փայտատի» հետագա էվոլյուցիան հասցրեց «երկժանի մարկեղին», այսինքն՝ «երկժանի արորին», որը հայտնի էր նաև Ռուսիայում։ Հետագայում երկժանի արորը հանգեցրեց միաժանի արորի, որի նախնական ձևը բրիչի (քլունգի) նմանություն ուներ։ Վարի այդպիսի պարզունակ գործիքը Վրաստանում գոյություն ուներ մինչև վերջերս լեռնային որոշ վայրերում։ Սա ունի միայն քլունգաձև փայտե ձող, վրան փոքրիկ խոփիկ հագցված։ Այդ գործիքը քաշում են մի զույգ եզներ. դա արորի հնագույն ձևն է[30]։ Այն օգտագործվելիս է եղել նաև Հին Հայաստանում։

Ինչպես Սասունում, այնպես էլ Հին Հայաստանի մյուս անտառոտ շրջաններում անտառահատական երկրագործությունը շատ վաղ փոխարինված պիտի լինի անտառի խոպանային սիստեմով, երբ հողը ավելի կարճ ժամկետներում (10—15 տարի) «հանգստանում» էր, ծածկվելով նոր անտառով։ Անտառից մաքրված հողակտորը կարող էր «աշխատել» 3—4 տարի[31]։

Մինչ հեղափոխության շրջանում Լեռնային Ղարաբաղի հյուսիսային շրջաններում արորը բնականից ծռված ծառի ճյուղ էր, որի ծայրը հայերն անվանում էին «կեռ»[32], և որի վրա հագցվում էր երկաթե խոփիկ, իսկ վերին ճյուղը կոթի՝ «մաճի», դեր էր կատարում։ Հետագայում, «կեռ» տերմինը տարածվեց նաև սովորական արորի վրա։ Ակադեմիկոս Ի. Ա. Ջավախիշվիլին, քննելով այս տվյալները, գալիս է այն եզրակացության, որ «կեռը» թե՛ իր կիրառումով և թե՛ կառուցվածքով համապատասխանում է վրացական

---

28 Տե՛ս Թովմա Արծրունի, *Պատմութիւն տանն Արծրունեաց*, դպրութիւն երկրորդ, գլ. Է, ՍՊԲ, 1887, էջ 121։

29 Նույն տեղում։

30 Տե՛ս ივ. ჯავახიშვილი, საქართველოს ეკონომიური ისტორია, ტომი I, თბილისი, 1930, էջ 196—197։

31 Տե՛ս *С. Т. Еремян*, Происхождение некоторых орудий пашенного земледелия в древней Армении, էջ 23։

32 Տե՛ս ივ. ჯავახიშვილი. საქართველოს ეკონომიური ისტორია, ტომი I, էջ 241։

*«կավ»-ին։ Ըստ Ստրաբոնի, աղվանական արորը երկաթե խոփիկ չուներ և կազմված էր ամբողջական փայտից՝ նման հեսիոդյան* ἄροτρον αὐτόξυλον*-ին*[33]*։ Դա առավել պարզունակ գութան էր. այն ուներ միայն բռնակ և երկար չորսու, որի վրա լուծ էր ամրացվում զույգ եզների համար։ Ի. Ա. Ջավախիշվիլին դրան համապատասխան գործիքներ է համարում վրացական «կավի»-ն և նրան մոտ կանգնած «օքոքա»-ն ու «աչաչա»-ն*[34]*։*

**Երկագործության հարոսային սիստեմը:** *Հայաստանի կենտրոնական նահանգներում՝ «Միջնաշխարհում», ամենուրեք հացահատիկի մշակության տարածումից հետո գերիշխող ձև է դառնում երկրագործության հարոսային սիստեմը։ Վերջինիս էությունն այն է, որ մշակվող հողը մի քանի տարվա ընթացքում պարբերաբար թողնվում է առանց վարելու՝ բերրիությունը վերականգնելու համար։ Որոշ դեպքերում «հանգստացող» արտում ցանում էին որևէ միամյա խոտ, օրինակ՝ առվույտ, որը հավաքում էին որպես անասնակեր։*

*Այս սիստեմի գերիշխանության պայմաններում անհրաժեշտ է ունենալ պինդ հողը («կորդ») հերկող վարի գործիք՝ արոր և գութան։ Ընտանի կենդանիների ընտելացման հեռավոր ժամանակաշրջանից սկսած, երբ քաշող ուժ է դառնում եզը, վար ու ցանքի մեջ սովորական է դառնում աշխատավոր գյուղացին՝ «մաճկալը», որը արորի կամ գութանի մաճը կարող էր այնպես վարել, որ հնարավոր լինի կորդ հողում որքան կարելի է խոր ակոս փորել։ Այս պայմաններում «փայտատ երկմատնին», որով կարող էին նաև կանայք վարել*[35]*, իր զարգացման ընթացքում ստանում է երկժանի, ապա միաժանի արորի ձև։ «Արաւր» («արօր», արոր) բառը հայերենում շատ հնուց է գալիս և կապ ունի հունարեն* ἄρουρα *բառի հետ, որ հելլենիստական ժամանակաշրջանում արորով վարող օրավար հողի միավոր է նշանակում և համապատասխանում է հայերեն «հող երդոյ»-ին*[36]*։ Ուշ շրջանում է հանդես գալիս «գութան» բառը*[37]*, որ կապվում է երկաթե արորի հետ։*

*Հայկական «արաւր»-ը (և վրացական «օքոքա»-ն) փայտե արորի վրա հագցված երկաթե խոփով, նոր դարաշրջան է բացում Հայաստանի տնտեսական կյանքի զարգացման պատմության մեջ։*

**Երկրագործական պաշտամունքը:** *Թե որքան մեծ դեր է խաղում ժողովրդի կյանքում երկրագործությունը, այդ երևում է հայոց լեզվի հնուց եկող բառապաշարից և մանավանդ պաշտամունքից։ Նախաքրիստոնեական Հայաստանում խիստ զարգացած էր երկրագործական պաշտամունքը, որ ստացել էր սինկրետիկ բնույթ և միաձուլվել էր հելլենական, ապա հելլենիստական աշխարհի պանթեոնին։ Ժողովուրդն առանձնապես պաշտում էր Արա Գեղեցիկին՝ բերրիության և բնության զարթոնքի աստծուն, որը միաձուլվում է Տիր, ապա Միհր աստծու պաշտամունքների հետ։ Ժողովուրդը, հատկապես Վասպուրականում, մինչև վերջերս ուներ «Տիր դնել» արտահայտությունը, որ նշանակում*

---

33 *Տե՛ս* Strabo, *XI, 4—3։*

34 *Տե՛ս* ივ. ჯავახიშვილი, საქართველოს ეკონომიური ისტორია, ტომი I, *էջ 177—179, 203։*

35 *Այս երևույթի վերապրուկն է վրացերեն «գութնիս դեդա» բառը, որ բառացի նշանակում է «գութանի մայր» և գործ է ածվում «մաճկալի» իմաստով։*

36 *Տե՛ս Agathangelus*, Herausgegeben von Paul de Lagarde, *էջ 76։*

37 *Տե՛ս* **Հր. Աճառյան,** *Հայերեն արմատական բառարան, հատ. Բ, Երևան, 1944։*

*է ցորենի հատիկը ցանել գետնում։ Տիր աստծու անունից է առաջ եկել հացահատիկի մի տեսակը, որ կոչվում է «տիր» կամ «դիր»[38]։ Արա Գեղեցիկ—Տիր—Միհրից հետո ժողովուրդն առանձնապես պաշտում էր «Ոսկեմայր» Անահիտին՝ բնության արտադրող ուժերի աստվածուհուն։ Նա նույնացված էր Արտեմիսի, ապա Դեմետրե աստվածուհու հետ։ Այս տեսակետից պատահական չէ այն, որ Վաղարշապատի (այժմ՝ էջմիածին) քաղաքամերձ հողերի I—II դարերի շերտերի պեղումների ժամանակ գտնվել է գեմմա, որի վրա պատկերված է Դեմետրե աստվածուհին, հասկը ձեռքին[39]։ Հավանաբար, գոյություն է ունեցել նաև խաղողի վազի պաշտամունք. այդ են վկայում նրա մնացուկները քրիստոնեական տոնակատարություններում և հնուց եկող քանդակներում։*




**Երկաթե խոփ. Արմավիր**

*Հյուսիսային Կովկասում գտնված հայոց Բակուր Գ Արշակունի թագավորի (161—163) հայտնի գավաթի վրա պատկերված են Սիլենի նման զգեստավորված դերասան, խնքը՝ Դիոնիսոսը և դիոնիսիաների հետ կապված ատրիբուտները, որ պետք է կապ ունենա մեզ հետաքրքրող հարցի հետ[40]։*

---

38 *Տե՛ս В. Бдоян,* Земледельческая культура в Армении (автореферат докторской диссертации), Тбилиси, 1968, *էջ 78*։

39 ***Տե՛ս Ա. Քալանթար, Հին Վաղարշապատի պեղումները, Երևան, 1935, էջ 58, նկ. 16 (էջ 61)։***

40 *Տե՛ս Б. Лунин,* Археологические находки 1935—1936 гг. в окрестностях станиц Тульской и Даховской, близ Майкопа, ВДИ, 1939, № 3 (8), *էջ 220—223*։

## 3. ԱՌԵՎՏՈՒՐԸ ԵՎ ՔԱՂԱՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ Մ. Թ. I—II ԴԱՐԵՐՈՒՄ

**Միջազգային առևտրի աշխուժացումը մ. թ. I—II դարերում և Հայաստանը:** *Հռոմեական կայսրության արտաքին առևտրի ծաղկումը Արևելքի հետ իրավամբ թվագրվում է մ. թ. I և II դարերով։ Անշուշտ, նպաստավոր պայմաններ ստեղծեց միջազգային ապրանքափոխանակության համար այն երկարատև խաղաղությունը, որ հաստատվեց Հռոմեական կայսրության և Պարթևստանի միջև, Ներոնի (54—68) և Փլավիոսների դինաստիայի (69—96) թագավորության ժամանակաշրջանում, երբ Հռոմը իր գերիշխանությանը ենթարկեց Բոսպորի թագավորությունը և կովկասյան ծովափնյա շրջանները։ Հռոմեացիները տեր ու տիրական դառնալով Սև ծովի ափերին, իրենց հսկողության տակ առան տարանցիկ այն մայրուղին, որը Տանայիսից և Կողքիսի նավահանգիստներից ու ցամաքով՝ ռազմավիրական կամ ծովափնյա ճանապարհներով, Վրաց աշխարհից անցնում էր Հայաստան ու Մարաստան և այնտեղից դեպի Բաբելոն ու Պարսից ծոցը, որտեղից նավագնացություն կար դեպի Ցեյլոնի և Հնդկաստանի նավահանգիստները[41]։*

*Սրանով էր մեծ չափով պայմանավորված ավերակներից վերածնված Արտաշատի աննախընթաց տնտեսական և մշակութային վերելքը այդ ժամանակաշրջանում։ Ստրաբոնը հաղորդում է, որ Պոնտական Կոմանա քաղաքի բարգավաճումը կապված էր Հայաստանից բերվող ապրանքների առևտրի հետ[42]։ Հակոբ Մանանդյանը ճիշտ է եզրակացնում, որ մ. թ. I դարի սկզբին Արտաշատից դեպի Սև ծով տանող ճանապարհն Սատալայի և Կոմանայի միջով անցնում էր դեպի Ամիսոս և Սինոպ նավահանգիստները, հետագայում նաև Տրապիզոնը[43]։ Հ. Մանանդյանն ուսումնասիրելով այս հարցերը, եզրակացնում է, որ «Հռոմեա-պարթևական էպոխան հանդիսանում է ոչ միայն միջերկրածովյան առևտրի աճման ժամանակաշրջան, այլև սևծովյան-միջինասիական առևտրի, որ տեղի է ունեցել Մծբինի և Արտաշատի վրայով»[44]։*

*Հռոմը Արևելքում հետապնդում էր ոչ միայն կայսրության սահմանները ապահովելու խնդիրը, այլև անմիջական, պարթևների պետությունը շրջանցող առևտրական կապեր ստեղծելու միջինասիական քաղաքների հետ, որտեղ իրենց ապրանքներով գալիս էին չինական առևտրականները։ Հռոմը Վրկանից թագավորության միջոցով կապ էր պահպանում Սոգդիանայի հետ, իսկ վերջինս անմիջապես շփվում էր «Սերիկայի», այսինքն՝ Չինաստանի («Ճենաց աշխարհի») հետ։ Եվ այս դեպքում էլ Հայաստանը իր Արտաշատ մայրաքաղաքով նորից ընկնում էր միջազգային տարանցիկ առևտրի կենտրոնը, որովհետև Միջին Ասիայից և Մերձկասպյան ծովափից եկող մայրուղին նորից անցնում էր Հայաստանով, նրա ամբողջ երկարությամբ՝ արևելքից դեպի արևմուտք։*

---

41 *Տե՛ս Я. А. Манандян,* О торговле и городах Армении..., էջ 101։

42 *Տե՛ս* Strabo, XII, 3, 36։

43 *Я. А. Манандян,* О торговле и городах Армении..., էջ 112։

44 *Նույն տեղում։*

Միջերկրածովյան ավազանի երկրների առևտրական կապերը Արևելքի հետ մ. թ. առաջին երկու դարերում շատ ավելի ծավալուն էին, քան Պտղոմեոսյանների և Սելևկյանների թագավորությունների ժամանակաշրջանում (մ. թ. ա. III—II դարեր)։ Մասնավորապես խիստ զարգացել էր ծովային առևտուրը Հնդկաստանի հետ՝ Կարմիր ծովի վրայով, միջանկյալ օղակ ունենալով Ցեյլոն կղզին։

Սակայն, այնուամենայնիվ, ցամաքային առևտուրը ավելի զարգացած էր ու գերադասվում էր ծովահենների պատճառով։ Ուստի Ցեյլոնի շուկաներում գերիշխող էին Հնդկաստանի ցամաքով եկող Պարթևստանի առևտրականները։ Սրանք Ցեյլոնի, Հնդկաստանի, Չինաստանի ու Հնդկաչինի առևտրականներից ստացվող ապրանքները ցամաքային ճանապարհներով՝ Էկբատանայի վրայով, մի կողմից տանում էին դեպի Ատրպատականի Գանձակ «շահաստանը» և Մեծ Հայքի Արտաշատ մայրաքաղաքը, իսկ մյուս կողմից, նույն Էկբատանայից տանում էին դեպի Միջագետք՝ Մծբին և Կալլինիկում (Նիկեփորիոն կամ Ռակկա) Եփրատի վրա։ I և II դարերում այնքան է աշխուժանում միջազգային առևտուրը Հռոմեական կայսրության և Պարթևստանի միջև, որ առաջ է բերում անհրաժեշտություն՝ միմյանց հետ համաձայնեցնելու չափերի, կշիռների և դրամների արժեքները[45]։ Բնորոշ է, որ Հռոմեական կայսրությունը Կապադովկիայի և Պոնտոսի համար հատում էր արծաթի դրամներ, որոնք իրենց կշռով հավասար էին պարթև Արշակունիների դրախմաներին[46]։

Մեծ Հայքի թագավորությունը, որը գտնվում էր այս երկու մեծ աշխարհակալությունների միջև, մեծապես շահում էր միջազգային առևտրի այս նոր աշխուժացումից[47]։ Սրանով է բացատրվում տնտեսական և մշակութային բուռն վերելքը I և II դարերում Մեծ Հայքում, Փոքր Հայքում և Պոնտոսում։ Այդ ժամանակաշրջանում է, որ մեկը մյուսի ետևից բարձրանում են Նիկոպոլիսը, Նեոկեսարիան, Սեբաստիան, Վաղարշապատը և Մծուրքը։ Նոր քաղաքների հետ միասին ավելի են բարգավաճում հները՝ Արտաշատը, Երվանդաշատը, Զարեհավանը (Ծաղկոտն գավառում), Նախճավանը, Զարիշատը (Աղիովիտ

45 Հայաստանում ևս գործածվում էին հելլենիստական աշխարհին հայտնի չափերն ու կշիռները և դրամական միավորները։ Սրանցից համարյա բոլորը հիշատակվում են V և VII դարերի հայկական աղբյուրներում, հատկապես Անանիա Շիրակացու մոտ (610—685)։ Մերձավոր Արևելքում, ներառյալ Հայաստանը, հիմնական կշիռն է եղել «Քսեստ հելլենական»-ը, որի մեկ միավորը հավասար էր այժմյան 408 գրամին։ Այս կշռի կեսը կոչվում էր «կոտիւղ» և հավասար էր 204 գրամի (տե՛ս Հ. Մանանդյան, Կշիռները և չափերը հնագույն հայկական աղբյուրներում, Երևան, 1930, էջ 60—61։ Նաև՝ Я. А. Манандян, О торговле и городах Армении..., էջ 177—180)։ Հացահատիկների կշռաչափերը միասնականացված էին ամբողջ հելլենիստական աշխարհում։ Հայաստանում ևս հացահատիկների հիմնական կշռաչափն էր «արտաւա»-ն կամ «մոդը», ավելի ճիշտ՝ հելլենիստական-հռոմեական մոդը, որը պարունակում էր 9 կիլոգրամ 792 գրամ հացահատիկ։ Այս մոդը Իրանում կոչվում էր «գրիվ» և այս անունով հայտնի էր նաև Հայաստանում։ Մյուս տարածված կշռաչափն էր՝ «կայթը», որը ճշտիվ հավասար էր երկու մոդգրիվի (19584։9792=2) (տե՛ս նույն տեղում, էջ 181—188)։

46 Տե՛ս նույն տեղում, էջ 106։

47 Տե՛ս նույն տեղում։

գավառում), Տիգրանակերտը՝ Աղձնիքում, Արշամաշատը՝ Ծոփքում, Վանը և Արզնը։

Մ. թ. I—II դարերում պիտի կազմված լինի IV դարում ընդօրինակված հռոմեական ճանապարհային քարտեզը՝ Tabula Peutingeriana[48]։ Այս քարտեզի վրա նշված է այն մայրուղին, որը Չինաստանից և Պարսկաստանից գալիս էր Արտաշատ և այնտեղից անցնում Փոքր Ասիա և Հռոմ։ Չինաստանից եկող «մետաքսի ճանապարհը» Միջին Ասիայից անցնում էր Իրանի հյուսիսային կենտրոններով, ինչպիսիք էին՝ Նիսան, Ասաակ սրբավայրը, Հեկատոմպիլոսը, «Կասպից դռները», Ապարշահրը (Նյուշապուհ), Էկբատանան, Գանձակը և «Հրատն Մեծ»՝ Գայշավան սրբավայրը և այնտեղից Արաքսի հովիտը՝ Ջուղայի գետանցքով դեպի Նախճավան և Արտաշատ մայրաքաղաքը։ Էկբատանա էին գալիս նաև Հնդկաստանից ու Արաքոզիայի Ալեքսանդրիայից (այժմ Ղանդահար) եկող մայրուղիները։

Մայրուղին Արտաշատի վրայով ուներ այն առավելությունը, որ ճանապարհը անցնում էր Հայկական լեռնաշխարհով, որը լինելով բարձր լեռնային սարահարթ, ամառը մեղմ կլիմա ունի, իսկ խաղաղ երկրագործ ազգաբնակչությունը անվտանգ էր դարձնում երկրագործական օազիսներով անցնող ուղտերի քարավանների ճանապարհը։ Ինչպես ճիշտ նշում է Հ. Մանանդյանը, միջին ասիական ցամաքային առևտրի հիմնական և ամենակարճ մայրուղին գնում էր դեպի արևմուտք, ոչ թե հարավային առևտրական կենտրոն Սելևկիա քաղաքով, այլ Էկբատանայով[49]։ Էկբատանայից առևտրական քարավանները ուղևորվում էին Արտաշատ կամ կարճ ճանապարհով՝ Հոլվանի վրայով, դեպի Մծբին։

Միջազգային ապրանքափոխանակության երեք կենտրոն Առաջավոր Ասիայում: Փաստերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Տիգրան Բ Մեծը ձգտում էր իր պետության հարավային սահմաններում ընդգրկել Պարթևական թագավորության հիմնական առևտրական մայրուղին, որը Եփրատի գետանցներով՝ Զևգմայից և Կալլինիկոսից սկսելով, շարունակվում էր դեպի Արևելք՝ Իրանի խորքերը և հասնում մինչև Հնդկաստան։ Այս ճանապարհի մանրամասն նկարագրությունը թողել է Իսիդոր Խարաքսացին[50]։ Տիգրան Բ-ը իր ձեռքը վերցրեց այս ճանապարհի հիմնական օղակները մինչև Էկբատանա[51]։ Նա հատուկ ուշադրություն դարձրեց Զևգմայի և Կալլինիկոսի գետանցների վրա, և այս գործում մեծ օժանդակություն ցույց տվեցին այս կողմերը բնակվող արաբական ցեղերը, որոնց և հանձնում է առևտուր կատարելու մենաշնորհը։ Հատկապես հիշատակվում են Կալլինիկում (Ռակկա) առևտրական քաղաքի շուրջը բնակվող «վրանաբնակ արաբները», որոնք Տիգրան Մեծից արտոնություն

---

48 Տե՛ս K. Miller, Die Peutingersche Tafel, Stuttgart, 1962:

49 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах Армении..., էջ 102։

50 Տե՛ս Isidori Characeni Mansiones Parthicae, „Geographi graeci minores", I, 1965, էջ 244—254։

51 Տե՛ս նույն տեղում, § 11, էջ 251—252։ Տե՛ս և С. Т. Еремян, Армения, армянское купечество и развитие торговли между Европой и Азией до XIX в. (Доклады V междун. конгресса экономич. истории). М., 1970, էջ 4—5։

էին ստացել՝ առևտրական փոխանակություն կատարելու արևմուտքի առևտրականների հետ։ Արդեն այս ժամանակաշրջանից պետք է բարձրանար Արտաշատ, Մծբին և Կալլինիկոմ քաղաքների դերը, իբրև կենտրոնների, որտեղ կատարվում էր ապրանքափոխանակությունը Արևմուտքի և Արևելքի առևտրականների միջև։ Հետագայում նշված երեք քաղաքների դերը միջազգային ապրանքափոխանակության մեջ էլ ավելի աճեց։

Հարցի ուսումնասիրությունը բերում է այն համոզման, որ Հուստինիանոս Ա-ի (527—565) կոդեքսում արտացոլված 408/9 թվականի կայսերական էդիկտում[52] հիշատակվող համաձայնությունը միջազգային ապրանքափոխանակություն կատարելու կետի մասին, տեղի է ունեցել ոչ թե 387 կամ 363 թվականներին, ինչպես կարծում են ուսումնասիրողները, այլ ավելի վաղ շրջանում, դեռևս մ. թ. II դարում։ Ըստ այդ էդիկտի, կայսրության և Պարսկաստանի միջև գոյություն է ունեցել հատուկ համաձայնագիր, ըստ որի միջազգային առևտրական փոխանակությունը պետք է կատարվեր նախօրոք նախատեսված երեք կետերում՝ պարսկական պետության տերիտորիայում՝ Մծբինում, կայսրության սահմաններում՝ Կալլինիկումում (այժմ՝ Ռակկա Եփրատի վրա) և հայկական հողի վրա՝ Արտաշատում[53]։ Նման մի համաձայնագիր՝ միջազգային առևտուրը հիշյալ երեք կենտրոններում կատարելու վերաբերյալ, պիտի կնքված լինի արդեն 166 թվականից անմիջապես հետո, երբ Հռոմեական կայսրությանն անցավ Միջագետքի հյուսիս-արևմտյան մասը՝ Օսրոյենեի (Եդեսիայի) փոքրիկ թագավորությունը, Մծբինը մնաց Միջագետքի պարթևական մասում, իսկ Արտաշատը մնաց իբրև Մեծ Հայքի թագավորության քաղաքական կենտրոն[54]։

Հայաստանի ներդրումը միջազգային առևտրում: *Հնդկաստանից Հայաստան և արևմտյան երկրներ հատկապես ներմուծվում էին հետևյալ հիմնական ապրանքները. բրինձ (որիզ), բամբակի գործվածքներ, բամբակ, համեմունք՝ պղպեղ, դարչին, թանկագին քարեր և գոհարեղեն՝ մարգարիտ, զանազան հոտավետիքներ և խնկեղեն, փղոսկր, սև փայտ, ներկող նյութեր։*

*Չինաստանից բերում էին գլխավորապես մետաքս և մետաքսե գործվածքներ։ Այս ապրանքների փոխարեն կայսրությունը արևելյան երկրներ էր արտահանում կապար, պղինձ, անագ, ոսկեկար և ոսկեթել գործվածքներ, որ արտադրում էին եգիպտական և ասորական արհեստագործները և Հայաստանի քաղաքների «գործոց տները»։ Հին աշխարհում մեծ հռչակ էին վայելում Եգիպտոսի Ալեքսանդրիայի ապակե անոթները և ապակե ապրանքները՝ Ասո-*

---

[52] *Տե՛ս Cod. Justin.*, IV, 63, 4, 6:

[53] *Կայսրության կողմից նշանակվել են հատուկ պաշտոնյաներ, որոնք կոչվել են* comites commerciorum (*տե՛ս K. Güterbock*, Byzanz und Persien in ihren diplomatisch-völkerrechtlichen Beziehungen im Zeitalter Justinians, Berlin, 1906, *էջ 74—75։ Նաև՝ Я. А. Манандян*, О торговле и городах Армении..., *էջ 108)։ Նշված երեք քաղաքներում գտնվում էին հատուկ մաքսատներ, որտեղ վերցնում էին մաքսեր արտահանվող ապրանքներից, ուստի այս տեղերը, ըստ Մանանդյանի կարծիքի, անվանվում էին՝* dekateuteria (*տե՛ս Ch. Diehl*, Justinian et la civilisation byzantine, *էջ 536։ Նաև՝ K. Güterbock*, Byzanz und Persien..., *էջ 78)։*

[54] *Տե՛ս Т. Моммзен*, История Рима, т. V, *էջ 368։ Նաև՝ Г. А. Халатьянц*, Очерк истории древней Армении, *էջ 313։*

*րիքից և այլն[55]։ Սակայն, այդ արտահանումը զգալի չափով ետ էր մնում ներմուծումից, ուստի կայսրությունը հարկադրված էր հնչուն դրամով վճարել[56]։*

*Սխալ կլիներ կարծել, որ Հայաստանը միայն միջազգային տարանցիկ առևտրի կամրջի դեր էր կատարում։ Երկիրը ինքը հարուստ էր իր սեփական արտադրությամբ և միջազգային առևտրին զուգընթաց զարգանում էր Հայաստանի արտաքին առևտուրը, որի մեջ ներգրավվել էին քաղաքները, և սրանով էր պայմանավորված նշանակալից չափով նրանց ծաղկումն ու բարգավաճումը։*

*Հայաստանի բազմազան հանքերի մշակման և փայտի, կաշվի ու բրդի հարուստ բազայի վրա զարգանում էր նաև արհեստագործությունը։ Այս ժամանակաշրջանում ավելի էր զարգացել լեռնագործությունը. մշակվում էին պղնձի, երկաթի, կապարի, արծաթի և ոսկու հարուստ ու բազմաթիվ հանքերը։ Այս հումքի բազայի վրա Հայաստանի շատ գավառներում զարգացած էր մետաղագործությունը։ Զարգացած էր նաև հյուսնությունը, բրուտագործությունը, որոնք վաղուց քաժանվել էին երկրագործությունից։*

*Հելլենիստական ժամանակաշրջանում Հայաստանի արհեստագործության մեջ հիշվում է մոտ հիսուն առանձին մասնագիտություն[57]։ Երկրում արտադրված այդ ապրանքների մի մասը առևտրի և փոխանակության միջոցով արտահանվում էր և հարևան ու հեռավոր երկրներ։ Հատկապես հիշատակվում է Հայաստանի գինին, որը արտահանվում էր գլխավորապես Միջագետքի քաղաքները։ Հայաստանից արտահանվում էր նաև հացահատիկ, «որդան կարմիր» ներկը, կաշի, բուրդ, ձիեր ու ջորիներ։ Արտահանվում էր նաև Վանա լճի աղ դրած ձուկը՝ տառեխը։ Առևտր ավանումն էր գտնվում «ձկնատեանք արքունի»՝ տառեխ ձկան որսի հիմնական կենտրոնը։*

*Անհրաժեշտ է նշել, որ անտիկ հեղինակները Հայաստանից արտահանվող ապրանքների մասին խոսելիս հիշատակում են միայն այն հազվագյուտ արտադրանքները, որոնք այլ տեղերում գոյություն չունեին, իսկ սովորականները չեն հիշատակվում։ Պլինիոսը, օրինակ, հիշատակում է* adamantis *բույսը, որին առյուծը մոտենալով ընկնում է, և բժշկագիտական բույս* laser-*ը, կամ* orobitis *ներկը, որը օգտագործում են նկարիչները։ Ապա հիշատակում է Հայաստանից արտահանվող* armenium *քարը, որը ներկում էր ինչպես* chrysocolla-*ն, պաղլեղը—* alumen *և որոշ քարեր։*

**Հայաստանի քաղաքների ներքին կյանքը մ. թ. I և II դարերում:** *Մ. թ. I և II դարերի Հայաստանի քաղաքները շարունակում էին պահպանել իրենց բնույթը իբրև քաղաքային համայնքներ, որոնք ունեին ներքին ինքնավարություն, սակայն ենթարկվում էին թագավորի կողմից նշանակվող պաշտոնյային՝ «շահապին» կամ վերակացուին։ Հայաստանի քաղաքներում զանգվածաբար ապրում էր հույն, ասորի և հրեա, մասամբ էլ իրանական (պարթև, պարսիկ) ազգաբնակչությունը, որը բնակվում էր առանձին թաղամասերով*

55 *Տե՛ս Я. А. Манандян,* О торговле и городах Армении..., *էջ 99, 103։*

56 *Տե՛ս Plin.,* NH, *XII, 41։*

57 *Տե՛ս С. Т. Еремян.* Развитие городов и городской жизни в древней Армении, ВДИ, 1953, № 3.

«ավանդներով»։ Հրեական Թալմուդի տվյալներից կարելի է եզրակացնել, որ հրեական համայնքը կազմում էր առանձին թաղամաս— «գաղութ» (galūta), որի գլուխ կանգնած էր «ռեսը»— rēs galūta[58]: Այս թաղամասերը միևնույն ժամանակ կրոնական համայնքներ էին, քանի որ յուրաքանչյուր էթնիկական միավորը տարբերվում էր մյուսից նաև իր պաշտամունքով։ Քաղաքների ազգաբնակչության վերնախավը՝ ռազմա-ստրկատիրական ավագանին և քրմությունը, կազմում էին հայերը։ Սրանք իրենց կենցաղով և նիստ ու կացով քիչ էին տարբերվում հելլենականացած այլազգի ազգաբնակչությունից, չնայած ավելի թույլ էին ներգրավված միջազգային առևտրական փոխանակության մեջ։ Այդ դերը կատարում էին հույն և ասորի տարրերը, որոնք կապված էին հայկական արքունիքի հետ իբրև «թագավորական առևտրականներ»։

Հայկական քաղաքի ազգաբնակչության ստորին խավերը՝ «ռամիկները» ևս գերազանցապես հայերից էին, որոնք մեծ մասամբ գյուղատնտեսական աշխատանքով էին զբաղված, իսկ քաղաքացիներին պատկանող «գործոց տներում» գերազանցապես աշխատում էին ստրուկները[59]։



Ապակյա սրվակներ. Գառնի

«Գործոց տներում» արտադրվում էին առաջին հերթին զենքեր, զրահներ և ռազմական գործի հետ առնչվող բոլոր տեսակի իրեր։ Մեծ մասամբ արքունիքի և ստրկատիրական ավագանու համար արտադրվում էին կենցաղային պարագաներ՝ շքեղ ոսկեհյուս զգեստներ, կահկարասի, գահեր և պերճանքի

58 Տե՛ս *Ю. А. Солодухо,* Социально-экономическая структура еврейского общества Ирака и Сирии во II—V вв. н. э. УЗЛГУ, № 78, вып. 9 (1941), էջ 50։

59 Տե՛ս *С. Т. Еремян,* Развитие городов и городской жизни в древней Армении, ВДИ, 1953, էջ 26։

առարկաներ, այլև բարձրարժեք գործեր՝ կավից (ամաններ, արձանիկներ), ապակուց, թանկագին մետաղներից, ոսկրից, փայտից։ Հայաստանում վաղուց տարածված էին ոսկերչությունը և մանածագործությունը՝ իրենց բազմազան և հռչակված արտադրությամբ։ Բնորոշ է, որ այս ժամանակաշրջանում է հայերեն լեզուն հարստանում «շուկայ», «խանութ» և այլ ասորական բառերով. ավելի վաղ շրջանից են հունարեն լեզվից եկող «թատրոն», «դրամ» և այլ բառերը։ Այս բառերի առկայությունը վկայում է, որ ինչպես այլ երկրների հելլենիստական քաղաքներում, Հայաստանում ևս քաղաքի հիմնական հատկանիշն էր շուկան իր խանութներով, թատրոնը և գլխավոր սրբավայրը— մեհյանը, որտեղ գտնվող աստվածության կուռքը համարվում էր քաղաքի հովանավորը։ Օրինակ, Արտաշատի հովանավորն էր Անահիտ դիցուհին։ Քաղաքի միջնաբերդն էր համարվում նեղ իմաստով «քաղաք», այսինքն՝ պարսպապատ բնակավայրը, իսկ նրա շուրջը ընդարձակ տարածություններ էին կազմում նրա թաղամասերը, որոնք հայտնի էին «աւան» բառով[60]։ Այս ավաններում էին գտնվում քաղաքացիների «գործոց տները», որտեղ զբաղվում էին արհեստագործությամբ և առևտրով։ Անշուշտ, քաղաքներում ավելի քան թե գյուղերում, ցայտուն կերպով էր դրսևորվում սոցիալական շերտավորումը, ազգաբնակչության գույքային և իրավական անհավասարությունը, քանի որ քաղաքային վարչության մարմիններում քաղաքացիները ընտրվում էին ըստ ցենզի և իրենց ընդհանուր կարողության։

Յուրաքանչյուր «արքունի քաղաք» ուներ իր քաղաքային տերիտորիան՝ «գաւառը», որը սովորաբար կրում էր քաղաքի անունը՝ Նախճավան գավառ, Մարանդ գավառ, Տոսպ գավառ[61], Զարեհավան գավառ, Զարևանդ գավառ, Հեր գավառ և այլն։ Յուրաքանչյուր այդպիսի գավառ հանդիսանում էր տվյալ քաղաքի գյուղատնտեսական տերիտորիան, որտեղ քաղաքային ազգաբնակչության վերնախավն ուներ իր ագարակներն ու դաստակերտները՝ նրանց կցված հողագործ ազգաբնակչությամբ («բնակիչք ագարակին»)։

Նման քաղաքները միևնույն ժամանակ մշակույթի կենտրոններ էին։ Օրինակ, հայտնի է, որ II դարի 60-ական թվականներին Արտաշատում էր ապրում ասորի գրող Յամբլիքոսը, որը այնտեղ գրել է իր «Բաբելոնականք» վեպը։

## 4. ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ I—II ԴԱՐԵՐՈՒՄ ԵՎ ՀՌՈՄԵԱԿԱՆ ՇՔԱԴՐԱՄՆԵՐ

Հայոց գահի վրա հռոմեական դրածոների դրամները: *Հռոմի նվաճողական քաղաքականությունը Օգոստոս Օկտավիանոսի իշխանության տարիներին հիմնովին վերացրեց Հայաստանում դրամների ազգային պատկերատիպը։*

*Հայոց գահի վրա կայսերական Հռոմի դրածո՝ Արտավազդ Դ թագավորի (4—6) արծաթյա դրամները, ինչպես իրենց կշռային սիստեմի տվյալներով, այնպես էլ պատկերներով, միանգամայն հռոմեական են։ Նրանց մի կողմին պատկերված է Հռոմի կայսեր՝ Օգոստոս Օկտավիանոսի գլուխը, զարդարված*

---

60 Համանիշ է վրացերեն «ուբանի» բառին, որ հնում նույն իմաստն է ունեցել։

61 Վան քաղաքի հնագույն Տոսպ-Տուշպա անունից։

դափնեպսակով. Համաձայն հին հռոմեական սովորության, հաղթողներին դափնիներով էին պսակում։ Կայսեր այդ դիմաքանդակի շուրջ արձանագրված է ΘΕΟΥ ΚΑΙΣΑΡΟΣ ΕΥΕΡΓΕΤΟΥ, այսինքն՝ «Աստծու կայսեր բարերարի», իսկ դրա հակառակ կողմին ներկայացվում է Արտավազդի դիմանկարը, ըստ որում առանց Արտաշեսյանների հայկական թագի, միայն վարսակալ ժապավենով, որ բնորոշ էր ժամանակի հռոմեական իշխողներին։ Հայոց այդ թագավորի պատկերի շուրջ նշվում է ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΤΑΥΑΣΔΟΥ, այսինքն՝ «արքայի մեծի Արտավազդի» խոսքերը։ Արծաթյա այս դրամի պատկերատիպը ինքնըստինքյան արտացոլում է այն կախյալ քաղաքական վիճակը, որի մեջ գտնվում էր Հայաստանը Արտավազդ Դ-ի օրոք[62]։

Մեկ տարի անց, երբ Հայաստանում թագավորական իշխանությամբ հանդես եկավ Հրեաստանի Հերովդես Մեծի թոռը՝ Տիգրան Ե անունով (մ. թ. 6), թողարկվեցին պղնձյա դրամներ, որոնց վրա այս Տիգրանը պատկերված է գլխին հինավուրց հայկական թագով։ Դրամի հակառակ կողմի պատկերատիպը ներկայացնում է երկու ձիերով լծված մարտակառք, որով թագավորը արշավում է։ Ի նշան հաղթության, նա մի ձեռքին դափնեճյուղ (") է բռնել։ Այս տեսարանի շուրջը գրված է ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΤΙΓΡΑΝΟΥ «արքայի մեծի Տիգրանի»[63]։

**Դրամական շրջանառությունը մ. թ. I դարի սկզբին:** Արտաշեսյանների անկումից հետո, ինչպես նշվեց, հայկական դրամների թողարկումը կանգ էր առել։ Սակայն այդ չկասեցրեց դրամական շրջանառության հետագա զարգացումը Հայաստանում, քանի որ Արտաշեսյանների, հատկապես Տիգրան Բ-ի դրամների օգտագործումը չէր վերացել, ճիշտ այնպես, ինչպես չէր վերացել հելլենիստական այլ իշխողների դրամների շրջանառությունը Հայաստանի ներքին ու արտաքին առևտրի մեջ։ Այլ կերպ ասած, Հայաստանում արտաշեսյան դրամների շրջանառությունը ավելի երկար է տևել, քան Արտաշեսյան տոհմի թագավորությունը։ Սակայն անցյալից եկող այդ դրամները, ինչպես նաև Հռոմի հանրապետական դրամները հետզհետե սպառվում էին, մինչդեռ Հռոմի կայսերական դրամների թարմ հոսանքը արագորեն լցնում էր առևտրի հայկական շուկաները։

Հռոմեական դրամային սիստեմը լայն ճանաչում էր գտել միջազգային առևտրում, ետ մղելով նախկինում ընդունված Ատտիկյան սիստեմը, չնայած վերջինս պահպանվեց Իրանում, ինչպես և Հռոմին ենթակա Կապադովկիայում,

---

[62] Տե՛ս *P. Gardner*, On an Unpublished Coin of Artavasdes II, King of Armenia, „The Numismatic Chronicle and Journal of the Numismatic Society", New Series, Vol. XII, London, 1872, էջ 13, աղ. I, № 7։ *W. Wroth*, Catalogue of the Greek Coins of Galatia, Cappadocia and Syria, աղ. XIV, № 3:

[63] Դրամը պահվում է Փարիզի Ազգային Մատենադարանում, կշիռը՝ 6,44 գրամ պղինձ, տրամագիծը՝ 18 միլիմետր։ Մինչև վերջերս բացառիկ այս դրամը համարվել է անորոշ (տե՛ս *G. Le. Rider*, Monnaies grecques acquises par la cabinet des medailles en 1959, R. N. 1960, էջ 29—30), սակայն պատկերատիպը և արձանագրության իմաստը թույլ են տվել դասելու այն Արտաշեսյան դրամների շարքը, համարելով թողարկված Տիգրան Ե Հայոց արքայի օրոք (տե՛ս *P. Z. Bedukian*, A Classification of the Coins of the Artaxiad Dynasty of Armenia, էջ 6)։

մասամբ փոքրասիական ու սիրիական վաճառաշահ քաղաքներում։ Հռոմեական դրամահաշվային սիստեմով եվրոպական ու ասիական երկրներում թողարկում էին ոսկյա, արծաթյա ու պղնձյա դրամներ։ Ոսկու գծով դրամային միավորը կոչվում էր աուրեուս (aureus nummus)՝ օրինավոր քաշով 8,19 գրամ ոսկի։ Մեկ հռոմեական ֆունտ ոսկուց (327,45 գրամ) հատում էին 40 աուրեուսներ։ Սակայն Հայաստանում Հռոմի կայսերական ոսկյա դրամները հազվագյուտ են։ Հիմնական դրամային միավորը հռոմեական արծաթ դրամն էր, որ կոչվում էր դենար (denarius), այսինքն՝ «տասանոց»։ Վաղ կայսերական շրջանի հռոմեական դենարը իր կշռային չափով կազմում էր ֆունտի 1/84 մասը, ներկայացնելով 3,90 գրամ արծաթ։ Ոսկու և արծաթի փոխանակությունը կատարվում էր 1։11,9 հարաբերությամբ։ Ներքին շուկայի մանր առևտրի համար թողարկում էին պղնձի և արույրի խառնուրդով դրամներ, որոնց միավորի քաշը սահմանված էր մեկ ունցիա (uncia), այսինքն՝ 27,30 գրամ։ Այդ խոշոր պղնձյա դրամը կոչվում է սեստերցիա, իսկ նրա կեսը (13,65 գրամը) անվանվում էր դուպոնդիուս (dupondius)։ Արծաթի ու պղնձի փոխանակությունը որոշ տատանումներով կատարվում էր 1:45 հարաբերությամբ։

Հայաստան ներթափանցած կայսերական դրամների թարմ հոսանքը բաղկացած էր Օկտավիանոսի այն դենարներից, որոնք թողարկվել էին իրեն՝ Օգոստոս Օկտավիանոսի և նրա երկու որդեգիրներ՝ Գայոսի և Լուկիոսի, պատկերներով։

Դրանք ի հայտ են եկել Էրեբունի և Գառնի ամրոցներում, Արտաշատի և Դվինի ավերակներում, Արթիկում, Կոշում, Իջևանում, Էջմիածնի շրջակայքում և այլուր։ Հայկական ՍՍՀ տարածության վրա պարզապես հազիվ թե գտնվի մի շրջան, ուր այս դրամներից գտնված չլինեն։ Նույնը վերաբերում է Վրաստանին և Աղվանքին։ Ավելին, այդ դենարները լայն տարածում են ունեցել նաև Կենտրոնական Եվրոպայում, Միջձավոր Արևելքում ու Հնդկաստանում։ Ուսումնասիրությունները պարզել են, որ Հռոմի վաղ կայսերական շրջանի արծաթյա այդ դրամները թողարկվել են գլխավորապես արտաքին առևտրի պահանջով։ Իրենց պատկերատիպի մանրամասնություններով Հայաստանում գտնված օկտավիանոսյան հիշյալ արծաթյա դրամները հար և նման են գալլիական թողարկման դենարների հետ, որոնք վերագրվում են մ. թ. ա. 2— մ. թ. 11 թվականներին։ Սակայն Անդրկովկասում դրանց առկայության մասսայական բնույթը տեղիք է տալիս ենթադրելու, որ այդպիսիները կարող էին թողարկվել նաև Մերձավոր Արևելքի քաղաքներում, և բացառված չէ, հատկապես Հայաստանում, ըստ որում ոչ միայն Օգոստոս Օկտավիանոսի կայսրության տարիներին, այլև նրա հաջորդների օրով։ Հայկական շուկաները դրանք թափանցել են միջազգային առևտրի այն ուղիներով, որոնցով շրջանառության մեջ էին մտնում անցյալում հելլենիստական և Հռոմի հանրապետական դրամները։ Սիրիայից ու Միջագետքից, Եփրատի ու Տիգրիսի վրայով ապրանքափոխանակությունը բերում էր նրանց Արաքսի հովիտը և այնուհետև Քուռի ավազանով մղում դեպի Վրաստան ու Աղվանք։ Արծաթի պարունակության բարձր տոկոսով այդ դրամները միջազգային շուկայում համընդհանուր վստահություն էին շահել և ճանաչվում էին իբրև ամենակայուն քաշի դրամական միավորները։ Պատահական չէ, որ ինչպես Եվրոպայում, այնպես էլ Արևելքում,

դրանց ընդօրինակությամբ հանդես եկան տեղական կերտվածքի արծաթյա դրամներ։

**Վոնոն Ա–ի դրամները:** Հայաստանում վաղ կայսերական դրամների տարածման հետ, որ սկսվել էր դեռևս մինչև Արշակունիների թագավորության հաստատումը, խիստ հազվադեպ դիտվում է նաև պարթևական դրամների թափանցումը։ Դրանցից նախ և առաջ ներկայանում են Վոնոն Ա պարթև արքայի իշխանության տարիներին թողարկված ատտիկյան կշռային չափերի արծաթյա և պղնձյա դրամային միավորները, որոնք իրենց պատկերատիպերով որոշակիորեն տարբերվում են մինչ այդ՝ Արտաշեսյանների օրոք, Հայաստանում շրջանառության մեջ եղած պարթևական դրամներից և մոտենում հելլենիստական միապետների դրամներին։ Եթե մինչ այդ պարթև արքաների անձնանունները դրամների վրա չէին արձանագրվում, ապա Վոնոն Ա-ի դրամները պատկանում են պարթևական ծագում ունեցող այն հազվագյուտ դրամների շարքին, որոնց վրա արքայի պատկերի շուրջ նշված են նրա տիտղոսները և անձնանունը։ Պահպանված արծաթյա չորեքդրամյանների վրա բարձրաքանդակ տեսքով դրոշմած է Վոնոնի կիսանդրին, գլուխը զարդարված արքայական ժապավենով, դեմքը մորուքավոր, վարսերը խոշոր փնջերով իջած են ուսին. իսկ շուրջը գրված է. „ΒΑΣΙΑΕΥΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΟΝΩΝΗΣ“, այսինքն՝ «Արքայից-արքա Վոնոն»։ Մյուս կողմում պատկերված է Հաղթանակի դիցուհին՝ կանգնած, ձեռքին պսակ, ուսին դափնեճյուղ և նրա շուրջ հունատառ արձանագրված է. „ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΑΡΣΑΚΟΥ ΕΥΕΡΓΕΤΟΥ ΔΙΚΑΙΟΥ ΕΠΙΦΑΝΟΥΣ ΦΙΛΕΑΛΗΝΟΣ“ («Արքայից-արքա Արշակի բարեգործի արդարադատի նշանավորի հելլենասերի») և այդ բոլորի հետ նաև դրամի թողարկման տարեթիվը՝ սելևկյան տոմարով հաշված։ Ուշագրավ է, որ դրախմաների վրա արքայի դիմանկարի շուրջ նշվում է միայն „ΒΑΣΙΛΕΥΣ ΟΝΩΝΗΣ“ («Թագավոր Վոնոն»), իսկ հակառակ կողմում պատկերված հաղթանակի կերպարի մոտ՝ „ΒΑΣΙΛΕΥΣ ΟΝΩΝΗΣ ΝΕΙΚΗΣΑΣ ΑΡΤΑΒΑΝΟΥ“ այսինքն՝ «Թագավոր Վոնոն, հաղթող Արտաբանի»։ Հիշյալ տիտղոսաձևը եզակի երևույթ էր պարթևական պատվանունների շարքում և արտացոլում է այդ ժամանակներում Վոնոնի ու նրա ախոյան Արտաբան Գ-ի միջև եղած պայքարը, որը հիշատակվում է պատմիչների կողմից։

Ուշագրավ է այն իրողությունը, որ Վոնոնի դրամները թողարկվել են ոչ միայն Իրանում, այլ հավանաբար նաև Հայաստանում, ինչպես այդ մասին հարելի է դատել նրանց վրա նշված մենագրերից։ Պահպանված մենագրերի շարքում կան այնպիսիները, որոնք իրենց ձևով պարզորոշ արտահայտում են Տիգրանակերտ քաղաքի անվան հունատառ ΤΓΡ հնչյունների գրաֆիկ միահյուսվածության ձևով։ Հիրավի, Վոնոնը կարճ ժամանակով (11—16) եղել է հայոց թագավոր, պաշտոնապես հաստատված Հռոմի կողմից։

**Նմադրամներ՝ Զենոն–Արտաշեսի գահակալման առիթով:** Զենոնի թագադրության հանդիսավոր արարողությունը կատարվեց Արտաշատում մ. թ. 18 թվականին, Տիբերիոս կայսեր որդեգիր, զորավար Գերմանիկոսի ձեռքով։ Զենոնը կոչվեց հայերի համար նվիրական Արտաշես անունով։ Այդ առթիվ կայսրությունը արծաթյա շքադրամներ թողարկեց, որոնք իրենց վրա ունեցած պատկերների և լատիներեն արձանագրությունների դրոշմով միանգամայն

հռոմեական էին, չնայած կշռային տվյալներով մնում էին իբրև ատտիկյան դիդրախմանոցներ (երկդրամյաններ)։ Դրանցից յուրաքանչյուրի վրա մեկ կողմից պատկերված էր Գերմանիկոսի գլուխը և շուրջը գրված՝ „GERMANICVS CAESAR. TI. AVG. F. COS. II“ («Գերմանիկոս, կեսար, Տիբերիոս, Օգոստոսի որդի, երկրորդ անգամ հյուպատոս»), մյուս կողմից, պատկերներով ներկայացված էին հայոց թագավոր Զենոն-Արտաշեսը և Գերմանիկոսը, կանգնած կողք-կողքի։ Գերմանիկոսը ձախ ձեռքով հենվել է իր նիզակին, իսկ աջով ցույց է տալիս հայոց արքային, որը պատիվ է բռնել։ Երկուսն էլ պատկերված են հռոմեական ռազմի տարազով, կարճ անդրավարտիքներով։ Յուրաքանչյուրի կողքին լատինատառ արձանագրված է. ձախից՝ „ARTAXIAS“ («Արտաշես»), աջից՝ „GERMANICVS“ («Գերմանիկոս»), և այդ ամենը վերցված է կետավոր շրջանակի մեջ։

Շրջանառության մեջ այդ շքադրամները լայն տարածում չեն ունեցել և ավելի քիչ օրինակներով են պահպանվել, քան հայ-հռոմեական հարաբերություններին նվիրված մեզ հայտնի մյուս դրամները։

**Պարթևական դրամների կիրառումը Հայաստանում:** *Երկրի ներքին առևտրի մեջ, մասնավորապես մանր առուծախի տեղական գործարքների համար ընդունված էին նաև պարթևական պղնձյա դրամներ, թողարկված Վարդան Ա (41—45), Գոտարզ Բ (41—45) և արդեն հետագայում նաև Վաղարշ Ա (51—75) թագավորների պատկերներով և նրանց տիտղոսների հունատառ արձանագրություններով։ Դրանք իրենց կշռային չափերով ատտիկյան սիստեմի օբոլոսներ ու դիօբոլոսներ էին, որոնց վրա արքայական դիմանկարներից բացի դրոշմված էին դիցաբանական իմաստի խորհրդանշաններ (արծիվ, ձի, հաղթանակ և այլն)։ I դարի պարթևական պղնձյա դրամները, ինչպես և արծաթյա դրամները Հայաստանում, գտնված դրամագիտական նյութի մեջ, քանակապես քիչ են, սակայն դրանք պատահականություններ չեն, այլ նախարշակունյան շրջանում զարգացող հայ-պարթևական հարաբերություններից պահպանված հիշատակներ։ Հայտնի է, որ Վարդան Ա պարթև արքան 40—41 թվականներին փորձում է նվաճել Հայաստանը։ 54 թվականին Վաղարշի զորքերը գրավել էին Տիգրանակերտն ու Արտաշատը։ Հնարավոր է, որ հենց այդ ժամանակներում պարթևական արծաթյա ու պղնձյա դրամները շրջանառության մեջ են եղել հայկական քաղաքներում, ուր նրանք կարող էին բերվել ոչ միայն պարթևական զորքի հետ, այլև տեղում թողարկվել պարթևների հաստատման թեկուզ շատ կարճատև միջոցին։ Սակայն Հռոմի կայսերական դրամների առավելությունը տարեցտարի իր անընդմեջ հոսանքով այնքան էր բացահայտ, որ պարթևական նոր թողարկված դրամների լիցքը չէր փոխում ստեղծված վիճակը։*

**Ներոնի շքադրամները:** *59 թվականին Ներոն կայսեր անունից թողարկվեցին շքադրամներ Հայաստանի նվաճման առթիվ։ Դրանք արծաթե երկդրամյաններ (դիդրախմաներ) և կիսադրամյաններ (հեմիդրախմաներ) էին, որոնց վրա դրոշմված էին մի կողմից Ներոնի դիմանկարը, գանգրահեր և պսակազարդ գլխով, շուրջը արձանագրված* „NERO CLAVD. DIVI. CLAVD. F. CAESAR AVG. GERMANI.“ *(«Ներոն Կլավդիոս, որդի աստվածային Կլավդիոսի, Կեսար, Օգոստոս, գերմանացիներին հաղթող»), մյուս կողմից հաղթանակի թևավոր դիցուհին, որը վերևից իջնում է ներքև դափնեպսակ ու արմավենու*

*ճյուղ ձեռքին, իսկ կենտրոնում արձանագրված՝* „ARMENIACVS“, *այսինքն՝ «Հայաստանին հաղթող»։*

*Մեզ հայտնի արծաթյա այս Ներոնյան շքադրամների քաշը պահպանվել է մոտ 7,5 գրամ՝ երկգարմյանների, իսկ 1,5—2,0 գրամ՝ կեսդրամյանների համար։ Այդպիսիները դրվագվում էին Կապադովկիայի մայրաքաղաք Կեսարիայում, որը Հռոմի կայսրության կողմից ատտիկյան սիստեմով դրամների թողարկման կարևոր կենտրոններից մեկն էր Փոքր Ասիայում[64]։*

*Հարկ է նկատել, որ արծաթի պարունակությունը կայսերական դրամների մեջ այդ ժամանակներում խիստ սակավ էր դարձել։ 64 թվականին հատուկ ռեֆորմով Ներոնը հռոմեական դենարի քաշը նվազեցրել էր, սահմանելով այն ֆունտի 1/96 մասը—3,40 գրամ, ըստ որում դրանց մեջ արծաթը 55—65 տոկոս էր կազմում։*

*Ներոնի ռեֆորմով սահմանված Հռոմի կայսերական դրամների թափանցումը Հայաստան կատարվում էր արդեն այն պահին, երբ երկրում հաստատվել էր Արշակունիների թագավորությունը, որին վիճակված էր նոր իրադրության պայմաններում գլխավորելու հայ պետականությունը։ Սեփական դրամ կտրելու ֆունկցիա Արշակունի հայ թագավորները չունեին։ Այն վերապահված էր Արշակունյաց տոհմի մեծ տանը՝ Պարթևական թագավորությանը։ Համենայն դեպս, ցարդ ո՛չ Հայաստանում և ո՛չ էլ նրա սահմաններից դուրս Արշակունիների հայկական ճյուղին պատկանող դրամներ չեն գտնվել։*

*Հայ Արշակունիների վաղ շրջանում, մասնավորապես Տրդատ Ա հայոց թագավորի և նրա անմիջական հաջորդների թագավորության տարիներին միջազգային առևտրի բերումով հայկական քաղաքներն էին թափանցում ոչ միայն Ներոնի (54—68), այլև Վեսպասիանոսի (69—79), Տիտոսի (79—81) ու Դոմիտիանոսի (81—96) պատկերներով հռոմեական արծաթյա դրամները, որոնք, սակայն, շրջանառության մեջ այլևս չունեցան այն արժանապատվությունը, ինչ վայելում էին Օգոստոսի արծաթյա դրամները։ Վերջիններս իրենց կշռային չափերով ու արծաթի լիարժեք պարունակությամբ բարձր էին դասվում Ներոնի ետռեֆորմյան դրամներից և պատահական չէր, որ առևտրում նախապատվությունը նրանց էր տրվում։*

**Դրամական շրջանառությունը Հայաստանում մ. թ. II դարում:** *Հռոմեական դրամների բացարձակ տիրապետությունը Հայաստանի դրամային տնտեսության մեջ դիտվում է ողջ II դարի ընթացքում։ Հայկական քաղաքներում տարածվել էին Տրայանոսի, Հադրիանոսի և նրանց հաջորդների արծաթյա դրամները, որոնց պատկերատիպը վաղուց արդեն միատեսակ էր դարձել։ Միշտ, որպես կանոն, նրանց վրա ներկայացվում էին մի կողմից՝ իշխող կայսեր դիմանկարը, իսկ մյուս կողմից՝ պաշտամունքային նշանակության խորհրդանշանները՝ Հռոմի հեթանոսական դիցարանի նշանավոր աստվածների ու աստվածուհիների՝ Յուպիտերի, Ռոմայի, Նեպտունի, Վիկտորիայի, Ֆորտունայի և այլ կուռքերի կերպարները։ Հայաստանում գտնված I—II դարերի հռոմեական դրամների վրա կարելի է տեսնել կայսերական դիմաքանդակնե-*

---

[64] *Տե՛ս H. Mattingly,* Coins of the Roman Empire in the British Museum, v. I, London, 1923, *էջ 281, №№ 406—412։*

րի ամբողջական շարքը, արտահայտված դասական արվեստի ռեալիստական ոճով։ Արշակունիների հայկական թագավորության զարգացման այս շրջանում Հռոմի կայսերական դրամները միջազգային առևտրում հանդես էին գալիս միատարր, առանց այլ ծագման դրամների հետ խառնվելու։ Պարթևական դրամները, որոնք Հայաստանում Արտաշեսյանների օրոք լայն տարածում ունեին, արդեն II դարում չեն նկատվում գանձերի կազմում։ Եվ այդ իրողությունը պատահականություն չէր, այլ օրինաչափ արտացոլումը պարթևների դրամային տնտեսության սնանկացման, որը գիտվում էր նաև հարևան երկրներից ծագող նյութի մեջ։ Ոչ Վրաստանում և ոչ էլ Աղվանքում II դարի պարթևական դրամներ չեն գտնվել։

Հայաստանում կիրառված դրամների մասին անմիջական վկայություն է Գառնիում գտնված հռոմեական գանձը։ Նրա մեջ ամփոփված են հետևյալ դրամները.

Արծաթ, դենար, Վեսպասիանոսի (69—79) կայսրության տարիներից՝ 8 հատ
Արծաթ, դենար, Տիտոսի (79—81) կայսրության տարիներից՝ 1 հատ
Արծաթ, դենար, Տրայանոսի (98—117) կայսրության տարիներից՝ 3 հատ
Արծաթ, դենար, Հադրիանոսի (117—138) կայսրության տարիներից՝ 13 հատ
Արծաթ, դենար, Անտոնինոս Պիոսի (138—161) կայսրության տարիներից՝ 15 հատ
Արծաթ, դենար, Մ. Ավրելիոսի (161—181) կայսրության տարիներից՝ 6 հատ
Արծաթ, դենար, Կոմմոդոսի (182—192) կայսրության տարիներից 2 հատ

Ընդամենը՝ 49 հատ

Գանձը իր այս պարունակության դրամներով լիովին արտացոլում է դրամային շրջանառության այն կազմը, որ եղել է Հայաստանում II դարի վերջերին։ Այդպիսին է եղել ընդհանրապես տարածված հռոմեական դրամների կազմը II դարի կեսից մինչև III դարի առաջին քառորդը։ Ըստ էության Անտոնինոս Պիոսի, Մարկոս Ավրելիոսի և Կոմմոդոսի կայսրության տարիներին հռոմեական դրամների համաշխարհային տարածումը հասել էր իր աշխարհագրական առավելագույն ընդգրկմանը և Հայաստանը, իբրև բուֆերային երկիր Արևելքի ու Արևմուտքի միջև, ամբողջությամբ գտնվում էր հռոմեական դրամներով կատարվող ապրանքափոխանակության ոլորտում։

**II դարի հռոմեական շրջադրամները:** Հայաստանի քաղաքական պատմության համար ուշագրավ են Տրայանոսի (98—117) կայսրության տարիներին թողարկված շքադրամները։ 115 թվականին Արևելքում լույս ընծայված պղնձյա շքադրամներից մեկի վրա պատկերված է Տրայանոսի կիսանդրին, շուրջը հունատառ մաշված գրություն՝ „...ΟΚΡΑΤΩΡ ΑΥΓ. ΤΡΑΙΑΝΟΣ ΓΕΡ. ΔΑ...“ այսինքն՝ որ նա ինքնակալ է, գերմանացիներին ու դակերին հաղթող։ Հակառակ կողմին պատկերված է Տրայանոսը՝ կանգնած ռազմի հռոմեական հագուստով, աջ ձեռքում սաղավարտ, ձախով հենվել է իր նիզակին, իսկ նրա առ-

ջևում Հայաստանը կնոջ կերպարանքով գլխիկոր նստած է գետնին, ուր թափված են սրեր ու վահաններ[65], Կայսեր թիկնոցի վրա ցույց է տրված հաղթանակի պսակաբեր դիցուհին և այգ ողջ կերտվածքի տակ լատինատառ արձանագրված է. „ARMENIA“.

Մեկ ուրիշ պղնձա շքադրամի վրա, որ թողարկվել է 116—117 թվականներին Հռոմում, պատկերված է մի կողմից Տրայանոսի կիսանդրին, իսկ մյուս կողմից պատկերված է Տրայանոսը ուղիղ կանգնած, ռազմի հռոմեական տարազով, գլուխը պսակազարդ, աջ ձեռքին նիզակ, որին և հենվել է, ներքևում՝ ոտքերի տակ, երկու տղամարդու կերպարներ, թիկնած հոսող ջրով լի սափորների վրա, եղեգնյա ձողեր բռնած։ Դրանք Եփրատ ու Տիգրիս գետերն են, որոնց միջև տեղավորված է Հայաստանը՝ գետնին նստած կնոջ կերպարանքով։



Գեմմա Դեմետրե աստվածուհու պատկերով. Վաղարշապատ

Երկրորդ դարի հայ-հռոմեական հարաբերությունների պատմությունից հիշատակության արժանի է նաև Անտոնինոս Պիոսի (138—161) պատկերով պղնձյա շքադրամը։ Այն թողարկվել է Հռոմում, 140 թվականին։ Նրա վրա դրոշմված է մի կողմից՝ Անտոնինոս Պիոսի կիսադեմ պատկերը, մյուս կողմից՝ Անտոնինոս Պիոսը և հայոց թագավոր Սոհեմոսը։ Այդ տեսարանի շուրջ

---

65 Պահվում է Բրիտանական թանգարանում (տես W. Wroth, Catalogue of the Greek Coins of Galatia, Cappadocia and Syria, Bologna, 1964, էջ 105, աղ. XIV, № 5)։

արձանագրված է. „REX ARMENIIS DATVS“ («Թագավոր հայերին տրված»), իսկ ներքևում՝ S. C. («սենատի որոշմամբ»)։ Այսպիսի սեստերցիաները շրջանառության մեջ են եղել Հռոմում։

163—164 թվականներին Հռոմում թողարկված ոսկյա և արծաթյա շքադրամներից պահպանվել են Հայաստանին նվիրված աուրեուսներ և դենարներ, որոնց մի կողմի վրա պատկերված է Մարկոս Ավրելիոս կայսեր կիսանդրին, շուրջը գրված. «Մարկոս Անտոնինոս Օգոստոս, Հայաստանին հաղթող, ծայրագույն քրմապետ»։ Մյուս կողմին պատկերված է Հայաստանը՝ կնոջ կերպարանքով, գլխիկոր նստած գետնին, թիկունքում նրա զենքերը՝ ի նշան պարտության ցցի հանված և տակը մակագրված «ARMEN.», իսկ շուրջը կարդացվում է Հռոմի կայսեր տիտղոսների շարունակությունը։ Պղնձյա շքադրամների (սեստերցիաների և դուպոնդիաների) վրա Հայաստանը երբեմն պատկերվում էր Հռոմի հաղթության դիցուհու ոտքերի մոտ նստած, ողբացող կնոջ նույն կերպարանքով, ավար դարձած իր զենքերի հետ։ Մարկոս Ավրելիոսի տիտղոսները հաճախ հիշատակում են, որ նա հաղթել է ոչ միայն հայերին, այլև պարթևներին ու մեդացիներին։

Նույն պատկերատիպի ոսկյա, արծաթյա ու պղնձյա շքադրամներ 163—168 թվականներին թողարկվել են Հռոմում նաև Լուկիոս Վերոս կայսեր անունից, նրա դիմանկարով և Հայաստանին վերաբերող խորհրդանշաններով, որոնցից ուշագրավ է Լ. Վերոսի ոսկե շքադրամը, թողարկված Սոհեմոսին երկրորդ անգամ հայոց թագավոր կարգելու հիշատակին։

Այնքան մեծ է եղել կայսրության համար II դարի 60-ական թվականների Հայաստանի ու Պարթևստանի դեմ տարած հաղթանակների նշանակությունը և ընդհանրապես Մ. Ավրելիոսի և Լ. Վերոսի օրոք Արևելքում Հռոմի գերիշխանության պահպանման իմաստը, որ հռոմեական շքադրամների թողարկումը մասսայական էր դարձել։

**Արտաշատ մայրաքաղաքի դրամները**: II դարի վերջերից ծագում են հայոց մայրաքաղաք Արտաշատի պղնձյա դրամները։ Դրանց թողարկումը սկսվել էր 183 թվականից և պայմանավորված էր ոչ միայն ներքին շուկայի զարգացմամբ, այլև քաղաքական այն նշանակությամբ, որ նվաճել էր Հայաստանի մայրաքաղաքը Կոմմոդոսի (182—192) կայսրության տարիներին։ Մինչ այդ հայկական քաղաքներից և ոչ մեկը իր ինքնավարության դրամները չէր թողարկել։

Ուշագրավ է, որ Արտաշատի քաղաքային դրամները շրջանառության մեջ էին մտնում ոչ թե Հռոմի կայսեր կամ հայոց Արշակունի թագավորի անունից, այլ իրեն մայրաքաղաքի անվան հունատառ արձանագրությամբ։ Արևելքում կայսրության գերիշխանության մեջ միջազգային առևտրի առանձին կենտրոններ նվաճել էին այդ իրավունքը և դրամներ էին թողարկում։ Այդպիսին էին Անտիոքը, Ապամեան, Լաոդիկեան, Նիկոպոլիսը, Դամասկոսը և ուրիշ քաղաքներ։ Արտաշատում կերտված դրամները իրենց պատկերատիպերով դեռևս պահպանում էին հելլենիզմի ավանդույթները։ Նախ և առաջ դրանց վրա դրոշմած պատկերներն ունեին դիցաբանական նշանակություն, նվիրված մայրաքաղաքի բախտի, ապահովության աստվածուհու պաշտամունքին, որ անցյալում դիտվում էր հելլենիստական քաղաքային դրամների վրա։ Բացի այդ, ար-

ձանագրությունները հունարեն էին, չնայած երկիրը վաղուց գտնվում էր հռոմեական ազդեցության ներքո և շրջանառության մեջ եղած դրամական միավորների գերակշռող զանգվածը կայսերական դրամներ էին՝ լատինատառ արձանագրություններով։

Նրա վրա պատկերված է քաղաքամոր գեղեցիկ գլուխը՝ աշտարակաձև թագով, որ դիտվում է դրամի մի կողմից, իսկ մյուս կողմին՝ Հաղթանակի թևավոր դիցուհին դափնեպսակ է պարզել քաղաքի անվան վրա։ Աստվածուհու առջևում նշված է I, թիկունքի մոտ՝ ΖΞ գրերը. շուրջը արձանագրված է „ΑΡΤΑΞΙΣΑΤΩΝ ΜΗΤΡΟΠΟΛΕΩΝ“, այսինքն՝ «Արտաշատ մայրաքաղաքի» դրամը։ Կշիռը՝ 5/6 գրամ, տրամագիծը՝ 20 միլիմետր[66]։

Արտաշատի քաղաքային դրամները պահպանվել են հատ ու կենտ նմուշներով և ընդհանրապես հազվագյուտ են։ Լինելով պղնձից, դրանք արտաքին շուկաներում ընդունելի չէին և քաղաքային շրջանառության ներքին ոլորտից հեռու չէին անցնում։ Բացառված չէ, որ առաջիկայում Արտաշատի ավերակների հնագիտական պեղումները ի հայտ բերեն այդ դրամների նոր նմուշներ։

II դարի վերջերին Մարկոս Ավրելիոսի, Լուկիոս Վերոսի և Կոմմոդոսի դենարների հետ հայկական քաղաքներն են թափանցել նաև հռոմեական կայսրուհիներ Ֆաուստինայի, Կրիսպինայի (180—183) և Յուլիա Դոմնայի (193—211) պատկերներով արծաթյա դրամական միավորները։ Մինչև III դարի սկիզբը այլ էական փոփոխություններ Հայաստանի դրամական շրջանառության մեջ չեն դիտվում։ III դարի առաջին կեսին թուլանում է հռոմեական դրամների հոսքը, բայց արդեն սկսվել էր բոլորովին նոր դրամների շրջանառությունը։ Դրանք Իրանում ծագած Սասանյան հարստության դրամներն էին, որոնց վիճակված էր մինչև VII դարը տիրապետող դառնալ Հայաստանի և հարևան երկրների դրամական տնտեսության մեջ։

---

66 Պահվում է Հայաստանի պատմության պետական թանգարանում, № 5374։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ՄԵԾ ՀԱՅՔԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ Մ. Թ. I—II ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՊԵՏԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ

**Հայոց թագավորի տիտղոսները:** Տրդատ Ա Արշակունու և նրա հաջորդների ժամանակաշրջանի Մեծ Հայքի թագավորությունը մնում էր իբրև սատրկատիրական կենտրոնացված միապետություն՝ թագավորի գերագույն իշխանությամբ։ Թագավորը հանդես էր գալիս իբրև երկրի գերագույն պետ՝ արևելյան դեսպոտ, ինչպես այդ հատուկ էր Հին Արևելքի ու հելլենիստական ժամանակաշրջանի պետություններին։ Ուշագրավ է, որ մ. թ. 77 թվականին Գառնիի վերանորոգման վերաբերյալ հունարեն փորագրված արձանագրության մեջ Տրդատ Ա Արշակունին հենց այդպես էլ մեծարում է իրեն՝ δεσπότης «ինքնակալ»[1]։ Եթե Արտաշիսյան դինաստիային պատկանող հայ թագավորները կրում էին «արքայից-արքա» տիտղոսը, ապա Արշակունի հայ թագավորները կրում էին ավելի համեստ՝ «մեծ թագավոր (կամ՝ թագավոր) Հայոց Մեծաց» տիտղոսը, որը մեզ հասել է մի շարք հունարեն և լատիներեն արձանագրություններում։ Օրինակ, Գառնիի նույն հունարեն արձանագրության մեջ Տրդատ Ա Արշակունին իրեն կոչում է «Հելիոս-Տրդատ, թագավոր Մեծ Հայքի» (''Ηλιος Τιριδάτης [βασιλεὺς] Μεγάλης 'Αρμενίας)[2]։

Մեծ Հայքի թագավորությունը իր ներքին կյանքով լրիվ ինքուրույն երկիր էր։ Հռոմից և պարթևներից Մեծ Հայքի կախումը արտահայտվում էր թերևս (եթե չհաշվենք հռոմեական կայազորների ժամանակավոր ներկայությունը այստեղ մ. թ. II դարում) նրանով, որ հայոց թագավորը դրամ կտրելու իրավունք չուներ։

Հայ Արշակունի թագավորը, ինչպես Արտաշեսյանները, համարվում էր՝ «դաշնակից և բարեկամ կայսեր և հռոմեական ժողովրդի»։ Սակայն ռոմանականացման քաղաքականությունը Հայաստանում, որ Հռոմը մերթ ընդ մերթ վարում էր հայ ժողովրդի հանդեպ, ոչ մի արդյունք չտվեց, ճիշտ այնպես, ինչպես ոչ մի արդյունքի չհասան զրադաշտական դարձած պարթևների հակահելլենիստական քաղաքականության փորձերը Հայաստանում[3]։ Հելլենացումը

1 Տե՛ս К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, էջ 200։

2 Տե՛ս նույն տեղում։

3 Մեծ Հայքում զրադաշտականությունը հող չգտավ և Հայաստանը մնաց իբրև հելլենիստա-

*և ռոմանականացումը լրիվ հաջողության հասան այն երկրներում, որտեղ դեռ իր ավարտին չէր հասել ժողովրդաստեղծման պրոցեսը, ինչպիսիք էին, օրինակ, Հռոմեական կայսրության արևմտյան և հյուսիս-արևմտյան հեռավոր պրովինցիաները, ինչպես և Փոքր Ասիան, որը կուլ գնաց հունականության (հելլենականության)։ Իսկ Հայաստանը, հելլենիզմից անմասն չմնալով հանդերձ, ինչպես ճիշտ դիտում է Թեոդոր Մոմզենը՝ «միշտ էլ մնաց իբրև ոչ-հունական երկիր»[4]։*

**Թագավորական դինաստիայի պաշտամունքի զարգացումը:** *Տրդատ Ա-ը շարունակում էր մեծ ուշադրություն նվիրել թագավորական դինաստիայի պաշտամունքին, որը լայն թափ էր ստացել դեռևս Արտաշեսյանների օրոք[5]։ Նա պահպանում է Արտաշեսյան դինաստիայի պաշտամունքը և ավելացնում դրան պարթև Արշակունիների, որպես իր նախնիների, պաշտամունքը։*

*Համբավահայտ է, որ Պարթևաստանում ևս գոյություն է ունեցել գահակալների նախնիների պաշտամունք։ Կարելի է բերել օրինակներ, որոնք ցույց են տալիս, որ Տրդատ Ա-ը ևս Հայաստանում սահմանել է իր տոհմի պարթև նախնիների հետմահու պաշտամունք, առանձնացնելով այդ նպատակի համար որոշ տերիտորիաներ՝ գավառներ, ինչպես այդ արվում էր Պարթևաստանում։ Վան-Տոսպ քաղաքից հարավ գտնվում էր Արտաշիսյան գավառակը՝ «Արտաշիսեան աւան» կենտրոնով (այժմ Արտամետ)։ Արդ, Տրդատ Ա-ը նույն տեղը դարձրել է իր հորեղբոր՝ պարթևական թագավոր Արտավան Գ-ի (11—40) հետմահու պաշտամունքի վայր, որը այնուհետև կոչվել է «Արտաւանեան»[6]։ Միայն Արտավան Գ-ը չէր, որ արժանացել է այս պատվին։ Տրդատ Ա-ը նույն հետմահու պաշտամունքը սահմանել է իր մյուս եղբոր՝ Ատրպատականի թագավոր Բակուրի հիշատակին, որը մահացած պիտի լինի 75 թվականի մոտեր-*

---

*կան մշակույթի կենտրոններից մեկը։ Այդ մշակույթի և նրա վրա խարսխված գաղափարախոսության հետագա էվոլյուցիան Հայաստանում հանգեցրեց քրիստոնեական վարդապետության ձևավորման ու հաստատման իբրև պետական կրոնի։*

4 *Տե՛ս Т. Моммзен,* История Рима, т. V, М., 1949, *էջ 325։*

5 *Տե՛ս Г. Х. Саркисян,* Обожествление и культ царей и царских предков в древней Армении, ВДИ, *1966, № 2, էջ 3—26։ Նաև՝ Գ.* Խ. Սարգսյան, *Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, էջ 59—62։*

6 *«Աշխարհացոյց»-ում Վասպուրականի նահանգի գավառներից մեկը կոչվում է «Արտաշիսեան, որ է Արտաւանեան գաւառ»՝ համանուն կենտրոնով (տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 41)։*

*Անկախ մեր եզրակացությունից, նշանակալից է, որ նույն երևույթին հանդիպում ենք պարթևների մոտ (տե՛ս И. М .Дьяконов, М. М. Дьяконов, В. А. Лившиц,* Парфянский архив из древней Нисы, ВДИ, 1953, № 4, *էջ 126 և հաջ.։ Նաև՝ И. М. Дьяконов, В. А. Лившиц,* Документы из Нисы I в. до н. э. Предварительные итоги работы, «XXV Международный конгресс востоковедов», М., 1960, *էջ 21)։ Նիսայում գտնված պարթևական բնագրերը հետազոտողները նշում են, որ «Արտաբանյան» հողը նշվել է նաև որպես «Արտաքսերքսյան (ևս) կոչվող հող» (ճիշտ այնպես, ինչպես Հայաստանում «Արտաշիսեան որ է Արտաւանեան գաւառ» ըստ «Աշխարհացոյց»-ի)։ Երկու այդ անուններից մեկը նախնական է, իսկ երկրորդը՝ «Արտաբանյանը», կապված է Արտաբան II-ի (մ. թ. ա. 128—124) հետմահու պաշտամունքի սահմանման հետ։ Իսկ առաջ այն կոչվել է «Արտաքսերքսյան», այսինքն՝ հավանաբար, նվիրված է եղել Աքեմենյան Արտաքսերքս Մնեմոնի պաշտամունքին։ Սրանից էին իրենց սերված համարում պարթև Արշակունիները։*

քը։ Այս տեսակետից ուշադրության արժանի է Բակուրակերտ ավանի անունը[7], որը եղել է Մարանդ քաղաքի արվարձաններում (այժմ՝ Բաքրան գյուղ)։ Տրդատ Ա «Եղբայրասերը» (Φιλάδελφος) իր եղբայր Բակուրի հիշատակին սահմանում է հեռուստահու պաշտամունք և հիմնում է մեհյան իր հողամասով՝ «սրբազան տերիտորիայով»— գավառով, որը «Աշխարհացույց»-ում կոչվում է «Բաք(ր)ան, որ է Մարանդ գաւառ»[8], իսկ Պևտինգերյան քարտեզում՝ Philadelphia[9]։ Նույնպիսի հեռուստահու պաշտամունք Տրդատ Ա-ը պիտի սահմանած լինի իր մյուս եղբոր՝ ականավոր պետական գործիչ, պարթևական արքայից-արքա Վաղարշի (51—75) հիշատակին։ Դեռ ուրարտական ժամանակներից հայտնի Անաշե քաղաքը վերանվանում է Վաղարշակերտ (կամ Վալաշկերտ, այժմ՝ Ալաշկերտ)[10]։

Ինքը՝ Տրդատ Ա-ը, աստվածացվել է Հայաստանում՝ նույնացվելով Հելիոս-Արև (Արեգ) աստծու հետ, որ պարզ երևում է նրա Գառնիում թողած հունարեն արձանագրության սկզբից՝ «Հելիոս-Տիրիդատես»[11]։

**Արշակունիների տոհմական դամբարանները Հայաստանում:** Հայ Արշակունիների արքայական դամբարանները գտնվում են Դարանաղի գավառի Անի ամրոցում, որը շրջակա տերիտորիաների հետ միացվել էր Մեծ Հայքի թագավորության տերիտորիային մ. թ. ա. 66 թվականին՝ Տիգրան Բ-ի և Պոմպեոսի միջև կնքված խաղաղության պայմանագրի համաձայն։ Այդպիսով, Փոքր Հայքի թագավորության երբեմնի քաղաքական և մշակութային կենտրոններ հանդիսացող Եկեղյաց և Դարանաղի գավառները ընդմիշտ միացվում են Մեծ Հայքին։ Այստեղի սրբավայրերը՝ մեհյանները, մնում են և ծառայում Արտաշեսյան թագավորներին, ապա հայ Արշակունիներին։

Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի և Մովսես Խորենացու վկայությունները ցույց են տալիս, որ նույնիսկ IV դարում, այսինքն՝ քրիստոնեություն ընդունելուց հետո էլ, հայ Արշակունիների տոհմական դամբարանները գտնվել են Դարանաղի գավառի Անի ամրոցում։ Ագաթանգեղոսը նկարագրելով հեթանոսական տաճարների ավերումը քրիստոնեություն ընդունած Տրդատ Գ Մեծի (287—332) կողմից, հիշատակում է «Անի կոչվող ամուր տեղը, հայոց թագավորների հանգստարանը հանդիսացող գերեզմանների թագավորաբնակ կայանը»[12]։ Փավստոսը պատմելով Շապուհ Բ-ի (309—379) ավերիչ արշավանքների մասին, հաղորդում է, որ թշնամուն հաջողվում է տիրանալ Դարանաղի գավառի Անի բերդին։ Պարսից զորամասերը, պատմագրի ասելով՝ «Բաց էին անում հայոց նախկին թագավորների, քաջ Արշակունիների գերեզմանները և թագավորների ոսկորները գերի էին տանում։ Չկարողացան բանալ միայն

7 Տե՛ս Խորենացի, Բ, կ։
8 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 43։
9 K. Miller, Die Peutingersche Tafel, էջ 11—12։ Պևտինգերյան քարտեզ, սեգմենտ XI։
10 Քրիստոնեական ժամանակաշրջանում էլ այս քաղաքը եպիսկոպոսանիստ էր։ Այստեղ էր նստում «Բագրևանդի և Արշարունեաց» եպիսկոպոսը. Ներսես Գ Շինող (641—661) կաթողիկոսը այստեղ էլ կառուցել է կաթողիկե եկեղեցի։
11 Տե՛ս Г. Х. Саркисян, Обожествление и культ царей..., էջ 18։
12 Ագաթ., § 785։

Սանատրուկ թագավորի շիրիմը՝ նրա հսկայակառույց, հսկայական պինդ ու ճարտար շինվածքի պատճառով»[13]։ Ուրեմն այս հանգստարանը գոյություն է ունեցել արդեն Տրդատ Ա-ի հաջորդ՝ Սանատրուկ թագավորի ժամանակ, հետևաբար կարելի է ենթադրել, որ նրա հիմքը դրվում է Տրդատ Ա-ից։ Նույն տեղում Փավստոսը խոսում է Անգեղ-տան գավառի Անգեղ բերդում գտնվող հայ թագավորների շիրիմների մասին[14]։ Պարսկական զորքերը, Շապուհ Բ-ի գլխավորությամբ, ներխուժելով Մեծ Հայք, առաջին հերթին պաշարել են Անգեղ բերդը. «...Եկան պաշարեցին Անգեղ ամուր բերդը Անգեղ-տան գավառում, որովհետև այնտեղ կային Հայոց շատ Արշակունի թագավորների գերեզմաններ և վաղուցվանից ի վեր այնտեղ կուտակված էին շատ գանձեր»[15]։

**Հայկական տոմարի բարեփոխությունը:** Տրդատ Ա-ի նշված միջոցառումների հետ է կապված նաև հայկական տոմարի բարեփոխությունը։ Անհայտ ժամանակներից հայերը ունեցել են «Հայկեան շրջան»՝ 1460-ամյա ցիկլը, որը լրացավ 428 թվականի հուլիսի 11-ին։ Հայկական տարին պարունակում էր 12 ամիս և 5 կամ 6 օր՝ «Աւելեաց»—13-րդ ամիսը։ Հնում հայկական տարին շարժական չի եղել։ Ինչպես վկայում են մի շարք փաստեր, հայկական տարվա յուրաքանչյուր ամիս բաղկացած էր 30 օրից և բացակայում էր բաժանումը ըստ յոթնօրյա շաբաթների[16]։ Ամիսը բաղկացած էր 30 օրից և յուրաքանչյուրը այդ օրերից ուներ իր անունը[17]։ Պահպանված օրանունների ցուցակը ցույց է տալիս, որ ամսվա յուրաքանչյուր օրը նվիրված էր այս կամ այն աստծու մեհյանի հիշատակին։ Այս անունների մեջ կան այնպիսիները, որոնք կապվում են Տրդատ Ա-ի գործունեության հետ։ Օրինակ՝ ամսի 15-րդ օրը կոչվում է «Ասաակ» և կապվում է Պարթևաց աշխարհի «Ասաակ» քաղաքի տաճարի հետ, որտեղ մ. թ. ա. 247 թվականին առաջին Արշակունի Արշակ-Տրդատը թագադրվել է իբրև Պարթևական թագավորության անդրանիկ արքա և սկսել է իր պայքարը Սելևկյանների դեմ[18]։ Հայաստանում Դվին-Ասաակի տաճարը՝ «Երագամոյն» անունով հիմնվեց մայրաքաղաք Արտաշատի հյուսիս-արևելյան արվարձանում, որտեղ այնուհետև աճեց Դվին քաղաքը։ Հայկական տոմարի այս սիստեմը գոյություն է ունեցել ժողովրդի մոտ դարեր շարունակ, իսկ արքունիքը և վերնախավը Հադրիանոս կայսեր (117—138) ժամանակներից՝ 122 թվականին, ընդունել է Հուլյան տոմարը[19], որը գործածված ենք տեսնում հայ թագավորների հունարեն արձանագրություններում (օրինակ՝ III դարի Տրդատ Բ-ի Ապարանում հայտնաբերված հունարեն արձանագրությունը)[20]։

---

13 Փավստոս, Դ, իդ (Թարգմ. Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, էջ 191—192)։

14 Այս շիրիմները պետք է պատկանեին Սոփքի վերացված թագավորության արքաներին, որ «Շահունի» (Երվանդունի) դինաստիայից պիտի լինեին։

15 Փավստոս, էջ 191։ Անգեղ բերդը մի ժամանակ եղել է Սոփաց թագավորության մայրաքաղաքներից մեկը և կոչվել է Արկաթիակերտ։

16 Տե՛ս Հ. Ս. Բադալյան, *Օրացույցի պատմություն*, Երևան, 1970, էջ 49—62։

17 Տե՛ս Ղ. Ալիշան, *Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք հայոց*, Վենետիկ, 1910, էջ 157—158։

18 Տե՛ս *Isidori Characeni* Mansiones Parthicae, § 11, „Geographi graeci minores", t. I, 1965, էջ 251—252։

19 Տե՛ս Ղ. Ալիշան, *Յուշիկք հայրենեաց հայոց*, հ. Ա, Վենետիկ, 1920, էջ 84։

20 Տե՛ս *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, էջ 276։

Դահակալության խնդիրը: Արշակունի սեպուհների գավառները: *Ինչպես պարթևական արքունիքում էր, հայ Արշակունիների արքունիքում ևս բարդ խնդիր է դառնում թագաժառանգի հարցը։ Պարթևստանում գրեթե յուրաքանչյուր գահակալություն ուղեկցվում էր արյունալի պայքարով և Արշակունյաց տան սեպուհների ֆիզիկական ոչնչացմամբ, իսկ եթե պարթևաց արքայից-արքան հարկադրված էր պատանդ ուղարկել Հռոմ, սովորաբար նա ընտրում էր իր պոտենցիալ մրցակիցներին։ Իր հերթին Հռոմը նման պատանդներին դարձնում էր իր քաղաքական մեքենայությունների գործիք։*

*Նույն քաղաքականությունը Հռոմը վարում էր Հայաստանի հանդեպ սկսած մ. թ. ա. 66 թվականից, երբ առաջին անգամ հայկական արքունիքից պատանդներ տարվեցին։ Հատկապես Օգոստոս կայսեր (մ. թ. ա. 27—մ. թ. 14) ժամանակից սկսած Արտաշեսյան դինաստիայի անդամները Հռոմում և առանձնապես Ասորիքում, ստանում են հատուկ արտոնություններ և փոքրիկ արքայիկներ դառնում իրենց տրված կալվածքներում, ինչպիսիք էին Լիբանանի լեռներում գտնվող Քաղկիդիկե քաղաքի և Օրոնտ գետի միջին հոսանքում գտնըվող Էմեսա քաղաքի «թագավորությունները», որոնց գլուխ կանգնած արքայիկները իրենց համարում էին Երվանդունիների տան ժառանգներ։ Հարկ եղած դեպքում հռոմեական ծերակույտը այս արքայիկներից մեկին հայտարարում էր Մեծ Հայքի, Ծոփքի կամ Փոքր Հայքի գահի «օրինավոր ժառանգ» և հռոմեական զենքի ուժով բազմեցնում իր «նախնիների» գահին։ Սակայն Հռանդեայի համաձայնագրից հետո նման «օրինավոր» ժառանգներ հայկական գահին տիրացել են, որքան հայտնի է, միայն երկու անգամ։*

*Հայկական գահի վրա Տրդատ Ա Արշակունու հաստատումից հետո գահաժառանգի խնդիրը սկզբնական շրջանում սուր բնույթ չպետք է ունենար, քանի որ յուրաքանչյուր հայոց թագավորի մահվանից հետո պարթևական արքունիքը Հռոմին առաջադրում էր հաստատելու նոր թեկնածու։ Սակայն այս հարցի պաշտոնական կողմն էր լոկ։ Իրականում հայոց արքաները, գուցե և արդեն Տրդատ Ա-ը ձգտում էին Մեծ Հայքի ժառանգական դինաստիայի ստեղծման, և ժամանակի ընթացքում իսկապես ստեղծվեց պարթև Արշակունիներից անջատ հայ Արշակունիների ճյուղը։ Այս պարագաներում թագաժառանգի և գահի հակառակորդների հարցը սուր բնույթ ընդունեց։ Այդ հարցի լուծումը Մովսես Խորենացին[21], իր սովորության համաձայն վերագրում է «Վաղարշակ» թագավորին։ Պատմահոր ասելով, այդ թագավորը, «...որովհետև շատ որդիներ ուներ, հարմար գտավ, որ բոլորն էլ միասին իր մոտ չմնան Մծբինում, այլ նրանց ուղարկում է բնակվելու Հաշտենից գավառը, և նրան սահմանակից Ձորը, որ Տարոնից դուրս է գտնվում[22], նրանց է թողնում բոլոր գյուղերը, ավելացնելով նաև առանձին եկամուտներ և ռտեստ արքունի (գանձարանից)։ Միայն իր առաջին որդուն, որ կոչվում էր Արշակ, պահում է իր մոտ իբրև թագավորության հաջորդ, նաև նրա որդուն, որին կոչեց Արտաշես»։ «Եվ այս բանն այնուհետև մինչև վերջը օրենք դարձավ Արշակունի թագավորների հա-*

---

21 Տե՛ս Խորենացի, Բ, ը։

22 *Նկատի ունի Պալունիք գավառը Չյունկերա (կամ Պորպես) կենտրոնով— այժմ Խաբաքա-Բաբբաս։*

մար, որ մի որդին ապրի թագավորի հետ՝ թագավորության փոխանորդ լինելու համար, իսկ մյուս որդիներն ու դուստրերը գնան Հաշտենից կողմերը իբրև ցեղի ժառանգներ»։

Իսկ ավելի ուշ՝ ըստ Մ. Խորենացու՝ «Արտաւազդ որդի Տիգրանայ»[23] թագավորը «իր եղբայրներին և քույրերին բնակեցնում է Աղիովիտ և Առբերանի գավառներում, նրանց ժառանգություն թողնելով այդ գավառներում գտնըված արքունական դյուղերը, առանձին եկամուտով և ուտեստով, նման նրանց այն ազգականներին, որ գտնվում էին Հաշտյանքի կողմում (սահմանելով), որ նրանք ավելի պատվավոր և ավելի թագավորազն ճանաչվեն, քան այն մյուս Արշակունիները. միայն սահմանում է, որ նրանք չապրեն Այրարատում, թագավորի բնակության տեղում»[24]։

Ահա այս երեք գավառները, որտեղ պետք է ապրեին Արշակունի սեպուհները՝ Հաշտյանք, Աղիովիտ և Առբերանի, համարվում էին «սեպուհական» («սեպհական»)։

**Աշխարհաժողով:** Թագավորը իբրև երկրի գերագույն տեր, վարում էր արտաքին քաղաքականությունը, ընդունում օտարերկրյա դեսպաններին և իր դեսպաններն էր ուղարկում այլ պետություններ, արձակում էր հրովարտակներ, նշանակում գործակալությունների պաշտոնյաներին՝ գործակալներին և այլն։ Սակայն արքունիքի կողքին դեռևս պահպանվում էր տոհմատիրական հասարակարգից մնացած համաժողովրդական խորհրդակցական մարմինը՝ «Աշխարհաժողովը»։ Հնագույն ժամանակներում, երբ հայ ժողովուրդը դեռևս կազմավորվում էր, «Աշխարհաժողովը» պետք է լիներ բոլոր հայկական ցեղերի ընդհանուր խորհրդակցական մարմինը։ Ժամանակի ընթացքում այն դառնում է հայ ավագանու բարձրագույն խորհրդակցական մարմինը, որը տարվա որոշ ժամանակներին հրավիրվում էր հայոց թագավորի նախաձեռնությամբ։ Սակայն նույնիսկ IV—V դարերում տիրող դասակարգի՝ նախարարների և այլ իշխանների հետ միասին «Աշխարհաժողովին» մասնակցում էր գյուղական համայնքների վերնախավը, ինչպես վկայում է Փավստոսը՝ «ռամիկ շինականք» և «դասապետք շինականաց»[25]։ Ագաթանգեղոսի, Փավստոսի վկայություններից երևում է, որ Աշխարհաժողովը հրավիրում էր «թագաւորն ինքնիշխան հրամանաւ»[26] և նման հավաքույթներին ներկա էին լինում ժողովրդի բոլոր խավերը։

«Աշխարհաժողովի» մասին պահպանված տեղեկություններում հայ մատենագիրները միշտ նշում են Ծաղկոտն գավառը, Նպատ լեռը և Շահապիվանը։ Նույնն ենք տեսնում «Աշխարհաժողովի» վերաբերյալ մեզ հասած հնագույն տեղեկության մեջ, որ պահպանել է Տրդատ Ա Արշակունու կրտսեր ժա-

---

23 Իրականում սա պիտի լինի Աշխադար թագավորը (110—113)՝ պարթևական Բակուր Բ թագավորի (77—110) որդին։ Այս Աշխադարը, ըստ հին հայկական ավանդությունների, կոչվել է Շիդար և եղել է Արտավազդ թագավորի որդին (տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Բ, մաս Ա, էջ 20, ծան. 3)։

24 Խորենացի, Բ, իբ։

25 Տե՛ս Փավստոս, Դ, գ և ե, լգ։

26 Ագաթ., § 778։

*մանակակից Հովսեպոս Փլավիոսը*[27]*։ Վերջինիս հաղորդումից իմանում ենք, որ հայ մեծամեծները Աշխարհաժողով էին հրավիրել բողոքելու Հռոմին՝ պարթև Վոնոնի թագավորության (11—16 թթ.) դեմ Հայաստանում։ Պատմիչը հաղորդում է, որ «Վոնոնեսը թագավոր դառնալու ոչ մի այլ հնարավորություն չուներ, քանի որ Նպատի շուրջ բնակվող հայ մեծամեծները հարել էին Արտավանին և նրան (Վոնոնեսին) հանձնեցին Ասորիքի ստրատեգոս Սիլվանոսին»*[28]*։*

## 2. ԱՐՔՈՒՆԻ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Գործակալությունները։** *Հայկական արքունիքում էր կենտրոնացված ամբողջ երկրի կառավարման ապարատը՝ բաղկացած առանձին պաշտոններից, որոնք կոչվում էին գործակալություններ, իսկ պաշտոնյաները՝ գործակալ։ Գործակալությունների մասին հայ մատենագիրների մոտ պահպանված տեղեկությունները ցույց են տալիս, որ դրանք հիմնականում այն արքունական պաշտոններն են, որ գոյություն ունեին բոլոր հելլենիստական թագավորությունների արքունիքներում*[29]*։ Հայ մատենագիրների տեղեկությունները ստուգվում են հելլենիստական ժամանակաշրջանի գրավոր աղբյուրներով և տերմինների այն զուգադիպումներով, որոնք երևան են գալիս Աստվածաշնչի հունարեն, գրաբար և վրացերեն թարգմանությունների համեմատական ուսումնասիրությամբ»*[30]*։*

*Արդեն առաջին հայ Արշակունիների օրոք Մեծ Հայքում գոյություն ունեին մի շարք հիմնական գործակալություններ, որոնց մի մասը հիմնադրվել էր դեռևս Արտաշեսյանների օրոք։*

*1. «Հազարապետութիւն»*

*5. «Մեծն դատաւորութիւն» պաշտոնը*

*3. «Մաղխազութիւն»— թագավորի անձնական թիկնապահի պաշտոնը*

*4. «Հայրութիւն»— հայոց արքունիքի և արքունի կալվածքների վերակացուի պաշտոնը*

*5. «Մեծն դատաւորութիւն» պաշտոնը*

*6. «Սպարապետութիւն», որ առաջ եկավ միայն II դարի վերջերից։*

*Գոյություն ունեին նաև այլ երկրորդական գործակալություններ։*

**«Ձեռական իշխանութեան երկիր»։** *Գործակալությունները տրվում էին բարձր ավագանու ամենաազդեցիկ անձնավորություններին։ Յուրաքանչյուր գործակալին իր պաշտոնը կատարելու համար իբրև վարձատրություն տրվում էր որոշ տերիտորիա՝ գավառ, որը ի տարբերություն իր տոհմա-ցեղային տերիտորիայի կամ ժառանգական կալվածքների, կոչվում էր «ձեռական երկիր»*

---

27 *Տե՛ս* Jos. *Flav.*, Ant., Jud., *XVIII, 51։*

28 *«Հովսեպոս Փլավիոսը Հայաստանի մասին», թարգմ. Սիմոն Կրկյաշարյանի (ձեռագիր)։*

29 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Арменни в эллинистическую эпоху, *էջ 69։*

30 *Տե՛ս նույն տեղում։*

կամ «երկիր ձեռական իշխանութեան»։ «Ձեռական իշխանութիւնը» տվյալ գավառում պատկանում էր բարձր ավագանու այս կամ այն անձնավորությանը, քանի դեռ նա վարում էր իր ստանձնած գործակալությունը։ Նրա պաշտոնը ուրիշին հանձնվելու դեպքում տվյալ գավառի «ձեռական իշխանութիւնը» անցնում էր նոր անձնավորության։ Սակայն ժամանակի ընթացքում բոլոր գործակալությունները դառնում են համապատասխան նախարարական տոհմերի ժառանգական արտոնություն, ուստի «ձեռական իշխանութեան» գավառները ևս միացվում են նրանց ժառանգական տերիտորիաներին և «ձեռական իշխանութիւն» հասկացությունը հետզհետե վերանում է։ Հայ մատենագիրների մոտ պահպանված կցկտուր տեղեկությունները վերաբերում են ուշ շրջանին՝ IV—V դարերին, այն էլ կաթողիկոսի և մասամբ վերջին հայ Արշակունիների կալվածքներին։

Պահպանված կցկտուր տեղեկությունները թույլ են տալիս վերականգնելու «ձեռական իշխանութեան» մի հետաքրքրական օրինակ։ Տրդատ Ա Արշակունու գահակալման սկզբնական շրջանում նրա «Մեծ թագաւոր Հայոց Մեծաց» լինելը, այսինքն՝ Արշակունիների «երկրորդական գահը» զբաղեցնելը պարթևական արքունիքում, ըստ երևույթին, դիտվում էր իբրև գործակալություն, որի համար հայոց թագավորը ստանում էր «ձեռական իշխանութիւն»։ Մ. թ. 54 թվականին, երբ Վաղարշի կողմից Տրդատը բարձրացվեց հայկական գահը, Մեծ Հայքին միացվեց Ատրպատականի մասը կազմող մի ընդարձակ տերիտորիա, որը IV դարում դեռևս հայտնի էր իբրև «Ձեռին իշխանութեանն տանն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն»[31]։ Այս տերիտորիան մնում էր Մեծ Հայքից դուրս[32] ու պատկանում էր անձամբ Տրդատ Ա-ին և նրանից հետո Հայաստանում թագավորած անձնավորություններին։ Հետագայում այս կարգը պահպանվում էր նույնիսկ Սասանյանների կողմից։

«Ձեռական իշխանութեան» տերիտորիաների երևույթը շատ հին հիմնարկություն պիտի լինի։ Այն նշմարվում է Հին Արևելքի այնպիսի պետություններում, ինչպիսին է Ասորեստանը։ Մեզ հայտնի է, օրինակ, արքունի տակառապետի «ձեռական իշխանութեան» տերիտորիան՝ «Կաղմուխի» երկիրը[33] (Խորենացին հիշատակում է իբրև «Տուն Կադմեայ», անտիկ հեղինակների Zabdicenae երկիրը Միջագետքում), որը մինչև 37 թվականը մտնում էր Մեծ Հայքի կազմի մեջ։

**«Հազարապետութիւն»**: Առաջին[34] և գլխավոր գործակալությունը պետության մեջ հազարապետությունն էր։ Այս գործակալությունը գլխավորում էր

---

31 Փավստոս, Դ, ծ։ «Հայոց թագավորի ձեռական իշխանության տունը (երկիրը) Ատրպատական աշխարհում»։ Փավստոսի աշխարհ. թարգմ. մեջ (էջ 207) թարգմանված է իբրև «Հայոց թագավորական տան սեփական իշխանությունը Ատրպատական աշխարհում»։ Այս «Ձեռին իշխանութեան տունն թագավորի Հայոց» մի այլ տեղ Փավստոսը (Ե, ը) անվանում է «Ատրպատճաց գաւառ» (աշխարհաբար թարգմ., էջ 250)։

32 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 76—77։ Նույնի՝ Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, էջ 171։

33 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Պայմանական հողատիրության առաջացման հարցի շուրջը ֆեոդալականացող Հայաստանում, ՊԲՀ, 1971, № 1։

34 Փավստոսը (Դ, բ) այդպես էլ անվանում է՝ «Սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն»։

«Հազարապետ Հայոց Մեծաց»-ը, որը թագավորի անունից փաստորեն կառավարում էր ամբողջ երկիրը։ Հազարապետը, գոնե մինչև II դարի վերջը, գլխավորում էր երեք վարչություններ՝ ֆինանսների, հարկահանության ու հանրային աշխատանքների և, թերևս, ռազմական։ Արմազիում հայտնաբերված երկլեզվյան (արամեերեն և հունարեն) արձանագրության մեջ οἰκόνομος-ը համապատասխանում է ἐπίτροπος-ին[35] իսկ վերջինս այն տերմինն է, որով հենց արտահայտվում է հազարապետի պաշտոնի էությունը հելլենիստական աշխարհում[36]։

Հազարապետին են ենթարկվում Մեծ Հայքի բոլոր գյուղական համայնքները և նա է ստանում գյուղական ու քաղաքային համայնքներից հավաքվող հարկերն ու տուրքերը։ Նա էր հավաքագրում պետական շինարարության համար շինականներին ու քաղաքացիներին «պարհակութիւն» անելու, այսինքն՝ մասնակցելու քաղաքների ու ամրոցների կառուցմանը, կամուրջների, ջրանցքների ու ճանապարհների շինարարությանը, անտառներ գցելուն։ Այս վերջին պարհակը IV դարում կոչվում էր «խաշար»։

Թագավորը հազարապետի պաշտոնը հանձնում էր կամ իր մերձավորներից մեկին, կամ մեծամեծ ավագանուց ամենից նվիրված անձնավորությանը։ Այդ պաշտոնը, ինչպես և մյուս գործակալությունները, ժառանգական դարձավ միայն հետագայում, IV դարում։

**«Ասպետութիւն»:** Զանգեզուրում վերջերս գտնված արամեերեն արձանագրությունից երևում է, որ թագադիր-թագակապի գործակալությունը գոյություն է ունեցել Արտաշես Ա-ի (189—161) ժամանակ[37], սակայն այն «ասպետութիւն» պիտի կոչված լինի միայն սկսած Տրդատ Ա Արշակունուց։ Բագրատունի նախարարական տոհմը, որի մենաշնորհն էր այդ պաշտոնը, երբեմն կոչվում է նաև «Ասպետունիք»։ Թագադիր-թագակապ ասպետների «ձեռական իշխանութեան» գավառն էր Սպերը Ճորոխի հովտում։ Կենտրոնը գտնվում էր Սմբատավանում (հետագայում Բաբերդ)։ Իսկ այս տոհմի տանուտիրական կամ նահապետության երկիրը մնում էր «Մարաց ամուր աշխարհը», որը Պտղոմեոսը կոչում է Σαμβάται ἔθνος։

Ասպետը միևնույն ժամանակ արքունիքի արարողապետն էր։ Նա էր որոշում «արքունի տաճարում» (թագավորական պալատում) նախարարների «բարձն» ու «պատիւ»-ը և կազմում «Գահնամակը», որը հաստատվում էր թագավորի կողմից։ Ըստ երևույթին, յուրաքանչյուր նոր գահակալի բարձրացումով վերանայվում էին «Գահնամակը» և «Զորանամակը»։

---

35 Տե՛ս Г. В. Церетели, Армазская билингва, Тбилиси, 1941, էջ 65—66։ Նույնի՝ Эпиграфические находки в Мцхете, ВДИ, 1948, № 2, էջ 57։

36 Ինչպես ճիշտ ենթադրում է Հ. Մանանդյանը, հազարապետի «...պաշտոնի ֆինանսական բնույթը կարելի է ենթադրել Նոր կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ «հազարապետ» բառը համապատասխանում է հաճախ հունարեն οἰκονόμος («տնօրէն», «տնտես») բառին (տե՛ս Ա. Պետր., Ա. Թուղթ, Դ, 10։ Կորնթ., Ա., Ժ, 1 և 2 և տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 70)։

37 Տե՛ս А. Г. Периханян, Арамейская надпись из Зангезура, ՊԲՀ, 1965, № 4, էջ 108—110։ Նաև A. Perikhanian, L'inscription araméenne du roi Artašes trouvée à Zanguézour (Siwnik'), REANS, t. III, Paris, 1966, էջ 18, 22։

**«Մաղխազութիւն»**: *Թագավորի համար մեծ նշանակություն ուներ արքունի թիկնապահների գործակալությունը, որի գոյության մասին որոշակի ցուցմունքներ են պահպանվել դեռևս Արտավազդ Բ-ի (56—34) ժամանակվանից։ Ըստ Խորենացու պատմածի, այս գործակալությունը ևս ժառանգական է դառնում «Վաղարշակի» օրոք*[38]*։ Վերջինս «իրեն զինված թիկնապահներ է նշանակում Հայկազն Խոռի սերնդից ընտիր և քաջ նիզակավոր և սուսերավոր մարդկանց, և նրանց նախարարության գլուխ է նշանակում Մաղխազ*[39] *անունով մի բարի ու սրտոտ մարդու, բայց ցեղի անունը պահում է սկզբնականը»*[40]*։ Մաղխազը, հավանաբար, Ադիաբենեի արքայական տոհմի շառավիղներից էր։ Այս պաշտոնը համապատասխանում է պարթևական արքունիքի «փուշտիպան սալար»-ին*[41]*։ Մաղխազը Խորխոռունի տոհմի նահապետն էր, տոհմ, որի ժառանգական տերիտորիան էր Վանա լճի հյուսիս-արևմտյան շրջանը, հետագայի Խորխոռունիք գավառը, իսկ իբրև «ձեռական իշխանութեան» երկիր, նրան տրվել է Հեր-Զարևանդ գավառը։ Այս գավառում էր գտնվում «Հովուաւան» կամ Մաղխազանի գյուղը (այժմ՝ Մահլա) Հեր (այժմ՝ Խոյ) քաղաքից հյուսիս։*

*Այս տերիտորիան բաղկացած էր Զարևանդ և Հեր քաղաքների քաղաքային տերիտորիաներից՝ գավառներից, ուստի այս երկրամասի կառավարիչը կոչվում էր «Շահապ Զարաւանդ և Հեր գաւառի»*[42]*։ Խորխոռունիների այս ճյուղը իբրև առանձին նախարարական տոհմ հայտնի էր «Մաղխազունիք» անունով։*

**«Մարդպետութիւն»**: *Այս գործակալության ղեկավարը սկզբնական շրջանում կոչվում էր «Հայր Թագաւորի»*[43]*։ Այս գործակալությունը հելլենիստական աշխարհում հայտնի էր իբրև «արքունի գանձարանների պետի» («գազոֆիլակտ») պաշտոն*[44]*։ Տրդատ Ա-ի կամ նրա հաջորդների օրոք «հայրությունը» դառնում է ժառանգական պաշտոնություն մարդ ցեղի ցեղապետ-նահապետի, որի տոհմական տիտղոսն էր «մարդպետ», ուստի այնուհետև այս գործակալությունը կոչվում է «մարդպետութիւն»*[45]*։*

*Մարդպետության գործակալության պաշտոնավարը այսուհետև կրում էր «Հայր Մարդպետ» տիտղոսը։* Հ. Մանանդյանը *ճիշտ է բնորոշում Հայր Մարդպետի իրավասության սահմանները։ Նրա պարտականությունն էր Արշակունիների կանանոցի և արքունիքի վերակացությունը, թագավորական ամրությունների ու բերդերի պահպանությունը և արքունի գանձերի ու կալվածքների*

---

38 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, է։*

39 *Ն. Ադոնցի բացատրությունը «Մաղխազ» տիտղոսի, որ ասուրերեն բառ է՝* malxazu *և նշանակում է՝ «տեր, իշխան, թագաւոր» (տե՛ս Н. Адонц.* Армения в эпоху Юстиниана, *էջ 400), ցույց է տալիս այս տիտղոսի կապը Ադիաբենեի հետ։*

40 **Խորենացի**, *Բ, է։*

41 *Տե՛ս Հ.* **Մանանդյան**, *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 68։*

42 *Տե՛ս* **Ագաթ.**, *§ 795։*

43 *Տե՛ս վերը, էջ 674—675։*

44 *Տե՛ս С. Т. Еремян,* Основные черты общественного строя Армении..., *էջ 70։*

45 *Տե՛ս նույն տեղում։ Ն. Ադոնցը առաջին անգամ արտահայտեց այն միտքը, որ «մարդպետ» սկզբում նշանակել է՝ «մարդ ցեղի պետ» (Н. Адонц.* Армения в эпоху Юстиниана, *էջ 319)։*

վերահսկողությունը։ Բնական է, որ Հայր Մարդպետը արքունիքում մեծ կշիռ պիտի ունենար[46]։

Մ. թ. առաջին դարերում մարդերը դեռ լրիվ չէին դուրս եկել ռազմական դեմոկրատիայի աստիճանից և նրանցից կազմված «մարդպետական գունդը» պիտի ջաչ կռվողի համբավ ունենար։ Մարդպետը իբրև առանձին նախարարական տոհմի նահապետ-տանուտեր, իր հսկողության ներքո ուներ հսկայական տերիտորիա, հետագա Վասպուրական նահանգի մեծագույն մասը, ինչպես հաղորդում է Խորենացին[47]։ Այս երկրամասը անտիկ հեղինակների մոտ հայտնի է Mardustana[48] անունով։ Հայր Մարդպետի «ձեռական իշխանութեան» տերիտորիան պիտի լիներ Նախճավան քաղաքը իր գավառով։

**«Գործակալութիւն մեծի դատաւորութեան»**: Այս գործակալությունը համապատասխանում է հելլենիստական տերությունների δικαιοδοσία-ին[49]։ Օրինակ, Պոնտական թագավոր Միհրդատ Զ Եվպատորի արքունիքում այդ պաշտոնում էր նշանավոր Մեթրոդորոս Սկեպսիացին, հետագայում՝ Տիգրան Բ-ի արքունի պատմագիրը։ Ըստ երևույթին, այս պաշտոնը Հայաստանում գրավում էր քրմապետը, որ սովորաբար նշանակվում էր թագավորող դինաստիայի անդամներից, իսկ քրիստոնեությունը պետական կրոն հայտարարվելուց հետո այդ պաշտոնում տեսնում ենք հայոց եկեղեցու պետին՝ եպիսկոպոսապետին, որը 373 թվականից հետո կրում էր «կաթողիկոս Հայոց» տիտղոսը[50]։ Առհասարակ տեղեկությունները այս գործակալության մասին շատ կցկտուր են։

**«Շահապն Արտաշատու»**: Հելլենիստական թագավորությունների արքունիքում մեծ տեղ էր գրավում պետության մայրաքաղաքի «արքայական տնտեսը», որը Հայաստանում հայտնի էր «շահապն Արտաշատու» տիտղոսով։ Սա ղեկավարում էր մայրաքաղաք Արտաշատի քաղաքային համայնքը և նրան պատկանող տերիտորիան, որը նեղ իմաստով համարվում էր «Ոստան Հայոց»։

Բացի այս գործակալություններից, արքունի դուռը սպասարկում էին մի շարք պաշտոնյաներ, որոնց մասին տեղեկությունները շատ սուղ են։ Դրանք են՝ «սենեկապետ արքունի»-ն, որը ղեկավարում էր պետական գրասենյակը («սենեակ») և «արքունի դիւանը» (արխիվը)։ Աղբյուրների կցկտուր տեղեկություններից երևում է, որ սենեկապետը թագավորի անձնական քարտուղարն էր և իր ձեռքի տակ աշխատող բազմաթիվ դպիրների միջոցով գրի էր առնում նրա բանավոր հրամանները։ Դպիրները այս հրամանները գրանցում էին հատուկ «մատեան»-ներում[51]։ Պետական գրագրությունների լեզուն մինչև Մեսրոպ Մաշտոցի (361—440) հանճարեղ գյուտը՝ հունարենն էր և մասամբ՝ արամեե-

---

46 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., մաս Ա, էջ 329։ Նույնի՝ Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 6—67։

47 Տե՛ս Խորենացի, Բ, է։

48 Սխալ ընթերցումն է Ματουστάνα՝ Matustana (տե՛ս Ptol., V, 12, 7)։ Ճիշտ ընթերցումը պիտի լինի Μα[ρ]τουστάνα։

49 Տե՛ս *С. Т. Еремян*, Основные черты общественного строя Армении, էջ 71։

50. Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Բ, մաս Ա, էջ 331։

51 Տե՛ս *С. Т. Еремян*, Основные черты общественного строя Армении, էջ 72։

րենն ու ասորերենը։ Հայ Արշակունիների մեզ հասած արձանագրությունները հունարեն և արամեերեն լեզուներով են փորագրված։

Գոյություն ունեին և այլ պալատական պաշտոններ՝ «շահախռապետ», «որսապետ», «տակառապետ», «զինակիր», «կարապետ արքայի» և այլն։

**«Սպարապետութիւն»:** Այս կարևորագույն գործակալությունը ավելի ուշ է առաջացել և պայմանավորված է երկրորդ դարի վերջերից սկսած Հռոմեական կայսրության նոր քաղաքականությամբ։

Նախապես, հավանաբար, սպարապետի ֆունկցիաները պատկանում էին նույն հազարապետին, իսկ պաշտոնապես գերագույն զորավար էր համարվում ինքը՝ հայոց թագավորը[52]։ Սպարապետության գործակալությունը առաջ է եկել, ըստ երևույթին, Հայոց Վաղարշ Բ թագավորի (186—198) ժամանակ, երբ հայ Արշակունիների դինաստիան դարձավ ժառանգական։ Այս Սեպտիմիոս Սևերոս կայսեր (193—211) ժամանակն էր, երբ Հայաստանի ռազմական կազմակերպությունը արմատական փոփոխության ենթարկվեց։

**Հայկական հեծելազորը:** «Սպարապետ Հայոց»-ը համարվում էր Մեծ Հայքի թագավորության զորական ուժերի գերագույն հրամանատարը։ «Զորանամակ»-ով սահմանված քանակությամբ հեծելազորով նրան էին ներկայանում բդեշխները և նախարարները, որոնք, ըստ ներկայացվող հեծյալների քանակի, համարվում էին՝ «բեւրաւորք» (10.000 և ավելի հեծյալ ունեցողներ), «հազարաւորք», «հարիւրաւորք» և այլն։ Գյուղական համայնքներից հավաքագրվում էր հետևակ զորքը։ Աղբյուրներից չի երևում, որ գոնե առաջին Արշակունի թագավորների ժամանակաշրջանում հայկական բանակը սիստեմատիկորեն մասնակցելիս լիներ հռոմեական հեռավոր արշավանքներին։ Պետք է ենթադրել, որ հայկական այրուձին մասնակցել է գլխավորապես (Վիրքի և Աղվանքի զորական ուժերի հետ միասին) մշտական սպառնալիք հանդիսացող կովկասյան անցքերից ներխուժող Հյուսիսային Կովկասի վաչկատուն ցեղերի դեմ մղված պայքարին, որի մասին տեղեկություններ են պահպանվել նաև հայ և վրաց պատմական ավանդություններում և զրույցներում։

Հնագույն ժամանակներից Հայաստանում գոյություն ուներ «ազատաւրեար»-ը, այսինքն՝ հայկական ցեղերի, ապա հայ ժողովրդի վերնախավից դուրս եկած հեծելազորը, որը սոցիալապես ազատ էր և հայտնի էր «ազատանի» հավաքական անունով։ Այս ազատանին կազմում էր «արքունի զորք»-ի հիմնական կորիզը և նրա ծաղիկը։

«Ազատանի» զորականը կամ ավելի պարզ՝ «ազատ հեծեալ»-ը ստանում էր որոշ հողաբաժին՝ տիրելու և օգտագործելու իրավունքով, իսկ գերագույն սեփականատիրական իրավունքը պատկանում էր պետությանը՝ ի դեմս թագավորի և նրա արքունիքի։ Նման հողամասը կոչվում էր «վիճակ» և համապատասխանում էր հելլենիստական աշխարհում տարածված «կլերոս»-ին (κλῆρος)։ Այս «վիճակները» ժամանակի ընթացքում ժառանգական էին դարձել[53]։ Սովորաբար, հեծյալներին տրվող հողամասերը առապար հողեր էին,

---

52 Տե՛ս С .Т. Еремян, Основные черты общественного строя Армении, էջ 70։

53 Տե՛ս նույն տեղում, էջ 61։

*որոնք այդ ձևով դառնում էին պիտանի և նման եղանակով պետությունը հատուցում էր նրանց զինվորական ծառայությունը։*

*Սկզբնական շրջանում «ազատ»-ների հողամասերը նույնպիսի մասնատիրական տնտեսություններ էին, ինչպես ստրկատիրական Հայաստանի վերնախավի այլ ներկայացուցիչների տնտեսությունները։ «Ազատ հեծելազ»-ների հողերը ևս մշակում էին «ծառայ»-ները և «մշակ»-ները, որոնք ստրկության տարբեր աստիճանների վրա էին գտնվում։ Այս «ազատ» տերմինը, որ ծագում է իրանական բառից, այնուհետև դառնում է ընդհանուր հասկացություն, որով բնորոշվում է Հին Հայաստանի ամբողջ վերնախավը՝ տիրող դասակարգը։ «Ազատ»-ներին հակադրվում են գյուղի և քաղաքի աշխատավոր զանգվածները՝ «շինականները»-«գեղջուկները» և քաղաքային բնակչության ստորին խավերը՝ «ռամիկ»-ները։ Սրանց իրավական վիճակը բնորոշվում է մի ընդհանուր տերմինով՝ «անազատ»։ Իսկ ստրուկները դուրս էին իրավական նորմերից և դասվում էին բնակչության ամենաիրավազուրկ խավին՝ «անկարգ»-ների շարքին։*

**Տոհմատիրական ավագանու մերձեցումը արքունիքին:** *Ինչպես Արտաշեսյանների ժամանակ, հայ Արշակունիները ևս իրենց արքունիքին են մերձեցնում դեռևս գոյություն ունեցող ցեղապետներին՝ տոհմատիրական ավագանուն, որոնք գլխավորում էին ցեղային զինվորական կոնտինգենտները։ Նրանք մտցվում էին նախարարության համակարգի մեջ և հաճախ ստանում գործակալություններ։ Բնորոշ է ապարհացի ցեղը, որ հայ մատենագրության մեջ հիշատակվում է V դարում*[54] *և պետք է նույն պառն կամ ապառն պարթևական ցեղը լինի, որից սերվել է Արշակունիների դինաստիան։ Ավելի ուշ շրջանի տեղեկությունների համաձայն, ապարհացիները բնակվում էին Կասպից ծովի ափերին՝ Կասպից երկրում (*Caspianae*), որը մտնում էր Մեծ Հայքի սահմանների մեջ։ Տրդատ Ա-ը իր թիկունքը ամրապնդելու համար, ապարհացիների մի մասը բնակեցրել է Հարք գավառի արևելյան մասում, որը այնուհետև կազմեց առանձին գավառ և կոչվեց «Ապարհունիք» կամ «Ապահունիք»։ Սրանից է առաջացել Ապահունեաց նախարարական տոհմը։*

*Ադիաբենեի արքայական տան շառավիղներից պետք է առաջացած լինեն «Մանավազեանք», «Խոռխոռունիք», «Մաղխազունիք», «Բզնունիք» և այլ նախարարությունները։ Սրանց հետ սերտորեն կապվում են նաև Բագրատունիները, որոնք հայտնի էին դեռևս Տիգրան Բ-ի ժամանակ (Բագադատես-Բագարատ)*[55]*։ Իսկ Տրդատ Ա-ի ժամանակ այդ տոհմը նորից հանդես է գալիս ի դեմս Շամբատ-Բագարատի։ Մովսես Խորենացին հաղորդում է, որ «Վաղարշակը» մեր երկրի «...արևմտյան կողմում, որտեղ հայերեն լեզուն վերջանում է, նրան (Շամբատ-Բագարատին) նշանակեց կուսակալ բյուրերի և հազարների իշխան»*[56]*, թեև Շամբատ-Բագարատը մի շարք ծայրամասային երկրամասերի*[57] *կառավարիչ էր նշանակված, բայց միայն Սպեր գավառը դարձավ նրա հաջորդ-*

---

54 Եղիշե, *Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, հինգերորդ եղանակ, Երևան, 1957, էջ 115։*

55 *Տե՛ս* App., Syr., *48։*

56 **Խորենացի**, *Բ, գ*։

57 *Տմորիք, Կորճայք, Մարաց ամուր աշխարհ, Գողթն-Մարանդ-Պարսպատունիք, Անգեղ-տուն և Սպեր գավառները։*

ների՝ Բագրատունի նախարարական տոհմի ժառանգական սեփականությունը և միայն Սպերում էին նրանք կրում «տանուտիրական պատիվ ազգին»[58]։

Նույն այդ ժամանակ պետք է կազմված լինեն «Ծաղկացոց», Շակաշենի (հետագայում՝ «Գարդմանացոց») և «Ուտեացւոց» «իշխանութիւն-կողմնակալութիւնները»[59]։

Տրդատ Ա-ի ժամանակ պիտի առաջ եկած լինի նաև Դիմաքսյանների իշխանական տոհմը։ 37 թվականին, երբ Գողթնական ծայրամասային կողմնակալությունը ընդմիշտ անցավ Վրաց (Իբերիայի) թագավորությանը, այնտեղ կառավարող Դիմաքսյան տոհմի ներկայացուցիչները ապաստան գտան պարթևների մոտ և միանալով Տրդատի զորամասերին, պայքար էին մղում հռոմեացիների դրածո Միհրդատ թագավորի դեմ[60]։

Արքունիքին է մոտեցվում նաև մարդ ցեղի վերնախավը, հատկապես ցեղապետը՝ «մարդպետ» տոհմական տիտղոսով, որը թագավորից ստանում է, ինչպես նշվեց վերը, արքունի կալվածքների և գանձարանների ու արքայական ընտանիքի խնամակալի՝ «Հայրի» գործակալությունը, որը այնուհետև հայտնի էր իբրև «մարդպետութիւն», իսկ ինքը՝ այս պատիվը կրողը՝ «Հայր Մարդպետ»։

## 3. ՄԵԾ ՀԱՅՔԻ ՏԵՐԻՏՈՐԻԱՆ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ Մ. Թ. I—II ԴԱՐԵՐՈՒՄ

**Մեծ Հայքի տերիտորիան։** *Հռանդեայի դաշնագրով վերականգնվում է Մեծ Հայքի թագավորության խախտված տերիտորիալ ամբողջությունը, բայց որոշ վերապահությամբ։ Մ. թ. 37 թվականի դաշնագրով, Պարթևստանի պետության կազմի մեջ մտնող սահմանամերձ Ատրպատականի թագավորությանը միացվեցին Հայոց Միջագետքը, Ծավդեքը և Արվաստան-Միգդոնիան՝ Մծբին կենտրոնով՝ 27.000 քառ. կմ տարածությամբ։ Բացի այդ, նույն այդ ժամանակ Մեծ Հայքից անջատվում և միացվում է Իբերիային՝ Վրաց աշխարհին, մեսխական ազգաբնակչություն ունեցող Գողթնականը՝ 5.000 քառ. կմ տարածությամբ։ Այս տերիտորիաները ընդմիշտ մնացին Մեծ Հայքից դուրս։ Մնում է Մեծ Հայքի թագավորության տերիտորիան այն առումով, որ պահպանվել է VII դարի հայկական «Աշխարհացոյց»-ում, և որը ընդգրկում էր 285.200 քառ. կմ տարածություն[61]։ Մեծ Հայքի տերիտորիան այնուհետև այդ տարածությամբ պահպանվեց մինչև նրա բաժանումը 387 թվականին։*

*Մ. թ. առաջին դարերի անտիկ հեղինակների, հատկապես խոշորագույն աշխարհագրագետների՝ Պլինիոս Ավագի (23—79) և Պտղոմեոսի (90—168) տեղեկությունները համընկնում են «Աշխարհացոյց»-ում պահպանված տեղեկություններին՝ Հայաստանի գրաված տերիտորիայի ու նրա սահմանների մասին։*

---

58 Տե՛ս Խորենացի, Բ, է։

59 Այս ժամանակաշրջանում Ուտիքը (Otene) ըստ Պլինիոսի հաղորդման (Plin., NH, VI, 16) տարածվում էր մինչև Արաքս (Երասխ) գետը։ Այս գետից հարավ գտնվում էր Կասպից երկրի կամ Բաղասականի կողմնակալությունը։

60 Տե՛ս վերը, էջ 724 և հաջ.։

61 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 69, 118։

Պլինիոս Ավագի հաղորդած տեղեկություններից երևում է, որ Կլավդիոս կայսեր (41—54) կարգադրությամբ մանրամասն ուսումնասիրվել է Մեծ Հայքի թագավորության տերիտորիան և կազմվել է քարտեզ, որը հետագայում օգտագործել է Պտղոմեոսը։ Կլավդիոս կայսեր ժամանակաշրջանի Հայաստանին վերաբերող նյութերը լայնորեն օգտագործել է նրա կրտսեր ժամանակակից Գայոս Պլինիոս Սեկունդոսը և շարադրել է իր աշխարհահռչակ «Բնական պատմության» («Naturalis Historia») մեջ, որը նա ավարտել է մ. թ. 77 թվականին։

Հայաստանին վերաբերող տեղեկությունները ընդգրկված են նշված աշխատության վեցերորդ գրքում։ «Մեծ Հայքը (Armenia Maior),— գրում է Պլինիոսը,— որ սկսվում է Պարիադրյան լեռներից (montes Paryadres)[62], ինչպես ասացինք, Կապադովկիայից բաժանված է Եփրատով, և Եփրատից հետո Միջագետքից բաժանված է Տիգրիսով, որը նվազ հայտնի գետ չէ[63]։ Այն (Մեծ Հայքը) ծնունդ է տալիս թե՛ մեկին և թե՛ մյուսին[64] և կազմում է սկիզբը Միջագետքի, որը տարածված է երկու գետերի միջև. այնտեղ միջանկյալ տարածությունը բնակեցված է Արոեացի արաբներով (Arabes Aroei)[65]։ Այսպիսով, այն ձգում է իր սահմանը մինչև Ադիաբենե, այդ նահանգից բաժանված լինելով լայնակի մի լեռնաշղթայով[66]. իր ձախ կողմում (Մեծ Հայքը) լայնությամբ տարածվում է մինչև Կյուրոս գետը, անցնելով Արաքս գետից այն կողմ[67], իսկ իր երկարությամբ[68] տարածվում է մինչև Փոքր Հայքը (Armenia Minor), որից բաժանված է Եվքսինյան Պոնտոս թափվող Ապսարոս գետով[69] և Ապսարոսին ծնունդ տվող Պարիադրյան լեռներով։

Կյուրոս (գետը) ծնվում է Հենիոխական լեռներում, որոնք այլոց կողմից կոչվել են Կորաքսյան[70]։ Արաքսը ծնվում է միևնույն լեռներում և Եփրատը՝ 600

---

62 Համապատասխանում է Պոնտական-Պարխարյան լեռնաշղթային։

63 Տիգրիսը, ավելի ճիշտ՝ Արևմտյան Տիգրիսը, սկսած 37 թվականից, սահման էր պարթևներին ենթակա Ադիաբենեի և Մեծ Հայքի թագավորությունների միջև։ Նույն այս սահմանագիծը նշված է «Աշխարհացոյց»-ում (տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 68—69)։

64 Այսինքն՝ Եփրատ և Տիգրիս գետերի ակունքները գտնվում են Հայաստանում։

65 Նկատի ունի Արուաստան (ասոր. Beth Arbae) երկիրը՝ անտիկ հեղինակների Միգդոնիան, որի կենտրոնն էր Մծբին քաղաքը, և, ինչպես տեսանք, 37 թվականից մտնում է Ադիաբենեի կազմի մեջ։

66 Ադիաբենեի նահանգը նեղ իմաստով տարածվում էր Տիգրիս գետից դեպի արևելք՝ մինչև Զագրոս լեռները, և Փոքր Զավ գետի վերին հոսանքը։ Տվյալ դեպքում Պլինիոսը նկատի ունի Ադիաբենեի (նեղ իմաստով) և Մեծ Հայքի սահմանագիծը, որը անցնում է Փոքր Խաբուր գետից դեպի արևելք ձգվող ջրբաժան լեռնաշղթայով և անտիկ հեղինակների մոտ կոչվում էր Niphates։

67 Այս հատվածից երևում է, որ Պլինիոսը խոսում է Հայաստանի սահմանների մասին, իր ձեռքի տակ ունենալով համապատասխան քարտեզ, որտեղ նայողի համար «ձախ կողմից», այսինքն՝ հարավ-արևմուտքից Հայաստանը տարածվում էր դեպի հյուսիս մինչև Կյուրոս (Կուր) գետը։

68 Այսինքն՝ արևելքից արևմուտք։

69 Ապսարոս է կոչվում Ճորոխ գետի ստորին հոսանքը, որտեղ սկսվում է ջրբաժան Պարիադրյան, այսինքն՝ Պոնտական-Պարխարյան լեռնաշղթան։

70 Այս տեղեկությունը Պլինիոսը վերցրել է Հեկատեոս Միլետացուց և նկատի ունի Կարմիր-Փորակ (այժմ՝ Ալահյու-ակբար) ջրբաժան լեռնաշղթան Կարսի և Արդահանի միջև։ Coraxici montes «Կորաքսյան» անունից էին դուրս բերում Cyrus—Կուր գետի անունը։

քայլ միջանկյալ հեռավորությամբ[71], և աճելով Մու(ր)սիս[72] գետակով, ինքը թափվում է, ըստ մի քանի աղբյուրների (կարծիքի), Կյուրոսի մեջ, որը նրան տանում է Կասպից ծով։

Փոքր Հայքում հայտնի քաղաքներ են Կեսարեան, Ազան, Նիկոպոլիսը[73], Մեծ Հայքում՝ Ար(սա)մոսատը՝ Եփրատի մոտ[74], Կարկաթիոկերտը՝ Տիգրիսի մոտ[75], Տիգրանակերտը՝ մի բլրի վրա[76], Արտաշատը՝ դաշտավայրում, Արաքսի մոտ»[77]։

Այնուհետև Պլինիոսը խոսում է Մեծ Հայքի թագավորության տարածության մասին. «Ավֆիդոսի կարծիքով,— շարունակում է Պլինիոսը,— ամբողջ Հայաստանի տարածությունը 5.000.000 քայլ է. Կլավդիոս կայսրը նրա երկարությունը Դասկուսայից մինչև Կասպից ծովի ափը հաշվում է.1.300.000 քայլ. իսկ լայնությունը (այդ թվի) կեսը, Տիգրանակերտից մինչև Իբերիա»[78]։

Մեծ Հայքի սահմանների մասին ավելի կոնկրետ տվյալներ է տալիս Պլինիոսից հետո հանդես եկած հռչակավոր Կլավդիոս Պտղոմեոսը։ Վերջինս իր «Աշխարհագրական ձեռնարկում», որը հրապարակվել է մ. թ. 150-ական թվականներին, Ասիայի 3-րդ քարտեզում[79], ցույց է տալիս Մեծ Հայքը նույն սահմաններում, չնայած, որ նա իր ձեռքի տակ ունեցել է նաև նախքան 37 թվա-

---

71 Հնում գերիշխում էր այն կարծիքը, որ Եփրատի (իմա՝ Արևմտյան Եփրատի) և Արաքսի ակունքները գտնվել են նույն լեռներում։ Նկատի ունենալով այս՝ «Աշխարհացույց»-ը գրում է՝ «...բղխէ... զԵփրատ յարևմուտս, և զԵրասխ՝ յարևելս»։ Նույնը ասում է Ստրաբոնը (Strabo, XI, 14, 2)։ Արաքսի ակունքներից ոչ հեռու գտնվող Մուրց գետը համարվում էր Արաքսի սկիզբը, իսկ Մուրց գետի ակունքների ջրբաժան Ծիրանյաց լեռների (այժմ՝ Փալանթոքյան-դաղ) արևմըտյան փեշերին գտնվում էին Եփրատի ակունքները։

72 Mu[r]sis համապատասխանում է Մուրց գետին։

73 Այստեղ հիշատակվող Փոքր Հայքի քաղաքները բոլորը գտնվել են Լյուկոս-Գայլ գետի հովտում. Կեսարեան պիտի լինի Մեծ Հայքին սահմանակից Satala—Սատաղը (այժմ՝ Սադաղ գյուղ), Ազան—Aza (Itin. Ant.) (այժմ՝ Ազիզ գյուղ) և Նիկոպոլիսը՝ այժմյան Բուրգ կամ Պյուրկ գյուղի մոտ։

74 Ar[sa]mosata—Արշամաշատը գտնվել է Անթիաս դաշտավայրում՝ Արածանի գետի վրա՝ այժմյան Խարաբա-Նաշարան ավերակները գետանցի մոտ։

75 Թերևս Arcathiocerta—Արկաթիակերտ։ Ըստ երևույթին, հետագայում կոչվել է Անգղ (այժմ՝ Էգիլ) և գտնվել է Անգեղ-տուն գավառում։

76 Տիգրանակերտը գտնվել է այժմյան Ֆարկին քաղաքի տեղը։

77 Artaxata—Արտաշատը գտնվել է այժմյան Խոր Վիրապի վանքից մինչև Քուչուկ-Վեդի։

78 Plin., NH, VI, 10։ Ըստ Պլինիոսի տեղեկությունների, Մեծ Հայքը արևմուտքից դեպի Արևելք ձգվում է Եփրատի արևմտյան ափին գտնվող Դասկուսա բնակավայրից (Փոքր Հայքում՝ Արաբկիր-չայի գետաբերանից արևմուտք, Կողբենիք գյուղից հյուսիս) մինչև Կասպից ծով, ընդամենը 1.300.000 քայլ, այսինքն՝ 1.300 հռոմեական մղոն, որ համապատասխանում է 1.950 կիլոմետրի։ Լայնությունը հարավից հյուսիս, այսինքն՝ Տիգրանակերտից մինչև Իբերիա (Վրաց աշխարհ), որի սահմանագիծը Մեծ Հայքի հետ անցնում էր Կուր գետով, նա հաշվում է 650.000 քայլ կամ 650 հռոմեական մղոն, որ հավասար է 975 կիլոմետրի։ Բերված թվերը ճիշտ չեն ու թերևս աղավաղված վիճակում են մեզ հասել։ Իրական տվյալներով Մեծ Հայքի լայնությունը հավասար է 870 կիլոմետրի, իսկ Տիգրանակերտ գավառից մինչև Իբերիա (Վիրք)՝ 550 կիլոմետրի։ Մեկ քայլը համապատասխանում է հունական ὀργυιά-ին ու հռոմեական passus-ին և հավասար է 1.85 մետրի։ Տվյալ դեպքում գործ է ածվում Հռոմեական կայսրության մեջ ընդունված հազար քայլը— mille passus, այն է՝ հռոմեական մղոնը, որը հավասար է 1,5 կմ։

79 Տես Ptol., Asiae tabula tertia, V, 12, 1—9:

*կանի համաձայնագիրը Մեծ Հայքի թագավորության քաղաքական սահմաններին վերաբերող նյութեր։*

*Ըստ Պտղոմեոսի*[80]*, Մեծ Հայքի սահմանը հյուսիսից կազմում է Կողքիսի մի մասը (նկատի ունի Ճորոխ գետի ստորին հոսանքում գտնվող Եգր «փոքր աշխարհը»), ապա Վիրքը և Աղվանքը՝ Կուր գետով։ Արևմուտքից սահմանագիծը անցնում էր Եփրատ գետով, որը բաժանում էր Մեծ Հայքը Կապադովկիայից (այսինքն՝ վերջինիս կազմի մեջ մտնող Փոքր Հայքից), ապա Եփրատից հյուսիս-արևելք ձգվող Մոսխական լեռներով մինչև Կողքիս։ Տվյալ դեպքում Պտղոմեոսը նկատի ունի Աճարա-Մեսխական լեռները, որոնք այս մասում Մեծ Հայքի թագավորության սահմանագիծն էին մինչև 37 թվականը։ Արևելքից Մեծ Հայքի սահմանն էր Վրկանից (Կասպից) ծովի մասը՝ Կուրի գետաբերանից մինչև 79°45′—43°20′ վրա գտնվող կետը (մոտավորապես պիտի համապատասխան լինի այժմյան Աստարա վայրին)։ Այնուհետև, սահմանը անցնում էր հիշյալ կետից դեպի արևմուտք՝ Կասպիական լեռներով, որոնք Մեծ Հայքը բաժանում էին Մեդիայից։ Հարավից Մեծ Հայքը սահմանակից էր Միջագետքին, սկսած Եփրատ գետից, Տավրոս լեռներով (նկատի ունի Հայկական Տավրոսի այն մասը՝ Ծովք լճից հարավ), որտեղ Եփրատի արմունկը նրան բաժանում էր Կիլիկյան Տավրոսից և Տիգրիս գետով, այսինքն՝ Արևմտյան Տիգրիսը և Տիգրիսը, որը սահմանագիծ դարձավ 37 թվականից հետո։ Ապա սահմանագիծը անցնում էր Նիփատես (Նպատ) լեռներով, բաժանելով Մեծ Հայքը հարավում գտնվող Ասորեստանից (իմա՝ Ադիաբենեից)*[81]*, մինչև Կասպիական լեռները։ Բերված տվյալները Հայաստանի մեզ հասած ամենահին քարտեզից են, որպիսին Պտղոմեոսի «Ասիայի երրորդ քարտեզն» է։ Հետագա աղբյուրներում Հայաստանի այդպիսի մանրամասն նկարագրություն գտնում ենք միայն V դարի հայ մատենագիրներ Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի ու Մովսես Խորենացու մոտ, որոնք Մեծ Հայքի թագավորության մասին խոսում են մինչև նրա 387 թվականի բաժանումը։ Սակայն, իհարկե, VII դարի «Աշխարհացույց»-ի տեղեկությունները մնում են անգերազանցելի։ Վերջինս հնարավորություն է տալիս վերծանելու նույն Պլինիոսի տեղեկությունները Մեծ Հայքի ներքին վարչական բաժանման մասին։*

**Մեծ Հայքի վարչական ստորաբաժանումը։** *Արտաշեսյաններից հետո խախտվել էր երկրի վարչական կարգը և անհրաժեշտ էր վերականգնել երկրի վարչական բաժանումն ու վարչական միավորումներում՝ «աշխարհներում» և «գավառներում» ու «ազգագավառներում» ստեղծել զինվորական և վարչական-հարկային իշխանություններ։ Անշուշտ, Տրդատ Ա-ը ձեռնամուխ է եղել այս գործին։*

*Այս կապակցությամբ կրկին պիտի հիշատակել Պլինիոսի հետաքրքրական տեղեկությունները Մեծ Հայքի վարչական բաժանման մասին։ «Ստույգ է,— գրում է Պլինիոսը,— որ նա (Մեծ Հայքը) բաժանված է ստրատեգիաներ*

80 *Տե՛ս* Ptol., V, 12, 1։

81 *Տրայանոս կայսեր արևելյան արշավանքների ժամանակ (114—117) Ադիաբենեի թագավորությունը նվաճվեց Հռոմի կողմից և նրա տերիտորիան վերածվեց հռոմեական պրովինցիա* Assyria-*յի՝ Ասորեստանի։ Այդ անունն է տրվում Ադիաբենեին հայ մատենագրության մեջ։*

(strategias) կոչված պրեֆեկտուրաների, որոնցից մի քանիսը թագավորություններ պիտի կազմեին հնում։ Նրանք թվով 120 են և բարբարոսական (այսինքն՝ ոչ հունական և հռոմեական— հեղ.) անուններ ունեն»[82]։

Պլինիոսը իր «Բնական պատմությունը» ավարտել է 77 թվականին, այսինքն՝ հենց այն ժամանակ, երբ Տրդատ Ա-ը կարող էր զբաղվել իր թագավորության տերիտորիայի վարչական բաժանման հարցերով և հազիվ թե հռոմեական գրողին լավ հայտնի լինեին Հայաստանում տեղի ունեցած վերջին փոփոխությունները տերիտորիալ բաժանման բնագավառում, մանավանդ, որ նա իր գործը ավարտելուց հետո ապրել է ընդամենը երկու տարի (մահացել է 79 թվականին)։

Այսուհանդերձ, Տրդատ Ա-ը, Հայաստանի վարչական բաժանման համակարգը վերականգնելիս ու նոր պայմանների համեմատ զարգացնելիս, գործ է ունեցել Պլինիոսի հիշատակած նույն ստրատեգիաների հետ։

Ուսումնասիրողները, սովորաբար, համարում են, որ Պլինիոսը խոսելով Հայաստանի 120 ստրատեգիաների կամ պրեֆեկտուրաների մասին, նկատի է ունեցել Մեծ Հայքի գավառները, որոնց թիվը այն ժամանակ մոտավորապես այդքան պիտի լիներ[83]։ Սակայն անհրաժեշտ է հիշել, որ պետության վարչական բաժանումը ըստ ստրատեգիաների սովորական է եղել հելլենիստական պետությունների համար և սովորաբար դրանք ավելի ընդարձակ տերիտորիա էին ընդգրկում, քան «Աշխարհացոյց»-ի գավառները։ Այդեն վերը, Արտաշեսյան Հայաստանի վարչական բաժանման կապակցությամբ, նշվել է, որ Պլինիոսի մոտ ստրատեգիաների թիվը կարող է աղճատված լինել և մեզ հասած 120-ի փոխարեն եղած լինել պարզապես 20, որ շատ հարմար է Հայաստանի համար[84]։ Ավելի հավանական է թվում, սակայն, որ 120 թիվը ճիշտ է, և Պլինիոսը ցանկացել է տալ Հայաստանի ավելի մանր, ստրատեգիաների ստորաբաժանումներ հանդիսացող միավորների քանակը, բայց սխալմամբ անվանել է դրանք ստրատեգիաներ։

Ստրաբոնի, Պլինիոսի և Պտղոմեոսի տվյալները համեմատելով «Աշխարհացոյց»-ում ընդունված Մեծ Հայքի տերիտորիալ բաժանման հետ, կարող ենք վերստեղծել Մեծ Հայքի թագավորության տերիտորիայի վարչական բաժանման պատկերը, որ գոյություն է ունեցել արդեն հելլենիստական ժամանակաշրջանում և զարգացել է Տրդատ Ա-ի և նրա հաջորդների օրոք։

Այդ վարչական բաժանումը պայմանավորված էր առաջին հերթին բնապատմական պայմաններով՝ Հայաստանի լեռնագրությամբ։ Հայաստանի ինքնամփոփ ձորերն ու հովիտները անհայտ ժամանակներից հանդիսացել են բազմաթիվ էթնիկական կազմավորումների բնակատեղիներ։ Յուրաքանչյուր «ձոր», «փոր», «հովիտ» հանդիսանում էր առանձին «ազգի», ցեղի և տոհմի բնակավայր և «գավառ» բառը սկզբնական շրջանում նշանակել է և՛ տոհմ կամ ցեղ և՛ նրա զբաղեցրած տերիտորիան։ Հետագայում, երբ «գավառը» գործ էր

82 *Plin.*, NH, VI, 10, 2։

83 Նույն տեղում։ Տրդատը գահակալել է (պաշտոնապես) 66-ից, Պլինիոսը մահացել է 79-ին (13 տարի ժամանակակիցներ են եղել)։ Բայց Պլինիոսը ուսումնասիրել է Մեծ Հայքը Կլավդիոսի (41—54 թթ.) կայսրության օրոք։

84 Տե՛ս վերը, էջ 679, ծան. 40։

ածվում միայն տերիտորիայի իմաստով, ցեղային տերիտորիան տարբերելու համար վարչական միավոր «գաւառից», գործ էր ածվում «ազգագաւառ» բառը։ Բնորոշ է, որ գավառների անունների մեծագույն մասը էթնիկական ծագում ունի։ Այն ցեղապետները, որոնք նշանակվում են տվյալ գավառի ժառանգական կառավարիչներ՝ «գաւառակալներ», նրանցից «սերված» նախարարական տոհմը իրեն ժառանգական տերիտորիան հանդիսացող գավառի անունն է կրում։ Սակայն նախարարական տոհմերի անվանումների մեծագույն մասը տարբեր է նրանց կողմից կառավարված գավառների անուններից։

Հայաստանի վարչական միավորները՝ «գաւառները» և «աշխարհները» ըստ իրենց պատկանելության, տարբերվել են միմյանցից և գոյություն են ունեցել առնվազն հինգ կարգի տերիտորիաներ, որ պայմանավորված էր հողատիրության տեսակներով։

Թագավորող դինաստիայի ժառանգական սեփականությունը հանդիսացող արքունի տերիտորիաները՝ «տուն արքունի», բաժանվում էին առանձին տերիտորիաների, ինչպիսիք էին՝

1. Անմիջապես թագավորի, թագաժառանգի և արքունիքի տնօրինության ներքո գտնվող տերիտորիաները՝ «գաւառք արքունականք» (շուրջ 40 գավառ), 2. Արշակունի սեպուհների տնօրինության ներքո գտնվող գավառներ, որոնք բոլորը միասին կոչվում էին «երկիր սեպհական գնդին» (հետագայում «Վասպուրհական», «Վասպուրական») (3 գավառ)[85], 3. Տաճարային տերիտորիաներ (4 գավառ), նվիրված դինաստիայի մահացած անդամների հետմահու պաշտամունքին։ «Արքունական» գավառների թիվը, այդպիսով, հասնում էր 47-ի։ Տրդատ Ա-ից սկսած սրանց համար գործ է ածվում նաև պարթևական «ոստան» տերմինը[86]։

Քաղաքային համայնքային գավառների թիվը հասնում էր 10-ի։

Բդեշխություններ, որոնք ընդգրկում էին 10-ից ավելի գավառներ։ Տրդատ Ա-ի և նրա հաջորդների ժամանակ գոյություն ուներ հինգ բդեշխություն. Ծոփաց կողմն, Աղձնիք, Կորդվաց աշխարհ, Նոր Շիրական և Գուգարք[87]։

Չորրորդ կարգի տերիտորիաներն էին բուն տաճարային հողերը, որոնք ընդգրկում էին ութ գավառ։

Հինգերորդ կարգի տերիտորիաները այն ցեղերի տերիտորիաներն էին, մեծ մասամբ Հայաստանի ծայրամասերում, խուլ լեռնային մայրախիտ անկյուններում, որոնք դեռևս գտնվում էին տոհմատիրական կարգերի քայքայման աստիճանի վրա։ Սրանց կողմից բնակեցված գավառները կոչվում էին՝ «ազգագաւառք» և նման գավառների թիվը հասնում էր 29-ի։

Այդպիսով, Մեծ Հայքի թագավորության ամբողջ տերիտորիան բաղկացած էր 124 գավառից, որոնք ընդգրկված էին 22 կողմնակալությունների՝ ստրատեգիաների և արքունի տան՝ ոստանի մեջ։ Ինչպես տեսնում ենք, Պլի-

---

85 Չպետք է շփոթել մ. թ. 591 թվականից հայտնի «Վասպուրական» նահանգի հետ, որ այդպես կոչվեց այն պատճառով, որ նրա հիմնական մասը կազմեցին Տոսպ—Ռշտունիքը և «երկիր սեպհական գնդին» կոչվող Աղիովիտ և Առբերանի գավառները։

86 А Г. Периханян, Древнеармянские востаники, ВДИ, 1956, № 2, էջ 44—46 և շար.։

87 Հետագայում բդեշխությունների թիվը նորից հանգում է չորսի (առանց Ծոփքի)։

նիոսը, չփոթելով մանր վարչական միավորները ավելի խոշոր միավորների հետ, այնուամենայնիվ, ընդհանուր առմամբ մոտավորապես ճիշտ թիվ է տալիս՝ 120։ Պլինիոսի մոտ թերևս նույն սխալն ենք տեսնում, ինչ որ վաղ շրջանի հայ մատենագիրների մոտ, որոնք հստակ սահմանազատում չեն դնում «աշխարհի», «նահանգի» և «գավառի» միջև, հաճախ շփոթելով մեկը մյուսի հետ։

Տրդատ Ա-ի ժամանակաշրջանում Մեծ Հայքի բնակչության թիվը հազիվ հասներ երեք ու կես միլիոնի։ Բայց սա բավական մեծ թիվ է, եթե նկատի ունենանք, որ մ. թ. I դարում մեր ամբողջ մոլորակի վրա ապրելիս է եղել շուրջ 150 միլիոն մարդ։

**Վարչական միավորների՝ ժառանգական տիրույթների վերածվելու տենդենցը։ «Նախարար» տերմինը։** *Յուրաքանչյուր ստրատեգիա (կամ պրեֆեկտուրա), որը հայերենում իբրև առանձին վարչական միավոր արտահայտվում էր «կողմնակալութիւն», «կուսակալութիւն» կամ պարզապես՝ «կողմն», «աշխարհ», «փոքր աշխարհ» բառերով, ուներ իր կառավարիչը, որը համապատասխանաբար, հունարեն կոչվում էր ստրատեգոս, իսկ հայերեն՝ «կուսակալ», «կողմնակալ», «աշխարհատեր» կամ «բդեաշխ»։ Սակայն, հավանաբար, դրանք հորջորջվել են նաև մեկ այլ ընդհանուր բառով՝ «շահապ» (հնագույն ձևն է՝ «շահրապ»), որ առաջ է եկել հին պարսկերեն «խշաթրապավանա», հունարեն տառադարձությամբ՝* σατράπης *(սատրապ) բառից*[88]։

Ստրատեգիան զինվորական-վարչական միավոր էր, իսկ նրա առաջնորդը՝ ամենից առաջ զորավար։ Թագավորը այդպիսի շրջանի ղեկավար էր նշանակում կամ իր մերձավորներին, իր թիկնապահ զորքի անդամներին, կամ տոհմային ավագանուց դուրս եկած զորահրամանատարներին։ Բոլոր դեպքերում նման ստրատեգոսը՝ «կողմնակալը», ձգտում էր ձեռք բերած պաշտոնը դարձնել իր տան ժառանգական արտոնությունը։ Երկրի վարչական միավորների ռազմական ֆունկցիաների բարձրացման հետ պիտի կապել մասսայական «ազգ սերելը», այսինքն՝ ստրատեգոսի վարչական և ռազմական ֆունկցիաները ժառանգական դարձնելը։ Այսպես, հետզհետե ժամանակավորապես նշանակվող կառավարիչները դառնում են ժառանգական և առաջ են գալիս նախարարական տոհմերը։

Ինչ վերաբերում է «նախարար» հասկացողությանը, սկզբնական շրջանում այն ունեցել է վարչական իմաստ և ոչ թե ցեղային կամ տոհմական[89]։ Սկզբում նախարար էին կոչվում թագավորի կողմից նշանակվող գավառների կառավարիչները՝ «գաւառակալ»-ները, սակայն ժամանակի ընթացքում նախարարի պաշտոնը դառնում է նրա տոհմի ժառանգական արտոնությունը, իսկ

---

88 Հետագայում Հայաստանում «շահապ» բառը ստացել է «քաղաքապետի», «վերակացու քաղաքի» մասնավոր իմաստը և այդ իմաստով էլ պահպանվել հայերենում, օրինակ, Մխիթար Գոշը (1130—1213) Տփղիսի քաղաքապետ նշանակված Ամիր Քուրդ Արծրունուն կոչում է «շահապն Տփղեաց»։ Անհրաժեշտ է նշել, որ իրանական լեզուներում «աշխարհ» և «քաղաք» հասկացողության համար գործ էր ածվում միևնույն «շաթրա» («շահրա») բառը, որից առաջացել է հայերեն, մի կողմից՝ «աշխարհ» բառը, «երկիր» իմաստով, և մյուս կողմից՝ «շատ» մասնիկը «քաղաքի» իմաստով։ Վերջինս առանձին չի գործածվում, այլ իբրև քաղաքների անվան բաղկացուցիչ մաս։ Օրինակ՝ Արտաշատ, Արշամաշատ, Երվանդաշատ, Շամշատ (Սամոսատ), Շատբերդ և այլն։

89 Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, էջ 451—472։

նրա կողմից կառավարվող տերիտորիան՝ գավառը, նրա տոհմի ժառանգական սեփականությունը[90]։

Նախարարների վարչական և ռազմական իշխանությունը ժառանգական դառնալը շրջադարձային նշանակություն ունեցավ Հայաստանի սոցիալական կյանքում։ Սկզբում ժառանգական էր միայն նախարարի պաշտոնը տվյալ գավառում, սակայն ժամանակի ընթացքում ժառանգական է դառնում նաև ամբողջ տերիտորիան, ապա նաև նրա վրա նստած գյուղական համայնքները՝ «շէն»-երը, շինականներով հանդերձ։

Հին աշխարհում ծայր առած ստրկատիրական կարգերի ճգնաժամը նպաստում էր Հայաստանում տեղի ունեցող նշված պրոցեսներին, ֆեոդալական հողատիրության առաջ գալուն, որ տեղի է ունեցել հաջորդ III և IV դարերում։

---

90 «Նախարար» տերմինը պարթևական ծագում ունի և Հայաստանում, ըստ երևույթին, տարածվել է Տրդատ Ա Արշակունու ժամանակաշրջանից։ Այս բառի ճիշտ ստուգաբանությունը վերջերս տվել է Վ. Հեննինգը։ Այն համապատասխանում է պարթևական naxwadar բառին, որ նշանակում է՝ «նա ով գրավում է սկիզբը, առաջին տեղը, պետ»։ Հարավային Խորասանի Նոբագյուտ արձանագրության մեջ (թվագրվում է մ. թ. III դարով) nḫwdr «նախվադար» բառը համանիշ է ḫštrp «խշատրապ» բառին։ «Նախվադար» բառը, ըստ երևույթին, տարածված է եղել Պարթևստանի հյուսիսային (պարթևալեզու) շրջաններում, իսկ «սատրապ»՝ հարավային (տե՛ս А. Г. Периханян, Древнеармянские востаники, էջ 49—50)։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ, ԿԵՐՊԱՐՎԵՍՏ ԵՎ ԿԻՐԱՌԱԿԱՆ ԱՐՎԵՍՏՆԵՐ

## 1. ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՓՈՒԼԵՐԸ

Հայ մշակույթի զարգացման նոր դարաշրջանը: *Մ. թ. ա. IV դարի վերջերից նոր դարաշրջան էր սկսվել Մերձավոր Արևելքի երկրների ոչ միայն հասարակական-տնտեսական և քաղաքական հարաբերությունների, այլև մշակույթի բնագավառում։ Հին արևելյան հարուստ, բայց և տարբեր երկրների ինքնատիպ մշակույթը խաչավորվեց փարթամորեն ծաղկած հելլեն մշակույթի հետ՝ ծնունդ տալով մի նոր յուրահատուկ բնույթի մշակույթի, որը զարգանալով նոր հասարակական-տնտեսական հիմքերի վրա, ինքն էլ ստացավ այսպես կոչված հելլենիստական կերպարանք։ Որքան էլ պայմանական, այս անվանումը նշանավորում է հին աշխարհի բավականաչափ ընդարձակ շրջաններ ընդգրկող բազմաթիվ երկրների ընդհանուր գծեր ունեցող մշակութային զարգացման մի ամբողջ դարաշրջան։ Սակայն տարբեր երկրներ միևնույն չափով չէ, որ հաղորդակից դարձան հելլենիստական մշակույթին, ուստի ոչ միայն ինքնատիպ և տարբեր է եղել այդ մշակույթի կերտման գործում յուրաքանչյուր ժողովրդի մասնակցությունն ու խաղացած դերը, այլև ինքը՝ մշակույթը, տարբեր դրսևորումներ է ունեցել և ինքնատիպությամբ օժտված եղել ամեն մի երկրում։*

*Հայաստանը ևս հաղորդակից դարձավ մշակութային այս նոր զարգացմանը։ Երկիրը ապրում էր տնտեսական վերելք, խորացել էին ստրկատիրական հարաբերությունները, գոյացել զգալի թվով քաղաքներ, որոնք նկատելիորեն հելլենիստական բնույթ ունեին, զարգացել էին արհեստներն ու առևտուրը, ընդարձակվել երկրի շփումներն ու կապերը հարևան երկրների հետ։ Այս ամենը հայ ժողովրդի դարավոր մշակութային ավանդույթների հետ միասին հանդիսացան այն հաստատուն պատվանդանը, որի վրա բարձրացավ ստրկատիրական ժամանակաշրջանի Հայաստանի մշակույթը։ Այդ մշակույթի զարգացմանը մեծապես նպաստեցին միավորված հայ պետականության առաջացումն ու զարգացումը մ. թ. ա. II—I դարերում և երկրի անկախության պահպանումը I—III դարերում։*

Դարավոր ավանդական ըմբռնումների և մշակույթի առկայությունը մի կողմից, նոր, հելլենիստական բնույթի հասարակական հարաբերությունների, գաղափարների և մշակութային ավանդույթների առաջացումն ու զարգացումը՝ մյուս կողմից, պայմանավորեցին երկու հիմնական ուղղությունների զարգացումը հին հայ մշակույթի մեջ։ Դրանցից առաջինը ավանդական ժողովրդական ուղղությունն էր, իր բնիկ տեղական և հին արևելյան արմատներով ու ակունքներով, որը զարգանում էր ժողովրդական, մանավանդ գյուղական լայն զանգվածների մեջ, անդրադարձնելով ժողովրդական ըմբռնումները, պատկերացումները, ավանդույթներն ու ճաշակը. մյուսը՝ հելլենիստական ուղղությունն էր, որն առաջանալով հասարակական նոր բնույթի հարաբերությունների և ըմբռնումների հիման վրա, հանդիսանում էր առավելապես իշխող ստրկատիրական վերնախավի և քաղաքային ազատ բնակչության մշակույթը՝ անդրադարձնելով նրանց աշխարհահաճանաչողությունն ու ճաշակը։ Երկրորդ ուղղության զարգացմանը խոշոր չափերով նպաստում էին Հայաստանի ընդարձակվող կապերը հելլենիստական աշխարհի մի շարք երկրների հետ։ Այս երկու ուղղությունները, իհարկե, պատնեշով իրարից անջատված չէին. տեղի էր ունենում նրանց փոխադարձ ներթափանցում, որով պայմանավորված էր հելլենիստական մշակույթի առաջացումը և զարգացումը հայ հողի վրա։ Հելլենիստական ուղղության պատկանող հուշարձանների վրա ևս առավել կամ նվազ ցայտունությամբ երևան էին գալիս տեղական ավանդական գծերը։ Հետզհետե հարստանում ու ճոխանում է հայ ժողովրդի ինչպես հոգևոր, այնպես և նյութական մշակույթը, որի շնորհիվ Հայաստանը տեղ է բռնում հին աշխարհի առաջավոր մշակույթ ունեցող երկրների շարքում։

**Հայ հին մշակույթի զարգացման փուլերը:** Վեց դար տևած այդ դարաշրջանը թեև կազմում է մի ամբողջություն, բայց հասարակական կյանքի և մշակույթի զարգացման տեսակետից կարող է բաժանվել երկու փուլի՝ բուն հելլենիստական ժամանակաշրջան, որն ընդգրկում է մ. թ. ա. III—I դարերը և ուշ հելլենիստական ժամանակաշրջան, որն ընդգրկում է սոցիալական կյանքում տեղի ունեցող ստրկատիրական հասարակարգի ճգնաժամի և ֆեոդալական հարաբերությունների սկզբնավորման ժամանակը՝ մ. թ. I—III դարերը։

Առաջին փուլը բնորոշվում է հելլենիստական հասարակական հարաբերությունների և մշակույթի ձևավորմամբ ու նշանակալից զարգացմամբ, որը տեղի էր ունենում բուռն քաղաքաշինության, բավականաչափ զորեղ ու անկախ պետականության և հելլենիստական երկրների հետ սերտ կապերի առկայության պայմաններում։

Երկրորդ փուլի հիմքում տակավին ընկած են ստրկատիրական հարաբերությունները, բայց նրանց ընդերքում արդեն սկսվում է նոր ֆեոդալական հարաբերությունների առաջացումը. գոյանում են նախարարություններ, քաղաքաշինությունը կորցնում է նախկին թափը, նկատելիորեն թուլանում է տիպիկ հելլենիստական բնույթի հայ պետությունը, որն ընկնում է երկու զորեղ տերությունների՝ Հռոմի և Իրանի մուրճի ու սալի միջև։ Այս պայմաններում մասամբ թուլանում են հելլենիստական ավանդույթները, իսկ ժողովրդական ավանդական ուղղության նշանակությունը, ընդհակառակը, աճում է։ Արևելք

է թափանցում հռոմեական ազդեցությունը և այստեղ ձևավորվում է ուշ անտիկ գծեր ունեցող մշակույթը, որին հաղորդակից և մասնակից է լինում նաև Հայաստանը։

## 2. ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Քաղաքաշինություն։ Երկրի մշակութային վերելքի ցայտուն արտահայտություններից մեկը ճարտարապետական-կառուցողական արվեստի զարգացումն էր։

Հայ ճարտարապետական մտքի գոյացման ու դրսևորման հիմնական օջախները եղան Երվանդունիների ու Արտաշեսյանների ժամանակաշրջանում Հայաստանի բազմաթիվ վայրերում վեր խոյացած քաղաքները։ Հնագույն քաղաքների ու առանձին բնակավայրերի զարգացմանը և այնտեղ շինարարական կյանքի կազմակերպմանը զուգընթաց, մեծ ծավալ է ստանում նոր քաղաքների շինարարությունը։ Քաղաքաշինության արմատները հին Հայաստանում մեզ տանում են նախաուրարտական և ուրարտական ժամանակաշրջանը։ Մի շարք հայկական քաղաքներ, օրինակ՝ Վանը, Արմավիրը, Երևանը, իրենց արմատներն ունեն ուրարտական քաղաքների, համապատասխանաբար, Տուշպայի, Արգիշտիխինիլիի, Էրեբունիի մեջ։ Առանձնապես հատկանշական է Արմավիր-Արգիշտիխինիլիի օրինակը։ Ուրարտական վարչական կենտրոնի վրա աճած Արմավիրը ոչ միայն Հայաստանի մայրաքաղաքն է դարձել, այլև շարունակել է Արգիշտիխինիլիի նման լինել կրոնական կենտրոն։ Այստեղ կառուցվել է արեգակի, լուսնի և հայոց թագավորի նախնիների պաշտամունքին նվիրված տաճարը[1], որի շրջապատում սոսիների սրբազան պուրակի տերևների սոսավյունին համեմատ արվում էին գուշակությունները։

Արմավիրի քաղաքային տերիտորիան ընդգրկել է այժմյան համանուն գյուղից դեպի արևմուտք գտնվող բլուրի և նրա շրջապատի զգալի տարածությունը։ Միջնաբերդը արտաքինից ներառվելով ուղղանկյուն աշտարակների հաջորդականությամբ ստեղծված պաշտպանական ամուր կառուցվածքի մեջ, ներսում ունեցել է հասարակական ու տնտեսական բազմաթիվ շենքեր։

Արմավիրը դարձել է երկրի ճարտարապետական արվեստի խոշորագույն օջախներից մեկը, և իբրև այդպիսին նշանակալից դեր կատարել հայկական ճարտարապետության կազմավորման գործում[2]։ Շինարարական կյանքը այստեղ ընթացել է գրեթե մեկ ամբողջ հազարամյակ։

Արմավիրի հետ մեկտեղ Հայաստանում զարգացել են և տասնյակ այլ քաղաքներ (Արշամաշատ, Արկաթիակերտ, Զարեհավան, Զարիշատ և այլն), որոնց մեծ մասի ճարտարապետական կերպարը տակավին անհայտ է մնում։ Որոշ պատկերացում կարելի է ստանալ մ. թ. ա. III դարում հիմնադրված Եր-

1 Տե՛ս Խորենացի, Ա, ը։
2 Տե՛ս Ալ. Սահինյան, Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը, Երևան, 1955, էջ 216—219։

վանդաշատ քաղաքի մասին, մասամբ ըստ Խորենացու հաղորդումների[3], մասամբ ըստ բուն քաղաքի մնացորդների։ Գետնի երեսին մինչև օրս պահպանված որձաքարի հնագույն պարսպապատերի, կառուցվածքների խոշոր խմբերի ու առանձին շենքերի մնացորդներն անգամ որոշակիորեն ցույց են տալիս ժամանակին նրա ունեցած պաշտպանական ամրակուռ սիստեմի, մեծածավալ շինարարության և այդ շինարարության մեջ տեղ գտած կառուցողական բարձր տեխնիկայի առկայությունը։

Հայաստանի նախաքրիստոնեական շրջանի ճարտարապետության ու քաղաքաշինության զարգացման աստիճանը առավել ճշմարտացի ընկալելու տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում II դարում (մ. թ. ա. 180—170) ստեղծված նոր մայրաքաղաքը։ Այն կառուցվելով Հայկական լեռնաշխարհի կենտրոնում՝ ուր Մեծամոր գետը միանում էր Արաքսին, իր հիմնադիր Արտաշես Ա-ի անունով կոչվեց Արտաշատ։

Մատենագրական վկայությունները հայտնում են, որ Արտաշատը կառուցվում է բլուրի վրա[4], «...գետածոցում, որը նման է թերակղզու, և նրա շուրջը բացի պարանոցի մասից, գետի առջև ձգվում է պարիսպը, իսկ պարանոցը փակվում է խրամով և պատվարով»[5]։ Ընդ որում ուշագրավ է այն տեղեկությունը, ըստ որի քաղաքի տեղի ընտրությունը և նրա պաշտպանական սիստեմի ստեղծումը կատարվում է նախօրոք մշակված նախագծային մտահղացման հիման վրա[6]։

Հզոր բերդ լինելու հետ մեկտեղ, Արտաշատը եղել է երկրի մշակութային ու տնտեսական կյանքի կենտրոնը։ Ժամանակակիցները խոր ակնածանքով այն կոչում են «գեղեցիկ շինված... թագավորանիստ քաղաք»[7], «Մեծ ու խիստ գեղեցիկ քաղաք», «Հայաստանի Կարթագեն»[8]։

Քաղաքը ուներ արքունի շքեղ ապարանք, հավանաբար և ամֆիթատրոն[9], բնակելի, պաշտամունքի ու հասարակական տարբեր նշանակության բազմաթիվ կառուցվածքներ։

Որոշ ժամանակ անց, մ. թ. ա. 80-ական թվականներին Մեծ Հայքի Աղձնիք նահանգում, ժամանակակից Ֆարկին քաղաքի տեղում, հիմնադրվում է մի նոր մայրաքաղաք, որը Տիգրան Բ թագավորի պատվին անվանվեց Տիգրանակերտ։ Նոր մայրաքաղաքը կառուցվելով Հայկական Տավրոսի ստորոտի բնական, «պաշտպանված ու դժվարամատչելի լեռնային տեղանքում»[10], ուներ մինչև 50 կանգուն (մոտ 25—26 մետր) բարձրության և չափազանց մեծ լայնության պարսպապատերով ստեղծված պաշտպանական մի հզոր սիստեմ։

---

3 Տե՛ս Խորենացի, Բ, խը։

4 Տե՛ս Խորենացի, Բ, խթ։

5 Strabo, XI, 14, 6, նաև՝ Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, Երևան, 1944, էջ 120—121։

6 Տե՛ս Plut., Luc., 31, 5։

7 Strabo, XI, 14, 6, նաև՝ Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Ա, էջ 120—121։

8 Plut., Luc., 32։

9 Տե՛ս Г. Гоян, 2000 лег армянского театра, I. Театр древней Армении, М., 1952, էջ 53։

10 Հ. Մանանդյան, Տիգրան Բ և Հռոմը, Երևան, 1940, էջ 129։

*Պարսպապատերն ունեցել են այնպիսի լայնություն, որ նրանց մեջ տեղադրըվել են պահակազորի զինանոցները, պահեստները և այլ նշանակության բազմաթիվ սենյակներ։*

*Քաղաքային տերիտորիայի ներսից վեր էր խոյանում պարսպապատ ամուր ու անմատչելի միջնաբերդը, որի շուրջը միահյուսվում էին իշխանավորների ու ազնվականների դղյակները, բնակելի, պաշտամունքային, մշակութային (թատերական) և հասարակական այլ շինությունները։ Թագավորի «ափառահեղ պալատը»՝ շրջապատված պարտեզներով, զբոսարաններով, ձկնավազաններով ու որսատեղերով, գտնվում էր քաղաքային պարիսպներից դուրս։*

*Վաղարշապատը (այժմ Էջմիածին) հիմնադրվել է նախկին Վարդգեսավանի տեղում և մ. թ. 163-ին հռչակվել աթոռանիստ քաղաք։ Խորենացին, անդրադառնալով Վարդգեսավանին, նշում է, որ Վաղարշակ Ա-ը այն «...պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք»[11]։*

*Քաղաքը, բացի պալատական մոնումենտալ շինություններից, անտարակույս ունեցել է նաև հասարակական, արտադրական, պաշտամունքի և աթոռանիստ քաղաքին արժանի այլ կառուցվածքներ, որոնց մանրամասներից մի քանի բեկորներ բացահայտվեցին Էջմիածնի Մայր տաճարի պեղումների ընթացքում։ Մայր տաճարի հիմքերի մոտ բացվեց որձաքարե մի խոշոր որմնաքար՝ մետաղե կապերի հետքերով, որը հիշեցնում է Գառնիի ամրոցի անտիկ շրջանի պարսպապատերի որմնաքարերը, իսկ Հռիփսիմեի տաճարի որմնամույթերի տակ՝ տուֆակերտ շենքի քիվի քանդակազարդ երեք բեկոր, որոնց մշակումը հար և նման է Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասների մշակումներին։ Այդ բեկորների զգալի չափերից և նրանց զարդաքանդակման ոճից դժվար չէ կռահել, որ նրանք պատկանել են Հայաստանի հելլենիստական ժամանակաշրջանի բավականին հարուստ մշակում ունեցող ճարտարապետական մի կարևոր (ամենայն հավանականությամբ՝ պաշտամունքային) կառույցի։*

*Այսպիսով, թեև բացի Արմավիրում և Արտաշատում տարվող պեղումներից, ոչ մի այլ քաղաք հնագիտական հատուկ ուսումնասիրության չի ենթարկվել, այնուհանդերձ, եղած սուղ տվյալները թեկուզ ամենաընդհանուր ձևով, վերարտադրում են հին հայկական քաղաքների ուրվագիծը[12]։ Նշված բոլոր քաղաքների կոմպոզիցիոն գլխավոր կենտրոնը հանդիսացել է միջնաբերդը, որը գտնվելով ռազմա-ամրաշինական տեսակետից բնական անհամեմատ նպաստավոր տեղանքում՝ իշխող դիրք է ունեցել ոչ միայն քաղաքի, այլև այն շրջապատող ընդարձակ տարածության վրա։*

*Միջնաբերդի բնական ամրությունները մի կողմից ուժեղացվել և լրացվել են արհեստական կառուցումներով (պարիսպ, աշտարակներ), մյուս կողմից՝*

---

11 Խորենացի, *Բ, կե*։

12 *Այս հարցի վերաբերյալ տե՛ս Վ. Հարությունյանի* «К вопросу о градостроительной культуре древней Армении» *ուսումնասիրությունը (տե՛ս ՀԳԱՀԳ, 1955, № 9, էջ 43—46 և 1956, № 10, էջ 75—98։ Նաև՝ Ա. Սահինյան, Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը, էջ 190—238)։*

այդ բոլորը, քաղաքային ամբողջ տերիտորիայի հետ միասին, ներառվել են պաշտպանական մի ընդհանուր առավել զորեղ սիստեմի մեջ (ուղղանկյուն աշտարակների հաջորդականությամբ ստեղծված հուժկու պարսպապատեր, վերջիններին զուգընթաց բնական կամ արհեստական հունով ընթացող ջուր, խրամներ, փոսեր և այլն)։

**Ամրոցներ. Գառնի:** Հին Հայաստանի համար հատկանշական էր բազմաթիվ անառիկ ամրոցների գոյությունը, որոնք բազմիցս հիշատակվել են վերը։ Սակայն այդ բոլորից միայն Գառնին է, որ հանգամանորեն ուսումնասիրված է։

Գառնիի ամրոցը գտնվում է այժմյան Աբովյանի (Կոտայքի) շրջանի Գառնի գյուղի հարավային ծայրամասում։

Գառնիում հայտնաբերված ուրարտական արձանագրությունը խոսում է բերդի խոր հնության մասին. իբրև նշանավոր ամրոց այն գոյություն է ունեցել նաև մ. թ. II—III դարերում[13], և հանդիսացել է հայկական արքունիքի ամառանոցային նստավայրերից մեկը։ Նրա ռազմա-պաշտպանական հզոր կառույցների վերաբերյալ գրավոր ստույգ տեղեկությունները գալիս են մ. թ. I դարից[14]։ Կարևոր տեղեկություններ է հաղորդում նաև այստեղ գտնված հունարեն արձանագրությունը։ Ըստ այդ արձանագրության, Մեծ Հայքի Տրդատ թագավորը իր գահակալության 11-րդ տարում (մ. թ. 77) կառուցում է (իմա՝ վերակառուցում է) ամրոցը[15]։

Գառնիի կառուցողական աշխատանքների մասին խոսում է նաև Խորենացին, սակայն նա Տրդատ Գ-ին (287—332) է վերագրում Տրդատ Ա-ի (66—88) շինարարական գործունեությունը[16]։

Վաղ միջնադարի հայ մյուս մատենագիրների մոտ Գառնին հիշատակվում է մերթ իբրև խիստ ամրացված արքունի ամրոց[17], մերթ իբրև քաղաք՝ իր անմատչելի ամրոցով[18], մերթ ուղղակի զորակայան[19]։

Ամրոցը լինելով բարձր հրվանդանի վրա, նրա եռանկյունաձև տերիտորիան՝ հարավային, հարավ-արևմտյան և կիսով չափ արևելյան կողմերից շրջափակված է բնական անմատչելի ուղղաձիգ ժայռերով, իսկ մնացած մասում կառուցվել է 6.00-6.20×6.70 մ չափի տասնչորս աշտարակների և 2.07-2.08 մ լայնության ու ավելի քան 10 մ բարձրության հուժկու պարսպապատերի հաջորդականությամբ ստեղծված պաշտպանական մի ամրակուռ սիստեմ։

---

13 Տե՛ս Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը, Երևան, 1946, էջ 20։

14 Տե՛ս Tacit., Annal., XII, 45։ Նաև՝ Հ. Մանանդյան, Գառնիի հունարեն արձանագրությունը..., էջ 19։

15 К. В. Тревер, Надпись о построении армянской крепости Гарни, Л., 1949, էջ 20։ Նաև՝ Б. Аракелян, Гарни, I, Ереван, 1952, էջ 62։ Նույնը ընդունում է Ա. Աբրահամյանը, սակայն նա այդ շինարարությունը վերագրում է տաճարի կառուցմանը (տե՛ս «Էջմիածին», 1947, մարտ-ապրիլ)։ Այդ թվականի դեմ չեն առարկում Գառնիի հունարեն արձանագրությանը հետագայում անդրադարձած մասնագետները (Գ. Սարգսյան, Հ. Բարթիկյան և Ս. Կրկյաշարյան)։

16 Տե՛ս Խորենացի, Բ, ղ։

17 Տե՛ս Փավստոս, Գ, ը։

18 Եղիշէի Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 68, 79։

19 Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն, Երևան, 1939, էջ 31, 47։ Նաև՝ Բ. Առաքելյան. Գառնի, պր. 3-րդ, Երևան, 1962, էջ 15—20։

*Այն հատվածներում, որտեղ տեղանքի պատճառով հակառակորդը դժվարությամբ կարող էր մոտենալ պարսպապատերին, հետևապես նրա հարձակումը հնարավոր կլիներ ավելի պակաս ուժով ետ մղել, աշտարակները կառուցված են ավելի պակաս թվով, այսինքն՝ ունեն միմյանցից մեծ հեռավորություն, իսկ այն մասերում, որտեղ թշնամին կարող էր համեմատաբար անարգել մոտենալ պարսպապատերին, հետևապես պետք էր, որ ավելի մեծ ուժեր կենտրոնացվեին նրա դեմ, աշտարակները կառուցված են մեծ թվով, այսինքն՝ միմյանցից ավելի մոտ։ Ընդ որում պարսպապատի այս մասում, մուտքից դեպի արևմուտք, 4-րդ և 5-րդ աշտարակները մյուս աշտարակների համեմատությամբ կառուցված են ավելի ներս՝ ստեղծված է արհեստական աղեղ, որի մեջ ներքաշված հակառակորդի ուժերը, ընկնելով աննպաստ պայմանների մեջ, պիտի դառնային առավել հեշտ խոցելի[20]։*

*Աշտարակների ձևը ուղղանկյունի է։ Նման կառուցվածքի աշտարակներ գոյություն ունեն նաև հելլենիստական ճարտարապետության այլ կենտրոններում՝ Փոքր Ասիա (Միլետ[21], Պերգամոն[22]), Սիրիա (Բաալբեկ[23], Ջերաշա[24]) և այլուր։ Հայկական լեռնաշխարհում ուղղանկյուն ձևի աշտարակներ հանդես են եկել շատ ավելի վաղ՝ առնվազն ուրարտական ժամանակներից (Տուշպա, Արգիշտիխինիլի, Թեյշեբաինի և այլն)։*

*Ամրոցի պատերը շարված են տեղական կապտավուն որձաքարի սրբատաշ խոշոր զանգվածներով, չոր, առանց շաղախի։ Որմնաքարերը ուղղաձիգ միացումներ չունեն, իսկ հորիզոնական ուղղությամբ իրար են միացված երկաթյա կապերով և երկաթյա կապերի ու քարի հանդիպման խոռոչները լցված կապարով։*

*Աշտարակներն ունեն երկու տեսակի շարվածք։ Պաշտպանական տեսակետից առավել պատասխանատու մասում (գլխավոր մուտքի մոտ) աշտարակների ամբողջ մակերեսները համատարած շարված են խոշոր քարերով, մնացած բոլոր տեղերում՝ արտաքին պարագծով կառուցված են 1.15—1.50 մ հաստության քարե շրջանակներ և նրանց մեջ է լցված բուտաբետոն (կազմված կրից, ավազից, ճեղքված որձաքարից և գետաքարից)։*

*Պարսպապատերի ընդհանուր կառուցվածքում ակնհայտ են շինարարական մի քանի շրջաններ։ Նախնական կառուցվածքում (մ. թ. ա. III—II դարերում) և առաջին վերակառուցման ժամանակ (մ. թ. 77 թվական) պատերը կառուցված են շինարարական միևնույն տեխնիկայով, միայն վերակառուց-*

---

20 *Տե՛ս Б. Аракелян,* Гарни, I, 1951, էջ 31։

21 *Տե՛ս Th. Wiegend,* Siebenter vorläufiger Bericht über die von den königlichen Museen in Milet und Didyma unternommenen Ausgrabungen, Berlin, 1911, էջ 7—8 և այլն։ Նաև՝ *М. М. Кобылина,* Милет М., 1665, էջ 160—161. „Всеобщая история архитектуры", М., 1949, т. II, кн. первая, էջ 226, табл. 132.

22 *Տե՛ս A. Conze,* Königliche Museen zu Berlin, Altertümer von Pergamon, Berlin, 1913, Band I, Tafeln, Tafel III և այլն։

23 *Տե՛ս B. Schulz und H. Winnefeld,* Baalbek. Ergebnisse der Ausgrabungen und Untersuchungen in den Jahren 1898 bis 1905, Erster Band. Berlin und Leipzig, 1921, էջ 19։

24 *Տե՛ս C. H. Kraeling,* Gerasa, City of the Decapolis, New Haven, Connecticut, 1938, էջ 23։ Նաև՝ *С. Абамелек-Лазарев,* Джераша, СПб, 1897, աղ. XIII։

*ման ենթարկված շարվածքի քարերի մշակման որակը որոշակիորեն զիջում է նախորդ շրջանին։*

*Հաջորդ շրջանը ներկայացնում է մուտքի արևելյան կողմից կցված կլոր աշտարակի կառուցվածքը, ուր ի տարբերություն առաջին և երկրորդ շրջանների շինարարական արվեստի, պատերը կառուցված են առանց մետաղակապերի, որմնաքարերի միացման համար գործ է ածված կրաշաղախ։ Սակայն, պատի հիմնական կրող մասը նախորդ շրջանների նման հանդիսանում է դարձյալ քարը և ոչ պատի միջուկը։*

*Պարսպապատերի մյուս վերակառուցումները կատարված են IV դարից Հայաստանում լայն կիրառում գտած շինարարական տեխնիկայով, երբ քարը, ըստ էության, կատարում էր երեսապատման դեր, իսկ պատի հիմնական կրող մասը հանդիսանում է նրա կրաշաղախային միջուկը։ Շինարարական նման տեխնիկայով վերակառուցումներ տեղի են ունեցել ընդհուպ մինչև Բագրատունիների և Զաքարյանների ժամանակները։*



Գառնիի ամրոցի պալատական շենքի դահլիճը

**Պալատական շինություններ:** *Ամրոցի ներսում ստեղծվել է ճարտարապետական կառուցվածքների խոշոր խումբ, որոնցից առայժմ բացվել են հեթանոսական տաճարի, պալատական շինությունների և արքունի բաղնիքի մնացորդները։ Այդ կառույցները համախմբված լինելով ամրոցի եռանկյունաձև տեղանքի հարավային հատվածում, միմյանց նկատմամբ ունեցած դասավորությամբ ու ընդհանուր մտահղացումով կազմել են ճարտարապետական մի ինքնատիպ անսամբլ։ Անսամբլի կոմպոզիցիոն կենտրոնը հանդիսացել է տաճարի սյունազարդ կառուցվածքը, որը գլխավոր ճակատով ուղղված լինելով*

դեպի ամրոցի կենտրոնական մուտքը, առինքնում է ամրոց մտած այցելուի ուշադրությունը, նրա առաջին իսկ քայլից։

Տաճարից քսան մետր դեպի արևմուտք, Հրվանդանի ուղղաձիգ ժայռերի գրեթե շուրթից. վեր են ելել պալատական շենքերը։ Նրանք իրենց գլխավոր ճակատներով մասնակցել են տաճարի առջև փռված հրապարակի ճարտարապետական-տարածական միջավայրի կազմակերպմանը, մյուսներով բացվել դեպի շրջապատի լեռնային գեղատեսիլ բնանկարը, ավելի ճիշտ՝ միահյուսվել նրան։ Ճարտարապետությունը դարձել է բնության օրգանական մասը, լրացրել, հարստացրել այն։

Պալատական կոմպլեքսը բաղկացած է եղել մի քանի շենքերից։ Պեղումների շնորհիվ առայժմ բացվել են ավելի քան 40 մ երկարության և մոտ 15 մետր լայնության արքունի ապարանքի մնացորդները։ Բացված հատվածի հարավ-արևելյան կեսում գտնվել է 1:2 համաչափությամբ կամարակապ մի խոշոր դահլիճ, իսկ մյուս կեսում՝ տարբեր չափերի ու նշանակության բազմաթիվ սենյակներ։

Հետաքրքրական է դահլիճի կառուցվածքը, որի 9,65×19,92 մ չափի հատակագծային ներքին տարածությունը ութ մասսիվ մույթերի միջոցով՝ երկայնական ուղղությամբ, բաժանված է եղել երկու հավասար մասի, նավի[25], Մույթերին համապատասխան՝ դահլիճի արևելյան և արևմտյան պատերին կից ստեղծվել են նույն քանակի և գրեթե նույն չափերի որմնամույթեր, որոնց վրայից սկզբնավորված կամարները հիմք են հանդիսացել շենքի թաղակապ ծածկի համար[26]։

Ներկայումս պահպանված է 2,5—3 մ բարձրությամբ արևելյան պատը և հյուսիսային պատի մի մասը, իսկ մյուս պատերը չնչին բացառությամբ ոչնչացված են։ Դահլիճի հատակը, հեթանոսական տաճարի հատակի հորիզոնի համեմատությամբ, բավական ցածր է։ Շենքը, ըստ երևույթին, եղել է երկհարկանի։

Շենքի մնացորդների մի մասը գտնվում է VII դարում կառուցված քրիստոնեական քառաբսիդ տաճարի հիմքերի տակ։ Նշանակում է VII դարում պալատական կոմպլեքսը մասամբ կամ ամբողջապես գտնվել է արդեն ավերված վիճակում։

Պալատական կոմպլեքսի մյուս կեսի դեպի հրապարակ ուղղված պատը ունի միմյանց հաջորդող մի քանի ուղղանկյուն ելուններով մշակված եզրագիծ. Նրա վրայից բարձրացող ճակատը պետք է բավականին հանդիսավոր տեսք ունենար։ Հյուսիս-արևմտյան սենյակներից մեկի ներսի ծեփի վրա պահպանված են վարդագույն-կարմիր ներկի հետքեր։

Պատերը կառուցված են ճեղքված որձաքարից և գետաքարից, իբրև միաց-

---

25 Կառուցվածքի ներքին տարածության նման ձևի բաժանման օրինակ գոյություն ունի նաև ուրարտական ճարտարապետության մեջ (Թեյշեբաինի)։

26 Գրեթե նույն չափի ու հատակագծային համանման հորինվածքի աշխարհիկ կառուցվածք է Բագինեթի անտիկ շրջանի դահլիճը (Վրաստան), միայն Գառնիի մասսիվ մույթերի փոխարեն այնտեղ սյունաշարք է, թաղի փոխարեն փայտաշեն ծածկ։ Գառնիի երկնավանի դահլիճի հորինվածքը կարող է որոշակի դեր կատարած լինել վաղ միջնադարի հայկական նույնանման բնույթի կառուցվածքների կազմավորման գործում (Դվին, Արուճ և այլն)։

նող նյութ օգտագործված է կրաշաղախը։ Քարի որմնաշարքերին զուգընթաց, տեղ-տեղ հանդիպում են նաև աղյուսի շարքեր։

**Բաղնիք**։ *Բաղնիքի շենքը կառուցված է նույն տեխնիկայով ու նյութերով, ինչ որ և պալատական մյուս շինությունները։ Ջնջված ծածկի սկզբնական ճըշգրիտ ձևն անհայտ է, սակայն պեղումների ժամանակ հայտնաբերված ծեփի կորագիծ բեկորները ցույց են տալիս, որ այն ըստ երևույթին ունեցել է թաղակապ (թերևս գմբեթաձև) տեսք։*

*Հատակագիծն ունի միևնույն ուղղությամբ միմյանց հաջորդող չորս սենյակներից կազմված հստակ հորինվածք։ Սենյակների դեպի հարավ-արևելք ուղղված պատերը արտաքինից ունեն կորագիծ, ներսից պայտաձև կամ կիսաշրջանաձև տեսք։*



Գառնիի ամրոցի անտիկ բաղնիքի հատակագիծը

*Առաջին սենյակը, ինչպես շենքի ողջ հորինվածքում գրաված դիրքով, այնպես էլ ներքին առավել հարուստ մշակումով (խճանկարով զարդարված հատակ, կորագիծ խորշի մեջ զետեղված ջրի ավազան և այլն), պետք է եղած լինի բաղնիքի նախասրահը՝ հանդստի սենյակը։ Երկրորդ և երրորդ սենյակները թե՛ չափերով և թե՛ հատակագծային ձևով հար և նման են միմյանց և անտարակույս լոգարաններ են։ Երկրորդը ծառայել է սառը ջրով լողանալու համար, իսկ երրորդը՝ գոլ լոգարան*[27]*։ Երրորդ սենյակի կիսաշրջանաձև խորշի հատակը նույնպես ծածկված է եղել խճանկարով։*

*Չորրորդ սենյակը ըստ էության բաղկացած է երեք մասից։ Մի մասը, որն անմիջապես հաջորդում է սառը և գոլ լողասենյակներին և իր չափերով ու ձևով նման է նրանց, անտարակույս եղել է տաք ջրով լողանալու սենյակը։ Ենթադրվում է, որ երկրորդ մասում (հյուսիս-արևմտյան հատված) եղել է բաղնիքին անհրաժեշտ ջրամբարը*[28]*, իսկ երրորդ (հարավ-արևմտյան) մասի հատակի տակ գտնվել է կրակարանը, ջուրը տաքացնելու համար։*

---

[27] *Կամ գուցե առաջին սենյակի կորագիծ ավազանը ծառայել է սառը ջրով լողանալու համար, իսկ երկրորդ և երրորդ սենյակները եղել են գոլ լոգարաններ (տե՛ս* Г. А. Тирацян. Памятник коммунальной техники древней Армении—баня в крепости Гарни, ИФЖ, 1959, № 2—3. *էջ 265—280)։*

[28] *Տե՛ս Б. Аракелян,* **Гарни,** *II,* **Ереван,** *1957, էջ 23։*



Գառնիի ամրոցի հատակագիծը

*Բաղնիքի ջեռուցումը իրականացվել է այսպես կոչված հիպոկաուստի միջոցով։ Լողարանների հատակները կառուցվել են բազմաթիվ սյունիկների վրա հենված աղյուսի սալերից։ Կրակարանից եկող տաք օդը և ծուխը, անցնելով այդ սյունիկների արանքներով, նախ տարածվել են տաք ջրով լողարանի հատակի տակ, ապա մի մեծ բացվածքի միջոցով՝ զգալիորեն պակասած*

ջերմությամբ, անցել են գոլ լոգարանի հատակի տակ և հետո՝ թույլորովին նվազած ջերմությամբ, անցնելով երկու առավել փոքր անցքերով՝ հասել սառը ջրով լոգարանի հատակը։ Այսպիսով, նախ, ջերմության ոչ մի կորուստ տեղի չի ունեցել և ապա՝ լոգարանները ջերմություն են ստացել ըստ անհրաժեշտության։



**Գառնիի ամրոցի բաղնիքի ջեռուցման սիստեմը**

*Ջեռուցման այս սիստեմը լայնորեն կիրառվել է հռոմեական բաղնիքներում, ինչպես և Փոքր Ասիայում, Սիրիայում, Սև ծովի հյուսիսային ափերին, Կովկասում և այլուր։ Անտիկ շրջանից այն անցել է միջին դարերին և հանդես եկել նաև միջնադարյան Հայաստանում (Դվին, Զվարթնոց, Անի, Անբերդ և այլն)։*

*Գիտական-գեղարվեստական մեծ հետաքրքրություն է ներկայացնում նախարարհի խճանկարը[29]։*

*Ինչպես խճանկարի սյուժեն, ոճային ու գունային առանձնահատկությունները, այնպես էլ շենքի ճարտարապետական ձևերն ու ընդհանուր մտահղացումը հիմք են տալիս բաղնիքի ամբողջ կառուցվածքը համարել ամենաուշը III դարի վերջի գործ[30]։*

---

29 *Տե՛ս ստորև։*

30 *Б. Аракелян,* Гарни, II. *էջ 38։ Նաև՝ Г. Тирацян,* Памятник коммунальной техники древней Армении—баня в крепости Гарни, *էջ 280։*

**Ժողովրդական տներ:** *Քսենոփոնը Հայաստանի արևմտյան հատվածում հանդիպում է բնակավայրերով շրջապատված «դղյակ-ամրոցների», ուր տների զգալի մասը ունեին աշտարակներ, իսկ արևելյան մասում՝ երդիկավոր գետնափոր տների։ Ըստ երևույթին այս վերջինների համար նախատիպ են հանդիսացել Հայկական լեռնաշխարհի այսպես կոչված «Հսկայի տները»՝ երդիկավոր դոլմենները, իսկ իրենք էլ օրինակ են դարձել հայկական ժողովրդական երդիկավոր տան համար։*

**Տաճարներ, մեհյաններ:** *Նախաքրիստոնեական Հայաստանում գոյություն են ունեցել նաև մեհենական բազմաթիվ կառուցվածքներ ու ճարտարապետական առանձին խոշոր խմբեր, որոնք, երկրում քրիստոնեական կրոնը պետական հռչակելու ժամանակ, հեթանոսական մշակույթի մյուս հուշարձանների հետ գրեթե ամբողջությամբ կործանվել են։*

*Միայն բացառիկ դեպքերում առանձին մեհյաններ ենթարկվել են մասնակի ձևափոխությունների և օգտագործվել իբրև նոր պաշտամունքի անդրանիկ տաճարներ։*

*Մատենագրական կցկտուր վկայությունների հիման վրա, մեհենական այդ կառուցվածքներից մեզ հայտնի են Արմավիրի՝ Արեգակի, Լուսնի և թագավորի նախնիների պաշտամունքին նվիրված տաճարը, Անի-Կամախի՝ Արամազդի պաշտամունքին նվիրված տաճարը (որի կառուցումը վերագրվում է Տիգրան Բ-ին)[31], Եկեղյաց գավառի Երիզա ավանի Անահիտի մեծահռչակ տաճարը[32], Աշտիշատի՝ Անահիտի, Աստղիկի և Վահագնի տաճարների խումբը[33], Արտաշատի և Անձևացյաց երկրի Դարբնաց քարի Անահիտի տաճարները[34], Դերջան գավառի Բագահառիճ գյուղի Միհրի տաճարը, Եկեղյաց գավառի Թիլ ավանում կառուցված՝ Նանեի տաճարը, Դարանաղյաց գավառի Թորդան գյուղի Բարշամինի տաճարը, Երազամույն ավանի Տիրի տաճարը[35], Տարոնի Քարքե լեռան տաճարները[36], Բագրևանդի Բագավան կամ Դիցավան ավանի տաճարը[37], Բագարանի տաճարների խումբը[38] և այլն։*

*Պաշտամունքի հայկական անդրանիկ կառուցվածքների կազմավորման համար մեծ նշանակություն պիտի ունենային դեռևս նախահայկական ժամանակներից եկող տեղական ավանդույթները։*

*Թե ինչ կոնկրետ տեսք են ունեցել հայկական մեհենական կառուցվածքները, ստույգ հայտնի չէ։ Առանձին մեհյանների մասին մեզ հասած կցկտուր տեղեկություններից հետևում է, որ նրանք ունեցել են ուղղանկյուն-երկայնա-*

---

31 *Տե՛ս* **Խորենացի**, *Բ, ժդ։*

32 *Տե՛ս* **Ագաթ.**, *էջ 34, 399—400։*

33 *Տե՛ս նույն տեղում, էջ 410—411։*

34 *Տե՛ս նույն տեղում, էջ 395—396։ Նաև՝ Гр. Капанцян.* Хайаса—колыбель армян, *էջ 85—86։*

35 *Տե՛ս* **Ագաթ.**, *էջ 395։*

36 *Տե՛ս* **Զենոբ Գլակ**, *Պատմութիւն Տարօնոյ, Վենետիկ, 1889, էջ 32—35։ Նաև՝* **Մ. Աբեղյան**, *Հայոց հին գրականության պատմություն, Երևան, 1944, հատ. 1, էջ 403—407։*

37 *Տե՛ս* **Խորենացի**. *Բ, կը։*

38 *Տե՛ս նույն տեղում, Բ, խ։*

կան հատակագիծ, քարաշեն շինվածք ու փայտածածկ կամ թաղակապ տանիք[39]։



Գառնիի հեթանոսական տաճարի ֆասադը

*Ինքնին հասկանալի է, որ այդ կառուցվածքները պետք է որ լինեին իրենց նշանակության և հոչակին համապատասխան ճարտարապետական-կառուցողական բարձր արվեստի ստեղծագործություններ։ Այդ է վկայում նաև քրիստոնեական կրոնի ընդունման ժամանակ քարեբախտաբար չկործանված Գառնիի տաճարի ճարտարապետությունը։*

**Գառնիի տաճարը:** *Ճարտարապետական ձևերի ու պատմական տեղեկու-*

39 *Տե՛ս* Ալ. Սահինյան, *Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը, էջ 71, 221, 231։*

*թյունների ուսումնասիրությունից հետևում է, որ Գառնիի տաճարը պետք է ստեղծված լինի մ. թ. I դարի երկրորդ կեսին։*

*Քրիստոնեության ընդունումից հետո տաճարի շենքը օգտագործվել է աշխարհիկ նպատակների համար։ Տաճարը կանգուն վիճակում պահպանվել է մինչև XVII դարը և կործանվել 1679 թ. երկրաշարժի հետևանքով։ Նրա ավերակները իրենց վրա են բևեռել հայկական ճարտարապետության հարցերը ուսումնասիրող հայրենի և օտար շատ հետազոտողների ուշադրությունը (Շարդեն, Մորիեր, Կեր-Պորտեր, Դյուբուա, Տելֆեր, Շնաազե, Շանտր, Մառ, Ռոմանով, Թ'որամանյան, Բունիաթյան, Տրեվեր և շատ ուրիշներ), որոնցից Դյուբուան 1834-ին մոտավոր ճշտությամբ, իսկ մեկ դար հետո Ռոմանովը և ապա Բունիաթյանը առավել մանրամասնորեն վերարտադրեցին նրա սկզբնական տեսքը*[40]*։*

*Տաճարը իր ճարտարապետական մտահղացմամբ և տեղանքում գրաված դիրքով ընկալվում է մարդու տեսողությանը մատչելի ամենահեռավոր կետից մինչև ամենամոտը և յուրաքանչյուր պահին յուրակերպ բացվելով՝ ստեղծում գեղարվեստորեն ներգործող նոր պատկեր։ Եթե հեռվից դիտելու դեպքում նրա կառուցվածքը, միացած ամրոցի ճարտարապետական խմբի ընդհանուր ուրվագծին, իր ձևերով ու շինանյութի գույներով, ներդաշնակորեն միահյուսվում է շրջապատի լեռնային բնության բազմերանգ բնապատկերին, ապա, ավելի մոտիկից դիտելիս, նա աստիճանաբար անջատվում է միջավայրից և իր տարածական ծավալային հորինվածքի հուզական ամբողջ ուժով բացվում դիտողի առջև։ Է՛լ ավելի մոտիկից հայտնվում են նրա մեկը մյուսից ուշագրավ գեղաքանդակ մանրամասները։*

*Ըստ երևույթին, Գառնիի տաճարը նվիրված է եղել հին հայկական արևի աստված Միհրի պաշտամունքին*[41]*։*

*Դահլիճի փոքր չափերը ենթադրել են տալիս, որ ներսում դրված է եղել աստծու արձանը, իսկ ծիսակատարությունը տեղի է ունեցել դրսում։ Հայտնի է, որ Արևի աստված Միհրը հաճախակի պատկերվել է ցուլի դեմ մենամարտելիս։ Տաճարից մոտ 20 մետր դեպի հյուսիս գտնվել է սպիտակ մարմարից մեծ վարպետությամբ քանդակված ցուլի կճղակ։ Հավանաբար այն պատկանել է տաճարի ներսում դրված կուռքին, որը քրիստոնեական կրոնի ընդունումից հետո հանվել է շենքից և ոչնչացվել։*

*Շենքը կառուցված է եղել կապտավուն որձաքարից, պատերը շարված են չոր, առանց շաղախի, որմնաքարերը միացված են մետաղակապերով, և մետաղի ու քարի միացման խոռոչները լցված են կապարով։ Դահլիճը ներկայացնում է 5,05×7,98 մ չափի մի սրահ (այսպես կոչված «նաոս»), հյուսիսային կողմից երկայնական պատերի շարունակությունների միջև ներգծված նա-*

---

[40] *F. Dubois de Montpérieux* Voyage autour du Caucase, ches les Tcherkesses et les Abchasesen, Colchide, en Géorgie, en Arménie et en Crimée. III. Paris, 1839, *էջ 386—389, ատլաս,* I *սերիա, տախտակ* XIX, III *սերիա, տախտակ* XXXI: *К. К. Романов*, Развалины храма римского типа в Баш-Гарни, „Из истории докапиталистических формации". М.—Л., 1933, *էջ 639։ Ն. Բունիաթյան, Հեթանոսական տաճար Տրդատի պալատին կից Գառնիի ամրոցում, Երևան, 1933, էջ 47 և այլն։*

[41] *Տե՛ս К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, *էջ 91։*



Գառնիի հեթանոսական տաճարի հյուսիս-արևելյան անկյունը զարդարող քարձրաքանդակը

*խասրահով («պրոնաոս»), որոնք արտաքինից շրջապատված են եղել քսանչորս (կարճ ճակատներում՝ վեցական, երկար ճակատներում՝ ութական) սյուներով։ Սյունաշարքի համար ընտրվել է այսպես կոչված հռոմեական-հոնիական օրդերը, այսինքն՝ սյուները դրվել են բարձր պատվանդանի վրա և պսակ-*

վել անտաբլեմենտով (արխիտրավ՝ սյունից-սյուն դրված քարե հեծան, ֆրիզ, քիվ)։

Տաճարը ուղղված է հարավից դեպի հյուսիս։ Նրա պատվանդանի խարիսխն ու քիվը, ինչպես և գլխավոր ճակատով մեկ ձգված աստիճանները պատվանդանին տալիս են շեշտված հորիզոնականություն և դրանով իսկ ընդգծում նրա վրայից բարձրացող սյունաշարքի ուղղագիծ հորինվածքը և առավել վեհություն հաղորդում նրան։ Շենքի գեղարվեստական արտահայտչականությանը հասել են ոչ միայն նրա ճարտարապետական-կոնստրուկտիվ ճըշմարիտ ձևերի, այլև առանձին մասերի համաչափությունների ու փոխադարձ պայմանավորվածության միջոցով։ Մեծ ուշադրություն է դարձվել նաև մանրամասների մշակման վրա, շենքի հարդարանքներին։



Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասեր

Ճիշտ է, հելլենիստական մշակույթի հանդես գալուց դեռ շատ դարեր առաջ Հայկական լեռնաշխարհն ուներ, ըստ երևույթին, ուղղանկյուն հատակագծով, սյունաշարքով և ճակտոնով պաշտամունքի կառուցվածքի կերպը (Մուսասիրի տաճարը՝ մ. թ. ա. IX—VIII դարեր, թերևս նաև Թոփրախ-կալեում), որպիսի սկզբունքը, ըստ էության, ընկած է նաև Գառնիի տաճարի հիմքում։ Սակայն Գառնիի տաճարի հորինվածքը, որը ընդհանուր ճարտարապետության մեջ հայտնի է «պերիպտեր» (հունարեն՝ «բոլոր կողմերից սյուներով շրջապատված շինություն») անունով, իհարկե նման է հունա-հռոմեական նույնատիպ հուշարձաններին, բայց զուրկ չէ նաև տեղական արվեստի առանձնահատկություններից։

*Եթե հոմա-հռոմեական կառույցի միանման մանրամասները հար և նման են իրար, ապա Գառնիի տաճարում դրանք երբեք չեն կրկնվում, կատարված են տեղական արևելյան ժողովուրդների արվեստին բնորոշ բազմազանությամբ։*

*Զարդաքանդակնիրում ականթի ու դափնու տերևների հարուստ տարբերակների ու նրանց հնարամիտ դասավորությունների հետ միասին, հանդես են գալիս տեղական զանազան ծաղիկների, կաղնու տերևների, նաև ու բուսական այլ զարդամոտիվների բազմապիսի սրամիտ համակցություններ։*

*Միանման մանրամասները տարբեր ձևով մշակելու սկզբունքը կիրառված է հելլենիստական մշակույթի նաև այլ կենտրոններում՝ Փոքր Ասիա (Պերգամոն, Միլետ, Պրիենե և այլն), Սիրիա (Պալմիրա, Բաալբեկ, Անտիոք, Ջերաշա և այլն), Իրան (Պերսեպոլիս) և այլուր։*



Գառնիի հեթանոսական տաճարի առյուծագլուխ ֆրիզի մանրամաս

*Ուշագրավ է, որ եթե հռոմեական կառույցներում զարդանկարումը արվում է կանոնիկ եղանակներով (կարկինի օգնությամբ կամ երկրաչափական կառուցումներով), Գառնիում կատարված է ազատ, առավել սահուն պլաստիկ ձևով (խոյակների վոլյուտաների՝ պարույրների կառուցումը, ճարտարապետական մանրամասների պրոֆիլների կառուցումները և այլն)։*

*Պարզեցված են օրդերի առանձին մանրամասները և փոխված՝ համաչափությունները*[12] *(քիվը, հայկական ճարտարապետության համանման մանրամասների պես, քիչ է դուրս բերված պատի ընդհանուր հարթությունից, ֆրիզը*

42 *Տե՛ս* *К. К. Романов,* Развалины храма римского типа в Баш-Гарни, *էջ 652։ Նաև՝* Ն. Բունիաթյան, *Հեթանոսական տաճար Տրդատի պալատին կից Գառնիի ամրոցում, էջ 10։*

կառուցված է ցածր, փոխված են ատամնաշարքի համաչափությունները և այլն)։

Գառնիի տաճարի պատերը կառուցված են մեծ վարպետությամբ մշակված որձաքարից, մի բան, որին կարող էին դյուրությամբ հասնել որձաքարի վրա աշխատելու ավանդական խոշոր փորձ ունեցող տեղական քարգործ վարպետները։



Գառնիի հեթանոսական տաճարի մանրամասեր

Որձաքարի մշակման այդ տեխնիկան հայկական լեռնաշխարհում հայտնի լինելով դեռևս ուրարտական ժամանակներից (Արգիշտիխինիլի, Էրեբունի, Թեյշեբաինի, Թոփրախ-կալե և այլն), Գառնիի տաճարի կառուցումից շատ առաջ կիրառված է եղել նույն Գառնիի ամրոցի պարիսպների և աշտարակների շինվածքներում, ինչպես նաև Հայաստանի նույն ժամանակաշրջանի բազմաթիվ այլ կառույցներում (Արմավիր, Երվանդաշատ, Դարանաղյաց Անի և այլուր)։

Գառնիի տաճարի կառուցվածքում փայտյա ոչ մի մաս չի եղել։ Շենքը ունեցել է քարային կոնստրուկցիաների մի հատուկ սիստեմ, ուր բացի արխիտրավի քարերից, մնացած բոլոր մանրամասները (ֆրիզ, քիվ, գռան սանդրիկ, նրա վրայից ընթացող շարքի քարերը, սյունասրահի և նախամուտքի առաստաղի սալերը) ունեն թաղակապ հորինվածքներին բնորոշ սեպաձև միացումներ, իսկ դահլիճը՝ գլանաձև (կիսաշրջանաձև) քարաշեն թաղակապ ծածկ։

Թաղը վերևից ծածկվել է կրաշաղախով և վերջինիս վրա ամրացվել որձաքարից պատրաստված կղմինդր (սալիկներ), ճիշտ այն ձևով, ինչպիսին հանդիպում ենք Հայաստանի վաղ միջնադարի թաղակապ կառուցվածքների

տանիքներում։ Կրաշաղախի բեռի կշիռը նվազեցնելու նպատակով, Նրա մեջ օգտագործված են հրաբխային ծակոտկեն շատ թեթև քարեր։ Ի դեպ, նման մոտեցում գոյություն ունի նաև Զվարթնոցի VII դարի տաճարի կոնստրուկտիվ առավել պատասխանատու հանգույցներում։

Ուշագրավ է, որ Գառնիի տաճարի աղոթասրահի՝ «ցելլայի» հատակագծի համաչափությունները (5:8), նույնիսկ բացարձակ չափերը (5,05:7,98 մ) հար և նման են Էրեբունիի այսպես կոչված «սուսի» տաճարի հատակագծին։

Նշանակում է Գառնիի տաճարի միջուկը կազմող աղոթասրահի ամբողջ կառուցվածքը (սրբատաշ որձաքարով պարզ շարվածք, քարակերտ թաղակապ ծածկ, թաղի վերևում կրաշաղախ և վերջինիս վրա ամրացված որձաքարի սալիկ-կղմինդրով տանիք, համաչափություններ, նույնիսկ բացարձակ չափերը) սերտորեն կապված է ճարտարապետական-կառուցողական արվեստի տեղական ավանդույթների հետ։ Տեղական ավանդույթները դրսևորվում են նաև տաճարի մանրամասների մշակման մեջ։

Գառնիի տաճարի ճարտարապետությունը ընդհանրության մեջ գտնվելով հելլենիստական արվեստի հետ, առանձնապես առնչվում է փոքրասիական նույնատիպ կառուցվածքներին (Թերմես[43], Սագալաս[44], Պերգամոն[45]), իսկ որոշ զարդամոտիվներում նաև սիրիական համանման հուշարձաններին (Բաալբեկ)[46]։ Անտարակույս, Հայաստանում գոյություն են ունեցել Գառնիի տաճարի ճարտարապետական բնույթն ունեցող նաև այլ կառույցներ։ Այդ է ցույց տալիս Վաղարշապատում՝ Հռիփսիմեի տաճարի հիմքերում Գառնիի տաճարի ճարտարապետական ոճն ունեցող մանրամասների բացահայտումը։ Նույն ոճի ճարտարապետական մանրամասն գտնվել է նաև պատմական Նիգ գավառի Ափնա (Աղբնա) գյուղում։

Այդ շինությունները իբրև հելլենիստական տեղական արվեստի արգասիք՝ նույն ոճի հայկական մյուս հուշարձանների հետ մեկտեղ, ներկայացնում են հելլենիստական մշակույթի ընդհանուր շղթայի յուրակերպ օղակներից մեկը։

**Այլ շինություններ:** Նախաքրիստոնեական Հայաստանում գոյություն են ունեցել նաև մեմորիալ ուշագրավ կառույցներ։

Խորենացու վկայությամբ, երբ մարտում զոհվում է Երվանդ թագավորը, Արտաշեսը «...յիշեալ՝ թէ խառնուած Արշակունւոյ է Երուանդ. հրամայէ զդի նորա թաղել մահարձանօք»[47], կամ Վաղարշակ թագավորի որդին հյուսիսային ցեղերի դեմ մղած պատերազմի հաղթանակի առթիվ, իբրև «...գիւրոյ տէրութեանն նշանակ՝ արձան հաստատէ հելլենացի գրով»[48]։

---

[43] Տես *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, էջ 51—59։ *C. Ch. Lanckoronski*, Les villes de la Pamphylie et de la Pisidie, Second volume, La Pisidie, Paris, 1839, տախտ. III, էջ 85, 87։

[44] Տես *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, նույն էջերը, *C. Ch. Lanckoronski*, Les villes..., տախտ. XXIV:

[45] *H. Stiller*, Königliche Mussen zu Berlin. Altertümer von Pergamon, Das Traianeum, Vr, Tafel XXXI.

[46] Տես *B. Schulz und H. Winnefeld*, Baalbek, էջ 63, նկ. 34, էջ 78, նկ. 49 և այլն։

[47] Խորենացի, Բ, խզ։

[48] Խորենացի, Բ, կե։ Նաև՝ Բ. Առաքելյան, Հայկական պատկերաքանդակները IV—VII դարերում, Երևան, 1949, էջ 35։



Գառնիի հեթանոսական տաճարի նախամուտքի առաստաղի սալերը

Հետաքրքրական են եղել հատկապես դամբարանային կառույցները (Հայ Արշակունի թագավորների՝ Անի-Կամախի և Անգեղ բերդի դամբարանները, Փարաքարի դամբարանը և այլն)։

Փարաքարի դամբարանը կառուցված է համանուն գյուղից դեպի արևմուտք գտնվող բլրի գագաթին։ Այն ունի աշտարակաձև հորինվածք, որը վեր ելնելով համատարած հարթակի վրայից, արտաքինից ունեցել է հավանաբար բազմանիստ, ներսից կորագիծ կառուցվածք։ Թաղումը կատարված է կենտրոնում, հիմքի շարվածքի հորիզոնին հավասար և ուղղված է հյուսիս-արևելքից դեպի հարավ-արևմուտք։

Դամբարանային շինությունը ներկայումս ամբողջությամբ ավերված է. պահպանվել են ներքևից 1—2 շարքի մնացորդներ, իսկ շրջապատում՝ թաղակապ ծածկի և կորագիծ վերջավորություն ունեցող ինչ-որ բացվածքի կամարի առանձին քարեր։ Շինանյութը տեղական մոխրագույն տուֆաքարն է։ Պեղումների ժամանակ ներսից գտնված նյութերը (Տիգրան Բ-ի դրամներ, խեցեղեն) հնարավորություն են ընձեռում ամբողջ կառույցը համարել մ. թ. ա. I դարի գործ[49]։ Հայտնի են նաև այս տիպի այլ կառույցներ։

**Շինարարական տեխնիկան:** Հայաստանի մինչքրիստոնեական ժամանակաշրջանի շինարարական տեխնիկան եղել է դեռևս նախահայկական շրջանում, Հայկական լեռնաշխարհում ստեղծված ավանդույթների շարունակությունն ու հետագա զարգացման արդյունք։

Պատերի շարվածքի համար իբրև հիմնական շինանյութ օգտագործվել է որձաքարը և տուֆը, առանձին դեպքերում նաև գետաքարը և թրծած աղյուսը։

Մոնումենտալ շենքերի, ինչպես նաև պաշտպանական կառույցների պատերը շարված են քարի ուղղանկյուն սրբատաշ զանգվածների (կվադրների) համատարած դասավորությամբ, չոր, առանց շաղախի, և որմնաքարերը հաճախ միացված մետաղակապերով։ Վերջիններն ունեն ուղղանկյուն կտրվածք կամ ծիծեռնակի պոչի տեսք, կամ նաև ծիծեռնակի պոչի տեսք ունեցող փայտե, թերևս նաև որձաքարից պատրաստված կապեր (Արմավիր)։

Երբեմն լինում է պատի խառը շարվածք, ուր սրբատաշ ուղղանկյուն քարերով ստեղծված շրջանակի ներսը լրացվում է կիսամաքուր տաշվածք ունեցող քարերով կամ ճեղքված որձաքարի ու գետաքարի զանգվածքով։

Քարի ոչ ուղիղ զանգվածներով (կվադրներով) կառուցված շենքերում (պալատական, բնակելի, տնտեսական, կոմունալ) և հիմքերում իբրև կապակցման միջոց օգտագործված է կրաշաղախը։ Ծածկերը եղել են փայտաշեն և քարաշեն (թաղակապ), տանիքի համար ծածկանյութ են հանդիսացել մարմարյա, որձաքարի սալիկները կամ կղմինդրը։

Այսպիսով, Հայաստանի ստրկատիրական հասարակության գրեթե մեկ ամբողջ հազարամյակ ընդգրկող ժամանակաշրջանի բնակավայրերի, ճարտարապետական խմբերի ու առանձին հուշարձանների վերաբերյալ այս խիստ սակավաթիվ տեղեկություններն ու նյութերն անգամ ցույց են տալիս, որ երկ-

---

49 Տե՛ս Գ. Տիրացյան, Փարաքարի աշտարակաձև դամբարանը և նման հուշարձաններ Հայաստանում և Առաջավոր Ասիայում, «Բանբեր Երևանի համալսարանի», 1970, № 1։

րում ստեղծված են եղել ճարտարապետական-կառուցողական արվեստի բազմաթիվ օջախներ։

Այդ օջախներում կերտվել ու ժամանակի հասկացողությամբ զարգացման նշանակալից բարձրության է հասել մի հարուստ բազմաժանր ճարտարապետություն։ Թե՛ այդ բնակավայրերի հատակագծային հորինվածքների հիմքում



Գառնիի հեթանոսական տաճարի ֆրիզի խաերից

ընկած քաղաքաշինական տեղական սկզբունքները, թե՛ պահպանված հուշարձանների մնացորդները և թե՛, մասնավորապես, հեթանոսական այդ շինությունների շրջապատում, հաճախ նրանց հիմքերի վրա բարձրացված քրիստոնեական անդրանիկ կառույցները[50] աներկբայորեն վկայում են, որ այդ ճարտարապետությունը, սերտ շփման մեջ գտնվելով ժամանակի առաջավոր, հունա-հռոմեական ու հելլենիստական մշակույթ ունեցող հարևան մյուս երկրների ու ժողովուրդների արվեստների հետ, ընթացել է զարգացման իր յուրահատուկ ճանապարհով։

## 3. ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

**Անդրիագործություն և գեղարվեստական քանդակ:** *Հայ հին արվեստի այս բնագավառը կարելի է բաժանել երկու ճյուղի՝ այն է՝ անդրիագործություն կամ արձանգործություն և գեղարվեստական քանդակ (հարթաքանդակ, բարձրաքանդակ) քարի կամ փայտի վրա։ Եթե արձանագործությունը հին Հայաստանում կապված էր գերազանցապես պաշտամունքի հետ, ապա գեղարվեստական քանդակը ծառայում էր հիմնականում ճարտարապետական հուշարձան-*

50 Տե՛ս Ալ. Սահինյան, *Քասաղի բազիլիկայի ճարտարապետությունը*, էջ 183—188, 229—232։

ների հարդարման նպատակին, թեև այս քանդակներն էլ արտահայտում էին կրոնական, սոցիալական և այլ գաղափարներ։

Հին Հայաստանի արձանագործության վերաբերյալ մեր տեղեկությունները հենվում են առավելապես գրավոր աղբյուրների վրա, իսկ հուշարձանների նմուշներից պահպանվել են առանձին, այն էլ ոչ ամբողջական գործեր[51]։

Հին Հայաստանի պաշտամունքային պանթեոնի բազմաթիվ աստվածությունների արձանները կամ կուռքերը դրվում էին հեթանոսական տաճարներում՝ մեհյաններում։ Դրանք պատրաստվում էին տարբեր տեսակի քարերից, փայտից, պղնձից և այլ նյութերից։



Մարմարե արձանի ոտքի մասը. Գառնի

Հայաստանի հին մայրաքաղաք Արմավիրում, որը միաժամանակ պաշտամունքային խոշոր կենտրոն էր, ավանդական Վաղարշակ թագավորը, պատմահայր Մովսես Խորենացու վկայությամբ՝ մեհյան շինելով, արձաններ է կանգնեցնում Արեգակին, Լուսնին և իր նախնիներին[52]։ Նման արձաններ շատ կային երկրի տարբեր գավառներում կառուցված մեհյաններում։ Երկնքի և երկրի արարիչ և բոլոր աստվածների հայրը համարվող Արամազդի արձանը կանգնեցված էր Եփրատի ափին գտնվող հին Անի ամրոցում[53]։

Պլինիոս Ավագը իր «Բնական պատմության» մեջ հաղորդում է, որ Անա-

---

51 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Քանդակագործությունը հին Հայաստանում, ՊԲՀ, 1960, № 1, էջ 48—68։

52 Տե՛ս Խորենացի, Բ, ը։

53 Տե՛ս նույն տեղում, Բ, ժբ, ժդ։

հիտի ոսկյա արձանը (Եկեղյաց գավառի Երիզա ավանում) ջարդ ու փշուր արեցին և ոսկին իրենց մեջ բաժանեցին Անտոնիոսը և նրա զորքերը։ Դրանից հետո, սակայն, նույն տեղում նորից ոսկյա արձան է դրվել։ Հայոց բոլոր աստվածներն ունեին իրենց մեհյանները և արձանները։

Հայկական պանթեոնի աստվածների համադրումը հունականների հետ հնարավոր է դարձնում բերել համապատասխան արձաններ դրսից՝ հելլենիստական երկրներից և կանգնեցնել հայկական մեհյաններում։ Խորենացին գրում է, թե Արտաշեսը (իմա՝ Տիգրանը) դեպի Արևմուտք իր արշավանքի միջոցին՝ «Ասիայում գտնելով Արտեմիդեի, Հերակլի և Ապոլոնի պղնձաձույլ ոսկեզօծ արձանները, բերել է տալիս մեր աշխարհը, որպեսզի կանգնեցնի Արմավիրում։

Քրմապետները, որոնք Վահունիների ցեղից էին, Ապոլոնի և Արտեմիդեի արձաններն առնելով կանգնեցրին Արմավիրում, իսկ Հերակլեսի արձանն իրենց նախնի Վահագնը համարելով՝ կանգնեցրին իրենց սեփական Աշտիշատ գյուղում»[54]։

Խորենացու ասելով, Էլլադայից (Հունաստան) են Հայաստան են բերվում Դիոսի (Զևսի), Արտեմիդեի, Աթենասի, Հեփեստոսի և Ափրոդիտեի արձանները, որոնք կանգնեցվում են նրանց տաճարներում[55]։

Տիգրանը, այնուհետև, «...իջնում է Միջագետք, այնտեղ գտնելով Բարշամինի արձանը, որ շինված էր փղոսկրից և բյուրեղից և արծաթով կազմված, հրամայում է տանել կանգնեցնել Թորդան ավանում»[56]։

Աստվածացվում էին նաև արքաներն ու նրանց նախնիները, որոնց արձանները նույնպես դրվում էին մեհյաններում[57]։ Վերևում տեսանք, որ Վաղարշակը կերտել է տալիս իր նախնիների արձանները։ Սանատրուկի մասին պատմվում է, թե նա մեծ ծախսերով վերաշինեց երկրաշարժից ավերված Մծբին (Թերևս Մծուրն) քաղաքը և քաղաքում կանգնեցրեց իր արձանը՝ ձեռքին մի դրամ, իբրև թե գանձերը ամբողջովին ծախսվել են՝ այս է մնացել[58]։

Գրավոր աղբյուրների վկայությունները, որքան էլ սակավ, թույլ են տալիս որոշ գաղափար կազմելու արձանների նյութի և կերտման տեխնիկայի մասին։

Ագաթանգեղոսը վկայում է, թե դեռևս հեթանոս Տրդատը հարկադրում է քրիստոնեությունը ծածուկ պաշտող Գրիգոր Պարթևին երկրպագելու հեթանոսական կուռքերին, իսկ Գրիգորը պատասխանում է. «Կուռքերի մասին, որ ասում ես, որոնց աստված ես կոչում, իսկապես որ շինվածքներ են, որովհետև հորինված են մարդկանց կողմից և դարձել են պատկեր հմուտ վարպետների ձեռքով, ոմանք փայտյա են, ոմանք քարից են, ոմանք պղնձից, ոմանք ոսկուց»[59]։ Գրիգոր Պարթևը սնոտի համարելով կռապաշտությունը, հորդորում է

54 Խորենացի, Բ, ժբ։

55 Նույն՝ տեղում։

56 Տե՛ս նույն տեղում, Բ, ժդ։

57 Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, էջ 34 և հաջ.։

58 Տե՛ս Խորենացի, Բ, լզ։

59 Ագաթանգեղոս, 71։



Մարմարե արձանի իրանի մասը. Գառնի

Տրդատ արքային՝ հրաժարվել նրանից, ասելով. «Հրաժարվեցեք այսուհետև քարեղեն և փայտեղեն, արծաթեղեն և ոսկեղեն պղնձաձույլ պատկերների պիղծ պաշտամունքից, որովհետև սուտ են ու սնոտի»[60]։ Խոսելով մեհյանների և նրանց մեջ եղած կուռքերի արձանների կործանման մասին Ագաթանգեղոսը գրում է. «Եւ այսպէս բազմաթիվ տեղերից վերացվեցին գայթակղեցուցիչ անմռունչ, ձուլյալ, կոյալ, կոփյալ, քանդակյալ, անպիտան, անօգուտ, վնասակար արձանները, որոնք պատրաստված էին ցնորված մարդկանց անմտությամբ և սրտմտորեն դարձյալ հաստատված էին հավատքի մեջ»[61]։

Պետք է ենթադրել, որ Հայաստանում պատրաստված հին արձանների մեծամասնությունը տեղական ավանդական և հին արևելյան արվեստի, իսկ Հունաստանից և Փոքր Ասիայից բերված արձանները՝ հելլենիստական արվեստի նշանավոր գործեր էին։ Դրանք ոչ միայն նոր ճաշակ զարգացրին, այլև անշուշտ ազդեցություն գործեցին տեղական արձանագործ վարպետների վրա։

Դժբախտաբար, քրիստոնեությունն ընդունելիս, այդ արձանները կործանվեցին, ջարդուփշուր արվեցին, ուստի պահպանվել են դրանց աննշան հետքերը միայն։



Արձանի գլուխ տուֆից. Դվին

Քարե արձանների գլուխներ գտնըվել են Դվինի, Երևանի մերձակայքում, Սյունիքում և այլուր։ Դրանք պատրաստված են տուֆ քարից, բոլորի դեմքերն էլ խորաքանդակ են՝ փոս ընկած, աչքերի խոռոչը ավելի խոր. հավանաբար այլ քարից կամ նյութից ագուցվող աչքեր են ունեցել։ Քիթը և ճակատը, ընդհակառակը, դուրս ընկած են[62]։ Դրանք հավանաբար, պաշտամունքային կուռքեր են, թերևս, թագավորների ու մեծամեծների նախնիների քանդակներ։

Դվինում գտնված՝ թուխ գույնի տուֆից պատրաստված գլխի մասին ավելի որոշակի կարելի է ասել։ Երկարուկ, դեպի վեր նեղացող գլխարկը իր ձևով հիշեցնում է Արտաշեսյանների թագը և այդ ժամանակաշրջանում Հայաստանի հետ քաղաքականապես և մշակույթով սերտորեն կապված՝ Կոմմագենեի Անտիոքոս արքայի խույրը՝ Նեմրութ լեռան քանդակներում։

Արձանների այդ գլուխները իրենց ձևով, ոճով, արվեստով, կատարման տեխնիկայով ներկայացնում են Հին Հայաստանի արձանագործության ուղղություններից մեկը՝ ժողովրդական-ավանդական ուղղությունը։

---

60 Նույն տեղում, 234։
61 Նույն տեղում, 787։
62 Տե՛ս Բ. Առաքելյան, Քանդակագործությունը Հին Հայաստանում, ՊԲՀ, № 1, 1969, էջ 45։

Արձանագործության երկրորդ ուղղությունը հելլենիստականն էր։ Դրսից Հայաստան բերված արձանները, որոնք հիշատակվում են աղբյուրներում, թեև տեղում չէին պատրաստված, այնուամենայնիվ, համապատասխանում էին իշխող վերնախավի ճաշակին և տպասարկում էին նրա պաշտամունքային և գեղագիտական պահանջները։ Անկասկած, բացի դրսից բերվածներից, տեղում էլ պատրաստվել են արձաններ, որոնք ունեցել են հելլենիստական կոչվող արվեստի բնորոշ գծերը։ Այդ արվեստի նշանավոր հուշարձաններից է այսպես կոչված «Անահիտի» արձանի գլուխը, որը գտնվել է Արևմտյան Հայաստանում (Սատաղի մոտ) և պահվում է Լոնդոնում՝ Բրիտանական թանգարանում։ Բնականից մեծ այս գլխի մազերի նուրբ ալիքավոր սանրվածքը, բոլորակ դիմքը, մեղմ հայացքը, հաղիվ նկատելի քնքուշ ժպիտը առանձին հըմայք են հաղորդում նրան։ Այս բարձրարվեստ ստեղծագործությունը մի շարք գծերով մոտենում է փոքրասիական մ. թ. ա. II դարի քանդակներին, մասնավորապես Արտեմիսի կերպարին, ուստի և պատահական չէ, որ այն նույնացվել է Անահիտի հետ[63]։

Գառնիում գտնվել են մարմարից պատրաստված արձանների բեկորներ, որոնք ավելի ուշ ժամանակների (II—III դարեր) հելլենիստական քանդակների մնացորդներ են։

Հելլենիստական արվեստի համար խիստ բնորոշ են հարևան Կոմմագենեի քանդակները, որոնք հայտնաբերվել են Նեմրութ լեռան վրա։ Այդ քանդակները՝ դեմքերի ցայտուն հելլենիստական կերպավորման հետ միասին, պատկերված են տիպական աքեմենյան, կոմմագենյան զգեստներով և խույրերով, իսկ Անտիոքոս արքայի խույրը հայկական է, նման Տիգրանի խույրին։



Կավե արձանիկի բեկոր. Գառնի

Ծոփքի և Մեծ Հայքի թագավորների հատած դրամների վրա դրվագված արքաների պատկերները ցույց են տալիս, որ տեղական և հելլենական արվեստի փոխթափանցմամբ ստեղծվող հելլենիստական մշակույթի նմուշների վրա մի դեպքում կարող են հելլենական գծերը ավելի ցայտուն և տիրապետող լինել, մյուս դեպքում՝ տեղական գծերը։

Երևանից մի քանի կիլոմետր դեպի արևելք գտնվել է մի արձանի գլուխ, պատրաստված դեղնավուն քարից, որը տուֆակերտ մյուս գլուխներից տարբերվում է ավելի կատարյալ մշակմամբ, համամասնությամբ և արտահայտչականությամբ։ Նրա վրա տի-

63 Ղ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 40։

րապետում են տեղական գծերը, թեև նկատելի է նաև հռոմեական դիմանկարային արձանագործության որոշակի ազդեցությունը։ Այն աշխարհիկ մարդու քանդակ է։ Տեղական քարից կերտված մի արձանի գլուխ էլ հայտնաբերվել է Լենինականից ոչ հեռու՝ Դարբանդ գյուղում։ Այն կնոջ գլուխ է, ուշագրավ մազերի դեպի ետ սանրվածքով։ Երևանում և Դարբանդում գտնված գլուխները ցույց են տալիս, որ II—III դարերում հայ քանդակագործները հաղթահարել են տափակ դեմքով քանդակների ավանդական ձևերը և ստեղծել բավականաչափ բարձրարվեստ գործեր։

Հին Հայաստանում եղել են նաև կաղապարի օգնությամբ կավից թափված և թրծված, այսպես կոչված, տերրակոտային արձանիկներ։ Դրանց մի քանի նմուշները գտնվել են հին Վաղարշապատում, Գառնիում ու Արտաշատում և ունեն I—II դարերի անտիկ կավե արձանիկներին բնորոշ ձևեր։ Դրանց թվում կան թե՛ Ասորիքից ու Փոքր Ասիայից ներմուծված և թե՛ տեղում պատրաստված արձանիկներ։

**Քարի գեղարվեստական քանդակ:** Բացի ծավալային արձանագործությունից հին Հայաստանում զարգացած էր նաև քարի գեղարվեստական քանդակը։ Դրա լավագույն նմուշներն են Գառնիի հեթանոսական տաճարի ճոխ ու շքեղ զարդերը։ Ոճավորված բուսական ու երկրաչափական քանդակները կատարված են մեծ արվեստով՝ բարձրաքանդակ ցցուն ու պլաստիկ ձևերով, մեղմ փոխանցումներով և դասական կատարելությամբ։ Ռելիեֆ հյուսվածքները հաճախ արված են թափանցիկ փորագրությամբ։ Առաջին հայացքից քանդակները աչքի են ընկնում ձևերի ու մոտիվների միասնությամբ, իսկ մանրազնին դիտումներով երևան է գալիս ձևերի ու մոտիվների վերին աստիճանի հարուստ բազմազանությունը։ Այսպիսով, միասնության մեջ ներդաշնակող ձևերի բազմազանությունը, որն այնքան բնորոշ է հայկական արվեստին, երևան է գալիս դեռևս հին շրջանի արվեստի մեջ։

Գառնիի հեթանոսական տաճարի քանդակների թվում կան և մարդկային պատկերներ։ Դրանք երկու երիտասարդ ատլանտներ են, որոնց բարձրաքանդակները տեղադրված են տաճարի աստիճաններից աջ և ձախ բարձրացող պատերի ճակատին։ Դժբախտաբար այդ քանդակների գլուխները դեռևս հնում ջարդել, եղծել են, իսկ տեղի անհարմարության պատճառով նրանց ոտքերի համամասնությունները խախտված են։ Այնուամենայնիվ, նրանց մարմինների անատոմիական ընդգծված պատկերումը դրական վկայություն է այդ քանդակների արվեստի մասին։

Գառնիի տաճարը Հին Հայաստանի հելլենիստական բնույթի միակ քանդակազարդ շենքը չէ. նման շենքեր եղել են Արտաշատում, Տիգրանակերտում, Վաղարշապատում և այլուր։ Դրան իբրև վկայություն կարող է ծառայել այն, որ 1958 թվականին Վաղարշապատում, 618 թվականին կառուցված Հռիփսիմե տաճարի ներսում գտնվեցին Գառնիի քանդակներին միանգամայն նման քանդակներով զարդարված քիվի երեք քար, որոնք վերցվելով ինչ-որ հին շենքի ավերակներից, երեսն ի վար դրվել են քրիստոնեական տաճարի որմնամույթերի հիմքերում։

Շենքերը քանդակներով զարդարվում էին նաև ներսից։ Գառնիի պեղում-

ների ժամանակ գտնվել են մարմարի հարթաքանդակների, քանդակազարդ քիվերի և այլ բեկորներ։ Դրանք կատարված են բարձր արվեստով, անտիկ բարձրաքանդակների նմանությամբ, և ինչպես կարելի է դատել նրանց փոքր չափսերից, ծառայել են իբրև շենքերի ներսի ճարտարապետական հարդարանք։ Այդպիսի փոքր քիվեր կարող էին ունենալ շենքերի դռների, խորշերի պարակալները, արձանների պատվանդանները, շենքերի ներսում զետեղված ավազանները և մարմարի սարկոֆագները։

## 4. ՄՈՆՈՒՄԵՆՏԱԼ ԳԵՂԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

*Հին դարերում գեղանկարչությունը կապված էր կիրառական արվեստների (գեղազարդ խեցեղեն, նկարուն գործվածքներ, գորգեր և այլն), մանավանդ, ճարտարապետության հետ, այս դեպքում երևան գալով իբրև մոնումենտալ գեղանկարչություն՝ որմնանկարների և խճանկար (մոզաիկ) պատկերների ձևերով։ Երբեմն նկարը արվում էր և փայտյա տախտակների վրա։*

*Որմնանկարչությունը ինչպես տեսանք, լայնորեն կիրառվել է դեռևս ուրարտական ճարտարապետության մեջ։ Ուրարտական արվեստին անծանոթ չէր նաև տարբեր գույնի, համեմատաբար խոշոր քարերով կազմվող հին արևելյան տիպի մոզաիկան, սակայն մանրիկ հատիկներով կազմվող իսկական խճանկարը երևան է գալիս ավելի ուշ՝ հելլենիստական դարաշրջանում։ Հին Հայաստանի արվեստին հայտնի են եղել թե՛ որմնանկարը և թե՛ խճանկարը։ Պետք է ասել, որ մ. թ. IV դարից ավելի վաղ շրջանի հայկական որմնանկարչության նմուշներից ոչ մեկը դեռևս հայտնի չէ, ուստի նրանց առկայության մասին կողմնակիորեն վկայում են ուրարտական շրջանի, ինչպես և հետագայի՝ վաղ քրիստոնեական շրջանի որմնանկարները։ Ճիշտ է, Գառնիի III դարի դղյակային-պալատական շենքի նկուղային հարկում, պատի վրա բավականաչափ խոշոր հատվածով պահպանվել է կարմիր ներկը։ Կարմիր ներկով, գուցե և որմնանկարով, զարդարված է եղել նաև նույն շենքի ճակատային պատը՝ դրսից։ Իսկ Արտաշատում հայտնաբերվել են որմնանկարների փոքրիկ բեկորներ։*

**Խճանկար (մոզաիկա)**: *Հին աշխարհում մոնումենտալ արվեստի կարևոր ճյուղերից. մեկը խճանկարչությունն էր՝ մոզաիկան։*

*Անտիկ շրջանի հայկական խճանկարի առաջին նմուշը հայտնաբերվել է Գառնիում 1953 թվականին։ Այն բացվել է ամրոցի III դարով թվագրվող բաղնիքի հանդերձարանի հատակին։ Գառնիի խճանկարը բազմերանգ է, պատրաստված տեղում, Ազատ գետի հունից վերցված գույնզգույն քարերից և ունի հարուստ հորինվածք, բաղկացած առասպելական ծովային տեսարաններից*[64]*։*

*Խճանկարի ընդհանուր ֆոնը բաց-կանաչավուն, ծովային է։ Հորինվածքի կենտրոնում բազմերանգ խորանարդիկների օգնությամբ, երանգների նուրբ համադրությամբ պատրաստված հյուսկեն զարդ ունեցող գեղատեսիլ շրջանակի մեջ զետեղված են Օվկիանոսի և Ծովի կիսանդրիները, առաջինը՝ թավ*

---

64 *Б. Н. Аракелян,* Мозаика из Гарни, ВДИ, 1956, № 1, *էջ 143—156։ Նույնի* Гарни, II, Ереван, 1957, *էջ 23—41։*

մազերով նշխարավոր տղամարդու, իսկ երկրորդը՝ գեղաշխյա կնոջ կերպարանքով, որի գլխից դեպի աջ ու ձախ տարածվում են խեցգետնի երկու շոշափուկներ։ Այս երկու պատկերների գլխավերևում գինեգույն կարմիր խոշանարդիկներով գրված է. «Ոչինչ չստանալով աշխատեցինք» հունարեն առեղծվածային մակագրությունը։ Այս շրջանակի, որպես կոմպոզիցիոն առանցքի շուրջը պատկերված են հունական ծովային առասպելաբանության մեջ հայտնի իխթիոկենտավրներ[65], ներեիդներ (ծովինարներ), տարբեր աստվածություններ, ձկներ, ձկնորսներ, դելֆին, ոստրեներ և այլն։ Դրանք բազմագույն են, երանգների նուրբ փոխանցումներով և բավականաչափ բարձր արվեստով կատարված, թեև մոզաիկան ամբողջությամբ վերցրած կրում է անտիկ արվեստի անկման շրջանի կնիքը։ Հարավային պատի երկարությամբ ձգվող հատվածի վրա արված պատկերները արվեստով և համամասնությամբ զիջում են մյուս հատվածների պատկերներին և կատարված են, հավանաբար, տարբեր վարպետների ձեռքով։

Գառնիի մոզաիկ պատկերները անձնավորում են զանազան երևույթներ կամ հասկացություններ։ Հյուսիսային պատի տակ նրա երկայնքով ձգվող հատվածում պատկերված է թառափի նմանվող մի ձուկ, ապա իխթիոկենտավր, որի գլխից ձախ, ձկան պատկերի վերևում գրված է՝ «ծովի խորք», իսկ իխթիոկենտավրի մեջքին նստած է մի ներեիդ, որի գլխից ձախ գրված է Գալենե՝ «ծովային անդորր»։ Նրանից աջ դետեղված է ձկնորսների և նավազների հովանավոր աստծու՝ Գլավկոսի պատկերը, իսկ ավելի աջ գտնվում են Աքիլլեսի հոր և մոր՝ Պելևսի և Թետիսի պատկերները։ Թետիսի ոտքերից ցած, արևելյան պատի տակ պատկերված է մի փոքր դելֆին, որից վերև գրված է՝ «ծովափ»։ Դելֆինից աջ գտնվում է մերկ թևավոր ձկնորսի պատկերը, որը, կանգնած նավի ծայրամասում, ծովից հանում է ուռկանը, որի մեջ ձկներ կան։ Ձկնորսի գլխի մոտ մակագրված է՝ «գեղեցկություն»։ Ավելի աջ և հարավային պատի տակ նույնպես պատկերված են իխթիոկենտավրներ, ձկներ, ժայռի վրա նստած ձկնորս, որը ձուկ է բռնում կարթով։ Արևմտյան պատի երկայնքով ձգվող հատվածի վրա պատկերված են սիրո աստված Էրոսը, սիրո համոզմունքի և պերճախոսության աստվածուհի Պիթոն և ցանկության աստված Պոթոսը, իսկ հատակի քանդված մասում հավանաբար պետք է լինեին սիրո աստվածուհի Աֆրոդիտեի և ամուսնության աստված Հիմենայոսի պատկերները, որոնք սովորական են նման տեսարաններում։

Գառնիի խճանկարը ներկայացնում է մի կենսահաստատ տեսարան, որը նշանավորում է կյանքի սկզբնավորումն ըստ հին հունական պատկերացումների՝ օվկիանոսից ու ծովից, և նրա հարատևությունը սիրո ու ամուսնության միջոցով։

Գառնիի խճանկարում օգտագործվում է 15 երանգ, որոնց համադրությունը կատարված է մեծ հմտությամբ և մեղմ ու նուրբ անցումներով։ Գույները շատ վառ չեն, սակայն ծովի բաց կանաչ ֆոնի վրա աչքի են ընկնում ավելի բաց լուսավոր, քան մուգ երանգները, որոնք և, խճանկարի բովանդակությանը

---

65 Իխթիոկենտավր՝ ձուկ-կենտավր, պատկերված է տղամարդու-տեսքով՝ մինչև գոտկատեղը, ձիու առջևի ոտքերով, իսկ տուտը՝ ձկնակերպ։

համապատասխան, առաջացնում են լուսավոր ու կենսուրախ տրամադրություն։

Գառնիի խճանկարը թեև III դարի գործ է, բայց նրան հատուկ են ավելի հելլենիստական, քան հռոմեական արվեստին բնորոշ առանձնահատկությունները, որը պետք է բացատրել մի կողմից հելլենիստական արվեստի ավանդների կենսունակությամբ Հայաստանում և մյուս կողմից հռոմեական արվեստի ազդեցության թուլությամբ։ Գառնիի խճանկարի տեղական առանձնահատկությունները երևան են գալիս նաև ամբողջ կոմպոզիցիայի[66], գույների գամմայի և մարդկային պատկերների արևելյան կերպարների մեջ։

Գառնիի խճանկարը հին Հայաստանի հելլենիստական բնույթի մոնումենտալ գեղանկարչության նշանավոր և եզակի ստեղծագործություն է։ Սակայն նրա բարդ հորինվածքը, գույների գամման, կատարման տեխնիկան և արվեստը վկայում են, որ այն հին Հայաստանի խճանկարչության առաջին գործերի թվին չի պատկանում, այլ, ընդհակառակը, նշանավորում է նրա մայրամուտը, անկումը։ Այն կրկին պիտի վերակենդանանար վաղ ֆեոդալական շրջանում։

## 5. ԿԻՐԱՌԱԿԱՆ ԱՐՎԵՍՏՆԵՐ

Աքեմենյան տիրապետությանը հաջորդած հելլենիստական դարաշրջանում երևան եկան բազմաթիվ քաղաքներ և զարգացան արհեստները։ Կիրառական արվեստների համար ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեցին։ Պատահական չէ, որ այս ժամանակաշրջանից մեզ հասած թե՛ գրավոր տեղե-



Ապակյա սրվակներ. Դառնի

[66] Գառնիի խճանկարի ամբողջական հորինվածքը այլ երկրներում հայտնի չէ, սակայն նրա մանրամասները գտնում ենք Հայաստանի հետ սերտ կապեր ունեցած Ասորիքի (Անտիոք. Դափնե) խճանկարների մեջ (տե՛ս Antioch on the Orontes, II. The Excavations of 1933—1936, Princeton, 1938, էջ 151, 183, 186, 191, 196—197, տախտ. 33, 40, 51, 61, 66։ D. Levy, Antioch Mosaic Pavements, Princeton, 1947, vol. I. էջ 599, vol. II, տախտ. VI):

*կությունների և թե՛ գեղարվեստական իրերի քանակը համեմատաբար ավելի մեծ է։ Կենցաղում սովորական են դառնում գեղարվեստական ձևավորում ունեցող գահույքները, պատգարակներն ու կառքերը, զենքերն ու զարդերը, կահկարասիներն ու սպասները և այլ իրեր։*

**Պերճանքի առարկաներ:** *Մովսես Խորենացին, նկարագրելով Արտաշես թագավորի թաղումը, ասում է, թե «Նրա դագաղը ոսկեղեն էր, գահը և անկողինը բեհեզից և մարմինը պատող պատմուճանը ոսկեթել, գլուխը թագ դրած, ոսկյա զենքն առջևը»[67]։ Այստեղ հիշատակված իրերից շատերը գեղարվեստական ստեղծագործություններ էին։*



Ապակյա սրվակներ. Գառնի

*Խորենացին վկայում է, թե Տիգրանի օրոք ոսկյա ու արծաթյա իրերն ու զարդերը, պատվական քարերը, գույնզգույն զգեստները կանանց ու տղա-*

67 Խորենացի, *Բ, կ*։

մարդկանց համար հավասարապես բազմացել էին, որոնց շնորհիվ «...տգեղները գեղեցիկների նման սքանչելի էին երևում, իսկ գեղեցիկներն էլ այն ժամանակի համեմատ դյուցազունների էին նմանում»[68]։

Երբ հռոմեացիք հաղթեցին Տիգրան Բ-ին, վկայում է Ապպիանոսը, ապա նրա ճակատամարտում ընկած զինվորների վրա գտան ապարանջաններ ու գումարտակներ (վզնոց), բայց զորավարը արգելեց կողոպտել դրանք։

Դիոն Կասսիոսը պատմում է, թե Տրդատ Ա-ի կինը ընկերակցում էր ամուսնուն դեպի Հռոմ՝ համաձայն իր զարմի սովորության գլխին դրած ոսկե խույրը՝ փոխանակ գլխադրի։

Աղբյուրներում հիշատակվում է, որ թագավորների խույրերը զարդարվում էին «հնդկային աշխարհեն» բերված պատվական ակնեղենով և նրանց պսակների արտախույրը և վերջավորությունը փողփողում էին։ Ավագանու ներկայացուցիչների դիադեմաները կամ պատիվները կազմված էին լինում երկուերեք շարք մարգարիտներից։ Խորենացու վկայությամբ Վաղարշակը Բագարատ Բագրատունուն շնորհում է թագակապ ասպետի պատիվը և արտոնում է՝ «Առանց ոսկւոյ և ականց, զկրտսեր մարգարիտն երեքտակեան վարսակալ ածել յորժամ արքունիս և տան թագաւորին շրջեսցի»[69]։ Իսկ Արտաշեսը թագավորելով՝ «Տայ և առն քաջի պատուականի Արգամայ զխօստացեալ գահն երկրորդական, և պսակ յակնթակապ, և գինդ երկուսին ականչսն» և «կարմիր զգեստ միով ոտին. Տարգալ (գդալ) ունել ոսկի և պատառաքաղ և ոսկեղինօք ըմպել նուագօք»։ Նույնպիսի պատիվներ, բայց առանց գինդերի և կարմիր կոշիկի տրվում է Սմբատ Բագրատունուն[70]։

Երբ պարթևական Արշակ թագավորի որդի Արշակը հայոց գահն է բարձրանում, ապա Բագարատ ասպետը նրան մատուցում է ոսկյա և արծաթյա նվերներ, և զարդարում է նրան սաղավարտով, վակասով, պսակում է հայրենի թագով և նստեցնում է նրան ոսկեպատ ականակուռ գահույքի վրա[71]։

Հիշատակվում են նաև արքունական ոսկեպատ կուռքերը, հեթանոսական տաճարներին թագավորների տված ոսկյա և արծաթյա մեծամեծ նվերները։

Պերճանքի առարկաները արքունիքում և ավագանու կենցաղում սովորական էին։ Սակայն սրանցից բացի կային կիրառական արվեստի շատ ուրիշ առարկաներ, որոնցից մի քանի նմուշներ հասել են մեզ։ Դրանց հնագույնները կարող են համարվել Ծոփքի հայ թագավորների հատած դրամները։

**Հայկական դրամների պատկերագրությունը:** Հայ արքաների առաջին դրամներից մեզ հայտնի են Ծոփքի Արշամ թագավորի դրամները։ Դրանց վրա արքան պատկերված է պրոֆիլ, դեմքը անմորուս, հելլենիստական կերպարանքով, իսկ գլխին կրում է 2/3 շրջանի ձև ունեցող գտակ կամ ծայրը քիչ առաջ ծռված խույր։ Դրամների հակառակ երեսին պատկերված է լինում կամ հեծյալ, կամ արծիվ։ Մակագրությունը հունարեն է։ Ծոփքի հաջորդ թագավոր-

68 Տե՛ս նույն տեղում. Ա, իդ։
69 Տե՛ս նույն տեղում, Բ, ե։
70 Տե՛ս նույն տեղում, Բ, խէ։
71 Տե՛ս Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն, Երևան, 1939, էջ չ։

ներ Աբդիսարի և Քսերքսեսի դրամները ավելի արևելյան, քան հելլենիստական տեսք ունեն։ Հիշյալ երկու արքաներն էլ կրում են ցածրադիր, դեպի վեր նեղացող երեք ճյուղերի բաժանվող թագեր, նման այն գլխարկներին, որոնք պատկերված են հայերի և կապադովկիացիների գլուխներին՝ Պերսեպոլսի բարձրաքանդակների վրա։ Երկու արքաներն էլ, հակառակ հելլենիստական սովորության, ունեն մորուք ու թավ մազեր ծոծրակի վրա։ Աբդիսարի դրամի մյուս երեսին պատկերված է նույնպիսի արծիվ, որպիսին առկա է Արշամի դրամի վրա և հունարեն մակագրություն, իսկ Քսերքսեսի դրամի մյուս երեսին պատկերված է թռչունի թևերով մի կին՝ աստվածուհի, որը առաջ մեկնած աջ ձեռքին բռնած ունի պսակ։ Մակագրությունը այստեղ էլ հունարեն է[72]։



Ապակյա սրվակներ. Գառնի

Տիգրան Բ-ի անունով մեզ հասել են բազմաթիվ արծաթյա և բրոնզե դրամներ։ Բոլոր այդ դրամների համար բնորոշ է կտրված կոնի ձևի վերևում ատամնավոր թագը, որի վրա պատկերված են զույգ արծիվներ։ Թագը զարդարված է մարգարիտներով։ Նրա վրա ամրացված են ականջակալները և վակասը (պարանոցակալը), իսկ արքան պատկերված է ամենուրեք անմորուս և հայկական դիմագծերով[73]։ Արքայի իշխանության տարբեր տարիներին և տարբեր վայրերում հատված դրամները երևան են բերում զգալի տարբերություններ, ոչ միայն արքայի դիմանկարի (կապված տարիքի հետ), թագի զարդերի, մակագրության, այլև ոճական առանձնահատկությունների տեսակետից։ Արքայի պատկերի դիմանկարային լինելը, սակայն կասկածի ենթակա չէ։ Այն արտահայտիչ է և դրսևորվում է պետական մեծ գործչի հաստատակամությունը,

72 Տես E. Babelon, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, էջ CXCI—CC, տախտ. XXIX, Խ. Ա. Մուշեղյան, Հին Հայաստանի դրամային շրջանառության պատմությունից, ՊԲՀ, 1970, № 3, էջ 70—71։

73 Պոուկյան Զարեհ, Արտաշիսյան հարստության դրամները, Վիեննա, 1969, էջ 44—52, տախտակ 1—3, № 7—21։

*որը շեշտված է նաև նրա սուր թափանցող հայացքով։ Հայկական դիմագծերի հետ մեկտեղ արքայի պատկերն ունի բնորոշ հելլենիստական կերպարավորում։*

*Տիգրանի դրամների մյուս երեսին պատկերված է աստվածուհի, նստած դիրքով և ձեռքին մի ճյուղ։ Այս կնոջ երկար ծալքավոր զգեստի մշակումը հելլենիստական է, իսկ թագը՝ արևելյան։ Մակագրությունը՝ Տիգրանի, ինչպես և մյուս Արտաշեսյանների դրամների վրա հունարեն է։*



Կավե արձանիկների գլուխներ. Վաղարշապատ

*Արտավազդ Բ-ի դրամները Տիգրան Բ-ի դրամների նման ունեն հելլենիստական և արևելյան բնորոշ կերպավորում։ Այստեղ էլ տեսնում ենք նույն բարձր ատամնավոր թագը, արքայի անմորուս պրոֆիլը, բայց այլ է արքայի դիմանկարը, փոխվել են թագի զարդերը, թագի կապի ձևը, ականջակալը դեպի ետ է տարված և նկատելի է արքայի ականջի օղը։ Արտավազդի դրամների հակառակ երեսին պատկերված է հելլենիստական արվեստին հայտնի քառաձի կառքը։*

*Արտաշեսյան հարստության մյուս թագավորների դրամներն իրենց արվեստով նման են նախորդներին։ Բացառություն է կազմում Տիգրան Գ-ի դրամը, որի վրա արքան պատկերված է երկար մորուքով և ավելի արևելյան կերպավորումով[74]։ Հիշատակության արժանի են Տիգրան Դ-ի և Էրատո թագուհու դրամները։ Դրանցից մեկի վրա արքան կրում է նույն բարձր ու ատամնավոր թագը և պատկերված է պրոֆիլ դեմքով, առանց մորուքի, իսկ Էրատոն պատկերված է առանց թագի, մազերը գլխի շուրջը հավաքած՝ հելլենիստական և հռոմեական ոճին համապատասխան[74ա]։*

---

74 Զ. Պտուկյանը այն համարում է Տիգրան Դ-ի դրամը։ Նշված աշխ., էջ 57—59, տախտ. 4—5, № 31—37։

74ա Նույն տեղում, էջ 59, տախտ. 5, № 38։

Արտաշեսյան հայ արքաների հատած դրամներն իրենց հին արևելյան ակունքներ ունեցող տեղական և հելլենիստական ձևերի ու կերպավորումների համադրությամբ, էթնիկ և դիմանկարային առանձնահատկություններով Հայաստանի հելլենիստական բնույթի արվեստի բնորոշ գործեր են։



Կավե անոթներ. Գառնի

Հին Հայաստանում զարգացած էր նաև մատանիների, փորագիր ակերի ու կնիքների պատրաստման արվեստը։ Զանազան իրական ու առասպելական թռչունների և կենդանիների աստվածությունների պատկերների կողքին երևան են գալիս նաև պատմական անձնավորությունների պատկերներ։ Դրանցից մի օրինակ պահվում է Փարիզի ազգային մատենադարանում։ Ջվածիր նարնջա-

գույն քարի վրա փորագրված է հայ թագուհու պատկեր՝ Տիգրանի և Արտավազդի թագի նման բարձր և ատամնավոր թագով, կենտրոնից անցնում է ժապավենաձև կապը՝ ծայրերը ազատ կախված ծոծրակի վրա, կապից վերև և ներքև պատկերված են նրեքական աստղեր, թագուհու պրոֆիլ դեմքը տրված է հելլենիստական կատարյալ մշակվածությամբ, մազերը ալիքավոր սանրվածքով երևում են թագի տակից, ականջին ունի ժամանակի համար բնորոշ մանյակաձև օղ, ճիշտ նման Արտավազդ Բ-ի ականջօղին, նուրբ ծալքավոր, թեթև զգեստը ճարմանդով կոճկված է աջ ուսի վրա։ Բարձր ճաշակով ու նուրբ արվեստով կատարված այս պատկերը մ. թ. ա. I դարի հին հայկական ականագործության մի սքանչելի նմուշ է։ Լանգլուան հակված է այս պատկերը նույնացնել Էրատոյի դրամի թագակիր պատկերի հետ[75], սակայն ավելի հավանական է, որ քարի վրա փորագրված այս պատկերը իր թագով ու ոճական առանձնահատկություններով Տիգրան Բ-ի կամ Արտավազդ Բ-ի ժամանակների գործ լինի։

Փորագիր ակներով մի քանի մատանիներ կամ դրանց ակերը գտնվել են Գառնիում, Վաղարշապատում, Դվինում։ Դրանց վրա պատկերված են մարդիկ, կենդանիներ, թռչուն, մեղու։ Հանդիպում են Աթենասի և Սատիրի կամ Պան աստծու պատկերները։ Վաղարշապատում գտնված մի գեմմայի վրա փորագրված է Դեմետրայի պատկերը՝ հասկը ձեռքին։ Պեղումներով և պատահականորեն հայտնաբերված գեմմաների թվում կան ինչպես տեղական, նույնպես և Ասորիքից ու հելլենիստական այլ երկրներից բերված օրինակներ։

**Ոսկերչության արվեստը:** Մեր թվականության առաջին դարերից որոշ նմուշներ մեզ հասել են նաև մետաղագործությունից։ Դրանք արծաթագործ և ոսկերիչ վարպետների ձեռքով պատրաստված իրեր են։

Վերին աստիճանի ուշագրավ մի թաս՝ «Բակուր թագավորից» հունարեն մակագրությամբ, գտնվել է Կուբանում և պահվում է Ռոստովի մարզային թանգարանում։ Դա լավ պահպանված գլանաձև, 6,5 սմ բարձրությամբ մի թաս է։ Թասի պատերը արտաքուստ զարդարված են ռելյեֆ պատկերներով, որոնք մի ամբողջական կոմպոզիցիա են կազմում։ Այստեղ հանդիպում են Սատիրի, պարող բաքոսուհու, թատերական դիմանկարների, երաժշտական գործիքների, առյուծի, շների պատկերներ։ Շներից մեկը առջևի թաթը դրել է զոհասեղանին։ Մարդկանց և գազանների պատկերները բավականաչափ շարժուն են։ Հավանական է, որ այս ամենը կապված է բաքոսյան (նույնը՝ դիոնիսյան) տոնախմբությունների և թատերական խաղերի հետ[76]։ Ենթադրվում է նաև, որ այդ տեսարանները զուրկ չեն տեղական առանձնահատկություններից և կապվում են հայկական ավանդությունների հետ[77]։ Դիոնիսի կամ Բաքոսի տոնախմբությունները կապված էին մեռնող և հարություն առնող աստծու կամ բնության գարնանային զարթոնքի հետ։ Ըստ հին հայ ավանդությունների, նման աստ-

---

75 Տես *V. Langlois*, Numismatique de l'Arménie, Paris, 1859, էջ 39—40.

76 Տե՛ս *Б. Лукин*, Археологические находки 1935—36 гг. в окрестностях станции Тульской и Даховской близ Майкопа. Серебряная чаша с рельефными изображениями из находок станции Даховской, ВДИ, 1939, № 3, էջ 220—223։

77 Տե՛ս *Г. Гоян*, 2000 лет армянского театра, т. I, էջ 377—388։



Ոսկյա ականջօղեր և մետաղե այլ իրեր, զարդեր. Գառնի

վածությունն էր Արա Գեղեցիկը, որի վերակենդանացումը կատարվում էր շան կերպարանք ունեցող արալեզների օգնությամբ, ուստի պատահական չէ, որ դիոնիսյան կամ բաքոսյան տոնախմբությունների մեջ երևան եկող հովազներն ու ընձառյուծները մեր թասի վրա փոխարինված են Արայի պաշտամունքի հետ կապվող շների պատկերներով, իսկ նոճիները՝ բարդիներով։

Բակուր թագավորի (II դարի երկրորդ կես) անունը կրող այս թասը հունա-հռոմեական և տեղական հայկական ավանդույթների խաչավորումով և համադրությամբ ստեղծված տեղական հելլենիստական արվեստի բնորոշ արտահայտություններից մեկն է։

Ինչպես երևում է, դիոնիսյան տոնախմբությունները հին Հայաստանում որոշ չափով տարածված են եղել և նրանց հետ են կապվում ոչ միայն հիշյալ արծաթյա թասերը, այլև Շիրակի Անիում գտնված Դիոնիսի կամ Բաքոսի բրոնզե դիմակը, որի գլուխը պսակված է տերևներով և մրգերով, ճակատի վրայով անցնում է դիադեմա, իսկ երկար մորուքը պատկերված է մազերի ալիքաձև սխեմատիկ խուրձերով։ Թեև կիսախուփ աչքերը և թավ շուրթերը պատկերին հաղորդել են գինովցածի երազկոտ արտահայտություն, բայց ընդհանրապես այն չոր է, սխեմատիկ և կարող է համարվել II—III դարերի գործ։ Հին հայկական ոսկերչության մի քանի նմուշներ գտնվել են Հայաստանի առաջին մայրաքաղաք Արմավիրում, Նոր Բայազետում, Գառնիի արքայական ամրոցում։

Նոր Բայազետում գտնված ոսկյա մեդալիոնի վրա պատկերված է մի կին՝ կրծքին մանկական պատկեր և գոգին ծաղիկներ. այն արտահայտում է մայրության և արգասավորության գաղափարը, ուստի իրավացիորեն նույնացվում է Անահիտի հետ[78]։ Դա մ. թ. ա. II—I դարերի գործ է։

Արմավիրում գտնված ոսկե շրջանաձև թիթեղների (մեդալիոնների) վրա դրվագման եղանակով հանված են մարդկային մեկական պատկեր (կանանց և տղամարդկանց), որոնց գլխավերևից ամրացված է մեդալիոնը կախելու կանթը։ Մեդալիոնները լինելով փափուկ ոսկու բարակ թիթեղից, ճմրթված են և պատկերները նրանց վրա լավ չեն պահպանվել։ Այնուամենայնիվ, նշմարելի է, որ դրանք բոլորակ դեմքով, անմորուք պատկերներ են, I—II դարերի համար բնորոշ մազերի սանրվածքով։ Այդ պատկերների գլխի հարդարանքից ելնելով և նկատի ունենալով նրանց վշտալի կամ թախծոտ արտահայտությունները, մասնագետները հայտնել են այն կարծիքը, թե դրանք ողբերգակ դերասան-դերասանուհիների թատերական դիմակներ են[79]։ Բայց չի բացառվում, որ նրանք կարող էին կապված լինել պաշտամունքի հետ, ինչպես Նոր-Բայազետում գտնված մեդալիոնը։

Ոսկյա և արծաթյա առարկաներ գտնվել են նաև Գառնիում։ Բնորոշ է, որ ոսկյա ականջօղերն ունեն այն ձևը, որպիսին տեսնում ենք Արտավազդի ականջին՝ նրա դրամների վրա, և հայ թագուհու ականջին՝ վերևում հիշատակված գեմմայի վրա։ Օղերի մի զույգը, որը գտնվել է գերեզմանում, պատ-

---

78 Տե՛ս Կ. Վ. Մելիք-Փաշայան, Անահիտ դիցուհու պաշտամունքը, Երևան, 1963, էջ 117—118։

79 Տե՛ս Г. Гоян, 2000 лет армянского театра, т. I, էջ 296—297, նկ. 52—59։



Հերուններ և հուլունքներ. Գառնի

րաստված է դրվագումով և նույն եղանակով էլ նրա վրա հանված են մանր զարդահատիկներ։ Մի այլ ականջօղի վրա ագուցված է երկու ձվաձև փոքրիկ կարմիր քար, իսկ տարբեր տեղերում կպցված են առանձին պատրաստված շատ մանրիկ հատիկների խմբերը։ Հատիկներով զարդարելու տեխնիկան Հայաստանում հայտնի էր շատ հին ժամանակներից. այդպիսի առարկաներ, դեռևս բրոնզի դարից, գտնվել են Լճաշենում, Սյունիքում և այլ վայրերում։

Գառնիի գերեզմաններում գտնվել են նաև արծաթե ականջօղեր. դրանք նույնպես մանյակաձև են, սակայն շատ փոքրիկ, վերջավորվում են բարակ և սուր ծայրերով, իսկ կենտրոնական մասում հաստանում են, իրենց վրա կրելով զույգ գծիկ կամ առանձին ձուլված և կպցրած գնդիկներ։ Նույնպիսի ականջօղ է գտնվել նաև Վաղարշապատում։ Այս ականջօղերը միանգամայն նման են Միջագետքում ու Ասորիքում գտնված օրինակներին և բազմաթիվ այլ փաստերի հետ միասին վկայում են այդ հարևան երկրների միջև եղած մշակութային կապերի ու ընդհանրությունների մասին։



Հուլունքներ և կախիկներ. Գառնի

**Գեղարվեստական խեցեղեն և ապակեղեն**: *Հայաստանը մ. թ. ա. III-I դ. դ. ունեցել է նաև գեղարվեստական մշակումով և նկարազարդ խեցեղեն անոթներ, որոնց նմուշները հայտնի են Արմավիրից, Արտաշատից, Գառնիից, Դվինից և այլ վայրերից։ Արմավիրում հայտնաբերվել են արջի, ցլի գլուխներով անոթների մասեր և վարդագույն կամ բաց ֆոնի վրա կարմիր, սև երկնագույն ներկերով զարդարած ջրամաններ, ափսեներ, թասեր և այլն, իսկ Գառնիում գտնվել են համարյա ամբողջացող մի նկարուն կարասի բեկորներ, գեղեցիկ զարդերով, որոնք տարածված էին հելլենիստական աշխարհում և Հայաստանում*[20]*։ Հելլենիստական դարաշրջանի համար բնորոշ և կատարյալ են*

---

80 *Տե՛ս Г. А. Тирацян,* К вопросу о расписной керамике древней Армении, ИФЖ, *1965, № 3, էջ 169 և հաջ.։* Ժ. Դ. Խաչատրյան, *Հայաստանում գտնված գունազարդ խեցեղենի մի քանի նմուշներ, ՊԲՀ, 1966, № 1, էջ 253 և հաջ.։ Б. Н. Аракелян,* О некоторых результатах археологического изучения древного Армавире, ИФЖ, 1969, № 4, *էջ 157 և հաջ.։*




Գառնիի խճանկարը (III դար)

*Գառնիի գերեզմաններում գտնվել են նաև արծաթե ականջօղեր. դրանք նույնպես մանյակաձև են, սակայն շատ փոքրիկ, վերջավորվում են բարակ և սուր ծայրերով, իսկ կենտրոնական մասում հաստանում են, իրենց վրա կրելով զույգ գծիկ կամ առանձին ձուլված և կպցրած գնդիկներ։ Նույնպիսի ականջօղ է գտնվել նաև Վաղարշապատում։ Այս ականջօղերը միանգամայն նման են Միջագետքում ու Ասորիքում գտնված օրինակներին և բազմաթիվ այլ փաստերի հետ միասին վկայում են այդ հարևան երկրների միջև եղած մշակութային կապերի ու ընդհանրությունների մասին։*

Հուլունքներ և կախիկներ. Գառնի

**Գեղարվեստական խեցեղեն և ապակեղեն:** *Հայաստանը մ. թ. ա. III-I դ. դ. ունեցել է նաև գեղարվեստական մշակումով և նկարազարդ խեցեղեն անոթներ, որոնց նմուշները հայտնի են Արմավիրից, Արտաշատից, Գառնիից, Դվինից և այլ վայրերից։ Արմավիրում հայտնաբերվել են արջի, ցլի գլուխներով անոթների մասեր և վարդագույն կամ բաց ֆոնի վրա կարմիր, սև երկնագույն ներկերով զարդարած ջրամաններ, ափսեներ, թասեր և այլն, իսկ Գառնիում գտնվել են համարյա ամբողջացող մի նկարուն կարասի բեկորներ, գեղեցիկ զարդերով, որոնք տարածված էին հելլենիստական աշխարհում և Հայաստանում[80]։ Հելլենիստական դարաշրջանի համար բնորոշ և կատարյալ են*

---

80 *Տե՛ս Г. А. Тирацян,* К вопросу о расписной керамике древней Армении, ИФЖ, *1965, № 3, էջ 169 և հաջ.։ Ժ. Դ.* Խաչատրյան, *Հայաստանում գտնված գունազարդ խեցեղենի մի քանի նմուշներ, ՊԲՀ, 1966, № 1, էջ 253 և հաջ.։ Б. Н. Аракелян,* О некоторых результатах археологического изучения древного Армавире, ИФЖ, 1969, № 4, *էջ 157 և հաջ.։*




Գառնիի խճանկարը (III դար)

*դառնում կավե անոթների ընդհանուր ձևերը, իսկ հաճախ անոթները պատվում էին գունավոր հողերի շփոթով, և թրծելուց առաջ փայլեցվում էին քարե կոկիչներով, հաճախ էլ նկարազարդվում։ Հին Հայաստանի գունազարդ խեցեղենը իր բարձրարվեստ կատարումով և որակով կարևոր տեղ է գրավում հին հայ մշակույթի մեջ։*



**Մահճակալ. Մրեն**

*Գառնիում, Վաղարշապատում և այլուր հայտնաբերվել է զգալի քանակությամբ I—III դարերի ապակեղեն՝ կոլբայաձև, գնդաձև, ձվաձև, և երկար վզով, ամֆորիսկների և այլ ձևի սրվակներ*[81]*։ Դրանցից շատերը պատրաստված են կաղապարների մեջ՝ գեղարվեստական բարձր ճաշակով, որը երևան է գալիս նրանց թե՛ ընդհանուր ձևերի, թե՛ զարդերի մեջ։ Զգալի է կանելյուրավոր սրվակների թիվը, կան փշատերև ծառերի, կնգուղի տեսքի ուռուցիկ զարդեր, ինչպես և երկրաչափական օրնամենտներ, սափորիկների ձևի ուռուցիկ զարդեր կրող սրվակներ, թասեր, ինչպես և վերադիր զարդերով անոթներ, թասեր։ Մի սրվակի երկու հանդիպակաց կողմերից յուրաքանչյուրի վրա տեսնում ենք կնոջ ռելյեֆ գլուխ՝ մազերի ալիքաձև սանրվածքով։ Շատ սրվակների գեղարվեստական արտահայտչությունը շեշտվում է ապակուն տրված գույների շնորհիվ։ Հանդիպում են մանուշակագույն, կապույտ, կանաչ, դեղին, նարնջագույն և այլ երանգների ապակիներ*[82]*։*

81 *Տե՛ս Б. Н. Аракелян,* Гарни *II, էջ 59—69։* Բ. Ն. Առաքելյան, Գ. Ա. Տիրացյան, Ժ. Դ. Խաչատրյան, *Հին Հայաստանի ապակին, Երևան, 1969։*

82 *Տե՛ս* Բ. Ն. Առաքելյան, Գ. Ա. Տիրացյան, Ժ. Դ. Խաչատրյան, *Հին Հայաստանի ապակին, էջ 12—14։*

Կաթնավուն հասա ապակուց պատրաստված մի մեծ սրվակ օվալի ձև ունի, դեպի վեր՝ սլացիկ նեղանում է, իսկ ոչ շատ երկար վիզը վերջանում է դեպի դուրս ծռվող քոլորակ շրթունքով։ Անոթը պատրաստված է կաղապարի մեջ, նրա ոտքից վերև և վզի վրա ձույլ ապակին ծոր տալով ստացվել են օղակաձև վերադիր գոտիներ, իսկ ամբողջ անոթը զարդարված է պտտվող ճախարակի օգնությամբ, տաշելու միջոցով ստացված բլթակաձև և ձվածիր պատկերների ութ գոտիներով։ Այս անոթը ապակեգործության մի բարձրարվեստ նմուշ է։

Հայաստանում հայտնաբերված ապակեղենի զգալի մասը ներմուծված է Սիրիայից, մասնավորապես Սիդոնից, սակայն սիրիական և հելլենիստական այլ երկրների ապակեղենի նմանությամբ և նույն տեխնիկայով գեղարվեստական անոթներ արտադրվել են նաև տեղում։



Զենքերի նմուշներ. Գառնի



Երկաթե աշտանակ. Գառնի

* * *

Ծանոթությունը հին հայկական արվեստի հետ ցույց է տալիս, որ այն ընդգրկել էր հին աշխարհին հայտնի արվեստի տարբեր ու բազմազան բնագավառները և զարգացման բարձր մակարդակի էր հասել, դրսևորվելով թե՛ ավանդական-ժողովրդական ձևով և թե՛ հելլենիստական կերպավորմամբ։ Դա մի նշանավոր արվեստ էր, լիովին համապատասխան դարաշրջանի ըմբռնումներին, որոնք ու ճաշակին և խոշոր նշանակություն ունեցավ հաջորդ դարաշրջանի՝ վաղ ֆեոդալական արվեստի ձևավորման գործում։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ՀՈԳԵՎՈՐ ՄՇԱԿՈՒՅԹ

## 1. ՀԻՆ ՀԱՅ ՎԻՊԱԿԱՆ ՇԱՐՔԸ

*Վերևում տեսանք, որ հին հայկական ժողովրդական բանահյուսության մեջ տիրապետողը վաղ շրջանի առասպելներն են եղել, իրենց հին արևելյան գծերով, կապերով և դիցաբանությամբ, որոնք անցյալի պատմական եղելությունները անդրադարձնում էին հեռավոր կերպով՝ առասպելաբար, իսկ բնության երևույթների ճանաչողությունը՝ հնամենի բնապաշտական, աստղաբաշխական և նման կարգի պատկերացումներով։ Այդուհանդերձ նկատելի է, որ նրանց գլխավոր բովանդակությունը կազմում է հայ ժողովրդի, նրա պետականության առաջացման գաղափարը և պայքարը երկրի անկախության համար։*

*Մ. թ. ա. III դարից սկսած մինչև մ. թ. III դարի վերջերը հայ ժողովրդական բանահյուսության հիմնական բովանդակությունը դառնում են պատմական եղելությունները, կապված հայկական պետականության զարգացման և երկրի բարգավաճման հետ։ Այս պայմաններում հայ հոգևոր մշակույթը հարստանում է թե՛ բնույթով և թե՛ բովանդակությամբ նոր տիպի ստեղծագործություններով, ձևավորվում է հայ ավանդական վիպական շարքը, որն ընդգրկում է Տիգրան Երվանդյանի—Մեծն Տիգրանի, Երվանդի, Արտաշեսի և այլոց գործունեության ու անունների շուրջ հյուսված առասպելախառն վեպերը։ Դրա հետ միասին, հնամենի բնապաշտական պատկերացումները, պահպանվելով հանդերձ, մասամբ տեղի են տալիս համեմատաբար ավելի իրական և զարգացած աշխարհաճանաչողության, և առասպելները նկատելիորեն միահյուսվում են պատմա-վիպական շարքի հետ։*

*Ինչպես հնամենի առասպելների, նույնպես և պատմա-վիպական շարքի վերաբերյալ մեզ հասած տեղեկությունների համար պարտական ենք Մովսես Խորենացուն, որն այդ պատմությունները ու զրույցները լսել է Գողթան գավառի ժողովրդական գուսան-երգիչներից, իմաստուն մարդկանցից, քաղել է գրքերից և մեջ բերել երբեմն բառացի, երբեմն էլ վերապատմելով նրանց բովանդակությունը՝ իր սեփական միջամտություններով ու բացատրություններով։*

*Ավանդական վիպական շարքը հիմնականում կազմավորվել է մ. թ. ա. II—մ. թ. III դարերում, իր մեջ առնելով տարբեր շերտեր և նստվածքներ, հաճախ գործող անձերի իրար հետ շփոթումներով ու ժամանակագրության ակընհայտ խախտումներով։*

**Մեծն Տիգրանի վեպը:** *Վերևում մասամբ ծանոթացանք Տիգրան Երվանդյանի և Աժդահակի շուրջը հյուսված վեպին, որը Խորենացու մոտ միահյուսված է Մեծն Տիգրանի վեպի հետ։*

*Եթե մարերի դեմ Կյուրոսի դաշնակից Տիգրանը՝ Տիգրան Երվանդյանն է, իսկ վիշապ Աժդահակի դեմ արշավող՝ վիշապ հեծած Տիգրանը վիշապաքաղ Վահագնի առասպելական կերպարն է ներկայացնում, ապա Մարերի երկիրը նվաճող և Աժդահակին սպանող վիպական Տիգրանը Տիգրան Մեծն է։*

*Տիգրան Երվանդյանի վիպական կերպարի մեջ ակնբախ երևան են գալիս Տիգրան Մեծի գործերն ու գծերը։*

*Իրանի տերերը երկյուղում էին Տիգրանի զորությունից։ Իրոք նա նվաճեց նրանց տերության հյուսիս-արևմտյան մարզերը և հաղթական դաշինք կնքելով՝ իր դստերն ամուսնացրեց պարթևական արքայի հետ։ Այդ իրողությունն իր անդրադարձումն է գտել վեպում, որտեղ առասպելական վիպասանությամբ պատմվում է, թե Աժդահակը երազում տեսնում է, որ Տիգրանը նստած արծվաթև վիշապի վրա, սլանում է դեպի մարերի մայրաքաղաքը և սպանում իրեն՝ Աժդահակին։ Վախենալով, թե երազը կարող է իրականանալ, Աժդահակը ամուսնանում է Տիգրանի քրոջ (պետք է լիներ դստեր)՝ Տիգրանուհու հետ՝ կամենալով նրան դարձնել իր գործակիցը Տիգրանի դեմ։ Տիգրանուհին հայտնում է եղբորը Աժդահակի դավադիր խորհուրդը, և հայոց արքան զորք հավաքելով Կապադովկիայից, Վրաստանից, Աղվանքից, պատերազմում սպանում է Աժդահակին և հաղթանակ տանում։ Տիգրանին է վերագրվում նաև Աժդահակի կին Անուշին իր դուստրերի և հպատակների հետ միասին Արաքսի աջ ափին («առ մեծ լեառն Մասեաց», մինչև Նախճավանի և Գողթանի կողմերը) վերաբնակեցնելը[1], որով Խորենացին բացատրում է Մուրացյան տոհմի առաջացումը։*

*Այդ Տիգրան Մեծն է, որ գրավում է հույների երկիրը, այսինքն՝ Սելևկյան Ասորիքը, Կիլիկիան, հիմնադրում է Տիգրանակերտ քաղաքը, մինչդեռ վեպում այդ գործերը վերագրված են Տիգրան Երվանդյանին։*

*Ինչպես երևում է, Տիգրանի և Աժդահակի վեպը գրի է առնված եղել։ Խորենացին հիշատակում է իր գրավոր աղբյուրը՝ «Հիւսումն պիտոյից»[2] կամ «Ջորս հազներգութիւնք» անվան տակ[3], որ Մ. Աբեղյանը նույնն է համարում[4]։*

*Խորենացին՝ թերևս վեպի խոսքերով, փառաբանում է Տիգրանին և նրա գործերը՝ «Նա տղամարդկանց գլուխ կանգնեց և ցույց տալով քաջություն՝ մեր ազգը բարձրացրեց և մեզ, որ լծի տակ էինք, դարձրեց շատերին լուծ դնողներ և հարկապահանջներ»[5]։ Վիպական երանգ ունի նաև Տիգրանի զորքի նկարագրությունը. «Հետևակ կովողները ձիավոր դարձան, պարսերով կռվողներն հաջող աղեղնավորներ, լախտերով կռվողները զինվեցին սրերով ու տեգավոր*

---

1 *Տե՛ս* Խորենացի, Ա, *լ*։

2 *Տե՛ս նույն տեղում, Ա, ժթ։*

3 *Տե՛ս նույն տեղում, Ա, իա։*

4 Մ. Աբեղյան, *Հայ վիպական բանահյուսություն, Երկեր, հատ. Ա, Երևան, 1966, էջ 98—99։*

5 Խորենացի, *Ա, իդ։*

նիզակներով, մերկերը պատվեցին վահաններով ու երկաթե զգեստներով։ Եվ երբ նրանք մի տեղ հավաքվեին, միայն նրանց արտաքին տեսքն ու նրանց պահպանակների ու զենքերի փայլն ու շողքը բավական էին թշնամիներին հալածելու և վանելու»[6]։

Վեպը և Խորենացին գովերգում են նաև Տիգրանի արտաքին և հոգևոր բարեմասնությունները, ասելով, թե շատ օգտակար գործեր կատարեց «...այս խարտյաշ և մազերի ծայրը գանգուր... Տիգրանը, գունեղ երեսով, քաղցր նայվածքով, ուժեղ սրունքներով, գեղեցիկ ոտներով, վայելչակազմ և թիկնավետ, կերակուրների և ըմպելիքների մեջ պարկեշտ, ուրախությունների մեջ օրինավոր, որի մասին մեր հները, որոնք փանդիռներով երգում էին, ասում էին, թե մարմնի ցանկությունների մեջ էլ չափավոր է եղել, մեծիմաստ և պերճախոս և լի օգուտ (հատկություններով), որ պիտանի են մարդուն»[7]։ Ապա Խորենացին ավելացնում է, թե իր համար ավելի սիրելի բան չկա, քան «սրա մասին եղած գովեստներն ու պատմությունը երկարել»[8]։ Վեպում Տիգրանը կատարյալ է դյուցազունների թվում՝ «հասակով և բնությամբ»[9]։

Վիպական սիրված հերոսը, իհարկե, նաև արդարադատ է, միևնույն աչքով է նայում թե զորեղին և թե նվաստին։
րով է նայում թե զորեղին և թե նվաստին։

**Արտաշեսի վեպը:** Հին հայ վիպական շարքի մեջ ամենից ավելի կատարելության մեջ ապրել են դարեր, պատմվել ու երգվել են, հղկվել, հարստացել նորանոր շերտերով, արտացոլել են նաև ավելի ուշ ժամանակների եղելությունները, պատմական այլ գործիչներին առնչվող դեպքեր՝ կապելով դրանք հայ ժողովրդի պատմության մեջ խոշորագույն դեր խաղացած երկու արքաների անունների հետ։

Արտաշեսի վեպի առաղձը կազմում են միասնական հայ պետականության առաջացումն ու ամրապնդումը, երկրի բարգավաճումը։ Վեպը պետք է արդարացներ մինչև Արտաշեսը գոյություն ունեցած Երվանդունիների թագավորության կործանումը և հիմնավորեր Արտաշեսի գահակալությունը։

Երվանդը, որը, ըստ վեպի, գահակալել էր պարսից Դարեհ Վերջին թագավորի օրոք, միայն կիսով չափ (մոր գծով) էր Արշակունի, ուրեմն չէր կարող օրինավոր թագավոր ճանաչվել և մշտական վախ ուներ, որ Սանատրուկի զավակները կխլեն գահը նրանից։ Երվանդը կոտորում է Սանատրուկի որդիներին, բայց ինչպես սովորական է վեպում, եղեռնից ազատվում է մեկը՝ Սանատրուկի որդի Արտաշեսը, որին սնուցում փախցնում է Հերի կողմերը, պահում հովիվների մեջ։ Այնուհետև նրա դայակ Սմբատ Բագրատունին թաքցնում է նրան լեռներում, ապա անցկացնում Իրան՝ Դարեհ թագավորի մոտ։ Երվանդը ամեն կերպ հետամուտ է լինում իր ձեռքը գցել Արտաշեսին, այդ նպատակով մարդիկ է ուղարկում Դարեհի և Սմբատի մոտ, պնդում, թե Արտաշեսը

6 Նույն տեղում։
7 Նույն տեղում։
8 Նույն տեղում։
9 Նույն տեղում, Ա, իդ։

արքայազն չէ, ուստի գահի նկատմամբ իրավունքներ չունի, բայց ապարդյուն[10]։ Արտաշեսը Սմբատի հետ միասին զորքով վերադառնում է Հայաստան և պատերազմ է սկսում Երվանդի դեմ։ Վտանգի պահին Արտաշեսին փրկում է նրա ստնտուի որդի Գիսակը։ Արտաշեսի կողմն է անցնում նաև վիշապազն Արգամը (Արգավանը)։ Երվանդը պարտություն կրելով սպանվում է, իսկ Արտաշեսը հաղթանակ տարած գահակալում է Հայոց աշխարհում[11]։ Երկրում հաստատվում է նոր հարստություն։ Երվանդի թագավորությունն էլ լրիվ ապօրինի չի համարվում, քանի որ նա կիսով չափ Արշակունի է, բայց գերադասությունը տրվում է Արտաշեսին։ Երվանդի կերպարը երկվական է։ Ըստ վեպի նա ծնվել է անկարգ խառնակցությունից՝ ցլի հետ և ունի չար աչք, այնչափ դժնի, որ նրա պալատական սպասավորները ամեն այգաբացին որձաքար վեմ էին բռնում նրա առաջ, որը նրա հայացքից պայթում էր։ Բայց Երվանդը ներկայանում է նաև շատ կարևոր դրական գծերով. նա շինարար է, հիմնադրել է Երվանդաշատ մեծ քաղաքը, Երվանդակերտ դաստակերտը, Բագարանը, որտեղ փոխադրել է ոչ միայն աստվածների, այլև հայոց արքաների նախնիների արձանները, նա խաղաղությամբ է պահում երկիրը։ Արտաշեսն էլ արքայավայել է թաղում նրան, մահարձան կանգնեցնելով նրա գերեզմանի վրա[12]։

Միավորված հայկական թագավորության հիմնադիր Արտաշեսի կերպարը վեպում ամենից ավելի է փայփայված և ամբողջական։ Նա ընդարձակել է, զորեղացրել երկիրը, կարգավորել ներքին գործերը, նա շինարար է, հիմնադիրը իր անունը կրող Արտաշատ հոյակապ մայրաքաղաքի, նա պաշտպանում է երկիրը արտաքին թշնամիներից։ Այստեղ վեպը և պատմական ճշմարտությունը լիովին համընկնում են։ Այս դրվագների համար Խորենացին, ինչպես ինքն է նշում, ունեցել է գրավոր աղբյուր՝ Դարանաղյաց Անիի Արամազդին նվիրված տաճարի Ողյումպ քրմի «Մեհենական պատմությունը»[13]։

Վեպում առանձին տեղ են գրավում ալանների և Սաթենիկի հետ կապված դրվագները, որոնք թեև Տրդատ Ա-ի ժամանակներին են վերաբերում[14], բայց

---

10 Տե՛ս Խորենացի, Բ. լը։

11 Տե՛ս նույն տեղում, Բ, խզ։

12 Տե՛ս Խորենացի, Բ, խբ։ Վեպի այս ճյուղի հետ է կապվում նաև Վարդգես մանկան վերաբերյալ երգը, թեև Խորենացին այն առնչում է Երվանդ Սակավակյացի հետ։

Վեպում ասվում է.

«Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն
Ի Տուհայ գաւառէն, զՔասաղ գետով,
Եկեալ նստաւ զՇրեշ բլրով,
ԶԱրտիմէդ քաղաքաւ զՔասաղ գետով,
Կռել կոփել զդուռնն Երուանդայ արքայի» (Խորենացի, Բ, կե)։

Դուռը կռել-կոփել, նշանակում է՝ աղջիկ ուզելու խնամախոս գնալ, և վեպում էլ պատմվում էր, որ Վարդգեսը ամուսնացել է Երվանդ Սակավակյաց արքայի քրոջ հետ, հիմնադրել է Վարդգեսավանը։ Այստեղ Տիգրան Մեծը բնակեցրել է Հրեաստանից բերած գերիների մի մասը, որի շնորհիվ նա դարձել է շուկա ունեցող քաղաքագյուղ. այնուհետև Վաղարշ թագավորը, ամրացնելով այն պարսպով՝ կոչում է Վաղարշապատ։

13 Տե՛ս Խորենացի, Բ, խը։ Ողյումպ քրմի ու նրա պատմության մասին մանրամասն տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, գլուխ երրորդ։

14 Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հատ. Ա, էջ 55։

վերադրվել են Արտաշեսին։ Սրանք Խորենացին քաղել է անմիջականորեն ժողովրդական երգիչներից։

Ալանները մյուս լեռնականների հետ միասին գրավելով Վրաց աշխարհի կեսը, ասվում է վեպում, մեծ ամբոխով խուժում են Հայաստան։ Արտաշեսը, հավաքելով իր զորքերը, նրանց հետ է մղում Կուր գետի հյուսիսային ափը։ Գերի է ընկել ալանների արքայաժառանգը, ուստի ալանների արքան հաշտություն է խնդրում, երդվելով, որ ալանները այլևս Հայոց աշխարհի դեմ դուրս չեն գա, բայց Արտաշեսը չի համաձայնվում։ Ապա գալիս է ալանների արքայադուստր Սաթենիկը և կանգնելով գետի մյուս ափին, մի դարավանդի վրա, ձայնում է.

«Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս,
Որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց.
Ե՛կ հաւանեաց բանից աչագեղոյ դստերս Ալանաց՝
Տալ զպատանիդ,
Զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց՝
Զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն,
Կամ ծառայեցուցանելով ի ստրկաց կարգի պահել,
Եւ թշնամութիւն յաւիտենական
Ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել»[15]։

Արտաշեսը շատ է հավանում խելոք ու գեղանի Սաթենիկին և իր դայակ Սմբատին ուղարկում է ալանների արքայի մոտ՝ խնդրելով արքայադստեր ձեռքը։ Բայց ալանների մոտ սովորություն կար՝ մեծ գլխագին վերցնել աղջկա համար, ուստի արքան ասում է.

«Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս
Հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրուց
Ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց»[16]։

Հանդուգն էր Ալանաց արքայի պատասխանը. մի՞թե Արտաշեսը չէր կարող վճարել պահանջվող գլխագինը։ Բայց հաղթողի համար ավելի պատվավոր կլիներ դիմել այդ ժամանակներից ի վեր նույնքան սովորական մի միջոցի՝ առևանգման։

15 «Քեզ եմ ասում, քաջ տղամարդ Արտաշես,
Որ հաղթեցիր ալանների քաջ ազգին.
Ե՛կ լսի՛ր ալանների գեղաչյա դստերս խոսքերին
Եվ տուր պատանուն։
Որովհետև օրենք չէ, որ քենի համար դյուցազունները
Ուրիշ դյուցազն զարմերի կենդանությունը ջնջեն
Կամ իբրև ծառա ստրուկների կարգում պահեն,
Եվ երկու քաջ ազգերի մեջ
Հավիտենական թշնամություն հաստատեն» (Խորենացի, Բ, ծ)։
(Այստեղ և հետո թարգմանությունը՝ Ստ. Մալխասյանի)։

16 «Եվ ո՞րտեղից քաջ Արտաշեսը պիտի տա
Հազար հազարներ ու բյուր բյուրեր
Քաջերի սերունդ այս կույսի՝
Ալանների արքայազն օրիորդի համար» (Խորենացի, Բ, ծ)։

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
Ընկեց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին,
Արագ հասուցանելով ի բանակն իւր»[17]։

Սաթենիկի ծնողներին մնում էր հաշտվել, ինչպես լինում է այդպիսի դեպքերում. Թշնամիները բարեկամանում են և հարսանիքի ժամանակ.

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեանն Սաթինկանն»[18]։

Խորենացին հարսանիքի վերաբերյալ բերելով միայն այս հատվածը, բացատրում է, թե մեր թագավորները սովորություն ունեին իբրև փեսա դահլիճի դուռը հասնելիս դրամներ շաղ տալ, նույնպես և թագուհիները առագաստի սենյակում՝ մարգարիտ։ Դա մի սովորություն է, որ երկար ժամանակ պահպանվում էր ժողովրդի մեջ՝ շաղ էին տրվում չամիչ, չոր մրգեր, ցորեն, մրգեղեն, իբրև նշան պտղաբերության, արգասավորության։

Արտավազդի վեպը: Արտաշեսը ունենում է մի քանի զավակներ, որոնցից ավագի՝ Արտավազդի անվան շուրջը հյուսվում է վեպի նոր ճյուղը՝ Արտավազդի վեպը։

Վեպում պատմվում է, որ Արտաշեսը մեծ պատիվներ էր շնորհել Երվանդի դեմ մղած պատերազմում իր կողմն անցած Արգավանին (Արգամին), որը պետության մեջ երկրորդն էր համարվում և մոտ էր արքունիքին։ Բայց նա դրանով չի բավարարվում և ընտանեկան խարդավանք ու դավեր է նյութում Արտաշեսի դեմ։ Սաթենիկ թագուհին տարփանքով տենչում էր Արգավանի սերը, իսկ Արգավանը ձգտում էր հայոց գահին։

«Ձաշ գործեալ Արգաւանայ ի պատիւ Արտաշիսի,
Եւ խարդաւանակ լեալ նմին ի տաճարին վիշապաց»[19]։

Արտաշեսը մեծ ցասումով վերադառնում է Արտաշատ և իր Մաժան որ-

---

17 «Հեծավ արի Արտաշես արքան գեղեցիկ սև ձին,
Եվ հանելով ոսկեօղ շիկափոկ պարանը,
Եվ անցնելով գետն իբրև սրաթև արծիվ,
Եվ նետելով ոսկեօղ շիկափոկ պարանը,
Գցեց մեջքը Ալանաց օրիորդի,
Եվ շատ ցավեցրեց փափուկ օրիորդի մեջքը,
Արագորեն իր բանակը հասցնելով» (Խորենացի, Բ, ծ)։

18 «Ոսկի անձրև էր տեղում
Արտաշեսի փեսայության ժամանակ.
Մարգարիտ էր տեղում
Սաթենիկի հարսնության ժամանակ» (Խորենացի, Բ, ծ)։

19 «Արգավանը ճաշ սարքեց ի պատիվ Արտաշեսի
Եվ նրա դեմ դավ լարեց վիշապների դահլիճում» (Խորենացի, Ա, լ)։

դուն ղորքով ուղարկում է Մուրացյան կամ Վիշապազանց տոհմի դեմ՝ հրամայելով շատերին կոտորել, իսկ Արգավանի դղյակը հրկիզել։

Բայց Արտավազդը, որ էր «այր քաջ, անձնահաճ և հպարտ», չի բավականանում գրանով, այլև ինքը խլում և սեփականացնում է Նախճավանը և միշապազունների բոլոր տիրույթները՝ Արաքսից հյուսիս։ Վեպում ասվում է.

«Արտաւազդայ ոչ գտեալ քաջի որդւոյն Արտաշիսի
Տեղեկիկ ապարանից ի հիմնանալն Արտաշատու՝
Նա անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ»[20]։

Վիշապազունները պատերազմով են պատասխանում Արտավազդին, բայց սա ոչնչացնում է նրանց տոհմը, սպանում ծերունի Արգավանին և խլում նրանց բոլոր տիրույթները։ Մուրացյան կամ Վիշապազանց տոհմից փրկվում են «անհշան ոմանք կրտսերք», որոնք ապավինում են Արտաշեսի արքունիքը[21]։

Վիպական կերպարանք է ստացել նաև Արտաշեսի մահը։ Նա մեռավ առաջացած հասակում, 41 տարի թագավորելուց հետո, բայց կյանքից կարոտ, ափսոսանքով հիշելով նավասարդյան տոնախմբությունները, վերնախավի կենցաղի համար այնքան բնորոշ որսորդությունը.

«Ո՛ տայր ինձ զծուխ ծխանի,
Եւ զառաւօտն Նաւասարդի,
Զվազելն եղանց
Եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք,
Եւ թմբկի հարկանէաք.
Որպէս օրէն է թագաւորաց»[22]։

Արտաշեսը թաղվում է մեծ շուքով ու պատիվներով. արքաների և մեծամեծների թաղման մի բնորոշ պատկեր է դա հին Հայաստանի կյանքից։ Նրան թաղում են ոսկե դագաղում, բազմաթիվ արդ ու զարդերով, զենքերով։ Արքայի «գահը շրջապատում էին որդիներն ու ազգականների բազմությունը. և սրանց մոտ՝ զինվորական պաշտոնյաները, նահապետները և նախարարական գնդերը և ընդհանրապես զորականների վաշտերը, ամենքը զինված, որպես թե պատրաստվում են պատերազմի. առջևից պղնձե փողեր էին հնչեցնում, իսկ ետևից սևազգեստ ձայնարկու կույսեր և լացկան կանայք, բոլորից վերջը ռամիկների բազմությունը»[23]։ Ասվում է նաև, թե շատերը, Արտաշեսի սիրելի կանանցից, հարճերից, ծառաները մեռան կամ, ինչպես Խորենացին է մեկնաբանում, կոտորվեցին ըստ հեթանոսական սովորության և հետը թաղվեցին։ Այս ամենը տեսնելով Արտավազդը նեղսրտած դիմում է հորը.

20 «Արտավազդը չգտավ Արտաշեսի քաջ որդին,
Ապարանքի փոքրիկ տեղ, Արտաշատը հիմնվելիս՝
Անցավ գնաց և շինեց Մարաստանում Մարակերտը» (Խորենացի, Բ, ԾԱ)։

21 Տե՛ս Խորենացի, Բ, ԾԱ։

22 Կ. Կոստանյան, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Աղեքսանդրապոլ, 1910, թուղթ 33, էջ 87։ Վեպի այս հատվածը ուսումնասիրողները հակված են վերագրելու Արտաշես Գ-ին։

23 Խորենացի, Բ, ԿԱ։

«Մինչ դու գնացեր,
Եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար,
Ես աւերակացս ո՞ւմ թագաւորեմ»[24]։

Հայրն անիծում է չար ու նախանձ զավակին.

«Եթե դու յորս հեծցիս
յԱզատն ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին
յԱզատն ի վեր ի Մասիս,
Անդ կայցես, և զլոյս մի տեսցես»[25]։

Անեծքը կատարվում է։ Խորենացին գրում է, որ պառավները Արտավազդի մասին զրուցում են, թե արգելված մնում է մի քարանձավի մեջ, երկաթե շղթաներով կապված, երկու շուն կրծում են նրա շղթաները. և նա ջանք է անում դուրս գալ ու աշխարհին վերջ տալ, բայց ասում են, դարբինների կռանահարության ձայնից կապանքներն ամրանում են։ Ուստի դեռ մինչև այժմ էլ դարբիններից շատերը, առասպելին հետևելով, միաշաբթի (կիրակի) օրերը երեք կամ չորս անգամ կռանով խփում են սալին, որպեսզի, ասում են, Արտավազդի շղթաներն ամրանան[26]։

Արտավազդի չար բնույթը վեպը բացատրում է նրանով, որ ծննդի ժամանակ Աժդահակի սերնդի կանայք կախարդել են նրան, իսկ Գողթան երգիչներն ասում են.

«Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ,
Եւ դև փոխանակ եդին»[27]։

Արտավազդի չար բնավորության և վիհում շղթայված լինելու զրույցը սերտորեն աղերսվում է նույն Խորենացու մոտ պատմված՝ պարսից Բյուրասպի Աժդահակի առասպելի հետ. Աժդահակի ուսերին վիշապներ են բուսնում, նրա չարությունը գնալով մեծանում է։ Հրուդեն անունով հերոսը նրան շղթայում է պղնձի շղթաներով և տանելով Դըմբավընդ լեռան այրերը, կապում այնտեղ ու ինքը որպես արձան կանգնում նրա առջև։ Սարսափած Աժդահակը մնում է հնազանդ և չի կարող ելնել ու ապականել երկիրը[28]։

---

24 «Երր դու գնացիր.
Ու բոլոր երկիրը քեզ հետ տարար,
Ես այս ավերակների վրա
24 Ի՞նչպես թագավորեմ» (Խորենացի, Բ, կա)։
25 «Թե դու (ձի) հեծնես որսի գնաս
Ազատն ի վեր, դեպի Մասիս,
Քաջքերը քեզ բռնեն տանեն
Ազատն ի վեր, դեպի Մասիս,
Այնտեղ մնաս, լույս չտեսնես» (Խորենացի, Բ, կա)։
26 Տե՛ս նույն տեղում։
27 «Վիշապազունները մանուկ Արտավազդին գողացան և նրա տեղ դրին դև» (Խորենացի, Բ, կա)։
28 Տե՛ս Խորենացի, Ա, հավելված՝ «Յաղագս Բիւրասպեայ Աժդահակայ»։

Նման զրույցներ ունեն նաև գերմանացիները։ Շղթայված Լուցիֆերի կապանքներն ամրացնելու համար ևս դարբինները սովորություն ունեն տոն օրը երեկոյան երեք հարված տալ սալին։

Բայց Արտավազդի կերպարի մեջ երկվություն կա։ Եթե վեպում և Խորենացու մոտ նա չար է, ապա Եզնիկ Կողբացու մոտ նա բարի արքայազն է, որին փակված պահում են չար դևերը։ Նա տակավին կենդանի է ու անհավատները (հեթանոսները) սնոտի հույս ունեն, թե նա պիտի դուրս գա և տիրի մեր երկրին[29]։ Արտավազդի կերպարի դրական կողմը հետագայում ուժեղանում է։

Մանուկ Աբեղյանը նշում է, որ վիհում փակված Արտավազդին իր երկակի բնավորությամբ միանգամայն նման է Փոքր Մհերը, որը փակված է Վանա ժայռում, նույնպես իր հոր անեծքով[30]։ Վաղուց հայտնված է նաև այն կարծիքը, թե Արտավազդի առասպելն իր հին կերպարանքով Միհր-Միթրայի հավատալիքի արտահայտության մի նոր փոփոխակ է հայ միջավայրում (ըստ այդ հավատալիքի, Միհրը պետք է հանդես գա աշխարհի գոյության վերջում, որպեսզի կռվի չարի դեմ և հաղթի նրան)[31]։

Ժայռին գամված կամ քարայրում շղթայված հերոսների վերաբերյալ առասպելական կամ վիպական զրույցները տարածված և սովորական են։ Դրանց թվին են պատկանում Պրոմեթևսի, վրաց Ամիրանի, հարավ-սլավոնական Մարկո Կրալևիչի մասին զրույցները։

Հին հայ վեպը, ինչպես տեսնում ենք, էապես տարբերվում է հին առասպելից։ Նա դուրս է գալիս առասպելական ըմբռնումների և պատկերացումների աշխարհից և խարսխվում իրական աշխարհի, նրա պատմության, կյանքի և կենցաղի վրա։ Նրան արդեն բնորոշ են ոչ միայն պատմական անցքերի և եղելությունների անդրադարձումը, այլև հասարակական ու մարդկային ընդհանրացված շատ գծեր՝ իշխանության տենչ, հիմնված ժառանգական իրավունքի վրա, պայքար իշխանության և հողային տիրույթների համար, պատերազմ, կողոպուտ և գերեվարություն, ագահություն և նախանձ, դավադրություններ, սեր և խարդավանք՝ հաճախ համեմված հնամենի սովորույթներով և կենցաղային մանրամասնություններով։

Հին հայ վեպը եղել է ժողովրդական գեղարվեստական ստեղծագործություն, պատմվել ու երգվել է փանդիռնի ուղեկցությամբ, ուստի եթե ոչ ամբողջովին, ապա գեթ այն հատվածներով, որոնք երգվել են, եղել է չափածո ստեղծագործություն, որպիսին է վեպից մեզ հասած կտորների մեծ մասը։ Դրանք ժողովրդական բանաստեղծության ադամանդներ են հավիտենական անմար փայլով, սքանչելի իրենց պարզությամբ, անմիջականությամբ և պատկերավորությամբ, ժողովրդական ոճական գեղեցկությամբ։

Միակողմանի և սխալ կլիներ հին հայ վեպը կերտված համարել իշխող դասակարգի, բարձր խավերի միջև սոսկ նրանց իդեալներին համապատասխան։ Այն, իրոք, շատ բան է անդրադարձնում իշխող վերնախավի կյանքից,

---

29 Տե՛ս Եզնիկ Կողբացի, Եղծ աղանդոց, Կ. Պոլիս, 1871, էջ 128։

30 Տե՛ս Մ. Աբեղյան. Երկեր, հատ. Ա, էջ 148—149։

31 Թ. Ավդալբեկյան. Միհրը հայոց մեջ, «Հայագիտական հետազոտություններ», Երևան, 1969, էջ 62. 63։

կենցաղից, բարքերից և գաղափարախոսությունից, դրանով էլ նա պատմական վեպ է, բայց նրա էությունը ոչ թե իշխողների և նրանց գաղափարախոսության փառաբանությունն է, այլ հայ ինքնուրույն պետականության և անկախության համար մղվող պայքարի գաղափարը, չարի անկումը, բարու հաղթանակը, երկրի շենությունն ու խաղաղությունը. դրանով նա ժողովրդական է։

## 2. ՀԻՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ ԵՎ ԿՐՈՆԸ

**Հնագույն հավատալիքներ և սնոտիապաշտություն։** *Հին հայկական աշխարհաճանաչողության, պատկերացումների և հավատալիքների մեջ զգալի տեղ էին գրավում բնապաշտական, կոսմոգոնիական ըմբռնումները։*

*Մարդը մշտապես ձգտել է ճանաչել բնության բազմազան երևույթները և բացատրություն տալ դրանց։ Արևն ու լուսինը, նրանց խավարումները, երկնային լուսատուները, կայծակն ու որոտը, մթնոլորտային տեղումները, հրաբուխն ու երկրաշարժը, քամին ու փոթորիկը, ջուրն ու կրակը, ցուրտն ու խորշակը, պտղաբերությունն ու բերքի կորուստը, ծնունդն ու մահը և բնության շատ այլ երևույթներ միշտ էլ խոշոր ազդեցություն են գործել մարդու մտածողության վրա։ Եվ բնության գիտական ճանաչումից դեռևս շատ հեռու մարդը հազար ու մի առասպելական, իրակեղծ մեկնություն էր տալիս դրանց։*

*Երկնային լուսատուները և համաստեղությունները մարդիկ վաղուց ի հետե դիտում էին իբրև կենդանի էակների և կենդանակերպերի (զոդիակ) և նրանց իշխանություն էին վերագրում մարդկանց ծնունդի ու մահվան, ուժի ու զորության, բախտի և դժբախտության նկատմամբ։ Եզնիկ Կողբացին, Անանիա Շիրակացին և V—VII դարերի այլ հեղինակներ պահպանել են որոշ տեղեկություններ հին հայկական հավատալիքների և սնոտիապաշտական ըմբռնումների մասին։*

*Նայած թե երկնակամարում որ կենդանակերպն է երևացել՝ այս կամ այն անհատը ծնվելիս, նրան վերագրում էին երկար կամ կարճատև կյանք, բախտ կամ դժբախտություն։ Օրինակ, Առյուծը 12 կենդանակերպերից մեկն էր, և «զառեւծէն ասեն՝ թե որ ի նմայն ծնանի, քաջասիրտ և հպարտ լինի»[32], իսկ ով Այծեղջյուր կենդանակերպի տակ ծնվի՝ «խոհեմ, գոռոզ և դաւաճան լինի» կամ «զցլին ասեն՝ թե ըստ նմանութեան ցլու զօրաւոր և անձնեայ է և որ ի նմայն ծնանի»[33]։*

*Եզնիկ Կողբացին, արտահայտելով դեռևս իր ժամանակ պահպանված հավատալիքները, խոսում է այն պատկերացումների մասին, թե վիշապները երկինք էին բարձրացվում եզների միջոցով[34]։ Ինչպես տեսնում ենք, եզների և վիշապների շուրջ հյուսված առասպելները, որոնք գալիս էին հնագույն ժամանակներից, տակավին պտտվում էին ժողովրդի մեջ։ Պատկերացում կար նհանգների՝ չար հրեշտակների մասին, որոնք կարող են հափշտակել կալի բերքը կամ երեխաներին։ Նման առասպելական զրույցների ու հավատալիքների թիվը մեծ էր։*

---

32 Անանիա Շիրակացի, *Տիեզերագիտություն և տոմար, Երևան, 1940, էջ 20։*

33 *Նույն տեղում։*

34 *Տե՛ս* Եզնիկ Կողբացի, *Եղծ աղանդոց. Թիֆլիս, 1912, էջ 102։*

Չկարողանալով ճանաչել բնության ու կյանքի շատ ու շատ երևույթները, մարդը նրանց գերբնական ուժ էր վերագրում կամ համարում էր նման ուժերի գործողությունների արգասիք, ինքն էլ դիմելով իրակեղծ և սնոտի միջոցների օգնությանը։

Դարեր շարունակ մարդիկ մշակել էին բնության և հասարակական կյանքի երևույթները բացատրելու և նրանց ընթացքի վրա «ներգործելու» բազմաղան միջոցներ, եղանակներ, հմայական գործողություններ, ծեսեր և արարողություններ, կախարդանքներ, հմայություններ, աղոթքներ և անեծքներ, հարյուկներ և գուշակություններ։

Պաշտամունքի հետ կապված արարողությունները, ծեսերը, կրոնական և կենցաղային հանդեսները, ընդհուպ մինչև ծննդի, հարսանիքի հանդեսներն ու թաղման ծեսերը ուղեկցվում էին թատերականացված ներկայացումներով, երգ ու պարով, նվագով։

Հելլենիստական դարաշրջանում երկրի տնտեսության, քաղաքների, արհեստների, գիտության և արվեստի բավականաչափ բուռն զարգացման, հին աշխարհի մշակույթին հաղորդակից լինելու հետ միասին, մեծ առաջադիմություն ունեցավ նաև հասարակական միտքը, աշխարհաճանաչողությունը։ Սակայն բնության երևույթների իրական, պարզունակ, մատերիալիստական ըմբռնումների կողքին դեռևս շատ ավելի լայն տարածում ունեին իրակեղծ. առասպելաբանական և պաշտամունքային բնույթ ստացած ըմբռնումներն ու պատկերացումները և դրանց վրա հենվող սնոտիապաշտությունը։

**Հին հայկական հեթանոսական կրոնը:** Հին հայկական կրոնը ձևակերպվել էր հայկական ցեղերի կրոնական ըմբռնումների հիման վրա և Մերձավոր արևելյան միջավայրում՝ կրելով վերջինիս զգալի ազդեցությունը։ Եթե նախորդ շրջանում (VI—IV դարեր) հայկական կրոնի մեջ դեռևս գերակշռում էին բնապաշտական և կոսմոգոնիական պատկերացումներն ու նրա մեջ որոշակի երևում էին նաև հայ ժողովրդի կազմի մեջ մտած առաջին ցեղախմբերի տեղական աստվածությունների հետքերը, ապա այժմ վերջնականապես ձևավորվել էր ամբողջ հայ ժողովրդին պատկանող մարդակերպ աստվածների մի համակարգ, որը միավորվել էր ոչ միայն ազգակցական ընդհանուր կապերով, հայր աստծու գլխավորությամբ, այլև նվիրապետական (հիերարխիկ) սկզբունքներով, երբ յուրաքանչյուր աստծու կամ աստվածուհու հատկացվում էր իր որոշակի տեղը և դերը, որոնք ավելի ընդհանրացված, հաճախ վերացական բնույթ էին կրում և ընդգրկում էին ոչ միայն բնության երևույթների, այլև հասարակական հարաբերությունների ոլորտները։

Հայկական աստվածների համակարգը կամ պանթեոնը բաղկացած էր բազմաթիվ աստվածություններից, որոնք կապեր և զուգահեռներ ունեին փոքրասիական և իրանական միջավայրում։

**Արամազդ:** Պանթեոնի գլուխ կանգնած էր Արամազդը, իբրև գերագույն աստված, բոլոր աստվածների հայրը, երկնքի և երկրի արարիչը, որը լիություն և բարօրություն է պարգևում աշխարհին և արիություն բաշխում մարդկանց[35]։

---

35 Ագաթանգեղոս, 68։

Նա բնությամբ բարի էր։ Արամազդի անունից պարզ երևում է, որ նա համապատասխանում է իրանական Ահուրա Մազդային։ Սակայն Արամազդը չի նույնանում Ահուրա Մազդայի հետ։ Բարի բնություն ունենալով հանդերձ, Արամազդը կարող էր և պատժել։ Այստեղ չենք տեսնում իրանական կրոնին հատուկ՝ չար և բարի աստվածների երկվությունը, քանի որ Ահուրա Մազդայի հակոտնյա՝ չարի աստված Ահրիմանը կամ նրա զուգահեռը հայոց մեջ չէր պաշտվում։

*Արամազդի տաճարը կառուցված էր Եփրատի ափի Անի ամրոցում (Դարանաղյաց գավառ), որտեղ դրված էր նրա արձանը*[36]*։ Այս ամրոցում էին գտնվում նաև հայոց արքաների դամբարանները։*

**Արևի աստվածը:** Կյանքի արգասավորության, պտղաբերության գլխավոր պայմաններն էին համարվում ջերմությունը, որի պարգևողը արեգակն էր, և խոնավությունը, որի կրողը համարվում էր լուսինը։ Կյանքի գոյության համար անհրաժեշտ «ամեն ինչ մատակարարում են արեգակը և լուսինը»[37].— ասում է Անանիա Շիրակացին, հիշատակելով հինավուրց զրույցները։ Հին Հայաստանում արեգակը արդեն մարդակերպ աստված էր, նույնացված Տիրի հետ, որի տաճարը գտնվում էր մայրաքաղաք Արմավիրում[38]։

Հայաստանում տեղ է գտել նաև արևի աստված Միհրի պաշտամունքը, որը իրանական միջավայրից տարածվեց դեպի արևմուտք՝ ընդգրկելով նաև Հռոմեական պետության սահմանները։ Հայաստանում նա համարվում էր Արամազդի որդին, Արեգակի և կրակի աստվածը, նրա տաճարը գտնվում էր Դերջան գավառի Բագահառիճ գյուղում[39]։

Տիգրան Մեծի օրոք Միհրի հետ համադրվեց նաև ասորական ծագում ունեցող Բարշամին աստվածը, որի արձանը կանգնեցված էր Թորդան ավանում։

**Անահիտ:** Անահիտ աստվածուհու պաշտամունքը հին արևելյան արմատներ ուներ, որոնք կապվում էին պտղաբերության և սիրո Իշտար աստվածուհու պաշտամունքի հետ։ Անահիտի պաշտամունքը Հայաստան անցել է Իրանից, սակայն նրա հայկական տարատեսակը տարբերվում էր ինչպես հին արևելյան Իշտարի պաշտամունքից, որքանով որ սիրո դիցուհու ֆունկցիաները, տարաբաժանվելով նրանից, անցել էին Աստղիկին, այնպես էլ իրանական Անահիտի պաշտամունքից, որքանով որ վերջինս ավելի շատ իշխանություն շնորհող և հովանավորող աստվածուհի էր։

Անահիտի պաշտամունքը տարածված էր նաև Փոքր Ասիայում, բայց ոչ մի տեղ նրան այնքան մեծ ու բազմակողմանի զորություն չվերագրվեց, որքան Հայաստանում, ուր Անահիտի պաշտամունքը մեծ ժողովրդականություն էր վայելում։ Ստրաբոնը վկայում է, որ պարսից բոլոր աստվածությունները պաշտվում են նաև մարաց և հայոց կողմից, «բայց Անահիտի պաշտամունքը հայոց մեջ գերազանցում է բոլորից. զանազան տեղեր նրա անվան տաճարներ են կանգնեցված, հատկապես Եկեղիքում»[40]։

---

36 Տե՛ս Խորենացի, Բ, ծզ։

37 «Անանիա Շիրակացու մատենագրությունը», Երևան, 1944, էջ 325։

38 Տե՛ս Խորենացի, Բ, ը։

39 Տե՛ս Ագաթանգեղոս, 790։

40 Strabo, XI, 14, 16։

Անահիտը Լուսնի աստվածուհին էր՝ Արեգակին հավասար, նրա պես հզոր, որովհետև համարվում էր կենսատու խոնավություն կրողը՝ «Դայեակ անձրեւաց և սնուցիչ բուրաստանաց։ Քանզի առաջին հարքն զլուսին դայեակն և սնուցիչ բուսոց անուանեցին»[41]։

Բայց նա ոչ միայն պտղաբերության, արգասավորության դիցուհին էր, այլև հովանավորող աստվածուհին, ուստի անվանված է Մեծն Անահիտ տիկին, «որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ... մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան»[42], որով ապրում և կենդանություն է ստանում Հայոց երկիրը[43]՝ «Ոսկեհատ, Ոսկեմայր, Ոսկեծին»[44]։ Անահիտը ամբողջ երկրի և Արտաշատ մայրաքաղաքի հովանավորողն էր։ Աղբյուրներում հիշատակվում են նրա չորս մեհյանները, կանգնեցված Եկեղյաց գավառի Երեզ ավանում, Արտաշատ մայրաքաղաքում, Աշտիշատում և Անձևացյաց գավառի Դարբնաց քար անվանված վայրում։ Երեզը համարվում էր Հայոց թագավորների բուն ու մեծ մեհյանների, Անահիտի պաշտամունքի և մեհյանի վայրը, որտեղ դրված էր դիցուհու ոսկյա արձանը, իսկ Եփրատ գետի ձախ ափին փռված էին այդ հարուստ մեհյանի տիրույթները, որտեղ արածում էին զոհաբերության սպիտակ երինջները[45]։

Անահիտը արգասավորության և մայրության աստվածուհին էր, որի պաշտամունքի հետ կապված էր նաև բարձր դասի օրիորդների կրոնական հետերիզմը՝ ազատ սեռական անձնատրությունը տղամարդկանց մինչև ամուսնանալը, որ պաշտամունքային բնույթ կրելով հանդերձ, շատ ավելի հին ժամանակներում գոյություն ունեցած խմբամուսնության մնացուկ էր[46]։

Վահագն: Ամպի, անձրևի, ամպրոպի աստվածն էր Վահագնը, որի իրանական զուգահեռն ու նախատիպն էր Վերեթրագնան։ Հետզհետե նրա բարդ կերպարը ավելի տրոհվում, պարզանում է և հիմնականում նա մնում է ամպրոպի աստված։ Նա գողանում է Բարշամի հարդը, թափթփելով իր անցած ճանապարհին, որից գոյանում է Ծիր Կաթինը։ Նա միաժամանակ քաջ մարտնչող է և ձեռք է բերում ռազմի աստծու որոշ, թեև թույլ գծեր։ Նա քաջություն էր պարգևում հայոց ռազմիկներին։ Խորենացուց իմանում ենք, որ Վահագնը ձեռք էր բերել մի նոր գիծ՝ նա համարվում էր Տիգրանի որդին և Վահունյաց բրմապետական տոհմի նախնին, որը նախապես մարդ լինելով հետագայում էր աստվածացել։ Եվհեմերական կոչվող այս մտայնությունը, թե աստվածները նախապես կենդանի մարդիկ են եղել, լայն տարածում ուներ հելլենիստական դարաշրջանում։

Աստղիկը: Լույսի (աստղ), սիրո ու գեղեցկության աստվածուհին էր, ուստի և անվանվել է «Ոսկեծղի» և «Վարդամատն»։ Աստղիկը կապված է եղել ջրի

---

41 «Անանիա Շիրակացու մատենագրությունը», էջ 326։

42 Ագաթանգեղոս, 53։

43 Տե՛ս նույն տեղում. 68։

44 Տե՛ս նույն տեղում, 809։

45 Տե՛ս Plut., Luc., 24։

46 Strabo, XI, 14, 16։ Տե՛ս Ֆ. Էնգելս, Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1965, էջ 87—88։

և արգասավորության պաշտամունքի հետ։ Նրան է նվիրված եղել Վարդավառի տոնը[47]։

Աստղիկը սերում էր հին արևելյան սիրո աստվածուհիներից, մասնավորապես ասորական Աստարտեից։ Նա Վահագնի տարփածուն էր, այդ իսկ պատճառով Տարոնի Աշտիշատ կոչվող վայրում գտնվող նրա մեհյանը համարվում էր «սենեակ Վահագնի»[48]։ Իբրև սիրո աստվածուհի Աստղիկը օժտված էր հմայիչ գեղեցկությամբ։ Ժողովրդի մեջ պահպանված ավանդական մի զրույցում պատմվում է, որ Աստղիկը սովորություն ուներ գիշերները լոգանք ընդունելու Եփրատի (Արածանիի) կիրճի իր լողարանում։ Հայ կտրիճները նրա մերկությունը տեսնելու և նրա գեղեցկությամբ զմայլվելու համար լեռների լանջերին կրակ են վառել, բայց աստվածուհին նրանց տարփավոր հայացքներից քողարկվելու համար մշուշ է տարածել հովտում, մինչև լեռների ստորոտը։ Այս մշուշից էլ, ասում են, երկիրը կոչվել է Մուշ[49]։

**Նանեն** Արամազդի դուստրն էր՝ իմաստության և ողջախոհության դիցուհին։ Նանեական մեհյանը գտնվում էր Եփրատի աջ ափին՝ Թիլ ավանում[50]։

**Տիրը կամ Տյուրը** իբրև Արևի աստված իր տեղը զիջելով Միհրին, ձեռք բերեց նոր դեր, դարձավ երազացույց-երազահան, քրմական գիտությունների դպիր, ուսման և ճարտարապետության աստված։ Նրա մեհյանը կառուցված էր Արտաշատից ոչ հեռու, ճանապարհի եզրին[51]։

Հին հայերը ունեին բոլորովին ինքնատիպ երկու աստվածություն. դրանցից մեկն էր Ամանորը, որը նոր տարվա աստվածն էր։ Նրան նվիրված էին ամենաբեր նոր պտղոց տոները[52]։ Մյուսը հյուրընկալության աստվածն էր, Վանատուրը, այսինքն օթևան տվողը։ Այս երկու աստվածների տոնը նշվում էր նոր տարվա օրը. «պաշտէին յուրախութեան Նաւասարդ աւուր»,— ասում է Ագաթանգեղոսը[53]։

Անհայտ ծագում և նշանակություն ունեն Գիսանե և Դեմետր աստվածները, որոնց կուռքերը կանգնեցված էին Տարոնում գտնվող նրանց մեհյաններում։ Նրանք համարվում էին ազգակից՝ հայր և որդի կամ եղբայրներ։ Նրանց վերագրվող հնդկական ծագումը հաստատող փաստեր չկան[54]։

**Հայկական հեթանոսական պանթեոնի հելլենականացումը:** Հելլենիստական մշակույթի և նրա ավանդությունների զարգացման մի արտահայտությունն էլ եղավ աստվածությունների հայկական պանթեոնի համադրումը հելլենականի հետ, ըստ որում ելակետը այն բնութագիրն էր, որը տրվում էր աստվածներին։ Այսպես, Արամազդը նույնացվեց Զևսի կամ Դիոսի հետ, Անահիտը՝ Արտեմիսի, Միհրը և Բարշամինան՝ Հեփեստոսի, Վահագնը՝ Հերակլեսի, Աստ-

---

47 Տե՛ս Ղ. Ալիշան, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց, Վենետիկ, 1895, էջ 283։

48 Տե՛ս Ագաթանգեղոս, 809։

49 Տե՛ս Գ. Սրվանձտյան, Գրոց-բրոց, Կ. Պոլիս, 1874, էջ 97—98։

50 Տե՛ս Ագաթանգեղոս, 786։

51 Տե՛ս նույն տեղում, 778։

52 Տե՛ս նույն տեղում, 836։

53 Նույն տեղում։

54 Տե՛ս Հովհան Մամիկոնյան, Պատմութիւն Տարօնոյ, Երևան, 1941, էջ 36, 97, 98։

դիկը՝ Աֆրոդիտեի, Նանեն՝ Աթենասի, Տիրը՝ Ապոլոնի հետ։ Դրսից բերվեցին այդ աստվածությունների արձանները և դրվեցին հայկական մեհյաններում։ Հին հայ գրականության մեջ (Խորենացի, Ագաթանգեղոս, Բուզանդ), նրանց հայկական անունների հետ գործածվում են նաև հելլենական անունները։

Տեղական և հելլենական աստվածների համադրության հիմքում, իհարկե, ընկած էր նրանց պաշտամունքի համամասնությունը, սակայն ճիշտ է նկատված, որ այդ աստվածները չէին կարող կատարելապես համապատասխան լինել մեկը մյուսին։ Վահագնը, օրինակ, իբրև ամպրոպային աստված համադրըվել է Հերակլեսի հետ, բայց միաժամանակ նրա «աչքունքն արեգակունք» էին, նա գեղեցիկ պատանի էր, ուստի և մերձեցվել է նաև Ապոլոնին, որն իր հերթին համադրվել էր Հելիոս-արևի հետ։ Հայոց Արամազդը տարբերվում էր ոչ միայն իրանական Ահուրա Մազդայից, որ նշվեց վերևում, այլև հունական հզոր աստված, ահեղ, շանթահարող Զևսից, որի հետ համադրված էր, ինչպես վկայում է Խորենացին[55], բայց որին զիջում էր իր համեստ դիրքով։ Զևսին վերագրվող հյուրընկալության հատկանիշն էլ Հայաստանում տարանջատված էր և վերագրվում էր առանձին մի աստծու՝ Վանատուրին։

Անահիտը իբրև լուսնի աստվածուհի համադրվել է Արտեմիս դիցուհու հետ, որը դեռևս մ. թ. ա. IV դարում նույնացվել էր Սելենե-Լուսնին։ Բայց մի՞թե կարելի է նույնություն տեսնել նրա և Մեծ տիկին, հզոր Անահիտի միջև, որը, ինչպես վերը նշվեց, համարվում էր «փառք ազգիս մերոյ և կեցուցիչ... մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեանս», որով ապրում և կենդանություն է ստանում Հայոց երկիրը։

Հայոց Նանեն, իմաստության և ողջախոհության այդ դիցուհին, իր համեստ դերով զիջում էր Աթենասին և չուներ վերջինիս վերագրվող որոշ հատկանիշները։ Ապոլոնն, ընդհակառակը, Տիրի կամ Միհրի հզորությունը չուներ։

Այսպիսով, հայկական և հելլենական աստվածների համադրության մեջ հայկական դարավոր ավանդույթները պահպանեցին իրենց նշանակությունը և վճռական դեր խաղացին։

Հին հայոց աստվածների պատկերները (արձաններ, բարձրաքանդակներ) մեզ չեն հասել (բացի Անահիտին վերագրվող բրոնզե գլխից, որ, սակայն, բերված է դրսից)։ Այս պարագաներում խոշոր նշանակություն են ստանում կիսահայկական և, ինչպես տեսանք վերևում, Հայաստանի հետ քաղաքական սերտ կապեր ունեցող, Կոմմագենե երկրի, մասնավորապես Նեմրութ լեռան սրբատեղիները, որոնք և .րող են պատկերացում տալ ժամանակի հայկական սրբատեղիների մասին։ Լեռան արևմտյան և արևելյան լանջերին Կոմմագենեի տեր Անտիոքոս Ա-ի (մ. թ. ա. 69—34 թթ.) կառուցած սրբատեղին հայտնի է դեռևս անցյալ դարի վերջերից[56]։ Այստեղ, արհեստական երկու ընդարձակ հարթակ-

55 Տե՛ս Խորենացի, Բ, ժդ։

56 Տե՛ս *K. Humann und O. Puchstein*, Reisen in Kleinasien und Nordsyrien, Textband, Berlin. 1890, էջ 232—252: American Journal of Archaelogy, № 59, 1955. Bulletin of American Schools of Oriental research, № 147, 1955: *T. Goell*, Throne above the Euphrates, „National geography", vol. 119, № 3, March 1961, էջ 390 և հաջ։

ների վրա, կանգնեցված են հնգական հսկա արձաններ, որոնք պատկերում են գահերի վրա նստած աստվածների և Անտիոքոսի նախնիներին ներկայացնող մեծ թվով բարձրաքանդակներ, որոնցից քչերն են ամբողջական հասել մեզ։ Հայտնաբերված սալերի վրա արված են հունարեն արձանագրություններ, որոնցից իմանում ենք, թե ովքեր են պատկերված նրանց վրա։

Քանդակները կատարված են հելլենիստական ոճով, բայց տեղական առանձնահատկություններով, ինչպես և տեղական՝ արևելյան զգեստավորումով և խույրերով։ Այդ իմաստով նրանք ներկայացնում են պատմական և արվեստագիտական մեծ արժեք։ Այդ ամենից բացի, արձանագրությունների շնորհիվ պարզվում է, թե տեղական և հելլենական ո՞ր աստվածներն են իրար հետ համադրվել, ըստ որում ստացվում է համադրության (սինկրետիզմի) մի ամբողջ համակարգ, որը մեծ կարևորություն է ներկայացնում ոչ միայն Կոմմագենեի, այլև Հայաստանի համար[56ա]։

Կոմմագենյան գլխավոր աստվածը՝ Օրոմազդը, ինչպես և հայոց Արամազդը, համադրված է հունական Զևսի հետ։ Կոմմագենյան մյուս տեղական աստվածը՝ Արտագնեսը, որը անունով և բնույթով համապատասխանում էր հայոց Վահագնին, նրա պես համադրված է Հերակլեսի հետ, կրում է տեղական զգեստներ, սրածայր խույր, կերպավորված է հելլենական մորուքով։ Բայց նա կրում է հելլենական մի երկրորդ անուն ևս՝ Արես։ Միհրը (Միթրա) համադրված է միաժամանակ Ապոլոնի, Հելիոսի և Հերմեսի հետ, երևույթ, որ կարելի է կոմմագենյան հելլենիստականացված պանթեոնի առանձնահատկություն համարել։ Այս երեք աստվածների կողքին դրված է Կոմմագենե դիցուհու արձանը։ Այս դիցուհին երկրի հովանավորի իրեն վերագրվող դերով մերձենում է հայոց Անահիտին։ Կոմմագենե դիցուհին բացի դեմքի հելլենիստական կերպարանավորումից, պահպանել է իր տեղական կերպարը, անունը և զգեստավորումը։ Վերջապես, աստվածների շարքում է տեղավորված նաև իրեն՝ Անտիոքոս Ա-ի հսկա արձանը, որով ցուցադրվում է նրա աստվածացման հանգամանքը։

**Քրմերի դերը հասարակական կյանքում։** Մեհյանները և քրմական դասը իրենց ձեռքում էին կենտրոնացնել գիրը, գրականությունը, դպրոցն ու կրթությունը, քաղաքացիական ակտերի (ծնունդ, ամուսնություն, ընտանիք և ընտանեկան հարաբերություններ) կարգավորումն ու տնօրինումը, օրենքների սահմանումը, դատական իրավասությունը, գուշակությունն ու աստվածների առջև բարեխոսությունը, անգամ բժշկությունը, մի խոսքով, ողջ հոգևոր կյանքը։ Այսպիսով, կրոնն ու քրմությունը բավականաչափ մեծ ուժ էին ներկայացնում։ Մանավանդ, որ կրոնական հաստատությունները՝ մեհյաններն ունեին մեծամեծ հողային տիրույթներ, անշարժ ու շարժական գույք, ոսկեղեն և արծաթեղեն, բազմազան և մեծաքանակ իրեր, գանձեր, որ նրանք ձեռք էին բերում ամեն եղանակով և որ նրանց նվիրաբերում էին ամենքը՝ հասարակ շինականից կամ ռամկից սկսած մինչև մեծամեծներն ու արքաները։

---

56ա Տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, էջ 28—33։

## 3. ԴԻՐ-ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Հայաստանում գործածվող գրերը նախամեսրոպյան շրջանում:** Նախամեսրոպյան գրի և գրականության հարցը դեռևս իր բավարար լուծումը չի գտել հայագիտության մեջ[57]։ Բացառված չէ, որ հին Հայաստանում գոյություն ունեցած լինեն ինքնուրույն նշանագրեր, որոնք գործ են ածվել հայկական մեհյաններում, և այդ նշանագրերի, ինչպես նաև, հավանաբար, արամեական և հունական տառանիշերի օգնությամբ գրվող հայալեզու գրականություն՝ նույն մեհյանների շրջանակներում[58]։

Մինչև մեսրոպյան գրերի ստեղծումը այդ հնագույն, բայց ըստ երևույթին սահմանափակ կիրառություն ունեցող, նշանագրերի կողքին հայերը առատորեն օգտագործում էին հարևան պետությունների գրերն ու լեզուները։ Աքեմենյան և սելևկյան պետություններից, որոնց հետ Հայաստանը քաղաքական և մշակութային սերտ կապերի մեջ էր գտնվում, հայերը ստացան արամեերեն և հունարեն գրերն ու լեզուները։ Մ. թ. առաջին դարերում Հայաստանում կիրառություն գտան նաև պահլավական և ասորական գրերն ու լեզուները։

Հունարենը և արամեերենը Հայաստանում օգտագործվել են երկար ժամանակ, երբեմն զուգահեռաբար։ Սակայն այդ երկու լեզուների օգտագործման մեջ գոյություն է ունեցել էական տարբերություն. Թագավորական դիվանի, պետական, վարչական լեզու լինելով հանդերձ, հունարենը հանդիսացել է նաև հասարակության վերնախավի՝ գոնե նրա մի մասի համար կենդանի, խոսակցական լեզու։ Արամեերենը փոխ է առնվել որպես գրասենյակային լեզու և այդպիսին էլ մնացել մինչև վերջ, երբ տեղի է տվել հայերենին։

**Պետական-պաշտոնական, գրասենյակային լեզու:** Օտար լեզուների կիրառության մասին պետական-պաշտոնական բնագավառում երկու կարևոր վկայություններ են պահպանվել հայ մատենագրության մեջ։ Մ. Խորենացին հիշատակում է, որ նախքան հայ գրերի գյուտը, կային պարսից և հունաց գրերը, «որոնցով գրված այժմ գտնվում են մեզ մոտ անթիվ քանակությամբ գրություններ, գյուղերի ու գավառների, յուրաքանչյուր տների սեփականության, ընդհանուր վեճերի ու դաշինքների, մանավանդ սեփական ազնվականության վերաբերյալ»[59]։

Ղազար Փարպեցու վկայությունը վերաբերում է հայկական գրերի ստեղծման նախօրյակին. խոսելով Վռամշապուհ թագավորի արքունիքի և այնտեղ աշխատող դպիրների մասին, պատմիչը նշում է, որ հայոց թագավորների վճիռներն ու հրովարտակները գրի էին առնվում ասորի և հույն գրով. «Վասն զի ասորի և յոյն գրով վճարէին յայնժամ զգործ թագաւորացն Հայոց՝ արքունի դպիրքն, զվճռոցն և զհրովարտակացն»[60]։

---

57 Նախամեսրոպյան գրերի և գրականության մասին մանրամասն տե՛ս հայ գրերի գյուտին վերաբերող համապատասխան բաժնում (հատ. 2)։

58 Տե՛ս Ա. Գ. Աբրահամյան, Հայ գրի և գրչության պատմություն, Երևան, 1959, գլ. 2։ Է. Պիվազյան, Նախամեսրոպյան հայ գրի և գրականության հարցի շուրջը, «Մեսրոպ Մաշտոց» հոդվածների ժողովածու, Երևան, 1963, էջ 285—324։

59 Խորենացի, Ա, . գ։

60 Ղազար Փարպեցի, Պատմություն հայոց, Ա, 10։

*Արամեերեն լեզուն աքեմենյան կայսրության պայմաններում հիմնականում գրասենյակային լեզվի դեր էր խաղում[61]։ Ավելի քան հավանական է, որ Աքեմենյանների նաև հայկական սատրապության գրասենյակի պաշտոնական լեզուն ևս արամեերենն էր, որը օգտագործվել է Հայկական լեռնաշխարհում դեռևս ուրարտական ժամանակաշրջանում։ Այդ տեսակետից հատկանշական է Դիոդոր Սիկիլիացու հաղորդումը այն կեղծ նամակի մասին, որը 317 թվականին Երվանդը, Հայաստանի կառավարիչը, իբր թե ուղարկած է եղել Պարսից աշխարհի (Պերսիսի) սատրապ Պևկեստասին։ Նամակին արժանահավատ բնույթ տալու համար, պատմիչի վկայությամբ, այն գրվել է «սիրիական տառերով», այսինքն՝ արամեական տառերով[62]։*

*Արամեերենը, որպես գրասենյակային լեզու, ժամանակավորապես ետ է մղվում մ. թ. ա. III դարում։ Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքները նպաստավոր պայմաններ ստեղծեցին Արևելքում հունարեն լեզվի տարածման համար։ Հավանաբար մ. թ. ա. III դարի սկզբից հունարենը պաշտոնական լեզու դարձավ Հայաստանում։ Համենայն դեպս, Արմավիրի արձանագրությունները վկայում են, որ մ. թ. ա. III դարի վերջերին, Երվանդունիների պետական գրասենյակային լեզուն հունարենն էր։ Արձանագրություններից մեկը Արմավիրի քաղաքացիների և նրանց քրմապետ-թագավորի ուղերձն է Երվանդ թագավորին[63]։ Այն վկայում է, որ հելլենիստական մյուս երկրների նմանությամբ, քաղաքի և թագավորի միջև պաշտոնական նամակագրությունը վարվում էր հունարեն լեզվով[64]։ Մյուս արձանագրությունը, հավանաբար, թագավորական գրասենյակի կողմից սելևկյան տոմարի մուտքն է վավերացնում Հայաստանում, երրորդը՝ թագավորի անունից գրված, անհայտ տեղից ժամանած ինչ-որ ներկայացուցչին ուղղված ողջույնի տեքստ է, իսկ չորրորդը՝ պետական առաջնահերթ նշանակություն ունեցող իրադարձությունների մասին մի զեկուցագիր է[65]։ Պետական փաստաթղթերը նախքան հրապարակվելը կազմվում էին գրասենյակում, պապիրուսի կամ մագաղաթի վրա, որից հետո տեքստը փոխադրվում էր քարի վրա։ Այդ նշմարելի է Արմավիրում, քանի որ դատելով պապիրուսային գրության ձևերը հիշեցնող տառանիշերից, արձանագրությունները հանդիսանում էին պապիրուսների վրա գրված տեքստերի փորագրված պատճենները[66]։*

---

[61] *Տե՛ս* Handbuch der Orientalistik, *W. B. Henning*, Mitteliranisch, Leiden, 1958.

[62] *Տե՛ս Diod., XIX, 23։*

[63] *Արմավիրի արձանագրությունները վկայակոչվում են՝ К. В. Тревер,* Очерки по истории культуры древней Армении *(էջ 137—147) աշխատությունից. առաջին արձանագրության տեքստը տե՛ս էջ 134—135։*

[64] *C. B. Welles*, Royal correspondence in the Hellenistic Period. A Study in Greek Epigraphy, New Haven, 1934.

[65] *Տե՛ս К. В. Тревер,* Очерки по истории..., *նաև՝* Ս. Տեր-Հակոբյան, *Արմավիրի հունարեն երկրորդ արձանագրությունը, «Նյութեր հին Հայաստանի պատմության մասին», Երևան 1935, А. И. Болтунова,* Греческие надписи Армавира, ИАФАН, 1942, 1—2, Հ. Մանանդյան, *Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ, Երևան, 1946։*

[66] *Տե՛ս А. И. Болтунова, նույն տեղում։ Համեմատիր նաև՝ Б. Д. Граков-ի գրախոսականը Բոլտունովայի աշխատության մասին,* ВДИ, *1946, № 1։*



Արմավիրի հունարեն արձանագրություններից մեկը

Սևանա լճի շրջակայքում, ինչպես նաև Զանգեզուրում հայտնաբերված Արտաշես Ա-ի սահմանաքարերի վրա փորագրված արամեական արձանագրությունները վկայում են, սակայն, որ արամեերենը տակավին պահպանում էր իր կենսունակությունը որպես պետական-վարչական լեզու[67]։ Ճիշտ է այդ տեքստերում հանդիպում են մի շարք լեզվական անհարթություններ, որոնք անհարիր են արամեերեն լեզվի սկզբունքների հետ։ Սակայն այդ անհարթությունները դեռ բավական չեն ժխտելու արձանագրությունների լեզվի արամեական բնույթը։ Այս հանգամանքը վկայում է հայկական սատրապության և Երվանդունի առաջին թագավորների գրասենյակային լեզվի վերակենդանացման մասին։ Այդ միջնորդությամբ Արտաշեսի ժամանակաշրջանից կամուրջ է գցվում դեպի Աքեմենյանների պետական-պաշտոնական լեզուն և առհասարակ վարչության կազմակերպման ձևերը[68]։ Արամեերենի հետագա ճակատագրի մասին քիչ տվյալներ ունենք։ Մ. թ. ա. I դարում, երբ Տիգրան Բ-ի և նրա հաջորդների օրոք Հայաստանում հատկապես զարգանում է հելլենիստական մշա-

---

[67] Տե՛ս А. Я. Борисов, Надписи Артаксия (Арташеса), царя Армении, ВДИ, 1946, № 2: И. М. Дьяконов, К. Б. Старкова, Надписи Артаксия (Арташеса I), царя Армении, ВДИ, 1952, № 2; Գ. Ա. Տիրացյան, Արտաշես Ա-ի նորագյուտ արամեատառ արձանագրությունը, Տեղ. ՀԳԱՀԳ, 1957, № 10։ А. Г. Периханян, Арамейская надпись из Зангезура, ИФЖ, 1965, № 4.

[68] Տե՛ս И. М. Дьяконов, К. Б. Старкова, Надписи Артаксия (Арташеса I), царя Армении; Г. А. Тирацян, Ахеменидские традиции в древней Армении, „XXV Международный конгресс востоковедов. Доклады советской делегации", М., 1960.

*կույթը, հնարավոր է, որ արքունիքը նախապատվությունը տված լինի հունարենին՝ որպես պաշտոնական լեզվի, թեպետ դժվար է կարծել, որ արամեերենը վերացվել է պետական-վարչական բոլոր ոլորտներից։*

*Արշակունի թագավորի անունից գրված արամեական արձանագրության բեկորը Գառնիից[69] մի նոր վկայություն է արամեերենի հարատևության մասին պետական գրասենյակում մ. թ. առաջին դարերում, մի հանգամանք, որը հաստատվում է, ինչպես տեսանք, մեր մատենագիրների տվյալներով ևս։*

*Ինչ վերաբերում է հունարենին, ապա անմիջականորեն արքունական գրասենյակից է ծագում հայ թագավորի նամակը տիգրանակերտցիներին[70]։ Այն, ինչպես և Ղազար Փարպեցու վկայությունը, ցույց է տալիս, որ ընդհուպ մինչև հայ գրերի գյուտը, արամեերենի և ասորերենի կողքին հունարենը հիմնական այն օտար լեզուներից էր, որոնցից օգտվում էին Հայաստանում, արքունական գրասենյակում և ընդհանրապես պետական-պաշտոնական կյանքում։*



Գառնիի արամեերեն արձանագրությունը

**Հայաստանում գտնված օտարալեզու արձանագրություններ:** *Հայաստանի տերիտորիայում հայտնաբերված և հին Հայաստանի պատմությանը անմիջականորեն վերաբերող՝ օտար լեզուներով գրված արձանագրությունների թիվը այնքան էլ մեծ չէ։ Մեզ են հասել արամեական ինը արձանագրություններ, որոնցից հինգը միանման տեքստեր են, հունական շուրջ 16 արձանագրություններ և լատինական յոթ արձանագրություն, երեքը նույնպես միանման[71]։*

*Պատմական իրադարձություններով և սոցիալ-տնտեսական հետաքրքիր երևույթներով հարուստ մի երկրում, ինչպիսին Հայաստանն էր, որտեղ ծավալվել էր շինարարական լայն գործունեություն, զարմանալի է թվում վիմագրական նյութերի նմանօրինակ սակավությունը։ Սակայն չպետք է մոռանալ այն*

---

69 *А. Г. Периханян*, Арамейская надпись из Гарни, ИФЖ, 1964, № 3.

70 *Տե՛ս Г. Х. Саркисян*, Тигранакерт, М., *1960, էջ 76 և հաջ.։*

71 *Հին Հայաստանի օտարալեզու արձանագրությունների մեծ մասը ի մի է բերված Կ. Վ. Տրևերի վերևում հիշատակված աշխատության երկրորդ մասում։ Վերջին տարիներում հայտնաբերված արձանագրությունների մասին նախորդ ծանոթագրություններում մեջբերված հրատարակություններից և ուսումնասիրություններից բացի, տե՛ս նաև* Բ. Ն. Առաքելյան, *Լատինական արձանագրություն Արտաշատ մայրաքաղաքից, ՊԲՀ, 1967, № 4։*

համգամանքը, որ արձանագրությունները գտնվել են պատահականորեն և միայն շնչին բացառությամբ է, որ արդյունք են հնագիտական սիստեմատիկ պեղումների։

Օտար լեզուներով գրված արձանագրությունները մեծ նշանակություն ունեն Հայաստանի մ. թ. ա. III—մ. թ. IV դարերի պատմության և կուլտուրայի ուսումնասիրման համար, եթե հաշվի առնենք, որ այդ ժամանակաշրջանը լուսաբանող մատենագրական նյութը պակասավոր է։ Վիմական արձանագրությունները կարևոր տվյալներ են մատակարարում Հայաստանի քաղաքական պատմության վերաբերյալ։ Օրինակ, Արմավիրի արձանագրությունները պատկերում են մ. թ. ա. III դարի վերջի իրադարձությունները՝ կապված Երվանդ Վերջինի անձի հետ։ Խարբերդում, Էջմիածնում, Տիգրանակերտում և Արտաշատում գտնված հունական և լատինական արձանագրությունները անդրադարձնում են մ. թ. I—II դարերի Հայաստանի պատմության անցքերը և նշանակություն ունեն հայ-հռոմեական հարաբերությունների ուսումնասիրման համար։ Օտար լեզվով գրված արձանագրություններից որոշ տվյալներ կարելի է քաղել պատմական անցքերի ժամանակագրության համար, իսկ քանի որ հունարեն և արամեերեն արձանագրությունների մեծ մասը թագավորի անունից են փորագրված, հետաքրքիր տեղեկություններ ենք ստանում հայ թագավորների, հատկապես Արշակունիների տիտղոսների մասին։

Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական պատմության մի քանի հանգուցային հարցեր իրենց արտացոլումն են գտել վիմագրական նյութի մեջ։ Արմավիրի և Տիգրանակերտի արձանագրությունները հնարավորություն են ստեղծել գիտական հիմքերի վրա դնելու Հայաստանի հելլենիստական տիպի քաղաքի ուսումնասիրման հարցերը և ընդհանրապես փաստելու այդ տիպի քաղաքների գոյությունը հին Հայաստանում[72]։ Նշված այդ արձանագրություններում, մի դեպքում հիշատակված են Արմավիրի քաղաքային համայնքի լիիրավ քաղաքացիները՝ «արմավիրցիները», իսկ մյուս դեպքում քաղաքային համայնքը (այս անգամ՝ Տիգրանակերտի) բնութագրող սպեցիֆիկ տերմինը՝ պոլիտեյան։ Նույն այդ արձանագրությունները անփոխարինելի տվյալներ են հաղորդում քաղաքի ինքնավար դրության մասին պետության կազմում, թագավորի և քաղաքի փոխհարաբերությունների և քաղաքի արտոնությունների ու պարտավորությունների մասին և ակնարկներ են պարունակում քաղաքի ներքին կառուցվածքի մասին։

Ինչպես վերը տեսանք, հին Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի մի այլ կարևորագույն բնագավառի՝ հողային հարաբերությունների հարցերի հետ են առնչվում Արտաշես Ա-ի արամեական արձանագրությունները, որոնք տեղեկացնում են հողերի բաժանմանը վերաբերող թագավորի միջոցառումների մասին։

Հայտնի են մի քանի շինարարական բնույթ ունեցող արձանագրություններ Գառնիից, Խարբերդից, Էջմիածնից, Արտաշատից։ Հատկապես մեծ է Տրդատ Ա-ի հունարեն արձանագրության արժեքը Գառնիի ամրոցի ճարտարապետական հոյակապ կոթողի՝ պարսպի ուսումնասիրման համար, և վերջերս

72 Տե՛ս Г. Х. Саркисян, Тигранакерт.

Փոքր Վեդիում գտնված Տրայանոսի 116 թվականի արձանագրության նշանակությունը[73]։



Սյունիքում գտնված արամեերեն արձանագրությունը

Մի շարք արձանագրություններ հին Հայաստանի մշակույթի ուսումնասիրման աղբյուր են ծառայում։ Արմավիրի արձանագրությունները վաղագույն վկայություններից են հայերի ծանոթության մասին հունարեն լեզվի և հույն գրականության հետ։ Նրանք նաև հետաքրքրական տվյալներ են պարունակում Արմավիրում արևի պաշտամունքի և գուցե պատգամախոսարանի գոյության մասին։

Ինչպես տեսնում ենք, հին Հայաստանի վիմագրական նյութը բազմակողմանի նշանակություն ունեցող սկզբնաղբյուր է։ Նրա արժեքը մեծանում է, եթե հաշվի առնենք, որ արձանագրությունները, որպես կանոն, ժամանակակից են արտացոլված իրադարձություններին, ուստի և վավերագրերի նշանակություն ունեն։

**Հելլենիստական գրականությունը և պատմագրությունը Հայաստանում:** Հայտնի է, որ հունական գրականության առաջին նմուշները Հայաստանում հանդիպում են Արմավիրի արձանագրություններում։ Առաջին քարի № 1 և 2 արձանագրությունները հատվածներ են գրական երկերից։ № 7, վերջին արձանագրությունը, թեև հաղորդագրություն է մի կոնկրետ դեպքի մասին, բայց չափածո է։

Առաջին ութ տողանոց արձանագրության մեջ հանդիպում են Հեսիոդոսի և նրա եղբոր Պերսեսի անունները. այս տեքստի բնույթը քարոյախոսական է թվում։ Բայց անկախ նրա բովանդակության մեկնաբանումից և փորագրման նպատակներից, այն անկասկած մ. թ. ա. VII դարի հույն գրող Հեսիոդոսի «Գործեր և օրեր» երկի հետ առնչվող գրական մի հատված է։

Երկրորդ՝ տասներկու տողանոց արձանագրությունը ևս բազմիցս արժանացել է մասնագետների ուշադրությանը, բայց նրանից ամբողջական, կապակցված իմաստ կորզել առայժմ չի հաջողվել։ Միևնույն ժամանակ, սակայն, երևում է, որ այդ արձանագրության մի քանի տողերը հանդիպում են

73 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Լատիներեն արձանագրություններ Արտաշատ մայրաքաղաքից, էջ 302—311։

Եվրիպիդեսի (մ. թ. ա. 480—406) «Հիպպոլիտոս», «Օրեստես», «Անդրոմեդա» ողբերգություններում, ինչպես նաև նույն Եվրիպիդեսի անհայտ երկերից հատվածներ պարունակող պատառիկներում։ Մնացած տողերը հունական դրամաների և ողբերգությունների դեռևս չպարզաբանված երկերից են վերցված. թվում է գուցե նույն Եվրիպիդեսի գործերից[74]։

Ստացված պատկերը ցույց է տալիս, որ այստեղ տարբեր պիեսներից կատարված, իրար հետ անմիջական կապ չունեցող, քաղվածքներ են ի մի բերված։ Այդ դեպքում արձանագրության տեքստը կարելի է դիտել որպես հունական, հիմնականում Եվրիպիդեսի, ողբերգություններից կատարված տարբեր տողերի մի ժողովածու, անթոլոգիա, որը կարող էր ուսուցողական նպատակ ունենալ և կիրառվել դպրոցում[75]։

Արմավիրի արձանագրություններից, այսպիսով, երևում է, որ մ. թ. ա. III—II դարերում Հայաստանում արդեն ծանոթ էին հունական գրականության այնպիսի ականավոր դեմքերին, ինչպիսիք Հեսիոդոսն ու Եվրիպիդեսն էին։

Հելլենիստական գրականության զարգացման հաջորդ էտապը Հայաստանում կապված է Տիգրան Բ-ի անվան հետ։ Այդ ժամանակվա հելլենիստական առաջավոր պետությունների օրինակով, Տիգրանի արքունիքը հելլենիստական գրականության գնահատողն ու քաջալերողն էր։

Նորաստեղծ մայրաքաղաքում՝ Տիգրանակերտում էր ապաստան գտել հույն հռետոր Ամփիկրատեսը, որը աքսորվել էր Աթենքից ու մերժել Սելևկյանների հրավերը՝ հաստատվելու Անտիոքում։ Ամփիկրատեսը հեղինակն էր նշանավոր անձնավորությունների մասին մի երկի, որի մեջ հավանաբար նաև «Տիգրանի վարքը» կար[76]։ Տիգրանի արքունիքում էր ապրում նաև հույն փիլիսոփա և հռետոր Մեթրոդորոս Սկեպսիացին, որը տեղափոխվել էր Հայաստան Պոնտոսից։ Մեթրոդորոսը, որին Պլուտարքոսը անվանում էր «այր բազմագիտուն», իսկ Պլինիոսը՝ «հռոմեատյաց», գրել էր «Տիգրանի պատմությունը», որը մեզ չի հասել[77]։ Կարևոր է և հետաքրքիր այն հանգամանքը, որ հայ վերնախավի մի մասը գոնե, ոչ միայն հասկանում ու գնահատում էր հելլենիստական գրականությունը, այլև իր ներկայացուցիչների ջանքերով մասնակցում այդ գրականության զարգացմանը։ Հայտնի է, որ Տիգրանի որդի Արտավազդը (մ. թ. ա. 56—34) գրում էր ողբերգություններ, ճառեր և պատմական աշխատություններ։ Արտավազդի գրական այս գործերը գոյություն ունեին դեռևս մ. թ. II դարում, հույն պատմագիր Պլուտարքոսի օրոք։ Արտավազդի իշխանության տարիներին Արտաշատում թատերական ներկայացումներ էին բեմադրվում, այդ թվում նաև Եվրիպիդեսի «Բաքոսուհիները» ողբերգությունը։

---

74 Տե՛ս Յա. Ի. Սմիրնովի զեկուցումը Արմավիրի արձանագրությունների մասին, *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, էջ 148 –156: *Chr. Habicht* Über eine armenische Inschrift mit Versen des Euripides, „Hermes. Zeitschrift für klassische Philologie", 1953, 2, էջ 251—256, *J. L. Robert*, Bulletin epigrafique, „Revue des études grecques", LXVII, Janv., 1954, № 255, էջ 179—180։

75 Տես *Chr. Habicht*, Über eine armenische Inschrift...:

76 Տես *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, էջ 12։

77 Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 67։ Գ. Խ. Սարգսյան, Նախամեսրոպյան շրջանի պատմագրությունը, ՊԲՀ, 1969, № 1։

*Արշակունի թագավորները նույնպես հովանավորում էին հելլենիստական գրականությունը։ Մ. թ. II դարում, Սոհեմոս թագավորի արքունիքում, Արտաշատում ապրում էր սիրիացի գրող և հռետոր Յամբլիքոսը։ Սա հավանաբար Հայաստանում գտնվելու ժամանակ գրել է «Բաբելոնականք» պատմավիպական երկը[78]։*

*Արշակունիների օրոք փորձ է արվում նաև գրի առնել տեղական ժողովրդական ավանդությունները հայերի պատմության սկզբնական ժամանակաշրջանի մասին։ Այդ գործը հանձնարարվում է ասորի պատմագիր և փիլիսոփա Մար Աբաս Կատինային, որը, Մծուռն կամ Մծուրք քաղաքում գրում է Հայաստանի պատմության նախնական շրջանը[79]։ Այս աշխատանքից է առատորեն օգտվում Մովսես Խորենացին «Հայոց պատմության» առաջին գիրքը գրելիս։*




Արտաշատի լատիներեն արձանագրության սկզբի մասը

*Մովսես Խորենացին հետաքրքրական տվյալներ է հաղորդում հին Հայաստանի պատմագրության մի որոշակի ճյուղի, այսպես կոչված «մեհենական պատմությունների» գոյության մասին։ Այդ պատմությունները տեղեկություններ էին պարունակում նաև հայոց թագավորների և նրանց գործերի մասին։ Խորենացին հիշատակում է մեհենական պատմությունների և այլ գործերի հեղինակ Անիի քուրմ Ողյումպին, Արտաշեսի մասին գլուխները շարադրելիս[80]։*

*Խորենացու՝ Բարդածանի մասին[81] հաղորդած տեղեկություններից կարելի է որոշ հետևություններ անել մեհենական պատմությունների լեզվի մասին։ Բարդածանը, որը մ. թ. II դարի ասորի պատմագիր էր և քարոզիչ, գալիս է Հայաստան և լինում Դարանաղյաց գավառի Անի ամրոցում, որտեղ ծանոթանում է այնտեղ եղած «Մեհենական պատմության» հետ, որի մեջ տվյալներ կային նաև հայ թագավորների մասին։ Ավելացնելով ընթացիկ դեպքերի պատմությունը, նա ամբողջ աշխատանքը թարգմանում է ասորերեն։ Քանի որ այդ*

---

78 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Բ, մասն Ա, էջ 38, 39։*

79 *Տե՛ս նույն տեղում, էջ 16։*

80 *Տե՛ս* Գ. Խ. Սարգսյան. *Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, գլուխ 3-րդ։* Խորենացի, *Բ, ծը։*

81 *Տե՛ս* Խորենացի, *Բ, կգ։*

*գործը հետո թարգմանվել է նաև հունարեն, ապա ուսումնասիրողները ենթադրել են, որ Անիի այդ «Մեհենական պատմությունը» գրված է եղել հայերեն կամ պարսկերեն լեզվով։ Մինչև այժմ դեռևս պարզ չէ, սակայն, թե ինչ գրեր են օգտագործվել այդ պատմությունները շարադրելիս։ Հայտնի են նշանագրեր, որոնք պայմանական ձևով «մեհենական» են կոչվում[82], թեպետ նրանց կիրառման մասին փաստեր չկան։ Ոմանց կարծիքով այդ նշանագրերը նախնադարյան-համայնական ժամանակաշրջանի պիկտոգրամմաներ կամ պետրոգլիֆներ են[83]։ Քանի որ այս նշանագրերը դեռ վերծանված չեն, դժվար է ուղղակի որևէ բան ասել նրանց մասին։ Ինչ վերաբերում է Հայաստանի մեհենական պատմություններին, ապա նրանք կարող էին գրված լինել, եթե այդ նպատակի համար չեն օգտագործվել հայկական ինչ-որ նախնական տառանիշներ, հունական կամ ավելի հավանական է, արամեական տառերով։*

## 4. ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԹԱՏՐՈՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Թատրոնի դերը հելլենիստական ժամանակաշրջանում:** *Հելլենիստական շրջանի մշակույթի կարևորագույն և առավել զարգացած բնագավառներից մեկըն էր թատրոնը, որից անմասն չէր մնացել նաև Հայաստանը։ Պլուտարքոսից մեզ հայտնի են Տիգրանակերտում թատրոնի կազմակերպման և Արտաշատում թատերական ներկայացումների բեմադրման փաստերը[84]։ Այդ փաստերը ճիշտ ըմբռնելու համար անհրաժեշտ է որոշ պատկերացում կազմել դասական և հելլենիստական շրջանի թատրոնի գեղարվեստական բարձր արժեքից բացի, նաև նրա հասարակական-քաղաքական դերի մասին։*

*Հունական թատրոնի բնորոշ գծերից էին նրա պաշտամունքային ծագումը, որը իր դրոշմն էր թողել բեմադրության ձևերի վրա, և սոցիալական ու քաղաքական այն կարևոր նշանակությունը, որ նա ուներ քաղաքային համայնքի կյանքում։ Թատրոնը իշխող դասակարգի խոսափողն էր, որի միջոցով նա իր գաղափարախոսությունն էր քարոզում քաղաք-պետության բնակչությանը։ Չի կարելի պատկերացնել որևէ հունական քաղաք առանց սեփական թատրոնի։ Թատրոնը քաղաքի նույնպիսի անբաժանելի մասն էր կազմում, որպիսիք էին նրա տաճարները։ Թատրոնին տրվում էր պետական նշանակություն. ներկայացումների կազմակերպումը հանձնարարվում էր բարձրագույն պաշտոնյաների և ամենապատվավոր քաղաքացիներին։ Թատրոն հաճախելու համար պետությունը հատուկ նպաստ էր ընձեռում քաղաքացիներին։*

*Հելլենիստական շրջանում թեև շատ բան փոխվեց և առավել շեշտվեց թատրոնի ժամանցային հանգամանքը, բայց և այնպես այն չկորցրեց իր սոցիալական ու քաղաքական դերը, որի կարիքը մեծապես շարունակում էր զգալ տիրող դասակարգը։ Արևելքում հիմնադրված բոլոր քաղաքներն ունեին իրենց*

---

82 *Տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն» (ձեռնարկ միջնակարգ դպրոցի համար), առաջին մաս, Երևան, 1956, էջ 84։*

83 *Տե՛ս* Ա. Գ. Աբրահամյան. *Հայ գրի և գրչության պատմություն, էջ 19։*

84 *Հելլենիստական շրջանի հայկական թատրոնի մասին մանրամասն տե՛ս* Г. Гоян, 2000 лет армянского театра» I. Театр древней Армении, М., 1952, *էջ 79—174։*

*թատրոնները։ Թատրոնի շենքը (բացօթյա ամփիթատրոնը) ծառայում էր ոչ միայն ներկայացումների համար, այլև այնտեղ էին հավաքվում քաղաքացիների բազմամարդ ժողովները։ Հելլենիստական թատրոնների շենքերի տարողությունը պետք է ապահովեր քաղաքային համայնքի բոլոր անդամների ներկայությունը և այդ շինքերը հաճախ հսկայական չափերի էին հասնում (5—6 հազարից մինչև 40—50 հազար հանդիսատեսի տեղերով)։*

**Տիգրանակերտի թատրոնը:** *Պլուտարքոսը պատմում է, որ Տիգրանը Տիգրանակերտում թատրոնի հատուկ շենք էր կառուցել և բազմաթիվ հույն դերասաններ հրավիրել*[85]*։*

*Այսպիսի թատրոնի ստեղծումը անհնարին էր առանց պոլիսային կյանքի որոշ գծերի ներթափանցման Հայաստանի քաղաքները, տվյալ դեպքում՝ Տիգրանակերտ, և առանց հանդիսատեսների համապատասխան բազմության ապահովման։ Հայ հասարակության համեմատաբար սահմանափակ խավերն էին միայն, որ կարող էին դառնալ հունարեն լեզվով թատերական ներկայացումների իրական հանդիսատեսներ. դրա համար պետք էր ունենալ հելլենիստական կրթության տարրեր և հունարենի իմացության որոշակի մակարդակ, որոնք հավանորեն, թագավորի շրջապատի և գուցե իշխող դասակարգի բարձր խավերի մենաշնորհն էին։ Այսպիսով, որպես հանդիսատեսների մի խոշոր զանգված պիտի ծառայեր Տիգրանի կողմից հելլենիստական քաղաքներից տեղահանված ու Հայաստանի քաղաքները տեղափոխված բնակչությունը, որը վարժված էր հելլենիստական քաղաքի թատերական կյանքին։ Թատրոնի ստեղծման նպատակը, սակայն, վերաբնակեցված այդ շերտերին բավարարելը չէր, այլ տեղական, հայ բնակչությանը հելլենիստական թատրոնի, որպես հունական մշակույթի մի ճյուղի պատվաստումը, հայ հասարակությունը հելլենիզմին ընտելացնելու ձգտումը, որը պարզորոշ նկատվում է Տիգրանի և նրա հաջորդների գործունեության մեջ և դրսևորվում, ասենք, հենց «Ֆիլելլեն» (հունասեր) այն տիտղոսի մեջ, որ նրանցից ոմանք կրում էին։*

*Հասկանալի է, որ հայ ժողովուրդը իր նախընթաց զարգացման ընթացքում ևս ստեղծել էր պաշտամունքային-թատերական տիպի որոշ խաղեր ու ներկայացումների ձևեր, որոնք պետք է դյուրացնեին հելլենիստական թատրոնի մուտքը Հայաստան, և, բացի այդ, իրենց ազդեցությունը գործեին այդ թատրոնի՝ Հայաստանում զարգանալու ընթացքի վրա։*

**Եվրիպիդեսի «Բաքոսուհիները» Արտաշատի բեմի վրա:** *Պլուտարքոսի մյուս հաղորդումը հելլենիստական թատրոնի մասին վերաբերվում է Արտավազդ Բ-ի թագավորությանը՝ մ. թ. ա. 53 թվականին։ Այն այնքան հետաքրքրական ու դրամատիկ է, որ արժանի է մեջ բերվելու այստեղ բառացիորեն։ Հռոմեական Մարկոս Կրասսոս զորավարը պարտություն է կրել պարթևական զորքերից և սպանվել։ Պարթև զորավար Սուրենը ուղարկում է Կրասսոսի գլուխը իր թագավոր Օրոդեսին, որը նախապես ներխուժած լինելով Հայաստան, այժմ հաշտություն և դաշինք էր կնքել հայերի հետ և այդ պահին արդեն Արտավազդ թագավորի հյուրն էր։*

---

85 *Տե՛ս Plut.,* Lucul., *29։*

«Մինչ այդ բոլորը տեղի էր ունենում,— գրում է Պլուտարքոսը,— Որոդեսն արդեն հաշտվել էր հայ Արտավազդի հետ և համաձայնվել նրա դստեր և իր որդու Բակուրի ամուսնության. Նրանք իրար խնջույքների ու գինարբուքների էին հրավիրում, որոնց ընթացքում հունական բազմաթիվ ներկայացումներ բեմադրվեցին։ Որոդեսը անմասն չէր հունական խոսքից ու գրից, իսկ Արտավազդն անգամ ողբերգություններ, ճառեր և պատմություններ էր ստեղծագործում, որոնցից մի քանիսը պահպանվել են։ Այն պահին, երբ Կրասսոսի գլուխը հասցրին արքունիք, ճաշասեղանները արդեն հավաքված էին և ողբերգակ Տրալլացի Յասոնը արտասանում էր Եվրիպիդեսի «Բաքոսուհիներից» Ագավայի տեսարանը։ Երբ նրան ողջունում էին ծափահարությամբ, ներս մտավ Սիլլակոսը և չոքելով արքայի առջև՝ դահլիճի մեջտեղը նետեց Կրասսոսի գլուխը։ Պարթևները բարձրագոչ ողջունեցին նրան և թագավորի հրամանով հրավիրեցին բազմել մահճին, իսկ Յասոնը հանձնելով Պենթևսի բեմահագուստը երգչախմբայիններից մեկին, վերցրեց Կրասսոսի գլուխը և բաքոսային ներշնչմամբ ու ոգևորությամբ սկսեց արտասանել հետևյալ տողերը.

Բերում ենք սարից
Նոր կտրած բաղեղը,
Որսի երջանիկ արդյունքը։

Բոլորը հիացած էին, իսկ երբ Յասոնը երգեց երգչախմբի հետ զուգորդվող տողերը՝ «Ով սպանեց նրան»— «Իմն է սխրանքը», ապա Պոմաքսաթրոսը (Կրասսոսին սպանողը—խմբ.), որը ներկա էր խնջույքին, վերկենալով տեղից խլեց գլուխը ի նշան այն բանի, որ իրեն ավելի, քան դերասանին պատշաճ է ասել այդ խոսքերը։ Թագավորը, հրճված, պարգևատրեց նրան իր երկրի սովորության համաձայն, իսկ Յասոնին նվիրեց մեկ տաղանդ արծաթ»[86]։

Հետաքրքրական է, որ Տիգրանից հետո էլ հայոց թագավորների ապարանքում հայ և պարթև արքաների առջև բեմադրվում են Եվրիպիդեսի ողբերգությունները և սրանց բեմադրության համար դերասաններ են հրավիրվում հեռավոր հունական քաղաքներից։ Այդ նշանակում է, որ Տիգրանի թատրոն կազմակերպելու գործը մի պատահական ու անհետևանք երևույթ չէր։ Կարծիք կա նաև, որ այս ներկայացումները բեմադրողն ու ռեժիսյորն է եղել ինքը Արտավազդ Բ-ը[87]։ Այս կարծիքը խարսխված է էլ ավելի հետաքրքրական այն փաստի վրա, որ Արտավազդը ինքը ողբերգությունների հեղինակ էր։ Ողբերգություններ, որոնց ծանոթ էր Արտավազդից երկու հարյուրամյակ ավելի ուշ ապրած Պլուտարքոսը։ Այս փաստից հետևում է նաև, որ Հայաստանում Պլուտարքոսի նկարագրած ներկայացումը սոսկ մի դրվագ էր մեզ առայժմ անհայտ մնացող թատերական կյանքից, և որ բացի հունական ողբերգություններից, այստեղ ներկայացվում էին նաև հայ հեղինակների գործեր, որոնց մեջ հավանաբար տեղ պիտի գտնեին հայկական մոտիվներ։

---

86 *Plut.*, Crass., 33։
87. *Տե՛ս Г. Гоян,* 2000 лет армянского театра, *I. էջ 79—174։*

